# ԲԺՇԿԱԿԱՆՈՒԹԻՒՆ

ՊԱՐՈՆ

ՄԻՔԱՅԷԼԻ ՐԷՍՏԷՆ



## ՀԱՏՈՐ ԱՌԱՋԻՆ

Ի ՎԵՐԱՅ ԱԶԳԻ ԱԶԳԻ ԽՕԹՈՒԹԵՆՑ

ԵՐԿՐՈՐԴ ՏՊԱԳՐՈՒԹԻՒՆ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ

—

1832

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

## ՀԵՂԻՆԱԿԻՆ

Ամենիմաստ ինքնագոյ արարչագետն՝ տիեզերասփիւռ գոյիցս եղելութեանց, ըստ խորախորհուրդ և անզննական իւրոյին իմաստութեան՝ գերահրաշ ցուցեալ ախորժելի և զխնամածողօրէն զիւրն տեսչութիւն, քառեակ վայելչաթիւ եղանակօք պճնազարդեալ ճոխացոյց զայս հողանիւթեայ օթարանիս կազմուած, և զամ ըստ ամէ հոլովումն ժամանակաց ընթացից: Անկզբնածագ տածողութեամբ զգարնանացեղ զուարճութիւն յառոյգ բարգաւաճ սնունդ դալարեցուցեալ, ընդ տնկաստաղարթ անձրեւութեան՝ զամառնային զյորդեռանդն տապոյ զջերմութիւն վարսաւորացն յուզթի հովանեօք միշտ զովացուցանելով, խնամ կալեալ պտղաւէտ արգասեօք ՚ի բեղնաւորութիւն մրգաց և գեղագեղ ծաղկանց, բուսոց և արմտեաց շահեկանաց՝ զաշնանայնոյ բերման բարեբերս ատաջացուցանել, որով և զյաջորդական հանդերձանաց խնամեալ զպէտս՝ գադար հանգստեան ՚ի ցրտասառոյցն պահու ՚ի մեբայ ամէն երկրածնացս: Իսկ բոլորիցն գերազանց՝ զբանականս կենդանի զմարդ, որ բանականութեան մասամբ ՚ի հանգունատիպն պատկեր գոյացեալ հաստչին, ՚ի քառեակ տարերաց սքանչելահրաշ իմն պայմանաւ արարչագործեալ, և միանգամայն քառեակ խառնուածոցն բաղադրութեամբ ՚ի կենսական սքանչելարուեստ զօրութիւն հաստատեալ, բիւրազգի կատարելութեամբ զարդու նրբազնին մակացուեց զգեստաւորեալ պճնազարդեաց, և ՚ի մի բան բովանդակել ախորժեալ, “փոքր մի քան ըզհրեշտակս խոնարհ արար„ ըստ դաւթականն ձայնի:

Եւ արդ՝ ո՞ ոք՝ թէև ՚ի տխմարագունից անտե բնութեան սակի անգէտ եղելոց՝ զայսպիսօրէն զմիօ-

րինակ հետեւողու՟թ տեսեալ զեղանակաց, և զսքան-
չելահրաշ արարչագործու՟ն բացափայլ նկատեալ
զարարչապետին, ըստգիւտ իշխեսցէ դնել ճարտար-
արուեստ կազմութե՟ս, անպիտան վարկուցեալ
զպղջնապիսի զպիտեւան զայս այլազանու՟թի եղե-
լոցս: Ո՞չ զոք յիրաւի է կարծել բնաւ: Այն զի
իմացականս բնութիւն սքանչելարուեստ պայմա-
նաւ յօրինեալ, 'ի նշմարել երբէք ուրեք զիւրն վերի-
պական կիրս ը՟ն մասին կենսականի, եԹէ 'ի սակս
այլազան յարափոփոխ շարժման տարերցն, եԹէ
խառնուածոցն անբարեխառնու՟թե աղագաւ, և
կամ եԹէ գործարանացն խանգարման պատահե-
լով, ինքնին յաջողակ է արդարև անդստին 'ի ծնա-
պարգև ձրից բանականու՟թեն մասին՝ նրբազնին
խուզմամբ հետազօտեալ զվերիպակս բնութեան բա-
ցայայտ ճանաչել, և միանգամայն ըստ տարազու-
մշակականն արհեստի՝ զառյուրեանց զանբեր կ՟մ
զդաժանաբոյս եկամուտս բնութեանն 'ի բաց սըր-
բեալ, և զբնաւորականսն դարմանեալ, և արուես-
տիւ խնամարկեալ, զորէն քաջիմաստ ուղղչէ՝ սե-
փական կանոնօք կազմ յօրինեալ, անդրէն հաստա-
տել 'ի բնիկն իւր պայման: Եւ ահա գիտու՟թի
այսօրինակ՝ իբր արարչութեանն գործակից՝ Բժշ-
կականութիւն առաձայնի յիմաստնոց. որ ըստ պե-
տին բնախօսից արիստոտէլի, անշուշտ կոչի քոյր
փիլիսոփայու՟թե, վասն փոփոխակի առ միմեանս
նպաստաւորելոյ սոցա, զորմէ և մեր բանքս են առ-
տանօր: Խոստովանիմք ապաքէն՝ իբր անհնարին
իմն գոլ ը՟ք կոպարաւ և սահմանաւ բովանդակել
զայսր ճարտարարուեստ գիտու՟թե զպիտեւանու-
Թե՟ն, զգերապատուու՟թե՟ն և զշրուատիցն փառս
իրաւացիս ը՟ն պարտուպատշաճ արժանեացն, զայն
ևեթ շատ համարեալ առ տեղեաւս, զի նախնի
բնախօսք և փիլիսոփայք, գրե թէ համօրէն 'ի մի բե-
րան դրուատանօք համբաւեցին զսա, և զուգա-
հաւասար արժանապատուու՟թբ գոլ հաստատեցին
ընդ փիլիսոփայու՟թե՟ն բնականի:

Այլ սակայն աւաղս աստանօր կարդալ յիրաւի է յետին ժամանակի ծննդոցս. յորում ըստ յաճախել մեղաց և անկարգութեանց՝ մինչ դեռ ըստ նմին չափու առաւելեալ տիրեցին ՚ի մարդկային բնութեն բիւրազգի ախտք և խօթութիւնք, ոչ նոյնպէս փոյթ եղև յետնոցս՝ որպէս նախնականացն մերոց, ՚ի պատուի ունել զբժշկականութեն կենցաղօգուտ և զկարևոր կրթականութիւն։ Առաւելապէս նուազեալս յայսմ տեսանեմք զարուեստս մեր համազգիս՝ քան զօտարածինս համայն, առ որս գտանին յոլովակերպ մատեանք, և համալսարանք յարքունուստ կառուցեալք ՚ի պէտս ուսանողաց այսր կարևորագոյն մակացութե. որ և օր քան զօր ճոխապաճոյճ հանդիսանայ նորանոր ճարտարխմաստ հնարիւք՝ յարանց կորովամտաց և քաջաբանից։ Իսկ առ մերազնեայս նուազութի գոլով ջանից և աշխարհաշէն նպաստից, չքաւորութի բազում գտանի այսր կենցաղօգուտ մակացութե, և նմին պատշաճեալ մատենից. Թէպէտև զպատճառսն մանրախոյզ հետազօտութբ զննաւածեալ, մարթ է ըստ իրաց ինչ անբասիր կացուցանել զազգս աքանազեան. որովհետև քաջայայտ է ամենայն ումեք, եթէ մեծագոյն մասն դպրեանց մերոց և իմաստաբեղուն մատենից աւանդելոց ՚ի մեր նախնեաց չէ ՚ի միջի. է՛ զի հրակիզութբ, և է զի յափշտակութբ և կողոպտմամբ թշնամեաց անյայտ լեալ կորեան ՚ի վնաս և ՚ի մեծ սրտաբեկութի ազգիս։ Այլ մեք աստէն թէպէտև քաջ ճանաչեմք զանձինս անբաւականութի ՚ի ձեռնամուխ լինել յայսպիսի գործ բազմաշխատ և դժուարամատոյց, բայց յաղթեալք ՚ի սաստկութենէ սիրոյ բնիկ հայրենեացս, ձեռն ՚ի գործ մատչիմք յօժարափոյթ յառաջիկայդ գործողութիւն, եղեալ մեզ կէտ նպատակի անվրէպ յուսով զմեծագոյն շահ և զօգուտ ազգիս հայկազնեան. զորոյ ինչ ինչ ՚ի կարևոր գիտելեաց պատշաճ վարկանիմք ծանուցանել սակաւուք ընթերցասիրացդ։

ա̃. 'Ի յօրինել մեր զբժշկարանս՝ ընտրելի դասեցաք ճառել նախ զկարեւորագոյն եւ զգլխաւոր ախտից, եւ ապա զորոց քաջ զփորձ առեալ էաք. այլ միշտ զհամառօտն կալեալ զճանապարհ, զանց արարաք խօսել զբազում եւս ախտից: Բայց որք միանգամ յօժարափոյթ, եւ ուշադիր մտօք հրահանգին յանդուլ ընթերցանուի վերոգրեալ ախտից, որք երբ դուռն են հասարակաց առ մնացեալ ախտս, անշուշտ է ապաքէն՝ զի նոյն իսկ բնութիւն առաջնորդէ նոցա 'ի քաջածանօթութիւն այլոցն մնացելոց:

բ̃. Յընթացս բանից ճահողագոյն վարկաք առնուլ 'ի կիր զգովելի ոճ ոմանց գերահռչակ եւ կորովամիտ հեղինակաց, ուրոյն ուրոյն բացատրութբ ճառել նախ զգլխարդն ախտից, ապա զպատճառաց, զնշանաց, զխնամատարութեանց, զդեղորէից եւ զկառավարութեանց նոցին. եւ այս վասն երկուց պատճառաց: Առաջին՝ սակս դիւրաւ ըմբռնողութեան մտաց վերծանողացդ զպարագայս հանգամանաց ախտից: Երկրորդ՝ զի ուշադրութբ 'ի միտ առեալ զիսկութի նշանաց եւ պատճառաց, եւ անվրէպ դատողութբ բացորոշեալ, չգործիցեն ինչ վրիպակս 'ի դարմանատրութե ախտիցն. քանզի յոլովք յախտաժէտաց վայրապար զրաւին 'ի կենաց՝ սակս պակասութե այսորիկ կարեւորագոյն ուշադրութե, եւ բացորոշ դատողութեան:

գ̃. Որովհետեւ գերահռչակ մակացութիս այս բժշկական, ըստ մեծի մասին հիմնեալ է 'ի քաջածանօթութե իսկական պատճառաց կենսականս բնութե, սմին իրի կարեւոր համարեցաք յընթացս գրութեանս զննել փոքր 'ի շատէ եւ զգլխարդն երեւելի գործարանացս բնութե, որպիսի են՝ սիրտն, թոքն, ուղեղն, լեարդն, փայծաղն եւն. եւ միանգամայն ճառեցաք ինչ ինչ զեղանակէ քաջ զննութե եւ նկատման զարկի բազկի, որպէս ունիս տեսանել 'ի հատ. բ̃. 'ի բառն Բազուկ:

դ̃. Զչափ, զքանակութի, զբնութի, զներգոր-

ծուԹի, և զեղանակ գործածուԹեան իւրաքանչիւր դեղորէից ամենայն զգուշուԹբ, և փորձառուԹբ եղաք բացայայտ առաջի, զնոսա ածեալ մեր, և քաջ զփորձ առեալ, եԹէ 'ի վերիպակաց որք գործին յայսոսիկ պարագայս, բազում անգամ և բազում ուրեք յառաջագայցին բազմապէսի անտեղուԹիք, եւ՛ ուրեք երբէք մինչեւ տրկած փոխանակ բժշկուԹե. ամին իրի մեծի ուշադրուԹե պէտք են յայսմ մասին ։

Ե. Ըստ մտաց մեծանուն և քաջահմուտ հեղինակաց՝ 'ի դիպուածս իւրաքանչիւր տեսակաց ախտի, բազում անգամ յաւելմամբ գրգռման՝ պատճառի 'ի բնաւէս չափազանց ուժեղուԹի. որում յաջորդէ տարապայման ԹուլուԹիւն կամ տկարուԹի ջղաց և բոլոր մարմնոյ. ամին իրի նրբաշնին հետազօտուԹբ նկատել և որոշել արժան է զայսոսիկ պարագայս. զի եԹէ տարապայման ԹուլուԹին 'ի բնուԹե ախտակրին՝ պատճառեալ իցէ յառաւելուԹէ գրգռմանն, որպէս պատահի յոլով անգամ 'ի չափազանց գործածուԹէ գրգռիչ և զօրացուցիչ դեղորէից, յայնժամ փոյԹ ունել արժան է Թուլացուցիչ և զովացուցիչ դեղորէիւք նուազել զայն, և բարեխառնել. քանզի բազում անգամ 'ի հարևանցի ուշադրուԹէ այդորիկ կարևորագոյն և նրբագոյն պարագայի, բազմապատիկ վերիպակք և յոգնազան խառնակուԹիք 'ի վեր երևին ։

Զ. Յօգուտ և 'ի դիւրուԹի վերծանողաց՝ բազմաժամանակեայ աշխատուԲ և հոգւով չափ վաստակօք գուն գործեցաք 'ի լոյս ընծայել եւ զբառարան իմն ըստ կարի ճոխագոյն անուանց՝ բուսոց, հանքաց, հեղանիւԹ ոգեաց, օդային, ցամաքային և ջրային կարևոր կենդանեաց ոմանց, եւ ինչ ինչ անդամոց և ախտից, և այս 'ի քառեակ բարբառս՝ 'ի լատինական, յիտալական, 'ի գաղղիական, և յանգղիական. և ուրեք ուրեք յաւելաք 'ի վերայ ոմանց բառից նա և զյունականն, զարաբացւոց,

զպարսկականն, զտաճկականն, և զհայկականն. և միանգամայն եդաք առաջի իւրաքանչիւր բառից զծանօթութիւն, զբնութիւն, և զներգործական զօրութիւն նոցին բացայայտ իմն ոճիւ:

Է. Յառաւել դիւրութիւն ուսումնասէր հետազօտաց՝ կարևոր դատեցաք հաւաքել ուրոյն բառարանաւ ըստ այբուբենից զբասս արաբացիս, կամ պարսկականս, կամ տաճկականս, և զնշանակութիս նոցա 'ի բառարան լատինական անուանցն առաքել. որպէս զի տեղեակքն այսոցիկ արևելեան լեզուաց գիտասցեն՝ թէ արևմտեայք որով անուամբ կոչեն զիւրաքանչիւր բժշկական գիտելիս:

Այսչափ ինչ ըստ պահանջելոյ Յառաջաբան ծանօթութեանց համառօտիւ յայտ արարեալ զնպատակ և զտարազ դրուածոցս, ցանկամք 'ի դուզնաքեայ մերոցս վաստակոց՝ յոլովագոյնս շտեմարանել արդիւնս օգտաշահս յանձանձիր ընթերցանութէ մտաւոր վերծանողաց:

Թէ 'ի ցաւելի մարդոյ բժշկութիւն,
չարչեօք հասանէ ախտից բժշկութիւն,
չարևոր ազգ և այն գիտութիւն,
ոյր անուն և գործ է բժշկութիւն:
Է՛ որ գործնական նէր դարմանոյ,
կամ փէտականերն միայն փեղեակ գոյ.
այլ որ խնամոտ բուժիչ է մարմնոյ,
զայս և զայն քութայ ունել գծարգոյ:
Մեծարեա՛ զբժիշկն հրամայէ Գիր,
զոր ինչ 'ի քո պէտս յանձն առնուլ 'ի քէր:
Այլ եթէ բժիշկն՝ եթէ ախտաւէր,
'ի Տեառնէ յուսալ խրատէ նոյն Գիր:

# ՑԱՆԿ

Անուանց հիւանդութեանց ըստ կարգի այբուբենից։





# ԲԺՇԿԱԿԱՆՈՒԹԻՒՆ

'Ի վերայ ազգի ազգի խօթութեանց և ախտից, այլև պատճառաց, նշանաց, խնամատարութեանց, և դեղօրէից նոցին։



## ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

'Ի վերայ Տենդից ընդհանրապէս. որ յիտալացւոց ասի՝ Ֆէ՛պպրէ ին ճէնէրա՛լէ։

### ՅՕԴՈՒԱԾ Ա.



ՏԵՆԴԴ անունն՝ է տեսակ ինչ աստիճանաւոր՝ և միաստարար ախտից, զոր այլով անուամբ կոչեմք ջերմն։ Եւ է բազմատեսակ, յորոց զոմանս ունիմք ներքնաշարել 'ի տեղիս իւրաքանչիւր։ Ըստ առաւել հասարակ կարծեաց՝ զրաւէն 'ի կենաց առաւել քան զկէս մասն մարդկային սերընդոց, որ և յայն սակս կոչի ըստ բժշկաց՝ սուրն կենաց. զի առաւելու զջերմութիւն կենդանական, գրգռէ կամ շարժէ զթելս մարմնոյ. որք դատանին 'ի մկանունս և յայլ մասունս կենդանւոյն. ածէ ամբոխումն 'ի վերայ ճապաղիցն ջղաց, և բառնայ զոյժ և զզօրութիւն մարմնոյ. անդէն նոյնհետայն սկսանին 'ի վեր երևիլ այլևայլ ամբոխմունք 'ի պաշտաման ստամոքսի և ընդերացն, եղծմամբ մարսողութեան, խորշելով յն և իցէ կերակրոյ տաղտկանօք սրտի. որում երբեմն ղուգընթանան և բռնաւորու-

թի, մղումն, դողդոջումն, ցնցումն, և ցնորումն, յառաջընթացութեամբ ճնշման կրծոց, սեղմամբ և չորութեամբ կոկորդի, ցաւով և ծանրութեամբ, կամ նաև պտուտմամբ գլխոյ, շառաչմամբ ականջաց. փոխադարձ առնելութեամբ սրտի, նեարդից և զօրութեանց ջղաց, և անպատմելի իմն զգածմամբ անձկութեան: Նմին իրի մեծապէս կարևոր է ամենայն բժշկաց ճանաչել զպատճառս, յորմէ յառաջ գայ ախտս: Առաւել ընդհանուր պատճառք տենդից են՝ փոխադարձութիւն ախտից, սխալանք 'ի կառավարութեան, ներքին մասնակար հիւթքն, օդն յառի, արգելումն որպիսի և իցէ սովորական հոսման, և ներքին կիրքն եռացուցիչք ոգւոյ, 'ի վախճանի՝ սաստիկ ջերմութիւն, և կարի ցուրտն, որ խափանէ զարտաշնչութիւնն մարմնոյ՝ խցմամբ ծակտեաց մորթոյ: Դիւրին և պարզագոյն իմն տենդն ունի միշտ զոյգ ընդ իւր անհամաձայն նշանս, որք վերաբերին մասնաւորապէս առ այլասեռ ախտս:

Գլխաւոր նշանքն ախտիցս են՝ մեծագոյն խռնջութիւն, սաստիկ ջերմութիւն, անհանգստութիւն. երբեմն զուգընթաց լինի ընդ ախտիս և ուժգնութի կամ բռնութի, հանդերձ ցնորմամբ և կատաղութեամբ: Զարկ բազկին հարկանէ երբեմն արագ և ուժեղ, և երբեմն սաէպ և նուրբ՝ կամ նաև թոյլ: Իսկ նշանք անսպասականք՝ են զղջանք, տաղտկութիւնք, յօժարութի 'ի ժայթքել, ծարաւն սաստիկ, անձկութի, դժուարութի 'ի շնչառութեան, ցամաքութի լեզուի, թուլութի մարմնոյ, և քունն միջահատ: Յորժամ 'ի վերայ գայ ումեք տենդն իբր ընդ առաւօտանս ելանելով, յայնժամ ախտաւորին շուրջ պատեալ ունի զիւրև զթմրութի և զտարտամութի. կրէ ցաւ 'ի մկանունս, յոսկերս, և 'ի գլուխն, կորուսանէ զախորժակն գլխովին. և բերանն լինի ցամաքագոյն. և զկնի քանի ինչ ժամանակաց զգայ յանձին զջերմութիւն սաստիկ, և զծարաւ բորբոքիչ, և զանկարութի 'ի քուն լինել, և այլն: Իսկ յորժամ յանկարծակի 'ի վերայ հասանէ տենդն, յայնժամ ախտաւորն ունի զդողդոջումն, և զցուրտ ուժգին, զտկարութի կամ զթուլութի, զկորուստ ախորժակի, զանձկութի սրտի, զըծումն և այլն:

'Ի վերայ զանազան տեսակաց տենդից :

Տենդքն բաժանին յընդհատ, և յանընդհատ, կամ յօրըստօրէ. առաջինն կոչի յիտալացւոց Ֆէպպրէ ինթէռմիթթէնթէ, և երկրորդն՝ քոնթինուա : Տենդն ընդհատ է այն՝ որ յանկարծ 'ի վերայ յարձակի տկարակրին, և յետ այնորիկ նշանաւոր ինչ ժամանակս միջահատեալ 'ի բաց հրաժարի 'ի նմանէ, այնպէս մինչև համարել տկարակրին՝ թէ ստացեալ իցէ զառողջութի, և չզգալ յանձին նշան ինչ տենդի. բայց զկնի քանի ինչ աւուրց վերստին գլուխ ամբառնայ և 'ի յայտ գայ տենդն, երբեմն առաւել, և երբեմն սակաւ զժնէութ՟, և այսպէս մնայ մինչև ցկատարելապէս առողջութի տկարակրին : Տենդս այս ընդհատ՝ անջատի դարձեալ 'ի Ֆէպպրէ քօթիտիանա, այսինքն տենդ օրըստօրեայ. 'ի Ֆէպպրէ թէռցանա, այսինքն տենդ եռօրեայ. 'ի Ֆէպպրէ գուառթանա, այսինքն տենդ քառօրեայ. 'ի Ֆէպպրէ գուինթանա, այսինքն տենդ հինգօրեայ. 'ի Ֆէպպրէ թէռցանա տօպպիա, այսինքն կրկնապատիկ տենդ եռօրեայ. 'ի Ֆէպպրէ գուառթանա տօպպիա, այսինքն կրկնապատիկ տենդ քառօրեայ : Են և այլևս տենդք, որք 'ի հինգ, 'ի վեց, 'ի յեօթն և յութ ամիս, և յամի միանգամ պատահին, բայց այսպիսիքն յոյժ սակաւք են, և դասին 'ի կարգս ընդհատ տենդի. որովհետև սոցա դեղորայք, և կառավարութիւնք նոյն են ընդ նմա : Իսկ տենդքն գարնանային անուանեալք՝ են այնք, որք սկսեալք 'ի փետրվարէ՝ աւարտին մինչև ցյունիս : Իսկ տենդքն աշնանային սկսանեն 'ի յուլիսէ մինչև ցյունվար : 'Ի սոյն կարգ դասի և տենդն չարաբար, կոչեցեալ յիտալացւոց՝ Ֆէպպրէ պէռնիչիօզա, որոյ են բազում տեսակք :

Իսկ տենդն անընդհատ է այն՝ որ բնաւ ոչ հեռանայ և ոչ թողու զախտակիրն յամենայն ընթացս հիւանդութե՟. և յորքան ևս աճէ, բնաւ ինչ նշանս ոչ ցուցանէ, բայց միայն՝ զի համբարձեալ ախտն 'ի սաստկագոյն աստիճան, սկսանի առ սակաւ սակաւ զիջանել և դադարել կամ նոյն իսկ բնութեն նպաստաւորութ՟, և կամ 'ի ձեռն դեղորէից : Տենդս այս որոշի դարձեալ 'ի Ֆէպպրէ աքութա, այսինքն տենդ սուր կամ դժնեայ. 'ի Ֆէպպրէ նէռվօզա, այսինքն տենդ ջղական կամ յուեգոյն. 'ի Ֆէպպրէ ռէմիթթէնթէ, այսինքն տենդ թու-

լսկան . 'ի ֆէպրաէ քոնթինուա կաւսթակքա , այսինքն տենդ անընդհատ սաստկական . 'ի ֆէպրաէ պիթուի-թօզա , այսինքն տենդ մաղասական . և 'ի ֆէպրաէ լէն-թա ներվօզա , այսինքն դանդաղատենդ ջղային : Այսմ ամենայնի լինիլ ծանօթացիս յիւրաքանչիւր տեղիս իւ-րեանց :

Կառավարութիւն տենդից ընդհանրապէս :

Ապաքէն տենդքն ոչ այլ ինչ են , բայց եթէ ուժ-գնութիւն ինչ բնութեան յարձակեալ 'ի վերայ 'ի ձեռն ախ-տարծարծ և ապականեալ նիւթոց , որք լինին յուտե-լեաց և յըմպելեաց , 'ի ցրտոյ և 'ի ջերմութենէ , 'ի շատ և 'ի սակաւ աշխատանաց . 'ի քնոյ և 'ի սակաւ ննջելոյ , այլովքն հանգերձ . վասն որոյ պարտ և պատշաճ է , որոց կամին խնամ տանիլ ախտակրաց՝ նախ զգուշութեամբ քննել զպատճառս և զնշանս տենդից . և ապա գիտել և իմա-նալ զճանապարհն , զոր ինքն բնութիւն ընտրէ առ 'ի բաց վանել զնիւթս զայս ախտարծարծ , և նպաստամատոյց լինել ներգործութեան նորին . քանզի այսպէս են օրէնք մարդկային բնութեան՝ 'ի բաց մերժել յինքենէ , և 'ի դուրս վանել զայն ամենայն , որք վնասակարք լինին նորին առող-ջութեան՝ 'ի ձեռն հասմանց , որպիսի են միզելն , քիրտն , արտաթորութիւն որովայնի , թքանելն , փսխումն և այլն : Եթէ 'ի սկզբան անդ տենդից դուշակի կամ ճանաչի քաջ միտումն բնութեան , և ըստ այնմ նպաստ ընծայի նո-րին ներգործութեան , ոչ բնաւ յերկարաձգի ախտն . իսկ եթէ չիցէ հնար ճանաչել զայն , յայնժամ ախտն երկա-րաձգի , և լինի վտանգաւոր , և զայս փորձիւ իսկ ճանա-չեմք . քանզի ոմանք գլխոյ ցրտահար լինելոյ՝ ունին զա-մենայն նշանս տենդի , իբր արդէն սկսեալ . բայց եթէ նոքա պահպանեն զանձինս ջերմագինս , անդէն 'ի դոյզն ինչ պահու անհետ լինին նշանքն , և չմնայ այլ ինչ եր-կիւղ վտանգի :

Ո՛չ են մեր կամք աստանօր մտանել 'ի նրբագոյն քննութիւն բնութեան , այլ միայն ցուցանել կամիմք զսկզբունս , զկանոնս , զիսկական պատճառս , և զնշանս տալ քաջայայտ՝ 'ի ձեռն որոց մարթ է 'ի վեր արկանել զկառավարութիւնս , և զդարմանս տալ ճահողականս և պիտանականս ախտակրաց . որպիսի են ժուժկալութիւն որկորոյ , դեղորայք , ըմպելիք , օդն , և այլն , ըստ այլևայլ յատկութեան տենդից . որպէս

զի 'ի նշխու պահեսցի ներքին տրամադրութիւն հիւթոյ և գործարանաց. որում զհետ գայ առողջութիւնն խնդրեալ:

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

*'Ի վերայ ընդհանուր փենդերց, զոր Իտալացիք կոչեն՝ Ֆէպպրէ ինթէրմիթթէնթի, կամ Ֆէպպրէ փ'տուլճէօ:*

Այնքան որք քաղցայսոյ ճանաչէ և զանազանէ զայստսիկ տենդքս յայլ ամենայն տեսակաց տենդից. և դեղորայքն, որք սովորաբար 'ի կիր արկանին 'ի դիպուածս այսց ախտից, յոյժ և ծանուցեալ են առ ամենեսեան: Գիտել արժան է, զի տենդն ընդհանուր կայանայ յառաւել ևս խմորման արեան՝ նախ 'ի ցուրտ, և յետ այնորիկ 'ի ջերմութեն, որում յարակից է հոտումն քրտանց: Իսկ զանազան տեսակք ընդհանուր տենդից են՝ օրըստօրեայ, եռօրեայ, քառօրեայ, և այլն. և 'ի սոցանէ ծնանին և որոշին միանգամայն տենդքն 'ի գարնանայնն, և յաշնանայինն: Կան նաև այլ տենդք, որք 'ի հինգ՝ 'ի վեց՝ յեօթն կամ յութ ամիս միանգամ պատահին, որպէս տեսաւ 'ի վեր անդր, և դառնին 'ի կարգս ընդհանուր տենդից. որովհետև սոցա կառավարութիւն և դեղորայքն համանման են ընդ նոցա:

*Պատճառք ընդհանուր փենդերց:*

Սկզբնական պատճառք ընդհանուր տենդից համարին վնասակար գոլորշիք, որք տրտաքս ցնդին 'ի նեխեալ և յանշարժ մնացեալ ջուրցն. և ճշմարտութիւն քաղցայսոյ երևի և հաստատի յայնմանէ, զի 'ի բնակութիւնս և 'ի գաւառս՝ ուրանօր ընդդէմ ջուրս անհրևոյ և լճաց, տենդ և յաճախ պատահի ախտս: Դարձեալ՝ յանքարեխառնութէ, որ լինի 'ի գծուարամարսելի կերակրոց, 'ի տհաս պտղոց, 'ի խոնաւագոյն օդոց և բնակութեց, 'ի կարի և 'ի սակաւ քնոյ, 'ի շատ և 'ի սակաւ աշխատանաց, 'ի ցօղոյ գիշերայնոյ, և 'ի սօթոյ տունջեան, և յաճախ պակասութէ առողջարար պարենից: 'Ի քուն լինելն 'ի վերայ դէձ գետնոյ, խռովելն, և շարժելն կրից և այլն, կարեն պատճառել զտենդս զայս ընդհանուր. և 'ի մի բան բովանդակեալ, այն ամենայն որք թուլացուցանեն զներքին գործարանս, և նուաճեցուցանեն զշոգիս

մարմնոյ, որով ներքին չափակցութիւն կամ բարեխառնութիւն այլայլի, պատճառեն զտենդս զայս ։

Նշանք ընդհատ տենդից ։

Տենդքս այսոքիկ սկիզբն առնուն 'ի ցաւոց գլխոյ, միջաց և երիկամանց, 'ի թուլութէ զօրութեանց ջղաց և բոլոր մարմնոյ, 'ի սառել սառել յօրանջելոյ հանդերձ իւրք տարաամութբ̃, և անձկութբ̃, եւս ձգտմամբ, և երբեմն եւս 'ի փսխելոյ. և զկնի այսոցիկ ամենայնի 'ի վերայ գայ դողդողջումն սաստիկ և դժնդակ, և իսկ և իսկ թուլացեալ աւելչելեան անօթոցն և մորթոցն՝ քիրտն հոսէ յորդութբ̃ ։ Բայց պատահի երբեմն, զի տենդքս այս փութով փարատին, և անհետ լինին. մինչև համարիլ ախտակրին սատեալ զկատարեալ առողջութիւն. բայց հասարակօրէն այս պատահի 'ի թմբրութէ, 'ի կորուսմանէ ախորժակի, և վերոյիշեալ նշանաց ։ Միւսն 'ի սոյն նշանացն, որք յատկապէս գուշակեն զտենդս զայս, է գոյնն միզի ախտակրին, զոր 'ի դուրս հոսէ 'ի նմին պահու, մանաւանդ զկնի քրտանց, և լինի պղտոր կարմրագոյն 'ի գոյն կղմնտրի ։ 'Ի սկզբան սոյն ջերմութեան զարկ բաղկին հարկանէ մանր, խիտ, կամ խուչ, և սաստկ. ապա լի, բուռն, և յաճախ. հուսկ յետոյ թոյլ, յամր կամ յուշիկ. 'ի վախճանի ուժեղ և միօրինակ. որ է ընթացք բնական ։ Անմիջապէս զկնի ցրտոյն տենդոտն զգայ զջերմութիւն ուժգին. բայց երբեմն եւս զգայ նախ զջերմութիւն. և ապա զցրտութիւն, որում զհետ գայ և ծարաւ սաստիկ, չորութիւն լեզուի, և քիրտն յորդառատ ։

Կառավարութիւն և դարմանք 'ի նիր արկանելի 'ի տեղական ընդհատ տենդից ։

'Ի յարատև մնալ ջերմութեան՝ օրէն է ըմպել տենդոտից զջուրն գարւոյ կամ ավէնաի, և կամ սերէտ անլաթթէ առանցխաթօ, որ է չիճուկն կաթին բաղադրեալ ընդ հիւթոյ նարնջոյ. կամ նաև զթթմոցն երեցկի ։ Իսկ եթէ զգայ և զփուք, 'ի վար արկանել պարտ է զչիճուկ կաթին՝ յաւելլով 'ի նոյն փոքր ինչ գինի ախորժելի. և նոյնչափ հիւթ կիտրոնի ։ 'Ի միջահատեալ աւուրս, յորս տենդն հանդարտեալ կայ, պարտ և պատշաճ է տենդոտից պահպանել զանձինս իւրեանց թեթև և դիւրամարսելի կերակրեղինօք, որպիսի է արգանակն ոլթու,

հաւուս, և քրէմօռ տի ավէնա՝ սակաւ ինչ գինեաւ, և այլն: Դարձեալ, արժան է տալ նմա ըմպել և գոյզն ինչ դառնահամ հեղուկ, յորում արկեալ իցէ երիցուկն կամ օշինդրն, և կամ Թրիֆօլիօ բալուսթաէն. մարթ է և ըմպել սակաւ ինչ գինի թեթև՝ յոր իցէ արկեալ արմատն ճենձիանայի, կամ չէնթաուռէա մինօռէ, և կամ որպիսի և իցէ այլ դառնահամ բոյս: Դարձեալ, հարկ է առնել շարժումն ըստ առնելոյ կարողութեան անձանց, եթէ ամառն իցէ՝ հեծանել 'ի ձի և երթալ 'ի զբօսանս և այլն: Եթէ անձինքն չիցեն զգածեալք և ըմբռնեալք 'ի չարագոյն ինչ ախտէ, եթէ օդն բնակութեան նոցին իցէ չոր և առողջարար, յայնժամ ոչ ունին պէտս նպաստաւորից դեղորէից, այլ միայն անձնապահ լինելով սատարեն զառողջութիւն ապահովապէս: Իսկ եթէ օր քան զօր նուազեսցի զօրութիւն մարմնոյ, և ջերմութիւն հասանիցէ յայն աստիճան սաստկութեան, մինչև երկնչել 'ի վերայ կենաց անձնորդաց, յայնժամ անյապաղ պարտ է դիմել 'ի դեղորայսն:

Խնամատարութիւնք և դարմանք 'ի վերայ ընդհատ տենդից 'ի չափահասս:

'Ի դիպուածս տենդին՝ նախ քան զամենայն պարտ է փոյթ մեծ ունել 'ի մաքրել զառաջին ճանապարհն, մանաւանդ եթէ իցէ լեզուն աղտեղի և դեղնագոյն. և այս դեղորայքն լինին ներգործիչք և ապահովականս 'ի վար արկանելիք. որովհետև 'ի դիպուածս յայս ստամոքն հասարակօրէն լինի բեռնաւորեալ և ապականեալ խժալին մաղասով, աղիւս և սուր մաղձիւ, և այլ մնացականօք հիւթովք. և բաղում անգամ պատահի՝ զի հիւանդն ժայթքէ կամ որձայ առաւօտէն զմաղձս. և այս գուշակ, մանաւանդ ուժգնութիւն բնութեան ցուցանէ բաւականապէս զհարկաւորութիւն որձացուցիչ դեղոց, որք են առաջին և գլխաւոր դեղորայք: 'Ի մէջ ամենայն որձացուցիչ կամ փսխեցուցիչ դեղորէից առաւել բարեգոյն և պատշաճագոյնքն վասն այսր տենդի են՝ Թարթարօ էմէթիքօ, և Իբէքաքուանան: Թարթարօ էմէթիքօ եթէ կամիս տալ, առ՝ նել. առի՛կ զնուրբ փոշի դեղոյս ըստ կշռոյ երկու ցորենոյ՝. 'ի վեց ունկի հասարակ ջրոյ. (և ջուրն պարտի լինել 'ի յքտհանէ եռուցեալ:) Յըմպելւոյ տալի յերիս ժամս միանգամ առնու հիւանդն գրգալ մի սեղանոյ՝ առ իւրաքանչիւր նուագ. մինչև պատճառեսցի փսխումն, կամ

լուծումն որովայնի, և կամ քիրտն. և իբրև սկսանի դեղս այս ներգործել ընդ բերանն, յայնժամ օրէն է խափանել զգործածութիւն, և տալ տեղ տեղ հիւանդին զջուր գաղջ, որ եռացուցեալ իցէ երիցկաւ. այս կերպս է յոյժ պատշաճագոյն և անվնաս ախտաժետաց: Բայց հայցեցեալ 'ի չափ հասակի ախտակրին, պարտ է երբեմն նուազել, և երբեմն առաւելուլ զքանակութիւն ործացուցիչ դեղոյ: Իսկ եթէ իցէ իպեկաքուանան, պարտ է լինել երեսուն կամ քառասուն կշիռ ցորեան՝ վասն միոյ չափահասակի. այլ իբրև սկսանի փսխումն, յայնժամ պարտ է նոյնպէս առատօրէն ըմպել զխաշուն երիցկի՝ ըստ վերոգրեալ օրինակին: 'Ի դիպուածս ընդհատ տենդի՝ պատշաճ է տալ զփսխողականն երկու կամ երեք ժամ յառաջ քան զվերադարձումն ջերմութեան, և ըստ պահանջման հարկի մարթ է կրկնել զնոյն փսխողականն. 'Ի դիպուածս օրըստօրեայ տենդի՝ յերկրորդում աւուրն: Իսկ 'ի դիպուածս գարնանային և աշնանային ընդհատ տենդից՝ երկու կամ երեք աւուրբ զկնի: Փսխողականքն բաց 'ի մաքրելոյ զստամոքսն, շարժեն միանգամայն զգեղձ մարմնոյ, դիւրապատրաստ յօրինեն զարտաշնչութիւն մաթոյ մարմնոյն, առաջնորդեն 'ի լաւագոյն մարսողութիւն կերակրոց, թուլացուցանեն զուժգնութիւն բնութեան և սովորաբար առանց իրիք նպաստաւորութեան այլոց դեղորէից՝ առողջացուցանեն զախտակիրն:

'Ի դիպուածս ընդհատ տենդից ոչ միայն օգտաւէտ և վայելուչ է երբեմն գործածութիւն լուծողական դեղորէից, այլ միանգամայն և հարկաւորապէս պահանջին. վասն որոյ պարտ է 'ի վեր արկանել զլուծողականս, եթէ զկնի փսխողականացն ախտակիրն տակաւին բաց 'ի ջերմութէ զգայ զանհամութիւն բերանոյ, զանախորժակութիւն, զցաւ երիկամանց և միջաց, և զանհանգստութիւն սրտի և կրծոց, և այլն: Բայց որովհետև քաջայայտ ցուցաք, եթէ 'ի դիպուածս յայս փսխողականն է յոյժ պատշաճագոյն և շահաւէտ, իսկ լուծողականն սակաւ, և երբեմն կարևոր, նմին իրի եթէ ախտակիրն զգայ զվերոյասացեալ նշանսն, պարտ է յայնժամ 'ի վեր արկանել զհեշտագոյն լուծողականսն, առ 'ի մաքրել զփորոտիսն 'ի միջահատեալ աւուրս ջերմութեան, կամ ութ ժամ յառաջ քան զգալուստ ջերմութեան: Ա՛ռ 24 կշիռ ցորեան շիարաքաս լուծեալ 'ի փոշի մանրամաղ, և տրամ մի խաշնդեղ, խառնեալ եռացոյ վեց ունկի ջրով, և յաւել 'ի նոյն երկու տրամ սալ տի կլաւպեռ, և մատո հիւանդին 'ի

թեն նորին մինչև 'ի հաւասարն և 'ի կատարեալ բուժումն ախտից կամ տենդից ։ Բազումք 'ի կիր արկանեն զքինան ցայն վայր՝ մինչև տեսանեն նշան ինչ փարատելոյ ջերմութեն, և յետ այնորիկ 'ի բաց թողուն. և զկնի քանի ինչ ժամանակաց վերստին գտանեն 'ի նոսա տենդն սաստկագոյն և գժնդակագոյն իմն եղանակաւ ։ Բարեգոյն և առաւհական եղանակն առ 'ի խափանելոյ զկերպադարձ տենդից, է յարատևելն 'ի գործածութե սակաւամասնեայ քինայի ժամանակս ինչ, եւս և զկնի փարատելոյ, և զադարելոյ նշանացն ։ 'Ի նոյն իսկ ժամանակի գործածութե քինայի. մարթ է տալ հիւանդին զհետագայ թանձրանիւթս ։ Ա՛ռ մի և կէս ունկի՝ սուկօ տէլլէ ֆօլիէ տի թառասսաքօ, և սուկօ տի ֆումմօսթէռնօ, կամ չիքօրիա, այլև նոյնչափ՝ սուկօ տի քռէսչիօնէ, կամ պէքքապունկա. և սուկօ տի չէռֆօլիօ. ա՛ռ և երկու տրամ՝ սալ տի ինկիլթէռռա, և մի տրամ՝ ռապառպառօ ։ Զամենեսին զառատ պարտ է ճմլեալ 'ի միասին յանկանել՝ զանգել բարւոք ընդ միմեանս, մինչև լինել մի բաղադրութի, և տո՛ւր ըմպել հիւանդին երկու անգամ յաւուրն 'ի պահ առաւօտուն՝ խառն ընդ սկահակ մի արգանակի մսոյ, որ թեթևապէս լուծէ զորովայնն, լուծանէ զխցանս լերդի, փայծեղան, և այլ ընդերաց. զօրացուցանէ զստամոքսն, և նպաստամատոյց լինի առողջութե. և զայս պարտ է 'ի վար արկանել մինչև ցհինգ և ցվեց օր ։

'Ի դիպուածս յորում տենդն ընդհատ՝ լինի խառամբակ յամառեալ, և իբր անփարատելի, յայնժամ քինայն պարտի լինել առաւելագունակ ։ 'Ի սոյն կարգ դասին և դեղորայքն կոչեցեալք յիտալացւոց՝ ֆեպպրիֆուկի, այսինքն ջերմահալածք. որպիսի են՝ աքօւցա տի քամմէթակնօ ա' ինտիա, կռասցիօլա, սալէ տի սպիկօ սալվաթիքօ ։ Զորօրինակ. ա՛ռ ունկի մի՝ աքօւցա տի քամաթակնօ տի ինտիա փոշխացուցեալ, 40 կշիռ ցորեան՝ կռասցիօլա բռէպառաթա, և մի տրամ՝ սալէ տի սպիկօ սալվաթիքօ, և բաւականաչափ չիրօպպօ տի ֆիօռ տի բէսքօ, խառնեալ զանգեսցես զամենայն 'ի միասին, և արա՛ մածուն ։ 'Ի մածունէ աստի յերիս ժամս միանգամ առցէ տենդառն մշկահիւս ընկուզաչափ առ իւրաքանչիւր նուագ, բայց 'ի ժամէն յորում 'ի վերայ գայ ջերմութիւն ։ Բաց 'ի սոցանէ և 'ի սոցին նման դեղորէից, երկար փորձառութե̃ ուսայ ես զնշանաւոր զօրութե դեղոյ միոյ, որ բաղադրի այսպէս ։ Ա՛ռ չորս ունկի 'ի ցքահանէ եղուզեալ ջուր անանխոյ, և քսան չէթ լաւտանօ լիգուիտօ,

և մի՛ ունիցի չերմոտս տի քնանիցէ ։ 'Ի հեշտամարսականաց տա-տի հինգ ժամ յառաջ քան զդողալուստ տենդին տացէ տենդոտին ըմպել մի սեղանոյ առ իւրաքանչիւր կէս ժամ, մինչև լցի տասն գդալ յաւուրն, միայն թէ կրկնելի է այդ գունէ մինչև 'ի հինգ օր ։ և տեսցի օգտութիւն սորա մեծ 'ի կազդուրել զթուլութիւն ջղաց և ստամոքսին, 'ի խափանել զդողդողութիւն քրտանց, և 'ի փարատել զտենդս յամառեալս ։

'Ի դիպուածս երօրեայ, քառօրեայ և հինգօրեայ տեն-դից, որք ստէպ պատահին 'ի վերջին աշնան և 'ի սկիզբն ձմեռան, յայնժամ դառնահամ և համեմային դեղ-որայքն են յոյժ պատշաճք և կարևորք ։ որպիսի են՝ ձեն-ցիանան, կեղև նարնջոյ, կոճապղպեղն, սպիտակ կինա-մոնն, սեռպէնթարիա վիրճինիանա, և կամ որպիսի և իցէ այլ ինչ ջերմահամ և խթիչ արմատ ։ Իսկ 'ի դի-պուածս յորում ջերմութիւն լինի յաճախակի և կարի ուժգին, յայնժամ առաւել օգտակար և պատշաճագոյն է 'ի գործ արկանել սալէ տի թարթարօ՝ փոխանակ մե-ղայքրեալ համեմոց ։

Յորժամ ընդհատ տենդքն ոչ լինին կատարելապէս և խաղաղ բուժեալք, բազում անգամ փոխարկին յախտ ջրգողութիւն, դալկանս ։ եւն ։ վասն որոյ փոյթ մեծ ունել պարտ է առ 'ի վար արկանել զամենայն հնարս կարելիս՝ մինչև արմատաքի խլել զայն ներքսապէս նախ քան զա-պականիլ հիւթոց և եղծանիլ խառնուածոց ։ Արդարև տեսանք 'ի դիպուածս ընդհատ տենդից 'ի կիր առնուլ զեփ-ջոցս և զհնարս գիմամարտս, որպիսի են՝ ըմպել զոգի-ւոր հեղանիւթս, ընկենուլ զտենդոտն 'ի գետ կամ 'ի ջուր ցուրտ, եւն ։ այդպիսի հնարք երբեմն կարեն օգտա-կար լինել, բայց միշտ են վտանգաւոր, և բազում ան-գամ եւս մահաբեր ։ մանաւանդ եթէ տենդոտն զգածեալ իցէ ուրեք բորբոքմամբ, և կրեսցէ զերկիւղ մեծ ։ Ականա-տես եղաք միանգամ երագահաս մահուան ուրուք տա-ռապանի, որ էառ զոգիւոր հեղանիւթս ինչ 'ի դի-պուածս ախտին՝ խորհրդով ումանց անձանց, առ որս համարեալ էր հեղանիւթն այն իբր դեղ անվրիպելի ։ Գոն և այլ բազում դեղք զզուականք, որպիսի են ոջիլք, մլուկն, թելք սարդի ոստայնից, գոռեխն, տունկն, եւն ։ որք թէպէտ իբր հրաշապէս երբեմն ապաքինեն զտենդս, բայց հասարակօրէն այդ օրինակ ապաքինելոց անձանց ստէպ ստէպ վերադարձ պատահէ ։ Սեպհական և ան-վրէպ ներգործիչ դեղն 'ի դիպուածս ընդհատ տենդից՝ է

քինաքինա. և ստուգիւ համառօտեալ վկայեմ, եթէ քանիցս անգամ կարեւոր զգուշութ. և 'ի պատշաճաւոր ժամանակի 'ի գործ արկի զդեղս զայս, միշտ եղև օգտակար, և ոչ բնաւ վնասակար:

Պատուիրութիւնք և դարմանք 'ի վերայ ընդհատ տենդից 'ի տղայս և 'ի մանկունս:

Դժուարին իմն է ապաքինութիւն փոքրիկ անձնաւորաց մանկանց և տղայոց, որովհետև ոչ ուրեմն և հազիւ երբեք մարթ է տալ նոցա ըմպել զքինաքինա, և զայլ դեղորայս և իցէ դեղս անախորժս. վասն որոյ արժան է պատրաստել զքինան շարապաննման՝ յաւելլով 'ի նոյն քանի ինչ կաթիլս եղիասիրուէ, կամ սրխուիծօ տի միթուիօլօ, որով բարեխառնի դեղն և համեղանայ. ուստի և լինի հեշտակաւ ըմպելի: Իսկ եթէ չիցէ հնարաւոր տալ նոցա զքինա, յայնժամ պարտ է 'ի վեր արկանել միսթուրաս աուլինա: Անեռօ տի լաթթէ մինօզօ եւս է ըմպելի իմն ազնիւ յոյժ և պատշաճագոյն մանկանց 'ի դիպուածս ընդհատ տենդից. յորոյ վերայ մարթ է յաւելուլ եւս փոքրիկ գրգալ մի սրխուիծօ տի քօռնօ տի չէռվօ: Դարձեալ փոյթ ունել պարտ է տալ նոցա ուտել շարժումն, որ լինի յոյժ օգտակար: Կերակրոցն պարտ է լինել սնուցիչ և սակաւաքանակ, և երբեմն երբեմն մարթ է տալ սակաւ ինչ ազնիւ գինի:

Յորժամ մանկունք ոչ լինիցին կարող ընդունելոյ զքինան, յայնժամ պարտ է գրեխ պատրաստել նոցա յեռանգայ եղանակաւ, զոր 'ի կեր անկանել մարթ է եւս չափահասից: Առ կէս ունկի ազնիւ քինա, և եռացո զայն չորս ունկի ջրով, յոր յաւել կէս ունկի՝ իւղ քաղցր նշոյ, և վեց կամ ութ չիթ լաւտանօ լիգուիտօ. և զգրեխս զայս 'ի գործ արկ 'ի չորս ժամու միանգամ, կամ եւս առաւել յաճախ ըստ պահանջելոյ հարկին: Ոմանք 'ի մանկանց գտին զառողջութիւն 'ի դիպուածս տենդից, անդէրով ընդ մէջս զգօտի իմն, յորոյ միջի պարունակեալ կայր քինա փոշիացուցեալ:

Հնարք 'ի ներարկանելիս 'ի դիպուածս ընդհատ տենդից:

Հնարք շահաւէտք և օգտակարք 'ի դիպուածս անսուաս են հրաժարիլն 'ի պատճառացն՝ յորոց յառաջ գայ տենդս, զորոց լինելին խօսեցաք 'ի վեր անդր: Բայց կա-

ըւոր և օրինաւոր համարիմք աստանօր ևս յաւելուլ ըղ-
կերպ երից դեղորէից, զոր օրէն է 'ի վերայ արկանել նոցա,
որք բնակեն 'ի խոնաւ և 'ի մթասաստեր օդոց միճակեալ
տեղիս, և ևս նոցա, որք բազում անգամ գրգռեալ առեալ
են այսր տենդի. Ա՛ռ ունկի մի՝ ազնիւ քինա, կէս ունկի՝
սէրպէնթառիա վիրճինիանա, և նոյնչափ կեղեւ նարն-
ջոյ: Զամենեսին զատ զատ մանր է լաւել յանկանի, և դը-
նել թրմոց 'ի քսեստ մի օղի զաւուրս հինգ կամ վեց. ա-
պա քամեալ զայն կտաւով յանօթ ապակեայ, և 'ի գործ
արկ երկուս կամ երիս բաժակս յաւուրն:

Է և այլ դեղ՝ որ սաստկոյ զգաղակելոյ ատաւելու զօժ-
ատամնաքսին և չլլայն, որք զանգաղ զատանեն. այն է Թիկ-
Թուաս ակի քինա ունել՛ սուզամ՛. որ այսպէս բաղադրի:
Ա՛ռ ունկի մի՝ ազնիւ քինա, վեց դրամ՝ կեղեւ նարնջոյ,
մի և կէս ունկի՝ սէրպէնթառիա վիրճինիանա, և քսան
կշիռ ցորեան քօշէնիլիա: Զայս ամենայն մանրեա՛ 'ի
մէջ անկանի, լից յանօթ ապակեայ, և դիր թրմոց 'ի
լիտր մի ջրի, կամ այլ գինւոյ զաւուրս երիս կամ չորս.
և յետոյ քամեա՛ զայն ընդ կտաւ: 'Ի հեղանիւթոյ աստի
առցէ հիւանդն երեք անգամ յաւուրն՝ զկշիռ երից ուն-
կեաց: Իսկ նոքա որք ոչ կամին զգործածութիւն ջրւոյ կամ
օղւոյ գինւոյ, կարեն 'ի տեղի այնոցիկ 'ի կիր առնուլ
զազնիւ գինի:

Եւ եթէ ոք ընդ բազում ժամանակս կրեալ է զայս-
պիսի տենդ, յայնժամ փոխանակ սոցին մարթ է Է առ-
կաւ ինչ եօթնեակս 'ի գործ ածել զհետագայ հեղա-
նիւթս: Ա՛ռ երկու ունկի՝ էնուլա քամփանա, և նոյնչափ
քալամօ առօմաթիքօ, և մի ունկի՝ չէնթաուռէա մինօ-
ռէ, և երկու ունկի խարտուծս երկաթոյ: Զայս ամենայն
լաւելով 'ի մէջ անկանի մրկ յապակեայ անօթ, և դիր
թրմոց 'ի յերկու քսեստ ազնուակ գինի զաւուրս չորս.
ապա հեղ զգուշութեամբ զհեղուկն յայլ ապակի անօթ,
այնպէս զի մի խառնեսցի մրուրն ընդ պայծառ հեղանիւ-
թոյն. և առեալ ըմպել հիւանդին երկու անգամ յաւուրն՝
Է չափու երկուց կամ երից ունկեաց: Զնոյն առաւելու-
թի մարթ է ստանալ ծամելով 'ի բերանն զպարմանդ Ճէն-
ցիանայի, կամ քալամօ առօմաթիքօ, կամ զքինա, ևն:
Ամենայն դառնահամին դեղորայք, մանաւանդ որք բնութեամբ
են խեթիչ՝ են յոյժ օգտակար 'ի դիպուածս ընդհատ տեն-
դից:

## ՅՕԴՈՒԱԾ Գ.

'Ի վերայ չարաչար տենդից, զոր Իտալացիք կոչեն Ֆէպպրէ բէռնիչիօզա։

Տենդս այս չարաչար՝ է անուն ինչ դժնդակ և իւր թիւնաւոր ; յարգէ ընդհատ տենդից, որ սովորաբար առաւել տիրապետէ յաշնան՝ քան յայլ եղանակս տարւոյ։ Առաւել գտանի ախտս այս յեւրոպիա, և յայլ նահանգս ինչ Իտալիոյ, մանաւանդ 'ի տեղիս ցածագոյնս և գէճս, և այն առաւելապէս 'ի գիւղականս, որք բնակեն յայգայիսի գիճագին վայրս ; և սնանին դժուարամարսելի կերակրեղինօք։ Չիք տենդ ինչ այնքան շուտափոյթ մահահրաւէր իբրև զտենդս զայս. որ և բազում անգամ 'ի միջոցս քանի և չորից ժամուց, կամ յերկուս և յերիս աւուրս սպանանէ. յայն սակս պատշաճ վարկաք տենդ չարաչար անուանել։ Երկոտասան են տեսակք այսր տենդի, որք զանազանին 'ի միմեանց անուանադրութ., երևութիւ, նշանաւ, այլովքն հանդերձ. զորս մի ըստ մի տեսցես բացատրեալ յառաջիկայդ։

Առաջին տեսակն կոչեցեալ յիտալացւոց՝ Ֆէպպրէ բէռնիչիօզա քօլէռիքա, այսինքն տենդ չարաչար և լեղագին, որ պատահի յանբաւեխառնութենէ և յառատութենէ սուր և ապականեալ մաղձից և այլ հիւթոց, յանմարսութենէ, և 'ի կերակրոցն, որք դիւրաւ թթուին 'ի ստամոքսն. որպիսի են կաթն, ճարպն մսոյ, քաղցրաւենիք, ձմերուկն, սեխն, կռուան, և այլ միրգք, որք են զով և թուլացուցիչ բնութ.։ Երբեմն ևս պատճառի յուժգին լուծիչ և ործացուցիչ դեղորէից, 'ի մշտատակար սննդոց, և 'ի թիւնաւոր դեղորէից մտելոց 'ի ստամոքսն, 'ի սաստիկ կրից և յերկիւղէ, 'ի ցրտութենէ, 'ի տօթագին ջերմութենէ, և 'ի թանչացաւութենէ։ Սա նախ բերէ սաստիկ լուծողութիւն ինչ 'ի վերուստ և ստորուստ, և ապա ուժգին ջերմութիւն 'ի ծագն ստամոքսի և աղեաց, անձկութիւն, ճնշումն կրծոց, կերկերումն ձայնի, և ծարաւումն. || Ականատես եղաք 'ի դիպուածս ախտիս հիւանդաց ոմանց՝ արտաքսել զերկիցս հարիւր անգամ 'ի մէջ քանի ինչ ժամուց ||. ակարանայ տեսութիւն աչաց ախտակրին. և եթէ այսպիսի լուծողականութիւն յարատևէ, ոչ է մարթ նոցա այլևս պատսպարիլ և սթափիլ։ Դարձեալ, ախտակիրն կրէ զծարաւ սաստիկ, և զարկն բազ-

կի լինի արտաք, մանր գաղտնագոյն, և անհաւասար. իսկ 'ի յարատև յառաջանալ ախտիս զարկն նուազի այնքան՝ մինչև լինի անզգալի. ծայրք անդամոց ցրտանան. 'ի վեր երևի ցուրտ քիրտն միայն յերեսս. մեզն լինի արգելական, և սակաւ սակաւ զգայ զդողդողջումն սրտի. ձեռք և ոտքն ցրտանան և փոխարկին 'ի գոյն կապոյտ. կրէ զոյգ ընդ ախտիս և զթալկութի, զուշագնացութի և զհեծկլտանք:

Այլ գիտել արժան է; զի 'ի դադարել ախտին՝ զոյգ ընդ նմին դադարին և վերոյիշեալ նշանքն բոլորովին: Բայց եթէ ախտն լինիցին Թափեալ իցէ զթոյն իւր, և արմատացեալ, յայնժամ լինի յոյժ վտանգաւոր և երկիւղալի, և աւելի քան զամենայն աղետալի է այն, յորժամ վերստին դարձ առնէ լուծողութիւն այլովքն հանդերձ: Դարման նորա են խմելիք սեղմիչ և խաղաղիչ դեղորայքն. որպիսի են՝ Ջուրն կինամոմնի կամ անանխոյ, լիգուօռէ անօտինօ, և լաւտանօ լիգուիտօ: Զոր օրինակ. առ երկու ունկի՝ Ջուր կինամոմնի, կամ անանխոյ. և երեսուն չիթ՝ լիգուօռէ անօտինօ մինէռալէ հօֆֆմաննի. յաւելլով 'ի նոյն 24 չիթ՝ լաւտանօ լիգուիտօ. և տուր ըմպել հիւանդին յամենայն ժամու մէն մի դրգալ սեղանոյ մինչև ցդադարումն ախտիս. Ըմպելին նք պարտի լինել Ջուրն խորովեալ հացի. եթէ գտանիցի առ ձեռն պատրաստ՝ օգտակարագոյն ևս է հացն վարսակի: Եթէ այսու նպաստիւք ոչ դադարի փսխումն և լուծումն որովայնի, յայնժամ օրէն է տալ նմա ժամէ 'ի ժամ երկու դրգալ սեղանոյ ձիւլապպէ տի սալինա. յորոյ վերայ պարտ է յաւելուլ 15 կամ 20 կաթիլ լաւտանօ լիգուիտօ: Նոյնպէս և օգտաւէտ է Թրմոցն երիցկի, և սփէռօ տի լաւԹէ մինօզօ ֆօռԹէ՝ առ 'ի պահպանել զոյժ ախտաւորին, և առ 'ի շարժել զարտաշնչութի մարմնոյ: Նոյնպէս և կարևոր և օգտակար է Թանալ զոտս ախտաւորին 'ի մէջ ջերմագին ջրոյ, և յետոյ բարուք չորացուցեալ ջերմ պատատաւ՝ դնել 'ի ներքանան տոտից զՋերմ կղմինտրս: Իսկ եթէ կիրառութ այսոցիկ դեղորէից չիցէ հնար առնալ զտենչացեալ ներգործութի և զօգուտն, յայնժամ պարտ է տալ ախտաւորին վեց անգամ յաւուրն ընկուզաչափ զհետագայ դեղն: Առ երկու տրամ՝ սալ տի սօտա, զոր մարթ է լուծանել բաւականաչափ հիւԹով կիտրոնի՝ յաւելլով 'ի նոյն տրամ մի էԹէռէ. երկու տրամ՝ ԹինԹուռա տի սուչչինօ, չորս տրամ՝ քօնֆէ-

ցիօնէ Ճիպչինթինա, և նոյնչափ՝ շաքար սպիտակ և մաքուր :

Ընդ այսոցիկ գիտել արժան է, զի զինի դադարմանն տենդիս պարտ և պատշաճ է փոյթ ընդ փոյթ ձեռնամուխ լինել 'ի գործածութիւն քինա քինայի առ 'ի խափանել զվերադարձումն այսպիսի գժնդակ և դաժանագին տենդից : Ցայսպիսի գիպուածս օրէն է լոյծ պահել և զորովայնն սովորաբար 'ի ձեռն թեթև դեղօրեաց՝ յօրինելոց երիցկաւ, և այլ խիթից գեղորէիւք : Կերակուրքն պարտին լինել սնուցիչ և կարի սակաւ քանակութբ̄, և չափաւոր ինչ շարժումն է ևս շահեկան :

Երկրորդ տեսակն կոչի յիտալացւոց՝ Ֆէպպրէ բէռնիչիօզա տիսէնթէռիքա. այսինքն տենդ չարաչար խառն ընդ արիւնային փորհարութեան : Պատճառք սորա գրեթէ նոյն են ընդ պատճառաց չարաչար և դաժանագին տենդի. որպէս աւանդեցաւ վերագոյնդ : 'Ի գիպուածս սաստիկ հասարակօրէն զուգընթաց լինի ջերմութիւն ուժգին, արիւնային փորհարութիւն, խիթք որովանին, սաստիկ ցաւ ստամոքսի և սորբին որովայնի, նողկանք սրտի, և հեծկլտանք. լեզուն լինի չոր և խիստ, մէզն թանձր և քրքմագոյն, զարկ բազկին լինի մանր և արագ. կղկղանքն 'ի սկզբան անդ լինի մաղձագոյն, ապա մաղասային, հուսկ յետոյ արիւնային. երբեմն ախտակրին բանութբ̄ շարժի 'ի փսխել. այլ 'ի դադարել տենդի՝ զչդդ ընդ նմին անհետ լինին և նշանքն : Իսկ եթէ տենդս այս երկք կամ չորս անգամ դարձ առնէ մի զինի միոյ. ոչ է մարթ ախտացելոյն այլևս պատսպարել և սթափել. որոյ դեղ է նախ՝ տիապքօռտիօ, կամ լաւտանօ լիգուիտօ. Ջուրն անանխոյ կամ կինամոնի. և ապա քինա քինա առատօրէն :

Երրորդ տեսակն կոչի՝ Ֆէպպրէ բէռնիչիօզա սուպքռուէնթա, կոչի և ըստ նախնեաց՝ Ֆլուսսօ էբաթիքօ. այսինքն հոսումն լերդական : Տենդս այս չարաչար՝ գուշակէ 'ի սոսկ սոսկ արտաթորմանէ մաղագոյն հեղթոց խառն ընդ կղկղանաց, հանդերձ նուաղմամբ սրտի, ցրտութբ̄ ձեռաց և ոտից, նուաղմամբ ձայնի, և տագնապաւ շնչառութեան : Դարձեալ՝ որպէս 'ի դիպուածս այլոց չարաչար տենդից, նոյնպէս 'ի դիպուածս յայս թուլանան զօրութիւնք ջղաց և բոլոր մարմնոյ. զարկ բազկին բազմէ մանր, և նուրբ. որոյ սեփական դեղ է քինա քինա, զոր օրէն է տալ առատօրէն : Այլ եթէ

տենդս այս վերակրկնէ, անվրէպ սպանանէ ։ Բայց երբեմն եւս դէպ լինի, եթէ ախտակիրն իցէ երիտասարդ, և վիճակեալ զօրեղ կազմուածոյ, զի յերկարատեւէ ախտն, և յայնժամ կոչի՝ քռօնիկքա ։

Չորրորդ տեսակն կոչի ֆէպպրէ բէռնիչիօզա քառտիպաքա ։ Տենդս այս չարաչար՝ ճանաչի 'ի սաստիկ ցրտոյ, 'ի ջերմութէ, ընդ որում զուգընթաց լինի և սրագոյն խռն ցաւ 'ի վերին ծագն ստամոքսի, 'ի սակաւ սակաւ ուշագնացութէ, 'ի տաղտկութէ, 'ի տժգունութէ դիմաց, 'ի հառաչանաց, 'ի հեւալոյ, 'ի կաղկանձմանէ, և 'ի փոքրիկ բաղխմանէ շնչերակին. որոյ դեղ է Ջուր կինամոնի, լաւտանօ լիգուիտօ, լիգուօռ անօտինօ. և այլ սոցին նման խմիչք և խաղաղացուցիչք գեղորայք ։ և յետ այսոցիկ քինա քինա ։ Գիտելի է՝ եթէ տենդս այս չորս կամ հինգ անգամ դարձ առնէ, անվրէպ սպանանէ ։

Հինգերորդ տեսակն անուանի 'ի նոցանէ՝ ֆէպպրէ բէռնիչիօզա էմէթիքա տէլ սօվաճօ, այսինքն չարաչար տենդ ործացուցիչ՝ գտեալ 'ի վերջին ժամանակս 'ի սօվաճօ բժշկէ ։ Սա նախ բերէ դողումն և ջերմութին սաստիկ, և ապա սակաւ սակաւ փսխումն, յարակցեալ 'ի նոյն ցաւ ստամոքսի, և ուժգին ծարաւ. որոյ դեղ նոյն է ընդ վերնոյն ։ Բայց եթէ զարկն լինի ուժեղ և լի, և 'ի վեր երևին նշանք եռացման, յայնժամ նախ պիտոյ է երակահատութին, և ապա 'ի կիր առնուլ զքինաքինա ։

Վեցերորդ տեսակն յորջորջի՝ ֆէպպրէ բէռնիչիօզա տիաֆօռէթիքա. այսինքն չարաչար տենդ քրտնաբեր ։ Սա նախ բերէ քիրտն յորդառատ, և ապա դողումն և ջերմութին ուժգին, զուգընթաց ցրտութեամբ անդամոց, և թուլութեամբ ջղաց և բոլոր անդամոց, և տագնապաւ շնչառութեն. մինն 'ի մեծագոյն վնասուց որ միշտ կից գտանի ընդ ախտիս՝ է արագումն տուրևառութեն շնչոյ, և հաշումն բովանդակ մարմնոյ, մանաւանդ մանրութին, արագութին, և անզօրութին զարկի բազկին ։ Երբեմն մարթ է 'ի դիպուածս այսորիկ տենդի ստանալ զապաքինութին, եթէ փոյթ ընդ փոյթ 'ի կիր արկանիցի քինա քինա 'ի սկզբան անդ տենդիս, բայց եթէ ախտն ժամանեսցէ յառաջիճան ինչ, հասարակօրէն անպտուղ և վայրապար լինի նպաստն քինա քինայի, և այլ ամենայն դեղորէից, և առաւել քան զամենայն վտանգաւորագոյն է այն, յորժամ վերադարձի տենդն ։

Եօթներորդ տեսակն կոչի՝ ֆէպպրէ բէռնիչիօզա սինքօբալէ, այսինքն չարաչար տենդ թալկացուցիչ ։ Սա

դուշակէ 'ի յաճախակի թալկացմանէ, որ 'ի դոյզն ինչ շարժմանէ ծնանի նուաղումն սրտի. դողումն և ջերմութիւն որ զուգընթաց լինի ընդ տենդիս այսորիկ՝ երբեմն լինի առաւել, և երբեմն նուազ. զարկ բազկին հարկանէ արագ, մանր յոյժ, և նուրբ. քիրտն 'ի վեր երևի միայն 'ի ճակատն և 'ի պարանոցն. աչքն տկարանայ, և մթագնի. և եթէ ոչ աճապարեալ փութով դարմանեսցի, մեռանի անվրէպ. որոյ դեղ է հաստատել զեղս զօրացուցիչս և սթափիչս, որպիսի են՝ մելիսաէ. լիգուօռ անօտինօ, ևն. արբուցանելով առէպ քինաքինա:

Ութերորդ տեսակն ասի՝ Ֆէպպռէ բէռնիճիօզա ալճիդա. այսինքն չարաբար տենդ սառուցիչ: Սա ճանաչի 'ի սաստիկ գողդողմանէ և 'ի ցրտոյ. իբր զի թէ ոք ըմբռնեսցի յախտէ յայսմանէ, առ ժամայն ամենայն անդամք մարմնոյն ցրտացեալ սառին, մինչև լինել իբր զի այլագունեալ գլխովին. զոր յայն սակս կոչեն տենդ ցրտասառոյց. և ցրտութիս այս յարատևեալ մնայ մինչև ցաւարտ տենդին՝ առանց ջերմանալոյ ամենևին. առհասարակ զուգընթաց լինի և ծարաւ ինչ ուժգին, չորութիւն և կարծրութիւն լեզուի, և կերկերումն ձայնի; 'Ի վախճան տենդիս, (եթէ կեցցէ ախտակիրն) 'ի վեր երևի ջերմութիւն ինչ թեթև, և տարածանի 'ի զանազան մասունս մարմնոյն՝ մանաւանդ 'ի ծայրսն. և յայնժամ օրէն է իսկ և իսկ ձեռնամուխ լինել 'ի գործածութիւն քինաքինայի առ 'ի արգելուլ զվերադարձումն չարաբար տենդիս այսորիկ:

Իններորդ տեսակն անուանի՝ Ֆէպպռէ բէռնիճիօզա բլէուռիթիքա, այսինքն տենդ չարաբար կշտային. զոր մարթ է ճանաչել 'ի ցրտոյ, 'ի սարսափոյ, որում զհետ գայ ջերմութիւն, պտոյտ գլխոյ, նուաղմունք սրտի, փսխումն, և ծարաւ սաստիկ: Եւ զկնի այսոցիկ հիւանդն զգայ զցաւ ինչ ուժգին և խայթիչ 'ի մի կողմն կրծոց կամ 'ի կուշտն, մանաւանդ 'ի վայրկենի՝ յորում ախտակիրն հազայ: Զարկ բազկի լինի արագ, խիստ, և անկանոն, մէզն թանձր և մրրալից. կրէ հազ սաստիկ, և ցնորումն, և դժուարաշնչութիւն, որոյ դեղ նոյն է ընդ դեղոց բորբոքման թոքոց. և 'ի դադարիլ նշանաց՝ օրէն է իսկ և իսկ ձեռնամուխ լինել 'ի գործածութիւն քինաքինայի ըստ եղանակին՝ զորմէ նշանակեցաք 'ի տեղւոջ իւրում:

Տասներորդ տեսակն կոչի Ֆէպպռէ բէռնիճիօզա քօլիքա, այսինքն չարաբար տենդ խիթաւոր: Ախտս այս հասարակօրէն զոյգ ունի ընդ իւր զանհնարին խէթա սաորին որովայնի և արգանդի, զփքախտութիւն, զնող-

կանս, զանձկութիւն, զործումն, զչորութիւն լեզուի, և զսաս-տիկ ծարաւ : Զարկ բազկին լինի մանր և անկանոն. եր-բեմն ևս հոսէ զքրտինս ցուրտ. և դեղն՝ է դրեխ կակղա-ցուցիչ, ֆօմէնթա, արբուցանելով Թիւրակէս, լաւա-նս լեզուխոտ, և այլ դեղս խաղաղիչս. երբեմն մարթ է ևս երակ հատանել, եթէ կցէ զօրեղ և խիստ զարկն բազկին : Եւ զկնի դադարման տենդին՝ օրէն է փոյթ ընդ փոյթ 'ի կեր արկանել զքինաքինա առ 'ի խափանել զկր-կնադարձումն նորին :

Մետասաներորդ տեսակն սա՝ Ֆէպպրէ բէռնիչիօզա սօբօռօզա, այսինքն չարաբար տենդ Թմբրեցուցիչ, կամ քնաբեր : Յորժամ սկսանի ոք ըմբռնիլ յախտէս յայս-մանէ՝ լինի Թմբրեալ և ափշեալ, մինչև լինել իբր ննջեալ կամ արբեալ անզգայ գլխովն, կրելով զուշաբարձութ. երբեմն և զհետ գայ Թլուատութիւն լեզուի, և երբեմն հեծկլտանք : Եւ եթէ տենդս այս երկու կամ երեք ան-գամ դարձ առնէ, անվրէպ սպանանէ. որոյ դեղ է երա-կահատութիւն, լուծողական դրեխք, խարանադեղ, և այլ դարմանք որք պատշաճեն զսԹափութիւն : Եւ յետ դա-դարման տենդին օրէն է առատօրէն 'ի կեր արկանել քի-նաքինա :

Իսկ երկոտասաներորդ տեսակն անուանի՝ Ֆէպպրէ բէռնիչիօզա չիէքօա տէլ մօռենօ, այսինքն չարաբար տենդ կուրացուցիչ՝ գալով 'ի մօռանօ բէջկէ : Ըմբռնեալքն յախտս յայս լինին իբր կոյր, զոյգ ունելով ընդ-իւր զփորլուծումն, զկերկերումն, զզուռութիւն, զդողդո-ջումն, զանուժութիւն ձեռաց և ոտից, զանձկութիւն, զխող-կանք սրտի, զծանրութիւն և զցաւ գլխոյ, զփսխումն, զըղ-Թուլութիւն ջղաց և բոլոր մարմնոյն, զզնտորումն, զԹմբրու-Թիւն, զծարաւ սաստիկ, զպտտումն գլխոյ, և զԹախծումն : Զարկն բազկի հարկանէ նուազ՝ խիստ՝ և անզօր. և մէզն մրրալից, և Թանձր : Այլ 'ի դադարել տենդի՝ զոյգ ընդ-նմին դադարին և նշանքն բոլորովին. և դեղն՝ երակահա-տութի, լուծողականք, և խարանադեղք : Եւ յետ աւար-տելոյ զտենդն՝ 'ի կեր առնուլ զքինաքինա :

# ՅՕԴՈՒԱԾ Դ.

'Ի վերայ անընդհատ կամ շարունակ և սուր տենդի, որ ասի ցեփալալգոսոյ՝ Փլեգմոնէ մեմբրենաս ափսամա :

Տենդս այս անուանի սուր, այսինքն բորբոքիչ, և հասարակօրէն պատահի յերիտասարդութեան՝ հզօրեղագոյն փափկակեաց և արիւնոտ անձանց. և այս ծագի յըն-թացս ամենայն եղանակի, բայց առաւել յաճախակի 'ի գարնան և 'ի սկիզբն ամառան :

Պատճառք անընդհատ և սուր տենդի :

Սա պատճառի յայնմ ամենայնէ, որք գրգռեն զշըրջ-ջերակս, առաւելուն զշրջանն արեան և ջերմացուցանեն զմարմինն բովանդակ, որով այլայլի ներքին բարեխառ-նութիւն, և ականաւոր գործողութիւնքն : Այսպիսիք են՝ մնասակար յաւելուածքն, դժնդակ աշխատանքն, ննջելն ընդ արեգակամբ, առատօրէն ըմպելն ոգելից հեղա-նիւթս, կերակուրք չափազանց և դժուարամարսելիք, և զկնի կերակրոցն չառնել ինչ շարժումն : Եւ ևս այն ա-նայն, որ նուաճէ և խափանէ զարտաշնչութիւն մարմնոյ, որպէս ընկողմանիլն 'ի վերայ խոնաւ գետնի, և 'ի բացօ-թեայս, խոնաւագոյն հողմունք, ըմպելն զցուրտ հեղա-նիւթս մանաւանդ զկնի քրտնելոյ, հսկումն ընդ գիշերն ողջոյն. ևն :

Նշանք անընդհատ և սուր տենդի :

Դիւրին և պարզագոյն իմն տենդն՝ ունի միշտ ընդ իւր անհամաձայն նշանս, որք վերաբերին մասնաւորապէս առ այլասեռ ախտս : Գլխաւոր նշանք տենդիս են՝ ընդ-հանուր ինչ ցրտութիւն, որում ապա զհետ գայ սաստիկ իմն ջերմութիւն և տապացումն, լրութիւն, խստութիւն և արագ արագ հարկանելն զարկի բազկին, չորութիւն մոր-թոյ, ոսկորոյ, շրթանց, և բերանոյ. սաստիկ ցաւն գլ-խոյ, միջաց, և երիկամանց, ևս ոսկերաց և մկանանց. և կարմրութիւն աչաց : Զկնի այս ամենայն նշանաց՝ 'ի վերայ գայ դժուարութիւն ինչ 'ի շնչառութեան, թուլութիւն ջղաց և բոլոր մարմնոյ. անձկութիւն սրտի, ճնշումն կրծոց, նուաղանք, յօժարութիւն 'ի փսխել, ծարաւ սաստիկ. ոչ

ընդունելի զհաստատուն կերակուրս, և բնաւ ոչ ննջէ, որովք առաւել ուժաթափ լինի հիւանդն. և հասարակօրէն լեզուն լինի կարծր և կարմրագոյն, և ունչքն չորագոյն. մէզն լինի ջերմագին, նուաղ, և կարմրերանգ. որովայնն պինդ, և քիրտն սակաւ և խժային: Նշանք առաւել յոռեգոյնք և վտանգաւորք՝ են ցնորումն, թրթռումն սրտի, ակամայ շարժումն մկանանց և ջղանաց, հեծկլտանք, քիրտն կարի խժային և թանձր և ցուրտ, և սառիլն ծայրից անդամոց են:

Խրատք և կառավարութիւնք 'ի վեր արկանելիք 'ի գնդուածոյ փենդիս:

Բայց որովհետև ախտս այս է վտանգաւոր, պիտոյ է փութապէս 'ի վեր արկանել զբարեգոյն նպաստս և զհնարս, և յոյժ ձեռնտու լինի հիւանդին, եթէ 'ի սկըզբան անդ բժիշկն կայցէ առ ընթեր: Իսկ եթէ թոյլ տան ախտիս հաստատիլ և յառաջանալ, յայնժամ ամենայն գիտութիւնք և ճարտարութիւնք բժշկին բազում անգամ լինին անօգուտ: Բայց 'ի գործածութեան վայրապար լինիմք յուսադիր 'ի նպաստս դեղորէից՝ յորժամ ախտն լինի անապաքինելի՝ պատճառաւ յապաղման և այլանդակ կառավարութեան, և ուժաթափ լինելոյ հիւանդին: Արդարև բժիշկք կարեն օգնական լինել բնութեան, բայց ձիգն և փոյթ նոցին լինի յարդիւնս՝ յորժամ բնութիւն չիցէ աւերեալ յախտէ անտի գլխովին:

'Ի վերոյասացեալ նշանաց այսորիկ ախտիդ՝ քաջայայտ երևի, եթէ հարկաւորապէս պահանջի կառավարութիւն և դեղորայք ինչ, որովք մարթ իցէ ցրուել զվնասակար հիւթս խառնեալս յարեան, շիջուցանել զբորբոքումն արեան, և խաղաղել զգրգռումն շնչերակաց և նեարդից և սրտի: Արդ՝ առ 'ի վճարել այսոցիկ ամենայնի հարկ 'ի վերայ կայ բժշկաց կատարել զկանոնս և մերձեցուցանել զօգտաւէտ դեղս հիւանդին, որպիսի են՝ խաշուն վարսակի, զոր կոչեն՝ թիզանա տի ավէնա, կամ գարւոյ, և կամ շիճուկն կաթին, զոր ասեն՝ սիէռօ տի լաթթէ. յորս մարթ է յաւելուլ սակաւ ինչ հիւթ նարնջոյ, կամ ուվա սբինահի, և կամ լամբօնէի առ ախորժելի գործելոյ: Շիճուկն կաթին բաղադրեալ ընդ հիւթոյ կիտրոնի, կամ քաղցր նարնջոյ, որ այն ինքն է փորթուգալ՝ է ըմպելի ինչ ազնիւ 'ի դիպուածս յայս: Նոյնպէս շահաւէտագոյն է խաշուն կրամինեաց խառն ընդ սակաւ ինչ զք-

սրտել սեռմելքչէի, կամ հիւծնատալի: Այլև օրէն է նախ քան զամենայն փութալ զի մի՛ աղտեղական միասմաք օդն 'ի մէջ սենեկի հիւանդին. որովհետև օդն սենեկի աղտե-ղեալ և թանձր գոլով խառնի ընդ գոլորշեաց՝ որք ըստ մեծի մասին արտաշնչին 'ի մորթոյ և 'ի շնչոյ հիւանդին, և անդրէն ընդունանին 'ի թոքս, յերակս և 'ի ջիղս նո-րին, յորոց պատճառին այլևայլ ախտք վտանգաւորք. Նմին իրի պարտ և պատշաճ է ստէպ ստէպ բանալ զպա-տուհանս և զդրունս սենեկի, առ 'ի դուրս վանել զախտա-արծարծ գոլորշիս, և վերանորոգել զօդն. չէ՛ բաւական միայն մուծանել 'ի սենեակն զօդս զովացուցիչս և առող-ջարարս, այլ արժան է միանգամայն 'ի կիր արկանել ըզ-քափուր, զխնկենոյ, կամ զայլ ինչ և իցէ ազդու և հոտաւէտ իրս:

Ընդ այսոսիկ գիտել արժան է, զի 'ի դիպուածս յայս փոյթ մեծ ունել պարտ է 'ի բարեխառն պահպանել և ծածկել զհիւանդն, արկեալ 'ի վերայ զծածկարանս թե-թևս և չափաւորս, և մի՛ զգեցուցանել զհանդերձս յո-լովս, և որքան մարթ իցէ՝ անձնապահ լինել 'ի խոնա-ւութենէ հանդերձից կամ զգեստուց, և 'ի գիշերային գէճ օդոց, փակ պահելով զպատուհանս և զդուռն սենեկին. և պարտ է ախտակրին վայելել 'ի մեծի անդորրութեան՝ եթէ ըստ մարմնոյ, և եթէ ըստ հոգւոյ, հրաժարել ար-ժան է յայնմ ամենայնէ որք նեղեն և զրգռեն զո-գի, և զսիրտ: Կերակրոց ախտակրիս պարտ է լինել սակաւաքանակ և յոյժ թեթև. որպիսի են հացաթանն՝ յոր մարթ է արկանել սակաւ աղ հասարակ, կամ սա-կաւ ինչ շաքար առ 'ի բարեխառնել: Նոյնպէս կաթն նշոյ է պատշաճաւոր կերակուր 'ի դիպուածս յայս: Դարձեալ՝ կարէ ուտել հիւանդն զպտուղս ինչ եփեալս շաքարաւ, զհաց խորովեալ և թաթախեալ յեփեալ ջուրն, կամ 'ի հիւթն գամոնի կամ հաղարջի:

Դարմանք և դեղք 'ի կիր արկանելիք 'ի դիպուածս փենդիս:

'Ի դիպուածս յայս երակահատութիւն կարի կարևոր է եթէ 'ի վեր երևին նշանք գրգռմանց կամ ամբոխման արեան, կամ նեարդի, և կամ շնչերակաց, զորս մարթ է դուշակել 'ի հրակիզն բորբոքմանէ կամ 'ի ջերմութենէ մարմնոյն, մանաւանդ յարագութէ, 'ի խստութէ և 'ի լիութէ զարկի բազկին, և ևս յանհնարին ծարաւոյ, և

'ի ցաւոց գլխոյ և միջաց, 'ի հրաշէկ փայլմանէ աչաց, և 'ի չորութէ մարմնոյ, լեզուի, բերանոյ, որկորոյ, շրթանց, և ռնգաց. և չափ քանակութե արեան հանելոյ օրէն է լինել համաձայն զօրութե ախտակրին, և ուժգնութեան ախտին: Իսկ եթէ զկնի երակ հատանելոյ՝ եռացումն կմ ջերմութիւն առաւել զօրանայցէ, և զարկ բազկին լիագոյն և խստագոյն ևս լինիցի, յայնժամ արժան է կամ վեր-ստին երակ հատանել, և կամ տզրուկ դնել 'ի շրջակայս երաստանի: Բայց եթէ զկնի միանգամ երակ հատանե-լոյ՝ զարկ բազկին լինիցի փոքրիկ կմ թոյլ, և բորբոքումն նուազ, յայնժամ չէ օրէն բնաւ վերակրկնել զայն: Եթէ հիւանդն ունիցի ճնշումն կրծոց և նողկանս ստամոքսի հանդերձ աղտեղութբ լեզուի, և դառնութբ բերանոյ, յայնժամ օրէն է նպաստամատոյց լինել բնութեն, տա-լով նմա զսակաւ ինչ տորս ործացուցիչ, իտալերէն թառ-թառօ էմէթիքօ ձայնեալ. զորոյ զկերպն կիրառութե մար-թիս տեսանել 'ի վեր անդր, դլ. ա. յօդ. բ:

Բայց եթէ գործածութբ այս ամենայն նպաստից և դեղորէից չերևի նշան ինչ նուազելոյ տենդին, յայնժամ պարտ է ձեռնամուխ լինել 'ի գործածութի թուլացու-ցիչ և զովացուցիչ դեղորէից, որպիսի են նիթռօ, և խա-շուն գարւոյ. որ այսպէս բաղադրի: Ա՛րկ զնիթռօ ըստ կշռոյ երկու կամ երեք տրամոյ, 'ի տասն ունկի գարե-ջրոյ. և տուր ըմպել հիւանդին հինգ անգամ յաւուրն՝ 'ի չափ երկու ունկւոյ: Նմանապէս մարթ է 'ի կիր ար-կանել յայսպիսի դիպուածս զլեմոնադայ հեղանիւթս առ 'ի բառնալ զգրգռումն անօթոցն արեան, և 'ի մեղմել զսաստիկ ջերմականս բորբոքեալս: Ա՛ռ երկու ունկի հա-սարակ ջրոյ, որ բաղադրեալ իցէ ունկի մի ջրոմն վարդի, և կէս ունկի՝ շիրօբբօ տի ալչէթօ, կամ սուկօ տի մօ-ռախւ, յաւելլով 'ի նոյն զ30 շիթ՝ սփիռիթօ տի վիթռիօ-լօ տոլչիֆիքաթօ, և 'ի կիր արկ զայս չափս մինչև ց10 կամ ց12 ժամս, մինչև 'ի հանդարտիլ բորբոքման. յետ այնորիկ շատ լիցի տալ զայն 'ի հինգ կամ 'ի վեց ժամն միանգամ: Իսկ եթէ 'ի ձեռն այդպիսի դեղորէից ոչ նուազի ևս տենդն, բորբոքումն կամ ջերմութիւն տակա-ւին մնայ յարատևեալ, յայնժամ օրէն է տալ նմա բօլ-վէռի թէմբէռանթի, որ այսպէս բաղադրի: Զորս կշիռ տրամ՝ քռէմօռ տի թառթառօ, և մի և կէս տրամ՝ նի-թռօ բուռօ: Եւ զայս պարտ է առնուլ վեց անգամ յաւուրն: Ոչինչ արգելք կայ գործածութե թամարին-տի, շլորոյ, և հիւծնեալի ևն: Կարի կարևոր է յամե-

նոյնուամ երեկոյի առնուլ 'ի կեր զգլուխ մի պատրաստեալ գաղջ ջրով և փոքր ինչ նիթռօիւ, և օսախմելէիւ, կամ չինկաւ՝ առ 'ի զերծ պահել զոգեկից մանրաթելս աղեաց 'ի հրատապ ջերմութենէ :

Այլ եթէ յեօթներորդում, 'ի մետասաներորդում, 'ի չորեքտասաներորդում, և երբեմն, 'ի քսաներորդում և միում, 'ի քսան և ութերորդում աւուր հիւանդութեան զարկ բազկին լինիցի մեղմագոյն, և լեզուն, բերանն և մորթն սկսանին տամկանալ և կակղանալ, և մէզն փոխարկի 'ի գոյն նարնջոյ և մրրալից, յայնժամ գոյ յոյս ապաքինութեան ախտակրին, և զայսմանէ տես և 'ի բառն Փռիզլ. հատ. ա : Բայց եթէ ընդ հակառակն՝ հիւանդն ունիցի ամբոխումն և խռովութիւն անհնարին, և զարկ բազկին օր քան զօր զարտուղեալ վրիպի, տագնապ և վիշտ ընդ ամենայն անդամս տիրապետեալ բազմասցի, շարժումն ձգանաց՝ ցնցումն չղաց և մկանանց՝ ցնորումն և ցամաքութիւն մորթոյ, լեզուի և կոկորդի 'ի վերայ եկեսցէ, նշան է երկիւղալից և ապերջանիկ ելից տառապեալ հիւանդին : Ցայսմ երկիւղալի գիպուածի վէշիքաթօռիօն, այսինքն խարանագեղն հարկաւորապէս պահանջի, մանաւանդ յորժամ ցնորումն և մղձկումն, կամ ճնշումն զուգընթաց գտանին ընդ ախտիս, զոր պարտ է դնել 'ի ծոծրակն, 'ի բազուկս, 'ի սրունս և 'ի յազդերս ըստ պահանջելոյ պարագայիցն :

Եթէ ախտակիրն ունիցի զուժգին ցաւ գլխոյ, յայնժամ օրէն է դնել սէնաբիզմ 'ի ներբանս ոտից : Եթէ ունիցի զկարմրութիւն աչաց, և զխցումն անօթոց ուղղոյ, յայնժամ պարտ է դնել քանի մի տզրուկ 'ի քունս : Եթէ ունիցի զչորութիւն կամ զցամաքութիւն մորթոյ մարմնոյն հանդերձ ջերմութեամբ, յայնժամ հարկ է զապունգս ջերմաջեմ ջրով թացեալ սակաւ սակաւ դնել 'ի սորին որովայնն՝ յազդերս և 'ի սրունս : Իսկ եթէ ունիցի զշարժումն կամ զցնցումն ձգանաց կամ ջղաց, յայնժամ առ զ40 կամ 50 չիթ էթէռէ սօլֆօռիքօ 'ի վեց ունկի՝ ցուրտ ջրոյ. յոր յաւելլ զկէս ունկի շաքար, և տուր ըմպել հիւանդին վեց անգամ յաւուրն՝ զչափ միոյ գդալի : Զնոյն ազդեցութիւն ունի և յետագայ ոդիաւոր հեղանիւթն, որ այսպէս բաղադրի : Առ երկու տրամ՝ լիգուօռէ անօտինօ մինէռալէ տէլլ՝ հօֆֆման. կէս ունկի՝ շաքար, և երկու լիտր՝ ջուր հասարակ : Զայս ամենայն խառնեա՛ բարւոք, և տուր ըմպել հիւանդին յերկուս ժամս՝ մի սկահակ սրճոյ : 'Ի սոցին կարգս դասի և յե-

տագայ հատուածեղն. որ բաղադրի 'ի կէս տրամ՝ Ֆիօռի տի ծինքօէ, և 'ի բաւականաչափ վարդի քաղցրաւենւոյ: Կազմեալ աստի խօթմանատուն և երկու հատիկս, տացի 'ի ջղային ցնցմունս յիւրաքանչիւր երկու ժամու մէն մի հատ: 'Ի նոյն պէտս կարգի և մշկով պատրաստեալ հեղանիւթն, զոր շինեն 'ի կէս ունկի՝ շաքարէ, 'ի մի տրամ՝ մշկոյ, և 'ի վեց ունկի՝ ջրոյ. և տան ըմպել հիւանդին հինգ կամ վեց անգամ յաւուրն՝ ըստ չափու միոյ դրգալի սեղանոյ:

Իսկ եթէ այսպիսի ախտակրութն կարի իմն սաստիկ իցէ, և կից ընդ համապազորդ արթնութն կամ տքնութն, յայնժամ 'ի վերայ բովանդակ նախագրեալ նաւսխայի դեղոցդ՝ մարթ է յաւելուլ տասն մինչև ց16 կշիռ ցորեան՝ բոլվէռէ տի տովէռ. զոր բաղադրեն 'ի 16 կշիռ ցորեան՝ իպէքաքուանաէ, 'ի 20 ցորեան՝ ափիոնէ, 'ի մի տրամ՝ Թառթառօ վիթռիօլաթօէ, 'ի նոյնչափ՝ նիթռօէ, և 'ի հինգ և կէս տրամ՝ մաքուր շաքարէ: Վարի և 'ի փառատել զցաւս յօդուածոց, և զհազս ուժգինս, մանաւանդ յորժամ զոյգ ընդ ախտիս գտանի ականայ շարժումն մկանանց կամ ցնցումն ջղաց: Այլև 'ի բուժել զընչարգելութի, զփորհարութի, և զջրգողութի, զի է քրտնեցուցիչ, խաղաղեցուցիչ միզման արեան, և քնաբեր բնութ: Չափ՝ 'ի հինգ ցորենոյ մինչև ց20 յաւուրն. զոր օրէն է խառնել ընդ գրգալ մի ջրոյ վարդի, կամ անանխոյ, և կամ երիցկի:

Դարձեալ՝ եթէ ախտակիրն ունիցի զյաճախակի փըսխումն, յայնժամ պարտ է 'ի կիր արկանել զյետագայ դեղս առ 'ի խափանել զործումն յամառ: Առ կէս ունկի՝ սաղ տի սօտա, և նոյնչափ՝ շաքար, խառնեա 'ի միասին, և բաժանեա 12 հաւասարաչափ մասունս, և տուր ըմպել հիւանդին յամենայն երկու ժամու մէն մի մասն կէս սկահակ ջրով, յաւելլով 'ի նոյն դրգալ մի սեղանոյ զհիւթն կիտրոնի, կամ նոյնչափ բարկ քացախ: Կայ և տեսակ ինչ Թանձրացեալ աղի, զոր կոչեն՝ սաղ վօլաթիլէ քօնքռէթօ, որոյ զօրութի և ներգործութի նոյն է ը վերոյիշեալ սաղ տի սօտայի, զոր կազմեն 'ի տնկոց անաւ՝ դալի անուանեալ: Իսկ եթէ ունիցի զսաստիկ փորհարութի, յայնժամ օրէն է 'ի վար արկանել զէլջցիւրն եղջերուի, և զտիասքօռտիօ: Այլ եթէ ունիցի զչափազանց քիրտն, յայնժամ պարտ է 'ի գործ արկանել զաչիտօ սօլֆոռիքօ:

Դարձեալ, եթէ տկարացեալ իցէ ոյժն կենդանական,

յայնժամ փոյթ ունել օրէն է զօրացուցանել զախտակիրն 'ի ձեռն քօռտխալից, որպիսի են քինա սէռբէնթառիա վիռճինիանա, ևն. որ այսպէս բաղադրի ։ Առ. կէս ունկի ազնիւ քինա, և երկու տրամ՝ սէռբէնթառիա վիռճինիանա, և կէս տրամ վալէռիանա, և 'ի հասարակ ջրի եփեա եռացմամբ իբր քառորդ մի ժամու, յետ զտելոյ յաւել 'ի նա երկոտասան կշիռ ցորեան քանֆօռա, և կէս տրամ լիգուօռ անօտինօ մինէռալէ տէլ' հօֆֆման, կամ նոյնչափ՝ էլիէռէ սոլֆօռիքօ ։ Ցըմպելւոյ աստի պարտ է տալ հիւանդին յիւրաքանչիւր կէս ժամու մէն մի դըրգալ սեղանոյ ։ 'Ի նոյն պէտս վարի և յետագայ քօռտխալն. զոր կազմեն 'ի կէս ունկի՝ քինա քինաէ, յերկու տրամ սէռբէնթառիա վիռճինիանաէ, յաւելլով 'ի նոյն և զտասն ունկի՝ ջուր հասարակ, մերձեցուցանեն 'ի հուր, և եփեն այնքան մինչև ցապաւիլ միոյ մասին ջրոյ. յետ քամելոյ զայն կտաւով յանօթ ապակի, յաւելուն ևս 'ի նա երկու ունկի՝ ջուր կինամոնի, և կէս ունկի՝ քօնֆէքցիօնէ ալ քէռմէզ, և 30 շիթ սբիռիթօ տի մէլիսաէ, կամ նոյնչափ՝ լիգուօռէ անօտինօ մինէռալէ տէլ' հօֆֆման, և տան հիւանդին ժամէ 'ի ժամ մէն մի սկահակ սրճոյ ։

Կառավարութիւն 'ի նիր արթնանելոյ 'ի տիպաւորածս՝ յորում ոչ վերջին անկանին յանընդհատս և 'ի սուր տենդս ։

Սանոն և կառավարութիւն, զորմէ խօսեցաք վերագոյնդ, հարկաւորապէս պահանջին ոչ միայն յամենայն ընթացս տենդից, այլ և միանգամայն 'ի դիպուածս յայս. զօրովք եթէ ոք զանց առնէ, դնէ զախտակիրն 'ի վտանգ վերստին անկանելոյ կամ 'ի նոյն անընդհատ տենդս, և կամ յայլ ինչ ախտս. որ ընդ բովանդակ կեանս իւր թողու զնա հիւանդագին և տկար ։ Նկատել պարտ է. քանզի թէ և զկնի ապաքինելոյ ախտիս՝ տակաւին ախտակիրն մնասցէ տկար և անզօր, 'ի վերայ այսր ամենայնի կերակրոցն պարտ է լինել զովացուցիչ՝ քան թէ սնուցիչ ։ Պարտ է մեծապէս արգելուլ զնա առաւել յորպիսի և իցէ կերակրոց և ըմպելեաց, այլև յաշխատանաց, որք գլխաւորքն են պատճառք ։ Այլ արժան է կատարելապէս վայելել 'ի հանգստեան, չէ բնաւ օրէն պարապիլ 'ի յընթերցմունս, կամ յայլ ինչ իրս, որք պահանջեն զմեծագոյն մտադրութիւն ։ Եթէ մարսողականութիւն լինիցի տկար, և հիւանդն զգասցէ երբեմն երբեմն զթե-

թևագոյն ինչ տեսդս, արժան է յայնժամ 'ի վար ար-
կանել զքինա քինա թրմեալ 'ի մէջ ցուրտ ջրոյ յետա-
գայ եղանակաւ։ Արկ զխոշոր փոշի կեղևոյս քինայի ը
կշռոյ ունկեայ միոյ՝ 'ի լիտր մի ցուրտ ջրոյ. զկնի 24 ժա-
մուց հեղ զգուշութբ յայլ անօթ ապակի, կամ անցո՛
ընդ կտաւ նուրբ. յոր յաւել զմի ունկի ջուր կինամո-
նի, կամ զնոյնաքանակ ջուր նարնջոյ. և տո՛ւր ըմպել
հիւանդին երկու կամ երեք անգամ յաւուրն՝ ըստ չա-
փու միոյ սկահակի. և գործածութբ այսր դեղոյ ան-
վրէպ զօրանայ ստամոքսն, ցրուէ ախտաբծարծ հիւթն,
և նորոգէ ոյժն տկարացեալ յերկար խօթութեան։ Աշխա-
տաւորք և արուեստաւորք, որք միանգամ կրթեալ են
զախտս զայս, ո՛չ պարտին փութով ձեռնամուխ լինել 'ի
գործս իւրեանց. այլ պարտին հեռի կալ 'ի գործոյ և յաշ-
խատանացն, մինչև ստանալ նոցա զէթ զմեծագոյն մասն
առաջին զօրութեան և կարողութեան իւրեանց։

Եթէ չա՛ր է ըսկիզբն ախտին,
 չա՛ր ևս անկումն յայն վերըստին։
Զոր յակամայս նախ կրրեցեր,
 մի՛ քո կամաւ կրեր անդրըստին։
Ախտք որ 'ի բնէ վերստանեղնին,
 փոքր են քան զորս կամաւ սանեղնին։
Քեզ բժիշկ քաջ դեղ անարծաթ,
 առցե՛ս ըզչափ մարմնոյ ըղձին։

## ՅՕԴՈՒԱԾ Ե.

'Ի վերայ ջղային տենդի, որ կոչի իտալացւոց՝ Ֆէպպրէ
նէռվօզա. կամ ըստ ռամկական բարբառոյ՝ Ֆէպպրէ մալի-
նեա, այսինքն տենդ չարախափառեալ։

Տենդս այս ջղային կոչի և ըստ ոմանց՝ Ֆէպպրէ
բէսթիլէնցիալէ, որ թարգմանի՝ տենդ ժանտախտական.
քանզի մեծագոյն մասն նշանաց այսր տենդի ունի զմեծ
համաձայնութիւն և նմանութիւն ընդ զարհուրելի ախտին,
որ յորջորջի անուամբս՝ ժանտախտ։ Անձինք՝ որք հասա-
րակօրէն են ենթակայ այսր տենդի, են վիճակեալք տկար
կազմուածոյ, և սևամաղձային խառնուածոյ, և ևս նո-
քա որք ուժաթափ լեալ են 'ի ծոմապահութեանց, 'ի
հսկմանց, և 'ի տաժանակիր աշխատանաց, 'ի սաստիկ
տառապանաց, 'ի զազիր խորհրդոց, ևն։

## Պատճառք ջղական կամ չարախտաւոր տենդի ։

Տենդս այս ծնանի յապականեալ օդոց և հողմոց. որպիսի են օդքն բնակչաց ցածագոյն և խոնաւագոյն տեղեացն, և ևս տեղեացն՝ ուրանօր օդն ապականի պատճառաւ դիոց կամ գիշոց և արեանց կենդանեաց, որք անկեալ մնան ընդ երկար, և գարշահոտին են. նոյնպէս և պատճառի յօդոյ, որ արգելական մնայ ուրեք առանց շրջանաց, 'ի խոնաւութէ, 'ի հեղեղատէ, որք պատահին 'ի ցածագոյն գաւառս, յընդեղինաց և 'ի խոտեղինաց ապականելոց յանձրևաց և 'ի ցօղոյ են. 'ի ջրոց՝ որք անշարժ մնան, որպիսի են լիճքն, ճախինքն են ։ Դարձեալ՝ անմաքրութիւն, չքաւորութիւն, ձախորդութիւն, տրտմութիւն, սաստիկ բարկութին, են, մարթին դառնալ 'ի կարգս պատճառաց այսորիկ տենդի ։ Այլև ծագի յանբարեխառնութէ, որ լինի 'ի դիւրափոխելի ուտելեաց և յաւեգոյն ջուրց. Նոյնպէս յաւելումն տալ եթէ ջղական տենդս այս 'ի լինելն 'ի ծայրագոյն աստիճանի՝ սովորաբար միշտ է տարափոխիկ և հաղորդական առ այլս. վասն որոյ արժան է ամենայն ումեք փախչիլ և հեռանալ 'ի յաճախ և 'ի մօտակայ կենակցութէ այսպիսի ախտացեալ անձանց ։ Նմանապէս ստէպ պատահի ախտս այս 'ի բանտս՝ 'ի հիւանդանոցս՝ յանկելանոցս՝ 'ի բանակս՝ և յայլ տեղիս՝ ուր բնակին խուռն բազմութք նեղեալք և տառապեալք. են ։ Հուսկ յետոյ տենդս այս ծագի և յառաջ գայ յայնմ ամենայնէ, որք թուլացուցանեն զզօրութիւս ջղաց և զգայութեց, և վասն այսորիկ կոչեցաւ՝ տենդ ջղական ։

## Նշանք այսր ջղական տենդի ։

Տենդս այս ընդհանրապէս բացայայտի յերևելի իմն թալկութենէ ջղաց, և 'ի լքմանէ կենդանական ոգեաց ։ Երբեմն թալկութիւս այս լինի այնքան սաստիկ, մինչև ոչ կարէ ախտաժետն յոտն կանգնիլ. որով կորուսանէ գլխավին զարիութիւն, և վարանի երկիւղիւ մահու ։ Ունի ցամաքութիւն կամ չորութիւն բերանոյ հանդերձ նողկութք սրտի կամ ստամոքսի, և տագնապաւ շնչառութե. ունի մեծ ամբոխմունս և հառաչանս, և դժնդակ ցաւ իմն գլխոյ, միջաց, և յօդուածոց, և շշնջիւն ինչ յականջս. թուքն լինի սատղային. ատամունքն գլխովին աղտեղեալ

սեւանան․ ձայնն նուաղի, և ունչքն խցանին․ երբեմն լե-ղուն լինի այնքան ցամաք չոր և դողդողուն, մինչև ոչ կա-րէ ախտաւորն 'ի դուրս հանել ընդ բերանն, և երբեմն խոնաւ և կակուղ․ բայց հանապազ ծածկեալ կայ դեղ-նագոյն և սանձային աղտով։ Ախտաւորն յաճախակի ործայ մաղձս, արտահանէ զճճիս երբեմն 'ի վերուստ, և երբեմն 'ի ստորուստ․ և զգայ զատուսուս, զդողդոջումն, զջերմութիւն ուժգին, զցնորումն, և զբարբանջումն։ Եթէ երակ հատանի, արիւնն երևի լուծեալ և կարմրերանգ․ և զինի սակաւուց 'ի վեր երևի յերեսս արեան մակարդ ինչ նուրբ խեր մաշկ։ Աչքն լինին կարմրերանգ, որպէս և դէմք նորա։ Զարկ բազկին 'ի սկզբան անդ հարկանէ յոյժ յաճախակի և լի․ բայց յետ քանի մի աւուրց լինի ցած, թոյլ, և մանր, և հասարակօրէն անկանոն։

Յետ այսոցիկ նշանաց սկսանին հանապազորդել դող-դոջումն ձեռաց զոյգ ընդ ցնցման ձգանաց․ և կարկա-տակութիւն այտից, և խցմամբ ակռանջաց, պտուտիւք գըլ-խոյ, և ցնորմամբ խելաց, որք են նշանք յոռեգոյնք։ Եր-բեմն ծարաւն լինի չափազանց, և երբեմն չափաւոր։ Մէզն երբեմն լինի տհաս և ջրային, և երբեմն կարմիր, երբեմն սեաւ և թանձր, եւ սակաւ․ և երբեմն մթա-գոյն և գարշահոտ։ Աղբաւառն լինի կանաչագոյն և զազ-րահոտ, և երբեմն կարմրագոյն, կամ սեաւ։ Մորթն մարմնոյ լինի չորագոյն, և քիրտն սառային և ծանրա-հոտ։ Սովորաբար 'ի վեր երևին 'ի վերայ մորթոյն դէզք կամ խաղալուարք դեղնագոյն, ծիրանագոյն, կապտա-գոյն և թխագոյն, որք գուշակ են յայտնապէս ապակա-նութեան ներքին հիւթոց։ Երբեմն արտահոսեն յորդ ա-րիւն 'ի ռնգացն, 'ի բերանոյ, ևն։

Տենդս այս ջղային զանազանի 'ի սաստիկ անընդհատ տեն-դէ․ ըստ որում 'ի դիպուածս յայս զօրութիւն կենսա-կան փութով նուազի, ախտաւորն կրէ խլութիւն, և մե-ծագոյն ամբոխմունս, և դէզք կամ խաղալարք 'ի վեր երևին․ բայց պատահի երբեմն, եթէ նշանք անընդհատ տենդին՝ այնպէս խառնին 'ի միասին գտանին 'ի ջղային տեն-դիս, մինչև մեծապէս դժուարագոյն լինի որոշելն և զա-նազանելն․ յայնժամ օրէն է 'ի վար արկանել փոյթ մեծ, և 'ի կիր առնուլ զամենայն հնարս կարելիս առ 'ի ճանա-չել և որոշել զայն․ վասն որոյ և արժան է կրկին և կրկին քննութիւն առնել 'ի վերայ նշանացն, և յետ այնորիկ 'ի գործ արկանել զկառավարութիւնս և զդեղորայս ըստ պա-հանջելոյ հարկին։ Ընդ այսոցիկ գիտել արժան է, եթէ

անընդհատ անդամն կամ այլ անդամք, գործածութիւն ներհակական դեղորէից մարմին փոխադրելը 'ի ջղական անդամ և 'ի փտախտութիւն:

Իսկ որքան առ յարատեւութիւն ջղական անդամոյ չէք ինչ որոշեալ կանոն. երբեմն աւարտին 'ի մէկ կամ յեօթներորդում, կամ 'ի մետասաներորդում, և կամ 'ի չորեքտասաներորդում աւուրն. երբեմն ևս յարաձգին 'ի քառասներորդ, կամ 'ի քսան ութերորդ օր, և երբեմն ևս ամսարամին մինչև ցհինգ կամ 'ի վեց շաբաթս: Նշանք առաւել բարեգոյնք և լաւագոյնք են արտաշնչումն մարմնոյն, քիրտն մշտական, առողջութիւն մարմնոյ, բերանոյ և լեզուի, յորդութիւն միզի, կամ թեթև ինչ լուծողութիւն որովայնի, և կարմրութիւն խաղաղարանաց, և ազդումն որովայնի: Իսկ նշանք յոռեգոյնք և ծախողք են՝ ուժգին ջերմութիւն, պակասութիւն քնոյ, շարժումն և դողդոջումն ձեռաց, սաստիկ ցաւն և կարծրութիւն ստորին որովայնի, որք դուշակեն պնդախտութիւն 'ի քաղցկեղ. մանաւանդ այտուցն և ուժգին լուծողութիւն որովայնի, դժուարութիւն տուրևառութեան շնչոյ, ցամաքութիւն մարմնոյ, դողդոջումն և անկարութիւն առ 'ի արտահանել զլեզուն ընդ բերանն. խաղաղարանք կամ դէղքն լայնարձակ, կապտագոյնք կամ սևագոյնք. 'ի վեր երևումն եղնդոյ 'ի քունքս երեսաց, կամ 'ի յետին կողմն ականջաց, փոփոխումն ձայնի, ցուրտ և սառցային քիրտն. հեծկլտանքն, ակամայ շարժումն մկանանց, և ձգանաց. դժուարութիւն 'ի կլանել. ճնշումն կրծոց, յորդառատ հոսումն թանչից, անկանոնութիւն և միջահատութիւն զարկի բազկին, ուշաթափութիւն, ցնորումն, ևն: Հուսկ յետոյ եթէ 'ի վեր երևեսցին 'ի բերան հիւանդին փոքրիկ և սեաւ վէրք ինչ՝ որ ասի աֆթէ, է նշան մահահրաւէր: Ընդ այսոցիկ գիտել ևս արժան է, եթէ ախտակիրն 'ի մահճաց 'ի վայր սահեսցի, և եթէ 'ի միճակի սաստկագոյն ջերմութեան շունչն ախտաժէտին ցուրտ լիցի, են նշանք անվրէպ մահացուցիչք. քանզի քաջայայտ է եթէ սպառի յայնժամ ջերմութիւնն բնական, և զկայադնու զօրութիւն կենսական: Դարձեալ՝ ընդ այսոցիկ յոռեգոյն նշանացս գոյ իմանալ թէ 'ի սկզբան անդունդիս 'ի վեր երևի թալկութիւն կամ թուլութիւն սաստիկ, հանդերձ փոփոխմամբ գունոյ, կորուսմամբ քնոյ և քրտանց, բուռն շարժմամբ ջղաց և մկանանց, ցնորմամբ, և տագնապաւ շնչառութեան, ևն:

Կառավարութիւն և դեղորայք 'ի վար արկանելոյ 'ի դիպուածս ջղային տենդի ։

Արդ հարկաւոր է նախ քան զամենայն յանխռովութիւն ունել զխօթացեալն, և 'ի կշիռ պահել զներքին տրամադրութիւն հիւթոց, և զկենդանական զօրութիւն նորին, և ապա ըստ բնութեան ցուցանելոյ արգելուլ զպատճառս ախտիս 'ի վերագոյնդ ասացաք, եթէ տենդս այս ըստ մեծի մասին ծագի և յառաջ գայ յապականեալ օդոց. վասն որոյ պարտ է նախ փութալ զի մի՛ արգելական մնասցէ օդն 'ի մէջ սենեկի ախտաւորին, որպէս ասացաւ 'ի նախընթաց յօդուածդ ։ 'Ի դիպուածս յայս պարտ է կերակրոցն լինել թեթևագոյն. և մարթ է միանգամայն ախտաւորին տալ աներկիւղ զամենայն հասունացեալ մրգս եփեալս են ։

Դարմանեալ՝ չէ՛ օրէն բնաւ թողուլ երկարապէս զնա առանց կերակրոյ. այլ պարտ է սակաւ ինչ ուտելի տալ ստէպ ստէպ, որովք ոչ միայն պահպանի զօրութիւն կենդանական, այլ միանգամայն արգելանի ճապաղումն ժանտ հիւթոցն և գոլորշեացն, և փոխարկելն նոցին 'ի նեխութիւն կամ 'ի փտութիւն ։ Բազում ինչ կայ ասացեալ և գրեալ 'ի հեղինակաց զընտրութէ պարենից, որ ճահողագոյնքն են լաւագոյն սննդեան մարդկային մարմնոյ. և սակայն ճշգրիտ է, թէ չիք կանոն ընդհանուր, որ յարմարեսցի զինչ և իցէ կլիմայից, դրից երկնից, ազգի, և կամ ումեք և իցէ անհատի ։ Կերակուրն, որ առաւել համեմատ է ջղական տենդիս, և առաւել սնուցիչ և զօրացուցիչ է մարմնոյ, երևի թէ է արգանակն մսոյ. և սակայն 'ի ջերմագին աւուրս, որպէս ուսուցանէ մեզ փորձառութիւն, վնասակար է յաճախ գործածումն արգանակի, նա յաւէտ մսոյ ։ Իսկ բնակիչք եւրոպիոյ և այլ գաւառաց վիճակելոց բարեխառն օդոց՝ կարի իսկ նախադասեն զարգանակն մսոյ, և ընտանի կենդանեաց ։ Դարմանեալ 'ի դիպուածս յայս օրէ՛ն է խառնել 'ի մէջ ամենայն ըմպելեաց զհիւթն լեմոնի, կամ կիտրոնի և կամ նարնջոյ, ևս մարթ է 'ի կիր առնուլ գինի ազնիւ ջրախառն ։

Յորժամ տենդս այս ջղական յառաջ գայ և ծագի 'ի սուր և 'ի տափուկ մաղձէ, և 'ի ժանտ հիւթոց, և ևս 'ի փսխողականութէ, յայնժամ պարտ է 'ի սկզբան անդ ախտիս իսկ և իսկ առնուլ 'ի կիր զդեղս ործացուցիչս

առ 'ի դուրս վանել զայնս ։ Նոյնպէս և օգտաւէտ է ործացուցիչ դեղս այս՝ եթէ զուգընթաց լինի ընդ ախտախտ տենդն մաղձային ։ Սեփական և անվրէպ ներգործիչ ործացուցիչ կամ փոխեցուցիչ դեղն 'ի դիպուածս Ջղական տենդի՝ է Թարթառօ էմէթիքօ, զորոյ զկերպն կիրառութէ մարթ է լսել ուսանիլ 'ի գլ. ԺԱ. երես Դ ։ Ստուգիւ հաստատեմ և վկայեմ, եթէ քանիցս անգամ կարևոր զգուշութբ, և 'ի պատշաճաւոր ժամանակի 'ի վար արկի զդեղս զայս, միշտ եղև օգտակար, և ոչ բնաւ վնասակար ։ Բայց եթէ զկնի քանի ինչ աւուրց զօրանայցէ տենդիս, և սաստկանայցէ նշանացն 'ի կիր արկանելի, յայնժամ չլինի այնքան անվտանգ և օգտակար ։

Այլ եթէ ախտակիրն անկեալ իցէ 'ի յուժոյ, և եթէ ունիցի զփորհարութի, պարտ է յայնժամ փոխանակ ործացուցիչ դեղոյ՝ առնուլ 'ի կիր զթեթև լուծողականս, որպիսի են ռապառպառօ, և թամարինտի ։ Նոյնպէս օգտաւէտ է առնուլ 'ի կիր զգրեխս պատշաճաւորս առ 'ի դուրս հերքել զփուքս աղիքն որովայնի, և 'ի ցրուել զխտատակար շոգիս, որ սովորաբար ելեալ յաղեաց դիմեն առ ուղեղն, և պատճառեն զցաւս գլխոյ, զցնորումն, զշնչիւն ականջաց, և երբեմն ևս զխելութին ։ Յետ այսորիկ առ 'ի զօրացուցանել զստամոքսն և 'ի դուրս վանել զփուքսն աղիքն որովայնի, ևս և 'ի զովացուցանել զհրակէզն ջերմութիս, պարտ է 'ի կիր առնուլ զինֆուզիոնէ տի քամոմիլլա, եթէ ստամոքսն կարող իցէ տանիլ, և օրէն է յաւելուլ 'ի նոյն էլիսիրէ աչիտօ տի հալլէռօ, կամ էլիսիրէ տի միթռիօլօ 10 կամ 12 շիթս յիւրաքանչիւր սկահակի ։ Այլ պարտ է ուշ դնել, զի նախայիշեալ էլիսիրէ աչիտօ տի հալլէռօ ոչ յարմարի 'ի լուծմունս որովայնի ։ 'Ի դիպուածս ջղական տենդիս երակ հատանել՝ ուր ուրեմն է հարկաւոր. եթէ երևին նշանք բորբոքման, մարթ է երբեմն թոյլ տալ այնմ խսկ և խսկ 'ի սկզբան անդ հիւանդութեն ։ Բայց զգոյշ լինել պարտ է, զի մի՛ առատօրէն թոյլ տացի այնմ՝ մինչև լքեալ վհատիլ զօրութե նորին. այլ մի կամ երկու սկահակ արեան բաւական է վասն միոյ չափահասակի ։

Յետ այնորիկ առ 'ի կչիռ պահել զկենդանական զօրութիս ախտակրեն՝ պարտ է փութով մերձեցուցանել զյետագայ դեղս ։ Ա՛ռ կէս ունկի՝ ազնիւ քինա քինա, և երկու տրամ՝ սէրբէնթառիա վիռճինիանա. և 'ի հասարակ ջրի եփեալ եռացմամբ իբր քառորդ մի ժամու. ապա զտեալ և միացէ 12 ունկի. յոր յաւե՛լ 50 կամ 60 շիթս

կակղացուցիչ խոտոց։ Նմանապէս օգտաւէտ է՝ լինիմէնթօ վօլաթիլէն, զոր պարտ է օծանել 'ի վերայ ցաւագնեալ մասին որովայնի։ Իսկ եթէ 'ի ձեռն այսոցիկ նըպաստից չպատահեսցի ուժգնութիւն ցաւոց, յայնժամ հարկ է աներկբայ դնել զվէզիքաթօրիօ 'ի վերայ այնր մասին որովայնի, ուր առաւել զգայ զցաւն։

Այլեւ 'ի նոյն իսկ ժամանակի, յորում ախտակիրն ընդունի զայսպիսի նպաստս, 'ի կիր արկանել զթամարինտօ կամ զռապարապառօ, և կամ զթինթուրա ռէքգուօզա ու քինա աւ 'ի մաքրել զնեխեալ հիւթս ստորին որովայնի, և 'ի մեղմել զգրգռութիւն ջղաց։ Եթէ 'ի վերայ եկեսցէ թանձր ինչ արկածեան, որ է յորդառատ հոսումն արեան որ և իցէ անդամոց, յայնժամ օգտաւէտ է գործածութիւն քինային, և պաղլեղի, եւս աչիտօ միներալէի խառն ընդ ցուրտ ջրոյ. և եւս պարտ է թանալ զոտս, զձեռս և զգլուխն ցրտագին ջրով, կամ ձեամբ, և կամ սառամբ, զոր պարտ է երբեմն խառնել ընդ գինւոյ և ը ափիոնի։ Իսկ եթէ 'ի վերայ եկեսցէ միզարգելումն, յայնժամ օրէն է առնուլ 'ի կիր զէմուլսիօնէ արապիքա, որ այսպէս բաղադրի։ Ընկալ կէս ունկի՝ կօմմա արապիքա, երեք հատ սպիտակ գոյացուն նշոյ. և երկու տրամ՝ շաքար մաքուր, և մանրեալ ծեծեալ յանկանի, յոր յաւել ութ ունկի՝ ջուր հասարակ. և տուր ըմպել երկու անգամ յաւուրն։ Իսկ եթէ փոխարկեալ իցէ 'ի քաղկեղ, յայնժամ օրէն է առատօրէն 'ի կիր արկանել ըզքինա։ Այլ եթէ 'ի վեր երեւին վէրք ինչ փոքրիկ 'ի բերանն հիւանդին, յայնժամ պարտ է սակաւ սակաւ ողողել զուլն և զբերանն քացախախառն մեղրիւ։ Իսկ 'ի դիպուածս, յորում վէրքն չիցեն սաստիկ ցաւագին. պարտ է հալել լուծեալ ջրոյն պօռաչէի կամ վիթռիօլօ ալիանքօի։

Դարձեալ, 'ի դիպուածս յորում ջլական տենդս լինի յոյժ վտանգաւոր, և դէղք կամ խաղաւարտք կարմրագոյնք կամ սեւագոյնք զուգընթաց դատանին ընդ ախտիս, յայնժամ հարկ է առնուլ 'ի կիր զքինա քինա, որ իցէ եփեալ գինւով։ Այլ վասն նուազութեան քրտանց, և այլ հնարից սակս խափանելոյ զվերստին դարձն այսր տենդի՝ գրեթէ նոյն է ընդ դարմանադրութեան անընդհատ և սուր տենդի, զորմէ խօսեցաք ընավէն յօդ. Ն։

## ՅՕԴՈՒԱԾ Զ.

'Ի վերայ Թուլական տենդի, որ յիտալացւոց՝ Ֆէպպրէ ուէմեթ-թէնէ կոչի:

Տենդս այս Թուլական տարորոշի յանընդհատ կամ 'ի շարունակ տենդէն միայն սարսռմամբ իւրով. քանզի և սա ըստ օրինակի անընդհատ տենդի ոչ անջատի և ոչ հեռանայ բնաւ յախտաժետէն յամենայն ընթացս հիւանդութեան. բայց 'ի մէջ քսան և չորս ժամուց բազում անգամ առաւելեալ սաստկանայ, և բազում անգամ ևս նուազի. յայն սակս և հիւանդն 'ի վայրկեանս ինչ լինի ուժեղ և զօրաւոր, և 'ի վայրկեանս ինչ՝ տկար, և տափկար:

Պատճառք Թուլական տենդի:

Տենդս այս հասարակօրէն ծագի և պատճառի 'ի բորբոքածին օդոց. որպիսի են՝ օդքն ընակչաց խոնարհագոյն, աօթադին, և գիճագոյն գաւառաց, որք սովորաբար են Թանձր, և ախտածարծ. ‖ քանզի օդոյն 28երորդ մասն եւեթ է Թթուածին և առողջարար. իսկ 72երորդ մասն է բորբոքածին, Թանձր և մնացական մարդկային կենաց. որ կոչի՝ կազ, և ազոթ ‖: Նմին իրի յաճախակի պատահի տենդս այս 'ի կողմանս արևելից, 'ի պանկալա, և յայլ արևմտեան սահմանս հնդկաստանի: Տենդս այս սովորաբար սկսանի դէպ 'ի սկիզբն աշնան, և աւարտի 'ի մտանելն ձմեռան: Անձինք՝ որ առեալ բնակին 'ի խոնաւուտս, յանտառս, և յարտորայս, որք աշխատին 'ի բացօթեայս, և որք ոչ անձնապահ լինին 'ի տուընջենային հրատապ օդոյ, և 'ի գիշերային ցօղոյ, և տայրին անառողջ և դժուարամարսելի կերակրեղինօք, են ենթակայ այսր տենդի:

Նշանք Թուլական տենդի.

Բաւանօր խօսիմք զատուցել գլխաւոր նշանացն միայն: Քանզի գրեթէ բովանդակէն յինքեանս զնշանս ամենայն տենդից 'ի մի և 'ի նոյն անձն. բազում անգամ տարորոշին և փոփոխին այլ և այլ կերպիւ յայլ և այլ ժամանակս նշանք այսորիկ տենդի: Գլխաւոր նշանք են

յօրանջումն, ձգտումն, անկարգ եղկութիւն, և ցնորումն. Անդէն նոյնհետայն սկսանին 'ի վեր երեւիլ սաստիկ ցաւ ինչ գլխոյ՝ հանդերձ պտուտիւ, դեղնութիւն մորթոյ մարմնոյ, մանաւանդ աչաց, ապականութիւն լեզուի, ցաւ ուժգին 'ի մի կողմն ստամոքսի, և ձայթքումն կամ փսխումն մաղձի. զարկ բազկին լինի հոծ և լի։ Ախտակիրն երբեմն զգայ յանկարծօրէն 'ի վերայ յարձակիլ մարմնոյն՝ ջերմութիւն ինչ, իսկ երբեմն ցրտութիւն սաստիկ. որովայնն երբեմն լինի լոյծ. բայց սովորաբար ամենա-մեզն հաստատակօրէն լինի բորբոքեալ։ Բազում անգամ եւս նշանք կշռադատութեան և յօդուածացաւութեան լինին 'ի վեր երեւին։

### Պատուիրանք 'ի կիր արկանելիք 'ի դիպուածս Բիլիոզեան տենդի։

'Ի դիպուածս ախտիս չիք ինչ կարեւորագոյն և օգտաւէտ քան զմաքրութիւն. քանզի 'ի ձեռն այսր մաքրութեան մեծապէս նպաստ ընծայի ախտակրին. նախ իսկ արժան է յաճախակի փոխել զհանդերձս կամ զանկողինս նորա, և պարտ է 'ի մէջ սենեկի նորին հանապազօր շրջագայել բարեխառն և առողջարար իմն օդոյ և հողմոյ, և տեղւոյ տեղւոյ սրսկել կամ ծխել զքացախ, զհիւթն կիտրոնի, և կամ զայլ ինչ և իցէ սաստիկ հոտաւէտս։ Ըմպելին պիտոյ լինել թեթև, հեղհեղիչ, և զովացուցիչ բնութեան. և պարտ է բացէ 'ի բաց հրաժարել 'ի մսոյ, յարգանակէ, և յայնմ ամենայնէ, որք ունին զնեխութիւն։ 'Ի դիպուածս, յորում նշանք ջղական տենդի 'ի վեր երեւին, հարկ 'ի վերայ կայ յայնժամ 'ի կիր արկանել զնոյն կառավարութիւն և զարմանս՝ զորս գրեցաք 'ի տեղիս իւրեանց 'ի նախաւանդեալ յօդուածս։ Դարձեալ պարտ է ախտակրին վայելել 'ի մեծի անդորրութեան՝ եթէ ըստ մարմնոյ, և եթէ ըստ հոգւոյ. հրաժարիլ արժան է յամենայն կերպ իրաց, որք նեղեն զմիտս, և զրգռեն զջիղս։

### Կարեւոր դեղորայք 'ի կիր արկանելիք ընդդէմ Բիլիոզեան տենդի։

'Ի դիպուածս յայս երակահատութիւն հազիւ հազ է հարկաւոր. բայց զփսխողականն հարկ է միշտ 'ի կիր արկանել առ 'ի մաքրել զստամոքսն և զփորոտիսն. վասն

որոյ պարտ է տալ իփէքաքուանա, որոյ ներգործութիւն դիւրացուցանի՝ պատրաստելով 'ի թեթև ինչ թրմոց կմ ջուր երիցկի. բայց ուր ուրեմն պահանջի 'ի դիպուածս յայս ուժգին և զօրաւոր փոխադականն, առ որ բաւական է հասարակօրէն 16 կմ 20. և կմ շատ ևս 30 կչիռ ցորեան իփէքաքուանա վասն միոյ չափահասի. իսկ երբեմն բաւական լինի 16 ցորեանն: Բազում անգամ ևս 'ի կիր առնումք երկու կչիռ ցորեան՝ Թառթառօ էմէթիքօ. յաւելլով 'ի նոյն 12 կամ 14 ունկի՝ ջուր եռացեալ 'ի ցքահանէ, կմ հասարակ, և տամք հիւանդին ժամէ 'ի ժամ սկուտակ մի սրճոյ, մինչև պատճառեսցի փսխումն կամ լուծումն որովայնի: Եւ յետ այնորիկ պարտ է 'ի վայր արկանել երեք կամ չորս անգամ յաւուրն մէն մի ունկի՝ թրմոց քինայի, որ բաղադրեալ իցէ հիւթովն կիտրոնի կամ շարապատն հաղարջի:

Երբեմն առ 'ի չիջուցանելոյ զջերմութիւն և մեղմելոյ զչափազանց արագութիւն զարկի բազկին՝ այլազգ ևս առնեմք զգործածութի քինայի, որ այսպէս բաղադրի: Առ զխոշոր փոշի կեղևոյս բաց կշռոյ ունկեաց միոյ 'ի յութ ունկի ջերմ ջրոյ. զկնի երկտասան ժամուց՝ քամեա կտաւով. յոր յաւել քսան և հինգ կաթիլ էլիսիրուէ աչիտօ տի հալլէրօ, և տուր ըմպել հիւանդին վեց անգամ յաւուրն՝ զկշիռ միոյ ունկեաց:

Ընդ այսոցիկ գիտել արժան է, զի յետ դարմանելոյ և առողջնելոյ այսր ախտի՝ գտանին ինչ ինչ հնարք և միջոցք, 'ի ձեռն որոց մարթ է լինել կարգադրութ՝ թեթև և դիւրամարսելի կերակրեղինաց և զբօսանաց. քաջայայտ է ապաքէն, եթէ հնար է փոխել զխառնուածս մարմնոյ ախտակրին 'ի ձեռն Ճահողագոյն կարգադրութ 'ի կեանս և այդպէս գլխովին արմատաքի խլել զախտս զայս. միայն թէ ըստ բաւականին յարատև 'ի գործ դիցին պայմանք կանոնադրութեք, որքան 'ի կերակուրս թեթևս սնուցիչս՝ և դիւրամարսելիս, և 'ի գեղորայս խթիչս և զօրացուցիչս, որպիսի են՝ թրմոցն քինա քինայի, զոր իտալացիք կոչեն՝ ինֆուզիօնէ տի քինա, զորմէ խօսեցաք լիով 'ի յօդ. Է: Դարձեալ՝ խրատեմք զախտակիրն կանխել յընթրիսն, և ոչ աճապարել իսկ և իսկ զկնի ընթրեացն 'ի մահիճ անդր: Եւ պարտ է հրաժարել յամենայն ոգիսաւոր հեղանիւթից, մանաւանդ 'ի կիրառութէ ուժգին օղւոյ:

## ՅՕԴՈՒԱԾ Ժ.

'Ի վերայ ստամոքսական տենդի, որ ըստ իտալացւոց՝ Ֆէպպրէ կաստրիքա կոչի :

Յորժամ տենդ ինչ սաստիկ եթէ ընդհատ և եթէ անընդհատ՝ զուգընթաց իւր ունի զդժգունութիւն դիմաց , զգեղնութիւն աչաց , զթուլութիւն ստամոքսի , զձանձրութիւն կամ զտաղտկալանս , զուռուցումն , և զձգտումն որովայնի , զանախորժակութիւն կերակրոց , և զյորդառատ փսխումն թթու և ժահահոտ նիւթոց , յայնժամ տենդն այն անուանի՝ Ֆէպպրէ քօնթինուա կաստրիքա , այսինքն տենդ անընդհատ ստամոքսական . կոչի և Ֆէպպրէ պիլիօզա . այսինքն տենդ մաղձային : Յերկրին անգղիոյ և գաղղիոյ տենդս այս հասարակօրէն սկսանի դէպ 'ի յաւարտ ամառան , և աւարտի 'ի մտանելն ձմեռան : Դարձեալ՝ տենդս այս ստէպ գտանի 'ի ջերմ և 'ի տօթագին գաւառս , մանաւանդ յերկիրս ճախնուտս և խոնաւուտս , և է վտանգաւոր խիստ . և ևս անձինք , որք բնակին 'ի բացօթեայս , և աշխատին յարտորայս և 'ի դաշտավայրս , և որք ոչ անձնապահ լինին 'ի գիշերային օդոյ ևն , են առաւել ենթակայ այսր տենդի :

Ընդ սոյն գիտել արժան է , զի տենդս այս երբեմն ծագի 'ի մաղասէ կամ 'ի տողունից , յայնժամ կոչի՝ Ֆէպպրէ պիթուիթօզա . երբեմն յորդանց , յայնժամ ասի՝ Ֆէպպրէ վէռմինօզա . և երբեմն ևս զոյգ լինին Բ տենդքս նշանք ջղական տենդի , յայնժամ անուանի՝ Ֆէպպրէ կաստրիքա նէրվօզա , որպէս ունիս տեսանել 'ի ստորև , յորոց ոչ սակաւ լուսաւորին միտք՝ յորժամ խնամով մտադիր լինիցի ոք :

### Պատճառք անընդհատ ստամոքսական տենդի :

Սկզբնական պատճառք տենդիս դառնին յառատութենէ մաղձի , և յապականութենէ հիւթոց գումարելոց 'ի մէջ ստամոքսի և փորոտեաց . որք լինին յանչափ ուտելոյ խակ մրգաց , 'ի գործածութենէ ոգիաւոր հեղանիւթոց , յուժգին ործացուցիչ և լուծիչ դեղորէից , 'ի ցրտոյ և 'ի սաստիկ ջերմութենէ , յարգելմանէ սովորական հոսմանց . և արտաշնչութեան մարմնոյ , 'ի քուն լինելոյ 'ի բացօթեայ՝ այլովքն հանդերձ , որովք նեղքին բարե-

խառնութիւնն այլայլեալ, և մաղձն վրդովեալ դրդուեն զերակն, և զսահմանեան ախոնդանաց : Դարձեալ, բա-զում անգամ յառաջ գայ տենդս այս 'ի յաճախ և 'ի մօտաւոր կենակցութենէ ընդ ախտացեալ անձանց, որով հետև տենդս այս է տարափոխիկ, մանաւանդ յայն-ժամ, յորժամ զուգընթաց գտանին Ը տենդիս նշանք ջղական տենդի :

Նշանք անընդհատ ստամոքսական կամ մաղձային տենդի :

'Ի դիպուածս տենդիս բաց 'ի վերոգրեալ նշանաց 'ի վեր երևեին նախ քան զաւուրս ինչ ախտակրութեան հի-ւանդին՝ սաստիկ ցրտութիւն, ջերմութիւն, անհանգստու-թիւն սրտի, ծանրութիւն գլխոյ. նուաղանք ստամոքսի, թու-լութիւն մարմնոյ, ուռուցումն և մղձկումն խախացոցի : Դէմքն լինի տժգոյն, լեզուն սպիտակախառն դեղին, բերանն չոր, դառնահամ և խժային, որովայնն երբեմն լինի լոյծ, բայց սովորաբար պինդ, ցաւ ինչ սաստիկ 'ի փորոտիսն, և դժուարութիւն 'ի շնչառութեան. կղկղանքն դեղնագոյն և գարշահոտ : Եւ յետ քանի ինչ աւուրց՝ ջերմութիւն և թալկութիւն աճելով աճեն, և օր քան զօր նորանոր նշանս արտայայտեն. և հիւանդն զգայ զծարաւ սաստիկ, զպտոյտ գլխոյ հանդերձ անհնարին ցաւով. զարկ բազկին բաղխէ երբեմն արագ արագ, և երբեմն միջահասական, և անկանոն. գոյն երեսացն երբեմն լինի կարմիր, և երբեմն դեղին. 'ի վեր երևի դողդոջումն ստորին շրթանց, ցնորումն, տքնութի, ցաւ կրծոց, ուսոց, և կոկորդի. մէզն լինի հասարակօրէն դեղնագոյն՝ հանդերձ կարմրերանգ մրրովք : Երբեմն ախտակիրն բնութ̅ շարժի 'ի հոսումն արտասուաց ա-ռատօրէն, և երբեմն ևս ունչն ձևակերպի 'ի գոյն կանաչ. հազն երբեմն լինի չոր, և երբեմն խոնաւ. քիրտն 'ի վեր երևի 'ի ճակատն, և 'ի կուրծս. մորթն լինի ցամաք և չոր : Եւ 'ի հասանել ախտիս յայս աստիճան, յայնժամ ամենայն նշանք առաւելեալ սաստկանան, ցնորումն և ցաւն գլխոյ, ստամոքսի և լերդի զայրա-նան, և զարկ շնչերակին լինի սրընթաց, մանր. և ան-կանոն :

## Պատճառք մաղձային տենդի․ որ յիտալացւոց կոչի՝ Ֆեպպրէ բիլիօզա :

Մասնաւոր պատճառք մաղձային տենդի՝ են առաւելութիւն և թանձրամածութիւն արեանն, գանգաղութիւն ընդհանուր, ապականութիւն մաղձային հիւթոց, տկարութիւն մանրաթելից ստամոքսի : Երբեմն և ծագի յերկարատև թանչից, 'ի փորհարութէ, 'ի շատակերութէ, և 'ի շատ քնոյ, մանաւանդ անմիջապէս յետ կերակրոյ, որով մարսողական զօրութիւնն խանգարի և անբաւական լինի 'ի տրոհել և 'ի հալել զընկալեալ կերակուրն, և պատճառէ զանենայն զայս : Այս հասարակօրէն տիրապետէ յաշնան և 'ի ձմեռան եղանակի, և կարի հասարակ է 'ի հիւսիսային կողմանս, ուրանօր եղանակն լինի ցուրտ և խոնաւ : Անձինք որք սովորաբար են ենթակայ այսր տենդի, են միջնակեայք տկար կազմուածոյ, և մաղձային խառնուածոյ, և եւս նոքա, որք ուժաթափ լեալ են յերկարատև խօթութէ, յանհալ և 'ի դժուարամարսելի կերակրեղինաց :

### Նշանք մաղձային տենդի :

'Ի դիպուածս տենդիս, հասարակօրէն զուգընթաց լինին թեթև ինչ ջերմութի և թուլութի անդամոց․ լեզուն և խոռոջն բերանոյ լինի թանձրամած և մաղձատոտ, մանաւանդ 'ի պահ առաւօտեան․ և յետ այնորիկ սկսանի ախտակիրն զգալ զնողկանս և զնեղութիւն սրտի, զծանրութի գլխոյ, զշնչիւն ականջաց, զդառնութի, զանախորժակութի կերակրոց : Զարկ բազկին երբեմն լինի յամր, և թոյլ․ և երբեմն լի, և կարծր․ մորթն հասարակօրէն ջերմ է և ցամաք կամ չոր : Քիրտն բնաւ ուրեք ոչ գտանի, այլ եթէ գտանի եւս, կարի նուազ և բռնի : Մէզն լինի հում և մոխրագոյնեայ : Ախտակիրն կրէ զծարաւ սաստիկ․ (բայց ոչ որպէս 'ի դիպուածս մաղձային տենդի․) և հասարակօրէն ստորին որովայնն լինի փքացեալ և այտուցեալ, և 'ի մխելն զմատունս յուռուցեալ մասունս ստորին որովայնի, խոկոյն զգայ զցաւ ուժգին․ փսխէ զնիւթ իւր մածուցիկ և սպիտակ զօրէն սաղմի, և համն այսորիկ նիւթոյ երբեմն է անհամ, և երբեմն թթու և դառն, որ և ցամաքեցուցանէ զկոկորդն : Բաց յայսոցիկ նշանաց հի-

Կարի կարեւոր և անվրէպ ներգործիչ փսխողական դեղն 'ի դիպուածս յայս՝ է Թարթառօ էմէթիքօ։ Զայս եթէ կամիս տանել, առկ զնուրբ փոշի ըստ կշռոյ երկու կամ երեք ցորենոյ՝ 'ի լիտր մի ականակիտ ջրոյ, զկնի խառնելոյ տուր ըմպել տկարակրին տասն վայրկեանէ 'ի տասն վայրկեան սկահակ մի սրճոյ 'ի պահ առաւօտուն, մինչև պատճառեսցի փսխումն կամ լուծումն որովայնի. և իբրև սկսանի փսխողական դեղն 'ի ներգործել 'ի վերուստ, յայնժամ պարտ է խափանել զգործածութիւն սորա, և տալ արագ արագ տկարակրին զջուր գաղջ, կամ զգաղջ ջուրն երեցկի, առ 'ի առաւել մաքրել զստամոքսն. այլ նկատել օրէն է 'ի վիճակս ախտի, 'ի պարագայս կազմուածոց մարմնոյ, յուժգնութիւն նշանացն, 'ի չափն հասակի հիւանդին, և յայլ բազմակերպ հարկաւորագոյն պարագայս, որոյ վասն պարտ է երբեմն նուազել, և երբեմն յաւելուլ զչափն նախայիշեալ ործացուցիչ դեղոյն։ Իսկ եթէ զկնի փսխելոյ՝ ջերմութիւն ոչ նուազի, բերանն և որկորն ոչ տամկանայ, և ցաւն գլխոյ և այլ նշանքն ոչ թեթևանան, յայնժամ օրէն է վերստին տանել 'ի կէր զփսխողական դեղն նովին չափով և օրինակաւ մինչև ցերրորդ և զչորրորդ անգամ. և այս մարթի լինել 'ի միջահատութեան երկուց կամ երից աւուրց, և առաւել ևս ըստ պահանջելոյ նշանացն։ Բայց եթէ զկնի միանգամ առաջին փսխողական դեղոյն՝ ջերմութիւն նուազի, բերանն, որկորն, լեզուն և մորթն մարմնոյ տամկանայ, և հիւանդն լինիցի հանդարտացեալ, յայնժամ չէ օրէն բնաւ վերակրկնել։

Նոյնպէս չէ օրէն, և է գլխովին վտանգաւոր 'ի գործ արկանել զնոյն, այսինքն Թարթառօ էմէթիքօ 'ի դիպուածս, յորում զուգընթաց գտանիցին ընդ տենդիւ՝ էթիզիա, փորհարութիւն, և տկարութիւն կրծոց, ևն։ Եթէ վերոյիշեալ ախտքն՝ փորհարութիւն, նուրբ ախտն, և այլ պարագայք խոչընդոտն լինին գործածութեան վերոյգրեալ ործացուցիչ տարրոյ, որպէս պատահի բազում անգամ, յայնժամ պարտ է ձեռնամուխ լինել փոխանակ սորա 'ի գործածութիւն իպէքաքուանա արմատոյն, զորոյ զդեղանականութիւն և զներգործութիւն մարթիս տեսանել 'ի հատ. Ա. Դ. տառն Ի. 'ի կարգի իւրում։ Բայց մեք զայս դեղ եւեթ անբաւական համարիմք 'ի պատճառել զառողջութիւն. վասն որոյ հարկաւոր դատիմք ևս սրբել զորովայնն սոսկապէս 'ի ձեռն թեթև և մեղմ լուծողականաց և դրեխաց։

Իսկ եթէ 'ի ձեռն այսոցիկ ործացուցիչ, և լուծիչ դե-

զօրէից չլինիցի հնարաւոր գաղափարումն ջերմուն, և նուազումն նշանաց, յայնժամ պարտ է տանել 'ի կեր զպետագայ գեղորայս: Ա'ռ. չորս լիտր դջուր հասարակ, յոր յաւել և զերկու լիտր չիձուկ կաղթին, կամ զչորս ունկի՝ օսսխմելէ սեմպլիչէ, և տուր ըմպել հիւանդին առէպ յաւուրն, առ 'ի զովացուցանել զջերմութին, և 'ի պահպանել զընդերս 'ի փտութենէ: Իսկ եթէ այսորիկ ջերմութեն կարի իմն սաստիկ իցէ, և կից ընդ բորբոքման, յայնժամ 'ի վերայ բովանդակ նախագրեալ նուսխայի ըմպելւոյդ՝ մարթ է յաւելուլ զքսան՝ մինչև ց40 չիթս աչիտօ վիթռիօլիքօ:

'Ի դիպուածս յայս փոյթ մեծ ունել պարտ է առ 'ի զօրացուցանել զկենդանական զօրութիւն, և 'ի զերծ պահել զընդերս 'ի նեխութենէ. վասն որոյ բաց 'ի գեղորէիցն՝ զորոց խօսեցաք վերագոյնդ, հարկ է ձեռնամուխ լինել 'ի գեղորայս առաւել զօրաւորս, և առաւել ներգործիչս, որպիսի են՝ քինա քինա, աչիտօ վիթռիօլիքօ, ևն: Զայս եթէ կամիս յօրինել, առ զխոշոր փոշի կեղևոյս ըստ կշռոյ ունկւոյ միոյ 'ի լիտր մի ջերմաջերմ ջուր. զկնի 12 ժամուց՝ հեղ զգուշութեամբ զհեղուկն յանօթ ապակի, այնպէս զի մի՛ խառնեսցի մրուրն ընդ պայծառ հեղանիւթոյն. ապա յաւել 'ի սոյն զ40 չիթս աչիտօ վիթռիօլիքօ, և տուր ըմպել ախտակրին վեց կամ ութ անգամ յաւուրն զչափ միոյ դրգալի սեղանոյ:

Բայց 'ի բաց հրաժարել արժան է յերակահատութենէ, 'ի մեծասակար ուտելեաց, յոգնաւոր հեղանիւթոց, 'ի ցուրտ և 'ի խոնաւ օդոց, 'ի խթիչ և 'ի հրապուրիչ դեղորէից, ևն: 'Ի դիպուածս, յորում նշանքն ջղական տենդի 'ի վեր երևին, հարկ 'ի վերայ կայ յայնժամ 'ի գործ արկանել զնոյն դարմանս և գեղորայս՝ զորս նախագրեցաք լեալ 'ի տեղիս իւրեանց 'ի յօդ. Ե: Զկնի դադարման տենդիս արժան է առնուլ 'ի կեր զթրմոցն քինա քինայի, զորոյ զկազմելոյ զկերպն մարթիս տեսանել 'ի յօդ. Գ. միայն թէ կրկնելի է այդ գոնէ մինչև 'ի տասն և հինգ օր:

### Կառավարութիւն և դեղորայք 'ի վեր արկանելիք 'ի դիպուածս անընդհատ մաղասային տենդի:

Առավարութիւնք մաղասային տենդի նոյն են ընդ կառավարութեան ստամոքսական տենդի: Պարտ է պահպանել զհիւանդն 'ի հանգիստ, և զգոյշ 'ի ցրտոյ. հեռի առնել 'ի նմանէ զայն ամենայն, որք առթեն զձանձրութիւն, և

զանձկութ սրտի։ Կերակուրքն լինելոց են թեթևագոյն, դիւրամարս, և փոքր քանակութեամբ։ Իսկ ըմպելին զովացուցիչ և անօսրիչ, որպէս ջուրն կռամինոսի, թամարաքաքօի, և չիքօռիայ, ևն։ Ործացուցիչ կամ փափկողական դեղն որպէս 'ի մաղձային տենդի, նոյնպէս և աստ կարևոր դատի. բայց յայսմ դիպուածի կարի հարկաւորապէս ես պահանջի, մանաւանդ եթէ նուաղեցեալ իցէ ստամոքսն. և պարտ է միշտ զթառթառօ էմէթիքօ ձայնեալ ործացուցիչ տորոյն մերձեցուցանել նմա. 'ի նոյն իսկ վայրկենի, յորում նշանքն ախտիս քաղցայայտ երևին. և չափ քանակութեան ործացուցիչ տորոյն պատշաճ է լինել համաձայն զօրութեան ախտակրին, և ուժգնութեան ախտիս, որպէս խօսեցաք 'ի վեր անդր 'ի դիպուածս Ֆէպպրէ քօնթինուա կաստռիքայի։

Եթէ զկնի փափկողականին հիւանդն տակաւին բաց 'ի ջերմութենէ զգայ զանհամութիւն բերանոյ, զանախորժակութի, և զանհանգստութի սրտի, յայնժամ օրէն է վերստին 'ի վար արկանել զործացուցիչ դեղն ըստ եղանակին, զորմէ գրեցաք 'ի տեղւոջ իւրում։ Բայց յայսմ փոյթ ունել պարտ է և գուն գործել առ 'ի կակղացուցանել և անօսրել յառաջագոյն զթանձրամածութի տղմնից` կրաւութբ վերոյիշեալ կռամինեաց, թառաքաքօի, ևն. և ապա սկսանել պատշաճ է զկիրառութի ործացուցիչ դեղոյ։ Իսկ եթէ զկնի գործածութեան նախադրեալ դեղորէից, մնայ տակաւին ախտն նոյն օրինակ, յայնժամ պարտ է պատրաստել լուծողական դեղ ինչ թեթև, որպիսի է ռապառպառօն խառն ընդ քանի մի ցորեան իպէքաքուանայի։ Բայց որովհետև 'ի դիպուածս յայս գործածութիւն այլազգ լուծողականի` պատճառէ երբեմն ըղսաստիկ փորհարութի, յայնժամ օրէն է զհետ երթալ կանոնի, և դարմանոյ, զորմէ ունիմք խօսել յետոյ 'ի գլ. ԻԸ։

Նոյնպէս ախտս այս բազում անգամ` եթէ ոչ բարւոք խնամ և դարման տարեալ լիցի, փոխարկի սովորաբար 'ի տենդն ջղական. յայնժամ պարտ է սկսանիլ զգործածութի դեղորէից ըստ կանոնի և Ը կերպի, զորմէ գրեցաք 'ի գլ. Ծ. յօդ. Ե. ըստ ամենայն պարագայից։ Իսկ վասն միւս այլատեսակ ախտին կոչեցելոյ` Ֆէպպրէ վէրմինօզա, այսինքն տենդ որդնեաց, գիտելի է, զի վերոյիշեալ կառավարութիւնք և դեղորայք են յոյժ պատշաճողականք, որովհետև զուգընթաց գտանի ընդ ախտիւ միշտ նոյն ուժգնութի ջերմութեան, և տաղտկութեան.

Ցեռ այսուցիկ արժան է 'ի վար արկանել զգեղորայս առ 'ի պայմանանել և արտաքս վանել զորդունս և զճճիս. որպիսի են՝ վալեռիանա, սեմէ սանդօ, ասսա ֆէթիտա, խարտածն պղպղակի, և անանուխ: Բայց յընդարութեն գեղորեից հրաժարիլ արժան է 'ի կարի խթանիցն և 'ի նմանեաց. առաւ ձեռն արկանելի է յաղգս և 'ի պարզ նըպաստս, որպիսի է ղանդուած ինչ հատտածեղոյ, բաղադրեալ 'ի վեց կշիռ ցորեան՝ մեռքուրիօ տոլչէ անուանեալ մօդկէ, և յերկոտասան կշիռ ցորեան՝ ասսա ֆէթիտա յորձորջեալ խժոյ: Յօրինեալ տասն վեցեակ հատիկս՝ երկու առցին ընդ առաւօտս, երկու նախ քան զճաշն, և այլ երկու ընդ երեկս, միայն թէ կրկնելի է այդ գունէ մինչև 'ի վեց օր: Այլ եթէ տասնոքեան ախտակիրն, և այլ պարագայքն ընդդիմակալ լինին գործածութեն մերոդ գեղորեից մեղկառ պատրաստելոց, որպէս պատահի բազում անգամ, յայնժամ օրէն է միանգամայն 'ի վար արկանել զօրացուցիչ գեղս ըստ մերոյցուցեալ եղանակի: Նոյնպէս՝ 'ի գործ արկանել զգրեխս քացախի և ջրով պատրաստեալ:

Բայց որովհետև 'ի գիպուածս յայս տասնոքեան և փոքրիկ ախտակիրս առվար են լինել յոյժ սակաւագոյն, վասն որոյ պարտ է առ ժամանակ մի 'ի վար արկանել զթրմոյ խաշնդեղի, կամ քինաի, և կամ այլոց զօրացուցիչ և դառնահամ գեղորեից, որպիսի են աւէնցիօ, կեղև նարնջոյ, և խարտածն երկաթոյ լուծեալ 'ի գինի. Եւ յոյժ շահաւէտ է յայսոսիկ գիպուածս շրջիլն 'ի զբօսանս ըստ տանելոյ կարողութեն ախտակրին, 'ի ձեռն որոյ յորդորի հնարումն քրտանց:

## ՅՕԴՈՒԱԾ Ը.

### 'Ի Վերայ Ջղային տենդաց փենդի, որ յիտալացւոց՝ Ֆէպպրէ լէնդա նէռվօզա կոչի:

Հասարակ է ջղային գանգատանելոյս այս յեւրոպիայ, ուրանոր յաճախ պարապլին յղխթերցմունս, և յուսումնական վաստակս, և գրեթէ սակաւք 'ի յուսումնականաց լինին զերծք յախտէ յայսմանէ: Մեծինք. որք վարեն զանչարժական կեանս, և տարին անձնուանդ և գժուարամարսելի կերակրեղինօք, են առաւել ենթակայ այսմ ախտի:

### Պատճառք ջղային տանդաղտքենդի:

Այն ամենայն, որք գրգռեն զջիղս, պակասեցուցանեն զարիւնն, և զկենսական ոյժն, առթեն զտենդս զայս, որպիսի են տխրութիւն, երկիւղն, անհանգստութիւն, ագահութիւն, խորին մտածութիւնն, ձանձրութիւն, սիրահարութիւն, և հեշտութիւն իգամոլ: Նա և սա՝ յաճախ երակահատութիւն, ուժգին փախստական և լուծողական դեղորայքն, չափազանց արբեցութիւն, տհաս պտուղք, փքոտ և ջրային խոտեղէնք, նուազ սնուցիչ և դժուարամարսելի կերակուրքն, ընկողմանիլն 'ի վերայ գէճ գետնոյ. մնալն ընդ երկար թացեալ ոտիւք և զգեստիւք, լճացեալ ջուրքն ծխաստակարք, և յաճախ պակասութիւնն առողջարար սարենից, այս ամենայն ասեմք՝ պատճառք են տենդիս:

### Նշանք ջղային տանդաղտքենդի:

'Ի դիպուածս յայս հասարակօրէն զուգընթաց լինի զգացումն ինչ ջղային բռնութե, անսովոր տկարութե, թեթև դժուարաշնչութիւն, յօրանջումն, լքումն, բաբախումն սրտի, ախոնդանոտութի, գրգռականութի, թօսումն կամ անձկութիւն, հառաչանք, ցաւ և պտտումն գլխոյ, տաշորումն ստամոքսի, նողկութի սրտի, յօժարութի 'ի ժայթքել, ճնշումն կրծոց, տքնութի, շշնչումն ականջաց, ձգտումն, ցաւ ստորին որովայնի, և մելամաղձութի: Ախտակիրն ունի ցնորումն թեթև, ամփոփումն քնոց, անհանգիստ է և աչալրաց 'ի քուն լինելն, և հանապազ սոսկալի տեսլեամբ և երազօք տաժանի. երբեմն կրէ զմղձկումն և զդողդողջումն ձեռաց և ոտից, և երբեմն փախչի 'ի լուսոյ և 'ի մարդոյ. հոսէ անդադար զարտասուս յաչաց, սիրէ զառանձնութի, ծամածռէ և խանդարէ զերեսս, յաճախ ընկողմանի 'ի վերայ թիկանց, և բաղխէ զօդն ձեռամբ առ 'ի որսալ զճանճ: Զարկ բազկին երբեմն լինի անզօր, արագ, դողդողջուն, և միջահատ. և երբեմն կարծր և կծկեալ: Մէզն լինի դեղնագոյն, շիճկային, և փոշելից: Բերանն և միջին մասն լեզուի հասարակօրէն լինի չոր կամ ցամաք, բայց հիւանդն չունի զծարաւ սաստիկ, և հազիւ երբէք կամի ըմպել ըզջուր:

Եթէ յարատևեալ մնասցէ ախտս այս, յայնժամ՝ տակարութիւն և անուժութիւն աճելով աճի, և օր քան զօր

վայլ նորանոր նշանս արտայայտէ, և ախտակիրն սկսանի զգալ զթմբրութիւն, զցաւ ինչ արտևանաց, և զնեղութիւն անհնարին. և այդպիսի նշանք սովորաբար սաստկանան 'ի գիշերի, և 'ի ծագել առաւօտու թեթևանալ սկսանին: Ախտակիրն զգայ յանձն զոյգ ընդ նշանացս միանգամայն ևս ցրտութիւն և ջերմութիւն ինչ. յայն սակս 'ի վեր երևի կարմրութիւն յերեսս հանդերձ ջերմութեամբ, և կարի սաստ-կութիւն յեղջերեայ թաղանթս աչաց: Հուսկ յետոյ այնքան սաստկանայ տկարութիւն կամ թալկութիւն, մինչև հիւանդն ոչ ևս կարէ յոտն կանգնիլ:

Ընդ այսոցիկ գիտել արժան է, եթէ չիք ինչ պայմանեալ սահման յապաղման այսր տեսակի տենդի. ուր ուրեմն մարթ է 'ի ձեռս բերել զկատարեալ ապաքինութիւն 'ի մէջ մետասան կամ վեշտասան աւուրց. երբեմն յերկարաձգի մինչև ց40 աւուրս, և երբեմն ևս յարատևէ ամիս ինչ. և վասն այսորիկ անուանեցաւ՝ ջղային դանդաղատենդ: Այլև զայս արժան է գիտել, եթէ տենդս այս գործածութեամբ ներհակական դեղորէից մարթի փոխարկիլ 'ի մաշարայական ախտն, զոր խօսեցաք՝ թիզի անուանեն: Նշանք բարեգոյնք՝ են տամկութիւն լեզուի, բերանոյ և մորթոյ մարմնոյն, և նորոգութիւն զօրութեան 'ի մետասաներորդում կամ 'ի վեշտասաներորդում աւուրն, հանդերձ չափաւոր և գոլորշային քրտամբ, որ ցուցակ է արմատախլելոյ ախտիս:

Քունն չափաւոր և ախորժակք կերակրոյ ևս՝ են նշանք բարի: Իսկ նշանք վատթարագոյնք և մահահրաւէրք՝ են ուժգին որովայնալուծութիւն, հոսումն ցուրտ և խժային քրտանց, գորշագունիլն երեսաց, առաւել սպիտակութիւն յեղջերեայ թաղանթս աչաց, 'ի վեր երևումն խոցից 'ի խոռոչս բերանոյ. դժուարաշնչութիւն, ցնցումն ջղաց, ձգտումն ձգանաց, քնահատութիւն, նուաղումն սրտի, կնճռումն դիմաց, եղծումն լսելեաց, դժուարութիւն յարտաթորել զաւելորդս որովայնի, դողդոջումն լեզուի, հեծկլտանք, ընդոստ և միջահատ շարժումն զարկի բազկին:

### Կառավարութիւն 'ի վեր արկանելի 'ի դիպուածս ջղային դանդաղատենդի:

Ի կառավարութեան այսր ախտի խնամ մեծ տանել արժան է առ 'ի կանխաւ ունել զառաջին, զհիւանդն քաջալերել, և կանոնաւորել զժուժկալութիւն որկորոյ, հե-

ափ առնել 'ի նմանէ զայն ամենայն, որ պատճառէ զձանձրութիւն և զնեղութիւն սրտի, և այսպէս 'ի բաց հերքել զախտս 'ի ձեռն թեթև ործայուցիչ և զօրացուցիչ դեղորէից : Ճահողագոյն կերակրեղէն է հացամթանն՝ յոր մարթ է յաւելուլ սակաւ ինչ շաքար 'ի բարեխառնել. ընտիր մսան վարսակի, խաշուած բրնձոյ, հացն բարւոք եփեալ և թրջեալ 'ի մէջ գինւոյ : Եւ ըմպելին ջուրն կրասմինեալ. բաղադրեալ հիւթոյն կիտրոնի կամ քաղցր նարնջոյ, չեճուկն կաթին բաղադրեալ ընդ գինւոյ : Նոյնպէս և օգտաւէտ է ջրախառն գինի :

### ԴԵՂՈՐԱՅՔ 'Ի ԿԻՐ ԱՐԿԱՆԵԼՈՅ 'Ի ԴԻՊՈՒԱԾՍ ՋՂԱՅԻՆ ԴԱՆԴԱՂԱՓԵՆԴԻ :

'Ի սկզբան անդ հիւանդութեան, եթէ ախտաւորն ըղձայ զյօժարութիւն ինչ 'ի փսխել. զցաւ ստամոքսի կամ ստորին որովայնի, յայնժամ պատշաճ է տալ նմա 15 կամ 20 կշիռ ցորեան՝ իբեքաքուանա, և զկնի պարտ է առնուլ 'ի պահ առաւօտու 'ի ծոմուստ : Եւ յետ այնր ըմպել զխաշուած երիցկի՝ որչափ պէտք իցեն առ ժայթքելոյ ըստ պահանջելոյ հարկին : Եւ այս փսխողական ոչ միայն մաքրէ զստամոքսն, այլ և շարժէ զքիրտն, և երբեմն առանց իրիք նպաստաւորութեան այլոց դեղորէից փարատէ զտենդս զայս :

Իսկ եթէ զկնի քանի մի աւուրց զօրանայ ախտն և սաստկանան նշանքն, յայնժամ փսխողականն չլինի այնքան պատշաճապէս ներգործիչ, և օգտակար : 'Ի դիպուածս յայս երակահատութիւն, և ամենայն սաստիկ և զօրաւոր լուծողականքն՝ են յոյժ վնասակարք, և վտանգաւոր : Միայն յայսր ախտակի առնգի մարթ է 'ի վեր արկանել զսասսափառապառօ, որ այն ինքն է խաշնդեղ. որ մեղմապէս լուծիչ է և զօրացուցիչ : Ես զդարմանս զայս տամ ըստ կերպի փոշւոյ, կամ նաև իբր թրմոց : Եթէ իբրև փոշի, պարտ է լինել մի և կէս տրամ նուրբ փոշի խաշնդեղ, յոր յաւել չորս ունկի՝ զշիճուկն կաթին, որ իցէ պատրաստեալ գինեաւ : Իսկ եղանակն, զոր պահեմ 'ի տալն թրմոց, է այս, առէք զխաշոր փոշի սասսափառա ըստ կշռոյ ունկւոյ կիսոյ՝ 'ի հինգ ունկի ջուր ջերմ. զկնի 12 ժամուց՝ հեղ զզուշութեամբ յանօթ ապակի, այնպէս՝ զի մի խառնեսցի մրուրն ընդ պայծառ հեղանիւթոյն. և յետոյ տուր ըմպել հիւանդին 'ի պահ առաւօտուն 'ի ծոմուստ :

Գրեխն պարտի լինել ջրոյն երեցկի կամ վեցակի, խառն ընդ կաթին, և աղի, զոր պարտ է 'ի վար արկանել յերկուս կամ յերիս աւուրս միանգամ: Դարձեալ 'ի դիպուածս յայս յոյժ օգտակար և բարեգոյն վարկանիմ զվէզիքաթօրիօ, զոր պատշաճ է դնել 'ի վերայ ծոծրակի, և բազկաց:

Ըստ պատկութեան թուլութեան, և այլ յառաջագոյն նշանաց պահանջի և առաւել հոգածութի և մտադրութե ախտիս, և դեղորայքն յայնժամ լինելոց են զօրացուցիչ, և խթիչ. որպիսի են մուշկն, քափուրն, ցնդական աղն եղջերն եղջերուի, բեշկն մէկոյ, ևն. որ այսպէս բաղադրի: Առ տասնևհինգ կշիռ ցորեան մուշկ, երեք ցորեան՝ քափուր, և վեց ցորեան՝ սալ վօլաթիլէ տի քօռնօ տի չէռվօ, և յաւել յայնչափ շարապ կամ շիռօբ՝ որչափ պէտք իցեն առ կազմելոյ զզանգուած: 'Ի զանգուածոյ աստի 'ի վեց ժամս միանգամ առնու հիւանդն վեց կշիռ ցորե[illegible] իւրաքանչիւր նուագ:

Եթէ ախտ[illegible]ածի 'ի վէզիքաթօրիօէ և 'ի զանգուածէ աստի, պիտոյ եմք յայնժամ 'ի վար արկանել զառաւելազդու դեղորայս. որ այս կերպ յօրինի: Տասն կշիռ ցորեան՝ ամենանուրբ փոշին սէռբէնթառիա վիրճինիանա անուանեալ արմատոյ, նոյնչափ՝ փոշին քօնթռայերվա արմատոյն, և հինգ ցորեան՝ փոշին բեշկ մէկոյ, յաւելլով 'ի նոյն զշարապն քրքմոյ այնչափ՝ որչափ պէտք իցեն առ կազմելոյ զզանգուած: Եւ զայս պարտ է առնուլ երիցս անգամ յաւուրն:

Բայց 'ի զանգուածոց աստի՝ գոյ և այլ դեղ, որ առանց զայրացուցանելոյ զօրացուցանէ զջիղս և նուաճէ զախտն, որ այսպէս յօրինի: Առ քսան կշիռ ցորեան՝ արմատն վալէռիանաի, (որ ժողովեալ իցէ 'ի լեռնային տեղեաց.) և չորս ցորեան՝ քրքում, և նոյնքան բեշկ մէկոյ. զամէնն 'ի միասին լուծեալ բարիոք. տուր ախտակրին երեք կամ չորս անգամ յաւուրն՝ խառն ընդ չիճուկի կաթին, որ բաղադրեալ իցէ գինեաւ:

Եւ զայս պարտ է գիտել, եթէ տենդս այս գործածութեամբ ներհակական դեղորէից մարթի փոխարկել 'ի տենդն ջլական. նմին իրի պարտ է կրկին և կրկին քննութիւ առնել 'ի վերայ նշանացն, և ապա 'ի վար արկանել զդեղորայս: Այլև գիտելի է, զի ընդ տենդիս այսմիկ երբեմն զուգընթաց լինի տենդն ընդհատ, և կամ զկնի ապաքինելոյն 'ի վերայ գայ նոյն տենդն ընդհատ. յայնժամ հարկ է 'ի վերոյիշեալն յաւելուլ զքինա քինա,



# ԳԼՈՒԽ Բ.

'Ի վերայ ընդհանուր բորբոքմանց կամ փափկմանց:

## ՅՕԴՈՒԱԾ Ա.

Բորբոքումնդ անուն Թէպէտև հասարակ, այլ յատ-մարի 'ի գործածութիւն հռոմէական բանին՝ ինֆիամմացիօնէ, որով նշանակի բորբոքումն, ելեալ 'ի բայէ անուի՝ ինֆիամմառէ, որ է լուցանել կամ բորբոքել. յորմէ և արաբացիք մուհրիգան, կամ խթիհապ կոչեն, և պարզ՝ կիրիմ, որ է խօթումն ինչ տապացուցիչ, և փոփոխամրծագեալ յանձեցմանէ և 'ի ձկտմանէ ջերմութեան արեան որ լինի 'ի խթողական հիւթոց մսեղց և ձապաղելոց յերակս, և 'ի ներքինացուցիչ կից ոգւոյ. ևս յայլևայլ անողից և ախտից, որպէս անցի իւրաքանչիւր յիւրում տեղւոջ: Նախ բերէ ցաւութիւն և հրահէզ ջերմութի, և ապա խստութի կմ կարծրութի ինչ որ և իցէ ընդերաց կմ անդամոց կենդանւոյն, հանդերձ կարմրութբ և ցաւով, և լիութբ սաստկութբ՝ և կարծրութբ զարկի բազկերակին. և ցաւն այն՝ որ սովորաբար 'ի վեր երևի 'ի նոյն խստացեալ անդամն, լինի երբեմն Թեթև, և երբեմն սաստիկ. երբեմն ծանր և խռովեալ, և երբեմն խայթիչ և բաբախ. յորմէ բազում անգամ գնեա գան խնձանք ինչ խիստ, և պատճառեն դալալար, զխնխաղթ, զնեխութիւն և զքաղցկեղ, և երբեմն ևս զմահ:

Ընդ այսոցիկ գիտել արժան է, զի աճնպէս անուանս ընծայեն այսմիկ բորբոքման, ըստ այլևայլութե մասանցն որք են ենթակայ ընդունելոյ զայս: Նախ՝ յորժամ բորբոքումն զկայ առնու յուղեղն կմ յայլ ներքին մասունս գլխոյ, յայնժամ անուանի՝ ինֆիամմացիօնէ չէֆալիքէ. կամ ինֆիամմացիօնէ տէլ չէռվէլլօ. այսինքն բորբոքումն ուղղոյ: Երկրորդ՝ եթէ բորբոքումն այս 'ի վեր երևի յաչս, յայնժամ կոչի օթթալմիա. այսինքն բորբոքումն աչաց: Երրորդ՝ եթէ յականջս, յայնժամ ասի՝ օթիթիտէ. այսինքն բորբոքումն ականջաց: Չորրորդ՝ 'ի լինելն բորբոքման 'ի լեզուն, ասի յայնժամ կլօսսիթիտէ: Հինգերորդ՝ 'ի լինելն յորկորն, յորջորջի յայնժամ չինանքէ. ընդ այսու անսական են բորբոքումն խռչափողին, հազա-

դին, քմաց, մակալեղութին են: Վեցերորդ՝ եթէ բորբո- քումն 'ի վեր երևի 'ի թոքս և 'ի լանջամաշկս, յայնժամ անուանի՝ բէռիբնէումօնիա և պլէուռիթիան: Եօթնե- րորդ՝ եթէ 'ի սիրտն, յայնժամ ասի՝ քառտիթիան: Ու- թերորդ՝ եթէ 'ի ստոծանին, յայնժամ կոչի՝ տիաֆռամ- մաթիան: Իններորդ՝ եթէ 'ի ստամոքսն, յայնժամ ասի՝ կասթռիթիան: Տասներորդ՝ եթէ 'ի ստորին որովայնն, յայնժամ ձայնի՝ էնթէռիթիան: Մետասաներորդ՝ եթէ 'ի լեարդն, յայնժամ կոչի՝ էբաթիան: Երկոտասան- երորդ՝ եթէ 'ի փայծաղն, յայնժամ ասի՝ սբլէնիթիան: Երեքտասաներորդ՝ եթէ յերիկամունս, յայնժամ կոչի՝ նէֆռիթիան: Չորեքտասաներորդ՝ եթէ 'ի փամփուշտն, յայնժամ ասի՝ չիսթիթիան: Իսկ հնգետասաներորդ՝ ե- թէ յարգանդն, յայնժամ կոչի՝ մեթռիթիան. զորս յայսմ վայրի սկիզբն արասցուք մի առ մի ստորագրել ըստ վերոյգրեալ կարգի:

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

'Ի վերայ բորբոքման ուղղոյ, որ ցէփալալգեաւոր կոչի՝ ֆրէնիթիսմա- ցինէ փէւ ըէռւկէսը:

Բորբոքումն այս երբեմն է գոյացական; և բազում անգամ ևս է իբր նշան ինչ այլ ախտից, որպէս բորբոքո- ղականքն տենդից, են. ուր ուրեմն մարթ է ախտիս լինել գոյացական, և այն յանձինս յարբունս հասակի եղեալս, և 'ի բնակութիւնս ջերմագինս: Անձինք հրայինք, որք ու- նին զկնիս սաստիկս, են առաւել ենթակայ բորբոքմանս:

Պատճառք բորբոքման ուղղոյ:

Բորբոքումն այս բազում անգամ պատճառի ևս 'ի հսկմանէ, մանաւանդ եթէ հսկումն լինիցի հանդերձ սաստկանաւոր խորհրդով, և խոր մտածութբ: Դարձեալ՝ մարթ է ծագել 'ի չափազանց ըմպելոյ՝ ոգեւոր հեղա- նիւթոց, 'ի սաստիկ սիրահարութէ, 'ի տրտմութէ, յուժ- գին և 'ի մշտատև գլխացաւութէ, յարգելմանէ իրիք սո- վորական հոսման, զորօրինակ թանչից, դաշտանի; եւ: Եւ ևս նոքա՝ որք անզգուշաբար ընկողմանին 'ի տօթա- գին արևու, կմ բաց գլխով 'ի քուն լինին ընդդէմ հող- մոյ, 'ի բնակութիւնս ջերմագինս՝ են ենթակայ ախտիս անվրէպ. Նոյնպէս մարթի պատճառիլ ևս 'ի հարուածոց

'ի յետոյն կողմն ականջաց, կամ 'ի ծոծրակն, և կամ 'ի յերանս, և նստուցանել զախտաւորն 'ի վերայ շոգեաց ջրոյ, և ս'ի գործ արկանել զդեղս պատրաստեալս զովացուցիչ և կակղացուցիչ դեղորէիւք, և մարթ է յաւելուլ 'ի վերայ ևս սակաւ ինչ քացախ:

'Ի դիպուածս յորս յառաջ գայ ախտս այս յորդեալականութէ իրիք հոսման, եթէ բնականի, և եթէ անսովորականի, պարտ է փութալ վաղվաղակի շարժել ըզնոյն հոսումն, և կամ լնուլ զտեղի նորա 'ի ձեռն այլ ինչ իրաց: Միշտ պարտ է լոյծ պահել զորովայնն 'ի ձեռն գրեխայ, և թեթևագոյն լուծողականաց: Յոյժ օգտակար գտեալ է ևս գրեխս առնել 'ի զովացուցիչ դեղոց, և 'ի հեղանիւթոց, որպիսի են քացախ, սառն նիթռօ, ևն. և ս 'ի գործ արկանել նիթռօ սակաւ քանակաւք 'ի մէջ հատորակ ըմպելեաց ախտաւորին: 'Ի ստիպողական դիպուածս մարթ է զայն նիթռօն 'ի գործ արկանել 'ի մէջ 24 ժամուց երկու դրամ, կամ ևս առաւել: Պարտ է զերծուլ զգլուխն ախտաւորին, և խառնել զքացախն ընդ անուշադրի, և ընդ նիթռօի, շփել այնու զգլուխն սակաւ յաւուրն. կամ թացեալ այնու զչուխայ, պարտ է դնել 'ի վերայ գլխոյ նորին:

Արդ՝ 'ի ժամանակի, յորում 'ի գործ արկանեսցեն ըզզարմանս զայս, յայնժամ պատշաճ է դնել զոտս ախտաւորին 'ի գաղջ ջուր մինչև ցծունկս, կամ 'ի բաղանիս մուծանել զբովանդակ մարմինն 'ի դիպուածն յորում բորբոքումն ուղղոյ պատճառեալ լինի յարենէ, կամ 'ի պղտորութենէ նորին: Իսկ եթէ յառաջ գայ բորբոքումն ուղղոյ 'ի սևամաղձէ, յայնժամ ցուրտ ջրով բաղանիս առնելն է յոյժ օգտակար, և յարմարագոյն: Այլ եթէ զինի 'ի գործ արկանելոյ զամենայն վերոյգրեալ հնարս, տակաւին բորբոքումն մնայ նոյն օրինակ, յայնժամ հարկ է դնել զմէջլիքաթօռիօ 'ի վերայ այնր մասին գլխոյ, ուր առաւել զգայ զցաւն, և այս ոչ միայն քարշէ արտաքս զցաւս գլխոյն, այլ ևս շիջուցանէ զբորբոքողականութիւն: Սովորութիւն է ևս յայդպիսի դիպուածս բորբոքողականութեան, տալ քաֆֆօրա ընդ նիթռօի բազում ցորեանս. նոյնպէս սակաւ 'ի կիր առնուն մուշքիօն, և օպիօն. բայց մեծի զգուշութեան պէտք են առ 'ի կիր արկանել զայսպիսի խթիչ կամ զրգռիչ դեղորայս, և զայն 'ի պահանջել հարկին միայն, այսինքն առ 'ի անօրինել զանկարգ, զաջէծուփ, և զդողդոջուն ընթացս զարկի բազկերակին:

# ՅՕԴՈՒԱԾ Գ.

### Յաղագս բորբոքման աչաց, որ ասի օփթալմիա ։

Ախտքն աչաց են բազմաթիւ, որոց ենթակայ է մարդն, որք յառաջ գան 'ի բազմազան պատճառաց, ուստի և մարթին փչացուցանել միանգամայն և ապականեցուցանել զզանազան գործարանս տեսանելեաց, և զպէսպէս ջիղս աչաց. բայց մեք խօսեսցուք յառաջիկայդ զառաւել հասարակ ախտից աչաց, որք ունեին զոյգ ընդ ներկանս զբորբոքականութիւն, և զդարմանն ինչ կարութէ ։

### Յաղագս բորբոքման և ախտից աչաց ։

Բորբոքումն կամ ախտ աչաց՝ է յոյժ յաճախ յեգիպտոս քան յայլ մասունս աշխարհի, և այս գուցէ յառաջ գայ 'ի տօթագին շնչմանէ հողմոց, կամ 'ի միգախառն փոշեաց, և կամ 'ի տօթախարշ աւազոց, որք սահեալ մտանեն յաչս մարդկան ։ Իսկ սովորական տեղիք կամ կայանք բորբոքման են թաղանթքն, և շառաւիղք աչաց, և այլ գործարանքն տեսութեան ։

### Պատճառք բորբոքման և ախտից աչաց ։

Արտաքնական, և մասնաւոր պատճառքն բորբոքման և ախտից աչաց՝ են անպայման պարապմունք յընթերցանութիւն, և 'ի գրութիւն, մանաւանդ 'ի գիշերային պահու. յերկարատև հայեցումն 'ի վերայ սպիտակագոյն և փայլուն իրաց. որպիսի են ձիւնն, թուղթն, անդամանդն ևն ։ Նոյնպէս և երկար պշնելն 'ի վերայ լուսաւոր իրաց, զորօրինակ արեգական, լուսնոյ, փայլական, հրոյ, ճրագի, ևն ։ Դարձեալ, արգելականութիւն ո՛ր և իցէ հոսմանց. զորօրինակ է հոսումն արեան յըռնգացն, դաշտանի, արտաշնչութիւն մարմնոյ, մանաւանդ քրտան ոտից, ևն ։ Բազում անգամ ևս պատահի և յառաջ գայ յանչափապէս գործածութենէ ոգեւոր հեղանիւթից, 'ի հակմանէ, յանձկութէ, 'ի տխրութէ, 'ի սաստիկ բարկութէ, 'ի ճնշմանէ օդոյ, 'ի պնդութէ որովայնի, 'ի փոշեաց և յայլ ո՛ր և իցէ նիւթոց մտելոց յաչս, 'ի գոլորշեաց թունալի մետաղաց, և հանքաց, 'ի բարկ և յաղդու ծխոց փայտից և այլոց նիւթոց, 'ի տկարութէ ջլաց, յանսանձ

սիրահարութեան և 'ի վաւաշոտական ցանկութեան, յիջուա-ծոց, 'ի հարբելոյ:

Նոյնպէս յառաջ գալ մարթ է բորբոքմանս, եթէ ոք զինի քրտնելոյ նստիցէ հանդէպ հողմոյ, կամ ընկողմա-նիցի 'ի վերայ գէճ գետնոյ, և կամ բաց գլխով 'ի քուն լինիցի ընդդէմ հողմոց, և այլն: Դարձեալ ախտս այս յոլով անգամ ևս յառաջ գայ 'ի գաղղիական ախտէ, 'ի խաղխաղ-թից, 'ի սքռօֆօլօ կոչեցեալ խոցէ, 'ի բորոտութենէ, 'ի գոնջութենէ, յորքինէ, 'ի պիսակէ, 'ի վարդախտէ, 'ի սքօռպուդօ անուանեալ ախտէ, 'ի հնացեալ վիրաց, և այլն: Յայսցանէ և 'ի սոցին նման ախտից յառաջ եկեալ ախտքն աչաց ոչ ընաւ ապաքինին, եթէ ոչ նախ բուժեսցին մե-րոյսացեալ ախտքն. յայն սակս պարտ է նախ դարման տանիլ ախտիցն այնոցիկ՝ յորոց պատճառեցին, 'ի գործ ար-կանելով զկառավարութիւնս և զդեղորայս ներքականս իւ-րաքանչիւր ախտից:

Յաղագս նշանաց բորբոքման աչաց:

Գլխաւոր նշանք են ուժգին այտուցն, արտասուելն, կարմրութիւն, ցաւն, և ջերմութիւնն աչաց. հանդերձ խղխղայթիւ, որք 'ի դոյզն ինչ շօշափմանէ առաւել ևս զար-թանեն և աճին. և միով բանիւ ասացից. տարաբաղդիկ ախտացեալն՝ լինի գլխովին անընդունակ իրիք լուսոյ: Ախտաւորին զգայ ջերմութիւն, և ծանրութիւն ինչ գլխոյ, զորս բաղկերակին լինի խիստ և արագ: Յերկարաձգեալ ձևոյն այսպիսի բորբոքմանն, առհասարակ 'ի վեր երևին բիծք և լուսանիք 'ի մէջ տեսանելեաց, և ուրեք ուրեք 'ի բիբս աչաց, որք երբեմն գլխովին արգելուն զտեսութիւն: Դի-տել արժան է, եթէ բորբոքումն լինիցի յոյժ դժնեայ և զօրաւոր, և զոյգ ընդ այնմ զգայցէ սաստիկ ցաւ ինչ գլխոյ, յայնժամ իսկ և իսկ զհետ գայ տկարութիւն ինչ գործարանացն տեսանելեաց, և երբեմն ևս կուրութիւն գլխովին:

Յաղագս խնամոյ և կառավարութեան, զոր պարտ է 'ի գործ արկանել 'ի բորբոքման աչաց:

'Ի նշանաց այսպիսի ախտի քաջայայտ երևի, եթէ հարկաւորապէս պահանջի կառավարութիւն իմն, որով մարթ իցէ բարեխառնել զջերմութիւնն, և շիջուցանել զբորբոքականութիւնն: Կերակրոցն պարտ է լինել թե-

## ՑՕԴՈՒԱԾ

Ցաւագին բորբոքման աչաց, որ ...

Ախտքն աչաց են բազմաթիւ, որոց ...
որք յառաջ գան 'ի բազմազան պատճ...
մարթին վշտացուցանել միանգամայն և...
զզանազան գործարանս տեսանելեաց, ...
աչաց. բայց մեք խօսեսցուք յառաջիկայ...
սարակ ախտից աչաց, որք ունին զդէ ըն...
բոքողականութիւն, և զվտանգ ինչ կուր...

Ցաւագին բորբոքման և ախտից ա...

Բորբոքումն կմ ախտ աչաց՝ է յոյժ ...
տոս քան յայլ մասունս աշխարհի, և այս...
գայ 'ի տօթագին շնչմանէ հողմոց, կամ...
փոշեաց, և կամ 'ի տօթախարշ աւազո...
մտանեն յաչս մարդկան: Իսկ ստորակա...
կայանք բորբոքման են թաղանթքն, և շառ...
և այլ գործարանքն տեսութեց:

Պատճառք բորբոքման և ախտից ա...

Սկզբնական, և մասնաւոր պատճառքն ...
ախտից աչաց՝ են անպայման պարապումն յ...
թիս, և 'ի գրութիւս, մանաւանդ 'ի գիշերս...
յերկարատև հայեցումն 'ի վերայ սպիտակ...
լուն իրաց. որպիսի են ձիւնն, թուղթն, ...
ևն: Նոյնպէս Է երկար պշնելն 'ի վերայ լու...
զորօրինակ արեգական, լուսնոյ, փայլական...
գի, ևն: Դարձեալ, արգելականութիւն ո...
մանց. զորօրինակ է ...
նի, արտաշ...
ևն: ...

թուաջոյն, և դիւրամարս, որպիսի են թեթև արգանակն, կաթն, ևն: Ըմպելին նորա պարտ սովորաբար լինել ջուրն գարւոյ, կամ վարսակի, շիճուկն կաթին, թեթև լիմոնաթա, և թամարինտ, յորոյ վերայ արժան է յաւելուլ սակաւ ինչ շաքար, որ լինի յոյժ պատշաճողական ըմպելի 'ի դիպուածս յայս: Պարտ է որքան մարթ իցէ՝ 'ի հանդարտեան և 'ի յանդորրութեան ունել զախտաւորն, և 'ի բաց տանել զայն ամենայն, որք կարեն զայրացուցանել զարիւնն և սաստկացուցանել զբորբոքումս զայս. մանաւանդ զի և առատութեան իսկ լուսոյ է յոյժ վնասակար. վասն որոյ և սենեակն՝ յորում բնակի ախտաւորն, պարտ լինել մթագին. և ոչ արժան է լինել ոչ այնքան ջերմ, և ոչ այնքան ցուրտ.

Յաղագս դեղորէից. զոր մարթ է 'ի վեր արկանել 'ի դիպուածս բորբոքման աչաց:

Յայսպիսի դիպուածս պարտ է հարկաւորապէս երակ հատանել և հանել զարիւն իբր տասն կամ երկոտասան ունկի. և զրեթէ այդ է սեպհական դեղն, զորմէ կախեալ կայ բարի ելքն աչաց. բայց նկատել արժան է յաղ 'ի պարագայս անձին. զոր օրինակ 'ի հասակն, 'ի զօրութեան, 'ի սաստկութեան նշանաց. ևն: Օգտակարագոյն է միանգամայն դնել զտզրուկս 'ի մերձաւորս մասունս աչաց, կամ 'ի յետոյս ականջացն: Նոյնպէս արժան է 'ի գործ արկանել զվէզիքքաթօրիօ, զոր և պարտ է դնել 'ի վերայ ծոծրակի, կամ յետոյս ականջաց: Դարձեալ պարտ է միշտ լոյծ ունել զորովայնն 'ի ձեռն կակղացուցիչ և բարեխառն դեղորէից. որպիսի են քռէմօռ տի թաթառօ, թամարինտի, ռապառպառօ, սալ կլաուպէռ, աքննա, նիթռօ, ևն: Այլև պարտ է 'ի գործ արկանել զդեղս կակղացուցիչս միանգամ յաւուրն: Նաև պարտ է դնել եւս յաճախակի զոտս ախտաւորիս 'ի ջերմ ջուր մինչև ցծունկս:

Յոյժ օգտակար դեղ է եւս քաթապլաղմա առնել 'ի զովացուցիչ և 'ի մեղմիչ ծաղկանց զաղջ կաթամբ և միջուկ հացի, և տաքով տաքով ամբողջահաստ դնել 'ի վերայ ցաւագնեալ աչաց. և նախքան զպաղելն պարտ է փոխել և վերանորոգել. չէ պարտ լինել այնքան սաստիկ ջերմ, և ոչ կարի ցուրտ. քանզի առաւել ջերմն, և կարի ցուրտն հաւասարապէս վնասակար են աչաց: Երբեմն եւս պատշաճական է յայսմ դիպուածի լաւատանօ լիգուէրօն. զոր

պարտ է հեղուլ 'ի մէջ ջաւաղանաց աչացն երկու անգամ յաւուրն գիշերն երկու ցորեկոյ : Իսկ եթէ ախտակիրն ունիցի քնհատութիւն կամ տքնութիւն, յայնժամ արժան է տալ նմա յամենայն երեկոյի զառաւն և հինգ կամ քսան շիթս նոյն լաւտանօս լեգուխոսն : Այլ եթէ յառաջ գայ բորբոքումն աչաց 'ի տկարութենէ, և 'ի թուլութենէ ջլաց, յայնժամ ցաւրա ջրով բաղանիս առնելն է յոյժ օգտակար, և յաջողակագոյն :

Դարձեալ, նշանաւոր դեղ մի է յայսմ բորբոքման յետագայ խառնուրդս : Ա՛ռ կէս ունկի օղի, կամ քացախ, և երեք ունկի ջուր ցուրտ, խառնեա 'ի միմեանս, և տուր ցաւտակրին սակաւ սակաւ լուանալ զաչս իւր : Բայց առաւելագոյն դեղն յայսմ դիպուածի է խառնուրդ ինչ, որ այսպէս բաղադրի : Մի տրամ՝ Փիօր տի ծինքօ, և երկու տրամ՝ կօմմա առապիքա, և վեց կամ եօթն ունկի ջուր հասարակ : 'Ի խառնուրդէ աստի՝ պարտ է ախտակրին լուանալ զաչս իւր՝ վեց կամ եօթն անգամ յաւուրն : Ես ինձ իսկ ոչ այլազգ յաջողեցաւ դարման տանել, բայց եթէ տալով զառաւել յարմարականն յարտաքին դեղորէից աստի, որպիսի են լեգուտօ օթթալմիքօ, և թութիա, զորմէ լիագոյն ասացեալ 'ի հատ. Ե. 'ի տառն Թ. 'ի կարգի իւրում :

Ցաւագին պէտքերէնց և խնամարարութեան, զորս պարտ է 'ի վեր արկանել զկնի անցանելոյ բորբոքման աչաց :

Բայց որովհետև 'ի դիպուածս յայս գործարանքն տեսութեան և արտևանունքն աչաց ախտակրին՝ տկար են լինել յոյժ տկարագոյնք և թուլագոյնք. վասն որոյ պարտ և պատշաճ է խոթացելոյն 'ի կիր արկանել առ ժամանակ ինչ ինֆուզիօնէ տի քինա, և զկերպն 'ի կիր առնլոյ ասացես 'ի հատ. Ե. 'ի տառն Ի. 'ի կարգի իւրում : Դարձեալ, 'ի դիպուածս յայս պատշաճողական է նաև խարանն, զոր մարթ է բանալ 'ի սրունս կամ 'ի բազուկս, և թողուլ բացեալ ընդ բովանդակ կեանս ցաւակրին : Այլ և 'ի գարնանային և յաշնանային ժամանակի պարտ է երակ հատանել, և 'ի գործ արկանել թեթև ինչ լուծողական դեղս, որոյ գործածութիւնն է օգտակարագոյն՝ ոչ միայն 'ի մաքրել, այլ և առ 'ի խափանել զվերադարձումն այսորիկ բորբոքման :

Ակն իշխեցօղ՝ ըղձայութեանց,
կերպասուած փափկիկ՝ դրիւ գեղազանց.
հօդւոյ մըռայց՝ զոյգ է դըրանց,
գարման խընդրէ՝ զեռ անդէն զանձ։

## ՅՕԴՈՒԱԾ Դ.

Ցաւագին բորբոքման, կամ ցաւոց ականջաց. որ ասի՝ օթիթիտէ, կամ տօլէօռ տ՚օռէյլ։

Բորբոքումն կամ ցաւս այս սովորաբար 'ի վեր երեւի 'ի ծածկոյթ անուանեալ թաղանթն, (որք են մարմինք նուրբ 'ի ներքին խոռոչս ունկան 'ի մէջս լսելեաց։) Այս բորբոքումն երբեմն լինի յայնքան սաստկագոյն աստիճա-նի, մինչև պատճառէ խլութի եւ անդամալուծութե։

Պատճառք բորբոքման ականջաց։

Ախտս կամ բորբոքումն այս ունի պատճառիլ յայնմ ամենայնէ՝ որք կարեն զայրացուցանել զվերոյասացեալ թաղանթս, և ջերմացուցանել զարիւնն. վասն այսորիկ հեղձումն, սաստիկ բարկութիւն, արգելումն արտաշնչութեան մարմնոյ, մնալն ընդերկար բաց գլխով ընդդէմ ցրտագոյն հողմոյ՝ մանաւանդ զկնի քրտնելոյ, կարեն պատճառել զախտս զայս. նոյնպէս յաւուր մարթ է գալ ախտիս 'ի գործածութենէ ողխաւոր հեղանիւթից, յարգելականութենէ իրիք սովորական հոսման, 'ի հարուածոց 'ի գլուխն, 'ի հարբուխոյ, յիջուածոց, 'ի յօդուածացաւութենէ, 'ի ցըն-ցողականութենէ, 'ի յարգանդացաւութենէ, յախտնդանոտու-թենէ, ևն։ Բազում անգամ եւս պատահի և յառաջագայ յորդանց, և յայլ միջատաց մտելոց յականջս, յառա-տութենէ կեղտից կուտակելոց 'ի ներքս յունկան, 'ի յաճեց-մանէ սպնգանման մսոյ 'ի խոռոչս ականջաց։

Նշանք բորբոքման ականջաց։

Բորբոքումն այս հաստատակօրէն սկիզբն առնու յուժ-գին ցաւոց ականջաց, գլխոյ, և մկանանց այտից, 'ի սաստիկ ցնորմանէ, 'ի բանի շարժմանէ մկանանց, 'ի քնա-տութենէ, և 'ի նուաղմանէ կամ 'ի թալկացմանէ սրտի. և զկնի այսոցիկ ամենայնի 'ի վերայ գայ կարմրութիւն երեսաց, շշնջումն ականջաց, և ջերմութիւն հանապազօրեայ։ 'Ի սկըզ-

քան անդ բորբոքման, զարկ բազկերակին լինի մանր, և շուտափոյթ, իսկ 'ի յարատևել բորբոքման՝ հարկանէ կարծր և լի: Մէզն լինի սակաւ և կարմրերանգ: Չի՛ք ինչ պայմանեալ սահման տևելոյ այսր տեսակի բորբոքման. ուրեք ուրեք մարթ է 'ի ձեռս բերել զկատարեալ առողջութիւն 'ի մէջ վեց կամ ութ աւուրց. երբեմն յերկարաձգի մինչև ցերկոտասան աւուրս. և երբեմն ևս 'ի տատանկութէ այսոցիկ նշանաց 'ի վեր երևի կուտակումն ինչ շարաւոյ 'ի խոռոչս ունկան:

Յաղագս դեղորէից և հնարից բորբոքման ականջաց:

Երակ հատանելն՝ որպէս 'ի բորբոքման աչաց, նոյնպէս և աստ կարևոր գտանի. բայց պարտ է նկատել 'ի պարագայս նշանաց կարողութէ հիւանդին, և ուժգնութեան ցաւոցն: Նոյնպէս արժան է 'ի գործ արկանել հինգ կամ ութ կչիռ ցորեան՝ սալ նիթռօ խառն ընդ վեց ունկի գարեջրոյ, զոր պա՛րտ է երեք կամ չորս անգամ կրկնել յաւուրն: Եւս պա՛րտ է գրեխս կամ Թեթև լուծողականս առնել և կակղացուցանել զորովայնն: Այլև արժան է դնել ևս ստէպ ստէպ զոտս ցաւակրին 'ի ջերմ ջուր մինչև ցծունկս:

Քաթապլազմա կակղացուցիչ է յոյժ օգտակար 'ի դիպուածս յայս, զոր պարտ է պատրաստել այսպէս: Ա՛ռ զմէջն հացի ցորենոյ, զմոլոշ խոտն, զստխ, և զկաթն կովուով հանդերձ խառնեալ իրերաց, և եփեա՛ 'ի վերայ հանդարտ հրոյ, և դի՛ր ստէպ ստէպ 'ի վերայ վշտա[illegible]ալ ականջացն: Խաշուն մոլոշի խառն ընդ կաթին՝ [illegible] պէս դեղ իմն կարի ազնիւ և գործունեայ նկ[illegible] տիտոխս, զոր մա՛րթ է 'ի գործ արկանել ըստ վերոյ[illegible]ցեալ կերպի եօթն կամ ութ անգամ յաւուրն, կամ ևս առաւել: Նոյնպէս պա՛րտ է զպղունդն ջերմ կաթամբ կամ վերոշինեալ մոլոշի ջրոմն Թացեալ դնել 'ի վերայ ցաւագնեալ ականջացն, բազմիցս անգամ յաւուրն:

Դարձեալ, յամենայնում երկու ժամու միանգամ պա՛րտ է երեք կամ չորս չիթս հեղուլ 'ի ցաւագնեալ ունկն գլխատագայ դեղն: Ա՛ռ մի տրամ՝ իւղն դառն նշոյ, կէս տրամ իւղն քափրոյ, և նոյնչափ իւղն կալկանօի, խառնեա՛ զամենայն 'ի միասին, և 'ի կի՛ր արկ քանի ինչ աւուրս: Նոքա՝ որք ոչ հնարին 'ի ձեռս բերել զասացեալ իւղորայքս, պարտին 'ի գործ արկանել փոխանակ նոցա գլխատագայ դեղորայս, որք ունին զնոյն զօրութիս և զներ-

գործութիւնս ։ Առ երկու տրամ իւղն դառն նշոյ , մի տրամ կալլպանօ, կէս տրամ՝ դեղին մեղրամոմ, և նոյնչափ քափուր ։ Զայս ամենայն եռացո՛ 'ի մէջ փոքրիկ խեցեղէն անօթոյ միոյ. և ապա առեալ 'ի սմանէ զայն-ինչ՝ յօրինեա՛ որպէս պատրոյկ, և մխեա՛ 'ի մէջ ցաւագնեալ ականջաց ։ Մարթ է ևս զջերմ գոլորշին եփեցել կամ քացախոյ մուծանել 'ի ներքս յունկն ։ Իսկ եթէ գործածութեամբ այսոցիկ դեղորէից և հնարից չիցէ մարթ փարատել զբորբոքումն և զցաւն յայնժամ պարտ է 'ի գործ արկանել վէշիքաթօրիօ, զոր պարտ է դնել 'ի վերայ ծոծրակի կամ յետևս ցաւագնեալ ականջացն ։ Յորժամ բորբոքումն կամ ցաւս այս յառաջ գայ յորդանց կամ 'ի միջատոց մտելոց 'ի ներքին խողովակ ականջաց, յայնժամ հարկ 'ի վերայ կայ արտահանել զորդունս կամ զմիջատս 'ի ձեռն իւղոյ քաղցր նշոյ, կամ ձիթապտղոյ, և կամ 'ի ձեռն վիրաբուժական գործեաց ։ Իսկ եթէ պատճառեալ իցէ 'ի յաճեցմանէ ակերբոց և աղնգամամն մսոց՝ որպէս ասացաք 'ի վերագոյնդ, յայնժամ պէտս ունի միշտ խորհրդոյ ճարտար վիրաբուժի կամ վիրահատի ։

## ՅՕԴՈՒԱԾ Ե.

### Յաղագս բորբոքման լեզուին, որ ասի՝ գլօսսիթիթէ ։

Բորբոքումն այս՝ է ախտաժէտութիւն ինչ լեզուի, որ յոյժ ցանցառակի պատահէ. և նմանի բորբոքմանն, [illegible] չինանքէ. զայսմանէ խօսեցուք 'ի ստորև. այլ [illegible]ր լիցի քան յառաջապէս զայն տեսակ բորբոքմանէ [illegible]ի այտուցանէ և վշտացուցանէ զլեզուն միայն ։

### Պատճառք բորբոքման լեզուին ։

Պատճառք այսորիկ բորբոքման՝ յոյժ համեմատ են պատճառաց բորբոքականութեանց. այսինքն բորբոքմանց աչաց, ականջաց, ևն. զորս լիովին խօսեցաք 'ի տեղիս իւրեանց ։ Բազում անգամ ևս յառաջ գայ 'ի յօգուտ ծայրութէ, և 'ի բորբոքմանէ լերդի ։

### Նշանք բորբոքման լեզուի ։

Գլխաւոր նշանքն են ուռոյցն, կարմրութիւն և կարծրութիւն լեզուի՝ հանդերձ յանկարծահաս ցաւովք, հոսումն լորձանց 'ի բերանոյ, հազն մշտատև, ուժգին ջերմութիւն, դժուարութիւն 'ի կլանելն, 'ի խօսելն, և 'ի շընչառութիւնս, հևկումն, ցաւն գլխոյ, կարմրութիւն դիմաց, ծորումն արտասուաց, անձկութիւն, և ճնշումն կրծոց ։ Զարկ բազկերակին հասարակօրէն լինի խիստ, ստուար, և սրընթաց ։ Ախտակիրն զգայ զծարաւ սաստիկ, և ըղթուլութիւն մարմնոյ ։

### Ցուցակ կառավարութեան, և դեղորէից, զոր պարտ է 'ի վեր արկանել 'ի դիպուածս բորբոքման լեզուի ։

Կառավարութիւնք այսորիկ բորբոքման գրեթէ նոյն են ընդ կառավարութեանց բորբոքողականութեանց, զորս ասացաք 'ի տեղիս իւրեանց. վասն որոյ պարտ է պահպանել զախտակիրն 'ի հանգիստ, և զգոյշ 'ի ցրտոյ, հեռի պահել 'ի նմանէ զայն ամենայն՝ որք աւելեն զանձկութիւն սրտի ։ Կերակուրքն լինելոց են սնուցիչ, թեթև, և փոքր քանակութեամբ. ըմպելին զովացուցիչ և միզաբեր. որպէս ջուրն կրամինեայի, կամ աւէնայի, եւն ։ 'Ի դիպուածս ախտիս երակ հատանելն հարկաւորապէս պահանջի. բայց պարտ է նկատել 'ի պարագայս նշանաց կարողութեան հիւանդին, և սաստկութեան բորբոքմանն. և յետ այնորիկ հարկ է դնել զտզրուկս 'ի ներքոյ կզակի ։ Պարտ է եւս զջերմ գոլորշին քացախոյ, կամ երիցկի մուծանել 'ի ներքս 'ի բերանն ։ Նոյնպէս և ընդ կզակաւ հարկ է դընել զխիս կակղացուցիչս, որպիսի է թանձրաթանն մոլոշի եւն ։

Յոյժ օգտակար դեղ է եւս կառկառս առնել 'ի կակղացուցիչ տերևոց և 'ի յարմարոց՝ զաղջ կաթամբ. և ստէպ ստէպ անընդհատ դնել 'ի ներքոյ կզակի կամ ուլանն. և նախ քան զաղաղիլն ստէպ ստէպ փոփոխել. և մեքանորոգել. չէ պարտ լինել ոչ այնքան սաստիկ ջերմ, և ոչ այնքան ցուրտ. քանզի առաւել ցուրտն, և առաւել ջերմն հաւասարապէս վնասակար են ախտակրիս ։ Նեթռօն նմանապէս է դեղ իմն ազնիւ՝ 50 կամ 60 ցորեան՝ ընդ կէս սկահակ սրճոյ. և երկու սկահակ ջերմացուցեալ մոլոշի կամ տղտոյ ջրով յաւուրն 10 կամ 12 ան-

գամ 'ի բերանն ողողելով: Նոյնպէս պարտ է յաճախակի զոտս և զարունս դնել 'ի ջուր գաղջ, և 'ի ներքոյ ոտիցն դնել զսինապիզմ. և այս ոչ միայն շիջուցանէ ըզբորբոքողականութիւն, այլ և քարշէ զցաւս և զհեւոյս լեզուի:

Դարմանս՝ 'ի դիպուածի աստ յոյժ օգտակար և բարեգոյն վարկանիմք զզրեխս կազմեալ 'ի զովացուցիչ. 'ի կակղացուցիչ, և 'ի սնուցիչ դեղորէից. սմին իրի պատշաճ է յօրինել ծաղկամբ տղտոյ կամ մոլոշի, և սերմամբ կտաւատի, ևն: Եւս մարթ է նկատել 'ի պարագայս ցաւոցն, յաւելուլ 'ի վերայ երեք ունկի մանանայ. եթէ ցաւն չնուազի դիւրաւ, պարտ է ապաստան լինել և դիմել յաներկբայ զօրութիւն իւիք թեթև լուծողականի: Բայց առաւել բարեգոյն դեղն յայսմ դիպուածի, և յայլ ամենայն բորբոքողականութիւնս ըստ կարծեաց հմտագոյն հեղինակաց՝ է վէշիքաթօրիօ, զոր պարտ է դնել 'ի ներքոյ կղակի, կամ 'ի վերայ ուլանն. զայդ յոլով անգամ փորձեալ եմ, և մեք ևս միշտ տեսանեմք թէ օգտաւէտ լինի ախտակրաց, և ոչ բնաւ վնասակար: Դարմանս՝ պարտ և պատշաճ է դադարեցուցանել զսաստկութիւն բորբոքման, և շիջուցանել զջերմութիւն արեան միջնորդութեամբ զովացուցիչ և միզաբեր ըմպելեաց. սմին իրի պատշաճագոյն է 'ի գործ արկանել յայնմ դիպուածի նիթռօ, տէքօցիոնէ տի թամառինտի կամ կրամինեայի, ևն: Դարմանս, 'ի դիպուածս ախտիս՝ չէ օրէն փութով խափանել զգործածութիւն յարմարաւոր դեղորէից, այլ հարկ է ութ կամ տասն օր առաւել ակնունել փարատելոյ բորբոքմանս. և լաւ ևս է ապաքէն, յետ զլխովին ապաքինելոյ ախտիս, տակաւին վեց օր 'ի գործ արկանել զսովորական դեղորայս:

## ՑՕԴՈՒԱԾ Զ.

Յաղագս բորբոքման որկորոյ, կամ կոկորդացաւութէ, որ կոչի՝ չինանքէ, կամ անճինա. կոչի և ափինէնանցիա, կամ ագուսէնանցիա, կամ սբրուէմանցիա, և կամ մալ տի կօլա:

Այս բորբոքումն կամ փողացաւս՝ ունի զերրեակ անուանս պատշաճեալս ինքեան 'ի մասանցն որկորոյ, զորս պղածէ: Առաջինն կոչի՝ ինֆիամմացիոնէ տի կօլա. այսինքն բորբոքումն կոկորդի: Երկրորդն անուանի՝ չինանքէ մալինեա. այսինքն չար փողացաւ, կոչի և

մալ տի կօլա քանկրէնօզա, այսինքն քաղցկեղային փողացաւութիւն: Իսկ երրորդն յորջորջի՝ անճինա սէմբլիչէ, կամ մալ տի կօլա սբուրիա. այսինքն հասարակ փողացաւութիւն. զորոց իւրաքանչիւրոցն ուրոյն ուրոյն ճառեսցուք:

## Յօդուածիկ Ե.

Պիտանել արժան է, եթէ այս բորբոքմունք կամ փողացաւք հասարակօրէն տիրապետեն 'ի ձմեռան, և 'ի գարնան եղանակի, և կարի հասարակ են յերկիրս ճախնուտս, և խոնաւուտս. և են վտանգաւորք իսկ. և ևս անձինք, որք վիճակեալք են արիւնային խառնուածոց, են առաւել ենթակայ այսոցիկ ախտից: Սովորական կայանք կամ տեղիք բորբոքմանցս՝ են շնչափողն, խռչափողն, դուռն հագագին, քիմքն, ուվօլա անուանեալ անդամն, մասնն հագագին, որ կոչի՝ Թօնսիլլէ, լեզուակն, որ ասի կլօթթիս, մակալեզուն, որ ասի՝ էբիկլօթթիս. յատակն լեզուի, ծակն որկորոյ, մասունքն քմաց, ևն:

Յաղագս պատճառաց բորբոքման որկորոյ կամ կոկորդի:

Բաց 'ի յընդհանուր պատճառաց այլ ամենայն բորբոքմանց, բորբոքումն որկորոյ մարթի ևս յառաջ գալ 'ի բարձրաձայն երգեցմանէ, 'ի կարկաչմանէ, և յերկար կոչքաւմանէ: Նոյնպէս մարթ է պատճառել ախտս յայնմ ամենայնէ, որք կարեն արգելուլ զքրտաշնչութիւն մարմնոյ, որպիսի են՝ ցրտագոյն և գիճագոյն հողմունքն, 'ի քուն լինելն 'ի բացօթեայս. զգենուլ զթացեալ հանդերձս. ևն: Այլև մարթ է յառաջ գալ ախտս, եթէ ոք զկնի քրտնելոյ ընկողմանիցի 'ի վերայ խոնաւ գետնի, կմ նստիցի հանդէպ հողմոց, և կամ մտցէ 'ի մէջ ցուրտ ջրոյ: Արուեստաւորքն, գործաւորքն, երգիչքն, որսորդքն ձիավարքն, սրնգահարքն կամ փողահարքն են առաւել ենթակայ այսորիկ ախտի, մանաւանդ նոքա, որք արիւնային խառնուածոց են վիճակեալքն: Երբեմն ևս պատահի 'ի մետաղական գոլորշեաց՝ որք ընդմտանեն 'ի թոքն շնչառութեամբ, 'ի սաստիկ ինչ կրից, 'ի յերկիւղէ, և յաշխատանաց, մանաւանդ 'ի սրարշաւ ընթանալոյ, յոգնաւոր հեղանիւթից, և 'ի կարի ջերմագինս պտհե-

լոյ զանձն զգեստուք, կամ առ հրով. և կամ պատճա-
ռաւ բնակութե քաղաքի, 'ի յարգելականութէ իւիք սո-
վորական հոսմանց, 'ի հարբուխոյ, և 'ի յանկարծակի
իջուածոց՝ իջելոց 'ի վերայ մասանցն որկորոյ։ Վերջա-
պէս, 'ի յընկերութէ ընդ ախտացեալ անձանց, որովհե-
տև ախտս այս է տարափոխիկ։

### Յաղագս Նշանաց Բորբոքման որկորոյ կամ կոկորդի։

Ախտս այս յայտնապէս ճանաչի 'ի կարմրութէ և յու-
ռուցէ ինչ 'ի վեր երևելոյ 'ի կոկորդս, և զոյգ ունի ընդ
իւր զուժգին ջերմութի և զբորբոքողականութի, և զցաւ
ինչ սաստիկ, մանաւանդ 'ի ծամելն; 'ի կլանելն, և 'ի
խօսելն։ Զարկ բազկերակին հաստատակորէն լինի արընթաց
և կարծր, և կարճառօտիւ կամեցեալ խօսել, նշանքն
մահաբեր տենդից լինելին 'ի վեր երևին։ Երբեմն ևս ըղ-
հետ գայ յօժարութի 'ի ժայթքել, դժուարուն 'ի շնչա-
ռութիս, ցաւ ուժգին յականջս, և կարմրութիւն ինչ
յաչս։ 'Ի դիպուածս ախտիս դէպ լինի երբեմն՝ զի ախ-
տակիրն անկարօղ լինի առնուլ մնուցիչ ուտելիս և ըմ-
պելիս. որով ժամանէ 'ի յետին աստիճան վտանգութե և
շնչարգելութե։ Բազում անգամ ևս բորբոքումս կամ
ուռոյցս այս ժամանէ 'ի ներքին մասունս շնչափողին կմ
խռչափողին, որ երբեմն այնքան ուռճացեալ զայրանայ,
մինչև շնչահատուր և հեղձամուղձ առնէ զխօթացեալն։
Իսկ եթէ բորբոքողականութիս այս զետեղի 'ի դուռն հա-
գագի կամ 'ի մկանն լեզուակի, յայնժամ առաւել լինի
երկիւղալի, և մահահրաւէր 'ի մէջ ամենայն բորբոքմանց
որկորոյ։ Իսկ եթէ բորբոքումս այս զկայ առնու 'ի մկանն
իօիդէ կոչեցեալ երկճղի ոսկեր, յայնժամ չլինի այն-
քան դժնեայ և վտանգաւոր, որպէս միւս բորբոքողակա-
նութիւնքն որկորոյ։

Ընդ ախտիս այսմիկ թէպէտ և զուգընթաց լինի ուժ-
գին ջերմութի, և ցաւ ինչ անտանելի, և այտուց ինչ
կարծր 'ի վեր երևեալ 'ի վերոյգրեալ մկանս, ևն. բայց 'ի
վերայ այսր ամենայնի որպէս ասացաք՝ ախտակիրն չգտա-
նի 'ի մեծի վտանգի. յորժամ ոչ տուեալ լինի պատ-
ճառ կամ արգելումն ինչ՝ եթէ 'ի կառավարութիս, և
եթէ 'ի դեղորայս։ Այլ եթէ նոյն բորբոքումն բնակի 'ի
ծագ որկորոյն ևեթ, յայնժամ նոյնպէս զհետ գայ այ-
տուց ինչ կարծր և ջերմութիւն, և կարի դժուարու-
թիւն 'ի կլանելն, 'ի ծամելն, և 'ի խօսելն, և երբեմն

եւս զուգընթաց գտանի ընդ ախտս հազ ինն ուժգին. բայց յայսպիսի դիպուածի հազիւ ուրեք երևի վտանգ ինչ։

Իսկ եթէ ախտս այս 'ի վեր երևի ուռուցիւք 'ի ուկողա անուանեալ անդամն կամ 'ի մասն հազագին, կամ 'ի քիմքն, կամ 'ի մկանն քմաց, յայնժամ իսկ և իսկ շնչել գայ ցաւ ինչ սաստիկ 'ի ներքս յանկան, և նոյնպէս դժուարութի 'ի շնչառութիս, 'ի ծամելն, 'ի կլանելն, 'ի թքանելն, և 'ի խօսելն։ Բայց եթէ ախտակիրն տղայ, կամ յոյժ սակաւ զերմութի ինչ, յայնժամ չէ վտանգաւոր, և մարթի դարմանիլ հեշտեաւ։ Դարմանալ. գոյ և այլ ինն տեսակ այսպիսի ախտի՝ որ կոչի անձկնաւ քոնմրուլաիվա, այսինքն ցնցական փողացաւութի, որ առաւել քան զամենայն աղէտալի է և վտանգաւոր. բայց այսպիսի դիպուածք ուր ուրեմն պատահին։

Յաղագս խնամատարութեան և կառավարութեան ծերերոցման ուրկորոյ։

'Ի դիպուածս այսպիսի ախտի գրեթէ յար և յաւէտ պարտ է 'ի կիր արկանել զնոյն կառավարութիւս, և զխնամս, զոր ինչ 'ի դիպուածի ախտին կոչեցելոյ ըլէուաիթիւոէ, զորմէ ունիմք գրել 'ի ստորև։ Կերակրոցն պարտ է լինել թեթև, սնուցիչ, և զովացուցիչ։ Նոյնպէս և ըմպելեացն արժան է լինել զովացուցիչ, և հեղեղիչ. և պարտ է խառնել 'ի մէջ ամենայն ըմպելեաց փոքր ինչ թթուեղէն, կամ ձէլաթինա տի ուվա 'սբինա անուանեալ մածուածն։ Այլ պարտ է ախտակիրիս անձնապահ լինել 'ի ցրտոյ. և միշտ զուարթ և ուրախ լինել յընթացս հիւանդութեան. և արժան է ընկողմնեցուցանել զախտակիրն՝ բարձր թողեալ զգլուխն առանց իրիք աշխատանաց. Նաև 'ի նոյն իսկ վայրկենի հարկ է դնել զսար 'ի վերայ այնր մասին ուրկորոյ, ուր առաւել զգայ զցաւն։

Դարմանալ. 'ի դիպուածս յայս յոյժ օգտակար և ձահողագոյն վարկանիմք զողողումն կոկորդի, կազմեալ 'ի քացախոյ, 'ի մեղուէ, և 'ի հասարակ ջրոյ. և պարտ է ողողել յերկուս ժամս երկու անգամ, և առաւել յաճախակի, եթէ յոյժ կարծրացեալ իցէ ուռոյցն ուրկորոյ. երբեմն ես գրեմ չորս ունկի 'ի վերոգրեալ խառնուրդէն, յաւելլով 'ի նոյն երկու դրգալ սպիրիթօ տի սալ ամմօնիակօ, կամ նոյնքան սպիրիթօ տի ռօզմարինօ, և

գամ ողողել զուլն ախտաժետաց եօթն, կամ ութ անգամ յաւուրն ըստ չափու միոյ փոքրիկ սկահակի: Այլև պարտ է դնել զոտս ախտակրին 'ի մէջ ջերմ ջրոյ և կրկնել զայն ըստ պահանջելոյ պարագայից երկու անգամ յաւուրն: Նոյնպէս արժան է 'ի կիր արկանել յամենայնում երեկոյի զգրեխ մի պատրաստեալ կէս պարարտագոյն արգանակաւ, և կէս կաթամբ կամ ջրովն վարսակի: Ոչինչ արգելք կայ գործածութե ալպուում կուէքում անուանեալ աղբոյ 'ի սկզբան անդ հիւանդութե. զոր նըրբագոյն փոշի պատրեալ պարտ է փչել եղեգամբ 'ի ներքս ընդ փողն: Երբեմն մարթ է ևս 'ի կիր արկանել զքաԹաբլազմա նորին. Նոյնպէս կակղացուցիչ և մեղմացուցիչ քաԹապլազմայքն են դեղ ազնուագոյն և կարի պատշաճողականք, որպիսի են՝ մոլոշն, մէջին հացի, կաԹն, սերմն կտաւատի, ևն:

## Յաղագս դեղորէից՝ զոր պարտ է 'ի կիր արկանել 'ի դիպուածս Բորբոքման որկորոյ:

Բայց որովհետև ախտս այս է դժնեայ և վտանգաւոր, նմին իրի երակ հատանելն 'ի բազուկն, մանաւանդ 'ի փողական երակէ անտի՝ հարկաւորապէս պահանջի. բայց նկատել արժան է միշտ 'ի պարագայս անձին, զորօրինակ 'ի հասակն, 'ի զօրութիւն, 'ի լիութիւն զարկի բազկերակին, և 'ի սաստկութիւն նշանաց: Եւ եթէ ընկնի երակ հատանելոյ՝ բորբոքողականութիւն, և ցաւն կամ ուռոյցն որկորոյ չնուազի, յայնժամ պարտ է տալ ախտակրին Թարթառօ էմէթիքօ փոքր քանակութբ: Զայս եթէ կամիս առնել. արկ զնուրբ փոշի դեղոյս ըստ կշռոյ երեք կմ չորս ցորենոյ՝ 'ի տասն կամ յերկոտասան ունկի գաղջ ջրոյ: Ըմպելոյ տուր 'ի քառորդ ժամս, այսինքն 'ի տասն և հինգ վայրկեանս միանգամ առնու հիւանդն սկահակ մի սրճոյ առ իւրաքանչիւր նուագ, մինչև պատճառեսցի ժայթքումն կմ լուծումն որովայնի. այլ իբրև սկսանի փսխողականն 'ի ներգործել, յայնժամ պատշաճ է նմա սակաւ սակաւ ըմպել ջուր ինչ գաղջ: Յետ որոյ պարտ է 'ի վեր արկանել զբալասան ինչ անուանեալ՝ պալսամօ տի Թռանգուիլլօ:

Գառմէ ֆռանգ յորջորջեալ հեղինակն. եթէ ականատես լեալ է օգտաւէտութե, և շահաւէտութե այսր հանդարտեցուցիչ բալասանի. որ այսպէս բաղադրի: Առ զԹարմ տերևն կոչեցեալ խօշխամօ, և զկանաչ տերևն

չինօկլօսսա, և զանգուածն նկըօցկանաս, յիւրաքանչիւրոյն մէն մի լիտր : Եւ թող եռալ երեք ըմպելի գինեաւ, մինչև ցամաքելն միոյ մասին գինւոյ · զկնի զտելոյ, յաւել 'ի այն զնոյնչափ մաքուր իւղ ձիթոյ · վերստին եռասցի թեթև ինչ հրով այնչափ՝ մինչև մնալ կիսոյ մասին : Յետ այնորիկ հեղ զգուշութեամբ զհեղուկն յայլ անօթ ապակի, այնպէս՝ զի մի՛ խառնեսցի մրուրն ընդ պայծառ քաղուածոյն : 'Ի քաղուածոյս այսմ վեցեկս անգամ յաւուրն պարտ է օծանել փետրով 'ի վերայ այնր մասին ուլան, ուր առաւել զգայ զցաւն, միայն թէ կրկնելի է այդ գոնէ մինչև 'ի հինգ օր և անեալ զօրաւէտութիւն սորա մեծ 'ի ցրուել զուռոյցս, 'ի փարատել զքորքորաչկանութիւս, 'ի մեղմել զցաւս, և 'ի բուժել զվէրս և զխոցս :

Ըստ կարծեաց վերոյիշեալ հեղինակին, չիք դարման քան զայն գերազանց՝ եթէ խնդրի ապաքինել զփողացաւութին, և բառնալ կամ մեղմել զցաւս նորին : Իսկ եթէ յայդպիսի ատակ նպաստից՝ ոչ անդորրանայ ախտակիրն, և ոչ խաղաղի բորբոքումն, և ցաւն, և այլ դժնեայ նշանքն մնան յարատեւեալ, յայնժամ պարտ և պատշաճ է դնել վեշիկաթօրիօ մի լայնաքաց 'ի վերայ ծածրակի : Այլ յորժամ ըն երեւց ինչ աւեանին նշանք ապաքինութեն, և որ քան զօր 'ի լաւ անդր լինի յառաջանալ, յայնժամ պարտ է մատչել 'ի կիրառութին ցրուիչ և զօրացուցիչ դեղորէից, որպիսի են՝ գուէրչիա, ալլումէն, են. զոր պարտ է պատրաստել յետագայ եղանակաւ : Ա՛ռ վեց տրամ քօրթեչէ տի գուէրչիա · և 'ի հասարակ ջրի եփեա՛ նուազեալ մինչ քառորդ մի ժամու · ապա զտեա՛ և մնասցէ լիպպրա մի, յոր յաւել մի և կէս տրամ ալլումէն, և մի և կէս ունկի սբիրիթօ տի վինօ · և առ ողողել զուռն հիւանդին հինգ կամ վեց անգամ յաւուրն :

Դարձեալ, յոյժ հաճախաւոր է յայսմ դիպուածի լինիմէնթօ վօլաթիլէ, որ այսպէս բաղադրի : Ա՛ռ վեց տրամ իւղ ձիթոյ, և երկու տրամ ոգի անուշադրի, որ ասի՝ սբիրիթօ տի սալէ ամմօնիաքօ · և տորրեա՛ 'ի միմեանս ընդ միջոց հինգ րոպէից · և ապա շփեա՛ չորիցս յաւուրն զվշտացեալ մասունս ուլան, և զկնի շփելոյ պարժան է ծածկել մուշտակաւ կամ աստառով զվշտացեալ ուլն :

Սեպհական նորին դեղորայքն՝ զոր 'ի գործ արկանել մարթ է 'ի դիպուածս յայս, են կօմմա տի կուաեաքօ, և ռօպ տի սամպուքօ, կամ Ճէլաթինա տի ուվա սբինա, որ այսպէս յօրինի : Ա՛ռ երեսուն և երկու կշիռ ցո-

րեան կօմմա ոփ կուանայքօ, փոշի արարեալ խառնեալ բաւականաչափ ռօսլ ոփ սամպուքօիւ, ամէր ըմպել ախտակրին 'ի պահ առաւօտուն։ Նոյնպէս հռչակաւոր է յետադայ դեղն, որ այսպէս բաղադրի։ Առ 12 կամ 16 կշիռ ցորեան նիթռօ, և ութ կշիռ ցորեան խաշնդեղ, և յաւել 'ի վերայ երկու ունկի արդանակ թզոյ, կմ թամարինտի, և ամէր ըմպել երեք կամ չորս անգամ յաւուրն։ Ըստ կարծրութե ուռուցին, և սաստկութե ցաւոցն պահանջի և առաւել հօգածութի, և մտադրութե բժշկելմանս, և դեղորէիցն յայնժամ պտրա է լինել բարեխառն և մեղմացուցիչ, և կակղացուցիչս. որպիսի են խէժն արաբիոյ, կորիզն սերկևիլի, մեղրն, ևն։ Եւ 'ի վերայ այնորիկ 'ի նոյն խակ վայրկենի հարկ է դնել զմերոյ գրեալ վէշիքաթօռիօն 'ի վերայ այնր մասին ուլան, ուր առաւել զգայ զցաւն։

Մինն 'ի մեծագոյն միասացայն է՝ յորժամ 'ի վեր ելնի այտուցս այս 'ի վերայ հազագին կամ 'ի մասնս նորին հազագի. յայնժամ երակ հատանելն հարկաւորապէս պահանջի 'ի սկզբան անդ հիւանդութե, և գրեթէ այդ է սեպհական դեղն. զորմէ կախեալ կայ բարի ելքն հիւանդութե։ Եւ զկնի երակ հատանելոյ՝ մարթ է դնել զուլթ կամ զտաւն տզրուկս 'ի վերայ ուլան ուր առաւել զգայ զցաւն. մարթ է ևս յաճախակի զոտս և զձեռսն դնել 'ի ջուր ջերմ, և շփել երեցս յաւուրն զմշտացեալ մասունս ուլան անուշադրի ոգւով պատրաստեալ օծանելեօք, որ ասի լինիմէնթօ վօլաթիլէ։

Այլ եթէ 'ի ձեռն այդոցիկ դեղորէից և կառավարութեց ոչ փարատի ուռոյցն, կամ ընդ հակառակն առաւել ևս զայրացի և կարծրանայցէ, յայնժամ պտրա է 'ի կիր առնուլ զվիրաբուժական գործի, ձեղքելով զուռոյցն նշտրակաւ, կամ հատանելով արմատաքի։

Դարձեալ գիտել արժան է, զի ըստ վկայելոյ նախայիշեալ հեղինակին, գոն ինչ ինչ համբաւեալ դեղորայք, որոց առաջինն է քալօմէլանօ, զօր պտրա է յերիս ժամս միանգամ ըմպել հիւանդին երեք կշիռ ցորեան առ իւրաքանչիւր նուագ. դեղս այս գերահռչակ է 'ի մասին օգտաւէտութեան 'ի գիպուածս բորբոքմանց որկորոյ, և այտուցից 'ի վեր ելելոց 'ի հազագս, 'ի խուչափողս, և 'ի մասունս հազագի։

և յետ այնորիկ 'ի վեր երևի 'ի կոկորդս ուռոյց ինչ առոյգ կարմրերանգ, բորբոքեալ, և ցաւեցուցիչ, ունելով 'ի վ͞ր բիծս աժգոյնս, և վէրս վատնիչս, և վ͞նկ անուանեցաւ ևս՝ փողացաւ վիրալից. Ճգնաժէի ևս 'ի մասնաւոր և 'ի նշմնաւոր ինչ այտուցաց, որ դնէնի երկուց կամ երից աւուրց 'ի վեր երևին 'ի բազուկս, 'ի կուրծս, 'ի մատունս, ևն։ Դարձեալ, են և այլ նշանք, որպէս կերկերումն ձայնի, կարմրութիւն աչաց, գարշահոտութիւնն բերանոյ, ցնորումն, և սպիտակութիւն լեզուի. և մէզն երբեմն լինի աժգոյն, և երբեմն գեղին։ Բայց յորժամ վերոյիշեալ վէրքն կամ բիծքն փոխարկին 'ի քաղցկեղ, յայնժամ ևս և ևս զշեստ գան բորբոքումն կապտատակութիւն վիրաց և բծաց, ժայթքումն, փորհարութիւն, անզօրութիւն ջղաց, դողդոջումն անդամոց, մթագնութիւն դիմաց, երերումն, մանրաքայլութիւն, և խորութիւն զարկի բազկերակի, սառուումն, մղձկումն կրծոց, յորդառատ արտաթորումն թանչից, ցաւ անհնարին և միայն. ուռոյցն որկորոյ լինի յոյժ կարծրալինդ, և 'ի շօշափելն խորտաբորտ, և անհարթ, ունելով և 'ի մէջն զցցումն ինչ. և օր քան զօր աւաւել ճապաղի 'ի խաչափողս, և 'ի շնչափողս, և 'ի մերձաւոր մասունս որկորոյ. և վերջապէս ախտակիրն ժամանէ 'ի վիճակ աղէտալի։

Յաղագս դեղորէից և խնամատարութեանց լաւ փողացաւոյ կամ քաղցկեղային ախտի կոկորդի։

Յորժամ ախտս այս պատահեալ իցէ 'ի բորբոքմանէ արեան, կամ 'ի յապականութենէ օդոց, բարեգոյն դեղն 'ի սկզբան անդ երևման նշանացն է ըմպելն զատկաւաքանակ թարթառօ էմէթիքօ. զորմէ յիշեցին ճառեցաք 'ի վեր անդր։ Իսկ եթէ գուցէ առիթ երկնչելոյ՝ թէ ախտըքն արարեալ իցէ 'ի նմա քաղցկեղ ինչ 'ի կոկորդն, յայնժամ պարտ է դադարել 'ի գործածութէ թուլացուցիչ և ակարացուցիչ դեղորէից, և ձեռնամուխ լինել 'ի դեղորայս զրգռիչս և զօրացուցիչս, որպիսի են՝ ծաղկաջուրն, վարդաջուրն, սպիրիթօ տի մէլիսսէ, էնֆուզիօնէ տի սալվիա, կամ քառաօ սանիթօ. ևն։ Ջենի այստեղիկ պատշաճական դեղորէից, մարթ է անվեհեր 'ի կեր արկանել զյետագայ կառկառիզմօն։ Ա՛ռ կէս ունկի՝ տամարին կոչեցեալ քօնթուաեռմա, և նոյնչափ սպեչիօ բէթթօուալէ. և 'ի հասարակ ջրի եփեա՛ եռացմամբ իբր քառորդ մի ժամու. ապա զտեա՛ և միացո՛ վեց ունկի, յոր

յաւել երկու ունկի քացախ սպիտակ գինւոյ, և մի ունկի մաքուր մեղր, և նոյնչափ թինթուաս ու միասին. և պարտ է տողել զկոկորդն հինգ կամ վեց անգամ յաւուրն։

'Ի նոյն իսկ ժամանակի գործածութեան կառկառիզմօի, անօրէն է սալ ըմպել նմա զխառնուրդ հեղանիւթս։ Ա՛ռ մի ունկի ալիւր քինա քինա, և երկու արմատ սէրպէնթարիա վիրճինիանա, և եռացո երեք քսան հատապրակ ջրով, մինչև մնալ 12 ունկի. յետ զտելոյ յաւել 'ի վերայ մի դգալ սրճոյ էլիքսիրէ ու վիթրիօլօ, կամ աչիտօ ու հիպլեռօ։ 'Ի հեղանիւթոյ աստի յերիս ժամս միանգամ առնու անօտակելոյն դգալ մի սրճոյ առ իւրաքանչիւր նուագ։

Արդ՝ յորժամ այդ ամենայն հնարք և դեղորայք 'ի գերև ելանեն, և անօգուտ լինին, և դժնդակ նշանքն մնան առակաւին նոյնօրինակ, յայնժամ ճահողագոյն է դնել լայնապաց վէզիքաթօրիօ մի 'ի վերայ ծոծրակի, կամ 'ի յետին կողմն պարանոցի։ Իսկ եթէ վերուցեալ պատուցն կոկորդի կամ ուլան փոխարկեսցի իցէ 'ի քաղցկեղ, յայնժամ պարտ է ձեռնամուխ լինել 'ի դեղորայս և 'ի կառավարութիւնս, զոր առեալ եմք 'ի վար արկանել 'ի գլուխս խաղաղման խուլական ուռուցից, որ աստ օնթացուցանէ անեզրօ չիռռօ. զորմէ լիովին ունիմք խօսել 'ի գլ. լէ։

## Յօդուածիկ Գ.

Յաղագս հատաբան կամ սաստ փողացաւոյ, որ ասի չինանքէ կամ անձինա սէռօզա, և կամ մալ դի գօլա սէմբլիչէ.

Ընդ անուամբ այսորիկ հազիւ ուրեք զուգընթաց լինի վտանգ մեծ. հասարակօրէն ախտս այս գոյանայ 'ի վերայ մասանց ինչ որկորոյ. որպէս 'ի վերայ մասանց հաղագին, կոկորդին. և ծնօտին. որ կոչին՝ ամիգտալէ դէլ ուվօլա, ամիգտալէ թօնսիլլէ, և ամիգտալէ մաշչելլառէ. նաև երբեմն 'ի վերայ բառօթիտէ անուանեալ անդամոյ, որ է խուլ ինչ զեղեղեալ առ ականջօք։ Պատճառք այսորիկ ախտի գրեթէ նոյն են ընդ պատճառաց բորբոքման որկորոյ, զորմէ խօսեցաք լիովին 'ի վեր անդր, 'ի յօդ. Ա։

### Նշանք հասարակ խողացաւոյ:

Նախ զառաջինն 'ի վեր երևի 'ի ներքս մորկորոյն ուռոյց ինչ կարծր, և կարմրերանգ, յորմէ ի սկ և ի սկ ախտակիրն զգայ ցաւ ինչ սաստիկ 'ի մուտս կոկորդին, մանաւանդ 'ի ծամելն, 'ի կլանելն և 'ի խօսելն: Եւ յետ այնորիկ ուռոյցս այս առ սակաւ սակաւ աճելով աճի. և որ քան զօր ախտակիրն անկանի 'ի զօրութենէ և 'ի կարողութենէ. յորմէ և պատճառի անձկութիւն, ճնշումն կրծոց, կարմրութիւն լեզուի և քմաց, ցաւ գլխոյ, և ականջաց, և ցնցումն մկանաց՝ յաւէտ 'ի կլանելն: Պատճառի ևս ջերմութիւն, և բորբոքողականութիւն, որ երբեմն լինին սաստիկ, և երբեմն թեթև. 'ի վախճանի ուռոյցս այս կամ ցրուեալ փարատի, և կամ կակղացեալ հասուննայ 'ի ձեռն յետագայ դեղորէից:

### Կառավարութիւնք և դեղորայք այսորիկ ախտի:

Արդ՝ առ 'ի բուժել զխողացաւս զայս 'ի մէջ սակաւ ինչ աւուրց, 'ի լինել նորա 'ի թեթևագոյն աստիճանի՝ պարտ է զոտսն և զձեռսն դնել 'ի մէջ ջերմ ջրոյ. և տեղ տեղ տալ ախտակրին ըմպել զարգանակն երիցկի, կամ ֆլիօռ տի սամպուքօի, և յաւուրն մի կամ երկու անգամ գրեխ պատրաստել կակղացուցիչ դեղորէիւք, և յարատև 'ի գործ արկանել զայս օրինակ, մինչև փարատեսցի ցաւն մորկորոյ, և ջերմութիւն մարմնոյ: Եւ եթէ լինիցի ուռոյցն խիստ, ցաւալից և բորբոքեալ, և զարկ բազկերակին՝ լի, կարծր, և արագ, յայնժամ պարտ է երակ հատանել, և վաղընդփոյթ ծածկել, և պահպանել զվշտացեալ մասունս մորկորոյ, եդեալ 'ի վերայ զասր ուղտու, կամ նապաստակի, և այդպէս 'ի բարւոք խնամատարութէ արժան է յուսադիր լինել միշտ, եթէ նոյն ինքն բնութիւն կառավարեալ զինքն՝ առնիցէ զապաքինութիւն առանց պէտս ունելոյ այլ իմն նպաստից, բնական իմն հոսմամբ քրտանց կամ միզի. ևն:

Նոյնպէս 'ի գործ արկանել պարտ է յաւուրն վեց կմ̃ եօթն անգամ կառկառիքծ, զոր պարտ է պատրաստել այսպէս: Ա՛ռ 12 ունկի արգանակն թզոյ, որ պատրաստեալ իցէ երկու դրամ մանանխով, և երկու ունկի մեղր. և նոյնչափ քացախ խառնեալ իրերաց, և տո՛ւր ողողել զուլն: Դարձեալ, պատշաճագոյն է՝ 'ի կիր արկանել յայ-

ամ դիպուածի քաթապլազմա, որ այսպէս բաղադրի ։ Ա՛ռ զմէջն հացի, և ագուա վէճէթօ մինեռալէ, խառնեալ իրերաց, և թանձրացո մեղմ հրով, և դիր 'ի վերայ վշտացեալ մասին որկորոյ․ զոր պարտ է նորոգել միշտ յերկու կամ յերեք և կամ դէթ 'ի հինգ ժամու միանգամ ։ Արդ՝ եթէ անօգուտ լինիցի այս քաթապլազմա, և բաւականապէս ոչ փարատեսցէ զցաւս, յայնժամ պարտ է 'ի կեր արկանել զմիւս իմն կակղացուցիչ քաթապլազմա պատրաստեալ միջուկէ հացի, սոխով, և բարեխառնել կոգւով, և շաքարաւ ։ Յայնժամ հասունացեալ լինի ուռոյցն, և կակղացեալ, յայնժամ արժան է բանալ զայն խոհեմապէս, և զարմանել մինչև ց15 կամ ց20 աւուրս ։

### Յաղագս հնարից 'ի ձեռն որոց մարթ է խափանել զվերադարձումն այսոցիկ ախտից փողացաւութեանց ։

Յետ դադարման ախտից փողացաւութեանց, պարտ է հիւանդին ընդ սակաւ ինչ եօթնեակս 'ի վար արկանել ինֆուզիոնէ մի քինա, կամ գուաասիա, յորմէ սկահակ մի առցէ ընդ առաւօտն, մի նախ քան զճաշն, և այլ միւս ընդ երեկս ։ Այլ և պարտ է ստէպ ստէպ կառկառիզմօ առնել յետադրայ եղանակաւ ։ Ա՛ռ վեց ունկի խաշուն քինայի, կամ պզօռցօ տի գուէռաչիայի, յոր յաւել 'ի վերայ սակաւ ինչ ալլումէն կամ օքքիօ․ և առուր ողողել զուլն ։ Դարձեալ խրատեմք զախտաւկիրն կանխել 'ի յընթրիսն․ և ոչ աճապարել խակ և խակ զկնի ընթրեացն 'ի մահիճս․ պարտ է հրաժարել յամենայն ողխաւոր հեղանիւթոց, մանաւանդ 'ի գործածութենէ սաստիկ և ուժեղ գինւոյ, և չափաւորապէս շրջել 'ի զբօսանս ձիով, կամ հետիոտս ։

## ՅՕԴՈՒԱԾ Է․

### 'Ի վերայ Բորբոքմանց Թոքոց, և Կողացաւութեան․ որք կոչին 'ի լատինացւոց՝ Պերիպնեւմոնիա, և Պլեւրիտիդէս ։

Պերիպնեւմոնիայց անուն՝ զոր 'ի յունաց առեալ վարին լատինք, նշանակէ զբորբոքումն թոքոց, զոր իտալք թէպէտև հասարակ անուամբ պունթա կոչեն, և արաբք՝ վէճա իլ ճէմպ, այսինքն կողացաւութիւն, այլ յարմարութիւն իւրոյն առիպեսց զմեզ թարգմանաբար և 'ի

մեր լեզու այնպէս կոչել զայն, զի է սաստիկ ջերմութեն ինչ Թոքոց, յառաջ եկեալ 'ի բազմապատիկ պատճառաց: Արհեստաւորքն և գործաւորքն, ևս որսորդքն, զօրականքն, ձիավարքն, փողահարքն, և այլ որոց են նման տաժանելի արուեստաւորքն են առաւել ենթակայ այսորիկ բորբոքման, մանաւանդ նոքա, որք վատակազմն 'ի բացօթեայ անդս, և ևս նոքա՝ որք վիճակեալ են աղխանային իմն խառնուածոց:

Բորբոքումն այս պատահի անձանց յոր և իցէ հասակի եղելոց. յաճախ են և առաւել 'ի սեռի արանց քան կանանց. և 'ի մէջ արանց ևս ակար և չոր կազմուածոց վիճակեալքն, և մաղձոտքն ևս են առաւել ենթակայ բորբոքմանս այսմիկ:

Գիտել արժան է. զի Թոքն առաւել ենթակայ է այսր բորբոքման, քան զայլ մասունս ընդերաց, և հասարակօրէն սա տիրել սկսանի զկնի հասակի եօթն ամաց. Ծերունիքն կարի դիւրաւ զերծանին յախտիցս. քան ընչափահաս երիտասարդս. որովհետև կազմուածքն նոցա ուժաթափ գոլով, են սակաւ ենթակայ բորբոքմանս. և սովորաբար 'ի ձմեռնային և 'ի գարնանային եղանակի բորբոքմունքս այս յաճախ երևին: Բայց որում դէպ լինի ըմբռնիլ 'ի բորբոքմանէ աստի, դժուարին իմն է փրկութեան զայն, և բազում անգամ փոխարկի 'ի խղխայթուածս, և 'ի քաղցկեղ:

Պատճառք բորբոքման Թոքոյ:

Բորբոքումն այս մարթի պատճառիլ յայնմ ամենայնէ, որք կարեն արգելուլ զարտաշնչութիւն մարմնոյ. վասն այսորիկ ցրտագոյն հողմունքն, ըմպելն զցրտագոյն հեղունիւթս՝ մանաւանդ զկնի քրտնելոյ, 'ի քուն լինելն 'ի բացօթեայս և 'ի վերայ խոնաւ գետնի, զգենուլն զթացեալ զգեստս, 'ի կարի ջերմագինս պահելոյ զանձն, 'ի սաստիկ աշխատանաց, յարշաւանաց, յընդոստանելոյ, յերկարատև խօսակցութէ, և յերգեցողութէ, 'ի գործածութենէ ոգելից հեղանիւթից, յարգելականութէ սովորական հոսմանց, 'ի փութով փարատմանէ բորոտութե, որքինոյ, հնացեալ խոցից, և վիրաց, 'ի խածատմանէ թունաւոր կենդանեաց, 'ի հարուածոց, 'ի խժային մածուցիկ մաղասոյ, նաև 'ի սորէջ մետաղական հիւթոց, որք 'ի գլխոյ 'ի Թոքս լծանան: Երբեմն ևս 'ի փողացաւութէ, 'ի յօդուածացաւութէ, 'ի սաստկագոյն աեն-

դեց, յերկարատեւ խօթութենէ, և 'ի տկարութենէ թոքոց, կրծոց, և լանջամաշկի ։

### Նշանք բորբոքման թոքոց ։

Նշանք թոքային բորբոքման մարթին գուշակել 'ի սարսափոյ և 'ի դողդոջմանց, որում զհետ գայ ջերմութիւն, ուժգին ծարաւն, նողկանքն սրտի, ժայթքումն, հանդերձ ծանրութեամբ և ցաւով կրծոց, և ցնորմամբ ։ Եւ յետ այսոցիկ ախտակիրն զգայ զցաւ ինչ սաստիկ՝ սուր՝ և խայթիչ՝ 'ի մի կողմն կրծոցն կամ կողիցն, և կամ լաւ ևս 'ի խառուչս լանջաց ։ Երբեմն ցաւս այս տարածանի մինչև 'ի ծագն ուսոյն, և երբեմն ևս շրջապատէ զքամակաւ. հասարակօրէն յոյժ սաստիկ զայրանայ 'ի վայրկենի, յորում հիւանդն հազայ կամ շարժի ։ 'Ի դիպուածս յայս զարկ բազկին երբեմն լինի կարծր, լի, զօրեղ, և սրընթաց, և երբեմն մեղմ, մանր, և միջահատական ։

Սիրտն և շնչերակն թրթռին կամ դողդոջեն ։ Ախտակիրն զգայ և զսաստիկ տապ, զհազ, զդժուարութիւն 'ի կլանելն և 'ի շնչառութեանն. լեզուն լինի ցամաք յոյժ. մէզն պղտոր 'ի գոյն մոխրոյ. տեսիլ դիմացն այտուցեալ, երբեմն է կարմիր, և երբեմն տժգոյն, կամ կանաչագոյն. Թուքն 'ի սկզբան անդ ոչ ունի ինչ փոփոխութիւն. այլ զկնի տիրապետելոյ ախտիս սակաւ ինչ, լինի երբեմն արիւներանգ կամ արիւնախառն, երբեմն դեղնագոյն, և երբեմն կանաչագոյն ։ Արիւնն զկնի ելանելոյ յերակէն փութով սառի և կարծրանայ. և զկնի սակաւուց մածանի. 'ի վերայ մակարդակի ինչ իբրև զմաշկ նուրբ հանդերձ դեղնագոյն հիւթով. զոր լատինք անուանեն՝ բլէուռիթիքա, այսինքն կշտացաւ ։ Ընդ այսոցիկ գիտել արժան է, եթէ նշանք այդպիսիկ սկսանին զայրանալ և սաստկանալ 'ի գիշերի, և 'ի ծագիլ առաւօտու թեթեւանալ սկսանին ։ Իսկ նշանք լանջամաշկային բորբոքման՝ նոյն են ընդ նշանաց բորբոքման թոքոց, բայց դոյզն ինչ թեթև և մեղմ քան զայն ։

Այլ գիտել պարտ է, զի բորբոքումն լանջամաշկի ոչ է այնքան ընդհանուր, և երկիւղալի. բայց թոքոցն առաւել ընդհանուր է և վտանգաւոր ։ Ընդ բորբոքմանս այսորիկ երբեմն զուգընթաց լինին և նշանքն ջղային տենդի. յայնժամ առձայնի՝ բէռիբնէումօնիա նէւվօզա, որ լինի յոյժ որոգայթաւոր և երկիւղալի ։ Ընդ այսորիկ արժան համարիմ յուշ առնել և զայն, զի եթէ բորբո-

քուամբ զետեղի 'ի միջնուէս կրծոց և ստորին որովայնի, յայնժամ ասի՝ ըլէնուաիլթիանէ սրուաեա կմ՚ նօթա, այս- ինքն սուտ կշռացաւութի. որում իսկ և իսկ զհետ գայ ցաւ ինչ ուժգին 'ի կուրծս և 'ի մասունս ստորին որովայնի և ախոնդանաց, նաև 'ի գլուխն՝ մանաւանդ 'ի հազալն: Ախտակիրն կրէ զպտոյտ գլխոյ, և զդժուարութիւն մեծ յընկողմանելն 'ի վր՚ վշտացեալ կողմանն : Զարկ բազկին լինի երբեմն լի և անկանոն, և երբեմն թոյլ և կանոնաւոր. Ջերմութիւն և ծարաւն ո՛չ այնքան սաստիկ՝ որպէս զայնս, զորոց փոքր ինչ յառաջ խօսեցաք : Բայց զկնորդ և իցէ, պարտ է փոյթ մեծ ունել 'ի դիպուածս այսոցիկ բորբոքմանց՝ մեծաւ ժրաջանութեամբ 'ի սկզբան անդ իսկ և իսկ յերևել առաջին նշանացս նպաստաւորագոյն լինել ախտակրին. ապա թէ ոչ՝ յարմարանալ և 'ի հաստատիլ ախտիցս՝ գրեթէ միշտ լինին անապաքինելի և անդարմանելի:

Դարմանք և դեղորայք 'ի վեր արկանելիք 'ի դիպուածս
բորբոքմանց իւրաքանչիւրոյն ուրոյն ուրոյն :

Չիք ոք՝ որ ոչ գիտասցէ, եթէ 'ի դիպուածս բորբոքման թոքոց երակ հատանելն է հարկաւորագոյն և ճահաւորագոյն, որպէս և 'ի նշանացն իսկ յայտ է. քանզի միշտ զուգընթաց լինի ընդ ախտիս տապ սաստիկ, ցաւ ուժգին սուր և խայթիչ 'ի խորոշս լանջաց. զարկ բազկին զօրեղ, խիստ և արագ. վասն որոյ յոյժ օգտակարագոյն է ախտակրին; որքան մարթ իցէ՝ երակ հատանել փութանակի. և պարտ է յառաջին անգամ երակ հատանելն թոյլ տալ արեանն չափաւորապէս հոսել 'ի մէջ ականակաց սրճոյ, և թողուլ՝ այնպէս ժամս երկուս՝ առ 'ի զննել զորպիսութիւն արեան. 'ի չափահաս ոք՝ մարթ է 'ի դիպուածս յայս երակ հատանել, և հանել զարիւն իբր վեց ունկի. բայց նկատել արժան է միշտ 'ի մակարդն արեան, և 'ի պարագայս անձին. զոր օրինակ 'ի հասակն, 'ի խառնուածն, 'ի զօրութիւնն, 'ի սաստկութիւն ցաւոց. և յայլ նշանս :

Իսկ եթէ զկնի միանգամ երակահատութեան տակաւին մնան սաստկութիւն նշանաց, և զայրացումն ցաւոյ, յայնժամ արժան է վերստին երակ հատանել, և հանել զարիւն նոյն օրինակ : Այլ եթէ զկնի երկրորդ անգամ երակ հատանելոյն ևս նշանքն ոչ նուազին, և հիւթն և մակարդն ըստ վերոյասացեալ եղանակի 'ի վեր երևին յերեսս արեան, յայնժամ օրէն է երրորդ, և չորրորդ ան-

գամ իսկ կրկնել։ Այլ եթէ ցաւն կրծոց կամ կողից նուազի փոքր ինչ, շնչառութին դիւրանայ, և զարկ բազկին թուլանայ, և հիւանդն սկսանի հազալ, կլանել, և թքանել առանց աշխատանաց և ցաւոց, յայնժամ երակ հատանել ոչ է պիտանաւոր գլխովին։

Գիտել արժան է աստէն, եթէ 'ի դիպուածս յայս երակ հատանելն 'ի վեցերորդում և յեօթներորդում աւուր է սակաւ օգտակար. և զկնի այսոցիկ աւուրց ոչ է այնքան խոհեմութի 'ի գործ արկանելն զայն։ Արդ՝ զկնի մի կամ երկրորդ անգամ երակ հատանելոյ, պարտ է 'ի վար արկանել զպլեստագայ ֆօմէնթօն։ Ա՛ռ բուռն մի՝ քամօմիլլա, և նոյնքան մալվա, եռացո՛ 'ի մէջ բաւականաչափ ջրոյ, և թացեալ սպունգն դի՛ր 'ի վերայ վշտագնեալ մասին՝ այնքան ջերմագին, որքան մարթ իցէ հիւանդին տանել. և 'ի պաղիլն, պա՛րտ է տեղ տեղ փոխել։

Յետ այնորիկ պա՛րտ է 'ի գործ արկանել զպլեստագայ օծանելիս։ Ա՛ռ երկու ունկի՝ ձէթն ձիթենեաց, ունկի մի՝ սբիրիթօ տի քօռնօ տի չէռվօ, և երկու տրամ՝ սբիրիթօ տի սալ ամմօնիաքօ. եդեալ պայտոսիկ 'ի մէջ անկանի, այնքան արարեա՛, մինչև միաւորել իրերաց կատարելապէս. և սակս փոքր ինչ եդեալ 'ի վերայ վշտացեալ մասին կրծոց, պա՛րտ է մեղմապէս շփել ջերմ ձեռօք մինչև ցամքելն և ցրնդմտանելն 'ի ներքս, զոր և պա՛րտ է կրկնել յաւուրն երիցս կամ չորիցս անգամ։ Այլ 'ի չգտանել 'ի պատրաստի զայս վերոյիշեալ օծանելիս, յայնժամ արժան է 'ի վար արկանել փոխանակ նորա թենթուրա տի քանթարիտէ նոյն քանակութեամբ և նոյն եղանակաւ, որ ևս ունի զնոյն գործունէութի։

Գիտել արժան է և զայս. զի յետ մի կամ երկու անգամ երակահատութեն՝ եթէ ցաւն կշտին փոքր ինչ թեթևանայ, և շնչառութեն դիւրանայ, յայնժամ փոխան երակ հատանելոյ մա՛րթ է 'ի վար արկանել զպլեստագայ փոշի դեղս։ Ա՛ռ վեց կշիռ ցորեան՝ տոբձիթալիս բուռբուռէա. և չորս կշիռ ցորեան՝ քեռմէզ մինէռալէ։ Յետ լուծելոյ յանկանի՝ բաժանեա՛ յերկոտասան հաւասարաչափ մասունս։ 'Ի փոշւոյ աստի յերկուս ժամս միանգամ առնու հիւանդն մասնիկ մի առ իւրաքանչիւր նուագ սկահակ մի ջրով, որ քաղցրացուցեալ իցէ շաքարաւ։ Զօրաւոր է յոյժ դեղս 'ի դիպուածս բորբոքման թոքոց, զի սովոր լքանի ուժեղութեն և դրդուելութեն արեան, և միանգամայն ցաւոյն կրծոց կամ կշտին։ Սակայն պա՛րտ է ևս զգուշանալ, զի մի՛ առաւել քան զչափն դիցես զդե.

բոյքենեալ տիճիթալիս բուռբուռեան . քանզի սաստիկ թուլացուցանէ զախտակիրն, միանգամայն պատճառէ զնուազումն սրտի :

Դարձեալ՝ 'ի գիպուածս յայս յոյժ օգտակար է արիւն հանելն սրուակաւ, զոր պարտ է առնել 'ի վշտացնեալ մասին կշտոյ, և ներգործուի տրոս է առաւել փութանակի և ապահովագոյն : Բայց առաւել ապահով միջոցն և հնարն է երակահատումն, որպէս լռով խօսեցաք 'ի վեր անդր : Լուաք ասել յոմանց ներհուն բժշկաց, եթէ այր ումն 'ի վիճակի 80 ամաց զկնի մետասան աւուրց գործածութեն այսր հնարից ստացաւ զկատարեալ առողջումն : Այլ յորժամ կարի խիստ անկեալ իցէ ոյժն ախտակրին, յայնժամ օրէն է ընդ սակաւ ինչ աւուրս 'ի գործ ածել տէքօցիօնէ տի բօլիկալա սէնեկա : Այսինքն, առ ունկի մի՝ յարմարոյն կոչեցելոյ բօլիկալա սէնեկա . և 'ի հաստթակ ջրի եփեալ եռացմամբ իբր քառորդ մի ժամու, ապա զտեալ, և միացէ լիտր մի ամբողջ : Եւ ապա տուր հիւանդին յայսմանէ չորս կամ հինգ անգամ յաւուրն, ըստ չափու վեց տրամոյ, և աւելի ևս ըստ կարողութեն ստամոքսի : Եթէ ըմպելիս այս շարժէ զախտակիրն 'ի փսխողութի, յայնժամ պարտ է բաղադրել յայն երկու ունկի ջուր կինամոնի . և դեղս այս ոչ միայն հաջակաւոր է 'ի գիպուածս բորբոքման թոքոց, այլ միանգամայն յայլևայլ բորբոքման կրծոց : Զնոյն ներգործուի ունին և քանֆօռան և ալքալի վօլաթիլէն :

Արդ՝ զկնի 'ի վար արկանելոյ և փորձելոյ զայս վերագրեալ հնարս և դեղորայս մի ըստ միոջէ, եթէ տակաւին մնայ ցաւն և միւս նշանքն նոյն օրինակ, յայնժամ պարտ և պատշաճ է դնել վէզիքաթօրիօ լայնաբաց 'ի վերայ նորին վշտացեալ մասին, և թողուլ մնալ իբրև ժամս 24, և այս ունի յոյժ բազմակերպ օգուտս 'ի գիպուածս յայս : Իսկ ըմպելին հիւանդին ցորքան մնայ վէզիքաթօրիօն, պարտի լինել պատրաստեալ ըստ յետագայ եղանակի : Առ երկու ունկի՝ նուշ քաղցր, և արկ զայն 'ի մէջ ջերմ ջրոյ առ 'ի հանել զներքին մաշկաձև պատեանն . և եղեալ յանգանի նոյնչափ շաքարաւ ճմլեա բարւոք, և յաւել 'ի նոյն մի և կէս լիտր՝ խաշուն գարւոյ, և կէս ունկի՝ կոմմա առապիքա, և յետ զտելոյ տուր ըմպել հիւանդին փոխանակ հասարակ ըմպելւոյ :

Եթէ ախտակիրն ունիցի զպնդութիւն որովայնի, յայնժամ պարտ է առնուլ 'ի կիր յերկու աւուրս միանգամ զցրեխս պատրաստեալս գարւոյ ջրով և սամպուքօիւ . որ

ոչ միայն լուծանէ զորովայնն, այլև միանգամայն թուլացուցանէ զփորոտիսն, և ցրուէ զքամիս աղեաց։ Դարձեալ՝ առ. երկու ունկի՝ իւղն քաղցր նշոյ, և նոյնչափ շէռօբբօ տի վիօլէ, խառնեա՛ իրերաց, և յաւել 'ի վերայ բաւականաչափ շաքար վանի, և տուր առնուլ 'ի կիր 5 կամ 6 անգամ յաւուրն, ըստ չափու միոյ դդգալի որձոյ։ Բայց զոն ոմանք՝ որոց վնասակար լինի իւղն. յայսպիսի դիպուածս պարտ է 'ի գործ արկանել փոխան վերոյիշեալ գեղորէին պլեստագայր։ Առ. երկու տրամ՝ կօմմա ամմօնիագա, և նոյնչափ սալէպ, և բարիոք լուծեա՛ 'ի փոշի. յոր յաւել առ սակաւ սակաւ ոսկեօցիօնէ տի օռծօ մինչև լուծանիլ խեժից կատարելապէս. մարթ է ևս յաւելուլ 'ի վերայ երկս ունկի՝ աքուա անիսթիլլաթա տի բուլէճճիօ, և տուր 'ի գործ արկանել չորս անգամ յաւուրն ըստ չափու երկուց դդգալաց սեղանոյ, որ օգտէ մեծապէս 'ի դիպուածս վասն հազի։ Իսկ 'ի դիպուածս, յորում հիւանդն գժուարաւ շնչէ առնու, և ջերմութիւն սաստկագին լինի, և հոսումն միզի լինի յոյժ սակաւաքանակ, յայնժամ պարտ է 'ի վար արկանել պլեստագայ գեղս, որ է յոյժ օգտակար և շահաբեր։ Առ. երկու տրամ՝ նիթռօ բուռօ, և վեց կշիռ ցորեան՝ քանֆօռա. լուծեա՛ բարւոք զերկոսին 'ի մէջ միոյ անկանի, մինչև կատարելապէս խառնիլ իրերաց, և բաժանեա՛ 'ի վեց հաւասարաչափ մասունս, և յամենայնում 5 կամ 6 ժամու զմի մասն այսոցիկ վեցից մասանց տուր հիւանդին ըմպել խառն ընդ հասարակ ջրոյ։

Դարձեալ՝ 'ի դիպուածս յորում հիւանդն կրէ զփորհարութիւն, յայնժամ ճահողագոյն է առնուլ 'ի կիր զհետագայ էմուլսիօնէ առապիքա անուանեալ դեղն։ Առ. կէս ունկի կօմմա առապիքա, և երեք հատ կեղևեալ նուշ. ճմլեա՛ յանկանի խառն ընդ երկու տրամ շաքարի, և հեղ 'ի նոյն հետզհետէ երկու ունկի՝ ջուր ջերմ. զտեա՛ բարւոք 'ի մզոցին. և տուր ախտակրին 'ի վար արկանել երկուս դդգալս սեղանոյ 'ի չորս կամ 'ի հինգ անգամ յաւուրն։ Կերակրոյն պարտ է լինել թեթևագոյն, զովացուցիչ, և բարեխառն. պարտ է ախտակրին զգոյշ լինել յուտելոյ զդժուարամարսելի կերակուրս, զյոյժ պարարտագոյնս և զսնուցողականս. որպիսի են՝ միս, կաթն, պանիր, ձու, ևն։ Ըմպելին նորա պարտի սովորաբար լինել զովացուցիչ և միզաբեր, զոր պարտ է պատրաստել և յօրինել օրինակ զայս։ Առ. երկու լիտր՝ խաշուն գարւոյ, և մերձ 'ի նոյն երկու տրամ նիթռօ, յաւելլով 'ի նոյն ունկի մի

ստախմելէ սեմբլիչէ , և առ՛ուր 'ի գործ արկանել փոխանակ հասարակ ըմպելւոյ ։ Նոյնպէս մարթ է արկանել 'ի գործ զսիէրօ ախ լաթթէ ։ Պարտ է որքան մարթ իցէ 'ի հանգստեան և յանդորրութեան ունել զախտակիրն . այլև յամենայնում աւուր թանալ զոտս , և զձեռս նորա ջերմ ջրով ։

Հուսկ յետոյ կարևոր համարիմ կարգել խրատս ինչ պիտանաւորս մերասեր համբակացդ ։ Նախ՝ գիտելի է, եթէ զամենայն գեղորայս , զորս գրեցաք ցայս վայր , ո՛չ է պարտ մի ըստ միոջէ 'ի վար արկանել . և եթէ գործածութի՟ միոյն ևեթ գտանիցէ առողջութիւն հիւանդին , ո՛չ է օրէն կրկնել զմիւսն ։ Երկրորդ՝ եթէ այսպիսի դեղորայք ոչ արկցին 'ի կիր զգուշութի՟ , և ըստ պատշաճաւոր չափու , եղանակի , և ժամանակի , անտարակոյս լինին առաւել վնասակար , քան օգտակար . ևն ։

'Ի վերայ դեղորէից և խնամադարմանէ բորբոքման լանջամաշկի, որ ասի՝ պլէւրօպնէւմոնիէ ։

'Ի դիպուածս , յորում բորբոքումն զետեղի 'ի լանջամաշկն , յայնժամ երակահատութիւն հարկաւորապէս պահանջի . և գրեթէ այդ է սեպհական հնարն , զորմէ կախեալ կայ բարի ելքն խօթութեան ։ Եւ եթէ յետ մի , երկրորդ և երրորդ անգամ երակահատութեան տակաւին յարատև մնայ սաստկութիւն ցաւոց կրծոց կամ կշտից , և զայրացումն բորբոքման , յայնժամ պա՛րտ է վեց , և կամ 9 տզրուկս դնել 'ի վերայ վշտացեալ մասին կշտից ։ Նոյնպէս նշանաւոր դեղ իմն է յայսմ դիպուածի վերոգրեալ ֆօմէնթօն , և օծանելին . բայց առաւել լաւագոյն դեղն յայսմ , և յայլ ամենայն բորբոքմունս ըստ կարծեաց ամենայն հմուտ հեղինակաց՝ է վէզիքաթօրիօն , զոր պա՛րտ է դնել 'ի վերայ վերոյիշեալ մասին կշտից կամ կրծոց . զայդ բազում անգամ փորձեալ են , և մեք հանապազ տեսանեմք , թէ օգտակար լինի խօթացելոց , և ոչ բնաւ վնասակար ։

Են բժիշկք , որք զկնի մի կամ երկրորդ անգամ երակ հատանելոյ վարեն 'ի գործ զտօրտան ործացուցիչ ։ Իսկ այլք փոխան ործացուցիչ տօրտոյ 'ի կիր արկանեն զվերոգրեալ տինձիթայէն և քեռմեզ մինէռալէն ։ Սակայն զպատշաճական և զչափաւոր կիրառութիւն նորա ըստ պիտոյից տեղւոյն՝ կարևոր համարելի է ։ Առաջինն ախտաւորս 'ի մէջ քանի ինչ աւուրց , անձնապահ լինելով 'ի

ցրտոյ, և նպաստաւորութ. նախապատրաստեալ հնարից և դե֊ ղորէից, և առատօրէն ըմպելով բարեխառն հեղանիւթս. զորօրինակ ջուրն սամպուքօի, գարուոյ, եւն. կանոնա֊ դրելով զինքն 'ի կերակուրս ըստ եղանակին, զոր գրեցաք 'ի դիպուածս բորբոքման թոքոց, և բորբոքողական տենդից։

'Ի վերայ հնարից և դեղորէից բորբոքման մկանացն կրծոց և ստորին որովայնի, նոյնպէս՝ բլեւրիթիդէ նօթայի օֆալսայի։

Ցաւս այս անուանի և ըլեւրիթիտէ նօթա կամ ֆալսա, այսինքն սուտ կողացաւութ. և 'ի դիպուածս յայս ցաւն գլխաւորապէս 'ի վեր երևի 'ի մկանունս լան֊ ջաց և ստորին որովայնի. բայց ցաւն այն ոչ է այնքան սաստիկ, որպէս 'ի դիպուածս ճշգրիտ բորբոքման թո֊ քոց և լանջամաշկի։ Անձինք որք ենթակայ լինին բորբոք֊ ման թոքոց և լանջամաշկի, մարթին նմանապէս լինել են֊ թակայ եւս այսորիկ ախտի։ 'Ի դիպուածս յայս երակ հատանելն ուր ուրեմն է հարկաւոր. եթէ երևին նշանք բորբոքման, զորօրինակ դժուարաշնչութիւն, ուժգին ջեր֊ մութիւն, ցամաքութիւն որկորոյ և լեզուի, եւն, մարթ է երբեմն թոյլ տալ այնմ առ ժամայն 'ի սկզբան անդ խօ֊ թութեան. բայց զործացուցիչ կամ փոխեցուցիչ դեղն հարկ է միշտ 'ի վեր արկանել՝ առ 'ի զերծ պահել զթոքն. յայն սակս պարտ է տալ թառթառօ էմէթիքօ ըստ եղա֊ նակին, զորմէ պարզագոյն բացատրեցաւ 'ի գլ. Ա. յօդ. Ե. երես 7։

Եւ եթէ վերոյիշեալ կմ. նոցին նման դեղորէիւք հա֊ նեսցի սաստկութի բորբոքման, եթէ չև ևս իցէ կազդու֊ րեալ ցաւն, ոչինչ արգելք կայ գործածութ. կօմմա ամ֊ մօնիաքա յօրջորջեալ խեժի։ Ես զխեժս զայս տամ ըստ կերպի արգանակի, կամ նաև երբեմն զհատորադեղ։ Եթէ երբեմն արգանակ, պարտ է լինել երկու տրամ՝ կօմմա ամ֊ մօնիաքա, և նոյնչափ՝ օսսիմէլէ շիլլիթիքօ, և մի լիտր՝ խաշուն սամպուքօի։ Ցարգանակէ այսմ յերիս ժամս միանգամ տացէ հիւանդն ունկի մի առ իւրաքանչիւր նուագ։ Իսկ եղանակն զոր պահեմք 'ի տալն զհատորադեղ, է այս։ Առ երկու տրամ՝ վերոգրեալ խեժդ, և ութ կշիռ ցորեան՝ քերմէզ մինէռալէ. և յաւել 'ի նոյն այն֊ չափ օսսիմէլէ շիլլիթիքօ, որչափ պէտք իցեն առ կազմե֊ լոյ ըստ կանոնաց արհեստին. զղանգուածս զայս արարեալ հատորադեղ որ կշռիցէ չորս ցորեան, և շրջապատեալ փօշ֊

ուժ կինամոնի, տացին երկու հատք երկու, անգամ յա-ւուրն ։

Իսկ ըմպելին հիւանդին՝ ցորեան մայ ջուն, պարտի լինել սիեռօ տի լաթթէ, այսինքն շիճուկն կաթին, որ համեմեալ իցէ մանանխով, և մեղրիւ ։ Բայց պատահի երբեմն, եթէ ախտս այս հատուցանեալ միայ և ոչ փո-րատի փութով․ յայնժամ արժան է դնել վէզիքաթօրիօ 'ի վերայ ցաւագնեալ մասին, և 'ի վար արկանել ըստ հարկաւորութե զամենայն դեղորայս, զորս գրեցաք 'ի դի-պուածս ճշգրիտ բորբոքման թոքոց և լանջամաշկի ։ Եւ կիրառութբ ասացեալ դեղորէից անտարակոյս ապաքի-նի ախտս այս, և հազիւ երբեք մարթի վրիպել յապա-քինութենէ, որովհետև 'ի բազում փորձ տեսեալ եմք և գիտեմք ։

'Ի վերայ դեղորէից և հնարից, զորս պարտ է 'ի վար արկա-նել 'ի դիպուածս, յորում ընդ բորբոքման թոքոց և լանջա-մաշկի դոյզ գտանին և նշանք ջղային փենդի ։

Հնարք և դեղատուութի այսպիսի ախտի դրեթէ նոյն է ընդ հնարից և դեղատուութե ջղային տենդի, զորս խօսեցաք լիովին 'ի գլ. ա. երես 27 ։ 'Ի դիպուածս յայս, եթէ հիւանդն լինիցի յարբունս հասակի երիտասարդու-թե, և արիւնե, և եթէ երևին նշանք բորբոքման՝ մարթ է երբեմն երակ հատանել իսկ և իսկ 'ի սկզբան անդ ախ-տաժետութե. բայց գործ մեծ է յայդպիսի դիպուածի քաջ նկատել զհանգամանս բնութե, և ճանաչել զհա-կումն և զտրամադրութի բնութեն. պարտ է նպաստա-մատոյց լինել նմին ըստ պահանջելոյ հարկի պարագայիցն, արտահանելով զաւելու ինչ արիւն յերակայն. քանզի յայդպիսի դիպուածի, եթէ անխոհական ընտրանօք և տգիտութբ երակ հատանիցեն, յառաջ բերեն անվրէպ զմեծ վտանգ, եւս և մահ ։

Բազում անգամ կից լինի ընդ ախտիս անզօրութե և թուլութիւն ինչ երևելի, և տապ սաստիկ. յայնժամ օրէն է առնուլ 'ի կիր զպէտաղայ խթիչ և զօրացուցիչ դեղս ։ Առ կէս ունկի՝ սեռբէնթարիա վիրճինիանա, և 'ի հասարակ ջրի եփեա եռացմամբ իբր քառորդ մի ժա-մու. ապա զտեալ և մնասցէ 12 ունկի, յոր յաւել եր-կու ունկի օսիմելէ սեմփլիչէ, և երկու տրամ աչէթօ քանֆօռաթօ. և ապա առնուլ օրէն է հիւանդին յեր-կուս ժամս միանգամ ունկի մի առ իւրաքանչիւր նուագ ։

Նոյնպէս օգտակար է 'ի դիպուածս յայս չինուկն կաթին, որ իցէ բաղադրեալ սպիտակ գինւոյ, զոր պարտ է 'ի կիր առնուլ յաւուրս բազումս։ Իսկ եթէ 'ի ձեռն այսոցիկ դեղորէից չդադարեսցի ուժգնութիւն նշանացն, յայնժամ արժան է դնել զվէզիքաթօրիօ 'ի վերայ այնր մասին, ուր առաւել զգայ զցաւն։ Դարձեալ օգտաւէտ է, և բարւոք ևս է գործածութիւն ֆօմէնթօի, զորմէ ճառեցաք 'ի վեր անդր։ Նոյնպէս և ոչ սակաւ օգտէ զգրեխս լուծիչս 'ի վար արկանել։

Այլ գիտել արժան է, զի 'ի դիպուածս բորբոքման թոքոց, և լանջամաշկի՝ երբեմն 'ի վեր երևի խախայթեալ պալար ինչ 'ի թոքս, և յայնժամ յորջորջի անուամբս վօմիքա, այսինքն խղխայթ թոքոց։ Եւ նշանքն այսորիկ պալարի են՝ անհանգստութիւն, նուղկումն, պատոյտ գլխոյ, և երկիւղ հեղձման։ Իսկ եթէ նոյն պալարն բացեալ լինի, և ապականեալ շարաւն կուտակեալ շեղջի 'ի խորշս թոքոց, յայնժամ վաղվաղակի զհետ գայ դժուարաշնչութիւն, անհանգստութիւն, և համառօտիւ կամեցեալ խօսել, նշանք բորբոքողականութեան վերստին 'ի վեր երևին։ Այլ եթէ շարաւն այն հոսեալ գումարի 'ի խոռոչս բլշացի՝ կոչեցելոյ չէքա, յայնժամ իսկ և իսկ զհետ գայ դժուարութիւն 'ի շնչառութիւնս, հազ, անախորժակութիւն, տենդ ինչ ծիւրական, և հանապազօրեայ․ որ զկնովին ուժաթափ առնէ զախտականն, և հասարակօրէն հիւանդն ժամանէ 'ի վիճակ յոյժ աղետալի։

Յաղագս դեղորէից՝ զորս պարտ է 'ի կար արկանել 'ի դիպուածս վէրոյնշեալ պալարի, որ երբեմն 'ի վեր երևի 'ի թոքս դէպ 'ի դադարումն բորբոքման թոքոց կամ լանջամաշկի։

Եթէ ախտակիրն իցէ արիւնային իմն բնութեան և ուժեղ խառնուածոց վիճակեալ, և եթէ վերոյիշեալ պալարն նորագ իցէ պատահեալ, յայնժամ մարթի փորձել իսկ և իսկ 'ի ձեռն երակահատութեան։ Իսկ յորժամ գտացէ կասկած 'ի նշանաց ինչ՝ եթէ արդեօք պալարս այս իցէ հասունացեալ, կամ բացեալ, յայնժամ պարտ է 'ի կիր արկանել զդեղորայս կակղացուցիչս, որպիսի են՝ օսխիմելէ շիլլիթիքօ, կոմմա արապիքա, և սիրուպ ալթէա։ Ձորօրինակ․ առ երկու ունկի՝ օսխիմելէ շիլլիթիքօ, մի ունկի՝ կոմմա առապիքա, և երկու ունկի՝ սիրուպ ալթէա։ 'Ի խառնուրդէ աստի՝ տացի 'ի թոքային ախտակրութեան յիւրաքանչիւր երկու ժամու մի դրգալ սեղանոյ։

Բայց եթէ զոյգ ընդ պալարս թոքոց գտանի և հազ իմն, յայնժամ պարտ է փոյթ մեծ ունել առ 'ի գրգռել զչարաւութիւն, և յայսպիսի դիպուածս մարթ է 'ի կիր արկանել զհնտագայ դեղորայսն: Ա՛ռ ունկի մի՝ կօմմա ամմօնիաքա, և նոյնքան շաքար մաքուր. ա՛ռ և իւղն քաղցըր նշոյ՝ որչափ ինչ պէտք են վասն շինելոյ զլօք, որոց մէն մի կշռիցեն մի տրամ: 'Ի լօքէ աստի՝ յերեք ժամս միանգամ առնու ախտաւորն հատ մի առ իւրաքանչիւր նուագ: Այդ՝ յորժամ նուաղի հասութիւն չարաւոյ, և փարատեալ ցրուին ամենայն վերոյցուցեալ նշանքն, պարտ է յայնժամ ձեռնամուխ լինել 'ի մատակարարութիւն և 'ի գործածութիւն քինայի ըստ եղանակին՝ զորմէ գրեցաք 'ի կառավարութեան միջահատական տենդի:

## ՅՕԴՈՒԱԾ Ը.

### Յաղագս բորբոքման սրտի, որ ասի՝ կառտիթիթիս:

Ախտս այս՝ բորբոքումն սրտի կամ սրտակրանաց, պատճառս առնու 'ի սաստկագին կրից հոգւոյ, յերկիւղէ, 'ի տրտմութենէ, 'ի սիրոյ, և յայլ ամին նման շարժողականութենէ հոգւոյ:

### Նշանք բորբոքման սրտի կամ սրտակրանաց:

'Ի հասարակի նշանք այսորիկ բորբոքման են տագնապութիւն դիմաց, դժուարաշնչութիւն, անհանգստութիւն, նուաղումն, անհաւասարութիւն զարկի բազկերակին, հազ, ժայթքումն, ցուրտ քիրտն. ախտաւորն հասարակօրէն զգայ զցաւ ինչ հաստատ յոսկր կրծոց, և զոյգ ընդ այսմ միանգամայն ևս զբաբախիւն սրտի: Բայց յայսոցիկ նշանաց հիւանդն կրէ զանձկութիւն, զթալկացումն, զթօսումն, զծանրութիւն կրծոց, զտապ, և յետ այնորիկ յարձակի 'ի վերայ ուժգին նուաղումն. ցաւ ինչ 'ի մի կողմն սրտի, հանդերձ սաստիկ բաբախմամբ: Զարկ բազկերակին երբեմն լինի մանր, և միջահատական. և երբեմն անհաւասար, և յոյժ արընթաց: Ականատես եղաք 'ի դիպուածս բորբոքմանս ախտաւորաց ոմանց բաղխել զշնչերակս 150 կամ 200 անգամ 'ի մէջ միոյ վայրկենի: Այս յետին նշանքս հասարակօրէն ցուցակ են վիրաւորութեան սրտի, կամ սրտակրանաց:

Իսկ որքան առ յարատեւութիւն բորբոքման սրտի կամ

սրտակրանաց՝ չէք ինչ որոշեալ կանոն. երբեմն աւարտին յեօթներորդում աւուրն. երբեմն ևս յառաձգին 'ի չորեք-տասաներորդում աւուրն, և երբեմն ևս 'ի ութևտասանե-րորդում աւուրն ։ 'Ի վախճան ամենայնի կորուսանէ գըլ-խովին զկարողութիւն, և վարանի երկիւղիւ խեղդամահ լինելոյ ։ Կրէ և զցաւ ինչ սաստիկ 'ի ձախակողմն կրծոց. և ցաւս այս այնքան սաստկանայ և աճի, մինչև ախտա-կիրն ոչ ևս կարէ տոկալ փոքու իմիք շօշափման. և յետ այնորիկ զարկ բազկերակին սկսանի բաղխել նիհար, դող-դոջուն, միջահատական և դեռնական, կամ սողնական. յայտոցիկ նշանաց գուշակի վտանգ ծանր և աղետալի ։

Կառավարութիւն և դեղորայք 'ի գործ արկանելի 'ի դե-ղուածս բորբոքման սրտի կամ սրտակրանաց ։

Կառավարութիւնքն և դեղորայքն այսորիկ բորբոքման՝ գրեթէ նոյն են ընդ դարմանատրութեան և դեղատուութեան բորբոքման թոքոց, զորս լիովին խօսեցաք 'ի յօդ. Է ։

## ՅՕԴՈՒԱԾ Թ.

Յաղագս բորբոքման ստոծանւոյ, որ կոչի՝ դիաֆրամմա-տիտէ ։

Բորբոքումն այս հասարակօրէն 'ի վեր երևի 'ի ստո-ծանի անուանեալ թաղանթն կամ մկանն, (որք անջրպե-տեն զկուրծսն 'ի ստորակայ որովայնէ.) և տարբերի այս 'ի բորբոքմանէ թոքոց, լանջամաշկի, և որովայնա-մաշկի. ըստ որում զուգընթաց լինի ընդ ախտիս ծիծաղ ինչ անպատեհ՝ անուանեալ սարտոնիկեան, ուժգին ցնո-րումն և մոլեգնութիւն ։ Դարձեալ բորբոքումս այս ոչ է այնքան ընդհանուր՝ որպէս զբորբոքումն թոքոց և լան-ջամաշկի ։

Յաղագս պատճառաց այսորիկ տեսակի բորբոքման ։

Պատճառքն այսորիկ բորբոքման՝ յոյժ համաձայն են պատճառաց բորբոքմանց թոքոց և լանջամաշկի, զորս լիովին դրեցաք 'ի տեղիս իւրեանց ։

### Յաղագս նշանաց այսորիկ բորբոքման սրտծանաց ։

’Ի հասարակի նշանքն այսորիկ բորբոքման են անձաւա֊
աւէհ ծիծաղն, ուժգին ցնորումն, մոլեգնութիւնն. արտ֊
քարար կրէ զցաւ ինչ սաստիկ և սուր ’ի ներքին կողմն ակ֊
կեր կրծոց, կամ ’ի մէջքն, և կամ ’ի խորս կողից, և
ցաւս այս առաւել զայրանայ ’ի հազալն. և ’ի շարժելն,
մանաւանդ զկնի կերակրոց. և զգայ յանձին զոյգ ընդ
ցաւսն միանգամայն և ջերմութիւն ինչ սաստիկ, և անձ֊
կութիւն. և զկնի այսոցիկ ամենայնի ’ի վերայ գայ մոլեգ֊
նութիւն, և երբեմն և հեծկլտանք ։ Շնչառութիւնն լինի
երագ, փոքր և հեղձական ։ Զարկ բազկերակին լինի շու֊
տափոյթ, ակար, և մանր ։ Եւ այդորիկ նշանք բազում
անգամ են յոյժ դժնեայ, և դուժարեբք, մանաւանդ
եթէ զուգընթաց լիցի ընդ նուաղն և ձնշելութեան, և ախտա֊
գանութեան ։

### Յաղագս դարմանոյ այսր փեռալի բորբոքման ։

’Ի դիպուածս այսորիկ բորբոքման գրեթէ միշտ պիտոյ
է ’ի գործ արկանել զնոյն դարմանս և զխնամս՝ որպէս ընդ֊
վլին գրեցաք ’ի վեր անդր. ’ի դիպուածս ախտին կոչեցե֊
լոյ բէրիբնէւմօնիա կամ պլէւրիտիդեայ ։ Ըմպելին պար֊
տի լինել գաղջ և սակաւաքանակ ։ Իսկ որքան առ ար֊
տաքին գեղորայս պիտոյ է ’ի գործ արկանել զօծանելիս,
որ ասի սպիրիթօ տի սալ ամոնիաքօ, խառնեալ ընդ
ձիթոյ ։ Դարձեալ ’ի դիպուածի աստ յոյժ օգտակար և
բարեգոյն վարկանիմք զպղպեխն կազմեալ ’ի կակղացուցիչ
և ’ի խաղաղացուցիչ դեղորէից. սմին իրի մարթ է յօդ֊
նել ծաղկամբ երիցկի, և արմատովք ալթէայ, կամ մոլո֊
շի, և սերմամբ կտաւատի, ևն. Եւ մարթ է հայեցեալ
’ի պարագայս ցաւոցն յաւելուլ ’ի վերայ մի տրամ կամ
մի ամբողջ գլուխ բաբավէրօ ալպօ, և կամ 30 կաթիլ
լաւտանօ լիգուիտօ ։

## ՅՕԴՈՒԱԾ Ժ.

### Յաղագս բորբոքման սրտամզոյն, որ կոչի կառտիտիտէս ։

Ամենայն բորբոքումն որ ’ի սրտամզին կամ ’ի խախա֊
ցոյն լինի, է վտանգաւոր, և պահանջէ զառաւել գոր֊

ծունկայ, և զպատրաստական նպաստս, յայն սակս՝ զի բորբոքումն այս բազում անգամ փոխարկի 'ի շարաւումն՝ որ կոչի սուպպուրացիոնէ, և երբեմն 'ի քանգրէնա, որ է քաղցկեղ, յորմէ զհետ գայ ստուգապէս մահ։

Պատճառք բորբոքման ստամոքսի։

Անֆիամմացիոնէ ալ սթօմաքօ, այսինքն բորբոքումն ստամոքսի՝ մարթի յառաջ գալ յամենակերպ պատճառաց, որք պատճառեն զուժգին ջերմութիւն. որպէս առբումն ցրտային հիւթոց՝ յորժամ զգայ ոք յանձին զտաքութի, 'ի բուռն զօրութենէ սաստիկ ողխաւոր հեղունիւթոց, յարգելմանէ արտաշնչութեն մարմնոյ, 'ի յանկարծօրէն և յոլով զատարկմանէ արեան, են. Դարձեալ հնար է բորբոքման պատճառիլ 'ի թթուութէ մաղձի, և 'ի դառնակիկիծ և 'ի դժնդակ նիւթոց, որք երկարատեւեալ մնան 'ի ստամոքսին. 'ի կարի զօրաւոր փսխողական կամ 'ի լուծողական դեղորէից, 'ի թիւնաւոր նիւթոց, որպիսի են սունկքն, քաղցրացուցեալ սնդիկն, սուպլիմաթօն, արսէնիքօն, են, 'ի գործածութենէ ջերմացուցիչ և ներհակական դեղորէից, կարծր և անմարսելի իրք մնացեալք 'ի ներքս 'ի ստամոքսին կամ յաղիսն, որպէս ոսկերք, կորիզքն պտղոց են, նմանապէս կարեն յառաջ բերել զնոյն ախտն։ Նոյնպէս մարթ է պատճառիլ 'ի բորբոքմանէ փորոտեաց, լերդի, փայծեղան, և ատածանայ. Դարձեալ՝ բորբոքումն այս կարէ պատճառիլ 'ի խոցից, որք երբեմն գոյանան 'ի ստամոքսին, նաև 'ի բորոտութէ, 'ի սքօրպութօ անուանեալ ախտէ, 'ի թթախտութէ, 'ի փորհարութէ. և յաւէտ 'ի յարգելականութէ իրիք սովորական հոսմանց։

Յաղագս նշանաց բորբոքման ստամոքսի։

Ընդ բորբոքմանն ստամոքսի գտանի եւս ցաւումն ինչ ուժգին, որում անդէն զհետ գայ սաստիկ խիստ ջերմութիւն 'ի ներքին մասունս, հանդերձ սուր խայթիչ և դժնդակ ցաւովք։ Զարկ բազկերակին լինի մանր, արագ. կարծր, անհաւասար և միջահատական։ Ախտակիրն ործայ երբեմն ջինջ և երբեմն ժանգագոյն, կամ դէթ զգայ յանձին զղուանս, և զանախորժակութի, և զսաստիկ ծարաւ։ Ընչառութին կարի դժուարին, և քիրտն ցուրտ. և երբեմն եւս մոլեգնի, նեղի, և տանջի կարկամութեք, և զալարմամբք. սառ-

մորքն է այտուցեալ, և բազում անգամ երևի լինել խոխոտ և ալինդ : Մինն 'ի նշանաց այսր ախտի՝ է ուժգին ցաւն, զոր յանձին զգայ հիւանդն քանիցս անգամ ճաշակէ ինչ, թէ ըմպական, և թէ հեղանիւթ. մանաւանդ եթէ կերակուրն, և եթէ ըմպելին լինիցի կարի ջերմ, և կամ կարի ցուրտ : Նոյնպէս ճանաչի ևս 'ի կարի ձգտողոյ, 'ի տապոյ, և 'ի ժայթքմանէ՝ որք 'ի վեր երևին զկնի ուտելոյն կամ ըմպելոյն :

Դարձեալ՝ սովորաբար ընդ ախտիս զուգընթաց լինին ևս ոքնութիւն, անձկութիւն, տժգունութիւն դիմաց. թուլութիւն կամ անզօրութիւն ընդերաց, ցամաքութիւն բերանոյ, թմրութիւն անդամոց, ցնցումն ստամոքսի և մկանանց, և այտուցումն ստորին որովայնի : Այլ և ստամոքսն է ենթակայ սուր և ուժգին իմն խթի, զոր յորջորջեն՝ քօլիքա տէլլօ սթօմաքօ, որ և բազում անգամ պատճառի 'ի վիքոց և 'ի սպազմօտական ներգործութէ : Մինչ չէ՛ յարակցեալ ընդ ախտիս ջերմութիւն, պարտ է 'ի գործ արկանել զդեղորայս ջերմացուցիչս. այլ եթէ յարակցեալ իցէ և ջերմութիւնն, յայնժամ պարտ է փոյթ մեծ ունել 'ի փարատել զբորբոքումն : Եթէ հիւանդն փսխէ զամենայն ինչ զոր ուտէ և ըմպէ, յայնժամ ախտն է հաստատեալ, որում և զուգընթաց գտանի հեծկլտանք, և ուժգին ցաւ : 'Ի վախճանի՝ եթէ զարկ բազկերակին ընդմիջութե հարկանէ, և կարի սաստիկ թմրութիւն և նուաղումն սաէպ 'ի վերայ գայ, գոյ մեծագոյն վտանգ, կամ որոգայթ. քանզի քաջայայտ է թէ բորբոքումնս այս յայնժամ փոխարկի 'ի քաղցկեղ :

Կառավարութիւնք 'ի գործ արկանելիք 'ի բորբոքման ստամոքսի :

Պարտ է մեծաւ փութով արգելուլ խակ և խակ զուտելիս, և զըմպելիս բնութե ջերմացուցիչս, և զայրացուցիչս : Տկարութիւն հիւանդի կարէ խաբել զմերձակայս, և շրջել զմիտս նոցա 'ի տալ զգինի, զոգեւոր հեղանիւթս, և կամ զայլազգ քօստալս : Բայց այդպիսի դեղորայք միշտ զայրացուցանեն զախտն, և սովորաբար 'ի վերայ ածեն զերագահաս մահ : Առաւել հաստատակորէն պատճառքն պատահելոյ չարեաց յախտէս յայսմանէ, է սուտ և կեղծեալ կարծիքն՝ որով սեաօրէն համարին եթէ ցաւքն զայրացուցիչք ստամոքսի և փորոտեաց միշտ յառաջ գան 'ի վիքոց : Ցայն սակս և մերձակայքն 'ի տեսանել անդ զհիւանդն այսու ախտիւ զգածեալ, խակ և խակ փութան

տալ նմա զօղն անխառն և զպղպեղ. ամփոփատ հեղանիւթս, և այգպէս առնուլ զօրանայ ախտն, և հետևապէս 'ի վերայ հասանի քաղցկեղն, յորմէ և զհետ գայ երագահաս մահ : Կերակուրն պարտի լինել թեթև, զովացուցիչ, և դիւրամարս, արժան է լինել սակաւ քանակութեամբ, ոչ կարի ջերմ, և ոչ կարի ցուրտ : Ըմպելին՝ էմուլսիոնէ ան կօմմա արապիքա, կամ շիճուկն կաթին, կամ ջուրն գարւոյ, և հացի, և այլք նմանք :

Խնամատարութիւնք և դեղորայք 'ի վեր արկանելիք 'ի բորբոքման ստամոքսի :

'Ի գիտուածս ախտիս երակահատութիւն հարկաւորապէս պահանջի, և գրեթէ այդ է սեպհական դեղն, զորմէ կախեալ կայ բարի ելքն հիւանդութեն. և չափ քանակութեան արեան հանելոյ պարտի լինել համաձայն զօրութեն ախտակրին, և ուժգնութեն նշանացն : Եւ յետ այնորիկ 'ի նոյն իսկ վայրկենի հարկ է ֆօմէնթացիօնէ առնել 'ի կակղացուցիչ արմատոց և 'ի տերևոց գաղջ ջրով, և ստէպ ստէպ անընդհատ դնել 'ի վերայ ստամոքսի, և նախ քան զպաղիլն յաճախակի փոփոխել, և վերանորոգել. չէ՛ պարտ լինել ոչ այնքան սաստիկ ջերմ, և ոչ կարի ցուրտ. քանզի առաւել ցուրտն և առաւել ջերմն հաւասարապէս վնասակար են ախտիս : Յոյժ օգտակար դեղ է ևս լինիմէնթօ վօլաթիլէն. զոր պարտ է յաճախակի օծանել 'ի վերայ ստամոքսի և ստորին որովայնի :

Դարձեալ, պարտ է ստէպ ստէպ թանալ գաղջ ջրով զոտս և զձեռս ախտակրին. և զչուխայն ջերմ ջրով թացեալ շփել կամ դնել 'ի վերայ ստամոքսի : Նոյնպէս և 'ի ներքոյ ոտիցն դնել զիրս ջերմացեալս, որպէս թանձրաթան, կամ մանանեխ են : Ջերմ բաղանիքն յոյժ օգտակար է, եթէ հնարաւոր իցէ : Բայց առաւել բարեգոյն և շահաւետագոյն դեղն յայսմ ախտի, և յայլ ամենայն բորբոքմունս է լայնաբաց վէզիքաթօրիօ. զոր պարտ է դնել 'ի վերայ ցաւագնեալ մասին մարմնոյ. այդ՝ որպէս բազում անգամ փորձեալ տեսանեմք, միշտ օգտաւէտ լինի հիւանդաց, և ոչ ընաւ վնասաբեր :

Սեպհական ներքին դեղորայքն, զոր 'ի գործ արկանել մարթ է 'ի գիտուածս ախտիս՝ են թամարինտի, մաննա, նիթռօ, աւէնա, յօրինեալ պարզամիս գաղջ ջրով. կմ՝ թեթև տէքօցիօնէ արարեալ հեղուլ զայն դրեխաւ ընդ երաստանս հիւանդին. և եթէ գուցէ անգութե որովայ-

նի, մարթ է 'ի վերայ յաւելուլ եւ տակաւ ինչ օլիօ տի ռիչինօ. զայդ ոչ է մարթ բնաւ զանց առնել, որովհետեւ քաղցուած անգամ դէպ լինի՝ թէ յայգալիսի աւուր առողջութիւն ախտակրին զայգամանէ եւեթ կախեալ մնայ։ Իսկ եթէ ունիցի զուժգին թուլութի աղեաց կամ փորատեաց (որպէս պատահի յոլով անգամ,) յայնժամ պարտ է գրեխ կազմել 'ի քինայէ, եւ 'ի քանֆօրայէ։ 'Ի դիպուածս ախտիս, չէ օրէն փութով խափանել զգործածութիւն դեղորէից. այլ հարկ է երկու կամ երեք օր առաւել ակն ունել փարատելոյ բորբոքմանս. եւ լաւ եւս է ապաքէն յետ լիովին բուժելոյ ախտիս՝ տակաւին աւուրս ութ 'ի գործ արկանել զսովորական դեղորայս։ Են եւ այլ ախտք որոց ընդունակ է ստամոքսն, զոր օրինակ ցաւն աղեաց, կորուսան ախորժակի, անմարսողութիւն, քարտիալճիա, բուրօլէ, որ է ջերմութի ստամոքսի. զորոց ունիմք ճառել 'ի տեղիս իւրեանց։

## ՅՕԴՈՒԱԾ ԺԱ.

Ցաւագին բորբոքման ստորոտեաց կամ ստորին որովայնի, որ ասի՝ էնթէրիթիս։

Բորբոքումս այս է մինն յառաւել դժնդակ եւ վտանգաւոր բորբոքմանց, որում ներքոյ անկանին մարդիկ։

Պարզաբար բորբոքման աղեաց կամ ստորին որովայնի։

Այս բորբոքումն՝ 'ի հասարակի խօսելով, յառաջ գայ 'ի նոյն իսկ պատճառաց բորբոքմանն ստամոքսի։ Բայց եւ պնդութիւն որովայնի, որդնահարութիւն, այսինքն ունել զձձի կամ որդն յորովայնի, տհաս կամ խակ միրգն, ընկոյզն՝ եթէ յանչափս ոք ուտէ, հնագոյն պիրաւոն՝ փակեալ մնացեալ 'ի յատակուղին, սաստիկ գինին, եւն, կարեն պատճառել զբորբոքումս զայս։ Նոյնպէս մարթի պատճառիլ 'ի փոշտանկութէ, յուռուցէ ինչ պատահելոյ 'ի մէջ փորոտեացն, յերկար ուղեպնդութենէ, 'ի փոքրիկ քարանց մտելոց ընդ ճանապարհն փորոտեաց եւն։ Դարձեալ՝ մարթի յառաջ գալ 'ի կծու եւ 'ի թթու մաղձէ, 'ի յօդուածացաւութէ, յարփենախառն որովայնահոսութէ, 'ի թթախտութէ, 'ի սաստիկ եւ 'ի պնդագոյն լուծողական դեղորէից, 'ի թունաւոր նիւթոց, 'ի ցրտաւութէ եւ 'ի խոնաւութէ եւն։ Սեպհական նշանք, որովք

յորձորձեմք զբորբոքումն փորոտեաց, կամ ստորըն որովայնի են՝ ենթեռիթիտէ, բասսիոնէ իլիաքա. երբեմն և՝ քօլիքա ինֆիամմաթօրիա ևն։ Դարձեալ գիտելի է, եթէ յորպիսի և իցէ մասունս ներքին փորոտեաց ախտն զետեղեալ կայցէ, գրեթէ միշտ մի և նոյն է կառավարութիւն. այլ մեք զանազան յօդուածս բաժանելով, դիտեմք զհետևեալ մատուցեն վերծանողին։

Յաղագս նշանաց բորբոքման փորոտեաց կամ ստորին որովայնի։

Նշանք ախտիս յոյժ համաձայնին նշանաց բորբոքման ստամոքսի, և գրեթէ նոյն են ընդ նմա. բայց և սակայն կան զանազանութիւն ընդ մէջ դոցանի, զի այսր ախտի ցաւն լինի տաւուել սուր և սաստիկ, և 'ի խորագոյնս զետեղեալ շուրջ զպորտով, որովայնն պնդեալ իբրև տատանաւ, և պնդութեն որովայնի կարի տաւուելեալ։ Զարկ բազկերակին հարկանէ ցածուն, խոր, երագ, տկար, անհաւասար, և կարծր։ Լեզուն լինի յոյժ կարմիր, և չոր. ծարաւութիւնն ուժգին. փսխումն ևս կարի զօրաւոր. և ախտաժետեալն արտաքս բերէ զնիւթ իմն մածուցիկ ժանգագոյն և անհամ. այսորիկ նիւթոյ զհետ գայ և դառնակսկիծ իմն մաղձ կանաչագոյն, որ ցամաքեցուցանէ զկոկորդն, և երբեմն ևս զպէտս որովայնին, մինչ զի արարեալ գրեխն բազում անգամ ընդ բերանն ելանէ։ Ախտակիրն կրէ և զկնցումն ինչ մկանանց 'ի ստորին որովայնի, հանդերձ կիզողական սաստիկ ջերմութբ. և զգայ յանձին յօժարութի ինչ 'ի միզել հանդերձ ցաւով. ուռոյց և խիթ ինչ 'ի վեր երևի 'ի սրբանն. անդադար փուքս արձակէ 'ի վերուստ, և երբեմն ևս կրէ զմիզարգելութի։

Առաւելեալ մնալն այսորիկ բորբոքմանս, և հասանելն 'ի յետին աստիճան, զցաւն վերոյիշեալ այնքան 'ի սաստկագոյն աստիճան տանի, մինչև եթէ ոք կամիցի թեթևապէս շօշափել զայն ցաւագնեալ մասունս որովայնի, իսկոյն ախտակիրն զաղաղակ բարձեալ գոչէ բարձրաձայն. և յետ այնորիկ զհետ գայ հեծկլտանք, և ստէպ ստէպ փսխումն։ Հուսկ յետոյ եթէ ցաւն փոփոխէ զտեղիս, եթէ փսխումն ոչ ներգործէ 'ի ներքուստ, և եթէ գրեխն արարեալ արտաքս ելանէ հասարակ ճանապարհաւ, գոյ յոյս առողջութեն, և բուժելոյ ախտիս։ Բայց եթէ ախտակիրն փսխէ զգրեխն, և զպէտս որովայնին (որ ասի բասսիոնէ իլիաքա). եթէ լինիցի կարի և յանչափս տկար, եթէ

ղորկ բաղկերակին հարկանէ խոր, մանր, մեղմով, և մրջմնաքայլ, եթէ լցցի գեղձքն ամպոյն, և այլազգունեալ, և եթէ շունչն պարշահատ և դաղդաղի լինիցի, ցուցակ է անապաքինութեան, և ապաքրշանելի եղիցն տատանեալ ախտակրին:

Պառաւլարութիւն 'ի Գործ արկանելոյ 'ի դիպուածս Բորբոքման Փորոտեաց և ստորին որովայնի:

Պառաւլարութիւն առաւոր է մի և նոյն ընդ վերոյիշեալ պառաւլարութեան բորբոքման ստամոքսի: Պարտ է պահպանել զհիւանդն 'ի հանգիստ և դադար 'ի ցրտոյ, հեռի առնել 'ի նմանէ զայն ամենայն որք առթեն զնեղութիւն սրտի: Կերակուրն հարկ է լինել թեթևագոյն, և փոքր քանակութ.: Ըմպելին զովարար, որպէս սիէռօ տի լաթթէ քիարիֆիքաթօ, և ջուրն գարւոյն, կամ վարսակի:

Յաղագս դեղորէից, զորս պարտ է 'ի կար արկանել 'ի դիպուածս Բորբոքման Փորոտեաց և ստորին որովայնի:

'Ի դիպուածս, յորում բորբոքումն փորոտեաց և ստորին որովայնի յառաջ գայ 'ի կծու և 'ի թթու մաղձէ, և 'ի թունաւոր ինչ նիւթոց, և 'ի խակ կամ 'ի տհաս մրգոյ, որք երկարատևեալ մնան 'ի փորոտիսն, պարտ է 'ի կար արկանել զթեթև լուծողական, զզովացուցիչ և զնուաղեցուցիչ դեղորայս, որպիսի են՝ շիճուկն կաթին, թամարինտին, մաննան, օլիօ տի ռիչինօ, և իւղն քաղցր նշոյ են. ևս դրեխք պատրաստեալք քամօմիլլաիւ, օքսիմելէ սեմպլիչէիւ, և հասարակ ջրով: Կակղացուցիչ ֆօմէնթօն նմանապէս հարկաւ պահանջի: Այլև պարտ է ստէպ ստէպ թանալ գաղջ ջրով զոտս և զձեռս հիւանդին. և զջուխայն ջերմ ջրով թացեալ դնել 'ի վերայ որովայնի, և 'ի վերայ պորտոյ: Յետ այսորիկ հարկ է դնել զվէզիքաթօրիօ 'ի վերայ այնր մասին, ուր առաւել զգայ զցաւն. և այս ոչ միայն քարշէ արտաքս զցաւս փորոտեացըն, այլ ևս յառաջ բերէ և պատճառէ զներգործութիւն իմն ազդու, և զօրաւոր, որով լուծողականքն և մաքրողականքն, որք զառաջինն անգործ էին, սկսանին այնուհետև ներգործել իսկ և իսկ:

Յորժամ բորբոքումն փորոտեաց և ստորին որովայնի պատճառի 'ի ճնշմանէ կամ յարգելականութէ թանչից կամ իւիք սովորական հոսմանց, և 'ի ցրտութէ, յայնժ.

ժամ պարտ է երակ հատանել. բայց արժանէ նկատել 'ի պարագայս նշանաց կարողութե ախտակրին, և ուժգնութե ցաւոցն: Եւ յետ այնորիկ 'ի նոյն իսկ վայրկենի հարկ է դնել զտզրուկս 'ի վերայ այնր մասին, ուր առաւել զգայ զցաւն: Եւ 'ի վերայ պորտոյ դնել անօթ ինչ ապակեայ լցեալ ջերմ ջրով. նոյնպէս և ը ոտիւքն հարկ է դնել ջերմ կղմինտր, կամ ջերմ ջուր յանօթս լցեալ: Գրեխն պարտի լինել կազմեալ ջրով գարւոյ, ավենախւ, և աղիւ, նշի իւղով, զոր պարա է 'ի գործ արկանել երեք անգամ յաւուրն, և առաւել յաճախակի, եթէ յոյժ կարծրացեալ իցէ պնդութիւն որովայնի:

Ըստ սաստկութեան ցաւոցն պահանջի և առաւել հոգածութի և մտադրութի բորբոքմանս, և դեղորէից յայնժամ պարտ է լինել բարեխառն. 'ի գրեխն չէ պարտ 'ի գործ ածել զաղն, այլ միշտ զիւղն քաղցր նշոյ: Դարձեալ, 'ի դիպուածի առ յոյժ օգտակար և բարեգոյն վարկանիմ զգրեխն կազմեալ 'ի կակղացուցիչ արգանակէ. սմին իրի պատշաճ է յօրինել ծաղկամբ ազոտոյ և սերմամբ կտաւատի. ևն: Եւս մարթ է հայեցեալ 'ի պարագայս ցաւոցն՝ յաւելուլ 'ի վերայ կէս կամ մի ամբողջ գլուխ բաբաւլէրօ ալպօ. եթէ ախտն չնուաճի 'ի գրեխէ, պարտ է ապաստան լինել և դիմել աներկբայ 'ի զօրութիւն վերոգրեալ լուծողականի. բայց զի մի' լուծողականն 'իշխեսցէ զայրացուցանել զփորոտիսն և զայլ ներքին մասունս. յայն սակս յօրինել պարտ է միանգամայն խաղաղացուցիչ դեղս, որք նուաճեն զցաւս, և խափանեն զցնցումն մկանանց աստորին որովայնի, և մանաւանդ իմն ներգործութիւն ընծայեն լուծողականին:

Գոյ դեղ իմն, որով մարթ է 'ի դուրս վանել զաղէտս որովայնի, և է լուծումն դառն աղի լուծողականի, զոր պարտ է պատրաստել և յօրինել զայս օրինակ: Առ երկուս ունկի՝ սալ քաթառթիքօ, կամ սալէ տ' էբսօմ, և լուծեալ զայն դաղջ ջրով առ փոքրիկ սկահակաւ յամենայն կէս ժամու միանգամ, մինչև սկսանիցէ ներգործել. նոյնպէս պարտ է տալ 'ի նմին ժամու ութ կաթիլ լաւտանօ լիգուիտօ բաժակ մի ջրով կինամոնի կամ անանխոյ, առ 'ի խափանել զգրգիռս և զայրացումն, և աճապարոյն զփսխումն:

Դէպ լինի բազում անգամ, զի հիւանդն ոչ լինի ենթակայ ընդունելոյ զհեղանիւթս 'ի ստամոքսն, և յայնժամ հարկ է մաքրել կամ լուծել զնա 'ի ձեռն հառադեղոյ. զորոյ զփորձ առնի բազում անգամ, և է յոյժ շա-

հաւէտ և օգտակար։ Առ կէս տրամ՝ շիպարարդա, և նոյն-չափ՝ Թաւթաւօ միթռիտատօ, և մի կշիռ ցորեան՝ օր-բիօ, սաբօնէ տի ալիքանթէ. լուծեալ և փոշի արած դշխա-րաքրան և զօքքիտն. և խառնեալ զամենայն 'ի միասին զանգեալ ը. սաբօնէ տ'ալիքանթէի, և յետ այնորիկ հատ-կաղմեալ փոքրիկ կամ մեծ ըստ չափու։ Հիւանդն կլանի-ցէ զայդ ամենայն միանգամ եւեթ. և եթէ զկնի քանի-նիչ ժամուց ոչ ներգործեսցէ 'ի նմա, պարտ է վերստին նոյնաչափ կլանել։

Այլ եթէ՝ դժուարութիւն 'ի գործածութեան այսր ա-մենայնի չլինիցի հնարաւոր լուծումն որովայնի, յայն-ժամ հարկ է բաղանիս առնել տաքուկրին, եդեալ զնա 'ի ջերմագին ջուր, որ հասանիցէ մինչև 'ի կուրծս։ Ա-կանատես եղէ շահաւէտութեան այսր հնարից, յետ մի-անգամ անօգուտ և 'ի դերև ելանելոյ այլ ամենայն դե-ղօրէից։ Հիւանդն ցայն վայր մնասցէ 'ի ջուրն, մինչև ու-ժաթափ լինել նմա, և ոչ ունել զօրութիւն յոտն կալոյ. և թէ յառաջին անգամն չստանիցէ զակնկալեալ օ-գուտն, պարտ է երկրորդ անգամ կրկնել խակ և խակ 'ի տառապել հիւանդին փոքր ինչ կարողութիւն և զօրութիւն։ Ու 'ի վախճանի՝ յոյժ օգտակար է բազում անգամ կրկ-նել զբաղանիս զայս, և յերկար ժամանակ մնալ 'ի մէջ ջրոյս, մինչև 'ի յայտ եկեսցէ ներգործութիւն։ Այլ եթէ այդ ամենայն ընդունայն և անպտուղ լինիցի (որպէս պա-տահի երբեմն) յայնժամ պարտ է 'ի ձեռս առնուլ զվեր-ջին հնարն. դնել զհիւանդն 'ի ջուր ցուրտ, կամ շըջ-ցուցանել զնա բուռ սառուց 'ի վերայ խոնաւ յատակի, և կամ թափել 'ի վերայ ազդեր և սրունիցն ջուր ցուրտ։ Արդարև որոգայթաւոր է հնարս այս, բայց յանպտուղ ելանել այլ ամենայն հնարից և դեղօրէից, և յանյոյս մնալն, յոյժ պատշաճ և բարիոք եւս է 'ի կիր առնուլ զհնարս անստոյգս՝ քան բնաւ անփոյթ լինել զփրկութէ հիւանդին։ Եթէ բորբոքումն այս պատճառի յորդանց. որ քաջ ծանուցի 'ի նշանաց ախտոյիցն որովայնի, որոց որդունք մեռեալք արտաքս ելանեն, յայնժամ մարթ է 'ի վար արկանել զդեղորայս առ 'ի սպանանել, և արտաքս վանել զորդունս. որպիսի են բօլվէրէ տի սոանեօ, օլիօ տի բալմինըրինթէ, և լուծողականք պատրաստեալք խաշնդեղիւ, և քալօմէլանօփի։

Խրատք ընդհանրականք առ 'ի խնամատար լինել որդւոյն և յետ բորբոքման փորոտեաց կամ ստորին որովայնի:

Բորբոքողականութենն փորոտեաց կամ ստորին որովայնի յորպիսի և իցէ պատճառէ յառաջ եկեալ, ըստ պարագայիցն պահանջելոյ, եթէ պիտո իցէ չիջուցանել զայն, իսկ և իսկ երակ հատանել հարկ է. և եթէ բորբոքումին ոչ դադարի յառաջին երակահատութեն, յոյժ հարկաւոր է վերստին կրկնել զայն, և չէ պարտ ընաւ 'ի ծակս մեղմութե զարկի բազկերակի երկնչիլ 'ի կրկնելոյ զայն. քանզի զարկ բազկերակի երբեմն վերականգնի զկնի երակ հատանելոյ. և ցորքան տեսանեմք զայդ վերականգնումն զարկի բազկերակի, մարթ է աներկիւղ և ապահովապէս երակ հատանել. և ապա 'ի նոյն իսկ վայրկենի հարկ է օծանել ունկուէնթօ ա՛ ալթէաիւ կամ օլիօ քանֆօրաթօիւ 'ի վերայ այնր մասին որովայնի, ուր առաւել զգայ զցաւն:

Արդ՝ յորժամ 'ի ձեռն նախագրեալ դեղորէից և կառավարութեանցս չփարատին բորբոքմունք, և կալուածքն որովայնի միշտ տակաւին նոյն օրինակ, յայնժամ պիտո է գրեխ առնել 'ի յործացուցիչ դեղոյ, որ առ՝ Թառթառօ էմէթիքօ, կամ 'ի ծխախոտոյ: Նոյնպէս սովորութիւն է յայդպիսի դիպուածս յուսահատութեան տալ մերքուրիօ քռուտօ բազում ունկի մինչև 'ի մի լիտր ամբողջ, բայց ոչ աւելի. իսկ եթէ կայ երկիւղ կամ կասկած փոխելոյ բորբոքմանս 'ի քաղցկեղ փորոտեաց, յայնժամ չէ օրէն ընաւ զփորձ առնուլ այսր սնդկի. քանզի ոչինչ զօրէ արտաքրին առողջութե, այլ գործածութիւն այսր սնդկի անշուշտ պատճառ մահու եղկելւոյն: Այլ եթէ դիրք փորոտեացն այնպիսի հաստակազմ ընութե իցեն միջակեալ՝ մինչև յաղթել սաստկապէս զօրութեն, յայնժամ սնդիկն, որ է մերքուրիօ քռուտօ, ոչ միայն է գեղջին պատշաճ և վայելուչ, այլ ևս յոյժ բարիոք և օգտակար. քանզի 'ի մէջ ամենայն գոյացութեց՝ սա ունանձինն ընծայեմք զբացողական զօրութիւն, որով բանայ և լուծէ զխողովակս փորոտեացն կամ աղեացն:

Բայց եթէ բորբոքումն պատճառեալ իցէ 'ի փոշտանեկութէ, կամ յաղեթափութէ, յայնժամ պիտո է փոյթ մեծ ունել առ 'ի ներքս մուծանել զփորոտիսն, 'ի ցածագոյն և 'ի խոնարհ տեղւոջ եդեալ զգլուխ հիւանդին, և թեթևապէս շօշափմամբ ձեռօք, և մատամբք տեղա-

ւորել զանկեալ փորոտիսն։ Այլ եթէ այսպիսի հնա-
րիւք, եւ գրեթէ տաղտկեն, չլինիցի ինչ կառավարութի,
յայնժամ պարտ է ձեռնամուխ լինել յարհեստն վիրաբու-
ժութեն, որ է յետին նպաստն ախտակրին։ Առաջին զգու-
շութիւն՝ զոր պարտ է 'ի գործ արկանել յայդպիսի ախ-
տաժէտ, է նկատելն եւ որոնելն, եթէ արդեօք ունիցի
ինչ կոտորած յանդամն. պարտ է եւ մեծաւ աչալրջութ
'ի քննութիւն մտանել. որովհետեւ ախտն չլինի միշտ յայտ-
նի, եւ աչաց անտեսանելի մանաւանդ 'ի սեռս կանանց, շօ-
շափել պարտ է զամենայն մասունս որովայնի եւ տեսա-
նել թէ գուցէ 'ի նմա կոտորած ինչ կամ էռնիա, որ է
փոշտանկութի. որ եթէ գտանի, հարկ է կամ արտաքս
քարշել, եւ կամ 'ի ներքս ածել զաղիսն, որպէս ասացաք
վերագոյնդ։ Ա՛յս է սեպհական գեղն, որով մարթ է
նպաստամատոյց լինել ախտակրիս յայսպիսի դիպուածս։

Այլեւ խրատք կարեւորք 'ի գործ արկանելիք 'ի դի-
պուածս ախտիս։ Ով ոք կամի արգելուլ կմ խափանել
զբորբոքմունս զայս դժնդակ, եւ որոգայթաւոր, չէ պարտ
բնաւ ընդերկար ժամանակս մնալ առանց կատարելոյ զ-
պէտս որովայնի. քանզի բազումք զրաւեցան 'ի կենաց
ըմբռնեալք 'ի բորբոքմանէս միայն վասն այսր պատճա-
ռի. այսինքն վասն չհոգալոյ զլուծումն պիտոյից որո-
վայնի։ Ո՛չ է օրէն ուտել զխակ եւ զթթու միրգս, եւ
ոչ իսկ ըմպել զքամիչաբեր հեղանիւթս. եւն։ Դարձեալ
պատճառի 'ի ցրտոյ, 'ի թացեալ հանդերձս զգենլոյ. 'ի
խոնաւուտ տոիցն, որպէս ասացաք 'ի տեղւոջ իւրում։

## ՅՕԴՈՒԱԾ ԺԲ.

### Յաղագս բորբոքման լերդի, որ ասի էբաթիթէ։

Լեարդն է սակաւ ենթակայ այսր բորբոքման քան
զայլ մասունս ընդերաց, յայն սակս՝ զի շրջագայութին
յայսմ մասին կարի մեղմով եւ դանդաղանօք գնէ 'ի գործ.
բայց իբրեւ դէպ լինի այնմ ըմբռնիլ 'ի բորբոքմանէ ա-
տի, յոյժ դժուարին իմն է բուժելն զայն. եւ յոլով ան-
գամ փոխարկի 'ի շարաւութիւն, եւ յուռոյցն կոչեցեալ
շիրրօ։

### Պատճառք բորբոքման լերդի։

Ո՛ւց յընդհանուր պատճառաց այլ ամենայն բորբոք-
մանց ընդերաց, բորբոքումն լերդի՝ կարէ եւ յառաջ գալ

'ի կարի գիրութենէ, և 'ի մսեղութենէ, 'ի շարաւոյ, որ գոյ-անայ 'ի լերդն, 'ի բուռն հարստահարութենէ առթելոյ 'ի յործացուցիչ դեղոյ՝ 'ի ժամանակի, յորում տակաւին լերդն է ախտաժետեալ, 'ի կարի իմն ջերմագին արենէ, և յայնմ ամենայնէ որ կարէ յանկարծակի զօրացուցանել զլերդն, յետ միանգամ սաստկապէս ջերմանալոյ նորա. 'ի խճից լերդի՝ որ ասի քալքօլի էբաթիչի, որ ներքոյ արկանին յընթացման մաղձի, 'ի բուռն զօրութենէ սաստիկ ոգիւոր հեղանիւթոց, 'ի առէպ գործածութէ կերակրեղինաց համեմելոց ջերմացուցիչ նիւթովք, 'ի գժնդակ և 'ի խստամբակ ներգործութէ մաղձից: Նոյնպէս մարթի պատճառել յանկմանէ, 'ի խոցէ ինչ պատահելոյ 'ի լերդն, յերկար ճանապարհորդութէ, 'ի սաստիկ կրից ոգւոյ, յանսանձ բարկութէ և 'ի սրտմտութէ: Բազում անգամ ևս յառաջ գայ 'ի բորբոքմանէ փորոտեաց, թոքոց, և ստոծանւոյ, ևն:

## ՆՇԱՆՔ ԲՈՐԲՈՔՄԱՆ ԼԵՐԴԻ:

Բորբոքմանս այսմիկ զուգընթաց լինի ցաւ ինչ սաստիկ և խայթիչ՝ յաջակողմն դէպ 'ի ներքոյ անհարազատ կողի, որ ասի քօսթօլէ սբուռիէ: Երբեմն ցաւս այս ճապաղի մինչև 'ի ծագն ուսոյ, համգերձ ծանրութբ իմիք: Ունի զգուանս և տաղտկութիւնս. և երբեմն ժայթքէ զմաղձս ժանգագոյնս: Կրէ զտապ սաստիկ և զծարաւ իմն բորբոքեալ, զտագնապ ուժգին, զհազ չոր, զհառաչանս, զդժուարութի 'ի շնչառութե, և զհեծկլտանս. գոյն մորթոյն մանաւանդ աչաց հասարակօրէն լինի տժգոյն կամ դեղին. 'ի վեր երևի ուռոյց ինչ յաջակողմն դէպ 'ի ներքոյ վերջինիշեալ կողի: Զարկ բազկերակին հարկանէ արագ, և կարծր: Մէզն լինի պղտոր 'ի գոյն նարնջոյ, և երբեմն հարկանի 'ի գոյն մոխրոյ: 'Ի դիպուածս ախտիս ախտակիրն սովորաբար 'ի գիշերային պահու գըտանի միշտ 'ի վիճակ յոռեգոյն, և յառաւօտեան պահու իւրն ինչ բարեգոյն:

Ախտս այս տարբերի 'ի բորբոքմանէ թոքոց կամ 'ի կշտացաւութենէ. ըստ որում 'ի դիպուածս յայս զարկ բազկերակին լինի արագ և կարծր. և ցաւն զգացեալ 'ի ներքոյ անհարազատ կողին՝ ոչ է այնքան սաստկագոյն և խայթիչ, որպէս 'ի դիպուածս բորբոքման թոքոց. և թուքն լինի պարզ, և ոչ արիւնախառն: Բայց պատահի երբեմն, զի նշանքն ախտնդանութեն, որ ասի՝ իքդերօ-

տանջէ, Թոքախտութեան, արգանդախտութեան, և ախտի մկանի որովայնի, որ ասի՝ մուսքօլի ռէթթ՚ատտոմինէ, այնպէս խառն 'ի միասին գտանին 'ի բորբոքման լերդի, մինչև մեծապէս դժուարագոյն լինի որոշելն. յայնպէս արժան է 'ի վար արկանել փոյթ մեծ և զամենայն հնարս կարելիս առ 'ի ճանաչել և որոշել զայն. և զկնի այնորիկ 'ի գործ արկանել զկառավարութիւս և զդեղորայս ըստ պահանջելոյ հարկին:

Նշանք յուզեցոյնք և ձախորդականք են ստէպ ստէպ հեծկլտանքն, սաստկութի տապոյ, ուժգնութին ծարաւոյ, յաճախակի ժայթքումն և հոսումն որովայնի. ցնորումն խելաց, նեխութին և զազրահոտութիւնն կղկղանաց, հոսումն ցուրտ քրտանց, նուաղումն սրտի և այտուցումն ոտից: 'Ի վերայ այսր ամենայնի՝ եթէ յանկարծակի Թմբրութի, և ցրտութի ձեռաց և ոտից 'ի վերայ եկեսցէ, է նշան անվրէպ մահացուցիչ. քանզի քաջայայտ է՝ եթէ նեխեալ է յայնժամ լեարդն և փոխարկեալ 'ի քաղցկեղ.

### Կառավարութիւնք 'ի վար արկանելիք 'ի դիպուածս բորբոքման լերդի:

Կառավարութիւնք ախտիս են մի և նոյն ընդ վերոգրեալ կառավարութեանցն բորբոքմանց. պարտ և պատշաճ է պահպանել զախտաւորն յանդորր և 'ի հանգիստ, և հեռի առնել 'ի նմանէ զայն ամենայն՝ որք առթեն զջերմութի: Ըմպելին պարտի լինել հեղեղկիչ և զովացուցիչ, որպիսի են չիճուկն կաթին, ջուրն գարւոյ կամ ավէնայի, խառն ընդ օսսիմէլէ սէմբլիչէի: Կերակուրն Թեթևագոյն և սակաւաքանակ, և սակաւ սնուցիչ կամ տածիչ:

### Ցաղագս դեղորէից, զորս պարտ է 'ի կիր արկանել 'ի դիպուածս բորբոքման լերդի:

'Ի դիպուածս յայս՝ որքան մարթ իցէ՝ պարտ է վաղընդփոյթ երակ հատանել 'ի բազկացն, կամ յերակէն որ ասի՝ վէնա էմօռռօիտալէ. բայց նկատել պարտ է հանապազ 'ի պարագայս անձին. զորօրինակ 'ի սաստկութեն ցաւոց և նշանաց, 'ի հասակն, 'ի խառնուածն, և 'ի զօրութին: 'Ի դիպուածս ախտիս ամենայն սաստիկ և ուժգին լուծողականքն են յոյժ վնասակարք, և որոգայթաւորք: Միայն յայսր տեսակի բորբոքման մարթ է 'ի

գործ ածանել զդեղորայս մեղմապէս լուծողականս, և զովացուցիչս, որպիսի են խաշուն թամարինտի՝ խառն ընդ մաննայի, քրեմոռ տի թառթառօ, թինթուռա տի ռապարպառօ, մաննանա խառն ը չինծուկի կաթին.

Դարձեալ, նշանաւոր և օգտակէտ դեղ ինն է տզրուկնն, զոր պարտ է եօթն կամ ութ հատ դնել 'ի վերայ որթանին, կամ վէնա էմօռռօիտալէ անուանեալ երակի: Ըղգրեխն պարտ է պատրաստել նոյնպէս 'ի կակղացուցիչ և 'ի զովացուցիչ դեղորէից: Եւ պարտ է զապունգս կամ զչուխայս ջերմ ջրով թացեալ յաճախակի դնել 'ի վերայ այնր մասին, ուր առաւել զգայ զցաւն: Նոյնպէս նշանաւոր դեղ ինն է յայամ դիպուածի՝ ունկուէնթում փօլանթիկէ, զոր պարտ է օծանել 'ի վերայ ցաւագնեալ մասին: Իսկ եթէ 'ի ձեռն այսոցիկ դեղորէից և նպաստից չդադարիցի ուժգնութի ցաւոյն, յայնժամ հարկ է աներկբայ դնել զվեշիքաթօռիօ 'ի վերայ այնր մասին, ուր առաւել զգայ զցաւն: Այլ եթէ բորբոքողականութին յոյժ սաստիկ իցէ, և կեց ընդ միզարգելուն, յայնժամ 'ի վերայ նախագրեալ ըմպելեացն մարթ է յաւելուլ չորս կշիռ ցորեան՝ նիթռօ բուռիֆիքաթօ, կամ 12 չիթ՝ սբիռիթօ տի նիթռօ տօլչիֆիքաթօ:

Եւ ինձ իսկ ոչ սակաւ յաջողեցաւ դարման տանիլ, բայց եթէ տալով զառաւել զովացուցիչս և քրտնաբերս 'ի դեղորէից աստի, որպիսի է թառթառօ էմէթիքօ, խառն ընդ ջրոյ սամպուքօի, և օսիմէլ սէմբլիչէի. որ այսպէս բաղադրի: Արդ՝ առ զվերոյիշեալ սամպուքօ անուանեալ ծաղիկն ըստ կշռոյ ունկւոյ միոյ 'ի լիտր մի ցուրտ ջրոյ. զկնի 12 ժամուց՝ հեղ զզուշութբ զհեղուկն յայլ ամանի անօթ: Ապա յաւել 'ի սոյն զմի կամ զմի և կէս կշիռ ցորեան թառթառօ էմէթիքօ, և զմի ունկի օսիմէլ սէմբլիչէ, և տուր ըմպել հիւանդին հինգ կամ վեց անգամ յաւուրն՝ զկշիռ մի և կէս ունկւոյ:

Դարձեալ, գիտել արժան է, զի 'ի դիպուածս ախտիս չէ պարտ խափանել զարտաթորումն մենստրուաքեր հիւթոյ. այլ թէ ոչ՝ 'ի խափանմանէ գլխովին այսր արտաթորման առաւել բորբոքի լեարդն և ստորին որովայնն, և պատճառին նեխութի և փտութի, միանգամայն և քաղցկեղ: Այլ պարտ է մեծաւ զգուշութբ չափաւորել զառաւելութիւնն արտաթորման նորին, որովհետև չափաւոր արտաթորումն նորին սփոփէ և թեթևացուցանէ զախտակիրն:

Գոյ ևս այլ ինն տեսակ այսր ախտի, որ առ՝ էքա

Թիմէ քռօնիքա՝ այսինքն երկարատև լերդածեռութի. ըստ որում 'ի դիպուածս յայս ջերմութին լինի յարատև, բայց ոչ այնքան սաստիկ, որպէս 'ի դիպուածս բորբոքման լերդի. ախտակիրն զգայ ըղլլութի, և զծանրութի, զձգտումն լերդի. սովորաբար կրէ զցաւ ինչ թեթև յաջակողմն դէպ 'ի ներքոյ անհարազատ կողին. երբեմն ցաւս այս տարածանի մինչև 'ի յեզրն ուսոյ. և հասարակօրէն զայրանայ 'ի վայրկենի՝ յորում ոք հպեսցի 'ի նա շօշափմամբ, մանաւանդ յընկողմանելն 'ի վերայ ցաւագնեալ կողմանն.

Իսկ դեղքն այսոքիկ են: Վէշիքաթօրիօ դնելն՝ որպէս 'ի բորբոքմանն լերդի, նոյնպէս և աստ կարևոր զատի. բայց յայսմ դիպուածի յոյժ հարկաւորապէս են պահանջի: Կակղացուցիչ և զովացուցիչ դեղորայքն, որպիսի են սիէռօ տի լաթթէ, նիթռօ, ջուրն ամէնայի կամ գարւոյ. և դրեխն մերոդրեալ կերպիւ նմանապէս հարկաւ պահանջին: Բայց առաւել բարեգոյն և օգտաւէտագոյն դեղն յայսմ դիպուածի է քաղցրացուցեալ սնդիկն, որ ասի՝ մեռքուրիօ տօլչէ. զոր առ 'ի խոհեմութե 'ի գործ արկանել՝ արժան է սկիզբն առնել 'ի մի կշիռ ցորենոյ, և հապա երբեք հասանել 'ի վեց ցորեանս յաւուրն: Եւ յետ այսոցիկ պարտ է 'ի վար արկանել զհանքային ջուրսն, որ ասի՝ ակուէ մինէռալի կմ մացիալէ տի սպա, եւ չափու չորից ունկեաց երիցս անգամ յաւուրն: Բայց որովհետև 'ի դիպուածս ախտից լերդի, փորոտիքն և լեարդն ախտակրին սովոր են լինել յոյժ տկարադոյնք, վասն որոյ յետ դադարման ախտին պարտ է հրաժարիլ յամենակերպ մսեղինաց և ձկնեղինաց, և յայլ ողխաւոր հեղանիւթոց. յայնժամ կերակրոցն հարկ է լինել սնուցիչ, խոտեղէնք և հասունացեալ պտուղք. և այնք կարի սակաւ քանակաւ. և չափաւոր ինչ շարժումն է եւս օգտակար:

## ՅՕԴՈՒԱԾ ԺԳ.

### Յաղագս բորբոքման փայծեղան. որ ասի՝ սփլէնիտիդէ:

Բորբոքողականութի փայծեղան, որ ըստ իտալացւոց կոչի՝ ինֆիամմացիօնէ տէլլա միլցա, ունի մեծ նմանութի ընդ բորբոքման լերդի: Անձինք, որք սովորաբար են ենթակայ այսր բորբոքման, են միճակեալքն տկար կազ-

մուածոց փայծեղան, և սեւամաղձային խառնուածոց, և ևս նոքա, որք կրեալ են յերկարատև տենդս, և զայլ հիւանդութիւս, և որք ուժաթափ լեալ են 'ի տաժանաքեր աշխատանաց. ևն:

Պատճառք Եռեքօրեան Փայծեղան:

Պատճառք այսորիկ բորբոքմանս յոյժ համաձայն են ընդ պատճառաց բորբոքմանց ստամոքսի, և փորոտեաց: Դարձեալ, բորբոքողականութիւն սորին որովայնի, ստոծանւոյ, որովայնամաշկի, մարթին դասիլ 'ի կարգս պատճառաց այսորիկ բորբոքման:

Նշանք Եռեքօրեան Փայծեղան:

Նշանքն առաւել գլխովին համաձայնին ընդ մասին նշանաց առաւելին կոչեցելոյ՝ հեպաթիթէ, այսինքն բորբոքման լերդի, զորմէ խօսեցաք 'ի վեր անդր: Բայց սեպհական զանազանութիւն՝ որ ընդ մէջ գտանի, է զի ցաւն այսորիկ լինի 'ի ձախակողմն դէպ 'ի սահմանսն ախտնդանեաց, ուր զետեղեալ կայ փայծաղն: Դարձեալ, ախտս այս դուշակի յուժգին ինչ ցրտոյ, որում անդէն զհետ գայ սաստիկ իմն ջերմութիւն (որպէս պատահի երբեմն 'ի գիպուածս բորբոքման լերդի.) 'ի չափազանցութիւն ծարաւոյ, 'ի կատաղութիւն: Ախտաւորն զգայ յարատև զցաւ ինչ սաստիկ 'ի ձախակողմն, որ 'ի դոյզն ինչ շարժմանէ կամ շօշափմանէ ուժգին սաստկանայ, և աճի. և այսոքիկ ցաւք 'ի վեր երևին նաև յուսս, 'ի ստինս, և յանրակս, բայց ոչ լինին միշտ 'ի մի և 'ի նոյն աստիճանի, այլ երբեմն առաւելուն, և երբեմն նուազին: Երբեմն նեղի և տագնապի սաստկագոյն իմն հազիւ, և հեծկլտանօք, և երբեմն կրէ զատաղտկութիւս և զզուանս, և երբեմն ևս ժայթքէ զմաղձս առատագոյնս:

Այլ գիտել արժան է. զի փայծաղն, որ է ընդերք ինչ կակուղ և սպնգային, բազում անգամ յուժգին բորբոքմանէ այտնու, կամ թուլանայ. և բազում անգամ ևս կարծրանայ հանգոյն ոսկեր, և երբեմն ևս 'ի նոյն բորբոքմանէ փոխարկի 'ի խղխայթումն, յորմէ զհետ գայ ախտն այն որ կոչի՝ Թապէ սըլէնիքա, այսինքն փայծաղնական նեխութիւն: Իսկ նշանքն փայծաղնական կամ լերդական նեխութեան են սաստիկ և արիւնախառն ժայթքումն, կամ հոսումն որովայնի, ցուրտ քրտունք, յաճա-

խակի հեծկլտանքն, ցրտութիւն ձեռաց և ոտից, Թուլութիւն սրտի. զարկ բազկերակին լինի մանր՝ արագ, և մերձ-մեռաքայլ, և ախտակիրն կրէ դժուարութիւն մեծ յընկողմանելն 'ի վերայ ցաւագնեալ կողմանն ։

Կառավարութիւն, և դեղորայք 'ի գործ արկանելիք 'ի դիպուածս ճորճոփման փայծեղան ։

Կառավարութիւնք և դեղորայք ախտիս են մի և նոյն է վերագրեալ կառավարութեան և դեղատուութեան բորբոքման լերդի ։

## ՅՕԴՈՒԱԾ ԺԴ.

Ցաւագին ճորճոփման երիկամանց, որ ասի նեֆրիտիդէ ։

Բորբոքումն երիկամանց, որ ըստ իտալացւոց յորջորջի՝ էնֆիամմացիօնէ տէ՝ ռէնի, կամ քօլիքա նէֆրիթիքա, ունի համաձայնութիւն ընդ բորբոքման միզանց խողովակաց, կամ փամփշտոյ ։ Ախտս այս անխտիր գտանի 'ի ծերունիս, և յերիտասարդս ։

Պատճառք ճորճոփման երիկամանց ։

Ախտս այս հասարակօրէն յառաջ գայ յայլ ամենայն բորբոքմանց ընդերաց ։ Մարթի ևս պատահել յանկմանէ, 'ի հարստահարութէ, 'ի խիճից, և յաւազոց, որք արգելեալք մնան յանցս միզի և 'ի խողովակս ստորին որովայնի ։ Դարձեալ՝ ախտս այս պատճառի բազում անգամ ևս յընդերկար ձիավարութէ, յարշաւանաց, 'ի յերկար և 'ի տաժանաւոր ճանապարհորդութէ, 'ի չափազանց հետևագնացութէ, մանաւանդ 'ի տունջենային տաւթու, 'ի սաստիկ բարձմանէ ծանրագոյն իրաց, և յանչափապէս գործածութէ ոգխաւոր հեղանիւթոց ։ Նոյնպէս մարթի ևս պատճառել 'ի ձգմանէ, կամ 'ի բռնի շարժմանէ միզանց խողովակաց փամփշտոյ, և երիկամանց, յանշարժական կեանս վարելոյ, 'ի սաստկագոյն կրից, 'ի խոնաւութէ, և 'ի ցրտաւութէ, 'ի բռնութէ ինչ մնոց, 'ի կարի հետազօտութէ նորախմոց գինւոց ։ Հնար է ևս պատճառել յայնմ ամենայնէ, որ սաստկապէս զայրացուցանեն և վիրաւորեն զերիկամունս, և ըզ-

փամփուշտս․ որպէս 'ի քանթառելլէ անուանեալ միջա-տէ, 'ի բալասանէ, և 'ի կարի սաստիկ լուծողականէ։ Այլ և 'ի հնագոյն ախտից, որք խանգարեն զանցս կամ զխողովակս միզի, որպիսի են յօդուածացաւութիւն, և ախտքն ախտոնդանաց, ևն։

### Նշանք Բորբոքման Երիկամանց։

Ախտաժէտն զգայ յարատև զցաւ ինչ սաստիկ զար-կողական և խայթիչ 'ի թիկնամէջս՝ դէպ յաղեօքն միջ-նոզին, և 'ի խորագոյն մասունս ստորին որովայնի, ուր զետեղեալ կան երիկամունքն յաջմէ և յահեկէ․ եր-բեմն ցաւս այս տարածանի մինչև 'ի միզանցքն, 'ի սաղ-մանցքն, և 'ի փամփուշտն։ Եթէ երկու երիկամունքն 'ի միասին բորբոքեալ իցեն, յայնժամ ճանաչի 'ի յարգել-մանէ միզին, 'ի տաղտկութէ, յանձկութէ, և 'ի ժայթք-մանէ։ Իսկ եթէ ախտն յոյժ սաստիկ իցէ, յայնժամ մէզն լինի անօսր և անգոյն։ Իսկ եթէ պատճառեալ իցէ 'ի խճից, յայնժամ այսորիկ նշանքս զօրանան տասնա-պատիկ առաւել․ Եւ ձապաղի ցաւն վերոգրեալ ընդ մի-ջաւոր մասունս երիկամանց․ ազդերքն ախտաւորիս տան-ջին թմբրութբ̃, կարկամութբ̃, և ջղացաւութբ̃․ ամոր-ձիքն քարշին 'ի բարձրագոյնս․ մէզն լինի արգելական, արիւնախառն, և շարաւալի խառն ընդ աւազոյ։ Իսկ ջերմութիւն, որ զուգընթաց լինի այսորիկ բորբոքման ե-րիկամանց, սովորաբար լինի կիզողական։ Ստամոքսն և փորոտիքն լի փքով։

Ախտաւորին կրէ զնողկանս սրտի, զանձկութի, և զանանդորրութիւն։ Զարկ բազկերակին 'ի սկզբան անդ լինի լի, և ընկեցեալ․ և ապա հարկանէ մանր, կարծր, և միջահատական։ Որովայնն լինի պինդ, և ուռոյց ինչ 'ի վեր երևի 'ի ստորին որովայնն, յերիկամն, և 'ի մկա-նունս ազդերաց․ այլ ուռուցի զհետ գայ և խիթ ինչ որքանիկն, և ցաւ անտանելի․ և ցաւս այս լինի այնքան 'ի սաստկագոյն աստիճանի, մինչև եթէ որ կամիցի մեղ-մակէս շօշափել զայն վշտացեալ մասունս, իսկոյն ախ-տաւորին ողաղաղակ բարձեալ գոչէ բարձրաձայն։ Հուսկ յետոյ 'ի վերայ յարձակի նմա ակամայ իմն շարժումն մկանանց, ջղացաւութե, քիրտն խժայրին, տառապանք, կատաղութի, ցրտութի բովանդակ մարմնոյ, ցնորումն, և նուաղումն սրտի։ Բորբոքումն երիկամանց՝ եթէ յա-ռաջ գայ 'ի յորշաւանաց, 'ի յանչափապէս գործա-

ծութէ ողխուր հեղանիւթոց, կամ յայլ ինչ պատճառէ, առաւել դիւրաբուժելի է՝ քան զայն, որ յառաջ գայ 'ի խծից: Հատուածն ինչ արեան 'ի ռնգացն, 'ի յորովայնէ, և հատուածն դաշտանի են, բազում անգամ արգելուն զբորբոքումն վերահասեալ:

Բայց գիտել արժան է, զի երիկամունքն յոլով անգամ 'ի սոյն բորբոքմանէ փոխարկի 'ի խողխայթումն որ ասի՝ սուբբուրացիօնէ. և յայնժամ դիպուածի մարթ է ճանաչել զայն 'ի նշանաց խորագոյն և զարկողական իմն ցաւոյ, զոր ազդողագոյն ևս զգայ ախտակիրն 'ի շօշափելն. և ևս 'ի նշանաց իրիք ծանրութե և ցրտութե, զոր 'ի թիկնամէջն կամ 'ի սնակուշտն զգայ ախտակիրն: Հնար է ևս ճանաչել 'ի յանկանոն ջերմութէ, որ երբեմն լինի նուազ, և երբեմն ուժգին. երբեմն ևս այտուց ինչ 'ի վեր երևի 'ի սնակուշտն. Հասարակօրէն մէզն լինի արգելական, շարաւալից, նեխեալ, և զազրահոտ: Երբեմն շարաւալից այն մէզ տարածանի մինչև 'ի փայծաղն կամ 'ի լեարդն. երբեմն նեխեալ ծախէ զերիկամունքն. երբեմն ևս անցեալ գումարի 'ի հաստաղիքն անուանեալ քօլօն. և անտի արտաթորի ընդ ճանապարհ երաստանի: Բայց 'ի դիպուածս՝ յորում շարաւալիր մէզն տարածանի 'ի վերոյիշեալ ընդերքն, յայնժամ մարթ է զհետ գալ վէր ինչ անձուկ և խոր 'ի փայծաղն, կամ 'ի լեարդն. և ուրեք ուրեք 'ի ուռէթռա անուանեալ միզանցքն, և յայլ փորոտիս, յորմէ զհետ գայ քաղցկեղ: Նշանք քաղցկեղի կոչեցելոյ քանկրէնա՝ են թուլութիւն բովանդակ մարմնոյ, նուաղումն սրտի, ցուրտ քիրտն, մանրութիւն, արագութիւն և միջահատութիւն զարկի բազկերակի, յանկարծօրէն դադարումն ցաւոց, ցնորումն, հեծկլտանքն, յաճախակի ժայթքումն, արգելականութի, գարշահոտութի, և սևութիւն միզի:

Այլ գիտել արժան է, եթէ կարծրացինդ ուռոյցն՝ անուանեալ շիրօ 'ի վեր երևեալ յերիկամունս, յոլով անգամ ևս ոչ հասուանայ. այլ առաւել անձկացուցեալ ծիւրէ զախտակիրն, և յայսմ դիպուածի մարթ է ճանաչել զայն 'ի նշանաց իրիք ծանրութե, և թմրութե, զոր զգայ ախտակիրն 'ի յազդերսն: Ճանաչի ևս 'ի յարատև արգելմանէ միզի, և 'ի ճապաղմանէ հիւթոց ընդ ամենայն մասունս մարմնոյ ընդ մէջ մորթոյ, և մարմնոյ: Իսկ եթէ 'ի յիշատակեալ նշանացս բաւականացես ոչ ճանաչի զլեարդն պալարի, կամ այտուցն երիկամանց,

յայնժամ հնար է ճանաչել 'ի ցաւոց և 'ի խորին իմն ծանրութէ, զոր սովորաբար զգայ ախտաւորն 'ի յերիկամունս և 'ի ստորին որովայնն, մանաւանդ յընկողմանեալ լինելն 'ի վերայ որովայնի, կամ 'ի վեր ամբարձմանէ բովանդակ որովայնի :

ԿԱՌԱՎԱՐՈՒԹԻՒՆՔ 'Ի ԳՈՐԾ ԱՐԿԱՆԵԼԻՔ 'Ի ԴԻՊՈՒԱԾՍ ԲՈՐԲՈՔՄԱՆ ԵՐԻԿԱՄԱՆՑ :

Կերակրոցն պարտ է լինել բնութե՛ սնուցիչ, զովացուցիչ, և կակղացուցիչ. որպիսի են՝ հացաթանն, թեթև արգանակն մսոյ, և կաթն կովու, ընտանի կանգառն, ծնեբեկն, եղերդն, մոլոշն, ևն. Պարտ է հրաժարել յամենակերպ ոգիխաւոր հեղանիւթոց, 'ի ջերմացուցիչ և 'ի զայրացուցիչ ըմպելեաց : Յարմարաւոր ըմպելիքն են՝ չիճուկն կաթին, խաշուն գարւոյ, ոլոռոյ, մատուտակի, ևն. և առաւել ագուա մաուցիալէ :

ԴԵՂՈՐԱՅՔ 'Ի ՎԱՌ ԱՐԿԱՆԵԼԻՔ 'Ի ԴԻՊՈՒԱԾՍ ԲՈՐԲՈՔՄԱՆ ԵՐԻԿԱՄԱՆՑ :

Յայսմ դիպուածի՝ ըստ թելադրելոյ բնութեն քաջայայտ ճանաչի, եթէ պարտ է երակ հատանել, որ առաւել քան զամենայն դեղորայս լինի օգտաւէտագոյն, և առողջարար. այլ պարտ է նկատել 'ի պարագայս նշանաց կարողութե ախտաւորին, և ուժգնութե ցաւոցն : 'Ի դիպուածս ախտիս վէշիկքաթօրիօ դնելն, քանֆօրան, և ամենայն փսխողականքն, և լուծողականքն՝ և միզաբերքն են յոյժ վնասակարք և վտանգաւորք. միայն մարթ է 'ի կիր արկանել զմանանայն, և զիւղն քաղցր նշոյ. և ըմպելիքն պարտին լինել գաղջ, և ոչ ցուրտ :

Դարձեալ, 'ի դիպուածի աստ յոյժ շահաւէտ և բարեգոյն վարկանիմք զզրեխն յօրինեալ 'ի կակղացուցիչ ծաղկանց և արմատոց. և զզրեխս զայս պարտ է առ փոքր փոքր հեղուլ 'ի ներքս առ 'ի չլայնել զփորոտիսն. որովհետև առատութին ամենայն հեղանիւթոց մտելոց 'ի ներքս յորովայնն, սովորաբար լայնեն զփորոտիսն, սեղմեն զերիկամունս, և աճեցուցանեն զբորբոքումն : Եւ ընդ զրեխիս պարտ է մատուցանել ախտաւորին յամենայն ժամու մի փոքրիկ դրգալ էմուլսիոնէ ու կոմմա առաբիքա՝ խառն ընդ ջերմ ջրոյ :

Յոյժ օգտակար դեղ է ևս լինիմէնթօ վօլաթիլէն.

զոր պարտ է ստէպ ստէպ օծանել և շփել 'ի վերայ 'ցա-ւագնեալ մասին միջաց ։ Նոյնպէս օգտաւէտագոյն դեղ իմն է տզրուկն · զոր պարտ է վեց կամ եօթն հատ դնել 'ի վերայ սրբանին, կամ վէնա էմօռռօիտալէ յորջորջեալ երակի ։ Դարձեալ՝ կարի օգտակար դեղ է և ս ֆօմէնթօ առնել 'ի կակղացուցիչ արմատոց և 'ի տերևոց ջերմ ջը-րով, և յաճախակի դնել 'ի վերայ միջաց, և նախ քան զպաղիլն ստէպ ստէպ փոփոխել, և վերանորոգել ։ Սեպ-հական ներքին դեղորայքն, զոր 'ի գործ արկանել արժան է 'ի դիպուածս բորբոքման երիկամանց, են՝ էմուլսիօնէ տի կօմմա առաբիքա, ջուրն գարւոյ, սալէպն, և սաբօ-նառիա անուանեալ արմատն, խառն ընդ մեղու ։

Այլ պարտ է գիտել, զի 'ի դիպուածս բորբոքման երիկամանց՝ բազում անգամ 'ի վեր երևի պալար ինչ յերիկամունս, որ քաջ ճանաչի 'ի ձեռն վերոգրեալ նը-շանաց · պարտ է յայնժամ անընդհատ դնել զջերմ ֆօ-մէնթօ, և քաթաբլազմա 'ի վերայ միջաց, առ 'ի ցրուել կամ հասուցանել զայն ։ Իսկ եթէ նոյն պալարն խղխայ-թեալ կամ բացեալ լինի, յայնժամ յայսպիսի դիպուածս սովորաբար զուգընթաց լինի շարաւ ինչ ը̄ միզի ։ Եւ վեր-ջապէս, եթէ փութով դարման չտանիցի պալարիս այս-միկ, փոխարկի սովորաբար 'ի խոցն ասացեալ քաղցկեղ, և լինի մահաբեր ։

Ցուցակ դեղորէից, զորս պարտ է 'ի գործ արկանել 'ի դի-պուածս խղխայթեալ կամ բացեալ պալարի ։

'Ի դիպուածս, յորում պալարս այս հասունացեալ կամ բացեալ իցէ, յայնժամ պարտ է ձեռնամուխ լի-նել 'ի գործածութիւն քաղջ կաթին, և կաթին իշոյ ։ Իսկ 'ի դիպուածս, յորում պալարս այս փոխարկեալ իցէ 'ի նեխութիւն կամ 'ի փտութիւն, յայնժամ պարտ է 'ի կիր արկանել զդեղորայս անուանեալս անթի փութռիտի, որպիսի են քինա քինա, ակքօթթի մուչիլաճինօզի, և ակքօթթի ասլչիթի խառն ընդ մեղու, ջուրն կրոյ, և̄ն̄ ։ Այլ եթէ դադարեալ կամ գէթ նուազեալ իցէ բորբո-քողականութիւն, յայնժամ մարթ է տալ ախտակրին էսթռաթթօ տի միռռա, և քինա քինա խառն ընդ ջրոյ նարնջոյ, և յաւելեալ լինի 'ի վերայ գոյզն ինչ պալսամօ քօբբաիւպէ ։

## ՅՕԴՈՒԱԾ ԺԵ.

### Յաղագս ախտի՝ որ ասի ինֆիամմացիոնէ, այսինքն բորբոքումն փամփշտոյ:

Զայս տեսակ բորբոքման փամփշտոյ իտալք անուանեն սովորաբար ինֆիամմացիոնէ տելլա վեզիքա, և ունի մեծ նմանութիւն և համաձայնութիւն ընդ ախտին որ ասի՝ ինֆիամմացիոնէ տելլ՝ ուռէթեռէ. այսինքն բորբոքումն միզանցք խողովակաց. և իբրապէս տարբերի այս 'ի բորբոքմանէ երիկամանց. ըստ որում յայսմ ցաւն 'ի վեր երևի 'ի կարի խորագոյն մասունս ներքնորովայնի, ուր զետեղեալ կայ փամփուշտն. և ցաւս այս՝ որ է բուռն սուր և խայթիչ, առաւել զայրանայ յայնժամ, յորժամ ոք հպեսցի 'ի նա շօշափմամբ. երբեմն ևս 'ի վեր երևի 'ի փամփուշտն զոյգ ընդ ցաւոյն նաև այտուց ինչ դժնդակ, յորմէ և պատճառի յաճախակի ժայթքումն, գրգիռ, և տագնապ մեծ, մանաւանդ 'ի միզելն:

Անձինք, որք ենթակայ լինին բորբոքման երիկամանց, և միզանցք խողովակաց, մարթին նմանապէս լինել ենթակայ ևս այսպիսի բորբոքման: Այլ 'ի վերայ այսր ամենայնի, եթէ դէպ լինի այնմ ըմբռնիլ 'ի բորբոքմանէ աստի, յոյժ դժուարին է ապաքինել զայն, և բազում անգամ ևս փոխարկի յանդամագօսուն, 'ի խզխայթումն, 'ի փտութիւն, և 'ի քաղցկեղ, յորմէ զհետ գայ մահ անվրէպ:

### Պատճառք բորբոքման փամփշտոյ.

Բորբոքումն փամփշտոյ մարթի յառաջ գալ յամենակերպ պատճառաց, որք պատճառեն զջերմութիւն կիզողական. որպէս խմագործ կամ աւազագործ նիւթքն, միզարգելութիւն, փոքրիկ քարքն փամփշտին, խոտորումն դաշտանի, ուռուցումն միզանցք խողովակաց: Մարթի ևս պատահել յընդերկար ձիավարութենէ և 'ի հեծեալ գնացութենէ, 'ի խոցէ 'ի վեր երևելոյ յերիկամս, կամ 'ի փամփուշտն կամ 'ի միզանցք խողովակսն, և կամ յայլ մերձակայ մասունս փամփշտի: Նոյնպէս մարթի ևս պատճառիլ 'ի խորտակմանէ կամ 'ի հատուածոյ, և կամ 'ի փտութենէ ոսկեր երանաց կամ առականաց. որք սովորա-

բար պատճառէն յանկմանէ, 'ի յոստոստմանէ, և 'ի փոշ-տանկութենէ։ Դարձեալ՝ մարթի ևս պատճառիլ յայնմ ամենայնէ, որք ուժգնապէս զայրացուցանեն զփամ-խուշտն, որպէս 'ի քանթառէլլէ կոչեցեալ միջատէ, 'ի սաստիկ և 'ի զօրաւոր միզաբերէ, և 'ի լուծողականէ։ Այլ և 'ի յաճախակի ոստոստմանէ, և յերկարատև խե-թէ փամփշտոյ, և 'ի յօդուածացաւութենէ, ևն։

## Նշանք բորբոքման փամփշտոյ։

'Ի դիպուածս այսր բորբոքման՝ բաց 'ի վերոգրեալ նշանաց, ստորակողմն որովայնի լինի յոյժ ուռուցեալ, և բորբոքեալ, հանդերձ ուժգին ցաւով. միզն լինի ար-գելական, և կարմրերանգ, և կրէ դժուարութի մեծ 'ի միզելն։ Ախտակիրն զգայ զխէթ սաստիկ 'ի ներքնորո-վայնն և զնեղութի անհնարին, առաւելապէս յընկողմա-նիլ նորա 'ի մէջ ջերմ անկողնոյ. կրէ հանապազ զնող-կանս, և երբեմն ևս ժայթքէ զմաղձ 'ի գոյն ժանգոյ. և զգայ յանձն զոյգ ընդ նողկանսն միանգամայն ևս հեծ-կլլտանք, փքախտութի, ցնորումն, հսկումն, և ցնցումն մկանանց։ Զարկ բազկերակին 'ի սկզբան անդ լինի կարծր, արագ, և լի, բայց յետ սակաւ աւուրց հարկանէ այլ-ազգ, այսինքն մանր, և հեղ։ Հուսկ յետոյ 'ի վերայ յարձակի նմա խիթ ինչ աղեաց, և սրբանին. և ընդ այս խիթի միանգամայն և զգան յանօթքն թանչից զցաւ ինչ սաստիկ, ղարկողական, և ձգտելի։

## Կառավարութիւնք և դեղորայք 'ի վար արկանելիք 'ի դիպուածս բորբոքման փամփշտոյ։

Կառավարութի, և դարմանատարութի այսորիկ բոր-բոքման, և խղխայթի փամփշտոյ գրեթէ նոյն են ընդ դարմանատարութե և դեղատուութե բորբոքման երիկա-մանց. զորմէ խօսեցաք 'ի վեր անդր։

# ՅՕԴՈՒԱԾ ԺԶ.

## Յաղագս ախտի, որ առ Մետրիտիդէ, այսինքն բորբոքման արգանդի։

Բորբոքումն այս է ախտ իմն դժնդակ և կարի վը-տանգաւոր. որ սովորաբար գոյանայ յարգանդս կանանց, մանաւանդ կանանց ամուսնացելոց, և այրեաց։ Իսկ երբեմն և արտաքոյ սովորութե պատահի բորբոքս այս 'ի յերիտասարդ. օրիորդս, և 'ի պատանուհիս 'ի հասակի 15 կամ 16 ամաց, բազում անգամ և 'ի նոյն իսկ 'ի ժամանակի դաշտանի, 'ի յղուէ, և 'ի վիժման կամ յան-ցուցման զաւակի։

## Պատճառք բորբոքման արգանդի։

Բազմապատիկ են պատճառք այսորիկ բորբոքման. վատթարութիւն դաշտանի, հարստահարութիւն թանչից, հոսումն սպիտակ նիւթոյ 'ի նոյն իսկ 'ի ժամանակի դաշ-տանի, վիժումն զաւակի, հոսումն չափազանց կամ ար-գելումն տեաատեսականի, ակարութիւն զաւակատան, և թուլութիւն գործարանաց. անկանիլն, և հարուածքն 'ի վերայ արգանդի, արգելումն արտաշնչութե մարմնոյ, առաւել գործածութիւն գինւոյ. և ոգխաւոր հեղանիւ-թոց։ Նոյնպէս յառաջ գայ յայնմ ամենայնէ, որ կարէ յանկարծակի ցրտացուցանել զարգանդն, յետ միանգամ սաստկապէս ջերմանալոյ նորա. 'ի յաճախ գործածութէ կերակրեղինաց համեմելոց ջերմացուցիչ նիւթովք. յուժ-գին կրից ոգւոյ, 'ի սաստիկ երկիւղէ, և 'ի սրտմտութէ։ Երբեմն և յառաջ գայ 'ի բորբոքմանէ որովայնամաշկի, և ներքնորովայնի, ևն։

## Նշանք բորբոքման արգանդի։

Նշանք արգանդային բորբոքման՝ մարթին ճանաչիլ յուժգին ցրտոյ. յորմէ զհետ գայ ջերմութե կիզողական, անանդորրութի, և մոլեգնութի։ Եւ յետ այնորիկ ախ-տակիրն զգայ զցաւ ինչ սաստիկ, խայթիչ և զարկողա-կան 'ի մի կողմն արգանդի. երբեմն ցաւն նուաղի իբր ժամս ինչ. բայց յետ այնորիկ առաւելագոյն իմն սաստ-կութե վերադառնայ միւսանգամ, և ճապաղի մինչև 'ի

թիկնամէջս. և ընդ այս ցաւոյ միանգամայն 'ի վեր ելեալ պատուց ինչ կակուղ 'ի սաորին որովայնին, և անտի անցանէ յարգանդն. զարկ բաղկերակին 'ի սկզբան անդ լինի արագ, մեծ, լի, և կարծր. և յետոյ հարկանէ մանր. անզօր, և անհաւասար. սուինքն լինին ուռուցեալ կամ պատուցեալ:

Ախտակիրն զգայ զչորութիւն լեզուի, զծարաւ սաստիկ, զփքախտուն, զգլխացաւութիւն, և զնողկանս. ժայթքէ սակայն զմաղձս դառնագինս, և ժանգագոյնս. մեզն լինի երբեմն արգելական, անկայուն կարմրութիւն ինչ 'ի վեր ելեալ 'ի յերեսս. աչքն մխին 'ի ներքս, հաղն լինի չոր, և դժուարութիւն մեծ կրէ ախտակիրն 'ի շնչառութեան, 'ի հազալն, և 'ի հառաչելն: Ախտաժետեալ կինն զգայ և զցաւ ինչ 'ի մէջս, 'ի սահմանս ախանդամաց, 'ի մէտկուշտս, 'ի կուրծս, և 'ի յանրակս. կրէ և զպնդութիւն, զհեծկլտանս, զցնցումն ձգանաց, զքիրտն արկածեան, զժայթքումն 'ի գոյն կանաչ, զմանրութիւն, զխորութիւն, և զմիջահատութիւն զարկի բաղկերակի, զուժգին ցրտութիւն, զարտաթորումն զաղբահոտ հիւթոց ընդ ճանապարհ ծննդական անդամոց, զթմբրութիւն, և զուշագնացութիւն: Այսպիսի երկրորդական պատահարքս քաջայայտ ցուցանեն զփոփոխումն բորբոքման 'ի քաղցկեղ, յորմէ ախտաժետեալն մահակործան լինի:

Ցուցակ խնամատարութեան, և դեղորէից, զորս պարտ է 'ի գործ արկանել 'ի դիպուածս բորբոքման արգանդի:

Դեղորէիցն այսր բորբոքման պարտ է լինել այլ և այլ ըստ այլևայլութեան պատճառացն, յորոց յառաջ գայ: Եթէ ենթակայն իցէ քաջառողջ կազմուածոց վիճակէն, եթէ առատացեալ իցէ արեամբ, եթէ ախտակրեալ կինն չիցէ յղի, և չիցէ չափազանց հոսեալ կամ կորուսեալ զարիւնն, որպէս սակայն պատահի զկնի վիժման կամ անցուցման զաւակի, յայնժամ պարտ է իսկ և իսկ երակ հատանել 'ի բազկէն, նկատեալ ևս 'ի խառնուածս, և 'ի սաստկութիւն պատահարին: Իսկ եթէ ենթակայն իցէ թուլակազմ, և փափկակեաց, եթէ խոշտանգանս սաստիկ, և ձգտումն ջղաց կրեալ իցէ ախտաժետեալ կինն 'ի ժամանակի ծննդեան, եթէ զուգընթաց գտանին ընդ ախտիս նշանքն մահաբեր տենդի, որ ասի՝ ֆէպրա՛ նէռվօզա, և եթէ մասն աղտին մնացեալ իցէ 'ի ներքս յարգանդին, յայնժամ չէ բնաւ օրէն երակ հատանել. այլ

պիտոյ է 'ի գործ արկանել զխմանիչ և զխաղաղիչ դեղորայսն, որպիսի են լինիմէնթօ վօլաթիլէ, և ձէթն ձիթոյ խառն ընդ սփիրիթօ տի քօռնօ տի չէռվօի․ զոր պիտոյ է ստէպ ստէպ օծանել 'ի յայն մասն արգանդին, ուր տուաւել զգայ զցաւն։

Յոյժ օգտակար դեղ է և ս ֆօմէնթօ առնել 'ի կակղացուցիչ արմատոց և 'ի տերևոց ջերմ ջրով, և անընդհատ դնել 'ի վերայ նոյն մասին արգանդի։ Նոյնպէս կարի օգտակար և բարեգոյն վարկանիմք զգրեխն պատրաստեալ կակղացուցիչ արմատովք և ծաղկամբք․ ևն։ Եւս հայեցեալ 'ի պարագայս ցաւոյն՝ յաւելուլ 'ի վերայ մի ամբողջ գլուխ բաքավէռօ, կամ 20 չիթ լաւտանօ լիգուիտօ։ Եւ եթէ բորբոքումն այս պատճառեալ իցէ 'ի հարուածոց կամ 'ի յանկմանէ 'ի վերայ որովայնի, և կամ յարգելմանէ յաւելուածոց արգանդի, ոյք սովոր են հոսիլ յետ որդեծնութեն, յայնժամ արժան է և ս երակ հատանել յոտիցն, և դնել տզրուկս 'ի վերայ բէռինէօ անուանեալ մասին մարմնոյ, այսինքն ընդ սրբանն և ընդ ամօթոյս։

Այլ եթէ բորբոքումն այս 'ի վեր երևեալ իցէ յանձկագոյն մասն արգանդի, յայնժամ պատշաճ է ֆօմէնթօ առնել նոյնպէս 'ի կակղացուցիչ նիւթոց և ջերմ ջրով, և ստէպ ստէպ դնել 'ի վերայ փողոյն արգանդի։ Նոյնպէս գրեխն պարտի լինել կազմեալ ջրովն մոլոշի, տղտոյ, խլոլ նշոյ, և մանանայիւ․ զոր պիտոյ է 'ի վար արկանել երկու անգամ յաւուրն, և տուաւել յաճախակի, եթէ յոյժ կարծրացեալ իցէ անդունդն որովայնի։ Բայց եթէ բորբոքումն սակաւ ինչ խաղաղեալ իցէ, յայնժամ վասն տուաւել խաղաղացուցանելոյ զայն՝ հարկ է առ ժամանակ մի ձեռնարկել 'ի գործածութիւն նիթռօի, 'ի փոքր քանակէ․ այսինքն 5 կամ 6 կչիռ ցորեանս՝ 'ի մէջ միոյ սկահակ ջրոյ սամպուքօի կամ թիլէի, երեք կամ չորս անգամ 'ի մէջ 24 ժամուց, մինչև ցերկու կամ ցերիս աւուրս։ Դարձեալ, 'ի գիպուածս՝ յորում ախտակիրն կրէ զորովայնահոսութիւն ինչ թեթև, յայնժամ ոչ է այնքան վտանգաւոր․ և ոչ են պէտք դեղորէից, այլ մանաւանդ յոլով անգամ լինի յոյժ օգտակար ինչ հոսումն․ վասն որոյ և չէ պարտ փութով արգելուլ զհոսումն․ իսկ եթէ առաւելեալ սաստկասցի այն, և տկարասցի ախտակիրն երևելապէս, յայնժամ ճահողագոյն է 'ի գործ արկանել զէմուլսիօնէ արապիքա անուանեալ

դեղն, զորմէ խօսեցաք 'ի վեր անդր 'ի գլխաւորս բորբոք-ման կրծոց:

Իսկ եթէ բորբոքումն այս պատճառեալ իցէ յախ-տակցութենէ փողոյ արգանդի, կամ 'ի մեռեալ զաւակէ, և կամ յաղտէ մնացելոյ յարգանդին, յայնժամ պարտ է պատրաստել գրեխ ինչ յետագայ եղանակաւ: Ա՛ռ կէս ունկի կօմմա առապիքա, և վեց ունկի ջուր վարդի. հալեա զխէժն 'ի մէջ նոյն վարդի ջրոյ, և՝ ջերմացո սա-կաւ ինչ. և հեղ զգուշութեամբ զայն փոքրիկ գրեխաւ ընդ ծննդական անդամն յարգանդն ախտակրեալ կնոջ. և զայս պարտ է 'ի գործ արկանել երեք կամ չորս անգամ յաւուրն. առ 'ի մաքրել զարգանդն, և 'ի դուրս վանել զմեռեալ զաւակն և զմասն աղտի: Այլ եթէ գոյացեալ իցէ պալար ինչ կարծր, կամ խղխայթաւոր յարգանդի անդ, հարկ է յայնժամ զհետ երթալ կանոնի, և կա-ռավարութեան՝ զորոց խօսեցաք 'ի վեր անդր 'ի յօդ. ԺԶ:



# ԳԼՈՒԽ Գ.

Յաղագս զանազան տեսակաց խիծից, որ ասի՝ Քօլիքա:

Խիծքս այսոքիկ ունին մեծագոյն իմն հաղորդակ-ցութիւն, և նմանութիւն, եթէ 'ի նշանս, և եթէ 'ի կառա-վարութիւնս ընդ ախտին որ ասի՝ ինֆիամմացիօնէ տէլլօ ստօմաքօ, և ընդ պասսօ վէնթռէ. այսինքն բորբոքումն ստամոքսի, և ստորին որովայնի, զորոց լինելին խօսեցաք վերագոյնդ: Եւ հասարակօրէն ախտից այսոցիկ զուգըն-թաց գտանին պնդութիւն որովայնի, և ցաւ ինչ սուր, և խայթիչ 'ի փորոտիսն, և յընդերս. սմին իրի և պահան-ջէ կառավարութիւնս կակղացուցիչս, լուծողականս, եւ ֆօմէնթօ ևս: Ունին զանազան անուանս ըստ այլևայլու-թեան պատճառացն, յորոց 'ի վեր երևին և ծագին. այս-պիսի են՝ քօլիքա վէնթօզա, պիլիօզա, իստէրիքա, և նէաւօզա:

# ՅՕԴՈՒԱԾ Ա.

Յաղագս ջղական կամ քամիական խթի, որ ասի՝ քօլիքա վէնթօզա :

Խիթս այս յառաջ գայ, և պատճառի 'ի մէջոց կմ' 'ի քամւոյ որ տարածանի 'ի փորոտիսն, և բազում անգամ և համընթաց գտանի ընդ ախտին, որ ասի քօլիքա սբազմօտիքա. այսինքն խիթ ցնցական :

Պատճառք ախտիս :

Խիթս այս պատճառի յանչափ գործածութենէ տհաս պտղոց, և 'ի դժուարամարսելի կերակրեղինաց, 'ի զօրաւոր քամւոյ, յարգելմանէ արտաշնչութե մարմնոյ, և 'ի ցրտոյ : Փափկակեաց և գիրգ անձինք են առաւելապէս ենթակայ ախտիս, սակս ակարագոյն լինելոյ մարսողական զօրութե նոցին :

Նշանք ախտիս :

Խիթս այս ունի զսեպհական զիւր բնակարան 'ի ստամոքսն, և 'ի ստորին որովայնն և 'ի միջանցեալ մասունս. զոյգ ընդ իւր ունի միշտ զձգձգմունս, և զճնշմունս ցաւալիս. և ախտաժետեալն զգայ 'ի փորի անդ իւրում զխլրտմունս, և զձայն շշնջմանց: Փուքն կմ' քամին, որ տակաւ սակաւ իբր աստիճանաւ տարածանի, ուռուցանէ զփորոտիսն, և ընդլայնէ զնոսա առաւել քան զսովորական պայմանն. և այս նոցա անկանիլ 'ի տկարութի: Այն փուք զգայունական է, մանաւանդ 'ի դիպուածն յորում 'ի վեր երևի 'ի ձախակողմեան սահմանին ախոնդանաց. քանզի եթէ ուշադիր ոք լինի՝ զգայ, և լսէ զձայն նորա. հաստատաղիքն է ուռուցեալ. իսկ որովայնն է նոյնպէս այտուցեալ, բայց կարծր է քան զայն, և հնչէ իբր զթմբուկ: Եւ երբեմն այնպիսի սաստկագոյն միշտս յանձն կրէ, մինչ համարել նմա անկարանալ 'ի տոկալ այնմիկ, յորմէ և զհետ գայ դժուարութին 'ի շնչառութե, որ միշտ համընթաց լինի այսր տեսակի խթի :

Ախտակիրն հաստատակօրէն դիւրամնայ զկնի փուքս արձակելոյ, եթէ 'ի վերուստ անտի; և եթէ 'ի ստորուստ. և ցաւն միանգամայն նուազի, և քամիքն 'ի միոյ փորո-

տեացն 'ի միւսն արձակլին, մինչև արտաքս ելանեն. ընդ-տախտս երբեմն զուգակից լինին և յօրանջումն և նողկանք, և քարտխալձիա, այսինքն խօթութիւն ստամոքսի և սրտի, և կսկուածք որովայնի: Յորժամ ցաւն արմատանայ և հաստատի 'ի մէջ նրբագոյն աղեացն, յայնժամ դժուարութիւն մեծ է զանազանել զխիթս զայս՝ յախտէն, որ ասի քառտխալձիա:

Յաղագս խնամատարութեան այսր ախտի:

Յորժամ ախտս այս պատճառեալ իցէ 'ի փքալից հեղանիւթոց, 'ի տհաս մրգաց ևն, բարեգոյն դեղն 'ի սկզբան անդ երևման նշանացն է ըմպելն զատկաւ ինչ օղի, կամ զայլ ոգիաւոր հեղանիւթս ջերմարարս և օգտակարս: Ախտակիրն պարտի պահպանել զոտսն ջերմագինս, դնելով 'ի ներքոյ ոտիցն կղմինտերս ջերմացեալս. նոյնպէս արժան է և 'ի վերայ ստամոքսի և որովայնի դնել զշուխայս ջերմագինս: Այլև պարտ է ջերմ ձեռամբ, կամ ջերմացուցեալ չուխայիւ շփել 'ի վերայ ստամոքսի, և 'ի վերայ որովայնի. և 'ի ձեռն այսր շփման հասարակօրէն նպաստ ընծայի փարատման փքոյ, եթէ ստէպ ստէպ շփեսցի: Միայն 'ի դիպուածս այսր տեսակի խթի, մարթ է 'ի գործ արկանել զկրս ջերմագինս, և զդեղորայս ջերմացուցիչս. որոց գործածութիւն համարիմք լինել բուժումն ախտիս: Իսկ եթէ հնացեալ իցէ խիթն, և ցուցէ առիթ երկնչելոյ՝ թէ սկիզբն առարեալ իցէ 'ի նմա բորբոքումն ինչ 'ի փարոտիսն, յայնժամ պարտ է դադարել 'ի գործածութենէ ջերմացուցիչ դեղորէից. և ձեռնամուխ լինել 'ի դեղորայս և 'ի կառավարութիւնս, զորս սովոր եմք 'ի կիր արկանել 'ի դիպուածս բորբոքման ստորին որովայնի, զորմէ խօսեցաք լրովին 'ի յօդ. ժա:

Իբրև պատճառի ախտս այս յանմարսողութենէ, հասարակօրէն ապաքինի և փարատի ըստ ինքեան ճանապարհաւ փսխման կամ լուծողութեան որովայնի. բայց փոյթ ունել պարտ է չլինել խափանարար այդպիսի հոսման, այլ մանաւանդ ընդ հակառակն պարտ է շարժել, և դիւրացուցանել զայն, առատօրէն տալով նմա ըմպել ջուրս ջերմս: Իսկ յորժամ բռնութիւն նշանաց դադարի, մարթ է տալ ախտակրիս մի տրամ ռաւպառպառօ, կամ զորպխսն և իցէ այլ լուծողական՝ որով 'ի դուրս վանեսցին մնացորդքն անմարսողութեան: Այլ եթէ պատճառի ախտս

այս 'ի ցրտոյ և 'ի խոնաւութենէ ոտիցն, հասարակօրէն ապաքինի և բուժի իսկ և իսկ դնելով զոտս և զսրունս 'ի մէջ ջերմ ջրոյ, և տալով միանգամայն ըմպել սակաւ ինչ սիէռօ տի լաթթէ վինօզօ, կամ ավէնա աքուօզա, յաւելեալ 'ի վերայ սակաւ ինչ լիգուօռ սփիրիթօզօ:

Կառավարութիւն 'ի ձոր առողջանելեաց 'ի դիպուածս յայս:

Բնակիչք ագարակի և դաշտավայր տեղեաց՝ են յոյժ ենթակայ այսմիկ ախտի. ամին իրի փոյթ ունել պարտ է նոցա իսկ և իսկ 'ի զգալ խոնաւութիւն ինչ 'ի հանդերձս, փոխել զայն. նոյնպէս պարտ է ըմպել սակաւ ինչ օղի կամ որպիսի և իցէ ոգիաւոր հեղանիւթս զկնի ուտելոյ զտհաս մրգս. բայց զայս պատուիրելով, ոչ դիտեմք սո-վորութիւն առնել զարբեցումն օղւոյ. այլ միայն յայդպիսի դիպուածս ևեթ 'ի կիր առնուլ զՋերմացուցիչ հեղա-նիւթս, որք են դեղ իմն առաւել օգտակէտ և բարե-գոյն. մի բաժակ ջուրն անանխոյ կամ կինամոմի խառ-նեալ ընդ սակաւ ինչ պղպեղի, ունի զնոյն ներգործութիւն օղւոյ. զոր պարտ է 'ի գործ արկանել յոմանս դիպուածս, նկատմամբ 'ի պարագայս անձանց, յորս գտանի մեծ գա-լարումն, և կծկումն, որք առաւել են ենթակայ այսմիկ տեսակի ախտի:

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

Յաղագս մաղձային ախտի, որ ասի՝ քօլիքա պիլիօզա:

Ախտս այս յառաջ գայ 'ի սաստիկ և 'ի դժնդակ իմն մաղձէ, որ վրդովէ, և զայրացուցանէ զաղիս և զփո-րոտիս, մանաւանդ 'ի տուօտէնում անուանեալ աղիքն, որ է սկիզբն աղեաց: Ստէպ և յաճախակի տիրապետէ 'ի հասակի երիտասարդութե, յորում վիճակեալ է մարդ-զօրաւոր և քաջեղ իմն խառնուածոց: Երբեմն ախտս այս 'ի վերայ հասանէ զկնի ըմպելոյ ջուր ցուրտ յան-չափս՝ յամառնային եղանակի. և կամ յո՛ և իցէ պա-հու, յորում շնչառութիւն արգելական լինի վասն իրիք պատճառի:

Նշանք ախտիս ։

Ըխաախս այսմիկ զուգընթաց լինի ցաւ իմն սրագոյն դէպ 'ի մասունս, որ ասի՝ ռէճիօնէ օմպէլիքալէ, այսինքն կողմն պորտոյ ։ Ախտակիրն կրէ զծարաւ իմն բորբոքեալ. և հասարակօրէն որովայնն լինի փակեալ և անգագոյն. բայց ոչ որպէս 'ի դիպուածս բորբոքման ստորին որովայնի ։ Զարկ բազկերակին հարկանէ ստէպ ստէպ, և բազում անգամ մանր. բայց ոչ բնաւ կարծր և խիստ ։ Ախտակիրն ունի գլխցաւ և զառանցանս մեծ, և ձայնն լինի կերկերեալ և տրգնելեալ. փսխէ զմաղձս ջերմս, դեղնագոյնս, և դառնագինս. և զկնի փսխմանն երևի թէ դիւրանայ փոքր ինչ, բայց իսկոյն կամ ցաւն միայն տակաւին յառաջինն սահման սաստկութեն, և ախտն երթալով արմատանայ, և տրամադրութիւն առ փսխումն տուաւել աճի, և երբեմն դրեթէ յարատևեալ միայն 'ի փսխմանն. շարժումն և դրգռումն փորոտեացն լինի այնքան այլայլեալ, և փոխեալ, մինչև համարիլ 'ի նշանացս, եթէ սկիզբն արարեալ իցէ ախտն սաստկեալ՝ բասսիօնէ իլեաքա, այսինքն խիթ փաթոյթ աղեաց ։ Ախտս այս քաջայայտ ճանաչի ևս 'ի դառնութենէ բերանոյ, 'ի սաստիկ ջերմութենէ ներքին մասանց ։ Խիթն երբեմն լինի հաստատուն, և երբեմն փոփոխական, երբեմն ելանէ 'ի պորտն, երբեմն 'ի քամակն, և երբեմն ևս 'ի ստամոքսն ։ Մեծագոյն մասն յախտաժետաց տագնապին այնպիսի իմն ցաւով, որով համարին զանձինս պրկեալ չուանաւ, և նուաճեալ ։ Մէզն լինի կարմրագոյն և սակաւ քանակութեամբ ելանէ. այդ օրինակ նշանաց երբեմն զհետ գայ ախտն սաստկեալ իկտէրիցիա, որ է դալուկն ։

Յաղագս խնամատարութեան ախտիս ։

Եթէ ցաւակիրն իցէ երիտասարդ, և քաջ զօրեղ բնութեամբ մխճակեալ, եթէ զարկ բազկին իցէ լի, և արագ. պարտ է երակ հատանել, և դրեխ տալ, և առատօրէն ըմպել սիէռօ տի լաթթէ քիարիֆիքաթօ. կամ քռէմօռէ աքուօզօ տի ավէնա, խառն ընդ սուքօ տի չէտռօնի, կամ ընդ քռէմօռէ տի թառթառօ ։ Պարտ է տալ սակաւ ինչ արգանակ մսոյ կամ հաւու, հալեալ 'ի նմա գոյզն ինչ մաննայ. և ևս պարտ է առնել տէքօցիօնէ տի թամառինտի, և այլ կակղացուցիչ իրաց ։ Դրեխն

լիցի պատրաստեալ 'ի կակղացուցիչ արմատոց և 'ի տերևոց, և 'ի սերմանէ կտաւատի, յաւելեալ 'ի նա և ըզձէթն ձիթենեաց ։ Այլև պարտ է զշուխայս ջերմ ջրով թացեալ ստէպ ստէպ դնել 'ի վերայ որովայնի ։ Իսկ եթէ չօգտիցի ինչ յայսմանէ, հարկ է յայնժամ զախտակիրն մուծանել 'ի բաղանիս մինչ ցկուրծս, ընկղմանեալ 'ի մէջ ջրոյ ։

'Ի դիպուածս յայս կարի դժուարին իմն է դադարիլն փսխման ․ վասն որոյ պարտ է տալ հիւանդին զջուրն հացի կամ անանխոյ, կամ Երիցկի, և կամ մելիսայի ․ որք եթէ յանօգուտս եղանեն, հարկ է յայնժամ տալ բօցիոնէ սալինա, յորոյ վերայ մարթ է յաւելուլ քանի ինչ կաթիլ լաւտանօ լիգուիտօ, և ստէպ ստէպ կրկնել ըստ պահանջման հարկի ։ Դարձեալ, յոյժ պատշաճ է թիւրակէսիւ սպեղանի առնել և դնել 'ի վերայ կրծոցն ․ այլ ևս ստէպ ստէպ դրեխ տալ թիւրակէսիւ, կամ լաւտանօ լիգուիտօիւ ։

Դարձեալ, մարթ է ևս 'ի գործ արկանել զգխտոր անուանեալ պտուղն ։ Զայս եթէ կամիս առնել, ա՛րկ ըզխոշոր փոշի պտղոյս ըստ կշռոյ երեսուն տրամոյ 'ի յերկու լիտր եռացեալ ջրոյ ․ զկնի քառասնեչորս ժամուց՝ հե՛ղ զգուշութեամբ զհեղուկն յայլ ապակի անօթ, այնպէս՝ զի մի՛ խառնեսցի մրուրն ընդ պայծառ հեղանիւթոյն ․ և տո՛ւր ըմպել ախտակրին երեք կամ չորս անգամ յաւուրն՝ զկշիռ երեք տրամոյ, կամ լաւ ևս ասել, զգդալ մի սեղանոյ ։

### Հնարք և կառավարութիւնք 'ի գործ արկանելիք 'ի դիպուածս ախտիս ։

Այդքա, որք ստէպ ստէպ զփորձ առնուն այսր ախտի, պարտին ուտել յոյժ սակաւ միս ․ և պարտին սնուցանել զինքեանս թեթև և զօրացուցիչ կերակրեղինօք ։ Այլև պարտին երբեմն երբեմն 'ի գործ արկանել փոքր ինչ Ֆիոր տի Թառթառօ, և Թամարինտի, և կամ զայլ որպիսի և իցէ կակղացուցիչս, և զովացուցիչս ։

# ՅՕԴՈՒԱԾ Գ.

Յաղագս ախտի, որ ասի փօլիփօ ռինձառիփօ. այսինքն խիթ ստնանդեան:

Ախտս այս, որպէս զփորձ առեալ եմք և տեսանեմք. է խիթ ինչ սեպհական 'ի ստեաս կանանց, որ բազում անգամ միջահասեալ դադարի. և առանց իրիք պատճառի՝ դարձեալ դառնայ միւսանգամ: Կանայք, որք փափուկ, թոյլ և քնքուշ, և մաղասոտ ինչ խառնուածոյ են վիճակեալ, են առաւել ենթակայ այսմիկ ախտի: Նա և կանայք, որք կրեալ են զախտն, որ կոչի մալ նէռվօզօ, այսինքն ջղացաւութիւն. այլ և նոքա, որք զանտանելի վիշտս և նեղութիւս կրեն յերկունս ծննդեան, նոյնպէս են ենթակայ այսմիկ ախտի:

Նշանք ախտիս:

Ախտս այս բազում նմանութիւս ունի ընդ վերոյիշեալ ախտին, որ ասի խիթ մաղձային: Միշտ զուգակից իւր ունի զործուածս, և զուսպ ինչ ցաւ 'ի կողմանսն ստամոքսի. յորժամ կինն ախտակրեալ անկանի յախտս յայս, հասարակօրէն գոյնն լինի կարմրերանգ, կրէ մեծ ամբոխմունս, և սաստիկ անձկութիւս. և զշունչն առնու մեծաւ դժուարութեամբ. ցաւն ոչ լինի բնաւ հաստատուն, այլ երբեմն յայս մասն, և երբեմն յայլ մասունս որովայնի թափառական: Երբեմն ցաւս այս դադարէ իբր հնգետասան օր, կամ երիս շաբաթս. բայց յետ այնորիկ աւելագոյն ինչ սաստկութեամբ վերադառնայ միւսանգամ: Այսոքիկ են նշանք, 'ի ձեռն որոց մարթ է մասնաւորապէս գուշակել զախտս զայս. թէպէտ և երբեմն զուգընթաց լինին ևս 'ի դիպուածս ախտի դալկան. բայց յայնժամ հասարակօրէն 'ի սակաւ ինչ աւուրս ջնջին փարատին: Այլ այս իսկ է չարն առաւել մեծագոյն և անտանելի, զի ախտս այս յետ միանգամ բուժելոյ՝ 'ի գոյզն ինչ անկարգութենէ և անզգուշութենէ անդրէն վերադառնայ:

Յաղագս խնամատարութեան ախտիս :

'Ի դիպուածս ախտիս՝ ամենայն լուծողական և փըս- խողական դեղորայքն են յոյժ վնասակարք. վասն որոյ պարտ է արգելուլ զգործածութիւն այնր ամենայնի, որք ուժաթափ առնեն, և կործանեալ տապաստ արկանեն զախտաժետեալ կանայս : Իսկ եթէ փսխումն կմ՛ ործումն նեղնին բնութեան շարժի և գրգռի, յայնժամ պարտ է տալ գաղջ ջուր, կամ թեթև խմել բուսակէթ առ 'ի մաք- րել զստամոքսն. և յետ այնորիկ հարկ է ևս տալ 15 կամ 20 և կամ 25 կաթիլ լաւտանօ լիգուիտօ՝ բաժակ մի ջրով կինամոնի. զոր պարտ է վերակրկնել 'ի տասն, և յերկոտասան ժամն միանգամ, մինչև ցածուցանել, և խաղաղել նշանացն :

Դարձեալ, 'ի վեց ժամու միանգամ մարթ է տալ չորս կամ հինգ հատ հապ, որ ասի բիլոլէ Ֆէթիտէ. և իսկ և իսկ զկնի բաժակ մի արգանակի բուլէճճիօ անուա- նեալ խոտոյ : Իսկ եթէ ասացեալ հապն երևի կարի ան- ախորժելի, որպէս պատահի երբեմն, յայնժամ պարտ է 'ի վերայ յաւելուլ վերոյիշեալ արգանակի ակահակ մի թինթուրայ քասթօրէօ, կամ 30 շիթս պալսամօ տի բէռու, փշրեալ 'ի վերայ ևս սակաւ ինչ շաքար. մարթ է ևս 'ի գործ արկանել էմբիասթռօ անթիսթէրիքօ, որ ևս մեծապէս ներգործէ և օգտէ : 'Ի սեռս արանց սեռ- մաղձոտքն են առաւել ենթակայ ցաւոցս, որք ունին մեծ նմանութիւն խթի արգանդի. վասն որոյ զոր ինչ միանգամ ցայս վայր 'ի յօդուածս յայս խօսեցաք, պատշաճի ևս 'ի դիպուածս ախտի՝ որ կոչի քօլիքա իբօքօնտռիաքա, այսինքն խիթ ափոռնդական :

ՅՕԴՈՒԱԾ Դ.

Յաղագս ախտին, որ ասի քօլիքա նէֆռիդիքա. այսինքն խիթ Ջղային :

Դանքագործքն, քարագործքն, հիմնադիրքն ևն, են առաւել ենթակայ այսմ ախտի : Հասարակ է ախտս այս 'ի գաւառս Անգղիոյ և Գաղղիոյ, ուրանօր յաճախ 'ի գործ ածեն զըմպելին կոչեցեալ սիտռօ (որ է ազգ ինչ ցքւոյ կազմեալ 'ի հիւթոց խնձորոյ, կմ՛ տանձի,) և թուի թէ յառաջ գայ ախտս այս 'ի գործածութէ արճճեայ

անօթոցն որով պատրաստեն զհեղանիւթս զայս : Դար- ձեալ, յոյժ յաճախ է յարևմտեան սահմանս Հնդկաս- տանի . ուր և անուանեն զախտս զայս քօլէրա սէքքա, որ թարգմանի խիթ չոր :

## Նշանք ախտիս :

Զուգընթաց լինի ընդ ախտիս ցաւ իմն որովայնի, անհանգստութի, ցնցումն մկանանց, պնդութի որովայնի, ցաւ ստամոքսի, ժայթքումն, դեղնութիւն երեսաց, ևն : Ախտակիրն զփորձ առնու մեծի տրտմութեան, և սաստիկ ծանրութե գլխոյ . ունի զաչս մթագնեալս, և երբեմն իսկ ուշագնաց լինի : Ցաւն որովայնի իսկ և իսկ աճել սկսա- նի, և հաստատի 'ի կողմն պորտոյ, որ լինի յոյժ փոսա- ցեալ և 'ի ներքս մխեալ : Երբեմն այնքան սաստկանայ ցաւն, մինչև ախտակիրն անկեալ 'ի մահիճս աղաղակ բառնայ, և գոչէ բարձրաձայն : Եւ յայգակիսի դիպուած թուի 'ի ձեռն դժնդակ անձկութեանս և տառապանաց նուաղիլ ցաւոյն : Մէզն և պէտքն որովայնի լինին արգե- լական, և համարի թէ շիջան երասանի փակեալ կայ կարկամութն ջլաց : Զարկ բազկին վրիպեալ զարտուղի 'ի բնական ընթացիցն, և լինի ալլադան . և եթէ չմտածու- ցանի փութապէս նպաստ, և խնամատարութի տառա- պանաց ախտակրին, բազումք 'ի նոցանէ լինին անդամա- լոյծ, և մատունքն ձեռաց ամփոփեալ կորանան :

Այդպիսի երկրորդական պատահարք քաջայայտ ցու- ցանեն զփոխումն հիւանդութեան ախտակրիս . և եր- բեմն յորժամ ախտն զայրանայ, ախտաժետեալն մահա- կործան լինի զարհուրելի և անըմբերելի ցաւովք : Այս- տեսակ խիթի պատճառէ ցաւս յոյժ դժնդակս առաւել քան զայլ ամենայն խիթս փորոտեացն, և յարատևեալ մնայ ընդ երկար ժամանակս : Ականատես եղէ յարատե- մնալոյ ցաւոյ ախտիս մինչև ցութ և ցտասն օր, հան- դերձ դժնեայ իմն խստութն որովայնի, որով արգելոյր և խափանէր զամենայն նպաստս և ներգործութիւնս դե- ղորէից, և 'ի վախճանի զերծաւ անվնաս : Բայց հասա- րակօրէն ախտս այս ուժանաւք առնէ զախտակիրն, և լքեալ թողու զնա սովորաբար անդամալոյծ :

## Խնամատարութիւնք և դեղորայք աչաց :

Ընդհանուր և հասարակ կառավարութիւն այսր ախտի համաձայնի, և մերձ է կառավարութեան ախտի որ կոչի՝ բաստիոնէ իլլիաքա, այսինքն խիթ փաթոյթ անուանեալ աղեաց : Բայց զայն կառավարութիւն ևեթ անբաւական համարիմք 'ի պատճառել զառողջութիւն. վասն որոյ հարկաւոր դատիմք ևս սահեցուցանել զորովայնն սուկայէս 'ի ձեռն ախորժական և մեղկ լուծողականաց, այլ միանգամայն նպաստամատոյց լինել ներգործութեան այսոցիկ լուծողականաց 'ի ձեռն գրեխաց՝ յօրինելոց ձիթով, և խառնելինօք. ևն :

'Ի դիպուածս ախտիս ունի մասնաւոր ներգործութիւն դեղս այս, այսինքն օլէօ տի քասթօռէօն. զոր պարտ է 'ի գործ արկանել մինչև ցերիս ոնձայս, այսինքն ունկիս : Իսկ 'ի գրեխն մինչև ցհինգ կամ ցվեց ունկիս : Գատուամէ ռէլլէ պաւսպատի է նոյնպէս դեղ իմն կարի ազնիւ և գործունեայ նկատմամբ ախտիս, զոր մարթ է 'ի գործ արկանել երկու տրամ, երիցս անգամ յաւուրն, կամ ևս առաւել, եթէ տանիցի ստամոքսն : Իսկ եթէ 'ի ձեռն այսոցիկ դեղորէից չլինիցի հնարաւոր բուժումն ախտիս, յայնժամ պարտ է 'ի վար արկանել զյետագայ կառավարութիւնս : Նախ հարկ է գրեխ տալ ախտաւորին բաւականաչափ մաքուր և ազնիւ գինւով, և ձիթով ընկուզի խառնելով ընդ իրեարս, և զկնի երկու կամ երեք ժամու պատրաստեա զայլ իմն գրեխ հետագայ եղանակաւ :

Ա՛ռ երկու տրամ՝ սէնա մաքուր, մի ունկի՝ էլէթթուարիօ տիաֆէնիքօ, կէս ունկի՝ պէնէտէթթօ լուսաթիվօ, երկու ունկի՝ մեղ մեռքուռիալէ, կամ հիւթն միոյ գօլլօ գունինթիտայի, եռացո՛ զամենայնն 'ի միասին ջրով, և 'ի գործ արկ. և զկնի ներգործութեան գրեխի, կրկնեա՛ միւսանգամ զվերոյիշեալ գինին, և զձէթն, և 'ի հետագայ աւուրն տո՛ւր ըմպել ախտաւորին երիս կամ չորս կշիռ ցորեան թառթառօ էմէթիքօ առ 'ի փսխել. և իսկ և իսկ զկնի ներգործելոյ փսխողականիս՝ տո՛ւր նմա մի տրամ թիւրակէս, որ այն ինքն է թրիաք, խառնեալ մի կաթիլ լաւտանօ լիգուիտօ : Իսկ յաւուրն երրորդի վերստին 'ի գործ արկանիւն գրեխն և փսխողականն :

'Ի չորրորդում աւուր պարտ է լուծողականս պատրաստել հետագայ դեղորէիւք : Ա՛ռ սէնա, թամարինտի, սալ տ'էբսօն և սալ տի թառթառօ յիւրաքանչիւրոյն

մէն մի ունկի, եռացո՛ զամենայնն երկու լիտր հասարակ ջրով. և յաւել 'ի վերայ կէս էլէկթուառիօ տիափէնիքօ, և նոյնչափ չիլօքքօ տի ռանօ. տո՛ւր ընդ առաւօտն ըմպել ախտակրին յիւրաքանչիւր երեք ժամու բաժակ մի կամ երկու գլխի բաժակի: Դարձեալ, յաւել 'ի վերայ վերոյիշեալ դեղօրէից կէս տրամ թիւրակէս, և մի չիթ րաւանդօ լիգուիտօ, և տո՛ւր յերեկոյս ըմպել:

Դարձեալ, մարթ է պատրաստել դեղ իմն քրտնաբեր յետագայ եղանակաւ: Ա՛ռ երեք ունկի ռատիչէ տի սալսաբառիլլա, մի ունկի՝ լէննօ կուայաեաքօ, կամ սասաֆռաս, երեք ունկի՝ պառատանա, և նոյնչափ՝ ռատիչէ տի սգուինա. Թրմեա՛ զամենայն 'ի մէջ միոյ հողեղէն անօթոյ, մինչև ցերկոտասան ժամ, բաւականաչափ ջրով. և թո՛ղ եռալ մինչև ցպակասիլ միոյ մասին ջրոյ՝ յերից մասանց անտի, և մնալ երկու մասն, և 'ի ցերեկի տո՛ւր ըմպել ախտակրին առատ առատ բաժակաւ: Իսկ 'ի գլխովին ուժաթափ լինել ախտակրին, պա՛րտ է պատրաստել դեղ իմն, որ ասի բօցիօնէ քօռտիալէ. որոյ կերպն լինի այսպէս: Ա՛ռ մի ունկի՝ ագուա տի մէլիսսէ, նոյնչափ՝ ագուա տի քառտօ սանտօ, երեք տրամ՝ ագուա տի թաէնօչէ. նոյնչափ՝ քօնֆէցիօնէ ճիաչէնթինա. և մի ունկի՝ չիլօքքօ կառօֆանի. խառնեա՛ զամենայնն, և յամենայնում ժամու մի հասարակ դրգալիւ 'ի գո՛րծ արկ: Իսկ եթէ 'ի վերայ այսոցիկ ամենայնի, մնայցէ խիթն ախտակրին տակաւին միօրինակ, յայնժամ պա՛րտ է վերստին ձեռնամուխ լինել 'ի գործածութիւն վերոգրեալ լուծողականաց ըստ տանելոյ կարողութ̃, և զօրութ̃ հիւանդին:

'Ի դիպուածս ախտիս չէ՛ բնաւ օրէն երակ հատանել. բայց եթէ յորժամ նշանքն լինին առաւել սաստիկ, և հասանեն 'ի բարձրագոյն աստիճան ուղեղբորբման, և ձգաման: Բայց եթէ զկնի բուժման ախտիս տակաւին մնայ անզօր և տկար, յայնժամ պա՛րտ է շարժումն առնել. հեծեալ 'ի ձիս կամ 'ի ջորիս, և 'ի գործ արկանել զքինա քինա, ինֆուզիօնէ արարեալ 'ի մէջ գինւոյ կմ̃ ջրոյ: Իսկ եթէ ախտն ապաքինի, բայց ախտաժետեալն մնայ անդամալոյծ, յայնժամ առաւել պատշաճաւոր դեղն է ագուա տի պաթհ. որ է ազգ ինչ հանքային ջրոյ՝ բղխեալ 'ի դաշտէ իմեքէ անգղիացւոց, կամ 'ի պաթհ անուանեալ գաւառէն. որ յայն սակս կոչեցաւ ագուա տի պաթհ:

Կառավարութիւն ՚ի գործ արկանելոյ ՚ի դիպուածս ախտիս:

Նախ քան ՚զամենայն պարտ է հրաժարիլ յուտելոյ զտհաս և զխակ միրգս, և յըմպելոյ զսաստիկ և զբորբոքեցուցիչ հեղանիւթս, ևն: Արծարծագործքն պարտին զգուշանալ ՚ի գործելոյ ծոմ բերանով. և կերակրեղինաց նոցին հարկ է լինել իւղային, և պարարտ. ՚ի գործ արկցեն յամենայնում առաւօտու զձէթն ձիթենեաց, խառնեալ օղւով, կամ հեղանիւթիւ՝ որ կոչի ռոմ. բայց չէ՛ բնաւ օրէն զայսպիսի ողխաւորս առանձին ՚ի կեր առնուլ: Առաւել պատշաճաւոր կերակուրքն են պարարտագոյն և իւղալի արգանակքն, և այլ սմին նմանք. միայն թէ ունիցին զզօրութիւն սնուցողականս, և տածողականս: Եւ ՚ի վեր քան զամենայն պարտին փոյթ մեծ ունել առ ՚ի արգելուլ զպնդութիւն որովայնի:

Խրատք պիտանիք ՚ի խնամատարութիւն ախտիս ընդհանրականս:

Թէպէտ և հնար էր մեզ յառաջիկայս դնել և զբազում զայլ տեսակս խթից, բայց քանզի ոչ են մեր կամք՝ շփոթել և խռովել զմիտս վերծանողաց, վասն որոյ զառաւել կարևորաց ևեթ ճառեցաք աստանօր, որք պէտս ունին մեծի զգուշութե. քանզի են յոյժ դժուարաւ բուժելի:

Գիտելի է դարձեալ, զի բազումք ևս ՚ի բժշկաց ՚ի դիպուածս ախտիցս չեն ձեռնահաս, և բաւական ՚ի քաջ ճանաչել զախտս զայսոսիկ, և զանազանել զայնս ՚ի միմեանց. վասն որոյ յորդոր ընծայեմք ամենայն քաջախոհ վերծանողաց և բժշկաց՝ վասն մեծի օգտի ախտակրիս ՚ի ճանաչել նոցա զախտս քաջայայտ, զհետ երթալ կանոնի հետագայ խրատուց: Յամենայնտեսակ դիպուածս խթից հարկ է զոտս, և զձեռունս դնել ՚ի մէջ ջերմ ջրոյ. և ևս ստէպ ստէպ դնել ՚ի վերայ որովայնի և ստամոքսի զկապերտս չուխայի թացեալս ՚ի մէջ ջերմագին ջրոյ: Դարձեալ, պարտ է տալ ախտակրին առատօրէն զըմպելիս բարեխառն զովացուցիչս, և յամենայն երկու կամ երեք ժամս միանգամ պատրաստել գրեխս կակղացուցիչս:



# ԳԼՈՒԽ Գ.

Յաղագս սաստիկ հոսման մղին, որ ասի՝ փիապէթէս:

Ախտս այս՝ է սաստկագոյն և յաճախակի հոսումն մղին, յերիտասարդս ուր ուրեմն է պատահական. իսկ 'ի ծերունիս սակաւ, և յոյժ ընտանեկան, մանաւանդ այնոցիկ, որք զբաղեալ կան յաշխատանս տաժանաւորս, և որք յերիտասարդութեան հասակին 'ի գործ արկանէին առատօրէն զըմպելիս սաստկագոյնս:

Յաղագս պատճառաց սաստկագոյն հոսման մղին:

Ախտս այս հասարակօրէն յառաջ գայ 'ի սուր ինչ հիւանդութենէ, 'ի տենդից, և յանչափապէս լուծողականութենէ: Մարթի ևս պատահել 'ի սաստիկ աշխատանաց, 'ի կրից, յերկար ճանապարհաց, և յընդերկար ձիավարութենէ, 'ի բարձմանէ ծանրագոյն իրաց, 'ի յուժգին և 'ի ղայրացուցիչ հեղանիւթոց, և 'ի դեղորէից. որպիսի են Թինթուռա տի քանթառելլէ, սբիռիթօ տի Թուէմենթինա ևն: Եւ ևս սովորաբար յառաջ գայ յերկարատև գործածութենէ հանքային ջրոց. վասն որոյ ըզգուշանալ պարտ է 'ի յաճախակի և յառատօրէն գործածութենէ այսպիսի ջրոց. ապա թէ ոչ՝ փոխանակ օգտի վնասաբերք լինին: Հուսկ յետոյ, ախտս այսմիկ մարթ է յառաջ գալ 'ի թուլութենէ ներքին գործարանաց միզարանի, 'ի թթուութենէ ինչ, որ սաստկապէս ղայրացուցանէ զերիկամունս, և 'ի հոսմանէ ինչ արեան:

Նշանք ախտին:

'Ի դիպուածս ախտիս մէզն լինի բազմաչափ քան զհեղանիւթ ըմպելեաց, զոր 'ի գործ արկանէ ախտակիրն. և լինի մաքուր ջինջ, և դեղնագոյն. և հոտն ո՛չ է այնքան գարշելի. ախտակիրն ունի զծարաւ ինչ յարատև, ևս սակաւ ինչ տենդ. բերանն լինի չորագոյն, և սակաւ թքանէ. ուժաթափ լինի գլխովին, կորուսանէ զախորժակն իւրայ, և այնքան հիւծեալ մա-

չեալ վտտանայ, մինչև համարի ախտակիրն չունել ինչ մարմինս, բայց եթէ զմորթն և զոսկերս: Զգայ զջերմութիւն ինչ 'ի մէջ փորոտեացն. և ուռնուն ոտքն, և մէջքն: 'Ի սկզբան անդ հիւանդութե ախտակիրն ոչ ինչ, կամ յոյժ սակաւ կրէ անհանգստութիւնս. բայց ոչ է յարատև. քանզի իսկ և իսկ կորուսանէ զախորժակն, և զգայ զջերմութի ինչ թեթևագոյն, և զպնդութի որովայնի:

Ախտս այս 'ի սկզբան իւրում դիւրին է յապաքինութի. բայց թէ առ ժամանակ ինչ յամեսցէ, ապաքինութին լինի յոյժ դժուարին: Ո՛չ է մարթ բնաւ յուսադիր լինել 'ի բուժել, և յառողջութի սպատապարել զծերունիս, և զարբշիռս ըմբռնեալս յախտս յայսմանէ:

### Ցուցակ դեղորէից ստորին հասման մըղի :

Ախորժելի և մեղմագոյն լուծողականքն 'ի դիպուածս ախտիս լինին յոյժ շահաբեր, եթէ ախտակիրն չիցէ կարի ուժաթափ լեալ յերկարատևութէ ախտին. ռապառպառօն, և սէմէն քառտամօմօն թորեալ 'ի մէջ գինւոյ տո՛ւր 'ի գործ արկանել, մինչև ցլուծումն կամ ցկակղումն որովայնի. և անմիջապէս զկնի այսորիկ պա՛րտ է ախտակրին 'ի գործ արկանել զդեղս պնդացուցիչս և զօրացուցիչս. վասն որոյ պա՛րտ է տալ յաւուրն չորս անգամ, կի՛ս ևս առաւել՝ եթէ տանի ստամոքսն, կէս դրամ զլեռագայ փոշին, որ կոչի՝ բօլվէռէ տ' էլվեցիօ: Ա՛ռ աղումէ և քաթէքու՝ յիւրաքանչիւրոցն հաւասարաչափ մասունս, և հալեալ 'ի մէջ քուրայի, մանրեա՛ զերկոսին 'ի միասին. և 'ի գո՛րծ արկ յիւրաքանչիւր անգամն 'ի մէջ միոյ բաժակի թինթուռա տի ռօզէի, որ է ոգի վարդի:

Իսկ եթէ ստամոքսն ոչ կարիցէ տանել առանձին ըզվերոյիշեալ նիւթսն, յայնժամ պա՛րտ է առնուլ սիէռօ տի լաթթէ ալումինօզօ, և 'ի գործ արկանել չորս ունկիս՝ յերիս անգամս յաւուրն. զոր մա՛րթ է պատրաստել հետևեալ եղանակաւ: Ա՛ռ չորս լիտր կաթն թարմ. և երեք դրամ աղումէ, որ է՝ պաղլեղ. դի՛ր զկաթն 'ի վերայ մեղմագոյն հրոյ, և եռացո՛. և իբրև սկսանի կաթն թանձրանալ՝ ա՛րկ 'ի վերայ զպաղլեղն: Դարձեալ, 'ի դիպուածս ախտիս են օգտակարք սեղմիչ գեղորայքն, որպիսի են՝ տասն կամ 12 շիթք լաւտանօ լիգուիտօ 'ի մէջ միոյ բաժակի հասարակ ջրոյ երկու անգամ յաւուրն: Իսկ օգտակարագոյն և բարւոք ևս է գործածութիւնն քինա քինայի փոշի արարեալ, և թորեալ 'ի մէջ միոյ բա-

ժակի ազնուագոյն գլնւոյ, և 'ի կիր արկանել երիս ան-գամ յաւուրն․ բայց յարմարագոյն, և ախորժելագոյն ևս լինի եթէ յաւելցի 'ի վերայ 15 կամ 20 կաթիլ ելեկ-սիրուէ տի վիթրիօլօ ։

Յաղագս կառավարութեան, որպէս առ հիւանդաւոր ։

Պարտ է արգելուլ նախ քան զամենայն 'ի դիպուածս ախտիս՝ զայն ամենայն որ կարեն զայրացուցանել զգա-ծարանս միզարանի, և խանգարել զխառնուածս ։ Եթէ ծարաւն չիցէ այնքան սաստիկ, պարտ է ախտաւորիս ու-տել չորագոյն կերակրեղէնսք․ որպիսի են բրինձ, սալոր խառն ընդ կաթին, խնձորին, տանձ են ։ Զսաստիկ ծարաւն մարթ է շիջուցանել 'ի գործ արկանելով զջուրն կրոյ, խառն ընդ կեղևոյ կաղնւոյ ։ Տէքօթթօ պիանքօ, հալեալ 'ի մէջ նորա զխէժն ձկան, լինի յարմարագոյն ինչ ըմպելի 'ի դիպուածս ախտիս ։ Նոյնպէս պարտ է ախ-տաւորին առնել չափաւոր շարժմունս առանց խոնջելոյ․ ևս պարտ է նստիլ և քուն լինել 'ի վերայ միոյ կարծրա-գոյն և պնդագոյն մահճի․ քանզի փափուկ և կակղագոյն մահիճքն են յոյժ վնասակար երիկամանց ։ Նոյնպէս ցուրտ և խոնաւ օդքն ոչ սակաւ վնաս ընծայեն ախտաւորիս ։



# ԳԼՈՒԽ Լ.

Յաղագս ախտի, որ ասի՝ ինքօնթինէնցա տ' օրինա, այսինքն անժուժութիւն կամ անժուժկալութիւն միզի ։

Այս է ախտ ինն, որում անձինք աշխատաւորք են յոյժ ենթակայ զկնի անցանելոյ զչափ հասակի ամաց․ և ախտս այս տարբերի ներքսապէս 'ի վերոյիշեալ ախտէն տիապէթէ, ըստ որում 'ի դիպուածս յայս մէզն հոսի յոյժ յանկամայս, և շիթ առ շիթ․ և ոչ առատօրէն՝ որ-պէս 'ի դիպուածն վերոգրեալ ախտի ։ Ախտս այս առա-ւել տառապեցուցիչ է՝ քան որոգայթաւոր․ ենթակայք այսր ախտի հասարակօրէն են երիտասարդք և ծերունիք, կանայք 'ի ժամանակի յղութեան, և ևս եթէ կրեալ իցեն զաշխատելի ծնունդս, և վարեալ իցեն զանկանոն վարս ։

### Յաղագս պատճառաց անձուձութեան միզի:

Ախտս այս յառաջ գայ 'ի թուլութենէ փամփշտոյ, և սովորաբար 'ի բաղաշխիղխանէ, այսինքն 'ի լուծութենէ կամ 'ի գօսութենէ այսր գործարանի: Կարէ պատճառիլ երբեմն և 'ի մզմանէ, 'ի հարուածոց, 'ի տաժանաւոր ծննդոց, և յայլ ինչ պատահարաց, 'ի ջերմախտէ, յերկար գործածութենէ զայրացուցիչ ինչ դեղորէից, որք մնալով 'ի մէջ փամփշտի վնասակար լինին:

Դարձեալ, պատճառի ախտս այս 'ի տկարութենէ կազմուածոց և գործարանաց, որպէս 'ի մանկունս, 'ի ծերունիս և 'ի փափկակեաց անձինս. և 'ի նեղութենէ ինչ, զոր կրեն մկանքն փամփշտոյ. որպէս պատահի բազում անգամ յարուեստոն քարագործութեան, և 'ի տաժանաւոր ծննդեան: Հուսկ յետոյ պատճառի և 'ի քարէ ինչ գոյացելոյ 'ի մէջ միզարանի, յուռուցէ ինչ 'ի վէր երևելոյ 'ի մօտաւոր մասունս փամփշտոյ. երբեմն և յանկանոն գործածութենէ ջրոյ կամ յայլ ինչ հեղանիւթ ըմպելեաց. 'ի վախճան ամենայնի, 'ի գարշ ցանկութենէ, կամ 'ի վաւաշոտութենէ:

### Յաղագս խնամատարութեանց, և դեղորէից ախտիս:

Ախտս այս է անբուժելի 'ի զառամեալս, և ոչ է մարթ 'ի գործ արկանել առ նոսա դեղորայս ինչ, բայց եթէ դնել 'ի վերայ փամփշտոյ էմբլասթրօ քօռօպօռանթէ, և անդադար ինչ գօտեով պնդել շուրջ զերիկամամբք նոցին, և կանոնաւորել զկերակուրս սննուցողականս, և զգինի ազնիւ, և չափաւոր ինչ շարժութիւն, և զայլ առցին նման յարմար կառավարութիւնս:

Իսկ 'ի մանկունս ախտս այս յառաջ գայ 'ի տկարութէ, և պատշաճաւոր դեղն է բոլվէրէ տի սօւչիօ, այսինքն փոշի մկան, կամ մուկն խորովեալ 'ի շամփուրի, և կամ այլ այսպիսի դեղորայք. քանզի ախտս այս թէպէտ 'ի մանկունս ըստ ինքեան է բուժելի, բայց նպաստաւորագին և այսպիսի դեղորէից ոչ է վայրապար: Անժուժութի կամ անժուժկալութին միզի, եթէ լիցէ յառաջ եկեալ 'ի քարէ ինչ գոյացելոյ 'ի փամփուշտն, է տապաքինելի ըստ եղանակին, զորմէ խօսեցաք 'ի տեղւոջ իւրում: Եթէ պատճառի 'ի խենեշութենէ և 'ի խառնա-

կութենէ ընդ կանայս, է իբր անբաժնելի, մանաւանդ եթէ իցէ հնացեալ ։

Իսկ 'ի դիպուածս, յորում յառաջ գայ ախտս այս 'ի լուծութենէ կամ 'ի գօսութենէ փամփշտոյ, յայնժամ զդեղն տե՛ս 'ի գլ". ժն. 'ի վերայ անդամալուծութեան ։ Իսկ յորժամ փամփշտալուծութիւս այս պատճառի յառաջեսցէ ինչ, կամ յիջուածոց իջելոց 'ի մերձաւոր մասունս փամփշտոյ, յայնժամ դեղն է վեշիքաթօռիօ, զոր պա՛րտ է դնել 'ի մէջքն, և դարմանել քանի ինչ շաբաթս, մինչև փարատեսցի փամփըշտալուծութիւնն, և յետ այնորիկ պա՛րտ է 'ի գործ արկանել փոխանակ վեշիքաթօռիօի զյետագայ օծանելիս ։ Ա՛ռ մի ունկի՝ օլիօ տի ռութա, երկու տրամ ունկվէնթում նէռվինում, և երեսուն չիթս օլիօ տի էսսէնցիալէ տի թէռէպէնթինօ ։ Այսու օծանելեաւս պա՛րտ է յաւուրն բազում անգամ շփել զայն մասն, յորոյ վերայ եդեալ էր վեշիքաթօռիօն, և զայլ մերձաւոր մասունս ։ Անժուժութիւն միզի, որ հասարակօրէն զուգընթաց լինի ընդ փորհարութեան և որովայնահոսութեան, ոչ ունի պէտս մասնաւոր ինչ դեղորէից, այլ տաղտկինի և բուժի 'ի դադարել անդ լուծողականութեան որովայնի ։



# ԳԼՈՒԽ Օ.

## Յաղագս անմիզութեան, կամ միզարգելութեան ։

Արգելականութիւն միզի, որ ըստ բժշկաց կոչի՝ սօբբռէսսիօնէ տ' ուրինա, կամ իսքուռիա, յերկուս բաժանի, 'ի ռէնալէ, և 'ի վեշիքալէ, այսինքն յերիկամնական, և 'ի փամփշտական. երիկամնականն կոչի՝ սօբբռէսսիօնէ տ' ուրինա, կամ իսքուռիա. իսկ փամփշտականն անուանի հասարակօրէն՝ ռիթէնցիօնէ տ' ուրինա. իսկ առ մեզ երկաքանչիւրն կոչի՝ անմիզութիւն, կամ միզարգելութիւն ։

## Յաղագս Նշանաց միզարգելութեան ։

Նշանք երիկամնական արգելման միզի են դաղտնի ինչ ցաւ ողագոյն, ծանրութիւն երիկամանց, և միջաց, ցաւ ստամոքսի, զզուանքն և ժայթքումն, միզահամութիւն բերանոյ, և դարշահոտութիւն միզի ։ Ախտաւորն ոչ ըզգ-

գայ ընաւ յօժարութիւն ինչ 'ի միզել, և ոչ հոսի մէզն, բայց եթէ մեծաւ բռնադատութեամբ. ոչ գտանի ընաւ ուռոյց ինչ 'ի միզարանի, և ոչ 'ի մերձաւոր մասունս նորա :

Իսկ նշանքն փամփշտական արգելման միզի, որ համառակօրէն ասի՝ ռիթէնցիօնէ տ' օւրինա, են հետագայք. ծանրութիւն ինչ զոր զգայ ախտաւորն 'ի մէջ անդամոցն, որ ասի՝ իբօկասթռօ, բուպէ, և բէռինէօ, յօժարութիւն ինչ 'ի միզել հանդերձ վայրապար բռնադատութեամբ, ուռոյց ինչ 'ի վեր երևի 'ի ներքոյ ոսկեր երանաց կամ առականաց. զոր 'ի շօշափելն՝ զայրագին ցաւս զգայ ախտաւորն. և ուռոյցս այս փարատի կամ ինքնին բնութեամբ 'ի լուծանիլ արգելմանն միզի, և կամ գործածութեամբ արհեստի :

Համառակօրէն արգելումն այս միզի լինի առանց ջերմութեան : Իսկ եթէ պատճառեալ լինի 'ի բորբոքմանէ կամ 'ի շարաւմանէ միզարանի, և կամ 'ի գաղղիական ախտէ, յայնժամ յայտնի դիպուածս սովորաբար զուգընթաց լինի տենդ ինչ, և ս ցնորումն. ցաւքն և ջերմութիւն լինին սաստկագին, և ախտաւորն յոյժ ամբոխեալ և խռովեալ. և վերջապէս եթէ բարւոք դարման չտանիցի ախտիս այսմիկ, փոխարկի սովորաբար յախտն սասցեալ իտռօբիզիա, այսինքն ջրգողութիւն, և լինի մահաբեր :

Ցաղագս պատճառաց այսորիկ ախտի :

Որպէս խօսեցաք 'ի վերագոյնդ, եթէ միզարգելումն կարէ պատճառիլ և յառաջ գալ 'ի բազմազան պատճառաց, որպէս 'ի բորբոքմանէ երիկամանց և փամփշտի են. խիճք կամ փոքրիկ մասնիկք ինչ քարի կամ աւազոյ արգելեալք 'ի ճանապարհի միզարանի, նիւթք ինչ շարաւային և նեխեալ, կարկամութիւն ջլաց, ոլորումն փամփշտոյ, և դալարումն աղեաց և փորոտեաց ստորին որովայնի, բորբոքումն կամ այտուցքն ևն, կարեն պատճառել զախտս զայս :

Դարձեալ, նոքա՝ որք զսպեն, և ճնշեն զանձինս իւրեանց յընդերկար ժամանակս 'ի գալ միզի, և ևս նոքա, որք զազրագործութիւս առնեն ընդ կանայս են ենթակայ ախտիս այսմիկ. նոյնպէս և կանայք զկնի զուգաւորութեան, և յղութեան երբեմն ևս կրեն զախտս զայս : 'Ի վախճանի ամենայն կերպ ախտք, որպիսի են ակամայ շարժմունքն մկանանց, արգանդացաւութիւն, սևամաղձութիւն, ցաւն

փամփշտոյ և երիկամանց կարեն պատճառել զմիզարգելութիւն ։

Յաղագս դեղորէից և խնամատարութեան միզարգելութեան ։

'Ի բազմակերպ պատճառաց ախտիս, զորոց գրեցաք, քաջայայտ ճանաչի՝ եթէ քանի՛ այլևայլ և բազմապատիկ դեղորէից կարօտի բուժումն ախտիս ։ 'Ի դիպուածս արգելականութեան որ պատճառի 'ի բորբոքմանէ երիկամանց, կամ փամփշտոյ կամ ստամոքսի, և կամ այլ ինչ աղեաց ստորին որովայնի, և կմ՞ 'ի դիպուածն՝ յորում պատճառի 'ի խիճէ, յաւաղոյ, 'ի վէրաց ինչ ծննդական անդամոց, 'ի տռփական ախտէ ևն, պարտ է 'ի գործ արկանել զայն դեղորայս, զորս սահմանեցաք վասն մի մի իւրաքանչիւրոցն այսոցիկ ախտից ուրոյն ուրոյն 'ի տեղւոջ իւրեանց ։

Դարձեալ գիտելի է, եթէ յայս ամենայն դիպուածս մարթ է ևս 'ի գործ արկանել զլեռնագայ դեղորայս · այսինքն ֆօմէնթի, և բաղանիս առնել ։ Իսկ երակ հատանելն է հարկաւորագոյն, եթէ զօրութիւն ախտակրին տանիցէ այնմ, յորժամ գտանի նշան ինչ բորբոքման · երակ հատանելն 'ի դիպուածս ախտիս ոչ միայն փարատէ զջերմութիւն, այլ միանգամայն թուլացուցանելով զհաստատնդութիւն գործարանաց և խողովակաց, վանէ զբռնի շարժումն մկանաց և ջղաց, որք պատճառեն զարգելականութի ։ Զկնի երակ հատանելոյն պատշաճագոյն է 'ի գործ արկանել զֆօմէնթի առակ ջերմ ջրով, կամ ջրովն երիցկի, և կամ մոլոշի, ևն ։

Դարձեալ, պարտ է դնել զախտակիրն 'ի մէջ գաղջ ջրոյ, և թողուլ այնքան, որքան տանի զօրութիւն նորին, և կրկնել զայն ըստ պահանջելոյ պարագայիցն ։ Այս կերպս օգտէ ևս 'ի դիպուածս, յորում արգելականութիւն միզի պատճառի յերկարապէս զսպելոյ զմիզն 'ի միզել, ևս 'ի զաղրագործութենէ ընդ կանայս, կամ 'ի գաղղիական ախտէ · քանզի միշտ յայսպիսի դիպուածս արգելման կամ ղուգլնթաց լինի բորբոքումն, և կամ պատճառէ զայն ։ Յայդ ամենայն դիպուածս ոչ է հասարակօրէն որոգայթաւոր, բայց եթէ 'ի յարմատանալն և 'ի հնանալն նորին ։

Իսկ 'ի դիպուածս՝ յորում արգելականութիւն միզի պատճառի 'ի կրից և 'ի սևամաղձէ, յայնժամ պարտ է 'ի գործ արկանել մասն ինչ 'ի վերոյիշեալ դեղորէից, և

մասն եւս շճետագայ դեղորայս։ Ա՛ռ, երեք ունկի՝ ռատիչէ տի ալթէա, կէս ունկի՝ լիկօռիցիա, և երեք տրամ՝ սէմէն բլանթակօ։ Զայս ամենայն եռացո մի և կէս լիտր ջրով քանի ինչ վայրկեան. և յետ այնորիկ յաւել ՚ի վերայ երկու ունկի՝ կօմմա առապիքա, և կէս ունկի՝ սալնիթրօ բուրիֆիքաթօ, և մատո՛ ախտաւորին մի բաժակ յաւուրն չորս կամ հինգ անգամ։ Այլ եթէ պատճառի ՚ի գոլորշեաց ինչ, որք ՚ի ճանապարհին միզարանի, կամ ՚ի շարաւալից ինչ նուաթոց, ՚ի վիրաց, ՚ի մսեղաւորութենէ այտորիկ անդամոյ, ՚ի թուլութէ երիկամանց և փամփշտոյ, ՚ի լուծութէ կամ ՚ի գօսութէ գործարանաց և խողովակաց, են, յայսպիսի դիպուածս չէ՛ օրէն միշտ ՚ի գործ արկանել զանդացուցիչս և զջերմացուցիչս, զվէշիքաթօրիօ են. այլ պարտ է ՚ի գործ արկանել զքանտէլէթթա սուբբուռաթիվա, կմ կօմմա էլասթիքա, զոր պարտ է պատրաստել բազմազան եղանակաւ. վասն որոյ և ոչ կամիմ առատօր խօսել զկերպէ պատրաստելոյ զայն. քանզի իւրաքանչիւր վիրաւոր ունի այլևայլ եղանակ ՚ի պատրաստել զքանտէլէթթան զայն ըստ խոհեմական իւրում դատողութե։

Բայց զայս միայն ասեմք՝ եթէ արժան է միշտ նախ քան զմուծանելն զպատրոյգս զայս ՚ի ծննդական անդամն՝ թաթախել զնոյն ՚ի մէջ իւղոյ քաղցր նշոյ. որով լինի առաւել դիւրապատրաստ և շուտափոյթ ՚ի ներգործել. և պարտ է թողուլ զայն մնալ ՚ի ներքս անդ երիս կամ չորս ժամս ըստ կարողութե ախտաւորին, որով ո՛չ միայն բուժին խոցքն, այլ և գոլորշիքն փամփշտոյ, և մսեղութիքն, որք գտանին ՚ի մէջ նոյն անդամոյ, և այլ այն ամենայն, որք արգելական լինին ճանապարհին միզի. և այլն։ ՚Ի դիպուածս, յորում պատճառի ՚ի յղութէ, հասարակօրէն չէ՛ պարտ ՚ի գործ արկանել դեղորայս ինչ. այլ թողուլ պարտ է բնութեն կառավարել զինքն։

Ցուցակ ընդհանուր կանոնաւորութէ, զոր պարտ է ՚ի գործ արկանել ՚ի դիպուածս արգելման միզի յորդորելով և իջէ պատճառէ ընինջի յառաջ եկեալ։

Ո՛ր և իցէ պատճառաւ միզարգելութե, հարկաւոր է միշտ լոյծ ունել զորովայնն. բայց զգուշանալ պարտ է՝ զի մի՛ ՚ի գործ արկցին սաստիկ լուծողականք, և յոյժ լուծիչ դեղերքն եւս՝ ինֆուզիօնէ տի սէնա և տի մաննա. են։ ՚Ի դիպուածս յայս թեթևագոյն դեղն է յոյժ

դատակար. մաքրէ զորովայնն, և մանաւանդ ունի զօրութի 'ի փարատել զցաւնի շարժուածս փամփշտաց, և այլ մերձաւոր մասանց: Կերակրոյն պարտ է լինել թեթև և սնուցիչ, և սակաւ քանակաւ. 'ի գործ արկանել ըմպելի՝ զթեթև արգանակն, ինֆուզիոնէ տի ռատիչէ տի ալթէա. ֆիօրի տի թիլիօ ևն, յաւելուլ պարտ է ևս երբեմն 'ի վերայ այդպիսի ինֆուզիոնէի հինգ կամ վեց չիթս սբիրիթօ տի նիթրօ տօլչէ, կամ մի տրամ՝ սաբօնէ տի ալիքանթէ: Իսկ եթէ ախտակիրն ոչ ունիցի զբորբոքողականութիւն, կարէ ըմպել ևս սակաւ ինչ թեթև բունչ տաւանց թթուոյ:



# ԳԼՈՒԽ Լ.

Յաղագս ախտի որ ասի՝ ռէնէլլա. այսինքն աւազ երիկամանց. և յաղագս ախտի որ կոչի՝ բիէթրա. այսինքն քար երիկամանց:

'Ի դիպուածս, յորում աւազք կամ խիճք յամեցեալ միայն 'ի մէջ երիկամանց, կամ ընդ քարշ գնան ճանապարհաւ միզանց խողովակացն հանդերձ միզիւն, յայնժամ ասի թէ ախտակիրն ունի աւազս, կամ նիւթս խճագործս: Իսկ 'ի դիպուածս, յորում այսպիսի խիճք. կամ փոքրիկ քարինք ընդմնասնեն 'ի փամփուշտն, և յերկարեալ միայն անդ առ ժամանակ ինչ, աճելով աճին օր քան զօր աւազային և խճային նիւթովք միզի, որք կուտեալ յարին շուրջանակի. և 'ի վախճանի այնքան սաստիկ ստուարանան, մինչև ոչ կարեն ելանել 'ի փամփուշտէ, և ընդ քարշ անցանել ճանապարհաւ միզանց խողովակացն հանդերձ միզիւն. և յայսպիսի դիպուածս ասի՝ ախտակիրն ունել քարինս:

Պատճառք այսր աւազոյ և քարի:

Աւազն, և քարն կամ խիճքն գոյանան նախ՝ 'ի բարկ, 'ի կծու, և 'ի տաւխպ կերակրեղինաց, 'ի գործածութենէ սատակադոյն և սեղմիչ գինւոյն, յանշարժական կեանս վարելոյ, 'ի պահպանելոյ զմէզն 'ի մէջ անկողնոյ կարի ջերմապէս, այնպէս մինչև բռնութ շարժել զգոլորշիսն,

և զքրտունս , զի կերակրելոյ զերս կակղացուցիչս այնքան՝ մինչև շարժել զունակական ինչ լուծումն որովայնի ։ Դար-ձեալ՝ յերկարատեւ մնալն ընկողմանեալ 'ի վերայ ուսոցն , գործածութիւն պղտորեալ և աւազային ջրոց , փքաւոր կերակուրքն են , կարեն նոյնպէս պատճառել զախտս զայս ։ Անձինք զառամեալք , և նոքա՝ որ կրեցին զախտն կոչեցեալ կօթթա կամ ռէումաթիզմօ , են առաւել են-թակայ ախտիս ։

### Յաղագս նշանաց աւազոյ , և քարի ։

Աւազքն , կամ քարինք երիկամանց պատճառեն ըղ-ցաւս միջաց , զանախորժակութի , զզուումն , զժայթքումն . և երբեմն եւս զմէզն տամուկ , կամ արիւնախառն . Իսկ յորժամ քարինքս այսոքիկ իջանեն յերիկամանց 'ի փամ-փուշտն , և արգելական մնան ընդ ճանապարհն միզանց խողովակաց , յայնժամ այսոքիկ նշանքս զայրանան տաս-նապատիկ առաւել . տարածանի ցաւն ընդ մերձաւոր մա-սունս փամփշտի , մէջքն և զիստն կողից ախտաւորին տան-ջին միշտ անհնարին ցաւովք , ամորձիքն կծկին 'ի վեր կոյս , և մէզն լինի արգելական ։ Իսկ քարն երիկամանց կմ՛ փամփշտոյ ճանաչի 'ի ցաւոցն , զոր զգայ ախտաւորն կամ 'ի միզելն , կամ յառաջ , և կամ զկնի միզելոյն . 'ի սառնամանութէ՛ կամ 'ի թանձրութէ՛ միզի , որ իջանէ չիթ առ չիթ , 'ի յերկարաձիգ յապաղմանէ միզելն՝ 'ի նոյն իսկ վայրկենի՝ յորում ախտալիւք յորդառատ միզել , և արա-գոյն ինչ ցաւոց՝ զոր ախտաւորն զգայ 'ի ծայրն փամփշտի , զկնի շարժմանն մանաւանդ յետ ձիավարութեն , կմ՛ կա-ռաշրջութեանն , և այլ սմին նման տարժանաւոր շարժ-մանց , 'ի գունոյ միզին , եթէ իցէ յոյժ սպիտակ և թանձ-րամած , 'ի մարմնաջանաց , և 'ի տագնապէ ծննդական անդամոյն , որ բռնադատէ զախտաւորն անդադար քե-րել զանձն ։

Դարձեալ՝ ճանաչի 'ի դիւրագոյն միզելոյ ախտաւորքն 'ի նստելն , քան յոտն կալն , 'ի կարկամութէ և յանկա-մայ շարժմանէ ջլաց կամ մկանանց , որք պատճառին 'ի սաստկագոյն ցաւոց 'ի միզելն , հուսկ յետոյ 'ի շօշափմա-նէ քարին 'ի ձեռն միզահան գործեաց , որ կոչի՝ քաթէ-թէրէ ։

Ջուր կրոյ՝ պատրաստեալ ընդ շերտս ստորեւ. և բաղում փառաւորք հաստատեն հեղինակքն միանգամայն՝ եթէ յոյժ օգտակար է և անվնաս ։

Իսկ ՚ի գիպսուածս, յորում քարն լինի ՚ի ներքս ՚ի փամփուշտն, դարձեալ խրատեն նոյն հեղինակքն ՚ի գործ արկանել սաքօնէ տի ալիքանթէ, և աքուա տի քալչէ պատրաստեալ ըստ վերոյիշեալ կերպի, զոր պարտ է ՚ի գործ արկանել ըստ յետագայ եղանակի ։ Առցէ ախտակիրս յամենայնում աւուր մի ունկի՝ սաքօնէ տի ալիքանթէ, աքուա տի քալչէ, այսինքն ջուր կրոյ ըստ վերոգրեալ կերպի ընդ շերտս ստորեւ. զօճառն բաժանեսցէ յերիս մասունս. զմեծագոյն մասն ՚ի գործ արկցէ յառաւօտեան պահու ՚ի ծոմուտ. զերկրորդ մասն ՚ի մէջօրէի. իսկ զերրորդ մասն զկնի վեց ժամուց. և արբցէ մին մի մեծագոյն բաժակ աքուա տի քալչէ զկնի իւրաքանչիւր մասանց օճառին. իսկ զմնացեալ ջուրն կրոյ արբցէ փոխանակ հասարակ ջրոյ ընդ մէջ ճաշու, և ընթրեաց. և զկնի սա ժամանակ ինչ գործածութեն այսր դեղոյ պարտ է նկատել, եթէ զօրաւոր իցէ մարսողականութեն ախտակրի, պարտ է յայնժամ վերստին պատրաստել զջուրն կրոյ զօրաւորագոյն ևս ։

Անգղիական քառուսթիքօ կամ լէշիվա տէ սաքօնարի՝ է անուանագոյն իմն դեղ ՚ի գործածեալ յայժմեան դարուս ՚ի գիպսուածս քարի ։ Դեղս այս բնութեն է յոյժ դառնակսկիծ, վասն որոյ միշտ պարտ է ՚ի գործ արկանել ընդ ախորժաբար և բարեխառն իրս. որպիսի են արգանակն ոսթու, կաթն, ինֆուզիօնէ տի սէմէն լինօ, կօմմա առապիքա, տէքօչիօնէ տի սասսիչէ տի ալթէա ։ Ախտակիրն սկսանիցի ՚ի գործ արկանել զդեղս զայս նախ սակաւ քանակութեամբ զօրօրինակ երեսուն կամ քառասուն չիթս, և աստիճան քան զաստիճան առաւելուցու ըստ տանելոյ ստամոքսի նորին ։ Այս կերպն պատրաստելոյ անգղիակ քառուսթիքօի ։ Առ երկու ունկի քալչէ վիվա, և մի ունկի՝ չէնէրէ տի թէռռայօ, կամ քօթասսա. խառնեա զայսոսիկ յերեարս. և թող մինչև ցլուծանիլ ՚ի մոխրաջրոյ, և աստէպ աստէպ խառնեա նախ քան զի ՚ի գործ արկանելն ։ Իսկ եթէ այս երկու գոյացութիւնք ոչ լուծանին առանձին, յաւելուլ պարտ է սակաւ ինչ ևս ջուր ։

Գոյ այլ իմն անուանագոյն դեղ ՚ի գիպսուածս ախտիս, որ կոչի՝ ասէտօ սաքօնաթօ. դեղս այս է օգտակարագոյն, և մարթի դասել ՚ի կարգս վերոյիշեալ հռչակաւոր դեղորեից. և զգէ հեղինակն, եթէ ակնառու եղէ բաղում

անդամ գծորձ առնել օդաստեղծութեան այսր դեղոյ. դեղս այս հասարակօրէն 'ի գործ արկանի յարդանակ կազմելու. և չափն է 'ի մի տրամէ մինչև ցերկու, երկու անգամ յաւուրն. մարթ է և ս առաւելուլ զչափն մինչև ցվեց կամ ցեօթն տրամ յաւուրն խառն ընդ մի լիտր հասարակ ջրոյ առանց երկիւղի: Արդ 'ի վերոգրելոցս յայս վայր՝ քաջայայտ ճանաչի, եթէ շահաւէտագոյն դեղորայք 'ի դէպուածս յայս՝ են ջուրն կրոյ, օճառն, ալքալի քառաթիքօ են:



# ԳԼՈՒԽ Ը.

Յաղագս զանազան տեսակաց ջրգողութեանց, որ ասի՝ իտռօբիզիա:

Ախտս այս է ուռուցումն ինչ բովանդակ մարմնոյ, կամ միայն անդամոց մասանց մարմնոյ, յառաջ եկեալ 'ի գոյացութենէ ջրային հիւթոց. բազմապատիկ և պէսպէս անուանս ընծայեսցէ այսմիկ ախտի ըստ զանազանութեան մասանցն, որք են ենթակայ ընդունելոյ զախտս: Նախ՝ յորժամ ջուրն տարածանի ընդ ամենայն մասունս մարմնոյ, յայնժամ անուանի՝ անասարքա, կամ լէուքօֆլէկմացիա, կամ իտռօբիզիա ձէնէռալէ. այսինքն ընդհանուր ջրգողութիւն: Երկրորդ՝ եթէ ջուրն ժողովեալ մնայ միայն 'ի ստորին որովայնին, յայնժամ ասի՝ ասքիթէ, կամ իտռօբիզիա տէլ պասսօ վէնթռէ, այսինքն ջրգողութիւն ստորին որովայնի: Երրորդ՝ եթէ ջուրն գումարեալ զետեղի 'ի կուրծս, յայնժամ յորջորջի՝ իտռօբիզիա տի բէթթօ, կամ իտռօթօռաչէ: Չորրորդ՝ 'ի լինել ջրոյն 'ի գլուխն կամ 'ի յուղեղն, ասի յայնժամ իտռօչէֆալօ, այսինքն ջրգողութիւն գլխոյ: Հինգերորդ՝ յորժամ ջուրն փակեալ մնայ 'ի քսակի ինչ մասնաւոր՝ առանց բնաւ հաղորդութեան տանելոյ և հոսելոյ, յայնժամ անուանի իտռօբիզիա սաքքաթա. ընդ այս տեսակաւ են՝ ջրգողութիւն արգանդի, որ ասի՝ իտռօբիզիա տէլլա մաթրիչէ, կամ ութէռօ. և ջրգողութիւն ձուարանի, որ կոչի՝ իտռօբիզիա տէլլէ օվայէ. և ջրգողութիւն ֆալլօփիեան փողոց, զոր կոչեն իտռօբիզիա տէլլէ թուպէ ֆալլօբբիանէ. զնշանակութիւն սորա տեսցես ստորև 'ի կարգի իւրում. և ջրգողութիւն որովայ-

Յաղագս մասնաւոր պատճառաց անասարկային, և ուշինին :

Մ՚ասնաւոր և սեպհական պատճառքն այսորիկ տե-սակի ջրգողութեան՝ են ապականութիւնքն արեան, թու-լութիւն ընդհանուր, հաստատութիւն անզօրուն ; ամփո-փումն մանրաթելից, որք զետեղեալ կան 'ի մկանունս, և յայլ մասունս կենդանւոյն, երբեմն ևս պատճառի 'ի խցանաց աւիշկեան անօթոց. և այլ երբեմն 'ի թանչից, որով ընդ երկար մշտանայ և տաղնապի հիւանդն, 'ի կա-լի և յանչափ երակ հատանելոյ, յերկարատևս որովայ-նահոսութենէ, 'ի լիէնթէրիա անուանեալ ախտէ, և յայլ ամենայն ախտէ, որովք մածուցային կամ մարսողա-կան զօրութիւն տկարանայ, և լինի անյարմար 'ի մատակա-րարել և 'ի բաշխել զնպաստս կազմուածոց : Դարձեալ, պատճառի 'ի կորստենէ արեան, յառատութենէ ջրճկային և ուղայքն հիւթոց, յայլայլութենէ խմայքն հիւթոց, յայտուցմանէ լերդի, և փայծեղան, 'ի խցմանէ մեսեն-տրական մանանց :

Յաղագս մասնաւոր նշանաց անասարկայի :

Հասարակօրէն ոտքն և սրունքն սկսանին ուռիլ, և նշանաւոր ուռոյցն 'ի վեր երևի յընկողմանիլն. և 'ի ծա-գիլ առաւօտուն փարատիլ սկսանին, և 'ի մխելն զմատունս յուռուցեալ մասունս մարմնոյ, մնանալով յերեկոյեան պահու, տպաւորի 'ի նմա, անգիքն մնան փոսաձև : Ապա ուռոյցն առ սակաւ սակաւ վերանայ, և ելանէ 'ի մէջս, 'ի բազուկս, և մինչև ցգլուխն. և խակ և խակ շնչառութիւն դժուարանայ, և մէզն յոյժ նուազի, և հասարակօրէն սպիտականայ, և երբեմն ևս կղմնտրագոյն երևի. մա-նաւանդ եթէ տարածանի յորովայնն ստորին, և կամ փո-խանցէ 'ի լեարդն : Ախտաժետակալն ունի ծարաւ սաս-տիկ, որովայնն է փակեալ, շնչառութիւն յոյժ նեղեալ, քիրտն բնաւ ուրեք ոչ գտանի, այլ եթէ գտանի ևս՝ կարի նուազ և բանի. բայց յայտագին նշանաց ախտակիրն կրէ զնեղուն սրտի, և զծանրութիւն, և զանենգ իմն ծխ-րական, որ առ՝ Ֆէսքլաւէ էթիքա, և հազս կարի տար-ժանաւորս. այս յետին նշանս՝ հասարակօրէն ցուցակ է ախտաւորութեան փայծեղան :

Յաղագս սեղմական նշանաց ասկիտէի, այսինքն Ջրգողութեան որովայնի կամ տոպրին որովայնի.

'Ի դիպուածս ախտիս՝ բաց 'ի վերոգրեալ նշանաց, Ջրգողութեամբ որովայնի լինի յոյժ այտուցեալ, և 'ի դնելն զմի թաթ ձեռին 'ի վերայ միոյ կողման որովայնի, և միւսով թաթիւ թեթևապէս հարկանելով զմիւս կողմն, իսկոյն 'ի ներքս անդ լսելի լինին ձայնք կամ որոտք ջրոց: Մէզն կարի նուազ լինի, կարմիր կամ կզմնտրագոյն, ոտքն ուռուցեալ, մանաւանդ յերեկոյեան պահու, իսկ դէմքն ընդ առաւօտն. և բազուկն՝ յորոյ վերայ ընկողմանի հիւանդն, միայ կարկամեալ, և ծարաւն անընդհատ: Իսկ որքան լնանի որովայնն ջրով, այնքան 'ի վեր ելանէ տիաֆրակմա անուանեալ թաղանթն. ուստի դժուարութիւն մեծ կրէ 'ի տուրևառութեան շնչոյ, մանաւանդ յընկողմանելն: Զարկ բազկերակին լինի թոյլ՝ բայց ստէպ ստէպ:

Ախտաւորին ոչ հեշտեաւ ընկողմանի 'ի վերայ թիկանց առանց ուրուք ձեռնտուութեան. նեղի և տագնապի չորագոյն իմն հազիւ, և երբեմն ևս արիւնախառն թուքս և լործունս ընդ բերանն արձակէ: Հուսկ յետոյ դեղնութիւն երեսաց. ախտն սրտի, յամր տենդն, փքոտութիւն, պընդութիւն որովայնի, նիհարութիւն վերին մասանց են, են առաւել ընդհանուր նշանք այսր ախտի: Որովայնն պարպատի երբև զփամփուշտ օդալիր, և երբեմն իջանէ մինչև 'ի ծունկս, և ջուրք արտահանին, և արձակին յամենայն կողմանց. և ոմանք յախտաւորաց յառողջութեան պատսպարին 'ի ձեռն այդպիսի նպաստաւորութեան բնութեան. բայց այդպիսի դիպուածք յոյժ սակաւք պատահին, և այն ևս յառոյգ հասակի եղելոց: Իսկ եթէ անցեալ իցէ զաւուրբք ախտաժետեալն, հասարակօրէն փոխարկի 'ի քաղցկեղ, և ինքն մահակործան լինի:

Այլ երբև Ջրգողութիւն անապարքա, և Ջրգողութիւն որովայնի 'ի միասին գտանին, յայնժամ ախտն լինի յոյժ վտանգաւոր, թէպէտև ինքն Ջրգողութիւն որովայնի միայնակ ևս գոլով հազիւ ուրեք է առաքինելի, և փարատելի: Եթէ յառաջ գայ 'ի լէուքօֆլէմացիա անուանեալ Ջրգողութենէ, որ պատճառի 'ի մեծագոյն իմն կորուսենէ արեան, կամ յայլ ինչ և իցէ պատահարէ, մարթի դարմանել հեշտեաւ, և առանց աշխատանաց. բայց եթէ յառաջ գայ 'ի լուծողութենէ կամ 'ի հոսմանէ բնական կարգաւ սպառահելոյ, յայնժամ լինի առաւել տարժա-

նելի, և դժուարաբուժելի։ Ո՛չ է պարտ բնաւ յուսա-հատիլ, եթէ ախտս այս պատճառաւ 'ի սուր և 'ի դժն-դակ ինչ ախտէ. որպիսի են տենդն անընդհատ, տենդն հանապազօրեայ, շնչարգելութիւն. ևն։ Այլ յայնժամ պարտ է երկնչիլ և անյոյս լինել՝ յորժամ յառաջ գայ 'ի յերկարատև ինչ ախտէ, որ գոյանայ 'ի մէջ աղեաց, 'ի թոքախտութէ, և 'ի լերդացաւութէ։

Յախտէս յայսմանէ որ ասի՝ աշիթէ, այսինքն ջրգո-ղութի որովայնի, համարի թէ աղջկունք, և կանայք ա-ռաւել բարւոք և դիւրագոյն ճանապարհաւ բժշկին, քան թէ արք. որովհետև 'ի նոսա չլինի այնքան դժնեայ և զօ-րաւոր, որպէս միւս այն ախտն, որ ասի խոռօրիզքս սաք-քալթա։ Եւ եթէ յառաջ գայ 'ի սոսկապէս արգելմանէ միզի, առանց ընթացակցութե այլ ինչ արտաքին ախտի, որպէս պատահի երբեմն, յայնժամ յոյժ դիւրաւ և փու-թով է դարմանելի, և բուժելի. յայսպիսի դիպուածս դէպ լինի երբեմն, եթէ առանց ինչ դեղօրեից՝ միայն բը-նութեն նպաստաւորութբ գտանի առողջութի, որպէս հասարակօրէն հոսմամբ միզի, և երբեմն ևս լուծողութբ որովայնի։

Դարձեալ, համարի ևս՝ եթէ ախտս այս մարթի ա-պաքինիլ արտահանմամբ ջրոյն 'ի պորտոյ բնական իմն ե-ղանակաւ, որպէս յոլով անգամ տեսեն վիրաբուժքն եւրոպիոյ։ Այլ եթէ ընդ ախտիս զուգընթաց լինի և տաղտկութի, թալկութի, վատակրութի, մէզն կարմրերանգ և կարի հոտումն ատելատեսական արեան, թքանելն զա-րիւն, տենդն՝ ընդ սմա համընթաց գտանի ախտիբօլս անուանեալ պալարն ևն, են նշանք և պատահարք կարի գժպհեք. չարագոյն և յաճախակի հազն տայ երկնչիլ վասն ախտաւորութեան լերդի, և գուշակ է ջրգողութե կրծոց։ Փախումն և լուծումն որովայնի կարեն լինել 'ի սկզբանն կարի օգտակարք և փրկարարք, բայց յարատե-ւելն՝ պարտ է երկնչիլ։ Յորժամ ախտս այս պատահի յղի կանանց 'ի յղութե նոցին՝ երբեմն մարթ է նոցա դիւրաւ ազատիլ յախտէս, արտահանելով զջուրս ինչ 'ի ծնանելն անդ. բայց երբեմն հաստատեալ մնայ ուռուցեալ իբրև զառաջինն ըստ օրինակի յղեաց։ Ախտս այս կարէ ձգիլ յերկար ժամանակս, քանզի ականատես եղաք բազում անգամ, եթէ ոմանք ստացեալ զախտս զայս կրեցին զնոյն առաւել քան զտասն, և զ՚12 ամս մեծաւ թշուառութբ։

Յաղագս խնամատարութեան և կառավարութեան ախտաւորաց, և ողջիւք անտանելեաւ ջրգողութեանց, յորժամ 'ի վերայ հասանեն ըստ պատահման, և ենթակայն իցէ ծարէկալ:

Այսպիսի ախտաւորի պարտ է ժուժկալել որքան հնարաւոր իցէ՝ յամենայն ըմպելեաց, մանաւանդ 'ի ջրային հեղանիւթոց: Սակայն եթէ հարկ 'ի վերայ կայցէ տալ նոցա ըմպել ինչ 'ի շիջուցանել զծարաւն, յայնժամ պարտ է 'ի գործ արկանել զչիճուկն կաթին՝ պատրաստեալ ընդ մանանխոյ, կամ այլ ինչ թթուով, որպիսի են հիւթն կիտրոնի, կամ նարընջոյ, և կամ աչէթօզայի: Ուտելեաց արժան է լինել չոր, և ջերմացուցիչ, և բնութ. միզաբերք. այսպիսի են հացն խորովեալ, և խորոված միսն որպիսի և իցէ վայրենի անասնոց: Դարձեալ 'ի խոտեղինաց, որք են բնութ. ջերմացուցիչք և գրգռիչք, որպիսի են մանանեխն, նասթուրցիոն, ռաֆանօ ռուստիքանօ, խաւարն, սոխն, և ս պաքսիմատն թաթախեալ 'ի սակաւ ինչ գինի, կամ յօղի, որք բաց 'ի միզացիչ զօրութէ, ունին ներգործութիւն ինչ մասնաւոր 'ի շիջուցանել զծարաւն: Ոմանք յախտակրաց գործածութէ առացեալ կերակրեղինաց միայն ստացան զկատարեալ առողջութիւն:

Շարժումն և շրջագայութիւն եթէ կարելի իցէ հիւանդին, մեծապէս շահաւոր է և օգտակար 'ի դիպուածս ախտիս. նմին իրի պարտ է նմա սակաւ սակաւ գնալ աշխատել և գործել զերկիր. և յայլ այսպիսի շարժողութիւնս յարատևել որքան հնարաւոր իցէ: Իսկ եթէ անհնար լինիցի առ այսպիսի շարժմունս, հեծեալ 'ի ձորիս գնասցէ ըստ կարողութեան. և յայնժամ ևս այդ օրինակ շարժումն լինի կարի օգտաւէտ: Անկողինք ախտաւորիս պարտին լինել յոյժ կարծր, և օդն սենեկին ջերմ և չոր. իսկ եթէ օդն քաղաքին իցէ խոնաւ, պարտ է փոխել զբնակութիւն; և երթալ 'ի տեղիս ուրանօր գտանի օդն ջերմ և չոր: Հուսկ յետոյ 'ի մի բան բովանդակեալ զամենայն ասեմ, եթէ արժան է 'ի գործ արկանել զամենայն միջոցս, և զհնարս, որով մարթ իցէ գրգռել և շարժել զարտաշնչութիւն մարմնոյ. նմին իրի յոյժ բարւոք է յաւուրն երկու կամ երեք անգամ շփել զմարմին հիւանդին չորացուցեալ շուխայիւ, կամ մորթով ինչ:

Դարմանք և դեղորայք 'ի վար արկանելոյ 'ի փխլուածս
Ջրգողութենէ :

Եթէ ախտակիրն լինիցի երիտասարդ, և ունիցի զօրա-
բեկազմ խառնուածս, մարթ է նմա պատասպարել 'ի կա-
տարեալ առողջութեն 'ի ձեռն սաստիկ և կարի զօրաւոր
փոխողականաց և լուծողականաց, և 'ի ձեռն դեղորէից՝
որք ընդունակ իցեն 'ի գրգռել և 'ի շարժել զմէզն, և
զքիրտն : Ա՛ռ կէս տրամ իբէքաքուանա փոշի արարեալ՝
ընդ կէս ունկի՝ օսախմէլ շիւլլիթիքօի՝ մարթ է յօրինել
փոխողական իմն կարի վայելուչ և պատշաճական վասն
չափահասակաց, բայց միջահասակելով երկու կամ երիս ա-
ւուրս 'ի մէջ փոխողականացն . զգոյշ լինել պարտ է . զի
մի՛ առատօրէն, և յանչափս ջուր արբցէ, մինչև խանգա-
րեալ եղծանիլ զօրութեն նորին . այլ՝ մի կամ երկու բաժակ
գաւաթ ջուրն երեցկի շատ լիցի առ 'ի դիւրապատրաստել
զներգործութիւն : 'Ի միւում աւուր 'ի միջահասարակէ զկնի
փոխողականին, տուր ախտակրին և զհետագայ լուծողա-
կանն : Ա՛ռ կէս տրամ եալապպա փոշի արարեալ . երկու
տրամ՝ քրէմոռ տի թարթառօ, և վեց ցորեան քալօ-
մելանօ . և զանգեալ ընդ բաւականաչափ շիրօբբօ տի ռօ-
զալի՝ արա մի կամ երկու հատադեղ, և կանխաւ ընդ ա-
ռաւօտն տուր կլանել կամ ուտել ախտակրին . և յետ-
այնորիկ որքան սակաւաչափ ջուր ըմպեսցէ, այնքան բա-
րւոք և օգտաւէտ լինի . այլ եթէ յոյժ նեղեալ տագնա-
պի 'ի ծարաւոյ, մարթ է երբեմն տալ ըմպել փոքրիկ սկա-
հակաւ զարգանակ հաւու :

Դարձեալ, պարտ է ախտակրիս յերեկոյեան պահու
յերթալն յանկողին 'ի կիր արկանել զյետագայ դեղն :
Ա՛ռ չորս կամ 5 ցորեան քանֆօրա, և մի ցորեան՝ օպիօ .
և զանգեալ ընդ բաւականաչափ շարապն նարնջոյ, արա
մէն մի հատ, և տուր կլանել . յորմէ առաւօտաբար զհետ-
ագայ թեթև քիրտն . մարթ է ևս 'ի գործ արկանել եր-
բեմն սակաւ քանակութ՟ զշիճուկն կաթին պատրաստեալ
գինեաւ . ևս մարթ է 'ի վերայ ասացեալ շիճկի յաւե-
լուլ փոքրիկ դրգալ մի՝ սպիրիթօ տի քօռնօ տի չեռվօ :

Դարձեալ . յամենայնում աւուր 'ի չորս կամ 'ի հինգ
ժամու միանգամ նոյնպէս փոքրիկ իմն դրգալիւ պարտ
է 'ի վար արկանել զյետագայ դեղորայսն : Ընկալ քօքօլէ
տի ձինեբռօ, սէմէն տի սէնապէ ; ռատիչէ տի ռաֆանօ
ռուստիքանօ . յիւրաքանչիւրոցն կէս կէս ունկի՝ և կէս

լեղր չէնէուէ ուր ճէնէսմթուս ։ Իսկ խառնեալ ընդ մի քսերէս ալէնօ անուանեալ գինւոյ, կմ՞ ուժգին ալքոլի, թո՛ղ մարսիլ 'ի միամեանս՝ ընդ միջոց քանի ինչ աւուրց ։ և ապա զտեալ 'ի գործ արկ ։ Նոքա՝ որք ոչ կարեն 'ի ձեռս բերել զատացեալ դեղորայս, պարտին 'ի գործ արկանել զխառնուրդ սէնէկայ անուանեալ արմատոյ, որ ևս է յոյժ քրտնաբեր, և օգտակար ։ Ականատես եղէ միանգամ, եթէ կրող ոք ախտիս անազարքս՝ բուժեալ ապաքինեցաւ միայն 'ի ձեռն մոխրոյ ճէնէսմթա անուանեալ ծառոյ խառնելոյ ընդ գինւոյ ։

Բայց 'ի սոցանէ, և 'ի սոցին նման դեղոց՝ է և այլ իմն դեղ յոյժ միզաբեր և կարի պատշաճական 'ի դիպուածս ախտից ջրգողութեց, զոր և 'ի բազում ժամանակաց հետէ բազում երևելի բժիշկք ներբողին 'ի կիր առին, այն ինքն է տիճիթալէ բուրբուրէա, յորմէ պարտ է առնուլ մի կամ երկու ցորեան յաւուրն ։ Զայս դեղ բազմօրինակ գրեմ տալ ախտաժետաց ։ Զո՛ր օրինակ ։ 'ի չորս ունկի հասարակ ջրոյ, որ քաղցրացուցեալ իցէ շաքարաւ՝ որչափ և կամք իցեն, արկանի երկու կէս ցորեան՝ 'ի վերոգրեալ տիճիթալէէն, որ լինի ըմպելի ինչ ախորժելի քիմաց, և նման հասարակ օշարակի ։ Թո՛ղ ըմխառնուրդս զայս մարսիլ 'ի միամեանս ընդ միջոց քսան և չորս ժամուց ։ յետ այնորիկ զտեալ զայս, և տուր ըմպել ախտաւորին չորս բաժակ չորս անգամ յաւուրն ։ Երբեմն ևս գրեմ տալ երկու ցորեան 'ի վերոյիշեալ տիճիթալէէն՝ յաւելլով 'ի նոյն մի և կէս տրամ սէնէկա, և վեց կամ եօթն ունկի հասարակ ջուր, և թո՛ղ եռալ՝ մինչև ցամաքել կիսոյ ջրոյն, և ապա զտեալ և տուր ըմպել ախտաւորին 'ի միջոց երկոտասան ժամուց՝ ըստ չափու միոյ ունկւոյ ։ Այս տիճիթալէ բուրբուրեան ունի և զմնասակար որակութիւն, որ 'ի վեր երևի 'ի գործածութէ յաճախակաւոր ։ զորմէ տեսցես լիովին 'ի տառն Տ ։ 'ի կարգի իւրում ։ Նոյնպէս օգտաւէտ է արգանակն չինգուէ ռատիչէ ապէրիէնթի անուանեալ արմատոց ։

Յաղագս խառնուածութեանց և դեղորէիցն ջրգողութեանց անասարգայի և ասքիտէի, և յայլ ամենայն դիպուածս՝ յորում 'ի վերայ գան բոր դատարկման ։

Սառնաւորութիւնն և դեղորայքն, զորմէ վերագոյնն խօսեցաք ։ պատճառեն զառողջութիւն ըստ պատահման միայն՝ եթէ ախտակիրն միճակեալ իցէ բարեկազմ բնու-

թէ. իսկ եթէ ախտքն 'ի վեր եղեալ են 'ի վատթար ինչ նիւ-թոց, կամ յապականութէ ինչ գոյացելոյ 'ի ներքս աղ-եացն, յայնժամ չէ օրէն 'ի գործ արկանել զփսխողա-կանսն, և զկարի զօրաւոր լուծողականսն: Ցայսպիսի դի-պուածս պիտոյ է շատանալ նպաստամատոյց լինելով բնութեան 'ի ձեռն դեղորէից, գրգռելով զդատուցողական զօրութիւն միզի, և պահելով զզօրութիւն հիւանդին, 'ի գործ արկանելով միայն զՋերմագին, և զանուցիչ քօտ-ախալս: Գերապանց դեղ իմն է նիթռօն՝ առ 'ի շարժել զարտաթորութիւն միզի. քանզի ականատես իսկ եղէ, եթէ երիտասարդ ոմն ապաքինեցաւ 'ի դժնդակ իմն ջրգողու-թենէ, որ համարեալ էր անբուժելի և անդարմանելի. միայն 'ի ձեռն այսպիսի դեղոյ, յամենայնաւուր առաւօ-տու՝ առնլով մի տրամ նիթռօ, բաժակ մի պիտուղի-խառնեալ:

Փոշին մինսոխոյ, որ այլ՝ թօլվէրէ տի սգուիլլէ, է նը-մանապէս դեղ իմն ազնիւ, վեց կամ ութն կշիռ ցորեան ընդ 24 ցորեան նիթռօյի, և բաժակ մի ազդու կինամոնի ջրով, յաւուրն երկու անգամ 'ի գործ արկանելով: Դար-ձեալ, ականատես եղէ բազում անգամ 'ի դիպուածս ախտիս՝ մեծի շահաւէտութեան քրէմօռ տի թառթառօյի, որ լուծանէ զորովայնն, և զմէզն. եւս յոլով անգամ պատճառէ զառողջութիւն, եթէ յարատև 'ի գործ արկա-նի 'ի պատշաճաւոր ժամանակի: Պիտոյ է սկիզբն առնել յերկու կամ յերիս աւուրս 'ի գործ արկանել զմի ունկի, և առ սակաւ սակաւ առաւելուլ մինչև ցերկու կամ ցե-րիս ունկիս, եթէ տանիցի ստամոքսն առ այս. և չէ հարկ զմի ունկին միանգամայն առնուլ, այլ բարւոք ևս է բա-ժանելն յերիս կամ 'ի չորս մասունս:

Դարձեալ՝ դեղ իմն ազնուագոյն, և յոյժ վայելուչ, զոր սովոր են 'ի գործ արկանել 'ի հիւանդանոցն լոնտո-ռայի, է այս: Ա՛ռ երկու տրամ ռատիչէ տի ծէնծիա-նա, և նոյնչափ կինամոնի փոշի առեալ, զփոշիացու-ցեալ կեղևն մինսոխոյ, զխաշնդեղ, ղհաստապատուղն դեղոյ, և զայն օշինդրի, յիւրաքանչիւրոցն մէն մի տրամ: Զայս խառնեալ 'ի մի և կէս քսեստ հնագոյն գինւոյ, թո՛ղ մարսել 'ի մխեանս՝ ընդ միջոց քսան և չորս ժամուց. յետ այնորիկ զտեա և 'ի գործ արկ ըստ հաճոյից յա-ւուրն երիցս կամ չորս անգամ: Նոյնպէս շահաւէտ է միլլէֆիէոին ըստ չափու կիսոյ տրամոյ երկիցս անգամ յաւուրն:

'Ի դիպուածս անաղարտս անուանեալ ջրգողութեան առ

վտարուն է առնել երբեմն թեթև ինչ ցնտումն յոտս կմ 'ի սրունս, որով երբեմն ջուրքն արտահանին այտու ճանապարհաւ. բայց զգոյշ լինել պարտ է վիրաբուժին՝ զի մի 'ի կարի խորագոյնս ցետեսցէ, և անդր քան զմորթն անցանիցէ:

Դարձեալ է և այլ դեղ, որ առանց պայրացուցանելոյ գրգռէ զմէզն և զԹուքն. և է այս: Ընկալ կէս տրամ՝ փոշի մկնտախոյ, և կէս ունկի՝ սալէ տի սոտա. և բաժանեա զայս 'ի 12 հաւասարաչափ մասունս, և պարտ է ախտակրին ընդունել յամենայն երեք ժամու մէն մի մասն 'ի վերոյ բաժանեալ դեղոյն մինչև ցչորս կամ ցհինգ անգամ յաւուրն, և վերաբերել արժան է բաժակ մի հասարակ օշարակ. որ Թթուացեալ իցէ փոքրիկ գրգալ մի քացախով, կամ հիւթովն կիտրոնի: Դարձեալ, պարտ է 'ի գործ արկանել ֆօմէնթի սփիրիթօզի, և տէքօթթօ տի քինա՝ առ 'ի աճապարեալ արգելուլ զքաղցկեղն՝ որ հասարակօրէն սովոր է ընդ առաջ եկանել 'ի գիպուածի աստ:

'Ի դիպուածս ջրգողութեան աչքթէկի 'ի գերև եկանել լուծողականացն և քրտնաբերիցն, հարկ է յայնժամ ծակել զփոր ախտակրին առ 'ի հանել արտաքս զգումարեալ շիճուկս կամ ջուրս: 'Ի գործածութեան է այդ հասարակօրէն, յորմէ և չէ՛ մարթ 'ի վեր երևիլ ինչ վտանգի. բայց եթէ լաւ պատահման ծակեալ իցէ ինչ 'ի փորոտեացն տակս ընդ երկար ժամանակս մնալոյ նոցին 'ի մէջ ջրոցն կամ շիճկացն, յայնժամ շուտի ինչ ներգործուի ծակուածն:

Ազնուագոյն դեղ իմն է առ 'ի դուրս վանել զշիճուկս կամ զջուրս 'ի դիպուածս ջրգողութեան աչքթէկի, այսինքն որովայնի, որով առաջի աչաց իմոց ապաքինեցաւ ոմն յախտէս, և է այս: Ա՛ռ մի և կէս ունկի՝ հիւթն երկրորդ կեղևոյ սամպուքօ յորջորջեալ ծառոյ, որ առի սուքօ տէլլա սէքօնտա սքօրցա տէլ սամպուքօ՝ յաւուրն չորս անգամ խառնեալ երկու գրգալ սպիտակ գինեաւ: Բազում անգամ զփորձ առի այսորիկ դեղոյ, և 'ի գործ արկի 'ի բազում յայլ դիպուածս, թէպէտ ոչ միշտ պատճառէ զկատարեալ առողջութի, բայց միշտ ներգործէ և արտահանէ զջուրն կա՛մ ճանապարհաւ կղկղանաց, և կամ միզի: Բազում անգամ դէպ լինի, զի դեղս այս պատճառէ զփսխումն, և այս յառաջ գայ յոլով անգամ 'ի պարուրելոյ ստամոքսի. և յայնժամ պարտ է միջամտել զգործածութի դեղոյս, և յօրինել զփսխո-

զդեղն իւր պատշաճաւոր հասակի և զօրութեան ախտակրին, և յետ այնորիկ վերստին մատուցանել զդեղն, որ բազում անգամ օգտաւէտ լինի, իսկ եթէ փոխէ կամ ործայ զդեղն, յայնժամ չէ օրէն 'ի գործ արկանել և ոչ իսկ զփոխողական :

'Ի վախճանի եթէ անապաքէն կամ աշխէթէ անուանեալ ջրգողութիւնքն պատճառեն 'ի խցողուէ ինչ լերդի, կամ փայծեղան, կամ մեսենտերի ևն, յայնժամ ընդունայն է աշխատանքն, և վտանգն 'ի բուժումն նորին, բայց եթէ 'ի գործ արկանիցին դեղորայք ինչ սեպհականք, որոց ք մարթ իցէ եղծանել և ջնջել զխցողութիւն. որպէս ունիմք խօսել 'ի գլուխ լէ :

Յասացելոցս ցայս վայր քաղեալ երևի, եթէ զխառն դժուարաւ բուժելի են ջրգողութիւնքս այսորիկ սակն իրի փոյթ մեծ ունել պարտ է բժշկին իսկ և իսկ 'ի գործ արկանել զվերոյիշեալ դեղորայսն և զկառավարութիւնս մինչև իցեն ախտքս հաստատեալք :

Յաղագս ԹԷ զի՞արդ պարտ իցէ կառավարել զախտաւորսն 'ի դէպուածս յորում հոսին ջուրքն, և յաղագս հնարից՝ որովք արգելուն վերադառնալոյ նոցին :

'Ի դիպուածս, յորում ջուրքն հոսին, պարտ է 'ի գործ արկանել ախտաւորին զդեղորայս զօրացուցիչս, որպիսի են՝ քինա, էլիսիրն ու վիթրիոլօ, համեմատունք են, 'ի վերայ որոց յաւելուլ և զքաւականաչափ խաշնդեղ, և զամենայն արկեալ 'ի գինի են : Կերակրոցն պարտ է լինել չոր և սնուցիչ, և ախտաւորին պարտ է միշտ շարժումն առնել ըստ կարողութեան առանց խոնջելոյ :

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

Յաղագս Ջրգողութեան հեծոյ, որ կոչի՝ Իտրօբիզիա փէր բէզզօ :

Ախտս այս սովորաբար ունի ընթացս ինչ կարի դանդաղկոտս, և պատահի առաւել 'ի ծերունիս, 'ի յերկարատև ախտագնեալս, 'ի բարձրահայն երգօղս, որոց նշանքն են յոյժ անյայտ և անստոյգ. մինչև բազում անգամ ոչ իմացեալ լինի, բայց եթէ զկնի մահուանն բանալով, և յօշատելով : Ախտս այս ոչ է միշտ միօրինակ. մանաւանդ եթէ յառաջ գայ 'ի թոքամերտութէ, 'ի չըն-

չարչելութէ ; և յայլ ախտից կրծոց ։ Բայց երբեմն դիւրաւ ճանաչի, յորժամ կախեալ կայ 'ի տարբեր ախտից, որպիսի են խոզք կամ խոյլ պարանոցի, սքօռպութօ անուանեալ ախտն, գաղղիական ախտն, ջրգողութն որովայնի, ևն ։

Յաղագս նշանաց ջրգողութէ կրծոց ։

Ընդհանրապէս 'ի յարակցութէ ոմանց նշանաց ևեթ մարթ է ճանաչել, եթէ գտանի ախտս այս ։ Առաջինն այսոցիկ նշանաց՝ է ստէպ ստէպ և դժուարաւ շնչառութիւնն, մանաւանդ 'ի գիշերի 'ի սկզբան անդ քնոյ, յորում յոյժ առաւել դժուարանայ ։ Ոմանք յախտակրաց այնքան տառապին և նեղին, մինչև ոչ կարել ընկողմանիլ 'ի վերայ անկողնոյն, և ոչ կարեն զշունչ առնուլ, բայց եթէ նստելով կորացեալ յառաջկոյս ։ Իսկ միւս նշանքն յառաջ գան 'ի ծանրութէ ինչ, զոր զգայ հիւանդն 'ի վերայ ստոծանի անուանեալ թաղանթի կամ միջանի, հանդերձ ցաւով իւիք 'ի վերայ կրծոցն ; կամ 'ի յուսս, կամ 'ի բազուկս ․ հազն միշտ լինի չոր քան թէ խոնաւ ․ ոմանք 'ի սկզբան ախտիս թքանեն զարիւն ․ իսկ և ոմանք ոչ թքանեն, և ոչ իսկ հազս ունին ։

Սովորաբար ընդ ախտիս զուգընթաց լինի և ջերմութիւն ինչ մեղմ, որ ասի ֆէպրէ լէնթա ․ զարկ բազկերակին լինի մանր, անհամաձայն, և ընդհատ ․ ծարաւն երբեմն լինի սաստիկ, բայց ոչ որպէս 'ի դիպուածս ջրգողութն որովայնի ։ Սովորաբար ուռոյցն 'ի վեր երևի 'ի շրթունս, 'ի ձեռս, 'ի սրունս, 'ի կուրծս, 'ի բազուկս, և 'ի գէմս ․ որովայնն լինի անգագոյն, և եղունգքն կարկամեալ, ևն ։ Են և այլ նշանք, որպիսի՝ դողդոջումն սրտի, քիրտն գիշերային, ցաւն միջաց, նուազութիւն կամ առատութիւն միզի, և այլ պատահարք հասարակք միւս ախտից ։

Խնամատարութիւն և դեղորայք պահանջեալք 'ի դիպուածս ախտիս ։

Եթէ ուրեք ուրեք առձայնի ախտս այս անբուժելի, պարտ է 'ի միտ առնուլ, եթէ այդ ասի ոչ վասն պակասութեն դեղորէից՝ 'ի ձեռն որոց մարթ իցէ դիմամարտիլ ընդ ախտիս ․ քանզի դեղորայքն, որոց վասն վերագոյնդ խօսեցաք, մարթին երբեմն 'ի դիպուածս յայս գալ 'ի

պէտս. որպէս մինսուխն. սախմէլ չիլլիթիքօն, օղեաւ բաղադրեալ մինսուխն, օշարակն մինսուխոյ, և՛ն, են առաւել ներգործիչք 'ի դիպուածս ջրգողութեան կրծոց: Նոյնպէս և քէռմէզ մինէռալէն ըստ կարծեաց բազմափորձ և հմտագոյն հեղինակաց՝ է դեղ իմն կարի ազնիւ և օգտաւէտ: Օշարակն մինսուխոյ, որ ասի՝ սախմէլ չիլլիթիքօ, փոքրիկ գդալով մի եդեալ 'ի սկահակ և խառնեալ արգանակաւն թիլիօ անուանեալ ծաղկան՝ տուր ըմպել ախտաւորին յաւուրն երկու անգամ:

Դարձեալ, ընկալ աքուա տի պօռռաճինէ, և տի քառռօ սանթօ՝ յիւրաքանչիւրոցն երկուս ունկի, մի ունկի՝ սախմէլ չիլլիթիքօ, և երկու ունկի՝ շիլօբբօ տի թուսիլլաճինէ. խառնեա՛ բարւոք, և տուր հիւանդին յամենայն ժամու մի կամ երկու գդալ: Իսկ յորժամ 'ի գործ արկանի օշարակն մինսուխոյ, յայնժամ պարտ է 'ի բաց թողուլ զսախմէլէն, կամ շիլօբբօ տի թուսիլլաճինէն, և խառնեալ 'ի միասին զօշարակն մինսուխոյ ընդ նոյնչափ ջրոյ 'ի գործ արկանել, զոր պարտ է բաժակաւ մատուցանել, կամ խառնել ընդ հասարակ ըմպելւոյն: Զքէռմէզ մինէռալէն արժան է 'ի սակաւաքանակ մասունս բաժանել 'ի կէս ցորենոյ մինչև ցմի ամբողջ, և խառնեալ ընդ շաքարի 'ի գործ արկանել յաւուրն երիցս կամ չորիցս անգամ յարատևել ընդ երկար ժամանակս:

Հարկ է լաւծողականս յօրինել ախտաւորիս երբեմնապէս ընդ շիլօբբօ տի սբինն չէրվինօի, կամ սոսկ մի և կէս ունկի ջրով խառնելոյ ընդ շիառաբբաի հեռագայ եղանակաւս: Ընկալ շիառաբբա փոշի արարեալ կէս տրամ, և եռացո՛ զայն մի բաժակ ջրով. յորոյ վերայ յաւել կէս ունկի՝ սբինն չէռվինօ: Բայց երբեմն հարկ լինի հաբ կազմել. և յայնժամ այսպէս կազմեա՛: Ա՛ռ շիառաբբա 12 ցորեան, 24 ցորեան փոշիացուցեալ ռապառպառօ, և կէս տրամ քռէմօռ տի թառթառօ, և շիռօբբօ տի սբին չէռվինօ բաւականաչափ առ 'ի կազմել երկու կամ երեք հատադեղս: Դեղ իմն ազնիւ և գերազանց քան զայլ դեղորայս՝ զորոց ցայս վայր խօսեցաք, է բռուաչէնթէզին, այսինքն շիճկահանութիւն կամ ջրահանութիւն, որ է գործողութիւն ինչ վիրաբուժից, եթէ քաջարուեստ բժիշկն 'ի ձեռն նշանաց քաջ 'ի միտ առցէ զէակութիւն ախտոյս. որով մարթ է արմատաքի խլել զախտն. բայց պարտ է միշտ և յաւէտ փոյթ մեծ ունել յարտահանել զշիճուկս կամ զջուրս, որք ժողովեալ են 'ի կուրծս. որք կրճիմն, և խափան լինին օգտաւէտ ներգործութեան դեղոյս:

# ՅՕԴՈՒԱԾ Գ.

Յաղագս ջրգողութեան գլխոյ, կամ ուղղոյ, որ այն՝ Իտրօչէ-ֆալօ, կամ Իտրօփիզիա տէլ չէռվէլլօ։

Ջրգողութիւն այս՝ որպէս ասացաք 'ի սկզբան անդ գլխոյս, է հաւաքումն ինչ ջրոյ, որք փակեալ մնան 'ի խոռոչս ուղղոյ՝ առանց բնաւ հաղորդութեան ունելոյ ընդ այլ լուծականս և հոսականս, և հազիւ երբէք է ապաքինելի, մանաւանդ եթէ իցէ հնացեալ։ Ախտս այս հասարակօրէն յաճախ գտանի յերախայս. և յաւէտ 'ի Ճինէվրա, 'ի Վիէննա, և 'ի Էտիմպուրկ անուանեալ քաղաքս։

Յաղագս պատճառաց ջրգողութեան գլխոյ։

Ախտս այս բազում անգամ է ընքնեկ՝ և ոչ յայլ ախտէ ծագեալ. փոքրիկ մանկունքն են յոյժ ենթակայ այսպիսի ջրգողութեան, մանաւանդ 'ի ժամանակի, յորում ծագին ատամունք նոցին։ Երբեմն ևս պատճառի 'ի հանապազօրեայ և 'ի հրատապ ջերմախտէ, 'ի յերկարատև հիւանդութենէ, 'ի յանկարծօրէն և 'ի յորդ դադարելոյ արեան կամ գոլորշեաց, 'ի յերկիւղէ, 'ի կարի իմն ակարութենէ ջղաց և մանրաթելից, 'ի բորբոքմանէ և 'ի յամբոխմանէ ուղղոյ, 'ի հարուածոց գլխոյ, 'ի յուժգին շարժմանէ ուղղոյ, որ պատճառի 'ի նուաղմանէ սրտի, 'ի յափրուէ, 'ի պտուտմանէ գլխոյ, 'ի քնափուէ, 'ի բանի շարժմանէ մկանանց կամ ջլաց, ևն. 'ի ցուրտ և 'ի խոնաւ հողմոց՝ յորժամ յերկար ժամանակ գլխաբաց մնասցէ ոք զկնի հիւանդութեան կամ աշխատանաց և քրտնելոյ։ 'Ի վախճանի յայնմ ամենայնէ որք են առիթ արգելլոյ զարտաշնչութիւն մարմնոյ, և խափանելոյ զպատահական շրջանս արեան, և աւիշից։

Յաղագս սեպհական նշանաց ջրգողութեան գլխոյ։

Հասարակօրէն ախտակիրն զգայ զցաւ, զծանրութիւն, և զպատոյտ գլխոյ, որում և զուգընթաց լինի տագնապ մեծ, և անձկութիւն սրտի։ Զարկ բազկերակին 'ի սկզբան անդ լինի մեղմագոյն, և ապա սրագոյն։ Մէզն երբեմն հոսի սակաւաքանակ, և երբեմն առատօրէն, գեղնագոյն

նուջինչ։ Այսքան լինի կարմրերանգ, շլագոյն, դեղ, և բըղ-ձոր. երևակայութիւն, և կերպարանն խանգարին։ Ան-տակիրն որձայ կամ ժայթքէ զմրուր ինչ ծանր, սպիտակ ՚-ջինչ։ Զկնի այս ամենայն նշանաց առ սակաւ սակաւ ՚ի վերայ գայ այլափոխութիւն, քնափութիւն, գելումն կամ կծկումն մկանանց, մանաւանդ ՚ի մկանս աչաց, և այլ տեսակատեսիլ նշանք անդամալուծութեան։

Ցայսմ յետին դիպուածի պարտ է մեծապէս զգուշ լինել ՚ի վերայ անձին տխտակրիս. զի այդ օրինակ այլա-փոխութիւն, քնափութիւն, խանգարումն երևակայութեանն, գուշակ են անվրէպ ապերջանիկ ելից նորին։ Անտա այս բազում անգամ ևս առաւել ՚ի կուրութիւն, ՚ի խլու-թիւն, ՚ի խելագարութիւն, ՚ի վերնոտութիւն, ՚ի մշտատև գըր-կացաւութիւն, ՚ի սրտախօթութիւն, յանդամալուծութիւն, ՚ի ջղային թմաւորութիւն, և յայլ և այլ ախտս եռացու-ցիչ ոգւոց։ Զուգքն ուղղոյ՝ որք արտաքս հոսին զկնի հատանելոյ և բանալոյ զգանկն գլոյ, գրեթէ միշտ լինին ցեղնագոյն, և ջինչ։

Յաղագս դեղորէից, զորս մարթ է ՚ի գործ արկանել ՚ի դե-պուածս Ըրգողութեան Գլխոյ։

՚Ի դիպուածս յայս մեծի զգուշութեան պէտք են առ ՚ի գործ արկանել դեղորայս։ Նախ՝ պարտ է փութանա-կի դնել լայնաբաց վէշիքաթօրիօ ՚ի վերայ ծոծրակի. նոյնպէս պարտ է տզրուկս դնել ՚ի վերայ երասատանի։ Իսկ փսխողականն, և լուծողականն հարակաւորապէս պահանջի ՚ի դիպուածս յայս. զորս պարտ է կրկնել նկա-տեալ ՚ի պարագայս տկարութեան, և հասակի ախտակրին, և սաստկութեան նշանացն ախտիս։ Եւ իբրև վերոգրեալ, կամ այլին նման դեղորէիւք ոչ պակասեսցի սաստկու-թիւն նշանաց, եթէ չև ևս իցէ կազդուրեալ ախտակիրն, ոչինչ արգելք կայ գործածութեան մռդկի, որ ասի մէրքուրիօ։ Զոր օրինակ։ Առ կէս ունկի՝ զտեալ մռդիկն, և մի ուն-կի՝ քաղցրաւենի վարդի, խառնեա զայնդեամ ընդ միմեանս, արա տամնևութ հաբս, և այսպիսի հաբք շըջապատեալ փոշւովն կինամոնի, տացին յերկու հատէ մինչև ցվեց՝ չորս անգամ յաւուրն։

Նոյնպէս օգտաւէտ է պէօնիթօ յորջորջեալ բոյսն, որ այսպէս բաղադրի։ Քասն կշիռ ցորեան՝ էսթրաթթօ ա՛ պէօնիթօ, և ուօզ տի սամպուքօ՝ ուչափ ինչ պէտք են վասն շինելոյ զ48 հատադեղս, զորս շըջապատեալ է փոշ-

ռոմս երեցկի ։ 'Ի հասարակօղս ստաւ պարտ է ախտաժետին սկիզբն տանել յերկու կամ յերիս աւուրս 'ի գործ արկանել մէն մի հատ, և առ փոքր փոքր առաւելուլ մինչև ցչորս հատս, եթէ տանիցի ստամոքսն ։

Դարձեալ՝ ֆոսֆոռոն ըստ կարծեաց բազմափորձ և ներհուն հեղինակաց է դեղ իմն կարի ազդու և շահաւէտ ի դիպուածս ջրգողութեան գլխոյ, որ այսպէս լինի․ վեց կշիռ ցորեան ֆոսֆոռո, և երկու ունկի՝ գաղջ իւղն քաղցր նշոյ, խառնեալ բարւոք լուծեա, և ապա երկու կամ երեք ժամուց տուր ըմպել հիւանդին 5 կամ 6 անգամ յաւուրն՝ փոքրիկ գդգալ մի առ իւրաքանչիւր նոււագ ։ Յայսպիսի դիպուածս ևս երևին յաւէտ օգտակար դեղորայքն զօրացուցիչք, և մեղմացուցիչք․ որպիսի են եթեռս խառն ընդ թինթուռս աղ․ սուքչինօի, կամ ընդ թինթուռս ար վալերիանայի, և կամ ընդ թինթուռս ար քինա քինայի ։ Նոյնպէս ոչ սակաւ օգտէ ափիոնն, զոր պարտ է չափով զգուշութեամբ ընծայել ։

## ՅՕԴՈՒԱԾ Դ.

Յաղագս ջրգողութեան մասնաւոր ինչ պարկի, որ առ՝ խորօքն գլխոյ սաքանն ։

Ախտս այս՝ որպէս ասացաք վերագոյնդ, է գումարումն ինչ ջրոյ, որք արգելեալ մնան 'ի պարկ կամ 'ի քսակ ինչ մասնաւոր՝ առանց բնաւ հաղորդութեան ունելոյ, և հոսելոյ յայլ մասունս մարմնոյ ։ Սովորական կայան ախտիս այսորիկ է ստորին որովայնն․ թէպէտ բազում անգամ առ փորձիւ խնկ․ ծանուցեալ, և տեսեալ գտանիլ սորա շրջափակեալ զլերդամբ, և զփայծաղամբ․ բայց այդպիսի դիպուածք մարթին լինել յոյժ ցանցառակի ։ Բազմատեսակ է ախտս այս․ բայց գլխաւորաբար բաժանի 'ի իտրօբիզիա տէլլա մադրիչէ․ այսինքն ջրգողութիւն արգանդի, կամ պղուակաւան․ 'ի իտրօբիզիա տէլլ՝ օվայէ, այսինքն ջրգողութիւն ձուարանի․ 'ի իտրօբիզիա տէլ բէրիթօնէ․ այսինքն ջրգողութիւն որովայնամաշկի․ 'ի իտրօբիզիա տէլլէ թուպէ․ այսինքն ջրգողութիւն Ֆալլօբեան փողոյ․ (որք են երկու անօթք զետեղեալք 'ի վերին և 'ի կողմնական մասունս յատակի արգանդին․) 'ի իտրօբիզիա տէլլ՝ էբիբլօօն, այսինքն ջրգողութիւն աղեխացամաշկի․ և 'ի իտրօչէլէ, որ է առդ ինչ ջրալիր փոշտամնկութեան ։

Բաղում անգամ այդպիսի տեսանեք Ջրգողութեանց զու- գընթաց լինելն ընդ Ջրգողութեան ստորին որովայնի, և յայդպիսի դիպուածս անհնարին է փարատել զայնս, և ոչ Ջուրքն իսկ որովայնի մարմնին հատիլ արտաքս գործա- ծութեամբ դեղորէից ։ Իսկ պատճառք ախտիցս այսոցիկ են գլխաւորին նոյն պատճառքն Ջրգողութեանց ստորին որովայ- նի, և անապաքայի ։

Յաղագս նշանաց Ջրգողութեան մասնաւոր ինչ դարձի ։

Ջրգողութիւնս այս բացայայտ ճանաչի յուռուցէ ինչ 'ի վեր երևելոյ 'ի ստորին մասունս որովայնի 'ի ձև ար- գանդի, և եւս 'ի կակղութէ և 'ի ցրմանէ այսր ուռուցի ։ Երբեմն ախտս այս ձևակերպի 'ի յղութի, և յայնժամ Ջուրքն գումարին 'ի յարգանդն, կամ յայլ մօտաւոր կողմանս զուաւկատանն, որպիսի են աղուն կամ ծինն, որ ասի՝ քօռիօն, և ներքին աղան, որ կոչի՝ ամնիօս կամ ամնիօ ։ Եւ ախտս այս յայն սակս դժուարաւ ճանաչի, վասն զի երբեմն զոյգ ունի ընդ իւր զհաւասարանման նը- շանս յղութե. միայն 'ի դիպուածս ինչ սաստկիւ ճա- նաչի գոյութիւնն ախտիս, յորժամ 'ի սկզբան անդ հի- ւանդութե յանձին զգայ ախտակիրն դոյանալ յարգան- դի իւրում զգնդակ ինչ, կամ ուռոյցս, որ սկսանի սա- կաւ սակաւ աճիլ, և ամբառնալ զորովայնն ըստ օրի- նի յղեաց, բայց առանց ինչ անհանդստութե, և առանց երբեք փոփոխման գունոյ մորթոյ, մանաւանդ եթէ ոտքն, սրունքն, և ազդերքն չիցեն ուռուցեալք՝ բայց եթէ 'ի վախճանի. և եթէ որովայնն ձևակերպի միշտ այլ ազգ- իմն եղանակաւ, յայնժամ պարտ է ստուգել, եթէ այս է ախտն ասացեալ իտռօբիզիա ութէրի մանթուիչէ, քանզի այսոքիկ նշանք ոչ ունին տեղի 'ի դիպուածս ա- յղեթեի ։

Իսկ ամուլ և անծնունդ կանայք են առաւել ենթա- կայ այսմիկ ախտի ։ Իտռօբիզիա ուէրի՝ օվայէ՝ է յոյժ յա- ճախակի, բայց յոյժ դժուարաւ է ճանաչելի քան զմա- թռիչէին ։ Սեպհական նշանք՝ որովք մարթ է կասկա- ծանօք գուշակել զամենէ՝ են ուռոյցքն, ցաւքն 'ի մա- սունս քնճոց երանաց. (որք են մասն մարդկային մարմնոյ ընդ աղեր և ընդ առաւկանս)։ Հոսումն չէ այնքան առատ՝ որպէս 'ի դիպուածս Ջրգողութե ստորին որովայնի, այլ հազիւ գտանի երեսուն կամ քառասուն կաթիլ հիւթ 'ի դիպուածս ախտիս ։ Բայց որովհետև հիւթս այս հաստա-

բանկօրէն է մածուցիկ և առատ, որ երբեմն փակեալ մնալով յայլ և այլ խոռոչս՝ չլինի բացայայտ հոսումն, վասն այսորիկ ախտս այս չճանաչի՝ բայց եթէ զկնի մահուանն յօշոտելով կամ բանալով զմարմինն. յայն սակս ոմանք կանայք առաւել քան զ30 զ40. և զ50 ամս կրեցին զախտս զայս ։ Աղջկունք, և օրիորդք չեն այնքան ենթակայ ախտիս, այլ առաւելապէս են ենթակայ ամուլ և այրի կանայք՝ յորս պակասի արիւնն ամսականն, և յայն սակս միշտ միշտ կրեն ։

Ջրգողութիւն որովայնամաշկի, որ ասի ինֆիամմացիօնէ տէլ բէռիթօնեօ. հեւանեայ գանգատիս և մահացուցիչ. բայց յոյժ յամր, և մեղմով ։ Ախտաժետեալքն ունին անկարուստ զսնուցողական զօրութիւն. իսկ զծարաւն՝ սակաւ կամ բնաւ ոչ ունին ։ Ախորժակն նոցին բարի, մարսողականն զօրաւոր, և քունն առատ, իսկ մէզն ըստ սովորութեան. և միով բանիւ ասացից, կատարեն զամենայն կարեւորականս բնութեան ըստ պայմանի բնութեան, ոչ ունին բաց յուռուցէ՝ այլ ինչ նեղութիւն, և անհանգստութիւն մարմնոյ ։

՚Ի դիպուածս ախտիս համարի, եթէ պտուղն սակաւ ինչ մնի ՚ի ներքս, և երբեմն իսկ ջուրքն եղանեն ՚ի պտղտոյ՝ հերձմամբ և պատառմամբ այսորիկ մասին ։ Ընդհանուր նշանքն ջրգողութե մանաւանդ ինչ պարկի են դժուարութիւն, զոր ախտաժետքն զգան ՚ի հոսման ջուրց. որովհետեւ բազում անգամ փակեալ արգելականն մնան ՚ի փոքրիկ խոռոչս անդամոց. հեղանիւթն որ արտաքս ելանէ ճանապարհաւ բռնութեամբ, դրեթէ միշտ լինի ընդարմացեալ արիւնախառն, և զազրահոտ ։ ՚Ի վախճան ամենայնի, ՚ի դիպուածս ախտիս՝ ուռոյցն որովայնի լինի անհամաձայն, և փոփոխական, և ախտաժետքն անկարօտ պահէ զգոյնն երեսաց և բովանդակ մարմնոյ, և զախորժակն ։

Յաղագս կառավարութեան և դեղորէից ախտիս ։

Կառավարութիւն ախտիս է նոյն իսկ ընդ կառավարութեան ջրգողութեանց առաջին որովայնի, զորոց խօսեցաք ՚ի յօդ. ա. այսր գլ ։ Բայց յորժամ հարկ ՚ի վերայ կայ արտահանել զջուրն ՚ի ձեռն գործեաց, յայնժամ պարտ է և ծեղքուածոյն լինել համաձայն չիւթէի (այսինքն խողովակին,) ապա թէ ոչ՝ բացարձակապէս հարուածն լինէր անբաւական ։ Դարձեալ, պարտ է զծեղքուածն

մխացուցանել և զգուշութիւն պահպանել՝ առ 'ի դիւրացուցանել զկաթիլն հիւթոց, որք գումարին անդ, և առ 'ի փութով, և 'ի սուղ ինչ ժամանակի բուժել զայն ։

'Ի դիպուածս ջրդողութեան արգանդի, որ իբր զլղացումն ձևակերպի, կամ ընդ յղացմանն զուգընթաց լինի, չէին սահմանեալ այնքան բազում դեղորայք առ 'ի գործ արկանել․ որովհետև ջուրքն արտահանին երբեմն 'ի ծնանելն անդ, և երբեմն յընթացս անդոյ․ բայց յորժամ հաւաքումն այս կամ արտահանումն ջրոց զանցանէ ըստ չափ, միշտ լինի վտանգաւոր, մանաւանդ զի ականատես իսկ եղաք մահուան անանց կանանց զկնի արտահանման ջրոյն, կամ 'ի նոյն իսկ վայրկենի, և կամ նախ քան զծնանելն․ այլ եթէ յերկարի յոյժ ծնանելն, յայնժամ յանգամայնս պարտաւորեալ իսկ և իսկ պարտ է գիտել 'ի քաջարուեստ ումն բժշկի, և առնուլ 'ի նմանէ զայնպիսի պատշաճաւոր լուծողական և զՋրաքարշ դեղորայսն, որ ասի իտրէնակոկի ։

Իսկ յորժամ քաղցրացեալ ձանձրացի և թուլացեալ երևի, չլինել ախտս յղութեան, յայնժամ բաց յընդհանուր դեղորեից ջրդողութեան ստորին որովայնի, պարտ է 'ի գործ արկանել զայլ կառավարութիւն սահմանադրեալս 'ի դիպուածս արգանդի՝ առ 'ի փութով արտահանումն ջրոցն, ընդարձակելով զճանապարհն խողովակի․ բայց յայսմ վայրի մեծ ունել պարտ է, և զոյն գործել առ 'ի կակղացուցանել յառաջագոյն զճանապարհն արգանդի գործածութեամբ բաղանեաց ֆօմէնթօի, և այլ կակղացուցիչ իրաց ։

Ջրդողութիւնն ձուարանի, որ ասի՝ իտրօբիզիա տէլլ՛ օվարիօ, է ախտ իմն վարկուցեալ անբուժելի․ վասն որոյ զդեղորայսն 'ի գործածելս 'ի դիպուածս ջրդողութեան ստորին որովայնի, թէպէտ և նկատմամբ այսորիկ ախտի՝ եղեն յոյժ անզօր և տկար գործածութեամբ, բայց 'ի վերայ այսր ամենայնի արժան է 'ի գործ ածել․ և առաւել օգտակար միջոցն և հնարն՝ է հոսել զջուրսն արտաքս՝ բանալով ըզձեղքուած ինչ 'ի վերայ կշտին ։ Լուաք ասել յոմանց, եթէ կին ոմն 'ի հասակի 50 ամաց գործածութեամբ այսր հնարից ստացաւ զկատարեալ առողջութիւն ։

'Ի դիպուածս ջրդողութեան որովայնամաշկի, որ կոչի իտրօբիզիա տէլ բէռիթօնէօ, եթէ ենթակայն լիցէ երիտասարդ և քաջառողջ ինչ բնութեան միջակեալ, և եթէ ռեռոյցն չիցէ ստացեալ տակաւին, և եթէ ջուրն՝ զոր

արտահանմանն ճանապարհաւ ճեղքուածոյ չիցէ ողողու-նեալ և գարշահոտեալ, մարթ է յուսադիր լինել յայնժամ 'ի բուժել զայն. իսկ յայլ ամ դիպուածս ներհակականս՝ ապաքինումն ախտիս յար և յաճախ է կասկածելի : Դեղո-րայքն են գլխովին նոյն ընդ դեղորէից ջրգողութեան ստո-րին որովայնի, զորոց ճառեցաք վերագոյնդ. բայց ճեղ-քուածն, որ է հնար իմն յոյժ պատշաճեալ և կարևոր 'ի բուժումն ախտիս, պարտի լինել 'ի մասունս առաւել յարակցեալս պարկին. և միանգամայն արժան է լինել մեծագոյն և լայնագոյն առ 'ի կարող լինելոյ զինի արտա-հանելոյ զջուրն դնել 'ի ներքս զփիլիլթայ կամ զպատրոյգ իմն թրջեալ իւղովն կամ ոգւովն զինւոյ, որով մնայ ճեղ-քուածն բացեալ մինչև 'ի բուժումն ախտիս :

'Ի դիպուածս, յորում ջուրքն արտահանելին ճանա-պարհաւ պտրոյ, որպէս ասացաք, յայդմիկ դիպուածի երբեմն չէ՛ պարտ բնաւ զանց առնել զճեղքուածն, զոր-մէ յիշատակեցաք անդէն. որովհետև բնաւար հատումն ջրոցն 'ի պտրոյ անտի՝ չէ բնաւ բաւական :

Ջրգողութեան ֆալլօպեան փողոյ, որ առ՝ խառօբիզեա տեղէ թուի, ենթադրեալ եւ եթէ լիցէ քաջ տառա-պեալ. բայց 'ի վերայ այսր ամենայնի գործ մեծ է և դը-ժուարին զանազանել զայն 'ի ջրգողութենէ ձուարանի. վասն որոյ յայսպիսի դիպուածս պարտ է ընթանալ և վարել ըստ կանոնի, զոր 'ի վեր անդր քաջայայտ ցուցաք : Բայց քաջայայտ իսկ է ամենայն ումեք, եթէ ամենայն տեսակք ջրգողութեանց՝ զորոց յայս վայր խօսեցաք, պէտս ունին միշտ խորհրդոյ ճարտար բժշկի՝ յարմարանալ և 'ի հաստատել նոցին. վասն որոյ անմտութի և անխոհեմութի մեծ գործեն նոքա, որք անգէտ գոլով արուեստին՝ ըստ խորհրդոց մտաց իւրեանց ձեռնամուխ լինին 'ի բուժումն ախտիս :



# ԳԼՈՒԽ Թ.

## Յաղագս դալկան, որ ասի՝ իթթէրուիցիա:

Ախտս այս բազմայայտ ճանաչի 'ի դեղնութենէ ինչ 'ի վեր երեւելոյ 'ի յաչս եւ 'ի բովանդակ մորթս մարմնոյ, նաեւ 'ի սաստիկ կարմրութէ միզի, եւ 'ի չեկագոյն հոսմանէ քրտանց: Արդ՝ սա 'ի հասարակի խօսելով, չէ՛ այնքան գժնեայ եւ վտանգաւոր, որպէս սեւ դալուկն, որ կոչի՝ իթթէրուիցիա նէռա, սակս պատճառելոյ առաջնոյն 'ի դեղին մաղձէ կամ յայլ ինչ եւ իցէ պատահարէ: Իսկ եթէ յառաջ գայ 'ի սեւ մաղձէ, յայնժամ յորջորջի՝ դալուկն սեաւ, եւ պարտ է երկնչիլ վասն ախտաւորութե լերդի, եւ փայծեղան. եւ գուշակէ զփտախտութե: Մինն 'ի նշանաց այսր սեաւ դալկան՝ է կանաչախառն կապոյտ գոյնն՝ որ նախապէս 'ի վեր երեւի 'ի դէմս, եւ ապա առ սակաւ սակաւ բանացեալ տարածանի ընդ բովանդակ անօթս արեան եւ մարմնոյ, եւ սպիտակուցն աչաց փոխարկի մթին դեղին: Ճանաչի եւս 'ի միզէ, որ հասարակօրէն փոխարկի 'ի գոյն բոհրեալ սրճոյ:

## Յաղագս պատճառաց դալկան:

Ախտս այս մարթի յառաջ գալ յամենակերպ պատճառաց, որք խցանեն զանցս քամեալ հիւթոցն մաղձի. որպէս խածուածն կատաղի շանց, եւ խայթուածն օձից, եւ այլ թունաւոր սողնոց: Դարձեալ, հնա՛ր է ախտիս պատճառիլ 'ի մաղձային, եւ 'ի յարգանդային խթէ, 'ի յանսանձ ցանկութէ, 'ի յերկիւղէ, 'ի տրտմութէ, 'ի հոգածութէ, 'ի կարի զօրաւոր փսխողականէ կամ 'ի լուծողականէ, 'ի գործածութէ սեղմիչ, եւ պնդացուցիչ դեղօրէից, 'ի ցրտոյ, 'ի յարգելականութէ կամ յանչափ յորդառատութէ որ եւ իցէ սովորական հոսմանց, 'ի միջահատական, եւ 'ի քառօրեայ տենդից, 'ի յախտագնութէ եւ 'ի բորբոքմանէ լերդի, 'ի յախոնդանոտութէ, եւ 'ի յղութէ: Կարծր եւ գժուարամարսելի գոյացութք յառաջեալք 'ի ներքս 'ի ստամոքսն եւ յաղիս, որպէս աճառք, կորիզքն պտղոց, չիքօլաթան, սուրճն, եւն, նմանապէս կարեն յառաջ բերել զնոյն ախտն:

## Յաղագս Նշանաց դալկան ։

Ընդ տախտակս գտանի և անձկութիւն ինչ, և չորութիւն մորթոյ ։ Ախտակիրն զգայ յանձն ցցաւ ինչ և զձանձրա-ցուծն . գոյն աչաց և մորթոյ՝ որպէս ասացաք, լինի դեղ-նագոյն, և մէզն երբեմն կարմրագոյն, և երբեմն դեղ-նագոյն . շնչառութիւնն կարի դժուարին, քրտունքն և լորձունքն դեղնագոյն ։ Ախտակիրն ործայ, և սակաւ ըն-տէպ փուքս արտաքսէ, և զգայ դառնութիւն ինչ և անա-խորժութիւն ՚ի բերանն, և ծանրութիւն իմն ՚ի կուրծս ։ Զարկ բազկերակին լինի թոյլ և նիհար, և բազում ան-գամ հարկանէ որպէս ՚ի դիպուածս անձգից ։ Եւ ՚ի վեր երևի ցաւ և ձգտումն ինչ ՚ի սահմանսն ախտադանաց, (որք են անդիք լերդի և փայծեղան) ։ Ո՛չ է պարտ բնաւ յուսահատիլ, որքա խօսեցաք ՚ի վեր անդր, եթէ ախտս այս պատճառի ՚ի դեղին մաղձէ և կամ յայլ ինչ և եղէ պատահարէ ։

Այլ յայնժամ պարտ է երկնչիլ . յորժամ ընդ տախ-տխս զուգընթաց գտանի անաւ դալուկն, կամ չըգողութին կամ ախտադանութիւն և կամ փտախտուն . մանաւանդ եթէ անցեալ իցէ զաւուրբք ախտակիրն ։ Եւ եթէ յա-ռաջ գայ ՚ի սաստիկ և ՚ի զօրաւոր փոխողականութենէ կամ ՚ի լուծողականութենէ, և կամ ՚ի յորդառատ հոսմանէ ինչ թանչից, յայնժամ ախտս այս յոյժ երկարատև է ։ Բայց եթէ պատճառի ՚ի բորբոքմանէ և ՚ի խուլական ինչ ու-ռուցէ լերդի, կամ ՚ի պօռպուտիցս անուանեալ ախ-տէ, յայնմ վայրի լինի առաւել տարժանելի և դժուա-րաբուժելի ։ Իսկ եթէ ընդ տախտխս համագոյգ գտանիցին և վիքարկց չըգողութի, յածախակի ժայթքումն, ծնչումն կրծոց, նուաղումն սրտի, արիւնախառն հոսումն որո-վայնի, սրճագոյն կամ կանաչախառն անաւ միզումն ևն, են նշանք վտանգաւորագոյնք ։

## Յաղագս խնամատարութենէց, զորս պարտ է ՚ի կիր արկանել ՚ի դիպուածս դալկան ։

Ախտակիրն պարտի հրաժարել յամենայնկերպ ոգևո-րող հեղանիւթոց, և ՚ի դժուարամարսելի կերակրեղէ-նաց ։ Սովորաբար պատշաճական կերակրեղէնք են ար-գանակին որթու, և հաւու, հացն բարւոք եփեալ, և պտուղք հասունացեալ ։ Եւ ըմպելին՝ կաթն կովու, և

Իբր քառորդ մի ժամու, ապա զատեա, և ձեռուցէ երկու գրդալ սեղանոյ. յոր յաւել մի սպիտակուց թարմ ձուոյ, և զանգեա բարւոք, և ապա տուր ըմպել ախտակրիդ յառաւօտեան պահու երեք կամ չորս ժամ յառաջ քան զկերակուրն։

Սակայն 'ի մէջ սոցա ես ընտրեմ 'ի սկզբանն զայնս, որք պատշաճաւորք են և օգտակարք 'ի գիտուածս դալկան, մանաւանդ սեւոյ դալկան։ Ա՛ռ չորս լիտր՝ ազնուական գինոյ, հինգ տրամ՝ խաշնդեղ, և չորս տրամ՝ Թէռռաֆօլիաթա տի Թառթառօ։ Եւ զայս պարտ է առնուլ վեց կամ եօթն անգամ յաւուրն՝ ըստ չափու միոյ սկահակի սրճոյ։ Է և այլ դարման, որ առանց զայրացուցանելոյ բանայ զխցանս, և զանցս մաղձի և միզի, և ցրուէ զմաղձային հիւթս խառնեալս յարեան, և կազդուրէ զթալկութիւն ստամոքսի, և բարեկարգէ զգործառութիւն լերդի և փայծեղան. այն է չափաւոր գործածումն խարտածոյ երկաթոյ, որ այսպէս բաղադրի։ Երկու տրամ՝ լիմաթուռա տի ֆէռռօ, այսինքն խարտածն երկաթոյ, և նոյնչափ ռապառպառօ, և յաւել այնչափ շիրօբբօ որչափ պէտք իցեն առ կազմելոյ ըստ կանոնաց արհեստին. զգանգուածս զայս արարեալ հաբ՝ որ կշռեսցէ հինգ կամ վեց ցորեան, և շրջապատեալ փոշւով կինամոնի, տացին երկու կամ երեք հատք երկու անգամ յաւուրն։

Այլ բաց 'ի սոցանէ և 'ի սոցին նման դեղոց, երկար փորձառութեամբ տեսաք ես զնշանաւոր զօրութիւն դեղոյ ինչ. զոր և 'ի յոլով ժամանակաց հետէ բազում բժիշկք Արաբացւոց և Պարսից 'ի կիր առին, այն ինքն է մումիայք, յորմէ պարտ է առնուլ չորս ունկի՝ փոշի լուծեալ, և մի և կէս սկահակ սրճոյ քամածն լէմոնի, և յաւել այնչափ շիրօբբօ կամ մեղր՝ որչափ պէտք իցեն առ կազմելոյ ըստ կանոնաց արհեստին. զգանգուածս զայս արարեալ մածուն, որ լիցի թանձրագոյն քան զմեղր, տացէ ախտակրին գրդալ մի սեղանոյ ընդ առաւօտս, և նոյնչափ ընդ երեկս։ Երակ հատանելն ես պատշաճի երբեմն 'ի գիտուածս դալկան. բայց 'ի սկզբան անդ, և այն զի պարտ է նկատել 'ի կազմուածն մարմնոյ, 'ի խառնուածն, և յուժգնութիւն բորբոքման և ցաւոց, ևն. բայց 'ի վերայ այսր ամենայնի զգոյշ լինել պարտ է չյաճախել զգործածութիւն երակ հատանելոյ, բայց եթէ 'ի մեծի հարկաւորութեան, որովհետև միշտ վտանգ 'ի վերայ գայ յաճախանէ երկարելոյ հիւանդութեանն։

# ԳԼՈՒԽ Ժ.

Յաղագս ախտից, որք առնեն Թիւղներեցա. որ առ մեզ առնէ Թոքախտութիւն, ասմիջորէն Էտիքացու:

## ՅՕԴՈՒԱԾ Ա.

Ախտս այս է խօթութիւն ինչ, որ հաշեալ ծիւրէ ըզբովանդակ մարմինն. և յառաջ գայ 'ի խոցէ ինչ կամ յայտուցէ թոքի, նաև մարթի յառաջ գալ յախտից, որ ասին՝ էմբիեմա, այսինքն շարաւաթութք. աթռօֆիա նեռվօզա, այսինքն անտածութիւն. քաքեքսիա, այսինքն անտագօձութիւն, ևն: Վկայէ պուքան հեղինակն, եթէ առ ժամանակաւ իւրով 'ի քաղաքն լօնտռայ տասներորդ մասն 'ի ժողովրդենէն մեռանէին յախտէ յայսմանէ. ուստի որչափ ևս առաւել յայժմեան ժամանակիս: Երիտասարդք վտիտք և նիհարք, որք ունին զերկայն պարանոցս, և զթիկունս բարձրաւանդակս, և զանձս նեղագոյնս, և անձուկս 'ի հասակէ 15 ամաց, մինչև ցերեսուն ամս, են յոյժ ենթակայ ախտիս այսորիկ: Ախտս այս է յոյժ յաճախ յանգղիա քան յայլ ամենայն մասունս աշխարհի. և այս գուցէ յառաջ գայ 'ի սովորութենէ, զոր ունին 'ի գործ արկանել յանչափս զմիս դժուարահալ կենդանեաց, և զոգեւոր հեղանիւթս, այլև յանշարժական կեանս վարելոյ. և 'ի կիրառութենէ հանքային ծխոյ, զոր յաճախապէս վառեն, ևն:

Յաղագս պատճառաց Թոքախտութեան:

Այն ամենայն, որ պատճառէ զբորբոքողականութիւն ինչ 'ի կուրծս, մարթի համարիլ իբր պատճառ այսորիկ ախտի: Նոյնպէս պատճառէ ախտս յայլ ինչ չարաչարից, որք գլխովին եղծեալ տպաւորեն զխոնաւութիւն և զջալօրշիս, որպիսի են սքօրպութօ, սքռօֆօլէ. մալ վէնեռէօ, աշմա, վաեօլօ. ռօզօլիա, ևն: Բայց որպէս ասեն ախտս այս գրեթէ հազիւ երբէք է առողջանալի. վասն որոյ մանաւանդ իւիք եղանակաւ կամիցի ջանալ զգուշանալ

ւաց նորին առ 'ի յօգուտ և 'ի զգուշութիւն վերծանողացդ ։ Արդ՝ այսոքիկ պատճառք են յետագայքդ ։

Նախ , օդն ապականեալ , և որ արգելեալ և փակեալ միայ յուրեք տեղւոջ . մեռուցական ինչ գոլորշիքն , որ մասնաւորապէս մնասակարք լինին Թոքոց , յորմէ ևս բազում անգամ հետևի հատանիլ կամ վչտանալ նրբագոյն և փափուկ ինչ ներքին անօթոց անդամոյն ։ Բ . Սաստկագոյն կիրքն , բռնութի ինչ մտաց , անձկութիւնք հոգւոյ . զոր օրինակ տրտմութիւն , ցասումն , վիշտն . ևս կարի յոյժ հետազօտութիւն նրբախմաց գիտութեանց են ։ Գ . Հոսումն ինչ սաստկագոյն բնութեան , որպիսի են քիրտն , և լուծողականութիւն որովայնի, ևս վաղվաղ տափանք , հոսումն ինչ արեան , սերմնաթողութիւն , են ։ Դ . Արգելականութիւն իրիք սովորական հոսման , որպիսի է Թանչն , քիրտն ոտից . արիւն որ հոսի 'ի ռնգացն , խորանկն , են . Ե . Արտաքին ինչ պատահմունք և փոփոխութիւնք , որպէս երԹալն 'ի ջերմագին ինչ բնակութէ 'ի ցրտագոյն տեղիս , փոփոխութիւն ինչ հանդերձից , և այլ սոցին նմանք ։ Զ . Ընկերութիւն ընդ ախտակցեալ անձանց , որովհետև ախտս այս է յոյժ տարափոխիկ ։ Է . Անձինք , որք վարեն զանշարժական կեանս , որպիսի են գերձակք . կօշկակարք՝ որք ընդ երկար ժամանակս պատճառաւ արհեստի միոյն կորացեալ և կծկեալ , երգեցողքն , և այլ ամենեքին , որք վչտացուցանեն զԹոքն ։ Ը . Խոնաւութիւն ոտից , մահճի , բնակութեան , ևս գիշերային օդն են ։ Թ . Կերակուրք աղուտք , տախտք և պաղանակինծք , որք բորբոքեն և ապականեն զարիւնն . նոյնպէս և ոգելից հեղանիւթք ։ Ժ . Ախտս այս բազում անգամ լինի ժառանգական . և յայսպիսի դիպուածս հասարակօրէն լինի անպայքարելի և անբուժելի .

Յաղագս նշանաց Թոքախտութեան ։

Ախտս այս հասարակօրէն սկսանի 'ի չորագոյն ինչ հազէ , որ սովորաբար յարատևեալ միայն քանի ինչ ամիս ։ Այլ եԹէ ախտակիրն յայսպիսի դիպուածս զգայ ևս յանձին յօժարութի ինչ 'ի ժայԹքել զԹուքն կերակրոց , յայնժամ նշանս այս գուշակէ՝ Թէ յոյժ 'ի մօտոյ անի 'ի վերայ հասանել ախտս այս ։ Դարձեալ , ախտաժիրն զգայ զծանրութի ինչ առաւելագոյն միով պատճառաւ քան ընջերմութիւն բնական , զայս , և ծուլութիւն ինչ 'ի կուրծս , ակամայապէս զնիրհ ԹեԹև ինչ աշխատանաց . Թուքն բերա-

նոյն լինի աղուտ, և բազում անգամ ևս արիւնախառն ։ Ախտաւկիրն լինի տրտմագին, և սևամաղձոտ, և կորուսանէ զախորժակն․ զարկ բազկերակին հասարակօրէն շուտափոյթ, թոյլ, և մանրընթաց․ բայց երբեմն ևս լինի յոյժ լի, և կարծր․ այսոքիկ են նշանք առաւել հասարակք, որք զուգընթաց գտանին ի առաջին մուտն թոքախտիս, և յետ այնորիկ անդէն սկսանի թուքն լինել կանաչագոյն, և արիւնախառն․ ախտաւկիրն զգայ զաւենգ-ինչ ծիւրական, որ ասի՝ Ֆէպպալէ էթիքա․ քրտնի առատօրէն յերեկոյեան և յառաւօտեան պահու․ լուծումն որովայնի, և առատութիւն միզի նոյնպէս է սովորական ։

Դարմանել․ զգայ ախտաւկիրն զջերմութի ինչ յաւէտն ձեռաց․ այսոքն զկնի կերակրոցն կարմրանան, մատունքն նշանաւորապէս վատանան, եղնգունքն կորանան, և մազքն թափին․ 'ի վախճանի՝ ոտքն մինչև ցծունկս ուռնուն, կորուսանէ գլխովին զկարողութիւն և զզօրութիւն, աչքն մխին 'ի ներքս, դժուարութի մեծ կրէ ախտաւկիրն 'ի շնչառութն և 'ի կլանելն․ այդ ամենայն նշանք՝ են դուշակ մօտալուտ մահուան, յորմէ ուր ուրեմն մարթ է ախտաւկրիս զերծանիլ․ քանզի եթէ ոչ խնամ տարցի 'ի սկզբան ախտիս ըստ պատշաճին փութանակի, յետ այնորիկ անօգուտ և անպիտան լինին ամենայն դարմանք, և դեղօրայք ։

Յաղագս կառավարութեան, զոր պարտ է 'ի գործ արկանել 'ի դիպուածս թոքախտութեան, որ ասի թիզիքէցոյ ։

'Ի սկզբան անդ ախտիս իսկ և իսկ պարտ է ախտաւկրին փոխել զբնակութիւն․ եթէ բնակեալ իցէ 'ի մեծաշէն և 'ի բազմամարդ ինչ քաղաքս, կամ 'ի տեղիս ինչ՝ ուրանօր օդն փակեալ և արգելեալ լինի, յայնժամ պարտ է երթալ 'ի դաշտս և 'ի բնակութիւս, ուր լինի օդն մաքուր, չոր և առողջարար․ և շրջագայել անդ ըստ հաճոյից իւրոց ։ Ո՛չ է պարտ ախտաւկրիս բնաւ նստել դատարկ, այլ պարտ է միշտ շարժմունս առնել, մանաւանդ յոյժ օգտակար է՝ եթէ լինիցի 'ի վերայ ձիոյ, կա՛մ ջորւոյ, և այն՝ ընդ առաւօտն․ այսպիսի շարժողութի 'ի դիպուածս ախտիս է իբր դեղ իմն ազնուագոյն․ բայց պարտ է ախտակրին անձնապահ լինել 'ի ցրտոյ յընթացս այսպիսի շարժմանց ևն ։ Այլ եթէ հնարաւոր իցէ ևս․ յոյժ օգտաւէտ է 'ի դիպուածս ախտիս ճանապարհորդութիւն ի ծովու, և բազմաց իսկ ականատես եղաք ազատել յախտէս

նպաստիւք ծովագնացութեան 'ի վերջին աստիճանի ախտիս , յորում ամենայն դարմանք և դեղորայքն անօգուտ եղեն :

Պարտ է ախտակրիս հրաժարել 'ի ջերմագին , և 'ի դժուարամարսելի կերակրեղինաց : Ըմպելեացն նոր պարտ է լինել զովացուցիչ և բարեխառն , կաթն միայն է յոյժ շահաւէտ 'ի դիպուածս ախտիս քան զամենայն դեղորայս . մանաւանդ կաթն իշոյ կամ կանանց . բայց պարտ է 'ի գործ արկանել զայն յոյժ սակաւ քանակութբ , և որքան կարելի իցէ՝ պարտ է ըմպել զկաթն իշոյ բնական ջերմութեամբն , այսինքն փութով զկնի կթելոյ , մի և կէս ունց. թիկուն վասն միոյ չափահասի բաւական է , զոր պարտ է բաժանել յերիս կամ 'ի չորս մասունս յաւուրն . պարտ է սակաւ ինչ հաց բրդել 'ի մէջ կաթինն և ուտել փոխանակ կերակրոյ : Այլ եթէ 'ի գործածութէ կաթին պատահի լուծողութիւն որովայնի , յայնժամ պարտ է յաւելուլ 'ի վերայ քօնսէռվա մեքքիա տի ռօզա , կամ բօլէ տի ծամէկ տի կանդիօ :

Դարձեալ , մարթ է ախտակրիս ուտել զմիրգս հասունացեալս և եփեալս 'ի վերայ հրոյ , կամ զքաղցրաւենիս հաղարջի , մորի , կեռասի ևն . 'ի վախճան ամենայնի պարտ է գիտել եթէ ամենայն կերակրոց և ըմպելեաց ախտակրիս միշտ պարտ է լինել սակաւաքանակ առ 'ի ոչ ճնշել թոքոցն յոյժ ծանրաբեռնութբ սննդեան , և առ 'ի արգելուլ զսաստիկ շրջագայութիւն արեանն : Նոյնպէս պարտ է ախտակրիս միշտ զուարթ , և ուրախ լինել . որովհետև ախտս այս սովորաբար յառաջ գայ 'ի տառապութենէ սևամաղձի :

### Ցուցակք կազմութեան դեղորէից , զորս պարտ է 'ի գործ արկանել 'ի զանազան աստիճանս թոքախտութեան :

Յառաջին աստիճան ախտիս մարթ է երբեմն մեղմել զհազն միայն երակ հատանելով , և գործածութբ յետագայ դեղորէիցս : Ա՛ռ չիբբօլա սգուիլլա ֆրեսքա , կոմմա ամմօնիաքօ և սէմի տի քառտամօմօ յիւրաքանչիւրոյն երկու տրամ , մանրեա՛ զամենայնն բարւոք յանկանի , և յաւե՛լ 'ի վերայ նա սակաւ ինչ ճիւլէպպէ քօմմունէ , և հասցս արարեալ տո՛ւր ախտակրին յաւուրն երկու կամ երիս հատս ըստ տանելոյ ստամոքսի նորին : Նոյնպէս է դեղ ինն յոյժ օգտակար 'ի դիպուածս ախտիս՝ լաթթէ ամմօնիաքալէ , կամ լաթթէ տի կօմմա ամմօնիաքօ , զոր պարտ է պատրաստել և 'ի գործ արկանել ըստ եղանա-

կին, զոր գրեցաք 'ի Ճառն բորբոքման Ներքին մասանց կրծոց. երես 82. 83:

Որքան առ ըմպելին ախտակրիս պատշաճագոյն է ինֆուզիոնէ դառնագին արմատոց, որպիսի են էտէրա թէռռէսթռէ, չէնթաուրէա մինօրէ քամոմիլլա, Թռիֆօլիօ բալուսթրէ են, որք եթէ 'ի գործ արկանիցեն ը պատշաճին, զօրացուցանեն զստամոքսն, փիւրացուցանեն զմարսողականութիւն, մաքրեն զարիւնն են: Այլ եթէ ախտակիրն փախէ զարիւն, յայնժամ պարտ է 'ի գործ արկանել զինֆուզիոնէ կամ տէքօցիոնէ, որպիսի են յետագայքդ: Առ ռատիչէ տի քօնսօլիտա մաճճիօրէ՝ մի ունկի, կէս տրամ ռէկօլիցիա, և նոյնչափ ալթէա: Եռացո 'ի մէջ երկու պինթա հասարակ ջրոյ ընդ վայրկեանս ինչ, և թող պաղել. և յաւել 'ի վերայ մի փոքրիկ դրգալ սիրօփօ տի վիօլէթօլօ. և տուր ըմպել ախտակրին մի բաժակ՝ երկու կամ երիս անգամ յաւուրն: Են և այլ ինչ արմատք օգտակարագոյնք 'ի դիպուածս ախտիս, որպիսի են օպքիոնէ, սէմէ տի մէլաքօթօնա, թուսսիլագինէ, սէմէ տի լինօ, սալսափարիլլիա, են: Նոյնպէս օգտակէտ է 'ի դիպուածս յայս յառաջին աստիճանի ախտիս քաղցրաւենին մարդի, զոր մարթ է 'ի գործ արկանել կամ ընդ վերոյիշեալ դեղորէից, և կամ առանձինն դըրգալիւ:

Յաղագս դեղորէից, զոր պարտ է 'ի գործ արկանել յերկրորդում աստիճանի Թոքախտութեան:

Յորժամ 'ի վերոգրեալ նշանաց քաջայայտ ճանաչի, և սաստկապէս գուշակի բորբոքումն ինչ թոքոց, յայնժամ սեպհական և շահաւէտագոյն դեղն է քինա քինա, զոր պարտ է 'ի գործ արկանել ըստ յետագայ եղանակին: Ընկալ մի ունկի՝ ազնիւ քինա, և մանրագոյն փոշի արարեալ զայն, բաժանեա յութ և տասն հաւասարաչափ մասունս, և յամենայն երիս ժամս տուր ախտակրին զմի մասն, կամ արարեալ 'ի մէջ բաժակի հասարակ ջրով, և կամ հապա արարեալ սակաւ ինչ շիրօփփօիւ: Այլ եթէ 'ի գործածութեան քինայի պատճառի լուծողութիւն ինչ որովայնի, յայնժամ պարտ է 'ի գործ արկանել զկերպն յետագայ: Առ քօնսէռվա տի ռօզա չորս ունկի, և մի ունկի՝ քինա ազնիւ փոշի արարեալ, շիրօփփօ տի առանչիա, կամ տի լիմօնիա բաւականաչափ, խառնեա յիրեարս. և տուր ախտակրին ուտել զմի և կէս ուն-

կի 'ի միում աւուր, ուտելով երկու կամ երիս անգամ յաւուրն. և յաւարտիլն այսորիկ չափու, պատրաստեալ վերստին ըստ վերոգրեալ եղանակի, և 'ի գործ արկ ըստ տանելոյ ախորժակի ախտակրին:

Յամենայն դիպուածս ախտիս մէջս պարտ է 'ի գործ արկանել աքուա օրխոքիթօզա, կամ սալ վօլաթիլէ, որք նմանապէս են յոյժ շահաւէտք: Եթէ թուքն բերանոյ ախտակրին լինիցի խիտ և թանձր, և հազն նուազ, և շնչառութիւն դիւրաշարժ և անաշխատ, յայնժամ մարթ է յուսադիր լինել առողջութեան ախտիս: Իսկ՝ յայնժամ կերակրոցն պարտ է լինել թեթև, և դիւրամարսելի, այլ սնուցողական, որպիսի են թեթև արգանակն հաւու, տէքօցիօնէ տի քրէմօր տի ավէնա, կամ սուկօ քրէմօրէ տի ռիզի են.

Յաղագս ախտի, որ ասի Բերիփնէւմօնիա սինօխալիքա, այսինքն արիւծէան թոքախտութեան:

Ախտս այս ո՛չ բնաւ առողջինի, եթէ ո՛չ նախ բուժեսցի ախտն, յորմէ պատճառի և յառաջ գայ այս տեսակ թոքախտութե. հասարակօրէն պատճառի յայսցիկ ախտից, վէցիօ սքրօֆօլօզօ, կամ սքրօֆօլօ աթթուալէ, սքօռպութօ, աղմա, ախտն գաղղիական. են. վասն որոյ պարտ է նախ դարման տանել ախտիցս այսոցիկ, յորոց պատճառի, 'ի գործ արկանելով զկատարելութիւն և զդեղորայս սեպհականս իւրաքանչիւր ախտից:

Այլ եթէ ախտս այս յառաջ գայ յի՛ և իցէ սաստիկ ինչ լուծողականութէ, կամ 'ի հոսմանէ, յայնժամ պարտ է փութալ առ 'ի արգելուլ զայն, և միանգամայն պարտ է զօրացուցանել զախտակիրն՝ 'ի գործ արկանելով շարժողութիւնս պատշաճողականս, կերակուրս սնուցողականս, քօռտիալս, են: Դարձեալ գիտել արժան է, եթէ յախտէս յայսմանէ ըմբռնեալն յոլով անգամ մարք կորովագոյնք և փափկակեացք, որք ընդ երկար ժամանակս գիեցուցանեն զզաւակս իւրեանց, ուստի և սկսանին ուժաթափ լինել. վասն որոյ պարտ է նոցա պահպանել զզօրութիւնս իւրեանց, կամ հատանելով 'ի ստենէ դերունայն. և կամ գտանել զայլ ոք սնուցիչ, ապա թէ ոչ՝ անհնար է նոցա այլազգ առողջութեան ակնկալել:

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

Ցուցակ ախտից որ անուն՝ նեւրօզեա, կամ ընդդիմակցաց նեւրաջղա. այսինքն ջղային նեղութիւնք:

Մախտս այս է նշանաւոր ինչ հիւծումն, կամ մաշումն բովանդակ մարմնոյ առանց վերոգրեալ նշանաց, և աստիճանաց զուգընթաց գտանելոյ. այսինքն առանց տենդի, առանց հազի, առանց դժուարութեան կրելոյ 'ի շնչառութեան և 'ի կլանելն ևն: Այլ զուգընթաց ունի միայն ընդ իւր տկարութիւն ինչ, զպակասութիւն ախորժակի, և զանմարսողականութիւն: Անձինք, որք են բնութեամբ անհանգիստ և անհամբեր, և որք 'ի գործ արկանեն առաւօտէն զոգեւոր հեղանիւթս. և որք վիճակեալ են ապականեալ ինչ օդոյ, են առաւել ենթակայ ախտիս այսորիկ:

Ցուցակ խառնակութեան և դեղորէից՝ զորս պարտ է 'ի ձեռ առնուլ 'ի դիպուածս այսորիկ ախտի:

Ի դիպուածս ախտիս նախ քան զամենայն պարտ է կերակրոցն ախտակրին լինել թեթև, և սնուցողական. այլև պարտ է շարժողութիւն առնել սակաւ սակաւ 'ի բացօթեայ տեղիս, և 'ի գործ արկանել զեղս դառնադեղս առ 'ի զօրացուցանել զստամոքսն, որպիսի են՝ քինաքինան, ձէնցիանան, կինամոնն, օշինդր, ևն. զորս պարտ է դնել 'ի մէջ միոյ բաժակի ջրոյ կամ գինւոյ, և 'ի գործ արկանել սակաւ սակաւ յաւուրն:

Դարձեալ՝ 'ի դիպուածս ախտիս յոյժ օգտակարագոյն դեղ իմն է էլիսսիրն տի վիթրիօլօ, զոր պարտ է 20 կամ 30 շիթս եդեալ 'ի մէջ միոյ բաժակի գինւոյ, կամ ջրոյ 'ի գործ արկանել յաւուրն երկու անգամ: Դարձեալ, ընկա՛լ երեք ունկի՝ լիմաթուրա տի ֆէռռօ, կամ աչչիարօ, և դի՛ր 'ի մէջ մի բինթա սպիտակ գինւոյ, և թո՛ղ մնալ երիս շաբաթս, բայց յայսմիկ յաւուրս պարտ է միշտ ցնցել և շարժել զապակեայ անօթն, յորում եդեալ է գինին երկու անգամ յաւուրն. այս դեղ մաքրէ զարիւնն, զօրացուցանէ զստամոքսն և զջղութիւն, ևն: 'Ի վախճան ամենայնի՝ կարևոր դատիմ խրատել զամենեսին առ 'ի փախչիլ 'ի պատճառաց ախտիս, հրաժարիլ յամենայն եղեռնագործութեանց, և 'ի վաւաշ տռփանաց մարմնոյ, որովհետև մեծագոյն մասն ե-

ընտառաւորդաց և օրէնորդաց վասն այսր պատճառի ըմբռ-նելն յախտէ սատի :

Թէ ըղձողաւոլ տալախա տոանեն ,
զի՞ և մարմնոյ խըռեալ չառնեն .
այլ երկոցունց ասուխ յառնեն ,
մտանել 'ի ցաւս որ միշտ դառն են :



## ԳԼՈՒԽ ԺԳ.

Յաղագս ախտի , որ կոչի՝ ասմա . կամ ասթմա , այսինքն շնչարգելութեան .

Շնչարգելութիւն այս է ախտ ինչ թոքոց , և հազիւ երբեք է ապաքինելի , մանաւանդ եթէ իցէ հնացեալ . և է դժուարութիւն ինչ շնչառութեան , առաւել կամ նուազ սաստկագոյն , ընդ որում զոյգ գտանի ևս ջերմութիւն ինչ ժա-մանակեայ , այսինքն ոչ է յարատև , այլ երբեմնական , և 'ի ժամանակս ինչ սաստկանալ . ուստի յայտ է՝ եթէ յոյժ դժուարին իմն է ճանաչել զախտս զայս . որով հետև այսպիսի դժուարութիւն շնչոյ գտանի ևս 'ի դիպ-ուածս որ և իցէ ախտի կրծոց , սրտի , ստորին որովայնի , և այլ բազմակերպ ախտից : Ենթակայ ախտիս են հասա-րակօրէն անձինք , որք անցեալ են զաւուրբք , և նոքա որք պարապին 'ի տեղիս՝ յորս հնչէ հողմն փոշիախառն . մանաւանդ նոքա որք 'ի պատճառէ արհեստին ունին , զոր օրինակ որմնադիրք , քանդակագործք , փռնապետք , ևն : Եւ բաժանի ախտս այս շնչարգելութե յերկուս , այ-սինքն 'ի խոնաւ , և 'ի չոր , կամ 'ի շնչարգելութիւն ջղա-կան , կամ ցնցական :

Յաղագս պատճառաց շնչարգելութեան :

Ախտս այս երբեմն է ժառանգական , երբեմն ևս մար-թի յառաջ գալ 'ի յոռեգոյն կազմուածոց կրծոց , 'ի վատթար օդոց , 'ի մետաղական գոլորշեաց , որք ընդունա-նեն 'ի թոքսն շնչառութեամբ . 'ի յուժգին ինչ աշխատա-նաց , մանաւանդ յարշաւանքի ընթանալոյ , յարգելակա

նութենէ իւիք սովորական հոսմանց այսինքն դաշտանի, թանչից, քրտանց են, 'ի յանկարծակի իջուածոց իջելոց 'ի վերայ թոքոց կամ յայլ մասն. 'ի յորդ դատարկմանէ արեան, և շարաւոյ. որպէս պատահէ յախտից, որք ասին՝ վախուօլօ, ռօզօլիա, բորոտութի, որքին են. 'ի սաստիկ կրից, որպիսի է երկիւղն, տրտմութին են: Եւ միով բանիւ ասացից, ախտս այս մարթի յառաջ գալ յայնմ ամենայնէ, որք արգելական լինին շրջագայութե արեան 'ի թոքն: Դարձեալ՝ բորբոքողականութին կրծոց, թոքոց, տենդքն անընդհատք, ախտն արգանդի, և ախոնդանաց, գործողութիք սեռամաղձային, երկարատև հիւանդութիքն, սքօալութօ անուանեալ ախտն, արգելականութին արտաշնչութե մարմնոյ, ցուրտ և խոնաւ հողմունքն, կրքաւուածք, և բարձրաձայն կարկաջումն են, պատճառեն յոլով անգամ զախտս զայս:

Յաղագս նշանաց այսորիկ ախտի:

Գլխաւոր նշանն է դժուարութի կամ աշխատանք ինչ 'ի շնչառութե, զորօրինակ պատահէ 'ի մարդն զկնի սաստկագոյն արշաւանաց, և վազից. վերոյիշեալ բորբոքումն՝ ընդ որում զուգընթաց լինի հասարակօրէն հսկումն, կերկերումն ձայնի, հազն, և քամին, որ ելանէ ի բերանն, ծանրութի ինչ, զոր զգայ ախտակիրն 'ի կուրծս, դժուարութի 'ի շնչառութե, են. ի ասացեալ նշանացս գտանի միանգամայն զոյգ երբեմն տենդն, ցաւ գլխոյ, անձկութի սրտի, յօժարութի ինչ 'ի փսխել, բաբախումն սրտի: Զարկ բազկերակին լինի տկար, և երբեմն ընդհատ, արտասուք յակամայս, փսխողութիք մաղձային. այս ամենայն վերոգրեալ նշանք սաստկանան յերեկոյեան պահու: Ախտակիրն լինի առաւել 'ի հանգիստ 'ի նստիլն՝ քան յընկողմանիլն:

'Ի զեղուածս՝ յորում ախտս այս (որպէս ասացաք) պատահի 'ի խոնաւութէ, կրէ ախտակիրն զթեթև ինչ ցաւ գլխոյ, նախ քան 'ի վերայ գալ ջերմունե. և իբրև 'ի գործ արկանէ կերակուրս ջերմագինս, յոյժ նեղի ստամոքսն, բայց ոչ այնպէս յորժամ 'ի գործ արկանէ զկերակուրս ցուրտս. իսկ ջերմութին սկսանի հասարակօրէն զկնի կէս գիշերոյ իբրև երկուս ժամս. կամ զկնի ճաշու, և յարատև մնայ իբրև զերկու կամ զերիս ժամս. երբեմն ևս իբրև 2 կամ 3 աւուրս. և հասարակօրէն դադարի ջերմութիս այս առաւօտագոյն ինչ հոսմամբ միզի:

Յորքան ջերմութիւնս այս յարատեւ մնայ, ախտակիրն կրէ զմեծ ամբոխմունս. բերան նորա մնայ բացեալ, և ստէպ ջանայ և տանջի՝ համարձակ և ազատօրէն շունչ առնուլ, և ոչ կարէ։ Իսկ 'ի դիպուածս՝ յորում շնչարգելութիւն պատահի 'ի չորութենէ, յայնժամ 'ի գալ ջերմութեան ուռ-նու ստամոքսն և ձեռքն ախտակրին, և դէմք նորին վառի իբրև զհուր. բաբախումն սրտի լինի յոյժ սաստկագոյն, մինչև կարծել՝ շնչասպառ նուաղիլ։

## Յաղագս խնամատարութեան, զոր պարտ է 'ի կիր արկանել 'ի դիպուածս շնչարգելութեան։

Կերակրոցն ախտակրին պարտ է լինել թեթև և դիւրամարսելի, որպիսի են թեթևագոյն արգանակք, պըտուղքն հասուցեալք կամ եփեալք 'ի փուռն. պարտ է հրաժարել յամենայնից քաղցրաւոր և դժուարամարսելի կերակրեղինաց, և յուղաւոր և 'ի սաստիկ հեղանիւթոց. պարտ է անձնապահ լինել 'ի ցրտոյ, մանաւանդ 'ի ձմեռան եղանակի, և պարտ է միշտ ջերմ և չոր պահել զոտսն, և լոյծ ունել զորովայնն։ Նոյնպէս յոյժ օգտակար և կարևոր է ախտակրին վայելել 'ի մաքուր, 'ի չոր, և 'ի բարեխառն օդս, և ս զգուշանալ. և շարժողութիւն առնել։ Այլ և պարտ է նմա կարի սակաւ 'ի քուն լինել, և այն 'ի գիշերի. քանզի քունն 'ի տունջեան է յոյժ վնասակար։

## Յաղագս դեղորէից, զորս պարտ է 'ի կիր արկանել 'ի դիպուածս սորին շնչարգելութեան։

'Ի դիպուածս ախտիս մեծի զգուշութեան պէտք են առ 'ի գործ արկանել զդեղորայս։ Նախ՝ պարտ է պատրաստել զդեղս կակղացուցիչս խառն ընդ ասաֆէթիտայի. զոր և պարտ է կրկնել Բ պահանջելոյ պարագայից երկու կամ երիս անգամ։ Նոյնպէս դնել պարտ է զոտս և զձեռս ախտակրիս 'ի մէջ ջերմ ջրոյ, և ստէպ շփել զնոսին ձեռօք կամ շուխայիւ։

Երակ հատանելն երբեմն պահանջի 'ի դիպուածս շնչարգելութեան, որ յառաջ գայ 'ի չորութենէ. զոր և պարտ է չափել ընդ պարագայս տկարութեան ըստ հասակի ախտակրին, և սաստկութեան նշանաց։ Զկնի երակ հատանելոյ՝ պատշաճագոյն է 'ի գործ արկանել զֆօմէնթի երիցկի ջերմ ջրով. և կրկնել զայն Բ պահանջելոյ պարագա-

յիցն ։ Երբեմն եւս պարտ է դնել զախտակիրն 'ի մէջ գաղջ ջրոյ , և թողուլ այնչափ , որչափ տանի զօրութիւն նորին ։ Իսկ իբէքաքուանա անուանեալ փոշին հարկաւորապէս պահանջի 'ի դիպուածս ընչարգելութեան , որ գոյանայ 'ի չորուէ ․ զոր պարտ է հանապազորդել Ը տասն կամ 20 , և կամ 30 աւուրս , տալով ախտակրին ժամէ 'ի ժամ երկու ցորեան 'ի պահ առաւօտուն , մինչև լցցի վեց ցորեան յաւուրն ։

Յետ փոխողական դեղոյ , պարտ է պատրաստել ախտակրին ըմպելիս , մի գրգալ սեղանոյ թինթուրա ոփ քասթօռօ , և ոփ պաֆոամօ խառնեալ ընդ սկահակ մի ջրոյ , ինֆուզիօնէ ոփ վալէռիանա , պարտ է 'ի գործ արկանել յաւուրն երկու կամ երիս անգամ ։ Նոյնպէս օգտակար է 'ի դիպուածս յայս գործածութին զօրացուցիչ իրաց ․ վասն որոյ մարթ է երկու անգամ յաւուրն 'ի գործ արկանել մի գրգալ էլիսիրաէ լէնիթիվօ ․ կմ՟ պատշաճագոյն եւս է քինաքինա , կամ փոշի արարեալ , և կմ՟ լուծեալ 'ի մէջ գինւոյ ։

Համառօտիւ կամեցեալ ասել , 'ի դիպուածս ախտիս չոր ընչարգելութեան պարտ է 'ի գործ արկանել զայն ամենայն , որ զօրացուցանէ զջիղս և զստամոքսն ։ Հասարակօրէն յոյժ օգտակար են 'ի դիպուածս որպիսի և իցէ ընչարգելութեանց՝ գործածութն վէշիքանթէի , տզրկի , խարանի , հաճամաթի են ․ բայց պարտ է միշտ բաց պահել զխարանն , և ոչ չորացուցանել ։ Դարձեալ լաւ պատմելոյ հմտագոյն բժշկաց , 'ի դիպուածս չոր ընչարգելութե՟ համարին դեղ իմն ազնիւ և օգտակար զջուրն գաքիսեժի կամ ձիւթոյ , զոր պարտ է տալ հիւանդին երկու կամ երեք անգամ յաւուրն՝ զչափ միոյ սկահակի ․ և պատմեն միանգամայն հեղինակք , եթէ բազում անգամ անձամբ ականատես եղեն օգտակարութեան այսր դեղոյ ։ Նոյնպէս յոյժ շահաւէտ է սպիտակ և մաքուր մեղրն , զոր պարտ է առատօրէն 'ի կիր արկանել 'ի դիպուածս յայս ։

'Ի դիպուածս , յորում պատճառի ընչարգելութեն 'ի բորբոքուէ կամ յորքինոյ , յայնժամ հասարակօրէն դեղն է վէշիքաթօրիօ ․ զոր պարտ է դնել 'ի կուրծս , կամ 'ի մէջքն , և կամ 'ի բազուկս , և թողուլ քանի ինչ շաբաթըս , մինչև ցփարատիլ ընչարգելութե ։ Իսկ 'ի դիպուածս խոնաւային ընչարգելութեն չէ բնաւ օրէն երակ հատանել ․ այլ յայնժամ պատշաճական դեղորայք են գործածութիք մաքրիչք կրծոց՝ կամ մաղասին ․ որպիսի են՝ սքուիլլա , կօմմա ամմօնիաքա են ․ որ այսպէս բաղադրի ։ Ա՛ռ

մի և կէս տրամ՝ սքուիլլա սէքքա ին բոլվէրէ, երեք տը-րամ կօմմա ամմօնիաքա, և նոյնչափ սէմի տի քարտամօ-մօ, և յաւէլ այնչափ չիլօբբօ քօմունէ որչափ պէտք ի-ցեն առ կազմելոյ ԾԵ կանոնաց արհեստին. զզանգուածս զայս արարեալ հատ՝ որ կշռիցէ հինգ կամ վեց ցորեան, և շրջապատեալ փոշւով կինամոնի, տացին երկու կամ երեք հատք երկու անգամ յաւուրն:

Ի. Նոյնպէս օգտաւէտ է պատրաստութիւն սքուիլլա, որ այսպէս բաղադրի. ընկալ մի ունկի՝ չիլօբբօ տի սքուիլ-լա կամ օսսիմէլէ չիլլիթիքօ, և նոյնքան՝ ջուրն կինամո-նի: Ցըմպելոյ տասի առցէ հիւանդն երեք կամ չորս անգամ յաւուրն՝ զգդալ մի սեղանոյ: Բաց ՚ի գեղորէից տասի՝ շահաւէտ յոյժ եղիցի ՚ի կիր արկանել պարզ նը-պաստս, որպիսի է զանգուած ինչ հաստագեղոյ՝ բաղա-դրեալ ՚ի կէս ունկի՝ ասաֆէթիտա անուանեալ խէժէ, և երկու տրամ ֆիօռ տի սպէլցուինօի և բաւականաչափ շարապոյ հասարակի, որ ասի չիլօբբօ քօմունէ: Կազմեալ տասի հատս, որոց մէն մի կշռիցէ վեց ցորեան, տացես ախտակրին չորս կամ հինգ հատս յերեկոյեան պահու ՚ի մտանելն յանկողին: Նոյնպէս օգտաւէտք են քէրմէս մինեռալէն, և քանֆօրան. զոր պարտ է զգուշութեամբ և չափով ընծայել:

Յաղագս հնարից, զորս պարտ է ՚ի վար արկանել առ ՚ի արգելուլ զգալուստ ախտի ձևրգելութեան:

՚Ի ժամանակի՝ յորում յայտնիլ սկսանի գալուստ այսր ախտի, յայնժամ պարտ է ախտակրին ՚ի գործ ար-կանել նախ՝ 12 կամ 15 ցորեան իբէքաքուանա փոշի ա-րարեալ ըստ կանոնի փոխօղականի, և յետ այնորիկ պարտ է յամենայնում աւուր ՚ի կիր արկանել երկու ցորեան ըզ-նոյն իբէքաքուանա խառն ընդ կէս ցորեան՝ տիճիթալէ բօրբօրինաի, մինչև ց15, կամ 20 աւուրս ընդ առա-ւօտն, և ապա բանալ մի քաւթէռիօ, այսինքն եախու, և թողուլ բացեալ ընդ բովանդակ կեանս ախտակրին:



# ԳԼՈՒԽ ԺԲ.

Ցուցակ հիւանդութեանց կանանց ընդհանրապէս, ըստ երիտա-սարդութեան փեսլէ փեմինէ իւ ձենէտալէ:

## ՅՕԴՈՒԱԾ Ա.

Յաղագս դաշտանի, կամ յաղագս ամսոյին հոսմանց որ ասի՝ մենստրուում, կամ ֆլուսս մենստրուալէ:

Մատաղատիկերէն կանայք սկսանին ունել դաշտանն երբեմն 'ի հասակի 14 կամ 15 ամաց, և դադարին ունել զնոյն 'ի հասակի 50 ամաց. բայց 'ի վերայ այսր ամենայնի գիտել արժան է, եթէ հասակն յորում դաշտանն երևիլ սկսանի 'ի մէջ կանանց, ոչ է միշտ յամենեսին նոյնօրէն. նաև: Աստիճանն կամ կլիմայն երկրին՝ յորում բնակին, ուժեղութիւն և տկարութիւն կազմուածոց, պարագայք վիճակի, և կենաց, յոլով վայելչն, տան նշանաւոր իմն տարբերութիւն նախկին երևման այսր դաշտանի: 'Ի քաղաքս Ջերմագինս աղջկունք սկսանին դաշտանաւորիլ 'ի հասակի ինն ամաց, և երբեմն ևս կանխագոյն: Պատմի վասն միոյ աղջկան բնակելոյ յարևելեան Հնդիկս, եթէ 'ի հասակի հինգ ամաց դաշտանաւորեցաւ, և յեօթնե-րորդում ամի ծնաւ: Այլ 'ի քաղաքս ցուրտս ընդ հա-կառակն կանայք հազիւ 'ի հասակի 20 կամ 25 ամաց դաշտանաւորին, և յառաւել ցրտագոյն երկիրս բնաւ ոչ ունին զնոյն. որպիսի է գաւառն անուանեալ Լապօ-քանտրիա:

Իսկ հոսումն այսր դաշտանի միանգամ սկսեալ՝ ունի վճարիլ յամենայնում ամսեան. այսինքն յամենայն 26 կամ 28 աւուրս միանգամ, և այս է առաւել հասարակն: Բայց են կանայք ոմանք, որք առանց ինչ վնասու կրելոյ՝ ըստ բնութեան սովորինելոյ դաշտանաւորին երկու անգամ յամսեան, կամ երեք անգամ յերկու ամիս. և ընդ հա-կառակն՝ ոմանք ևս ոչ դաշտանաւորին, բայց եթէ 'ի 5 շաբաթ միանգամ: Իսկ աւուրքն՝ յորս յարատև մնայ հոսումնս այս, անստոյգ են. բայց չէ հնար ընդհանրապէ-

պէս միայն յարաւն՝ առաւել քան զկէս օրն, և պակաս քան զերիս աւուրս։

Դժուարին իմն է կշռադատել զորքանութիւն արեանն, որ հոսի յիւրաքանչիւր անգամ, որովհետև տարբերի ըստ տարբերութեան ենթակայից, մանաւանդ ևս երբեմն 'ի մի և 'ի նոյն ենթակայ լինի տարբեր։ Դաշտանն պակասի 'ի ժամանակի յղութեան, մանաւանդ 'ի վերջին ամիսս. որովհետև պատահի երբեմն միայն յարաւն յառաջին երիս ամիսս։ Նոյնպէս պակասի 'ի մեծագոյն մասն մնուցչաց։ Հաւսկ յետոյ պակասի 'ի գեղջուկ, և յաշխատաւոր կանայս, ևս և 'ի կաքաւիչ կանայս, որք ևս ոչ դաշտանաւորին առանց մեծի նեղութե. բայց հնարաւոր է երբեմն յայսպիսի դիպուածս, եթէ քիրտն և այլ արտահոսեալքն ընդուն զտեղի դաշտանի։ Սակայն մեծի զգուշութե պէտք են կանանց 'ի ժամանակի դաշտանի. քանզի մեծագոյն մասն նոցին վտանգաւորին վասն անզգուշութեն։

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

### Յաղագս առաջին նշանաց դաշտանի։

Եթէ օրիորդ ոք 14 կամ 15 ամաց՝ արգելական միայն ուրեք փակեալ 'ի բնակութե ինչ՝ առանց կարելոյ շարժումն ինչ առնել, և սակս անդր ընթանալ, մերձապէս առանց իրիք գործնական պաշտօնի. որով մարթ իցէ 'ի սթափութե պահել զմասունս մարմնոյ իւրոյ. այնպէս այն լինի տկար, թալկացեալ, և հիւծեալ, արիւն նորա դեղնագոյն, և այլափոխեալ գլխովին առողջութի նորա. տխրութիւն և զօրութիւն նուազելով նուազի, և ընդ բովանդակ միացեալ կեանս իւր միայն հիւանդագին։ Այդպիսի իմն վիճակի են հանդիպեալ մեծագոյն մասն դժբաղդագոյն օրիորդաց, որք կամ վասն հեղգութե և անհոգութե ծնողացն, և կամ վասն դժուարութե պարագայիցն յորս գտանին՝ զրկեալ միան 'ի կարևոր զբօսանաց, և յառողջարար օդոց են։

Բայց գիտելի է, եթէ է միշտ յոյժ օգտակարագոյն դաշտանաւորիլ օրիորդաց 'ի պատշաճագոյն հասակի, այսինքն 'ի հասակի 12, 13, 14, կամ 15 ամաց. և ընդ հակառակն՝ մեծապէս վնասակար, և երկիւղալի է, եթէ դաշտանն երևեսցի կամ յոյժ վաղ քան զ[illegible], և կամ կարի անագան, որովհետև գաղափեն զպատահմունս [illegible], որպիսի են՝ այգ ինչ դժնդակ հիւանդութիւնք, [illegible] զմեծ

վիշտս և նեղութիւնս 'ի ժամանակի դաշտանաւորութեան նէ. և հասարակօրէն այսպիսիք հազիւ ուրեք են ենթակայ յղանալոյ, և մանաւանդ ծնանելոյ բարի և առողջան-դամ զաւակս:

### Յաղագս նշանացն, որք կանխեն քան զառաջինն երեւումն դաշտանի:

Հազիւ ուրեք պատահի՝ եթէ դաշտանն յանկարծա-կի և յանակնկալ պահու 'ի վերայ եկեսցէ ուրուք օրիոր-դի. այլ հասարակօրէն յառաջեն նշանք աղգարարօղք այնմ, որպիսի են յետադայքդ. ջերմութիւն, ծանրութիւն, ցաւն երիկամանց, պնդութիւն և կարծրութիւն ծոցոյ, ցաւն գլխոյ, դեղնութիւն երեսաց, կորուստ ախորժակի, և եր-բեմն եւս փոքրիկ ինչ տենդ:

### Յաղագս կառավարութեանց, որք պահանջին 'ի դիպուածս այսորիկ նշանաց:

Յորժամ օրիորդ ոք հասանէ 'ի չափ հասակի ունե-լոյ զդաշտանն, և զգայ զվերոյիշեալ նշանս, պարտ է իսկ և իսկ փոյթ մեծ ունել՝ զի մի՛ յապաղեսցէ այնպիսի հա-սումն առողջարար և կարեւոր, այլ զամենայն հնարս կա-րելիս 'ի վար արկանել առ 'ի փութացուցանել զնոյն. որպիսի է նստիլն 'ի վերայ գոլորշեաց ջերմագին ջրոյ. և ստէպ ստէպ դնելն զոտս և զձեռս 'ի մէջ ջերմ ջրոյ, և ըմպելն թիզանէ տիլուէնթի, այսինքն ըմպելին հեղեղիկէշ դեղոյ:

### Յաղագս Եղանակի. որով պարտ է վարիլ 'ի ժամանակի դաշտանի:

Իսկ և իսկ յորժամ միանգամ դաշտանն սկսանի հո-սիլ, պարտ է մեծապէս զգուշանալ յամենայն վնասա-կար իրաց: Վասն որոյ պարտ է կանանց յայսոսիկ ժա-մանակս զգոյշ լինել 'ի վերայ կերակրոց և ըմպելեացն, զորս ուտեն, և ըմպեն. պարտին հրաժարել յայնմ ա-մենայնէ, որք են ցուրտ բնութեամբ, և զայրացուցիչք ստա-մոքսի. որպիսի են խակ և տհաս պտուղն, կաթն կոգին, ևն: Նոյնպէս պարտին հեռի կալ 'ի ձկանէ, և յայլ ա-մենայն դժուարամարսելի կերակրեղինաց: Բայց որով-հետև է անկարելի իմն 'ի համար բերել մի ըստ միոջէ

զայն ամենայն, որք վնասաբեր են կնոջ 'ի դիպուածս յայսմիկ, խրատ տամք ամենեցուն ընդհանրապէս, զգոյշ լինել յայնմիկ ժամանակի, զի եթէ յայնմ ամենայնէ, որ հասարակօրէն ընդդիմանայ բնութեան նոցին: Ցուրտն է մանաւանդ վնասակար կանանց 'ի ժամանակի դաշտանի, և բազում կանանց հիւանդութիւն յառաջ գայ 'ի ցրտոյ զոր առնուն յայնմ ժամանակի, քան յայլ ինչ պատճառաց. ուստի պարտին մեծապէս զգոյշ կալ 'ի ցրտոյ. որովհետև փոքր ինչ ցուրտ որ յայլ ինչ ժամանակի ոչ է վնասակար, բաւական է 'ի ժամանակի դաշտանաւորութեան տապալել զխոռվքն և կործանել զառողջութիւն, և զկազմուած նոցին: Դարձեալ գիտել արժան է՝ եթէ կիրքն, սուգն, անձկութիւն, և վիշտն, երկիւղն, և այլ ամենայն կիրք հոգւոյ՝ պատճառեն սովորաբար զճնշումն և զարգելումն դաշտանի, որ բացարձակապէս լինի անբուժելի:

## ՅՕԴՈՒԱԾ Գ.

### Յաղագս արգելականութեան դաշտանի:

Կառավարութիւնք 'ի գործ արկանելիք 'ի դիպուածս արգելման դաշտանի յորմէ և իցէ պատճառանէ լինիցի յառաջ եկեալ:

Որովհետև իցէ պատճառն՝ յորմէ լինիցի յառաջ եկեալ արգելականութիւն դաշտանի, բաց 'ի դիպուածոց յղութեան, սնուցչութեան, կաքուման, աշխատութեան ևն, զորոց ասացաք վերագոյնդ, պարտ է մեծապէս փոյթ ունել առ 'ի յետս դարձուցանել զնոյն. վասն որոյ խրատ տամք կանանց՝ որք գտանին յայսպիսի վիճակի, առնել չափաւոր ինչ շարժումն, բնակել 'ի տեղի՝ ուր ունիցի զօդ առողջարար, չոր, և զովացուցիչ, նմանապէս ուտել կերակուրս առողջարարս: Եթէ մարմինն լինիցի տկար, և թալկացեալ, պարտին ըմպել հեղանիւթս զօրացուցիչս, և կենակցել ընդ մտերիմ անձինս, և վերջապէս զուարճացուցանել և զօրացուցանել զբնութիւն պատշաճաւոր զբօսանօք. Իսկ եթէ այս կառավարութիւնք անօգուտ լինիցին, պարտին 'ի գործ դնել զդեղօրայս զորոց խօսեսցուք յառաջիկայդ:

Յաղագս դեղորէից արգելականութեան ապականի, որ պատճառի ՚ի Թուլութենէ ։

Յորժամ յառաջ գայ արգելումն ապականի ՚ի սաստիկ Թուլութենէ, ճանաչի ՚ի յետագայ նշանաց ։ Հիւանդն զգայ զմեղկութիւն, զտկարութիւն, զցաւս, և զծանրութիւն ինչ ՚ի մէջս, զցաւս գլխոյ, զաղջնութիւն, և զարգելականութիւն շնչոյ, զպակասութիւն և զուռոյցն ստամոքսի, և զդժուարութիւն ինչ ՚ի միզել, եւս խիթ, գեղնութիւն ինչ հասարակ, որ տարածանի ընդ ամենայն մասունս մարմնոյ, մանաւանդ ՚ի դէմս, և դեղնութիւնս այս երբեմն ՚ի կանաչագոյն փոխարկի ։ Վերջին նշանս այս հաստատէ զախտն սաստկացեալ քլօռօզի, զորմէ խօսեսցուք ՚ի հետագայ յօդուածն ։

Արդ ՚ի դիպուածս յայս՝ պատշաճ է ՚ի գործ արկանել զդեղորայս՝ որք են ընդունակ ՚ի դիւրացուցանել զմարսողականութիւնս, և ՚ի զօրացուցանել զԹուլութիւնս, և եւս բարեկարգել և յարդարել զգործարանսն առ ՚ի պատրաստել զարիւն ինչ առողջարար և բարի ։ Ազնուագոյնն, և գլխաւորն ՚ի մէջ այսոցիկ դեղորէից է երկաթն, և քինաքինա, խառնեալ ընդ այլ դառն սեղմեցուցիչս ։ Խարտած երկաթոյ արկ ՚ի մէջ գինւոյ կամ ապիռուաի, ըստ հետագայ եղանակիս ։ Արկ երկու կամ երեք ունկի՝ ամենանուրբ խարտած երկաթոյ՝ յերկու լիտր գինւոյ կամ ապիռուայի . զկնի երկուց շաբաթուց հեղ զպարզութեան զհեղուկն յայլ ապակի անօթ, և տուր ըմպել հիւանդին երկու անգամ յաւուրն՝ զչափ միոյ գաւաթի ։ Կամ, առ երեք տրամ վերոգրեալ խարտածդ երկաթոյ, և նոյնչափ՝ ռաւպառապառօ, և յաւել այնչափ շիլօբբօ սի քուօքօ որչափ պէտք իցեն առ կազմելոյ ըստ կանոնաց արհեստին զգնդուածս զայս . արարեալ հատս՝ որ կշռիցէ հինգ ցորեան, տացին հիւանդաց երեք կամ չորս հատք երկու անգամ յաւուրն ։ Քինաքինա, ապսինթիօ, ճէնցիանա, և այլ դառնադէմն իրք մարթին ՚ի գործ արկանել, կամ արկեալ ՚ի Թուրմս, և կամ առանց Թրմոյ ըստ տանելոյ ախորժակի հիւանդին ։

Ցուցակս արգելականութե դաշտանի պատճառելոյ 'ի յառատութենէ, և 'ի նուաղականութենէ արեան :

Յորժամ պատճառ այս յառաջ գայ 'ի յառատութենէ, կամ 'ի հոծութենէ; և կամ 'ի թանձրամածութենէ, և 'ի նուաղականութենէ արեան, և եթէ կանայքն, որք կրեն զախտս զայս՝ լինիցին միջնակեալ հիւթայնի կամ արիւնային իւիք խառնուածոց, պատշաճագոյն դեղ են լուծողականքն, և այնք ամենայն, որք լուծեալ անօսրեն և նրբացուցանեն զհիւթս կամ զարիւնս : 'Ի դիպուածս յայս պատշաճ է երակ հատանել. առէպ առէպ դնել զոտս 'ի մէջ ջերմ ջրոյ, և երբեմն երբեմն 'ի գործ արկանել լուծողականս զովացուցիչս: Կերակուրքն պարտին լինել թեթև, և հեղանիւթ ըմպելին՝ սիէռօ տի լաթթէ, և թեթևագոյն սիրապ, ևն, պարտ է ևս առնել շարժողութիս : Դարձեալ պարտ է յաւուրն երկու անգամ առնուլ նմա մի փոքրիկ գրգալ թինթուռաս տի էջլէ-տօռօ սխանքօ, արկեալ 'ի մէջ միոյ բաժակի ջերմ ջրոյ : Բայց հասարակօրէն արգելականութիւն դաշտանի պատճառեալ 'ի թանձրութենէ՝ առաւել ենթակայ է առողջութեան, և բազում անգամ ապաքինի միայն երակ հատանելով յոտից :

Ցուցակս արգելականութե դաշտանի պատճառելոյ 'ի կրից հոգւոյ :

Յորժամ արգելականութիւն պատճառի 'ի կրից հոգւոյ, 'ի տրտմութենէ, յերկիւղէ, 'ի խռովութենէ սրտի ևն, պարտ է 'ի գործ արկանել զոր ինչ միանգամ յարմար է 'ի զուարճացուցանել, և 'ի սփոփել զախտաժետեալն : Առաւել ապահով հնարն է՝ խլել զպատճառն այսր ախտի, այսինքն հեռացուցանել զախտակիրն 'ի պատճառաց տրտմութեան. Նոյնպէս յոյժ օգտակար է տեղափոխումն, տեսութիւն զուարճալի առարկայից ևն : Այս ամենայն հնարք թէպէտ են բարի և կարևորք, բայց ո՛չ միշտ բաւականք, յորժամ արգելականութիւն լինի հնացեալ. քանզի յայսմիկ դիպուածի ընդ առաջ լինին սովորաբար նշանք թանձրութեան արեան. վասն որոյ պարտ է փոյթ ունել յայնժամ 'ի նրբացուցանել զարիւնն. և հասարակօրէն սկսանել պարտ է յերակ հատանելոյ 'ի բազկէն, և յետ այնորիկ յոտից. Նոյնպէս պարտ է դնել տզրուկս

'ի բերան արգանդին, յանօթս թանչից: Այլ և մարթ է մուծանել որուակս ուրեան յաղգերս, 'ի քունջս երանաց, ևն:

Իսկ առաւել զօրաւոր հնարքն 'ի դիպուածս որք ոչ են այնքան ծանունք զկնի վերոյիշելոցն, է գործելն ջերմ ջրոյ, յորոյ վերայ պարտ է նստուցանել զախտաւորն. բաղանիք ջերմայինք, դնել զոտս մինչև ցծունս 'ի մէջ գաղջ ջրոյ, նոյնպէս մարթ է առնել կակղացուցիչ ֆօմենթի, և գրեխս թուլացուցիչս ևն. զայս ամենայն գրեալս 'ի վար արկանելն 'ի դիպուածս արգելականութե դաշտանի, որ եթէ 'ի կրից, եթէ 'ի ցրտոյ, և եթէ յորպիսի ևս իցէ պատճառէ յառաջ եկեալ, է յոյժ պատշաճողական, և օգտակարագոյն:

Յաղագս զգուշութեանց, զորս պարտ է առնել նախ քան զխնամ տանելն արգելականութեան դաշտանի յորմէ իցէ պատճառէ յառաջ եկեալ:

Հասարակօրէն նախ քան զգործածութիւն իրիք դեղորէից 'ի դիպուածս արգելականութե դաշտանի, որ յորպիսի ևս պատճառէ երևեսցի յառաջ եկեալ, պարտ է բարիոք և քաջ ստուգել և հաստատել, եթէ չիցէ պատճառեալ 'ի յղութենէ. այլ եթէ չիցէ մարթ հաւաստեաւ ստուգել, և կայցէ ինչ կասկած, յայնժամ պարտ է յերկարաձգել զգործածութիւն դեղորէիցն մինչև ցհինգ ամիսս զկնի արգելականութեն. քանզի սովորաբար 'ի հինգերորդում ամսեան սկսանին նշանքն յղութեան երևիլ և ստուգիլ, և յայնժամ դիւրաւ մարթ է զանազանել 'ի նշանացն, որպէս դնելով լոկ զձեռս 'ի վերայ արգանդի, մարթ է զգալ զշարժումն ինչ երևելի 'ի մէջ արգանդի. թողում ասել զայլ ամենայն նշանաց յղութեն, զորոց խօսեսցուք 'ի յետագայն:

## ՅՕԴՈՒԱԾ Դ.

Յաղագս դժգունութեան, որ ասի՝ փլօրօզի, և յաղագս ճերմակ փաղոյն. որ կոչի՝ բիլֆա, կամ մալաքիա:

Ախտս այս է դժգունութիւն կամ դեղնութիւն ինչ, և երբեմն կանաչութիւն ինչ տարածեալ յերեսս կանանց. նման ախտի արգելականութեն դաշտանի. բայց և տարբերի յայնմանէ՝ ըստ որում ախտս այս պատահի ևս

յայնժամ. յորժամ յարատևեալ հոսի դաշտանն էր առօրական պայմանի, բայց յոյժ նուազ քանակութբ։ Ախտս այս բազում անգամ երևի 'ի քաջատոհմ, և յաղնուական աղջկունս, և յամուրի օրիորդս, որք են առողջ և զօրեղք, և փափկակեացք, և տառապեալք զգայական մտածմամբք. բայց վարեն կեանս ընդդէմ բաղձանաց իւրեանց։

Ցուցք նշանաց ախտիս դժգունութեան, որ ասի՝ քլօրօզիս։

Յորժամ դժգունութիւն կամ դեղնութիւն այս մտրթոյ սկսանի տարածանիլ և արմատանալ յոք, յայնժամ յայտնին և երևին ուռոյցք ինչ 'ի շրթունս, և յայլ մասունս երեսացն, եւս և 'ի սրունս, և յոտս ևն։ Ստականայ ցաւն գլխոյ, և ախտակիրն զգայ զանհանգստութիւն ինչ 'ի ծունկս, կրէ զաշխատանս, և զվէշտս 'ի ծնանիլն. ունի զբաբախիւն սրտի, զանձկութիւն, և զուշագնացութե՛. կրէ զտենդ իմն ծիւրական, որ ասի ֆէպրէ լէնդա՝ առաւել 'ի գիշերի քան 'ի տունջեան. տատականան և ուռնուն ախտոնդանքն, (որք են սահմանք կամ տեղիք լերդին, և փայծեղան.) և ամբառնայ որովայնն մինչև երբեմն առ կասկածանս յղութէ աղջկանն, ևն։ Զայսպիսի ուռոյց որովայնի պարտ է առաւել վերաբերել առ ըմբռնումն որովայնի, որ ասի տիթէնցիօնէ, քան առ արգելումն դաշտանի. որովհետև սովորաբար առաջի 'ի հոսումն արեան։ Ցայս ուռոյց կոխեալ զմատունս, հետք ոչ տպաւորին 'ի նա, և ոչ իսկ փոսանայ տեղի մատանցն, որպէս 'ի դիպուածս ջրգողութեանց, զորմէ խօսեցաք 'ի տեղւոջն. և ուռոյցս այս առաւել նշանաւոր լինի ընդ առաւօտն, քան ընդ երեկոյն։

Թէպէտ և արգելականութիւն դաշտանի է ընդհանուր պատճառ այսր ախտի դժգունութեան, սակայն ոչ է բոլորական պատճառն, որովհետև դաշտանն հոսի 'ի ժամանակէ 'ի ժամանակ։ Արդ 'ի դիպուածս յայս այնքան առաւել է երկիւղալի ախտն, եթէ պատճառեալ իցէ այն 'ի խցանաց ընդերաց ստորին որովայնի։ Դարձեալ՝ ախտս այս պատճառէ երբեմն զամլութի, և մարթ է յարատևմնալ ընդ երկար ժամանակ. բայց հասարակօրէն չէ այնքան երկիւղալի, եթէ չլինիցի պատճառեալ 'ի վերոյիշեալ պատճառէ։ Իսկ եթէ անփոյթ անխնամ թողցի, մարթ է պատճառել զախտն ասացեալ՝ ջրգողութիւն, ախտադրունութի, որ ասի՝ քաքէսիա, ևն։

Յաղագս նշանաց վնասաւոր քաղցու, կամ աղաւաղեալ ախոր-ժակի, որ կոչի՝ Բիկա, կամ մալաքիա :

Կանայք՝ որք ունին զվերոգրեալ դժգունութիւն, բազում անգամ ունին եւս քաղց վնասակար, և ախորժակ ինչ անկարգ, և անկանոն, որով ձեռնամուխ լինին ուտել զանսովոր, և զանպատշաճ իրս, զոր օրինակ զաղ, և զհասարակ պղպեղ, զոհաս միրգս, զանեփ և զհում միս, և զձկունս, զկիր, զմողէս, զգոլոր, զմոխիր, զածուխ, զձիւն, զսառոյց, զթուղթ, զխաղախ հնացեալ, զպապուտս, և զայլ սոցին նման վնասակար և անսնունդ նիւթս : Իսկ ոմանք եւս 'ի նոցանէ մատաղիւր փափաքին և ախորժեն հոտոտել զգարշահոտս և զզազրելիս, և խաղալ նոքօք 'ի ձեռս են : Այս ապականեալ ախորժակ, որ է ճշմարիտ իմն ախտ, կոչի յաղջկունս՝ բիքա, իսկ 'ի յղի կանայս՝ մալաքիա :

Յաղագս դեղօրէից ախտիցս դժգունութեան, և վնասաւոր քաղցու :

Դեղքն և կառավարութիւնքն ախտի դժգունութեան են գլխովին նոյն ընդ դեղատուութեան, և ընդ կառավարութեան ախտի Թուլութեան, զորմէ խօսեցաք վերագոյնդ : Բայց գիտելի է, եթէ յորժամ ապականեալ ախորժակն յարատեւեալ մնայ 'ի երկար ժամանակս, կամ սակաւ ժամանակս, բայց այնքան սաստիկ, մինչեւ ախտաժէրն ձեռնամուխ լինի ուտել զվերոյիշեալ զանսովոր կերակուրս կամ նիւթս, պարտ է յայնժամ սկսանիլ նախ՝ 'ի գործ արկանել զփսխողականն, և զլուծողականն, առ 'ի մաքրել զստամոքսն, և զառաջին ճանապարհն, որք լցեալ եղեն այսպիսի այլանդակ նիւթովք, և յետ այնորիկ անցանել 'ի գործածութիւն երկաթոյ, քինաքինայի, և այլ զառանագքին իրաց : Բայց 'ի վախճանի՝ պարտ է գիտել, եթէ առաւել ապահովագոյն փորձեալ, և ազնուագոյն դեղն է ամուսնութիւն այսպիսի ախտացեալ օրիորդաց, որով արդարեւ ստանան իսկ և իսկ զառողջութիւն : Այլ յղի կանայք, որք ունին զապականեալ ախորժակն, հասարակօրէն մինչեւ չորրորդ ամիս յղութեան նոցին մնան այլազգ, և ոչ ունին պէտս իրիք դեղոյ, մանաւանդ փըսխողականի, ապա թէ ոչ՝ գնին յորոգայթ վիժման :

# ՅՕԴՈՒԱԾ Ե.

Յաղագս չափազանց դաշտանի, որ առ ի յիմաստնոց՝ Մենոռագի անուանի:

Դաշտանն կամ արիւնն ամենամսական, որպէս երբեմն սակաւ քանակութ., նոյնպէս և երբեմն յոյժ մե-ծաւ և չափազանց քանակութեամբ մարթի հոսել:

Պատճառք չափազանց դաշտանի:

Առատութիւն և չափազանցութիւն դաշտանի պատ-ճառի յանժուժկալական կեանս վարելոյ, յաղագս 'ի կծու, և 'ի զօրաւոր իմն կերակրոց, 'ի գործածութէ ոգելից հեղանիւթոց, 'ի սաստիկ աշխատութեանց, 'ի թուլութէ և 'ի ակարութէ փոքրիկ խողովակաց արգանդի, 'ի լուծակա-նութէ արեան, յանկարգ, և յանչափ կրից և բաղձա-նաց հոգւոյ, ևն:

Յաղագս Նշանաց ախտիս:

Նախ քան զամենայն՝ ախտաւորին լինի յոյժ տկարա-գին և գեղնագոյն, կորուսանէ զախորժակն, ապականի մարսողական զօրութիւն: Նաև զհետ գայ այսոցիկ այտուց իմն ոտից՝ նման էտեմա անուանեալ ուռուցից: Կա-նայք հասարակօրէն ենթակայ լինին այսպիսի պատահ-մանց 'ի հասակի 45 կամ 50 ամաց, և է յոյժ դժուա-րաւ բուժելի:

Յաղագս Դեղորէից չափազանց դաշտանի:

Դեղորէիցն այսր ախտի պարտ է լինել այլ և այլ, ըստ այլևայլութեան բուն պատճառացն՝ յորոց յառաջ գայ: Եթէ կարի սաստիկ լինիցի առատութիւնն դաշտանի, յայնժամ պարտ է 'ի մեծի անդորրութեան պահել զախ-տաւորն ըստ հոգւոյ և ըստ մարմնոյ, և պարտ է ընկող-մնեցուցանել զնա 'ի մահճի, 'ի խոնարհ դնելով զգլուխն, և ըստ պահանջելոյ հարկի՝ երակ հատանել 'ի բազկէն, նկատելով 'ի հասակն, 'ի խառնուածս ախտաւորին, և 'ի սաստկութիւն պատահարին: Կերակրոցն պարտ է լինել արգանակ հաւու, և որթու, սակաւ ինչ հացիւ: Ըմպե-

լին Թիզանա տի ռատիչէ տի օռԹիքա, կամ քօնսօլիտա մաճճիօռէ, կամ միլլէֆօլիօ. զոր պարտ է 'ի գործ ա_ծել զօրաւոր կամ Թեթեւ ըստ հարկի պահանջելոյ:

Իսկ եԹէ այսորիկ հնարք չլինիցին բաւական, յայն_ժամ պարտ է 'ի կիր արկանել զառաւել պնդակազմ եւ զօրաւոր դեղորայս, որպիսի են՝ քաչչիու, ալլումէ, քի_նաքինա են: Ահա կերպն կազմելոյ զայսոսիկ դեղորայս: Առ երկու տրամ՝ ալլումէ, եւ մի տրամ՝ քաչչիու, ման_րեա զամենայն 'ի միասին, եւ բաժանեա յութ կամ յինն մասունս հաւասարաչափս, կամ խառնեա ընդ բաւակա_նաչափ շիլօբբօ տի ռօզէի, եւ արա ութ հատս, եւ ըղ_չափս զայս 'ի գործ արկցէ ախտաւորն յաւուրն երիցս անգամ:

Իսկ այն անձինք՝ որոց ստամոքսն ոչ կարէ տանիլ զալ_լումէն, այսինքն պաղլեղի, պարտին 'ի գործ արկանել փոխանակ այնր զյետագայ դեղորայքն: Ընկալ մի ունկի՝ Թինթուրա տի ռօզէ, եւ տասն շիԹս՝ լաւտանօ լիքուի_տօ: Խառնեա, եւ մատո ախտաւորին զայս չափն՝ երեք կամ չորս անգամ յաւուրն: 'Ի վախճանի, եԹէ այսորիկ դեղորայք եւս ընդունայն լինիցին, պարտ է յայնժամ ախտաւորին առնուլ 36 ցորեան՝ քինաքինա փոշի արա_րեալ, եւ եդեալ զայն 'ի մէջ միոյ բաժակի գինւոյ, եւ յաւել 'ի վերայ 10 կաԹիլ՝ էլիսսիռէ տի վիԹռիօլօ, եւ կրկնեա զայս չափս չորս անգամ յաւուրն:

## ՅՕԴՈՒԱԾ Զ.

### Յաղագս ինչ ինչ գիտելեաց 'ի վերայ դաշտանի:

Դաշտանն է ենԹակայ յոլովակերպ փոփոխուԹեանց, զորս կարեւոր է ճանաչելն. քանզի են բազումք 'ի կա_նանց, որք 'ի մի եւ 'ի նոյն ամիս յոլով անգամ դաշտա_նաւորին, իսկ ոմանք եւս յերկուս կամ յերիս ամիսս միանգամ: Այլք քանի ինչ կաԹիլս յուրաքանչիւր ա_միս. 'ի վախճանի ոմանք եւս ութ, տասն, եւ 15 աւուրս դաշտանաւորին. բայց ոչ սոքա, եւ ոչ նոքա կրեն ինչ վնաս, այլ մանաւանդ վարեն զառողջարար կեանս: Դարձեալ գիտելի է, զի արիւնն տեռատեսական՝ ոչ միայն հոսի 'ի ծննդական անդամոցն կանանց, այլ բա_զում անգամ հոսի եւս յամենայն անդամոց մարմնոյ նո_ցին. որովհետեւ յոլով անգամ դէպ եղեւ տեսանել՝ հո_

ելլ տեռատեսական արեանն նաև 'ի ունգաց, յաչաց, յականջաց, 'ի բերանոյ, ըստ օրինակի թքոյ, 'ի ընդերացն, 'ի միզանց ճանապարհէ, 'ի գագաթանէ, 'ի ծնօտիցն, 'ի ստեանց, 'ի պորտոյ, յերանաց, 'ի ձեռաց, յոտից, 'ի մատանց, ևն։

'Ի վերայ այսոցիկ մասանց մարմնոյ սովորաբար երեւին ուռոյցք ինչ բորբոքողականք և ցաւալից, յորոց հոսի կամ կաթի արիւնն բնականաբար, և տեղին լինի խոց ինչ, որ փութով փակի, և յամենայնում ամսեան վերստին բացեալ լինի։ Արդ՝ 'ի գլխաւորս յայսոսիկ, պարտ է փութով երակ հատանել յոտիցն, և այնպէս վերստին դարձուցանել զդաշտանն 'ի բուն 'ի բնական ճանապարհն իւր։ Իսկ և նստիլ 'ի վերայ գոլորշեաց ջերմ ջրոյ, և 'ի գործ ածել կակղացուցիչ տեքօցիօնէ ևն․ բայց եթէ գլխաւորք այսոքիկ պատահին յերիտասարդ օրիորդս կամ յաղջկունս, կամ 'ի կանայս, 'ի սկզբան անդ չէ՛ օրէն իսկ և իսկ ձեռնամուխ լինել 'ի դեղորայս․ յորժամ տեսանեմք, զի թէպէտ դաշտանն զօրաւորեալ 'ի բուն ճանապարհէն, հոսի յայլ և յայլ անդամոց վերոյիշեալ մասանց, բայց ախտացեալն չկրէ ինչ նեղութիւն և վիշտս, այլ մանաւանդ վայելէ 'ի մեծի հանգըստեան, յայնժամ պարտ է թողուլ տալ բնութեան 'ի կառավարել զինքն, որովհետեւ նա իմաստնագոյն է քան զմեզ։

## ՑՕԴՈՒԱԾ Ժ·

Ցաղագս ախտի, որ ասի՛ Ֆլուօռէ, կամ Ֆլուսսօ պիանքօ, այսինքն է հոսումն ինչ սպիտակագոյն կանանց։

Հոսումն տեռատեսական հնար է թէ այլայլեսցի, որպէս ըստ քանակութեան, նոյնպէս ըստ որակութեան։ Ախտս կամ հիւթս այս՝ կոչեցեալ Ֆլուօռ պիանքօ, է յոյժ հասարակ, որում զհետ գան երբեմն 'ի փափկակեաց կանայս պատահարք ինչ տաժանագոյնք և դժուարինք․ և սակայն պատահի 'ի մեծահռչակ քաղաքս, ասկս բազմութեան օրիորդաց, կանանց ամուսնացելոց և այրեաց, և հասարակօրէն սկսանի 'ի հասակի 12 կամ 14 ամաց․ իսկ երբեմն և արտաքոյ սովորութեան պատահի հոսումն այսր հիւթոյ յաղջկունս 'ի հասակի ութ, և չորս ամաց․ ուստի և չէ՛ մարթ միշտ համարել զհոսումն այսր սպիտակ հիւթոյ՝ նոյն ընդ դաշտանի, որովհետեւ և 'ի ժա-

մանակի յղութեանն մարթ է կանանց ունել զայս հոսումն, բայց ոչ երբէք զհոսումն դաշտանի։ Հասարակօրէն հիւթս այս հոսի 'ի նոյն ժամանակի դաշտանին, և երբեմն մնայ յարատև, և երբեմն ոչ, երբեմն կանխէ, և երբեմն զհետ գայ դաշտանի. և երբեմն և այնքան զօրանայ, և անսովոր, մինչև շփոթել զբղձանն տեսաւասակին։

Նշանք հոսման ոսկրփաղկագոյն հիւթոց։

Հոսումն այս կոչեցեալ Ֆլուօռ ալպանքօ՝ ոչ է միշտ նոյնագոյն, այլ երբեմն լինի սաթգոյն, դեղնագոյն, կանաչագոյն են. և երբեմն ևս մոխրագոյն, և զառագոյն. իսկ երբեմն թանձրամած, և խառագոյն, են։ Կանայք՝ որք կրեն զցաւս զայս, միշտ լինին կերպարանօք աղաղունեալ, ունին զցաւս թիկանց և գլխոյ, և ս տկարաբար են ենթակայ այտուցման ոտից են։ Բայց յաղագս նշանաց, կանայք պատմեն զգան զթուլութիւն իւրեանց և ըղձմեղկութիւն, զծանրութիւն 'ի մէջս, զանհանգստութիւն 'ի ծունկս, և 'ի սրունս, զնողկանս, և զցաւս ստամոքսի։ Հուսկ յետոյ բազումք 'ի նոցանէ այնքան հիւծեալ տկարանան, մինչև համարել նոցա, եթէ ըմբռնեալ իցեն յախտէն կոչեցեալ Թիզիքա, այսինքն Թոքախտէ։

Յաղագս պատճառաց հոսման ոսկրփաղկագոյն հիւթոց։

Հասարակօրէն ախտս այս պատճառի 'ի թուլութէ, և 'ի տկարութէ գործարանաց արգանդի, և երբեմն յաղգելականութէ դաշտանի, յանչափ գործածութէ չոր կամ սրձոյ, և կամ այլ ինչ հեղանիւթոց։ Նոյնպէս յառաջ գայ 'ի թալկութէ անօթոց կմ՛ անձկագոյն մասանց արգանդին, ուր դումարեալ խափանին հիւթք մասնակարգ։ Դարձեալ, գլխաւոր պատճառն այսր ախտի՝ է արգելեալ մնալն 'ի տան ասանց շարժողութեն, և չքնաղութեն, որ անշուշտ պատճառէ բազում կանանց ըն-ցաւս զայս 'ի քաղաքս։ Դարձեալ, գոյ այլ ևս պատճառ գժուարաւ ճանաչելի, յորմէ բազում անգամ յառաջ գայ հիւթս այս ախտից. և է տկարութիւն ստամոքսի, որ պատճառէ զխառնակ մարսողականութիւն, յորմէ և զհետ գայ ապականումն հիւթոց, և այսպէս պատճառի թուլութիւն ամենայն գործարանաց, մանաւանդ առաւել արգանդականն գործարանաց։ Նոյնպէս պատճառեն

զախտս զայս ցաւօք և տաժանմամբ ծնանելն, վիժումն, տրտմութիւն, երկիւղն, եռացուցիչ կիրքն հոգւոյ. ևն: Բազում անգամ ևս յառաջ գայ 'ի գաղղիական և 'ի պօռնկութեական ախտից: 'Ի վախճանի՝ ախտս այս կա-նանց, որոց խառնուածքն են բուռն՝ առթէ բազում ան-գամ ամլութիւն. և զկնի դադարելոյ տեռատեսական ա-րեան՝ լինի ախտս յոյժ դժուարաւ ապաքինելի, և եր-բեմն ևս անապաքինելի:

Ցաւագին խնամատարութեան և դեղօրէից ախտին:

Նախ՝ պարտ է ախտաւորիս ստէպ ստէպ շարժումն տա-նել ըստ տանելոյ կարողութեան՝ առանց ծանր աշխատա-նաց. և չէ օրէն բնաւ մնալ միշտ յանկողնի անշարժ: Կերակրոցն պարտ է լինել պինդ և սնուցողական, բայց դիւրամարսելի. ըմպելին ազնուագոյն գինի Ջրախառն, և պարտ է արգելուլ գլխովին զգործածութիւն չայի կամ թէյի, և սրճոյ.

Իսկ որքան առ դեղորայս, 'ի դիպուածս ախտիս ըստ իմոց կարծեաց՝ ազնուագոյն դեղն է քինա քինա, զոր փոշի արարեալ պարտ է 'ի գործ արկանել. յամարայինն եղանակի բաղանիս առնել ցուրտ Ջրով յոյժ օգտակար է: 'Ի դիպուածս ախտիս միշտ կարեւոր է թեթև փոխա-ղականն. մանաւանդ յորժամ պատճառն ախտիս հա-մարի ակարութիւն ստամոքսի, կամ ապականեալ մարսո-ղականութիւն. 12 կամ 15 ցորեան իբեքաքուանա: Լու-ծողականն յոյժ պատշաճողական է ռապառապառօ մի դրամ փոշի արարեալ, կամ նոյնչափ ռատիչէ տի քօլօմ-պօ, և հապ կազմեալ ընդ բաւականաչափ շիլօբբօ տի աբին չէռվինօ: Իսկ երակ հատանելն 'ի դիպուածս ախ-տիս չէ հարկաւոր. բայց եթէ յորժամ լինի պատճառեալ ախտս յարգելականութէ դաշտանի, և բաց յայսմանէ յայլ ամենայն դիպուածս միշտ է վնասակար, եթէ կա-նանց, և եթէ աղջկանց՝ երակ հատանելն:

## ՅՕԴՈՒԱԾ Ը.

Ցաւագին ամլութեան, կամ անզաւակութեան, կոչեցեալ յիտալացւոց՝ ստէրիլիթա:

Ամլութիւն ևս պարտ է համարեալ 'ի թիւս ախ-տից կանանց. որովհետև բազումք 'ի նոցանէ գոլով ա-

մուսնացեալք, և ոչ ունելով զաւակս, ոչ կարեն վարել կեանս անցաւս և առողջագոյնս:

Յաղագս պատճառաց ամլութեան:

Ոգենաւորական և բազմապատիկ են պատճառք այսօրինակ ախտի: Գիրութիւն և պարարտութիւն չափազանց, տրտմութիւն, թուլութիւն, սաստիկ անպատակութիւն, և ցոփութիւն, գինեհարութիւն, գաղղիական ախտն, գործածութիւն բարկ ոգիաւոր հեղանիւթոց, և պարարտացուցիչ կերակրեղինաց. Եւ Ֆլուօռ ալպուս, այսինքն հոսումն ինչ սպիտակագոյն հիւթոց: Նոյնպէս յառաջ գայ 'ի սաստիկ և 'ի չափազանց հոսմանէ, կամ յարգելմանէ դաշտանի: Հաւաստի իմն է ապաքէն, եթէ կարի հիւթեղ և խոնաւուտ կերակրեղէնքն ապականեն զխոնաւութիւն, և զգոլորշիսն, և արգելական լինին բազմածնութեան, և զայս փորձիւ իսկ տեսանեմք, և ճանաչեմք. քանզի կանայք ամուլք և անզաւակք առաւել գտանին 'ի մէջ մեծատուն և փափկակեաց անձանց քան 'ի մէջ աղքատաց, և հասարակօրէն աղքատքն լինին միշտ բազմազաւակ, և բեղնաւորք:

Յաղագս դեղորէից ամլութեան:

Նախ՝ պարտ է այսպիսեաց վայելել 'ի քաջառողջ իմն օդս լաւ կարեաց, և յաճախ 'ի կիր առնուլ զկերակուրս 'ի խոտեղինաց, և առաւել ևս 'ի կաթնեղինաց. լաւ վկայելոյ ներհուն բժշկաց՝ բազում անգամ պատճառ անզաւակութեան լինի յառնէ քան 'ի կնոջէ. որք սակս նախ խրատեմք զայս խնամ տանիլ անձանց գործածութեամբ այսպիսի կաթնեղինաց: Նոյնպէս օգտակար է 'ի դիպուածս գործածութիւն դեղորէից. զորօրինակ ալլումէ, ֆեռռօ, սանկուէ տի տռակօ, էլիքսիրէ տի վիթռիօլօ, քինա, ևն, և 'ի վախճան ամի՝ ցուրտ բաղանիքն: Ամլութիւն բազում անգամ զհետ գայ տրտմութեան. վասն որոյ պարտ է ախտակրիս միշտ լինել ուրախ, և զսպել զամենայն կիրս հոգւոյ: Ո՛չ են բանք մեր աստանօր զամլութենէ որ պատճառի յապականութենէ ինչ խառնուածոցն, և յանտրամադրութենէ գործարանաց, որք զհետ գան գաղղիական ախտին, և աշխատելի ծննդեան ևն. քանզի յայսպիսի դիպուածս ձեռին վիրաբուժի պէտք են:

## ՅՕԴՈՒԱԾ Թ.

### Յաղագս վիժման, և անցուցման զաւակին :

Մր հասարակ կանայք են ենթակայ վտանգի վիժ-
ման զաւակի, ոմանք առաւել, և ոմանք սակաւ. վասն
որոյ պարտին մեծապէս փոյթ ունել զգուշութե յայսպի-
սի պատահարէ, որով ոչ միայն մնասեն կազմուածոյն,
այլ միանգամայն ենթակայ լինին այսպիսի վիժման զաւա-
կաց ընդ բովանդակ կեանս իւրեանց : Վիժումն մարթի
պատահել յամենայն ժամանակի յղութե. բայց հասա-
րակօրէն յերկրորդում և յերրորդում ամսեան, և ս
ոմանց 'ի չորրորդում և 'ի հինգերորդում ամսեան :

### Յաղագս պատճառաց վիժման կամ անցուցման :

Գլխաւորագոյն պատճառն վիժման է ծնունդն մե-
ռեալ զաւակի, տկարութի մօրն, թուլութին գործարա-
նաց և արգանդի, հոսումն ինչ անչափ, սաստիկ շար-
ժումն, և աշխատանքն, բարձումն ինչ ծանրագոյն իրաց,
ձկտումն ձեռաց 'ի բարձր տեղիս, փսխումն, հազն, կար-
կամութի և գալարումն, հարուածք 'ի վերայ որովայնի,
անկանիլն, տենդն սաստկագին, և անախորժելի հոտն.
յորդառատ հոսումն արեան, պարարտագոյն կերակուրքն,
և ս յոյժ սակաւ սնուցիչ կերակուրքն. սաստիկ խլրտմունք
ցանկական մասին, և կիրք ցասմնական մասին, որպէս
երկիւղն, տրտմութին, ևն : 'Ի վերայ այսոցիկ պատճա-
ռաց յաւելուն և սաստիկ պնդութին որովայնի, զոր յղի
կինն կրէ 'ի նշանաւոր ինչ ժամանակի. առաւել գոր-
ծածութին գինւոյ, սրճոյ, չայի, և ազխաւոր հեղանիւ-
թոց. իղձք վառեալք, այլ ոչ կատարեալք. ցաւք ինչ
սրտագոյն, վատթար կազմուածքն արգանդի, և ս գաղղիա-
կան ախտն. ևն :

### Նշանք, որք գուշակեն զվիժումն :

Մերձաւոր նշանք վիժման են ցաւք ինչ երիկամանց
կամ ստորին մասանց որովայնի, զգալն զցուրտ ինչ, թալ-
կութին և ուշագնացութի, բաբախումն սրտի, և 'ի խոնարհ
իջումն ստեանց և որովայնի, կաթիլ ինչ արեան, կամ
այլ ջրախառն հիւթոց, և խոնաւութեանց 'ի ծննդական

անդամոցն և այլն, այսպիսիկ նշանք երևին միով ամսով յառաջ քան զվիժումն. և յարատևեալ մնան մինչև ցայն վայր, յորում պատահի վիժումն:

### Թէ զինչ պարտ իցէ առնել յորժամ 'ի նշանաց գուշակի վիժումն մերձաւոր:

Յայսպիսի դիպուածս պարտ է դնել զկին կինն 'ի մահիճս, զետեղեալ զգլուխն 'ի խոնարհ, և 'ի ցածագոյն. պարտ է ունել զնա 'ի հանգիստ, և ուրախ, և սակաւ սակաւ քաջալերել զնա և չէ պարտ այնքան ջերմ պահպանել զնա: Կերակրոցն պարտ է լինել ոչ այնքան ջերմ, այլ զովացուցիչ բնութ՟, որպէս թեթև արգանակ, կաթն, և այլն: Նոյնպէս նկատեալ 'ի զօրութն ախտակրին, պարտ է երակ հատանել 'ի բազկէն գէթ վեց ունկի արեան. ըմպելին նորա ջուր գարւոյ, խառնեալ ընդ սուկօ տի լէմօնէ. եթէ ունիցի զլուծումն որովայնի. պարտ է տալ նմա մի տէքօցիօնէ տի քօռնօ տի չէռվօ: Իսկ եթէ ունիցի զփսխումն, նոյնպէս պարտ է տալ նմա սակաւ սակաւ յաւուրն երկու դրգալ բօցիօնէ սալինա:

※※※※※※※※※※※※※※※※※※※※※※※※※※※※※

## ԳԼՈՒԽ ԺԳ.

### Յաղագս ախտի որ ասի՝ մալաթիա ճէնէռալէ տէի նէռվի, այսինքն ընդհանուր ախտ ջլաց. կոչի և վափօռի, այսինքն գոլորշութիւն:

'Ի մէջ ամենայն ախտից՝ որք վնասաբեր լինին մարդկային ազգի, առաւել դաժանագոյն է ախտն ջլաց. որ և ս է յոյժ դժուարաբուժելի: Արդարև չէր բաւական մատեան մի ամբողջ առ 'ի գրել զբազմազան նշանաց այսպիսիկ ախտի: Քանզի զբեթէ բովանդակեն յինքեանս զնշանս ամենայն ախտից 'ի մի և 'ի նոյն անձն, բազում անգամ զանազանին և փոփոխին այլ և այլ կերպիւ յայլ և այլ ժամանակս նշանք այսպիսիկ ախտիս: Ո՛չ միայն վշտացուցանեն զմարմինն, այլև միանգամայն երբեմնապէս հաղգին ևս զգայ զաստիկ միշտս և զկիրս:

Յաղագս պատճառաց այսօրինակ ախտի ։

Այն ամենայն, որք թուլացուցանեն և թալկացուցանեն զմարմինն, պատճառեն զախտն ջղաց. որպիսի են ձանձրութիւն, դատարկութիւն, տռփանք, և սիրահարութիւնք, յանչափս գործածութիւն սրճոյ, չայի, և այլ ինչ այսպիսի ըմպելեաց ։ Դարձեալ, երակահատութիւն կամ արեանատուութիւն, սաստիկ լուծողականք, յաճախակի և ուժգին փսխողականք. հուսկ յետոյ այն ամենայն, որ զայրացուցանեն զմարսողականութիւն, կարեն պատճառել զախտս զայս ։

Դարձեալ, ախտս այս պատճառի բազում անգամ ևս յանչափապէս պարապելոյ յընթերցմունս, և գրելէ. սակաւք յուսումնասիրաց որք ոչ ընտրողութեամբ վարին, լինին զերծք յախտէս յայսմանէ. Եւ որ ոչ է պարտ զարմանալ, որովհետև ընթերցանութիւնք ոչ չափով արարեալք՝ հալեալ ծիւրեն զհոգի և զմարմին ։ Տրտմութիւն, անձկութիւն, վիշտն, ևն, կարեն նոյնպէս պատճառել զախս զայս. և համառօտիւ կամեցեալ ասել՝ այն ամենայն որ տկարացուցանեն զմարմինն, և ընդդիմակայ լինին կարողութեան հոգւոյ, մարթին պատճառել զախտս ջղաց ։

Յաղագս նշանաց այսօրինակ ախտի 'ի հասարակի ։

Այստանօր խօսիմք զառաւել գլխաւոր նշանաց միայն. քանզի զիւրաքանչիւր նշանաց ուրոյն ուրոյն գրելն լինի անօգուտ, և միանգամայն է անկարելի ։ Գլխաւոր նշանքն են վիշտն և ուռոյցքն ստամոքսի և փորոտեացն, աւելեալ 'ի փքոյ, անկարգութիւն ախորժակի, և մարսողականութեան. Իսկ զի բազում անգամ դէպ լինի, զի ախորժակն լինի անյագ, և մարսողականութիւն յոյժ արագ, և բազում անգամ ևս կերակուրքն մնան 'ի մէջ ստամոքսի անմարսական, և ախտաւորին փսխէ ջինջ և մաքուր ջուր, և մաղասս թանձրախիտս. առաւելին որովայնն հասարակօրէն զգայ զցաւ, որում զուգընթաց լինի կերկերումն և չչնջումն փորոտեաց. Երբեմն ևս արծայ հիւթ ինչ թանձրախիտ 'ի գոյն սրճոյ. որովայնն երբեմն լինի լոյծ. բայց սովորաբար պինդ, յորմէ և պատճառի փուք, և այլ սոյնպիսի անհանգստութիւնք ։ Մէզն երբեմն հոսի սակաւաքանակ, և չիթ առ չիթ, և երբեմն ևս առատօրէն. Եթէ նուազի, կարի իմն թանձրահիւթ և ներ-

կեալ, և կամ վաղվաղակի պղտորեալ և մրրալից. իսկ եթէ առաւելուցու, ջրալին և անգոյն։ Գոյն երեսաց լինի անկայուն. երբեմն կարմրագոյն քան զսովորականն, և երբեմն ևս գորշագոյն։ Քունն լինի միջահատական և ցնորական, և դրեթէ ոչինչ զօրութեն ընկալեալ. մինչև ըն մեծի մասին՝ ախտաւորն առաւել ընդ առաւօտն անհանգիստ լինի քան յերեկոյեան պահու յերթալն յանկողինն։ Ախտաւորն երբեմն զգայ ճնշումն կրծոց, բաբախումն սրտի, սեղմումն կոկորդի, դժուարութիւն ինչ 'ի շնչառութե, պտտումն գլխոյ, շառաչումն ականջաց, ցնցումն մկանանց։

Երբեմն ևս զգայ յանկարծօրէն 'ի վերայ յարձակել անդամոցն մարմնոյ ջերմութիւն ինչ, իսկ երբեմն ևս ցուրտ ինչ սաստկագոյն, մանաւանդ 'ի ժամանակս մերձաւորութե։ Զարկ բազկերակին լինի այլազան, երբեմն մանրագոյն քան զհասարակն. երբեմն ևս արագագոյն. ախտաւորն ստէպ յօրանջէ և ձգտայ։ Հուսկ յետոյ յարմատանալ ախտիս զկնի քանի ինչ ժամանակաց զգայ ախտաւորն ցաւ գլխոյ, գալարումն ջլաց, և սրագոյն ինչ ցաւ 'ի զանազան մասունս մարմնոյ, աչքն լինի թխատիպ և գորշ, քիրտն առատօրէն, լսողութին ակարանայ. վերջապէս ամենայն կենսական գործարանքն և զօրութիւնքն խանգարին, և աղաւաղեալ զարտուղին 'ի բնական ընթացից։

Ախտաւորն առ թեթև ինչ պատճառի վրդովեալ խռովի, զահի հարկանի, յուսահատ լինի. և կարի դիւրաշարժ լինի 'ի տրտմջանս։ Բայց առաւել հաւաստի և սովորական նշանքն 'ի դիպուածս ախտիս են՝ անհնարին երկիւղն մահու, որով իբրև խելացնոր լինի, և տանջի երեւակայութեամբ, տկարանայ յիշողութիւնն, և կերկերի ձայնն։ Են և բազում ախտաժէտք՝ որք 'ի սոյն օրինակ վիճակի կրեն զծանրատաղտուկ ցնդութե որովայնի, և բազում նեղութե թափեն զաւելորդս այնդս գնդակախիտս, կամ որպէս աղբ այծեայս. և յոլով անգամ այտուցիւ, 'ձկտմամբ և ցաւով թանչից. և երբեմն ևս տանջի տարաւեցուցիչ և բաղմատանջ թորմամբ որովայնի։

Գիտելի է, զի զկնի առժամանակ ինչ կրելոյ ախտակրիս զմեծագոյն մասն այսոցիկ նշանաց, (ասացի զմեծագոյն մասն. որովհետև քաջայայտ է՝ զի ոչ ումեք մարթ է կրել զամենայն նշանս անթերի.) պատահի բազում անգամ, զի եղկելի ախտաժետեալն սահի յախտն կոչեցեալ մելամաղձոտ, և խելացնոր լինի. բազում անգամ

և անկանի յախտս կոչեցեալ իսթերիքա նեւրա, ջղը-
գողութիւն, թուլախտութիւն, անդամալուծութիւն, անդա-
մադօսութիւն, և որ այլ ևս ախտք տաղտկանաւորք և դժ-
ուարաբուժելիք :

Խրատք, նշանաւորութիւնք, և դեղատուութիւնք ընդհանրապէս .
առ 'ի հաստատել նախ զպաշտամունս ջղաց և ստամոքսի,
և ապա 'ի հանդարտել զնոյն ջիղսն :

Առաջինն ցուցանէ զկանոնս ժուժկալութեան որկորոյ,
և ևս զգործածութիւն դարմանոց՝ որք առաջնորդեն 'ի
լաւագոյն մարսողութիւն կերակրոց . և այս իսկ է, որում
զհետ գայ բարիոք սնունդ, և նորոգութիւն կորուսեալ զօ-
րութեանցն : Երկրորդն հայի 'ի կատարեալ կանոնաւորութիւն
կրից հոգւոյ, և զբաղմանց ոգւոյն և յարտաքսումն կղը-
կղանաց՝ տարբեր կարգադրութեամբ, զորոց կախեալ կայ
յաւէտ կամ նուազ զօրութիւն, և բարիոք կամ չարաղք
կարգաւորեալ գործողութիւն ջղական բնութեան :

Տեսցուք արդ զժուժկալութիւն որկորոյ՝ որ 'ի յախտա-
ժէտութիս : Այս է հիմն յորոյ վերայ հաստատեալ յենու
ամենայն երջանիկ կամ ապերջանիկ գործողութիւն դարմա-
նոց բժշկին : Չէ՛ հնար անդադոյնս համոզել զմիտս եթէ՛
քաջառողջաց, և եթէ ախտացելոց՝ թէ է յոյժ կարևոր
փոյթեռանդն ծառայութիւն ընկալեալ կերակրոցն . և կամ
սակաւ ծանուցանել նոցին՝ եթէ ստամոքսն ոչ լինու զտեղի
աղօրեաց ատամանցն, և ոչ իսկ ընդելոյքն լինուն զպակա-
սութիւն պաշտամանց խախացոցին : Բազում ինչ կայ ա-
ռացեալ և գրեալ զընտրութեան պարենից, որք ճահողա-
գոյնքն են՝ լաւագոյն սննդեան մարդկային մարմնոյ . և
սակայն ճշմարիտ է, թէ չիք կանոն ընդհանուր, որ պատ-
շաճեսցի զինչ և իցէ կլիմայից, դրից երկնից, ազգի, և
կամ ում և իցէ անհատի :

Կերակուրքն, որ բնութեան մարդոյս առաւել համեմատ
են, և առաւել դիւրաւ բերին 'ի համանմանութիւն, երևի
թէ է կաթն, և առողջ միս ընտանի և վայրենի կենդա-
նեաց . և սակայն 'ի ջերմագին գաւառս, որպէս ուսու-
ցանէ մեզ փորձառութիւն, վնասակար է յաճախ և ա-
ռատ գործածութիւն մսոյ . իսկ զբուսական կերակուրսն՝
թէպէտ նուազ սնուցանեն, և կարի փքոտ են, բնակիչք
գաւառաց ընդ տօթագին աստիճանաւ արեգական՝ կա-
րի խրախամբք նախադասեն քան զմսեղէնս : Այլ 'ի գա-
ւառս յաւէտ հարաւայինս տեսանի, զի հասարակագոյն

գործածութեան բուսական ուտելեաց՝ համապատասխան է
գործածութիւն ջերմահամոց, զոր օրինակ կինամոնի, մ
կահոտ ընկուզի, հիլի, մեխակի, և 'ի վեր քան զամենս
պղպեղի: Որով ցուցանի, թէ 'ի գործածութեան պարեն
ըն բուսական տեսակին միայն՝ առանց օժանդակութե
համեմիչ և ոգելից խմանի ինչ, դժուարաւ և նեղու
կատարի մարսողականութիւն. Նոյնպէս և 'ի միւս կող
նէ 'ի պակասութեան գրգռիչ իրացս այսոցիկ, արտաշնչ
թիւն մորթոյ մարմնոյն և քիրտն այնպէս չափազանց
նին, մինչև վաղվաղակի զհետ գալ բոլորական պար
սութեան և լքման կենսական զօրութեանց:

'Ի դիպուածս սաստի ջլաց՝ կերակուրքն մեղմէնք, (
որում միշտ կից իցեն թեթև ինչ ընդելզէնք, որք ոչ կ
րի ջրայինք իցեն, և ոչ կարի մեծոտք, են ընտրելագ
կերակուրք 'ի ժուժկալութեան որկորոյ: Փոխանակ ա
րարտ, և անծամբելի, և դժուարամարսելի մսոց, եղի
ճագ հաւուց, կաքաւք, ծիտք, ձկունք քաղցր ջրոյ.
պիտի են կռնկածուկն, կարմրախայտն, և այլ սոյն
ակք: Նոյնպէս սակաւ ինչ հաց թաթախեալ 'ի մէջ
բաժակի գինւոյ յամենայնում աւուր չափաւորապէ
գործ արկեալ զօրացուցանէ զստամոքսն, և դիւրաց
ցանէ զմարսողականութիւն. ուստի ճահողագոյն է ես
րառութիւն ջրախառն ազնիւ գինւոյ:

Այլ քանզի չիք ոք՝ որոյ ժամանեալ 'ի հասակ ե
սուն և աւելի ևս ամաց, չիցէ անձամբ անձին զվ
առեալ յաղագս ժուժկալելոյ 'ի կերակրոց, թէ ըն
րում անհատական բանի՝ ո՞յք ոմանք օգտակար իցեն
ո՞յք ոմանք վնասակարք, նմին իրի քաջայայտ է, թէ
կանոն ժուժկալութեան որկորոյ՝ առանց ինչ ամենևին
ցառութեան, զոր առ ամենեսին հաւասարապէս հնար
մերձեցուցանել առ 'ի գործածութիւն: Ստուգագոյն
է, եթէ առաւել քանակութիւն ընկալեալ կերակրոց՝ .
թէ որակութիւն նոցին վնասէ առողջութեան մարդկան:

Եւ բազում անգամ չափազանց զբաղմունք և հ
ոգւոյն՝ դառնան ժամանակաւ 'ի ծանր տուգանս ս
մոքսին. և որ միանգամ 'ի մէջ այնց զբաղմանց՝ հա
դրի վարել զկեանս իւր զուրկ 'ի շարժմանց մարմնոյ, 
նի կրել զնմ զչարաշուք վնաս եղծեալ և խանգար
մարսողութեան, և ըստ նմին մարսողութեան ունի և զմամանցն:
Որ ոք ընդ բազում ամս կրեալ է զայսպիսի ախտս ջ
թէպէտ և առողջասցի, տակաւին պարտի երկնչել ա
ւել քան զամենայն յանզգուշութեանց ժուժկալութե

կորոյ. Թէպէտև Թեթևաբեան ինչ իցեն ։ Վասն այդպիսի դիպուածոյ՝ բժշկական փորձառութիւն յօրինէ նըպաստս մեծապէս գործունեայս՝ զդեղորայս կոչեցեալս դառնագինս, և կազդուրիչս, 'ի պէտս կարի խիստ քնքուշ, և զգայուն հիւանդաց. բայց միայն՝ զի մի՛ ունիցին նոքա զորովայնալուծութի. առաւել քան զամենայն 'ի վեր արկանեմք տէքօթթօ տի գուասսիա ։ Այսինքն՝ ա՛ռ տրամ մի տաշած փայտին կոչեցելոյ գուասսիա, և 'ի հասարակ ջրի եփեա՛ եռացմամբ իբր քառորդ մի ժամու. ապա զըտեա՛, և մնասցէ եօթն ունկի. յոր յաւել ունկի մի աքուա տիսթիլլաթա տի մէլառանչիա. և ապա առնուլ պա՛րտ է երիս դրգալս սեղանոյ երիցս յաւուրն ժամ մի յառաջ քան զկերակուրն ։

Ը և այլ դարման, որ առանց զայրացուցանելոյ առաւելու զկար ջղաց, և ստամոքսին՝ որք զանդաղ գտանին, այն է չափաւոր գործածութի (որպէս թէ փոքրիկ գաւաթ մի ընդ երեկոյս) պաղպաղակի կամ օշարակի յօրինելոյ 'ի փոնչէ, որ է կէս ոգեղէն ըմպելի անգղիացւոց. պատրաստեալ յոգեացն զոր կոչեն առռաք, կամ ռում, եդեալ 'ի վերայ ջուր, քամածն լեմոնի, և շաքարի ։ Եթէ ախտաժէտն ունիցի զպնդութի որովայնի, պա՛րտ է տալ նմա սակաւ ինչ ռապառպառօ, կամ այլ ինչ բարեխառն և թեթև լուծողականս առ 'ի արգելուլ զպնդութիւն. բայց զգուշանալ արժան է չտալ նմա սաստիկ լուծողականս, որպիսի են՝ ալօէ, չիալապպա, տիակրիտիօ են ։ Ինֆուզիօնէ տի սէնա, կամ տի ռապառպառօ 'ի մէջ օղւոյ, կամ բարիոք ևս 'ի մէջ գինւոյ, է յոյժ յարմարագոյն և օգտակէտ 'ի դիպուածս յայս ։

Իսկ եթէ ոք վասն տկարութե՛ ստամոքսի և ջղաց կրէ յաճախակի զորովայնալուծութի, երկար փորձառութե՛ ուսայ, եթէ գերազանց դեղ իմն է գործածութի փոշւոյ ինչ՝ որ այսպէս բաղադրի ։ Հնգետասան կշիռ ցորեան՝ ռատիչէ տի քօլօմպօ, և տասն կշիռ ցորեան՝ ցուքքէռօ առօմաթիձձաթօ տի մաչէս ։ Եւ զայս պա՛րտ է առնուլ երիցս անգամ յաւուրն ։ Այլ 'ի դիպուածս, յորում մարսողական զօրութիւն լինի առաւել խանգարեալ, և ջիղքն տկար և թուլագին, յայնժամ պա՛րտ է 'ի վեր արկանել զյետագայ դառնագին ըմպելիս. որ այսպէս յօրինի ։ Առ՝ հեղ մի և կէս լիտր ազնիւ գինի կամ օղի 'ի ցուրտ ապակի անօթ կամ շիշ, և ընդ այսմ ոգեղէն հեղուկի խառնեա՛ մի ունկի՝ քինա քինա, կէս ունկի՝ ճէնցիանա, և նոյնչափ՝ սքօռցէ տի առանչիա, և երեք տրամ՝

սեղմի առ քօռիանտօլօ ։ Փքալ խցեալ և խփեալ զանօթ
վերոյասացեալ, թող զխառնուրդս զայս մարսել 'ի մի
մեանս՝ ըստ միջոց հինգ կամ վեց աւուրց ։ Յետ այնորի
փոխադրեսցես զհեղուկս զայս յայլ ապակի անօթ, և յըմ
պելոյ առաջ արբցէ՛ հիւանդն մի գրգալ սեղանոյ 'ի մէջ
կէս սկահակ ջրոյ մի ժամ յառաջ քան զնախաճաշիկն
զճաշն, և զընթրիսն ։

Բայց 'ի սոցանէ և 'ի սոցին նման դարմանոց, որկայ
փորձառութիւն ուսոյց ես զնշանաւոր զօրութիւն դարմա-
նոյ ինչ՝ որ յաւէտ առաւելին ինչ է՝ քան գեղագործայ
արարք. զոր և 'ի բազում ժամանակաց հետէ յոլով ե-
րևելի բժիշկք եւրոպայիոյ 'ի կիր առին. այն ինքն է՝ սախ-
տակ պղպեղին ամբողջ, յորմէ պարտ է առնուլ 12 հատ
'ի գնալն յանկողին ։ Զի եթէ զպղպեղն սախտակ, և ոչ ա-
ռաւել զսեաւն՝ առցէ ոք փոշի լուծեալ, փոշին այն վասն
տարածականութեան իւրոյ ընդ բովանդակ ներքին մակե-
րևոյթ ստամոքսին և ընդերական խողովակին, գրգռէ
զամենայն մասունս՝ յորս մածանի. և առաւել ևս լու-
ծեալ 'ի ստամոքսական հիւթոցն, ծծեալ ընկլմի ցնդա-
կան մասանն, որ անցեալ գնայ 'ի զանգուած արեանն. ա-
ռաւելու զառնելութի անօթոց արեան, և այնպէս կարի
իմն ջերմացուցանէ զմարմինն ։ Զորոյ զամենայնի զհակա-
ռակն է տեսանել 'ի գործածութեան սախտակ պղպեղին,
առեալ զայն ամբողջ, և իբրև զհատս. քանզի նկատեմք՝
զի համեմինչ սերմանքս այսոքիկ ոչ լուծանին բովանդակ,
այլ ներգործեն միայն ըստ սակաւ ծայրից շօշափելեաց 'ի
սորին մակերևութի սննդագործ խողովակին, և մեղմով
առաւելուն զառնելութին. յօժարեցուցանեն յարտաքս-
սուսն փքոց՝ որք առ յարմարութեան իւրեանց կարի իմն
արգելեալ մնան, և հուսկ ուրեմն նաև ամբողջաբար ար-
տաքս ելանեն յուղիղ փորոտեացն ։

Եւ արդ՝ ըստ այսմ օրինակի կազդուրեալ ստամոքսին
և ջլացն, նպաստիւք բարւոք մարսողութե, աննարակոյս
ընկալցի ախտակիրն զկատարեալ սնունդ և զհամապատ-
շաճ ուժեղութիւն ջլաց և բովանդակ մարմնոյ ։ Առ 'ի
յառաւելուլ զզօրութին նաև արտաքին նպաստիւք, ըղ-
շահեկանութի մառցիալէ կոչեցեալ բաղանեացն կրկին
և կրկին յանձն առնեմ, իբրև զամսօրեայ մի ժամանակ
մտանել 'ի բաղանիս ցուրտ ջրոյ ծովու ։ Ո՛չ ինչ ընդ հատ
շահեկան է և օրըստօրեայ հեծելութի ձիոյ, կամ կառաց՝
եթէ հնար իցէ. բայց միայն զի մի՛ լինիցի յետ կերակրոյ՝
երբ ծանրացեալ իցէ ստամոքսն ։

### Մաքրութիւն աղտեղելոց ջրոյն. այն է՝ ի հանդարտելն զտելոյ, զկտանալոյ, և զորամաղելն :

Որովհետև յերկարաժամանակեայ ախտաժէտութիւնս՝ ամբոխուածն ջրոց՝ ըստ առաւել մասին զհետ գայ մեծի ակարութեան մարմնոյ, իբր զի ըստ նմին համեմատութեան առաւելու և զզայունութիւն ջրային բնութեան, նմին իրի երբ միանգամ կազդուրի ախտակիրն, հետ զհետէ նորոգի և հանդարտութիւնն ջրոց: Այլ այս ճշմարիտ է, զի ջիղքն միայն՝ յորժամ ուժգինս և յաճախակի շարժիցին 'ի սաստիկ կրից ոգւոյն, և կամ 'ի բազմապատիկ հոգոց պարապասին, և կմ՝ 'ի չափազանց ուսմանց կարի իմն նուաղին, թէպէտև չիցէ լեալ յառաջընթաց ֆիզիգական ակարութիւն, ինքնին լինին առաջին պատճառ հետևորդ ակարութեան մարմնոյն և գլխաւոր պաշտամանց նորին: Յայսպիսի դիպուածս երևին յաւէտ վնասակար գոլ՝ քան օգտակար, դեղորայքն թօնիքօ կոչեցեալքն, և կազդուրիչ կամ զօրացուցիչ (այսինքն քօռռօպօռանթէ) ասացեալքն: Իսկ ընդ հակառակս՝ օգտակար են թուշական դեղորայքն՝ որք նուազ մղիչք են, որպիսի են՝ ագուա տիսթիլլաթա տի քասթօռիօ, տի վալէռիանա սիլվէսթրէ, սբիռիթօ տի նիթռօ տօլչիֆիքաթօ, լիգուօռէ տի քօռնօ տի չէռվօ, էթէռէ սոլֆօռիքօ, և նոյն իսկ ափիօնն զգուշութեամբ և չափով ընծայեալ, բայց միայն՝ զի բարձեալ իցեն, և կամ ընդհատեալ իցեն բարոյական պատճառք արտադրիչք ամբոխմանց այսոցիկ:

Յայսպիսի դիպուածս այնչափ է չափազանց զգայունութիւն ջղացն, մինչև՝ թէպէտ և այլ մասունք մարմնոյ 'ի ակարութեան գտանիցին, 'ի սկզբան անդ բժշկական դարմանոցն, ընդդէմ դառնայ զինչ և իցէ խթիչ դեղորէից: Ես ինձ իսկ ոչ այլազգ յաջողեցայ դարման տանել, բայց եթէ տալով զառաւել աղուականն 'ի դեղորէից աստի, որպիսի է էլիսսիռէ տի հալլէռօ, զորոյ չինելոյ կերպն ունիս տեսանել 'ի տառն՝ Է. 'ի կարգի իւրում: Զայս դեղ ես բազմօրինակ գրեմ առ հիւանդաց: Զոր օրինակ. 'ի լիտր մի հասարակ ջրոյ, որ քաղցրացուցեալ իցէ շաքարիւ՝ որչափ և կամք իցեն, արկանեն քսան կմ նաև 25 կաթիլս էլիսսիռէ աչիտօ տի հալլէռօ, որ լինի ըմպելի ինչ ախորժելի քմաց, և նման հասարակ օշարակի լեմոնի: Ըմպելեաւս այսոր արբցէ հիւանդն չորս ունկի՝ երիցս անգամ յաւուրն: Երբեմն ես գրեմ՝ երկու տրամ

'ի վերոգրեալ եղիանակէն, յաւելլով 'ի նոյն ջրոյ ունկի՝ անարժեքի ինչ շաքարայ, որպիսի է շաքարայն լամփիօնի, լասինկերէն՝ սխառուփոսս ռոսայի ինէի, և կամ շաքարայն հաղարջի կամ աղալծի, լասինկերէն, սխառուփոսս ռիպէ_գիօռում: 'Ի ձմեռն շաքարայէ առաւ ինը ջրոյ ունկի հե_ղեալ լինի 'ի լիտր մի կամ աւելի ևս ջրոյ, ըստ որում գիտելով անարժեքի իցէ քմաց, և առաւել լինի անարժեքի ըմպելիքս այս 'ի միջոցի քաղն և ջրոյ ժամուց: Ցետ ըմ_պելոյ բաժակ մի յըմպելւոյ առաւ, պարտ է լուանալ բե_րանն, առ նախապահելոյ զատամունս 'ի ներգործուէ թթուոյն:

Այլ առաւելութեամբ կամեցեալ զզօրութիւն նաև արտա_քին նարպաստիւք, բազում անգամ փորձեալ եմ զօգտա_ւէտութիւն վերոյիշեալ եղիանակէ ամի աչխոռ հաշէուօի, լուանալ տալով երկիցս անգամ յաւուրն զբոլոր մի_կունս, 'ի սկզբան զով ջրով, և հետ զհետէ միշտ աւա_ւել ցուրտ ջրով յոր եղեալ էր հեղուկս այս. այլա 'ի բարերբ յաջողել ազգի՝ պարտ է կարգել զգործածու_թիւնն համբայիս և մաւացիարէ ջրոյն սխայի, որ առ՝ աքուս միմեռալէ ամի սիա, տալով ակռանկրաց ժամէ 'ի ժամ ջրոյ ունկի՝ 'ի պահ առաւօտուն, մինչև լցցի լիտր մի յաւուրն: Այլ զի մի՛ ջուրս այս համբային վասն դիւ_րաշինչութեան շողեացն կորուսցէ զկայ իւր, այսինքն զըս_կիզբն ածխային զպարունակեալն յինքեան, պարտ է քաշ խփել զամոթ նորին, և շղջում պահել յայլում անօթի՝ որ լի իցէ զով ջրով:

Եւ յետ այսոցիկ զթինթուռաս ամի մառթէ ըստ չափու չորից ունկեաց՝ երկիցս անգամ տալ յաւուրն. և ապա զնորդագոյն խառնուածս նոյն իսկ երկաթոյ՝ համդերձ յա_ւելուածով դառն ինչ էսթուաթթօյի, որպիսի են՝ օշինդ_րըն, կամ գուասախան, և կամ ռապառպառօն են: Եւ զխառնուածս զայս երկաթոյ տամ ըստ կերպի փոշւոյ, կամ նաև իբրև հապ. եթէ իբրև փոշի, պարտի լինել ութ կշիռ ցորեան՝ ամենամաքուր խառնած երկաթոյ, և նոյնչափ ռապառպառօ, կամ ռառոիչէ ամի քօլօմպօ, և քանի մի կաթիլ իւղ էսպկան կինամոնի, կամ օլէօ ամի մանչիո. 'Ի փոշեաց աստի առցէ հիւանդն զերկուս կամ զերիս յաւուրն: Իսկ եղանակն, զոր պահեմ 'ի տալն զհապսն՝ է այս: Առ երկու դրամ էսթուաթթօ ամի սա_սէնցիօ, կամ գուասախա. և կամ ռապառպառօ, դրամ մի և կէս վերոգրեալ խառնածգ. և յաւել այնչափ փօլ_վէրէ ամի քալամօ առօմաթիքօ՝ որչափ պէտք իցեն առ

կազմելոյ ըստ կանոնաց արհեստին. պատրաստածս զայս արարեալ հատ՝ որ կշռիցէ երեք ցորեան, և շրջապատեալ փոշւով կինամոնի կամ մակնեզիայի, տացին հինգ կամ վեց հատք, երկու անգամ յաւուրն:

Յորժամ առ կարի ինն զպայուսնուէ հիւանդացն հարկադրիմք յետս կալ առ ժամանակ մի 'ի քուառօպօռան-դէ և 'ի Թօնիքօ կոչեցեալ դեղորէից, կարող եմք 'ի նմին պահու 'ի գործ ածել զառաւել Թռչական, և ըզմեղմացուցիչ անօտինօ կոչեցեալ դեղորայսն: Սակայն 'ի մէջ սոցա ես ընտրեմ 'ի սկզբանն զայնոսիկ, որք նուազ խմԹիչքն են, որպիսի են, ագուա տիսԹիլլաԹա սէմփլիչէ տի քասԹօռօ, տի վալէռիանա, ևն: Զորօրինակ. առ երեք ունկի՝ ագուա տիսԹիլլաԹա տի վալէռիանա, երկու ունկի տի քամօմիլլա, ունկի մի տի քասԹօռօ, քսան կաԹիլ սփիռիԹօ տի նիԹռօ տօլչիֆիքաԹօ, և քսան կաԹիլ լիգուօռէ տի քօռնօ տի չէռվօ: 'Ի խառնուրդէ աստի, յոր՝ եԹէ ախորժեսցեն քիմք հիւանդին, յաւելցի նաև իբրև կէս ունկի կամ աւելի ևս՝ շաքարայ ինչ չիննեալ կեղևոյն՝ որ կոչի քօռԹիչչիա տի նառանչի, տացի 'ի ջղային ախտակրուԹեան յիւրաքանչիւր ժամու կէս ունկի:

Իսկ եԹէ այսոքիկ ախտակրուԹիւք կարի ինն սաստիկ իցեն, և կից ընդ հանապազորդ արԹնուԹեան, և կամ ընդ ջղացաւուԹեան, յայնժամ 'ի վերայ բովանդակ նախադրեալ պատճենի դեղոյդ մարԹ է յաւելուլ տասն մինչև ցքսան կաԹիլս՝ լաւտանօ լիգուիտօ: Երբեմն առ հանդարտելոյ զջիղսն, ես դիմեմ 'ի գործածուԹեան ինֆուզիօնին, որ լինի 'ի ջուր ջերմ, երկու տրամ յարմատոյ վայրենի վալէռիանայի (որ ժողովեալ իցէ 'ի լեռնային տեղեաց) ընդ մէջ միոյ քառորդի ժամու: Զոր և միայն եօԹն ունկի՝ և յաւելեալ լինի 'ի վերայ ունկի մի ագուա տիսԹիլլաԹա տի քասԹօռօ, և նոյնչափ շիռօբբօ տի քամօմիլլա, և քսան կաԹիլ էԹէռէ սօլֆօռիքօ: Յինֆուզիօնէ աստի՝ յերկուս ժամս միանգամ առնու ախտակիրն ունկի մի՝ առ իւրաքանչիւր նուագ:

Իսկ եԹէ ոք առաւել ախորժէ 'ի գործ ածել զհաստս, 'ի տրամակայուԹեն ջղախտուԹեան, ես տամ զնոյն պէսպէս եղանակաւ, և բարւոք յաջողի: Զորօրինակ. առ տրամ և կէս էսԹռաԹԹօ տի քամօմիլլա, և նոյնչափ էսԹռաԹԹօ տէլլա վալէռիանա, այլև տրամ մի ասսաֆէԹիտա, առ և փօլվէռէ տի ռատիչէ տի քալամօ առօմաԹիքօ՝ որչափ պէտք են վասն շինելոյ զհաստս. որք

մէն մի կշռեսցեն երեք կամ չորս ցորեան, զորս շրջապատեալ փոշւովն կեղևոյ նարնջոյ, տացես հիւանդին հինգ կամ վեց հատ երկիցս յաւուրն: Իսկ եթէ տհաճելի է նմա հատ ասաաֆէթիտային, փոխանակ նորա 'ի զանգուածն անդր նախագրեալ հաբիցդ արկցի կէս տրամ մօսքուս օռիէնթալիս, իսկ զի սա առաւել թանկագին է, և նուազ գտանի:



# ԳԼՈՒԽ ԺԳ.

Յաղագս ախտին՝ որ ասի դիսպէպսիա, այս ինքն թարգմանեալ ջղային դժուարամարսութիւն:

Ախտս այս է խօթութիւն ինչ ստորին որովայնի, պատճառեալ 'ի գօսութենէ կամ 'ի թալկութենէ մանրաթելից մկանանց ներքին որովայնի, որով և խանգարի և չարաչար վնասի գործողութիւն մարսողութեն, և առնելութեն ջլաց: Զախտս այս բազումք անուանեն առհասարակ նաև ինտիճէսցիօնէ, այսինքն անմարսութիւն. կոչի և մալաթթիա նէրվօզա, կամ քրօնիքա ռէպօլէցցա. այսինքն ախտ ջլաց, կամ երկարատև տկարութիւն. որովհետև ունի մեծ ազգակցութիւն ընդ ախտին որ ասի՝ մալաթթիա նէրվօզա: Իսկ կայան, կամ բնակարան նորա որպէս ասացաք՝ է ստորին որովայնն:

Պատճառք ջղային դժուարամարսութեան:

Բազմակերպ են պատճառք ախտիս, երբեմն յառաջ գայ 'ի տկարութենէ մանրաթելից մկանանց ներքին որովայնի: Երբեմն ևս 'ի դիւրազգածութենէ ջլաց կամ մանրաթելից մկանանց ստորին որովայնին: Եւ երբեմն ևս 'ի գօսութենէ նոյն մանրաթելից մկանանց ստորին որովայնի. յայն ատեն կոչի և բարալիզիա տէլ վէնթրիքօլօ: Հնար է ևս պատճառել յայնմ ամենայնէ որ սաստկապէս թուլացուցանեն զջիղս և զնոյն մանրաթելս, որպիսի են՝ ոգելից հեղանիւթքն, թմբրեցուցիչ և ջերմահամ դեղորայքն, անչափ գործածութիւն ջերմ ջրոյ, սրճոյ, չայի, և այլ ինչ այսպիսի ըմպելեաց: Դարձեալ, հեշտութիւնն իգամոլութեն, սիրահարութիւն, ստէպ ստէպ երակ հատանելն,

կամ արիւնատուութիւն, ուժգին լուծողական, փոխողական և թքաբեր դեղորայքն կարեն պատճառել զյղային դժուարամարսութիւն զայս։ Մարթ է ևս յառաջ գալ 'ի սաստիկ կրից ոգւոյ, 'ի տարապայման զբաղմանց յուսմունս։ Նաև չափազանց աշխատութիւնք մարմնոյ, օդ հրատապ 'ի ցերեկի և վնասակար ցրտութիւն գիշերային, բազում անգամ պակասութիւնքն առողջարար և սնուցիչ կերակրոց, և աղտաղաղին և անմաքուր ջուրք. այդ ամենայն պատճառք են անվրէպ թշնամի առողջութեան մարդոյ, թէպէտև յաղթանդամ և զօրաւոր ոք իցէ։ Դարձեալ մարթի ևս յառաջ գալ 'ի յանշարժական կենաց վարելոյ, և 'ի խոնաւութենէ օդոյ։

Նշանք ջղային դժուարամարսութեան։

Մարթ է ճանաչել զախտս զայս 'ի յանկարգութենէ ախորժակի, և մարսողականութեան, 'ի յօժարութենէ 'ի ժայթքել, կամ 'ի նողկութենէ սրտի, 'ի ստէպ ստէպ յօրանջմանէ, և 'ի ձգձգմանէ, 'ի զարմանալի իմն խառնակութենէ մտաց, 'ի կարի իմն այտուցմանէ և ծանրացմանէ ստամոքսի, և ստորին որովայնի. որում երբեմն զուգընթանան ցաւ խայթիչ, ժայթքումն, և մզումն բռնական, և դրեթէ ցնցական, որ կոչի քոնվուլսիվա։ Անդէն նոյնհետայն սկսանին 'ի վեր երևիլ այլևայլ ամբոխմունք 'ի պաշտաման ստամոքսի և ստորին որովայնի. հետ զհետէ նուազութիւն, և եղծումն մարսողութեան, և զգայամանք օդեղէն հոսանուածոց. քանզի 'ի մեղկիլ ստամոքսին և 'ի թուլանալն՝ կերակուրքն ոչ ևս զօրեն մարսիլ և տարրիլ՝ ոչ փութանակի, և ոչ իսկ անագան, այլ կան մնան 'ի պարկի ստամոքսին իբրև 'ի քիմիական իմն քայքայման, որպէս եթէ արկեալ իցեն յաման ինչ անձուկ 'ի կենսական շարժմանէ։ Հոսանուածն՝ որով լինին ատացեալ ըզզայամունքդ, մարթի բազում անգամ լինել մեծաքանակ յոյժ. մինչև շուրջս ներգործել յելան իբրում ընդ որկորն, և որոտմունս 'ի ներքին որովայնի, և կերկերումն ձայնի. մարթի ևս այնպիսի ամբոխումն 'ի վերայ ածել ճապաղիցն ջղաց, զի գլխոյն դեգևիլ, քնոյն վրդովիլ կամ հատանիլ, և այլոց իմն յոլովից վշտագնից տառապանաց 'ի վեր երևիլ։

Ցաւագին խոնաւութիւն ջղային դժուարամարսութիւն :

Անձինք ըմբռնեալք յախտէ յայսմանէ՝ պարտին անձնապահ լինել յայնմ ամենայնէ, որք տկարացուցանեն և գրգռեն զջիղս և զմանրաթելս մկանանց ստորին որովայնի. ոչ պարտին բնաւ ընդ երկար ժամանակ մնալ առանց կերակրոյ : Կերակուր նոցա պարտ է լինել թեթև և սնուցողական, և դիւրամարսելի : Արգանակքն և յոյժ պարարտագոյն միսն են վնասակարք. պարտ է ընտրել զպատշաճաւորական կերակուրս ստամոքսի, զոր մարթ իցէ դիւրաւ և առանց աշխատութեան մարսել. սակաւ ինչ հաց թաթախեալ 'ի մէջ միոյ սկահակի գինւոյ՝ յամենայնում աւուր չափաւորապէս 'ի կէսօր արկեալ զօրացուցանէ զստամոքսն և զմանրաթելս մարմնոյ, և դիւրացուցանէ զմարսողականութիւն. ուստի պատշաճ է ախտաւորին գործածումն ջրախառն ազնիւ գինւոյ յայդպիսի դիպուածս : Իսկ եթէ փուքն նեղիցէ զախտաւորն, յայնժամ յոյժ բարւոք է գործածութիւն ջրախառն օղւոյ :

Իսկ 'ի դիպուածս, յորում քամիաւոր անձինքն ունին զստամոքսն տկարագոյն, և զմարսողականութիւն թուլագոյն, ասէ Գուլէն հեղինակն՝ եթէ փորձիւ փորձեալ է զի յայդպիսի դիպուածս բաժակ մի ազնուագոյն գինի անապակ, նախ քան զճաշն, կամ յորժամ ստամոքսն լինի դատարկ, է յոյժ յարմար և օգտաւէտ : Արգելուլ պարտ է նմա ուտել զամենայն քամիաւոր և դժուարամարսելի ուտելիս, և զըմպելիս ջերմագինս, որպիսի են՝ չայ, սուրճ, ևն. այսպիսի ըմպելիք թէպէտ համարին նպաստ ինչ լինել ախտաւորին. բայց առաւել ևս զգայրացուցանեն, և աճեցուցանեն զախտն, քանզի տկարացուցանեն զստամոքսն, եղծանեն զմարսողականութիւն, և ըստ նմին մարսողութեն նոյնպէս զմկանանցն :

Դարձեալ՝ 'ի դիպուածս յայս շարժողականութիւն է դեղ իմն ազնիւ և գերազանց, մանաւանդ եթէ լինիցի 'ի վերայ ձիոյ կամ ջորւոյ, որովհետև 'ի հեծելութեան անդ բովանդակ մարմինն հանդերձ ամենայն անդամօքն շարժի : Հողմն զովացուցիչ և չոր, և ցուրտ ջրով բաղանիս առնելն 'ի դիպուածս յայս՝ են յոյժ յարմար և շահաւէտ. քանզի հողմն և ջուրն ջերմագին հասարակօրէն թուլացուցանեն զջիղս : Իսկ անձինք, որոց տկար է ստամոքսն և փորոտիքն, պարտին անձնապահ լինել 'ի ցրտոյ :

Յաղագս դեղորէից զորս պարտ է 'ի վեր արկանել 'ի դիպուածս ջղային դժուարամարսութեան :

Ախտս այս ունի մեծագոյն իմն հաղորդակցութիւն եթէ 'ի խնամատարութիւն, և եթէ 'ի դեղորայս ընդ ախտին, որ ասի՝ մալաթիա տէի նէռվը ճէնէռալէ . այսինքն ընդհանուր ախտ ջլաց, զորմէ յառաջին խօսեցաք 'ի գլուխ ԺԳ . յայն սակս միշտ կարևոր է 'ի դիպուածս ախտիս սկսանիլ 'ի զօրացուցանել զՍիրտս, ստամոքսն, և զմանրաթելս միանանց ստորին որովայնի 'ի ձեռն դառնագին և զօրաւոր դեղորէից, որպիսի են՝ քինա քինա, ճէնցիանա, գուասսիա, ասսէնցիօ, աքօռցօ տի առանչիա, նաև յաւէտ թինթուռա տի ֆէռռօ, և սպիտակ պղպեղն : 'Ի դիպուածս, յորում ախտակիրն նեղի 'ի փքոյ, գործածութի էլիսսիռէի տի վիթռիօլօ՝ է յոյժ օգտաւէտ զոր մատոյց է 'ի կիր առնուլ 'ի 15 շիթէ մինչև ց20, և ց30 շիթս՝ երկու կամ երեք անգամ յաւուրն 'ի մէջ միոյ բաժակի ջրոյ : Առաւել քան զամենայն 'ի կիր արկանեմք ագուա մառցիալէ տի սփա . զոր կանխաւ գրեցի, տալով ախտաժետաց ժամէ 'ի ժամ չորս ունկի, մինչև լցցի լիտր մի յաւուրն : Զնոյն զօրութիւն և ներգործութիւն ունի նաև թթու ածխային ջուրն՝ որ կոչի ագուա կազ ացիտօ քարպօնիքօ :

Սակայն և 'ի մէջ սոցա ես ընտրեմ 'ի սկզբանն զայնոսիկ, որք նուազ խթիչք են, որպիսի իմն են ռատիչէ տի քօլօմպօ, և էսթռաթթօ տի ֆիէլէ տի պօվէ, որ այսպէս յօրինի : Ա՛ռ կէս տրամ՝ ռատիչէ քօլօմպօ, և նոյն չափ էսթռաթթօ տի ֆիէլէ տի պօվէ : Կազմեալ տասն վեցեակ հապս ; երկու առցին ընդ առաւօտն, երկու նախ քան զճաշն, և այլ երկու ընդ երեկս : Զօրաւոր է յոյժ դեղս այս 'ի դիպուածս ջղային դժուարամարսութե . զի սովաւ արծարծանին ազդեցութիւնք փորային հիւթոց, և միանգամայն մանրաթելից ստամոքսին, և ստորին որովայնին . միայն թէ կրկնելի է այդ գոնէ մինչև 'ի 30 օր :

Բայց յայսոսիկ աւուրս արժան է ևս ախտակրին յամենայնում աւուր ըմպել երեք կամ չորս ունկի՝ ագուա տի մէնթա բէբէռիթիաէ, և կանոնաւորել զկերակուրս իւր ըստ կերպին, զորմէ խօսեցաք վերագոյնդ :

Իսկ եթէ 'ի գործածութէ եզնալեղւոյ, որ ասի՝ ֆիէլէ տի պօվէ, պատճառի լուծումն որովայնի, որպէս պատահի բազում անգամ, յայնժամ պարտ է փոխանակ

տրա 'ի գործ արկանել գլխաւորայ փոշի դեղս ։ Ա՛ռ ե.
րեսուն կշիռ ցորեան՝ ամենանուրբ փոշին քօլօմպօ ա
նուանեալ արմատոյ, և երկու կամթիլ օլիօ էսէնցիալ
տի մէնթա բէբէռիթիտէ. 'ի փոշւոյ աստի առցէ հի
ւանդն ըստ վերոյցուցեալ կերպի, այսինքն երեք անգամ
յաւուրն ։

Բաց 'ի դեղօրէից աստի՝ շահաւէտ յոյժ եղիցի արբու
ցանել հանապազօր 'ի հինգ ունկիս՝ զերկաթախառն ըն
գինի՝ բաղադրեալ կինամոնաւ և օշինդրաւ, կոչեցեալ
իտալական բարբառով թինթուռա տի մառթէ քօմբօ
թա. բայց առցի մի՛ աւելի քան զերկու և կէս ունկի
առ մի նուագ, և առցի ութ ժամ միջոց ժամանակի ըն
մի և ընդ միւս արբումն այսր չափոյ։ Զգեսցի զինըմպու
թիս այս ցերեկուն, և ցքսանսուն օր, և տեսցի օգտու
թի սորա մեծ 'ի կազդուրել զթալկութի ստամոքսին,
բարեկարգել զգործողութիս ստորին որովայնի, 'ի դա
ձուցանել զախորժակն, 'ի զարթուցանել զթառամեա
կենդանութի մանրաթելից մկանանց ներքին որովայնի,
'ի հերքել զփուքս ։

Ցերկարժամանակեայ ջղային դժուարամարսութեա
որոյ նախնական պատճառն գտանիցի լինել խախթայլ
լքթա, այսինքն զգրգռականութիւն ջղաց, առաւել գո
ծունեայ դեղն է օսախտօ պլիանքօ կամ մաճիսթէռօ ա
ալխամութթօ. յորմէ պարտ է 'ի գործ արկանել չորից
անգամ յաւուրն հինգ կամ վեց ցորեան, կամ ևս ա
ռաւել՝ մինչև ց12 կշիռ ցորեան. միայն թէ կրկնելի
այգ գտնէ մինչև 'ի 20 օր ։ Դարձեալ՝ օգտաւէտագոյն
'ի դիպուածս յայս՝ ցուրտ ջրով բաղանիս առնելն,
յարատեւելն 'ի նոյն առ ժամանակ մի ։ Իսկ եթէ լեարդ
կամ այլ ինչ յաղեացն վշտացեալ իցէ, ոչ է յարմա
բաղանիս առնելն ցուրտ ջրով ։ 'Ի գարնանային և յա
մառնային եղանակի բարիոք ևս է, և պատշաճագոյն
մտանել 'ի բաղանիս ջրոյ ծովու ։



# ԳԼՈՒԽ ԺԵ.

Յաղագս ախտից որ ասի՝ Բառալիզիս. այսինքն անդամալուծութիւն կամ կաթուած։

Ախտս այս է լուծումն կամ եղծումն ջղաց, և զգայութե, և շարժման, պատճառեալ՚ի պակասութենէ հաղորդակցութեց ջղային ոգեաց։ ՚Ի մէջ ամենայն ջղային ախտից՝ ախտս այս է առաւել վտանգաւոր, մանաւանդ լինի առաւել կամ նուազ վտանգաւոր նկատմամբ վշտացեալ մասանցն։ Անդամալուծութիւն կամ կաթուածն սրտի, թոքոց, կամ այլ ինչ գործարանաց կարևորաց առ կեանս, է առանց կարծեաց մահացուցիչ. նոյնպէս է յոյժ վտանգաւոր ստամոքսինն, ատորին որովայնին, և փորոտեացն։ Յորժամ աչքն ըմբռնի յախտէս, է նշան ինչ յոռեգոյն, որովհետև ՚ի դիպուածս յայս արժան է հաստատել, եթէ ուղեղն ևս է վշտացեալ։ Յորժամ անդամալուծեալ մասն լինի ցուրտ և անզգայ, և ախտակիրն սկսանի կորուսանել զկարողութն բանին, և յիշողութե, չէք ընաւ, կամ է յոյժ սակաւ յոյս առողջութեն։

Անդամալուծութիւնս այս կամ անդամաղօսութիւնս բաժանի ՚ի բազումս, ըստ զանազանութե մասանցն, որք ըմբռնին յախտէս. վասն որոյ կոչի բառաբլէճիա, կամ բառալիզիա ունիվէրսալէ. այսինքն անդամալուծութի ընդհանուր, յորժամ վշտանայ այսու բովանդակ զանգուած մարմնոյ։ Իսկ եթէ վշտանայ մի կողմն մարմնոյ, ասի՝ էմիբլէճիա, կամ էմիբլէգսիա, այսինքն միակողմութի, կամ կիսակաթուած։ Այլ եթէ մի միայն մասն անդամոց ևեթ վշտանայ, որպէս բազուկն, սրունքն, կողքն են, յայնժամ յորջորջի բառալիզիա բառձիալէ, այսինքն մասնական կաթուած, կամ հաշմութի։

Յաղագս պատճառաց անդամալուծութեան, կամ կաթուածոյ։

Անմիջական պատճառն այսր ախտի է այն ամենայն, որ կարէ խոչ և արգել լինել առնելութե կամ ներգործութե ջլաց և մկանանց, կամ միոյ մասին և եթ մարմնոյ։ Իսկ պատահական պատճառքն են յոյժ յոգնա-

թիւ. որպիսի են հարուածքն կամ խոցն ուղղոյ; և ողնայարին, ճնշումն ուղղոյ կմ՟ ջրոց, ակամայ շարժումն կամ ցնցումն մկանանց, օդն ցրտագոյն և խոնաւագոյն, արգելումն իրիք սովորական հոսմանց. երկիւղն յանկարծօրէն, պակասութի շարժողականութե, և այլ ամենայն ինչ, որ թուլացուցանէ զհաստատութին բնութե, որպիսի են՝ առատօրէն արբումն չայի, սրճոյ, ևն: Դարձեալ, մարթ է յառաջ գալ 'ի շոգեաց և 'ի գոլորշեաց թունաւոր մետաղաց հանքաց, և հրահալելեաց, որպիսի են՝ անդիկն, արճիճն, մկնդեղն, ևն: Ախտս այս յոլով անգամ պատահի յայլ ախտից, որպիսի են ախտքն էբիլէբսիա, այսինքն վերնոտութի. քօնվուլսիօնէ, այսինքն անբնական շարժումն մկանանց մարմնոյ. քօլիքա նէֆրիթիքա, այսինքն խէթն երիկամանց. բասսիօնէ իլիաքա. այսինքն խէթն փաթոյթ անուանեալ աղեաց. արիւնախառն հոսումն որովայնի, ձեռնասութին, յօդուածացաւութին, քնափութին, ևն: Դարձեալ, կարէ յառաջ գալ յալեւորութէ, յախոնդանոտութէ, 'ի սեամաղձէ, 'ի չափազանց իգամոլութէ, 'ի գաղղիական և 'ի սքօրբութական ախտից, և 'ի վերաւորմանէ ջլաց:

Նշանք բարեյաջողք նկատելիք 'ի դիպուածս ախտիս:

Եթէ աչքն, լեզուն, և բերանն չիցեն խանգարեալ և թիւրեալ, չիք երկիւղ և ոչ վտանգ մեծագոյն: Եթէ ախտս այս ոչ զրաւէ զախտակիրն փութով 'ի կենաց, մարթ է յերկարապէս տևել. խայթումն, մարմաջումն, մղումն, և ցաւն, են բարեգոյն նշանք 'ի դիպուածս անդամալուծութե: Նոյնպէս և ջերմախտն 'ի վերայ եկեալ ախտիս: Եթէ ախտակիրն սակաւապէս կորուսանէ միայն զշարժողականութին, ոչ է այնքան երկիւղալի, այլ առաւել ապաքինելի: Բազում անգամ ախտս այս աւարտեալ փոխարկի 'ի կարկամութի ջլաց, և սովորաբար 'ի քաղցկեղ: Կրկնումն այսր ախտի է յոյժ երկնչելի քան զառաջին ըմբռնումն նորին: Ախտս այս երբեմն և ինքնին բնութե փարատի առանց իրիք նպաստաւորութեան դեղորէից:

Յաղագս դարմանադրութեան ախտիս :

Որ 'ի բարւոք կարգադիր լինել յընթացս խնամատարութեան ախտիս անդամալուծութեան, արժան է քաջ նկատել 'ի մասն կէս 'ի մասունս վշտացելոյ, 'ի պատճառսն յորոց յառաջ գայ, և 'ի հասակն ախտաւորին :

## ՅՕԴՈՒԱԾ Ա.

Յաղագս խնամատարութեան ախտին, որ առ ի Բառալիզիա ունիվէրսալէ, այսինքն ընդհանուր անդամալուծութեան, յերիտասարդս ուժեղս և ջղուտս :

Յայսպիսի դիպուածս արժան է երակ հատանել, դնել վէզիքաթօրիօ, և լոյծ պահել զորովայնն 'ի ձեռն կակղացուցիչ դեղոց և լուծողականաց, որպէս խօսեցաք այլուր :

Յաղագս խնամատարութեան նոյն ախտի 'ի տկարասուն և 'ի փխրակազմ անձինս, և 'ի ծերունիս :

'Ի ծերունիս, և 'ի դիպուածս յորում յառաջ գայ 'ի թուլութենէ և 'ի տկարութենէ, հասարակօրէն պարտ է 'ի գործ արկանել հնարս ներհակականս. բայց եթէ որում այս անդամալուծութիւն ունի համաձայնութիւն ընդ ախտին ջղձկային անդամալուծութեան, որ առ ի՝ ապօպլէզիա սիէռօզա, վասն որոյ յոյժ պատշաճ է 'ի գործ արկանել զփսխողական դեղն պատրաստեալ հետագայ եղանակաւ։ Առ 3 կշիռ ցորեան թառթառօ ստիպիաթօ, և երկուորամ սալ վէձէթապիլէ : Խառնեա՛ երեքեան և լուծեա՛ բարւոք. յոր յաւել զ12 ունկի՝ հասարակ ջուր, և յամենայնում չորս ժամու մատո՛ ախտաւորին զմի դգալ սեղանոյ :

Եթէ 'ի ձեռն այսր փսխողական դեղոյ չլինիցի հնարաւոր ապաքինումն ախտիս, յայնժամ արժան է 'ի գործ արկանել զքրտնաբեր դեղորայս, որպիսի են՝ սիէռօ տի լաթթէ վինօզօ, ինֆուզիօնէ տի քառտօ սանթօ են : Եթէ 'ի դիպուածս յայս ախտն անդամալուծութեան ոչ ունիցի զոյգ ընդ իւր սբազմօ, այսինքն ձգումն ջլաց, յոյժ յարմարաւոր և օգտաւէտ են հետագայ կառավարութիւնքդ. կերակուրքն պարտ է լինել ջերմ և անօսր,

գործենակ մանանեխ, բողկ, անանուխ, ևն ։ Ըմպելի ազնուագոյն գինի, չիճուկն կաթին պատրաստեալ մա նանխով, կամ օղեաւ, և կամ սոսկ ջրով ։ Շօշափելի կամ շփելն զվշտացեալ մասունս է յոյժ յարմարաւոր նոյնպէս օգտաւէտ է դնելն վէշիքաթօրիօ 'ի վերայ նոյ վշտացեալ մասանց ։ Եթէ այսոքիկ դեղորայք անօգու եղանիցեն, յայնժամ պարտ է շփելով օծանել զվշտա ցեալ մասունս լէնիմէնթօ վօլաթիլէիւ, կամ ունկուէն թօ նէռվինօիւ ։

Բարեգոյնն 'ի մէջ արտաքին դեղորէից՝ է դեղն սաս ցեալ էլէթթռիչիթա, այսինքն էլէքտրական գործ. զ պարտ է 'ի գործ արկանել քանի ինչ ժամանակս ։ Փոխ ղականն է յոյժ օգտակար յայսմ դիպուածի. զոր և արժան է լաւ պատշաճին կրկնել յոլով անգամ ։ Զկն փոխելոյ կամ ործանոյ ախտակրին մի կամ երկու ան գամ, պարտ է խառնել ընդ ըմպելին քանի մի կշիռ ց րեան թառթառօ էմէթիքօ, և միանգամայն պատրա եալ դրեխս վինօ էմէթիքօ թօռպիտօիւ ։ Նոյնպէս օ տաւէտ է ֆիօռ տի ծինքօ և բօլվէռէ չէճիալիքօ և մու քիօն, և քանֆօրան, և ասսաֆէթիտան, և սբիրիթօ ա մէլիսաէն և սբիրիթօ տի քօռնօ տի չէրվօն, և լիգու անօտինօն, ևն ։ 'Ի դիպուածս ախտիս անձանց արհեստ գործաց, որք յոսկի, յարծաթ կամ յայլ ինչ և ի մետաղագործութիս լինին աշխատ, ոչ է օրէն տալ ը պել զպայտոսին ջուրս. զորոյ զպատճառն խօսեսցուք հ մառօտիւ 'ի հետադայդ ։ Այլ զպայտոսին ջուրս արժան 'ի գործ արկանել նոցա արտաքուստ և 'ի բաղանիս Հուսկ յետոյ նկատել պարտ է 'ի կարողութեան ախտա կրին, և այնպէս 'ի գործ արկանել զդեղորայս պատշ ճականս վիճակի նորա ։ Պատմէ պօէռհավէ անուանես հեղինակն, եթէ բազումք յայսպիսի ախտակրաց առ քինեցան շոգւով ոգւոյ գինւոյ, յորոյ վերայ պարտ ունել զախտակիրն նստեալ մերկանդամ ։

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

### Յաղագս խնամատարութեան ախտին անդամալուծութեան որ 'ի [illegible] երևի 'ի զանազան մարմնոյ ։

Ախտս այս պատճառի անմիջապէս կամ 'ի պակ սութէ զօրութեց, կամ 'ի կծկելոյ մկանանց, կամ պա ճառի ընդմիջապէս յախտաւորութէ ջլաց. և կամ

յառաջ գայ յօդուածացաւութենէ, որք դիւրաւ ապաքինին գործածութեամբ ազուա թէռմալէի, այսինքն ջրոյ ջերմկաց, կամ հանքային։ Մեծապէս փոյթ ունել պարտ է յայսպիսի դիպուածս ջերմութեան. եթէ գուցէ գոյցէ ինչ ջերմութիւն, պարտ է փութալ, զի մի՛ բորբոքեսցի սաստկապէս։ Իսկ եթէ իցէ յոյժ սաստկացեալ, յայնժամ պարտ է չափաւորել զայն։ Բաղանիս առնելն հանքային ջրով, է յոյժ պատշաճողական 'ի դիպուածս ախտիս, կամ հասարակ ջրով. Եթէ միայն բաղանիքն ոչ լինի բաւական, յայնժամ արժան է պատրաստել էլէթթռիչիթա, զորմէ խօսեցաք վերագոյնդ։

## ՑՕԴՈՒԱԾ Գ.

Յաղագս խնամատարութեան ախտին ասացեալ էնֆլիւէնզա, այսինքն մրսնողութեան կամ հիւանդութեան, և յաղագս այլ ինչ տեղական անդամալուծութեան, որ ասի՝ բառալիզիա լօքալէ։

Այսպէս արժան է գիտել, վերոգրեալ կառավարութիւն կամ դարմանն, զորս եդաք ընդհանրապէս վասն անդամալուծութեան, բնաւ ոչ ունի տեղի յայսմ դիպուածի։ 'Ի դիպուածս յայս հասարակօրէն աչքն, լեզուն և բերանն լինին վշտացեալ. բայց ոչ է այնքան երկիւղալի, եթէ գլուխն իցէ առողջ և զերծ. և այսպիսի դիպուած ուր ուրեմն է պատահական։ Եթէ յախտէս յայսմանէ լեզուն առաւելապէս լիցի վշտացեալ, պարտ է ախտակրին սովորաբար ողողել սակաւ սակաւ զբերանն օղւով, և մանանխով, կամ սբիռիթօ տի լավանտաիւ. ևն։ Արմատն վայրենի վալէռիանայի (որ ժողովեալ իցէ 'ի լեռնային տեղեաց,) է յոյժ օգտաւէտ 'ի դիպուածս ախտիս. զոր պարտ է 'ի գործ արկանել ինֆուզիոնէ արարեալ արմատովն սէրբէնթարիա վիրճինիանաի և տերևօք սալվիաի, կամ փոշի արարեալ սոսկապէս առանձինն 'ի գործ արկանել մի տրամ 'ի մէջ միոյ բաժակի գինւոյ երիս կամ չորս անգամ յաւուրն։

Իսկ եթէ ախտակիրս ոչ կարէ 'ի գործ արկանել զայս արմատ, մարթ է պատրաստել զայսպիսի դեղս։ Առ սալ վօլաթիլէ օլիօզօ, սբիռիթօ քօմբօսթօ տի լավանտա, և թինթուռա տի քասթօռիօ, յիւրաքանչիւրոցն կէս և կէս ունկի. խառնեա՛ 'ի միասին, և տո՛ւր ըմպել 30 կամ 40 շիթս 'ի մէջ միոյ բաժակի գինւոյ երիցս կամ չորիցս ան-

գամ յաւուրն ։ Մի դրգալ մանանեխն նմանապէս է բա.
րեգոյն իմն դեղ 'ի դիպուածս ախտիս ։ Պարտ է ախտա.
կրիս միշտ ծածկել 'ի բերանն կինամոնս , կոճապղպեղս
կամ այլ որպիսի և իցէ գոյացութիւնս ջերմահամս ։

Իսկ 'ի դիպուածս՝ յորում ախտս այս 'ի վեր երևի '
սրունս , յայնժամ պարտ է զհետ երթալ կանոնաց , 
կառավարութեց , զորս եգաք 'ի դիպուածն ախտի , ո
ասի՝ բառալիզիս Ճէնէռալէ , և միանգամայն մարթ
արտաքուստ 'ի գործ արկանել ֆօմէնթի պատրաստեա
'ի տերևոց մէլիսսէի , օրիկանօի , բուլէճճիօի , սէրբիլլօ
թիմօի , ռամէռինօի են ։ Իսկ յորժամ 'ի վեր երևի
բազուկս , յայնժամ պարտ է շօշափել զախտացեալ մ
սունս մարմնոյ , և տեղպ շփել կաշւով , կամ սառւ
չուխայիւ ․ և միանգամայն օծանել լէնիմէնթօ վօլաթ
լէիւ , կամ ունկուէնթօ նէրվինօիւ ։ Եւ եթէ յայտնց
հնարից օգուտ ինչ ոչ երևի , յայնժամ արժան է դնե
մի վէշիքաթօռիօ 'ի ստորին ծագն քամակի ։

Որքան առ ախտն անդամալուծութեն , որ պատճառ
յախտէ՝ որ ասի վիցիօ սքօռպուտիքօ , յայնժամ պա
շաճ է դարման տանիլ ախտակրին 'ի ձեռն հետագայ դ
ղորէից ․ այսինքն քաէմօռէ տի թառթառօ , էլիսսի
տի վիթռիօլօ , աչէթօ , այսինքն քացախ , սպիռիթօ
սալ տօլչէ ։ Նոյնպէս յոյժ օգտակարք են 'ի դիպուա
յայս կաղամբն , անմեռուկն , կարոսն , սոխն , բողկ
եղերդն , ակրիմօնիա , լաթուքա , պէքապունկա , ք
լէառիա , ռաֆանօ ռուստիքանօ , նասթուրցիօ ա' ինտ
թուֆօլիա , սալսապարիլլիա , չէնթավռի մինօռ , սիէ
տի լաթթէ ․ են ։

Իսկ եթէ պատճառեալ իցէ 'ի գաղղիական ախտ
յայնժամ արժան է դարման տանիլ 'ի ձեռն դեղորէի
զորս ունիմք առհմանել ընդդէմ այսորիկ ախտիս 'ի
ԼԷ ։ Դարձեալ , 'ի դիպուածս ախտիս շարժողականո
է յոյժ կարևոր ․ բայց պարտ է ախտակրին անձնտա
լինել 'ի ցրտոյ և 'ի խոնաւ օդոյ ․ և եթէ հնարաւոր 
փոխել զբնակութիւն և երթալ 'ի քաղաքս , ուր օդն
առաւել ջերմագին ։



# ԳԼՈՒԽ ԺԶ.

Յաղագս ախտի որ ասի՝ Էփիլէփսիա, կամ Մալքատուքօ, այսինքն լուսնոտութիւն կամ վերնոտութիւն ։

Ախտս այս լուսնոտութիւն կամ վերնոտութիւն է յանկարծակի իմն խանգարումն ամենայն զգայարանաց, յորում դիպուածի ախտաժետն անկանի 'ի մահիճս կամ յերկիր 'ի միում վայրկենի, և արձակէ ընդ բերանն զփրփուրս առատս. և ախտս այսմիկ զուգընթաց լինի սաստկագոյն ինչ խեղաթիւրութիւն դիմաց, և ձեռաց, և ցնցումն մկանաց ։ Երիտասարդք փափկակեացք առաւել են ենթակայ այսր ախտի, և հասարակօրէն անրէ 'ի սեռս արանց՝ քան թէ կանանց. և է յոյժ դժուարաբուժելի ։ Յորժամ մանկունք 'ի մատաղ հասակի ըմբռնին յախտէս, գոյ յոյս առողջութեան նոցին. իսկ եթէ անցեալ իցեն զքսան ամօք, յայնժամ առողջութիւն լինի յոյժ դժուարին ։ Այլ եթէ անցեալ իցեն զ40 ամօք, յայնժամ պա՛րտ է գլխովին լինել յուսահատ ։ Եթէ բորբոքումն կամ գրգռումն իցէ ցանցառակի և սակաւաւոր, մարթ է յուսադիր լինել առողջութեան ։ Իսկ եթէ իցէ յոյժ երկարատև և ստէպ ստէպ կրկնական, արժան է յոյժ երկնչել. քանզի այնուհետև առողջութիւն ախտակրին է գլխովին անկարելի ։ Այլ յաւէտ ևս դժբաղդագոյն նշան է, եթէ բորբոքումնս այս 'ի վերայ եկեսցէ ախտակրին 'ի քուն լինելն ։

Յաղագս պատճառաց վերնոտութեան կամ լուսնոտութեան ։

Ախտս այս երբեմն է ժառանգական ։ Մարթ է ևս յառաջ գալ յերկիւղէ, կամ 'ի սարսափոյ ինչ մօրն 'ի ժամանակի յղութեան. 'ի հատուածոց ինչ անդամոց, 'ի կարեվէր ինչ խոցմանէ 'ի գլուխն, 'ի կուտակմանէ ջրոց և արեան ուղղոյ, 'ի պողիպոդէ (որ է միս ինչ աճեցեալ 'ի ներքս անդ 'ի ռնգունս,) յարբեցողութենէ, 'ի սաստիկ տարփանաց պադշոտ սիրոյ, 'ի սաստիկ ցաւոց ատամանց, յարգելականութենէ իրիք սովորական հոսմանց, յորդանց և 'ի ճճեաց որովայնի, 'ի բորբոքմանէ արգանդի ։ Հուսկ յետոյ 'ի կրից հոգւոյ, որպիսի են՝ սրտմտութիւն, բարկու-

թիւն, չափազանց ուրախութիւն են։ Մարթ է ևս պատ-ճառիլ յայլ ինչ ախտէ, որպիսի են ախտակն, և հարա-նիթն, կամ վարդախտն, են։

### Յաղագս Նշանաց այսորիկ ախտի։

'Ի գինարբուածս ախտիս հասարակօրէն զուգընթաց լի-նի անկարգ ինչ եղկութի և թուլութի, ցաւ կամ ծան-րութի ինչ գլխոյ՝ մթագնութի աչաց, շառաչումն ա-կանջաց, բաբախումն սրտի, դժուարութի ինչ 'ի շնչա-ռութ, քունն միջահատ, և փուք ինչ 'ի մէջ փորոտեաց. հասումն միզի լինի յոյժ առատ, և ջինջ. ախտակիրն լի-նի ուժգին դեղնագոյն, և ցրտագոյն. և զգայ յանձին իւր ցրտագոյն հողմոյ ատեալ շնչել 'ի վերայ գլխոյ իւրոյ։

Իսկ արտաքին նշանքն այսր ախտի են՝ տրտմութի, տրտունջն, արտասուքն, այտուցն աչաց, մանաւանդ շըր-թանց, երբեմն սաստիկ ինչ կարմրութի ռնգացն, և 'ի մէջ երկուց յօնից, երբեմն ևս սաստիկ ուռոյցն երակաց ճակատու, տեսիլք սոսկալի և երկիւղալի, և երբեմն ևս ցաւ ինչ կրծոց և ստամոքսի. և 'ի վախճանի գլխովին կորուսանել զզգայութիւն և զբանն. այսպիսի նշանք՝ զորս եդաք ցայս վայր, 'ի վերայ գան ախտակրին 'ի լինել նո-րա ըմբռնեալ 'ի վերոյասացեալ բորբոքմանէ. իսկ 'ի փա-րատիլ այսր բորբոքման, զգայութիւնքն առ սակաւ սակաւ վերադառնան. ախտակիրն տրտնջայ զանհանգստութենէ, զգայ ցաւ ինչ գլխոյ։ Արդ՝ 'ի վերնագոյնդ յուսահատ արարաք զվերծանօղդ, յասել մեր՝ եթէ անապաքինելի իմն է ախտս այս 'ի չափահասակս, որք անցեալ են զքա-ռասունն ամօք են. այլ 'ի վերայ այսր ամենայնի ոչ է օրէն անդադրման թողուլ ևս զչափահասակ ախտակիրս։

### Կառավարութիւն 'ի վար արկանելոյ 'ի գինարբուածս լուծա-փոխէ անձանց յ՛ և իջէ հասակի եղելոց և ըմբռնելոց յախտէս։

Հարկ է ախտակրիս՝ որքան մարթ իցէ, 'ի մաքուր և յառողջարար օդս վայելել։ Կերակրոցն պարտ է լինել թեթևագոյն, և սնուցողական. պարտ է հրաժարիլ 'ի գործածութէ ոգիւոր հեղանիւթոց, 'ի մսոյ ոչխարի, և ջրային կենդանեաց, և յամենակերպ քամիչաւոր և 'ի պարարտ կերակրեղինաց, և 'ի խոտեղինաց, որպիսի են կաղամբն, ընկոյզն են։ Հացն բարւոք եփեալ, և պտուղք

հաստունացեալք, և կալթն է պատշաճաւոր կերակուր 'ի դիւրալուծս ախտս: Դարձեալ, արժան է ախտակրիս փոյթ մեծ ունել 'ի պահել զանձն 'ի զուարճութե, և 'ի փարատել զկիրս գժնդակս. որպիսի են երկիւղն, տրտնջանքն, տրտմութիւն, և անսովոր ուրախութիւն, ևն: Շարժողականութիւն 'ի դիւրալուծս յայս՝ է յոյժ օգտակար, զոր պարտ է առնել ախտակրին յետ աւուրս ըստ տանելոյ կարողութեան. Նոյնպէս արժան է անձնապահ լինել 'ի ցրտոյ, և 'ի սաստիկ տօթոյ:

Յաղագս դեղօրէից, զորս պարտ է 'ի վեր արկանել 'ի դիպուածս ախտիս՝ անյանց որպիսի և նոյն հատակի եղելոց:

Առաւելութիւնք այսորիկ ախտի զանազանին ըստ այլայլութեան պատճառաց, յորոց յառաջ գայ: Եթէ ախտակրին իցէ արիւնային խառնութեան, և խառնուածոց վիճակեալ, պարտ է երակ հատանել. Իսկ եթէ ախտս այս իցէ պատճառեալ յարգելականութենէ իրիք սովորական ծորման, կամ թորման, յայնժամ հարկ է վերստին շարժել զնոյն ծորումն կամ թորումն որքան մարթ իցէ. այլ եթէ անմարթ իցէ շարժելն զնոյն ծորումն կամ թորումն սովորական հոսման, յայնժամ արժան է լնուլ զտեղի նորա երակ հատանելով, ևն:

Իսկ յորժամ գուցէ պատճառ ինչ կարծելոյ, թէ ախտս այս իցէ յառաջ եկեալ յորդանց կամ 'ի ճճեաց, յայնժամ պարտ է 'ի կիր արկանել զդեղորայս որդնահալածս, որպիսի են՝ եալաբբա, քալօմելանօ, ռաբարբառօ, լիմաթուռա տի ֆէռռօ, սէմէ սանթօ, ևն: Այլ եթէ ախտս լինիցի պատճառեալ 'ի ցաւոց սառամանց, յայնժամ պարտ է լոյծ պահել զորովայնն 'ի ձեռն կակղացուցիչ դրեխայց, և ստէպ թանալ զոտս ախտակրին 'ի մէջ ջերմ ջրոյ:

Իսկ եթէ բորբոքումն իցէ յոյժ սաստիկ, յայնժամ պարտ է դնել վէշիքաթօռիօ 'ի մէջն քամակին, և առմնացեալսն՝ զնոյն կառավարութիւնս արժան է 'ի գործ արկանել: Դարձեալ գիտելի լիցի զի եթէ ախտս այս գոյացեալ իցէ յարտաքսին ինչ մասունս մարմնոյ, զոր օրինակ 'ի սրունս, յազդերս, 'ի բազուկս, յուսս, ևն. մարթ է փութով փարատել զբորբոքումն զայն, արկելով անդադոյն իւիք կապով յայն մասն զմի վէշիքաթօռիօ:

### Դարման ՚ի ժամանակի, յորում յարատեւ մնայ բորբոքումն:

Որքան յարատեւ մնայ բորբոքումս այս, պարտ է ՚ի կիր արկանել զդեղորայս յոյժ սակաւ քանակութեամբ. և զգոյշ լինել արժան է՝ զի մի՛ ախտակիրն մնաս ինչ գործեսցէ. պարտ է դնել գործի ինչ ՚ի մէջ ատամանցն, զի մի՛ խածատեսցէ զլեզուն, որպէս պատահի յոլով անգամ: Նոյնպէս զգուշանալ պարտ է շրջակայիցն, զի ՚ի դիպուածս՝ յորում կարկամութիւն ջլաց ՚ի վերայ հասանէ ախտակրիս, մի՛ բնաւ բուռն հարկանիցեն առ ՚ի բանալ զձեռս կամ զայլ կորացեալ և ծալեալ անդամս ախտակրին: ՚Ի դիպուածս՝ յորում սաստկանան նշանքն բորբոքման, այսինքն ուժգնութիւն և կարծրութիւն զարկի բազկերակին, կարմրութիւն երեսաց, և այտուցն երակի ճակատու և պարանոցի են, յայնժամ ասէ Թիսօթ հեղինակն՝ եթէ պարտ է երակ հատանել:

### Դարման, զոր պարտ է ՚ի գործ արկանել զկնի փարատելոյ բորբոքմանն:

՚Ի դադարիլ և ՚ի փարատիլ կատարելապէս բորբոքմանս, զկնի չորից ժամուց, պարտ է ՚ի կիր արկանել զրեխս գաղջ ջրով, և սակաւ սակաւ տալ նմա ըմպել փոքրիկ բաժակաւ ջուր ցուրտ: Այլ եթէ ախտակիրն չիցէ այնքան ամբոխեալ և խռովեալ, մարթ է և ս ՚ի գործ արկանել քսախալս թեթեւագոյնս, որպիսի են՝ ագուա տի մելիսսէ, ջուրն ծաղկի նարնջոյ են: Յորժամ ախտս այս լինի ժառանգական, կամ պատճառի ՚ի խանգարմանէ ինչ ուղղոյ, յայնժամ չէք բնաւ յոյս ապաքինութեան: Իսկ յորժամ պատճառի ՚ի տկարութենէ և յուժգին զայրացմանէ ջլաց, յայնժամ պարտ է ՚ի գործ արկանել զդեղորայս պատշաճագոյնս ՚ի զօրացուցանել զջիղս. որպիսի են՝ քինա քինա, թինթուրա տի մառթէ, են:

Դարձեալ, ՚ի դիպուածս վերնատուէ յոյժ գովելի է ֆիօռ տի ծինկօ, զոր պարտ է ՚ի կիր արկանել հապս տուրեալ երիս և կամ չորս ցորեան՝ խառն ընդ էսթուաթթօ տի օշխամուսի, կամ բարւոք ես մէն մի ցորեան՝ յաւուրն չորս անգամ. նմանապէս պատշաճագոյն և օգտակարագոյն է ՚ի դիպուածս ախտիս կիրառութիւն հետագայ դեղորէից: Առ 10 կամ 12 կշիռ ցորեան՝ մուսքիօ, և նոյնչափ՝ չինառօ առթէֆաթթօ: Հապս պատ-

րաստեամ բաւականաչափ չիլօբբօիւ . և տուր ախտակրին յառաւօտեան և յերեկոյեան պահու զնոյնչափ հաւն ։ Բայց առաւել քան զամենայն դեղորայս օգտաւէտագոյն և սեպհական դեղն 'ի դիպուածս լուսնոտութե է արմատն վալէռիանա սիլվէսթռէի, զոր պարտ է 'ի գործ արկանել փոշի արարեալ երկու տրամս յաւուրն . զմի տրամն յառաւօտեան պահու 'ի ծոմուստ, և զմիւսն յերեկոյեան պահու լուծեալ 'ի մէջ հասարակ ջրոյ, յորմէ ըմպէ ախտակիրն . մարթ է ևս առաւելուլ զայս չափ՝ նկատեալ 'ի պարագայս հասակի և խառնուածոց նորա, և 'ի սաստկութեն ախտիս ։

Եւ իբրև վերոգրեալ դեղորէիւք չպակասեսցի սաստկութիւն բորբոքման, ոչինչ արգելք կայ գործածութեան քուբռօ ամմօնիաքալէի . որ այսպէս բաղադրի ։ Քսան կչիռ ցորեան՝ քուբռօ ամմօնիաքալէ, և քօնսէռվա տի ռօզէ քանինէ՝ որչափ պէտք իցեն առ կազմելոյ ըստ կանոնաց արհեստին . զզանգուածս զայս արարեալ 192 հապս, տացի անընդմիջաբար մէն մի հատ յառաւօտեան, և յերեկոյեան պահու . և զսոյն զայս հապ պարտ է առսակաւ սակաւ առաւելուլ, մինչև ցչորս կամ ցհինգ հատ ։ Երբեմն ես դիմեմ 'ի գործածութի բիէթռա ինֆեռնալէի, կամ նիթռօ տ' արճէնթօի ։ Զոր օրինակ . առ 20 կչիռ ցորեան՝ բիէթռա ինֆեռնալէ, և քօնսէռվա տի ռօզա քանինա՝ որչափ պէտք են վասն յօրինելոյ զ192 հապս . զորս շրջապատեալ փոշւովն կինամոնի, տացի մի կամ երկու հատ յաւուրն . նոյնպէս մարթ է ևս առաւելուլ զայս չափ, նկատեալ 'ի պարագայս խառնուածոց ախտակրին ։

Են և այլ դեղորայք սեփականք ախտիս, որպիսի են՝ քինա քինա, ֆէռռօ, քասթօռիօ, ասա ֆէթիտա, ռութա, վիսքօ գուէռչինօ, օբբիօ, մէռքուռիօ, անթիմօնիօ, քանֆօռա, ևն ։ Այլ գիտել արժան է, զի 'ի գործ արկանելն զորպիսի և իցէ դեղորայս, պարտ է միշտ նախապատրաստել և բարեխառնել զընութիւն, որպէս զի եթէ 'ի գործ արկանիցի 'ի դիպուածի ինչ, յորում գտանի 'ի բնութեն պնդութի որովայնի, կմ բորբոքումն ինչ 'ի ծագն ստամոքսի, կամ փտախտութի, ևն, յայնժամ փոխանակ օգտի պատճառեն զվնասս մեծամեծս ։ Զայս ախտ լուսնոտութ նախնիք կոչէին՝ մալ էրքուլէօ, կամ մալ քօմիցիալէ . զոր հիփոկրատէս անուանեաց՝ մալաթթիա սաքրա, կամ տիվինա ։

# ԳԼՈՒԽ ԺԸ.

Յաղագս ախտից, որք ասին՝ Մելանքօլիա, այսինքն սեւա-
մաղձութիւն, և յաղագս ախտից, որք կոչին՝ Փօլլիա.
կամ մանիա, և կամ Նոսթալճիա, այսինքն կա-
տաղութիւն կամ մոլեգնութիւն :

Սեւամաղձութիւն այս է խօթութիւն ինչ պատճառեալ
'ի յուշաբարձութենէ կամ 'ի տկարութենէ ոգւոյ. որով ար
գելանի մարդն 'ի վայելել զկեանս հաճոյականս, և միան
գամայն 'ի վճարել հաճոյից բնութեան : Այս է առաջին
աստիճան ախտիս՝ Փօլլիա. այսինքն յիմարութիւն. ի
բազում անգամ եւս աւարտի 'ի կատարեալ աստիճանի
յիմարութեան : Եւ այս ախտ ևս ունի բազմապատիկ և զա
նազան աստիճանս : Առաջինն ասի՝ իմպէչիլլիթա, այս
ինքն տկարամտութիւն. յորում ոչ լինի իբրև 'ի հասակ
նախկին մանկութեան : Երկրորդ աստիճանն ասի՝ Փուռօ
ռէ կամ մանիա, այսինքն կատաղութիւն. յորում աստի
ճանի հազիւ թէ տռուանք մարթ իցէ զատել զախտակիրն
յայսմ աստիճանէ բազում անգամ ախտակիրն հաս
նէ յաստիճանն յետին՝ ասացեալ աչչէսսի, ցն ուժգնու
թեն. յորում աստիճանի խելագարն ունի զդոժ ինչ հի
նալի, մինչև անհնարին լինի յաղթել այնմ, և տկարա
ցուցանել զայն 'ի ձեռն անսուաղութեան և ծոմապահութե
Յայսմ յետին աստիճանի մարթ է դասել զախտն ասա
ցեալ Նոսթալճիա, որ և կոչի ախտ հայրենեաց, իբրև գ
ատեն պատճառիլ 'ի բաղձանաց առ տեսութիւն հայրե
նեաց, ազգականաց, և բարեկամաց :

Յաղագս պատճառաց այսոցիկ ախտից :

Նախ այս ասացեալ սեւամաղձութիւն յառաջ գայ
ներքին կրից ոգւոյ, որ ասի՝ փաթիմէնթի քօչչէնթի ան
տիմօ. այսինքն 'ի սիրոյ, յերկիւղէ, 'ի տրտմութենէ, յո
րախութենէ, 'ի տարապայման սիգութենէ, և ն : Նոյնպէս մարթ
է պատճառիլ 'ի չափազանց մտածութենէ, 'ի սաստիկ ը
դայական բաղձանաց, յանշարժական կեանս վարելո
յառանձնութենէ, յարգելականութենէ իրիք սովորական հո
մանց, 'ի դժնդակ ջերմախտէ, և կամ յայլ ինչ ախտէ

Գիտելի է, զի 'ի սաստկանալ այսոցիկ վերոյիշեալ նշանքն կրից ոգւոյ, որպիսի են տրտմութիւն, ուրախութիւն, սէրն, երկիւղն եւն, և յելանելն ըստ չափ մարթին փոխարկել զախտն սևամաղձութեն յախտն ասացեալ՝ Ֆօլլիա, այսինքն յիմարութի :

Դարձեալ, կարեն պատճառել զախտս զայս կերակուրք ջերմահամք, դժուարամարսելիք եւն. որովհետև յանմարսական մնալն կերակրոց 'ի մէջ ստամոքսի՝ պակասի խմորութիւն պիտանաւոր. որով պահպանի ուղեղն: Յաւելուլ մարթ է 'ի վերայ այսոցիկ պատճառաց և զքերական երևակայութիւնս, որք խանգարեն զմիտս: Դարձեալ անձինք, որք պարապին 'ի խոկմունս անչափս, և որք անձնապարաւ լինին յընթերցանութիւնս նրբիմաստ գիտութեանց՝ են յոյժ ենթակայ այսմ ախտի :

Յաղագս նշանաց այսորիկ ախտից :

Յորժամ սկսանի ոք ըմբռնիլ յախտէս յայսմանէ, լինի երկչոտ, անհանգիստ, և խնդրէ միշտ զառանձնութի, սովորաբար լինի ընդվայրաքննին, կասկածոտ և անհամբեր: Ստամոքսն և որովայնն լի փքով. զարկ բազկերակին մանր և տկար: Ունի զպնդութի որովայնի. հասարակօրէն և մէզ նորա լինի ջինջ, պարզ և սակաւաքանակ, և գոյն երեսաց դեղնագոյն. խանգարի գլխաւորին երևակայութիւն, այնպէս՝ մինչև ախտակիրն հակերպէ զանձն մեռեալ, կամ յանբան կենդանի ինչ փոխարկեալ, կամ յապակի ինչ դիւրաբեկանելի, եւն. յայսմ յետին դիպուածի պարտ է մեծապէս զգոյշ լինել 'ի վերայ անձին ախտակրիս. զի այդ օրինակ խանգարումն երևակայութեն՝ գուշակ է անտարակոյս աղէտջանիկ ելից նորին :

Դարձեալ այդպիսի ախտակիրք երբեմն են ենթակայ ահի և սարսափոյ, շլանալոյ աչաց, և կրճտելոյ ատամանց. հեղումն ստէպ զարտասուս առանց պատճառի, անհանգիստ են 'ի քուն լինելն, և միշտ ահացուցիչ և սոսկալի տեսլեանք և երազք տանջանեն. կրեն սովորաբար զստատիկ ինչ ծանրութի և ցաւ գլխոյ, զշառաչիւն ականջաց, զդողդոջիւն ձեռաց, զբաբախիւն սրտի, զնեղութի կրծոց, և մասնաւորապէս զաղմուկն ինչ ցաւ 'ի ծոցն ստամոքսի. և ա մերթ երևի ուռոյց ինչ ստորին որովայնի. բազումք 'ի նոցանէ կրեն զկրծումն ինչ ստամոքսի. որով շարժի քաղց ինչ անկարգ : Մեծագոյն մասն այս-

պիսի ախտաժետաց կրեն անհնարին երկիւղ ինչ մահու, և ոմանք ևս ձանձրացեալ 'ի կենաց, փափաքին մահու-ան 'ի ազատիլ 'ի տանջանաց իւրեանց։

Գոյ ևս այլ տեսակ ինչ այսր ախտի, բայց հազիւ եր-բեք է պատահական, որում ախտացեալն փախչի 'ի գիշե-րի 'ի բացօթեայս, 'ի դաշտս, և զօրէն անասնոց ընթա-նայ այսր և անդր. այսպիսի ախտակիրք կոչին՝ լիքան-թռօբօ, այսինքն գայլացեալ. (զի կարծեն փոխեալ 'ի գայլ.) ոմանք ևս յայդպիսեաց տուանց փախչելոյ՝ միշտ կամին փոփոխել զտեղի այսր և անդր։ Բայց ամենինք, որք ըմբռնին յախտս նօսթալճիա, 'ի սկզբան անդ գլխա-ւորին անձնագրաւ լինին 'ի սուգ, և 'ի տրտմութիւն, և սա-կաւ սակաւ անկանին 'ի թալկութիւն և 'ի պղերգութիւն։ Կորուսանեն զախորժակն, զարկ բազկին լինի ջերմախ-տային. և վերջապէս անկանին յախտ ինչ մահացուցիչ։ Վերոյասացեալ ախտն մելանքօնիա, եթէ յառաջ գայ յարգելականութէ իւրք սովորական հոսմանց, կամ յայլ ինչ ախտէ գործարանաց, առաւել դիւրաբուժելի է քան զայն, որ յառաջ գայ 'ի կրից հոգւոյ։ Հոսումն ինչ ա-րեան 'ի անդամսն, լուծողութիւն ինչ որովայնի, հոսումն դաշտանի կամ թանչից են, բազում անգամ արգելուն և խափանեն զախտն վերահասեալ։

Ցուցագիր կանոնաց և կառավարութեանց, զորս պարտ է 'ի գործ ածանել 'ի դիպուածս այսոցիկ ախտից։

Կերակրոցն պարտ է լինել բնութ. զովացուցիչ և կակ-ղացուցիչ. պարտ է ախտակրին հրաժարիլ յամենայն կերպ մսոյ աղածոյ կենդանեաց, նոյնպէս 'ի ձկանց, և յայլ ինչ կերակրեղինաց սոխով և խստորով պատրաստելոց, կամ յաղտաղտային իրաց, որք խռովեցուցեալ թանձրա-ցուցանեն զարիւնն։ Գործածութիւն ամենայն կերպ տաղ-ջարար մրգաց, պտղոց, և խաւարտից է անվնաս, մանա-ւանդ և օգտակար։ Պատմէ պօէռհավէ հեղինակն, եթէ կրող ոք զախտս զայս ընդ երկար ժամանակ գործածու-թեամբ սիէռօ տի լաթթէի և պտղոց, ապաքինեցաւ կատարելապէս։ Նոյնպէս հրաժարիլ պարտին յամենայ-կերպ ոգիւոր հեղանիւթոց, և 'ի ջերմահամ ըմպե-լեաց. յարմարաւոր ըմպելին է հասարակ ջուրն, կամ շիճուկն կաթին, կամ թեթևագոյն ինչ պիրրա։ Նոյն-պէս յոյժ օգտաւէտագոյն է շրջագայութիւնն 'ի բացօ-թեայս ուրեք տանի զօրութեն ախտակրին, և ընդ հակա-

ռակն յոյժ պիտանակար է փակեալ թղթովն զնա 'ի մէջ ամանեկի :

Ցուցակս դեղորէից որոց պէտք է 'ի կար արկանել 'ի գիպսուածս սոսանձոյն :

'Ի գիպսուածս յայս պարտ է փոյթ ունել մեծի զգուշութեան, առ 'ի վարել ընդ ախտակրեն. յորժամ ախտանեալք զնա նեղեալ և վշտացեալ, որժամ է մխիթարել, և քաջալերել զնա, և միանգամայն զուարճացուցեալ սփոփել զմնութեան նորին, գեղեցկայարմար երգածայնութեամբ, նուագարանօք, և այլն : Նոյնպէս պարտ է ախտակրեն մերձ կենակցել ընդ անձինս, որք հաճոյական են նմա :

'Ի գիպսուածս՝ յորում զարկ բաղկին լինի լի և զօրեղ. հարկ է երակ հատանել. և զննութեամբ լոյծ պահել զործածութեամբ լուծողականաց, որպիսի են՝ ռապառապառօ, մաննա, քռէմօռ տի թառթառօ, կամ քռէմօռ սօլաւթիլէ, որ 'ի գիպսուածս յայս է առաւել ներգործիչ և օգտակար. զոր պարտ է 'ի գործ արկանել լուծեալ 'ի մէջ ջրոյն ամենայն կէս ունկի՝ յամենայնում աւուր քանի ինչ ժամանակս, որքան լինեսցի հարկաւոր. զկափս զայս մարթ է յաւելուլ կամ նուազել՝ նկատեալ 'ի ներգործութիւն, որ յառաջ գայ : Փսխողականն ևս է օգտակար. բայց պարտ է լինել սաստիկ և զօրաւոր. ապա թէ ոչ՝ այլազգ ոչ ներգործէ : Ամենայն դեղորայք՝ որք են յաջողակ 'ի շարժել և 'ի լուծանել զմէզն և զգոլորշիսն, են յոյժ օգտակար 'ի գիպսուածս ախտիս, նիթռօն, և քացախն. զնիթռօն մարթ է 'ի գործ արկանել երեսուն ցորեան, յաւելցի նաև քրրև մի և կէս ունկի՝ քացախ թորեալ, և մի պօքքալէ՝ ջուր հասարակ, և տացի 'ի սկամանղձային ախտակրութեան յիւրաքանչիւր ժամու կէս ունկի :

Նոյնպէս փորձիւ յայտ է օգուտն քանֆօռայի, զոր պարտ է 'ի գործ արկանել ըստ յետագայ եղանակիս : Ա՛ռ 30 ցորեան՝ քանֆօռա, և նոյնչափ՝ աղնիւ նիթռօ. տրորեալ խառնեա՛ զամենայն իրերաց յանկանի, և տո՛ւր ախտակրեն զնոյն չափն երկու անգամ յաւուրն, կամ ևս առաւել ըստ կարօտութեան ստամոքսի : Իսկ եթէ չկարիցէ առնուլ այդմ, պարտ է զնոյն չափ քանֆօռայի խառնել ընդ այլ հաւասարաչափ մասունս սասաֆէթիտայի, և քասթօռիօի հասպ պատրաստել և այնպէս 'ի գործ ար-

կանել: Նոյնպէս օգտաւէտ է գործածութիւն մուսքերի, որ այսպէս բաղադրի: Առ 20 կամ 25 կշիռ ցորեան՝ մուսքիօ, պատրաստեա հատս բուականաչափ շիլօքքօլի, և տուր ախտաւորին զայսոսիկ հատս երեք կամ չորս անգամ յաւուրն: 'Ի վեր քան զամենայն շահաւէտագոյն է գործածութիւն երկաթոյ խառն ընդ խաշնդեղի, զորոյ զպատրաստելոյ կերպն լուծելոյն ցուցաք 'ի ճառելն վասն գալկան. տես անդ:

Յայս վայր խօսեցաք զներքին դեղորէից. աստէն դիցուք և զքանի ինչ օգտակար արտաքին դեղորայս. որոց գլխաւորքն են՝ խարանն, և գաղջ ջրով բաղանիս առնելն. մարթ է դնել խարան, կամ խայթել զորովայն և իցէ մասն մարմնոյ հրաշէկ երկաթով. բայց բարւոք ևս է խարել 'ի քամակի: Որքան առ արիւնատուութիւն պիտանելի է, եթէ ըստ կարծեաց ամենայն հեղինակաց, ոչ է միշտ հարկաւոր այն, բայց եթէ 'ի դիպուածս ինչ արգելականութեան իրեք հոսմանց արեան: Առ 'ի բանեցուցանել զխարանսն բացեալ վէրն՝ պարտ է 'ի գործ արկանել զունկուէնթօ պազիլիքօ, և պարտ է թողուլ զայն բացեալ ամիս ինչ: Նոյնպէս օգտաւէտ է տզրուկս դնել, զորս պարտ է 'ի վերոյ երակաց մածուցանել: Լուծողական դեղորայքն ոչ են այնքան յարմարաւորք:

Յաղագս դեղորէից, զորս պարտ է 'ի գործ արկանել 'ի դիպուածս ախտին՝ տառապելոց մոլեգնութեան:

'Ի դիպուածս ախտիս երակ հատանելն 'ի բազկէն և յոտից է առաւել կարծեաց կարևորագոյն. եթէ յառաջ գայ ախտս 'ի յարգելականութէ դաշտանի կմ՝ արեան հոսմանց, յայնժամ պարտ է տակաւ տակաւ կրկնել մինչև ցխափանել այդպիսի արգելականութեանն: Փսխողականքն և լուծողականքն 'ի դիպուածս յայս ոչ են այնքան նպաստաւորք 'ի մաքրել զմաղձն: Լուծողական դեղերքն են տալ պատշաճողական և ներգործիչք, մանաւանդ եթէ լինիցին պատրաստեալք աղօէիւ. բայց զկնի լուծողականութեան՝ կարևոր է գործածութիւն բարեխառն և զովացուցիչ իրաց, որպիսի են ագուա ճելաթա օրծաթա, շիճուկն կաթին, կաթն, ագուա մինէրալէ, երկաթն, ևն: Նոյնպէս յոյժ օգտակար է 'ի դիպուածս յայս քամֆօրա, զոր պարտ է պատրաստել ըստ վերոյիշեալ եղանակին: Նոյնպէս օգտակար է օբբիօ և բաբաւէրօ ևն: 'Ի դիպուածս յայս բաղանիս առնելն ցուրտ ջրով է յոյժ

օգտաւէտ, մանաւանդ թափելն ցրտագոյն ջուրս 'ի վերայ գլխոյ ախտաւորին: Օգտակար է և յանկարծօրէն և փութանակի ընկենուլն զախտաւորն 'ի մէջ գետոց, կամ ծովու, և թողուլ մնալ անդ ըստ կարողութեան նորին:

# ԳԼՈՒԽ ԺԲ.

Յաղագս ախտի, որ ասի՝ Ֆլաթի, կամ Վէնթօզիթա. այսինքն հողմախտութիւն, կամ հողմոտութիւն:

Ամենայն անձինք՝ որք ըմբռնեալքն են 'ի ջղային ախտից, հասարակօրէն անխտիր են ենթակայ այսր փքախտութէ 'ի ստամոքսն, և 'ի փորոտիսն. և ախտս այս յառաջ գայ յանզօրութէ այսոցիկ գործարանաց, որ և անուանի զանազան անուամբ ըստ տարբերութե բնակարանաց այսորիկ ախտի, և ըստ այլևայլութե պատահական դիպուածոց, որք զուգընթաց լինին ընդ այսմ ախտի: Յորժամ փքոտութիւնս այս կմ քամիքն 'ի վերայ յարձակին ուռուք շառաչմամբ, և առանց ցաւոց դէպ 'ի պատառանս խողովակի փորոտեաց, յայնժամ ախտս այս կոչի՝ պօռպօթթէ, այսինքն շշնջիւն: Իսկ եթէ յայսմ դիպուածի փուքք յարձակին 'ի վերուստ, և 'ի ստորուստ մեծաւ ուժգնութբ, յայնժամ ասի՝ քօլլէռա սէքքա. զորմէ խօսեցաք յայլուր: Բայց 'ի դիպուածս, յորում փուքս 'ի մէջ ստորին որովայնի սրընթաց և առանց շառաչման երթևեկս առնէ 'ի միոյ կողմանէ 'ի միւս կողմն, և անդէն իսկ և իսկ արգելեալ փակի 'ի մի կողմն աննդարար խողովակի՝ պատճառելով զսուր խիթս և զդժնեայ ցաւս, յայնժամ ասի՝ քօլիքա վէնթօզա, զորմէ ճառեցաք 'ի գլ. Է. յօդ. ա. Իսկ յորժամ փուքս այս պատճառէ փոյթ ը փոյթ զընդլայնութիւն ինչ 'ի ստամոքսի, և 'ի փորոտիսն՝ մինչև երևելապէս 'ի վեր ամբառնայ ստորին որովայնն, մանաւանդ դէպ 'ի յախոռնդանս, եթէ զոյգ իցէ ընդ այսր այտուցի ցաւ ինչ, և թէ չիցէ, հասարակօրէն կոչի՝ մէթէօրիզմօ:

Հուսկ յետոյ եթէ այսոքիկ փուքք առ սակաւ սակաւ կուտակեալ շեղջին 'ի ներքս ստամոքսաց և աղեացն, մինչև ցձգամանել 'ի մեծաքանակ գումարութիւն, և յետ այնք

լինի 'ի վեր երեւի այտուց ինչ ընդարձակոյ եւ հաստատուն 'ի ստորին որովայնի, մինչ 'ի հարկանելն հնչել իբրեւ զթմբուկ. յայնժամ ախտս այս մասնաւոր անուամբ յոնչորչի՝ թիմբանիթիտէ, կամ իտրօբիզիա վէնթօզա: Գիտելի է, զի անձինք՝ որք ունին զախտս չլւոց եւ ցնցիւն մկանանց, են ենթակայ այդ ամենայն վերոյիշեալ պատահարաց. զորոց իւրաքանչիւրսն երբեմն 'ի մի եւ 'ի նոյն, եւ երբեմն յայլ եւ յայլ պահու կրեն:

Յաղագս պատճառաց այսորիկ ախտի:

'Ի դիպուածս ախտիս՝ անտարակոյս վնասակար են ամենայն կերակուրք հումք եւ փքաւորք, որպիսի են կաղամբն, բակլայ, եւն: Անձինք՝ որք վիճակեալք են զօրաւոր եւ առողջագոյն կազմուածոց, ուր ուրեմն են ենթակայ այսր ախտի, մանաւանդ եթէ պահիցէ ոք միշտ զչափաւոր կանոնսն 'ի կերակուրս եւ յըմպելիս, եւ զբարեխառնութիւն օդոց. յորմէ քաջայայտ ճանաչի, եթէ պատճառն այսր փքախտուն ծագի գլխաւորապէս 'ի կերակրոցն, եւ յանբարեխառնութէ օդոցն, նա յաւէտ 'ի չափազանց իգամոլութէ:

Յաղագս դեղորէից, զոր պարտ է 'ի գործ արկանել ընդդէմ փքախտութէ:

Պատշաճական եւ օգտաւէտ դեղորայք յայսմ դիպուածի են այնք ամենայն՝ որք 'ի բաց հերքեն զքամիս, եւ զօրացուցանեն զմնդարար գործարանս խողովակաց, որպիսի են պղպեղն եւ յաւէտ սպիտակն, կոճապղպեղն, համապտուղն գիհւոյ, ծէտօռիա անուանեալ արմատն, քալամօ առօմաթիքօ, սերմն անիսոնի եւ սամթի, գինձն, քառուի, սասա ֆէթիտա, ափիոնն. Եւս ոգիաւոր եւ ջերմահամ հեղանիւթքն, որպիսի են թինթուռա տի ֆիլինձինէ, սփիրիթօ վօլաթիլէ առօմաթիքօ, էթէռէ վիթռիօլիքօ եւն: Վկայէ մուցցել հեղինակն, եթէ չիք դեղ ինչ առաւել զօրաւոր առ 'ի բաց վանել զփուքս, քան զդեղն անուանեալ էթէռէ վիթռիօլիքօ, եւս լաւտանօ լիգուիտօ, զոր պարտ է 'ի գործ արկանել խառն ընդ ջրոյն անանխոյ, ը թինթուռա տի քասթօռիօ, կամ սփիրիթօ տի նիթռօ տօլչէ ֆիքաթօի: Երբեմն եւս պատշաճ է 'ի գործ արկանել օգտաւէտապէս զհապս յօրինեալս յափիոնէ, եւ յաւ

տա ֆէթիտաէ , նոյնպէս շահաւէտ է ջուրն թթու ածխայլին , որ կոչի աչիտօ քառպօնիքօ ։

Գիտելի է , եթէ յայսմ դիպուածի նոյնպէս օգտաւէտ է գործածութին մեղմիչ և խաղաղիչ դեղորէից ․ քանզի 'ի կեր արկանելով զայսոսիկ , թէպէտ ոչ ցնդին փուքքն , բայց մեղմեալ զատանիւն 'ի ստամոքսին կամ 'ի փորոտիսն , և յետ այնորիկ 'ի վար արկանելով զջերմ և զփքալույծ դեղորայս՝ դիւրաւ արտաքս մերժին ․ քանզի հասարակօրէն ամենայն փքահան դեղորայք ո՛չ զօրեն 'ի բաց հերքել զփուքս , եթէ չիցեն զկայ առեալ 'ի մէջ ստամոքսի ։ Որքան առ վերոյիշեալ դեղն անուանեալ էթէռէ , նոյնպէս վկայէ նոյն հեղինակն եթէ յոյժ պատշաճական դեղ է 'ի դիպուածս այսոսիկ , չափն 'ի մի դգալէ սրճոյ մինչև ցերկու հասարակ ջրոյ ։ Եթէ ընդ փքոտութե զոյգ գտանիցի միանգամայն յօդուածացաւութիւն ինչ , յայդպիսի դիպուածի նոյնպէս դերահաչակ է էթեռէն , զոր պարտ է 'ի գործ արկանել ընդ օղւոյ , կամ ընդ ջրոյ անանխոյ , ևն ։

Յորժամ հարկ 'ի վերայ լինի ըստ պահանջելոյ պարագայից 'ի գործ արկանել զդեղորայս ջերմագինս 'ի ներքուստ , յայնժամ ըստ հաւանական կարծեաց ամենայն հեղինակաց , օգտաւէտագոյն է գործածութի և արտաքին սպեղանեաց ․ յաւելու հաղինակն եթէ յայդպիսի դիպուածս պարտ է դնել 'ի վերայ որովայնի լայնաբաց խմի սպեղանի , մինչև ծածկել զմեծագոյն մասն որովայնի ․ պատշաճագոյն է սպեղանին անուանեալ էմփլաստրօ անթիսթերիքօ , մածեալ 'ի վերայ կիւտերի յորջորջեալ նուրբ մաշկի , որում և պարտ է մնալ ըստ տանելոյ կարողութե ախտակրին ․ այլ եթէ ախտակիրն կրեսցէ զվիշտ ինչ մեծագոյն , մարթ է բառնալ զայն , և փոխանակ նորա 'ի կիր արկանել զհետագայդ ։ Ա՛ռ ունկի մի՝ պալսամօ անօտինօ տի պաթէս , կէս ունկի՝ օլիօ տի մաչիս , և երկու տրամ օլիօ տի մէնթա , զորս բարւոք խառնեալ ընդ իրեարս , ա՛ռ մի հասարակ դրգալ սեղանոյ , և շփեա զախտակիրն բարեպէս դէպ 'ի ծագն ստամոքսի յերթալն նորա 'ի մահիճս ։

Յաղագս դեղորէից՝ զորս պարտ է 'ի գործ արկանել յետ փքոցաց 'ի զօրացուցանել զստամոքսն և զփորոտիսն ։

Յայսմ դիպուածի առաւել օգտաւէտ և հզօրիչ ստամոքսի և փորոտեացն՝ է գործածութիւն քինա քինայի ,

և գառնագին իրաց. և գործածութիւն ամենայն հանքային նիւթոց, յորոց բաղադրութեան գտանի մասն ինչ երկաթոյ, և շրջիլն 'ի զբօսանս. բայց նկատել արժան է, զի եթէ գտանիցի յայսմ դիպուածի և փուքն, յայնժամ պարտ է յաւելուլ 'ի վերայ քինա քինայի և այլ գառնագին իրաց՝ սակաւ ինչ նօշէ մուքաթա, կամ կոճապղպեղ. մարթ է նաև ըստ պահանջելոյ հարկին յաւելուլ 'ի վերայ համեմային և ջերմահամ փոշիս խառն ընդ խարտածոյ երկաթոյ:

Յաղագս դեղորէից, զորս պարտ է 'ի գործ արկանել 'ի դիպուածս յորում ընդ ժտախտութեն լոյծ գտանի նաև պնդութիւն որովայնի:

'Ի դիպուածս յայս տաւակ շահաւետագոյն դեղորայքն են հետագայքդ: Առ երկու տրամ սասա ֆէթիտա, ալօէ սուքօթրինօ, սալ տի մառթէ, և զփոշին կոճապղպեղի յիւրաքանչիւրոցն մէն մի տրամ. և յաւել այնչափ էլիքսիր բռօբրիէթաթէ՝ որչափ պէտք իցեն առ կազմելոյ զանգուած ըստ կանոնաց արհեստին. զզանգուածս զայս յօրինեալ հատ՝ որ կշռիցէ չորս ցորեան, տուր չորս կամ հինգ հատ յամենայնաւուր երեկոյի յերթալն 'ի մահիճս:

Յաղագս դեղորէից, զորս պարտ է 'ի վար արկանել 'ի դիպուածս, յորում ընդ ժտախտութեն գտանի նաև լուծումն որովայնի:

Յայսմ դիպուածի նկատել արժան է, եթէ որովայնալուծութիւն իցէ սաստիկ և առաւել, յայնժամ պարտ է տալ ախտակրին 'ի միջահատութեան երկու աւուրց 12 կամ 15 ցորեան՝ ռաբառպառօ՝ ընդ 36 կամ 38 ցորեան՝ քօնֆէքցիօնէ տէլ ճիաքքօնէի, կամ տի քաչչիուի, և է յոյժ օգտակար և շահաւէտ: Նոյնպէս յոյժ շահաւէտ է գործածութիւն ռատիչէ տի քօլօմպօի՝ խառն ընդ ցուքքէռօ առօմաթիզզաթօ տի մաչչէուի, զորոյ պատրաստելոյ զկերպն լիովին խօսեցաք 'ի ճառելն վասն ընդհանուր ախտից ջղաց. տես անդ:

Յաղագս դեղորէից, զորս պարտ է ՚ի գործ արկանել ՚ի դիպուածս ջղախտութեան, որ սովորաբար ՚ի վեր երևի ՚ի կանայս ՚ի դադարումն դաշտանական արեան ։

Յայսմ դիպուածի ըստ թելադրելոյ բնութեան քաջայայտ. ճանաչի եթէ պարտ է սակաւ ինչ երակ հատանել որ քան զամենայն դեղորայս լինի օգտաւէտագոյն և առողջարար ։

Յաղագս խնամատարութեան, զորս պարտ է ՚ի գործ արկանել ջղածետաց, եթէ ՚ի դարմանել ախտին, և եթէ զկնի՝ առ ՚ի խափանել զվերադարձն ։

Յայսմ դիպուածի գործածութի չայի, սրճոյ, և այլ ամենայն փքալից կերակրեղինաց՝ են վնասակարք . որքան առ ըմպելիս, գիտելի է եթէ ոչ է բնաւ օրէն ախտակրիս ըմպել զջուր և եթ . այլ սովորաբար խառն ընդ սակաւաքանակ օղւոյ, կամ գարօղւոյ . Եւ յոյժ հարկաւոր և օգտաւէտագոյն է յայսմ դիպուածի շրջիլն ՚ի զբօսանս ըստ տանելոյ կարողութեան ախտակրին, կամ պարապիլ յաշխատելի գործողութիս, որով բովանդակ մարմինն լինի ՚ի շարժման ։

# ԳԼՈՒԽ ԺԹ.

Յաղագս զանազան աստիճանաց ուշագնացութեան, կամ նուաղման և կամ թալկացման սրտի, որ ասի՝ զվէնիմէնթօ ։

Ախտս այս՝ զվէնիմէնթօ, ունի զանազան աստիճանս, որոց առաւել թեթևագոյնն կոչի՝ տէլիքուիօ, կամ զվէնիմէնթօ . յորում ախտակիրն ոչ կորուսանէ զզգաստութի կմ զզգացողութիւն, բայց ոչ կարէ խօսել . և ախտս այս յաճախակի պատահէ անձանց, որք կրեն զախտս ջղաց . յայսմ աստիճանի ոչ փոփոխի այնքան զարկն բազկերակի ։ Իսկ ՚ի դիպուածն, յորում ախտակիրն գլխովին կորուսանէ ներքսապէս զզգացողութիւն և զուշն, և զարկ բազկերակին լինի երևելապէս տկարագին, յայնժամ կոչի՝ սինքօբէ, որ է երկրորդ աստիճան ուշագնացութեան ։

Այլ եթէ 'ի դիպուածս նուաղման սրտի՝ զարկ բազկին լինի բոլորովին դադարեալ. և շնչառութիւն սպառեալ, մարմինն ցրտացեալ, դէմքն թալկացեալ և դեղնացեալ, յայնժամ կոչի՝ յետին աստիճան ուշագնացութե՛, և յուն. ասֆիքսիա, որովհետև է ճշմարիտ կերպարանք և պատկեր մեռելոյ:

Պատճառք ուշագնացութե՛ են յոգնաթիւ. բայց մեք յառաջիկայս խօսեսցուք միայն զգլխաւորացն, որոց ա- ռաջինն է յորդութիւ արեան. Բ, նուազութիւն արեան. Գ, երակ հատանելն կամ արիւնառութիւն, և փսխողականքն, և լուծողականքն. Դ, անմաքրութիւնն ստամոքսի. Ե, հոտքն, մանաւանդ յանձինս որք կրեն զախտս ջղաց. Զ, ինչ ինչ ախտք և հիւանդութիւնք. Է, ծնանելն կանանց:

Ցուցակ ուշագնացութեան, պատճառելոյ յառատութենէ արեան:

Անձինք զօրեղք, և յաղթանդամք, և քաջառողջք, որք ունին զյորդառատ արիւնս, յոյժ դիւրաւ և յոլով անգամ անկանին յանկարծակի յախտն ուշագնացութե՛. քանզի անգամ առնեն շարժողականութի ինչ տաժա- նելի, քանզի անգամ ըմպեն առատօրէն զհեղանիւթս սաստիկս, և ջերմահամս, քանզի անգամ կրեն զջերմու- թի ինչ սաստիկ, կամ ձեռնամուխ լինին յընթերցմունս դժուարինս ևն:

Ցուցակ դեղօրէից, զոր պարտ է 'ի կիր արկանել 'ի դէ- պուածս ուշագնացութեան պատճառելոյ յառատու- թենէ արեան,

Յայսպիսի դիպուածս պարտ է տալ ախտակրին հո- տոտալ զքացախ. և խառնեալ 'ի նա նոյնչափ ջեր- մագին ջուր՝ պարտ է շփել զձեռս, և զոտս, և զճակատն և եթէ կարիցէ կլանել, պարտ է ևս տալ նմա ըմպել եր կուս կամ երիս դգալ քացախ ջրախառն քաղցրացեա անգամ ջրով. յայսպիսի դիպուած առաւել ճշմարտապէ են սաստիկ և օգտաւոր ըմպելիք: Եթէ ուշագնացութի յարատևէ, և փոխի 'ի սինքոբէ, այսինքն կորուսան զզգայութիւն և զուշ (որպէս ասացաք վերագոյնդ,) յայ ժամ յոյժ հարկաւոր է երակ հատանելն, և զկնի երա հատանելոյ 'ի գործ արկանել զդրեխս, և տալս ա Թողուլ զախտակիրն 'ի հանգստեան, և յամենայնու

կէս ժամու միանգամ պարտ է տալ նմա ըմպել մի բաժակ ինֆուզիօնէ տի ֆիօռէ տի Թիլլիօ, կամ քամոմիլլա ն. կամ տէքօցիօնէ տի օռծօ, խառնեալ շաքարիւ, կամ քացախով: Պարտ է կերակրոցն ախտաւորիս լինել յոյժ թեթեւ, և ըմպելին կամ հասարակ ջուր, և կամ թեթեւ պիռռա. պարտ է առնել ստէպ ստէպ շարժումն առանց աշխատ լինելոյ, և պարտ է սակաւ 'ի քուն լինել:

### Յաղագս ուշագնացութեան պատճառելոյ 'ի նուաղութենէ արեան, կամ 'ի փխրութենէ:

Ուշագնացութիւն յոլով անգամ է պատահական 'ի նուաղութենէ արեան. յայն սակս և բազում անգամ փորձիւ ուսանիմք, եթէ պատահի ուշագնացութիւն զկնի հոսման թանչից առատապէս, զկնի հսկման, և ընդերկար ծոմապահութեան, կամ զկնի կորուսանելոյ զախորժակն են. յայսպիսի դիպուածի պարտ է միշտ 'ի գործ արկանել կազդուրութիւն ինչ ընդ հակառակն վերոյիշեալ ախտին: Դեղորայք այսր տեսակի ուշագնացութեան, են նախապէս՝ դնել զախտաւորն 'ի մէջ անկողնոյ, և ծածկել զնա, և ապա պարտ է շփել զարուանս, զկուրծս, զբազուկս, և զամենայն մարմին նորա ջերմացեալ շուխայիւ. ևս հարկ է տալ նմա հոտոտել ագուա տէլլա ռէճինա տի ունկէռիա, կամ ալքալի վօլաթիլէ ֆլուիտօ, կամ այլ ինչ զօրաւոր հոտաւէտ խոտս; որպիսի են՝ սալվիա, մէնթա, են: Դարձեալ, պարտ է դնել 'ի բերան ախտաւորին քանի ինչ կաթիլ օղի, կամ ռում. և եթէ կարիցէ կլանել՝ պարտ է տալ նմա ջերմ գինի խառնեալ շաքարիւ, և կինամոնաւ. օգտակար է ևս դնել 'ի վերայ կրծոց ախտաւորիս շուխայ ինչ թացեալ 'ի մէջ ջերմ գինւոյ, կամ օղւոյ. նոյնպէս ջերմ կղմինտր 'ի ներբանսն պարտ է դնել. և կերակրոց նորին հարկ է լինել դրգանակ, և թեթեւ և սնուցողական կերակուրք:

### Յաղագս ուշագնացութեան պատճառելոյ յերկար հատանելոյ, 'ի քրտնողականս և 'ի լուծողականս:

'Ի դիպուածսն, յորում ուշագնացութիւն պատճառի յերկար հատանելոյ, հասարակօրէն ոչ է բնաւ որոգայթաւոր, և դադարի փութով 'ի դնելն զախտաւորն 'ի մէջ անկողնոյ, և 'ի տալն նմա հոտոտել զքացախ, 'ի ցանելն 'ի վերայ երեսաց նորա սակաւ ինչ ջուր ցուրտ

ևն ։ Իսկ 'ի դիպուածս, յորում ուշագնացութիւն պատճառի 'ի սաստիկ փսխողականէ կամ 'ի լուծողականէ, յայնժամ պարտ է մեծաւ զգուշութբ խնամ տանիլ ախտակրին իբր թիւնաւորելոյ. վասն որոյ պարտ է 'ի գործ արկանել կաթն, ձէթն ձիթենւոյ, ջուրն գարւոյ, և ջերմ ջուր առատօրէն ևն. միանգամայն պարտ է 'ի գործ արկանել գրեխս կակղացուցիչս, և զկնի դադարելոյ ուշագնացութեան՝ պարտ է տալ նմա զդեղօրայս սեղմիչս, և խաղաղեցուցիչս ։

### Յաղագս ուշագնացութեան պատճառելոյ յանմարսութենէ ստամոքսի ։

Ուշագնացութիւն հասարակօրէն յառաջ գայ յանմարսողականուէ, որ երբեմն պատճառի յանչափուէ կերակրոց, և երբեմն ևս յապականութէ կերակրոց ։ 'Ի դիպուածն, յորում ուշագնացութիւն յառաջ գայ յանչափութէ կերակրոցն, պարտ է փութով 'ի գործ արկանել զփսխողական ինչ, և առատօրէն տալ նմա ըմպել թեթև ինչ ինֆուզիօնէ տի քամօմիլլա կամ քառտօ սանթօ ևն. մարթ է առանց երկիւղի տալ նմա 12 կամ 15 կշիռ ցորեան իբէքաքուանա փոշի ոլորեալ. այլ եթէ բնութիւն շարժի առանց փսխողական դեղոյ, յայնժամ պարտ է նպաստել նմա ջերմ ջրով ։ Իսկ 'ի դիպուածս, յորում ուշագնացութիւն պատճառի յապականուէ կերակրոցն, յայնժամ պարտ է դարման տանիլ ախտակրին ըստ կերպի զորմէ խօսեցաք արդէն վերագոյնդ ։

### Յաղագս ուշագնացութեան պատճառելոյ 'ի հոգւոյ ։

Են ոմանք իրք հոտաւէտք, բայց ծանրահոտք, որք յոմանս անձինս պատճառեն զուշագնացութի, մանաւանդ յայնոսիկ, որք կրեն զախտն ջղաց. որպիսի են՝ մուսքիօ, ճիւաչինթի ևն ։ Յայսպիսի դիպուածս պարտ է զախտակիրն դնել 'ի բացօթեայ ինչ տեղւոջ. ևս պարտ է բառնալ 'ի միջոյ զպատճառս՝ յորոց յառաջ գայ ուշագնացութիւնն, և 'ի գործ արկանել զհնարս զորս եդաք 'ի դիպուածն ախտի ջղաց ևն ։

Յաղագս ուշագնացութեան, որ պատճառի 'ի ծննդեան:

Կանայք փափկակեացք և քնքուշք են առաւել ենթակայ ուշագնացութեան զկնի ծնանելոյ, որում մայրն է գարման տանիլ դիւրաւ 'ի ձեռն քօստխալաց, և մուտ տալով առողջարար և զովացուցիչ օդոյ 'ի սենեակ անդր: Կառավարութիւն և դեղն՝ այս է. 'ի դիպուածս, յորում ուշագնացութիւն յառաջ գայ 'ի հոսմանէ արեան առատապէս և անչափօրէն, յայնժամ պարտ է մեծապէս փութալ 'ի դադարեցուցանել զայն: Պարտ է ևս գիտել, եթէ յայսպիսի դիպուածի ուշագնացութիւն յառաջ գայ հասարակօրէն 'ի տկարութէ և յաշխատանաց. վասն որոյ պարտ է ըստ մարթելոյ զօրացուցանել զախտակիրն, և յոյժ պատշաճ է 'ի գործ արկանելն զհնարս, զորս եդաք 'ի գլ. Փ:



# ԳԼՈՒԽ Ի.

Յաղագս գլխացաւութեան, կամ ցաւոց գլխոյ որ ասէն՝ չէֆալալճիա, չէֆալէա, էմիքրանիա, և քիօտօ իսթէռիքօ:

Անթիւ են գլխացաւութիւնքն որոց ենթակայ է մարդն, որք և յառաջ գան 'ի բազմակերպ պատճառաց. ուստի և մարթին վշտացուցանել զզանազան մասունս մարմնոյ. բայց մեք խօսեսցուք յառաջիկայդ զառաւել ընդհանուր ախտից, որք սովոր են վշտացուցանել զգլուխն, և ունին զոյգ ընդ իւրեանս վտանգ ինչ երևելի: Յորժամ ցաւն գլխոյ լինի թեթև, և զայրացուցանէ միայն զմի մասնաւոր կողմն գլխոյ, յայնժամ կոչի՝ չէֆալալճիա: Իսկ յորժամ լինի ցաւն սաստիկ, և տարածանի յամենայն մասն գլխոյ, յայնժամ կոչի՝ չէֆալէա: Այլ եթէ լինիցի սաստիկ, և շրջափակեսցէ միայն զմի կողմն գլխոյ. յայնժամ ցաւն ասի՝ էմիքրանիա, այսինքն աբգար: Այլ այն մասնաւոր ցաւն որ շրջապատէ միայն զճակատն, կոչի՝ քիօտօ իսթէռիքօ:

Դարձեալ, ցաւքն գլխոյ զանազանին բազում եղանակաւ. երբեմն ցաւն լինի ներքին, և երբեմն արտաքին,

երբեմն իրական, և երբեմն միայն երևութական: Դարձեալ, յանձինս որք վիճակեալ են մաղձային իմն խառնուածոց, ցաւն գլխոյ լինի սաստկագոյն և սրագոյն, և վշտացեալ մասն գլխոյ լինի ջերմագին: Իսկ 'ի նոսա, որոց խառնուածքն են ցուրտ և մաղասային, պատճառէ միայն զծանրութի ինչ գլխոյ, և վշտացեալ կողմն գլխոյ լինի ցուրտ:

Յաղագս պատճառաց զանազան ներքին ցաւոց Գլխոյ:

Նախ ամենայն՝ որ արգելական լինի ազատօրէն շրջագայութե արեան 'ի մէջ երակաց գլխոյ, կարէն պատճառել զցաւս այսորիկ մասին: Գլխացաւութիւն յանձինս, որք են յոյժ պարարտագոյնք, և բնութ խոնաւագոյնք, յառաջ գայ սովորաբար յարգելականութենէ իւիք սովորական հոսման, որպիսի են հոսումն արեան 'ի ռնգացն, 'ի թանչից, և քիրտն ոտից, ևն. մարթին ևս յառաջ գալ յայնմ ամենայնէ, որ պատճառէ առատօրէն զարիւն յերակս գլխոյ, որպէս ընկողմանիլն գլխիվայր ևն: Նոյնպէս հնար է պատճառիլ յայնմ ամենայնէ, որ ընդդիմակալ լինին ընթացից արեան յերակսն և յանօթս գլխոյ. որպիսի են խստագոյն պրկելն զպարանոցն իւիք թաշկինակաւ կամ երիզաւ ևն:

Յորժամ ցաւն գլխոյ յառաջ գայ յարգելականութէ իւիք սովորական հոսման, ախտակիրն զգայ զծանրութի ինչ յառաջակողմն գլխոյ՝ այնպէս սաստիկ, մինչև համարիլ նմա եթէ բարձեալ իցէ զանտանելի բեռն ինչ 'ի վերայ գլխոյ: Իսկ յորժամ յառաջ գայ գլխացաւութիւն յայլ ինչ ախտից, որպիսի են՝ ախտն գաղղիական, և սքօռպութական, և ախտք, որք ասին՝ ռախիբօլա, վաեօլօ, ռօզօլիօ, ռօնեայ ևն, յայնժամ այս տեսակ ախտի կոչի՝ էմիքրանիա, որ ևս հաստատակօրէն պատճառի յապականութէ ստամոքսի, և յանմարսողականութէ. նաև միանգամայն մարթ է պատճառիլ գլխացաւութեան 'ի սաստիկ աշխատանաց, յանչափական կեանս վարելոյ, 'ի գործածութենէ ոգխաւոր հեղանիւթոց, 'ի դժուարամարսելի կերակրեղինաց, 'ի կրից, որպիսի են՝ տրտմութի, սաստիկ բարկութի, երկիւղն, ևն: 'Ի վախճանի՝ յայնմ ամենայնէ, որք պատճառեն զզայրացումն ինչ 'ի ջիլս և զպայթուց ինչ յերակս գլխոյ, յարգելականութէ դաշտանի, թանչից, խարանի, կամ յայլ ինչ վիրաց և այլն:

Գոյ ևս տեսակ ինչ սաստկագոյն գլխացաւութեան, որ է իբր անտանելի, և պատճառէ յախտակիրն զտկարութիւն ինչ սաստկագին, բառնայ գլխովին զախորժակն, և ըղքունն, մթագնէ զտեսութիւն, պատճառէ զմարմաջումն ինչ 'ի մէջ աչաց, զպտոյտ գլխոյ. զփնցումն մկանանց, զնողկանս և զբաբախումն սրտի. երբեմն ևս ժայթքեցուցանէ, և առթէ զպնդութիւն որովայնի: Գլխացաւութիւն հասարակօրէն է յոյժ յաճախ յոմանս արուեստաւորս, որպէս 'ի ձուլիչս, յոսկերիչս և յայլ ամենայն արուեստականս, որք 'ի հրահալեալս և 'ի մետաղականս վաստակին, ևն: Նոյնպէս հասարակօրէն զուգընթաց լինի ցաւս այս գլխոյ 'ի ջերմախտս հանապազօրեայս, 'ի տենդս միջահատականս, մանաւանդ 'ի քառօրեայս. 'ի վախճանի՝ պատճառի ևս 'ի կալուածոց որովայնի: Եթէ գլխացաւութիւն յարատևէ ընդ երկար ժամանակս, և լինի յոյժ սաստիկ, բազում անգամ աւարտի 'ի կուրութիւն, կամ 'ի խլութիւն. և կամ յանդամալուծութիւն, 'ի լուսնոտութիւն, 'ի պտոյտ գլխոյ, ևն:

## Յաղագս Նշանաց Գլխացաւութեան:

Գլխացաւութիւն չունի այլ ինչ երևելի, և հաստատուն նշանս, բայց եթէ զցաւն զոր զգայ ախտակիրն: 'Ի դիպուածս չէֆալալճիաի, և չէֆալէաի ախտակիրն ըզգայ միայն զծանրութիւն ինչ և զպնդութիւն գլխոյ. 'ի դիպուածս քիօտօ իսթէռիքօի՝ ցաւն լինի ևս սաստկագոյն, և ախտակիրն զգայ զնողկանս զփսխումն, և այլն: Եւ յայսպիսի դիպուածս սպառ է գիտել, եթէ արմատ գըլխացաւութեան է 'ի ստամոքսն: Իսկ 'ի դիպուածս էմիքռանայի՝ ցաւն զոր զգայ ախտակիրն՝ լինի յոյժ սրագոյն, և զարկողական, և է ստէպ փոփոխական. երբեմն յաջակողմն, և երբեմն 'ի ձախակողմն. երբեմն յառաջ կոյս, և երբեմն 'ի յետկոյս, և երբեմն ևս 'ի ծագն գագաթան. երբեմն լինի այնքան սաստկագոյն, մինչև ախտակիրն փախչել 'ի տեղւոջէ 'ի տեղի, և խնդրէ զհանգիստ, կորուսանէ գլխովին զախորժակն, ստէպ ստէպ կամի ործալ, և երբեմն ևս ործայ. նաև պատճառի արգելումն դաշտանի, և թանչից, զարկ բազկին լինի մանր. և 'ի վախճանի՝ բովանդակ մարմինն լինի թալկացեալ և երբեմն ևս պատճառէ ուշագնացութիւն, և ջնջումն մկանանց: Այլ 'ի դիպուածն՝ յորում գլխացաւութիւն պատճառի 'ի հանքային գոլորշեաց, և 'ի յածխային ծխոց, յայն-

ժամ 'ի վեր երևի ցաւ ինչ բևեռեալ 'ի պարանոցն, 'ի յետին կողմն գլխոյ, և 'ի ճակատն, հանդերձ ծանրութե̃ իմն և թմրութե̃:

Յաղագս կառավարութեան ցաւոց գլխոյ:

'Ի դիպուածս ամենակերպ գլխացաւութեանց, պարտ է հասարակօրէն 'ի գործ արկանել զզովացուցիչս. և կերակրոցն պարտ է լինել բարեխառն և կակղացուցիչ: Ըմպելեացն հարկ է լինել մաքրողական. որպիսի են ջուրն գարւոյ, խաշուն թեյլենի, սալսաբառիլլիայի, մատուտակի են: Զոտս և զձեռս ախտակրին պարտ է ջերմագինս պահպանել, և ստէպ ստէպ թանալ միանգամայն ջերմ ջրով. և ջանալ պարտ է որքան հնարաւոր իցէ՝ 'ի կանգուն ունել զգլուխն, և ոչ բնաւ դնել զայն 'ի ցածագոյն կամ զառ 'ի վայր:

## ՅՕԴՈՒԱԾ Ա.

Յաղագս դեղորէից գլխացաւութեան, պատճառելոյ յառաւութե̃ արեան, 'ի ջերմագին և 'ի մաղձային խառնուածոց:

Յայսպիսի դիպուածս պարտ է հարկաւորապէս երակ հատանել ախտակրին, և ըստ պահանջելոյ հարկին կրկնել զնոյն. օգտակարագոյն է միանգամայն դնել տըզրուկս 'ի յետկոյս ականջացն. այլև 'ի գործ արկանել վէզիքաթօրիօ, զոր և պարտ է դնել 'ի վերայ ծոծրակի, կմ̃ յետակողման պարանոցի, կմ̃ 'ի յետկոյս ականջացն, և կամ 'ի վերայ այն մասին գլխոյ, ուրանօր ցաւն է առաւել սաստկագոյն: Իսկ յանձինս մսեղս, և 'ի պարարտագոյնս պարտ է գլխովին ծածկել զգլուխս նոցին վէզիքաթօրիօիւ. այլև պարտ է միշտ լոյծ ունել զորովայնն 'ի ձեռն կակղացուցիչ, և թուլացուցիչ դեղորէից:

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

Յաղագս դեղորէից գլխացաւութեան պատճառելոյ 'ի ջրոյ կամ յաւիշէ ապականելոյ, յորժամ ո՛չ դադարէ երակ հատանելովն այլն:

Ի դիպուածս՝ յորում գլխացաւութիւն յառաջ գայ յառատութենէ ապականեալ ինչ ջրոյ ժողովելոյ 'ի ներքին կամ յարտաքին մասունս գլխոյ, յայնժամ ցաւն լինի խուլ, և ծանրութիւն գլխոյ յարատև, և ո՛չ դադարի երակ հատանելով, և ո՛չ 'ի գործ արկանելով զիրս բարեխառնս. պա՛րտ է յայսպիսի դիպուածս 'ի կիր առնուլ զլուծողականս սաստկագոյնս, որպիսի են՝ բիլլօլէ ալօէթիքէ, կամ րէզինա տի ճիալափփա են: Երբեմն և յայսմ դիպուածի հարկաւոր է բոլորովին զգլուխն ծածկել վէշիքաթօրիօիւ:

## ՅՕԴՈՒԱԾ Գ.

Յաղագս դեղորէից գլխացաւութեան պատճառելոյ յորդնելմանէ լորձունաց ռնգացն:

Յայսպիսի դիպուածս պա՛րտ է ախտակրին ստէպ ստէպ հոտոտալ սալ վօլաթիլէ, և 'ի գործ արկանել պնչադեղս, և այլ ամին նման դատարկիչ դեղորայս, որպիսի են՝ փոշիքն էտէռա թէռռէսթռէի, լէնիօ տի լէնթիսքօի, սբիկօ սալվաթիքօի են. օգտաւէտագոյն է միանգամայն ձգել զշոգիս ջերմ ջրոյ 'ի ռնգունս, որ անօսրէ զթանձրամածութիւն տողունից, և դատարկէ զլորձունս ռնգացն:

## ՅՕԴՈՒԱԾ Դ.

Յաղագս դեղորէից գլխացաւութեան, որ ասի՝ էմիքռանիա:

Գլխացաւութիւն այս անուանեալ անդար՝ հասարակօրէն յառաջ գայ յանմաքրութենէ ստամոքսի. յայսպիսի դիպուածս պա՛րտ է 'ի գործ արկանել փսխողական, և լուծողականս կազմեալս ռաւպառպառօիւ, և զկնի բարւոք մաքրելոյ զստամոքսն և զփորոտիսն, պա՛րտ է տալ

ախտակրին զերս դառնագինս, նա յաւէտ աքաւա ֆեռռուճինօզա առ 'ի զօրացուցանել զստամոքսն և զլեղս: Իսկ եթէ ցաւն իցէ թեթևագոյն, և չիցէ այնքան մնատարեր, յայնժամ բաւական է միայն դնել զոտս 'ի ջերմ ջուրս: Այլ եթէ յառաջ գայ անդադար այս յարգելականութէ գաւշտանի, թանչից, խարանի և այլն, յայնժամ պարտ է երակ հատանել և 'ի գործ արկանել տզրուկս, և մէշէնքաթօռիօ. բայց եթէ պատճառեալ իցէ ցաւն 'ի դըժուարամարսելի կերակրեղինաց, յայնժամ պարտ է 'ի գործ արկանել զփսխողականս:

Այլ եթէ ոչ դադարի ցաւն 'ի ձեռն այսոցիկ դեղորէից, յայնժամ պարտ է դնել 'ի վերայ վշտացեալ մասին զլխոյ լավանտա՝ խառն Ը օբբիօի, և ընդ սբիռիթօ քանֆօռայի. և զկնի դադարելոյ ցաւոյս, պարտ է լուծողականս պատրաստել ըստ յետագայ եղանակին: Ա՛ռ երկու տրամ սէնա, մի տրամ՝ ռապառպառօ, և երկու ունկի և կէս մաննա քռասսա: Եռացո՛ սակաւ ինչ զերկուսն 'ի միասին 'ի մէջ 12 ունկի ջրոյ, և յետ այնորիկ ա՛րկ 'ի վերայ զմաննան, և թո՛ղ լուծանիլ. և 'ի գործ արկցէ ախտակիրն զայն: Եւ զկնի երկուց կամ երից աւուրց վերըստին կրկնեսցի ըստ պահանջելոյ հարկին: Իսկ եթէ գլխացաւութիւս այս իցէ բէռիօտիքա, այսինքն պարբերական, յայնժամ պարտ է 'ի գործ արկանել զքինաքինան ըստ եղանակին, զորմէ խօսեցաք 'ի դլ. ժզ, տե՛ս անդ: Պատմէ պօէռհավէ հեղինակն, եթէ բազումք յայսպիսի ախտաժետաց բուժեցան յախտէց իւրեանց խարանաւ:

## ՅՕԴՈՒԱԾ Ե.

Յաղագս դեղորէից գլխացաւութեան պատճառելոյ 'ի գաղղիական և 'ի սքօռպուտական ախտից:

'Ի դիպուածս՝ յորում գլխացաւութիւն յառաջ գայ յախտաւոր հիւթոց, որպիսի են հիւթքն գաղղիական և սքօռպուտական ախտից, յայնժամ պարտ է 'ի վար արկանել զդեղորայս մաքրողականս, և քրտնաբերս ըստ կերպին զորոց ունիմք խօսել 'ի տեղիս իւրեանց 'ի ճառելն զգաղղիական, և սքօռպուտական ախտից:

## ՅՕԴՈՒԱԾ Ջ.

Յաղագս դեղորէից գլխացաւութէ առնելոյ 'ի տապէ աշխատանաց և 'ի ջերմութէ:

Յայսպիսի դիպուածս պարտ է 'ի կեր արկանել զո- վացուցիչ դեղորայս, որպիսի են՝ բօցիօնէ ասլենա խառն ընդ նիթռօյի կամ լեմօնեա, և կամ էլիսիրէ ասիտօ տի հալլերօ, և այլն: Այլ և պարտ է խառնել զսբիրիթօ- տի վինօ քանֆօռաթօն ընդ քացախի, կմ զքացախն ը վարդեջրոյ, և փոքր մի ջերմացուցեալ զայն շփել զգլուխն ախտաւորին առէալ առէալ յաւուրն. կամ թացեալ այնու զղենջակն, պարտ է դնել 'ի վերայ գլխոյ նորին:

## ՅՕԴՈՒԱԾ Ի.

Յաղագս դեղորէից գլխացաւութէ պատճառելոյ 'ի հան- քային կամ 'ի մետաղային գոլորշեաց:

'Ի դիպուածս յայս նախ քան զամենայն պարտ է ջանալ որքան մարթ իցէ՝ 'ի բաց հերքել զհանքային գո- լորշեան որ 'ի ներքս ուղղոյն, և պարտ է միանգամայն նը- պաստաւորութեամբ լինել բնութեան 'ի ձեռն թեթևագոյն դըր- խի յօրինելոյ սէննայի, և մաննայի: Եւ զկնի երեք ժա- մուց պարտ է տալ նմա սակաւաչափ թիւրակէս: Եւ յետ երկոտասան ժամուց 'ի պահ առաւօտու պարտ է տալ երեք կշիռ ցորեան՝ թառթառօ էմէթիքօ. և օգնել ներ- գործութեան նորին արարեալ թեթև ինչ ինֆուզիօնէ տի քամօմիլլա. բայց զի մի՛ փախողականն իշխեսցէ զայրացու- ցանել զփորոտիսն, և զայլ ներքին մասունս մարմնոյ, նմին իրի տալ պարտ է յերեկոյեան պահու դրեխ ինչ կազմեալ չորս ունկի գինեաւ, և նոյնչափ ձիթով. որք 'ի բաց վա- նեն զհանքային գոլորշիս ուղղոյ, և նուաճեն զցաւս գըլ- խոյ, և միանգամայն խաղաղեն զփորոտիսն ևս:

Եւ իբրև վերոգրեալ կամ նոցին նման դեղորէիւք ոչ փարատեսցի ցաւն գլխոյ, ոչինչ արգելք կայ գործածու- թեան յետագայ լուծողական դեղորէիս: Ա՛ռ երկու տրամ՝ սէննա, մի տրամ՝ ռաւպառպառօ, և մի և կէս ունկի՝ թա- մառինտի, և 'ի հասարակ ջրի եփեա՛ եռացմամբ իբր քա- ռորդ մի ժամու: Ապա զտեա՛, և մնասցէ եօթն ունկի. յոր յաւե՛լ երկու ունկի՝ մաննա, և երկու տրամ՝ սալ

տի կլաուպէաօ ։ Եւ ապա տուր ախտակրին ժամէ 'ի ժամ մէն մի սկահակ սրճոյ ։

## ՅՕԴՈՒԱԾ Ը.

Յաղագս դեղորէից պարբերական գլխացաւութեան ։

Պատշաճական և օգտաւէտ դեղն յայսմ դիպուածի է քինա քինան, զորոյ զպատրաստելոյ կամ զ'ի կիր առնըլոյ կերպէն լիովին խօսեցաք 'ի ճառելն վասն ընդհատ տենդի. տես անդ ։ Եւս յոյժ հարկաւոր և շահաւէտագոյն է յայսմ դիպուածի՝ շրջիլն 'ի զբօսանս ըստ տանելոյ կարողութեան ախտաժետին ։



## ԳԼՈՒԽ ԻԳ.

Յաղագս ատամնացաւութեան, որ ասի՝ օդոնթալճիա, կամ դօլօռ դէի դէնթի ։

Ամենայն ոք ճանաչէ զախտս զայս, և ունի մեծ հաղորդակցութիւն և նմանութիւն ընդ յօդուածացաւուն ։

Պատճառք ցաւոց ատամանց ։

Գլխաւոր պատճառք ատամնացաւութեան՝ են արգելումն արտաշնչութեան մարմնոյ, չափազանց գործածութիւն քաղցրաւենեաց, նստիլն բաց գլխով հանդէպ հողմոյ, մանաւանդ զկնի քրտնելոյ, մնալն ընդերկար թացեալ ոտիւք, խորտակումն կարծրակեղև պտղոց ատամամբ ։ Բազում անգամ ևս պատճառի 'ի բորբոքմանէ արեան, 'ի սքօրպութօ անուանեալ ախտէ, և յերկարատև գործածութէ սնդկի ։

Յաղագս դեղորէից, որք պէտք է 'ի կիր արկանել ընդդէմ ցաւոց ատամանց ։

Դեղորայքն, որք սովորաբար 'ի կիր արկանին 'ի դիպուածս ցաւոց ատամանց, յայտնի և ծանուցեալ են 'ի

բազմաց. բայց մեք աստանօր գրեսցուք զառաւել յարմարագոյնս և պատշաճագոյնս, զորս սովոր եմք 'ի վար արկանել: Եթէ ցաւակիրն իցէ արիւնային իմն բնութեան և խառնուածոց վիճակեալ, պարտ է երակ հատանել. և 'ի հետևեալ աւուրն հարկ է տալ թեթև ինչ լուծողական դեղս: Եւ 'ի վերայ ցաւագնեալ ատամանն՝ պարտ է դնել յաճախակի զիւղն մեխակի կամ ծոթրնի, որ օգտէ մեծապէս:

Նոյնպէս մարթ է պատրաստել դեղ իմն մեղմացզու հետագայ եղանակաւ: Առ տասն կշիռ ցորեան ափիոն, և նոյնչափ իւղն մեխակի, և ութ չիթ՝ իւղ քափրոյ, և այնքան տորորեայ, մինչև ափիոնն միասցի ընդ իւղոցն, և նովաւ թրմեալ դոյզն ինչ բամբակ՝ դի՛ր 'ի վերայ ցաւագնեալ ատաման. միայն թէ կրկնելի է այդ գոնէ մինչև 'ի տասն անգամ: Այլև պարտ է դնել ևս ստէպ զոտս ցաւակրին 'ի ջուր ջերմ մինչև ցծունկս:

Իսկ եթէ 'ի ձեռն այսոցիկ դեղորէից չլինիցի հնարաւոր դադարումն ցաւոց ատաման, յայնժամ պարտ է 'ի գործ արկանել զտասնևվեց կշիռ ցորեան՝ իբէքաքուանայ առ 'ի փսխել, և գրգռել զարտաշնչութիւն մարմնոյ: Յոյժ օգտակար դեղ է ևս ողողել զատամունս 'ի կազդուրիչ և 'ի խաղաղիչ ոգեաց, որպիսի են՝ ոգին քափրոյ, և ափիոնի, և ստէպ ստէպ վերանորոգել զնոյն: Այլ եթէ՝ այսու ևս ուժգնութիւն ցաւոց ոչ մեղմասցի, յայնժամ պարտ է դնել 'ի վերայ ծոծրակի կամ յետ կոյս ականջացն զվէզիքաթօռիօ:

Իսկ եթէ 'ի բորբոքմանէ ցաւոյն՝ լնդերքն այտուցեալ իցեն, յայնժամ պարտ է միանգամայն դնել 'ի վերայ վշտացեալ լնդերացն զթուզ մի չոր եփեալ կաթամբ, և 'ի գործածութիւն այսր թզոյ արժան է յարատևել յաւուրն երիցս, կամ ևս առաւել, մինչև բացցի այտուցն, և ելցէ շարաւն. յետ որոյ զծաղիկն երիցկի կամ սամպուքօի եփեալ ջրով պարտ է տալ նմա առ 'ի ողողել զբերանն: Եւ եթէ այտուցն լնդերաց կարծր իցէ և կարմրերանգ, յայնժամ պարտ է դնել քանի մի տզրուկս 'ի վերայ վշտացեալ լնդերացն: Արդ՝ եթէ անօգուտ ելցեն ասացեալ դեղորայքս, և եթէ արմատն ատաման խախտեալ կամ նեխեալ իցէ, յայնժամ առաւել օգտաւէտագոյն դեղն է 'ի բաց խլելն. և ապա սպիռիթօ քանֆօռաթօ պարտ է ողողել զբերանն:



# ԳԼՈՒԽ ԻԲ.

Յաղագս ցնցական ախտի երախայից կամ տղայոց, որ ասի՝ ֆոնվուլսիոնէ դէի ֆանճիւլլի։

Ախտս այս է ուժգին թօթափումն կամ ցնցումն և կամ բռնի շարժումն ջղաց և մկանանց։ Ըստ կարծեաց բազում հեղինակաց՝ վճարին 'ի կենաց առաւել քան զկէս մասն երախայից կամ տղայոց 'ի ձեռն այսր ախտի ցնցականի. Նմին իրի մեծապէս կարևոր է ամենայն բժշկաց քաջ ճանաչել, և անդէն կանխել զպատճառսն՝ յորոց յառաջ գայ ախտս։ Երկեակ է տեսակ այսորիկ ախտի ցնցականի. մինն ասի՝ քօնվուլսիօնէ սինթօմաթիքա, այսինքն ցնցական ախտ արկածեան։ Իսկ միւսն կոչի՝ քօնվուլսիօնէ էսսէնցիալէ, այսինքն ցնցական ախտ էական։ Արդ՝ ճառեսցուք յառաջիկայդ նախ՝ 'ի վերայ արկածեան ախտի ցնցականի, և ապա էական ախտի ցնցականի։

## ՅՕԴՈՒԱԾ Ա.

Յաղագս պատճառաց արկածեան ախտի ցնցականի։

Անմիջական պատճառքն այսր ախտի են այնք ամենայն, որք գրգռեն և զայրացուցանեն զջիղս և զմկանունս մարմնոյ։ Մարթ է ևս յառաջ գալ 'ի ակար և յուռի կազմուածոց ջլաց և մկանանց, և այլ գործարանաց. և ևս յանկմանէ, յերկիւղէ, 'ի տարապայման կրից խնճմօրն 'ի ժամանակի յղութեան, 'ի հիւանդութենէ և 'ի վատառողջութենէ ծնողացն, յախտարծարծ նիւթոց և կաթանց սնուցչացն, որք խանգարեն զգործողութիւն մարսողութեան, և զտրամաբաշխութիւն բարեյարդար մամացի, և բարեգոյն աւշկի։ Նոյնպէս 'ի դժուար ծագմանէ ատամանց. 'ի սկզբնաւորութենէ ախտակի կամ ծաղկի, և վարդախտի, այսինքն խզամուխի. 'ի ճճեաց կամ յորդանց, որք բազում անգամ զայրացեալ քանդեն զսեպհական կայանս իւրեանց, և անցեալ գնան 'ի ստամոքսն, և յայլ ընդերս մարմնոյ, և կռուին զնոքօք ոգւով չափ, յորմէ և անվրէպ պատճառեն զախտս զայս։

Դարձեալ, հնար է յառաջ գալ 'ի սնդմանէ հան-գերձից, 'ի համապազօր և յերկար լալեաց. 'ի սաստիկ պնդութէ որովայնի, յընդերկար և 'ի չափազանց գոր-ծածութէ Թմբրեցուցիչ դեղորէից. որպիսի են Թիւրա-կէան, ափիոնն, տիապքօռտիօն են: Նաև 'ի շոգեաց և 'ի գոլորշեաց Թխնաւոր մետաղաց՝ հանքաց՝ և հրահալե-լեաց, որպիսի են սնդիկն, արճիճն, մկնդեղն, են: Այլև յոլովիցս պատճառի ախտս այս յորովայնալուծու-Թէ, 'ի յաճախակի ժայԹքմանէ, յընդհատ տենդից, 'ի համապազօրեայ և 'ի հրատապ ջերմախտից, և յայլ ինչ բորբոքեցուցիչ ախտից: Յաւելուլ մարԹ է 'ի վերայ այ-սոցիկ պատճառաց և զյոռութիւն կլիմայից, և զանբարե-խառնութիւն օդոց երկրին յորում բնակեն:

Յաղագս դեղորէից, որոց պարտ է 'ի վեր արկանել 'ի դի-պուածս այսորիկ ախտից:

'Ի դիպուածս, յորում պատճառի ախտս այս 'ի լիութէ. կամ յանմարսողականութէ, և կամ յորպիսի և իցէ տաւիպ և գրգռիչ նիւթոց, յայնժամ պարտ է նը-պաստամատոյց լինել բնութեն, մատուցանելով զերկս կշիռ ցորեան՝ իպէքաքուանա փոշի արարեալ, զոր և պարտ է միանգամայն կրկնել ըստ պահանջելոյ հարկին՝ նկատեալ 'ի պարագայս խառնուածոց, և արտաԹորեալ նիւԹոց. բայց մեք զայս փոխողական դեղ եւեԹ անխա-տական համարիմք պատճառել զառողջունի. յայն սակս կարևոր դատիմք եւս կակղել զորովայնն սակաւուկս 'ի Ձեռն մեղր և ԹեԹև լուծողականաց, որպիսի են՝ տա-մարապառօն, և մանկնէզիա ալպա. զքանակութի սոցա տեսցես 'ի տառն՝ Ռ և Մ 'ի կարգի բուրեանց: Այլև միանգամայն նպաստամատոյց լինել բնութեն 'ի Ձեռն ԹեԹևագոյն գրեխի յօրինելոյ կաԹամբ, և կակղացուցիչ խառնելինօք: Նոյնպէս զկնի գրեխի արժան է տալ նմա սակաւուաչափ օքսուլի քանքուի՝ խառնեալ ընդ փոքր ինչ մանկնեզիա ալպաի, և 'ի նպաստել ներգործութեն նորին տանել ԹեԹև ինչ արգանակ մսոյ, կամ ինֆուզիօնէ տի քամոմիլլա: Իսկ առ 'ի խաղաղեցուցանելոյ և հանդու-ցանելոյ զջիղս և զմկանունս տացի երբեմն երբեմն փոք-րիկ դոզալս ինչ 'ի ցնցահալած ասացեալ հեղուկէն Թախինքամվէլլեայ, զորմէ ունիս տեսանել 'ի բառն Լի-քուօրէ անԹիքօնվուլսիվօ:

Եւ 'ի դիպուածս, յորում պատճառի ախտս այս 'ի

պղպջնաւորութէ պխակի, կամ ծաղկի, և վարդախտի. յայնժամ պա՛րտ է վարել մեծաւ զգուշութեք. զի յայսպիսի դիպուածս՝ փսխողականքն ո՛չ են պատշաճ. իսկ լուծողականքն ո՛չ են այնքան ապահով, բայց եթէ լինիցի յոյժ թեթև, մեղմ, և սակաւաքանակ: Առաւել ճահողագոյն դարմանքն են՝ արիւն հանելն յուսոց, և յազդերաց, և միանգամայն դնել վէշիքաթօրիօ 'ի վերայ թիկնամիջի: Իսկ 'ի դիպուածս, յորում ախտս այս յառաջանայ 'ի դժուար ծագմանէ ատամանց, պատշաճագոյն դեղն է թեթև լուծողականն. ութ կշիռ ցորեան՝ ռապառպառօ, կամ 12 կշիռ ցորեան՝ մակնէզիա ալպան, չափ են բարիոք և բաւական: Նոյնպէս օգտաւէտ է դնել վէշիքաթօրիօ 'ի վերայ ծոծրակի: Այլ 'ի դիպուածս, յորում պատճառի ախտս այս 'ի ճճեաց կամ յորդանց մտելոց 'ի ներքս ստամոքսի և փորոտեաց. յայնժամ արժան է 'ի գործ արկանել զդեղորայս, առ 'ի սատակել, և արտաքս վանել զորդունս. որպիսի են՝ բուլմիս տի ֆէռռօ, օլիօ տի բալմաքրիսթէ ևն:

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

### Յաղագս ջղային ախտի ցնցականի 'ի վերայ երախայից կամ տղայոց, որ ասի՝ քօնվուլսիօնէ էսսէնցիալը:

Ախտս այս է խօթութի՛ւն ինչ ուղղոյ, կամ գումարումն ջղասասեր հիւթոց 'ի սակաւ գլխոյ՝ առանց ցաւոց աղեաց, և առանց վերոգրեալ պատճառաց և նշանաց զուգընթաց գտանելոյ, ևն: Ախտս այս բազում անգամ է գուշակ, և նախընթաց լինի երեք վտանգաւոր խօթութէ. զորօրինակ լուսնոտութէ, կամ վերնոտուէ, մղձաւանջի, ևն:

### Յաղագս դեղորէից, զորս պա՛րտ է 'ի ձեռ արկանել 'ի դիպուածս այսորիկ ախտի:

Մի՛շտ կարևոր է լոյծ ունել զորովայնն. բայց զգուշանալ պա՛րտ է զի մի՛ 'ի գործ արկցին ուժգին և զօրաւոր լուծողականքն, և զօրաւոր գրեխքն. ևս ինֆուզիօնէ տի սէնա, մաննա, ևն: 'Ի դիպուածս յայս ռապառպառօն, մակնէզիա ալպա, և թեթևագոյն գրեխն են յոյժ օգտակարք և շահաւէտք: Նոյնպէս պա՛րտ է պատ-

չամ է դնել վեզիքաթօրիօ 'ի վերայ ուսոց, և կամ 'ի վերայ ծոծրակի առ 'ի դուրս ձգել զթուամարեալ հիւթս կամ շիճուկս սակաւի:



# ԳԼՈՒԽ ԻԳ.

## Յաղագս հեծկլտանաց որ ասի՝ սինկիլթուս:

Իղխոտս այս է կերպ ջղախաղական, կամ ցնցումն ինչ ստամոքսի կամ ստոծանւոյ; յառաջ եկեալ 'ի դրդրումանէ, կամ 'ի զզուանմանէ մանրաջլաց, կամ մանրաթելից այսոցիկ գործարանաց. զոր և յորջորջեն զանազան անուամբ ըստ տարբերութեան նշանացն և ստատկութեանց այսորիկ ախտի: Ցորժամ հեծկլտանքս 'ի վեր երևի զկնի ուտելոյն, (որպէս ստէպ պատահի, մանաւանդ տղայոց, և երախայից,) յայնժամ կոչի՝ սեմբլիչէ կամ բասսաձձիէռօ, այսինքն սուտ և կարճատև: Բայց 'ի դիպուածս՝ յորում ախտս այս ստէպ ստէպ 'ի վեր երևի, և զուգընթաց լինի ընդ փորհարութեց, և թանչից, ընդ դժնդակ տենդից, և ընդ ազգի ազգի բորբոքողականութեց, զոր օրինակ ստամոքսի, ստոծանւոյ, լերդի, և այլ ընդերաց, որ է նշան վտանգաւոր և մահահրաւէր, յայնժամ ասի՝ սինթօմաթիքօ, այսինքն արկածեան: Իսկ յորժամ ախտս այս ոչ նուաճեալ 'ի դեղորէից՝ երկարատև է, բայց առանց համընթաց լինելոյ վերոյիշեալ ախտից, յայնժամ կոչի՝ քօնթումաչիասիմօ, այսինքն ըմբոստ կամ հեստ:

Իսկ որքան առ յարատևութիւն ըմբոստ ձայնեալ հեծկլտանաց՝ չիք ինչ որոշեալ կանոն, երբեմն տևէ մինչև 'ի 12 կամ 14 ժամ. երբեմն 'ի մի շաբաթ. երբեմն 'ի մի ամիս. երբեմն ևս 'ի մի ամ ամբողջ. և երբեմն ևս յարաձգի մինչև ց30 ամս: Գիտելի է, եթէ անձինք՝ որք ունին զախտս որկորոյ, և արբշռութեն, և զախտս ախտնդանոց, կամ արգանդի, են առաւել ենթակայ այսր ախտի հեծկլտանաց.

## Պատճառք հեծկլեանոց։

Ախտս այս յոլով անգամ 'ի վեր երևի յորկորամոլութենէ, 'ի վիրաց ինչ 'ի վեր երևելոց 'ի ստամոքսն, 'ի թիւնաւոր նիւթոց, 'ի բորբոքմանէ և յայտուցմանէ ստամոքսի, և այլոց, 'ի յարգելմանէ սովորական հոսմանց, 'ի քաղցկեղէ, և 'ի մահաբեր տենդից, ևն։

## Ցուցակ դեղորէից, զորս պարտ է 'ի ձեռ արկանել 'ի դիպուածս կարճատև հեծկլեանոց։

'Ի դիպուածս յայս առաւել շահաւէտագոյն դեղորայքն են՝ ցուրտ կամ գաղջ ջուրքն, նա յաւէտ սպիտակ և անարատ մեղրն։ Նոյնպէս օգտաւէտ է յաճախակի ուտելն զմեղրն հացի, և ստէպ ստէպ ըմպելն զջուր ցուրտ և զովարար։

## Ցուցակ դեղորէից, զորս պարտ է 'ի գործ արկանել ընդդէմ երկարաձգեան հեծկլեանոց։

Բայց որովհետև ախտս այս է վտանգաւոր և մահաբեր, վասն որոյ հարկ է փութապէս 'ի գործ արկանել զբարեգոյն նպաստս, և զհնարս։ Յորժամ ախտս այս յառաջ գայ 'ի բուսական սննդոց, և 'ի դժուարամարսելի կերակրեղինաց, յայնժամ պարտ է տալ ախտակրին բաժակ մի ազնիւ գինի, կամ այլ ինչ ոգիաւոր հեղանիւթս, առ 'ի զօրացուցանել զստամոքսն և 'ի հանդարտեցուցանել ղհեծկլտանքս զայս։ Եթէ պատճառեալ իցէ ախտս այս 'ի թիւնաւոր նիւթոց մտելոց 'ի ստամոքսն, յայնժամ պարտ է տալ նմա առատօրէն կաթն կովու կամ այծեաց, կամ իւղն ձիթապտղոյ։ Իսկ եթէ պատճառեալ իցէ 'ի բորբոքմանէ ստամոքսի ևն, յայնժամ բաց թելադրելոյ բնութեան քաղջայայտ ճաշակի, եթէ արժան է երակ հատանել, և 'ի կիր արկանել զզովացուցիչ դեղորայս, որպիսի են սպիրիթօ տի նիթռօ տոլչիֆիքաթօ, զոր մարթ է 'ի գործ արկանել 20 կամ 24 չիթ խառն ընդ մի սկահակ սիէռօ աի լաթթէ վինօզօի երիցս անգամ յաւուրն, կմ ևս առաւել՝ եթէ տանիցի ստամոքսն. և պարտ է ստէպ ստէպ թանալ զչուխայն ջերմ ջրով և դնել 'ի վերայ ստամոքսի։ Յայսմ դիպուածի նոյնպէս շահաւէտ է գործածութիւն քինա քինայի, ևն։

Յաղագս դեղորէից, զորս պարտ է 'ի կիր արկանել ընդդէմ ընդհատ յայտնեալ հեծկլտանաց . կոչի նաև հեծկլտանք եռական :

Պատշաճական, և օգտաւէտ դեղորայք յայսմ դիպուածի են այն ամենայն, որք խաղաղեցուցանեն և հանդուցանեն զջիղս և զմանրաթելս ստամոքսի և ստոծանւոյ . որպիսի են՝ սբիռիթօ ափ լաւդանոսա քօմբօսթօ, թինթուրա վօլաթիլէ արօմաթիքա, ագուա տի մէնթա, վալէռիանա, քասթօռիօ, և նոյն իսկ ափիոնն չափով և զգուշութ̅բ ընծայեալ . 'ի վեր քան զամենայն՝ մուսքիօն, զոր մարթ է 'ի գործ արկանել 15 կամ 20 կշիռ ցորեան՝ խառն ընդ շիլօբբոյի չորիցս անգամ յաւուրն : Վկայէ լիէօթօռ հեղինակն՝ եթէ չիք դեղ ինչ առաւել զօրաւոր առ 'ի հալածել զհեծկլտանքս քան զմուսքիօն : Նոյնպէս օգտաւէտ է մեղրն սպանիոյ, մանաւանդ գաղատիոյ . զոր պարտ է ուտել առաւօտէն :

Շահաւէտագոյն է գործածութ̅ին նաև արտաքին սպեղանեաց . յաւելու վերոյիշեալ հեղինակն, եթէ յայդպիսի դիպուածս պարտ է դնել 'ի վերայ ստամոքսի և կրծոց՝ զմեծագոյն ինն սպեղանի, մինչև ծածկել զմեծագոյն մասն ստամոքսի և կրծոց . պատշաճագոյն է սպեղանին անուանեալ էմբիասթռօ սթօմաքիքօ, կամ թանձրաթան թերիակէսիւ յօրինեալ՝ մածեալ 'ի վերայ կիւտէրի անուանեալ մաշկի, որում և պարտ է մնալ ը̅ տանելոյ կարողութ̅ե ախտակրին :



## ԳԼՈՒԽ ԻԴ.

Յաղագս զանազան փչառակաց հողմոյ, որ ասի՝ Թօռաէ :

Քառեակ է տեսակ այսորիկ հողմի . ա . ասի՝ Թօռաէ ափ բէթթօ . այսինքն հող կրծոց : բ . Կոչի՝ Թօռաէ սթօմաքալէ . այսինքն հող ստամոքսի : գ . Անուանի՝ Թօռաէ նէռվօզա . այսինքն հող ջլաց : Իսկ դ . Թօռաէ սինթօմաթիքա . այսինքն հող արկածեան, զորոց իւրաքանչիւրոցն բուն ուրոյն ճառեսցուք համառօտիւ :

# ՑՕԴՈՒԱԾ Ա.

## Յաղագս հազի կրծոյ, կամ լանջաց:

Ամենայն երկարատեւ հազ՝ որ 'ի կուրծս, լինի որոգայթաւոր, և պահանջէ զառաւել գործունեայ և պատեհական նպաստս, յայն սակս՝ զի հազս այս յոլով անգամ երկարաձգեալ փոխարկի յախտն, որ ասի՝ Թիզիքեցցա:

## Պատճառք այսորիկ հազի:

Հազս այս մարթի յառաջ գալ 'ի վատ առողջութէ կրծոց, և 'ի տկարութէ թոքոց: Հնար է ևս պատճառիլ 'ի ցրտառութէ, 'ի խոնաւութէ օդոց, և յանբարեխառնութէ կլիմայից՝ յորում բնակին: Դարձեալ, ընկողմանելն 'ի վերայ գէճ գետնի և անկողնոյ, մնալն ընդ երկար թացեալ հանդերձիւք և ոտիւք՝ պատճառեն զհազս զայս: Նոյնպէս մարթ է հազիս այսմիկ ևս առաւել պատճառիլ յայնմ ամենայնէ, որք արգելուն զարտաշնչութիւնն մարմնոյ:

## Նշանք այսորիկ հազի:

Ուկեթև հազն լանջական՝ մարթի փարատիլ դիւրաւ յընթացս հնգից կամ վեցից աւուրց, կամ ևս սակաւ, յորում դիպուածի ոչ գտանի բնաւ ջերմութի: Բայց 'ի դիպուածս, յորում հազն երկարատեւեալ հանապազորդէ, յայնժամ իսկ և իսկ զհետ գայ անախորժակութի, անմարսողութի, քնատութի, ճնշումն կրծոց, դժուարաշնչութի, տենդ յամր, տկարութի, թուլութի, և վհատութի: Այսորիկ նշանքս բաւականապէս բացայայտեն զախտացումն թոքոց: Այլ գիտել արժան է, զի հազս այս 'ի սկզբան անդ լինի չոր. և ախտակիրն զգայ յաճախակի զխոցուած ինչ թեթև 'ի ձախակողմն. և յետ այնորիկ սկսանի առ սակաւ սակաւ 'ի բաց վանել զթուքս հանդերձ նոյն հազիւ:

Յաղագս դեղորէից, զորս պէտք է 'ի վեր առնուլ 'ի դի-պուածս յորում ընդ հազին կրծոց զոյգ գտանի նաև ջեր-մութիւն:

Յայսմ դիպուածի նկատել արժան է, եթէ ախտա-կիրն լինիցի յարբունս հասակի երիտասարդութեն, և ա-րիութեն. եթէ հազն իցէ յոյժ սաստիկ, եթէ ունիցի ցաւ և ծանրութիւն գլխոյ, և եթէ զարկ բազկին լինիցի կարծր և արընթաց, յայնժամ պարտ է անվրէպ երակ հատանել: Կերակրոցն պարտ է լինել թեթև, և սակա-ւաքանակ. զորօրինակ արգանակն որթու, կամ պարա-նոցն ոչխարի են: Եւ զկնի երակ հատանելոյ պարտ է յամենայնում երեկոյի դնել զոտս նորա 'ի մէջ ջերմ ջրոյ. և պարտ է լոյծ պահել զորովայնն միջնորդութեամբ գրեխի: Նոյնպէս քաղցրացուցիչ ըմպելիքն են յոյժ պատ-շաճողականք 'ի դիպուածս հազի կրծոց:

Յաղագս դեղորէից, զորս պէտք է 'ի գործ առնուլ 'ի դի-պուածս յորում ընդ անջերմ հազին գտանի փողոտք կամ մաղաս հոծ, և սպղային:

Պատշաճական և օգտաւէտ դեղորայք յայսմ դի-պուածի են այնք ամենայն, որք զօրեն անօսրել զհոծու-թիւն տողունից, և կակղացուցանել զկուրծս և զթոքս, որպիսի են՝ սգուիլլա, կօմմա ամմօնիաքա, են: Նոյնպէս օգտաւէտ է սօլուցիօնէ տի կօմմա ամմօնիաքա, որ այս-պէս բաղադրի: Առ երկու տրամ կօմմա ամմօնիաքա 'ի յանկան կամ 'ի սանդ, բարիոք լեսեալ փշրեա, և ընդ այսմ խեժի խառնեա հետ զհետէ և առ փոքր փոքր կէս քսեստ խաշու գարւոյ, յաւելլով 'ի նոյն չորս ունկի՝ աքուա սթիլլաթա տի բուլէճճիօ: Յըմպելւոյ աստի արբցէ հիւանդն երկու դդալ սեղանոյ չորից անգամ յաւուրն:

Այլև օգտաւէտ է 'ի դիպուածս յայս գործածութիւն մկնստոխոյ. որ այսպէս յօրինի: Առ երկու ունկի՝ աչէթօ շիլլիթիքօ, կամ օսսիմէլ շիլլիթիքօ և կամ շիլօբբօ շիլլի-թիքօ. և նոյն չափ՝ աքուա տի չիննամօմօ, մի ունկի՝ շի-լօբբօ պալսամիքօ, և նոյնքան՝ ջուր հասարակ: 'Ի խառ-նուրդէ աստի 'ի չորս ժամս միանգամ առնու հիւանդն երկու դդալ սեղանոյ առ իւրաքանչիւր նուագ: Դարձ-

ձեաւ, շահաւէտ են սերմն սերկեւիլի, սաղմն ձկան, եւղն քաղցր նշոյ, շաքար վանի, անարատ մեղըն եւն:

Բայց առաւել օգտաւէտն 'ի դեղորայս ընդդէմ լանջական հազի՝ է ափիոնն խառն ընդ իբեքաքուանայի. զորմէ վկայէ օտիէռ հեղինակն; եթէ բազում անգամ բազմաց 'ի գործ արկեալ է զայս, և ականատես լեալ է բազմաց օգտաւէտութեց. որ այս եղանակաւ բաղադրի: Առ 20 կշիռ ցորեան՝ օբբիօ, որ այն ինքն է ափիոնն, և 40 կշիռ ցորեան՝ իբեքաքուանա, առ և չիլօբբօ տի բաբավէռօ ալպօ, որչափ ինչ պէտք են վասն կազմելոյ զհատորս մէն մի կշռիցեն երկու ցորեան. զորս շլինջատեալ փոշւոյն կինամոնի, տացես հիւանդին մէն մի հատ յերեկոյեան պահու յերթալն յանկողին:

Ցուցակ դեղորէից, զորս պարտ է 'ի կիր արկանել 'ի տեղատարափս յորժամ ընդ անձեռն հազին զոյգ գտանի նաեւ փոխանակ ինչ անօսր, և ջինջ:

Յայսմ դիպուածի առաւել օգտակար և պատշաճական դեղորայքն են խաշուն բաբավէռօ ռօսսօյի, ռատիչէ տի ալթէայի, ֆիօռ տի թուսսիլլաձինէի: Նոյնպէս շահաւէտ են գործածութիւքն կօմմա առապիքայի, և ամմօնիաքօի, և այլ ամենայն իւղային և խժային դեղորայքն: Այլև օգտաւէտ և կարի շահաւէտ է՝ էլիսիռէ բառէկօռիքօ, զոր պատրաստ է 'ի կիր արկանել գդալ մի սրճոյ, խառն ընդ բաժակ մի տղտոյ խաշուին:

Ցուցակ դեղորէից, զորս պարտ է 'ի գործ արկանել 'ի տեղատարափս. յորժամ ընդ հազի լանջացն զոյգ գտանի նաեւ նիւթ փփէղ, թթու, և կծու:

Դահաւորական և շահաւէտ դեղորայք յայսմ դիպուածի են այն ամենայն, որք զօրեն քաղցրացուցանել զհիւթս, որպիսի են՝ սուգօ տի լէկօրիցիա, ցուքքէռօ տ' օռձօ, բասթիլլիէ պալսամիքէ, բասթա տ' ալթէա, եւն: Սակայն և 'ի մէջ սոցա ես ընտրեմ 'ի սկզբանն, որք առաւել քաղցրացուցիչ են և օգտաւէտք կրծոց. որպիսի իմն են ռատիչէ տի ալթէա, սէմէն բօմօ տի քօթօյնիա, լէկօռիցիա եւն: Զորօրինակ. մի ունկի ռատիչէ տ' ալթէա, և նոյնչափ սէմէն բօմօքօթօնիա, առ և կէս ունկի՝ լէկօռիցիա, և վեց տրամ՝ կօմմա առապիքա, և նոյնչափ առականթէ. և յաւել այնչափ աքուա տի

ռօզա՝ որչափ պէտք իցեն առ թանալոյ կամ ծածկելոյ վերոգրեալ նիւթոց. Թող զխառնուրդս զայս մարսել 'ի միմեանս ընդ միջոց երկոտասան ժամուց: Ապա վրդովեա բարւոք գրգալիւ, և զտեա յայլ անօթ, և յաւել 'ի վերայ հինգ ունկի՝ փոշիացուցեալ շաքար վանի: 'Ի խառնուրդէ աստի յերկուս ժամս միանգամ առնու ախտակիրն գրգալ մի սեղանոյ առ իւրաքանչիւր նուագ: 'Ի գործ ածեմ ես բաղում և բազում անգամ զայս խառնուրդս 'ի դիպուածս ամենայն կերպ հազից կրծոց, արեան թքանողաց, 'ի հոսմունս որովայնի, ցաւոց կրծոց, ևն: Այլ պարտ է ուշ դնել, զի այս խառնուրդ ոչ յարմարի 'ի հազս ստամոքսի, ջլաց, և արկածեան. և ոչ յայլ ինչ դիպուածս ցնցական հազի:

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

### Յաղագս հազի ստամոքսի:

Հազս այս ստամոքսի ունի մեծապէս տարորոշութիւն և զանազանութիւն եթէ 'ի պատճառս, եթէ 'ի նշանս, և եթէ 'ի դեղորայս, զորոց համառօտիւ խօսեսցուք յառաջիկայդ: Եւ հասարակօրէն հազս այս յառաջ գայ և պատճառի 'ի տկարութենէ ինչ ստամոքսի, և բազում ևս պատահի 'ի խանգարեալ և 'ի նեխեալ նիւթոց ժողովելոց 'ի մէջ ստամոքսի. որք եղծանեն զգործողութիւն մարսողութեան, որով պատճառեն զհազս. յայն սակս գործածութիւն շարապի և այլ ամենայն իւղային և իժային դեղորէից են վնասակարք, և անյարմարք 'ի դիպուածս այսորիկ տեսակի հազի:

### Յաղագս նշանաց հազի ստամոքսի:

'Ի դիպուածս հազիս, հասարակօրէն զուգընթաց լինի ցաւ ինչ ստամոքսի և թիկանց, նողկանք սրտի, և երբեմն ևս փսխումն, հազն լինի առաւել մեծահընչիւն, և առաւել գաժան քան զհազս կրծոց, բայց ոչ երկարատև է որպէս զայն: Եթէ հազս այս պատճառեալ իցէ 'ի տկարութենէ ստամոքսի, յայնժամ լինի չոր, և թուքն նուազ, անօսր, և ջինջ: Իսկ եթէ պատճառեալ լինիցի յապականեալ և 'ի նեխեալ նիւթոց գումարելոց 'ի ստամոքսի, յայնժամ ախտակիրն ժայթքէ: Երիտասարդք վտիտք, որք ունին զտկար ստամոքս,

# ՅՕԴՈՒԱԾ Գ.

## Յաղագս ջղային կամ ցնցային հազի, որ ասի՝ Թօսսէ կօնվուլսիվա։

Հազս այս է ախտ ինչ յոյժ տարափոխիկ՝ մանաւանդ տղայոց, և երախայից, և ունի զոյգ ընդ իւր զջերմութիւն, և զցնցումն։ Չիք հազ ինչ այնքան սաստիկ և դաժան՝ իբրև զհազս զայս. որ երբեմն տևէ մինչև 'ի չորս ամիս, և երբեմն ևս առաւել։

## Յաղագս նշանաց ջղային կամ ցնցային հազի։

'Ի հասարակի նշանքն այսորիկ հազի են կարմրութիւն երեսաց, այտուցն աչաց և բոլորակ մկանանց. անձկութիւն, ճնշումն կրծոց. և վերջապէս ախտակիրն ործայ, և անհնարին դժուարութ՟ 'ի բաց վանէ զխուն ինչ հիւթ խժային, որով և դադարի հազն. բայց յետ սակաւուց վերստին գլուխ ամբառնայ, և 'ի յայս գայ հազն երբեմն առաւել, և երբեմն սակաւ դժնէութ՟։ Յերկարաձգեալ մնալով այսորիկ հազի, և 'ի հասանել 'ի յետին աստիճան, սովորաբար փոխարկի յախտն կոչեցեալ՝ Թիզիքեցցա, կամ Ֆէպպրէ լէնթա։

## Յաղագս խնամատարութեանց և դեղորէից 'ի դիպուածս այսորիկ հազի։

Յայսմ դիպուածի առաւել պատշաճական և օգտաւէտ դեղն է փսխողականն, զոր պարտ է 'ի գործ արկանել ախտակրին. 'ի մէջ ամենայն փսխողականացն վասն այսր ախտի առաւել բարեգոյնն է իբէքաքուանա, որ 20 կամ 24 կշիռ ցորեան փոշի արարեալ, բաւական է վասն միոյ չափահասակի. բայց հայեցեալ 'ի չափ հասակի ախտակրին, պարտ է երբեմն նուազել զքանակութիւն. այլ իբրև սկսանի փսխողականն 'ի ներգործել, յայնժամ պարտ է առատօրէն ըմպել զթեթև ինչ խաշու քամօմիլլայի։ Արդ՝ զկնի միանգամ, և երկրորդ անգամ ըմպելոյ զփսխողականն, պարտ է 'ի գործ արկանել զափիոնն, զոր պարտ է 'ի սկզբան առնուլ սակաւաքանակ չափով. զորօրինակ կէս կշիռ ցորենոյ, և սոյա առ սակաւ սակաւ

տատանելով զչափն մինչև յերկս կամ 'ի չորս ցորե
յաւուրն ։

Դարձեալ, գիտել արժան է, եթէ լաւ վկայել
տիէզ. հեղինակին, մանաւանդ բժշկապետի վիեննա
ցւոյ, զոն ինչ ինչ համբաւեալ գեղորայք 'ի գործ
կանեալք 'ի դիպուածս ախտիս. որոց առաջինն է
թուաթթօ տի չիքութա. զոր պարտ է զգուշութե
և չափով ընծայել, լուծեալ 'ի մէջ վարգի ջրոյ. և
գործ արկանել անգ զվերոյիշեալ ափիոնն, պարտ
հրաժարել 'ի խմորեղինաց, 'ի թթու և 'ի կծու կե
կրեզինաց, պարտ է միանգամայն շեջել 'ի զբօսանս
տանելոյ կարողութենէ. Նոյնպէս պարտ է հրաժարել
մենայն իրաց, որք պատճառեն զզայրացումն, և պահե
նել զինքն 'ի ցրտոյ, և 'ի հողմոյ. այլև յամենայնու
աւուր պարտ է թանալ զոտսն ջերմ ջրով ։

## ՅՕԴՈՒԱԾ Դ․

### Յաղագս արջածէան հազի ։

Առաջս այս դիւրաւ ապաքինի, եթէ բուժեսցի նա
ախտն, յորմէ պատճառի, և յառաջ գայ ։ Այս տ
տակ հազի հասարակօրէն պատճառի յայտոցիկ ախտի
որք են ծագումն ստամոքսի երախայից. Ճճիք կամ
դունք, յղութիւն, յօդուածացաւութիւն, հարբուխ
են. վասն որոյ պարտ է նախ զարմանն տանել ախտի
այսոցիկ, յորոց պատճառի, 'ի գործ արկանելով զկա
ռավարութիւնս, և զդեղորայս սեփականս իւրաքան
չիւր ախտից ։



# ԳԼՈՒԽ ԻԲ.

Յաղագս ընդարմութեան, կամ կաթուածոյ ուղեղոյն, որ ասի՝ ապոպլեքսեայ։

Ոչ են բանք մեր աստանօր զայնպիսի կաթուածոց աղետացն, որք ցուցակ են զանազան հիւանդութեանց, զորօրինակ են ախտքն կոչեցեալք քօլիքա, իլիաքա, և. զայսցանէ խօսեցաք յայլ ուրեք. այլ խօսեսցուք աստանօր յատկապէս զայնց տեսակաց անդամալուծութեանն՝ որ նուաղեցուցանեն զկարգ ամբողջ ուղեղոյն, որպէս պատահի 'ի բազում անձինս, յորմէ և մահ զհետ գայ ախտիցս։

Պատճառք ընդարմութեան կամ կաթուածոյ ուղեղոյն։

Ախտս այսմիկ մայրն է 'ի վեր երևիլ 'ի սաստիկ ջերմութէ լերդի, 'ի գործածութէ սաստիկ կարմիր գինւոյ, և այլազգ ապրմիշ ըմպելեաց. 'ի տարապայման աշխատանաց և 'ի շարժմանէ. մանաւանդ 'ի ձիավարութէ, ընդերկար 'ի գործ արկանելոյ զկերակուրս խնութե ցուրտս, և անհամս, որք չեն յաջողակ ըստ պատշաճին անօրինելոյ զպէտս աղեացն։ Երբեմն ևս պատահի յարգելեալ հեղալոյ մաղձի 'ի փորոտիս. որպէս 'ի գխպուածս գալկանի։ Երբեմն ևս նշան է այլևայլ հիւանդութեանց նոյն իսկ փորոտեաց, զոր օրինակ անդամալուծութե, ջղացաւութե, այտուցից և։ Պնդութիւս այս սաստկանալով կարէ պատճառել զգլխացաւութիւն, զփսխումն, զխէթ, զթանչ, զձնշումն և զծանրութիւն ուղեղոյն. յորմէ պատճառի երբեմն թիմբանիթիսէ. անհամութիւն և դառնութիւն բերանոյ, անձկութիւն, պտոյտ գլխոյ, բորբոքումն ստորին ուղեղոյն, և փորոտեաց, փտախտութիւն։

Պնդութիւնս այս մասնաւորապէս է վտանգաւոր սեւամաղձոտ անձանց. քանզի պատճառէ զփուքս, և զայլ վտանգի նշանս։ Յայսպիսիս գխպուածս պարտ է փոյթ ունել 'ի կանոնաւորել զպէտս ուղեղոյն. թէպէտ զայսմանէ անհոգ լինիմք հանապազ, և դուն ուրեք ածեմք զմտաւ. որովհետև տեսանեմք զոմանս՝ որք միայն 10 կամ 12 օր

տանց կատարելոյ զպէտս որովայնի, և տակաւին 'ի նոյն վայրկենի չկրելով անհանգստութի, հաճեալ են ընդ այն, և բնաւ ոչ կամին բարեխառնել զընթացս բնութեն, համարելով եթէ չէ այնչափ ինչ հոգալի: Օրըստօրական գործածութին և փորձն ցուցանէ, եթէ այդպիսի անձինք որք յարբունս հասակի կրեն զախտս զայս, միշտ յապագայն ախտաժէտանան. և ախտս այս թուի թէ առաւել տիրապետէ 'ի սեռս կանանց, քան թէ արանց, մանաւանդ 'ի ժամանակի յղութե, և յաւարտ դաշտանի. և այս վասն նոյն պատճառի անհոգութե, զորմէ խօսեցաք արդէն:

## Ցուցակ խնամատարութե այսորիկ ախտի:

Այրքս՝ որոց կազմուածքն են ջղային և զօրեղ, միշտ են ենթակայ անդութեան որովայնի. յայսպիսի դիպուածս քաջածանօթ է ամենայն ումեք, եթէ զինչ պարտ իցէ առնել. այս է, պարտին նախ հրաժարել յամենայն սեղմիչ կերակրեաց և ըմպելեաց՝ և ևս պարտին 'ի գործ արկանել զանանելիս թուլացուցիչս, և կակղացուցիչս որովայնի. որպիսի են՝ խնձորն, խաղողն, ուվա սպինան, կոգլին, մեղրն, շաքարն, կաղամբն, շոմինն, մոլոշն, ցորեանն, սերն, կաթն, պարարտագոյն արգանակն մսոյ, թուզն, շլորն, փատուղն դամասկեան, չիճուկն կաթին, ևն:

## Ցուցակ դեղորէից անդութե որովայնի՝ պատճառելոյ 'ի ջեր-մութե լերդի, կամ 'ի յուժեղութե ստամոքսի:

Այսպիսի դիպուածս պարտ է ըստ կարի զօրն գործել, և փութալ յարգելուլ զներհակ ընթացս բնութե. կարևոր է 'ի գործ արկանել թամարինտի. ռապառապառօ, մաննա, թառթառօ սոլուպիլէ, քրէմօռ տի թառթառօ, քասսիա, կամ դրեխ առնել յամենայնում աւուր զաղջ ջրով, խառն ընդ աղի, և ընդ ձիթոյ: Բայց եթէ 'ի գործ ածել անդ զվերագրեալ բազմատեսակ թեթև լուծողականս, չերևի նշան ինչ լուծելոյ որովայնին, յայնժամ պարտ է ձեռնամուխ լինել 'ի գործածութե սաստիկ, և զօրաւոր լուծողականաց. որպիսի են՝ եալապա, սէնա, ալօէ սուքքօթրինօ ևն:

Իսկ եթէ անդութիս այս պատճառեալ իցէ 'ի տկարութե ստորին որովայնի, կամ աղեաց, յայնժամ պարտ է 'ի վեր արկանել զհետագայ հապս: Առ. մի և կէս տրամ սաքօնէ

ալխանքօ, մի պզտուքօլօ՝ սակապէնօ, երկու պզտուքօլօ՝ եւմթուաթիթօ ափ մաչէռօնէ, և մի պզտուքօլօ ալօէ սօքքօթռինօ. խառնեալ զանգուած բարիոք զամենայնն, և արարեալ հաբ՝ որ կշռեսցէ երեք ցորեան, առ_ր չափով յերեք հատէ մինչև ցինն:



# ԳԼՈՒԽ ԻԶ.

Յաղագս զանազան տեսակի յօդուածացաւութեան, որ ասի՝ ռէումաթիզմօ, կամ առթրիթիս:

Երկնակի է տեսակ յօդուածացաւութեան. մինն ասի ռէումաթիզմօ ինֆիամմաթօռիօ կամ աքութօ, այսինքն բորբոքողական, կամ սուր յօդուածացաւութիւն: Իսկ միւսն՝ ռէումաթիզմօ քռօնիքօ, այսինքն երկարատև յօդուածացաւութիւն. կամ որ նոյն է՝ ռէումաթիզմօ քօն ֆէպրէ. և ռէումաթիզմօ սէնցա ֆէպրէ. այսինքն ջերմով, և առանց ջերմոյ: Արդ՝ ճառեսցուք յառաջիկայդ նախ՝ 'ի վերայ բորբոքողական յօդուածացաւութեան, և յետ այնորիկ 'ի վերայ երկարատև յօդուածացաւութեան:

## ՅՕԴՈՒԱԾ Ա.

Յաղագս բորբոքողական յօդուածացաւութեան:

Զայս տեսակ յօդուածացաւութեան բազումք անուանեն սովորաբար նաև ռէումաթիզմօ կօթթօզօ, այսինքն ոտնաւութի. և ունի մեծ նմանութի ը՟ ախտին, որ ասի՝ կօթթա, այսինքն ոտնաւութի, և ձեռնաւութի: Իսկ բնակարան նորա են սովորաբար շարժական յօդուածքն անդամոց, մանաւանդ այն անդամն որ կոչի՝ մէմպռանա, այսինքն թաղանդ կամ մաշկ: Ախտս այս զոյգ ունի ը՟ իւր զսաստկագոյն ցաւս, և երբեմն զուռոյցս, և զբորբոքումն, և տիրապետէ հասարակօրէն 'ի գարնանայինն, և յաւարտն աշնանայինն եղանակի:

### Յաղագս պատճառաց այսորիկ փէտոյն յօդուածացաւութեան

Պատճառք այսորիկ ախտի՝ յոյժ համաձայն են պատճառաց բորբոքողական տենդի, զորս խօսեցաք 'ի տեղւոջն. սմին իրի արգելականութիւն որ և իցէ հոսման, անչափապէս գործածութիւն ոգելից հեղանելեաց և փոփոխութիւն օդոց, և ամենայն տաժանելի փոփոխմունք 'ի ջերմոյ առ ցուրտն՝ կարեն պատճառել զախտս զայս, որպիսի են արուեստաւորացն, որք զմասն ինչ աւուրն անցուցանեն վաստակելով 'ի հուր, և զմիւս մասն 'ի ջուր. Դարձեալ, խոնաւութք հանդերձից, անկողնոյ, և ամենայն ագանելեաց, ընկողմանիլն 'ի վերայ գետնոյ թաց, մնալ ընդ երկար թացեալ ոտիւք, ճանապարհորդութիւն 'ի գիշերային պահու պատճառեն զախտս զայս. Նոյնպէս մարթ է ախտս այսպիսի և առաւել պատճառել 'ի սաստկութենէ կամ յարգելականութենէ սովորական հոսմանց. բազում անգամ և յառաջ գայ 'ի հնացոյն ախտից, որք ապականեն զխառնուածս, որպիսի են ախտն, որ ասի սքօրպութ, գաղղիական ախտն, և տենդն ընդհատ յաչնանային եղանակի, են: Առաւել գտանի ախտս այս 'ի տեղիս ցածագոյնս և գէճս, և այն առաւելապէս 'ի գիւղականս, որ աղքատին, և ցնցոտի զգեստիւք բնակեն յայդպիսի խոնաւագոյն տեղիս, և աղբին թանձրանունդ, և դժուարամարսելի կերակրեղինօք:

### Յաղագս նշանաց այսորիկ ախտի:

Ախտս այս հասարակօրէն սկսանի յընդհանուր նշանաց տենդի, որպիսի են թալկութիւն, արագութիւն զարկի բազկի, ցնորմունք, ծարաւ են: Ախտակիրն զգայ յառաջագոյն ցաւ ինչ տատանդական, և անկայուն, որ 'ի դոյզն ինչ շարժմանէ սաստկանայ, և աճի. ցաւքս այսքիկ 'ի վեր երևին մանաւանդ յանդամս այտուցեալս: 'Ի դիպուածս ախտիս, եթէ երակ հատանի, հասարակօրէն արիւնն ունի զնշանս կշտացաւութեան կամ բորբոքման թոքոց. այսինքն մաշկս, և պարուտակս ունի 'ի վերայ իւր: Իսկ տենդն որ զուգընթաց լինի այսմ ախտի, սովորաբար լինի ընդհատ: Անտանելի իմն ցաւ 'ի վեր երևի 'ի յօդուածս շարժականս, և ցաւս այս հասարակօրէն սկսանի 'ի ծնդաց, ուր և յարատևեալ մնայ զօր մի ողջոյն կամ զերկու, կամ աւելի, և կամ պակաս, և յետ այնո-

րիկ ելեալ տարածանի 'ի զանազան մասունս Թաղանթի , այսինքն մզմղուանայի , և առաւել ևս 'ի յօդուածս , որք միանգամ զառաջինն էին լքեալ և վշտացեալ . և ցաւս այս լինի այնքան 'ի սաստկագոյն աստիճանի , մինչև եթէ ոք կամիցի Թեթևապէս շօշափել զայն վշտացեալ մա_սունս , իսկոյն ախտակիրն զաղաղակ բարձեալ գոչէ բարձ_րաձայն . բայց ոչ լինի միշտ 'ի մի և 'ի նոյն աստիճանի . այլ առաւելանայ կամ նուազի ըստ եղանակի՝ որ պատա_հէ 'ի դիպուածս տենդի . սովորաբար զուգընթաց լինի այտուց ինչ անհնարին 'ի վեր երևեալ 'ի ծունգս , և 'ի ձեռս :

Չի՛ք ինչ պայմանեալ սահման յապաղման այսր տե_սակի ախտի . երբեք ուրեք մարթ է 'ի ձեռս բերել զկա_տարեալ ապաքինումն 'ի մէջ 14 կամ 15 աւուրց . երբեմն յերկարաձգի մինչև ցքառասուն կամ ցվաթսուն աւուրս . և երբեմն դադարեալ բորբոքումն տենդի , ոչ փարատին ցաւքն յօդուածոց զկնովին . և բազում անգամ ևս յեր_կարաձգեալ նեղեն զախտակիրն հանապազորդեալ ամիսս ինչ . և է երբեք զի 'ի սաստկութէ այսորիկ ախտի 'ի վեր երևեալ մնայ 'ի յօդուածս Թանձրացումն ինչ հիւԹա_կան , որ յոյժ նեղէ , և բազում անգամ ևս բառնայ զշար_ժականութիւն . մերթ դարձեալ 'ի վեր երևի կուտակումն ջուրց 'ի յօդուածս ծնգաց . ուռոյցքն որ 'ի վեր երևի 'ի յօդուածս յայս՝ 'ի սաստկութէ ախտին պատճառէ զդու_մարումն խժային հիւթոց 'ի պատառս յօդուածոց :

Գիտել արժան է , եթէ այտուցս այս յորժամ գոյա_նայ իսկ և իսկ զկնի դադարման տենդի , սովորաբար լինի դժուարաբուժելի : Յերկարաձգեալ մնալով այսորիկ ախ_տի , և հասեալ 'ի յետին աստիճան , սովորաբար ուռոյցն ժամանէ 'ի մասունս յօդուածոց միջնոլին , և 'ի յօդու_ածս ստորին ծամելեաց , և ուրեք ուրեք 'ի Թոքս , և 'ի Թաղանթս , և 'ի յօդս կարգեալս և վերաբերեալս յա_ճառս ողընկալաց , և յայնժամ իսկ և իսկ զհետ գայ ցաւ ինչ 'ի կուրծս , և դժուարութիւն 'ի շնչառութիւս , հազ , Թքանել զարիւն . և համառօտիւ կամեցեալ խօսել , նը_շանք կշտացաւութե , կամ բորբոքման Թոքոց լինելին 'ի վեր երևին . երբեմն ևս ընդհատութի , և անհամաձայ_նութիւն զարկի բազկերակին : Արդարև յայդպիսի դիպու_ածի ախտակիրն գտանի 'ի մեծի որոգայթի . բայց 'ի վե_րայ այսր ամենայնի ոչ է պարտ հատանե՛լ զյոյս . քանզի փորձիւ քաջայայտ ճանաչեմք , եթէ նիւթն՝ որ պատճա_ռէ զախտս զայս , 'ի բնութե իւրում ոչ է տրամադրեալ

Ի յարատեւել զխոխայթումն , և զքաղցկեղ . բայց
բառնեալ մնալ նշանաց չարժականութեան , իսկ և
լքեալ թողու զկայան իւր սպեղանական , այսինքն զկուլ
և անցեալ գնայ վերստին 'ի յօդուածս անդամոց :

Ախտս այս անխտրաբար գտանի 'ի ծերունիս , և
րիտասարդս . բայց առաւելաբար յարբունս ծաղկահա
քսան կամ 25 ամաց : Գտանէ քուլքէն հեղինակն , ն
ուրեք ախտնաւոս լեալ է գտանել այսպիսի ախտ 'ի
տանեակս 'ի հասակի 12 կամ 13 ամաց , բայց յոյժ հ
ցաւակի : Դարձեալ , ախտս այս ունի զպատճառն ան
ռնս պատահեալս ինքեան 'ի մասանցն՝ յորս պատա
ամին իրի յորժամ ծագի 'ի մկանունս ոտիցն՝ կոչի թ
չիքօլլօ . իսկ յորժամ յարձակի 'ի մէջս , կոչի՝ լոմպ
ճինէ . այլ եթէ գոյանայ 'ի յօդուածս ազդերն ընդ
կեր ինչ անուանեալ չէօ , յորջորջի շիաթիքա : Գիտել
ժան է , եթէ 'ի գխալուածս լոմպաճճինէի ցաւն լինի յ
դժնեայ և սաստիկ . և երբեմն եւս գտանի ախտն կոչեցե
քօլիքա նէֆրիթիքա . բայց յայսպիսի գխալուածի ը
ոչ երևի փոխումն : Դարձեալ՝ գիտելի է , եթէ ա
այս հազիւ ուրեք լինի որոգայթաւոր , յորժամ ոչ ա
եալ լինի պատճառ , կամ արգելումն ինչ , եթէ 'ի
րակուրս , և եթէ 'ի կառավարութիւս . և հասարակօ
խօսելով , վախճան առնու ախտս այս և եղերի առա
բար ճանապարհաւ քրտանց կամ այլ ինչ ցաւկմանց
բաղում անգամ եւս յորդառատ հոսմամբ միզի , կամ դ
տանի , և կամ թթախտական արեանց , ևն :

### Յաղագս հասարակութեանց և դեղորէից բորբոքողական յօդուածացաւութեան :

Ապառավարութիւք և խնամատարութիւք այսպիսի յօդ
ուածացաւութ գրեթէ նոյն են Է դարմանատարութեան
բորբոքողական տենդի , զորմէ լիովին խօսեցաք 'ի տեղւոջ
րում : Եթէ ախտակիրն լինիցի յարբունս հասակի և
տասարդութեան , և արիութեան , յայնժամ պարտ է անվ
երակ հատանել , զոր և մարթ է կրկնել քանիցս անգ
պահանջիցէ հարկն : Պարտ է լոյծ պահել զորովայնն
նորդութ կակղացուցիչ լուծողականաց . զրեխայց , և
վայուցիչ ըմպելեաց . սմին իրի պատշաճագոյն է 'ի գ
արկանել յայնմ գխալուածի տէքօցիոնէ տի թամառինտ
սինէօ տի լաթթէ խառն ընդ ֆիօռ տի թառթառօ
ինֆուզիօնէ տի սէնա , ևն : Կերակրոցն պարտ է լի

Թեթեւ է սակաւաքանակ, զորօրինակ հրով եփեալ խնձորն, քրէմօռ տի աւէնա, արգանակն որթու. կամ պառանոցի ոչխարի են։ Իսկ 'ի դիպուածս, յորում ջերմութիւն լինի ընդհատ, և ցաւքն յարատեւ, յայնժամ պարտ է անդորրել զախտակիրն 'ի մահճի, և 'ի գործ արկանել զըմպելիս պատշաճեալս առ 'ի գրգռել և 'ի շարժել զքրտնաշնչութիւնս մարմնոյ. և այսպիսի պատշաճական ըմպելիք են չիճուկն կաթին գինեխառն. յորոյ վերայ պարտ է յաւելուլ և սբիռիթօ տի մինտերերօ են։ Եւ զկնի հանդարտանալոյ ախտակրիս առուրս ինչ 'ի մահճի, պարտ է տալ նմա մի տրամ՝ քրէմօռ տի թարթարօ, և կէս տրամ՝ կօմմա տի կուաեաքօ փոշի արարեալ, արկեալ 'ի բաժակի՝ ընդ գինեխառն չիճուկն կաթին. և եթէ ցաւն լինիցի յոյժ սաստկագոյն, յայնժամ պարտ է փոյթ մեծ ունել առ 'ի բարւոք ծածկել, և պահպանել զվշտացեալ մասունս ախտակրին, արկեալ 'ի վերայ զպաստառակալ կամ զայլ ինչ ծածկարան. և այդպէս 'ի բարւոք խնամատարութե՛ պարտ է յուսադիր լինել միշտ, եթէ նոյն ինքն բնութիւն կառավարեալ զինքն՝ սահմանայ զապաքինութի առանց պէտս ունելոյ այլ ինչ նպաստից, բնական ինչ լուծմամբ որովայնի, կամ հոսմամբ քրտանց, և միզի, կամ թթախտական արեանն 'ի ռնգացն են։

Բայց գործ մեծ է յայդպիսի դիպուածի քաջ նկատել զհանգամանս բնութեանն, և ծանուցեալ զհակումն և զմիտումն բնութեան, պարտ է նպաստամատոյց լինել նմին ըստ պահանջելոյ հարկի պարագայիցն, 'ի գործ արկանելով զթմբրեցուցիչ՝ կամ զխաղաղեցուցիչ դեղորայս. քանզի յայդպիսի դիպուածի եթէ խոհական ընտրանօք և ուշիմութբ՝ 'ի գործ արկցին այդպիսի թմբրադեղք, յառաջ բերեն զմեծագոյն օգտակարութիւս, մեղմեն զսաստկութի և զգժնէութի ցաւոցն, զորս կրէ ախտակիրն. եթէ զփորձ առցէ ոք միանգամ իւրք կշտացաւութե, անվրէպ ունի կրել զնոյն յընթացս կենաց իւրոց՝ այլ եւս երկիցս և երիցս անգամ. նոյնպէս պարտ է իմանալ եւս վասն ախտի կոչեցելոյ ռէումաթիզմօ, այսինքն յօդուածացաւութի։ Արդ՝ 'ի գործ արկանել պարտ է նախ յամենայնում երեկոյի 15 կամ 20 շիթս լաւտանօ լիքուիտօ՝ արկեալ 'ի վերայ միոյ բաժակի սովորական ըմպելւոյ, և ըզնոյն չափ մարթ է կրկնել ըստ պահանջելոյ հարկին։

Գիտել արժան է, եթէ 'ի դիպուածս ախտիս զկնի լուծողականացն կամ դատարկման հիւթոցն ( որք պարտին լինել յոյժ ցանցառակի, և 'ի սակաւ մեծագոյն

հարկի , և այն դէպ 'ի յաւարտ ախտին ) . առաւարագա
օգտաւէտ լինի գործածութիւն բաղանեաց . պարտ է մու
ծանել զախտաւորն 'ի ջերմ բաղանիս , կամ թացեալ զբու
սպունգս 'ի մէջ ջերմագին ջրոյ արկանել 'ի վերայ վշտա
ցեալ մասանց ախտաւորիս , և զկնի սոցա պարտ է փոյթ
մեծ ունել առ 'ի պահպանել զախտաւորն 'ի ցրտոյ . և '
խոնաւ օդոյ :

Վասն միւս այլ տեսակի յօդուածացաւութեան կոչեցե
լոյ լօմպաճճինէ և շիաթիքա , գիտելի է՝ եթէ վերայի
շեալ դեղորայք և կառավարութիւնք են յոյժ պատշա
ճողականք , որովհետև զուգընթաց ունին ընդ իւրեանց
միշտ զնոյն ցաւ տեսակագոյն , և զզաժնեու : Իսկ թու
չիքօլօ անուանեալ տեսակն յօդուածացաւութեան , առա
ռաբար ոչ լինի սաստիկ և ծանր իբրև զվերոյիշեալս : ամ
իրի դիւրագոյն ճանապարհաւ մարթ է խնամ տանել նմա
միայն ջերմագինս պահպանելով զմասունս վշտացեալ
այսինքն զպարանոցն . և եթէ երբեմն յայզախտի գիպա
ածի կից լինիցի ընդ ախտիս ջերմութիւն ինչ երևելի , և
տապակութի ինչ , յայնժամ պարտ է կանխաւորել զախ
տաւորին զովացուցիչ , և լուծիչ կերակրեղինօք , և ի պա
հանջելոյ սաստկութեան ջերմութեան կամ բորբոքողակա
նութեան՝ երակ հատանել :

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

Յաղագս ախտի կոչեցելոյ ռէւմաթիզմօ քռօնիքօ , այսինքն
Երկարօրեայ յօդուածացաւութիւն :

Ընդ ախտիս այսմիկ հաղէւ ուրեք զուգընթաց լի
ջերմութիւն ինչ երևելի . հասարակօրէն գայանայ ախտս
վերայ մասանց ինչ մարմնոյ , որպէս 'ի վերայ թիկանց
ուսոց , պարանոցի , կամ երիկամանց , ևն . Նշանք այսոց
և բորբոքմանն յոյժ սակաւ կամ ոչ բնաւ երբէք 'ի
երևին 'ի վշտացեալ մասունս յայսմ դիպուածի : Ընտ
կայ այսր ախտի են մանաւանդ ծերունիք . յորս առողջ
բար լինի յոյժ դժնեայ , և բազում անգամ ևս անբ
ժելի . 'ի դիպուածս ինչ դէպ լինի ուրեք ուրեք՝ զի ա
տաւորն անկեալ դնի զընկեալ 'ի շարժմանէ ամենայն
դամոց , և ժամանեալ 'ի յետին աստիճան նիհարու
մեղմօրինակ տենդի . յայնժամ բացայայտակի ծանօթ
նէ մեզ զզուամարութիւն ախտաարծարծ հիւթոց 'ի կուր
Բազում անգամ ևս պատահի , եթէ ախտաւորն

գլխովին հաշմանդամ. պատմէ ոմն հեղինակն, եթէ ա-կնատես լեալ է կաշկանդման մկանանց ձեռաց և բազ-կի՝ մինչև բառնալ շարժականութիւն յօդուածոց, և ա-մրկան :

Յաղագս դարմանադրութեան և դեղորէից երկարատև յօդուածացաւութեան :

՚Ի դիպուածս այսպիսիս ախտի գրեթէ միշտ յամենայն նուագս պարտ է ՚ի գործ արկանել զնոյն դարմանս և զխնամս, զորոց գրեցաք ՚ի վեր անդր ՚ի դիպուածի ախ-տին կոչեցելոյ՝ ռեումաթիզմօ ագուտօ. կերակրոցն պարտ է լինել զովացուցիչ և կակղացուցիչ, պատրաստեալ մա-նաւանդ յուտելեաց՝ որք ունին զանձողական զօրութիւն. զորօրինակ շորն, խնձորն, հաղարջն եփեալ կաթամբ ևն, որք են կերակուրք յոյժ պատշաճողականք ՚ի դիպուածս ախտիս : Վկայէ Առապութնօթ հեղինակն, եթէ շիճուկն կաթին ևս անվրէպ է յոյժ պատշաճական կերակուր, ՚ի ձեռն որոյ գործածութեան ասէ լեալ ականատես առողջ-նութեան բազում ախտաւորաց. Նոյնպէս օգտաւէտ է ՚ի դի-պուածս ախտիս քուէմօա ովի Թաւթաւօ, զոր պարտ է ՚ի գործ արկանել յաւուրս բազումս ջրով ամենայն, որ մեղմէ մասնաւորապէս զցաւս յօդուածոց, և յառաջ բե-րէ զբազում օգտաւէտ ներգործութիս, մանաւանդ եթէ յաւելցի ՚ի վերայ սակաւ ինչ կօմմա ովի կուաեաքօ, որ-պէս գրեցաք ՚ի վեր անդր, կամ փոքրիկ դեղահաբս ոփիոյ՝ թինթուրա մօլաթիկէ ովի կօմմա ովի կուաեաքօ, պատ-րաստեալ բաժակ մի շիճկաւ գինեխառն կաթին. և ընդ-հանուր զայս պարտ է ՚ի կէս առնուլ երկիցս յաւուրն, ցորքան մնայ ախտաւորն ՚ի մահիճս, և ՚ի գործածութեան այսր դեղորէից պարտ է յարատևել աւուրս ութ, կամ ևս առաւել, նկատեալ զպարագայս նուազման ցաւոցն, և կարողութեան ախտաւորին. բայց պարտ է միջահատել յաւուրս ինչ, և յետ այնորիկ վերստին ՚ի գործ արկանել :

Եւ ընդ գործածութեան այսր դեղոյ պարտ է միանգա-մայն ՚ի վերայ վշտացեալ մասանցն դնել զգզրուկս կամ զվէզիքաթօրիօ, և կամ զջերմագին ապեղանիս, որոց գոր-ծածութիւն բազում անգամ լինի շահաւէտ առաւել քան զգզրուկս, և զվէզիքաթօրիօն : Պատմէ վերոյիշեալ հե-ղինակն, եթէ ականատես լեալ է օգտակարութեան իրիք տապեղանեաց պատրաստելոյ կպրածիւթով, և եդելոյ ՚ի վե-րայ ցաւագնեալ մասանց ՚ի դիպուածս սատակագին ցա-

ւոց պյտորիկ ախտի . Նոյնպէս վկայէ գոլ օգտաւէտ և
Թինթուռա ռի քանԹառէլլա, զոր պա՛րտ է նոյնպէս օ
ծանել 'ի վերայ վշտացեալ մասանց ։

Գիտել արժան է, զի եԹէ գործածուԹ այսոցիկ դ
ղորէից ախտակիրն ոչ յառաջ դիմեսցէ 'ի լաւ անդր,
է պարտ խոկ և խոկ հատանել զայս, այլ յարատևել պա՛ր
է 'ի գործածուԹին ։ Երկարատև յօդուածացաւուԹիւնս այ
ւանի նմանակցուԹին ընդ ախտին կոչելոյ՝ կօԹԹա, այ
ինքն ոտնացաւուԹի, սմին իրի մա՛րԹ է ևս 'ի գործ արկա
նել զդեղորայս ինչ պատշաճականս և սեպհականս նմ
ախտի . եԹէ ախտակիրն ունիցի զբաւական կարողուԹ
օգտաւէտ է նաև գործածուԹի բաղանեաց, և ջերմացի
ջուրց մտանելոյ 'ի ծծմբանիւԹ հանքաց . մանաւան
եԹէ զուգընԹաց լինիցի ընդ ախտիս ևս ախտն կոչեցեա
սքօռպուԹիքօ ։ Իսկ եԹէ ախտս այս պատճառեալ ից
յարգելականուԹենէ իրիք սովորական ծորման հիւԹոյ
յայնժամ յառաջ քան զան զամենայն ինչ պա՛րտ է փոյ
մեծ ունել առ 'ի գրգռել և շարժել զհոսումն կամ զԹ
րումն զայն սովորական . որ եԹէ լինիցի, մարԹ է անվրէ
ակն ունել ապաքինուԹեան առանց պէտս ունելոյ այլ ին
դեղորէից ։

Դարձեալ, օգտաւէտ է 'ի դիպուածս յայս գործ
ծուԹին բուսականաց, որպիսի են՝ սպիտակ մանանեխի
Թրիֆօլիօ բալուսԹռէն . զոր պա՛րտ է պատրաստել ա
կեալ 'ի մի բաժակ գինի կամ 'ի ջուր . Նոյնպէս շահ
ւէտ է գործածուԹին վայրենի բաղեղան, որ ասի ըստ ի
էտէռա ԹէռռէսԹռէ, երիցկի, և այլ նման դառնահա
բուսոց . բայց սակայն 'ի գործածուԹի այսոցիկ բուս
կանաց պա՛րտ է յարատևել որքան մարԹ իցէ՝ ժամանա
յերկարաձիգս, ապա Թէ ոչ՝ բազում անգամ լինի վ
րապար և անօգուտ ։

'Ի դիպուածս ախտիս պատշաճական են նաև կիզո
կան դեղորայքն . եԹէ ցաւն 'ի վեր երևեսցի 'ի Թիկո
կամ յուսս, պա՛րտ է կիզողականացն լինել 'ի բազկի .
եԹէ ցաւն իցէ 'ի մէջս, յայնժամ պարտ է 'ի վար ար
նել զկիզողական դեղորայս 'ի սրունս, կամ յազդե
Բայց գիտել արժան է, զի ախտս այս հասարակօրէն
խառն ընդ սքօռպուԹիքօ ախտի, ուստի և օգտաւէ
գործածուԹին դեղորէից՝ որք են բնուԹ դառն, և
անգամայն լուծիչ . սմին իրի քաջ նկատեալ զբնուԹ
ախտակրին, մա՛րԹ է 'ի գործ արկանել զյետագայ դ
րայս ։ Ա՛ռ մի ունկի՝ ագնուագոյն քինա քինա, և

ունկի՝ ընտրագոյն ռապառպառօ. և փոշի արարեալ արկ 'ի մէջ բաւականաչափ գինւոյ. և 'ի գործ արկ երկու կամ երեք բաժակս յաւուրն, հայեցեալ բարւոք 'ի պարագայս լուծման որովայնին. իսկ եթէ գործածութիւնն քինա քինայի սոսկապէս զօրեացէ ընդ բաւականին 'ի լուծումն որովայնի, յայնժամ պարտ է 'ի բաց թողուլ ըզռապառպառօն:

Հուսկ յետոյ գիտելի է, եթէ ցաւքն այսորիկ երկարատև յօդուածացաւութեն՝ բազում անգամ գուշակեն զախտն գաղղիական. վասն որոյ յայսմ դիպուածի յորժամ չիցէ հնարաւոր այլազգ ստանալ զապաքինութիւն, անվրէպ պարտ է ձեռնամուխ լինել 'ի գործածութիւն անդկեա պատրաստեալ դեղորէից: Դարձեալ, 'ի դիպուածս ախտիս բազում անգամ օգտաւէտ լինի գործածուն բաղանեաց ցրտագին ջրով, մանաւանդ եթէ ջուրն լինիցի աղէհամ. նոյնպէս օգտաւէտ է շրջիլ 'ի զբօսանս ձիով կամ 'ի հետիոտս:

### Յաղագս օգտաւէտ նպաստից, որոց պարտ է 'ի գործ արկանել ըմբռնելոց ախտիս:

Անձինք, որք ենթակայ են ստէպ ստէպ վերադարձման այսորիկ տեսակի յօդուածացաւութեան. փոյթ մեծ ունել պարտին առ 'ի բնակիլ 'ի տեղիս միջակեալս ջերմ և չոր օդոց, և անձնապահ լինել որքան մարթ իցէ 'ի գիշերային օդոյ, 'ի խոնաւութեն տանց, և 'ի թացեալ զգեստուց. պարտ է նոցա զգենուլ բազում հանդերձս, մանաւանդ կրել զասուեայ ինչ բաճկոն 'ի վերայ մերկ մարմնոյ: Կերակրոցն պարտ է լինել բարւոք կանոնաւորեալ, քաղցրայինք, և թեթև և դիւրամարսելիք, եւս այլն ամենայն, որք պատշաճին 'ի դիպուածս ախտին կաչեցելոյ կօթթա:



# ԳԼՈՒԽ ԻԸ.

Յաղագս ախտի կոչեցելոյ՝ կօթթա, որ ըստ մեզ ասի յօդացաւութիւն :

Ախտս այս ունի զերկեակ տեսակս. մին ասի կօթ[թա] ռէկօլառէ, այսինքն յօդացաւութիւն կանոնաւորեալ. միւսն՝ կօթթա ախալիթա կամ իռռէկօլառէ, այսի[նքն] յօդացաւութիւն անկանոն կամ վերադարձեալ :

## ՅՕԴՈՒԱԾ Ա.

Յաղագս կանոնաւորեալ յօդացաւութեան :

Ախտս այս ՚ի մէջ ամենայն ախտից առաւել բացայայտակի ծանօթ առնէ մեզ զվերիպակս և զպակասութ[իւն] դեղորէից, և զօգտակարութիւն բարեխառնութեան, և ս[...] հեստի. շուայտութիւն և անգործութիւն են սեպհական ակիզբն և աղբերակն այսորիկ ախտի. վասն այսորիկ պահովագոյն միջոց ՚ի ձեռն որոյ մարթ է անձնապահ[...]նել յախտէս, է վարել զգործունեայ և սթափ կեանս և վայելել ՚ի բարեխառնութեան :

Յաղագս պատճառաց այսորին ախտի :

Թէպէտև անգործութիւն և անբարեխառնութիւն գլխաւոր և սկզբնական պատճառք այսորիկ ախտի յօ[դա]ցաւութեան, բայց են և այլ բազում ինչ ինչ պատճառ[ք ո]յորոց մարթ է յառաջ գալ, որպիսի են անխոհեմ և [ան]պայման պարապումն ընթերցմանց, յաճախ գործ[ա]ծութիւն թթու և բարկ հեղանիւթոց, հսկումն, տխր[ու]թիւն կամ ձնշումն ոգւոյ, արգելումն կամ պակասու[թիւն] երբեք սովորական թորման կամ հոսման. զորօրինակ [...] տանց ոտից, արտաշնչութեան մարմնոյ, դաշտանի, [...] Անգործութիւն, շուայտութիւն, ոգիաւոր հեղանիւթ[ք], անկարգ կանանցաբարոյութիւն՝ են առաւել սովորա[կան] պատճառք այսորիկ ախտի :

Գիտելի է, եթէ ախտս այս միօրինակ գտանի՝ յերկտասարդս, եւ 'ի կանայս, թէպէտ և յոյժ ցանցառակի. բայց կանայք ամուլք, և որոց արգելեալ է հոսումն տեռատեսական արեան՝ են 'ի հասարակի ենթակայ այսմ ախտի. Նոյնպէս մելամաղձոտք, և որոց տիրապետէ առաւել ախտն թթախառական՝ են ենթակայ ախտիս. դարձեալ, կարէ ախտս այս տարափոխիլ ժառանգապէս, այսինքն անցանել 'ի սերունդս: Ախտս այս հասարակօրէն 'ի վեր երեւի յոտս, և յայնժամ կոչի՝ բոտակռա, կամ կօթթա ու բինէտի, այսինքն ոտնառուի. և երբեմն յարմունս 'ի ծունգս, և կոչի՝ կօնակռա. և ուրեք ուրեք դոյանայ 'ի ձեռս, և յայնժամ յորջորջի քիռակռա, կամ կօթթա տըլէ մանի, այսինքն ձեռնառութիւն: Հուսկ յետոյ յորժամ 'ի վեր երեւի 'ի ծագն ազդեր, եւս 'ի գագաթան ոսկերն կոչեցելոյ իսքիօ, և 'ի մերձադիր մասունս, որք շրջապատեն զայն ոսկր, յայնժամ կոչի՝ շիաթիքա. Նոյնպէս յօդուածք անցից արգանդի որ ասի՝ կաախնա, և ձգանք նորին են սեպհական բնակարան այսորիկ ախտի:

Յաղագս նշանաց այսորիկ ախտի:

'Ի հասարակի նշանք այսորիկ ախտի են անմարսութիւն, թմբրութիւն, փուքն, թեթեւագին ցաւք գլխոյ, տաղտկութիւն, և երբեմն եւս փսխումն. ախտաւորին զգայ զթուլութիւն ինչ, և զլքումն. սովորաբար կրէ զցաւ ինչ 'ի մէջս, և զգայ յանձին դոյզ ընդ ցաւոցն միանգամայն եւս ցրտութիւն ինչ, որպէս սովոր է պատահել յընդերկար չօշափմանէ սառնամած ջուրց. բազում անգամ տարապայման իմն առնէ ախորժակն ախտաւորիս, և զկնի երկուց կամ երից աւուրց սաստկանայ յանկարծ, և զգայ ախտաւորն զցաւ ինչ թեթեւ 'ի միզարանն, և հուսկ յետոյ 'ի վերայ յարձակի նմա ակամայ իմն հոսումն արտասուաց. և այսորիկ նշանք բազում անգամ են յոյժ դժնեայ, և դժուարիք. մանաւանդ եթէ զուգընթաց լինի ընդ նոսին և բորբոքումն ինչ:

Գիտել արժան է, եթէ ըստ հանրապէս խօսելոյ, սաստկութիւն այսորիկ ախտի զուգակշռի ընդ տենդի, որ զուգընթաց լինի ընդ նմին. վասն զի եթէ տենդն կամ ջերմութիւն լինիցի սուր և սաստկաւոր, նշանակ է թեթեւութեան ախտին. բայց ընդ հակառակն՝ եթէ լինիցի յաբրաւ, յամր և մեղմ, յայնժամ դուշակ է յերկարաձգութեան ախտիս:

Ախտ այս հասարակօրէն բացայայտի և ծագի 'ի գա
րնանային եղանակի, կամ 'ի սկզբան ձմերան յետագ
պտղամանկաւս: Երկու կամ երեք ժամաւ զկնի հասարա
գիշերոյ՝ ախտակիրն զգայ զցաւ ինչ յանկարծահաս
ըմբռնմանն ուռին կամ ձեռաց. երբեմն 'ի կրունկն, երբեմ
և 'ի յօդն՝ որ խառնէ զէրէն ոտի քամակէտ, կամ 'ի թամբ
սրունից. և ընդ այսմ ցաւոյ միանգամայն զգայ յանձ
զգացումն ինչ ցուրտ նման զգացմանն, զոր սովորաբ
զգայ իւրաքանչիւր ոք 'ի հեղուլ անդ զջուր ցրտագոյն
վերայ վշտացեալ մասանց, և զգացումս այս յարատև
ըստ սաստիճանի ախտոյն. և յետ այնորիկ իսկ և իսկ ցաւ
այս աճի, և մխեալ հաստատի 'ի պատուածս ոտից,
յայնժամ ախտակիրն նեղի անհնարինս բազմակերպ ցա
ւովք, և համարի կիզեալ և տոչորեալ ոտիցն, եթէ կա
մեացի կոխել յակամայս, կամ եթէ ոք հպեացի 'ի նս
շօշափմամբ են: Հուսկ յետոյ այնքան սաստկանայ զգ
րացումն վշտացեալ մասին, մինչև ախտակիրն ոչ ևս կա
րէ տանել փոքու իմիք շօշափման. և ոչ իսկ զնայուրց ու
րեք մերձ իւրոյ սենեկի. և զայս օրինակ սաստկութիւ
ցաւոցն կրէ մինչև յընթացս 24 ժամուց զկնի սկսանելո
ջերմութեան. և վշտացեալ մասն ախտակրին սկսանի այտ
նուլ, և կարմրանալ. յորում և 'ի վեր երևի խոնաւու
կամ քիրտն ինչ թեթևագին. և դէպ յառաւօտեան պահ
'ի քուն լինի ախտակիրն, և 'ի վերայ գայ նորա քիրտ
ինչ չափաւոր. ահա ըստ այսմ օրինակի սպառի առաջի
բորբոքումն այսորիկ ախտի, որ և յարատևեալ մնայ ս
ուաւել կամ նուազ ըստ հասակի, ըստ կարողութե և ըս
տրամադրութեն ախտակրին:

'Ի դիպուածս ախտիս՝ հիւանդն սովորաբար յերեկո
եան պահու գտանի միշտ 'ի վիճակ յոռեգոյն. և յառա
ւօտեան պահու՝ 'ի բարեգոյնն. և հասարակօրէն խօսե
լով, բորբոքումնս այս օր քան զօր նուազի, և ախտն ըս
փոխման առնու ճանապարհաւ նպաստից իրիք արտաշըն
չութեն մարմնոյ, զորօրինակ միզի, քրտանց, կամ այլ ին
գատարկման, յընթացս քանի ինչ աւուրց, կամ շաբա
թուց, և կամ յընթացս քանի ինչ ամսոց, ըստ պարա
գայից կազմուածոյ մարմնոյ և չափու հասակի ախտա
կրին. եթէ ախտակիրն իցէ երիտասարդ, և վիճակեա
առողջարար կազմուածոյ, յարատևէ ախտն մինչև ց
աւուրս. եթէ իցէ ուժաթափ և ծերունի, յարատև
ցքանի ինչ ամիսս. և 'ի հասարակի խօսելով, չիք ին
պայմանեալ սահման յարատևման այսորիկ ախտի. եթ

ախտս այս լինիցի հնացեալ, ցաւքն յարատեւեն և դարմանին դիւրաւ և 'ի սուղ ժամանակի. քանզի 'ի հնանալ այսորիկ ախտի, նուազի նորա ուժգնութիւն, և բազում անգամ եւս բացեալ լինին այտուցքն իւրովի, յորմէ և ծորին արտաքս ախտարծարծ հիւթքն ։

Գիտելի է սոսէն, եթէ ըմբռնեալքն այսու ախտիւ լինին ենթակայ ձգմանց, փքոյ, և անդուլութեան որովայնի, թթախտութեան և այրեցողութեան միզի են. եթէ ախտս այս իցէ ժառանգական, կամ յոյժ հնագոյն, սովորաբար լինի անբուժելի ։ Եթէ յառաջ եկեալ իցէ 'ի պատահական ինչ պատճառէ, և դեռածին, յայնժամ լինի դժուարաբուժելի ։ Դարձեալ գիտելի է, եթէ 'ի դիպուածի՝ յորում յօդացաւութիւն 'ի վերայ գայ. կամ զհետ գայ իրիք ախտի, զորօրինակ ջրգողութեան, շնչարգելութեան, և քառօրեայ տենդի, յայնժամ լինի անվնաս և դիւրաբուժելի. քանզի այդորիկ ախտք հարկաւորապէս նպաստամատոյց լինին ապաքինութեան այնորիկ ախտի. մինչ զի եթէ ոչ կային այսոքիկ ախտք՝ 'ի վերայ հասանէր մեծագոյն որոգայթ ։ Քաջայայտ է ամենայն ումեք, եթէ աւարան այսորիկ ախտի ոչ է այնքան երկիւղալի. և ընդհակառակն՝ յոյժ երկիւղալի և որոգայթաւոր, եթէ ախտս այս 'ի վերայ յարձակի 'ի գլուխն կամ ընդմտանէ յաղիսն, և առաւել քան զամենայն աղետալի է այն՝ յորժամ 'ի վեր ելեալ յուղեղն, 'ի սիրտն և 'ի փայծաղն. սակայն եթէ յընթացս այսոցիկ որոգայթաւոր պատահարաց զգրգռի փոխումն ինչ, կմ լուծումն որովայնի, յայնժամ չիք այնքան երկիւղ. և բազում անգամ մարթ է 'ի ձեռն այդպիսի դատարկմանց կամ թորմանց առնել զապաքինութիւն ։

Յաղագս խնամակալութեան և դեղօրէից այսորիկ ախտի ։

Որովհետեւ 'ի դիպուածս այսորիկ ախտի չիք ինչ մասնաւոր և առաջուց դեղ, այնր իրի պարտ է ձեռնամուխ լինել մեծաւ ժրաջանութեամբ 'ի բարւոք նկատումն խնամակալութեանց, զորս պարտ է 'ի գործ արկանել 'ի ժամանակի յորս տեւէ ախտս այս, եւս զկնի դադարման նորին ։ Եթէ ախտաժէտն իցէ երիտասարդ, և զօրաւոր, կերակրոցն պարտ է լինել թեթեւ, զովացուցիչ, և լուծիչ. ցորքան յարատեւ մնայ ըմբռնումն ախտիս, պարտ է 'ի գործ արկանել զշիճուկն կաթին կամ շիւռօբբօ ու քաբէլմէնէռէ գաղջ ջրով. և յաւուրն քանի ինչ անգամ պարտ է

մատուցանել նմա սակաւաքանակ արգանակս. որովհետև ծամապահութիւն կամ ժուժկալութիւնն ոչ է վասն այնպիսի ախտաւորի՝ որ լցէ ուժեղ: Իսկ եթէ ախտաւորն լցէ վերձանկեալ ակար իմն կազմուածոյ, և սովորեալ լցէ ժուժկալութեան, յայնժամ չէ՛ պարտ նեղել զնա. այլ արժան է թոյլ տալ նմա կալ յարատև յիւրում սովորական ժուժկալութեան, և մատուցանել պարտ է նմա ազնուագոյն գինի, կամ այլ զօրաւոր ըմպելիս փոքրիկ բաժակաւ. Նոյնպէս պատշաճ է յայնմ դիպուածի գինեխառն չիճուկն կաթին, որ շարժէ և գրգռէ զարտաքսընչութիւս մարմնոյ առանց բնաւ պատճառելոյ ջերմութիւն ինչ. օգտաւէտագոյն ևս լինի, եթէ յաւելցի 'ի վերայ չիճուկի կաթին սակաւ վոլաթիլէ օլիօզօ, կամ սպիրիթօ ալ քօռնօ ալ չէռվօ. Իւրաքանչիւրոցն շարբաթ քանակութեան պարտ է լինել փոքրիկ դգալ ինչ արձոյ՝ 'ի մի բաժակ չիճուկի կաթին, զորս պարտ է կրկնել երկիցս յաւուրն:

Դարձեալ, յոյժ յարմարական և շահաւէտ է՝ ցորքան միայ ախտաւորին 'ի մահճի, մատուցանել նմա փոքրիկ դգալ ինչ արձոյ թինթուռա վոլաթիլէ ալ կուաեաքօ 'ի մի բաժակ ջերմ չիճուկի կաթին, և դեղս այս ունի զմասնաւոր իմն գործունէութիւն առ 'ի գրգռել զարտաքսընչութիւնս 'ի գիշերի. որովհետև 'ի դիպուածս ախտիս առաւել ազդու և ապահով ճանապարհ՝ որով մարթ է նպաստամատոյց լինել ախտաւորին, է գրգռելն և շարժելն զարտաքսնչութիւն մարմնոյ. Աւստի և զայսմանէ եւեթ պարտ է փոյթ մեծ ունել, և պարտ է միանգամայն պատատել զոտս և զսրունս մուշտակաւ, կամ այլ ինչ աստուեղէն ընդեստիւք. և թողուլ միսալ ցուլթ կամ ցաման աւուրս. Երբեմն ևս ցերկու՝ կամ ցերիս շաբաթս, կամ ևս ընդերկար ըստ յարատևութեան ցաւոց. Վկայեն հեղինակքն եթէ 'ի մէջ արտաքին դեղորեից, զորս պարտ է 'ի վար արկանել 'ի դիպուածս յայս, չիք ինչ առաւել շահաւէտագոյն դարման առ 'ի մեղմել զկորըբաքումն և զայրացուցանս ընդգործածութիւն գեղման կամ բրդոյ, որում պարտ է լինել դդեալ, և թանձրախիտ:

Դարձեալ, պարտ է ախտաւորիս՝ ցորքան յարատևէ ըմբռնումն ախտին, վայելել 'ի մեծի անդորրութեան, եթէ ըստ մարմնոյ, և եթէ ըստ հոգւոյ. Հրաժարիլ պարտ է յամենայնկերպ իրաց, որք նեղեն և զայրագնեն զոգի, և յամենայն արտաքին դրից սակերանեաց, որք պատճառեն զանդրադարձումն ախտի յօդացաւութեան: 'Ի դիպուածս ախտիս երակ հատանելն, և լուծողականքն ոչ են բնաւ

ն գործ արկանելն՝ բայց եթէ սակս մեծագոյն իմն հարկի, և այն ևս մեծաւ զգուշութ̃բ. քանզի ըստ վկայելոյ հեղինակաց՝ անթիւ անկարգութիւնք գտեալ գան յայդմանէ, եթէ ոչ 'ի կիր արկանիցի 'ի պատշաճագոյն վայրկենի, այսինքն 'ի սկզբան ախտին, և այն յանձինս, որք միճակեալք են արիւնային և հիւթաւէտ բնութեան. եթէ ախտաւորքն իցէ երիտասարդ և ուժեղ, յայնժամ մարթ է լուծանել զորովայնն 'ի գործ արկանելով զկակղացուցիչ և զլուծիչ դեղս, զորս պարտ է կրկնել ըստ պահանջելոյ հարկին՝ ցորչափ յարատև մնայ ըմբռնութիւն ախտին ։

Գիտելի է, եթէ գտանին բազում միջոցք 'ի ձեռն որոց մարթ է կարճել զըմբռնութիւն ախտիս, կամ գլխովին հատանել, և անհետ առնել. բայց ոչ է մարթ ապահովապէս 'ի գործ արկանել. քանզի դեռ ոչ ոք 'ի գիտնականաց զփորձ էառ նոցին անմիջաս շահաւէտութեան, և բազումք յանդգնեալ և յանզգոյշ գործածութ̃ այդպիսի դեղորէից զրաւեցան 'ի կենաց. այլ առաւել ապահով և ը̄ իւրաց ինչ օգտաւէտ դեղն, զոր մարթ է 'ի գործ արկանել յայսմ դիպուածի յառաջիկան սաստկուէ և դժնէութեն ցաւոցն՝ է լաւագոյն լերդուխոտն, զոր պարտ է մատուցանել ախտաւորին յերեկոյեան պահու յերթալն 'ի մահիճ 30 կամ 40 շիթս, կամ ևս առաւել, կամ նուազ ըստ պահանջելոյ սաստկութեան նշանացն ։ Դեղս այս մեղմէ զցաւս, և անդորրացուցանէ զախտաւորն, գրգռէ զարտաշնչութիւնն մարմնոյ, և առնէ զճգանս, որ ըստ խասալականին՝ քուխէ ։

**Ցաղագս խնամատարութեանց եւ դեղորէից, զորս պարտ է 'ի վար արկանել զկնի դիւրանցելոյ ախտիս ։**

Յետ դադարման ախտիս՝ պարտ է ախտաւորին 'ի վար արկանել մի կամ երկու չափ թինթուռա ամառա օ ռապառպառօ, կամ զայլ ինչ ստամոքսային լուծիչ և զօրանային դեղս, կամ զարմատս փոշիացուցեալ և լուծեալ 'ի մէջ թեթև գինւոյ կամ գարօղւոյ, որպիսի են ճէնցիանա, քինա, հանդերձ կինամոնիւ, սերպենթարիա վիրճինիանաւ, կեղևով նարնջոյ են. և յայնժամ պարտ է ախտաւորին ըստ իւրաց ինչ ծոմապահել, և չափաւորապէս շրջել 'ի զբօսանս ձիով կամ հետիոտս ։

## Ցուցակս հնարից որովք մարթ է արգելուլ զվերադարձութեան ախտի յօդացաւութեան:

Պարտ է 'ի դադարման այդր ախտի գտանել ինչ
հնարս, և միջոցս, 'ի ձեռն որոց հնար իցէ խափանել
րադարձումն կամ զվերակրկնումն այսորիկ ախտի, կ
գէթ մեղմել զզժնէութիւն նորին: Բայց գիտել արժա
եթէ այսորիկ միջոցք բնաւ ոչ կարգին 'ի դասս դե
րելից: Պատմէ պուքհան հեղինակն, եթէ ականա
լեալ է բազում անգամ բազմաց, որք գործածութ. ջ
քինաի և այլ դեղորէից ստամոքին զապաքինութիւն, բ
զկնի քանի ինչ ամաց վերադառնայր 'ի նոյն ախտն՝
չարագոյն: Արդ 'ի հասարակի խօսելով, թէպէտ դժ
րին և վտանգաւոր իմն է արգելուլ զվերադարձումն
տիս 'ի ձեռն դեղորէից, բայց մարթ է ը իւրաց նուա
զստուդութիւն, և զզժնէութիւն նորին. և այսմ հնա
լինել միայն բարեկարգութբ կերակրեղինաց, և զքօ
նաց. քաջայայտ է ապաքէն, եթէ մարթ է փոխել զխա
նուածս մարմնոյ ախտաւորին 'ի ձեռն պատշաճագոյն
կարգադրութեան 'ի կեանս, և այդպէս հնար է գլխո
արմատաքի խլել զախտս զայս, միայն թէ ը բաւական
յարատև 'ի գործ դնիցին պայմանեալ կանոնադրութ
'ի կերակուրս, զորոց ընդերկար ճառեցաք 'ի տեղւոջ
րում: Նոյնպէս պարտ է 'ի գործ արկանել զչափա
վաստակս ըստ տանելոյ կարողութեան ախտաւորին. և
տամբս վաստակ՝ իմանամք ստէն զթեթև ինչ ճեմու
'ի ձեռն որոյ շարժի քիրտն. ահա այդոքիկ երկու միջ
են գլխաւոր և առաւել օգտաւէտապէս 'ի գործ ար
նելիք 'ի դիպուածս ախտիս:

Դարձեալ, խրատեմք զախտակիրն կանխել յընթրի
և ոչ աճապարել իսկ և իսկ զկնի ընթրեացն 'ի մահիճ
պարտ է հրաժարել յոգիաւոր հեղանիւթոց, մանաւ
'ի գործածութէ ստորին գինւոյ. և 'ի գարնանայի
յաշնանային ժամանակի 'ի գործ արկանել սակաւաչ
մակնեզիա պխանքա, և ռաւպառպառօ, որոց գործած
թիւնն է օգտաւէտագոյն ոչ միայն առ 'ի մաքրել, ա
առ 'ի բանալ և 'ի գրգռել: Ա՛ռ. մի տրամ՝ մակնեզ
պխանքա, և 24 կշիռ. ցորեան՝ ռաւպառպառօ փոշեաց
ցեալ. զորս արկեալ 'ի հեղուկս 'ի մէջ միոյ բաժա
Ֆիօռ տի քամօմիլլաի, մատո ախտակրին ըմպել մի
գամ, և զայս չափս կրկնեամ միանգամ և երկիցս ը մի

երկոտասան ժամուց, եթէ ոչ պատճառեսցի մեծ լուծումն որովայնի. և յետ այնորիկ 'ի գործ արկ զոմանս դառնագին ստամոքսային դեղորայս, որպիսի են ինֆուզիօնէ տի թամարինթօ, կամ թրիֆօլիօ պալուստրէ, կամ ճէնցիանա, կամ ֆիօռ տի քամօմիլլա, կամ պառատանա են: Գիտել արժան է, եթէ պատշաճագոյն ժամանակն յոր արժան է 'ի գործ արկանել ախտակրիս զայսոսիկ վերոյիշեալ դեղորայս կամ հեղուկս, է ամիսն մարտի, և հոկտեմբերի, յորս պարտ է յարատև 'ի գործ արկանել երկու կամ երիս շաբաթս երկու բաժակս յաւուրն: Դարձեալ 'ի դիպուածս ախտիս շահաւէտագոյն է գործածութիւն կիզողականի, և կամ վէզիքաթօրիօի:

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

Յաղագս Երկրորդ փէսակի յօդացաւութեան, որ կոչի՝ կօթթա արթրիթիքա, այսինքն անկանոն յօդացաւութիւն, և յաղագս նշանաց նորին:

Ի դիպուածս, յորում յօդացաւութիւն 'ի վեր ելանէ 'ի գլուխն, ցաւն անդադար դադարի, այտուցն փարատի, և 'ի վեր երևի դժնեայ ցաւ ինչ գլխոյ՝ զոյգ ունելով ընդ իւր զսաստիկ իմն քնափութիւն, զպտոյտ գլխոյ, զբռնական իմն շարժումն մկանանց մարմնոյ, և զխելացնորութիւն. և երբեմն ժամանեալ հասանէ 'ի թոքսն, և յայլ մերձաւոր մասունս. և յայնժամ զգայ ախտակիրն զսաստիկ իմն ճնշումն, զհազ, և զդժուարաշնչութիւն. բազում անգամ ևս պատճառէ զփողացաւութիւն, զբորբոքումն խցանաց, զթքումն արեան, զթոքաժետութիւն, զշնչարգելութիւն, զանձկութիւն, և զնուաղումն, են:

'Ի դիպուածս, յորում ախտն ժամանէ 'ի ստամոքսն, յայնժամ զգայ ախտակիրն սաստկագոյն զտաղտկութիւն, զփսխումն, զծարաւ, զվիշտս, և զցաւ ինչ 'ի ծագն ստամոքսի կամ մակորովայնի. և գլխովին ուժաթափ լինել-լքանի: Իսկ եթէ ընդմտանէ 'ի ստորին որովայնն, յայնժամ 'ի վեր երևի սրտացաւութիւն, բորբոքումն, և աղիքու իմն ցաւ 'ի ստամոքսն, կշտացաւութիւն, խէթ, երիկամնաժետութիւն են. զգայ միանդամայն ախտակիրն զտաղտկութիւն, զնողկանք, լուծումն որովայնի, և երբեմն ևս զարիւնախառն փորհարութիւն, մէզն թանձրացեալ, և դաճալից երբեմն: Եթէ ախտակիրն իցէ անցեալ զաւուրբք, զգայ զվիշտս ախոնդանաց, և զցաւ ինչ միայսուն 'ի փո-

ըռանկան ։ Գինեալ արժան է ասելն , եթէ յոյժ գժտու
լին իմն է ծանօթութիւն այսր տեսակի յօդացաւութեա
եթէ ոչ գտանիցի զդոյգ ընդ նմա ըմբռնումն առաջին
տակի կանոնաւորեալ յօդացաւութեան ։

### Յաղագս դարմանադարութեանց և դեղորէից այսր փոխանի յօդ ցաւութեան ։

Յորժամ տեսանեմք զախտ յօդացաւութեան յարձ
կեալ 'ի գլուխն կամ 'ի կուրծս , հարկ 'ի վերայ կ
թուռն հարկանել զամենայն հնարաւոր միջոցաւ , և զհն
րից , և փութալ եղուցանել զայն 'ի վայր յոտս . ա
իրի պարտ է յոլով անգամ ընկղմանեցուցանել զոտս
կերն 'ի մէջ ջերմ ջրոյ մինչև ցծունս , և միանգամայ
պարտ է դնել 'ի ներքանս ոտիցն զապեղանիս յօրինեա
'ի չոր թզոյ , և 'ի մանանխոյ ։ Դարձեալ , 'ի զիպուա
մեծի հարկաւորութեան , պարտ է 'ի գործ արկանել վէզ
քամթօռիս , որոյ ներգործութիւն է առաւել արագ և չո
տափոյթ . նոյնպէս օգտաւէտ է դնել զտզրուկս , մանա
ւանդ 'ի վերայ վշտացեալ մասին մարմնոյ ։ Պատմէ արու
համ հեղինակն , եթէ ականատես լեալ է 'ի զիպուած
ախտիս մեծապէս օգտաւէտութեան զաղջ ջրոյ , յոր պար
է յաւելուլ եւս սակաւաքանակ հասարակ օծառ , և
ներքս դնել զոտս ախտաւորին , որոյ գործածութեամբ յօդ
ցաւութիւն վերնակողման ատորիջանէ յոտս ։

Դարձեալ , պարտ է երակ հատանել յոտիցն , և
գործ արկանել զատամնաքայլին ջերմ լուծողականս ։ Պ
տոյ է ախտաւորին մնալ 'ի մահճի , և անձնապահ լին
'ի ցրտոյ , մանաւանդ եթէ 'ի վեր երևեսցին նշանք ի
բորբոքման ։ Բայց 'ի զիպուածս , յորում ախտն ա
պաշարէ զատամնաքայն , և տայ ախտաւորին զգալ ղթեթ
ինչ ցրտութիւ , յայնժամ պարտ է ձեռնամուխ լինել
գործածութիւն ջերմագին քօռախայից . այսինքն դեղորէի
որք զօրացուցանեն զսիրտն . այսպիսի է ընտրագոյն գ
նին եռացեալ կինամոնիւ , կամ տասկապէս ջուր կինա
նի , անանխոյ , եւս օղի , կամ զարօղի . ևն ։ Պարտ է փոյ
մեծ ունել առ 'ի շարժել զքիրտն գործածութեամբ ջեր
ըմպելեաց ։ Եթէ ունիցի զցաւանս կամ զնողկանս ,
զլօժարուն ինչ 'ի ժայթքել , պարտ է տալ նմա ինֆու
զիօնէ տի քամօմիլլա կամ այլ ինչ զաղջ ըմպելի առ
դրդել և զիւրացուցանել զժայթքումն ։

Իսկ 'ի դիպուածս յորում ախտս այս ընդմտանէ

փարոտքին, և պատճառէ զլուծումն որովայնի, յայնժամ պարտ է փոյթ ունել առ 'ի արգելուլ զլուծումն որովայնի 'ի ձեռն կակղացուցիչ դեղօրէից, որպիսի են՝ ռաւպառպառօ, մաննա, եւն. և միանգամայն 'ի վեր արկանել զհնարս առ 'ի քարշել 'ի ստոր կոյս զախտարծարծ հիւթս. այլ երբեմն պարտ է մատուցանել նմա զհետևեալ փոշիս: Ա՛ռ բօլվէռէ տէլլա քօնթէսսա տի ունէնթ, և չէնթաուռէա մինօռէ, յիւրաքանչիւրոցն մէն մի տրամ, զորս խառնեալ ընդ երկրաց բաժանեա յերկոտասան հաւասարաչափ մասունս, և տուր ախտաւորին յիւրաքանչիւր երից ժամս զմի մասն:

Յորժամ ախտս այս յարձակի դէպ յերիկամունս, յորմէ և պատճառի խովումն կամ ամփոփումնք 'ի մէջ աղեաց, և ցաւ լինի յուղղելով մասունս երիկամանց, յայնժամ հարկ է առատապէս ըմպել տէքօցիօնէ տի ռատիչէ տի ալթէա, և միանգամայն տածել ջերմագին ջրով զծածն երիկամանց, և 'ի գործ արկանել զզրեխս կակղացուցիչս. և յետ այնորիկ պարտ է տալ նմա զդեղ ինչ մեզմէջ կամ խաղաղիչ: Իսկ եթէ ցաւն լինի յոյժ սաստիկ և գժնեայ, մարթ է տալ նմա 30 կամ 40 շիթս լաւտանօ լիգուիտօ՝ արկեալ 'ի մէջ միոյ բաժակի սովորական ըմպելւոյ:

Գիտել արժան է աստէն, եթէ որք միանգամ զփորձ առեալ են այսորիկ ախտի, պարտին մեծապէս զգոյշ լինել յամենակերպ վշտաց, և 'ի ձանձրութեանց, որք մարթին պատճառել զվերանորոգումն ախտիս. այլ նոքա, որք չեն ընդա զփորձ առեալ այսորիկ ախտի, բայց ըստ բնութեան պատրաստին կարկառութեան նոցին, կամ ըստ հանգամանաց մեծափի և վարուց նոցին երթալոյ լինիցին առաջին ընդունելութ, յայնժամ պարտ է փոյթ մեծ ունել 'ի պահպանել զանձն յուրեւանց ջերմագինս և անխոհեմութեան. և ամենայնիւր պարտ է նոցա տալ զանձն 'ի ջուրս ջերմագինս, մանաւանդ յորժամ զգան զգալ ինչ թեթև փ ցուխն. և յայսպիսի դիպուածի օրէն է միանգամայն յաւելուլ 'ի վերայ ջրոյ զօձաւն հասարակ, որպէս ասացաք 'ի վեր անդր: Դարձեալ, շահաւէտագոյն է յայսմ դիպուածի գործածութիւն շաքարի ընդ ջրոյ բաղադրելոյ:



# ԳԼՈՒԽ ԻԲ.

'Ի վերայ որովայնալուծութեան կամ փորհարութեան. զոր Եւրոպացիք կոչեն՝ դիառռէա, կամ Ֆլուսսօ դի վէնթռէ ։

'Ի ներքին կողման աղեաց՝ մածեալ կամ ծեփեալ կան յորդ լորձունք, որք են առանձային և լպրծուն, կարգեալ առ 'ի վայր սահեցուցանել զ'ի ներքս եղեալ նիւթսն, և միանգամայն պահպանել զաղիս 'ի տոխոյ, 'ի սուր, յաղի, և 'ի կծու հիւթոց. նմին իրի երբ խանգարին կամ քայքային այնք լորձունք. աղիքն խռովեալ թուլանան, յորմէ ծագին բուռն հոսմունք կամ լուծմունք աղեաց եղանակաւ. վասն որոյ և որոշի ըստ նիւթոյն, որք արտաքս թողուն. երբեմն լինին շճային, երբեմն մաղձային, երբեմն խժային, երբեմն արդնային, և երբեմն ևս արիւնային են, որպէս տեսցի առորև ։

Պատճառք որովայնալուծութեան կամ փորհարութեան ։

Որովայնալուծութիւն ծագի կամ յառաջանայ յայնմ ամենայնէ, որք հրապուրեն և բռնադատեն զթելս և զերակս փորոտեաց կամ աղեաց, որպիսի են՝ մաղձային և խժային շոգիքն, և կուտակեալ ստամոքային և խթիչ հիւթքն. և ևս այն ամենայն, որք աճեցուցանեն զզգայունական շարժումն և զգրգիռ աղեաց. որպէս շատ ուտելն զհասունացեալ պտուղս, զտունկս, զսեխ, զմեղրապատ, զվարունգ, են։ Մարթ է ևս յառաջ գալ 'ի խմորմանէ կերակրոց, 'ի ճճեաց, 'ի տախիլ հիւթոց, 'ի սուր մաղձէ, 'ի պանկրատական հիւթոց, յուժգին լուծողական դեղորէից, 'ի դժուարամարսելի կերակրոց, յոգնաւոր հեղանիւթից, 'ի թինաւոր իրաց, 'ի գրգռիչ և 'ի զայրացուցիչ դեղորէից, 'ի ցրտոյ, 'ի յարգելմանէ արտաշնչութեան մորթոյ, 'ի խցմանէ մեսենտրական մանանց, յերկարատև հիւանդութէ, 'ի տկարութէ ջղաց և փորոտեաց, 'ի դժուար ծագմանէ ատամանց ։ Այլև բազում անգամ պատճառի փորհարութիւս այս 'ի բորբոքմանէ ստորին որովայնի և արգանդի. և յայլ բորբոքիչ ախտից։ Յաւելուլ մարթ է 'ի վերայ այսոցիկ պատճառաց և զյո-

ութեն կլիմայից և զանբարեխառնութեն օդոց երկրին՝ յո-
րում բնակին ։

Նշանք որովայնալուծութեան կամ փորհարութեան ։

Հաստատակօրէն զուգընթաց լինին Ը ախտս՝ թուլու-
թեն, Ճնշութի աղեաց, անախորժակութեն կերակրոց, այ-
տութիւն և կռնչիւն փորոտեաց, խստութեն որովայնի, թե-
թև ինչ նողկանք, և ցաւ 'ի փորոտիսն, և ստէպ ստէպ
մղանք 'ի դատարկել զորովայնն, և երբեմն եւս խիթ ե-
րաստանի, որ ասի՝ թենեզմօ ։ Զարկ բազկին երբեմն լինի
ընդհատ ։ Մէզն սովորաբար լինի թանձր և սակաւաքա-
նակ ․ մորթն մարմնոյ ցամաք ․ դէմքն տժգոյն ․ դողդո-
ջումն սրունից, ապքութեն ոտից, թօթափումն հերաց ։
Նմանապէս զուգընթաց լինի ընդ սմա ջերմութեն, նուա-
ղումն, և հիւծումն, և ըստ յերկարելոյ լուծմանն աւա-
ճելու և տկարութին ։

Հուսկ յետոյ եթէ ոչ բարւոք խնամ տարցի, փոխար-
կի 'ի ջրգողութեն, կամ 'ի նեխութեն, և երբեմն եւս 'ի վե-
րայ գայ բորբոքումն և սուր ցաւ փորոտեաց հանդերձ
մխմամբ, և հեծկլտանօք, որ է նշան քաղցկեղային, և
մահաբերական ։ Բայց 'ի դիպուածս՝ յորում որովայնա-
լուծութին լինի ինքնեկ 'ի բնութ շարժեալ, յայնժամ
ոչ է այնքան վտանգաւոր, և ոչ է պիտոյ նպաստ դեղո-
րէից ․ այլ մանաւանդ բազում անգամ լինի օգտակար
ինչ հոսումն ․ վասն որոյ և չէ պարտ արգելուլ զայն,
բայց եթէ յորժամ մնասցէ ընդ երկար ժամանակ, և
տկարասցի հիւանդն երևելապէս ։

Յաղագս մանաւանդ նշանաց ազգի ազգի որովայնալուծութեանց ․
և յաղագս խնամարարութեանց նոցին ։

Ա.

Յորժամ հոսումն կամ լուծումն որովայնի պատճա-
ռի 'ի մաղձէ, յայնժամ ասի յիտալացւոց՝ տիառռէա
պիլիօզա ․ որոյ նշանքն են դառնութին բերանոյ, նող-
կանք սրտի, թուլութին փորոտեաց, կանաչութին կղկղա-
նաց, սաստիկ ցաւն աղեաց, և ստորին որովայնի, և գըր-
գռելութին լերդի ․ և դեղորայքն են՝ խաշուն թամարին-
դի, չիճուկն կաթին, սակաւաքանակ քրէմօռ տի թար-

Թաւօն , և հատուածացեալ պտուղքն , և եւ գրեխն որ պատրաստեալ իցէ դաղձ ջրով խառն ընդ օսափնձլենի կմ̄ շինձուկի կաթին ։

ԻԲ.

Եթէ որովայնալուծութիւն պատճառեալ իցէ 'ի ճճեաց կամ յորդանց , յայնժամ կոչի՝ դիառռէա վէռմինօզա. որոյ նշանքն են՝ յորդ հոսումն որովայնի , զազրահոտութիւն կղկղանաց , հանդերձ գորշագոյն գունիւ , մրմռումն ստորին որովայնի , արտաքսումն ճճեաց կամ որդանց 'ի ստորուստ , որոց ոմանք են կենդանի , և ոմանք մեռեալ կամ նեխեալ , Եւ դեղորայքն են՝ բօլվէռէ տի սամանէօ , օլիօ տի բալմաքրիսթէ , և լուծողականքն պատրաստեալք խաշնդեղիւ , և քալօմէլանօիւ . և յետ այսոցիկ օրէն է տալ հիւանդին զջուրն կրոյ՝ միայնակ , և կամ խառնեալ սակաւ ինչ խաշնդեղ . որով զօրանան աղիքն և արգելունի վերստին ծնունդն որդանց ։

ԻԳ.

Յորժամ հոսումն որովայնի յառաջ գայ 'ի ցրտոյ կմ̄ յարգելականութէ արտաշնչութե մարմնոյ , յայնժամ կոչի՝ դիառռէա սիէռօզա . որոյ նշանքն են՝ առատօրէն հոսումն որովայնի զօրէն ջրոյ , ցամաքութիւն մորթոյ մարմնոյն , սաստկութի ցաւոց աղեաց , արտաքսումն սակաւ սակաւ միզոց , ուժգնութիւն ծարաւոյ , պակասութիւն միզի , ձգտումն որովայնի , կիզումն երաստանի , ևն . և դեղորայքն են՝ Թրմոցն սամպուքօի , բօլվէռէ տի տօվէռ , էմուլսիօնէ առապիքա , յաւելլով 'ի նոյն ցորենաչափ ափիոն , կամ Թիւրակէս ևն ։

ԻԴ.

Եթէ որովայնալուծութիւն պատճառեալ իցէ 'ի խժայծն դոլորշեաց կամ 'ի մածձային շոգեաց , յայնժամ կոչի՝ դիառռէա մուքօզա . որոյ նշանքն են՝ յորդառատ հոսումն սոսնձային հիւթոց , այտումն և ձգտումն որովայնի , արտաքսումն միզոց , ցաւն աղեաց , Թուլութիւն փորոտեաց . հիւթքն՝ որք սակաւ սակաւ արտաթորին 'ի ստորուստ , երբեմն լինին դեղին հարեալ 'ի գոյն մոխրոյ , երբեմն ջրային և ջերմ . երբեմն մածուցիկ և անհոտ . երբեմն

ցուրտ և սպիտակ, և երբեմն ևս սպիտակ և մրրալից. նաև երբեմն են կանաչագոյն և զազրահոտ, և երբեմն մածագոյն և անհոտ: Ցաւն՝ որպէս և ջերմութիւն երբեմն լինին սաստիկ, և երբեմն թեթև. հուսկ յետոյ եթէ ոչ բարւոք խնամ տարցի, գլխովին համաձայնի ըստ մասին նշանացն ախտին կոչեցելոյ՝ Ֆէպպրէ լէնթա նէավօզա. զորմէ խօսեցաք 'ի տեղւոջ իւրում, և դեղորայքն այսո_րիկ հոմանն են՝ արմատն ռատանիքայի, և սոլուցիոնի տի կօմմա առապիքա:

Ե.

Եթէ որովայնալուծութիւն պատճառի 'ի խմելոյ և 'ի սաստիկ լուծողական դեղորէից, 'ի մաղձէ, 'ի թունից, և յայլ միասակար հիւթոց, յայնժամ կոչի՝ տիառռէա կալթալիքա. որոյ նշանքն են՝ առատօրէն հոսումն մաղձի և մաղասի, սաստկութիւն ծարաւոյ և ցաւոյ, խեթն որովայ_նի, ձգտումն փորոտեաց, նուաղանք ստամոքսի, ժայթ_քումն, ձգտումն, ևն. և դեղորայքն են խաշուն երից_կի, կամ չայի, խաշընդեղն, և իբէքաքուանա, որ ոչ միայն մաքրէ զստամոքսն, այլ միանգամայն տայ ստամոք_սին զմասնաւոր իմն ոյժ, և զօգնութիւն, արով զօրացեալ տրտաքս վանէ զմիասակար նիւթս, և զմնացեալս յան_մարսողութենէ: Քանի և չորս կշիռ ցորեան իբէքաքուա_նայն չափ է բարւոք և բաւական առ 'ի արտադրել զայ_սոսիկ ներգործութիւնս. մի կամ երկու աւուրս զինի փախո_ղականի՝ օրէն է տալ հիւանդին կէս տրամ կամ 40 ցո_րեան խաշնդեղ. զոր և պարտ է կրկնել երկու կամ երեք անգամ, մինչև ցդադարել հոսման որովայնի,

'Ի դիպուածս, յորում հոսումն որովայնի ծագի 'ի սաստիկ լուծողական դեղորէից և 'ի թիւնաւոր նիւ_թոց մտելոց 'ի ստամոքսն, յայնժամ օրէն է ախտա_կրին ըմպել առատօրէն պէվանտաս տիլուէնթէ, այսինքն դեղ հեղեղիչ. որպիսի են՝ էմուլսիոնէ առապիքա, գաղջ կաթն, իւղն նշոյ կամ ձիթապտղոյ, ևն: Եւ 'ի վախճանի մարթ է ևս տալ սակաւաչափ լաւտանօ լի_գուիտօ, կամ տրամաչափ տիասքօտիօ առ 'ի խափա_նել զզայրացումն աղեաց:

## Զ.

Եթէ հոսումն ոտնակային իցէ արեւնաշաղախ , յայ
ժամ կոչի տիառռէա քռուէնթա , որոյ դեղորայքն
թրմոյն խաչ՚դեղի , կամ քաղքաջնիլիկի , և յաւելու
պա՛րտ է 'ի վերայ նոցա ցորեան մի կամ երկու աղուա

## Է.

Ցորժամ ոտնակայնալուծունին յառաջ գայ յուժեղու
թէ և 'ի բռնադատութէ , որ պատճառի յարգելակ
նութենէ երեք սովորական հոսմանց , որպիսի են հոսու
թանչից , դաշտանի , ևն , յայնժամ ասի՝ տիառռ
սթէնիքա . որոյ դեղ է երակահատութի , և 'ի չլին
ելոյն կարելի , հարկ է հինգ կամ եօթն տղրուկս դն
'ի վերայ երաստանի , և փութալ զամենայն յարմար
գոյն հնարս 'ի վար արկանել խուկ և խուկ 'ի նոյն ժաման
կի , առ 'ի դիւրացուցանել և շարժել վերստին զհոսու
ցայն սովորական , որովհետև զայսմանէ կախեալ կան՝
միայն փարատումն փորհարութե , այլ միանգամայն կեա
ախտակրին :

## Ը.

Ցերկարաժամանակեայ ոտնակայնալուծութիս առա
ջերմութե , որոյ նախնական պատճառ գտանիցի ըն
տկարութիւն աղեաց կամ փորոտեաց , յայնժամ կո
տիառռէա քռօնիքա . որոյ առաւել գործունեայ դե
րայքն են՝ իբէքաքուանա , տալով հիւանդաց երկու
մէ յերկու ժամ մի կամ երկու կշիռ ցորեան , յաւ
լով 'ի նոյն մէնի մի ցորեան՝ էլէօսաքքառօ տի մաշ
նոյնպէս երկար փորձառութե ուսայ՝ զի գերազանց
է գործածութի փոշւոյ ինչ՝ որ այսպէս բաղադրի : Ք
կշիռ ցորեան՝ ռատիչէ տի քօլօմպօ , և տասն կշիռ
րեան՝ ցուքքէռօ առօմաթիձձաթօ տի մաչէս : Եւ
պա՛րտ է առնուլ երեքս կամ չորեքս անգամ յաւուր
Բայց 'ի դեղորէից ասաի՝ օգտաւէտ յոյժ եղիցի
բուցանել համապազօր արնիքա արմատն լոսեալ , 
առցի մի աւելի քան զտասն ցորեանս առ մի նուազ
տացի չորս ժամ միջոց ընդ մի և ընդ միւս առնումն
չափոյ : Են բժիշկք , որք առնուն 'ի կեր զսերումն Ջղա

տի, զկեղևն սիմառուպայի, զքաղքառիլլա, զնօճի տի կիանտէ, զլէնօ քամբէճճիօ, զկօմմա քինօ, զխէժն արաբիոյ, զթօռմէնթիլլա. ևն.

## Թ.

'Ի դիպուածս, յորում որովայնալուծունն լինի պարբերական, յայնժամ կոչի՝ տիառռէա բէռիօտիքա. զայսպիսի լուծողուն չէ պարտ բնաւ արգելուլ. քանզի միշտ է ճիգն ինչ բնութեան, որով արտաքս վանէ յինքենէ զախտաբեր հիւթս. որ եթէ մնային 'ի ներքս, արդարև վնասակար լինէին բնութեան. և են ոմանք, որք կրեն զայսպիսի լուծմունս որովայնի 'ի սահմանեալ ինչ ժամանակս իւրաքանչիւր ամաց. որպէս 'ի գարնանային՝ մանաւանդ յաշնանային եղանակի, և այս է պարգև ինչ շնորհեալ բնութեան առ 'ի պահպանութիւն առողջութեան. և արդարև լինի վտանգաւոր արգելուլ զայսպիսի օգտաւէտ լուծումն. այլ միայն օրէն է յայսպիսի ժամանակս հրաժարիլ 'ի մսեղինաց:

Փոքրիկ մանկունք են յոյժ ենթակայ այսպիսի լուծման որովայնի, մանաւանդ 'ի ժամանակի, յորում ծագին ատամունք նոցին. բայց ուր ուրեմն վնասակար լինի նոցա, և բազումք ևս 'ի նոցանէ զարգարին ատամամբք առանց կրելոյ ինչ վիշտս: Իսկ եթէ տեսանի վնասաբեր լինել մանկանց այսպիսի լուծումն, յայնժամ պարտ է տալ նոցա մի փոքրիկ դդալիւ սրճոյ մանկնեզիա ալպանքա՝ ընդ չորս կամ հինգ ցորեան ռապառպառօի. եթէ կրկնեսցի դեղս երիցս կամ չորիցս, անտարակոյս լինի օգտակար:

## Ժ.

'Ի դիպուածս, յորում հոսմունքն պատճառին 'ի սաստիկ կրից, և յուժգնագոյն տագնապէ բնութեան, յայնժամ տան՝ տիառռէա տէլլա բասսիօնէ, կամ աֆֆէցիօնէ տէլլ՛ անիմօ: Պարտ է վարիլ մեծաւ զգուշութեամբ յայսպիսի դիպուածս. փսխողականն ոչ է պատշաճաւոր, իսկ լուծողականքն ոչ են այնքան ապահով, բայց եթէ լինիցին յոյժ թեթև, և սակաւ քանակութեամբ: Առաւել պատշաճաւոր դեղորայքն են՝ խաղաղացուցիչ կամ անթիսբազմօտիչի. վասն որոյ պարտ է տալ հինգ կամ տասն չիթ լաւտանօ լիգուիտօ 'ի մէջ միոյ բաժակի ին-

ֆուզիոնէ տի վալէսիանա, կամ տի բուլէծիօ՝ յամե-նայն ուԹ ժամս միանգամ, մինչև ցդադարիլ նշանացն ։

Դարձեալ՝ զուարճուԹիւն սրտի և անդորրուԹիւն հոգւոյ 'ի դիպուածս յայս հարկաւորապէս պահանջի ։ Երբեմն առ 'ի հանդարտելոյ զլուծումն որովայնի, եւս դիմեմ 'ի գործածումն յետագայ դեղորէից։ Ա՛ռ կէս ունկի՝ տիաքօտիօ, և վեց ունկի՝ ջուր հասարակ, տուր հիւանդին երկու կամ երեք դգդալ սեղանոյ յաւուրն ։

ԺԸ.

'Ի սոյին կարգ դասի և լիէնԹէրիա ձայնեալ փորհա-րուԹիւն, որ պատճառի 'ի խանգարմանէ գործողուԹեան մարսողուԹեան, և 'ի խափանմանէ ատնելուԹեանց կաԹնա-ծու երակացն, որք բերանաբաց կան յաղիս, որով իջա-նեն կերակուրք անմարս ։ Բազում անգամ եւս ծագի յերկարատև և 'ի հնագոյն սուր փորհարուէ, և 'ի յա-րինաշուշտ որովայնալուծուԹէ, ևն ։ Սա ունի մեծ հա-ղորդակցուԹիւն կամ ազգակցուԹիւն ընդ հոսման չէլիաքօ անուանեալ շնչերակի, և 'ի պատահիլ ումեք, մանա-ւանդ ծերոց՝ յոյժ դժուարաւ առողջին ։ Ուստի այն-պիսեաց զամենայն ընԹացս հիւանդուԹեան իւրեանց մեծաւ զգուշուԹեամբ պարտին կեալ ։

Ախտս այս երբեմն զոյգ ունի ընդ իւր զանախորժա-կուԹիւն կերակրոց, զծանրուԹիւն ստորին որովայնի, զապա-սահմանացն ախոնդանաց, զնողկանս ստամոքսի, և զշա-փորանաց. և երբեմն եւս զշնքարզ. (ականատես եղաք 'ի դիպուածս ախտիս հիւանդաց ոմանց՝ ուտել անյագաբար զկերակուրս վեց կամ եօԹն անգամ 'ի մէջ քանի ինչ ժամուց ։) Հասարակօրէն Թուլանայ զօրուԹիւն ջղաց, մա-նաւանդ այնց ջղաց որոց սատարակարգեալ են մեծ դործք մարսողուԹեան կերակրոց, յորմէ զհետ գայ անեփուԹիւն 'ի կերակուրս, և անբաւականուԹիւն 'ի սնունդ ջերմուԹեան կե-նաց, և այնպէս ծիւրեալ լքանին ընդերք, և բոլոր մար-մինն ։ Նշանք առաւել ձախորդականք են՝ ստէպ ստէպ արտաԹորուԹիւն որովայնի, սաստիկ ջերմուԹիւն, ուժգնու-Թիւն ծարաւոյ, նուաղուԹիւն միզի, վէրքն կոկորդոյ, անա-խորժակուԹիւն կերակրոց. դժուարուԹիւն 'ի կլանել ևն ։

Ընդ այսոցիկ գիտել արժան է, զի եԹէ գտանի զոյգ ընդ ախտիս դժուարուԹիւն ինչ 'ի շնչառուԹեան, և ցաւ կողմնական, յայնժամ ախտս այս առարոտ 'ի նեխուԹիւ ։
'Ի դիպուածս յայս առաւել պատշաճագոյն դեղորայքն

են՝ հնագոյն քաղցրաւենին կարմիր վարդի, և ազնիւ-թիւրակեան, որ այսպէս բաղադրի: Ա՛ռ վեց ունկի՝ մեղուխշեալ քաղցրաւենին, բաղադրեալ զայն ընդ վեց տրամ թիւրակեսի, յաւելլով 'ի նոյն և զայլ բաւականաչափ քաղցրաւենի սերկևիլի. յետ որոյ տուր ուտել հիւանդին մի կամ երկու անգամ յաւուրն՝ զկշիռ կիսոյ ունկւոյ: Եւ ինձ իսկ ոչ այլազգապէս յաջողեցաւ դարմանս տանիլ, բայց եթէ տալով զառաւել հեշտընկալսն 'ի դեղորէից տասն, որպէս է զանգուած ինչ հաստատեղոյ բաղադրեալ 'ի 12 ցորեան՝ քօլօմիօ արմատոյ լոսելոյ, և 'ի բաւականաչափ շարապոյ սերկևիլի: Յօրինեալ տասն մեցեալ հատիկս, երկու աւցին ընդ առաւօտս, երկու նախ քան զճաշն, և այլ երկու ժամ մի յառաջ քան զընթրիսն, միայն թէ կրկնելի է այդ դեղ մինչև 'ի քսան օր:

## ժբ.

Երևելի է նոյնպէս և հոսումն լերդական, կոչեցեալ յիտալացւոց՝ Ֆլուսսօ էբաթիքօ. և կարի դժուարին իմն է սահմանել զխոկաբուն և զգործադիր պատճառն այսր հոսման. բայց զոր հաւաստեաւ մարթիմք տորասել, է թուլութի, դանդաղութի, և պալարումն լերդի: Այդ ամենայն թէպէտ երևին լինել առաւել ընդհանուր պատճառ այսր հոսման, բայց յոլովակի ոչ պատճառեն զայն. որովհետև բազում անգամ են պատահին 'ի նեխութէ լերդի, առանց ուրեք բնաւ գտանելոյ անդ ախտիս, որ ասի Ֆլուսսօ էբաթիքօ: Բայց զխարդ և իցէ, հաւաստի համարեալ է թէ ոչ է մարթ այդմ ունել տեղի, բայց եթէ յարակցեալ ընդ լերդի. սմին իրի սահմանեմք ըզպատճառս այսպիսի հոսման լինել զամենայն անբարեխառնութիս կամ անկարգութիս լերդի, մանաւանդ զտկարութին ստամոքսի, և ստորին որովայնի, և զդանդաղութին փամփշտոյ, երիկամանց, փայծեղան, պարկի լեղւոյ, և որդանդի. և զառաւելութին կամ զկարի նուազութին դաշտանի և թանչից: 'Ի վախճան ամենայնի հոսումնս այս ծագիլ կարէ նաև 'ի խզմանէ միսենտրական երակաց, որ կոչի՝ օսթռուցիոնէ տէլլէ վէնէ մէսէնթէռիքէ: Եւ նշանք են՝ անախորժակութին կերակրոց, տենդ թեթև, դառնութի բերանոյ, փուքսարկումն, դեղնութիւն միզի, առաւելութի կամ սակաւութի ցաւոց լերդի և դեղնութի մորթոյ, սասակութիւն հազի, և ճըշումն լերդի, դժուարութին 'ի շնչառութե: Բայց մա-

Նուրրապէս գուշակի հոսումն այս այնու՝ զի հասարա-
կօրէն զհետ գայ գալուկն, բորբոքումն, և այլ ախտք լեր-
դի. Եւ առաւել ճանաչի յորտաթորմանէ արիւնազա-
ղախ նիւթոց կամ կղկղանաց, և 'ի խեթից որքանին եր-
բեմնապէս պատահելոյ։

Այս հոսումն որոշի և զանազանի 'ի Թանչից, որ ասի
էմօռօիտալէ, ըստ որում 'ի գիպուածս յայս կղկղանքն
կամ աւէտքն որովայնի ոչ է այնքան խառն ընդ արեան,
որպէս 'ի Թանչքն։ Սեամաղձոտքն առաւել ենԹակայ են
ախտիս այսմիկ։ Դարձեալ, հոսումն այս ոչ է այնքան
վտանգեր և տառապեցուցիչ, որպէս զախտն՝ տենէնԹէ-
ռիա. բայց է առաւել դժուարաւ փարատելի, և հասա-
րակօրէն աւարտի և փոխարկի 'ի Ջրգողութի, 'ի վտա-
կրութի և 'ի յերկարատև խօթուի, որ ասի՝ քաքէսսիա։
Այլ դարման սորա է ուատիչէ տի քօլօմպօ, զոր պարտ է
խառնել դոյզն ինչ ափիոնիւ։ Նոյնպէս օգտակար է եթէ
փութով և յաճախակի օծցի 'ի վերայ լերդի և փայծա-
ղան ճարպով սնգկի։

ԵԹէ ախտակիրն ունիցի զմիզարգելութի, յայնժամ
պարտ է 'ի վեր արկանել զտիճիթալէ բուպուրէա, զոր
պարտ է զգուշութք և չափով ընծայել։ Իսկ եթէ ունի-
ցի զջերմութի ինչ Թեթև, և յայնժամ օրէն է առնուլ
'ի կիր զէլիսիրէ տի վէԹռիօլօ, և զԹրմոցն քինաի, և ս
պարտ է գրել տալ պատրաստեալ խաշուով քռւսաքայի կմ
օսսիքռաթօի։ Այլ եթէ ախտակիրն ունիցի ախորժակս
յուտել, որպէս պատահի երբեմն, մարթ է Թոյլ տալ
նմա ուտել զհաւս, զձագս աղաւնեաց, զմիս Թաղամսա-
ւորեալ ոչխարի, և զմածուածն եղջերն եղջերուի, որ ա-
սի՝ ճէլաթինա տի քօռնօ տի չէռվօ։ Ըմպելիք յախտաժե-
տաց ստացան մեծ օգուտս 'ի կաԹանէ, ուստի եթէ լիցի
օգտակար, պարտ է յարատևել 'ի գործածութի կաթին,
մինչև բարւոք ներգործեսցէ։ Դարձեալ, եթէ զուգըն-
թաց լիցի ընդ ախտից ցրտութի ձեռաց և ոտից, նուա-
ղումն, նուաղութի ձայնի, Թուլութի Ջղաց և դժուա-
րութիւն 'ի շնչառուե, յայնժամ կոչի՝ ֆէպպրէ բէռ-
նիչիօզա սուպքռուէնթա, որպէս տեսաւ գլ. ա. երես 16։

## ժզ.

Այլ բաց 'ի սոցանէ՝ է և այլ տեսակ որովայնալու-
ծութե, որ կոչի՝ ֆլուսսօ միզէնթէռիքօ. այսինքն հո-
սումն մեսենտերական։ Սա է ախտութի մեսենտերական

թելից կամ անօթոց . վասն որոյ 'ի դիպուածս յայս կըղ-կղանքն լինի առաւել արիւնաշաղախ քան 'ի դիպուածս հոսման լերդի , և արիւնաուշտ հոսման որովայնի , որ կո-չի տիսաէնթերիա : Երբեմն ևս պատահի՝ զի յանչափս հոսի արիւն ինչ կարմրերանգ առանց երբէք հոտոյ . բայց երբեմն սեաւ կամ նեխեալ և գարշահոտ , և յայնժամ անուանի՝ մօռպօ նէռօ , այսինքն ախտ սեաւ : Սեամաղձոտքն են առաւել ենթակայ ախտիս այսորիկ : Այլ դար-մանն սորա չէ ինչ տարբեր 'ի դարմանոց թանչահոսութեն կամ փախման արեան , որպէս տեսցի իւրաքանչիւր յիւ-րում տեղւոջ . որովհետև ունի զմիջասահման տեղի 'ի մէջ միոյ , և միւսոյ :

Բայց մասնաւորապէս 'ի դիպուածս յայս պա՛րտ է պատրաստել գրեխս կակղացուցիչս , 'ի ձեւն որոց սրսկա-նի և մաքրի արիւնն , որ փակեալ կայ 'ի փորոտիսն . Նոյն-պէս մարթ է մատուցանել հիւանդին աչխոյ անթիփութ-ախոտ , որ ոչ միայն խափանէ զպատճառելի մէտս , այլ և միանգամայն մասնաւորապէս անձապատէ և արգելու զթանչան : Զնոյն գործողութի ունի և խաշուան բրնձոյ՝ խառն ընդ շաքարալի լէմոնի , կամ սալապէլի : Դարձեալ յոյժ օգտակար է 'ի դիպուածս յայս 'ի վեր արկանել զծաղիկն երիցկի՝ եթէ յըմպելիս , և եթէ 'ի գրեխս :

ժդ.

Խրատք ընդհանուր առ 'ի խնամատար լինել որովայնի և իցէ հոսմանց , և փորհարութեանց : Ախտաքս այսոքիկ յոր-պիսի և իցէ պատճառէ յառաջ եկեալք , ըստ պարագա-յիցն պահանջելոյ , եթէ պարտ իցէ արգելուլ , պիտոյ է խակ և իսկ կանոնադրել զկերակուրն հիւանդին , որպիսի է բրինձն եփեալ կաթամբ , և համեմեալ կինամոնիւ , կամ քուէմօռ տի ռիզօ , այսինքն բրինձն եռացեալ կարմիր գի-նեաւ : Ըմպելին քուէմօռէ տի ավէնա լուծեալ 'ի ջրոյ բրնձի , կամ թրմոցն խորովեալ հացի : Գիտելի է ևս , եթէ չէ՛ օրէն բնաւ ձեռնամուխ լինել 'ի դադարեցուցա-նել զորպիսի և իցէ հոսումն որովայնի , մինչև քաջահա-սու լեալ թէ յորոց պատճառաց իցէ յառաջ եկեալ : Իսկ 'ի կարևոր դատելն զգործածութի գեղորէից , յայն-ժամ պա՛րտ է սկսանիլ նախ 'ի քաղցրացուցիչ և 'ի հե-ղեղկիչ գեղորէից , և 'ի գրեխաց , և ապա անցանել 'ի գործածութի գեղորէիցն , որք վերաբերին առ ստամոքսն ,

և յետ այնորիկ 'ի կիրառութիւն քինա քինայի, օշնդրի. տիասքօռտիօյի. Նաև ազնուագոյն գինի է յոյժ օգտակար:

Որքան առ կերակուրս պա՛րտ է հրաժարիլ 'ի տհաս մրգաց, 'ի դժուարամարսելի և յիւղալի կերակրեղինաց. Եւ արժան է զգուշանալ 'ի ցրտոյ և 'ի խոնաւ օդոց, և յայլ ամենայն իրաց, որք մարթին արգելուլ զարտաշնչութիւն մարմնոյ: Նմանապէս զգոյշ լինել պա՛րտ է 'ի սաստիկ կրից, յերկիւղէ, 'ի տրտմութենէ ևն: Ընդ այսոսիկ արժան համարիմ յուշ առնել և զայն, զի եթէ փորհարութիւնք կամ հոսմունք այսոքիկ երկարատևեալ մնան, ստորաբար 'ի վեր երևին կարծրութիւն և ցաւ ինչ թեթև 'ի լեարդն, և մերթ ևս 'ի փայծաղն, յայնժամ հարկադրեալք դիմել 'ի գործածութիւն քալօմելլանոսի, կամ մերկուրիօ տօլչէի, և զկերպն կիրառութեան սոցին ուսցիս գտանել 'ի հատ. Ա. 'ի տառն Ք և Մ, 'ի կարգի իւրեանց:



# ԳԼՈՒԽ ԻԹ.

'Ի վերայ արեանասուզ փորհարութեան կամ արեանախառն որովայնալուծութեան, որ ասի՝ տիսսէնթէրիա, կամ ֆլուսսօ տիսսէնթէրիքօ:

Ախտս այս է խօթութիւն ինչ դժնդակ և տարափոխիկ, որ կատաղաբար յարի 'ի փորոտիս մարդոյ, և առաւելապէս 'ի սառուար և 'ի թանձր աղիս, հանդերձ ջերմութեամբ մարմնոյ, և ուժգին ցաւովք որովայնի և սրբանին: Սա հասարակօրէն տիրապետէ յաշնան և 'ի գարնան եղանակի, և կարի հասարակ է յերկիրս տօթագինս և 'ի վայրս գիճայինս, ուրանօր եղանակն լինի ջերմ և խոնաւ. Եւ նոքա՝ որք բնակին 'ի սահմանս հարաւոյ և 'ի բնակութիւս վիճակեալս վնասաբեր օդոց և ապականեալ իմն հողմոց, են առաւել ենթակայ այսր ախտի, յայն սակս առաւել գտանի ախտս այս 'ի բանտս, 'ի բանակս, 'ի հիւանդանոցս, յանկելանոցս, և յայլ այսպիսի տեղիս: Եւս անձինք, որք վիճակեալք են սքօռպուտային ախտից, են առաւել ենթակայ այսմ արիւնասուզ փորհարութեան:

## Պատճառք արիւնոտալոյ փորհարութեան կամ արիւնախառն որովայնալուծութեան։

Պատճառք այսորիկ ախտի գրեթէ նոյն են ընդ պատճառաց փորլուծութեան, զորս ցուցանեմք 'ի գլ. Ե. երես 65։ Նոյնպէս մարթ է պատճառել ախտիս յայնմ ամենայնէ, որք կարեն արգելուլ զքրտնչութիւն մարմնոյ․ որպիսի են ցրտագոյն և խոնաւակար օդք և հողմունք, ըզգենուլ զթացեալ հանդերձս, 'ի քուն լինել 'ի բացօթեայս, և ն։ Նոյնպէս և մարթ է ծագել 'ի սուր և 'ի խթիչ մաղձէ, 'ի սորէջ ախտածարծ հիւթոց, որք 'ի ստամոքսէ յաղիս լճանան, և 'ի հասունացեալ պտղոց, ևս 'ի դժուարամարսելի կերակրեղինաց․ բազում անգամ ևս պատճառի փոփոխմամբ, վասն որոյ հարկաւորապէս պահանջի չառնել սակս սակս երթևեկութիւնս առ այնպիսի ախտակիր անձինս․ քանզի համարիմք եթէ միայն հոտն կղկղանաց ախտակրին պատճառել մարթի զախտս զայս։ Հուսկ յետոյ՝ մարթ է ախտիս յառաջ գալ 'ի յօդուածացաւութէ, ևս և 'ի ռևմատիզմա անուանեալ պալարէ, որով բազում անգամ ցաւի ուղղորդ աղիքն հիւանդին, յորմէ երբեմն շէտ գայ նախ վէրք, և ապա քաղցկեղ։

### Նշանք այսր ախտի։

Ախտս այս գուշակի 'ի լուծողականութէ որովայնի․ Է որում զուգընթաց լինի և սրագոյն իմն ցաւ 'ի փորոտեան, ևս 'ի մշտատև արտաթորելոյ զկղկղանս որովայնի․ և հասարակօրէն յառաջ կամ 'ի նուազ ինչ սրենէ, և 'ի խժային նիւթոց արտաքս հոսելոց ընդ աղտաւարին, 'ի խեթից սրբանին, 'ի զգացմանէ ալեաց, 'ի դառնութէ բերանոյ, 'ի չորութէ որկորոյ և լեզուի, 'ի նողկանաց, 'ի փսխմանէ, և 'ի սաստիկ ծարաւոյ։ Դարձեալ, որպէս 'ի գխալուածս այլոց հրատապ տենդից, նոյնպէս 'ի գխալուածս ախտիս՝ թուլանայ զօրութի ջլաց և բոլոր մարմնոյ, զարկն ուժգին, և ջերմութին սաստիկ։

Գիտել արժան է, զի 'ի սկզբան անդ ախտիս երբեմն զուգընթաց լինի դողդողջումն, և երբեմն ևս ցրտութիւն ուժգին։ Նիւթն՝ որ անընդհատ 'ի դուրս թորի, ոչ լինի բնաւ միօրինակ․ զի երբեմն լինի սոսնձային, և սպիտակ․ երբեմն արիւնաշաղախ, և երբեմն ևս կանաչագոյն․ այլ 'ի վերայ այսր ամենայնի միշտ Է նիւթոցս գտանի և հոտ

զռպէր և գարշ ։ Սովորաբար մէզն լինի արգելական , ը
նմին և քիրտն ։ Երբեմն հիւանդն բնութբ շարժի 'ի փ
խուռն առատօրէն , և երբեմն ևս մորթն բոլորովին ց
մաքի և ձևակերպի կապտագոյն ։ 'Ի յարատաքսել հիւ
գին զվերջին շեալ նուաճքն որովայնի՝ զգայ ծանրութիւն
խէթ ինն 'ի սրբանն ( որ կոչի՝ Թէնէզմօ ) մինչ համա
ամենայն աղեացն արտաքս Թափել , և երբեմն ևս մ
ինչ փորատեաց 'ի գուրս ելանէ . որ և պատճառէ զվէ
անհնարինս , մանաւանդ երախայից ։ Երբեմն 'ի վե
հասանէ հեծկլտանք , խոնջութի , Թուլութի , ցամաք
մորթոյ , սառնութի ծարաւոյ , միզարգելութ , ցնցու
մկանանց և այլ պատահարք , որք ամոր են 'ի վերայ հ
սանել 'ի գիպուածս ախտին որ կոչի՝ տենդ ջղային կա
փտախառութի ։

'Ի դիպուածս արիւնաուշտ փորհարութե , որոյ նա
նական պատճառն գտանիցի լինել ուժգնութե բնութե
առաւել երևելի նշանքն են՝ ուժգին ցրրտութին , որու
արգէն զհետ գայ սաստիկ և անընդհատ ջերմութի , ար
գութի և լիութի , ևս խստութի զարկի բազկին , ուժ
նութի ցաւոց , որ ընդ ժամս ժամս 'ի վեր երևի 'ի փոր
տիս , և ախորժանք 'ի ժայթքել , ևս դժուարամիզութ
Զկնի այս ամենայն նշանաց 'ի վերայ գան անընդհա
խէթք 'ի սրբանն , բորբոքումն ինչ Թեթև 'ի միզանց խ
ղովակս , ջերմութի միզի , ցաւ ինչ պորտոյ և աղդերա
արագութի հոսման որովայնի , ևն ։ Յայսպիսի գիպուա
երևին յաւէտ մնասակար գոլ՝ քան օգտակար՝ գեղորայ
սեղմիչ , խթիչ , և զօրացուցիչ կոչեցեալք , որպիսի
ոգիաւոր հեղանիւթքն , ափիոնն , տիապքօստոն , Թի
րակէսն ևն ։ Տարբերի ախտս այս յախտէն՝ որ կոչի տիա
ուէտ . ըն որում ունի զոյգ ընդ իւր զսուր խմն ցաւ 'ի փ
րոտիսն , և ըստ որում կղկղանքն հասարակօրէն լինին մ
ղասախառն և արիւնաշաղախ ։ Դարձեալ՝ զանազանի յա
տէն՝ որ ասի մօռպօ քօլէռա . ըստ որում 'ի դիպուա
յայս փսխումն չէ այնքան դժնդակ , և ոչ ինչ կարի յ
ճախ ևն ։

Կայ և տեսակ ինչ արիւնաուշտ փորհարութե , կոչեցեա
յիտալացւոց՝ տիսէնթէռիա ասթէնիքա , որ պատահի
Թուլութէ կամ 'ի տկարութէ բնութեն , որոյ նշանքն ե
Թուլութին կենսական զօրութե , փոքրութին և անհ
ւասարութին զարկի բազկին , նուաղութին և տհասու
միզի , դողութին ջլաց , և ցնցականութիւն ձգանաց , և
ռանի շարժաղութին մկանանց , ուժգին ցաւն փորոտեա

ցնորումն խելաց, և նուաղումն սրտի: Զկնի այս ամե-
նայն նշանաց 'ի վերայ գայ գժնդակ ցաւ ինչ աղեաց և
սրբանին, հեծկլտանք, կարմրութիւն աչաց: Կղկղանքն
կամ յաւելուածքն որովայնի 'ի սկզբան անդ լինին խոշո-
րակ, առատ և արիւնաշաղախ. բայց 'ի վախճանի սկսա-
նին գլխովին արիւնոտիլ և դարշահոտիլ, և նրբագոյն
թելանման նիւթս արտաքս հոսել: Երբեմն արտահանին
յորովայնէ ճճիք կամ որդունք կամ 'ի ստորուստ և կամ
'ի վերուստ, և երբեմն 'ի վեր երևին խաղաւարտք և բիծք
կապուտակ կամ սեաւ 'ի մորթս մարմնոյ, և վէրք խժային
'ի խոռոչս բերանոյ, և այլ պատահարք, որք սովոր են
'ի վերայ հասանել 'ի դիպուածս ախտից՝ որք կոչին միլիա-
ռէ, և թիֆօ, որք են ախտք ինչ վտանգաւոր և տարա-
փոխիկ:

Այս տեսակ արիւնռուշտ փորհարութե հասարակօ-
րէն պատահի ծերոց և փափկակեաց անձանց, և ևս նո-
ցա՝ որք կրեալ են զախտն կոչեցեալ սքօռպութօ, և
կօթթա, և կամ զօրպխսի և իցէ այլ ախտս: Յորժամ
գոյնն երեսաց ախտակրին լինի կապտագոյն, զազրատե-
սիլ, և գարշելի դիշահոտս արտաքս բուրէ, ցուցակ է մե-
ծի տրտմալից վտանգի, որովհետև հաւաստեաւ գուշակ
են փտախտութե, և քաղցկեղի: Դարձեալ, երկիւղալի
իմն նշան է, յորժամ հիւանդն իսկ և իսկ զկնի ընդունե-
լոյ զգրեխն արտահանէ զնոյնս. բայց ամենաչար և առա-
ւել երկիւղալի նշանն այն է, յորժամ գլխովին փակեալ
լինին ճանապարհքն փորոտեաց, և անհնարին լինի մուծա-
նել 'ի ներքս զգրեխս: Դարձեալ, յանկարծօրէն դադա-
րումն ցաւոց փորոտեաց և սրբանին, անընդհատ հեծկլը-
տանքն, ժանկագոյն փսխումն, կարի ցրտութիւն ձեռաց
և ոտից և բոլոր մարմնոյ, ցուրտ քիրտն, անձկութիւնն,
ցնորումն, սաստիկ ցամաքութին բերանոյ և ոսկորոյ, կարծ-
րութին և չորութին լեզուի, կերկերումն ձայնի, յաճա-
խակի ուշագնացութին, և դժուարութին 'ի կլանել, են
անշուշտ նշանակ մօտալուտ մահուան:

'Ի վախճանի, ախտս այս պատահեալ ծերոց, երա-
խայից, և ծննդական կանանց՝ միշտ լինի վտանգաւոր:
Բայց ոչ այսպէս 'ի դիպուածս ախտին, որ կոչի՝ տիսէն-
թէրիա պիանքա. քանզի յայնժամ հիւանդն ոչ արտա-
թորէ զկաթիլս ինչ արեան ը̃ կղկղանաց. վասն որոյ զերծ
լինին 'ի քաղցկեղային վտանգէ: Այլ գիտել արժան է,
զի արիւնռուշտ փորհարութիս, և այլ հոսմունք որովայ-
նի երկարատևութե կամ գործածութեամբ ներհակական

դեղորէից մարթին փոխարկել 'ի զրգռողութիւն և յառաջ-
կանութի :

Կառավարութիւնք 'ի վար արկանելիք 'ի դիպուածս արիւ-
նաւոր թքհարութեան կամ արիւնախառն որովայնալուծութեան :

'Ի դիպուածս ախտիս չիք ինչ առաւել աչառանի և օգտակար քան զմաքրութի. քանզի 'ի ձեռն այսր մաքրութե մեծապէս նպաստ ընծայի հիւանդին, և ոչ սակաւ շահաւէտ լինի առողջութեան նորին մերձակայից. վա որոյ հարկ է ստէպ ստէպ փոխել զհանդերձս ախտակրին, և չէ պարտ բնաւ թողուլ 'ի սենեկի անդ զկղկղանս որովայնի. այլ հարկ է փոյթ ընդ փոյթ ընդ հողով ծածկել զայն : Օրէն է 'ի մէջ սենեկի նորին միշտ շըջշըջել զօդ իմն զովացուցիչ և առողջարար, և ստէպ արսկել զքացախ կամ զսուկօ տի չէտրօ, և կամ զայլ ինչ և իցէ սաստիկ հոտաւէտս : Արժան է զգոյշ լինել` զի մի՛ անյոյս առնիցէ հիւանդն զառողջութէ իւրմէ, այլ բառնալ պարտ է 'ի մտաց զերկիւղ մահու :

Բազում անգամ փորձիւ ծանուցեալ է գերազանց ներգործութիւն Ֆլանելլաի, որ է ազգ ինչ ասուոյ, զոր սովոր են զգեցուցանել 'ի վերայ մերկ մարմնոյն, պատճեալ բովանդակ զկէս մարմնով, որով գրգռի և շարժի քիրտն և շոգին առանց իրիք մեծապէս ջերմութե պատճառելոյ : 'Ի դիպուածս յայս պարտ է հրաժարել 'ի մըսոյ, 'ի ձկանց, 'ի խաւարտից, և յայնմ ամենայնէ, որք պատճառեն զնեխութի կամ զփտութի : Սերկեւիլն, նուռն, և հիւթն քաղցր նարնջոյ, եւս թալմ կամ չոր զողալն` են պատշաճաւոր ուտելիք 'ի դիպուածս յայս : Բրինձն, բանկլայն եփեալ լոկ ջրով` են պատշաճաւոր կերակուրք. նոյնպէս և օսլայն և ալիւրն ցորենոյ, որք ոչ միայն են պատշաճաւոր կերակուրք, այլ միանգամայն և դեղք, զոր պարտ է 'ի վար արկանել յետագայ եղանակաւ : Ա՛ռ հինգ կամ վեց բուռն օսլայ կամ ալիւր, լուեա 'ի փոքր մանրամաղ, և թո՛ղ եռալ բաւականաչափ ջրով կմ կաթամբ իբր հինգ կմ վեց ժամս, մինչև 'ի ցամաքիլն. ապա առեալ 'ի սմանէ երկուս կմ երիս գդալս եռացո՛ վերըստին բաւականաչափ ջրով կամ կաթամբ, մինչև ցպարիք մածանիլն, և լինի կերակուր հաստարակօրէն յոյժ սնուցիչ և վայելուչ ախորժակի հիւանդին. զոր մարթ է առնուլ 'ի կեր կամ շաքարաւ, և կամ կինամոնիւ :

Առաւել պատշաճողական ըմպելիք 'ի դիպուածս յայս`

են ջուրն կմ՟ խաշուն բրնձոյ, և սիէռօ տի լաթթէ՝ այս-
քնքն շիճուկն կաթին, որոց գործածութեամբն յոլով
անգամ եղև ապաքինութիւն ախտիս։ Դարձեալ, ջուրն
խորովեալ հացի, կամ աւէնայի, և կամ ջուրն՝ յորոյ 'ի
միջի շիջուցեալ է հրացեալ երկաթն, են յաջողագոյն
ըմպելիք։ Նոյնպէս Թրմոցն երիցկի, զոր ասեն՝ ինֆու-
զիօնէ տի քամօմիլլա, է դեղ իմն ազնուագոյն և կարի
օգտաւէտագոյն 'ի դիպուածս յայս, եթէ ստամոքսն կա-
րասցէ տանիլ. զի ունի մասնաւոր իմն զօրութիւն փարա-
տելոյ զքաղցկեղն փորոտեաց։

## Յաղագս հնարից և դեղորէից այսորիկ ախտի։

Հնարք և դեղորայք այսորիկ ախտի հանապազ կշռե-
լիք են ըստ պատճառացն, յորոց ծագի ախտս։ 'Ի դի-
պուածն, յորում նախնական պատճառն գտանիցի լի-
նել ճիգն բնութեան, կամ կենսական զօրութեան, պարտ
է երակ հատանել ըստ պահանջելոյ հարկին 'ի սկզբան
անդ հիւանդութեան, և թողլ տալ արեանն հոսիլ իբր չորս
կամ հինգ ունկիս. բայց նկատել արժան է միշտ 'ի պա-
րագայս անձին, զորօրինակ 'ի սաստկութիւն ցաւոց, ջեր-
մութեան, և այլ նշանաց, 'ի հասակն, 'ի խառնուածն, և
'ի զօրութիւն, ևս յուժեղութիւն և 'ի յաճախութիւն զարկի
բազկին, յանզգայութիւն ստորին որովայնի, և յուժգնու-
թիւն ցաւոց աղեաց և որքանին։ Եւ յետ այնորիկ պարտ
է առնուլ 'ի կիր իբէքաքուանա, որոյ ներգործութիւն դիւ-
րացուցանի՝ պատրաստելով թեթև ինֆուզիօնէ տի քա-
մօմիլլա. բայց դուն ուրեք պահանջի 'ի դիպուածս ախ-
տիս սաստիկ և զօրաւոր փսխողականն. առ որ բաւական
է հասարակօրէն 24 կամ շատ ևս 30 կշիռ ցորեան իբէ-
քաքուանա վասն միոյ չափահասակի։ Իսկ երբեմն բա-
ւական լինի 10 կամ 12 ցորեան միայն։

Յերկրորդում աւուր զկնի փսխողականին օրէն է տալ
հիւանդին 'ի 30 կշիռ ցորենոյ՝ մինչև 948 ցորեան՝ ռա-
պարպառօ 'ի պահ առաւօտուն։ Եւ յետ այնր պարտ է
մինչև ցքանի ինչ աւուրս տալ նմա սակաւաքանակ իբէ-
քաքուանա, զորօրինակ երկու կամ երեք կշիռ ցորեան՝
յոր պարտ է խառնել դգալ մի սիռուբ բաքավէռօ պի-
անքօր, և յաւուրն երկու անգամ տալ հիւանդին, մինչև
լիցի վեց ցորեան յաւուրն։ Այս դարմանատարութիւն
բաւական է հասարակօրէն 'ի պատճառել զառողջութիւն.
բայց եթէ դէպ լինի երբեմն անբաւական լինել այդմ,

յայնժամ պարտ է ձեռնամուխ լինել 'ի կիրառութեն առաւել թուլացուցիչ և զովացուցիչ դեղորէից. որպիսի են թամարինտի, մաննա ևն: Նոյնպէս 'ի գործ արկանել արժան է յամենայնում երեկոյի զրեխ պատրաստեալ օլախէ կամ բրնձով:

Իսկ եթէ գործածութիւն այսոցիկ դեղորէից չիցէ հնար ստանալ զբաղձացեալ ներգործութիւն և զօգուտն, յայնժամ օրէն է զսպունգ գաղջ ջրովն մոլոշի և կտաւատի թացեալ դնել 'ի վերայ այնր մասին որովայնի, ուր առաւել զգայ զցաւն: Յորժամ ախտս այս պատճառի 'ի ցրտոյ կամ յարգելականութէ արտաշնչութէ մարմնոյ, պարտ է ախտակրին պահել զանձն ջերմապէս, և ըմպել առատօրէն զխաշու սամպուքօի, և մելիսաէի, և դնել զոտս և զձեռս 'ի մէջ ջերմ ջրոյ: Իսկ 'ի դիպուածս, յորում ախտս ծագի և յառաջ գայ 'ի թուլութէ բնութեն, յայնժամ կոչի՝ տիսաէնթէրիա ասթէնիքա, որոյ առաւել պատշաճագոյն և օգտաւէտագոյն դեղորայքն են՝ ափիոնն, և խէժն արաբիոյ, որ այսպէս յօրինի: Առ կէս ունկի խէժ արաբիոյ, մի և կէս տրամ շաքար սպիտակ, և տրորեա զայս 'ի մէջ քարեայ անկանի, արկանելով 'ի նա և զհինգ ունկի հասարակ ջրոյ. յոր յաւել և 24 շիթ՝ լաւտանօ լիգուիտօ: Եւ զայս պարտ է առնուլ յերեկոյեան պահու 'ի մտանելն յանկողին: 'Ի դիպուածս յայս հրաժարել պարտ է 'ի թուլացուցիչ և 'ի զովացուցիչ դեղորէից: Եւ յետ այնորիկ պարտ է զսպունգ ջերմ գինեաւ թացեալ դնել 'ի վերայ այնր մասին որովայնի, ուր առաւել զգայ զցաւն: Պարտ է երկու անգամ յաւուրն զրեխ պատրաստել օսլախէ, կամ արգանակաւ թաղամաւորեալ ոչխարի, յորոց վերայ յաւելուլ արժան է 30 կամ 40 շիթս՝ լաւտանօ լիգուիտօ: Գաղջ բաղանիքն յոյժ օգտակար է, եթէ իցէ հնարաւոր:

Արդ՝ յորժամ այսոքիկ հնարք և դեղորայք լինին անօգուտ և անբաւական 'ի բուժել զախտն, յայնժամ օրէն է մատուցանել հիւանդին չորս անգամ յաւուրն մշկահոտ ընկուզաչափ՝ քոնֆէցիօնէ ձիաքքօնէզէ կամ տիասքօրտիօ, և զկնի տալ ըմպել սկահակ մի տրձոյ տէքօցիօնէ տի քամբաձձիօ: Մարթ է և ս 'ի վերայ որովայնի դնել յաճախակի զսպեղանիս, որ ասի՝ սէնափիզմօ: Այլ եթէ ցաւն փորոտեաց կամ աղեաց չփարատի գործածութիւն վերոյիշեալ դեղորէից, յայնժամ պարտ է առնուլ 'ի կէր զվէշիքաթօրիօ, դնելով 'ի վերայ ցաւագնեալ մասին որովայնի:

Յոլով ինչ կայ տպացեալ և գրեալ զընտրութենէ խըթիչ և սեղմիչ դեղորէից, որոց պատշաճագոյնքն են մօսքուս օռիէնթալիս, նօչէ մօսքաթա, կինամոնախառն գինի, քափուրն, ևն. և սակայն ճշգրիտ է, թէ չիք կանոն ընդհանուր, որ պատշաճեսցի զինչ և իցէ կլիմայի, դրից երկնից, ազգի և կմ ո՛ւմ և իցէ անհատի: Ափիոնն, որ թէպէտ ուժգին խթիչ է և սեղմիչ բնութ., և առաւել ճահողագոյն վասն այսր ախտի, սակայն 'ի ջերմագոյն գաւառս, որպէս ուսուցանէ մեզ փորձառութիւն, վնասակար է ստէպ և առատ գործածութիւն նորին: Բըժիշկք անգղիոյ՝ կարի իսկ քաջ նախադասեն քալօմէլանօս և մէռքուրիօ տօլչէն վասն այսր ախտի, նաև վասն հոսման լերդի. նմին իրի քաջայայտ է, թէ չիք կանոն ընտրութեան դեղոց՝ առանց ինչ ամենևին բացառութեան, զոր առ ամենեսեան հաւասարապէս հնար իցէ մերձեցուցանել առ 'ի գործածութիւն:

Յերկարատևեալ մնալ այսոցիկ ախտից, և 'ի հասանել 'ի յետին աստիճան, յայնժամ ասի՝ տէսսէնթէռիա քռօնիքա, որոց դարմանք չեն ինչ տարբեր 'ի դարմանոց այլոց երկարատև սուր փորհարութեանց, որ կոչի՝ տիառռէա քռօնիքա. տես երես 277: Մակարդեալ և մածուցեալ արգանակն ոչ միայն պատշաճաւոր կերակուր է 'ի դիպուածս յայս, այլ միանգամայն և դեղ. քանզի ականատես եղէ, եթէ յետ անօգուտ ելանելոյ այլ ամենայն դեղորէից, 'ի ձեռն արգանակիս ևեթ եղև առաքինութիւն ախտիս: Կերպն կազմելոյ զարգանակս: Ա՛ռ զգլուխ և զոտս թաղամաւորեալ ոչխարի, հանդերձ մորթովն, և ըղըղուրդն կիզեալ հրով, թող եռալ մինչև արգանակն լինի մածուցիկ, և յետոյ յաւել 'ի նա սակաւ ինչ կինամոն, որով համեղանայ, և տուր ուտել երկիցս կմ երիցս անգամ յաւուրն սակաւ ինչ խորովեալ հացիւ:



# ԳԼՈՒԽ Լ.

Յաղագս ախտին՝ որ կոչի էմօռռօիտէ. այսինքն Թանչք, կամ Թթախոփոռոթի, որ և ոչ էմօռռօիտէ լինէր, այսինքն կոյր Թանչք։

## ՅՕԴՈՒԱԾ Ա.

Ախտս այսմ ենթակայ է բնութիւն մարդկային յոր և իցէ հասակի, և ըստ բովանդակ անդամոց մարմնոյ. ուստի մարթ է 'ի վեր երևիլ 'ի ծածուկ անդամս, եթէ արուի, և եթէ իգի, 'ի սրունս, 'ի նեարդս, և յերակս, 'ի ներքոյ լեզուին, ևն. և արտաքին իսկ հոսիլ յաչաց, յականջաց, 'ի շրթանց, 'ի լնդերաց, և յայլ ամենայն մասանց բերանոյ, 'ի ստեանց, 'ի պորտոյ, յերանաց, յանթոց, 'ի ծայրից մատանց, 'ի ռնգաց, 'ի ստամոքսէ, 'ի փորոտեաց, և յայլ ընդերաց։

Բայց գիտել արժան է, նախ եթէ այդպիսի դիպուածք հազիւ երբէք պատահին. և այն ո՛չ այնքան վտանգաւորք։ Երկրորդ գիտել արժան է, զի 'ի դիպուածս ախտիս՝ մինչ հոսումն արեան չլինիցի այնքան սաստիկ և յորդառատ, չէ՛ օրէն արգելուլ զայն, մանաւանդ եթէ յառաջ գայցէ 'ի դիպուածս հրատապ ջերմախտից, կամ տենդից. ապա թէ ոչ՝ յարգելմանէ այնր հոսման բորբոքի ուղեղն, և պատճառեսցին այլևայլ ախտք վնասակարք և վտանգաւորք։ Թէպէտ դժուարին իմն է կանոնաւ որոշել եթէ մինչև ցե՞րբ պարտ իցէ թողուլ տալ հոսման այնպիսի արեան. որովհետև որպէս փութով զադարեցուցանելն, նոյնպէս և առատապէս հոսիլն է վնասակար. վասն որոյ պա՛րտ է նկատել, զի եթէ 'ի հոսմանէ արեան պատճառի նուաղումն սրտի, յայնժամ օրէն է 'ի գործ արկանել զդեղս առ 'ի խափանել զայն։ Բայց ըզպարբերական Թանչքն, այսինքն զայն որ բնութեամբ շարժեալ յորպիսի և իցէ մասանց մարմնոյ հոսեսցի, չէ՛ բնաւ օրէն գլխովին դադարեցուցանել. քանզի գլխովին դադարումն նորին՝ բազում անգամ վտանգաւորէ զկեանս. այլ պա՛րտ է մեծաւ զգուշութեամբ չափաւորել զառատելութեն հոսման նորին. որովհետև չափաւոր հոսումն նորին օգտ-

փէ և թեթևացուցանէ զբնութիւնն , և չէ՛ պարտ բնաւ նկատել 'ի պարագայս տկարութեն , և զօրաւորութեն բնութեն , որք չունին տեղի յայսմ դիպուածի , և են նշանք անստոյգք :

'Ի վախճանի դիտել արժան է , եթէ հոսումն թանչից սովորաբար 'ի տիս մանկութե՝ լինի 'ի ռնգացն . 'ի հասակի երիտասարդութեան՝ ընդ բերանն ելանէ հանդերձ թքովն . իսկ 'ի ծերութե հասակի խառն ընդ միզի : Առաւելապէս ենթակայ ախտիս , են անձինք որք վիճակեալ են արիւնային , և մաղձային խառնուածոյ , ևս նոքա՝ որք բնութ՟ են զօրաւորք , բարկասէրք , գինեմոլք , և որք վարեն զփափկասէր կեանս , և կմ՟ են ըմբռնեալք յախտէն՝ որ կոչի պօդագրութօ , ևս 'ի սաստիկ աշխատանաց :

Պատճառք ախտիս :

Բազմակերպ են պատճառք ախտիս , երբեմն յառաջ գայ 'ի կազմուածոց մարմնոյ , մանաւանդ՝ եթէ լինիցի այն արիւնային խառնուածով յօդեալ , 'ի թուլութէ անօթոցն , ևն : Երբեմն ևս 'ի սահմանաւորութէ կամ 'ի հոսելոյ արեան 'ի մասն ինչ մարմնոյ . զորօրինակ 'ի գլուխն , յերակսն թանչից ևն : 'Ի լուծողութէ արեան , յախտիցն որք ասին՝ պօդագրութօ , և պիսակ , յընդերկար գործածութէ դեղոց , որք զարիւնն լուծանեն . որպիսի են քանթէրուէլլէ անուանեալ ճանճքն , թաչական ալքալի աղքն , թթու և տտիպ կերակուրքն , և զօրաւոր և սաստիկ լուծողականքն , և փսխողականքն , որք զայրացուցանեն զփորոտիսն . Նոյնպէս պատճառի ախտս այս 'ի սաստիկ կրից բնութե , 'ի հոսմանէ արեան 'ի ռնգացն գլխիվայր 'ի կախ մնալոյ :

Դիպուածն , յորում ախտաւորն թքանէ զարիւն հոսեալ 'ի լերդէ , յերիկամանց , 'ի ստամոքաց , 'ի թոքոց , 'ի փամփշտէ , է յոյժ վտանգաւոր , և երկիւղալի : Իսկ առ սեռս կանանց՝ եթէ հոսեսցի 'ի յարգանդէ , և 'ի ռնգացն յառաջքան զյղութիւն , չէ՛ վնասակար , այլ առաւել օգտակար , և ազատէ 'ի ծանր հիւանդութենէ : Իսկ դիպուածքն , յորում թքախտութիւնն պատահմամբ յառաջ գայ 'ի հարկանելոյ , կամ յանկանելոյ , ևն , չեն այնքան երկիւղալից . բայց հոսումն տեւատեսական , որ 'ի ստամոքսէ , 'ի լերդէ , կամ յայլ ինչ ճանապարհէ , կարօտի խնամատարութե . ապա թէ ոչ՝ յառաջ գայ առ-

տի՝ ուռոյցն երեսաց, ախտն ջրգողութեան, կամ ախտն ծիւրական և կամ նուրբ ախտն:

Յաղագս դարմանոյ և խնամատարութեան ստամոքին ախտի:

Դարման այսորիկ ախտի միշտ պարտի լինել համեմատ պատճառացն, յորոց յառաջ գայ: 'Ի դիպուածն, յորում թանչքն պատճառի 'ի յորդառատ հոսմանէ կամ 'ի բորբոքմանէ արեան, պարտ է երակ հատանել, և 'ի գործ արկանել թեթևագոյն լուծողականս: Պարտ է ախտակրին հրաժարել յամենակերպ ոգիաւոր ըմպելեաց, 'ի թթու ջերմացուցիչ, և 'ի զայրացուցիչ կերակրեղէնաց, և յաշխատանաց: 'Ի դիպուածս, յորում յառաջ գայ ախտս յապականութենէ և 'ի լուծմանէ արեան, յայնժամ պատշաճ է ուտել զթթու միրգս բաղադրեալս՝ կաթամբ, ևս սակաւ ինչ սալէպ, և 'ի գործ արկանել բարեխառն գինի, պատրաստեալ լեմոնիւ, կամ սպիրիթօ տի վիթրիօլօիւ: Նոյնպէս յոյժ օգտակար է գործածութիւն չափաւոր քինա քինայի:

Այլ եթէ պատճառի ախտս 'ի գործածութենէ սաստկագոյն և զայրացուցիչ գեղորէից, յայնժամ ընդ հակառակն պարտ է 'ի գործ արկանել զբարեխառն, զախորժարար, և զքաղցրացուցիչ գեղորայս, ևս ըմպել յաւուրն բազում անգամ ☐ չափու միոյ հնդկային ընկուզի պալասմն լօքաթելլի, կամ նոյնչափ սքէրմաչէթի: Այլ 'ի դիպուածս, յորում թանչքն յառաջ գայ յարգելմանէ արտաշնչութեան մարմնոյ, յայնժամ արժան է 'ի գործ արկանել կակղացուցիչ ըմպելիս, և անձնապահ լինել 'ի ցրտոյ, և յաշխատանաց. թանալ զոտս ջերմագին ջրով, և 'ի գործ արկանել զնոյն վերոյիշեալ պալասմն կամ սքէրմաչէթին:

Գիտելի է եթէ բազում անգամ յոմանս դիպուածըս առողջարար և շահաբեր լինի հոսումն թթախառական արեան, որպիսի են՝ դիպուածքն գլխացաւութեան, լուսնոտութեան, հրատապ և հանապազօրեայ ջերմախտից, բորբոքման թոքոց, փայծեղան, և փամփշտի, մանաւանդ յօդուածացաւութեան, և փողացաւութեան: Նոյնպէս առողջարար է ևս անձանց, որք վիճակեալք են արիւնային բընութեանց: 'Ի վախճանի դիտել արժան է, եթէ յոր և իցէ դիպուածի՝ յորում հարկ լինի երակ հատանելոյ, հոսումն արեան 'ի ռնգացն բարւոք և օգտաւէտ է, եթէ հոսեսցի ☐ չափու արեանն՝ զոր հանդերձեալ էր հանել

յերակայն ։ Բայց 'ի վերայ այսր ամենայնի՝ մեծի խոհականութեան պէտք են առ 'ի քաջ ճանաչել, եթէ յորում դիպուածի արժան իցէ թոյլ տալ կամ արգելուլ զհոսումն արեան 'ի ռնգացն ։ Հասարակօրէն պարտ է թոյլ տալ հոսմանն 'ի դիպուածս ախտի բորբոքողականի, և կամ ջերմախտի, և չէ օրէն դադարեցուցանել զայն, ցորքան չիցէ ինչ նշան տկարութեան յախտաւորն ։ Այլ եթէ կայցեն այսպիսի նշանք, այսինքն տկարութիւն կամ նուաղումն, ցուրտ քիրտն, պտտումն գլխոյ ևն, յայնժամ պարտ է փութով արգելուլ զհոսումն արեան, թէ և իցէ յոյժ սակաւ ։ Զհոսումն արեան 'ի ռնգացն՝ 'ի քաջառողջ և յարիւնային անձինս չէ օրէն փութով արգելուլ, ցորքան չգտանիցին յետագայ նշանքս․ այսինքն թուլութիւն ախտաւորին, դեղնութիւն շրթանց, պաղիլն ծայրից մատանց, ևն ։ Իսկ եթէ գտանիցին այսպիսի նշանք, հարկ է անվրէպ դադարեցուցանել զայն ։

### Յաղագս Թէ որո՞վ եղանակաւ պարտ է դադարեցուցանել զհոսումն արեան 'ի ռնգացն ։

Յայսմիկ դիպուածի պարտ է զախտաւորն ընկողմանեցուցանել 'ի վերայ թիկնամիջին, և դնել զոտս և զձեռս 'ի մէջ ջերմ ջրոյ, կամ կաթին կովու, ևս կապել միանգամայն ամրապինդ զարեան երակսն, և իբրև սակաւանայ արիւնն, յայնժամ պարտ է թուլացուցանել առ սակաւ սակաւ զկապսն ։ Մարթ է ևս ղքամբակ կտաւ մուծանել 'ի ներքս 'ի ռունգսն, կամ վիթրիօլօ չէրուլէօ լուծեալ 'ի մէջ ոգւոյ գինւոյ կամ օղւոյ, և խառնեալ ընդ նմա զսպիտակուցն ձուոյ, թաթախեալ զկտաւն՝ և 'ի վերայ ցանեալ գոյզն ինչ նապաթ շաքար, և վիթրիօլօ չէրուլէօ, կամ կիզեալ պաղլեղ, մուծանել ևս զայն անդր, ուստի հոսի արիւնն ։

Յայսմիկ դիպուածի չեն այնքան շահաւէտք ներքին դեղորայք, որովհետև ո՛չ մնայ ժամանակ ներգործութեան նոցին․ սակայն մարթ է և օգտակար իսկ է երբեմն պատրաստել կէս ունկի սալ ար քլատուպէռօ, և մի և կէս ունկի մաննա, չորս կամ հինգ ունկի գարւոյ ջուր՝ լուծեալ զայս, և 'ի գործ արկեալ միանգամ կամ երկիցս 'ի միում ժամու․ եթէ ոչ ցուցանէ զներգործութիւն փութով, յայնժամ մարթ է տալ ախտաւորին ըստ առնելոյ ստամոքսի նորին 12 կշիռ ցորեան նիթրօ՝ ըմպանակ մի ցուրտ ջրով, խառնեալ 'ի վերայ սակաւ ինչ քացախ ։

Իսկ եթէ ախտակիրն հարկեսցէ ըմպել զայլ ինչ սառնագոյն գեղս, տո՛ւր նմա ըմպել յամենայնում ժամու մի բաժակ ջուր հասարակ, խառնեալ ընդ նմա երեք կամ չորս չիթս՝ էլիսիրէ աչիտօ տի հալլէռօ, և փոքր ինչ սէռուփ: Նոյնպէս գործածութիւն սպիրիթօ տի վիթրիօլօ տօլչէի՝ է յոյժ օգտաւէտ, զոր մարթ է 'ի կիր առնուլ 'ի 20 չիթէ մինչև ց30 չիթս, 10 կամ 12 անգամ յաւուրն 'ի մէջ միոյ փոքրիկ դրդալի օգւոյ վարդի. և 'ի պակասելն այսոցիկ դեղորէից, 'ի գո՛րծ արկ փոխանակ սորա զաղի ջուր կամ զքացախախառն ջուր:

Դարձեալ, մարթ է դիւրաւ դադարեցուցանել զհոսումն արեան 'ի ռնգացն. եդեալ զծածուկ անդամսն՝ հանդերձ ամորձեօք 'ի մէջ բարկ քացախոյ, կամ ցրտագոյն ջրոյ. և այսմիկ հնարից ուր ուրեմն մարթի վըստահել: Իսկ 'ի դիպուած, յորում արիւնն դադարեալ արտաքուստ՝ սկսանի հոսիլ 'ի ներքուստ, պա՛րտ է յոյժ երկնչիլ և զգոյշ լինել. մանաւանդ 'ի քուն լինելն, զի մի՛ ախտակիրն խեղդամահ լիցի: Այլ եթէ գուցէ այդպիսի վտանգ խեղդման 'ի յորդուէ արեան հոսելոյ 'ի կոկորդն, յայնժամ պա՛րտ է փութալ 'ի խնուլ զճանապարհն զայն: Ա՛ռ երկու թել, և կապեալ 'ի մի ծայրն սակաւ ինչ բամբակ, մո՛յծ 'ի ռնգունս, և անցուցեալ զմիւս ծայրն 'ի բերանոյ, քարշեա՛ մինչև բամբակն 'ի ներքս երթիցէ, և պնդեալ կապեա՛ զերկու ծայրսն 'ի միմեանս. և երբ դադարի արիւնն, պա՛րտ է նստուցանել զախտակիրն 'ի բարձր, թողեալ զգլուխն առանց իրիք աշխատանաց. և չէ՛ օրէն բնաւ լուանալ զարիւնն, որ ժողովեալ է 'ի ռնգունս. այլ պա՛րտ է թողուլ, մինչև ինքնին անկցի բամբակն:

Իսկ անձինք՝ որոց սովոր պատահի հոսումն արեան 'ի ռնգացն, պարտին միշտ լուանալ զոտս ջերմ ջրով, և ջերմ և չոր պահել զայնս. չէ՛ օրէն բնաւ կապել զպարանոցն կամ զգլխակոր նստիլ. կերակրոցն նորին պա՛րտ է լինել խոտեղէն, և այլ զովացուցիչք. գործածութիւն լուծողականայն երբեմնապէս է յոյժ օգտակար: Այլ եթէ հոսումն արեան 'ի ռնգացն յառաջ դայցէ 'ի լուծմանէ արեան, յայնժամ կերակրոցն պա՛րտ է լինել սնուցօղական. զորօրինակ են պարարտագոյն արգանակքն, ճէլաթինէ տէ քուէմօռի տի սակօու, սակաւ ինչ գինեաւ, և շաքարաւ. եւ ինֆուզիօնէ տի քինաքինա 'ի մէջ գինւոյ. զոր պա՛րտ է 'ի գործ արկանել ընդ երկար ժամանակ:

'Ի վախճանի գիտել արժան է, եթէ բացարձակապէս խօսելով՝ հոսումն թթախտական արեան օգտաւէտ է քան

զայլ ամենայն հողմունս, և ոչ է այնքան երկիւղալի (բաց 'ի վերոյիշեալ դիպուածոց, յորում ասացաք, եթէ 'ի սաստիկ հողմանէ արեան պատճառին այլ և այլ ցաւք ախտակրին. որպիսի են տկարութիւն, այտուցն երեսաց, նուրբ ախտն, ևն.) որովհետև գոն բազումք, յորոց յամենայնում աւուր հօսին երկու կամ երեք ունկի արիւն, և բնաւ ոչ կորուսանեն զհանգստութիւն: Պատմի. եթէ յառնէ ումեմնէ յամենայնում աւուր հոսէր մէն մի լիտր արիւն, յարատևեալ մինչև 'ի չորս ամս, առանց բնաւ ինչ վնաս գործելոյ: Նոյնպէս ականատես եղաք հոսիլ յումեմնէ կնոջէ 'ի մէջ սակաւ աւուրց 25 լիտր արեան, առանց իրիք վշտի և վտանգի:

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

### Յաղագս չոր կամ կոյր թանչից, որ ասի՝ էմօռռօիտէ սէքքէ, կամ չիէքէ.

Ի դիպուածս այսորիկ թանչից՝ բնաւ ոչ հոսի արիւն, բայց միայն այտոյց ինչ 'ի վեր երևի յերաստանս կամ 'ի թթախտականն անդամս: Սովորաբար յոյժ կարևոր և շահաբեր է երակ հատանելն յայսմիկ դիպուածի, զոր մարթ է ևս կրկնել ըստ պահանջելոյ իրացն, հայեցեալ 'ի պարագայս բնութե ախտակրին, զորօրինակ 'ի գիրս կազմուածոյ, 'ի խառնուածն, եթէ իցէ արիւնային, ևն: Կերակրոցն պարտ է լինել թեթև, և լոյծ. իսկ ըմպելեացն զովացուցիչ, և կակղացուցիչ: Մարթ է ևս առ 'ի կակղացուցանելոյ զորովայնն 'ի գործ արկանել սակաւ ինչ ֆիօռ տի սօլֆօ, և քռէմօռ տի թառթառօ, կամ մի. ունկի ֆիօր տի սօլֆօ, և կէս ունկի սալ նիթռօ, և երեք ունկի էլէթթուարիօ լէնիթիվօ խառնեալ իւրեարց՝ տուր ըմպել մէն մի գդգալ սրճոյ յաւուրն, երեք կամ չորս անգամ:

Այլ եթէ երակքն երաստանի լինիցին յոյժ սաստկապէս ուռուցեալք, մինչև չհոսիլ արեան գլխովին. յայնժամ պարտ է զախտակիրն բազմեցուցանել 'ի վերայ շոգեաց ջերմագին ջրոյ. մարթ է ևս արկանել 'ի վերայ երաստանի ախտակրին կտաւս թաթախեալս 'ի ջերմ սպիրիթօ տի վինօ, կամ յայլ կակղացուցիչ սմին նման իրս: Իսկ եթէ 'ի ձեռն այսոցիկ դեղորէից ոչ կակղանայ թանչքն, և չհոսի արիւնն, յայնժամ պարտ է 'ի գործ արկանել զհետագայ քաթաբլազմաս: Ա՛ռ չորս կամ

Վինդ. հատ կանանչ կանէթս պորինճանի, կամ փածլը-ճանի, և սակաւ ինչ ձէթն ձիթենեաց՝ խառնեալ իրերաց եփեալ բարերջ, և դիր 'ի վերայ վշտացեալ մասանցն։ Արդ՝ եթէ անօգուտ լինիցին տացեալ դեղորայքս, և բաւականապէս ոչ փարատեսցի ցաւն և ուռոյցն, յայնժամ պարտ է փութանակի տզրուկս դնել. մանաւանդ 'ի վերայ սատեանցն երաստանի, (որ ասի՝ մէմէ.) որ լինի ուռուցեալ շահաբեր։ Այլ եթէ ոչ կռուի տզրուկն, յայնժամ հարկ է ծակել նշտրակաւ։ Գոն ևս այլ բազում սպեղանիք, և դեղորայք 'ի գործ արկանելիք 'ի դիպուածս այսորիկ ախտի, բայց մեք ընտրանօք զառաւել շահաւէտականն միայն եդաք 'ի սակս համառօտութեան։

Իսկ 'ի դիպուածս, յորում ցաւն լինի յոյժ սաստիկ, յայնժամ պարտ է 'ի գործ արկանել զկետագայ կակղացուցիչ սպեղանիս։ Առ երկու ունկի ունկուէնթօ բօբուլէօ, և կէս ունկի՝ լաւտանօ լիգուիտօ, և զայսոսիկ ընդ միոյ դեղնուցի ձուոյ բարերջ խառնեա ընդ իրերաց, և դիր 'ի վերայ թթախտեալ մասին։ Գիտելի է աստէն. եթէ զվերոգրեալ կառավարութիւս ոչ է պարտ 'ի գործ արկանել յամենայն դիպուածի թանչացաւուն, յորում ոչ ելանէ արիւն. որովհետև գոն ինչ ինչ դիպուածք՝ յորս չիք բնաւ պէտք իրիք դեղոյ, որպիսի են՝ էմօռռօիտէ աքքաասիթա, այսինքն թանչք խամրեալ, որ բնաւ ոչ պատճառէ վիշտս ինչ։ Եւ էմօռռօիտէ սէմբլիչէմէնթէ թումիտա, այսինքն թանչք, յորում 'ի վեր երևի ուռոյց ինչ սակաւապէս, և ցաւ յոյժ սակաւ. որք և ոչ կարեն բնաւ լինել վտանգաւոր։ Իսկ դիպուածք յորս պէտս ունիմք գործածութեան վերոյիշեալ կառավարուն, և դեղորէից, և արտաքին սպեղանեաց, են այնք, յորս ընդ թանչացաւութեան գտանի նաև բորբոքումն ինչ. քանզի յայնժամ բաց 'ի սաստկագին ցաւոց պատճառելն մարթ է միանգամայն և տենդ ինչ դժնեայ, ուշաղնացութիւն, անդամալուծութիւն ևն. և միանգամայն մարթ է այտացիցն զայրացեալ փոխարկիլ 'ի քաղցկեղ։



# ԳԼՈՒԽ ԼԸ.

'Ի վերայ Թքման արեան, որ յիտալացւոց կոչի՝ սփուտօ դի սանկուէ, և 'ի վերայ փսխման արեան, որ ասի՝ վօմիտօ դի սանկուէ:

## ՅՕԴՈՒԱԾ Ա.

Թքումն արեան՝ է ախտ, կամ լաւ ևս Թանչք ինչ Թոքոց կամ արիւնակիր երակաց նորին. որ առ բժիշկս անուանի՝ բնէւմօնօռռաճիա, որ Թարգմանի Թոքա-Թանչք. և ունի համաձայնութիւն ընդ ախտին, որ կոչի ստօմաթօռռաճիա, որ ստուգաբանի ստամոքաթանչք: Անձինք նիհարք, որք ունին զերկայն պարանոցս և զլանջս անձուկս, և զմանրանօթս Թոքոց Թուլագոյնս՝ 'ի հասակէ հնգետասան ամաց մինչև ց35 ամս, են ենթակայ ախտիս այսմիկ. և ևս անձինք, որք վիճակեալք են սքօպութական ախտի և սևամաղձային խառնուածոց՝ են առաւել ենթակայ այսմիկ ախտի: Գիտելի է՝ զի եթէ արիւնս այս արձակի 'ի մանր անօթոց կամ յարիւնակիր երակաց Թոքոց՝ առանց ընթացակցութեան հազի, և այլ ինչ արտաքին ախտի, որպէս պատահի երբեմն, յայնժամ կարի դիւրաւ և փութով է դարմանելի և սպաքինելի: Նա եթէ արիւնս այս արձակի 'ի խռչափողէ, նոյնպէս մարթի դարմանիլ հեշտեաւ և առանց աշխատանաց: Բայց եթէ ծագի 'ի Թոքոց կամ յայլ խողովակաց նորին հանդերձ սաստկութեամբ հազի, և տագնապաշնչառութեան, յայնժամ ախտս այս լինի յոյժ որոգայթաւոր, և դժուարաբուժելի: Ախտս այս հասարակօրէն տիրապետէ 'ի գարնան եղանակի:

### Մասնաւոր պատճառք Թքման արեան:

Թքումն արեան մասնաւորապէս պատճառի 'ի տկարութենէ Թոքոց, և 'ի վատառողջութենէ գործարանաց շնչառութեան ևն: Հնար է ևս ծագիլ յայնմ ամենայնէ, որք զայրացուցանեն զԹոքս, որպէս 'ի չափազանց արբմանէ ոգիաւոր հեղանիւթոց, 'ի սաստիկ կրից և աշխատանաց, ևն: Մարթ է ևս յառաջ գալ 'ի վիրաւորմա-

նէ, 'ի ճմլեցմանէ և 'ի ճնշմանէ վերոյիշեալ գործարանաց, և ևս յարշաւատոյր ընթացմանէ, 'ի բարձրաձայն գոչմանէ, յերկարատև կարկաչմանէ և երգաբանութէ, 'ի սաստիկ և 'ի հնագոյն հազից, յուժգին տռփանաց պատճառ սիրոյ, յարգելականութէ իրիք սովորական հոսման, 'ի մետաղական գոլորշեաց որք ընդմտանեն 'ի թոքն շնչառութք: Դարձեալ մարթ է ևս պատահել 'ի խոցէ և 'ի պալարէ 'ի վեր երևելոյ 'ի թոքս և 'ի խռչափողս, 'ի բորբոքմանէ սրտի, թոքոց, և ստոծանւոյ, 'ի թոքաժետութէ, և 'ի հարբուխոյ իջելոյ 'ի կուրծս և 'ի թոքս. և միով բանիւ ասացից, ախտս այսմ մարթ է պատճառել յայնմ ամենայնէ, որք զգրգռեն զարիւնակիր երակս թոքոց, և արգելուն զշրջանս արեան:

Նշանք ախտիս այսորիկ:

Ուղղընթաց լինի ընդ ախտս խոնջութի, կարմրութի երեսաց, դժուարաշնչութի, հազ չորագոյն, անձկութի, զազրանի ջերմութի, ձգտումն, ցաւ գլխոյ, միջաց, և ստորին ոսկերաց կրծոց, ցրտութիւն ծայրից անդամոց, տժգունութի միզի, բաբախիւն սրտի, սուլումն խռչափողի. ցնցումն մկանանց կրծոց: Արիւնն՝ որ ելանէ ընդ բերանն, երբեմն լինի կարի սակաւ, լոյծ, և ծիրանագոյն, որ է գուշակ յայտնապէս ցելման կամ հերձման մանր արիւնակիր երակաց. և երբեմն ելանէ յորդ, որ է ցուցակ հերձման օդընկալ խողովակաց: Իսկ եթէ նոյն արիւնն լինի աղտոր, մաղասախառն, և նեխեալ, նշան է խղխայթման թոքոց:

Նշանք վատթարագոյնք և ձախորդականք՝ են ջերմութիւն անընդհատ, թուլութի, տառապանք կամ նեղութի կրծոց, հազ երկարատև և սաստիկ, առատութի կմ նաև բոլորովին դադարումն հոսման արեան, ցրտութին ծայրից անդամոց, նուաղումն սրտի, ցնցումն մկանանց կրծոց, ժայթքումն, 'ի վեր երևումն նշանաց մաշարայական ախտի կամ թոքախտութե: Բայց գիտելի է, եթէ ենթակայն իցէ քաջառողջ կազմուածոյ վիճակեալ, հասարակօրէն է հեշտեաւ ապաքինելի, և ընդ հակառակն մեծապէս վտանգաւոր և երկիւղալի է, եթէ կազմուածքն իցէ յոռի, և լանջքն նեղ և անձուկ: 'Ի վախճան ամենայնի՝ յղի կանայք ևս են ենթակայ ախտիս այսմիկ:

## Խնամատարութիւնք 'ի վար արկանելիք 'ի դիպուածս Թքման արեան :

Րնութեան է անկ նախ քան զամենայն կանոնադրել զկինքն յուտելիսն և յըմպելիս . վասն որոյ օրէն է հիւանդին միշտ 'ի կիր արկանել զըմպելիս բարեխառն , որպիսի են ջուրն գարւոյ , կամ վարսակի , և կամ յունապի , չփձուկն կաթին են : Կերակրոցն պարտ է լինել քաղցրացուցիչ , զովացուցիչ և սնուցիչ , որպիսի են թեթև արգանակն մսոյ կաթնաթանն , հացաթանն , և ընտիր գարւոյ թանն , ևս կաթն այծու , են : Պարտ է ախտակրին անձնապահ լինել յայնմ ամենայնէ , որք բորբոքեն և զայրացուցանեն զարիւնն , և դնել զոտս և զձեռս 'ի մէջ ջերմ ջրոյ , և ցամաք պահել զայնս . չէ օրէն բնաւ կապել զմէջս և զպարանոցս . և արժան է 'ի մէջ սենեկի նորին հանապազ շըրջագայել առողջարար և զովացուցիչ իմն օդոյ : Այլև պիտոյ է ախտակրին հրաժարել յամենայն ոգիաւոր հեղանիւթից , և 'ի ջերմ ըմպելեաց , և պարտ է որքան մարթ իցէ՝ 'ի հանգստեան և յանդորրութեան ունել զհիւանդն :

## Դեղորայք 'ի գործ արկանելիք 'ի դիպուածս ախտիս :

Արիւնհատութիւն հարկաւորապէս պահանջի 'ի դիպուածս յայս , մանաւանդ եթէ ախտակիրն իցէ երիտասարդ և քաջասնունդ , և հիւթային խառնուածոց վիճակեալ . և պարտ է միշտ երակ հատանել 'ի նոյն իսկ վայրկենի , յորում նշանքն վերոգրեալ 'ի վեր երևին , և չափ քանակութեան արեան հանելոյ պարտի լինել համաձայն զօրութեան ախտակրին , և ուժգնութեան ախտին : 'Ի վեր քան զամենայն կարի կարևոր է երակահատութիւն 'ի դիպուածն՝ յորում ախտն յառաջացեալ իցէ յոգիաւոր հեղանիւթոց , 'ի մեծարշաւ ընթացմանէ , յաշխատանաց , 'ի սաստիկ կրից , յարգելականութենէ իրիք սովորական հոսման , 'ի բորբոքմանէ արեան , և յուժգնութենէ բնութեան : Իսկ եթէ զկնի երակ հատանելոյ՝ ջերմութիւն և հոսումն արեան ոչ դադարի , և զարկն մեծ ընդարձակի և ամփոփի սաստիկ , յայնժամ արժան է վերստին երակ հատանել , և սահեցուցանել զորովայնն 'ի ձեռն մեղմ և զովացուցիչ դրեխից , և դնել զոտս 'ի մէջ գաղջ ջրոյ , առ 'ի թուլացուցանել զձիգն բնութեան , և զգրգռումն արիւնակիր երակաց թոքոց :

Ըմպելին 'ի սկզբան պարտի լինել զով, և հետ զհետէ միշտ առաւել ցուրտ։ Եթէ զուգընթաց լիցի ընդ ախտիս հազ ինչ սաստիկ, որպէս պատահի բազում անգամ, յայնժամ օրէն է գիտել 'ի գործածութի աչխոռ սոլֆօուրէօի խառն ընդ նոյնաչափ կրկնահան ցքւոյ, և ընդ ցրտագոյն ջրոյ։ Նոյնպէս գործածութիւն մուշկլյաճինէի ա՛ւ կոմմա առապիքա, կամ խաշուն սալէպի՛ է յոյժ օգտաւէտ, զոր պարտ է 'ի կիր առնուլ առատօրէն։ Եւ ևս ոչ սակաւ օգտէ գործածութիւն ինֆուզիօնէի ա՛ւ ա՛ւճիթալէ բուրբուռէա։ Զայս եթէ կամիս առնել, ա՛ռ զխոշոր փոշի ա՛ւճիթալէ կոչեցեալ տերևոյն ըստ կշռոյ քսան ցորենոյ, յերկու ունկի՝ ցուրտ ջուր. զկնի երկոտասան ժամուց՝ քամեա՛ զայն նուրբ կտաւով յանօթ ինչ ապակեայ. ապա յաւե՛լ 'ի սոյն զ30 չիթս ջուր կինամոնի, և զ20 չիթս լաւդանօ լիգուիտօ, և զբաւականաչափ՝ շիռօբբօ. և տո՛ւր ըմպել ախտաւորին երեք կամ չորս անգամ յաւուրն՝ զկշիռ քառորդ տրամոյ, մինչև լցցի տրամ մի յաւուրն։

Եթէ շնչառութիւն չիցէ այնքան դժուարին, յայնժամ մարթ է ևս տալ ախտաւորին ըստ տանելոյ ստամոքսի նորին էսթրաթթօ տի քինա, զոր օրէն է բաղադրել ընդ բաւականաչափ շիճուկի կաթին, որ պատրաստեալ իցէ տապլեզաւ։ Եթէ թքումն արեան պատճառեալ իցէ յարգելմանէ թանչից և տեռատեսական արեան, յայնժամ օրէն է փութանակի տզրուկս դնել 'ի վերայ արական երակաց կամ 'ի վերայ ստեանցն երաստանի։ Յորժամ ախտս այս ծագի 'ի պզօռապութական ախտէ, կամ յայնմ տենդէ՝ որոյ նախնական պատճառն գտանիցի լինել թուլութի, յայնժամ պարտ է առնուլ 'ի կիր զխաշուն եղեճի կոչեցելոյ յիսլանդացւոց՝ օւթիքա, զոր պարտ է ըմպել առատօրէն։ Մարթ է ևս մատուցանել հիւանդին գինի ազնիւ, բայց սակաւ քանակութեամբ։ Նոյնպէս գործածութիւն իբեքաքուանայի՝ լինի երբեմն օգտակար, զոր օրէն է 'ի վար արկանել յերեք ցորենոյ մինչև ցչորս՝ երեք կամ չորս անգամ յաւուրն։

Եթէ զուգընթաց լինի ընդ ախտիս հազ սաստիկ, և ցնցումն մկանանց, ընդերաց, մանաւանդ կրծոց և շնչափողին, յայնժամ պարտ է 'ի կիր արկանել զիւղն կտաւատի, կամ քաղցր նշոյ, զէմուլսիօնէ առապիքա, որ բաղադրեալ իցէ ջրովն թմբրեցուցիչ խոտոց։ Իսկ եթէ ախտս այս յառաջացեալ իցէ յօդուածացաւութէ, յորքիւնոյ, 'ի բորոտութենէ ևն. յայնժամ օրէն է դնել

վէզիքաթօռիօ՝ 'ի վերայ կրծոց կամ լանջաց, և զհիւանդն բազմեցուցանել 'ի վերայ շոգեաց ջերմագին ջրոյ: Բայց յորժամ դադարի հոսումն արեան, ընդ նմին և հազն, և ախտակիրն ունի տակաւին ջերմութի և միշտ պատճառեալս յուժգնութէ բնութեն, յայնժամ կարեւոր է առնուլ 'ի կիր զչիճուկն կաթին, զխաշուն գարւոյ խառն ընդ բաւականաչափ մեղրի, առ 'ի թուլացուցանել և ցածուցանել զուժգնութիւն բնութե:

Դարձեալ, ախտս այս՝ որպէս ասացաք, բազում անգամ զոյգ ունի ընդ իւր զհազ սաստիկ և զջերմութիւն. յայնժամ մարթ է և առնուլ 'ի կիր զյետագայ մածուցիկ մածիւնս զկնի երակահատութե: Ա՛ռ ունկի մի՝ զարմատն ալթէայի, և նոյնչափ՝ զսերմն սերկևիլի, վեց տրամ՝ զարմատն լիգուիռիցիայի, այլև ունկի մի՝ կօմմա առապիքա, և կէս ունկի՝ թառակաքանթէ: Զամենեսին զտոսա պա՛րտ է ջարդել յանկանի, և դնել թրմոց 'ի լիտր մի ջուր վարդի ժամս չորս կամ հինգ, այլ խառնելի է անընդհատ գըրգալիւ՝ մինչև զանգիլ բարւոք ընդ միմեանս՝ և լինել մածուցիկ, և ապա քամեա զայն կտաւով յաման ապիկած կամ ապակեայ: Ցետոյ արկ 'ի նա հետ զհետէ զերեք ունկի՝ շաքար վանի. և պա՛րտ է առնուլ չորս անգամ յաւուրն, ըստ չափու միոյ դըգալի սեղանոյ:

Է և այլ դարման, որ առանց զայրացուցանելոյ արգելու զթքումն արեան, և այսպէս բաղադրի: Ա՛ռ երեք ունկի՝ նուրբ փոշի արմատոյն կոչեցելոյ քօնսօլիտա մաեօր, և նոյնչափ՝ քօնսէռվա տի ռօզէ. յոր յաւել բաւականաչափ շիրօբբօ տի բալսամիքօ պիանքօ, և պարտ է հիւանդին ընդունիլ յամենայնում ժամու մէն մի դըգալ սրճոյ: Այլ գիտել արժան է, զի 'ի դիպուածս յայս չէ՛ պարտ 'ի կիր արկանել զխթիչ և զզօրացուցիչ դեղորայս, բայց եթէ ուր ուրեմն, որովհետև գրգռեն զարիւնակիր երակս թոքոց, և բազում անգամ զայրացուցանեն զախտն: Եւ իբրև վերոյ յիշեալ, կա՛մ նոցին նման դեղորէիւք պակասեսցի ուժգնութի բնութեն, եթէ անկեալ իցէ հիւանդն յուժոյ, ոչինչ արգելք կայ գործածութեան ինֆուզիօնէ տի քինաի. զոր բազում անգամ գրեցի 'ի բժշկարանի իմում, յաւելլով 'ի նոյն էմուլսիօնէ առապիքա, զոր պա՛րտ է առնուլ չորս կամ հինգ անգամ յաւուրն, ըստ չափու միոյ ունկւոյ: Եւ յայսոսիկ միջոցս մեծապէս փոյթ ունել արժան է 'ի կանոնադրել զընթացս հիւանդին, չափաւոր շարժումն առնելով յառողջարար և 'ի հովայն տեղիս, բայց առանց աշխատ լինելոյ և ջեր-

մանալոյ։ Դարձեալ գիտելի է, զի եթէ զուգընթաց լի-նին ընդ ախտանշանքն Թոքախտութե՟, յայնժամ պարտ է 'ի ձեռն առնուլ զնոյն դեղորայս և զկառավարութիւն՝ որք վասն Թոքախտութե՟, զորոց խօսեցաք 'ի գլուխ Ժ. երես 164։

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

### 'Ի վերայ թքման արեան, որ ըստ Բժշկաց կոչի՝ Հեմոբդիզիս։

Փսխումն արեան հասարակօրէն լինի 'ի հերձմանէ խռոչային փոքրիկ նեարդից ստորին որովայնի, կամ ա-րիւնակիր ամանոց աղեաց, և կամ մեսենտերական երա-կաց, որով ոգիք փորոտային ամբոխեալ սաստկեն զաղիսն 'ի ստորուստ 'ի վեր բերել զանջատեալ արիւնն մինչ 'ի խա-խացոյն, յորմէ ծագին զգայումունք արեան բազմազան եղանակաւ. Նմին իրի որոշի և յորակի արեանն, որ ար-տաքս բղխի ընդ բերանն առանց հազի. երբեմն լինի լոյծ և ծիրանագոյն, երբեմն մակարդեալ և սեաւ. երբեմն հասարակ և ջինջ, և երբեմն ևս խառն ընդ այլեայլ նիւ-թոց։ Ախտս այս ոչ է այնքան ընդհանուր, որպէս Բղ-թանչք, զորմէ փոքր ինչ յառաջ խօսեցաք. բայց է յոյժ որոգայթաւոր, և պէտս ունի մեծի զգուշութեան։

### Պատճառք թքման արեան։

Բաց 'ի վերոյեդեալ պատճառաց, փսխումն արեան կարէ ևս յառաջ գալ 'ի չափազանցութէ կենդանական ու-ժոյ, որ լինի յառողջարար ուտելեաց և 'ի յոգնաւոր հե-ղանիւթից, 'ի սաստիկ բարկութէ, և 'ի բերկրութէ, յա-ւաստութէ արեան, և 'ի զօրաւոր դեղորէից՝ այլովքն հան-դերձ. որք ճնշեն զնեարդս ստորին որովայնի, և զարիւ-նակիր ամանս աղեաց առ 'ի դուրս հոսեցուցանել զա-րիւնն ապաժոյժ։ Նոյնպէս մարթ է պատճառիլ յայնմ ամենայնէ, որք սաստկապէս գրգռեն և վիրաւորեն զստա-մոքսն, և զներքին թաղանթս փորոտեաց. որպէս յուժ-գին լուծողական և 'ի փսխողական դեղորէից, 'ի դժըն-դակ թիւնից, 'ի կարծրապինդ և 'ի սուրնիւթոց մանլոց 'ի խախացոյն։ Երբեմն ևս պատահի 'ի ճիւաղակոր և 'ի ճճային ջուրց, 'ի ձձեաց, և 'ի տզրկաց, որք ընդմտանեն

'ի ստամոքսն ջերմութիւն : Բազում անգամ ևս 'ի վիրաւորմանէ լերդի, աղեաց, և այլոց ընդերաց : Մարթի պատճառիլ ևս յարգելականութէ իւիք սովորական հոսմանց, և ևս յարտաքին պատճառաց. որպէս 'ի հարուածոց, 'ի ճմլմանէ, 'ի բաղխմանէ, և յայլ նմանեաց, յորոց մարթ է յառաջ գալ իւիք բորբոքման :

Դարձեալ, մարթի ծագիլ ևս 'ի տկարութէ կամ 'ի թուլականութէ արիւնակիր ամանոց աղեաց և այլոց ընդերաց, նոյնպէս և 'ի խցմանէ նոյն ամանոց : Դարձեալ, մարթի լինել ևս 'ի ջղային տենդէ, և յայլ երկարատև խօթութէ, որովք աղեաց բարեխառնութիւն այլայլեալ, և կենդանական զօրութիւն նոցին լքեալ՝ պատճառեն զփսխումս զայս : 'Ի կանայս սովորաբար պատճառի այս յարգելականութէ դաշտանի, կամ թանչից : Անձինք, որք վիճակեալք են սևամաղձային բնութե, մանաւանդ նոքա՝ որք վարեն զանշարժական կեանս, և ըմպեն զառատագոյն ոչխաւոր հեղանիւթս, են առաւել ենթակայ այսր փսխման :

Նշանք փսխման արեան :

Մինչ այս նախ սկսանի 'ի թեթև ինչ թուլութէ բոլոր մարմնոյ, 'ի նեղութենէ, և 'ի ձգտմանէ, որք սովորաբար յարատևեալ միայն քանի ինչ ժամանակս. և ապա բերեն ցաւ ինչ 'ի սահմանս ախոռնդանոց, և յաղէս, որք մանաւորապէս պատահին յարգելմանէ թանչից և դաշտանի : Դարձեալ, ախտակիրն զգայ զնողկանս, զյօժարութի ինչ 'ի ժայթքել, զբաբախիւն սրտի, զձգտումն, և զփսխումն : Նիւթն որ արտաքս ելանէ ընդ բերանն՝ լինի լեղծ, ջրային, տալիղ, և երբեմն լորձունք, յորմէ զհետ գան հեծկլտանք և հևալ : Եւ յետ այսորիկ նշանացս 'ի վեր երևի յորդառատ հոսումն արեան, որ ստէպ արտաթորի ընդ բերանն հանդերձ ջերմութբ և ցաւովք մակարդային, և ճնշմամբ կրծոց և ստամոքսի : Երբեմն զուգակից ունի ընդ իւր զնուաղումն սրտի, զծարաւ սաստիկ, և զցաւ գլխոյ. և երբեմն ևս ախտակիրն ստանայ զգոյն կանաչախառն դեղին. և արիւնն՝ որ ելանէ ընդ բերանն՝ լինի թթուահոտ, կամ գխահոտ, որ է գուշակ յուսեգոյն ելից, և յայնժամ անուանի մօրպօ նկրօ. Վտանգն այսորիկ փսխման ըստ մեծի մասին 'ի վեր երևի յայնմանէ՝ զի արիւնն հեղեալ, թէ յամեալ միայ 'ի փորոտիս, ստանայ զնեխութիւն, յորմէ կարէ պատճառիլ փտախտութի, և քաղցկեղ :

### Խնամատարութիւն և դեղօրայք 'ի նիւր արկանելոյ 'ի դե- ղատանս քիմիական արհեստ ։

Խնամատարութիւնք ախտիս գրեթէ մի և նոյն. են
վերոգրեալ խնամատարութեան Թքման արեան ։ Արժ
է պահպանել զհիւանդն 'ի հանգիստ և յանդորր, հե
ռանել 'ի նմանէ զայն ամենայն, որք պատճառեն զխեղ
թէ և զգրգռումն ։ Կերակրոցն և ըմպելեացն պարտ է
նել թնութեամբ զովացուցիչ և սնուցիչ, և սակաւ քանակ
թեամբ 'ի գործ ածել արժան է ։ Երբեմն ցուրտ ջուրն
սառոյցն 'ի դիպուածս յայս լինին իբրև զդեղ ազնիւ ։
Յորժամ փախումն արեան պատճառի յուժգնութ
թնութեան և յարգելականութեան իրիք հօտման, որպիսի
հատումն թանչից, և դաշտանի, ևն, յայնժամ օրէն
երակ հատանել, և փութալ զամենայն յարմարագ
հնարս 'ի վեր արկանել իսկ և իսկ 'ի նոյն իսկ ժամանա
ան 'ի թուլացուցանել զուժգնութիւն թնութեան, և շարժ
մերսուին զհոսումն զայն առողրական. որովհետև զայսմ
նէ կախեալ կայ՝ ոչ միայն ապաքինումն ախտիս, այլ միա
գամայն կեանք ախտակրին ։ Չէ պարտ 'ի վեր արկան
զխթիչ և զզօրացուցիչ դեղօրայս, որովհետև գրգռեն
նեարդս և զարիւնակիր ամանս աղեաց, և բազում
գամ պատճառել զայրացուցանելեն զախտն ։ Յայսմ վայրի
րի կարևոր է առնուլ 'ի կիր զգրեխս կակղացուցիչ
թուլացուցիչս և զովացուցիչս. և դնել զոտս 'ի մէջ գա
ջրոյ ։ Նոյնպէս օրէն է տգլուեկս կուռեցուցանել 'ի շրջ
կայս երասատանի, բազմեցուցանելով զհիւանդն 'ի վեր
շոգեաց ջերմագին ջրոյ. նմանապէս պարտ է թոյլ տա
ախտակրին ըմպել զհիւթս հասունացեալ պտղոց, որ ի
լուծեալ ջրով ։

'Ի դիպուածս, յորում փախումն արեան յառաջ գ
'ի գրգռմանէ անօթոց արեան և թանչից, յայնժա
պատշաճագոյն դեղն է Ելիսաիր աչիտօ տի հալլէռ,
ոչ միայն հանդարտէ զգրգռելութիւն, այլ միանգամ
բարեկարգէ զդրութիւն ստոյին որովայնի և աղեաց,
բարեխառնէ զնեղքին այլայլութիւն. զկիրառութիւն ա
տեսցես 'ի հատ. Ը. 'ի տառն Ի. 'ի կարգի իւրում ։ Եթ
փախումն արեան իցէ առատագոյն, յայնժամ օգտա
տագոյն դեղն է՝ օւթիքա, այսինքն եղինձ, կամ եղինջ ։ Ե
եթէ հիւանդն անկեալ իցէ յուժոյ, պատշաճագոյն դե
է ինֆուզիոնէ տի քինա խառն ընդ էմուլսիոնէ առապ

քաւ ։ Նոյնպէս օգտաւէտ է աքսուա մառացեալէ տի սփիւ, տալով ախտակրաց ժամէ 'ի ժամ երեք ունկի 'ի պահ առաւօտուն, մինչև լցցի լիտր մի յաւուրն. այլ պարտ է քաջ խփել զանօթ նորին, և շրջուն պահել յայլում անօթի՝ որ լի իցէ ցուրտ ջրով ։

Բայց յորժամ դադարի փախուստ արեան, և հիւանդն տակաւին ունի զվիշտս և զանձկութիւնս պատճառեալս յարգելմանէ արեան, որ լճացեալ միայ 'ի փորոտիսն, յայնժամ կարևոր է 'ի վար արկանել լուծողականս ինչ մեղմագոյնս, և ախորժարարս, որպիսի են մաննա, Թամարինտի, և բօլլա տի քասսիա ։ Նոյնպէս և շահաւէտ է դիմել 'ի գործածութիւն գրեխաց պատրաստեալ չիճուկակաթին, փոքր ինչ քացախիւ, և մեղրիւ, զոր պարտ է առնել երկու կամ երեք անգամ յաւուրն առ 'ի դուրս հոսեցուցանել զլճացեալ արիւնն, և դիմակալել փտութե ։ Չէ օրէն բնաւ 'ի վար արկանել զսաստիկ լուծողական դեղորայս՝ եթէ 'ի վերուստ, և եթէ 'ի ստորուստ, որովհետև գրգռեն զստամոքսն, զնեարդսն և զարիւնակիր ամանսն, և բազում անգամ առաւել զայրացուցանեն զախտն ։



# ԳԼՈՒԽ ԼԲ.

'Ի վերայ միզման արեան, որ յիտալացւոց ասի՝ օրինա սանկուինէա, և առ բժիշկս անուանի՝ էմաթուրիա ։

Գիտելի է, զի արիւնն այն՝ որ 'ի դուրս վարի 'ի սերական անդամոց, երբեմն հոսի յարիւնակիր ամանոց փամփշտի, երբեմն 'ի միզանց խողովակաց, երբեմն 'ի գործարանաց երիկամանց, և երբեմն ևս 'ի նոյն իսկ երիկամանց, ըստ պէսպէս տրամադրութեանցն ։ Վասն որոյ և որոշումն է նորա ըստ հիւթոցն՝ որ 'ի դուրս վարին 'ի նոյն անդամոց. որ երբեմն լինի սոսկ արիւն և լոյծ. և երբեմն կարի լոյծ և տորտալից կամ մրրալից. երբեմն թուխ կամ սեաւ և մակարդեալ, և երբեմն գեղեցիկ կարմիր և թափանցիկ. երբեմն պողխպոդական, և երբեմն խառն ընդ միզի. և երբեմն ևս յորդ, և երբեմն սակաւ, կամ նուազ ։ Այս ախտ գտանի նաև յերիտասարդս, բայց դուն ուրեք, և յոյժ ցանցառակի ։ Իսկ ծերք, և որոց տիրապե-

տէ առաւել սեւամաղձն և թանչախտն, են 'ի հասարակէ ենթակայ այսմ ախտի ։ Նոյնպէս և կանայք՝ որոց արգելեալ է հոսումն դաշտանական, են յոյժ ենթակայ ախտիս ։

Դարձեալ, գիտել արժան է, եթէ վտանգ այսորիկ ախտի ըստ մեծի մասին 'ի վեր երևի յայնմանէ, զի արիւնն՝ որ արտաթորի 'ի նոյն անդամոց, լինի նեխեալ և շարաւալից․ յորմէ կարէ յառաջ գալ Ջրգողութիւն, կամ փտախտութիւն, կամ տապականութիւն, և կամ տենդծիւրական ։ Նոյնպէս և վտանգաւոր է, եթէ միզումն արեան պատճառեալ իցէ 'ի խճից գոյացելոց յերիկամունս կամ 'ի փամփուշտն ։ Եւ առաւել քան զամենայն աղետալի է այն, յորժամ պատահի կամ ծագի 'ի Ջղային տենդէ, 'ի ծաղկէ, և 'ի բորբոքմանէ երիկամանց կամ փամփշտի ։ Իսկ 'ի դիպուածս, յորում պատճառի յարգելականութենէ իրիք սովորական հոսման, կամ 'ի խթիչ և յազդու դեղորէից, և կամ 'ի ձգամանէ, յայնժամ չէք այնքան երկիւղ ։

Պատճառք միզման արեան ։

Առաւել ընդհանուր պատճառք այսր ախտի են թանչքըն, տկարութիւն միզանց խողովակաց, երիկամանց, և փամփշտի, ուժգին շարժումն, բարձումն ինչ ծանրագոյն իրաց, անկանիլն, ևն ։ Կարէ պատճառիլ ևս 'ի հարուածոց, 'ի տաժանաւոր ծննդոց, 'ի սաստիկ և յանընդհատ աշխատանաց, յընդերկար ձիավարութենէ, յանչափ գործածութենէ ոգիաւոր հեղանիւթոց, 'ի խթիչ և 'ի զայրացուցիչ դեղորէից․ որպիսի են քանթառէլլէ, մէլօէ, ռանունքօլօ, ևն ։ Մարթ է ևս պատահիլ 'ի խճից, և 'ի խացից 'ի վեր եկեալ յերիկամունս, 'ի փամփուշտն, և 'ի միզանց խողովակս․ յարգելականութենէ թանչից, և դաշտանի, 'ի սաքաախտէ անուանեալ որդանց մտելոց կամ գոյացելոց 'ի փամփուշտն, յերկիւղէ, 'ի կրից հոգւոյ, 'ի սաստիկ տոփմանց պագշոտ սիրոյ ։ Դարձեալ, մարթ է ևս պատահել յայլևայլ ախտէ, որպէս 'ի Ջղային տենդէ, 'ի սքօրպութօ անուանեալ ախտէ, 'ի ծաղկէ, և 'ի բորբոքողականութենէ ։

Յաղագս ալգի ալգի նշանաց, ՚Ի յէռան որոց մարթ է գուշակել զհոսումն արեան որ ի խղէ ընդերաց կամ մասանց։

Ախտս այս է կարի կամ նուազ վտանգաւոր նկատմամբ արտահոսեալ արեան ՚ի սերական անդամոց։ Արդ՝ յորժամ ծագի միզումն արեան յերիկամանց, ճանաչի ՚ի թեթևութէ ցաւոց, ՚ի սաստիկ ջերմութէ, ՚ի ծանրութէ և ՚ի ձգտմանէ միջաց, ՚ի յորդութէ միզի. և արիւնն՝ որ հոսի ՚ի նոյն անդամոյ՝ լինի ջինջ և կարմրերանգ, և երբեմն ունի զդոյգ ջերմութի ինչ թեթև, դառնութի և գարշահոտութիւն բերանոյ, նողկանք սրտի, և յօժարութի ՚ի ժայթքել. ՚ի դիպուածս՝ յորում միզումն արեան յառաջ գայ ՚ի միզանց խողովակաց, (որք են երկուերկայն խողովակք, ընդ որս անցանէ մէզն յերիկամանց ՚ի փամփուշտն) գուշակի ՚ի սաստկութէ անձկութեն, ՚ի սակաւութէ արեան՝ որ ՚ի դուրս վարի խառն ընդ միզի, ՚ի չափաւորութէ ցաւոց միջաց։

Բազում անգամ և ս զուգընթաց լինի ախտս բորբոքումն. որ երբեմն պատճառի ՚ի խճից կամ ՚ի քարանց մնելոց ՚ի սոյն խողովակս, և յայնժամ ցաւքն և նշանքն երկպատիկ առաւել սաստկանան, և մէզն լինի արգելական, և արիւնն չարաւալից։ Իսկ ՚ի դիպուածս, յորում միզումն արեան պատահեալ իցէ յարիւնակիր ամանոց փամփշտի, և կամ ՚ի նոյն իսկ փամփշտէ, այս ճանաչի ՚ի զգայութէ փամփշտին, ՚ի սակաւ միզմանէ, ՚ի նուազութէ զգացողական կարողութե մակորովայնի, ՚ի տաղապանաց, ՚ի ձգտմանէ, ՚ի սաստիկ ջերմութէ և ՚ի գարշահոտութէ միզի, ՚ի տորտոյ իջելոյ յատակս անօթոյն, ՚ի ցաւոց թիկնամիջաց, մակորովայնի, և բէռնինէօ անուանեալ անդամոյ, որ է մասն մարմնոյն՝ որ ընդ սրբանն և ընդ ամօթոյս; ՚ի նուաղմանէ, ՚ի նողկանաց, ՚ի ժայթքմանէ, ՚ի դժուարաշնչութէ։

Ընդ ժամս ժամս ՚ի վեր երևին և ս ջերմութի, արագութի և ընդդիմութի զարկի բազկին, ուշագնացութի, և ցուրտ քիրտն։ Երբեմն և ս զհետ գայ անժուժութի միզի, երբեմն դժուարամիզութի, և խէթ սրբանի։ Արիւնն, որ հոսի խառն ընդ միզի թէպէտ չէ այնքան յորդ, բայց լինի մոյգերանգ իբրև զսեաւ։ Մէզն երբեմն լինի պարզ և խառն ինչ արիւնաշաղախ, բայց տորտալից, կամ լի պղտորդական նիւթով։ Դարձեալ՝ են և այլ նշանք. որպէս քարշումն ամորձեաց ՚ի բարձրագոյնս, ցաւն ազ-

գերաց, դժուարաշարժութիւնն սրունից, չորութիւ
մարմոյ բոլոր մարմնոյն, կերկերումն ձայնի, ցամաքու
թիւնն լեզուի և ոսկորոյ, բայց առանց ծարաւոյ. ձգը
տումն, հազն, ցաւն մակորովայնի, հիւծումն մարմնոյ,
Ջերմութիւնն երբեմն լինի անընդհատ, և երբեմն ընդ
հատ, տորան՝ երբեմն լինի գորշագոյն, և երբեմն վարդա
գոյն, և երբեմն ևս սևագոյն: Իւր յետ այսոցիկ նշանաց
փամփուշտն կամ միզանց խողովակքն սկսանին այտնու
յորմէ և պատճառի նեխութի, և քաղցկեղ. հուսկ յ
տոյ օր քան զօր սաստկի ջերմութին բնական, և դէպ ա
նու զօրութին կենսական: Քարագործք, բեռնակիր
ղօրականք, ձիավարք, տրատորդք, փողահարք, և այլ սոցի
նման տարժանելի արհեստաւորք՝ են նմանապէս առաւե
ենթակայ ախտիս այսմիկ:

Ցաւագին խնամատարութիւն և դեղորէից զորս պարտ է ի վա
արկանել ընդդէմ միզման արեան:

Օրէն է մեծաւ փութով արգելուլ խակ և խակ զու
տելիս և զըմպելիս բնութե խթիչս, զօրացուցիչս և ջեր
մացուցիչս: Ցորդութիւնն հոսման արեան 'ի սերակա
անդամոյ՝ կարէ պատրել զանհմուտ բժիշկս, և շըջել ըն
միտս նոցա 'ի տալ զոգխաւոր հեղանիւթս, զթիւրակէ
զավփիոն, և կիմ զայլազգ խթիչ և սեղմիչ դեղորայս: Բայ
այդպիսի դեղորայք միշտ զայրացուցանեն զախտն, և ա
վորաբար 'ի վերայ ածեն զնեխութի, զքաղցկեղ և զերա
դահատ մահ: Ցորժամ միզումն արեան յառաջ գայ յուժ
նութէ բնութենն, կամ յարգելականութէ իրիք սովոր
կան հոսման, կամ 'ի սաստիկ աշխատանաց, և կամ յա
չափ գործածութենէ ոգխաւոր հեղանիւթոց, յայնժա
պարտ է հարկաւորապէս երակ հատանել. բայց նկատ
օրէն է միշտ 'ի պարագայս անձին. զորօրինակ 'ի հասակ
'ի խառնուածսն, 'ի զօրութիւնն, 'ի սաստկութին նշ
նաց, ևն:

Իւ պարտ է միշտ լոյծ ունել զորովայնն 'ի ձեռն կա
ղացուցիչ, թուլացուցիչ և զովացուցիչ դեղորէից, որ
սի են շիճուկն կաթին, հիւթն թամառհնտիի, մանա
լուծեալ 'ի ջուր: Նոյնպէս պարտ է առնուլ 'ի կիր
դրեխս կակղացուցիչս մի կամ երկու անգամ յաւու
բայց պարտ է լինել ցուրտ, և ոչ ջերմ: Դարձեալ
դիպուածս յայս յոյժ շահաւէտ է արիւն հանել սրա
կաւ, զոր պարտ է առնել յայն մասնէն միջաց, ուր ա

ւել զգայ զցաւն։ Նոյնպէս և օգտաւէտագոյն է միանգա-
մայն դնել զտզրուկս 'ի շրջակայս սրբանին, կամ 'ի մեր-
ձաւոր մասունս ուղղորդ աղեաց։

Եթէ ծագեալ իցէ 'ի խոցէ ինչ գոյացելոյ յերիկամունս, կամ 'ի փամփուշտն, և կամ 'ի միզանց խողովակս, յայնժամ մարթ է 'ի վար արկանել զլետադգայ դեղն։ Ա՛ռ երեք ունկի՝ ռատիչէ տի ալթէա, կէս ունկի՝ լիգուռիցիա, երեք տրամ՝ սէմէն բլանթակօ, և 'ի հասարակ ջրի եփեա՛ եռացմամբ իբր քառորդ մի ժամու. ապա զտեա՛, և մնասցէ երկոտասան ունկի, յոր յաւել մի և կէս ունկի՝ կօմմա առապիքա, և ապա առնուլ պարտ է սկահակ մի սրճոյ չորս կամ հինգ անգամ յաւուրն։ Այլ եթէ յառաջ եկեալ իցէ 'ի թուլութէ կենսական զօրութե, կմ 'ի տկարութէ ընդերաց, յայնժամ օրէն է առնուլ 'ի կիր զելիսսիռէ տի վէթրիօլօ՝ խառն ընդ բաւականաչափ զով ջրոյ։ Նոյնպէս օգտաւէտ է բօլվէռէ տի տօվէռ, զոր մարթ է 'ի վար արկանել ըստ կանոնի և ըստ կերպի զորմէ լեալ խօսեցաք 'ի գլ. ա. երես 25։ Զնոյն գործունէութն ունին և կօմմա քինօ, ռէքօթթօ տի քինա քինա, վէթռիօլօ տի մառթէ, շիճուկն կաթին, որ իցէ պատրաստեալ պաղլեղաւ։

Իսկ եթէ զարկ բազկին իցէ ուժեղ և խիստ, յայնժամ պարտ է դիմել 'ի գործածութի ինֆուզիօնէ տի տիճիթալէ բուռբուռէա, որ այսպէս յօրինի. ա՛ռ զխոշոր փոշի տերևոյս ըստ կշռոյ 12 ցորենոյ 'ի լիտր մի ցուրտ ջուր. զկնի 12 ժամուց՝ հեղ զգուշութե զհեղուկն յայլ ապակի անօթ, այնպէս զի մի՛ խառնեսցի մրուրն ընդ պայծառ հեղանիւթոյն. ապա յաւել 'ի սոյն զկէս ունկի՝ թինթուռա տի չիննամօմօ, և 60 շիթ լաւտանօ լիգուիտօ, և տո՛ւր ըմպել հիւանդին չորս անգամ յաւուրն՝ ըստ չափու միոյ փոքրիկ գդգալի։ Յոյժ օգտակար դեղ է եւ ֆօմէնթացիօնէ առնել ցուրտ ջրով, կամ սառուցիւ, և դնել 'ի վերայ առողին որովայնի։ Նոյնպէս և օգտաւէտ է դրեխ առնել ցուրտ ջրով և քացախով։ Եւ եթէ պատճառեալ իցէ 'ի ծաղկէ, 'ի ջղային տենդէ, յայնժամ պարտ է սկսանել զգործածութի քինաքինայի, և թթուաշ գեղորէից։ Իսկ եթէ ծագեալ իցէ 'ի քանթառէլլաէ, կմ 'ի խեթիչ գեղորէից, յայնժամ պատշաճաւոր դեղն է էմուլսիօնէն քաղցր նշոյ խառն ընդ կօմմա առապիքայի, և ընդ սալէպի, զոր պարտ է ըմպել առատօրէն։ Նոյնպէս շահաւէտ դեղ է եւ դրեխ առնել վերոյիշեալ էմուլսիօնէիւ և ջրոյն սալէպի. և եթէ գուցէ պնդութի որովայ-

նի, մարթ է յաւելուլ 'ի վերայ սակաւ ինչ մանանայ
Ո՛չ են բանք մեր առաւանօր զմիզմանէ արեան, որ պատճ
առի 'ի խճից կամ 'ի քարանց մանրաց 'ի փամփուշտն և
միզանց խողովակսն. քանզի յայսպիսի դիպուածս քար
հան վիրաբուժաց են գործք:



# ԳԼՈՒԽ ԼԳ.

'Ի վերայ ըգձայման կամ ծայլեցման և կամ փոխման. որ յիտալացւոց կոչի՝ Կօլիքօ:

Երկնաքի է փոխումն, առաջինն մանաւանդ որպէս
նի 'ի ցնցմանէ ստամոքսոյ կամ մկանանց ստորին որ
վայնի. երկրորդն երկնաքի պատճառի, մի՝ 'ի խցմանէ ս
րոյ խախացուցին (որ է ներքին ծակ ստամոքսի, յորմէ կ
բակուղք իջանեն յաղիս,) և ուժգին մանրանաթելից աղեա
որոց պաշտօն է ճնշել զփորոտիս առ 'ի վայր խաղացու
ցանել զի՛ներքս եղեալ նիւթքն. և միւս ևս՝ յուժգն
գրգռմանէ ստամոքսի, և տուօնեալ հայնեալ աղեաց,
ևս յայլևայլ պատահարաց, որպէս յառաջիկայդ յայ
նապէս տեսանես: Գիտելի է, զի փոխումն 'ի բազու
պարագայս է դեղ իմն օգնականոյն քան թէ խօթութի
յայսպիսի դիպուածս՝ է բուռն ուժգնութիւն ինչ, զոր ա
նէ բնութիւն՝ առ 'ի ազատել զինքն 'ի ծանրաբեռնութե
ապականեալ և մահաբեր նիւթոց. վասն որոյ առաւ
ճահողագոյն է յայնժամ նպաստամատոյց լինել բնու
և շարժել զփոխումն՝ քան թէ արգելուլ զայն: Սակայ
ոչ ամենայն փոխումն է միշտ այսպէս փրկարար և օգտ
կար, այլ զանազանի ըստ պատճառացն՝ յորոց յառա
գայ և շարժի:

Յաղագս ընդհանուր պատճառաց փոխման:

Փոխումն բազում անգամ պատճառի 'ի գրգռմա
և 'ի խանգարմանէ գործողութեան մարսողութեան, և 'ի գ
ւլրմանէ սորայ ստամոքսի, ևս 'ի գեղեղական շարժմա
փորոտեաց: Նոյնպէս մարթ է ևս յառաջ գալ 'ի թո
լութէ ստամոքսոյ, ստամոքսի, և փորային մկանանց

մանրաթելից, պատճառեալ 'ի սաստիկ խթողական հիւանթոյ: Մարթ է ևս յառաջ գալ 'ի սուր և 'ի տոխալ մաղձէ, և 'ի մածուցիկ մաղասոյ, նաև 'ի ստորէջ փտասակար հիւթոց, որք 'ի գլխոյ 'ի ստամոքսն լճանան, և պատճառեն զխմորումն կերակրոց և զնեխումն, խթելով զմանրաթելս ստամոքսի և ստորին որովայնի: Երբեմն ևս 'ի ճճեաց, 'ի չափազանց կերակրոց և յոգնաւոր ըմպելեաց. ևս 'ի յօդեղէն հոսմանէից: Դարձեալ, մարթ է յառաջ գալ յայտուցից կամ 'ի վերաւորմանէ ներքին թաղանթոյ աղեաց, պատճառեալ 'ի աֆիթէ ձայնեալ խոցէ. 'ի սաստիկ և 'ի զօրաւոր փոխեցուցիչ և լուծիչ դեղորէից, 'ի թխունաւոր նիւթոց, 'ի դժուարամարսելի և յիւղալի կերակրոց, որք դիւրաւ գնան յապականութի: փոշամնկութին, տենդքն, բորբոքողականութքն, ախտքն երիկամանց, փամփիշտի, և այլ ընդերաց, խեթն փաթոյթ անուանեալ աղեաց, և երկարատև հիւանդութքն կարեն պատճառել զփսխումն: Այլև կարէ պատճառել փսխումն 'ի ստամոքսային կրից, 'ի շարժմանէ, որպէս պատահի 'ի նաւի, 'ի կառաց, 'ի ձևակերպելոյ և յերևակայելոյ զանախորժելի առարկայս: 'Ի փոխման ամենայնի՝ փսխումն ևս է նշան ինչ յղութե, որ հասարակօրէն սկսանի զկնի երկրորդ շաբաթու արգելականութե դաշտանի, և յարատևեալ մնայ մինչև ցերրորդ կամ ցչորրորդ ամիսս տաւպինս:

Ցուցակ ընդհանուր նշանաց փսխման:

Հասարակօրէն 'ի վեր երևի ձանձրութի ինչ 'ի բերանն, 'ի կոկորդն, և 'ի ստամոքսն. և յայնժամ խոկ և խոկ զհետ գայ նողկանք սրտի, տագ., ճնշումն մակերովայնի, յորդառատ լորձունք, ձգտումն, հեծկլտանք, հազ, անդուլթիւն որովայնի, ցուրտ քիրտն, ամփոփումն աղեաց, ամփոփումն ստամանեաց, հոսումն արտասուաց, կարմրութի երեսաց. երբեմն 'ի վեր երևի պղտորոց ինչ 'ի դէմս. և երբեմն ևս զհետ գայ նուաղումն սրտի ևն:

Ցուցակ մասնաւոր նշանաց և դեղորէից փսխման պատճառելոյ 'ի նեխաւոր նիւթոց և 'ի զօրաւոր փոխեցուցիչ և լուծողական դեղորէից:

'Ի գիտուածս յայս բաց 'ի վերոգրեալ նշանաց, փսխումն զկնի կարի յորդառատ և յաճախակի. և յայն-

ժամ՛ իսկ և իսկ զհետ գայ ցաւ և տապ սաստիկ 'ի փ-
րոտիս, նուաղումն սրտի, ցնցումն մկանանց ստորին որ-
վայնի, և միզարգելութիւն հանդերձ ցամաքութեամբ բերանոյ
և լուծմամբ որովայնի. որոյ պատշաճաւոր դարմանն է
փսխողական դեղորայքն, և գաղջ ջուրն, զոր պարտ
տալ սակաւ սակաւ առ 'ի գուլս վանել զթիւնն. հարկ
ես նպաստաւորագոյն լինել նմա մատուցանելով զկաթն
զկոգի, և զայլ մածուցիկ դեղորայս:

Եթէ թիւնն անցեալ իցէ յաղիս, յայնժամ պարտ
առնուլ 'ի կիր զգրեխս մածուցիկս, առ 'ի լպրծուն գոր-
ծել զաղիս: Եթէ փոխումն յառաջացեալ իցէ 'ի շուպ-
տութէ և 'ի չափազանց արբեցութէ, յայնժամ կոչ-
քուաբուլա, որոյ նշանքն են փոխումն 'ի պաշ սաստու-
տուն, անհամութիւն բերանոյ, ծարաւումն, ջերմութիւն
և հիւթն որ ելանէ ընդ բերանն՝ լինի ջուր ջինջ և գառ-
նահամ, և երբեմն ես տտիպ. և դեղն՝ է տակաւաքանա-
իբէքաքուանա, արբուցանելով սակաւ զթրմոցն երիցկի

'Ի դիպուածս, յորում փոխումն պատճառի 'ի ձըն-
մանէ է յամփոփմանէ ներքին թաղանթոյ ստորին որո-
վայնի, որ հասարակօրէն պատճառի 'ի խաւլական ու-
ռուցից, յայնժամ անուանի՝ վօմիթօ շիաօզօ. որոյ նը-
շանքն են՝ կարծրութիւն ստորին որովայնի, նիհարութիւն
անհալուժին կերակրոց, այլովքն հանդերձ. և դեղորայքն
են իւղն քաղցր նշոյ, կամ ձիթապտղոյ, և կամ կտաւա-
տի. ես օլիօ տի ռիչինօ, զոր պարտ է տալ ունկի մի յա-
ւուրն: Գրեխն պարտի լինել ջրոյն մոլոշի, և իւղոյ
նշոյ, և 'ի գործ արկանել երկու անգամ յաւուրն:

Եթէ փոխումն պատահեալ իցէ յընդդիմութէ, կամ
յոլորմանէ աղեաց, յայնժամ կոչի՝ վօլվուլօ. որոյ նը-
շանքն են ցաւն փաթոյթ անուանեալ աղեաց, արտաթո-
րումն կղկղանաց ընդ բերանն, այլովքն հանդերձ. և
դեղորայքն են ջուր գաղջ, և մնդիկն, զոր պարտ է առ-
նուլ երկու անգամ յաւուրն, ըստ չափու երեք ունկ-
ւոյ, խառն ընդ իւղոյ քաղցր նշոյ: Գրեխն լինիցի կաղ-
մեալ օճառիւ, իւղով, աղիւ, և ջրոյն մոլոշի. զո-
պարտ է 'ի կիր արկանել երեք անգամ յաւուրն և առա-
ւել յաճախակի, եթէ յոյժ կարծրացեալ իցէ աղտու-
թեան որովայնի:

'Ի դիպուածս, յորում փոխումն ծագի 'ի թուլութ-
կամ 'ի տկարութէ փորոտեաց, ստամոքսի, և ստածան-
ւոյն, պատճառեալ յոգնաւոր հեղանիւթից և յուժգն-
լուծողական և ործացուցիչ դեղորէից, յայնժամ կոչի

վօմիթօ տալը՝ աթօնիա. որոյ նշանքն են ցաւն և ծանրութիւն մակորովայնի. փուքն որ ելանէ ընդ բերանն՝ լինի զազրահոտ. փսխումն կամ ժայթքումն՝ որ սովորաբար ոկսանի զկնի քանի մի ժամուց կերակրոյն, լինի լոյծ շձկային և դառնահոտ, և երբեմն տտխալ և գորշագոյն: Զնոյն առնէ և այտուցն մակորովայնի և ստոյգ ստամոքսի. և պատշաճաւոր դեղորայքն՝ են էլիքսիր սթօմաքիքօ, եղնալեղին, էսթրաթթօ տի գուասսիա, կամ տի ճէնցիանա, և կամ տի ասսէնցիօ. զոր պարտ է լուծանել ջրումն կինամոնի: Նոյնպէս և շահաւէտ է փոշիացուցեալ արմատն առնիքաի, կամ սակաւաքանակ մշկահոտ ընկոյզն, և կամ տասն ցորենաչափ սեաւ պղպեղն: Երբեմն ևս պարտ է տալ նմա մի կամ երկու ցորենաչափ քանֆօրա: Կարի կարևոր է ևս առնուլ 'ի կիր զֆօմէնթի, զօծանելիս, և զվէշիքաթօրիօ:

Ցերկարժամանակեայ փսխումն. որոյ նախնական պատճառն լինի այտուցն պանկրասի կամ մէզենտրի, յայտկապէս կոչի՝ վօմիթօ կամ վիցիօ տէլ բանքրէաս, և տէլ մէզէնթէրիքօ. որոց նշանքն են կարծրութիւն պանկրասի և միջընդերայց, հոսումն լորձունաց, և տապութիւն մաղձի. և նիւթն որ ելանէ ընդ բերանն՝ երբեմն լինի թանձր, երբեմն լոյծ, և երբեմն ևս արիւնաշաղախ և զազրահոտ: Երբեմն ևս զուգընթաց գտանի ընդ սմա հեծկլտանք, ձգտումն, կռնչիւն և այտումն որովայնի, հանդերձ ջերմութ̃ և ցաւով փորոտեաց. և դեղորայքն են էսթրաթթօ տի կրամինեա, տի թառասսաքօ, տի սաբօնարիա, և նոյն իսկ էսթրաթթօ տի չիքութան ըղդուշութ̃ և չափով ընծայեալ: Նոյնպէս և օգտաւէտ է սաբօնէ մէտիչինալէն, և սնդիկն: Դարձեալ, շահաւէտ է արգանակն մսոյ, հաւու, կրիայի, և խաշափառի: Այլ և պարտ է 'ի վար արկանել յամենայնում երեկոյի զգրեխ մի պատրաստեալ սնուցիչ դեղորէիւք:

Իսկ եթէ փսխումն ծագեալ իցէ 'ի վատառողջութենէ աղեաց, և յառաւելութենէ զգայունութեան յատուկ փորային բնաւորութեան, յայնժամ ձայնի՝ վօմիթօ տէլլա մօռպօզա սէնսիպիլիթա. որոյ նշանքն են՝ ուժգին թուլութիւն աղեաց, և բոլոր մարմնոյ, սաստիկ փսխումն, նուրբ տենդն ընդհատ, ցաւն կամ նաև պտտումն գլխոյ և հեծկլտանքն. և այս տեսակ փսխման հասարակօրէն պատահի զկնի կերակրոց և ըմպելեաց. և դեղքն են ջուրն ցրտագոյն, սառոյցն, թրմոցն ազնիւ քինայի:

Իսկ 'ի զխպուածս՝ յորում նախնական պատճառն

դառնիցի լինել ուժեղութի, յայնժամ փոխանակ թեթեւանալոյ գործածութեք դառն իրաց, կեղեւոյ քինայի, ոգեղէն և թուշական դեղոց, զգալաբար սաստկանայ փոխումն. նոյնպէս և մասունք մարդկային մարմնոյ ներքոյ անկեալք սաստիկ աշխատանի ցրտութե, և արդէն ցրտահար եղեալք, եթէ դիցի 'ի վերայ նոցա ջերմ և ոգելից ֆօմէնթօ, անդէն առ նմին ձգեն յինքեանս ըղքաղցկեղ. իսկ ընդ հակառակն՝ եթէ լուացին ցուրտ ջրով, և շփեսցին ձեամբ, 'ի միջոց սակաւ ժամուց անդէն հատատաւին. նոյնպէս և սրսկումն քանի մի շիթ ցուրտ ջրոյ յերեսս առն զրկելոյ 'ի զգայութեց, անդէն վաղվաղակի զգաստացուցանէ զնա, ուր ոչինչ այլ արտաքին խթան կարօղ է ցուցանել զայսպիսի զարմանալի ներգործութի. նմին իրի արժան է առնուլ 'ի կիր զնուազմղիչ դեղորայսն, որպիսի են աչիտօ տի հալլէռ, կմ մինսիք խառն ջրամբ սառուցի և փոքր ինչ շաքարաւ:

Երբեմն եւս ծագի 'ի զայրացմանէ մաղձի. կամ 'ի վերաւորմանէ ստամոքսի, աղեաց և այլ ընդերաց. և յայնժամ փոխումն լինի ուժգին, հանդերձ ջերմութք և ցաւով մակորովայնի. և նիւթն զոր փսխէ ախտակիրն, երբեմն լինի սակաւաքանակ և ոչհաս, և երբեմն եւս յոլդառատ. երբեմն նաև շարաւալից կամ շարաւահիւթ, և դարչահոտ. որոյ դեղորայքն են խաշուն սալէպի, գարւոյ, բրնձոյ, և էմուլսիոնէ առապիքա, ևն: Են և այլ ժայթքմունք մահաբերք. զորօրինակ է փսխումն կոչեցեալ 'ի նոցանէ առթոխթիւէ ֆիսսա, որ պատահի 'ի հատատեալ յօգուածացաւութէ. նախ բերէ անախորժութի կերակրոյ, ձնշումն, պայտուցումն և ցաւ մակորովայնի, և ապա նողկանք և ջախջախանց փսխումն. որ և բազում անգամ անվրէպ սպանանէ. և դեղն է ազնիւ գինի, էթեռէ սուլֆօռիքօ, և ափիոն, և հուսկ յետոյ քինա քինա: Այլ եթէ փսխումն յառաջացեալ իցէ 'ի փոշտանկութէ, կամ յաղեթափութէ, յայնժամ օրէն է փոյթ մեծ ունել առ 'ի ներքս մուծանել զփորլուծս 'ի ցածագոյն տեղւոջ եղեալ զգլուխ ախտակրին, և թեթեւապէս շօշափմամբ ձեռօք և մատամբ տեղաւորել զանկեալ փորոտիսն:



# ԳԼՈՒԽ ԼԴ.

'Ի վերայ կորեկային ախտի, որ յիտալացւոց՝ Էզանթեմա Միլիառէ յայնի։

Ախտս այս է տեսակ ինչ տարափոխիկ ջերմախտից, որով արտաքոյ բնութեան 'ի վեր երևին 'ի զանազան կամ 'ի բովանդակ մասունս մարմնոյ խաղաւարտք փոքրիկ, և գնդակակերպ 'ի ձև կորեկաց, յորմէ կալաւ և զանունն. իսկ գոյն խաղաւարտից այլ և այլ է, այսինքն կարմիր, սպիտակ, մոխրագոյն, կապտագոյն, և սեաւ։ Հասարակ է ախտս այս 'ի կողմանս Իտալիոյ, և յարևելեան սահմանս Արաբիոյ։ Անձինք՝ որք անզգայ իմն են բնութեամբ, և մաղասային խառնուածոց են վիճակեալք, և ևս յղի կանայք՝ մանաւանդ որք մերձ են 'ի ծնանել, առաւել ենթակայ են այսմիկ խաղաւարտալից ախտի։

Պատճառք կորեկային ախտի։

Պատճառք այս ախտի 'ի կարի առատութենէ կծու և տտիպ հիւթոց մտելոց յանօթս աւիշի և արեան, յարգելականութենէ իրիք սովորական հոսման, 'ի սաստիկ ներքին կրից ոգւոյ, որպիսի են վիշտք, անձկութիւնք, նեղութիւնք, խորին մտածութիւնք, տառապանք ևն. յերկարատև գործածութենէ աղի և տտիպ կերակրոց, և տհաս մրգոց, 'ի փոփոխութենէ օդոց, 'ի նուաղութենէ և յապականութենէ արեան. 'ի վեր քան զամենայն՝ 'ի կենակցութենէ ընդ ախտացեալ անձանց, որովհետև ախտս այս է յայտ տարափոխիկ։ Բազում անգամ ծագի ևս յախտածարծ հիւթոց, որք լինին յերկարատև խօթութեանց կամ 'ի հիւանդութենէ. և այս հիւթ ժանտալից և վտանգաւոր՝ երբեմն յարի 'ի ջերմս մարդոյ, յորմէ պատճառի տենդ-ջերմային։ Ընդ ախտիս այսմիկ բազում անգամ զուգընթաց լինի տենդն ստամոքսական կամ մաղձային, և բորբոքողական, զոր մարթ է ճանաչել 'ի ձեռն նշանաց։

Նշանք այսորիկ ախտի ։

Աստանօր խօսիմք զառաւել գլխաւոր նշանաց միայն․ քանզի գրեթէ բովանդակեն յինքեանս զնշանս ջղային կամ ստամոքսային և կամ բորբոքողական տենդից, և զնշանս ծաղկի և՛ախիբօլա անուանեալ պալարի․ 'ի մի և 'ի նոյն անձն յոլով անգամ տարորոշին և փոփոխին այլևայլ կերպիւ յայլևայլ ժամանակս նշանք այսորիկ ախտիս ։ Գլխաւոր նշանքն են թեթև ինչ ցրտութիւն, ուժգին ջերմութիւն, ցաւն գլխոյ․ երբեմն 'ի վեր երևի միշտ ինչ յատամունս, յականջս, 'ի կուրծս, 'ի թիկունս, մանաւանդ 'ի մէջքն, հանդերձ հազիւ և տագնապահնչառութեամբ ։ 'Ի դիպուածս յայս հասարակօրէն զուգընթաց լինի պակասութիւն քնոյ, տխրութիւն, երկիւղ, ճնշումն կրծոց, զարհուրանք, լքումն զօրութեան մարմնոյ, նուաղումն սրտի, և նողկանք․ մէզն լինի ջրային և տժգոյն․ զարկն երբեմն հարկանէ խիստ և արագ, և երբեմն թոյլ և ընդհատ․ լեզուն սպիտակ և ցամաք․ ախտակիրն զգայ ցաւ ինչ խթիչ 'ի թիկնամէջս, 'ի սրունս և 'ի մատունս, հանդերձ թմբրութեամբ, և յօժարութեամբ փսխման ։

Յետ այսոցիկ նշանաց 'ի վեր երևին խաղաւարտք փոքրիկ 'ի կուրծս, յորովայնս, 'ի բազուկս, և յայլ մասունս մարմնոյ հանդերձ մարմաջիւք, և գարշահոտ քրտամբք․ այսոքիկ խաղաւարտք երբեմն երևին զկնի երկուց կամ երից և կամ չորից աւուրց ախտակրութեան հիւանդին․ և երբեմն ոչ 'ի վեր երևին, բայց եթէ զկնի 11 կամ 12 և կամ 15 աւուրց ։ Իսկ եթէ ընդ ախտիս համաղոյզ գտանին և նշանքն ջղային տենդի, որպիսի են ցնցումն ձգանաց, թմբրութիւն ձեռաց և ոտից, անհանգստութիւն, սաստիկ տրտմութիւն, զառանցանք ; մոլեգնութիւն, ճնշումն, տապ, ցաւ մորթոյն, ցամաքութիւն և դողումն լեզուի, դադարումն քրտանց, խոնարհումն խաղաւարտից, անկանոնութիւն և խստութիւն զարկի բազկին, յորդութիւն միզի, և ակամայ շարժողութիւն մկանանց, են նշանք յոռեգոյնք ։ Նոյնպէս և հոսումն որովայնի, գարշահոտութիւն կղկղանաց և քրտանց՝ են նշանք չարագոյնք և վտանգաւորք ։

Կառավարութիւնք և դեղորայք 'ի ձեռ արկանելիք 'ի դիպուածս յայս :

'Ի կառավարութեան այսր ախտի փոյթ մեծ ունել պարտ է ըստ կարի առ 'ի կշիռ պահել զներքին տրամադրութիւն հիւթոց, և զզօրութիւնս ախտակրին, և սակաւ սակաւ քաջալերել զնա, և յետ այնորիկ ըստ բնութեան ցուցանելոյ՝ արգելուլ զպատճառս ախտին: Արդ եթէ իցէ ախտս 'ի թեթևագոյն աստիճանի, օրէն է դնել զոտսն 'ի ջուր ջերմ, և յաճախակի տալ ախտակրին ըմպել զխաշուն ֆիօռ տի սամպուքօի. և զգուշանալ զի մի՛ արգելական մնասցէ օդն 'ի մէջ սենեկի հիւանդին. պարտ է բանալ զպատուհանս և զդրունս սենեկին առ 'ի զովացուցանել, և վերանորոգել զօդն. և արժան է պահպանել զհիւանդն 'ի հանգիստ, և զգոյշ 'ի ցրտոյ; հեռի առնել 'ի նմանէ զայն ամենայն, որք պատճառեն զխիղճ և զտառապանս սրտի: Կերակուրն լինելոց է թեթևագոյն և սակաւ քանակութ̅բ̅. ըմպելին զուարճարար և զովացուցիչ, որպէս սիէռօ տի լաթթէ, և ջուրն գարւոյ :

Ընդ ախտիս այսմիկ երբեմն զուգընթաց լինի բորբոքողականութիւն. յայնժամ օրէն է առնուլ 'ի կիր զնոյն խնամս և դեղորայս 'ի դիպուածս բորբոքման՝ կոչեցելոյ բորբոքումն լերդի. զոր մարթ է լիով տեսանել 'ի գլ. ե̅. երես 107: 'Ի դիպուածս, յորում ընդ ախտիս զոյգ գտանին և նշանք ստամոքական տենդի, յայնժամ պարտ է 'ի գործ արկանել զնոյն հնարս և զդեղորայս ործացուցիչս և լուծողականս 'ի դիպուածս ստամոքական տենդի. որպ̅ տեսաւ 'ի գլ. ա̅. երես 96: Իսկ 'ի դիպուածս, յորում նշանք ջղային տենդի 'ի վեր երևին, հարկ 'ի վերայ կայ յայնժամ 'ի գործ արկանել զնոյն դարմանս և դեղորայս, զորոց գրեցաք 'ի տեղիս իւրեանց 'ի դիպուածս տենդի կոչեցելոյ ֆէպպռէ նէռվօզա: Բայց որովհետև 'ի դիպուածս՝ ոգիք ջղաց սովոր են լինել յոյժ տկարագոյն և թուլագոյն, վասն որոյ օրէ՛ն է խօթացելոյն 'ի կիր առնուլ ժամանակ ինչ ինֆուզիօնէ տի քինաքինա. զկերպն պատրաստելոյ և զի՛ կիր առնլոյ [առնելոյ] տես 'ի հատ. բ̅. 'ի տառն Ի, 'ի կարգի իւրում:

դուածացաւութիւն. արիւնառուշտ փորհարութիւն, մօռպօ քօլէռայի, եւն:

Նշանք սրտախօթութեան:

'Ի սաստկութենէ կամ յերկարատեւութենէ ախտիս բազում անգամ 'ի վեր երեւին եւս փսխումն, ծարաւ սաստիկ, դժուարաշնչութիւն, անհանգստութիւն, բաբախումն սրտի, սարսուռ, պակասութիւն ուժոյ եւ կենդանական զօրութեանց, դժուարամիզութիւն, ցնցումն ջղաց եւ մկանանց, եւն: Են եւ այլ ինչ նշանք վատթարագոյն եւ մահահրաւէրք. զորօրինակ ուժգին ջերմութիւն, առաւելութիւն ցաւոց ստամոքսի, ցուրտ քրտինք, պաղումն ծայրից անդամոց, բորբոքումն ստամոքսի, յաճախակի հեծկլտանք, անմիզութիւն, ուշաթափութիւն, եւ անդամալուծութիւն:

Խրատք եւ կառավարութիւնք 'ի վար արկանելոյ 'ի դիրուածա-
ցայս:

Բայց որովհետեւ ախտս այս է վտանգաւոր, հարկ է փութապէս 'ի վար արկանել զբարեգոյն նպաստս եւ ըզհնարս: 'Ի վերոյիշեալ նշանաց այսորիկ ախտի քաջայայտ երեւի, եթէ հարկաւորապէս պահանջի կառավարութիւն ինն, որով մարթ իցէ արգելուլ զնախնական պատճառս, եւ բարեխառնել զներքին այլայլութիւնս. որպէս զի 'ի կշիռ պահեսցի ներքին համաձայնութիւն հիւթոց, եւ գործարանաց, եւն: Արդ՝ առ 'ի կատարել այսորիկ ամենայնի հարկ 'ի վերայ կայ հիւանդին հրաժարել յամենակերպ թթուտախպ իւղային եւ դժուարամարս կերակրեղինաց, եւ ոգեւոր հեղանիւթից, եւ պիտի փախչել զցրտակութիւն, եթէ բնակեալ իցէ 'ի տեղիս ինչ ուրանօր օդն ապականեալ եւ փտեալ լինի. եւ պարտ է միշտ զուարթ եւ ուրախ լինել. չէ օրէն բնաւ գործել ինչ ընդդէմ կամաց նորին, այլ մանաւանդ ջանալ 'ի կատարել զախորժակս եւ զխնդրուածս նորին. եւ հարկ է բարեխառն եւ չափաւոր լինել յամենայնի՝ եթէ 'ի սնունդս, եւ եթէ 'ի վաստակս, յամր շարժելով. եւ յետ այսորիկ պարտ է 'ի բաց հերքել զախտն 'ի ձեռն յետագայ դեղորէից:

Նախ՝ յորժամ սրտախօթութիւնս այս պատճառի 'ի տկարութենէ կամ 'ի թուլութենէ ստամոքսի, եւ 'ի խանգարմանէ գործողութեան մարսողութեան, յայնժամ առաւել գործունեայ դեղն է մի դրամ աւագաւապատօն, զոր

օրէ՛ն է կրկնել երկու կամ երեք անգամ. զնոյն ներգործութիւն ունի և ռատիչէ տի քօլօմպօն, զոր պարտ է առնուլ նոյնաքանակ: Մի կամ երկու աւուրբք զկնի խաղընդեղի պարտ է տալ հիւանդին ինֆուզիօնէ տի քինա քինա, կամ տի գուասսիա, զորս կանխաւ գրեցի: Նոյնպէս օգտաւէտ է աքուա մառցիալէ տի սփա, տալով ախտաժետաց ժամէ 'ի ժամ չորս ունկի 'ի պահ առաւօտուն, մինչև լցցի լիտր մի յաւուրն: Եւ եթէ վերագրեալ կամ նոցին նման դեղորէից չապաքինեսցի ախտն, յայնժամ պարտ է դիմել 'ի գործածութիւն խարտածոյ երկաթոյ՝ խառն ընդ խաշնդեղի. զորոյ զպատրաստելոյ կերպն և զկիրառութիւն մարթիս գտանել երես 161:

Երկրորդ՝ եթէ ախտս այս յառաջ գայ 'ի սուր և 'ի կծու մաղձէ, և յայլ վնասակար հիւթոց, յայնժամ պատշաճագոյն դեղն է դրգալ մի սրճոյ սփիռիթօ տի նիթռօ տօլչիֆիքաթօ, զոր պարտ է խառնել ընդ մի սկահակ հասարակ ջրոյ կամ նոյնաքանակ չայի, և առնել լինել ըմպելիս այս 'ի պահ առաւօտուն 'ի ծոմուստ, և այլ նոյնչափ ընդ երեկս: Հիւթն կիտրոնի կամ լեմոնի յոյժ օգտաւէտ է 'ի դիպուածս յայս:

Երրորդ, յորժամ ախտս այս ծագի 'ի տոխմ և 'ի թթու հիւթոց ժողովելոց 'ի մէջ ստամոքսի, յայնժամ հասարակօրէն պարտ է առնուլ 'ի կիր զընկլուզիչ կամ ընկղմիչ դեղորայս, որպիսի են մակնեզիա պիանքա, քռէթա, ևն: Զոր օրինակ. ա՛ռ ունկի մի քռէթա, երկու տրամ՝ կօմմա առապիքա, և կէս ունկի՝ մաքուր շաքար. յաւելլով 'ի նոյն մի և կէս լիտր ջուր ցուրտ. զոր պարտ է առնուլ չորս կամ հինգ անգամ յաւուրն, ըստ չափու միոյ սկահակի գինւոյ կամ չայի: Իսկ եթէ տհաճելի է նմա գործածութիւն քռէթաի, փոխանակ նորա առնումք 'ի կիր զհեստագայ ըմպելիս. եթէ զի սա առաւել օգտակար է և նուազ խցանօղ: Ա՛ռ դրգալ մի սրճոյ օքքի տի կռանքի բռէբառաթի, յաւելլով 'ի նոյն սկահակ մի ջուր կինամոնի կամ անանխոյ, և տուր ըմպել հիւանդին 'ի պահ առաւօտու, միայն թէ կրկնելի է այդ գոնէ մինչև յութ օր:

'Ի վեր քան զամենայն օգտակար և կարի շահաւէտ դեղն վասն այսր ախտի՝ է մակնեզիա պիանքա, տալով հիւանդացս յառաւօտէ յառաւօտ կէս տրամ 'ի ծոմուստ: Ոչինչ արգել մի կայ գործածութեան փսխողականի. զոր պարտ է առնուլ 'ի կիր նախ քան զամենայն 'ի սկըզբան անդ հիւանդութեան: Քսան ցորեան իբեքաքուանա

չամփ է բարուղք, և բաւական առ 'ի մաքրել զստամոքսն, և 'ի դուրս վանել զախտարծարծ հիւթսն ։ Իսկ եթէ ախտս այս պատճառեալ իցէ 'ի վիզոց, և 'ի քամիաւոր իրաց, յայնժամ պարտ է ախտաւորին պահել զանձն ջերմապէս, և ըմպել ստէպ ստէպ փքահալած գեղորայս, որպիսի են անիսոնն, կոճապղպեղն, կինամոմնն' սև պղպեղն, հիլն, հատն գինհւոյ, սամիթն, երիցուկն, ևն ։ Նոյնպէս և օգտակար է թինթուռա տի ռապառպառօն, ռօմն, ցքին, ազնիւ գինին, ևն ։ Դարձեալ, եթէ ախտս այս պատճառեալ իցէ 'ի ճճեաց, յայնժամ օրէն է ըղհետ երթալ կանոնի և դարմանոց, զորմէ խօսեցաք 'ի գլ. ԽԾ. երես 48 ։



# ԳԼՈՒԽ ԼՕ.

'Ի վերայ ախտին որ ասի' ոփօռապուլիօ ։

Ախտս այս է ապականագործ խօլթութի ինչ, որ սովորաբար գոյանայ 'ի փորոտիս մարդոյ, և անտի առսակաւ սակաւ տարածանի ը՟ բովանդակ անդամս մարմնոյ, և մասաւորապէս 'ի լնտերս ատամանց, որ գլխովին կորուսանեն զառաջին գոյնս իւրեանց, և լինին մանուշակագոյն, և հետևապէս ստանան զնեխութի. և երբեմն ևս բռնացեալ անհնարին հարուածս գործեն ։ Ախտս այս է յոյժ յաճախ 'ի կողմանս հիւսիսոյ քան յայլ մասունս աշխարհի ։ Գտանի ևս 'ի խոնաւուտ և 'ի ցածագոյն գաւառս, ուր ջուրք լճացեալ կան ։ Անձինք, որք վիճակեալք, են սևամաղձային խառնուածոց, մանաւանդ նոքա' որք վարեն զանշարժական կեանս, են առաւել ենթակայ այսր ախտի ։

Ցաղագս պատճառաց ոփօռապուլիօ ախտին ։

Ընդ երկար ժամանակս գործածութին աղի, տտիպ և դժուարամարսելի կերակրոց, տարապայման որկորութին, հոգքն, մոլութքն, անկարգութի կենաց. երկիւղն, տրտմութին. տագնապքն, և այլ ամենայն կիրք' որք ապականեն զհիւթս և զջղոփշիս մարմնոյ, և թուլացուցանեն

ընկերքին գործարանն, հասարակօրէն պատճառեն զա|
ղայս ։ Արգելումն իրիք սովորական հոսման․ որպիս|
Թանչք, քրտն ոտից, ևն․ խոնաւութին հանդերձից
մահճաց, և բնակութն, ևս օդն ապականեալ, և որ
գէշեալ և փտեալ մսան 'ի տեղւոջ ուրեք, նաև եր|
րագոյն ճանապարհորդութիւնն ը̄ ծով, և ընդ ցամ|
կարեն պատճառել զախտս զայս ։ Եւս կենակցութին
ախտացեալ անձանց՝, որովհետև ախտս այս է երբեմ|
պէս փոխադրական ։ Դարձեալ, ախտս այս բազում
գամ ևս լինի ժառանգական, և յայսպիսի դիպու|
հասարակօրէն լինի անբուժելի ։

## Յաղագս Նշանաց սքօռբուտեան ախտի ։

Սեպհական նշանքն են անսովոր տկարութին, և ծ|
րութին ինչ, զոր ախտակիրն զգայ 'ի բովանդակ անդ|
մարմնոյ, դժուարութին 'ի շնչառութն, մանաւանդ |
շարժման կամ թեթև ինչ աշխատանաց ։ Լնդերքն |
ուռուցեալք, արիւնաթորք, և նեխեալք, որք երբ|
ևս ծախին դլխովին ։ Հունչն որ ելանէ ընդ բերանն՝ |
զազրահոտ, և նողկալի ։ Մէզն երբեմն լինի առաւե|
դեղին, և երբեմն նուազ, և թխագոյն և մրրալից ։ |
զում անգամ ախտս այս զետեղի 'ի յօդուածս անդամ|
և յայնժամ վաղվաղակի զհետ գայ աժգունութին ին|
դէմս և դժուարուն 'ի ծամել․ երբեմն այտոյցք և բ|
կապտագոյնք կամ դեղնագոյն 'ի վէր երևին 'ի սրուն|
երբեմն ևս վատութին յոյժ 'ի նոյն անդամսն ։

Յերկարաձգեալ մնալ այսորիկ ախտի, և 'ի ժա|
մանել 'ի յետին աստիճան, սովորաբար վերոյիշեալ
ուռոյցքն և բիծքն առ փոքր փոքր ժամանեն 'ի ծունգ|
քունքս երանաց, 'ի բազուկս, ևն․ և ուրեք ուրեք
ընկամուռնս, և 'ի փայծաղն․ և յայնժամ իսկ և իսկ զ|
գան ճնշումն կրծոց, բաբախումն սրտի, և սաստիկ ցա|
ճախակողմն, հազ ուժգին, անհամաձայնութիւն զա|
բազկի, երբեմն ևս յորդառատութն արեանց ։ Են և
ինչ նշանք անսովոր․ այսինքն նեխութին, և ցաւ ա|
մանց, յանկարծական և յորդ դատարկումն Թանչից|
վեր երևումն վիրաց կամ խոցից 'ի լնդերս, 'ի կուրծ|
և յայլ անդամս մարմնոյ, փրփրախառն և զազրա|
Թորումն որովայնի, ևն ։ Յետ այդոցիկ անսովոր և |
հուրեալ նշանաց՝ ախտս այս աւարտի երբեմն 'ի ջրգո|
Թի, յորովայնալուծութի, յախտնդանատութի, յան|

մալուծութիւն, յախտն ծիւրական, և 'ի ցնցական. և մերթ ևս 'ի նեխութեն աղեաց, և 'ի քաղցկեղ։

Ցաղագս կառավարութեն և դեղորէից, որոց պէտք է 'ի վեր առնանել 'ի դիպուածս սքօռպուտօ ախտին։

'Ի սկզբան անդ ախտիս իսկ և իսկ արժան է փոխել զբնակութիւն, եթէ բնակեալ իցէ 'ի տեղիս ինչ ուրանօր օդն փակեալ և խափանեալ լինի, յայնժամ հարկ է երթալ յագարակս, կամ 'ի բնակութիս ուր լինի օդն մաքուր, չոր և առողջարար, և միշտ շրջագայիլ անդ ըստ ախորժակի իւրում. բայց պարտ է ախտակրին անձնապահ լինել 'ի ցրտոյ յընթացս այսպիսի շարժողականութեան, և այլն, և պարտ է յարաժամ զուարթ և ուրախ լինել, և հրաժարիլ յաղէ 'ի տտիպ, և 'ի դժուարամարսելի կերակրեղինաց։ Փոխանակ վերոյասացեալ կերակրեղինաց, և պարարտ մսոց, եղիցի ձագ հաւուց, կաքաւք, ծիտք, աղաւնիք, և կաթն. և խաւարտքն՝ որպիսի են կաղամբ, շոմին, շողգամ, փրփրեմ, քարոս, ճակնդեղ, կամ բանջար, թրթնջուկ, հազար, եղերդ, եղերդակ, կարոսն, բողկ, թէ՛ ընտանի, և թէ վայրենի. և այլք, կիտրոն, կեռաս, բալ, ելակ, լեմոն, խնձոր, ևն։ Սեպհականն և անվրէպ ներգործիչ դեղորայքըն 'ի դիպուածս ախտիս՝ են յետագայքդ։ Ա՛ռ կէս ունկի՝ տերևն քօքլէարիոսի, երեք տրամ՝ տերևն թռիֆօլիոսի, և նոյնչափ՝ տերևն քռէշիօնէի. կէս ունկի՝ տերևն պէքքապունկայի, և նոյնչափ տերևն նաստուրցիօի, և երկու տրամ՝ արմատն ռաֆանօ ռուստիքանօի։ Մանրեա՛ զամենայնն 'ի միասին, և 'ի հասարակ ջրի եփեա՛ եռացմամբ իբր քառորդ մի ժամու. ապա զտեա՛, և մնացէ ութ ունկի, յոր յաւե՛լ երկուսն շիթս էլիսիրէոի վիթրիօլօ։ Ըմպելւոյ սմանէ արբցէ հիւանդն երկու ունկի չորս անգամ յաւուրն, միայն թէ կրկնելի է այդգունէ մինչև 'ի վեց ամիսս։ Բայց մեք զայս դեղորայս ևեթ անբաւական համարիմք 'ի պատճառել զառողջութի. վասն որոյ հարկաւոր դատիմք ևս սահեցուցանել զորովայնն՝ ասսկապէս 'ի ձեռն մեղմ և թեթև լուծողականաց, որպիսի են թամառինտի, և քռէմօռ տի թառթառօ, այլև միանգամայն նպաստամատոյց լինել ներգործութեն այսոցիկ լուծողականաց 'ի ձեռն գրեխաց յօրինելոց կաթամբ, և խոտեղինօք, որպիսի են ալթէա, լաքացիօ մանճիօռէ, մոլոշն, ևն։

Եւ 'ի դիպուածս տեառս ունին մասնաւոր իմն ներգործութիւն գեղորայքս, այսոքիկ. այսինքն տէքօցիօնէ տի ճէամօկլի, և տի սաբինօ. չիճուկն կաթին պատրաստեալ մանանխով, պջուա տի քաթռւամէ, ակռիմօնիա, էտէռա թէռռէսթռէ, ռուբէթթա, բանքռաքուլօ, մօսթօ, չէնթաուռէա մինօռէ, և այլն։ Արդ՝ յորժամ 'ի ձեռն վերոյասացեալ կառավարութեանցս և գեղորէիցս ոչ փարատին նշանքն, և միւսն տակաւին նոյն օրինակ, յայնժամ արժան է 'ի միտ առնուլ թէ յառաջ եկեալ է ախտըս յապականութէ արեան, և 'ի տարապայման թուլութէ ներքին գործարանաց. և յայսպիսի դիպուածս պարտ և պատշաճ է 'ի կիր առնուլ զսալսապարիլիա, զպարտանա, և զայլն։

Ականատես եղէ, եթէ 'ի դիպուածս տեառս զկնի 'ի գործ արկանելոյ զայլ ամենայն գեղորայս՝ ապաքինեցաւ ամն կատարելապէս միայն գործածութբ իւրեք գեղորէից սալսապարիլիաւ պատրաստելոյ, զոր մարթ է պատրաստել յետագայ եղանակաւ։ Ա՛ռ երեք ունկի՝ սալսապառիլիա, երկու ունկի՝ սէռբէնթառիա վիռճինիանա, և նոյնչափ պառատանա, երկու և կէս ունկի քօքլէառիա, կէս ունկի ակռիմօնիա, և նոյնչափ սասաֆռաս։ Թրմեա զամենայնն 'ի մէջ միոյ հաղեղէն անօթոյ, մինչև ց6 ժամ երեք քինթա հասարակ ջրով, և թո՛ղ եռալ մինչև ցպակսիլ կիսոյ մասին ջրոյ, և ապա զտեա. յոր յաւե՛լ 'ի վերայ մի և կէս տրամ սբիռիթօ տի սալ տօլչէ, կամ էլիսիռէ տի վիթռիօլօ, և տո՛ւր ախտակրին յիւրաքանչիւր երեք ժամու չորս ունկի։

Բա՛ց 'ի դեղորէից աստի օգտաւէտ յոյժ լիցի արբուցանել հանապազօր չորս ունկի դեղոյն յօրինելոյ յետագայ եղանակաւ։ Արդ՝ հեղ երեք քինթէ սպիտակ գինի յապակի անօթ, և ընդ այսմ գինւոյ խառնեա բուռն մի տերևն քռէշիօնէ անուանեալ խոտոյ, և նոյնչափ՝ տերևն պէքքապունկայի, և երեք ունկի՝ ռաֆանօ ռուստիքանօի, և երկու ունկի՝ ճինեպռօ, և մի բուռն քօքլէառիա. քաջ խցեալ զանօթն վերոգրեալ, թո՛ղ զխառնուրդս զայս մարսիլ 'ի միմեանս ընդ միջոց ութ աւուրց։ Յետ այնորիկ փոխադրեա՛ զհեղեղուկս զայս յայլ ապակի անօթ, քաջ խցեալ խփով։ Բայց առցի մի՛ աւելի աստի քան զերկու ունկի՝ առ մի նուագ, և տացի բաւական միջոց ժամանակի ընդ մի և ը̄ միւս արբուածն այնր չափոյ։



# ԳԼՈՒԽ Լ.

Յաղագս դադարմանց կամ խցանաց խողովական ուռուցից, որ ասի՝ օսթռուցիոնէ փէր շիռռօ, և յաղագս ժաղչիէղի, որ կոչի՝ ժանժէռօ.

## ՑՕԴՈՒԱԾ Ա.

Երկեակ է տեսակ ախտի ուռուցից. ոմանք արխենային, և ոմանք յառաջ եկեալ յոր և իցէ հիւթոց. զորօրինակ աւիշին, մաղձի, ևն: Խցանք արխենային են այնոքիկ, որք գտանին յերիտասարդս, և յարխենային անձինս, որք պատճառին յարգելմանէ հոսմանն սովորական արեան, և յայլ ինչ լինելէ անօթոց: Ուռոյցս այս գլխաւորապէս տիրապետէ 'ի թոքս, և 'ի լեարդն, և հասարակօրէն 'ի վերայ յարձակի ուրեք մեծաւ խստիւ, և ցաւօք, և զուգընթաց ունի ընդ իւր զմաստնաւոր իմն ջերմութիւն, զորօրինակ սովորաբար դէպ լինի 'ի դիպուածս հանապազօրեայ տենդից, և ուրեք ուրեք սաստկացեալ ջերմութիւնս այս հասանէ յառաջին աստիճան բորբոքողականութե:

Իսկ երկրորդ տեսակն խցանաց գտանի հասարակօրէն յանձինս վիճակեալս մելամաղձային, կամ մաղասային ախտագնեալ և խուլական բնութե, և ևս յայնոսիկ որք ենթակայ են ախտի կոչեցելոյ սքօռպութօ: Դարձեալ. մարթ է գտնել գալ իսկ և իսկ զկնի դադարման կամ խցման արեանց, բորբոքողականութե քառօրեայ տենդից, և այլ որ և իցէ հնացեալ ախտից. 'ի սկզբան անդ ցաւն է թեթևագին, և պարզ, բայց առ սակաւ սակաւ մարթի յառաջանալ և հասանել մինչև ցաստիճան ցաւոց կարծրացելոյ ուռուցից, որ կոչի՝ շիռռօ: Այսր տեսակի ուռուցից բնակարանն կամ կայանն սովորաբար է մասնն, և աղիքն. և ոմն իրք մարթ է 'ի վեր երևիլ 'ի բերանն, 'ի պարանոցն, 'ի ստինս, 'ի քունչս երանաց, յարգանդս ևն. և ևս 'ի լեարդն, 'ի միզանցս, 'ի մեսենդերս, 'ի փայծաղն, և յայլ ամենայն մասունս ստորին որովայնի, և թոքոց: Ուռոյցս այս երբեմնապէս պատահի 'ի թ[illegible]ն, և յանժամ ցաւն առաւել յաստիճան կարծրացելոյ ու-

ռուցին կոչեցելոյ շիռօ, ըստ պայմանի հասակի ա
ասցելոց ։

### Յաղագս պատճառաց խցանաց խոռոչական ատամանց ։

Աստակագին ջերմութիւն, եւ առատութիւն արեան
անգործունեայ եւ տաանձնացեալ վիճակն, կարի աշխ
տանքն, եւ շնչարգելութիւն մարմնին պատճառել զուռոյ
վերոյիշեալ, նոյնպէս պարարտագոյն կերակուրքն, ոգ
ելից հեղանիւթքն, գործածութիւն եւ ոմանց սատակա
գոյն դեղորէից ։ Եւ դարձեալ, կարեն պատճառել զու
ռոյցս զայս արգելականութիւն եւ դադարումն, կամ ան
չափ յորդառատութիւն որ եւ իցէ սովորական հոսմանց

### Յաղագս նշանաց խոռոչական ատամանց ։

Նշանքն արտաքին խցանաց նոյն են ընդ նշանաց բո
բորբոքականութե, բայց դոյզն ինչ թեթեւ եւ հեզիկ ։ Իս
պարզ խցանքն կամ դադարումն մարթի ցրուել զխով
յընթացս երկուց աւուրց, եւ սակաւ, յորում զի
պուածի ոչ գտանի բնաւ բորբոքականութի. զի եթ
գտանիցի՝ ոչ կարէ ցրուել եւ փարատել, բայց եթէ յըն
թացս վեց կամ եօթն աւուրց ։ Իսկ նշանք երկրորդ տե
սակի խցանացն՝ են առաւել դժնեայ. եւ եթէ իցեն ա
ռաւել 'ի խորագոյնս հաստատեալ, դժուարաւ ճանա
չին, եւ չէ՛ մարթ իմանալ շօշափմամբ, յորժամ ենթա
կայն է պարարտամարմին. բայց ոչ այդպէս, եթէ իցէ
վտիտ, եւ նիհար. քանզի յայնժամ դիւրաւ ճանաչին ա
'ի լեարդն եւ 'ի փայծաղն խցանք, բայց որ 'ի պանկրատ
եւ 'ի մեզենդերս են, դժուարաւ ճանաչի ։ Բայց գիտե
արժան է, զի խցանքն եւ կարծրացեալ ուռոյցքն 'ի վե
րեւեալք յաղիսն, մանաւանդ 'ի լեարդն, յոլով անգա
եւ ոչ ստուարացուցանեն, այլ առաւել անձկացուցեա
նիհարեն. եւ յայնժամ դիպուածի մարթ է ճանաչել զայ
'ի նշանաց խորագոյն իմն ցաւոց, զոր ազդողագոյն եւ ը
դեայ ախտակիրն 'ի շօշափելն. եւ եւս 'ի նշանաց իրիք ծա
րութե զոր յանձին զգայ ախտակիրն ։ Իսկ եթէ 'ի յիշ
տակեալ նշանացս բաւականապէս ոչ ճանաչի զխարգ
խցանաց եւ կարծրացելոց ուռուցից, յայնժամ հնար
ճանաչել 'ի ցաւոց, եւ 'ի խոր իմն ծանրութէ զոր սով
րաբար զգայ ախտակիրն 'ի վերայ վշտագնեալ մասանց,
'ի վեր ամբարձմանէ բովանդակ որովայնի, 'ի դեղնութէ

յայտուցից երեւաց, եւ ոտից, 'ի շնչարգելութէ, և 'ի հազից։

Բայց 'ի դիպուածս, յորում ախտն կամ ուռոյցն 'ի վեր երեւի 'ի թոքն, 'ի լեարդն, և 'ի փայծաղն, յայնժամ պա՛րտ է ուշադրութ՟ նկատել 'ի նշանս անձկութե, գոյն դողանաց, և տաղտկութե անմարսողութե, ձգուածոց, այտուցից ստամոքսի, չորութե բերանոյ, անհանգստութե, և կորստեան քնոյ. 'ի գտանել այսոցիկ պարագայից, և զարկ բազկին գրեթէ միշտ հաստանէ կամ հարկանէ որ-պէս 'ի դիպուածս հանապազօրեայ տենդից, և ախտա-կիրն իսկ և իսկ զկնի կերակրոց զգայ զգրգռումն ինչ, և բազում անգամ եւս զլուծումն որովայնի, և զյորդառատ հոսումն այլագունեալ միզի. այսոքիկ նշանք բաւականա-պէս բացայայտեն, յորժամ ախտն 'ի վեր երեւի 'ի ստո-րին որովայնի, և միանգամայն 'ի կուրծս։

Բաց յայսոցիկ նշանաց՝ են և այլ նշանք՝ 'ի ձեռն որոց մարթ է մասնաւոր ինն եղանակաւ ճանաչել զխուն բնա-կարանն ախտի. դժուարուն 'ի կլանելն՝ տայ միտ իմա-նալ, եթէ գուռն որկորոյն, և որկորն առկցեալ են իւ-րաց։ Մղձկումն և ճնշումն նշանակէ զխցանս թոքոց։ Դեղնութիւն կամ դալուկն ցուցակ է խցանաց լերդի։ Նշանք ախտին կոչեցելոյ՝ սքօռպութօ, եւ նշանքն ախտա-գանաց գուշակեն զխցանս փայծեղան։ Հիւծութիւն և լուծումն որովայնի յայտ առնեն զխցանս մեզենդերա-կան։ Փսխումն կամ ժայթքումն տեռողական բացայայտէ զխցանս ստամոքսի, և պանկրատի, եւ բիլօռօի։ Դեղ-նեայ ցաւք և գալարումն աղեաց՝ որք սովոր են պատա-հել 'ի դիպուածս ախտին կոչեցելոյ՝ բաասիօնէ իլլիաքա, ցուցանեն զխցանս խողովակի փորոտեաց։

Գիտել արժան է աստէն, եթէ խցանք, կմ կալուածք արիւնայինք մարթին ապաքինել կարի դիւրապէս. բայց 'ի վերայ այսր ամենայնի մեծաւ զգուշութ՟ պա՛րտ է խնամ տանել. ապա թէ ոչ՝ բազում անգամ զհետ գայ բոր-բոքումն, եւ և քաղցկեղ։ Դարձեալ, գիտել արժան է, եթէ քաղցկեղն փայծեղան ոչ է այնքան երկիւղալի. բայց լերդին, և մեզենդերականքն են յոյժ դժնեայ. իսկ որք պատճառեն զցաւ ինչ, մարթ է յայնժամ յուսադիր լի-նել ապաքինութե։ Հուսկ յետոյ քաղցկեղն՝ որ 'ի վեր երեւի 'ի զաւակարան, և 'ի խոռոչս այլ ինչ աղեաց, հա-սարակօրէն են երկիւղալեց. քանզի աւարտին յախտս ջրգողութե, և անսնածութե, որ ասի՝ աթռօֆիա։ Բայց զիա՛րդ և իցէ, պա՛րտ է փոյթ մեծ առնել 'ի դիպուածս

այսոցիկ ախտից կմ՟ խցանաց, մեծաւ ժրաջանութ՟ ՚ի սկզբան անգ. իսկ և իսկ յերևիլ առաջին նշանաց՝ նպաստամատոյց լինել ախտակրին, և դարման տանել. ապա թէ ոչ՝ յարմատանալ ախտիցս դրեթէ սովորաբար լինելին անբուժելի, և անապաքինելի:

Յաղագս խնամատարութեանց, զորս պարտ է ՚ի կիր արկանել ՚ի դիպուածս խցանաց:

Մեղմական դարման այսորիկ ախտի՝ է ժուժկալութիւն կերակրոց. ՚ի ձեռն որոց բազումք ապաքինեցան, առանց ինչ այլոց ունելոյ դեղորէից. ուստի պարտ է հրաժարել յամենայն կերպ ոգելից հեղանիւթոց, և ՚ի դժուարամարսելի կերակրեղինաց. որպիսի են՝ մածեալ խաղենին, ձարաղն. ևն: Սովորաբար պատշաճական կերակրեղէն ախտակրիս՝ է որթենի, և պարանոցն ոչխարի, և ըմպելի՝ զտագոյն շիճուկն կաթին, տէքօցիոնք ու լապացիօ, էնօլա քամբանա, սբառաձիօ, ցինկուա չէռվինա, կամ սքօլօբէնտրիում, քուէչիոնէ, ևն: Օգտակար է ստէպ ստէպ գործածութիւն բաղանեաց, և կակղացուցիչ իւղոց, զորս պարտ է արկանել ՚ի վերայ վշտացեալ մասանց. շարժողականութիւն կամ շրջիլն ՚ի զբօսանս նոյնպէս է օգտակար: Բայց պարտ է լինել ըստ կարողութե ախտակրին, միանգամայն անձնապահ լինելով յամենայն իրաց, որք ածեն զնեղութիւս, զձանձրութիւս, և զզայրացումն, այլ ջանալ միշտ յուրախութի, և ՚ի զուարճութի:

Յաղագս դեղորէից, զորս պարտ է ՚ի կիր արկանել ՚ի դիպուածս խցանաց՝ իւրաքանչիւրոցն ուրոյն ուրոյն:

՚Ի դիպուածս արիւնային խցանաց, հարկաւորապէս պահանջի երակ հատանել, զոր և պարտ է միանգամայն կրկնել ըստ ցուցանելոյ հարկին, նկատեալ ՚ի պարագայս զարկի բազկի, և արիւնային և հիւթալից խառնուածոց, արգելման իրիք սովորական հոսմանց ևն: Իսկ ՚ի դիպուածս աւշական խցանաց կամ կալուածոց, չէ բնաւօրէն երակ հատանել. այլ յայնժամ պատշաճական դեղորայք են գործածութիւնք լուծողականաց, և հանքային ջուրց: Բայց ՚ի դիպուածս քաղցկեղային խցանաց և ուռուցից՝ երակ հատանելն հարկաւորապէս պահանջի, յորժամ ՚ի վեր երևի արգելումն ինչ տեռատեսական կամ թթախտական արեան. բայց եթէ ոչ գտանիցին այդոքիկ

նշանք, յայնժամ ոչ է պատշաճ երակ հատանել. այլ պարտ է ձեռնամուխ լինել 'ի գործածութիւն հեղեղկիչ և կակղացուցիչ դեղորէից. և հանքային ջուրց զօրս պարտ է ըստ պահանջելոյ հարկին 'ի գործ արկանել ջերմապէս կամ ցուրտ:

Այլ եթէ խցանքն կամ կալուածքն պատճառեալ իցեն 'ի ոսկրութենէ ստամոքսի, կամ յանմարսողականութենէ, յայնժամ հարկ է 'ի կիր արկանել զյետոյադայ ջուրս. այսինքն աքուա տի բասսի: կամ տի ֆօռձէս, և կամ տի վալս, և կամ տի կրանտուքա են: Իսկ եթէ պատճառեալ իցէ յանմաքրութենէ և 'ի պղտորութենէ արեան յառաջ եկելոյ յանմարսողականութենէ, յայնժամ պատշաճագոյն է գործածութիւն դեղորէիցս, աքուա տի բլօմպիէռիս, կամ տի վէքի, կամ տի պօռսօնէ, կամ տի պառէձէ, և կամ տի մօնթէ աօռօ, որոց գործածութիւն յայսմ գիտուածի յոյժ գերահռչակ է. երբեմն և հարկաւոր է գործածութիւն մեղմ և թեթև լուծողականց, մանաւանդ եթէ 'ի գործածութենէ հանքային ջուրց ոչ երևեսցի ներգործութիւն ինչ բաւական:

Իսկ յորժամ ըստ իւրաց ինչ տեսանիցին նշանքն տալաքինութեան օր քան զօր 'ի լաւ անդր յառաջանալ, յայնժամ պարտ է ձեռն 'ի գործ մատուցանել 'ի կիրառութիւն զօրացուցիչ դեղորէից, որպիսի են քինաքինա, խարտածն երկաթոյ, մանաւանդ թառթառօ քալիպէաթօ, որ յոյժ գերահռչակ է յայսմ գիտուածի: Գիտել արժան է, եթէ պարտ է զառաջինն յերկար ինչ ժամանակ 'ի գործ արկանել զմիւս դեղորայս, և ապա ձեռնամուխ լինել 'ի գործածութիւն յետին դեղորէիցս, և այն' սակաւաքանակ չափով. և յորժամ փորձիւ երևի դեղն' որ յաւէտ պատճառէ ըստ իւրաց ինչ զաղաքինութիւն, պարտ է հանապազորդել 'ի նոյն. և եթէ հարկ 'ի վերայ կայցէ երբեմն 'ի փոխել զայն' սակս տաղտկանալոյ և ձանձրանալոյ բնութեան, (որովհետև 'ի գիտուած տաղտկութեան ընդունայն լինի գործածութիւն դեղորէից, կորուսանելով զիւրեանց օգտաւէտ ներգործութիւս,) յայնժամ պարտ է 'ի գործ արկանել զայլատեսակ դեղորայս, բայց համեմատ բնութեան առաջնոցն: Հուսկ յետոյ պատշաճագոյն համարիմ վերստին ծանուցանել, եթէ 'ի գործածութեան այդ ամենայն դեղորէից' պարտ է ախտաւորին միշտ ունել զվայելուչ զգուշութիւս 'ի մասին կերակրոց. որովհետև որպէս ասացաք արդէն, զայդմանէ ևեթ կախեալ կայ այլն ամենայն:

## ՅՕԴՈՒԱԾ Բ.

### Յաղագս քաղցկեղի, որ կոչի՝ քանքեռօ։

'Ի դիպուածս, յորում ուռոյցն կարծրացեալ ինդ և անցեալ՝ 'ի վեր երևի 'ի մասունս ինչ մանանց, զորօրինակ ծոցոյ, անթոյ, լերդի, փայծեղան, մեսենդերի, ևն, կոչի շիռռօ։ Իսկ յորժամ ուռոյցս այս լինի մեծաքանակ, և ոչ միագոյն, այլ հարկանի կապտագոյն, թխագոյն, և արճճագոյն, և ս զուգընթաց ունի ընդ իւր ցցաւ խիթս գժնեայ, և անհնարին, յայնժամ կոչի՝ քանքեռօ օքքուլթօ. այսինքն քաղցկեղ թագուցեալ։ Այլ 'ի դիպուածս, յորում այտուցս այս լինի բացեալ, ուստի ծորի հիւթ ինչ յստակ և շիճկալից, և գարշահոտ, յայնժամ յորջորջի՝ քանքեռօ ապէռթօ կամ ուլչէռաթօ, այսինքն քաղցկեղ բացեալ կամ վիրալից։

Այլ յորժամ 'ի վեր երևի 'ի ստինս (որ է սեփական բնակարան այսր ախտի,) 'ի շրթունս, մանաւանդ 'ի վերին մասն շրթանց, և յայլ ամենայն մասունս երեսաց, յայնժամ կոչի՝ նօլիմէթանճէռէ, այսինքն մի՛ հպիր կամ մերձենար յիս, և ըստ տճ՛ ասի, ինճիթմէ ալէնի։ Իսկ յորժամ 'ի քունչս երանաց, յամորձիս, և 'ի սրունս լինի, կոչի՝ լուպօ. այսինքն գայլ։ Դարձեալ, ամենայն աղիք, և այլ ներքին մասունք, մանաւանդ պատակառունն են ենթակայ այսր ախտի։ Անձինք՝ որք անցեալ են զհասակաւ քառասուն և հինգ ամաց, մանաւանդ կանայք ևս՝ որք վարեն զանշարժական կեանս, են առաւել ենթակայ այսր ախտի։

### Յաղագս պատճառաց այսորիկ ախտին։

Հեղձումն կամ արգելումն իրիք սովորական հոսման՝ հասարակօրէն առնէ զախտս զայս։ Նոյնպէս ստէպ պատահի կանանց վիճակելոյ արիւնային բնութեան, մանաւանդ աղջկանց անցելոց հասակաւ, և այրեաց. որոց դադարեալ է հոսումն դաշտանի։ Դարձեալ, անչափ տրամուէին, երկիւղն։ տրտմութիւն, ճնշեալ ախտողանքն, և այլ ամենայն կիրք՝ որք մաքառին ընդ հոգւոյ, կարեն պատճառել զախտս զայս. ուստի անձինք՝ յորոց վերայ հասանեն աղետալի պատահարքս, և որք բնութեամբ մաղձային և դիւրագրգիռք են, առաւելապէս ենթակայ են այսմիկ

ախտի ։ Ընդերկար ժամանակս գործածութիւն անմարսելի և տաղտուկ կերակրոց, ա[illegible]թիւն, անգործութիւն, ցուրտ խոնաւագոյն, հարուածք, ճմլումն մարմնոյ, կամ ճնշումն եւն, մարթին պատճառել զախտս զայս ։ Դարձեալ, բազում անգամ ևս ախտս այս յառաջ գայ 'ի ժառանգութէ կամ յածանցմանէ ։ Նոյնպէս վերոյիշեալ պատճառքն խցանաց կամ կալուածոց, ևս կարծրապինդ ուռուցից, մարթին պատճառել զախտս զայս ։

Յաղագս Նշանաց ախտին փաղչիեղչի ։

Ախտս այս 'ի սկզբան. անդ համարի յոյժ թեթև. 'ի վեր երևի այտուց ինչ կարծրապինդ 'ի չափ կաղնոյ. և այդ է սովորական և առաջին նշան. բազում անգամ մնայ ընդ երկար ժամանակս միակերպ առանց մեծանալոյ և առանց իրիք վնասու. բայց եթէ ախտակիրն լցէ վիճակեալ ապականեալ իրիք խառնուածոյ, կամ թէ ուռոյցս այս զայրացուցանի ճնշմամբ, կամ իւիք անբարեկարգութե, յայնժամ սկսանի առ սակաւ սակաւ տարածանել 'ի վերայ մերձագիր մասանց մարմնոյ, պատճառելով միանգամայն զայտուց ինչ 'ի նոյն մերձաւոր երակս արմատաձև, կամ մագլաձև շրջապատեալ բոլորակի, և յայնժամ յորջորջի անուամբ՝ քանքրօ, այսինքն խեցգետին, սակս առասպաճոյճ նմանակցութեան՝ որով ձևակերպի ըստ օրինակ մագլոյ, կամ խեցգետնոյ ։ Եւ իբրև փոյթ ընդ փոյթ այլագունի մորթն, և հարկանէ նախ 'ի կարմրերանգ, ապա 'ի ծիրանակերպ, և յետ այնորիկ յերկնագոյն, կամ 'ի կապտագոյն, և հուսկ յետոյ 'ի մթագոյն կամ սեաւ, զգայ ախտակիրն զջերմութիւն ինչ և զցաւ անհնարին և մնայուն. այտոյցն լինի յոյժ կարծրապինդ, և 'ի շօշափելն խորտաբորտ և անհարթ, ունելով և 'ի մէջն զցցուումն ինչ. և որ քան զոր առաւելեալ ճապաղի յերակս և 'ի մերձաւոր մասունս, և լնանի իբրև զհանգոյցս, և յայնժամ ունի զգոյն յոյժ սևորակ. այդպիսի նշանք գուշակեն զայն տեսակ քաղցկեղի, որ կոչի՝ քանքէռօ օքքուլթօ ։

Հուսկ յետոյ բացեալ լինի մորթն, և ելանէ հիւթ ինչ յստակ և տաղտուկ, և զայրանան մերձակայ մասունքն, և իսկ և իսկ գոյանայ խոց ինչ դժնեայ և սոսկատեսիլ, և ընձիւղեալ բողբոջի 'ի բազումս 'ի մեծամեծս, և 'ի փոքունս առձգեալ յընդերակայ մասունս. ցաւքն և գարշահոտութիւն սաստկանայ յոյժ, և նուաղի ախորժակն 'ի կերակուրս, 'ի վերայ հասանէ տենդ ինչ ծիւրական, և հա-

նապաստորեայ, որ և գլխովին ուժաթափ առնէ զախտակիրն. 'ի վեր երևի նաև թթախառութիւն ինչ գժնեայ, զուգընթացելովն իւր զցնցումն ինչ և զթուլութիւն. և հասարակօրէն ախտակիրն ժամանէ 'ի վիճակ յոյժ ողորմելի, և ապերջանիկ. յայտնոցիկ նշանաց ճանաչի քաղցկեղն, որ կոչի՝ քանքեռօ աբէռթօ:

Յաղագս կերակրոց և խնամատարութեանց, զորս պարտ է 'ի կեր առնուլն 'ի դէպուածս քաղցկեղի:

Կերակրոցն պարտ է լինել թեթև, բայց սննդարար. ախտակրին պիտոյ է հրաժարել յամենատեսակ զօրաւոր հեղանիւթոց, և 'ի դժուարամարսելի հանդերձանաց, միանգամայն շրջել 'ի զբօսանս ըստ առնելոյ կարողութեան. նոյնպէս հրաժեշտ տալ յամենայն իրաց, որք պատճառեն զզայրացումն, և մեծաւ զգուշութեամբ պահպանել զվշտացեալ մասունս 'ի ցրտոյ, և 'ի հողմոյ:

Յաղագս դեղորէից՝ զորս պարտ է 'ի կեր առնուլ 'ի դէպուածս ախտի քաղցկեղի:

Այս ախտ է մին յայնց ախտից, որոց դեռ ոչ գտաւ դեղ ինչ սեպհական և մասնաւոր. և սակս այն պատճառի երբեմն յերկարաձգի ապաքինութիւն, ըստ սաստիկ ինչ նշանաց ևեթ 'ի գործ արկանելով զդեղորայս միայն առանձնաբար պատշաճեալս: Մինն 'ի մեծագոյն վնասուց, որ միշտ կից գտանի այսմիկ ախտի՝ է շօշափումն վշտացեալ մասանց ընդ երկար ժամանակս, որպէս պատահի բազում անգամ բազմաց, մանաւանդ կանանց, որք ախտացեալ են այսու ախտիւ յարգանդի: Սովորաբար մարթ է ստանալ զապաքինութիւն, եթէ 'ի գործ արկանիցին դեղորայքն փոյթ ընդ փոյթ 'ի պատշաճաւոր ժամանակի. բայց եթէ ախտն ժամանեսցէ յաստիճան ինչ, հասարակօրէն անպտուղ և վայրապար լինին նպաստքն ամենայն դեղորէից. սմին իրի իսկ և իսկ 'ի սկզբան անդ 'ի վեր երևիլ իւրք կարծրապինդ կամ խուլական ուռուցից պարտ է ախտակրին անյապաղ կանոնաւորել և բարւոք կարգադրել զինքն՝ որքան 'ի կերակուրս:

Եւս պարտ է 'ի գործ արկանել երկիցս կամ երիցս՝ շաբաթու սակաւաքանակ հասարակ հաւս պատրաստեալ անդկաւ, այսինքն բիւլօլէ մեռքուխալի քօմմունի, մարթ է և սակաւ ինչ երակ հատանել, և շփել երկիցս յաւուր

զվչտացեալ մասունս մնդկաւ պատրաստեալ օծանելեօքն , որ է ունկուէնթօ մէռքուրիալէ , և զկնի շփելոյ պարտ է ծածկել մուշտակաւ կամ ասուով զվչտացեալ մասունս ։ Կերակրոցն պարտ է լինել թեթև . որքցէ յամենայնում աւուր մի ֆօլլիէթթա տէքօցիօնէ տի սալսաբարիլլիա , կամ զայլ ինչ քրտնաբեր իրս ։ Ակայէ հօմէռ հեղինակն , եթէ բազում անգամ զփորձ առեալ անձամբ՝ միայն 'ի ձեռն այսոցիկ վերոյիշեալ կառավարութեանց 'ի գործ արկանելով ընդ երկար ժամանակս ապաքինեաց զկնովին զբազում ախտակիրս 'ի դիպուածս կարծրացելինդ ուռուցից , որք քաղցկայայս երևէին 'ի նշանաց զոլ քաղցկեղ ինչ սկսեալ . այլ եթէ 'ի ձեռն այդոցիկ կառավարուեաց ոչ ցրուին ուռոյցն , այլ ընդհակառակն առաւել զայրանայցեն և կարծրանայցեն , յայնժամ պարտ է փոյթ ունել 'ի խլել արմատայքի , խարուկեալ հրացեալ երկաթով , կամ այլ ինչ կիզողական դեղորէիւք ։

Բայց գիտել արժան է , զի յամենայն անգամս յորում հարէն պահանջէ 'ի գործ արկանել զկիզողական դեղս զայս, պարտ է արագուք որչափ հնար է՝ և փութանակի դնել 'ի գործ . որովհետև 'ի կուտակիլ մնալ անդ ապականեալ կամ նեխեալ հիւթոց ընդ երկար ժամանակս , իսկ և իսկ զառնայ 'ի քաղցկեղ լրացեալ , և այնուհետև ոչ բնաւ ներգործէ դեղն կիզողական . և սակայն վեհերոտութիւս այս գրեթէ ըստ մեծի մասին դէպ լինի 'ի բազում ախտակիրս , որք ոչ կամին հպատակել և 'ի վար արկանել ըզկիզողական դեղս , բայց եթէ յորժամ դէմ յանդիման տեսանեն զպատահալիս մօտալուտ մահուան . քանզի եթէ 'ի կիր արկանիցի իսկ և իսկ . անվրէպ ոչ գտանի բնաւ վտանգ ինչ մահուան , և մարթ է յուսադիր լինել ապաքինութեն , և արմատաքի խլելոյ ախտին ։ Թէպէտ և առոթակտուր քոնցումն ուռուցից է առաւել ապահովագոյն միջոց , և պարտ իսկ է 'ի գործ արկանել զայն 'ի դիպուածս ախտիս , բայց ոչ է կարելի միշտ . ամին իրի յանկարանալն յայս միջոց , փոյթ ունել պարտ է նախ քան զապականիլն խառնուածոց ըստ կարի կանխապէս 'ի գործ դնել զվերոգրեալ միջոցս ։ Եթէ ախտակիրն անցեալ իցէ յոյժ հասակաւ , մարթ է լինել կրճիմն և խափան յուսալի ապաքինութեանն . բայց զխարդ և իցէ , 'ի գործածութեն հարկ 'ի վերայ կայ 'ի գործ արկանել զկիզողականս , 'ի դիպուածսն յորում տեսանի , եթէ հիւթն դեռ ոչ է ապականեալ . և ըստ պահանջելոյ հարկին՝ մարթ է ևս կրկնել այլ անգամ ։

Դարձեալ, գինւոյ արժան է, եթէ ըստ վկայելոյ հե-ղինակաց, գոն ինչ ինչ համբաւեալ դեղորայք 'ի գործ արկանելիք 'ի գինպուածս ախտս, որոց առաջինն է սուլ-լիմաթօ քօռռօզիվօ, որ այսպէս բաղադրի: Ա՛ռ կէս կշիռ ցորեան՝ սուլլիմաթօ, և լուծեա՛ 'ի մէջ բաւականաչափ օղւոյ, 'ի գործ ա՛րկ յառաւօտեան, և յերեկոյեան պա-հու. դեղս այս գերահռչակ է 'ի մասնաւորի 'ի գինպուածս քաղցկեղի 'ի վեր երևելոյ 'ի ոսկրունս և 'ի դէմս երեսաց: Նոյնպէս օգտաւէտ է ինֆուզիօնէ տէլլա մօռէլլա, եթէ 'ի վեր երևեսցի քաղցկեղն յարգանդի: Բայց առաւել հաշտակաւորն 'ի դեղորայս ընդդէմ ախտիս՝ է չինքուեթա, զորմէ վկայեն հեղինակքն, մանաւանդ բժշկապետն միէն-նա քաղաքի, եթէ բազում անգամ բազմաց 'ի գործ ար-կեալ է զայս, և ականատես լեալ է բազմաց օգտաւէտու-թեանց. սակայն 'ի կիրառութեան պա՛րտ է սկիզբն առնել սակաւաքանակ չափու, զորօրինակ յերկու կամ յերիս կշիռ ցորեան, և ապա առ սակաւ սակաւ աւածանա-ատուելուլ զչափն մինչև ցերկու կամ ցերիս տասն յա-ւուրն. և յառնուլ անգ զդեղս զայս, պա՛րտ է հրաժա-րել 'ի խմորեղինաց, 'ի աղից և 'ի կծու կերակրոց. պա՛րտ է միանգամայն ըստ կարի վայելել 'ի խաղաղութե, և 'ի հանգստեան, և 'ի ներքս մնձակելոյ առողջարար օդոյ. և եթէ ախտակիրն առողջեալ իցէ յարբուցանել գինւոյ, մա՛րթ է 'ի գործ արկանել ևս սակաւաքանակ ընտիր գի-նի. և 'ի գործածութեան այսր դեղորէից մա՛րթ է յարա-տևել մինչև ցվեց ամիս, և աւելի ևս:

Դարձեալ, օգտաւէտ է ևս 'ի գինպուածս ուլչէռէ սօռռիտէ անուանեալ խոցի, արկանել 'ի վերայ պառա-քուստ իւր քաթաբլասմա կամ իւր ֆօմէնթի. Նոյնպէս հաշտակաւոր է յայսմ գինպուածի քաթաբլասմա տի քա-ռօթէ, այսինքն սպեղանի ստեպղնոյ կամ գազարի, որ մեղմէ զցաւս, և փարատէ զգարշահոտութիւն. զոր պա՛րտ է երկիցս կամ երիցս կրկնել յաւուրն: Հաւակ յետոյ յորժամ 'ի գործածութեանէ այս ամենայն դեղորէից ոչ փարատին ցաւքն, յայնժամ պա՛րտ է իբր վերջին ապաս-տան նպաստից դիմել 'ի գործածութիւն ափիոնի, որ թէ-պէտ, ոչ բուժէ զախտն, բայց նուաղէ զցաւս, և զվիշտ՝ զոր կրէ ախտակիրն անհնարին սաստկութեամբ:





# ԳԼՈՒԽ ԼԲ.

'Ի վերայ գաղղիական ախտի, որ ցիփալիզյաց ասի՝ մօրպօ վէ-նէրէօ, կամ սիֆիլիտէ, և 'ի վերայ վաղվաղական համան, կոչեցեալ 'ի նոցանէ գօնօռռէա [illegible]նէալէա. եւ 'ի վերայ եղերդ և խոցից գաղղիականի, այլովքն հանդերձ:

Սղեռնագործ ախտս այս՝ որ է տարափոխիկ եղեւ-գժանդախտ, հասարակօրէն ծագի յանառակ շաղաշար-մանէ, որպէս և անուամբն խոալական ցուցանէ յասելն՝ մօրպօ վէնէրէօ, այսինքն ախտ ափրոդ խոականն. զի վէ-նէրէ կոչի ափրոդիտէ, չնծուհի աստուածոց: Այս ախտ գրելոց ոմանց՝ եղև յամի տն 1493 մուծաւ յեւրոպիայ յա-մերիկոյ, որ և էանց յայլևայլ տեղիս, ուր յառաջ քան զայն անծանօթ էր ամենևին:

Արդ՝ թէպէտ ախտս այս ընդհանրապէս է պտուղ ան-կանոն և անզգուշ վարուց, սակայն փոխագրութիւն եթէ անմեղք, և եթէ ոճրագործք լինին ենթակայ այսմիկ ախ-տի. մանկունք և սնուցիչք մանկանց, դայեակք, և կա-նայք՝ որոց այրքն են անզգուշ վարուցն են, անմեղաբար ան-կանին յախտս յայս, և երբեմն ևս մահակործան լինին. եթէ 'ի պատշաճ ժամանակի ոչ 'ի գործ արկանիցին նը-պաստք կարևորք: Այլև բժշկաց, որք կամին ձեռնա-մուխ լինել 'ի բուժումն ախտիս, հարկ 'ի վերայ կայ ոչ անընտրողաբար 'ի վար արկանել դեղորայս յորպիսի և իցէ դիպուածս, այլ նկատել 'ի միճակս ախտին, 'ի պա-րագայս կազմուածոց ախտաւորին, 'ի յուժգնութիւն նշա-նացն, 'ի չափն հասակի, և յայլ բնութիւնս հարկաւո-րագոյն պարագայս: Զայսպիսեաց խօսել առաւել՝ հարկ առնէ կարգն և պաշտօն բժշկական գիտութեան, սակայն միշտ այնու զգուշաւոր պարկեշտութեամբ՝ որ վայել է 'ի գրել և յընթեռնուլ:

## Ա

*'Ի վերայ հոսման, որ 'ի լատինացւոց կոչի՝ Գոնօռռէա վէնե-րէա, կամ լաւ ևս Պլէննօռռագիա, և ըստ իտալական բար-բառոյ՝ Սքօլածիօնէ. ըստ որում տաճկերէն ասի՝ պէլսօ-ղուգլուղու։*

Ախտս այս է ակամայ հոսումն ինչ թիւնաւոր հիւթոց ճանապարհաւ սերական անդամոց. և այն հիւթ 'ի սկզբան անդ է կանաչագոյն, ապա դեղնագոյն, և հուսկ յետոյ սպիտակագոյն։ Սա հասարակօրէն երևի զկնի ութ աւուրց ըմբռնման ախտին. բայց երբեմն ևս յերկրորդում կամ յերրորդում աւուր. իսկ երբեմն ոչ ճանաչի բայց եթէ զկնի չորրորդ կամ հինգերորդ շաբաթու։

Նշանք ժահրալից հոսման։

Մինչև հաստատի ծանուցեալ վարակիչ հոսումն, իսկ և իսկ ախտաւորին զգայ զթեթև ինչ ցաւ 'ի սերմնանց խողովակս, կամ 'ի ներքս յանդամն, և յետ այնորիկ սկսանի հոսիլ կամ ծորել 'ի նոյն անդամոյ հիւթ ինչ ժահրալից և սպականեալ. յորժամ և պատճառի խտտղումն կամ մարմանջումն հանդերձ թեթև ինչ ցաւով, մանաւանդ 'ի միզելն. և այն խտտղումն առ սակաւ սակաւ աճելով աճի, և 'ի վախճանի պատճառէ զցաւ իմն հաւասարի և ճշգրիտ հանդերձ ուժգ ջերմութեամբ, և առաւելապէս 'ի ծայրն միզանց խողովակի, յորժամ փոյթ ընդ փոյթ սկսանի 'ի վեր երևիլ թեթև ինչ կարմրութիւն, և բորբոքումն։ Իսկ եթէ յարատևեալ մնասցէ ախտս այս, յայնժամ ցաւն, ջերմութիւն կամ կիզումն միզի՝ և շարունակ հոսումն հիւթոց սաստկանալով սաստկանան, և օր քան զօր նորանոր նշանս արտայայտեն. և ախտաւորին յարաժամ զգայ զցաւ մեծագոյն, և զնեղութիւնս անհնարինս, առաւելապէս յընկողմանիլն 'ի մէջ ջերմ անկողնոյ. և ցաւն զոր 'ի սկզբան անդ զգայր միայն 'ի ծայրն միզանց խողովակի, յայնժամ տարածանի 'ի բովանդակ մասն միզանց խողովակաց, և կարի սաստկապէս 'ի միզելն. և արտահոսեալ հիւթն զկնոյլին կորուսանէ զառաջին գոյն իւր, և լինի դեղնաշորթ, և հետևապէս սաստկագոյն զնշան նեխութեան։ Իսկ 'ի հասանիլ ախտիս յայս աստիճան, յայնժամ ամենայն նշանք առաւելեն սաստ-

կանան. կերակուրն միշտ լինի այնքան սակաւիկ, մինչև ախ-տաւորն երկնչի 'ի միզել. քանզի դժուարութիւն մեծ կրէ 'ի միզել, և մէզն իջանէ կաթիլ առ կաթիլ, և ճղճկէն: Դարձեալ, ախտաւորն զգայ զցաւ, զջերմութիւն և զծանրութիւն ինչ դէպ յետոյ կողմն: Եւ 'ի վեր արկանելն ըզ-ճահողագոյն դարմանս, նուազել սկսանին առ սակաւ սակաւ սաստկութիւնք և ուժգնութիւնք վերոյեդեալ նշա-նացն, և ապաքինութիւն հիւթոց:

Են և այլ ախտք, որք համանման են ընդ ախտիս. որ-պիսի են խոցն երիկամանց, և փամփշտոյ, և հոսմունք ինչ սպիտակագոյն 'ի սեռս իգաց են: 'Ի դիպուածս խոցից երիկամանց և փամփշտոյ՝ հիւթքն ոչ ելանեն, բայց եթէ ընդ միզի, և միայն յորժամ լինի բացեալ ճա-նապարհն փամփշտոյ. բայց 'ի դիպուածս վաւաշ հոս-ման՝ հոսումն լինի յարատև: Այլ դժուարութիւն մեծ է զանազանել զախտս 'ի դիպուածս սպիտակագոյն հոս-մանց, զոր ասացաք լինել 'ի սեռս իգաց. ուստի յայնժամ առ 'ի ճանաչել զայն, պա՛րտ է նկատել գլխաւորապէս 'ի գործողութիւնս նորա, որպէս 'ի ցաւն, զոր պատճա-ռէ, 'ի փոխադրութիւն ախտին, որով հաղորդի և տարա-փոխի ևն:

Պատուէրութիւն 'ի վեր արկանելոյ 'ի դիպուածս նախասացեալ հոսման:

Իսկ և իսկ յորժամ ոք յերկրայս լինի վասն երից պատճառի, թէ գուցէ որդեօք սատցեալ իցէ զախտս զայս, պա՛րտ է անձնապահ լինել, և կանոնաւորել զկերն զովացուցիչ կերակրեղինօք և միզաբեր ըմպելեօք: Հրա-ժարիլ օրէն է յամենայն իրաց, որք են գրգռիչ և ջեր-մացուցիչ բնութե՟. զորօրինակ զինին, օղին, ոգևոր հեղանիւթքն, սուխ, խատոր, ընկոյզ, կինամոն, կոճապըղ-պեղ, սև պղպեղ, ևն. և սովորաբար պա՛րտ է 'ի կիր ար-կանել բարեխառն և թուլացուցիչ կերակրեղէնս, որպի-սի են կաթն և արգանակն թեթևագոյն մսոյ ևն: Ըմպե-լին պարտի լինել ջուրն գարւոյ, շիճուկն կաթին, խա-շուն կտաւատի խառն ընդ մատուտակի, կամ աղտոյ, և կամ մոլոշի. և զայսպիսի ըմպելիս պա՛րտ է ախտաւորին առատօրէն 'ի գործ արկանել: Դարձեալ, պա՛րտ է ար-գելուլ զորպիսի և իցէ մեծասարար և անբարեկարգ ըն-թացս, զձիավարութն և զաշխատաւոր շարժմունս, զան-պարկեշտ մտածութիւնս, զատփանս, ևն: Նոյնպէս ար-

ժամ է անձնապահ լինել 'ի ցրտոյ, և փութապէս 'ի զայրանալն բորբոքման պարտ է դիմել յանկողին:

Յաղագս դեղորէից՝ զորս պարտ է 'ի կիր արկանել յորժամ այս ախտ լինի 'ի ԹԵԹԵՒ աստիճանի:

Հազիւ երբէք մարթ է ախտիս այսմիկ բուժիլ փութապէս և կատարելապէս՝ իբր յարմարոց. վասն որոյ ոչ ախտաժէրին արժան է անհոգանալ յաւսով փութապէս առողջութե, և ոչ բժիշկն կարէ խոստանալ զայն նմա: Հասարակօրէն յարատեւէ ախտս այս երկու կամ երեք ամիս, և երբեմն ևս հինգ կամ վեց ամիս: Արդ՝ առ 'ի փարատել զախտս զայս 'ի մէջ սակաւ աւուրց՝ 'ի լինել նորա 'ի թեթեւագոյն աստիճանի, պարտ է զցաւակիր անդամն դնել 'ի մէջ գաղջ կաթին և ստէպ յաւուրն վարել յայն անդամ սակաւ ինչ իւղ քաղցր նշոյ, և խաշու կտաւատի. և եթէ գործածութիւնք այսպիսի նպատակից չլինին բաւական 'ի խափանել զախտն և բուժել զխոցն. սակայն միշտ նուազեն և պակասեցուցանեն զուժգնութի նորա:

Չէ օրէն բնաւ առնուլ 'ի կիր զգրգռիչ և զզայրացուցիչ դեղորայս՝ բայց եթէ մեծաւ զգուշութ., և զայն՝ յորժամ ախտն լինի թեթեւագոյն և յոյժ նորոգ. քանզի եթէ ախտն լինի դժնդակ, բորբոքեալ և հնացեալ, յայնժամ այսպիսի դեղորայք փոխանակ պատճառելոյ զբուժումն, առաւել ևս զայրացուցանեն զախտն և յերկարաձգեն զառողջութիւնն: Բայց ուժգին դեղորայք՝ զոր հմտագոյն և քաջափորձ բժիշկք միայն մարթին յաջմուս ապահովապէս 'ի գործ արկանել 'ի դիպուածս յայս թեթեւագոյն հոսման, են յետագայքդ: Առ 30 կշիռ ցորեան ցուքքէռօ տի սաթուռնօ, և վեց կամ եօթն ունկի՝ ջուր վարդի, խառնեա իրերաց, և ըստ պահանջելոյ պարագայից 'ի գործ արկ 'ի դէպ ժամանակի, ջեռուցեալ սակաւ ինչ լից 'ի գրեխ փոքրիկ, զոր մարթ իցէ մուծանել յախտաւոր անդամն. և յարատեւեա յայսմ հինգ կամ վեց անգամ յաւուրն, մինչև դադարեսցի հոսումն հիւթոց:

Այս դարման եթէ 'ի կիր արկանիցի, և եթէ ոչ, չէ ինչ փոյթ. բայց լուծողական դեղորայքն միշտ հարկաւոր պահանջին 'ի դիպուածս յայս. վասն որոյ չէ պարտ սպասել զայրանալոյ ախտիցն, և հասանել 'ի վերջին աստիճան ուժգնութե և սաստկութե, որովհետև ամենայն

դեղորայք՝ որք դրդուիչք են բնութեան, աճեցուցանեն ըզ֊ բորբոքումն միզանց խողովակաց, և արմատացուցանեն զախտն 'ի խորագոյնս: Արդ՝ յընթացս առաջին հնգե֊ տասան աւուրց, պարտ է պատրաստել երկու կամ երիս լուծողականս յերկուս կամ յերիս աւուրս միանգամ. իսկ յընթացս միւս հետևեալ հնգետասան աւուրց, յա֊ մենայն չորս կամ հինգ աւուրս միանգամ, որք հասա֊ րակօրէն բաւական լինին 'ի նուազել զհոսումն, 'ի շիջու֊ ցանել զբորբոքումն, և 'ի մաքրել զհիւթս:

Պատշաճագոյն լուծողական դեղքն 'ի դիպուածս յայս՝ են սալ կլատուպեռիանօ, զոր պարտ է 'ի գործ ար֊ կանել վեց տրամաչափ՝ լուծեալ 'ի ջուր գաղջ, յաւել֊ լուլ 'ի նա մի և կէս ունկի՝ մաննա, և տալ հիւանդին զա֊ մենայնն 'ի մի անգամ 'ի պահ առաւօտուն 'ի ծոմուստ: Նոյնպէս օգտաւէտ և յետագայ լուծողական դեղս: Առ երկու ունկի՝ սէննա ընտիր և մաքուր, և ունկի մի՝ թա֊ մարինտի, և դիր թրմոց 'ի ջուր եռացեալ զժամս 12, կամ զգիշեր մի ողջոյն, և ընդ առաւօտն անցո՛ ընդ կտաւ, յոր յաւել կէս ունկի՝ սալէ տի կլաւպեռօ. և մատո՛ հի֊ ւանդին յամենայն քառորդ ժամու մէն մի սկահակ սըր֊ ճոյ, մինչև 'ի ներգործելն: Եւ իբրև վերոգրեալ կի՛ նո֊ ցին նման դեղորէիւք չդադարեսցի հոսումն հիւթոց, յայնժամ ոչինչ արգելք կայ գործածութեան յետագայ դեղոյս: Առ ունկի մի՝ սալ նիթռօ, և երկու ունկի՝ կօմմա առապիքա, լուծեա՛ 'ի փոքր մանրամաղ, և բաժա֊ նեա՛ 'ի 24 հաւասարաչափ մասունս, և մատո՛ հիւանդին երիս կամ չորս անգամ յաւուրն՝ մի մասն տուրեալ մի սկահակ հասարակ ըմպելեաւն: Իսկ եթէ 'ի պատճառս այսր դեղոյ վշտանայ և նեղի հիւանդն՝ սակս կարի առէալ միզելոյ, մինչև ցվատթարկիլ և ուժաթափ լինել, յայն֊ ժամ պատշաճ է կամ սակաւաչափ, և առաւել յաճախ առնուլ, և կամ փոխանակ նիթռօի խառնել նոյնաքա֊ նակ՝ մակնեզիա պիանքա:

Ցուցակ դեղորէից զորս արժան է 'ի վեր արկանել, յորժամ այս ախտ լինի 'ի ծայրագոյն աստիճանի:

Յորժամ բորբոքումն միզանց խողովակաց լինի սաստ֊ կագոյն, և ցաւն գժնեայ, պարտ է միշտ 'ի սկզբանն ե֊ րակ հատանել սակաւ ինչ. զնոյն պարտ է առնել և յայլ դիպուածս բորբոքմանց, և կրկնել, միանգամայն նկա֊ տեալ 'ի զօրուն և 'ի խառնուածն հիւանդին, և յուժգ֊

նուլթն նշանացն ։ Սեպհական դեղորայք առ 'ի զրգռել զհոսումն մզի, և 'ի շիջուցանել զբորբոքումն ախտի՝ են նիթռօ, և կօմմս առապիքա, որպէս նշանակեցաւ վերագոյնդ ։ Բայց յորժամ բորբոքումն և ցաւն զետեղեալ ընակի 'ի շրջակայս փամփշտոյ, յայնժամ պատշաճագոյն է հասարակօրէն պատրաստել զբեխս կակղացուցիչս, որք բաց 'ի անօրինելոյ զպէտս որովայնի, ունին և ս զօրութիւն ներգործելոյ 'ի բորբոքեալ մասունս ։ Քաթաբլազմա ատտօլչիթիւօ անուանեալ թանձրութիւնն է յոյժ օգտակար 'ի դիպուածս յայս, զոր պարտ է պատրաստել այսպէս ։ Առ զմէջն հացի, որ է ներքին խմորն ընդ կեղևոյ նորա, և զկաթն կոգւով հանդերձ, կամ զձէթն ձիթապտղոյ, խառնեալ իրերաց և ջերմացուցեալ՝ դիր 'ի վերայ վշտացեալ մասանցն ։

Արդ՝ եթէ անօգուտ լիցի առաջեալս այս թանձրաթան, և բաւականապէս ոչ փարատեսցէ զցաւս, յայնժամ պարտ է 'ի գործ արկանել զմիւս ևս թանձրաթան, որ միշտ օգտակար եղև 'ի դիպուածս յայս. և է այս, մէջն հացի, և աքուա վէձէթօ մինէուալէ տի կուլարտ, զոր պարտ է նորոգել 'ի 3 կամ 4 ժամս, կամ գէթ 'ի 6 ժամու միանգամ. և սովորաբար 'ի միում աւուր փարատին ամենայն ցաւք և բորբոքմունք գործածութ՟ այսր դեղորէից ։ Իսկ եթէ անմարթ իցէ առնուլ 'ի կիր զայսոսիկ, յայնժամ պարտ է 'ի գործ ածել զապունգս թացեալս ջերմ ջրով, որ կոչի՝ ֆօմէնթի. և բազում անգամ ականատես եղաք ներգործութեան այսորիկ արտաքին դեղորէից 'ի դիպուածս ախտիս, որովք երբեմն ապաքինի հիւանդն իսկ և իսկ, և 'ի սուղ ինչ ժամանակի, մինչև ոչ իսկ ուշաբերել թէ արդեօք ճշգրտիւ առողջացեալ իցէ՝ կամ ոչ ։ Բայց երբեմն ևս դէպ լինի, զի այսոքիկ դարմանք առաւել ևս զայրացուցանեն զախտն. և յայնժամ օրէն է աներկբայ դիմել յազնուագոյն և 'ի վեհապանծ դեղն մեռքուռիօ՝ այսինքն սնդիկն, որ բացարձակապէս հարկաւ պահանջի առ 'ի կատարելապէս բուժել յամենայն դիպուածս այսոցիկ ախտից ։

Երկրորդ աստիճան ծանրալից հոսմանն, յորում ծամէ չետնա, մինչ լինել 'ի գործածութենէ սնդկի:

Յորժամ երակահատութիւն, լուծողականքն, և այլ ամենայն հնարք և միջոցք, զորոց արդէն խօսեցաք, փարատեն զցաւս, չէջուցանեն զկիզումն միզի, և զզարկն հաստատեն 'ի սեպհական իւր առաջին բնական վիճակն, յայնժամ պարտ է սկսանել զգործածութիւն սնդկի, ըստ կանոնի և ըստ կերպի՝ զորմէ խօսեցաք լիով 'ի տեղի իւրում ըստ ամենայն պարագայից: Արդ՝ եթէ ըստ պահանջելոյ հարկին բացորոշեսցի տալ հիւանդին բժշկէ մերքուրիամթէ ակլ պռուկնամթէլլէ. (զորոյ տեսցուք զնուսխան 'ի հատ. Ա. 'ի տառն Բ. 'ի կարգի իւրում.) յայնժամ բաւական է տալ երկու հատս յերեկոյն, և մի Ա առաւօտն. այլ եթէ սնդիկն սաստկապէս վշտացուսցանէ զբերանն կամ զլնդերս ատամանց, յայնժամ պարտ է նուազեցուցանել զչափն. իսկ եթէ ոչ վշտացուցանէ, մարթ է առաւելուլ զչափն մինչև ցհինգ և ցվեց հատս յաւուրն:

Եթէ ախտակրին ախորժարար և նախամեծար թուեսցի քալօմելանօ, մարթ է զայն 'ի վար արկանել յամենայն երեկոյս կալով 'ի մանձի՝ երկու կամ երիս կշիռ ցորեան, զորոյ պատրաստելոյ զկերպն ասասցուք 'ի ճառելն վասն սնդկի, և վասն սնդկայ կազմեալ հալից: Մինն 'ի սնդկայ պատրաստեալ դեղորէից, որ հասարակ է 'ի գործածութենէ, է այն՝ որ ասի՝ սուպլիմամթօ քօռօզիվօ, զոր մարթ է առնուլ 'ի կիր ըստ եղանակին, զորմէ խօսեցաք 'ի ճառելն 'ի վերայ տեսակի ախտին՝ որ ասի սիֆիլիտէ քօնֆօռմամթա: Դեղս այս փաղաղիչ՝ եթէ 'ի գործ արկցի պահանջեալ զգուշութեամբ, թուի ինձ, եթէ առաւել ապահովագոյն է, և ներգործիչ 'ի դիպուածս ախտիս: Ախտակրին մարթ է առնուլ 'ի կիր զդեղս զայս կամ յամենայնում աւուր, կամ յերկու աւուր միանգամ ըստ տանելոյ ստամոքսի: Զչափն ոչ պարտ է լինել այնքան առաւել, մինչև պատճառել զտրծմունս և ըղծութիւնս. քանզի եթէ սնդիկն լինիցի սաստիկ վասն առաւութեան, յայնժամ ոչ բուժէ զախտն փութով, և միօրինակ, որովհետև յերկարապէս մնայ 'ի մէջ մարմնոյն. և ոչ արտահանի՝ բայց եթէ առ սակաւ սակաւ:

Յորժամ սնդիկն պատճառէ զլուծողութիւն բնութեան, և զանհանգստութիւն 'ի գիշերի, յայնժամ պարտաւոր է

ախտակրին առնուլ ինֆուզիօնէ տի սէնա, կամ ա
ինչ լուծողական, և ըմպել առատօրէն Թիզանա տի
վէնա, որովք անձապարել և արգելուլ մարթ է զլուծու
արիւնային, որ հասարակօրէն 'ի վերայ գայ այնոցիկ ո
զպուրտ առնուն, կամ 'ի գործ արկանեն զդեղ՝ որ ոչ
պատրաստեալ ըստ պատշաճին։ Քանզի մեծագոյն վ
տանգն երկնչելի յայս ախտ յառաջ գայ անտի՝ զի
բարուղք, և ոչ ըստ կանոնի պատրաստեալ լինի մնդիկ
և կամ վասն ոչ պահելոյն զպատշաճաւոր չափն 'ի գոր
արկանելն զնոյն ևն։ Արդ՝ յորժամ 'ի գործածութեն
մնդկի կամ մնդկաւ պատրաստեալ հապից վշտանան փ
րոտիք, և կամ պատճառին այլ ինչ ախտք, յայնժա
պարտ է յաւելուլ 'ի վերայ բովանդակ նախագրեա
պատճենի դեղոց 30 կամ 40 կշիռ ցորեան տիաքօռտ
կամ քօնֆէցցիօնէ եաքօնէսէ, և իսկ և իսկ զկնի վերստ
գործածութեն այսորիկ հապից, պարտ է տալ նմա զլու
ծողական ինչ առ 'ի արտահանել զմնդիկն, և ևս 'ի վա
մզել զլորձունս։

Դարձեալ, վասն խափանելոյ զխնամս՝ որք զհետ գա
մարթին 'ի գործածութեն անդ մնդկի, պարտ է խափա
նել զայն ընդ լուծողականս. և առ այս վախճան հնարի
ցան հապքն պատրաստեալք ընդ մնդկի, զորս առ 'ի խ
հեմութք 'ի գործ արկանել, պարտ է սկիզբն առնուլ
մի հապէ, և հազիւ երբեք հասանել յերիս հապս յա
ւուրն։ Դարձեալ, մեծի զգուշութե պէտք են առ 'ի վա
արկանել զայսպիսի հապս, և այն 'ի պահանջել հարկ
միայն, այսինքն առ 'ի արգելուլ զհոսումն լորձանաց
վասն որոյ 'ի դադարել նշանաց լորձանաց, օրէն
վերստին դառնալ 'ի գործածութի մնդկի, որ չիցէ պա
րաստեալ խառն ընդ լուծողականի. քանզի ստէպ գո
ծածութի լուծողականաց 'ի գիպուածս ախտիս՝ չէ այ
քան օրինաւոր։

Բայց և այն անձանց, որք ոչ կարեն կլանել, ոչ
օրէն տալ զհապս, այլ պարզապէս զմնդիկ հեղանիւ
արարեալ ըստ կերպին, զորմէ ունիմք խօսել յառաջ
կայդ, որ է յոյժ օգտակար։ Ա՛ռ տրամ մի՝ մաքո
և յստակ մնդիկ, և երկու տրամ՝ կօմմա առաբիքա
և զերկոսեանն 'ի միասին տորորեալ հարեա՛ այնքան
մարմարեայ անկանի, մինչև անհետ լինիցին գնդակ
մնդկի գլխովին. ապա յաւել 'ի նա կէս ունկի՝ շիր
բօ պալսամիքօ, և ութ ունկի՝ հասարակ ջուր կեն
մոնի, և 'ի գործ արկ յերեկոյս և ընդ առաւօտն մ

մի գրգալ սեղանոյ. և դեղս այս 'ի դիպուածս ախտիս է յոյժ օգտաւէտագոյն և ազնուագոյն, և կարի պատշաճագոյն այնպիսի անձանց՝ որք վասն տկարութեն, և կարի փափկութեն փորոտեացն ոչ կարեն ընդունիլ զմնդիկն ներքսապէս այլազգ. քանզի ճշմարիտ է եթէ մնդիկն 'ի վար արկեալ առ ժամանակ մի տկարացուցանէ և վնասէ փորոտեացն. վասն որոյ եթէ հարկն պահանջէ 'ի վար արկանել զնոյն ընդ երկար ժամանակ, պարտ է ըստ վերոգրեալ կերպի 'ի վար արկանել, որ է յոյժ պատշաճագոյն ։

Դարձեալ, սպեղանին, զոր պատրաստեն մնդկաւ վասն օծանելոյ զվշտացեալ մասունս, զորմէ խօսեսցուք 'ի հատ. Բ. 'ի տառն Ո, 'ի կարգի իւրում, է յոյժ պատշաճագոյն 'ի դիպուածս ախտիս ։ Սեպհական ժամանակն օծանելոյ՝ է երեկոյն, որ պարտ է լինել 'ի ներքսագոյն մասունս երանաց ։ Արդ՝ 'ի ժամանակի՝ յորում 'ի կիր արկանի օծումն այս, եթէ սերական անդամն, և միզանց խողովակքն սկսանիցեն բորբոքիլ, և ջերմութին և տենդն 'ի վեր երևին, եթէ բերանն սկսանի կեղեքիլ և խոցոտիլ, և լնտերքն հերձանիլ կամ ճլատիլ, և կուրծքն վշտանալ և ծանրանալ, յայնժամ պատշաճ է տալ նմա մի կամ երկու չափ սալէ տի կլաուպէռօ, կամ այլ ինչ զովացուցիչ լուծողական, և միջահատել զօծումն ։ Բայց իսկ և իսկ յորժամ լորձունք և այլ նշանք սկսանին սակաւանալ կամ նուազիլ, և ախտն տակաւին կատարելապէս չլինի ապաքինեալ, յայնժամ օրէն է վերստին 'ի գործ արկանել զօծումն ։

Որպիսի և կերպիւ սկսանիցի գործածութին մնդկին, պարտ է յարատևել 'ի նոյն ց15 աւուրս, և առաւել ևս, մինչև իսպառ անհետ լինել նշանացն, յորոց կասկածել մարթ է, թէ արդեօք յարամնացեալ իցէ մասն ինչ յախտէց, թէ ոչ ։ Արդ՝ ցորքան 'ի գործ արկանիցի մնդիկն, կերակրոցն պարտ է լինել թեթև և դիւրամարսելի. չէ՛ օրէն ըմպել այլ ինչ, բայց եթէ սակաւաչափ գինի ազնիւ, և այն խառնեալ բաւականաչափ ջրով. հրաժարիլ պարտ է հարկաւորապէս յամենակերպ ողխաւոր հեղանիւթոց. բազում անգամ ականատես եղաք, եթէ վասն սակաւ ինչ անբարեխառնութեն յըմպելեաց վերադարձան միւսանգամ նշանքն բորբոքողականք, և համունք հիւթոց յախտացեալ անդամոցն, և հուսկ յետոյ ախտն եղև առաւել վտանգաւոր, յերկարաձիգ, և դըժուարաւ բուժելի ։

Երրորդ, և վերջին աստիճան անմարսուր հոսման.

Յորժամ 'ի ձեռն վերասացեալ կառավարութեանց և դեղորէից փարատին կիրղումն միզի և այլ ամենայն նշանք, որք 'ի վեր երեւին յանգամսն և 'ի միզանց խողովակս, և հոսումն հիւթոց սպիտակեալ նուազի. ցաւն դադարի, և ուռոյցն ցրուի գլխոյկին յախտացեալ մասանց, և այլ ամենայն նշանք կամ գլխովին, և կամ ըստ մասին մեղմանան և դադարին, յայնժամ ասի ախտս հոսման հասանել յերրորդ կամ 'ի վերջին աստիճան. իսկ եթէ հակառակն այսորիկ պատահիցի, երկնչելի է թէ ախտն չէ՛ տակաւին բուժեալ կատարելապէս, և վասն այն պարտ է զմնացորդս հիւթոյն և ախտից մաքրել, 'ի գործ արկանելով զմաքրողականս, որպիսի են յետագայքդ: Առ երկու ունկի էլէթթուարիօ լէնիթիվօ, երեք տրամ՝ քրեմօռ տի թառթառօ, չորս տրամ՝ ռապառպառօ, մի և կէս ունկի՝ պալսամօ տի քօբբախպա. առ և շիլօբբօ տի ռօզէ բալիտէ՝ որչափ ինչ պէտք են վասն շինելոյ զմածուկս թանձր խառն զմեղր: 'Ի մածուցնէ աստի տացի հիւանդաց երկու անգամ յաւուրն ընկուզաչափ մի առ իւրաքանչիւր նուագ:

Իսկ եթէ այսպիսի դեղորայք անօգուտ լինին և ոչ ներգործեն, յայնժամ պարտ է ձեռնամուխ լինել 'ի դեղորայս՝ որք են առաւել ուժեղ և զօրաւոր, որպիսի են յետագայքդ: Առ տասն տրամ պալսամօ տի քօբբախպա, և նոյնչափ՝ թուէմէնթինա վէնէթա. առ և հինգ տրամ՝ ռապառպառօ փոշիացուցեալ, և նոյնչափ՝ լիգուիրիցիա: 'Ի խառնուրդէ աստի առցի գրգալ մի մոճոյ ընդ առաւօտս, և այլ նոյնչափ ընդ երեկս, միայն թէ կրկնելի է այդ գոնէ մինչև 'ի քսան օր: Այլև մարթ է առաւելուլ կամ նուազեցուցանել զչափն նկատմամբ պարագայից ախտակրին: Այլ եթէ դեղորայքս՝ նեղութիւս կամ անհանգստութիւս տան ստամոքսի, յայնժամ փոխանակ այսոցիկ 'ի կիր արկանել մարթ է երկու անգամ յաւուրն 15 կամ 20 շիթս՝ էլիսիրէ տի վիթրիօլօ բաժակ մի կարմիր գինեաւ, կամ տէքօթթօ տի քինա քինա:

Եթէ զկնի գործածութէ այս ամենայն դեղորէից մնայ տակաւին հիւթն նոյնօրինակ, բայց ո՛չ ունիցի զոյգ զմի 'ի նշանաց ախտին, որ կոչի միազմա վէնէրէօ, այսինքն ապականութի գաղղիական ախտի, յայնժամ պարտ է

պատրաստել գրեթ ինչ զօրաւոր հեռադիտակ եղանակաւ ։ Առ երկու տրամ՝ կօմմա տռագաքա , հինգ ունկի՝ ջուր վարդի , 12 կշիռ ցորեան ցուքքերօ տի սաթուռնօ . հալեա զխէժն 'ի մէջ վարդի ջրոյ , և յաւել 'ի վերայ ցուքքերօ տի սաթուռնօ , և ջեռացուցեալ սակաւ ինչ ած 'ի նկարս ընդ անդամն փոքրիկ գրչաւ երեք կամ չորս անգամ յաւուրն ։ Եւ յայսոսիկ միջոցի մեծապէս փոյթ ունել արժան է 'ի կանոնաւորել զընթացս ախտակրին , չափաւոր շարժումն առնելով յառաջագոյն և 'ի զովագին վայրս , բայց առանց աշխատ լինելոյ և ջերմանալոյ ։ Կերակրոյն պարտ է լինել չոր և առողջարար , զորօրինակ պաքսիմաթ , բրինձ , կորեակ , մածուցիկ եղջերուն եղջերուի , և այլ ամենայն զօրացուցիչք բնութ ։ Ջուրն կամ ըմպելին լինելոց է ջուրն պտխաթօլի , ազնիւ գինի սակաւ և ջրախառն . հրաժարիլ օրէն է յայնմ ամենայնէ որք թուլացուցանեն զջիղս ։ Արդ՝ յորժամ այդ ամենայն հնարք և դեղորայք 'ի գործ եղանեն , և անպտուղ լինին , և թիւնաւոր հիւթն մնայ սակաւին նոյնօրինակ , յայնժամ ախտս այս ոչ այլ ինչ է , բայց եթէ կծծուէա , այսինքն անբժշկականութիւն , զորմէ խօսեցաք 'ի հետեւեալ գլուխս ։

## Բ

### 'Ի վերայ վաղվաղ էնդրոյ , որ յիտալականս կոչի՝ օֆթալմիէ վէնէրէօ ։

Սնունգս այս՝ է ուռոյց ինչ կարծրագոյն զետեղեալ 'ի քունջս երանաց , պատճառեալ 'ի թիւնաւոր հիւթոյ տարածեալ ախտին , որք գտանին յայտնի մասունս . և են սորա կրկին տեսակք . մին գոյանայ 'ի թիւնալից հիւթոյ ինչ նորոգ պատահելոյ , և միւսն 'ի նոյն ախտէ՝ հատատելոյ և հնացելոյ ։

### Դարմանադրութիւն ախտին ։

Սպաքինութիւն ախտիս նորագոյն պատահելոյ , այսինքն այն՝ որ անդէն զկնի ներգործութեան 'ի վէր երևի , փորձելի է իսկ և իսկ 'ի ձեռն ցրման կամ լուծման . իսկ 'ի դիպուածն՝ յորում անհնարին լինի ցրումն , պարտ է փութալ 'ի գործել զշարաւումն ։ Ենթադրեալ , թէ մարթ իցէ ցրուել զսնունգն , յայնժամ հարկ է ախտա-

կրկին զհետ երթալ կանոնի և դարմանատարութե՛, զորոց խօսեցաք յառաջին աստիճանի հատմանն : Պարտ է երակ հատանել, և 'ի գործ արկանել զլուծողական զովացուցիչս • զորօրինակ տեքօցիոնէ մի թամարինտի · և մի սէնա, ասէ մի կլատուպերօ են : Իսկ յորժամ 'ի ձեռն այսպիսի դարմանատարութեց 'ի գործ ածելոց՝ ուռոյցն և այլ բորբոքողական նշանքն լինին փարատեալ կամ ցրուեալք, յայնժամ մարթ է ապահովապէս սկսանիլ զգործածութիւն ոնդկի, և յարատևել 'ի նոյն մինչև 'ի սպառուժումն ելնդոցն, և 'ի մաքրումն թիւնոյ ախտին :

Բայց եթէ զոյգ ընդ ելնդոյ գաղղիականի գտանի և ցաւ խիստ զարկուցիչ, և սաստիկ խիստ ջերմութի, յայնժամ օրէն է փոյթ մեծ ունել 'ի գրգռել և 'ի շարժել զշարաւումն : Եւ յայսպիսի գիպուած մարթ է թոյլ տալ ախտակրին 'ի գործ արկանել զասմօրական կերակուր իւր, և միանգամայն ըմպել ազնուագոյն գինի փոքրիկ սկահակաւ : Իսկ 'ի վերայ վշտացեալ մասին, այսինքն 'ի վերայ ելնդոց պարտ է սոսկալ սոսկալ դնել զթախլագմայս կակղացուցիչս պատրաստեալս միջամի հացի և կաթամբ, և բարեխառնեալ կոգւով կամ ձիթով ձիթապտղոյ : Այլ եթէ ենթակայն վիճակեալ իցէ մաղասատ խիստ խառնուածոց, մինչև հազիւ և տակաւ տակաւ գրգռել շարաւմանն, յայնժամ պարտ է յաւելուլ 'ի վերայ թանձրաթանից կամ սպեղանեաց զմկնտախ եփեալս, կամ զհասարակ սոխն անեփ խառնեալ ընդ բաւականաչափ պաղիլքօ Ձիպլլօի : Յորժամ հասուցեալ լինի ելունդն և կակղացին, յայնժամ պարտ է բանալ զայն խաչեձապէս, և դարմանել մինչև ց30 կամ ց40 աւուրս • և յայսոսիկ միջոցս պարտ է միշտ առնուլ 'ի կեր զանդրիկն ըստ եղանակին, զորմէ ասնիցուք խօսել 'ի յետադայն :

## Գ

'Ի վերայ խոցից կամ վիրաց առնելոց 'ի զանազան տեղիս, որ ծիփալիտեանց կոչին ուլչէրէ վէնէրէէ :

Այս տեսակք խոցից կամ վիրաց են տրտաքին, կեղանողական և խողովիչ, որք մարթին զոյանալ և 'ի վեր երևել 'ի միասին ընդ չար ներգործութեանն, որ առ՝ ճէուքօանէա վէնէրէա, և երբեմն ևս առանձինն : 'Ի սկզբան վերերևի խաղաւարտ կամ պալար ինչ կար-

մրադին հանդերձ ջերմութբ, որ է կրծէ 'ի ներքուստ, և յետ բացեալ լինելոյն ձևանայ խոց ինչ կարծրագոյն դժնդակ և խորամատ: Այսպիսի վէրք հասարակօրէն 'ի վեր երևին 'ի ծածուկ անդամսն, և 'ի շրջակայս նոցին, այլև 'ի շրթունս և առ ատամբք. և յայս դիպուած մարթ է տարափոխիկ լինել ախտին. որոյ վասն պարտին մնուցիչքն և ստնտուք զգուշանալ յանձանց ախտացելոց:

Դարմանք այսոցիկ խոցից:

Որդ՝ յորժամ խոցք այդպիսիք 'ի վեր երևին անդէն զկնի անմաքուր գործոյն, կասկածարութիւնն կամ զարմանատարութիւն է նոյն իսկ ընդ կասկածարութեան, զորմէ խօսեցաք 'ի վեր անդր: Պարտ է ախտակրին վարել կերակրեղէնս զովացուցիչս և թեթևս, և երակ հատանել, և 'ի գործ արկանել քանի մի օղէ սալէ տի կլառապէռօ, և մաննա: Պարտ է թանալ յաճախակի զվէրս և զվշտացեալ մասունս, մանաւանդ լուանալ ջերմ և ջրախառն կաթամբ. և եթէ յոյժ բորբոքեալ իցէ, պարտ է դնել 'ի վերայ սպեղանիս կակղացուցիչս և զովացուցիչս: Գործածութիւն այսոցիկ դեղորէից հասարակօրէն բաւական է 'ի փարատել զբորբոքումն, և տրամադրել զախտակիրն յընդունելութե անդկի:

Եւ իբրև վերոգրեալ, կամ նոցին նման սպեղանեօք ոչ բուժեսցին խոցքն, յայնժամ օրէն է առնուլ 'ի կիր զհետագայ սպեղանիդ: Առ երկու տրամ՝ սուպլիմաթօ քօռռօզիվօ, և մանր լուծելով զայն 'ի մէջ քարեայ անկանի՝ լից յանօթ ապակեայ, և յետ այնորիկ առ զջուրն կրի, որ լիցի 'ի պատրաստի իբր 400 տրամ. և սկսեալ հեղուլ յայնմանէ առ սակաւ սակաւ 'ի վերայ վերոյիշեալ սուպլիմաթօ քօռռօզիվօի իբր լիտր մի, որ փոխարկի 'ի գոյն արեան. և ապա առ զձէթն ձիթապտղոյ իբր լիտր մի, և լից յանօթ ապակեայ կամ յապիկած անօթ հողեղէն, և զվերոգրեալ կարմրերանգ ջուրն գաւաթ առ գաւաթ հեղ 'ի վերայ իւղոյն ձիթապտղոյ. այլ խառնելի է անընդհատ ծայրիւ ցպոյ՝ մինչև 'ի զանգիլ բարուք ընդ միմեանս, և լինել մի բաղադրութիւն: Հուսկ յետոյ յաւել 'ի վերայ նորա յստակ և անարատ ջուր կրի. և նոյնպէս խառնեսջիր ծայրիւ ցպոյ, զի փոքր մի թանձրասցի նովաւ. և յետ զիջանելոյ ջրոյն 'ի յատակ անօթոյն՝ պարտ է մեղմով հեղուլ արտաքս զջուրն՝ այնպէս

զի մի՛ թափեսցի իւղն ընդ ջրոյն. և յետ այնր ապ
վերստին լուանալ այնու ջրով զիւղն՝ վեց կամ եօթ
գամ հետ զհետէ փոփոխելով զջուրն, մինչև ցթա
նալ նորին իբրև զմածուն ։

Բայց 'ի գործածութեան 'ի միտ առնուլ արժան է
ներթէ 'ի վեր երևեալ իցէ աւելորդ միս ինչ սնկաձև
րայ նախագրեալ խոցից կամ վիրաց, յայնժամ օր
բաժանել չորս տրամ 'ի վերոգրեալ սպեղանւոյ, յ
լով 'ի նոյն և զկէս տրամ բուէչիբիթաթօ ռօսսօ
նմին և 20 կչիռ ցորեան՝ զկիզեալ պաղլեղ. և 'ի
արկ մինչև սպառ անյայտ լինելոյ սնկաձև մսեղինս
յետ այնորիկ արկ 'ի գործ զնախայիշատակեալ սպ
նիս՝ մինչև 'ի կատարեալ ապաքինութիւն. և յամենայն
նուագի՝ յորում հարկ 'ի վերայ լինի փոխել զս
պա՛րտ է լուանալ ջրովն, որ ասի՝ աքուա վէճէթօ
ռալէ, որ է ջուր ինչ յոյժ հռչակաւոր 'ի մասին
վն վերաց առնելոց 'ի վաղաշ ախտէ ։ Մեծապէս շ
ւէտութեան այսր նորագիւտ սպեղանւոյ զփորձ առեալ
յոլով անգամ. և որպէս կարծեմ, և համարձակիմ
հաստատել, 'ի ներկայ դարուս չիք բնաւ հանգոյն
այլ ինչ սպեղանի օգտակարագոյն ընդդէմ վերոյիշ
վիրաց կամ խոցից ։

Ր.

'Ի վերայ վաղվաղածին դժուարամիզութեան, որ չէ պատճառեալ
օրգանականս ։

Դժուարամիզութիւնս այս լինի 'ի ջղացաւական
բանադատութէ միզանց խողովակաց, կամ 'ի բորբոք
նէ նոյն մասանց, և մասանց մերձակայ եղելոց միզա
նին, պատճառեալ յանժոյժ ախտէ, կամ 'ի գործա
թէ ապշու և սատակագին դեղորէից, որպիսի են
թարիտէ, պիսաս ակէչէնթէ եւն ։

Նշանք դժուարամիզութեան 'ի ջղացաւէ՝ յորում ծագի
բորբոքմանէ միզանց խողովակաց, և 'ի բանադատութեան
նոյն խողովակաց ։

Յորժամ դժուարամիզութիւն յառաջ գայ 'ի բոր
մանէ միզանց խողովակաց, ախտաժէտն զգայ զջերմու
զցաւ ինչ սաստիկ յայսոսիկ մասունս. կամի և ախտ

հանապազ միզել, բայց ոչ կարէ, և միշտ նեղեալ տանջի ախտաւորն, թէպէտ և կրէ զծիգն: Իսկ եթէ պատճառեալ իցէ 'ի բռնադատութենէ միզանց խողովակաց, յայնժամ ախտաւորն 'ի միզել ոչ այնքան դժուարի, բայց 'ի թանալ միզին զխոցոտեալ և զբորբոքեալ մասն միզանց խողովակացն, իսկ և իսկ պատճառէ զվէրս և զբռնադատութիւն:

Դարմանք դժուարամիզութեան, 'ի դիպուածս՝ յորում պատճառի 'ի բորբոքմանէ միզանց խողովակաց, կամ փողոյն փամփշտոյ, և 'ի բռնադատմանէ նոյն խողովակաց:

Յորժամ դժուարամիզութիւն ըստ պատահման ծագի 'ի բորբոքմանէ միզանց խողովակաց կամ փողոյ փամփշտին, օրէն է երակ հատանել, և հանել զարիւն առատօրէն, և ըստ պահանջելոյ հարկին կրկնել զնոյն. և եթէ զկնի երակահատութեն դժուարամիզութիւն յարատեւեալ մնայ, յայնժամ պարտ է պատրաստել զբեխս մեղմականս, և տանել զարմանս կակղացուցիչս 'ի վերայ վշտագնեալ մասին մարմնոյ. և 'ի նոյն իսկ ժամանակի պարտ է ախտաւորին 'ի գործ արկանել յամենայն չորս ժամու մի սկահակ սրճոյ 'ի յետագայ դեղոյս: Առ լիտր մի՝ ջուր գարւոյ, վեց ունկի՝ շիլօբբօ տի ալթէա, չորս ունկի՝ իւղ քաղցր նշոյ, և կէս ունկի սալ նիթռօ: Խառնեա՛ զամենայն յիրեարս, և տո՛ւր 'ի գործ արկանել: Եթէ գործածութեամբ այսոցիկ դեղորէից ո՛չ հանգստանայ ախտաւորն, և դժուարամիզութիւն մնայ նոյն օրինակ, յայնժամ օրէն է վերստին երակ հատանել և իջուցանել ըզհիւանդն 'ի մէջ ջերմ ջրոյ մինչև ցկուրծս. բայց յայնժամ պարտ է միջահատել զգործածութիւն վերոյիշեալ դեղոյն՝ զորմէ ասացաք յամենայն չորս ժամու մի սկահակ ըմպել. քանզի գործածութիւն նորա յայսպիսի դիպուածի լինի մեծապէս վնասակար:

'Ի դիպուածս յայս երբեմն կարևոր է առ 'ի գրգռել զմէզն՝ 'ի կիր արկանել քաթէթէռ կամ գրեխ փոքրիկ. բայց որովհետև հիւանդն հազիւ երբեք մարթի տանել ուժգնութեան նորա, վասն որոյ բարւոք ևս վարկանիմք զգործածութիւն քանթէլէթթէ ատօլչէնթիի, որ լայնեցուցանէ զանցս միզի, և դիւրապատրաստ յօրինէ մանաւորապէս զհոսումն միզի: Բայց նկատել արժան է, զի եթէ գործածութիւն սորա սկսանի վշտացուցանել և զայ-

ըսցուցանել զախտակիրն, և պատճառել զցաւ
պարտ է յայնժամ լոկ և լոկ միջահատել:

Արդ՝ յորժամ փարատեսցի ցրուելն ամենայն նշա
և հիւանդն սկսանի հեշտեաւ և դիւրապէս կատա
րել զպէտսն, եթէ հաւասարեաւ առուցի թէ գոյ թոյն
վաշ, պարտ է յայնժամ ձեռնամուխ լինել 'ի մաս
րարութեն, և 'ի գործածութեն սնդկի, ըստ եղանա
զորմէ գրեցաք 'ի կառավարութեն երկրորդ աստիճանի ժ
րալից հոսման: Իսկ եթէ պատճառեսցի իցէ 'ի ջղա
ւական իմն բռնագատութեէ միզանց խողովակաց, յ
ժամ պարտ է 'ի գործ արկանել զդեղորայս, որք
թին բարեխառնել և թուլացուցանել զմասունս
հանս, յորմէ կազմի միզն. այսպիսի են դեղորայք հե
կիչք և բացողականք. որպիսի են սերմնցա տի լինո
գուխուիցիա, ալթէա, եւն: Եթէ գործածութբ այս
դեղորէից ոչ ներգործի օգուտն բաղձացեալ, պիտ
յայնժամ երակ հատանել, և դարմանս կակղացու
գնել 'ի վերայ ախտացեալ անդամոյն:

## Ե

Յայս վայր խօսեցաք զնշանաց գաղղիական ախտ
յորս թիւնն ներգործեալ էր յայն մասունս միայն,
զգածեալ էին այնու ախտիւ: Այլ աստէն խօսեսց
զնոյն ախտէ՝ ըստ որում հաստատեալ և հնացեալ,
ինքն ըստ որում ներգործեալ յարիւնն և տարածեա
բովանդակ մասունս մարմնոյ, և ճարակեալ ի ամեն
յօդուածս նորին, և վերջապէս՝ ըստ որում ապակա
նար ամենայն խառնուածոյն:

### Յաղագս նշանաց գաղղիական ախտի:

Նշանք ախտիս՝ ըստ որում հնացեալ, են՝ եւրո
կամ խոյլն քնջոց երանաց, ցաւն ոսկերի անդամոյ
առաւելապէս 'ի գիշերի, և յորժամ ախտակիրն ըն
մանի 'ի ջերմ մահճի. և մինն 'ի գլխաւոր նշանաց ս
րիկ ախտի՝ է զգաստութիւն հիւանդին զառաջին գիշ
և յետ այնորիկ իբր ուժանցի լեալ 'ի խորագոյն
լինելն: Դարձեալ, են և այլ նշանք, որպէս քոստ
ցուկոււմն դեղնագոյն խաղաւարտից, և կեղց, որք 'ի
երեւին և տարածանին 'ի զանազան մասունս մարմնոյ
մանաւորապէս 'ի գլուխն, խոցք ինչ կրծողակ

գժպհիք և զզուականք, որք սկսանին 'ի վեր երևիլ 'ի կո-
կորդն, և առ սակաւ սակաւ հասանին ախտելով 'ի քիմս,
'ի ծածն լնչաց, և ուռձացումն ինչ ճղաձև ընդ մէջ
մարմնոյ և ոսկերաց, որք երբեմն լինին կարծրագոյն և 'ի
բազում մասունս բաժանեալք, և երբեմն կակղագոյնք
իբրև զմեղրամոմ։ Մասունք, որք գնտականձև կուտակին 'ի
պարանոցն, յանութս, 'ի քունչս երանաց, և յանցս մի-
ջի, են կարծրագոյնք, և ողորկք, նոյնպէս և այտուցք
կամ ուռոյցք ինչ այլևայլ որակութե̄, և տարբեր կեր-
պիւ 'ի վեր երևին յաւիշկեան անօթս, 'ի ձգանս, 'ի յօ-
դուածս, 'ի ջիղս, մանաւանդ 'ի կծիկս ջղաց են։

Աչքն լինին մարմաջոտք և ցաւալից, և երբեմն ևս
կուրանան գլխովին։ 'Ի ներքին կողմն ականջաց 'ի վեր
երևին վէրք ինչ ցաւալից, և մարմաջոտ, յորմէ բազում
անգամ զնէտ գայ խլութի. գեղձքն լինին գեղնաշորք,
կապարագոյն, և բովանդակ մարմինն նիհար և վտիտ։ Ի
վերջապէս ախտացելոյն գործողութիւնքն կենդանական, կեն-
դանական, և բնական խանգարին, և հուսկ յետոյ միով
բանիւ ասացից, թշուառականն՝ եթէ յանցանօք ստա-
ցեալ է զախտն, իբրև առ 'ի պատիժ՝ լինի գլխովին ան-
ընդունակ իւրք շարժողականութե̄, և անկեալ դնի 'ի վի-
ճակ ինչ մահական։

Են և այլ նշանք սեպհականք սեռի կանանց. զորօրի-
նակ առատութի կամ նուազութիւն և կամ արգելումն
դաշտանի, հոսումն սպիտակ հիւթոց, ախտն արգանդի,
գործողութիւնքն ամլութե̄, և բորբոքումն, խաւլական ու-
ռոյց, քաղցկեղ, խօլ խեցգետնի, և խոց ինչ 'ի վեր ե-
րևեալ յարգանդ նոցին։ Կանայք ըմբռնեալք յախտէս
յայսմանէ՝ հասարակօրէն լինին ամուլք, կամ անծինք,
և ենթակայ վիժելոյ զսաղմն. և եթէ երկարաձգեալ
մնայ ոք 'ի սոսկատեսիլ ախտս յայս, լինի գլխովին վէրա-
լից կամ խոցոտեալ և պալարալից։

Արդ՝ այս ամենայն զարհուրելի նշանք զուգընթաց
լինին ընդ ախտիս այսորիկ, քանիցս անգամ հնանայ և
հաստատի. վասն որոյ պա́րտ է ախտակրին իսկ և իսկ 'ի
կասկածիլն թէ թիւնն ներգործեալ իցէ յարիւնն, կա-
նոնաւորել զկենքն և բարեկարգել. ոչ է մարթ նմա պա-
րապիլ 'ի գործս տաժանաւորս, և աշխատալիցս. ապա
թէ ոչ կարի ևս սաստկանայ և զայրանայ։ Ախտս այս
լինի դժուարաւ փարատելի, յորժամ հնանայ և անցանէ
'ի փորոտիսն, և ևս յոյժ երկիւղալի 'ի մանկունս և 'ի
ծերս։ Նոյնպէս եթէ ախտիս զուգընթաց լինին և ախտն

պզօռայութօ, և խոյլք կամ խօզք, կոչեցեալ յիտալաց-ւոց սքռօֆօլէ, յայնժամ ախտն լինի կարի դժուարա-բուժելի և վտանգաւոր: Կանայք կարեն դիւրանաւ՝ ցոլքան յարատև միայ արիւնն տեսատեսական. իսկ եթէ գաղարիցի, յայնժամ կրեն վիշտս անհնարինս. և ախտն բազում անգամ գնայ 'ի չըգողութիւն կամ 'ի վտանկրութի:

## Զ

'Ի վերայ դարմանարարութեանց, և դեղորէից այսորին ախտի:

Սեպհական դեղն՝ զոր սովորաբար առ 'ի բուժումն ախտիս 'ի վար արկանեն բժիշկք ընդ բոլոր Եւրոպիա, է անդիկն միայն, պատրաստեալ ըստ հետագայ եղանակին և կերպին: Երբեմն համարէին իբր անհնարին և անկարելի զբուժումն այսր ախտի գաղղիականի հնացելոյ, և հաստատելոյ՝ առանց 'ի գործ արկանելոյ զայլ դարմանս լուծիչս լորձանաց: Բայց 'ի ժամանակի մերում հասարակ գործածութբ փորձեալ է. զի անդիկն է յոյժ օգտաւէտ, ազդու, և ներգործիչ դեղ 'ի փարատել, և յարմատաքի խլել զթոյնս ախտիս, եթէ 'ի վար արկանիցի ըստ հարկաւորապէս պահանջեալ եղանակին: Ցայլ և յայլ դարս՝ այլ և այլ բժիշկք արկանէին 'ի գործ զայլ և այլ կերպս. և եղանակս 'ի պատրաստել զանդիկն. բայց յաջորդութբ ժամանակաց քաջայայտ ծանուցաւ, եթէ առաւել պարզագոյն, ճահողագոյն, և դիւրին կերպն պատրաստելոյ զանդիկն՝ եղև յոյժ օգտաւէտ և շահեկան, քան զմանրագննին քիմիական կերպն պատրաստելոյ զնոյն: Քանզի հաստատեղքն, և օծանելիքն պատրաստեալք կենդանի անդկաւ կամ ճարպով, կամ ուէտնիւ, են, բուժեն առանց կարծեաց զառաւել դժնդակ կերպն գաղղիական ախտի, միայն թէ յարատև 'ի գործ արկանիցի ընդ բաւական ժամանակ, և կազմուածքն չլինիցին անընդունակ ապաքինուե վասն երկք պատճառի:

Յորժամ ախտն լինի նորագոյն, մարթ է բուժել զայն գործածութբ միոյ ևեթ եղանակի. բայց միայն՝ օրէնք է քաջ ընտրութի առնել, և կանոնաւորել զախտակիրն, նկատեալ 'ի ծանրութի նշանացն ախտին, 'ի խառնուածս և 'ի կազմուածս ախտակրին, և 'ի ներգործութին անդկապատրաստեալ դեղորէից, զոր մարթ է 'ի գործ արկա-

նել ։ Մնդիկն անլուծանելի, և կամ հաստատեղքն սնդ-
կաւ պատրաստեալք, և 'ի գործ արկեալք 'ի ներքուստ, և օծանելիքն նմանապէս սնդկաւ պատրաստեալք կարեն ապաքէն բուժել, և բուժեն իսկ ներգործութեամբ զառանել հնացեալ և արմատացեալ ախտն ։ Բայց որովհետև ոչ կարեն միշտ և հանապազ պատճառել զայսպիսի բուժումն, վասն որոյ կարևոր համարիմ յառաջիկայդ որոշաբար և ուրոյն ուրոյն ծանուցանել զպարագայսն, յորս արժան և պարտ է 'ի վար արկանել զայսպիսի դեղորայս ։

## Է

'Ի վերայ Գլխաւոր պրամադրութեանց և նշերդից, որով մարթ է դարման տանել գաղղիական ախտին, և 'ի վերայ եղանակին՝ որով մարթ է և հարկ 'ի գործ արկանել զսնդիկն անլուծանելի, կամ զհաստատեղս պատրաստեալս սնդկաւ ։

Գլխաւորոյն 'ի մէջ ամենայն դեղորէից պատրաստելոց սնդկաւ, են բիլլօլէ մէռքուռիալն տի բլէնք, և բիլլօլէ անթիսիֆիլիթիքէ տ' ալֆօպէութ. որք ըստ վկայելոյ ամենայն հեղինակաց ունին զմանաւոր իմն ներգործութիւն 'ի դիպուածս ախտիս քան զայլ ամենայն դեղորայս ։ Արդ՝ նախ քան 'ի կիր արկանելն զհաստատեղս զայսոսիկ, կմ զայլ հաստատեղս սնդկաւ պատրաստեալս, (զորոց տացուք զնուսխայս 'ի համ. ա͞. 'ի տառն Բ. 'ի կարգի եւրեանց) պարտ է եռակ հատանել, հայեցեալ 'ի հարկաւորութիւն նշանաց, որք ցուցանեն զնոյն, և ևս 'ի գործ արկանել տէքօցիօնէ տի սալսաբարիլլա. զորմէ ունիմք խօսել 'ի համ. ա͞. 'ի տառն Տ. 'ի կարգի եւրում ։ Նոյնպէս օրէն է սակաւ բաղանիս առնել ջերմ ջրով, նկատեալ 'ի կարողութիւն ախտաւորին, ևն ։

Եւ յետ այսոցիկ կառավարութեանց 'ի գործ արկանել զհաստատեղս զայսոսիկ ըստ պահանջեալ հարկին չորս հատ ընդ առաւօտն 'ի ծոմուստ, և չորս հատ ընդ երեկոյն, և առ սակաւ սակաւ պարտ է առաւելուլ զչափն մինչև ցհինգ կամ ցվեց հատս անընդմիջաբար յերեկոյն, և ընդ առաւօտն. իսկ յորժամ լնդերքն սկսանին այտնուլ, պարտ է յայնժամ միջահատել զգործածութիւն նոցին, և իսկ և իսկ տալ հիւանդին վեց կամ ութ հաստատեղս մաքրողականս կամ լուծողականս սնդկաւ պատրաստեալս, որ կոչին բիլլօլէ տի պէլլօսթէ ։ Զայս նեթէ կամիս կարծել, սա

ունկի մի՝ զտեալ և պայծառ սնդիկն, և կէս ունկի՝ քռէ-
մօռ տի Թառթառօ, ունկի մի՝ տրիակռիտիօ ծօլֆօռաթօ
և փոքր ինչ չիւլօբբօ տի քաբէլ վէնէռէ. և զայսոսիկ հա-
րեալ տորոբեա՛ 'ի միասին յապակեայ կճ՛ 'ի մարմարիոնեա
անկանի՝ այնքան մինչև գլխովին անհետ լինիցին գնտակք
սնդկի. և ապա յաւել 'ի նա ունկի մի փոշիացուցեալ
շիարաբբա, այլ և չիւլօբբօ տի քաբէլ վէնէռէ՝ որչափ ին-
պէտք են վասն շինելոյ զհաստադեղս զայս, որք մէն մի կը-
ռիցեն չորս ցորեան, շըջապատեալ փոշւովն՝ որ կոչի փո-
վէռէ տի լիգուռիցիա: Եւ զայս պարտ է առնուլ յու-
կամ 'ի տասն աւուրս միանգամ, որք հասարակօրէն բ-
ւական լինին 'ի նուազել զզրգռումն Թքոց, և 'ի վա-
տահեցուցանել զլորձունս: Բայց յայսոսիկ աւուրս պահ-
է տխտակրին յամենայն աւուր ըմպել սկահակ մի գինւ-
տէքօցիօնէ տի սալսաբառիլլիա, և կանոնաւորել զկերա-
կուրս իւր ըստ կերպին, զորմէ յիշատակեցաք վերագոյ-
'ի Ճառէն զախտէ հոսման:

## Ը

'Ի վերայ կերպի արկանելոյ 'ի կիր զանկոյծ սնդիկին 'ի միա-
ընդ փաղաղիչ սնդիկի, որ ասի՝ սուպլիմաթօ քօռռօզիվօ:

Յորժամ հարկ 'ի վերայ լինի 'ի գործ արկանել զ-
զօրայս Թուլացուցիչս և Թափանցիկս, որ երբեմն կ-
կարևոր է առ 'ի Թուլացուցանել զուժգնութիս մանր-
Թելից մարմնոյ, որք խոշ ընդ ախտն լինին, եւ՝ յորժ-
դէպ լինին միանգամայն ցրուել և սպառել զախտարծ-
հիւթս և զշոգիս, որք արգելական լինին Թիւնաւոր ը-
Թեամբ իւրեանց ապաքինելոյ գաղղիական խոցից և
զոց հնացելոց, յայնժամ պարտ է զհապս սնդկայ պ-
րաստեալս, և զփաղաղիչ սնդիկն 'ի գործ արկանել
յետադայ եղանակին: Զկնի կառավարելոյ զհիւանդն
նախագրեալ կանոնաց, պարտ է սկիզբն առնել գոր-
ծուԹե սուպլիմաթօ քօռռօզիվօի, որ այն ինքն է. սն-
փաղաղիչ, յամենայնում աւուր զչափ քառորդ մ-
ցորենոյ լուծեալ 'ի մի սկահակ գինւոյ տէքօցիօնէ
սալսաբարիլլիա. և զայս չափ օրէն է յարատև մա-
ցանել ախտակրին մինչև ցուԹ աւուրս. և յետ ուԹ
աւուրց պարտ է տալ նմա կէս կշիռ ցորեան լուծեալ
նաչափ Թիզանախ, մինչև ցայլ ևս ութ աւուրս
հուսկ յետոյ արժան է աւաւելուլ մինչև ցմի կամ

կու կշիռ ցորեան, և յարատև առնուլ 'ի կեր զայս չափ` մինչև ցփարատիլ նշանացն ։

Արդ յայսոսիկ աւուրս, յորս 'ի կեր արկանի վերոյի-շեալ դեղն սուպլիմաթօ քօռռօզիվօ, պարտ է տալ միան-գամայն ախտակրին վեց ցորեան բիլլոլէ մերքուրիալի, այսինքն հապ սնդկաւ պատրաստեալ, սկսեալ յեօթնե-րորդում աւուր զկնի գործածութեան վերոյիշեալ սուպլիմա-թօ քօռռօզիվօին, և մարթ է առաւելուլ զչափս զայս մինչև ց12 կշիռ ցորեան ։ Եւ եւս օրէն է 'ի մէջ ութ աւ-ուրց միանգամ լուծողականս տալ նմա քանի ինչ հապս լուծողականս սնդկաւ պատրաստեալս, և յաւուրն` յո-րում տուեալ լինի լուծողականն, չէ օրէն 'ի վար արկա-նել ոչ զսուպլիմաթօ, և ոչ զհապս սնդկաւ պատրաստեալ հապն ։ Իսկ որքան առ կառավարութեն կերակրոյ 'ի մէջ այսոցիկ աւուրց, պարտ է վարիլ ըստ կանոնի, զորմէ յի-շատակեցաք վերագոյնդ ։ Եւ զկնի 15 աւուրց փարատե-լոյ ամենայն նշանաց, պարտ է կրկնել քանի ինչ լուծո-ղականս ըստ վերոյիշեալ եղանակի ։

## Թ

'Ի վերայ եղանակի և չափու 'ի գործ արկանելոյ զանազան սնդկի 'ի ժամուն ընդ եփելւոյ, որ առ` թիզանէտ անթիվէնէրէի ։

Եթէ ստամոքսն և այլ պարագայք դիմակալ լինին ներգործութեան սուպլիմաթօ քօռռօզիվօին, որպէս պա-տահի բազում անգամ, յայնժամ պարտ է միանգամայն ընդ սնդկաւ կազմեալ հապից 'ի գործ արկանել զվերոյի-շեալ գրեխս, որք գոլով եւս միանգամայն պատրաստեալք սնդկաւ, ունին մեծ համաձայնութիւն ընդ սուպլիմաթօ քօռռօզիվօի ։ Արդ` պարտ է առնուլ 'ի կեր զգրեխս կո-չեցեալս անթիվէնէրէի ըստ յետագայ կերպի ։ Նախ սկսանիլ զգործածութեն հապից ըստ վերոյասացեալ կերպի, և յետ այնորիկ 'ի վար արկանել յաւուրն երկու անգամ զնոյն վերոյիշեալ գրեխս, և պարտ է կրկնել զայնս յամե-նայնում աւուր մինչև ց15 աւուրս զկնի դադարելոյ գլխաւորին ամենայն նշանաց ։ Եւ յայսոսիկ միջոցս` յորում 'ի գործ արկանին գրեխքս, պարտ է տալ ախտակրին 'ի վեց ցորենոյ մինչև ց12 ցորեան հապս սնդկաւ պատրաս-տեալս յերեկոյն, և ընդ առաւօտն ։ Եւ եւս` տալ հատա-դեղս լուծողականս սնդկաւ պատրաստեալս մինչև ցութ աւուրս, որպէս ասացաք վերագոյնդ ։

Բայց պարտ է գիտել, զի պատահի բազում անգամ եթէ ախտս այս 'ի հնանալն և յարմատանալն՝ դժուարաւ ապաքինի գործածութեամբ բազմակերպ սնդկաւ պատրաստեալ դեղորէից. բայց և երբեմն փութապէս բուժի անդէն 'ի գործ արկանելն զայլ իմն տեսակ դեղորէից սնդկաւ պատրաստելոց, որովհետև իւրաքանչիւր տեսակ ունի զայլ և այլ հանգամանս նկատմամբ ենթակայից. վասն որոյ յոմանս դիպուածս պարտ է փորձել զմին զկնի միւսոյ, չափաւորապէս կանոնաւորելով ըստ պահանջելոյ հարկին. ապա թէ ոչ՝ յաջախութիւն այսպիսի բազմակերպ դեղորէից կարէ երբեմն վնասակար լինել: Բայց եթէ 'ի գործ ածել անգ զվերոյիշեալ բազմակերպ տեսակս սնդկաւ պատրաստեալ դեղորէից, չերևի նշան ինչ նուազելոյ ախտին, յայնժամ պարտ է ձեռնամուխ լինել 'ի գործածութիւն իրիք օծանելեաց: Արդ՝ յառաջիկայդ խօսեսցուք զեղանակէ 'ի գործ արկանելոյ զօծանելիս առանձինն, կամ խառնեալ ընդ այլ սնդկաւ պատրաստեալ դեղորէից:

Ժ

'Ի վերայ կերպի 'ի գործ արկանելոյ զսնդիկն ճանապարհաւ օծանելեաց:

Յորժամ թիւնն վաւաշ ախտին լինի նորոգ, ընդ մէջ մորթոյ մարմնոյն միայն, և ընդ մէջ մասանց զեռեղեալ, ուստի և ոչ պատճառէ 'ի ներքուստ զբորբոքումն ինչ սաստիկ. յայնժամ 'ի գործ արկանելն զսնդկաւ պատրաստեալ օծանելին (որ կոչի յիտալացւոց՝ ունկուէնթօ մէռքուռիալէ, զորոյ տացուք զնուսխայն 'ի հատ. Բ. 'ի տառն Ս, 'ի կարգի իւրում.) խոհականութբ̄ և զգուշութբ̄՝ լինի օգտաւէտ և շահարար. որովհետև սնդիկն մուծեալ 'ի մորթն, 'ի մասունս և 'ի մանրաթելս մարմնոյն, այսու ճանապարհաւ պատճառէ զներգործութի ինչ պատրաստական, և բնականապէս դիմամարտ առ միազմս, այսինքն յապականութիւն տափական: Բայց նկատել արժան է՝ զի յորժամ օծանելիքն 'ի գործ արկանին, պարտ է մորթոյն լինել կակղագոյն և թուլագոյն, և ևս պարտ է չգտանել ինչ հասումն անմաքուր. ապա թէ ոչ՝ լինի մեծապէս վնասակար քան թէ օգտակար:

Արդ՝ յորժամ 'ի պարագայսն բոլորայայտ ճանաչեմք, եթէ օգտաւէտ լինի գործածութիւն օծանելեաց, յայն-

ժամ՝ պարտ է նախ երակ հատանել ըստ ցուցանելոյ նը-շանաց. և յետ այնորիկ բաղանիս առնել ջերմ ջրով յաւուրն երկու անգամ՝ յերեկոյն և ընդ առաւօտն, և տալ նմա քանի ինչ լուծողականս, ըստ վերոյիշեալ եղանակի։ Իսկ յետ այսոցիկ ամենայնի մարթ է 'ի գործ արկանել ախտակրին նախ՝ երկու տրամ օծանելիս սնդկաւ պատրաստեալ, և յաւելուլ պարտ է ըստ այսմ օրինակի յերկու աւուր միանգամ օծանելով. բայց յառաջին անգամն սկսանել պիտոյ է յօծանելոյ զգարշապարս կմ՛ զներբանս միոյ ոտին, յերկրորդ անգամն զգարշապարս միւսոյ ոտին, յերրորդ անգամն զմի սրունս, և 'ի չորրորդ անգամն ըզմիւս սրունս, իսկ 'ի հինգերորդումն՝ զծունկս ևն։ և այսպէս աստիճան քան զաստիճան մարթի հատանել յօծանել զազդերս, զմէջս, զքամակս, և զուսս։

Եթէ զկնի օծանելոյ զայս ամենայն մասունս՝ յարատևապէս ախտակիրն մնասցէ տակաւին միօրինակ անբուժելի 'ի ցաւոց իւրոց, յայնժամ պարտ է վերստին սկսանիլ զօծումն 'ի նոյն վերոյիշեալ անգամս, միանգամայն 'ի կուրծս և յորովայնն։ Բայց յորժամ նշանքն թէպէտ և նորագոյնք՝ լինին յոյժ սաստիկ և ծանրագոյն, յայնժամ պարտ է առաւելուլ զչափն օծանելեաց մինչև ց4 տրամ։ Իսկ եթէ բերանն կամ ըմպանքն սկսանիցին բորբոքիլ, և լորձունքն գրգռիլ, յայնժամ օրէն է փութով միջահատել զօծանելիս, և պատրաստել զլուծողականս, և յետ այնորիկ կրկին 'ի վեր արկանել զօծանելիսն ըստ վերոյցուցեալ կերպի։

## ԺԱ

### 'Ի վերայ կերպի և չափու 'ի գործ արկանելոյ զմէռքուրիօ սուպլիմաթօ քօռռօզիվօ.

Առ մի կշիռ ցորեան՝ մէռքուրիօ սուպլիմաթօ քօռռօզիվօ, և երկու ունկի՝ աքուավիթէ տի Ֆռանչիա։ Լուծեա՛ զսուպլիմաթօն 'ի մէջ այսքան ջրոյ, կամ սբիռիթօ տի Ֆռումէնթօյի, և 'ի գործ արկ զայն միով հատարակ դդալիւ, կամ կէս ունկի՝ երկու անգամ յաւուրն։ Ա՛յլ նուսխայ 'ի կազմել զնոյն դեղ։ Ա՛ռ վեց կըշիռ ցորեան սուպլիմաթօ քօռռօզիվօ, և կէս ունկի՝ սբիռիթօ տի վինօ, և զերկոսին եդեալ 'ի մէջ ապակեայ կամ մարմարիոնեայ անօթի հարեալ լուծեա՛, յաւելլով 'ի նոյն և զմի և կէս լիտր ջուր ջինջ, և պարզ. և առ

ըմպել հիւանդին երկու անգամ յաւուրն, ըստ չափու միոյ դրգալի ապղանոյ, և յարատևել պարտ է յայս մինչև դիմովլին փարատիլ նշանացն 'ի ներքուստ: Իսկ եթէ ստամոքսն չկարէ տանիլ զդեղորայս զայս պատրաստեալ ըստ այսմ եղանակի, յայնժամ մարթ է պատրաստել ըստ յետագայ եղանակի, որ առաւել ախորժելի է, և կարի շահաւէտ: Ա՛ռ մի և կէս տրամ՝ սալէ ամմօնիակօ, և կէս ունկի՝ ջուր ջինջ, լուծեալ 'ի մարմարիոնեայ անկանի, յաւելցուլ 'ի նոյն և զկէս տրամ՝ սուպլիմաթօ քօռռօզիվօ, և զայնչափ մեղր կամ փորին հացի՝ որչափ պէտք իցեն առ կազմելոյ ըստ կանոնաց արհեստին զգանգուածս զայս, արարեալ հատս 288 թուով: 'Ի հատից կամ 'ի հատապտղոց սոսա մէն մի առցի ընդ առաւօտս, և մէն մի ընդ երեկս. և զայս չափ պարտ է յարատև մատուցանել հիւանդին մինչև ցվեց օր, և զկնի վեց աւուր պարտ է տալ նմա երկու ընդ առաւօտն, և այլ երկու ընդ երեկս. և յետ երկուց կամ երից աւուրց պարտ է առաւելուլ մինչև ցութ հատ յաւուրն, և յարատև 'ի կիր արկանել զայս չափ մինչև ցբուժիլ նշանացն:

Բայց գիտելի է, զի զդեղս զայս պատրաստեալ եթէ ըստ եղանակի ըմպելեաց, և եթէ ըստ եղանակի հատի, չէ օրէն ընաւ 'ի սկզբան անդ 'ի վար արկանել, բայց եթէ մակաւաչափ քանակութբ, զորօրինակ զքառորդ մասն միոյ ցորենոյ միանգամ և եթ յաւուրն. և չէ մարթ՝ առաւելուլ զչափ այսր սուպլիմաթօի, բայց եթէ տակաւ առկաւ, յորժամ տեսանեմք՝ եթէ մարմինն ոչ զգայ ընաւ զխռովութիւն ինչ կամ զնեղութիւն, և որ քան զոր յառաջադէմ նկատի 'ի լաւագոյն ես վիճակ. վերջապէս մարթ է առ սակաւ սակաւ յառաջանալ 'ի քառորդ մասնէ ցորենոյ մինչև ցմի կամ ցերկու ցորեան յամենայնում աւուր: Իսկ առաւելն ևս քան զայս չափ՝ արգելեալ է գլխովին. քանզի այս չափս փոքրիկ բաւական համարի վասն ամենեցուն, իսկ առաւել շատն՝ վնասակար լինի բազմաց:

Ոմանք 'ի բժշկաց ուրանան զներգործութիւն և զզօրութիւն սուպլիմաթօ քօռռօզիվօի 'ի դիպուածս գաղղիական ախտի. բայց փորձիւ հաստատեալ է՝ զի քանիցս անգամ խոհեմապէս 'ի կիր արկանի դեղս այս, միշտ լինի օգտակար և առողջարար. բաց յոմանց դիպուածոց՝ յորս եթէ 'ի վար արկանի, գէթ լինի անպիտան և անօգուտ. որպիսի է քաղցկեղն, բորբոքումն, խցանքն խուլական, ուռոյցքն են: Նոյնպէս ո՛չ է օրէն 'ի կիր արկանել զդեղս

զայս 'ի գիպուածս, յորում տեսանեմք՝ զի հիւանդն ունի յօժարութիւն ինչ 'ի փսխել, կամ ունի ստամոքս իւր յոյժ տկարացեալ, և կամ ունի զայլ ինչ և իցէ ախտս զոյգ ընդ գաղղիականին: Գիտելի է ևս, զի 'ի գիպուածս յայս կարի կարևոր է բալանիս առնելն ջրոմն սալսաբառիլեայ, լէնօ կուատեայքօի և սասսօֆռասսօի են, որ կոչին յիտալացւոց՝ պանեի անթիմէնէուէի:

## ԺԲ

### Խրատք ընդհանուրք 'ի վերայ կառավարութեան ախտին գաղղիականի:

Նախ քան 'ի գործ արկանել զմնդիկն՝ որպիսի և իցէ կերպիւ, պարտ է միշտ փոյթ մեծ ունել, և զգուշանալ 'ի պնդացուցանել և 'ի կազդուրել զախտակիրն: Նոյնպէս բնաւ ոչ է օրէն, և է գլխովին վտանգաւոր 'ի գործ արկանելն զնոյն 'ի գիպուածս՝ յորում ող ըմբռնեալ լինի իւիք ախտիւ, որպիսի են ֆեպրուէ փութախտս, կշտացաւութիւն, տկարութիւն կրծոց և փորոտեաց, և ախտք կրծոց, և ևս ջրգողութիւն, խուլական ուռոյցք են: Եթէ կրօղ ող ախտիս գտանիցի 'ի տկարագոյն իմիք վիճակի պատճառելոյ կամ 'ի հիւանդութէ ինչ, կամ յաշխատանաց, կամ 'ի ժուժկալութէ ուկորոյ, կամ յայլ ինչ սոցին նման պատճառէ, յայնժամ պարտ է յապաղել զգործածութիւն մնդկի, մինչև 'ի ձեռն սնուցողական կերակրոց, և հանգստեան առ ժամանակ մի զօրասցի ախտակիրն, և կարողանայցէ 'ի տանել այնմ. և այս հարկաւորապէս պահանջի:

Դարձեալ, պարտ է մեծապէս զգոյշ լինել, և մի' բնաւ 'ի գործ արկանել զմնդիկ՝ կանանց 'ի ժամանակի դաշտանի յորում կրելոց են զնոյն, և ևս 'ի վերջին ամիսն յղութեան նոցին: Բայց եթէ զկնի յղութե կնոջն անցեալ իցէ միայն քանի ինչ ամիս, յայնժամ ըստ պահանջելոյ պարագայիցն մարթ է առնուլ 'ի կիր զմնդիկն, բայց յոյժ սակաւ քանակութբ, և առաւել երկարագոյն միջահատութբ. 'ի ձեռն այսոցիկ զգուշութեց բաղում անգամ ապաքինի կինն, և ևս երախայն, զոր կրէ յարգանդի: Իսկ եթէ ևս ոչ ապաքինի ախտն գլխովին, գէթ անձապարեալ արգելանի, և ոչ ևս արմատանայ և մեծանայ՝ մինչև 'ի ծնանիլ կնոջ. իսկ զկնի ծնանելոյն, և ստանալոյն զբաւական զօրութիւն և կ արողութիւն, մարթ է դարման

տանիլ նմա 'ի վար արկանելով զապահովագոյն իմն կերպ մեղկաւ պատրաստեալ դեղորէից , որ բաւական լինիցի հաւանականապէս առ 'ի բուժել զկինն և զերախայն , զոր դիպեցուցանէ : Պատմէ Ալիպերթ հեղինակն , եթէ կին ոմն 'ի հինգերորդում ամսեան յղութեն իւրոյ ապաքինե-ցաւ կատարելապէս յախտէ աստի , 'ի գործ արկանելով միայն զգլրեխան , որ ասի՝ քլիսմեթեայի անմթիվընեուեի , զոր-մէ խօսեցաք առդէն վերագոյնդ :

Իսկ որքան առ մանկունս և տղայս , գիտելի է , եթէ չէ՛ բնաւ օրէն 'ի գործ արկանել առ նոսա զմնդիկն , որով-հետև կազմուածքն նոցին է յոյժ փափուկ և քնքուշ , և ոչ կարեն տանիլ այնմ . նոյնպէս իմն և վասն ծերոց ըմբռ-նելոց յայսմ ախտէ : Դարձեալ , պարտ է մեծաւ զգու-շութեամբ 'ի կիր արկանել զմնդիկն առ այնոսիկ , որք են ա-մուլք և սևամաղձոտք , և եւս՝ որք ունին զախտս փորհա-րութեան և արիւնուշա որովայնալուծութեան , ևն : Ժամա-նակն առաւել ձահողագոյն և պատշաճողական է գա-րունն և աշունն , յորս եղանակն լինի բարեխառն և չա-փաւոր ջերմ : Բայց 'ի պահանջել հարկին մարթ է 'ի գործ արկանել արտաքոյ այսոցիկ ժամանակաց ևս . այլ յայնժամ պարտ է մեծապէս փոյթ ունել 'ի պահպանել զախտակիրն ջերմ կամ գաղջ ըստ պահանջելոյ եղանա-կին : Իսկ որքան առ կառավարութիւն՝ որ պահանջի յախ-տակիրն նախ քան զգործածութիւն մնդիկի , ասացաք վե-րագոյնդ , եթէ պարտ է լուծողականս պատրաստել , ե-րակ հատանել , ևն :

Բայց աստանօր յաւելումք 'ի վերայ ասել . եթէ պարտ է կրկնել զայսոսիկ դեղորայս նկատեալ 'ի չափն հասակի , 'ի կարողութիւն , և 'ի խառնուածն ախտակրին ըստ ցու-ցանելոյ խոհականութեան : Հուսկ յետոյ գիտել արժան է , զի թէպէտ յոյժ դժուարին և իբր անհնարին իմն է բա-ցարձակապէս և յայտնապէս ճանաչել զբուն զպատճառն թիւնաւորութե՝ որ զուգընթաց լինի ընդ ախտս , բայց 'ի վերայ այսր ամենայնի յոյժ ապահովագոյն է միշտ հանա-պազորդել զդեղորայս ընդ երկար ժամանակս , և բնաւ չէ՛ օրէն զանց առնել կարի փութով . և այսպէս հաւաս-տեաւ մարթ է ապաքինել և բուժել զորպիսի և իցէ կերպ գաղղիական ախտի : Քանզի ըստ վկայելոյ ամենայն հեղինակաց ուսումնականաց՝ չէ՛ բնաւ վտանգաւոր , և է միշտ փարատելի , միայն թէ հիւանդն վարեսցի ըստ խորհրդոյ բժշկին , և զգուշասցի 'ի վերստին ախտանա-լոյ իւրով անժոյժ մոլութեամբն . ապա թէ ոչ՝ զինչ շահ

'ի դեղոց կամ 'ի բժշկաց, յորժամ ախտակիրն լինի դահիճ անձինն ։

## ԺԳ

Տամեցեալ դուզնաքանել և յաղագս բորբոքման ամորձեացն 'ի դիպուածս՝ որ պատճառի յախտէն կոչեցելոյ՝ միազգիս վէնէռէօ, այսինքն ապականութե վավաշոտական, Գիտելի է, զի ուռոյցն ամորձեաց յառաջ գայ 'ի ժահրալից հոսմանէ, նաև 'ի հիւթոց ապականելոց՝ որք 'ի միզանց խողովակաց 'ի յամորձիս լծանան, և պատճառեն զցաւս սաստիկ. զի և 'ի դիպուածս ախտին ժահրալից հոսման, որ ասի՝ պլէնօռռաճիա վէնէռէա, կամ լէուքօռռէա վէնէռէա, պատահի երբեմն յառաջին և յերկրորդ աստիճանի ուռոյցն ամորձեաց, մանաւանդ յորժամ հոսումն հիւթոց լինի արգելեալ կարի փութապէս, կամ պատճառաւ ցրտութե, կամ սակս ըմպելոյ զօրաւոր ինչ հեղանիւթս, և կամ վասն առնլոյ կարի սաստիկ և զօրաւոր լուծողականս ևն, կամ վասն գործելոյ զշարժումն ինչ աշխատալից և տաժանաւոր. և վերջապէս սակս 'ի գործ արկանելոյ սովորաբար որպիսի և իցէ դժնդակ և զայրացուցիչ դեղորայս ։ Դարձեալ, մերթ է երբեմն ևս պատահիլ բորբոքումն, և ուռոյց ամորձեաց՝ առանց բնաւ ընթացակից լինելոյ վերոյասացեալ թունից ։ Հարուածք, հարստահարումն, ուժգնութիւք, և բռնութիւք կարեն պատճառել զնոյնս. և երբեմն զոյգ գաւանքն ընդ այսոցիկ պատճառաց փախուստ, ցնցումն մկանանց, և այլ պատահարք ծանուցք, 'ի ձեռն որոց դիւրաւ ճանաչի և զանազանի ։

Պատուիրութիւն ուռուցի, և բորբոքման ամորձեաց, յորժամ լինի պատճառեալ 'ի վավաշութենէ ։

'Ի դիպուածս ուռուցի և բորբոքման ամորձեաց, հարկաւորապէս պահանջի երակահատութիւն, զոր և պարտ է ստէպ ստէպ կրկնել ըստ պահանջելոյ հարկի նշանացն ։ Կերակրոցն պարտ է լինել թեթև, և ըմպելեացն զովացուցիչ. և ախտակիրն պարտի հրաժարել 'ի մսոյ, 'ի դժուարամարսելի համադերձանաց, 'ի գինւոյ, և յայնմ ամենայնէ, որք են բնութբ գրգռիչ և ջերմացին ։ Փօմէնթի, նաև քաթապլազմա արարեալ միջոնե հացի կամ ալերով բանկլայի, և կաթամբ, են յոյժ օգտակարք 'ի դի-

պուածս յայս ։ Արդ՝ զքաթափլազմայն օրէն է կրել 'ի վերայ ախտացեալ անդամոյն՝ ցորքան լինի ընկողմանեալ 'ի մահճի, և յորժամ յոտս կանգնի՝ պարտ է պահպանել զայն ջերմ․ այլ 'ի դիպուած ախտիս յոյժ կարևոր և օգտակար է մնալ միշտ 'ի մահճի, և ոչ բնաւ ելանել՝ մինչև ուռոյցն, և բորբոքումն, և ցաւն լինիցին զկնովին փարատեալ ։

Իսկ եթէ գործածութիւն այսոցիկ զովացուցիչ և ցրուիչ իրաց ոչ յաջողեսցի փարատել զուռոյցն, պարտ է յայնժամ 'ի գործ արկանել զնախագրեալ դարմանն, այսինքն զծծումն սպեղանւոյն պատրաստեալ մեղկաւ, որպէս խօսեցաք 'ի վեր անդր, յախտաւոր մասն առնելով զծծումն, եթէ ոչ տայցէ ինչ ցաւ․ իսկ 'ի ցաւիլն՝ հարկ է ծծմանն լինել 'ի վերայ ազդերն ։ Եւ յայսմիկ դիպուածի պարտի ախտակիրն ըստ պահանջելոյ հարկին մնալ 'ի մահճի համբերութեամբ հինգ կամ վեց շաբաթս, և ըմպել առաւօտէն տէքզօցիոնէ տի սալսաբառիլըա, բայց զուռուցեալ անդամն ունել պնդեալ կապով իւիք ։

'Ի վերայ կառավարութեան, զոր պարտ է ունել 'ի դիպուածն, յորում նոյնն վախճանական լինի ժառանգեալ, բայց մնայ ինչ կոյկած ախտին՝ առաջեալ ծաղկելոյ ։

Արդ՝ յորժամ այսոքիկ դեղորայք լինի տկար և անբաւական 'ի բուժել զախտն, և լինի կասկած 'ի վերայ հասանելոյ քաղցկեղային ինչ ապականութեան, և ամորձիքն լինին կարծրացեալք և պնդացեալք, յայնժամ օրէն է ծր ըստ օրէ տածել և ջեռուցանել զվշտացեալ մասունս, արարեալ տէքզօցիոնէ տի չիքուլթա, և քաթափլազմա տի չիքուլթա, և 'ի նոյն իսկ ժամանակի պարտ է 'ի ներքուստ տալ նմա էսթրաթթօ տի չիքուլթա, զորոյ զկերպն 'ի կեր արկանելոյ՝ մարթիս լսել ուսանիլ 'ի գլ․ լէ․ եր․ 362 ։ Դեղս կամ հասպս այս հրատարակեալ է մանաւանդ 'ի ներհուն հեղինակաց 'ի դիպուածս քաղցկեղի, և ես ականատես եղեալ վկայեմ և հաստատեմ, եթէ առաջաքինեցաւ ումն 'ի դիպուած ասացեալ քաղցկեղիս, զոր կրէր յերկուց կամ յերից ամաց հետէ ։

'Ի վերայ խառնախորութեան ուռուցի և բորբոքման ամորձեացն 'ի դիպուածին՝ յորում ուռչէ 'ի վարակական թասին։

'Ի դիպուածս յայս՝ բաց 'ի յերակ հատանելոյ, բաց 'ի ցրուիչ և 'ի կակղացուցիչ Թանձրաթանից, բաց 'ի պնդելոյ ամորձեացն, և յընկողմանեալ մնալոյ 'ի մահճի, որք հարկաւորապէս պահանջին, պարտ է միանգամայն 'ի գործ արկանել զգրեխս կակղացուցիչս, և երբեմն ևս զպալեղանիս հասունացուցիչս, եթէ ուռոյցն չփարատի գործածութ̅ վերոյասացեալ դեղորէից։ Իսկ եթէ 'ի վշտացեալ անդամս երևի նշան ինչ քաղցկեղի, յայնժամ օրէն է 'ի վար արկանել զվերոյիշեալ կերպն չքութեան։ Բայց բորբոքումն ամորձեացն յորմէ պատճառէ իցէ յառաջ եկեալ, պատահի երբեմն՝ զի գործածութ̅ դեղորէից փոխարկի 'ի խոց ինչ, կամ յախտս, որք զհետ գան, որպէս քաղցկեղ. Ջրգողութիւն ամորձեաց, ևն։ Եւ այսպիսի դիպուածք միշտ են վտանգաւոր, և պէտս ունին մեծի զգուշութեան և հմտութեան. վասն որոյ և պարտ իսկ է իսկ և իսկ յերևիլ նշանացն՝ կոչել զփորձ, և զհմտագոյն ոմն բժիշկ, և վարիլ ըստ խորհրդոց նորա։



# ԳԼՈՒԽ Խ.

'Ի վերայ ախտի սերմնականութեան, որ յեփաղանցաց յայնի լինի հիւանդութեան։

Այս ախտ սերմնականութեան՝ այլ է 'ի վաւաշ հոսմանէ անտի, զորմէ լիով ճառեցաք 'ի նախընթաց գլուխս։ Քանզի սա երբեմն ծագի և յառաջ գայ 'ի տկարութենէ ներքին ծննդական գործարանաց, կամ 'ի թուլութենէ անօթոց սերման, և զօրութեան ջղաց, և երբեմն ևս 'ի ժահռալից վաւաշ հոսմանէ՝ որում ոչ բարւոք խնամ տարեալ. կամ անգարման թողեալ, սովորաբար փոխարկի 'ի սերմնականութիւն։ Նոյնպէս երբեմն պատճառի յայլ ինչ խոցէ, որ ծածկեալ կայ 'ի մասն ինչ ծննդական անդամոց։

## Նշանք սերմնակաթութեան ։

Ի դիպուած այսր ախտի հասարակօրէն զուգընթաց լինի անսովոր տկարութիւն, պակասութիւն զօրութեանց ջղաց, և զգայութեանց, բոլորական զլկումն ախորժակի կերակրոց, տկարութիւն ներքին ջերմութեանց, և կենսական ոգեաց, ճնշումն ստամոքսի, ստէպ ձգտումն, փքախտութիւն, ծանրութիւն և պտտումն գլխոյ, մղձուկն կրծոց, պակասութիւն քնոյ, անկարգութիւն երևակայութեան, ցամաքութիւն լերդի և որկորոյ, մոռացկոտութիւն, շառաչիւն ականջաց, ծանրատաղտուկ ոքնութիւն, գիշերային ակամայ գիճութիւն, աժգունութիւն դիմաց, նուաղութիւն տեսութեան, բաբախումն սրտի, դողդոջիւն ձեռաց, թախծութիւն, մելամաղձութիւն, և հոսումն որովայնի ։ Իսկ եթէ յերկարաձգեալ մնասցէ սերմնակաթութիւն, յայնժամ այսոքիկ նշանք սաստկանալով սաստկանան, և օր քան զօր այլ և այլ նշանս արտայայտեն, և հիւանդն յարաժամ զգայ զցաւ ինչ միջաց, ծոծրակի, գլխոյ, և փամփշտոյ ։ Զարկն լինի մանր և երագ, և քիրտն յորդառատ ։ Զկնի այս ամենայն նշանաց առ սակաւ սակաւ 'ի վերայ գայ նիհարութիւն ոսկերն, կոչեցեալ յիտալացւոց Թապէ տօռսալէ, և թօթափումն հերաց, և այլ բազում սարսափելի արկածք կամ երևոյթք ջղային բնութեան ։ Ըն և բազում ախտակիրք, որք 'ի սոյն օրինակ վիճակի՝ կրեն զծանրատաղտուկ պնդութիւն որովայնի, և յոլով նեղութեամբ արտաթորեն զկղկղանս պնդս, գնդակախիտս, և բազում անգամ այտուցաւ, ձգտմամբ և ցաւով թանչից, և երբեմն ընդ հակառակն տանջին սպառեցուցիչ և բազմատանջ թորմամբ որովայնի ։

Ո՞վ աղցաւոր ցաւոտ մարմին,
իցէ՞ հընար զախտից արմին,
զընդել չափել ըզմի առ մին.
յոր ըմբռնիս իբր 'ի վարմին ։

'Ի վերայ կառավարութեան և դեղօրէից սերմնահոսութեան, յորժամ յառաջ գայ 'ի փխրութենէ ծննդական գործարանաց, կամ 'ի թուլութենէ անօթոց սերման, և զօրութենէ ջլաց։

'Ի դիպուածս յայս փոյթ ունել պարտ է 'ի զօրացուցանել և կազդուրել զանկարացեալ և զթուլացեալ անդամս, գործարանս և անօթս. վասն որոյ հարկ է ձեռնամուխ լինել 'ի դեղօրայս զօրացուցիչս, և սեղմիչս, որպիսի են տեքօթթօ տի քինա քինա, զոր ուրեք ուրեք գրեցի, յաւելլով 'ի նոյն բաւականաչափ էմուլսիոնէ առաալիքա, և ջուր կինամոնի. զոր պարտ է տունել երեք կամ չորս անգամ յաւուրն, ըստ չափու երկու ունկեաց։ Եւ ինձ իսկ ոչ այլազգ յաջողեցաւ դարման տանիլ, բայց եթէ տալով զառաւել ազդուականս 'ի դեղօրէից աստի (որպիսի է էլիսիռէ տի հալլէռօ, և երկիցս անգամ յաւուրն լուանալ տալով զգաւոր թիկունս, 'ի սկզբան զով ջրով, և հետ զհետէ միշտ առաւել ցուրտ ջրով յոր եդեալ էր հեղուկս այս). ապա 'ի բարւոք յաջողել տոցին, կարգեցի գործածութիւն թինթուրայի տի մառթէ բռէբառաթօ ջօլ սուկօ տէի բօմի, կամ նրբագոյն խարտածք նոյն իսկ երկաթոյ՝ յաւելեալ յայն զկեղեւ նարնջայ. և ապա տացի հանքային և մառցիալէ ջուրն սփայի, որ բաղխառնեալ իցէ կաթամբ՝ ըստ չափու չորից ունկեաց երիցս անգամ յաւուրն, կամ ևս առաւել։

Իսկ 'ի ժամանակի յորում հիւանդն ընդունի զայսպիսի դեղօրայս, արժան է 'ի գործ արկանել զցուրտ բաղանիս, յորմէ բազում անգամ զհետ գայ մեծագոյն օգուտ՝ քան յայլ ամենայն դեղօրէից։ Արդ՝ հարկ է ախտաւորին ամբողջապէս ընկղմանել 'ի ջուրն ցրտագոյն մինչև ցգլուխն յամենայն առաւօտու 'ի ծովու՝ մինչև չորս կամ հինգ շաբաթս առանց միջահատութեան. բայց չէ պարտ մնալ 'ի մէջ ջրոյն յերկար ժամանակս, և զկնի ելանելոյ 'ի ջրոյն՝ իսկ և իսկ փոյթ ունել պարտ է 'ի սրբել և 'ի ցամաքեցուցանել զմարմինն։ Թէպէտև երբեմն մարթ է յայսմանէ ծագիլ մնաս ինչ տկարագոյն փորուածոց ախտաւորին ևն, բայց նկատել արժան է 'ի տրամադրութիւն կազմուածոց նորին. և 'ի չլինել այսպիսի վտանգի՝ արժան է 'ի գործ արկանել զնոյն ցուրտ ջուրն։ Կերակրոցն պարտ է լինել արգանակն մսոյ խաշխաշի և կրայի, ըմպելիքն սակաւ ինչ ազնիւ գինի ջրախառն ևն։

Ընդ այսոցիկ գիտել արժան է, զի 'ի դիպուածս յայս

չէք ինչ առաւել պիտանի և օգտակար քան զժուժկալութիւն մերձաւորութեն կամ զուգաւորութեն ։ քանզի բազում անգամ անժուժկալութիւն է պատճառ այսր ցաւոյ. ուստի բառնալով զպատճառն ժուժկալութբ թուլանայ ախտն, և դիւրանայ ախտաժէտն ։ Այլև պարտ է ախտակրին երթալ ՚ի յագարակս, և ՚ի բնակութիւն ուր լինի օդն մաքուր և առողջարար, և շրջագայել անդ ըստ ախորժակի իւրում. բայց անձնապահ լինելով ՚ի ցրտոյ և ՚ի տօթոյ յընթացս այսպիսի շարժականութեն են. և պարտ է ՚ի զուարթութե և յանդորրու պահել զոգին, և հրաժարել յաղէ և ՚ի դժուարամարսելի կերակրեղինաց ։

՚Ի վերայ հաստաչարութեան և դարմանոյ սերմնահոսութեան՝ յորժամ պատճառեալ լինի ՚ի խոցէ ։

Որդ՝ եթէ գործածութբ այս ամենայն հնարից և դեղորէից՝ ոչ դադարեսցի հոսումն սերման կամ հիւթոյ, յայնժամ արժան է ՚ի միտ առնուլ թէ յառաջ գայ ախտս ՚ի խոցէ ինչ ՚ի վեր երևելոյ ՚ի ներքին մասն անդամոց. և յայսպիսի դիպուածս պարտ է ՚ի վար արկանել զանդիկն կամ զայլ դեղորայս, որպիսի են սալսապարիլլա, չինա, պարտանա մաճճիօրէ, սասսաֆռասսօ, ևն ։ Ականատես եղէ՝ զի ՚ի դիպուածս ախտիս զկնի ՚ի գործ արկանելոյ զայլ ամենայն դեղորայս ապաքինեցաւ ոմն կատարելապէս գործածութբ երից դեղորէից մեղկաւ պատրաստելոյ, զոր մերթ է պատրաստել յետագայ եղանակաւ ։ Ա՛ռ կէս ունկի՝ թրէմէնթինա որ վենէցիա եւացեալ մինչև ցբաւականապէս պնդանալն. և կէս դրամ՝ քալօմէլանօ, խառնեալ զանգեալ յիրեարս բաւականաչափ շիռօբով, արա 60 հատաբերս, երեք առցէն ընդ առաւօտս, և այլ երեք ընդ երեկս ։ Արդ ՚ի յարատևել անդ ՚ի գործածութեն այսորիկ հապի՝ եթէ բերանն սկսանի այտնուլ, և լնդերքն խոցոտել, և կուրծքն զայրանալ, յայնժամ օրէն է միջահատել զգործածութեն այսորիկ հատաբերոյ, մինչև ցփարատել այսոցիկ նշանաց ։

Վերջին դեղն կամ նպաստն, զոր պարտ է ՚ի վար արկանել ՚ի դիպուածս խոցից անդամոցն, է քաննաէլլէթթա սուբբուռաթիվա, այսինքն պատրոյգ շարաւացուցիչ, զոր մերթ է պատրաստել բազմազան եղանակաւ, վասն որոյ և ոչ կամիմ առանձնօր խօսել զկերպէ պատրաստելոյ զայն. քանզի իւրաքանչիւր վիրաբոյժ ունի այլ և այլ

եղանակ պատրաստելոյ զպատրոյգս զայս ըստ խոհեմական իւրումն դատողութե. բայց զայս միայն ասեմք, եթէ պարտ է նախ քան զմուծանելն զպատրոյգն յախտակիր անդամն՝ թաթախել զնոյն 'ի մէջ իւղոյ քաղցր նշոյ, որով լինի առաւել դիւրապատրաստ և շուտափոյթ 'ի ներգործել, և պարտ է թողուլ զայն մնալ 'ի ներքս վեց կամ ութ ժամս ըստ կարողութե ախտակրին: Այլև յաւելումք ասել, եթէ 'ի ձեռն այսր պատրուգի բուժին ոչ միայն խոցքն, այլև մսեղութինքն, որք գտանին յայն անդամս, և այն ամենայն, որք արգելական լինի ճանապարհին միզելոյ եւն:

'Ի Վերայ խառաղլորութե և պէղորէից սերմնականութե յորժամ յառաջ գայ յայլ ինչ պատճառաց:

Ապաքէն քաղցայայտ երևի, զի ախտս այս կամ հիւթս՝ ոչ կարէ բացարձակապէս, և միշտ կախեալ լինել 'ի դական խառնից, և հասարակօրէն բազում անգամ եւս չունի զոյգ ընդ իւր ցաւ ինչ, և կիզումն, և հիւթն որ հոսի՝ լինի սպիտակ և գոյգն ինչ թանձր: Այլև երբեմն յառաջ գայ լոկ 'ի խառնուածոց՝ նկատմամբ նոցա, որք են ամուրիք և այրիք, թո՛ղ զայնոսիկ որք յանառակութէ որկորոյ և 'ի զազիր խորհրդոց անկղխտանան յայս ախտ, և 'ի դիպուածս յայս ո՛չ ախտն է երկնչելի, այլ անկարգութին: Բայց եթէ պատճառի 'ի նեխութենէ ինչ պատահելոյ 'ի սերմնարանին, որ բազում անգամ դէպ լինի 'ի բարձրաձայն կարկաչօղս, և 'ի ցասմնոտս, յայնժամ է կարի վտանգաւոր. որովհետև 'ի յամենալն և յերկարաձգիլն, մարթի փոխարկիլ 'ի վտտակրութի և 'ի վհատութի. Նմին իրի պարտ է 'ի գործ արկանել զդեղորայս ազդուս և զօրաւորս, զորոց խօսեցաք վերագոյնդ:



# ԳԼՈՒԽ ԽԸ.

'Ի վերայ վիրաց, որ յիտալացւոց կոչին՝ ուլչերայ:

Օզամենայն վէրս և զամենայն խոցս, յորոց հոսի նիւթ ինչ, և 'ի վեր երևի 'ի կակղագոյն մասունս մարմնոյ, անուանեն անուամբս՝ ուլչերա: Վէրքս այսպիսիկ կարեն պատճառիլ ոչ միայն 'ի խոցոտմանէ, 'ի հարկանելոյ, 'ի հարուածոյ ևն, այլ միանգամայն յապականեալ հիւթոց մարմնոյ, և 'ի խառնուածոց, և յայս դիպուած փոյթ ունել պարտ է իսկ և իսկ տանիլ դարման. ապա թէ ոչ՝ բազում անգամ մահակործան լինի տառապեալ վիրակրին: Ընդթակայ այսր վէրի են ծերունիք, ես նոքա որք անշարժական կեանս վարեն, ես որք անուցանեն զանձինս իւրեանց պարարտագոյն կերակրովք: Վէրս այս կոչեցեալ իտալ. ուլչերա՝ տարբերի 'ի վիրաց, որ ասի բիակայ, ըստ որում հոսէ բազմագոյն հիւթս, երբեմն մաքուր, և չճկային, երբեմն խժային, և մածուցիկ, և երբեմն ես տոխպ և կծու. 'ի նշան բորբոքման մորթոյ, ծագն 'ի վերուստ է կարծրագոյն, իսկ 'ի ստորուստ կաթանկնաձև, և ուղղաձիգ:

'Ի վերայ դարմանոյ վիրին ուլչերայ:

Մեծի զգուշութեան և հմտութեան պիտոյ են առ 'ի զանազանել 'ի դիպուածս վիրիս, թէ երբ լինի առողջանալի, և երբ ոչ. հասարակօրէն ամենայն վէրք որք պատճառին յապականեալ խառնուածոց, պահելի են բացեալ դէթ այնքան, մինչև առ սակաւ սակաւ դարման տարցի խառնուածոցն 'ի ձեռն կառավարութեան կերակրոց, և դեղորէից: Իսկ վէրքն, որք զհետ գան անընդհատ տենդից, կամ այլ ինչ հիւանդութեանց՝ անշուշտ են ապաքինելի յետ առ ժամանակ մի հանգստեան վիրակրին. որովհետև չէ՛ պարտ փութով ձեռնամուխ լինել 'ի դարմանել զայնս. այլ նախ պարտ է 'ի ձեռն լուծողականաց և մաքրողականաց, և պատշաճագոյն կառավարութեանց պատրաստել զնա յառողջութիւն. իսկ վէրքն, որք պատճառին 'ի հարուածոց և 'ի խոցոտմանէ, եթէ են-

Թակայն իցէ քաջառողջ կազմուածոց վիճակեալ, հասա-րակօրէն է բուժելի. յորժամ վէրքն զուգակից լինին եր-կարատև ախտից, ոչ կարեն բուժիլ՝ բայց եթէ մեծաւ զգուշութեամբ:

### 'Ի վերայ ներքին նպաստից՝ որք են կարի կարևոր 'ի դի-պուածս վիրի:

Առաւել պատշաճողական կառավարութիւն՝ որով մարթ իցէ օգնական լինել ապաքինութեան վիրի, է արգելումն ամենայն կերպ կծու, տտիպ, թթու, և աղի կերակրոց, և ուժգին ոգիաւոր ըմպելեաց: Նոյնպէս և օգտակարագոյն է՝ կարի սակաւ, կամ բնաւ իսկ ոչ ուտել զմսեղէնս: Պարտ է վիրակրին միշտ լոյծ և բարեխառն ունել զորո-վայնն 'ի ձեռն զովացուցիչ և կակղացուցիչ ուտելեաց, որպիսի են խոտեղէնքն, կաթն, կոգի, չիճուկն կաթին ևն: Նոյնպէս և օգտաւէտ է լինելն միշտ ուրախ, և զը-ւարթ, և առնելն շարժումն ըստ տանելոյ կարողութեանց:

Իսկ եթէ վէրքն ելանեն 'ի վերայ սրունից, (որպէս պատահի բազում անգամ) յայնժամ պարտ է միշտ շար-ժումն առնել, և չէ՛ օրէն բնաւ նստիլ անշարժ. ապա թէ ոչ՝ դառնայ վէրն իբր անբուժելի: Դարձեալ, քաջ վի-րաբոյժք խրատեն 'ի դիպուածս յայս 'ի գործ արկանել սուպլիմաթօ քօռռօզիվօ լուծեալ յօղի, և վկայեն եթէ բազում անգամ ականատես լեալ են շահաւէտութեան այսր դեղոյ, եթէ արկցի 'ի կիր ըստ կանոնի և ըստ կերպի, զորմէ լիով խօսեցաք 'ի գլ. լԹ: Նոյնպէս և խրատեն առնուլ 'ի կիր տէքօթթօ տի սալսափառիլլիա ևն:

### 'Ի վերայ արտաքին նպաստից և դարմանոց 'ի դիպուածս վիրաց:

Յորժամ վէրքն լինին նորոգ, կամ պատահին 'ի խո-ցէ ինչ հնացելոյ, և յանկարգ խնամ տանելոյ, յայնժամ շատ է լուանալ զայն և մաքրել ջրովն սամպուքօի, և պարտ է առնուլ 'ի կիր զպալսամօ տի ճէնէվիէվէ, զոր օրէն է մածուցանել 'ի վերայ քրքած քաթանի, և դնել 'ի վերայ վիրին. և յաւուրն երկու անգամ փոխել: Յոր-ժամ ծայր վիրին 'ի վերուստ կամ 'ի ստորուստ կողմա-նէ երևի լինել կարծրագոյն, և մսամոլեալ, յայնժամ պարտ է երկու անգամ յաւուրն ցանել փոքր ինչ բռէչի-փիթաթօ ռօսսօ 'ի վերայ վիրաց, առ 'ի ծախել զաւելորդ

մասունս մատամոլաց, և յետ այնորիկ դարմանել ախեղա-նեաւս՝ որ ասի պազիլիգօ ծիալլօ. բազում անգամ փոր-ձիւ ծանուցեալ է գերաղանց օգտակարութիւն ջերմ ջրոյ, և աքգուա վէճէթօ մինէռալէի 'ի դիպուածս՝ յորում վէրքն լինին քաղցկեղային: Նոյնպէս ըստ պատմելոյ հմտա-գոյն վիրաբուժի՝ 'ի դիպուածս յայս համարի դեղ իմն ազնիւ և օգտակար սուպլիմաթօ քոռռօզիվօ, լուծեալ 'ի մէջ օղւոյ, զոր պարտ է լուանալ կամ լաւ ևս օծա-նել երկու անգամ յաւուրն, և ըստ այսմ յարատևա-բար 'ի կիր առնուլ պարտ է, մինչև հաստատեսցին վէրքն, և առողջասցին: Ցորժամ վէրքն ածանցեալ իցեն 'ի տռ-փական ախտէ, կամ 'ի քաղցկեղէ, ևն, յայնժամ օրէն է միշտ 'ի գործ արկանել զդեղորայս ճահողագոյնս այսո-ցիկ վիրաց. զորոց գրեցաք լիով 'ի տեղիս իւրեանց:

Ընդ վախճանել ցաւոց ճառից,
իցէ՞ թէ գոյր վախճան ախտից:
Բժշկաց ձեռք մինչ 'ի մարմին.
ոչ հասանեն յաննիւթ հոգին.
Բայց ես ընդ նիւթն եղեալ շաղկապ,
ըստէպ վառէ զախտիցըն տապ:
Եղուկ մարմինն հեծէ ընդ նմա,
բարւոյն փոխան ունի յուսացաւ.
Զայն արձակէ զայս բան աղերս.
թէ ես 'ի բնութեան ունիմ ինձ վէրս.
Ո՞ր գտէ անախտ և զօրաւոր,
ցաւոտ մարմնոյ գոս զուգաւոր.
Քո՛ է խնդրել զախտիցն աղբիւր,
կտրել զարմատսըն բազմաբիւր,
Յառաքինի և յիմաստուն
վառեալ 'ի պէտս ըզմարմնոյդ տուն.
Թէ ոչ, բըժիշկ՝ և կամ բնութիւն
ոչ յիս մաքրեն զախտիցըն թիւն:

# ՑՈՒՑԱԿ

## ԳԼԽՈՑ ԵՒ ՅՕԴՈՒԱԾՈՑ

## ԲԺՇԿԱԿԱՆՈՒԹԵԱՆ

II

# ԲԺՇԿԱՐԱՆՈՒԹԻՒՆ

## ԲԱԺԱՆԵԱԼ ՅԵՐԿՈՒՍ ՀԱՏՈՐՍ

Ինքնաջան աշխատասիրութեամբ ՊԱՐՈՆ
ՄԻՔԱՅԷԼԻ ԲԷՍՏԷՆ Բժշկի Եգիպտա
կան Բդեշխին, և յատուկ ծախիւք
Հեղինակին տպագրեալ։

---

## ՀԱՏՈՐ ԵՐԿՐՈՐԴ

Յորում այբբենական կարգաւ հաւաքեալ դնին
բառք վերաբերեալք առ բժշկականութիւն։

Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՄՐԲՈՑՆ ՂԱԶԱՐՈՒ

1822



# ԲԱՌԱՐԱՆ

Անուանց զանազան ախտից, դեղորէից, բուսոց, հանքաց, հեղանիւթ ոգեաց, օդային, ցամաքային, և ջրային կենդանեաց ոմանց, ևս ուրեք ուրեք անուանց անդամոց, նշանակեալ 'ի լատին, յիտալական, 'ի գաղղիական, յանգղիական, 'ի յունական, յարաբացւոց, 'ի պարսկական, 'ի տաճկական, և 'ի հայ բարբառ, հանդերձ բացայայտութեամբ նոցին ։

## Ա

Աբրա. բառ իտալական. տես Աբիս ։

Աբբէթիթուս քանիս ։ Է բառ լատինական. զոր իտալացիք՝ աբբէթիթօ քանինօ, կամ ֆամէ քանինա անուանեն. և յոյնք՝ պուլիմիա. և տաճիկք՝ էյնիհան, կամ ըստ ռամկաց՝ իթ իշտահը. և արաբացիք՝ էքիալ կամ ապա իլ պաթն, կամ նէֆս իլ գէլբ. և պարսկացիք՝ բուկում՝ կամ բիւս, կամ ժիրկէթ, և կամ շաքլիւլ. իսկ ըստ մեզ՝ շնքաղց ։ Է տեսակ ինն ախտի, որով ոք զգայ յոյժ զքաղց անյագուրդ ։

Աբբիօ. տե՛ս աբիում ։

Աբեռ, լտ ։ չինկիալէ, իտ ։ սանկլիէ. գաղ ։ եռայան ասմուզու, տճ ։ խնզիր ճէպէլի, արբ ։ գէազի եասլանի, ալր ։ սիաղռօս կամ քաբռօս, յն ։ և ըստ մեզ՝ վարազ կամ կինճ, և կամ խոզ վայրենի ։ Է տեսակ մի քառոտանի կենդանւոյ՝ ըստ ձևոյ և ըստ մեծութեն նման հասարակ խոզի. որոյ վասն և կոչեցաւ անուն նորա. այլ սաւ նորա առաւել կարծր է և խորտաբորտ. գոյնն մթին կարմիր, կամ թուխ. մորթն կարծր է յոյժ, ընդ որ գնտակ հրացանաց ոչ մխի՝ եթէ ոչ հարցի 'ի մօտոյ. ատամունքն ամրակուռ՝ սրածայր՝ ստուար և երկայն՝ իբր մի և կէս թոնաչափ, որ և են գլխաւոր զէնք նորա ։ Բնութե է յոյժ զայրագին. և բազում վնաս հասուցանէ բնակչաց երկրին, պատառելով զանասունս նոցա, երբեմն նաև զմարդիկ՝ յորժամ գտանին յանտառս ։ Միս սորա՝ եթէ չիցէ ծերացեալ, առաւել ախորժաճաշակ է քան զընտանեաց ։ Ատամունքն լուեալ 'ի փոշի մանրամաղ՝ լինին դեղ կշտացաւութե, մազասախտն արիւն թքանողաց, և հոսման հիւթոց գալլլեականի, զի է ձգօղ բնութե ։ Զափն՝ 'ի 10 կշիռ ցորենոյ մինչև 920 ։ Ճարպ սորա օգտաւէտ է ընդդէմ ջղացաւութե, ոսկրացաւութե, երակացաւութե, յօդուածացաւութե, ոտնառութե, ձեռնառութե, և թուլութե միջաց և ջղաց, օծեալ սովաւ զախտացեալ մասն մարմնոյ, և ստէպ շփեալ առ հրով, զի ճարպն այն ընդմտանիցէ 'ի ծակոտիս մորթոյ, որով և փարատի. այլև զճմլումն պատճառեալ 'ի հարուածոյ՝ բուժէ ։ Իսկ սաւն ըստ ոմանց եդեալ 'ի վերայ խոցից, այսինքն սըռաճայի՝ ապաքինէ ։

Աբէռիէնս, լտ ։ աբէրթիվօ, իտ ։ աչըճը, տճ ։ և ըստ մեզ՝ բացողական ։ Ասի ամենակերպ բացողական և թափանցիկ դեղորէից, որք միանգամայն արձակեն և լուծանեն զխցանս մարմնոյ, 'ի դուրս վանելով 'ի միզանց ճանապարհէ, ևն. որպիսի են՝ ամենանուրբ խարտածն երկաթոյ, գոյացութիւն գինւոյ, արքանօ տուփլիքաթօ, ևն ։

Աբիում, լտ ։ աբբիօ կամ շէլէռօ, իտ ։ էքէլօս կամ սէլինօն, յն ։ աշ կամ սէլըռի, գղ ։ սմօլլէճ, անգղ ։ գէրֆիս կամ գէրէբս, արբ ։ գէռէյմէ, ալր ։ գէրէվիզ, տճ ։ և ըստ մեզ՝ նեխուր կամ կարաս ։ Է

քոյս յազգէ խաւարտից ծանօթ ամենեցուն . որոյ արմատն օգտէ ընդդէմ վիրաց թոքոց , և փարատէ զմիզարգելութիւն և զփքախտութիւն , եւ ցրուէ զառագուածս` որ 'ի կուրծս . զի է խթիչ և միզեցուցիչ բնութբ . վասն որոյ կարգի 'ի դասս հինգ բացողական արմատոց ։ Եւ նորա և այլ տեսակ կոչեցեալ 'ի լատինացւոց` աբիում կռավէօլէնս , որ սովորաբար բուսանի 'ի ճախճախուտ տեղիս . ըստ որոյ և իտալացիք` աբբիօ բալուստրէ կոչեն . որոյ սերմն փոշիացուցեալ և արբուցեալ , լինի դեղ ջրգողութեան , և փքախտութեան . զի է խթիչ և միզեցուցիչ բնութբ ։ Չափն 'ի 20 ցորենոյ մինչև ց60 յաւուրն , խառն ընդ շաքարի , և կամ ընդ այլ յարմարաւոր դեղորէից ։

Աբիս կամ աբէս , լտ ։ աբա կամ աբէ , իտ ։ աբէյլ , գաղ ։ մէլիսսա , յն ։ արը , տճ ։ զէնպուռ կամ նահլ և կամ տապպուռ , արբ ։ և ըստ մեզ` մեղու ։ Է միջատ թևաւոր և խայթոցաւոր , ըստ մեծութեան` ոչինչ աւելի քան զմեծ ճանճ . ունի զբերան երկատամնաւոր և զպատիճ միանգամայն . բերանովն հաւաքէ զնիւթ մոմոյ , և պատճաւն ծծէ զհիւթ մեղեր 'ի քաղցրահոտ ծաղկանց ։ Բնութբ ժրաջան , մաքրասէր և ճարտարարուեստ ։ Բազումք հաստատեն` թէ տևէ սա մինչև ցեօթն ամ . զոր ըմբռնեալ արկանեն յիւղ ձիթապտղոյ , կամ չորացուցեալ յարևու լուսեն 'ի փոշի մանրամաղ , և լինի դեղ ընդդէմ հերաթափութեան , դոյզն ինչ օծելով կամ ցանելով ևեթ զայնս ։

Աբօբլէսսիա կամ բարալիսիա , իտ ։ մօռպուս ռէբէնթինուս , լտ ։ Փէլիճ , կամ Փալիճ , արբ ։ ֆիլիճ , պր ։ և ըստ մեզ` անդամալուծութիւն , կամ անդամագօսութիւն . զորմէ տես հտ . ա . երես 222 ։ տես և բարալիսիա ։

Աբօսթէմա , լտ , և յն ։ բօսթէմա , իտ ։ չիպան , տճ ։ տումմիւլ , արբ ։ չէթիմ կամ պինաւէռ , պր ։ և ըստ մեզ` խաղաւարտ , կամ պալար շարաւալից , որ սաէպ պատահի անձանց վիճակելոց խոնաւուտ բնութեան ։

Աբօտաքալիթիքա ։ Է անուն ընդհանուր նշանակիչ դեղորէից , որք խառնեն զհօսանումն ապատատունաց յաչացն . որպիսի են Ջուր Ջղախոտի , արջասպն , թութիան , էօֆռաձիան , ևն ։

Ապօֆլէկմաթիզօնթա. է անուն համառօտ նշա-նակիչ ամենայն փռնչացուցիչ, և սարսեցուցիչ դեղօ-րէից, որպիսի են՝ էուֆօռպիոամ, ևն:

Ապօֆլէկմաթիզմօ. է անուն ընդհանուր նշանա-կիչ ամենայն տեսակ դեղօրէից, որք աւելեն զլոր-ձունս և զթուքս, և արտաշանեն արտաքս 'ի բերա-նոյ. յայսմ կարգի են մոդիկն, ծխնեփուծն ևն:

Ագուա, լտ: աքգուա, իտ: իտօռ կամ նէռօ, յն: օ, գաղղիական: վատօթըր, անգղ: մօյ, արբ: աալ, պր: սու, տճ: և ըստ մեզ՝ ջուր: Է թեթև քան զհող, շարժուն, լոյծ, միամած, և թափանցիկ, և բնութբ սնուցիչ, աճեցուցիչ, զովացուցիչ, միանգա-մայն և խթիչ. քանզի եթէ որսկեսցի քանի մի շիթ ցուրտ ջուր յերեսս կամ 'ի կուրծս առն զրկելոյ 'ի զգայութեանց, անդէն վաղվաղակի զգաստացուցա-նէ զնա, ուր ոչինչ այլ արտաքին խթան կարող է ցուցանել զայսպիսի զարմանալի ներգործութի:

Ագուա աչիտուլա, իտ: ագուա աքսիտուլաօնա-թա, լտ: Է ջուր ինչ ախորժահամ, թարկ, անհոտ, և շառագոյն, միանգամայն և դեղ ազդու ընդդէմ ցաւոց ստամոքսի, փսխման, փորահարութե, խթից, փքախտութե, միզարգելութե, երիկամնածեռութե, հարբուխային թոքածեռութե, աղիականութե ա-րեան, և ախտից մորթոյ: Արդ՝ ջուրս այս շահա-ւէտ է յոյժ՝ որպէս ասացաք, և չափաւորապէս ար-բեալ՝ այսինքն 'ի կէս լիտրոյէ մինչև չորս յաւուրն՝ լինի և դեղ զովացուցիչ, և լուծիչ քարանց գոյացե-լոց յերիկամունս մարդկան: Իսկ չափազանցն՝ առ-թէ զուրախտութի, և զյորդառատ հոսումն միզի: Եւ 'ի մանաւորի 'ի բուժել զվէրս քաղցկեղային, և զխոզխայթս, լուանալով:

Ագուա բիքս լիգուիտա, լտ: աքգուա տի քա-թռամէ, իտ: գաթռան սուի, տճ: և ըստ մեզ՝ ջուր գաղի խծոյ: Օգտակարագոյն է 'ի գիպուածս ցաւոց երակաց, ջրգողութե, փքախտութե, և կեչինձիկ անուանեալ ախտի, մաքրէ և զարիւն, ցրուէ զխա-սաբեր հիւլթս խառնեալս յարեան, և ապաքինէ զախտս արգանդի: Չափն 'ի յերկու ունկւոյ մինչև չորս յաւուրն: Օրինակ կազմելոյ զջուրս զայս: Առկ զգաղի խէժն յանօթ ապակեայ ըստ կշռոյ եր-կու լտեր, յերեք բինթա ցուրտ ջրոյ. զկնի 48 ժա-մուց՝ հեղ զգուշութբ զհեղուկն յայլ ապակի անօթ,

այնպէս զի մի խառնեսցի մրուրն ընդ պայծառ հեղանիւթոյ ։

Ագուա էբաթիքա, կամ ագուա կաղֆլօկօ սուլֆուռաթա, լտ․ ագգուա էբաթիքա, կամ ագգուա կաղֆլօկօ սոլֆուռաթա, խտ․ է Ջուր ինչ քաղցրահամ, և անոտժահոտ․ միանգամայն և դեղ ընդդէմ հարբուխային թոքախտութեան, ախտից մորթոյ, թունից մկնդեղոյ և սնդկի ։ Չափն ՚ի չորս ունկեայ մինչև ցվեց յաւուրն ։

Ագուա թէռմօսալիճէնօսաթա, լտ․ ագգուա թէռմօսալիճէնօսաթա, իտ․ է հեղանիւթ ինչ անհամ և դառնահամ․ միանգամայն և դեղ ջղդողութեան, նուաղութեան ամսական պարտուց կանանց, անախորժութեան, ցնցման ստամոքսի, և այլ սոցին նման ախտից, որոց նախնական պատճառն գտանիցի լինել տկարութիւն ջղաց․ զի է խթիչ բնութ․ ։ Չափն ՚ի մի լտերէ մինչև ցերեք յաւուրն ։

Ագուա լաուռօ չէռասի․ տե՛ս լաուռօ չէռասզի ։

Ագուա լուձինօզա ֆալլօբիօ, իտ․ Ջուրս այս ունի զարմանալի ներգործութիւն ՚ի բուժել զայտոյցս ելեփանդականս, որք ՚ի վեր ելեալ են եթէ ՚ի կոկորդս, և եթէ ՚ի ծննդական անդամս ։ Նոյնպէս և ապաքինէ զքաղցկեղն, եթէ ՚ի կիր արկանիցի ՚ի միասին ընդ երկու կամ երեք մասն ջրոյ աքապիօզաի ։

Ագուա մառցիալէ, կամ ագուա օքսիքառպօնաթիա օքսիտուլի ֆէռռի, լտ․ ագգուա մառցիալէ տի սաթա, կամ ագգուա տի օսսի քառպօնաթօ օսսիտուլօ տի ֆէռռօ, իտ․ չէլիբ սույու, տճ․ Է Ջուր հանքային, բղխեալ ՚ի լերանց ափաւոյ, որ է յստակ, փոքր մի թթուահամ, և սեղմիչ․ միանգամայն և դեղ ախտից մորթոյ, տկարութեան ջղաց և մկանանց, ջըրգողութեանց, ջղային դժուարամարսութեանց, ախտից արգանդի, ցաւոց յօդուածոց, թանչացաւութեանց, նուաղութեան ամսական պարտուց կանանց, հնագոյն փորհարութեանց, տկարութեան աղեաց, և ընդերաց, սերմնակաթութեան, և լուծման արգանդի կանանց, յորում գիպուածի փոխանակ տեսական արեան հոսի հիւթ սպիտակ հարեալ ՚ի գոյն դեղին, և այլ սոցին նման ախտից, որոց նախնական պատճառն գտանիցի լինել թուլութիւն․ զի է խթիչ և զօրացուցիչ բնութ․ ։ Չափն ՚ի կէս լիպրայէ մինչև ցվեց, զոր օրէն է խառնել ընդ նոյնաքանակ հասա-

բակ ջրոյ, և տալ ըմպել ախտակրին Դ՝ միջոցի 24 ժամուց: Սակայն 'ի ձեռն պէսպէս մարմնոց և բաղադրութեանց մարթ է կազմել զջուրս արուեստական: Այլ զի մի՛ ջուրս այս վասն դիւրաշնչութեան շոգեացն կորուսցէ զկազ, այսինքն զանկիզքն ածխային՝ զպարունակեալն յինքեան, պարտ է քաջ խփել զանօթ նորին, և շրջոցն պահել յայլում անօթի՝ որ լի իցէ ցուրտ ջրով:

Ագուա մէնթա բիբէռիթիտիս, լտ: աքգուա տի մէնթա բիբէռիթիտաէ, իտ: ինկիլիզ նանէառինին սույու, թճ: և ըստ մեզ՝ ջուր անանխոյ անգղեայ. որ է դեղ յոյժ օգտակար 'ի դիպուածս ախտից և ցաւոց ստամոքսի, ջղային փախողութե, և ջղային կամ չար տենդից, և այլ ամին նման ախտից պատճառեալց 'ի տկարութէ. զի է թեթևապէս խթիչ բնութ̃ը: Զափն 'ի չորս տրամ, յաւելլով 'ի նոյն երեք ունկի ջուր հասարակ, և տուեալ լինի ըմպելիս այս 'ի միջոցի 24 ժամուց: 'Ի սոյն կարգս դասի և ջուրն հասարակ անանխոյ:

Ագուա մօռուզուա, լտ: աքգուա աթիլթիքա տի լէմէոնի, իտ: Էջ ջուր լինչ բաղադրական, կազմեալ 'ի վեց տեսակ նիւթոց. և է բնութ̃ը սեղմիչ, որով տրդեկու զհոսումն արեան 'ի ունդացն՝ ածեալ մատամբ զծակոտիսն. բուժէ և զձեռղքեալ նեարդս և երակս, միայն եթէ 'ի գործ արկանիցի ձեռամբ խոհեմ վիրաբուժի: Նոյնպէս և օգտակար է 'ի դիպուածս փսխման արեան, արիւնային փորհարութե, յորդառատ հոսման դաշտանի, և թքման արեան: Զափն 'ի կէս տրամէ մինչև ցերկու յաւուրն խառն ընդ ջրոյ բօլիկօնօի:

Ագուա նաբհկ. տես ագուա Ֆլօռ. աուռանթի-օռում:

Ագուա չինամոմի, լտ: աքգուա տի չինամօմօ, կամ տի քանէլլա, իտ: Թառչին սույու, թճ: մէյ ինկաֆիլ, արբ: և ըստ մեզ՝ ջուր կինամոնի: Սենի սա գերակայ իմն օգտակարութեն ընդդէմ վշտաց և անանդորրութեն խախացոցի, արգելականութե միզի, ջղային տենդից, հոսման դաշտանի, Թանչից, և փորհարութե, և այլ սոցին նման ախտից, որոց նախկին պատճառքն գտանիցին լինել տկարութիք. որովհետև է խթիչ բնութ̃ը: Զափն 'ի մի տրամէ մինչև ց16 յաւուրն, խառն ընդ հասարակ ջրոյ, և

ընդ այլևայլ փորացուցիչ և խթիչ դեղորէից ։

Ագուա պաքքառում եունիբեռի , լտ ։ ագքուա տի պաքքէ տի ճինեբռօ , իտ ։ առտըճ սուխու , տճ ։ Է ջուր գինւոյ՝ եղուզեալ 'ի ձեռն ցքահան գործւոյ . ծղոտակար է ընդդէմ ջրգողութեանց , շնչարգելութե , և հարբղեաց տալթելոց 'ի թուլութէ . զի է խթիչ , և միզացուցիչ բնութ֊ ։ Զափն 'ի կէս ունկւոյ մինչև չորս յաւուրն , խառն ընդ այլ յարմարաւոր դեղորէից ։

Ագուա քալչիս , լտ ։ ագքուա տի քալչէ , իտ ։ քիրէճ սույու , տճ ։ մօյ իւլ կիր , արբ ։ և ըստ մեզ՝ ջուր կրի ։ Օգտաւէտագոյն է 'ի գիպուածս ջղացաւութե , ախտի ցնցականի , փորհարութե , հեծկըլտանաց , ձգտման , փսխման , արեան թքման , քաղախալձիէ անուանեալ ախտի , երիկամնածեռութե , ախտի փամփշտոյ , ցաւոց յօդուածոց , և տենդոտութե . զի է ձգօղ և ընկլուզիչ բնութ֊ ։ Զափն 'ի 48 տրամէ մինչև ցերկու լիտր յաւուրն՝ խառն ընդ հաւասարակ ջրոյ , կամ կաթին ։ Դոյնպէս ապաքինէ նաև զվէրս սքօռպութականս և աղտաղտայինս , և խղխաթայինս՝ լուանալով եւեթ զայնս ։

Ագուա քանֆօռաթա , լտ ։ ագքուա քանֆօռաթա , իտ ։ քաֆիւրի սույու , տճ ։ և ըստ մեզ՝ ջուր քափրոյ . զոր մարթ է 'ի կիր առնուլ 'ի գիպուածս ջղային անեղից , դալարման ջղաց , մասնական կաթուածոց , ցնորման , կատաղութե , ցաւոց արգանդի , քառախալձիա անուանեալ ախտի , հեծկլտանաց , բարախման սրտի , և փսխման մաղձի տալթելոց 'ի տկարութենէ . զի է խթիչ բնութ֊ ։ Զափն 'ի վեց ունկւոյ մինչև ց24 յաւուրն՝ խառն ընդ հաւասարակ ջրոյ ։

Ագուա օֆթհալմիքա , լտ և իտ ։ է կապտագոյն ջուր ինչ բաղադրական . յոյժ մասնաւոր է սորա գործունէութի 'ի գիպուածս բաղմատեսակ ախտից աչաց . զի է սրբիչ , մաքրիչ , զովացուցիչ , կակղացուցիչ , և ցամաքեցուցիչ բնութ֊ ։

Ագուա ֆլօռ առուանցիօռում , կամ ագուա նաֆէ , լտ ։ ագքուա տի ֆիօրի տի առանչիօ , կամ ագքուա տի նաֆֆէ , կամ լանֆա , իտ ։ չիչէք սուխու , տճ ։ մօյ իւլ զահր , արբ ։ և ըստ մեզ՝ ծաղկի ջուր . որ է անուշահոտ , թափանցիկ , և փոքր մի ջերմահամ . ձանձրամայն և դեղ տկարութեան ջղաց , և սրտի ,

եւ յիշողութե, եւ նուազման սրտի՝ առնելոց 'ի տկա-րութէ. զի է խթիչ, եւ զօրացուցիչ բնութե։ Զամին 'ի 16 տրամէ մինչեւ ց 78՝ խառն ընդ այլ յարմարաւոր հեղանիւթոց ։

Ագուա Ֆօանթիա, լտ։ աքուա ֆօնթէ, կամ սօսի սէբթօնիքօ ամի լուիթօ, իտ։ մոյ իւ հայլ, արբ։ թիղ ասպ, պր։ գէզլապ, ռմ. եւ ըստ մեզ՝ ժամտողջուր, կմ այրիչ ջուր, եւ կմ արքայաջուր։ Է բաղադրութիւնչ կազմեալ 'ի աչխոս նիթուիքօէ, և 'ի հասարակ ջրոյ. աչխոս նիթուիքօն յինչ չափ և իցէ, պարտի լինել երրորդ մասն ջրոյն. իբր զի՝ եթէ աչխոս նի-թուիքօն իցէ տասն տրամ, ջուրն պարտի լինել երե-սուն տրամ։ Եւ 'ի գործածութեն պարտ է պահել զչափ քանակութե, որով սովոր եմք 'ի վեր արկանել զաչխոս նիթուիքօ, որպէս եւ ներգործութիւն նման է ներգործութեն նորա ։

Ագուիլա, լտ եւ իտ։ նիսր, կամ էնուկ, կամ ուխաամէ, արբ։ գառթալ, կամ գառտագուշ, ռմ։ խաթէհաուշ, կամ տայլ, եւ կամ ուխիմ, պր։ եւ ըստ մեզ՝ արծիւ։ Է թռչուն զօրաւոր եւ մեծագոյն՝ գե-շատող, եւ բարձրաթռիչ, որոյ ապաւտն լինի գեղ թորոտութե, եւ քաստութե։

Ագուիլէճիա, լտ։ ագուիլինա, իտ։ անքօլի, գղ։ քօլըմպայն, անգղ։ Է բոյս բազմածիւղ. որոյ ցօղունն է երկայն իբր մի եւ կէս ոտնաչափ, նուրբ, կարծր, թաւամազ, եւ կարմրագոյն. տերեւ նորա է բոլորակաձեւ, երկայնականեթ, եւ եղերահերձ, նման ըստ իմիք տերեւոյ խոշոր ծիծեռնախոյ։ Ծաղիկն գե-ղեցկատեսիլ, երկթերթեան, եւ կարմրերանգ. պտուղն թաղանթաւոր, գնտակաձեւ, եւ բազմասերմն։ Իսկ արմատն սպիտակ, թելաւոր, եւ քաղցրահամ։ Բուսա-նի յաճախ յեւրոպիա՝ յանտառս, եւ 'ի բուրաստանս. լի է իւղով եւ ցնդական աղիւ. միանգամայն եւ դեղ գալեկան, խցանեաց լերդի եւ փայծաղան, զի է թուլա-ցուցիչ, քրտնեցուցիչ, եւ բացողական բնութե։

Ագօռի, իտ։ այսու անուամբ իմանի՝ ազգ ինչ մեռ-րիկ պալարոյ 'ի վեր երեւելոյ յայտս եւ 'ի գլուխս, մանաւանդ տղայոց։

Ալուռթօռիօ։ Բառիւս այսու նշանակին երկա-տակերք բաղիկին՝ յօդեալք ընդ թիկանց.

Ալիմս. տես ալմս։

Ալինուս, լտ։ ալինօ կամ չիուքօ, իտ։ օնօս կամ

ղայտառուախ, յն: մէրքէպ, կամ էշէք, և կամ չեմէնտէր, տճ: խումար, արբ: խար, պր: և ըստ մեզ՝ էշ կամ յաւանակ: Է կենդանի ընտական, երկայնավիզ, և երկայնունկն, որոյ բարքն բիրտ է և տրտում, որպէս և ձայնն անհեթեթ. Կեան իբր 'ի քսանամս տասանել քան զամս քսան, և գտանին յաւէտ յասիա, յափրիկայ, և յեգիպտոս: Կաթն այսր կենդանւոյ՝ զոր լատինք լագ ասինինում կոչեն, է յստակ, թեթև, դիւրամարս, առողջարար, զօրացուցիչ. զովացուցիչ, և մաքրիչ արեան. յայն սակս առեալ 'ի վար արկանի 'ի բժշկութիւն միզարգելութեան, թոքախտութե, յօդուածացաւութե, խոցուածոց լերդի և թոքոց, որք սովոր են գալ զկնի կշտացաւութե, և ս ցաւոց աչաց. բայց օրէն է 'ի գործ արկանել զայն սակաւ քանակութբ, և որքան մարթ իցէ՝ պարտ է ըմպել բնական ջերմութբ. այսինքն զկնի կթելոյ. կէս սխտիէսէ վասն չափահասի բաւական է, զոր պարտ է բաժանել յերիս կամ 'ի չորս մասունս յաւուրն: Զմէզ նորա ոմանք շահաւէտ համարին ընդդէմ անդամալուծութե, ցաւոց յօդուածոց, և բորոտութե: Զբակորն լուռեալ 'ի փոշի մանրամաղ՝ տանեն դեղ հոսման արեան: Իսկ զեղունգն 'ի գործ ածեն 'ի դեղ ակարութե ջլաց և ուղղոյ, և անդամալուծութե:

Ասինօ. տես ասինուս:

Ասմա, կամ ասթմա, և կմ ախարնէա, իտ: կէիւս հիլէթի կամ թջնէֆիւս, տճ: լուհա, կամ թէվածիարի նէֆէս, կամ ղըռք իլ սուար, արբ: ակերաբ ոնմէ, պր: և ըստ մեզ՝ շնչարգելումն, կամ դժուարաշնչութի. տես հտ. ա. երես 183:

Աէս, կամ էս, կամ քուբրում, և կամ մէնտօս, լտ: ռամէ, իտ: պաքըռ, տճ: նահաս, արբ: միս, պր: և ըստ մեզ՝ պղինձ: Է ազգ ինչ անմաքուր հրահալելոյ, ծանօթ ամենեցուն. յորմէ յօրինեն ազգի ազգի անօթք: Բնութբ է արջասպային, և կծուիչ. զորոյ զկնիքեալն 'ի վար արկանեն ըստ օրինակի բիւթռա լինֆէաննալէի՝ առ 'ի սպառել զմսամոլեալ մասունս վիրաց: 'Ի սմանէ կազմեն և ոգի ինչ ազգու, որ չէնի դեղ հիտռօֆօպիա անուանեալ ախտի, խոցոնաց, և լուանոտութե, զի է միզացուցիչ, քրտնեցուցիչ, և սատակիչ ճճեաց: Զափն 'ի վեց չթէ մինչև ց12: Զայս ազգ հրահալելոյ եթէ ձուլեսցեն

ընդ անագի, լինի ձայնեղ նիւթ զանգակի և հրացանի. եթէ ընդ կաղամնեան հողոյ, կամ ընդ գաղամինար յորձորձեալ քարի՝ լինի արոյր. և եթէ ընդ կապարի՝ լինի թուճ։

Աէրուկօ կամ էրուկօ, կամ վիռախռէ էրիս, լտ. վէռտռէ ռամէ, կամ էրուկօ, և կամ ծիմար, իտ. ձէնկիառ, կամ ժէնկեառ, ըստ. կէնզառ, արբ. և ըստ մեզ՝ ժանկառ, կամ ժանգառ։ Է նիւթ ինչ կանաչ՝ թափանցիկ՝ և լթիւնաւոր, արտահանեալ 'ի կարմիր պղնձոյ՝ լուծեալ մաշելոյ 'ի գինի, զոր ուրեք ուրեք 'ի կիր արկանեն արտաքուստ առ 'ի ծախել զմսամսըեալ մասունս վիրաց։ Եւ եթէ կերիցէ ոք 'ի սմանէ ըստ պատահման, պատճառէ զատաղութիւն և զկծուութիւն վերին ծայրին ստամոքսի, զժայթքումն, զսաստիկ ցաւ, և զքորքոքումն ստամոքսի և աստորին որովայնի, զցնցումն մկանանց, և ջղաց, զուժգին ցաւ գլխոյ, զըզզումն ականջաց, զպապակումն, զհեծկլտանս, զուշագնացութիւն, զցուրտ քիրտն, զքաղցկեղ ստամոքսի և աստորին որովայնի, և վերջապէս զմահ։ Բայց գիտել արժան է, զի եթէ նախ քան զանցանելն կէս ժամու նպաստամատոյց լիցի 'ի ձեռն կարևորագոյն դեղորէից, որպիսի են՝ օսսի քարպօնաթօ տի բօթասսա կամ տի սօտա, կամ օլիօ տի ռիչինօ, կամ իւէքաքուանա, և այլ ամենայն կերպ հիւթք իւղայինք, յայնժամ մարթ է յուսալ 'ի փրկութիւն։

Աէրօֆօպիա, լտ, և իտ. և ըստ մեզ՝ օդավախութիւն։ Է այդ ինչ մասաթափութեն, որով ոք երկնչի յօդոյ։

Աժանասիա, իտ. է դեղ ինչ քնաբեր, և օգտակար արգանդացաւութեն։ Դարձեալ, է խոտ ինչ, որ և կոչի՝ թանաչէթօ, տես և անդ։

Աթթէնուանցիա, լտ. ռառէֆաչիէնթի, իտ. Է անուն հասարակ նշանակիչ ամենայն դեղորէից, որք անօսրեն և նրբացուցանեն զարիւնն և զհիւթն մարմնոյ. որպիսի են՝ պարտանեան, սասսաֆռասս չէօբչէնա, սալ վօլաթիլէ ևն։

Աթլայիօ. բառիւս այսու ըստ անդամազննաց իմանի՝ վերջին ողն պարանոցին մերձ 'ի թիկունս։ Սա կոչի 'ի տաճկաց՝ ատլազ։

Աթռօֆիա. անուամբս նշանակի՝ անսնածութիւն։ Է անհնարին հիւծութիւն՝ առ 'ի չգոյէ պատշաճ սննդու-

թեան, կամ սննդեան ։ տես Թիզիքեցցա Ներածողա ։

Աթրա պիլիս, լտ ։ մալինքօնիա, իտ ։ գարա սէվտա, տճ ։ ըստ մեզ՝ սեաւ մաղձ ։

Աթօնիա․ է բառ Նորոց, որ ստուգաբանի՝ տկարութիւն, կամ թուլութիւն, կոչի և ըստ Նոցա ատէնամիա, կամ ասթէնիա և կամ տէբօլիմէնթ ։

Ալաուտա՝, կամ կալէռիթաս, և կամ քասսիթա, լտ ։ լօտօլա կամ ալլօտօլա, իտ ։ չայիր գուշու, տճ ։ և ըստ մեզ՝ արտուտ ։ Է թռչուն փոքրիկ, սրաթռիչ, և զուարճաձայն, որոյ միս կարծր է և դժուարամարս, այլ սիրտ Նորա և արիւն են դեղք փքախտութե, խթից որովայնի, երիկամնաժեռութե, և միզարգելութե ․ լուծանէ Նաև զքար եթէ գտցի ընդ անցս միզի ։ Բայց յարատևել արժան է առ քանի ինչ ամիսս ։

Ալէս ֆառմաքօ․ տես անթիտօթում ։

Ալթէա, կամ պիսմալվա, կամ իպիսքուս, լտ ։ ալթէա, իտ ։ կիմօվ, գղղ ։ մարշմէլլօ, անգղ ։ ալտէնէօն, յն ։ համթէմ չիչէկի, կամ կիւլ համթէմ, տճ ։ զանգր խաթմի, կամ վէռտ աֆռիա, արբ ։ և ըստ մեզ՝ տուղտ ։ Է բոյս յայտնի մոլոշի, որոյ ցօղունն է երկայն իբր երեք և կէս ոտնաչափ, ուղիղ, թաւամազ, և մէջն դատարկ ։ Տերևն Նման է տերևոյ թթենւոյ, բայց փոքրիկ և կարծր քան զնա ․ ծաղիկն լայնաբոյց, տափարակ, մածուցիկ, և կպչուն ․ այլ չունի մասնաւոր ինչ հոտ ․ տեսլեամբ Նման ծաղկանց մեկոնի ․ գունով սպիտակ ․ բայց յամենայն տեղիս լինի և մսագոյն, ծիրանագոյն, դեղնագոյն, և խայտաբղէտ ։ Պտուղն փոքրիկ, և տափարակաձև, Նման ըստ իմիք մոլոշի ։ Իսկ արմատն երկայն, ստուար, սպիտակ, կարծր, թելաւոր, և մածուցիկ, միանգամայն և դեղ ախտից կրծոց, հազից, փողացաւութե, և միզարգելութե՝ առթելոց յուժգնութէ ․ զի է թուլացուցիչ, և կակղացուցիչ բնութ̃ ։ Զափն 'ի վեց տրամէ մինչև ցութ յաւուրն՝ խառն ընդ մի լիտր ջրոյ ։ Այս բոյս բուսանի յամենայն ուրեք ․ և 'ի գաւառս ինչ 'ի ռամկական բարբառս մեր անուանի՝ ձնձղկաբլիթ ։

Ալիմէնթում, լտ ։ նութրիմէնթօ, կամ ալիմէնթօ, իտ ։ պէսլէյիշ, տճ ։ և ըստ մեզ՝ սնունդ, որ է փոխարկումն կերակրոց և ջրոց 'ի գոյացութի ։ Այդ՝ տա է մին 'ի գլխաւոր երրեակ կարողութեանց բնութեա

կենսականի․ այսինքն սննդական, աճողական, և ծննդական ։ Բաց յերից տասի գլխաւոր կարողութեց պարգևեցան բնութեան այլ ևս քառեակ կարողութիք երկրորդականք, առ 'ի կատարելապէս պահպանութեան բնութեն․ որք են ձգողականք, ըմբռնողականք, մարսողականք, և արտաքսողականք ։ Առաջին կարողութի՛ն ձգին կերակուրքն 'ի մասունս ։ Երկրորդականաւն ըմբռնին ըստ պիտոյից, իսկ երրորդականաւն հալին՝ տրորին՝ և քայքային ։ Հուսկ յետոյ չորրորդականաւն հաւաքեալ նիւթքն զտեալ 'ի կարևորագոյն և յընտրագոյն մասանց՝ աւելորդքն մերժին արտաքս, և կարևորագոյնքն փոխին 'ի կաթնորակ հիւթ ինչ՝ մամոց կոչեցեալ, և 'ի նուրբ ցնդելի ոգիս, որք սպրդեալ ընդ ծակոտիս մարմնոյն տարածին և անուցանեն զայն ։ Իսկ մամացն զոր լատինացիք կոչեն՝ քիլուս, մտեալ յերակս և խառնեալ ընդ արեան փոխի առ սակաւ սակաւ յարիւն, և արիւնն հետ զհետէ 'ի մարմին, և 'ի կենսական ոգի, որ է պահպանիչ կենաց և պատճառ շարժմանց մարմնոյ ։ Այլ գիտել արժան է աստէն, զի վերոյիշեալ քառեակ կարողութիքն ընդունին զզօրութիւն իւրեանց 'ի չորից տարերաց անտի, հուրն ջերմ և չոր հաղորդէ զներգործութի իւր ձգողականին, հողն՝ ըմբռնողականին, օդն՝ մարսողականին, և ջուրն՝ արտաքսողականին ։

Ալլիօ․ տես ալլիում ։

Ալլանթօիտէ․ այսու անուամբ իմանի՝ մին յաղտից կամ 'ի թաղանթից, յորում պատեալ է սաղմն յարգանդի բազում կենդանեաց ։

Ալլիարիա․ տես էրիսիմում ։

Ալլիում, լտ ։ ալլիօ, իտ ։ աիլ կամ այլ, գղղ ։ կարլի, անգղ ։ սքօրտօն, յն ։ սարմուսաք, տճ ։ թօմ կամ սում, և կամ ֆում, արբ ։ սիր, պր ։ և ըստ մեզ՝ սխտոր ։ Է տունկ ինչ ծանօթ ամենեցուն․ որոյ բնութիւն է խթիչ, գրգռիչ, և ճճեհալած․ և չափաւորապէս կերեալ՝ դիւրապատրաստէ զհոսումն միզի, զօրացուցանէ զակարութիւն ստամոքսի, և դիւրատայ մարսել զկերակուրն․ ևս առաքինէ զջրգողութիւնս, զախտս փայծեղան, և զռենդ ։ Իսկ չափազանցն՝ վնաս է գլխոյ․ խանգարէ զտեսութիւնն աչաց․ զայրացուցանէ զմաղձն, և վրդովէ զստամոքսն ։

Ալլուէ․ տես ալուէն ։

Ալձնուէ, լտ. ապպրոպիփիատաէ, և կամ ակկիրաչիատէ, իտ. սողոսամաք, ասնմաք, ադ. և ըստ մեզ՝ սառիլ կամ պաղիլ. որ յաճախ պատահի 'ի կողմանս հիւսիսոյ. և նոյն խառնուրդ ցրտութեն յոլով անգամ հարկանէ զծնօտս և զանդամս մարդկան. զոր եթէ ոչ աճապարեալ փութով դարմանեսցեն, 'ի քաղցկեղ փոխարկեալ անկանին ծայրք ընչայց՝ և ցցուեալ ակաղեք ծնօտից: Այլ դարման այսր մնասու դիւրին է. զի առեալ փոքր ինչ ձիւն կամ ցուրտ ջուր՝ ուժգին ճմլեսցի 'ի վերայ սառուցեալ անդամոյն, մինչև ջերմասցի, և 'ի միջոցի սակաւ ժամուց անդրէն հաստատի. իսկ ընդ հակառակն՝ եթէ լուասցի կամ դիցի 'ի վերայ նորա ջերմ և ոգելից ֆօմէնթօ, անդէն առ նմին ձգեն յինքեանս զքաղցկեղ:

Ալուսէն, կամ օքսի սուլֆաս, օքսիտուլուամ ալյուսինա էթ բօթասսա, լտ. ալուսէ կամ օսսի սոլֆաթօ, օսսիտուլօ տ' ալլումինա, իտ. ադիբդիեհա կամ սաիպաի, կամ ալմի, յն. շապ, ադ. շէպ, արբ. պապ կամ զէմէհ, պր. և ըստ մեզ՝ պաղլեղ: Է ազգ ինչ հանքային լեթթուահամ աղի. որ սովորաբար գտանի 'ի գաղղիա, յանգղիա, և յիտալիա. բայց գտանի և արուեստականն, որ յօդնատեսակ է յոյժ ըստ պէսպիսութեն նիւթոց և յեղանակէ կազմութեն. զոր յօրինեն յայլ և այլ անգլիս եւրոպիոյ. ընտիր համարի՝ եթէ իցէ սառնատեսակ զօրէն ակյան վանեոյ. յորմէ կազմեն դեղ 'ի ներքուստ առ 'ի յարգելուլ զհոսումն արեան, և 'ի փարատել զհարբուխային ախտս արգանդի, և զխէթս պատճառեալս 'ի թիւնից կապարի. զի է սեղմիչ և լուծիչ բնութե: Զամին յերկու ցորենոյ մինչև ց 20 երկու կամ երեք անգամ յաւուրն՝ խառն ընդ բաւականաչափ ջրոյ: Նոյնպէս և օգտակար է ուռնացաւութեն, և յորդառատ հոսման լորձանաց, եթէ խառնեալ ընդ ջրոյ վարդի կամ սամպուքօի ողողեսցի ուլն. մաքրէ նաև զդիրտս տատամանց. և այրեցեալ ծախէ զմամռլեալ մարմինս վիրաց, եթէ կիզեալ զայն և անձիւնացուցեալ արկանիցի 'ի վերայ նոցա: Պաղլեղն փարի և 'ի զանազան ներկս, և է մի 'ի գլխաւոր նիւթոց անտի:

Ալչէ կամ ալչէս. յայս անուն կոչեցեալ 'ի գերմանացւոց՝ է զոր գաղղիացիք անուանեն էլան, և յոյնք՝ ալքի. իսկ տաճիկք՝ ողն, կամ կիւր: Է անասուն մի վայրենի քառոտանեայ 'ի չափ մեծ եղջերուի.

որոյ գլուխն սատուար է նման երխվարի · մորթն և ականջքն՝ խոշոյ · աչքն կայծակնացայս · շրթունքն մեծ և թանձր · ատամունքն միջակ · մօրուսն երկայն յոյժ, և կարծր · եղջիւրքն բազմաձիւղք՝ զօրէն եղջերուաց այծեմանց · բայց մեծ են յոյժ, մինչև կշռել 12 լիտր և առաւել · փորն մեծ ըստ կոճու, միսն համեղ, սրունքն երկայն և նուրբ · ոտքն սեաւ և կճղակաբաշխ ըստ եզանց · եղունգքն կարծր և սպիտակ · իսկ ձետն փոքրիկ : Սա թեթևաշարժ է և արագընթաց · ընդ գետս լողալով անցանէ : Գտանի հասարակօրէն յեւրոպիա, նայաւէտ յերկիրն պռուսիոյ և շվետաց : Եղնգունք այսր քառոտանւոյ՝ զոր լատինք ունկուլա ալչէս կոչեն, դեղ են ազդու ընդդէմ դժնդակ ախտին լուսնոտութեան կմ̃ վերնոտութեն, և այլոց սմին նման նուաղեցուցիչ ախտից · միայն թէ կրկնելի է այդ գոնէ մինչև ցերկու ամիս : Զնոյն գործունէութի ունին նաև ականջքն :

Ալպում կռէքում, կամ ալպում քանիս, և կամ չինօքռօբուս, լտ : մեռտ տիւ շիէն պլանշ, գղ : դուպքիլիա ասպռու, յն : գեօբէին աքթերսի, տճ : խառապխաթ իլ գէլբ, արբ : և ըստ մեզ սատուգաքանի՝ սպիտակ աղբն շան : Օգտակար է սա 'ի դիպուածս փողացաւութե, զոր օրէն է լուծել 'ի փոշի մանրամաղ, և փչել եղեգամբ 'ի ներքս ուլանն · երբեմն մարթ է և ս 'ի վար արկանել 'ի թանձրաթանս · օգտէ և կշտացաւութե և խթանաց որովայնի : Զափն 'ի 20 ցորենոյ մինչև ց 80 խառն ընդ հասարակ ջրոյ :

Ալվի Ֆլուքսուս, կամ ալվի սոլուցիօ, լտ : Ֆլուսսօ տի վէնթռէ, կամ սգուաքքէռառէ, կամ սմօսսա տի քօրբօ, իտ : տես 'ի բառն՝ տիառէա :

Ալքալի, կամ ալուծէ տի գաթինօ, իտ : կոչի և ըստ նորոց՝ քառպօնաթօ տի սօտա : գալիաթաշը, կամ գալիէթ քիլի, տճ : շապխասֆուր, արբ : իշխարպր : և ըստ մեզ՝ կալաքար, կամ կալէքար : Է տեսակ ինչ աղի, զոր արտադրեն քիմիականն արուեստիւ յայրեցեալ մոխրոյ սոտա անուանեալ բուսոյ · յորմէ կազմեն դեղ ընդդէմ խայթուածոց իժից, և այլ թիւնաւոր օձից : Զափն 'ի 10 ցորենոյ մինչև ց12 յաւուրն խառն ընդ արգանակին սամպուքօի : 'Ի սմանէ կազմեն և ազգի ազգի դեղօրայս · որպիսի են ալքալի վօլաթիլէ Ֆլուօռէ · որ է դեղ միզացուցիչ և քրտնեցուցիչ, կմ̃ քառպօնաթօ տի ամմօնիաքօ ևն :

Ալքէքէնճի, կամ Ֆիզալիս ալքէքէնճի, լա։ ալքէքէնճի, իտ։ քախանճօս կամ ալա, յն։ Ֆէնէռ չիչէի, տճ։ և ըստ մեզ ստուգաբանի՝ լապտերածաղիկ։ Է բոյս ինչ բազմացօղուն և կարմրերանգ, որ յաճախ բուսանի 'ի ցանկապատս և 'ի ստուերամած տեղիս իբր մի և կէս ոտնաչափ բարձրութբ։ Տերեւն նման է տերևոյ սոլանում անուանեալ խոտոյ, բայց մեծ քան զայն։ Ծաղիկն լապտերաձև կամ անուաձև, կարմրերանգ և սպիտակաբիծ։ Պտուղն գնտակաձև մեծութբ 'ի չափ հասարակ ընկուզոյ, կանաչակեղև․ այլ 'ի հասանելն փոխի 'ի գոյն կարմիր․ Միջն հիւթալից, և տտպահամ, միանգամայն և դեղ միզաբերութեան, ջրգողութեան, և երիկամնաժեռութեան ախտերոց յուժգնութէ․ զի է թուլացուցիչ, զովացուցիչ և միզաբեր բնութբ։ Չափն յերկու տրամէ մինչև ցվեց յաւուրն խառն ընդ հասարակ ջրոյ։

Ալքիմիլլա վուլկարիս, լա։ ալքիմիլլա քօմունէ, իտ․ կոշի և բիէտի տի լէօնէ։ բիէ տը լիօն, գաղ։ լէտիս մէնդըլ, անգղ։ բուս, կամ լէօն, յն։ և ըստ մեզ՝ աստղանիչ։ Է տունկ նուրբ, բազմաճիւղ, թաւամազ և գառնահամ, որ հասարակօրէն բուսանի 'ի ջրարբի և 'ի խոտաւէտ տեղիս իբր մի ոտնաչափ բարձրութեամբ։ Տերեւ նորա է կոր, վահանաձև, մազոտ, և երկայնականթ ըստ նմանութեան մոլոշի։ Ծաղիկն մանր, աստղաձև, և բացագոյն դեղին․ որ 'ի վեր երևի 'ի վերայ ճիւղոց հանդերձ քառեակ առէջիւք․ բերէ սերմանս մանունս, բոլորակս, և դեղնագոյնս։ Իսկ արմատն երկայն իբր մատնաչափ, ստուար, թելալից և սեաւ։ Սի է իզով․ այլ նուազ ալիւ․ ունի մասնաւոր գործունէութիւն 'ի խափանել զյորդառատ հոսումն միզի, քրտանց՝ և արեան․ զի է սեղմիչ և դոյզն ինչ գրգռիչ բնութբ։ Չափն մի ունկի խառն ընդ մի լիտր ջրոյ։

Ալքօհօլ, լա։ ալքօօլէ, իտ։ տէմ սբիռիթօ տի վինօ։

Ալօէ, լտ․ և իտ։ ալօէս, գղղ․ և անգղ։ ալօի, յն։ սապր սավար, արբ։ սարը սապր, տճ։ և ըստ մեզ՝ հալուէ։ Է շառագոյն և ամենադառն հիւթ ինչ․ զոր արտադրեն 'ի տերևոց և 'ի ցօղնոց իւրեք տընկոյ ամերիկոյ, եւրոպիոյ հնդկայնոյ, և ափրիկոյ․ որ լինի սպիտակածաղիկ, երկայնապտուղ, տափա-

րակասերմն, և սատուարատակ, և այն հիւթ ունի
զբաղում տեսակս. յորս լաւագոյնն այն է, որ լինի
մաքուր, փայլուն, թեթև, դեղնագոյն, և դիւրա-
փխրելի. յորմէ յօրինեալք դեղ տկարուն ստամոքսի,
նուազութեան ամսական պարտուց կանանց, դալկան,
և կալուածոց թանչից առթելոց յուժգնութէ. զի
է լուծիչ և թուլացուցիչ բնութք. սատակէ նաև
զորդունս և զճճիս որովայնի: Չափն 'ի 5 ցորենոյ
մինչև ց 15 խառն ընդ այլ յարմարաւոր դեղորէից:
Եւ եթէ փոշիացուցեալ ցանեսցի 'ի վերայ վիրաց,
մաքրէ, և երբեմն փարատէ զնոսին:

Ածարօլուս, կամ մեսբիլուս ազառօլուս, լա:
ածծէռուօլա կամ լածծէռուօլա, իտ: ազըռօլիէ,
դղղ: նիէբօլիթէն մեսպըր, անգղ: հալըճ, տճ: և
ըստ մեզ՝ ալոճ. է տեսակ մի զղերոյ 'ի չափ հնդկայ-
ին ընկուզոյ, կարմրերանգ, հիւթալից, և քաղցրա-
համ, միանգամայն և զովացուցիչ և զուարճացուցիչ
բնութք:

Ածիկօս. Ը անդամազննոց նշանակի՝ երակն այն,
որ չունի ընդ իւր շնչերակ, որպէս զայլ երակս:

Ակառիքուս, կամ պօլէթուս բուռկանս, և կամ
ֆունկուս լառիչիս, լա: ակառիքօ, իտ: ակառիք,
դղղ: էկէրիք, անգղ: ակառիքօ, յն: կառկօն, տճ: ա-
ղարիքուն, արբ: և ըստ մեզ՝ տարապ: Է անկանման
նիւթ ինչ՝ արտադրեալ առ բնով հնագոյն կաղնեաց,
և մայրից, մանաւանդ լառիչէ անուանեալ ծառոյն,
որ է սպիտակ, թեթև, դիւրափխրելի, հոտաւէտ,
և փոքր մի քաղցրահամ, ունի և թելս կամ ջիղս ուղ-
ղաձիգս և նուրբս: 'Ի նիւթոյ աստի կազմեն դեղ
վասն մաքրելոյ զկուրծս, լուծելոյ զխցանս լերդի և
փայծեղան, և միանգամայն փարատելոյ զջրգողու-
թիւն. և 'ի մասնաւորի 'ի սատակել զճճիս և զոր-
դունս որովայնի, և յանօսրել զթանձրամածութիւս
տողունից. զի է լուծիչ և միզայուցիչ բնութեամբ:
Չափն 'ի կէս տրամէ մինչև ցմի և կէս խառն ընդ
այլ յարմարաւոր դեղորէից. վարի և արտաքուստ
'ի յարգելուլ զյորդառատ հոսումն արեան:

Ակնուս քասթուս կմ վիթեքս ակնուս քասթուս,
լա: ալպէռօ աէլ բէբէ, իտ: ակնիւս քասթիւս,
դղղ: չէյսդդրի, անգղ: լիօ կամ ակօ, յն: իմմէր,
արբ: Է ծառ փոքրիկ, գեղեցիկ տեսլեամբ, հոտա-
ւէտ, և գորշակեղև. ունի և սասս յոգնաթիւս,

նուրբս, կրկնածոյս, և գժուարաբեկս: Տերևք սա-
րս կարգաւ բուսանին առ միմեանս` հանգոյն ար-
բեւոց կանեփոյ. և են երկայն, ուղղորդ, սրածայր,
և աղուամազոտ: Ծաղիկն կարմրագոյն, և տապա-
համ: Իսկ սերմն որ գտանի 'ի ծաղկի անդ, է բո-
լորշի, գորշագոյն, ստուար, տապահամ, և համե-
մայքն, զօրէն պղպեղի: Բուսանի յաճախ 'ի Թուր-
քաստան. որոյ ծաղիկն, տերևն, և սերմն ունին ըղ-
գործունէութի 'ի բանալ զմանրագոյն ծակոտիս երա-
կաց, և 'ի դիւրաշարժ յօրինել զարտաշնչութիւնս
մարմնոյ: Դախնիք 'ի կեր արկանէին սատէ 'ի պէտ-
պէս գեղորայս, նաև 'ի գրգռել զատաղմն, զմէզն, և
զդաշտանս կանանց. բայց զարգիս ոչ համարի այն-
քան 'ի յարգի:

Ակուէսթա, կամ ուղա աչէւայա, լտ: ակուէսթօ,
իտ: ակուաւիտա, և կամ աքիս, կամ օմֆաքս, յն:
մէւաժիւ, գղղ: գէատ, կամ հօսաւում, արբ: կու-
աէ, կամ գէնէշառու, և կէ՞ գէնէշու, պր: և ըստ մեզ՝
աղոխ: Է տեսակ պտուղ որթոյ, որ 'ի հասանելն չէ-
նի խաղող. զօրութի սորա է սեղմիչ և զովացուցիչ,
որով բարեխառնէ զեռուն մաղձի, արգելու զփոր-
հարութի, և շիջուցանէ զջերմութի արեան:

Ակախմօնիա, լտ և իտ: էկուըմուան, գղղ: քըմմըն
էէըիմընէ, անգղ: աքս, յն: գօբէն օթու կամ էկէր
օթու, տճ: Է խոտ գլանաձև, կարծր, ճիւղալից,
Թաւխշաւոր, և փոքր մի քաղցրահամ, որոյ տերևն է
երկայն և եղերահերձ: Ծաղիկն սպիտակ, ձուաձև,
և հինգ թերթևան. բերէ և պտուղս երկայնաձևս և
մթին կարմիրս, յորս են սերմունք: Իսկ արմատն
երկայն, ստուար և սևաւ: Բուսանի յեզերս ճանա-
պարհաց և ագարակաց, որոյ տերևն եփեալ 'ի ջուր
և արբուցեալ՝ դեղ է հոսման որովայնի, և այլ հիւ-
թոց պատճառելոց 'ի թուլութէ. զի է սեղմիչ և
խթիչ բնութք: Զափն 'ի մէկ տրամէ մինչև ցութ
խառն ընդ կէս լիտր ջրոյ:

Ակռօտիչէտոռ, իտ: ագատ գավլուն էքշիսի, տճ:
Է ըմպելի ինչ բաղադրական, կազմեալ 'ի չորս ունկի
հատուածոյ կիտրոնի, 'ի մի լիտր մաքուր շաքարէ,
և 'ի բաւականաչափ ջրոյ, որ շիջուցանէ զտապ տեն-
դից. բարեխառնէ զվրդովումն սեռաւ մաղձի, հորդէ
ճանապարհ միզի. և դիմակալէ փտախտից, զի է զո-
վացուցիչ և Թուլացուցիչ բնութք: Զափն 'ի մի

ունկայ մինչև ցերկու խառն ընդ հասարակ ջրոյ ․

Աձէռաթում, կամ աքիլլէա աձէռաթում, լտ․ էուբաթօռիօ ան մէսուէ, իտ․ էիռաաս, յն․ աչիլլէ վիսքէօզ, գղղ․ մօռլին, անգղ․ Ը խոռ, որոյ տերևքն են երկայն և դառնահամ, որք խիտ առ խիտ ափալին զերեսօք գետնի ․ և 'ի միջոյ տերևոց ելանէ ցօղուն փոքրիկ, որ 'ի ծայրսն բերէ ծիրանագոյն ծաղիկ լայնաբաց, և յոյժ հոտաւէտ ․ զկնի ծաղկանց յաջորդէ սերմնակ երկայնաձև և թաղանթաւոր, յորում են սերմունք մանրիկք ։ Բուսանի 'ի լերինս և 'ի մարգագետինս, մանաւանդ 'ի կողմանս Եւրոպիոյ, որոյ տերևն եփեալ 'ի ջուր և արբուցեալ՝ դեղ է ջղային դժուարամարսութեան, փքային խթից, և ցաւոց գլխոյ առթելոց 'ի թուլութէ ․ զի է խթիչ բնութե ։ Զափն մի արամ ընդ ութ ունկի ջրոյ ։

Ամալկամացիօնէ, իտ․ սարխի իթմէք, տճ․ ըստ մեզ՝ յարակցութի, որ է մասնաւոր իմն գործողութիւն, և հնարագիտութի, որով սովոր են ընդ միմեանս յարակցեալ և միաւորեալ բաղադանել զամենայն տեսակ մետաղականս, մանաւանդ զսնդիկն ․ բայց տարբեր եղանակաւ ․ քանզի անագն և կապարն դոյզն վաստակօք մարթին միաւորիլ 'ի սնդիկն ։ Իսկ սակս միաւորութեան պղնձոյ ընդ սնդկի, մեծի և անտանելի աշխատանաց պէտք են, այնպէս իմն և վասն այլոց հրահալելեաց ։

Ամարանթուս կամ Ֆլօս ամօրիս, լտ․ ամառանթօ, իտ․ անթհօսմարէնօ, յն․ գատիֆէ չիչէի, տճ․ ըստ մեզ՝ թարգմանի անթառամ ծաղիկ, ցօղուն սորա է երկայն իբր երեք ոտնաչափ և ծիրանագոյն ։ Տերևն լայն է և երկայն ըստ նմանութե տերևոց Ճակնդեղի, բայց ստուար, և մթին կանաչ քան զնա ։ Ծաղիկն գեղեցիկ է և ծիրանագոյն, ունելով 'ի միջի հասկ չրջապատեալ բազմաթելովք ։ Պտուղն փոքրիկ, թաղանթային, և տանձաձև ։ Իսկ սերմն, որ լինի 'ի պտղոյ անտի՝ է բոլորակ, սեաւ, և շողշողուն ։ Արմատն կարմրագոյն թանձր, և հիւթալից ըստ նմանութե Ճակնդեղի ։ Սովորաբար բուսանի 'ի բուրաստանս, և յագարակս, բնութե է ցուրտ և զովացուցիչ ․ և է դեղ ազդու ընդդէմ հոսման արեան, և փորհարութե ․ սովորաբար զսորա արգանակն 'ի կեր արկանեմք ։

Ամարա տուլչիս ․ տես Տուլքամարա ։

Ամարաքուս. տես Մաժորանա:

Ամարի սթօմաքիչի, կամ սթօմաքիքօ, իտ: ամճ միտէշլի, տճ: ըստ մեզ Թարգմանի՝ դառն ստամոքսեան, կմ ստամոքսային: Է անուն ընդհանուր նշանակիչ դառնահամ դեղորէից, որք զօրացուցանեն զակարութիւն ստամոքսի և մարսողական զօրութեն, և բառնան զախորժակս կերակրոյ, և միանգամայն դիմակալեն ախտից փորոտեաց, և խախացոցի. որպիսի են քինաքինան, խուշնդեղն, ճէնցիանան, կեղեւն նարնջոյ, և կիտրոնի, բշինդր, սէրբէնթարիա մերձինեանն, կոճապղպեղն, չէնթաուրէա մինօրէն. և այլն և այլն:

Ամարում. տես առուլքամարա:

Ամբէլիթիս կամ Ֆարմաթիչիս, լտ: ամբէլիթէ կամ Ֆարմաչիթէ, իտ: Ֆարմաքօն, յն: Է հող ինչ սեաւ, մածուցիկ որպէս զկուպր յաճախեալ 'ի հանքս քարանց. բնութ՟ է չերմ. ճոխագոյն է ծծմբային մասամբ և աղիւ. միանգամայն և դեղ սատակիչ ճճեաց և որդանց որովայնի, օգտէ նաև ընդդէմ ախտի հերաթափութեան, ատէպ ներկելով սովաւ զհերս և զյօնս:

Ամֆիսպէնա, կամ ամֆիզէֆալօս, լտ: Է տեսակ մի փոքրիկ օձի, երկայնութիւն նորա սովորաբար չէ ինչ աւելի քան մի և կէս ոտնաչափ, գոյնն սպիտակ և շողշողուն, ունելով 'ի վերայ նիշս, և գիծս կարմրերանգս, այտն սուր, և թանձր, տուտն փոքրիկ, և սրածայր, թոյնն դժնդակ, և մահաբեր, և է կատաղի յոյժ. խայթէ չարաչար զամենայն որ ինչ ընդառաջ ելանէ նմա, թէ մարդ իցէ, և թէ անասուն: Այս օձ առատ է Թուշական աղիւ և իւղով, որոյ միս, լեարդ, և սիրտ 'ի կիր արկանի ը՟ օրինակի իժի, որ լինի դեղ ազդու ընդդէմ խայթուածոց թիւնաւոր օձից, և տապութեն հիւթոց. բանայ և զանցս քըրտանց, և դիւրաշարժ յօրինէ զտուրեւառութն շնչոյ, և աղաքինէ զթոքաժետութիւն: Այս օձ գտանի անխտիր ընդ ամենայն տեղիս 'ի կղզին անուանեալ Լէմնօս:

Ամէթիսթա կմ ամէթիսթուս, լտ. և իտ: մէթէհի, յն: ճէպէլլէգուն, արբ: և ըստ մեզ՝ սուտակ կամ մեղեսիկ, և կամ ամէթօս: Է ազնուագոյն ակն ինչ կարմիր, գեղեցկատեսիլ, և թափանցիկ. որոց ոմանք են կարմիր և վարդագոյն. կէսք 'ի գոյն ծաղկանց

գեղձի, ոմանք մանուշակագոյն, և ոմանք սպիտակ երբեմն զանազանանգ, և շողշողուն: Զօրութիւնք սոցա ձգօղ, սեղմիչ, և սթափիչ, որով արգելուն զհոսումն որովայնի, և ծծեն զթթու հիւթս ստամոքսի, և միանգամայն գիմակալեն արբեցութեան:

Ամիլում, լտ: ամիտօ, իտ: մամըլի, յն: Նշաստա, տճ: Նշաստէ, պր: Նիշէ, արբ: և ըստ մեզ՝ Նիշխւ կմ օսլայ, որ է բնութ՝ կակղացուցիչ և յոյժ պատշաճողական գեղ 'ի գիպուածս ամենայն տեսակ այտուցից. քաղցրացուցանէ և զարիւն 'ի խժային թթուհիւթոց, և ապաքինէ զցաւս աղեաց. միանգամայն և կակղէ զկուրծս. զի է առատ իւղով, և գոյացական աղիւ: Այս նիւթ ոչ այլ ինչ է բայց եթէ նրբագոյն և սպիտակագոյն ծուծն թրջեալ և նեխեալ ցորենոյ:

Ամիկտալուս ամարուս, կամ ամարա, լտ: մանդօրլա ամառա, իտ: անճը պատէմ, տճ: լէօզ մօւ: և ըստ մեզ՝ Նուշ դառն: Է ազգ ինչ Նշոյ, որոյ միջին դառն է երբեմն զկորիզ գեղձի. հաշակաւոր է 'ի մասին օգտակարութեան 'ի դիպուածս տկարութեան ստամոքսի, և ցաւոց որովայնի. թէպէտ սա մարդկան օգտակար է, այլ ճճեաց, և ձագուց աղուեսուց մահաբեր է: 'Ի պտղոյ սորա արտահանեն իւղ ինչ դառնահամ, զոր լատինք կոչեն օլէում ամիկտալի ամարէ. յորմէ գործեն գեղ ապգողական ընդդէմ ցաւոց ականջաց, զի է մեղմիչ: Ծառ նորա բուսանի յամենայն ուրեք. նա յաւէտ յերկիրս միճակեալս ջերմագին օդոց: Տերեւք նորա երկայնաձև և սրածայր, և դառնահամ: Իսկ ծաղիկն նման է ծաղկանց գեղձենւոյ:

Ամինաթուս կամ ասպէսթուս, և կամ ասպէսթէս լաբիս, լտ: ամիանթօ, իտ: ամիանօ կամ միանօ, և կմ զմէնիմի, յն: Է քար կմ նիւթ ինչ հանքային սպիտակ, և յղկեալ զօրէն աղուեմն բլուեմուն մերուսի. զոր 'ի ծեծելն՝ լինի իբր բամբակ ընդունակ մանելոյ, և ոստայնելոյ, յորմէ դատնի և 'ի տեղիս տեղիս կտաւ գործեալ, նաև պատմուճան ամբողջ. զոր 'ի կամիլն լուանալ՝ արկանեն 'ի հուր, որ բառնայ զամենայն աղտ, և զկտաւն թողու յիւրում պայծառութեան: Սա ըստ ոմանց Նախնի հեղինակաց՝ ունի եւս զօրութիւն մաքրողական, և դեղթափական. բայց կարծիքս այս չէ այնքան հաւանական:

Ամիտօ. տես Ամիլում:

Ամմի, կամ ամմիօս, լտ: ամմի, յն: Է սերմն ինչ փոքրիկ երբեմն 'ի չափ աւաղոյ. որոյ համ և հոտ նման է զոպայի. օգտակար է ընդդէմ ցաւոց գլխոյ, և արգանդի, և տկարութեան ստամոքսի և աղեաց. զի է խթիչ բնութեանց: Եւս դիմակալէ Թունից: Տունկ նորա բարձր է և ոստախիտ: Տերեւն նման է տերևոյ սամիթի: Ծաղիկն փոքրիկ և սպիտակ: Իսկ արմատն ստուար և փոքր մի կարծր, սովորաբար գտանի 'ի դաշտս, և 'ի կրետէ: Չափն 'ի 5 ցորենոյ մինչև ց20:

Ամմօնիաքում կումմի. տես կումմի ամմօնիաքում:

Ամխիօսէլինում. տես Թափ:

Ամուրքա, լտ: Ֆէչչիա տի օլիօ, կմ՛ մօրքեա, իտ: խամօնկի, յն: եաղըն Թօռթուսու, ան: ըստ մեզ՝ մրուր կամ գիրտ իւղոյ, որ 'ի պարզելն իւղոյ իջանէ 'ի յատակս անօթոյն. բնութիւն է կակղացուցիչ, և միանգամայն ապաքինէ զցաւս գլխոյ, եթէ ջերմացուցեալ արկանիցի 'ի վերայ ճակատուն:

Ամպարա չինէրիթա. տես Ամպարում կրիզէում:

Ամպարէ կամ ամպէրէս, լտ: է ծառ երկայն, և ստուար, յաճախեալ 'ի հնդկաստան: Տերեւք նորա ըստ իրաց ինչ նման են տերևոց ընկուզոյ: Ծաղիկն փոքրիկ է, և սպիտակ, զոր ճմլեալ մատամբ՝ արձակէ զհոտ ամպարի, որպէս և տերեւք նորա. նմին իրի կոչի ծառ ամպարի: Իսկ պտուղն ստուար 'ի չափ հասարակ ընկուզոյ. նախ քան զհասանելն է կանաչագոյն, իսկ յետ հասանելոյն փոխարկի 'ի գոյն դեղին. մէջ նորա կարծր, անճառուա, և տտպահամ, շրջապատեալ նուրբ ջլօք. ուտի աղիւ կամ քացախիւ թացեալ թողուն առ ժամանակ մի 'ի բարեխառնել զտտպութիւն նորա, որ լինի դեղ տկարութեան ստամոքսի, որ և զկերակուրն տայ դիւրաւ մարսել, այլ յաճախակերութիւն դրդուէ զմաղձն:

Ամպարում կրիզէում, կամ ամպրա կրիչէա, և կամ ամպարա չինէրիցիա, լտ: ամպրա, կամ ամպրա օտորօղա, իտ: ամպար, յն: ամպէր, ան: իմպլիմ կամ հիւտ, կամ գուԹր, կամ գեռահ, կամ էլէնճիւճ, արբ: տարպու կամ րաԹպու, և կամ մենաէլ, պր: և ըստ մեզ՝ ամպար, կամ ըստ ոմանց քուրկեն: Է նիւԹ ինչ ազնուագին, չոր, ԹեԹև, աղօտ, գորշագոյն, քաղցրահոտ, և կարծր որպէս ղմիքուշ քար. 'ի սկզբանն է դանդաղամած, և ապա

առ սակաւ սակաւ անդանայ, բայց բազում անգամ խառնեն 'ի բուն ամպարն զայլ մածուցիկ նիւթ ինչ՝ որ եղանէ 'ի ծովէ . Նմին իբր հազիւ երբեք գտանի սա մաքուր և ազնիւ . որոյ ազնիւ և ընտրագոյնն է սպիտակախառն դեղին, և թեթև յոյժ, ունելով նրբագոյն նիշս, և երակս, որք սփռեալ կան ընդ բովանդակ զանգուած նորա . զոր սակայ 'ի գործ ածեն 'ի ծխանելիս հանդերձ բաղադրութ՟բ այլոց : Հռչակաւոր է 'ի մասին օգտաւէտութեան 'ի դիպուածս տկարութեան սրտի, ուղղոյ, ստամոքսի, և ջղայական երակաց . այլև է դեղ ընդդէմ Թունից : Չափն 'ի կէս ցորենոյ մինչև ցչորս : Բազումք 'ի նախնի գերահռչակ հեղինակաց կամեցեալ հետազօտել ըզբուն, և զճշգրիտ գոյացութիւն այսր ամպարի, յայլ և այլ կարծիս անկան, և ապա ուրեմն ծանեան թէ ոչ էր այնպէս որպէս կարծէին, այլ մեղր և մոմ, որպէս տեսցի 'ի ստորագրութիւն սորա : Քանզի յաշխարհն հնդկաց առ ափն ծովու են մեծամեծ և բազմաստեան ծառք 'ի ծովն կոյս խոնարհեալ, յորս անհամար յոլովութիւն մեղուաց գործեն մեղր և մոմ, և լուծեալ 'ի սօթոյ արեգականն մեղրն և մոմն 'ի միասին 'ի վերուստ անտի հոսին 'ի ծովն . զորս ուտեն ահագին ձկունք ովկիանոսի, և երբեմն անմիջապէս 'ի բերանս նոցա հոսի . զկնի քանի ինչ աւուրց ոչ կարացեալ մարսել զմոմն, ժայթքեն արտաքս . և ահա այն է ամպարն պատուական, որ այնչափ 'ի յարգի է յափրիկէ, և ընդ համօրէն աշխար, մինչև կշռով ոսկւոյ վաճառել զայն : Գիտել արժանէ, զի զայս երբեմն հնարիւք կազմեն, և դիւրագին վաճառեն, որ է գլխովին անպիտան . վասն որոյ մեծի ըզգուշութիւն պէտք են առ 'ի զննել զսորա ճշգրտագոյնն :

Ամպէձի . տե՛ս Միրօպալանի :

Ամպիա, լա : է ազգ ինչ կպրաձիւթոյ, որ գտանի յեզերս ծովուց հնդկաց, բուրէ հոտ անոյշ և հաճոյական, իբրև զհոտ Թաքամահաքա անուանեալ ռետնոյ . գունով է դեղին, և բնութ՟բ կակղացուցիչ, զօրացուցիչ, և քաղցրացուցիչ . զոր ջերմացուցեալ 'ի հուր, և եդեալ 'ի վերայ ցուրտ այտուցից՝ փութանակի ցրուէ կամ հասուցանէ : Նոյնպէս օգտաւէտ է ընդդէմ բորբոսութեան :

Ամպրա . տե՛ս Ամպարում կրիզէում .

Ամպրոս կրէդեա . տե՛ս Ամպարում կրէդէամ:

Ամպրոս չինթրինա . տե՛ս քարալէ:

Ամպրոս օտորօդա . տե՛ս Ամպրոս:

Ամպրօզիա, կամ քօնիծա հիբբօքրաթիս, կամ որթ հէյմիզիա մօնօզլօնօղ, և կամ հերակա վինօզա, լտ: ամպրօզիա, իտ: վրօմա կամ Ֆէօս, յն: Է բոյս բազմամեայ, և քաղցրահոտ, յաճախեալ 'ի բուրաստանս և 'ի դալարագեղ վայրս իբր ոտնաչափ մի բարձրութեամբ: Տերևք նորա սպիտակ են, և ցանցառ տեսեալ ըստ նմանութեան տերևոց օշնդրի: Ծաղիկն մանրիկ, փնջաւոր, լախտաձև, և դեղնագոյն: Իսկ սերմանն երկայն, նուրբ, և փայլուն: Այս բոյս համեմիլ է դառն և ջերմահամ. օգտաւէտ է ընդդէմ տկարութեան սրտի, և ուղղոյ, անօսրէ և զխտանձրամածութիւն տողունից, արգելու զհոսումն արեան, և ցրուէ զխառնթարագոյն հիւթս խառնեալս յարեան:

Ամօմում, լտ: ամօմն, իտ: ամօմ, գղղ: պէյպէրա ադօնփարըլի, անգղ: ամամէ, ար: հոչի և յամանց համամա: Է պտուղ անկանոն, որոյ ձև և գոյն ունի նմանութիւն ընդ սպիտակ խաղողոյ. տապահամ է և հոտաւէտ յոյժ. և 'ի մէջի ունի կորիզս քառանկիւնաձևս, և ծիրանագոյնս: Ծառ սորա փոքրիկ է և սակաւաճիւղ, յաճախեալ 'ի համատարած աշխարհն Հնդկաց, մանաւանդ 'ի հարաւային կողմանս: Փայտ նորա կարմրագոյն է և հոտաւէտ: Տերևն երկայն և խիտ: Ծաղիկն սպիտակ և տապահամ: Իսկ պտուղն խիտ առ խիտ դեռեւեալ յողկոյզ իբր կախի զատոյց ծառոյն. զոր չորացուցեալ, լինի դեղ օգտակար ընդդէմ թունից, քամւոյ, տկարութեան ստամոքսի, և նուաղութեան ամսական պարտուց կանանց. քանզի լի է թուչական աղիւ և իւղով, և բնութեամբ խթիչ: Չափն 'ի 5 ցորենոյ մինչև ց30: Սորա է տեսակ ինչ կոչեցեալ 'ի բարբառ լատինացւոց՝ Ամօմում Ֆալսում, որ է սեաւ և փոքրիկ քան զայն իբրև 'ի չափ պտղոյ գինւոյ: Այլ բաց 'ի սոցանէ՝ են և այլ երկու տեսակ այսոցիկ պտղոց. մինն կոչի 'ի բարբառ լտ, ամօմում բլլինի, որ է կարմրերանգ. և ստուար 'ի չափ կեռասի: Իսկ միւսն՝ կնճռալից է՝ մեծութեամբ 'ի չափ հնդկային պղպեղի. տապահամ, և համեմային, ունի և զնոյնազգլուխ հեր.

ձուածս ։ Երկքին սոքա նոյնպէս տուաս գտանին 'ի կողմանս Հնդկաց․ բայց ոչ են յարմար 'ի դեղորայս ։

Անաթրա․ տես Անասս ։

Անաթրոն կամ նաթրոն, լտ․ լաթրոն, արբ․ Է աղգ ինչ հանքային աղի, յաճախեալ 'ի վերին եգիպտոս հաւաք 'ի ներքս գետ յարեւմտեան կողմն նորա․ բուրէ զհոտ ղաղէր, գոյն նորա սպիտակ է և մաքուր և թափանցիկ ։ Զսա նախնի հեղինակք գտանեցին 'ի կարգս բացողականաց, որք փոխանակ սալնիթռօյ 'ի կիր արկանէին, և ոմանք 'ի դասս մաքրողականաց ։ Զօրութիւն նորա 'ի մտանաւորի է սրբել զապականութիւն արեան, և ապաքինել զքաղցկեղս ։ Այլև արհեստաւորք 'ի գործ ածեն 'ի զանազան գործս ։

Անակալլիս առվէնսիս, լտ․ անակալլօ, իտ․ Է խոտ ինչ բազմատեսակ, յորս երևելի քան զամենեսին է անակալլիս մաս․ ցօղունք նորա խիտախիտ ափռեալ են զերեսօք գետնի ։ Տերևքն փոքրիկ, բոլորակաձև, և զատն միանգամայն և [illegible], յորմէ կազմեն դեղ ախոնդանոտութե, և լուանոտութե ։ Ծաղիկքն ելանեն առ անթովք տերևոցն, և են կարմրերանգ, և երկայնականն ։ Պտուղն փոքրիկ, գնտաձև, թաղանթային, և բազմակորիզ ։ Իսկ արմատն սպիտակ և թելալից․ միանգամայն և օգտէ ընդդէմ խածուածոց կատաղի շանց, և հնագոյն վէրաց․ զի է գրգռիչ բնութե ։ Չափն 20 ցորեան չորս անգամ յաւուրն ։

Անակալլիս ագուաթիքա․ տես պեքքապունկա ։

Անաճիրիս և կամ աքքօն, լտ․ է ծառ փոքրիկ, նրբառոստ, և կանաչակերպ, յաճախեալ յերկիրս Ջերմագինս ։ Փայտ նորա կարծր է և դեղին ։ Տերևքն երկայն, և փոքր մի պարարտ, զոր ճմլեալ 'ի ստնգի արձակեն զհոտ այնչափ սաստիկ, և թափանցիկ, մինչև առթեն զցաւ գլխոյ ։ Ծաղիկն դեղին 'ի ձև ծաղկանց ճէնէսաթայի ։ Իսկ մինչ զթերթսն ծաղկանց 'ի բաց թօթափեն, 'ի վեր երևի պտուղն՝ նման ըստ ամենայնի թարմ լուբայի հանդերձ արտաքին պատենիւն, զոր 'ի բաց հանեալ, զմիջինն 'ի կիր արկանեն 'ի դեղորայս, որ է ժայթքեցուցիչ, և լուծողական ։ Զնոյն բնութիւն ունին նաև տերևք սորա ։

Անանաս, լտ․ և իտ․ է պտուղ ինչ հնդկային ։

որոյ բայց ունի նմանութիւն ընդ ընտանի կանդառի. Տերեւք նորա կարմրերանգ են և ցցուեալ ըստ նմանութեան ատերևոց արմաւենւոյ։ Իսկ ծաղիկն ծիրանագոյն է և միթերթեան 'ի ձև ձագարի։ Եւ են սորա երեք տեսակք. առաջինն կոչի՝ անանաս աքուլէաթուս ֆրուքթու օվաթօ, որ քան զամենեսին մեծ է և հոտաւէտ, բայց անհամ և կարծրաթել։ Երկրորդն յորջորջի՝ անանաս աքուլէաթուս ֆրուքթու բրիմիտաթօ, որ սակաւ մի փոքր է քան զառաջինն. այլ քաղցր է և ախորժելի. և ունի թելս կմ ջիղս խիստ և կարծրս մինչև հերձանել և զլնտերս։ Իսկ՝ երրորդն անուանի՝ անանաս նօն աքուլէաթուս բիթթա տիէթուս, որ փոքրիկ է քան զերկոսին. բայց չունի ինչ այնպիսի կարծրաթելս. և ճաշակ նորա քաղցրութե̅ն զանցանէ քան զայլոց տեսակաց։ Այս տեսակ պտղոյ գտանի միայն 'ի գաւառն կոչեցեալ տաքա յարևելեան հնդիկս, յորմէ բնակիչք երկրին գործեն գինի պատուական, և դեղ ազդողական ընդդէմ միզարգելութեան, և նուազութեան ամառական պարտուց կանանց. բանայ և զգզուանս ստամոքաց, որով և արգելու զժայթքումն.

Անաս, լտ։ անիթրա կմ անաթրա, իտ։ քանառ, գաղ։ Նի՛թթա կամ Նէօ կամ բաքիա, յն։ էօրտէկ, տճ։ իվվէս կմ խուտէրի, արբ։ միակայ կամ սիւքխայի և կմ կիւրէ, պր։ և ըստ մեզ՝ բադ։ Է թեւաւոր և ջրասէր կենդանի քաջածանօթ յամենայն ումեքէ, որոյ կրկին է տեսակ, վայրենի, և ընտանի. վայրենին կարէ թռչիլ, համեղ է և դիւրամարս։ Իսկ ընտանին որ ոչ կարէ թռչիլ, առաւել համեղ է սակս առաւելութեն ճարպոյն որ 'ի նմա. բայց դժուարամարսելի է, մանաւանդ տկարակազմ ստամոքաց։ Լեարդ սորա և ստամոքս՝ ունի զգործունէութիւն 'ի յարգելուլ զհոսումն լերդի, և 'ի փարատել զցաւս կրծոց։

Անասարքա, լտ. և իտ։ զորմէ տես Հստ. ա. երես 150։

Անաքարտո. է պտուղ ինչ 'ի չափ մեծութե̅ փոքրիկ շագանակի, կմ սատուար բակլայի, այլ երկայնաձև, որ բերէ զնմանութիւն սրտի թռչնոյ, վասն որոյ և կոչեցաւ անաքարտո, որ է բառ յունական. և ծագի 'ի բառէս քարտիա, որ է սիրտ։ Գոյն նորա է սեաւ, և շողշողուն, և շուրջ զնովաւ պատեալ կայ կեղև

քինչ նուրբ և կարծր, գրեթէ ըստ կեղևոյ մերուման բանկլայի․ բայց մանաւանդ է, զոր 'ի բաց հանեալ, զմիջինն 'ի կեր արկանեմք 'ի գեղորայս, որ է զօրաւոր սրտի, ուղղոյ, և ստամոքսի, օգտակար է նաև ընդդէմ անձնգից․ յորմէ և սովոր են 'ի Հնդկաստան կազմել ազգ մի քաղցրաւենեաց, քօնֆէցիօնէ անի անաքարդո կոչեցեալ յիտալացւոց: Ծառս նորա գտանի յաշխարհն Հնդկաց, որոյ տերևքն են բոլորշի․ իսկ պտուղքն երկու երկու զետեղեալք առ միմեանս յողկոյզս՝ կախին զոստոց ծառոյն:

Անէթում կռավէօլէնս, լտ: անէթօ, իտ: անէթ բիւանթ, գղղ: բարաթօանօ հթէլին․ կամ անիթօս, յն: սարազօթու կամ սուրազօթու, և կմ՝ սուրազօթու, տճ: շիպիւլ, կամ սէպէթ, կամ չէպէթ, և կամ չէյպէ, արբ: և ըստ մեզ՝ սամիթ: Է պարարտ, փափուկ, անուշահոտ և քաղցրահամ բոյս ինչ, յազգէ խաւարտից, ըստ ձևոյ, և ըստ տերևոյ նման մարի սամթի, (այն է րեզինանայ): Ծաղիկն ելանէ 'ի գագաթան, և 'ի վերայ ոստոց, որք ձևանան 'ի ձև հովանոցի, և են դեղնագոյն, հինգաթերթեան, զորէն վարդի․ զկնի ծաղկանց արտադրէ պտուղ փոքրիկ, և իւրաքանչիւր հատ պտղոյ ունի երկու երկու սերմունս ձուաձևս, տափարակս, և տապահամս: Իսկ արմատն կարծր է և տևական, շրջապատեալ բազում նրբաթելովք: Բուսանի սա 'ի բուրաստանս: Ժեպ տուաստ է իւղով և աղիւ, սակայն զլխովին անպիտան է 'ի գեղորայս, որոյ սերմն և եթ 'ի գործ ածի 'ի գեղորայս, որ է փարատիչ քամեաց, և հեծկլտանաց․ և գրգռիչ կաթին, և միզի, և զօրացուցիչ ստամոքսի, այլ և արգելու զփսխումն․ զի է խթիչ քնութե̃: Զափն 'ի 20 ցորենոյ մինչև 'ի մի տրամ:

Անէթօ․ տես Անէթում:

Անեմօնէ, լտ․ և իտ: անէմօս, յն: նիւման չիչէյի, կամ կէլինձիկ չիչէյի, տճ: ըստ մեզ՝ հարսնուկ կամ հողմածաղիկ: Է տեսակ մի կաղամբուսոյ․ որոյ տերևքն են բոլորակաձև, փափուկ, եզերահերձ, և երկայնականթ՝ նման ըստ իմիք մոլոշի, և 'ի միջոյ տերևոց ելանեն ցօղունք․ որք 'ի ծայրսն բերեն չքնաղատեսիլ ծաղիկս լայնաբացս․ որոց ոմանք են կարմիր կամ ծիրանագոյն, ոմանք սպիտակ, ոմանք մանուշակագոյն, և ոմանք յայլ և այլ գոյն գեղեցիկ․ զկնի ծաղկանց յաջորդէ պտուղն երկայնաձև, և բազմա-

հատ ։ Իսկ արմատն խորտաբորտ և թելալից ․ լինի սա յաճախ ՚ի բուրաստանս , ՚ի դաշտս , և ՚ի լերինս ․ լի է իւղով և աղիւ և բնութբ թիւնաւոր ․ օգտակար է ընդդէմ վիրաց աչաց , և ուղղոյ ։

Անթալլիում, կամ անթալլէ , և կամ թուպուլուս մարինուս , լտ ։ Է փոքրիկ խեցեմորթ ծովային՝ երկայն իբր մի և կէս մատնաչափ ուղիղ , և սպիտակ հարեալ ՚ի գոյն կանաչ , գտանի ՚ի յատակս ծովուց , նուազ է թաշական աղիւ , նոյնպէս և իւղով , և բնութբ լուծիչ , և չորացուցիչ ։

Անթէլիչէ , հակոլորտ ։ Ըստ անգամազննաց ցուցանի ներքին շրջապատն արտաքին ականջաց , որոյ հակառակն է արտաքին շրջապատն կոչեցեալ՝ էլիչէ , այսինքն ոլորտ ։

Անթէչիթա կմ անթաչիթա , լտ ։ Է անուն հատարակ գեղորէից , որք գիմակալ են թթու ախտից , և մաքրեն զստամոքսն ՚ի կծու հիւթոց , և ՚ի դրտից ։

Անթիսքօրպէւտիքա , կամ անթիսքօրպէւթիքա ։ Այս երկու բառքն մի եղեալ են ․ քանզի անթի՝ է բառ յն , և նշանակէ գիմակալ ․ իսկ սքօրպէւտիքա՝ նոյնպէս բառ յունական՝ թարգմանի անդամադօսութիւն կամ կաթուած ։ Ուստի ասելն Անթիսքօրպէւտիքա , ասի ընդհանուր գեղորէից , որք գիմակալեն ախտի անդամադօսութեն , կմ կաթուածոյ , որպէս են ագուա մէլիսսէ , կմ սպիրիթուս սուքչինուս , եւ եւ ։

Անթիտօթում , լտ ։ ըստ մեզ՝ անդեղա կամ դեղթափ ․ է անուն ընդհանուր ամենայն տեսակ դեղորէից , որք գիմակալ են վնասակար զօրութեանց թիւնոց ։

Անթիմօնիում կամ սթիպիում , լտ ։ անթիմօնիօ , իտ ։ ռէմիր ալօղան կամ ռասստըք թաշը , թճ ։ բուհութիւչ , արբ ։ պէսմէհ կամ բասխութ և կամ սիւրբ սիւղթէ , այր ։ ըստ մեզ՝ յունաքար , կմ ծարիր կամ ծարոյր ։ Է հանք ինչ՝ բաղկացեալ ՚ի ծծմբոյ և ՚ի սնդկէ ․ լինի զանգուածով մեծ , և ծանր , երանգաւ սեաւ և փայլուն , բնութբ քրտնաբեր , և ժայթքեցուցիչ , որ յաճախակի ՚ի գործ ածի ՚ի գեղորայս հանգերձ բաղադրութբ այլոց ։ Չափն ՚ի 12 ցորենոյ մինչև 30 ․ իսկ եթէ ոչ բարեխառնեսցի , վնասակար է կենաց ։ Սովորաբար գտանի ՚ի գաղղիա , ՚ի սակսոնիա , և յանգղիա ։

Անթիմօնիօ ճիաչինթինօ , կամ վէտրօ անթիմօ-

նիօ, իտ ։ պուզզանմըշ էֆթիմօն, տճ ։ և ըստ մեզ՝ անգույր սառուցեալ, զոր եթէ փոշի արարեալ կամ ՚ի գինի արկեալ ՚ի գործ՝ արկանիցես, լինի դեղ իմն զօրաւոր և սաստիկ փսխեցուցիչ ։ Զափն ՚ի մի ցորենոյ մինչև ցերիս կամ ցվեց ։

Անթիմօնիօ տիաֆորէթիքօ թէռմօսսիտօ տի անթիմօնիօ քօնքօթտասսա, իտ ։ տէմիր պօզան թէպէշիրի, տճ ։ Ը մեզ՝ անգույր քրտնաբեր, զոր ՚ի գործ ածեմք ՚ի քրտնաբեր և ՚ի յարեան մաքրիչ դեղորայս, որ և բարեխառնէ զարիւնն, և փարատէ զանընդմիջական տենդն և զախտս մորթոյ ։ Զափն ՚ի տասն ցորենոյ մինչև ցքսան ։ Այլ զբնութիւն սորա տես ՚ի Քէռմէս մինէռալէ ։

Անթիրրինում կամ նարթէս, կմ օս լէօնիս վուլկօ, կմ չինօչէֆալօս, լտ ։ ակինօս կմ քէֆալի, յն ։ Նազդ ինչ խոտոյ, որոյ ցօղունն է երկայն իբր մի և կէս ոտնաչափ, և ուղղալից ։ տերեւքն նման են տերևոց մանուշակի, ծաղիկն՝ եղեգան ։ իսկ պտուղն՝ շանագլխոյ ։ բերէ և սերմունս մանունս ։ Լինի սա յաճախ յագարակս, և ՚ի յաւաղուտ վայրս ։ օգտաւէտ է ընդդէմ թուլութեան երկանց և հոսման աչաց ։ Սորա է տեսակ ինչ կոչեցեալ ՚ի բարբառ լատինացւոց՝ անթիրրինում կամ լիքնիս սիլվէսթրիս, որ լինի միացօղուն, փոքրատերև, կարմրածաղիկ ։ այլ ըստ բնութեան և ըստ ներգործութեան նման նմա ։

Անթհէմիս ։ տես քհամամէլում ։

Անթհօրա, կամ աքօնիթում սալութիֆէրում, կմ նապէլլուս մօիսիս, կամ անթիթհօրա ֆլօրէ լութէօ աքօնիթի, լտ ։ Է բոյս ինչ վայրի և տեսական՝ յազգէ Աքօնիթում կոչեցեալ բուսոյ ։ ցօղուն սորա է երկայն իբր մի և կէս ոտնաչափ, բազմանկիւնի, և փոքր մի թաւամազ ։ Տերեւքն յոգնաթիւ, բոլորակաձև, և դառնահամ, որք կարգաւ շարայարին առ միմեամբք ըստ նմանութեան տերևոց քօնսօլիտա անուանեալ բուսոյ ։ Ծաղիկն դժգոյն դեղին, վերամբարձ, և տաղտկահոտ ։ պտուղն գնտակաձև և թաղանթային, սերմն սեաւ, անկիւնաւոր և կնճռալից, իսկ արմատն բոլորշի, փոքրիկ, թխագոյն, թելալից, և դառնահամ ։ Այս բոյս յաճախեալ յալպեան լերինս, լի է հեղով և ցնդական աղիւ ։ Սորա արմատ վասն բուռն զօրութեան իւրոյ մեղմէ զչարութիւն թիւնոյ աքօնիթում անուանեալ բուսոյ ։ և դիմակալէ

խածուածոց կատաղի շանց, և այլոց Թիւնաւոր զեռա-նոց. բժշկէ նաև զհիւանդութիւնս պատճառեալս 'ի ճճաւաբեր հիւթոց. այլև օգտէ ընդդէմ ժանտախտի և փքոտուն: Զնոյն գործութիւն ունին նաև սորա տերևքն:

Անթրիսքոս, կամ քէրօֆիլլում սիլվէստրէ. կամ չէրօֆօլիում սիլվէստրէ, կամ աբիում սիլվէս-թրէ, և կամ տաուքուս սէբիարիուս, լտ: Է բոյս ինչ, որոյ ցօղունն է երկայն իբր երկու ոտնաչափ, կամ փոքր ինչ աւելի, բազմատերևեան, ուղիղ, մթին կանաչ, և Թաւամազ: Տերևք նորա նման են տերևոց չէրօֆօլիոի կամ մոլախնդոյ. ծաղիկն ելանէ 'ի գագաթան, և է հինգթերթեան և սպիտակ, բերէ և սերմունս մանունս, և երկայնս: Իսկ ար-մատն կարճ, սպիտակ, և համեմային: Աճի սա յա-ճախ 'ի ցանկապատ տեղիս. Ճոխագոյն է իւղով, և ցնդական աղիւ:

Անիզում, լտ: անիզէ, իտ: լ' անիս, գղղ: էնիս, անգղ: էնիսօն կամ եանսօն, արբ: զէմալան, պր: և թր. մեզ՝ անիսոն: Է բոյս երկայն իբր երեք ոտնա-չափ, բազմաճիւղ, բոլորակաձև, Թաւամազ, մէջն դատարկ, յաճախեալ 'ի գագաթս, 'ի կրկնէ. և 'ի մայլցս: Տերևք սորա են երկայն հերձոտ, փոքր մի սպիտակ և հոտաւէտ: Ծաղիկն ըստ իւրաց ինչ նման է ծաղկան բիմբինէլլայի: Իսկ սերմն կամ ունդն է նոյն իսկ անիսոնն, զոր հորաջացուցեալ 'ի կիր արկա-նեն 'ի կերակուրս, նաև 'ի դեղորայս. որ է ցրուիչ քամւոյ, փարատիչ ցաւոց կրծոց և փորատեաց, և զօրատու ստամոքսի և սրտի, զի է խթիչ բնութ̅: Չափն 'ի կէս տրամէ մինչև ցմի: Զնոյն գործութ-իւն ունի նաև սորա իւղն:

Անիզում ինտիքում. տես Ծինձի:

Անիզում քինէ, կամ անիզում քինէզէ, և կամ սէ-մէն պատախան, լտ: անիսէ սթէլլաթօ, իտ: անիսար-լաշին, գղղ: չին անիսօնու կմ՝ ելադղ անիսօնու, տճ: Է պտուղ ինչ անիսոնի, որ բուսանի 'ի մէջ աստղաձև իրեք պատենի կոչեցելոյ լատինական բարբառով ֆրուքթուս սթէլլաթուս, ձևով և մեծութեամբ նման է կորիզի քօլլօ գուինթիդայի. Իսկ հոտով և համով անիսոնի, զոր Չինացիք, և Հոլանտացիք 'ի կիր արկանեն 'ի տալ զհոտ օշարակի. բայց մեք 'ի գործ ածեմք զսա վասն փարատելոյ զխիթս, և ցաւ-

ցուցանելոյ ղախորժակս կերակրոյ, զի է խթիչ բնութ ։ Չափն 'ի 20 ցորենոյ. մինչև ց60 ։ Ծառ սորա սովորաբար բուսանի 'ի չէին ընդ ամենայն տեղիս, բարձրութիւնն է միջական, իսկ բունն սատուար, ոստալից, գորշագոյն, և քաղցրահոտ, բայց ոչ 'ի կիր արկանի 'ի գեղորայս, եթէ ոչ 'ի պէտս շինութեան անդանոց ։

Անիղուամ քինեղէ. տես 'ի վերոյ ։

Անիթրա. տես Անևաս ։

Անիլ. կամ ակնիլ. կամ քօաքերա, կամ աննիլ. կամ ինտիկօ, կամ ինտիքուամ, կամ կալի, և կամ հերպա ռօզիմարինի Փաչիէ, լտ ։ Էնտէկօ կամ ինտագ, իտ ։ չիվիտ, տճ ։ Նիլէ, արբ ։ լեղակաբոյս՝ ըստ մեզ ։ Է բոյս՝ յաճախեալ յարևելեան և յարևմտեան հնդիկս, և յեգիպտոս՝ երկայն իբր երկու ոտնաչափ, և հիւթալից. համն նորա դառն է միանգամայն կծու ։ Տերևք նորա բոլորակաձև են և սատուար՝ ըստ նմանութե տերևոց առուոյտի. և ՚ի կանաչութեան գունոյն նմանի տնկոյ ռօզմարինայի ։ Իսկ ծաղիկն նման է ծաղկան ոլեռան՝ ըստ ձևոյն և ՚ի գունոյն ։ Այս բոյս օգտաւէտ է ընդդէմ նեխեալ և փտեալ վիրաց, եթէ փոշիացուցեալ ցանիցի 'ի վերայ նոցա, նոյնպէս և ընդդէմ ցաւոց գլխոյ ։ 'Ի բուսոյ աստի արտահանեն հիւթ կապտագոյն, յորմէ կազմեն չորաղանդուածս պէսպէս ձևով, և առաքեն յայլևայլ տեղիս, որ այն ինքն է լեղակ ։

Անիմէ, կամ անիմէ կումմի, կամ կումմի անիմէ, կամ մինէա կամ անիմէա, կամ միրրհա, և կամ անիմուամ, լտ ։ Է սպիտակ խէժ ինչ ամերիգեան. որոյ ընտիր և ազնիւն լինի սպիտակ, չոր, դիւրաբեկ, մաքուր, անախորժահոտ, և Թափանցիկ. օգտաւէտ է ընդդէմ վնասաբեր օդոց, և գոլորշեաց, որ սակաւ 'ի կիր արկանի 'ի ծխանելիս. Ճոխագոյն է իւղով, և Թռչական աղիւ, և բնութ ջերմ և կակղացուցիչ. զոր եդեալ 'ի վերայ ցուրտ ուռուցից՝ վաղվաղակի լուծանէ. նոյնպէս օգտակար է ընդդէմ ցաւոց կիսոյ գլխոյ, և տկարութե ուղղոյ, եթէ ջերմացուցեալ դիցի 'ի վերայ վշտագնեալ մասին գլխոյ. այլ եթէ փոշիացուցեալ դիցի 'ի վերայ վիրաց՝ մաքրէ, և երբեմն բուժէ զնոսին ։ Ծառ սորա է միջակ ըստ մեծութեան ։ Տերևն նման է սաղարթից մրտոյ ։ Իսկ պտուղն սատուար յոյժ, որ կոչի լօպուս ։

Անխոհ անֆիքիրլէրէ, լա․ Թըռամըրթէրէ. իտ․ անս ավէնթիմէնթոամ:

Անխիչէ. տես Անխիղում:

Անխիչէաքքըս. տես զնշանակութիւն սորին 'ի բառն քումինում:

Անկուռէ. տես ակրքէնս:

Անկուիլլա, լա․ Ըլան պալըղը, ատ․ ակմէք իլհայ, կամ ակմէքչիլթապան, կամ հանաթ, և կամ ծիրիղ, որբ․ մառամահի, պր․ ըմա մեղ՝ օձաձուկն: Զևով մարմնոյն և մեծութը՝ նման է հասարակ օձի, այլ տուար քան զնա, որոյ վասն և կոչեցաւ յանուն նորա․ ունի զմորթս իւղայինս, և մածուցիկս, զոր և դնեալ 'ի վերայ ուռուցից՝ կակղացուցեալ ցրուէ: Միս նորա է պարարտ, փափուկ, և ախորժահամ, բայց դժուարամարսելի, մանաւանդ ակարակազմ ստամոքաց: Սորա ճարպ ունի զզօրութիւն յապաքինել զխլութիւնն, եթէ խուն ինչ ջերմացուցեալ արկցէ 'ի մէջ ականջաց, և միանգամայն սրբէ զբիծս երեսաց և բուսուցանէ զհերս գլխոյ․ նոյնպէս օգտակար է ընդդէմ թունից:

Անկուիս էգքուլապիի, լա․ Է տեսակ մի օձի, որոյ շարժումն է յամր և անվնաս․ զի գոլով ընտելացեալ՝ յամարային ժամանակս մտանէ 'ի տունս և 'ի մահիճս․ գտանի յաճախ յափրիկէ, յամերիկա, և յասիա, զոր բնակիչք երկրին սնեալ 'ի կեր արկանեն ըստ օրինակի խժի 'ի բժշկումն հրատապ տենդից, և ժանտախտի․ այլ և հաստատեն թէ օգտակար է ընդդէմ թունից և վնասաբեր հեւթոց․ քանզի լի է իւղով, և ցնդական աղիւ:

Անկուսթուրա․ տես պրուչէա ֆէրրուճինէա:

Անհիմա, լա․ Է թռչուն ինչ ամերիկեան, մարմնով մեծագոյն քան զկարապ․ գլուխն տուար՝ գրեթէ հաւասար գլխոյ աքաղաղի, կտուցն կոր և սեաւ, աչքն շքեղ, և ոսկեգոյն, շրջապատ նոցա սեաւ, նոյնպէս և բիծքն․ ունի 'ի գլուխ իւր եղջիւր, որ է բոլորակ, սպիտակ, տուար, և երկայն իբր երկու մատնաչափ․ պարանոց նորա նման է սագի, այլ առաւել երկայն քան զայն․ ունի զձայն ախորժելի, որ ընդ ժամանակս ժամանակս ծիչ բառնայ՝ վիհու վիհու: Եղջիւր այսր թռչնոյ է դեղ օգտաւէտ ընդդէմ թունից, և ցաւոց արգանդի, և միանգամայն օգնէ ապայաքերից:

Անճելի սալէ, իտ: անճելօզ Թուզրու, տճ: Ըն մեզ՝ աղանճելոսի, որ է տեսակ ինչ աղնուագոյն աղի, զոր քիմիական արուեստիւ կազմեն յարծաթոյ լուծելոյ ալրեհ ջրով. բնութ. է մեղմապէս լուծողական, զօրացուցիչ աղեաց, և միանգամայն սաստակիչ մեծագոյն ձձեաց որովայնի, այլև օգտաւէտ ախտի ջրգողութեան: Չափն 'ի 2 ցորենոյ մինչև ց 4, տուաս շաքարաւ. զորոյ պատրաստեն նաև զհասպն միջօճե հացի:

Անճելիքա կամ արքանճելիքա, լտ: անճելիկա, գղղ: էնճելիք, անգղ: մէլլաքի օթու, տճ: Ըն Մեզ՝ ստորագարանի բոյս հրեշտակային: Ցօղուն ստորալինի տաղզաքերձ, ստուար, բազմոստեան, և հոտաւէտ, և բարձրանայ մինչև ցերեք ոտս. ներքին կողմն ցօղնոյ է կանաչախառն կարմիր: Տերևքն երկայնաձևք, և եղերք նոցա հերձոտք և իբր սղոցաբերանք, որք կալգաւ շարայարեալ կան 'ի վերայ ստոց. բերէ բաժակս 'ի ծայրս նորին ցօղնոյ, յորոյ վերայ հովանոձև բուսեալ կան ծաղիկք, որք են սպիտակ, և հինգթերթեան. պտուղքն դարձնագոյն, բոլորակ, և փոքր մի երկայնաձև, որք երկու երկու բուսանին 'ի վերայ միոյ բաժակի: Իսկ արմատն ջերմահամ, ստուար, և գնտակաձև, շրջապատեալ նուրբ և երկայն թելովք. արտաքուստ առ սակաւ մի սևագոյն, իսկ 'ի ներքուստ սպիտակ. համ նորա քաղցր է, միանգամայն և անուժելի գառն. Լինի յաճախ յանգղիա և 'ի պօհեմիա, որք գերագոյն են քան զորս գտանին ընդ ամենայն աշխարհ. զոր և քաղցրաւենի կազմեալ տաքեն 'ի զանազան կողմանս, սորա սերմն առանց եփելոյ ուտի, դեղ օգտակար ընդդէմ յոռի օդոյ և գոլորշեաց: Եւ այն արմատ է դեղ քնոտիր և ազդու ընդդէմ ցաւոց գլխոյ, տկարութեան ստամոքսի, և սրտի, նաև գերագոյն դեղ ընդդէմ փքախտութեան, թունից, ժանտախտի, ջղային դժուարամարսութեան, մահաբերտենդից, խածուածոց թունաւոր օձից, և կատաղեշանց, զի է առատ իւղով և ցնդական աղիւ, և բնութեամբ խթիչ: Չափն 'ի կէս տրամէ մինչև ցմի և կէս:

Անճինա. տես Սգուինանցիա:

Անսէր, լտ: օքա, իտ: քաբբօս, կամ էքհին, և կամ քօբբօս, յն: գազ, տճ: վըրզ, կամ պայթ, և կամ հուլշիւմ, արբ: խարբէթ, պր: ըստ մեզ՝ սագ:

է թեւաւոր կենդանի մի ջրասէր 'ի ձև բադի, այլ մեծ քան զայն, և փոքր քան զկարապ, յաճախեալ յաշխարհս ամենայն, միսն պարարտ և համեղ, որ 'ի ժամանակս ձմեռան ընտիր կերակուր է մարդկան․ բայց յաճախակի ուտելն ածէ զխիտս ստամոքսի : Ճարպ սորա բուսուցանէ զհերս, որոց թափեալ իցէ 'ի պիսակէ․ խաղաղեցուցանէ զշնչելումն և ըղթնդումն ականջաց․ մեղմէ զցաւս թանչից. եթէ ջերմացուցեալ դիցի 'ի վերայ ախտացեալ մասին մարմնոյ : Կղկղանք այսր կենդանւոյ, զոր լուծինք քենօքօրրուս կոչեն, լինի դեղ ազդու ընդդէմ միզարգելութե, և կալուածոց դաշտանի կանանց : Զայն 'ի կէս տրամէ մինչև ցմի ամբողջ․ և ի սմանց նախնի հեղինակաց' ունի ևս զօրութիւն վիժողական : Իսկ զմորթ ոտից սորա լուեալ 'ի ջուր ըմպեն, և լինի դեղ օգտակար 'ի դեպուածս հոսման արեան ռութելոյ 'ի թանչից :

Աչոտ, լտ : Է ծառ ամերիկեան, որոյ փայտն տաղնդային է և թեթև : Տերևն երկայն, ջլային, և սայրասուր : Ծաղիկն լայնաբաց, և դեղնագոյն : Իսկ պտուղն ունի զձև կաղնոյ, պատեալ երկու կեղևովք, այլ ըստ համոյ նման շագանակի, բնութբ լուծողական, և տաղտկացուցիչ․ զոր լուսեալ արկանեն 'ի ջուր ջերմ, և եղանէ յերեսս ջրոյն իւղ թանձր․ զայն իւղ կոչեն' օլէում անատ, զոր լցեալ յանօթս առաքեն 'ի զանազան կողմանս, որ է դեղ օգտաւէտ ընդդէմ տկարութե անդամոց, օծեալ նովաւ ընթուլացեալ մասն մարմնոյ, և շփեալ առ հրով' զի իւղն այն ընդմտանիցէ ընդ ծակտիս մորթոյ, որով և օգտէ : Զկեղև այսր պտղոյ' որ է լուծողական, և կարի ժայթքեցուցիչ բնութբ, 'ի գործ ածեն ձկնորսք 'ի սատակումն ձկանց :

Անտիրա արպօր կամ անձէլլին, լտ : Է ծառ ամերիկեան, որոյ փայտն կարծր է յոյժ, յորմէ կազմեն նաւ : Կեղև նորա գորշագոյն, տերևքն ըստ իւրաց ինչ նման են տերևոց դափնւոյ : Ծաղիկն ծիրանագոյն, և անուշահոտ : Պտուղն ըստ ձևոյ, և ըստ մեծութե նման ձուոյ, կարծրակեղև է և տտպահամ, որք 'ի ժամանակս գարնան ընտիր կերակուր են վայրենի գազանաց, որ և լինի մարդկան դեղ օգտակար ընդդէմ ճճեաց, և որդանց․ բայց մեծաւ զգուշութբ պարտ է 'ի կեր առնուլ․ չափն 'ի 8 ցորենոյ մին-

չէ ց12· քանզի յոլով անգամ վնասաբեր լինի, եւ մահացութ։

Անտրօսպէ, լտ. անտրիսպոս, յն. Է կնիւն ինչ թաւամազ որ բարձրանայ յերկրէ իբր կէս ոտնաչափ։ Տերեւք նորա են երկայն, լայն, թաւամազ, եւ ջլային զօրէն ջղախոտոյ, շրջապատ նորա սղոցաձեւ ատամնաւորեալ։ Ծաղիկն փոքրիկ, սպիտակ, եւ հինգթերթեան։ Պտուղն փոքրագոյն, եւ սուր հանգոյն ոլեռան, որոյ մէջն լի է կարմրերանգ եւ երկայնաձեւ սերմամբք։ Իսկ արմատն նուրբ, եւ թելաւոր։ Սովորաբար բուսանի յափունս ծովու, եւ յանտառս. առատ է աղիւ. օգտաւէտ 'ի դիպուածս միզարգելութեան, ջրգողութեան, եւ յօդուածացաւութեան։

Անտրօսէմում, կամ քլիմէնում, կամ հէրպա սիչէլիանա, լտ. անտրօս կամ անիր կամ էմիս, յն. Է տունկ ինչ ճախնային, եւ ակօսահամ. որոյ ցօղունն ոչ բարձրանայ աւելի քան զերիս ոտնաչափս, եւ է ուղղաձիգ, բոլորակ, եւ փայտային։ Տերեւքն ըստ ձեւոյն նման են տերեւոց հիբէրիքում անուանեալ բուսոյ, այլ քառապատիկ երկայն քան զնա. ունի եւ զհիւթս զօրէն բալասանի. եւ գոյն նոցա գեղեցիկ կանաչ յամառային ժամանակս. իսկ 'ի ձմեռան կարմիր են, միանգամայն եւ խոցոտեն։ Ծաղիկն բուսանի 'ի գագաթն, եւ 'ի ծայրս ստեղանց, եւ է դեղնագոյն, եւ հինգթերթեան՝ ըստ նմանութե ծաղկանց վերոյիշեալ հիբէրիքումի, բայց լինի մեծ եւ չքեղ։ Պտուղն է հատ փոքրիկ, անկիւնաւոր, եւ կանաչ. այլ 'ի հասանելն փոխարկի 'ի գոյն սեաւ, ունելով 'ի միջի սերմս փոքրիկ, եւ թխագոյն։ Իսկ արմատն երկայն, եւ փայտային։ Այս տունկ գտանի յաճախ 'ի կղզիս, եւ 'ի բուրաստանս. եւ է դեղ ազդողական ընդդէմ գժնդակ եւ մահաբեր տենդից. խածուածոց կատաղի շանց. նաեւ դիմակայէ ախտից միզարգելութե, եւ զայրացեալ վիրաց, միանգամայն եւ լուծանէ զքար գոյացեալ յերիկամունս մարդոյ։ Այլեւ սատակէ զորդունս եւ զճճիս որովայնի։

Անտրօսէմում էմինուս, լտ. տես Հիբէրիքում։

Անքհուսա թինքթօրիա, կամ ալքիպիանոսն կամ օնօքիլէս, կամ պուկլօսսում, լտ. օռքանէթ, գաղ. Է բոյս ինչ վայրի, որոյ ցօղունն է նուրբ եւ երկայն իբր մի ոտնաչափ, որ յերկիր խոնարհեալ ձեւա-

կամ Ֆունկուս Մեմպրանչէուս, լա՛։ օրէքքիօ տի ճիուտա, իտ։ միւրվէր մանթարը, տճ։ Է սունկ ինչ անկանոն և գորշագոյն՝ որ գոյանայ 'ի բունս միւրվէր ծառոյ, ձեւութք 'ի չափ ականջաց մարդոյ, մէջն թաղանթային, և օճառուտ, և բնութեամբ սառուցիկ լուծողական և մոհարբեր. զոր 'ի գործ ածեն 'ի դեղ արտաքին ուռուցից, և բորբոքողականութեան որկորոյ։

Աուրիքուլա լէբօրիս, կամ պուբլէուրօն անկուսթիֆօլիում հէրպաթրում, լա։ օրէքքիօ տի լէբրէ, իտ։ թավշան գուլաղը, տճ։ ուսյա իլէռնէկ, արբ։ և ըստ մեզ թարգմանողի՝ ունկն նապաստակի։ Է բոյս ինչ երկայն իբր ոտնաչափ, նուրբ, բոլորակ, յղկեալ, փայտային, կարմրերանգ, և մէջն դատարկ։ Տերեւք նորա են ջլային, երկայնաձեւ, և ծայրասուր, յորմէ ըստ ասելոյ ոմանց՝ առնի զձեւ ունկան նապաստակի, որոյ վասն և կոչեցաւ յանուն նորա։ Ծաղիկն ելանէ 'ի գագաթան, և է դեղնագոյն, հովանաձեւ, և բազմաթերթ, որ բերէ զձեւ վարդի. սերմունք նորա գարունագոյնք, երկայնաձեւք, և տափահաձեւք, և բնութեամբ ջերմաբեր, և չորացուցիչ։ Իսկ արմատն փոքրիկ, գալարեալ, և կանաչագոյն, համ նորա թթու և գոյզն ինչ դառն, որպէս և բոյս նորա։ Բուսանի սա յանապատս և յամայի վայրս, եւ է իւղով, այլ միջակ աղիւ։

Աուրիքուլա ուրսի, լա։ օրէքքիօ տի օրսօ, իտ։ այի գուլաղը, տճ։ ուսյա իլ տիւպպ, արբ։ ըստ մեզ ստուգաբանի՝ ունկն արջոյ կամ արջունկն։ Է խոտ ինչ յարգի փղոմոսի, որ սովորաբար բուսանի զեբեւօք երկրի, արձակելով յարմատոյ զտերեւս ջլայինս, և աղուամազոտս՝ ըստ նմանութեան ունկան արջոյ, յորմէ կալաւ և զանունն. և 'ի միջի տերեւոյն ելանէ ցօղուն երկայն իբր ութ կամ ինն ոտնաչափ, սեաւ, բոլորշի, և հիւթալից, որ 'ի գագաթան բերէ երկնագոյն ծաղիկ միթերթեան և ծայրահերձ. համ նորա քաղցր է միանգամայն և տտիպ, որպէս և հիւթալից տերեւք նորա։ Պտուղն առնի զձեւ ձուոյ, այլ 'ի չափ ստուարագոյն գարւոյ. ունի և բոժակ երկայնաձեւ, յորում են մանրիկ սերմունք անկիւնաւորք։ Իսկ արմատն՝ կարմիր շրջապատեալ նուրբ թելովք։ Այս խոտ յաճախեալ 'ի քարուտս, 'ի լերինս, և 'ի խոնաւուտ տեղիս, եւ է իւղով, և ու-

ղիս · օգտակար է ընդդէմ հազի, և միզարգելութ· լուծանէ նաև զքար գոյացեալ յերիկամունս մար-դոյ :

Աուբիքուլարիա, լտ : ավս Փորֆիքուլա :

Աուրում, լտ : օրօ, իտ : մալակմա, կմ խրուսի, և կամ Փլուրի, յն : օռ · գղղ : կօլտ, անգղ : ալթըն, տճ : տէհաղ, կամ զէհէպ կամ ազզէթ, կամ Թե-պիր, կամ անէար, կամ զէզիր, և կամ ապրաքան, արբ : զէր, կամ բէբբէրէ, կամ բէրիչէ, կմ ռուզնի, կամ զէբառ, կամ զէրթիլէ, կամ զէրճաֆերի. կամ ժավ, կամ ռամէ, և կամ շէշաէրի, պր : և ըստ մեզ՝ ոսկի : Ծանրագոյն, և ղտագոյն է սա 'ի մէջ ա-մենայն հրահալելեաց · առաւել գտանի 'ի սմա մասն ծծմբային՝ քան անդկային, զօրացուցիչ է ամե-նայն անդամոց, սրտի և ջղաց · բայց չէ սնուցիչ : Գիտել արժան է, զի զկիրառութիւն սորա 'ի ներ-քուստ՝ նախ քան զամենայն ծանեան աղջք արաբա-ցւոց :

Աուրում Ֆուլմինանս, լտ : Է գեղ ինչ պատրաս-տեալ յոսկւոյ հալելոյ · զօրութիւ է լուծիչ ներքին կոլուածոց, և օգտաւէտ 'ի գիպուածս ախտի, որ ասի՝ բամախօնէ իլէոպքա · և ես տպաքինէ զկէրս ան-բուժելիս :

Աուրում Ֆօլիում, կամ Ֆօլիաթում, լտ : Ֆլօ-րում Ֆիլօ, յն : ալթըն վարաք · տճ : և ըստ մեզ՝ ոս-կեթերթ, որ սոսկալ 'ի հացս և 'ի մածունս 'ի գործ արկանի :

Աչքեթապուլում, լտ : Է բոյս ջրասէր, որոյ են երկու տեսակք · առաջինն է մեծ, որ բուսանի 'ի վերայ քարանց, և 'ի յատակս ծովու, որ և կոչի՝ աչքեթապուլում մարինում բռօչէախուս, որոյ տերեւն է նրբականթ, գորշագոյն, և կծուահամ : Իսկ միւսն կոչի՝ աչքեթապուլում մարինում մինուս · սորա ձև է այլատեսակ և փոքր քան զնա, այլ ըստ գունոյ նման նմա : Սինին սոքա յաճախ նաև 'ի վերայ խեց-ցեմորթաց · առատ են աղիւ, և զնութիւ բացողա-կանք, որով և յորդեն զմէզն, և տպաքինեն զջրգո-ղութիւն, և զգալլուկն :

Աչէթում, լտ : աչէթօ, կմ օսսիաչէթիքօ իմբուռօ, իտ : վինէկր, գղղ : քսիտ, յն : սիրքէ, տճ : խալլ կամ սիքեյիֆ, արբ : սիրքէա, պարս : և ըստ մեզ՝ քա-ցախ · Է թթուածն գինւոյ, որ 'ի կեր արկանի 'ի կե-

բակուրս և 'ի գնդորայս. զօրութի̃ է թուլացուցիչ և զովացուցիչ ։ և իբրև ճշգրիտ գեղթափ ընդդէմ ամենայն փտախտից, ժանտախտից և թիւնոյ ափիոնի. դիմակայ է ամենակերպ թիւնալից օդոց, և հիւթոց. քանզի տեսանեմք, զի խորշակահարաց զպատմուճանն թացեալ քացախիւ զերծուցանեն նոցա, և ապաքինեն։ Դարձեալ՝ օգտակարագոյն է 'ի դիպուածս ամենայն ջերմախտից, զի փարատէ զջերմութի̃ արեան, հատանէ զծարաւն, շարժէ զքիրտն, զատանէ զխնասակար հիւթս խառնեալս յարեան, միանգամայն և փարատէ զցրուածս ստամոքաց. նաև մաքրէ զվէրս լուացմամբ, և չտայ նոցա նեխիլ։

Աչքթում անթիբէսթիլէնցիալէ, լտ. անս աչքթօ տի գիւաթիօ լատրի ։

Աչքթում մուլսում, լտ. օսսիմէլէ սէմփլիչէ, և կամ աչքէթօ մէլաթօ, իտ. օքսիմելի, յն. սիրքէն ճէպին, տճ. ըսքան չամին, պր. և ըստ մեզ՝ քացախաթան։ Է ըմպելի ինչ բաղադրական յօրինեալ 'ի քացախոյ, և 'ի սպիտակ մեղրէ. բնութի̃ է հովացուցիչ, և զովացուցիչ, օգտակար դեղ ընդդէմ ամենակերպ ջերմախտից, և փտախտութե̃. զօրացուցանէ զստամոքսն, լուծանէ զկապչուն հիւթս, յորոց պատճառին պէսպէս ախտք. տային 'ի մի ունկեայ մինչև ցերեք խառնեալ ընդ ջրոյ գարւոյ։

Աչքթօզա, կամ օքսալիս կամ ռումեքս աչքթօզա, լտ. օզէյլ ռումինէր, գղղ. օքսալիս, յն. դուղրուդուլաղը, տճ. հիւմմէթ, կամ հիւմմաթ և կամ համիթ, արբ. թիւրշէ կամ այզրան, պր. և ըստ մեզ՝ թրթնջուկ։ Է խոտ ինչ բազմատեսակ, յորս երևելի են երեք տեսակք. առաջինն կոչի՝ աչքթօզա բրաթէնսիս, կամ օքսիլաբաթում, որոյ տերևն է երկայնաձիգ 'ի ձև ականջաց ոչխարի, կանաչագոյն, շողշողուն, հիւթալից, և թթուահամ. ցօղունն է երկայն իբրև մի և կէս ոտնաչափ, որ 'ի գագաթան արձակէ փոքրիկ ծաղիկ բազմատէչ. բերէ սերմն կարմրագոյն։ Իսկ արմատն երկայն կարմրերանգ, և թանձրամած։ Բուսանի սա 'ի դաշտավայրս, և յանտառս. օգտակար է ընդդէմ տկարութե̃ սրտի, հոսման արեան, և թունից, և ևս արծարծէ զզօրութիւն ստամոքսի. այլև օգտակար է 'ի դիպուածս աքօռպութօի, և փտախտութե̃, զոր և 'ի գործ ածեն 'ի կերակուրս, և յաղցանս. զի է թուլացուցիչ ։

Ագգուա վէճէթօ մինէրալէ ու կօսալարտ :

Աչէթօ տի րօսաթօ , իտ : տես Աչէթօ սաթուռնօ :

Աչէթօ տէի գուաթթրօ լատրի տի մարսիլիա , կամ աչէթօ քօնթրա բէսթէ , կամ օսսի աչէթիկօ առոմաթիկօ , լտ : աչէթում անթիբէսթիլէնցիալէ . ըստ : ակօրթ խուրըղլար սիրքէսի , տճ : խալլ ատալա հառասմի , արբ : ըստ մեզ՝ քացախ ընդդէմ ժանտախտի , զորոյ զբազմազան օգտակարութ և զհանգամանս 'ի մի բան բովանդակեալ բացայայտ ծանուցից յետադայ պատմութեան : Զայս քացախ աներկեան 'ի գործ արկանէին չորս հռչակաւոր գողք 'ի ժամանակի ժանտախտի 'ի քաղաքն մարսիլիա , որով թացեալ զհոտոտելիս և զշօշափելիս՝ համարձակ մտանէին 'ի գաղանեալ զինչս և զկարասիս մեռելոց 'ի ժանտախտէ : Յայժ օգտաւէտ է յամենայնում առաւօտու ըմպելն 'ի սմանէ յերկու արամէ մինչև ցվեց . կարեւրագոյն և պարտուպատշաճ դատիմ զկիրառութիւն սորա 'ի գիպուածս ապրափոխիկ ախտից՝ եթէ արտաքուստ թանալով զգչայարանս, և եթէ 'ի ներքուստ ըմպելով ըստ վերոյիշեալ պայմանի . սմին իրի մարթին 'ի կիր արկանել զայս քացախ բժիշկք հոգաբարձուք , և այլք որոց հարկ 'ի վերայ կայ ծառայել 'ի վտանգի մահաբեր ախտից , որով և անվրէպ լինին անձնապահ :

Աչէր , լտ : ասէռօ , իտ : Է ծառ ինչ մեծ և լայնատարած , որոյ կեղեւն է կարմիր , և կարծր , փայտն սպիտակ և գեղաբեկ՝ առ բազում իրս պիտանի , մանաւանդ 'ի նուրբ արհեստակերտուածս : Տերեւն ընդարձակ , հերձատ , անկիւնաւոր , որպէս զորթոյ , բայց առաւել սայրասուր , և առաւել երկայնականթ . համ նորա դառն է միանգամայն և տտիպ : Ծաղիկն դալարագոյն , թերթաւորց 'ի ձև վարդի , որք փունջս փունջս 'ի վեր երևին 'ի ծայրս ճիւղոց : Պտուղքն երկայնաձև և ծոպաձև . և իւրաքանչիւր հատ պտղոյ ունի մէն մի կորիզ իբր բոլորշի , կարծր . սպիտակ , և ստուար ըստ նմանութեն կորիզի նարնջոյ : Լինի աս յաճախ յանտառս , ըր է իւղով , և գոյացական աղիւ : Տերեւք այսր ծառոյ են բնութեն ներգծիչ , և չափաւէտ փորհարութեն . զնոյն զօրութեն ունի նաև սորա պտուղն :

Աչէրպիթաս , լտ : բառիս այս իմանի՝ անմարս նիւթ 'ի ստամոքսն .

Աչէտուս, լտ։ աչէտօ, իտ։ ըստ մեզ՝ թթուուտ, կամ թթուեկէն. ըստ քիմիականաց է աղ ինչ հակառակ ալքալի անուանեալ աղից։

Աչիտօ սոլֆօրիքօ, իտ։ աչիտում սուլֆուրիքում, լտ։ տես 'ի վայր։

Աչիտօ վիթրիօլիքօ կամ աչիտօ սոլֆօրիքօ, կամ օսսի սոլֆօրիքօ, իտ։ աչիտում վիթրիօլիքում, լտ։ էջէի զաճ սիրըքէսի, թճ։ ըստ մեզ՝ արջասպային թթուուտ, զոր կազմեն յարջասպոյ բաղադրելոյ ընդ նիւթ կզկզանաց երկաթոյ, որ է դեղ ազդու 'ի գիպսուածս սաստիկ հոսման արեան և մահաբեր ջերմախտից տոթելոց յուժգնութենէ. զի է զովացուցիչ և թուլացուցիչ բնութք, ըմպելով խառնեալ փոքր ինչ ջրով քինաքինայի. չափն 'ի 5 չթէ մինչև ց10։ Այլև ցրուէ զփուքս ընդերաց, և փարատէ զքաղցկեղային ախտ արգանդի։

Աչչիարօ, իտ։ տես Քալիպս։

Աչչիփիթէր, լտ։ սբառավիէռէ, կամ մօսքառտինօ, և կամ մօսքառտօ, իտ։ շահին, կամ տօղան, կամ աթմաճա, թճ։ պաշիկ, կամ սուրմիչաֆ, կամ անքարա, արբ։ պաշէ, կամ վաշէ, կամ բաշա, կամ ֆէռակօ, և կամ Ֆըրրաղօն, սր։ ըստ մեզ՝ բազէ, կամ որի։ Է թռչուն ինչ յափշտակօղ, գիշատիչ, որկորամէտ, մեծութբ 'ի չափ համարակ աքաղաղի, և 'ի տեղիս տեղիս նաև արծուաչափ. գոյն նորա է խայտախատրիւ, գլուխն ուղղակից, աչքն փայլուն յոյժ, և գժնէհայեաց, կտուցն կոր, կարծր, և սուր, լեզուն լայն, ոտքն, և եղունգն երկայն և կարծր, թռիչ նորա սրավար, և է բազմորսակ և կարի յանդուգն, որ յարձակի 'ի վերայ թռչնոց մեծամեծաց քան զինքն, և ձիրանօք յափշտակէ և ուտէ։ Միս նորա և ճարպ են դեղք օգտաւէտ ընդդէմ ցաւուց աչաց։

Աչչիտէնթէ. տես Ապօփլէսսիա։

Աբէլիչիա, կամ փսէուտօսանթալում քրէթիքում, լտ։ սանտալօ ֆալսօ տի քանտիա, իտ։ եալանճը սանտալ, թճ։ Է ծառ ինչ մեծ, ուղղորդ, բազմոստեան, և գեղեցկատեսիլ, որոյ փայտն է կարծրագոյնդ և կարմրերանգ, և հոտ նորա անոյշակ է և նման հոտոյ սանտալօ րօսսօ անուանեալ փայտի. վասն այսորիկ այս փայտ կոչեցաւ սուտ սանտալ։ Տերև նորա նման է տերևոյ ալաթեռնօի.

բայց առաւել բոլորակ քան զայն, որ և է հերձոտ ։ Սա բուսանի 'ի կրետէ, և անդ 'ի կատարս լերանց․ լի է իւղով և ցնդական աղիւ, և բնութ՛ք մաքրիչ և սեղմիչ․ բայց յայսոսիկ դարս գրեթէ գլխովին է անգործածելի ։

Ապիէս կմ՛ բինուս ապիէս, լտ․ սապէն, գղղ․ քըմմըն սբրիւս կմ՛ ֆիր, անգղ․ ապէթէ, իտ․ աբին, կամ էլաթի, յն․ չամ ազաճը, տճ․ ըստ մեզ՝ եղեւին․ Է ծառ ինչ մեծ ուղղաբերձ, ոստալից, և մշտադալար, որոյ երկու են տեսակք․ առաջինն կոչի՝ ապիէս քօրնիս սուրում սբէէլթանթի, որոյ փայտն է կարծր, խորտաբորտ, հերձոտ, ապխտակախառն կամիր, և ռեծանալից, յորմէ հոսի հիւթ ինչ կոչեցեալ ռէզինա բինուս, այն է չամ սաքըզը, որ է դեղ օգտակար 'ի բժշկունն վիրաց ։ Ոստք նորա ստուարք են և խաչաձևք ։ Տերևքն մշտականաչ, կարծր, խիտ, լայն, երկայն, բոլորակաձև, սրածայր, և փոքր մի խայթիչ, որք երկու երկու ելանեն առ միմեամբք ։ Ծաղիկք 'իվեր երևին 'ի ծայրս ոստոց, որք են թաղանթային, և խառնաչաւոր, յորում լի են մանրբիկ փոշիք ։ Պտուղն կոնոնաձև, զոր լտ․ սթրօպիլէ կոչեն ։ Իսկ սերմն զոր կոչեն՝ բինօքքիօ տօլչէ՝ քաղցր է և փոքրիկ ։ Իսկ զերկրորդ տեսակն կոչեն՝ ապիէս թէնուիօրէ ֆօլիօ, և կմ՛ բիքքա լաթինօրում․ սորա կեղևն է առաւել թուխ, և ոստքն իբր յերկիր խոնարհեալք ։ Իսկ տերևքն առաւել սեաւ, այլ ոչ այնչափ կարծր և խայթիչք ։ Աճնին սոքա 'ի կատարս լերանց, և 'ի քարուտ տեղիս, և յաւէտ 'ի լիբանան, ճօխագոյն են իւղովք և թաչական աղիւք ։ Տերևք սոցա և շառաւիղք են դեղ օգտակար ընդդէմ յօդուածացաւութե, միզարգելութեան, ցաւոց ստամոնց, և հարբխոյ․ զի է խթիչ և քրտնեցուցիչ բնութ՛ ։ Ջափն երկու ունկի ընդ մի լիտր ջրոյ․ սովորաբար 'ի կիր արկանի սոցա արգանակն ։ Բայց 'ի սոցանէ են և այլ քառեակ տեսակք, զորս տեսցես 'ի բառն Բինուս ։

Ապուլթիլօն, կամ ալթէհա, կամ խալխաքուս թ․հէօֆրասթի, լտ․ Է տունկ ինչ, որ բարձրանայ մինչև ցչորս ոտն, յաճախեալ 'ի պարտէզս և 'ի դաշտավայրս․ որոյ ճիւղքն են երկայն և բոլորշի ։ Տերևքն լայնաբաց, փափուկ, ծայրասուր, ապխտակ, և աղուամազուտ, որք բերեն զնմանութի տերևոց դդմի,

առաջինն կոչի ապրօթանում մաս · այսինքն արու օշինդր սեաւ, որ բարձրանայ յերկրէ երբեմն չորս կամ հինգ թզաչափ : Ճիւղք նորա են կարծր, կարմրագոյն, և բեկանուտ : Տերևն խիտ, հերձոտ, սաստկահոտ, և դառնահամ, միանգամայն և տտիպ : Ծաղիկն մեծութե՛ք և ձևով նման օշնդրի, որպէս և սերմունք նորա · բայց գունով է առաւել դեղին : Իսկ արմատն կարծր, և փայտային : Բուսանի սա յամենայն ուրեք · բայց զօրագոյնն գտանի 'ի յունաստան՝ վասն օդոյն և ջրոյն լաւութեան, որ և լինի առաւել բուրող և ցնդական աղիւ, և բնութե՛ք խթիչ, նրբացուցիչ, մաքրիչ, ցրուիչ, և բացողական, որով և նօսրէ զթանձրամածութիւն հիւթոց · բանայ զանցս միզի, զդրգուէ զախորժակս և զդաշտանս, փարատէ զվէրս և դիմակալէ թունից և ճճեաց : Ջափն մի ունկի ընդ մի լիտր ջրոյ : Իսկ զերկրորդն կոչեն ապրօթանում ֆեմինա · այսինքն էգ օշինդր սեաւ, որ սաղարթն է քան զայն, արմատ սորա է կարծրապինդ, խիտ, և ստուար, և բարձրանայ սպիտակ ստեղամբ երկու կա՛մ երեք թզաչափ, որք և շրջապատեալ զարդարին բթաչափ տերևովք, որք հարկանին ըստ երաց ինչ 'ի գոյն սպիտակ · Իւրաքանչիւր ստեղունք արտադրեն ծաղիկս դեղնագոյն, և խողովակաձև, որք և ունին հնգեակ առաջս բաժանեալս 'ի գագաթանց : Սորա սերմունքն զմանաւոր իմն գործունէութիւն առ 'ի բաց վանել զորդունս որովայնի, և 'ի գործածութեան պարտ է պահել զչափ քանակութեան, որով սովոր եմք 'ի գործ արկանել զսերմն կոչեցեալ սէմէն սանթօ :

Ապրօթանօ, իտ : տե՛ս Ապրօթանում :

Ասարինա, կամ սաքսաթիլիա հետէռուլա, կամ հետէռա սաքսաթիլիս մակնօ ֆլօրէ, լա : Է խոտ բազմածիղ, և տարածողական յաճախեալ 'ի լերինս, մանաւանդ 'ի տէլֆինա անուանեալ լեառն : Տերևք սորա նման են տերևոց էտէռա թէռռէսթրէի : Ծաղիկն ծիրանագոյն, մեծութեամբ և ձևով նմանեալ անթիրրինում յօրջօրջեալ բուսոյ · զկնի ծաղկանց յաջորդէ պտուղս գեղեցկատեսիլս, և թաղանթաւորս · և իւրաքանչիւր հատ պտղոյ ունի մէն մի սերմն երկայնաձև : Այս խոտ լի է իւղով և աղիւ, և է դեղ սեպհական ընդդէմ երիկամնախտութեան, միզարգելութեան, շնչարգելութեան, և թոքախտութեան :

Ասպարուժ, լտ: ասպարօ, կամ ռեքիօ սալվաթիքօ, և կամ օրէքքիօ տի ուօմօ, իտ: սէրօ, յն: քապպառէ, գղղ: էզպարուն, արբ: Է բոյս փոքրիկ և մշտադալար, յաճախեալ 'ի գաղղիա, և յասիա: Տերևք նորա երկայնականութ, գոգաւոր., և ծայրածալ՝ իբր զականջս մարդոյ: Այս տերև է սեղմիչ և մեղմացուցիչ բնութե̃• զոր բժիշկք գաղղիոյ առեալ 'ի կիր արկանեն 'ի բժշկութիւն ցաւոց գլխոյ և ամենայն տեսակ պատճառելոց 'ի թթախառութե̃: Ծաղիկն եղանէ ա կանթիւ տերևոցն, և է վերամբարձ, և կարճականթ, ունելով 'ի միջի առէջս ծիրանագոյնս: Պտուղն երկայնաձև, և 'ի միջի ունի հատս կամ կորիզս մանունս, և թխագոյնս: Իսկ արմատն մանր, օձապտոյտ, կոր, բազմանկիւնի, զազրահոտ, և շրջապատեալ գորշագոյն մանրաթելովք: Սա վասն բուռն զօրութե̃ իւրոյ կծէ զլնդունս, և թողէ զարտօսր աչաց, և տայ հզօրեղապէս փնգալ• ուստի և մաքրէ զաղտեղութիւս տողունից, և բուժէ զհնագոյն ցաւս գլխոյ: Նախնիք 'ի գործ ածէին սաստի 'ի պէսպէս դեղօրայս, նաև 'ի ժայթքել, և 'ի լուծել տալ զմաղձն: Իսկ այժմ սակաւք 'ի կիր առնուն յեւրոպիա, այլ պայտառք եւրոպիոյ՝ առնու սատակեն զորդունս երիվարաց՝ որք գոյանան յաղիս նոցա, զի է գրգռիչ և լուծիչ բնութ̃ե:

Ասարօ, իտ• տես 'ի վերոյ:

Ասբալաթուս, լտ: Է փայտ իրէք փոքրիկ ծառոյ եղելոյ 'ի կողմանս հնդկաց, որ լինի կարծր, ստուարակեղև, և փշալից, միանգամայն և օգտակար դեղ ընդդէմ մխասաբեր հիւթոց, և ուշաթափելոց: Արդ՝ բաժանի փայտս այս մանաւանդ յերիս տեսակս, որոց մի տեսակն է անուշահոտ, իւղային, և յոյժ նման հալուէի• բայց միայն գունով տարբերի 'ի նմանէ: Երկրորդ տեսակն սևագոյն է և կարի ծանր: Իսկ երրորդ տեսակն գեղնագոյն, և վարդահոտ, զորմէ լիագոյն տեսցես 'ի բառն՝ լիկնում րհօտիում:

Ասբալթօ, իտ• տես Ասֆալթօ:

Ասբարակուս, լտ: սբարակօ, կմ ասբարակօ, և կմ սբարաճիօ, իտ: կաթօսֆարակօս, յն: գուշգոնմազ, տճ: և ըստ մեզ՝ ծնեբեկ: Է բոյս անտերև, որ սովորաբար 'ի վեր երևի 'ի սկիզբն գարնան• ստուարութիւն նորա է մատնաչափ, և երկայնութի̃ն ոտնաչափ, և 'ի տեղիս տեղիս նաև կանգնաչափ, և

է ուղէղ, բոլորակ, և դիւրածալ. գոյն նորա 'ի սկզբանն է կանաչագոյն, և ապա առ սակաւ սակաւ սպիտականայ, զոր քաղեալ 'ի գործ ածեն 'ի կերակուրս և յաղցանս։ Ծաղիկ նորա է յոգնաթիւ, մանր, և թուխ։ Պտուղն փափուկ, կարմրերանգ, և ստուար 'ի ձև ոլոռան, և 'ի միջի ունի սերմունս կարծրս, և սևս։ Իսկ արմատն երկայն, նուրբ, թելաւոր, գլանաձև, մսուտ, քաղցրահամ, և մածուցիկ. գոյն նորա արտաքուստ գորշ, իսկ 'ի ներքուստ սպիտակ. բուսանի յաճախ 'ի պարտէզս և յագարակս. լի է իւղով, և գոյացական աղիւ։ Արմատ այսր բուսոյ լինի դեղ ազդողական 'ի դիպուածս խցանաց միջընդերաց, նուաղութեն ամսական պարտուց կանանց, և միզարգելութեան. լուծանէ նաև զքար գոյացեալ յերիկամունս մարդոյ, յայն սակս կարգի 'ի դասս հինգ բացողական արմատոց. չափն 'ի 6 տրամէ մինչև 38։ Զնոյն գործունէութիւն ունի նաև սորա սերմն։

Ասբարագօ. տես ասբարագուս։

Ասբէր, կամ աբրոն, լտ։ Է փոքրիկ ձուկն լճային, որոյ գլուխն լայն է և սուր, ոսկորն միջակ. գոյնն կարմիր։ Իսկ միսն պարարտ և համեղ, և է ընտիր կերակուր, և բնութբ բացողական և միզաբեր։

Ասբէրուլա, կամ րուպէօլա մօնթանա օտօրա. կամ հէբաթիքա սթէլլաթա, և կամ ասբէրուլա գուխյուստամ, լտ։ մաթրի սալվա, կամ մաթրի սիլվա, իտ։ Է տունկ ինչ բազմացողուն և անուշահոտ, որ բարձրանայ յերկրէ իբր մի ոտնաչափ։ Տերևք նորա նման են տերևոց աբարինէի, բայց լայն և թաւամազ քան զայն։ Ծաղիկն ելանէ 'ի գագաթան, և է սպիտակ, և սկահաձև. իսկ մինչ թերթքն ծաղկանց 'ի բաց թօթափին, 'ի վեր երևի պտուղն չոր և փոքրիկ, ունելով 'ի միջի երկու սերմունս փոքրիկս, և տափարակաձևս։ Ունի արմատ նուրբ և կարճ շրջապատեալ բազում մանրաթելովք։ Սովորաբար բուսանի 'ի լերինս, և յանտառս. լի է իւղով և ցնդական աղիւ, միանգամայն և օգտակար դեղ զօրացուցիչ նուաղելոց, և ուշաթափելոց. գրգռէ զմէզն և զպաշտանս կանանց, և արտահանէ զմեռեալ զաւակն 'ի յարգանդէ. սովորաբար 'ի կիր արկանի սորա ագանակն. և եւս մաքրեալ բուժէ զարտաքին վէրս. եթէ եփեալ զայն լուանայցեն ջրովն։

Ասբէրուլօ, կամ պուկլօսում սիլվէսթրէ քաուլի-պուս բրօքումպէնթիպուս, կամ չինօկլօսսա Փօրթէ Թօբիարիա և կամ քրուչիադա գաւասաամ, լտ։ Է խոտ ինչ ձիւղալից, բազմանկիւնի. և խորդուբորդ, որ բուսանի զերեսօք երկրի չուրջանակի սփռելով ըղ-ձիւղսն։ Տերևքն են լայն, խորդուբորդ. և սուսերա-կանթ. որով մի կանթ սորա բերէ երբեակ կամ քա-ռեակ տերևս 'ի զանազան ձիւղս։ Ծաղիկն երկնագոյն հինգթերթեան, և առանձնապատաձև, որ բուսանի 'ի վերայ բաժակաձև սերմնակի, իսկ սերմունքն պար-փակեալք 'ի բաժակ անդր՝ են երկայն ձևով, սեաւ-գունով, և քառեակ թուով։ Լինի սա յաճախ 'ի դաշտս, յեզերս ճանապարհաց, սովորաբար ծաղկի յամսեան մայիսի, և յունիսի. լի է իւղով, և գոյա-ցական աղիւ։ 'Ի տերևոց և 'ի ծաղկանց սորին կազմեն արգանակ, և սպեղանի 'ի բուժել զվէրս։

Ասբիս, լտ։ ասբիտօ, իտ։ սէրիգօ կամ քուֆի-ֆիտօ, յն։ ասպը եըլան, տճ։ և ըստ մեզ՝ ասպիդ։ Է օձ ինչ չարաթոյն, ժանտալից, և մահաբեր. եր-կայնութիւն նորա է իբրև չորս կամ հինգ ոտնաչափ, իսկ ստուարութիւն բազկաչափ. սովորաբար գտանի 'ի կիպրոս, 'ի վերին մասն եգիպտոսի. և յերկիրն ապանիացւոց. Ճոխագոյն է իւղով և ցնդական աղիւ. որոյ միսն, լեարդն, և սիրտն ոչ միայն են օգտակարք ընդդէմ թունից, այլ և դեղք սեպհական 'ի դի-պուածս թոքախտութեան, շնչարգելութեան, ցաւուց կրծոց և այլոց այսպիսի նուաղեցուցիչ ախտից. չափն 'ի 10 ցորենոյ մինչև ց30։

Ասբհօտէլուս, լտ։ ասֆօտիլլօ, կամ ասթառէ-ձիա, իտ։ Է բոյս ինչ, որոյ ցօղունն է երկայն իբր երեք ոտնաչափ, բոլորակաձև, հարթ, և հզօր։ Տերևք նորա նման են տերևոց պրասի, բայց երկայն և խիտ քան զնա։ Ծաղիկն ելանէ 'ի գագաթան, և է կարմրախառն սպիտակ, և շուշանաձև. զկնի ծաղ-կանց արտադրէ զպտուղն գնտակաձև մասլիր, և խո-ռոչաւոր։ Իսկ սերմունքն՝ որք գտանին 'ի պտուղս անդ՝ են թուխ, և եռանկիւնաձև։ Ունի արմատ գնտակակերպ, փոքր մի դառնահամ, և թափանցիկ. զոր եփեալ ուտեն իբրև զհաց 'ի ժամանակս սովու, և է դեղ օգտակար ընդդէմ թունից, միզարգելու-թեան, և նուաղութեան ամսական պարտուց կանանց։ Նոյնպէս և ընդդէմ հնագոյն վիրաց, եթէ եփեալ ջրովն

լուանալեացն ։ Լինի սա 'ի քարուտս և յառապար տե֊ղիս ։

Ասէլիանօ, կամ լաթթէի, իտ ։ կաթնուկից, կամ կանթնարան․ են անօթք ինչ մարդոյ, որք կոչին և քէլիֆէրթ ։

Աստաքօս մառինուս, լտ ։ լէքուստա, իտ ։ լը֊տաքօզ, տճ ։ Է աղգ ինչ ծովային խեցգետնոյ․ որոյ միս փափուկ է և համեղ, միանգամայն և օգտակար դեղ ընդդէմ թոքախտութե, չնչարգելութեան, և ցաւոց կրծոց, և 'ի մասնաւորի՝ վիրաց քաղցկեղի ։ Եւ 'ի գլխոյ նորա երբեմն ելանէ քար փոքրիկ, և կարծր, կոչեցեալ 'ի բարբարոս լատինացւոց՝ քէլաքան֊քրի, որ լինի դեղ ազդողական ընդդէմ փորհարութե, հոսման արեան, տկարութե ստամոքսոյ, և միզարգե֊լութե․ լուծանէ և դքար գոյացեալ յերիկամունս մարդոյ․ այլև քաղցրացուցանէ զսաստութիւն հիւթոց․ չափն 'ի 10 ցորենոյ մինչև ց30 ։

Աստաքօս սթուվիաթիլիս, լտ․ տես քամմա֊րուս ։

Աստէնիա․ տես տէբուլիթէ ։

Աստէր, կամ Թինթօրիուս ֆլօս բրիմուս, լտ ։ Է խոտ ինչ բազմատերևեան, երկայն իբր մի և կէս թզաչափ, ուղիղ, նուրբ, բոլորշի, կարծր, կարմիր, և փոքր մի թաւամազ ։ Տերև նորա է երկայնաձև, անհարթ, գոյն ինչ դառնահամ, միանգամայն համե֊մային ։ Ծաղիկն մեծ և շքեղ, լինի երանգաւ կա֊պոյտ, ոմանք մանուշակագոյն, և ոմանք սպիտակ․ յետ ծաղկանց արտադրէ սերմունս երկայնաձևս և շքեղս ։ Իսկ արմատն նուրբ, թելաւոր, դառնա֊համ և փոքր մի ջերմահամ ։ Սա լինի յանդործ, և յառապարին տեղիս․ առատ է իւղով և աղիւ․ օգտա֊ւէտագոյն է ընդդէմ խածուածոց կատաղի շանց և ուռնացուածութե, եթէ եփեալ ջրովն ողողեսցի ուռն ։

Աստէրիաս, կամ ասթրօիթէս, և կամ լաբիս սթէլլարիս, կամ օքուլուս քաթի, կամ սօլիս օքու֊լուս գաւիպուստամ, կամ միթրաքս, և կամ բաէուսօ֊բալուս, լտ ։ պէլլօքիօ, կամ օքքիօ տի կաթթօ, իտ ։ այնի հուր, տճ ։ ըստ մեզ՝ աստեղաքարն ։ Է ակն ինչ սպիտակ կամ մոխրագոյն․ որոյ քառեակ տեսակ են․ մի տեսակն է աստղաձև, սպիտակ, ծակոտկէն, և քաջ արտաւանեալ, զոր ակնագործք 'ի կիր առնուն 'ի զանազան գործս ։ Երկրորդ տեսակն է կարմրա֊

և արգելեալք 'ի բուն և 'ի սովորական ընթացից ։ արտաքս ելուզանեն 'ի բերանոյ զկարիս որովայնի ․ զորմէ և ունիս տեսանել հտ․ ա․ գլ․ լէ ։

Բավլաթէ, կամ աուպօռ էռխոիբէլուս քուաւնս, և կամ վասամիլլի, լտ ։ Է փոքրիկ ծառ ինչ հնդկային, որ ոչ բարձրանայ աւելի քան զութ կամ ինն ոտնաչափս, որոյ տերևն ըստ ձևոյն նման է տերևոյ նարնջոյ ։ Ծաղիկն մանրիկ, սպիտակ, և քառեակթերթեան՝ ըստ նմանութեն ծաղկան քաբռիֆօլիօ անուանեալ տնկոյ, և բերէ սերմն ստուար, բոլորշի, և մթին կանաչ ։ Իսկ արմատն սպիտակ, և փոքր մի դառնահամ ։ Աճնի յաճախ 'ի խոնաւուտ վայրս, որոյ եթէ արմատն, և եթէ բունն են դեղք շահաւէտ ընդդէմ ուխիբօլա անուանեալ հրատապ պալարի, զոր տաճիկք կոչեն՝ եըլանճըք, եթէ ջրովն լուացի պալարն այն ․ օգտակար են նաև ընդդէմ բորբոքման փորոտեաց, և լերդի ․ չափն 'ի 4 տրամէ մինչև 96 ընդ մի լիպրա ջրոյ ։

Բավլիօ ․ տես բաբիօ ։

Բավլուս ․ տես 'ի ներքոյ ։

Բավօ, կամ բավլուս, կամ ավիս մէտիքա, և կամ ավիս եռուեօնիա, լտ ։ բավօնէ, իտ ։ սուռռա խէպիւլ հասէն, կամ էպիւլվէշի, արբ ։ Թավուզ գուշու, տճ ։ և ըստ մեզ՝ սիրամարգ ։ Է Թռչուն ինչ սքանչելատեսիլ 'ի չափ հնդկահաւու ․ որոյ գլուխն փոքրիկ է և երկայնաձև, յորոյ վերայ զետեղեալ կան թագաձև կամ կնգղաձև կատարք գեղեցիկ ․ պարանոց նորա երկայն է և նուրբ ․ ձայնն սուր, և նեղիչ ․ փետուրքն երկայն յոյժ, և երփներանգ, և ունին 'ի միջի գիծս, և բիծս ծառաձևս ․ ձևոյն մթին մանուշակագոյն գեղեցկախայտուց, և պայծառատեսիլ, յորմէ կազմեն հովահարս շքեղս ․ սրունք նորա երկայններն, և ոտքն մեծ ․ գեղեցիկ ճեմէ, և 'ի ճեմելն նազելի տարուբերէ զգլուխն, և զտուտն ։ Իսկ միսն չոր և կարծր, որոյ եփոցն 'ի ջուր՝ դեղ է ազդու ընդդէմ կշտացաւութեան, և միզարգելութեան, և միանգամայն լուծանէ զքար գոյացեալ յերիկամունս մարդոյ ։ Ճարպ նորա օգնէ ընդդէմ խթից, օծանելով ևեթ զայնս ։ Կղկղանք նորա օգտաւէտ է ընդդէմ լուսնաժետութեան, և անդամալուծութեան, արգելու նաև ըզպտոյտս գլխոյ և զցնցումն մկանաց ․ չափն 'ի 20 ցորենոյ մինչև 960 ։ Իսկ զձու նորա 'ի գործ ածեն 'ի

դեղ խզուածոց, և չիամթիքա կոչեցեալ ախտի ։

Բաւօ բոաչիս, կմ բաւօ սալվիանի, լտ։ Է ձուկն ինչ ծովային լայն, և երկայն ոտնաչափ մի և կէս. ծանրութիւն նորա կշռէ երկու լիտրայ, և երբեմն աւելի ևս, ունելով 'ի վերայ նիշս և գիծս բազմերանգս ։ Գլուխ նորա հաստ է և կապտախառն կանաչ. ընչացքն երկայն, և սուսեր, չըթունքն լայն և թանձր, աչքն լայնաբաց, և ունչքն մեծ ։ Իսկ միսն ծանր և դժուարամարսելի, որ ոչ է բարի 'ի կերակուր. զի է լուծիչ բնութե ։

Բաւօնչէլլս. տես վանէլլուս ։

Բարալիզիա. տես բարալիսիս ։

Բարալիզիա լօքալէ, իտ։ տեղական անդամալուծութիւ ։

Բարալիսիս, լտ։ բարալիզիա, իտ։ տամլա, կամ գէօթրիւմլիւք, տճ։ ֆլխալաա`, կամ իսթիլխա, և կամ նօգտա, կամ ֆալիճ ; արբ։ և ըստ մեզ` անդամալուծութիւն, կամ անդամադօսութիւն, որ է ախտ ինչ և լուծումն անդամոց. որով ջիլք կամ մկանունք անդամոց քակեալ կամ թուլացեալ լքանին, որով ոչ կարէ ոք յոտն կալ ըստ կամաց իւրոց, և շարժիլ, և այլն ։ տես հտ. ա. երես ՃԻԱ ։

Բարէիրա պրավա, կամ պօթուա, լտ։ հինտ ասմասը ; տճ։ էնէպ հինտի, արբ։ և ըստ մեզ` որթ հնդկաց ։ Է արմատ 'ի ձև արմատոյ թէհիմնլէ անուանեալ տնկոյ, բայց կարծր և սեաւ քան զնա ։ Արձակէ բունս երկայնս, և ճիւղս բազումս` հանգոյն որթոյ ։ Այս արմատ յաճախ գտանի 'ի մեքսիքօն. բնութե է միզաբեր և թուլացուցիչ` զոր խառնեալ 'ի գինի սպիտակ, և տրորուցեալ, լինի դեղ օգտակար ընդդէմ միզարգելութե, երիկամանց ժեռութե, չնչարգելութե, դալկան ։ Չափն 'ի կէս տրամէ մինչ ցմի և կէս. այլև օգտէ ընդդէմ ցաւոց յօդուածոց առթելոց յուժգնութե ։

Բարթէնիում նօպիլէ. տես քհամէմէլում ։

Բարիէթարիա օֆֆ, կամ հէլքսինէ, կամ վիթրիօլա, կամ բէրտիչիում, կամ ուրչէօլարիս, և կամ հէրպա մուրալիս, լտ։ բարիթարիա, կամ բարիէթարիա, և կամ վէթրիուօլա, իտ։ բառիէթէռ ; գղղ։ էլքօ, յն։ եափըշկան օթու, տճ։ և ըստ մեզ` կաուբինչ ։ Է որմնաբոյս խոտ ինչ ոտնաչափ մի և կէս բարձրութե, որոյ ցօղունքն են բոլորշի, կարմրերանգ,

և դիւրաբեկ ։ Տերևքն են երկայնաձև , անհարթ , թաւիշաւոր , որք կռուեն 'ի հանդերձս անցաւորաց ։ Ծաղիկն մանրիկ , և կանաչախառն դեղջն , ունելով 'ի միջի առէջս քառեակ թուով ․ բերէ և սերմունս երկայնաձևս , և փայլունս ։ Սա գտանի ամենայն ուրեք ․ լի է աղիւ և իւղով , և բնութի̃ յոյժ միզաբեր և թուլացուցիչ ։ Չափն 'ի 4 տրամէ մինչև ց8 , և եփեալ ընդ մի լիտրա ջրոյ ։

Բարնասսիա , կամ կրամէն բառնասսի , կամ հէբաթիքա ալպա , լտ ։ Է խոտ ինչ փոքրիկ , որ ունէ զնմանութի̃ մանուշակի , բայց փոքր քան զայն ․ բուսանի 'ի մարգագետինս , և 'ի խոնաւուտ տեղիս , արձակելով յարմատոյ զբոլորշի , և զերկայնականթ տերևս , և 'ի միջի տերևոց ելանեն ցօղունք երկայնք , որք 'ի ծայրս բերեն սպիտակագոյն ծաղիկս հնգթերթեանս , և քաղցրահոտս ․ ունի և պտուղս թաղանթոյինս , յորում լի են սերմունք երկայնաձևք ։ Իսկ արմատն ստուար , սպիտակախառն կարմիր , թելաւոր , և տապահամ ։ Այս խոտ լի է իւղով , բայց նուազ աղիւ , և բնութեամբ սեղմիչ , և զովացուցիչ ։

Բարուլուս ․ տես 'ի Նեղքոյ ։

Բարոսս , կամ բարուլուս , կամ բարքէս , և կամ էճիթհալուս , լտ ։ Է թռչուն ինչ փոքրիկ ․ որոյ գոյն է կանաչ , լինի ևս դեղնագոյն , սպիտակ , սեաւ , և կապտագոյն ․ գլուխ նորա է սեաւ , և փայլուն , և 'ի տեղիս տեղիս նաև գորշագոյն ։ Սորա է տեսակ ինչ կոչեցեալ՝ քարպօնարիուս մինօր , կամ քանինուս , որ փոքր է քան զայն , գլուխ նորա է սեաւ , և սպիտականիշ , ոտքն և փորոտիքն կարմիր ։ Երկոքին սոքա առատ են իւղով , և թռչակքն աղիւք , օգտակարք են ընդդէմ անդամալուծութեան , և լուսնաժետութե̃ , և միանգամայն լուծանեն զքարինս , և պաւաղս միզարանի ։

Բարօնիքիա , կամ բօլիգօնում մինուս քանտիքանս , և կամ անիթհիլլիս նիվէա , լտ ։ օնիքա , յն ։ Է խոտ բուսեալ 'ի լերինս , և 'ի քարուտս իբր մի և կէս ոտնաչափ ․ Ճիւղք սորա են տարածողական , տերևքն ունին զձև տերևոց քօրրէճիուօլա անուանեալ խոտոյ , այլ սակաւ մի փոքր են քան զայն ։ Ծաղիկն փոքրիկ ․ ունելով 'ի միջի առէջս բազումս ։ Ունի և արմատ երկայն , ստուար յոյժ , փայտային ․ սպիտակ , և բնա_

թէ սերմիչ։

Բարօսիզմօ, կամ բարօսմիմօ, կամ աչչէնսօ տի Ֆէսպարէ։ Է կանոնաւոր ընթացք կամ փարձ անձնդի։

Բաքշէրաքա։ Է բոյս ինչ պրասինիոյ․ որոյ ցօղունն բարձրանայ յերկիրէ իբր եօթն ոտնաչափ․ և է ուղիղ, սպիտակային, և կանաչ։ Ծաղիկ նորա է կարմրակարմիր՝ ըստ նմանութեան ծաղկանց հնդկային եղեգան։ Յետ ծաղկանց առաջադրէ զպտուղն շլորաչափ մեծութեամբ, զորոյ խորտակեալ գտեղեաւ եղանեն 'ի միջոյ մանրաթելք՝ զորովք պատեալ կայ մածուցիկ հիւթ գինեհոտ և կարմրախառն գեղին․ յորմէ գեղարարք ներկեն զդեղս 'ի գոյն գեղեցիկ կարմիր․ և 'ի միջի ունի սերմունս եռանկիւնաձեւս, և գեղնագոյնս։ Իսկ արմատն թանձր, և թելաւոր։

Բէբէ․ տես բիբէր։

Բէբէ լունկօ․ տես բիբէր լոնկում։

Բէբէ նէրօ․ տես մելանօ բիբեր։

Բէբէ պիանքօ․ տես բիբէր ալպում։

Բէբէ տի էթիօբիա․ կամ կրանօ տի ծելիմ։ Է ազգ. ինչ բիբէր լոնկում յոլորոլորեալ պղպեղի, զորմէ ունիս տեսանել 'ի տեղի խորում։

Բէբլօս, կամ թիթհիմալուս աննուուս ֆօլիօ րօթունտօրէ աքումինաթօուս, լտ։ բէբլօ կամ էզուլա րօթօնտա, իտ։ Է բոյս ինչ կաթնաբուզի, յազգէ տիւթլեւէն անուանեալ անկոյ, որոյ ցօղունքն են յօդնաւթիւ։ Տերեւք սորա բոլորշի են և մթին կանաչ։ Ծաղիկն բազմահերձ, պտուղն փայլուն, և անկիւնաւոր, ունելով 'ի միջի սերմունս երկայնաձեւս։ Իսկ արմատն մանր և թելաւոր։ Ունի սա յանձինս յագարակս․ լի է իւղով, և աղիւ, այլ ըստ բնութեան և ըստ ներգործութեան նոյն է ընդ թիթհիմալուս անուանեալ անկոյ։

Բէբօ, կամ քուքուրպիթա ֆօլիիս ասպէրիս, կամ ծուքհա ֆլօրէ լութէօ, լտ։ ծաթթա, իտ։ Է տունկ յաճախեալ յեգիպտոս, որոյ ցօղունն է ճիւղալից, երկայն, և սուսեր իբր մատնաչափ։ Տերեւք նորա են մեծ, լայն, հերձոտ ըստ նմանութեան տերեւոց սեխի կամ թզոյ, որք և են կարծր, անհարթ, մթին կանաչ, փայլուն, գոյն ինչ փշոտ, երկայնականութ, և եղերք նորա ողոցաձեւ ատամնաւորեալք։ Ծաղիկն զանգակաձեւ, հերձոտ, քրքմագոյն, և երակալից, և

այս մանաւանդ 'ի միջին կողմանէ · զինի ծաղկանցն յաջորդէ պտուղն սեխաչափ մեծութբ · ձև նորա այլևայլ է · այսինքն երկայն , բոլորակ , և եռանկիւնի , կեղևն խորտուբորտ , միջի գոյացութիւն սպիտակ , ամնգային , և գոյզն ինչ քաղցրահամ , և բնութեամբ զովացուցիչ , և քաղցրացուցիչ արեան · զայս պտուղ կարծեմ 'ի բարբառ արաբացւոց կոչեն՝ Աբ֊ տէլլավզի : Իսկ սերմունք նորա որք լինին 'ի պտղի անդ՝ են տափարակաձև , լայն , և եռանկիւնի , և բնութբ բացողական , և միզաբեր :

Բեզուէզցիանօ , կամ չիմթէռնա բէզուէզցիանա : Է բառ անգամազննական , որով նշանակի մամռացրանն , որ է պարկ ինչ մաշկեղէն , և խորշկէն , ուրանօր պարունակի մամռացն :

Բէէթէն , լա : Է տեսակ մի ծովային տտրկէի , որ ունի զկարծրանիւթ , և զխորտուբորտ պատեանս՝ 'ի ձև ձեռաց մարդոյ , զոր բանայ և խփէ · այլ գոյն նորա այլ և այլ է · այսինքն սպիտակ , կարմիր , գորշ , և մսագոյն : Իսկ միջի գոյացութիւն է մարմին և փարատիչ քամւոյ , զի է առատ ցնդական աղիւ , և իւղով :

Բէթասիթէս , լա : Է տունկ ինչ · որոյ կրկին են տեսակք , այսինքն մեծ , և փոքր · մեծն կոչի լատինացաց՝ բէթասիթէս վուլկարիս կմ՝ թուսսիլակօ մաեօր , որ 'ի վեր երևի մի և կէս ոտնաչափ 'ի սկիզբն գարնան · ցօղուն նորա հաստ է և թաւամազուտ , և միջն ունայն , յորոյ վերայ շարայարեալ կան ստեղք մանունք , և խիտ : Ծաղիկն ելանէ 'ի գագաթան , և է մանրիկ , ծիրանագոյն , և հերձոտ , և 'ի ներքոյ նորա ընդ կանթն կոյս՝ է բաժակ գլանաձև , և հերձոտ , յորում են սերմունք : Իսկ տերևսն երկայն , թանձր , փոքր մի զատանահամ , տրամագծեալ սեաւ , իսկ 'ի ներքուստ սպիտակ : Բուսանի առ յաճախ յեզերս գետոց , և 'ի խոնաւուտ վայրս · լի է գոյացական աղիւ , և իւղով · որոյ արմատ լուծեալ 'ի փոշի՝ լինի դեղ ազդու ընդդէմ անհնակերպ ժահատաբեր հիւթոց մարմնոյ , զի է քրտնաբեր , և մեղմապէս լուծողական : Իսկ փոքրն կոչի՝ բէթասիթէս ալպ. · ցօղունն սորա է նոյնպէս միջն ունայն , փամ ունի , և լի աղուամազիւք : Տերևն սպիտակ , որպէս և ծաղիկն նորա : Իսկ արմատն երկայն , ստուար բթաչափ֊ օձապտոյտ , առատալից , թելաւոր , սպիտակ , և կար֊

մրակեղև. համով է գաւռն՝ միանգամայն և ջերմա-
համ, այլ ըստ զօրութեն նման առաջնոյն:

Բէթէքքիէ. տես բուսթուլա:

Բէթթիկնոնէ: Է բառ անգամազննաց, որով իմա-
նի երանք կամ առաջակողմն երանաց, և է միջին
մասն մարմնոյ՝ ընդ պորտն, և ընդ առականս. կո-
չի և բուպէ, ըստ տաճկաց գաւռք: Պարձեալ, ոսկր
երանաց, կամ առականաց:

Բէթում անկուսթիֆօլիում. տես նիքոցիա:

Բէթրոսէլինում, կամ ապիում բէթռոսէլինում.
կամ ապիում հօրթէնսէ կամ սէլինում, լա: բէթրո-
սէլլօ կամ բռէցցէմօլօ, կամ բէթրոսէմօլօ, կամ բէ-
թրոսիլլօ, և կամ բէթրոսէլլինօ, իտ: բէռսի, գղղ:
բէռսիմօլօ, յն: մաղդանոս, տճ: էյհէքան, կամ պա-
տանոս, կամ պակոտանոս, արբ: պուեսք, կմ պաթ-
ղու, պր: և ըստ մեզ՝ կարոսն, կամ քարոսն: Է գոյս
ինչ յայտնէ խաւարտից. որոյ ցօղունն առուար իբր
բթաչափ, երկայն երեք կամ չորս ոտնաչափ, ծուղա-
կեց, և մէջն գատարկ: Տերևք սորա ճղճկէն, եր-
կայնակամ, և մթին կանաչ. զոր առեալ 'ի գործ
ածեն 'ի համեմունս կերակրոց: Ծաղիկն հինգթեր-
թեան, և ճառագայթաձև, որք ելանեն 'ի ծայրս
ճիւղոց. յետ ծաղկանց թողու սերմունս մանուանս,
բոլորշիս, գորշագոյնս, և տապահամս: Իսկ արմատն
երկայն, առուար իբր բթաչափ, և ապխտակ, միանգա-
մայն և խթիչ բնութեամբ. որ 'ի վեր արկանի 'ի գեղ-
ջկոյս համեղերձ բազմագրութեամբ այլոց, որ է փարատիչ
թանչից, և միզարգելութեան. միանգամայն և զկնի
խորտակելոյ զքարինս միզարանի, եթէ միան ինչ
յաւելեալ 'ի նմին, հաշեալ արտաքսէ զայնս. յայն
սակս կարգի 'ի դասս հինգ բացողական և միզաբեր
արմատոց: Զնոյն գործունէութիւն ունի նաև սորա
սերմն, և տերևն:

Բէթրոսէլինում մաչէտօնիքում, կմ ապիում մա-
չէտօնիքում, լա: և ըստ մեզ սառուգարանի՝ կար-
ոսն մակեդոնիոյ. բոյս յաճախեալ 'ի մակեդոնիա.
որոյ ցօղունն աճէ ըստ բարձրութեն մերումս կարոս-
նի: Տերևք սորա առաւել լայն են, և առաւել
ճղճկէն: Իսկ սերմն կարի մանրիկ, և երկայնաձև,
միանգամայն և գեղ բացողական. որ բանայ զանցս
միզի, և լուծանէ զդաշտանս կանանց, և ևս ցրուէ
զփուքս, և մեղմէ զչարութեն թունից. որ 'ի վեր ար-

կանի են 'ի բաղադրութեն Թիւրակեսի ։

Բէթրօնէլլինում քանինում․ տես չքնութա ։

Բէթրօնէլլինօ կամ բէթրօնէլլօ․ տես 'ի վեր բէթրօնէլլինում ։

Բէլէչինուս, կամ սեքուրիտաղա ախլիգուխս բլանիս անթաթիս, և կամ պօլօբէնարիա լէկումինօզա, լտ ։ Է բոյս ինչ, որոյ ցօղունք են անկիւնաւոր, և բազմաճիւղք ։ Տերևք սորա նման են տերևոց վզնի ։ Ծաղիկն ընդայլին, փոքրիկ, կարմրերանգ, և եղջերաձև, որք փունջս փունջս արտադրին 'ի ծայրս բաժակի, և ունին գորշագոյն պտուղս տափարակաձևս, և շրջապատ նոցա է պղոցաձև ատամնաւորեալ․ և 'ի մէջի ունին սերմունս բազումս, մանունս, և սևս ։ Իսկ արմատն երկայն, և Թելաւոր ։ Սերմունք այսր բուսոյ են դեղք ազդու ընդդէմ միզարգելութեան, նուաղութեան ամսական պարտուց կանանց, խցմանց արգանդի, և ակարութեան ստամոքսի ։

Բէնթաբհիլլօիտէս, լտ․ որ ըստ մեզ ստուգաբանի՝ հինգատերևեան ։ Է բոյս ինչ բազմատեսակ․ յորս երևելի են երկու տեսակք․ մինն կոչի [illegible] նոցա՝ բէնթաբհիլլօիտէս էրէքթում, կմ գուինգուէֆօլիում ֆրաճիֆէռում, որոյ ցօղունն է երկայն իբր մի և կէս ոտնաչափ ։ Տերևք նորա հինգ հինգ բուսանին 'ի վերայ միոյ կոնթի, և են Թաւամազուս, և եղերահերձ նման ըստ իմիք տերևոց եղևնի ։ Ծաղիկքն հինգթերթեան են և սպիտակագոյն, որք 'ի վեր երևին 'ի գագաթան ։ Այսպ յաջորդէ պտուղն մանրիկ, և բոլորշի ։ Իսկ արմատն երկայն, ստուար յոյժ, փայտային, և կարմրերանգ, և ընդ Թէ ֆ սեղմիչ, որպէս և սերմունք նորա․ զոր եփեալ 'ի ջուր, և արբուցեալ՝ դեղ են փորհարութ, և հոսման արեան ։ Իսկ միւսն անուանի՝ բէնթաբհէլլօիտէս սուբինում, կամ գուինգուէֆօլիում ֆռաճիֆէռում ալբէնս․ ցօղունք սորա են դեղնագոյն, մանր, և վտիտ, որք խիտ առ խիտ սփռին զերեսօք գետնի ։ Տերևքն նման են տերևոց Ճերանուամ անուանեալ բուսոյ․ և եղերք նոցա հերձոտ և իբր ատամնաբերան ։ Իսկ արմատն ստուար իբրև զմատնոյն, որպէս և ներգործութիւնն նման է ներգործութեան նորա ։

Բէնօսպսօն, լտ ։ Է մշտադալար ծառ ինչ ամերիկեան․ որոյ կեղևն 'է ստուար, և հոտաւէտ ։ Տերև սորա նման է տերևոյ փրփրենի, բայց տևաւէլ

տակ, և 'ի տեղիս տեղիս նաև ծիրանագոյն ։ Պտուղն բոլորակ, կիսատափարականձև, ներքին գոյացութն նորա փակեալ կայ յերկու խորշս լի սևագոյն և տափարականձև սերմամբք ։ Իսկ արմատն ստուար բթաչափ, սպիտակ, բազմաթել և փոքր մի դառնահամ ։ Այս բոյս յաճախ 'ի վեր երևի 'ի ճախնային և 'ի խոնաւուտ տեղիս, լի աղիւ, այլ նուազ իւղով ։ օգտաւէտ է ընդդէմ հօսման արեան, և թանչից ։ և ըստ ոմանց նախնի հեղինակաց, ունի ևս զօրութիւն մաքրողական, և համարեալ է առ նոսա իբր դեղ ընդդէմ խղխայթի ։

Բէրա բասթօրիս ։ տես պուրսա բասթօրիս ։

Բէրքէբէքրազիմ ։ տես էբէքրաթիքամէնթէ ։

Բէրիբլօքա, կամ աբօչինում ֆօլիօ օպլօնկօ, լտ ։ Է բոյս ինչ կաթնաբուղխ, որոյ ցօղունն է կարմրեբանգ, փայտային, դիւրաթեք, երկայնաձիգ, և բարունակաւոր, որ ուր և բուսանի՝ պատատի շուրջ զիւրև եղեռովքն ։ Տերևք նորա են երկայնաձև, լայն, և երակալից, որք շարին 'ի վերայ բարունակաց հանդէպ միմեանց ։ Ծաղիկքն ելանեն 'ի ծայրս տոտոց, և են թաւիշաւոր, ստորաձև, և հերձոտ, գոյն նոցա 'ի վերին երեսս ծիրանագոյն, և փայլուն, իսկ 'ի ներքոյ կանաչախառն դեղին ։ իսկ մինչ զթերթսն ծաղկանց 'ի բաց թօթափեն, 'ի վեր երևի պտուղ ինչ բոլորակաձև՝ բաշխեալ և պատեալ երկոքումբ կապտագոյն պատենիւք ըստ նմանութեան պտղոց աբօչինօի, որ 'ի հասանիլն ինքնին բացեալ լինի ընդ մէջ, և յայնժամ երևի 'ի նմա հիւթ ինչ բրդոտ՝ յորոյ վերայ սփռեալ կան սերմունք ։ Իսկ արմատ սորա լինի օձապտոյտ, և թելաւոր, և ճապաղեալ տարածի զերեսօք երկրի ։ Այս բոյս սովորաբար բուսանի յանտառս, և 'ի հովանաւոր տեղիս ։ բնութ է վնասակար, և մահաբեր մանաւանդ շանց, գայլոց, աղուեսուց, և այլոց չորքոտանեաց, որք յուտելն սատակին ։

Բէրիբնէուժօնիա, լտ ։ բօլմօնիա, իտ ։ զաթուրիէ կամ վէճա իլ ճէմալ, կամ զաթլճէմալ, արբ ։ ագճիէր միւհրիւքանը, տճ ։ և ըստ մեզ՝ Թոքաժեռութն կամ Թոքախտութն ։ Է սաստիկ ջերմութիւն, կամ բորբոքումն թոքոց, որ տայ երբեմն թքանել և զարիւն ։ զորմէ տես ։ հտ ։ ա ։ երես 81 ։

Բէրինէօ ։ այսու անուամբ ըստ անդամազննաց նը

շանակի մասն մարմնոյ, որ ընդ որքանն, և Է անօ-
թոյս ։

Բէրիքարտի. անուամբս այսու Ը անդամաղննաց իմանի՝ մաշկն պարունակիչ սրտի կենդանեաց ։

Բէրիքըլիմենում, լտ ։ Է խոտ ինչ վայրի, որ թէ պէտ նոյնատեսակ է ընդ քարրիֆօլիում անուանեալ խոտոյ, բայց բնութբ, և ներգործութբ այլազան. որոյ եթէ՝ տերևքն, եթէ ծաղիկքն, և եթէ հատապտուղքն են բացողականք, մաքրողականք, և լուծողականք, որք կամ արտաքուստ եդեալ 'ի վերայ ցաւոտ ուռուցից, կամ կերեալ, և կամ եփեալ և զջուր նորա ըմպեալ՝ բժշկեն զհնագոյն վէրս մարմնոյ, զխնչարգելութն, և զմիզարգելութն. գրգռեն նաև զառողունս կրծոց, զքիրտն մարմնոյ, և զքարինս միզարանի ։

Բէրիօսթիօ. այսու անուամբ ըստ անդամաղննաց իմանի ոսկրամիզն, որ է նուրբ մզնիք պատեալ զոսկերօք ։

Բէրլա. տես մարկէրիթա ։

Բէրնիչէ. տես բէրոնիքս ։

Բէրչիբիէր, կամ բէրքիբիէր, կամ ալքիմիլլա մօնթանա մինիմա, կամ բօլիկօնում սէլինօիտէս, լտ ։ Է տունկ ինչ բոլորակաձև, վտիտ, և թաւիշաւոր, որ սովորաբար բուսանի յանտառս, և յագարակս իբր թզաչափ բարձրութբ ։ Տերևքն նորա բոլորակաձև են, և եռահերձ ըստ նմանութն տերևոց ձերանիում անուանեալ բուսոյ ։ Ծաղիկն ելանէ առ կանթիւ տերևոյն, և է փոքրիկ, և գեղեցկագոյն. բերէ և սերմն նման կորեկի, այլ փոքր քան զայն ։ Իսկ արմատն մանր, փայտայլին, մանրաթել, սև, և տապահամ ։ Այս տունկ լի է ցնդական աղիւ, և իւղով, և բնութբ բացողական. զի բանայ զանցս միզի և զդաշտանան կանանց, միանգամայն և հալէ զքարինս երիկամանց. օգտէ նաև ընդդէմ պզօպութօյ ։

Բէրսիքամիթս. տես բէրսիքարիա ։

Բէրսիքա սիլիգուա. տես նօլի մէ թանձէրէ ։

Բէրսիքարիա, լտ ։ Է բոյս ինչ բազմատեսակ. յորս երևելի են երկու տեսակք. առաջին տեսակն կոչի՝ բէրսիքարիա մաքուլաթա, որոյ ցօղունն է երկայն իբր մի և կէս ոտնաչափ, բոլորակ, կանաչագեղ, գոգաւոր, ողորկ, ծնրաւոր և ճիւղալից ։

Տերեւքն նորա են երկայն, ձուաձև, սրածայր, կապտագոյն, բծաւլից, և շուրջանակի սղոցաձև ատամնաւորեալք. և 'ի միջոյ տերևոց արձակեն հասկս երկայնականս, և կոնոնաձևս, որք 'ի ծայրս բերեն ծաղիկս սպիտակս, և 'ի տեղիս տեղիս նաև կարմրագոյնս, իւրաքանչիւր ծաղկանց ունելով զիւրեանց հնգեակ առէջս կնճռապատս, յորում լի են ձուաձև սերմունք սևաւք. իսկ արմատն թելաւոր: Այս բոյս յաճախ գտանի 'ի Ճամինայեն, և 'ի լճային տեղիս, նաև յեզերս գետոց. լի է հիւթով, այլ նուազ գոյացական աղիւ, և բնութ֊ սեղմիչ, և զովացուցիչ. օգտաւէտ է ընդդէմ փորհարութեան. և բորբոքման աչաց: Իսկ երկրորդ տեսակն կոչի՝ բէրսիքքարիա վուլկարիս ալքիս: Ցօղուն սորա ըստ իւրաց ինչ նման է վայրի գեղձենւոյ: Տերեւքն երկայն են և նեղ ըստ նմանութեան տերևոց Ջրապղպեղի, կծուահամ է և ջերմ բնութ֊. վասն որոյ ոչ թարշամի արագ, այլ տևէ մինչև ցաշուն: Իսկ արմատն մանր, փայտային, սպիտակ, և թելաւոր, այլ ըստ բնութեան և ըստ ներգործութեան նման առաջնոյն:

Բէրսիքքում, կամ բէրսիքքում մաւլում, լտ: բէրսիքքա, կամ բէյսքա, խտ: խօխ, կամ շահըռւա, կամ չէլլէք, կամ հաւխ, և կամ ֆիւլլէյգ, արբ: չէֆթալի, տճ: չէֆթէրէնկ, կամ բէնկինա, և կամ հըլու, պր: և ըստ մեզ՝ դեղձ: Է պտուղ ինչ մեծ 'ի չափ փոքրիկ խնձորոյ, բոլորշի, թաւմաւլից, և ախորժահամ. և գոյն նորա պէսպէս է. զի ոմանց է կանաչախառն սպիտակ, ոմանց դեղնագոյն, և ոմանց ծիրանագոյն. լի է հիւթով, և գոյացական աղիւ, և բնութեամբ զովացուցիչ. օգտէ ընդդէմ տկարութեան սրտի, և կըրծոց. բայց անչափապէս ուտելն առթէ զուառյց որովայնի. քանզի է քամիաւոր: Ունի և կորիզ կնճռալից, և կարծրապինդ, և 'ի միջի գոյացութիւն սպիտակ, պատեալ նուրբ մաշկաւ, որ է դառն, և ճճեհալած. զոր ճմլեալ մզեն անտի իւղ ինչ, և 'ի վար արկանեն 'ի դեղ ցաւոց ականջաց, և որովայնի:

Բէրսիկքում. տես բէրսիկքա:

Բէրսոնաթա. տես պատատանս:

Բէրվինքա, լտ: Է բոյս՝ որոյ երկու տեսակք են. մի տեսակն կոչի՝ բէրվինքա վուլկարիս անկուսթիֆօլիա. կամ վինքաբէռվինքա մինօր, որոյ ցօղունն է մանր, երկայն, բոլորակ, կանաչ, օձապտոյտ, և.

վաէտ, բուսեալ զերեսօք գետնի շուրջանակի սփռելով զքարուռնակս։ Տերեւքն նորա երկայն են 'ի ձեգաբնոյ, այլ 'ի գոյն բաղեղան։ Ծաղիկն հնգաթերթեան, եւ կապտագոյն, բայց զուրկ 'ի հոտոյ. յետ ծաղկանց յաջորդէ պտուղն փոքրիկ, բաշխեալ եւ պատեալ երկաքումբք պատեննիւք, ունելով 'ի միջի սերմանս երկայնաձեւս։ Խսկ արմատն թելաւոր, եւ փոքրիկ։ Իսկ միւս տեսակն կոչի՝ բէրվինքա վուլկարիս լաթիֆօլիա, կամ՝ քլէմաթիս, եւ կամ՝ վինքա բէավինքա մաեօր, որ ամենայն արպխումքն է նման վերնոյն, բայց միայն բարձրագոյն լինի քան զնա։ Երկոքին սոքա բուսանին յանտառս, եւ 'ի գիճային վայրս. լի են իւղովք, եւ գոյացական աղիւք, եւ ընութբ սեղմիչք եւ մաքրողական արեան։

Բէրտիքս, լտ։ բէրնիչէ, իտ։ բէտաոիքս, յն։ գէքլիք, ած։ հաճէլ, արբ։ եւ ըստ մեզ՝ կաքաւ։ Է թռչուն խայտափետուր 'ի չափ աղաւնոյ. այլ 'ի ձեւ լորամարգի, ունի զմիս փափուկ, եւ ախորժահամ։ Արիւն սորա լինի դեղ օգտաւէտ ընդդէմ վերաց աչաց, զի է մաքրիչ, եւ բուժիչ։

Բէրտիքս, լտ. տե՛ս ռուսթիքուլա։

Բէրքա, լտ։ բէրքիա իտ։ Է ձուկն ինչ քաղցր ջրոց, եւ ծովուց, որոյ երկայնութիւն չէ ինչ աւելի քան մի եւ կէս թիզաչափ, բերան նորա է փոքրիկ. որովայնն խայտախարիւ, թեփք մորթոյն մանր եւ կարծր, ունելով 'ի վերայ փուշս կարծրակուռս, եւ տայրատուրս, հարուածք նորա գժնդակ, եւ կարի վտանգաւոր։ 'Ի գլխոյ այսր ձկան եղանեն քարինք բաղում. զոր իբր դեղ 'ի վար արկանեն ընդդէմ սերմնակալութեան. չափն 'ի 20 ցորենոյ մինչեւ 940 խառն ընդ ջրոյ։ Եւ է դեղ գերագոյն ընդդէմ փտութեան ատամանց, եւ լնդերաց. յայն սակս ամէն չքեն նովաւ զախտացեալ մասն լնդերաց։

Բէրօնէօ. այսու անուամբ են անդամազննոց նշանակի ոլոք, որ է միոյն յերկոցունց ոսկերաց արտաքին սրունից, որ սկսեալ 'ի ծնգացն աւարտեալ եղերի 'ի կոճն։

Բէրֆօլիաթա, կմ՝ պուբլէուրում բէրֆօլիաթում բօթունարիֆօլիում, լտ։ Է բոյս բաղմոտեան՝ որոյ ցօղունն է երկայն իբր մի եւ կէս ոտնաչափ, բոլորակ դառնագոյն, կարծր, նիհար, եւ հոտաւէտ։ Տերեւք սորա են ձուաձեւ, կամ բոլորակաձեւ, ջլային, կա-

նաշախառն գեղլն, կամ երկնագոյն, և տապահամ։ Ծաղիկն ելանէ 'ի գագաթան և 'ի ծայրս ոստոց, կամ ստեղանց, և է հովանաձև, գեղնագոյն, և հինգթերթեան 'ի ձև վարդի, իւրաքանչիւր ծաղկանց ունելով գլուխեանց երրեակ սերմունս մանունս, և երկայնաձևս։ Իսկ արմատն ստուար իբր բթաչափ, յատակ, փայտային, և սպիտակ։ Այս բոյս բուսանի յագարակս, և յաւազուտս․ լի է իւղով, և ցնդական աղիւ, և զօրութիւ աղջու մաքրիչ, և սեղմիչ․ օգտաւէտ ընդդէմ փոշտանկութեան, հնագոյն վիրաց, և խղխայթի՝ այն է սրաճայ․ որ 'ի կիր արկանի անտարբեր եթէ արտաքուստ, և եթէ 'ի ներքուստ։

Բերֆօրաթա․ տե՛ս իբէրիքօ։

Բեօնիա կամ բաեօնիա, լտ։ շաքաւիկ, կամ շագայիգ, ած։ ըստ մեզ՝ բեօնի։ Է բոյս երկայն իբրև երեք ոտնաչափ, որոյ տերեքն են լայն, երկայն, ստուար, կապտախառն կանաչ, և փայլուն, որպէս և ճիւղք նորա։ Ծաղիկ նորա է մեծ, լայնաբաց, և բազմաթերթ իբրև զվարդ, բայց զուրկ 'ի հոտոյ․ իսկ գոյնն հասարակօրէն կարմրատեսիլ է, ունի և փոքրանման կատարս․ զկնի ծաղկանց յաջորդէ պտուղն գնտակաձև, թաւիշաւոր, փայլուն, մթին սպիտակ․ բերէ և սերմունս սեաւս, և բոլորակաձևս։ Իսկ արմատն ստուար, բոլորակաձև, թելաւոր և կարմրերանգ։ Սա բուսանի 'ի բուրաստանս, յանտառս, և 'ի դաշտավայրս․ լի է իւղով, և գոյացական աղիւ․ որոյ եթէ ծաղիկն, եթէ սերմն, և եթէ արմատն են դեղք օգտակար ընդդէմ անդամալուծութեան, և վերնատութեան։ Զափն 'ի 20 ցորենոյ մինչև ց30։

Բթարմիքա, կամ տրաքօ սիլվէստրիս, և կէ՛ տրաքունկուլուս բռաթէնսիս սէռռաթօֆօլիօ, լտ։ Է բոյս, որոյ ցօղունն սովորաբար բարձրանայ յերկրէ մի և կէս ոտնաչափ, և 'ի տեղիս տեղիս նաև չորս ոտնաչափ, և է բոլորշի, վախտ, կարծր, և խայթիչ։ Տերևք սորա են երկայն ըստ նմանութեան տերևոց նուռիճի, և են անհարթ, սրածայր, մթին կանաչ, շուշողուն, և շուրջանակի սղոցաձև ատամնաւորեալք։ Ծաղիկն սպիտակ, և ճառագայթաձև իբրև զմիլէֆօլիում, բայց մեծ քան զայն։ Իսկ արմատն երկայն, և թելաւոր։ Այս բոյս յաճախ 'ի վեր երևի յագարակս, և 'ի հովանաւոր տեղիս, նաև 'ի լերինս․ լի է իւղով, և գոյացական աղիւ, և բնու-

Թէ աղդու, և դրդուիչ, զոր լուեալ 'ի փոշի նրբա-
գոյն և քարշեալ ընդ ռնգունս, փռնչեցուցանէ սաստ-
կապէս. ուստի և մաքրէ զաղտեղութիս տողունից, և
ապաքինէ զցաւս գլխոյ. օգտակար է նաև ընդդէմ
ցաւոց ատամանց, եթէ եփեալ ջրամբ ողողեսցի բե-
րանն։

Բթերիկօխոէօ. այսու անուամբ ըստ անդամազննաց
նշանակի մկան ինչ գլխոյ.

Բթերիկօ ֆարինձէօ. անուամբս այսու ըստ անդա-
մազննաց իմանի մակադրական երկուց մկանանց
հագագին։

Բթիալքիմօ, լա: ըստ մեզ՝ բազմաթքութի, որ է
ախտ ինչ առատութե թքոյ, և լորձունաց։

Բիա մաոաէ: Անուամբս ըստ անդամազննաց նշա-
նակի գործամայր, որ է ներքին մզնիք ուղղոյն։

Բիանթաձձինէ. տես բլանթակօ մաեօր։

Բիանթէ ամառէ. տես սեէչի ամառա։

Բիանթէ ամմօլիէնթի, իտ: իւմիւշատըձը օթլար,
տձ: Անուն ընդհանուր նշանակիչ ամենակերպ կակղա-
ցուցիչ և գործունեայ բուսոց, և ծաղկանց. որք
անօսրեն զթանձրամածութի տողունից, և կակղա-
ցուցանեն զպնդութի որովայնի և կրծոց, որպէս են
մալվա, ալթէա, մերքուռիալիս, բառիէթալիս, և
վիօլա, ևն։

Բիբէր, լա: բէբէ. կմ բէվէռէ, իտ: բուավռ, գղղ:
բիբէռէ, յն: պիպէռ, տձ: ֆիլ ֆիլ, արբ: դէօբէր,
կամ նակշթ, և կամ բիլբիլ, պր: և ըստ մեզ՝ պղպ-
պեղ: Է հաստատպտուղ ինչ բազմամեայ, յորս երևելի
են երկու տեսակք. մինն կոչի 'ի բարբառ լատինաց-
ւոց՝ մելանօ բիբէռ. զոր իտալք անուանեն բէբէ
նէռօ, և արաբք ֆիլ ֆիլ էսվէթ. և տաճիկք սիահ
պիպէռ, իսկ ըստ մեզ սեաւ պղպեղ. որոյ գոյն 'ի
սկզբանն է կանաչագոյն, և ապա առ սակաւ սակաւ
սեանայ, և կնճռանայ. իսկ համ նորա սուր միանգա-
մայն և խայթօղ, որ և զլեզու ծաշակողին կիզէ իբրև
զկոճապղպեղ. զոր 'ի վար արկանեն 'ի կերակուրս,
նաև 'ի դեղորայս, որ է ցրուիչ փքոց, արծարծիչ
ազդեցութե ստամոքսային, և փորային հիւթոց,
աճեցուցիչ ախորժակաց, զօրացուցիչ ջղաց ստա-
մոքսի, և ընդերական խողովակաց, փարատիչ տխ-
բէբսխա անուանեալ ախտի հեծկլտանաց, և անդա-
մալուծութեան. այլև օգտէ 'ի դիպուածս ջղային

դժուարամարսութեն, զի է խթիչ բնութք․ յորմէ պարտ է առնուլ 12 կամ 13 հատ 'ի գնալն յանկողին․ զկիրառութիւն սորա տեսցես և հտ․ ա․ 'ի կարգս գեղորէից ։ Տունկ նորա յաճախեալ է յաշխարհն հնդկաց, և ամերիկոյ, ստուար, բարունակալից, և պատատողական ։ Տերևք նորա մեծ են և լայն, և երակալից ։ Իսկ պտուղքն, (որք այն ինքն են պղպեղք ) բոլորշէք, անկիւնաւորք․ խիտ առ խիտ զետեղեալք յողկոյզ իւրեանց, կախեին զբարունակաց տնկոյն ։ Իսկ միւսն կոչի՝ բիբեր ալպում․ այսինքն պղպեղ սպիտակ, որ է նոյնպէս հատապտուղ բոլորշի մեծութք 'ի չափ գնձոյ, գորշագոյն, և հոտաւէտ, համ նորա նման է սեաւ պղպեղի, որպէս և ներգործութիւն նման է ներգործութեն նորա ։ Այլ բաց 'ի սոցանէ է և այլ իմն տեսակ մեխակահոտ պղպեղի, որ կոչի 'ի բարբառ լատինացւոց բիբեր կարիօբհիլաթում, որոյ տունկն, հատապտուղն, և բոլոր որպիսութիւնքն են նման սեաւ պղպեղի․ բայց միայն հոտով տարբերի 'ի նմանէ ։

Բիբեր լօնկում, կամ մաքրօբիբեր, լտ ։ բէբէ լօնկօ, իտ ։ տառը Ֆիլֆիլ, տճ ։ օրկտահապ չիփթրի, արբ ։ Է պտուղ ինչ խակ, դիւրաբեկ, երկայն, և ստուար իբր զմատն մանկան, բուսեալ գլանաձև, և բաղկացեալ խորշս խորշս․ յորոց յիւրաքանչիւրսն պարունակի մանանեխաչափ հատ կարծր, և մթին կարմիր․ համ նորա տաքպ է միանգամայն և խայթօղ, որ և զլեզու ծակոտելն կիզէ իբրև զբուն պղպեղ ։ Սա վասն բուռն և խթողական զօրութեն իւրոյ մեղմէ զչարութին թունից, արծարծէ զզօրութին ստամոքսի, և ջլաց․ առատացուցանէ զաւիշն, ցրուէ զփուքս և փարատէ զխիթս ստորին որովայնի ։ Տունկ սորա յաճախեալ 'ի պանկալա յարևելեան հնդիկս, մեծութք և ձևով գրեթէ ոչինչ ընդհատ 'ի պղպեղաբեր տնկոյ․ բայց տերևովք այլազան ։ Սորա է տեսակ ինչ կոչեցեալ 'ի բարբառ իտալացւոց՝ բէբէ տի էթիօբիա, կամ կրանօ տի ծէլիմ, որ լինի երկայն իբրև 'ի չափ ոտին մարդոյ, ջղալից, թխագոյն, և սրահամ, միանգամայն և օգտակար դեղ ընդդէմ ցաւոց ատամանց ։ Ծառ սորա լինի փոքր, բայց ստուալից, և լայնատերև ։

Բիբեր կարիօբհիլաթում․ տես բիբեր ։

Բիէ, կամ բէա, լտ ։ բիէտէ, իտ ։ բօտի, յն․

բուսկը, արբ: բայ, պր: Եւ ըստ մեզ՝ ամն, որ է երեւելի մասն մարմնոյ. բաժանի 'ի բազկս, 'ի սրունս, և 'ի թաթս. ոսկր բազկից է միմեանց կցեալ յերանաց մինչև 'ի ծունկս:

Բիէթրա. տես լաբիս:

Բիէթրա ինֆէռնալէ. տես լաբիս ինֆէռնալիս:

Բիէթրա տի ագուիլա. տես լաբիս աէթիթիս:

Բիէթրօլիօում, կամ Լաբիսօլէում, լտ: բիէթրօլիօ, իտ: Թաշեաղը, տճ: Ժայռի հաձաւ, արբ: և ըստ մեզ՝ իւղ քարի: Է հեղեղուկ ինչ զօրէն կպրաձիւթոյ, զոր ածեն յԻտալիայէ, և 'ի Լինկուատօքաէ. դաւանի նաև յեզերս գետոց սիկիլիոյ, և 'ի կարմիր ծովու: Ազնիւ և ընտիր համարի սպիտակն. յայնտակս հարկ է 'ի կիր առնուլ զայն, որ է դեղ օգտակար ընդդէմ թունից, և տկարութեն ջլաց. միանգամայն և սաստկէ զորդունս և զճճիս որովայնի, և կակղէ զկուրծս, զոր 'ի վար արկանեմք առանձին մինչև ցչորս չիթս խառն ընդ շաքարի. այլև շահաւէտ է 'ի գլխացուածս ցաւոց ոսկերաց, և ջլաց, եթէ ջերմացուցեալ օծցի նովաւ ախտացեալ մասն մարմնոյ: Ասացաք 'ի վերադոյնդ, եթէ հեղեղուկս այս գտանի յեզերս գետոց սիկիլիոյ և կարմիր ծովու. բայց ոչ ընդ գետն կամ ընդ ծովն բոլոր, այլ միայն 'ի տեղիս յորս ջուրքն իբր լճացեալ կան անշարժ:

Բիէթրօլիօ. տես 'ի վերոյ:

Բիթթիմա. տես էբիթէմա:

Բիթուիթարիա. անուամբս ըստ անդամազննաց իմանի մազաստական խոռոչ ուղղոյն:

Բիլա մարինա, կամ սբհէրա մարինա, և կամ կլօպուս մարինուս, լտ: Է գնտակակերպ նիւթ ինչ ծովային, ստուար 'ի չափ բռան մարդոյ, նսեմագոյն, և թղուամազուտ, զոր չորացուցեալ 'ի վար արկանեն 'ի դեղորայս, որ է սատակիչ ճճեաց, և պահպանիչ հերաց:

Բիլլօլէ, իտ: բիլուլա, լտ: Անուամբս այսու իմանի՝ ամենատեսակ բոլորակ դեղահատ, կամ հապ զոր զանդեալ 'ի բազմատեսակ նիւթոց և հեղանիւթոց՝ 'ի վար արկանեմք թուով:

Բիլլօլէ անթիէբիլէթթիքէ ինկլէզի, իտ: սաւայ կամ թութարըքլարը քարչը հապլար, տճ: Է հատադեղ ինչ օգտակար ընդդէմ վերնոտութեն, կամ լուսնոտութեն. որ զայս օրինակ կազմի: Ա՛ռ մի

կշիռ ցորեան՝ նիթրաթօ տ՛ արճէնթօ, և մի տրամ մեղր հացին. զորս զանգեալ ընդ իւ՞արս արա 20 հատադեղս, յորմէ առցին մէն մի ընդ առաւօտն, և մէն մի ընդ երեկս:

Բիլլօլէ անթիիսթերիքէ տի պուքան, իտ: Է հատադեղ լինչ օգտաւէտ ընդդէմ արգանդացաւութե. զոր օրէն է պատրաստել, և 'ի վար արկանել ըստ յետագայ եղանակի: Ա՛ռ չորս տրամ կալպանօ, և նոյնչափ՝ ասաֆէթիտա, այլև չորս տրամ էսթրաթթօ տի անճելիքա. ա՛ռ և մի տրամ՝ քասթօրօ փոշիացուցեալ, և նոյնքան ծաֆֆրանօ. և ս կէս տրամ՝ օբբիօ. ա՛ռ և էսսէնցա տի քասթօրօ՝ որչափ պէտք են վասն շինելոյ զհատադեղ. որք մէն մի կշռիցեն երկու ցորեան, զոր շրջապատեալ փոշւոյն կինամոնի, տացես հիւանդին հինգ, կամ ութ հատ երկիցս յաւուրն:

Բիլլօլէ անթիոբալզամոնիքէ տի բիւտէռ, իտ: Համալէէ քարշը հապլար, տճ: Հատադեղս այս շահաւէտ է ընդդէմ ախտից ջղաց, և բանի շարժմանց մկանաց. որ զայս օրինակ կազմի: Ա՛ռ մի տրամ՝ ասաֆէթիտա, և նոյնքան՝ քասթօռօ, կէս տրամ՝ աչիտօ սուչչինիքօ քօնքրէթօ. և 20 շիթ օլիօ անիսօլէ տի տիբբէլ. և յաւել այնչափ թինթուրա տի միրրէ, որչափ պէտք իցեն առ կազմելոյ ըստ կանոնաց արուեստին. զզանգուածս զայս արարեալ հատիկս՝ որ կշռիցէ հինգ ցորեան, տացին չորս կամ հինգ և կամ վեց հատք յաւուրն:

Բիլլօլէ անթի սիֆիլիթիքէ տ՛ ալիպէրթ, իտ: Ֆուէնկիէ քարշը հապլար, տճ: Հատադեղս այս օգտակար է ընդդէմ ախտի գաղղիականի, որ այսպէս բաղադրի: Ա՛ռ երկու ունկի՝ մուրիաթօ տի մէրքուրիօ, և նոյնքան՝ բէզլինա տի կուաեաքօ, և չորս ունկի՝ ալթէա փոշիացուցեալ. և յաւել այնչափ՝ սիրօբբօ տի քօթօնեա՝ որչափ պէտք իցեն առ կազմելոյ զզանգուածս զայս, յօրինեալ հատ՝ որ կշռիցէ չորս ցորեան. և այսպիսի հատադեղք շրջապատեալ փոշւոյն որ կոչի՝ լիգուիրիցիա, տացին հինգ կամ վեց հատք յաւուրն:

Բիլլօլէ բուրկաթիվէ տի հալէն, իտ: Քէսկին շէրպէթ հապլարը, տճ: Հատադեղս այս է սաստիկ լուծողական, և շահաւէտ 'ի գիպուածս ջրգողութե. որ այսպէս բաղադրի: Ա՛ռ մի ունկի՝ էսթրաթ-

թօ քամթթօլիքօ, և չորս ունկի՝ բեզինա տի շիարաքքա, և նոյնչափ՝ սքամմօնիա. յաւէլ և ալքօօլ՝ որչափ ինչ պէտք են վասն կազմելոյ զհաստագեղս, որք մէն մի կշռիցեն չորս ցորեան. տացին չորս կամ հինգ հատիկ 'ի պահ առաւօտու:

Բիլլօլէ ինչիսիվէ բէթթօուալի տի պուրգհան: Է տեսակ ինչ հաստագեղոյ օգտաւէտ ընդդէմ ախտից թոքոց, և կրծոց. զոր պարտ է յօրինել, և 'ի վար արկանել ըստ եղանակին զոր գրեցաք հատ. ա. 'ի ճառն թիզիքայի. երես 179:

Բիլլօլէ ինչիսիվէ ակլ աօթթօրէ լէգօուքս: Հատագեղս այս նոյնպէս օգտաւէտ է ընդդէմ ախտից թոքոց, և կրծոց, մանաւանդ առթելոց 'ի հարբխոյ իջելոյ 'ի կուրծս. որ այսպէս յօրինի: Առ մի տրամ՝ շիլլա փոշիացուցեալ, և վեց կշիռ ցորեան՝ էսթրաթթօ տի օբբիօ, այլև ութ կշիռ ցորեան՝ քերմէզ միներալէ. առ և պութիրօ տի քաքքաօ՝ որչափ պէտք են սակս յօրինելոյ զհաստագեղս. որոց բոլորն լիցին 36 հատիկ. տացես ախտակրին երեք կամ չորս յաւուրն:

Բիլլօլէ ինչիսիվէ տի քատէթ: Հաստագեղս այս օգտաւէտ և կարի շահաւէտ է 'ի դիպուածս յօգուածացաւութեան, հազից, հարբխոյ իջելոյ 'ի կուրծս, և շնչարգելութեան. որ այսպէս բաղադրի: Ընկալ երկու տրամ՝ իբէքաքուանա. չորս տրամ՝ շիլլա փոշիացուցեալ. և 15 կշիռ ցորեան՝ էսթրաթթօ տ' օբբիօ. այլև ունկի մի՝ պուրրօ տի քաքքաօ. առ և սիրօբբօ տի կօմմա՝ որչափ ինչ պէտք են սակս շինելոյ զհաստագեղս. որք մէն մի կշռիցեն երեք կամ չորս ցորեան. տացես հիւանդին երկու ընդ առաւօտն, և երկու ընդ երեկս:

Բիլլօլէ մարցիալի տի սիմօնհամ: Հաստագեղս այս գերագոյն՝ դեղ է ընդդէմ ջղային դժուարամարսութեան, և ամենակերպ տկարութեան ջլաց, ստամոքսի, և սորին որովայնի. օգտաւէտ է նաև 'ի դիպուածս ախտի ախոնդանաց, և արգանդի, և երկարատև խօթութեց. որ զայս օրինակ կազմի: Առ երկու ունկի՝ ամենանուրբ խարտած երկաթոյ. և յաւել այնչափ՝ էսթրաթթօ տի ասսէնցիօ՝ որչափ պէտք իցեն առ յօրինելոյ ըստ կանոնաց արհեստին զգանգուածս զայս, արարեալ հապ՝ որ կշռէ երեք կամ չորս ցորեան. և այսպիսի հապք շրջապատեալ փոշւովն կի-

նամոնի , տացին վեց կամ եօթն հատք երկու անգամ յաւուրն :

Բիլլօլէ մերքուրիաթէ տի բլէնք : բլէնք հապլարը , տճ : Հաստատեալս այս օգտաւէտ է 'ի դիպուածս ախտի գաղղիականի , և ելեփանդականի . զի է մաքրիչ արեան , և սրբիչ լորձանաց . որ զայս օրինակ կազմի : Առ տրամ մի մաքուր սնդիկ . և վեց տրամ՝ մուչիլաձձինէ տի կօմմա արապիքա . և զերկոսեանն 'ի միասին հարեալ տրորեա՛ 'ի մէջ մարմարեայ անկանի՝ մինչև անհետ լինիցի գնտակն սնդկի 'ի գլխովին . ապա յաւել 'ի վերայ մի տրամ՝ էսթրաթթօ տի չիքութա . կազմեալ հապք՝ որ կշռիցեն երկու ցորեան , տացին չորս կամ վեց հատք յաւուրն :

Բիլլօլէ մերքուրիաթէ տէլ պլուսկնաթելլի : Հաստատեալս այս նոյնպէս օգտակար է ընդդէմ գաղղիական և ելեփանդական ախտի . որ այս օրինակ կազմի : Առ մերքուրիօ տուրլիֆիքաթօ . և քօնսէրվա տի րօզէ , յիւրաքանչիւրոցն մի ունկի , և զայսոսիկ հարեալ տրորեա՛ 'ի միասին 'ի մարմարեայ անկանի այնքան , մինչև անհետ լիցին գնտակքն սնդկի գլխովին . և յետ այնորիկ յաւել 'ի նա երկու ունկի՝ ամիտօ . առ և մուչիլլաձձինէ տի կօմմա արապիքա՝ որչափ ինչ պէտք են վասն լինելոյ զ480 հատիկս . տացես հիւանդին չորս կամ 5 հատ , երկիցս յաւուրն :

Բիլլօլէ տի մերքուրիօ սուպլիմաթօ քօրրօզիվօ = սիւլիւմէնլի հապլար , տճ : Հաստատեալս այս յոյժ հռչակաւոր է յեւրոպիա առ 'ի փարատել զանյուսալի ախտն գաղղիական , և ելեփանդական . և միանգամայն տապաքինէ զցաւս յօդուածոց , զխոյլս , և զքորոտութիւս . զորոյ զկազմելոյ կերպն տեսցես 'ի ճառն ախտի գաղղիականի , հա . ա . երես . 387 :

Բիլլօլէ սբլէնիթիքէ : Հաստատեալս այս շահաւէտագոյն է 'ի դիպուածս ախտի ախոնդանաց , և նուազութեան ամսական պարտուց կանանց , որ զայս օրինակ կազմի : Առ մի և կէս ունկի՝ կօմմա ամմօնիաքա . և նոյնքան՝ էսթրաթթօ տի ալօէ . երկու տրամ՝ միրրա , և նոյնչափ՝ փոշիացուցեալ արմատն պրիօնիա . զորս զանդեալ ընդ իրեարս արա՛ հապ՝ որք մէն մի կշռիցեն չորս ցորեան . տացես հիւանդին չորս կամ վեց հատ յաւուրն :

Բիլլօլէ սթէնիքէ տի պրօվն : Հաստատեալս այս օգտաւէտագոյն է 'ի դիպուածս թոքային նուրբ ախ_

տի ; Ջղգողութեն , և ցաւոց Ջղաց . որ այսպէս բա-ղադրի ։ Առ 15 կշիռ ցորեան՝ քէրմէզ մինէրալէ . և տասն կշիռ ցորեան օքսիտ բուրօ . և նոյնքան՝ մուր-րիատօ տոլչէ տի մէրքուրիօ . այլ և պալսամօ տէլ բերու՝ որչափ պէտք իցեն վասն շինելոյ զհապս . եր-կու առցին ընդ առաւօտս , և այլ երկու ընդ երեկս ։

Բիլլօլէ սթօմաքիքէ տի սմիթհ ։ Հատուածերս այս յոյժ շահաւէտ է ընդդէմ թուլութեն և տկարութեն ստամոքսի , և սորին որովայնի . և միանգամայն օգտակար է 'ի գիպուածս տիսբէբսիաի . այսինքն ջղային դժուարամարսութեն . որ այսպէս յօրինի ։ Առ մի տրամ՝ րէզինա տի ալօէ սուքքօթրինօ . և նոյնքան՝ կօմմա սակապէնա . այլ և մի տրամ՝ փո-շիացուցեալ խաշնդեղն . և նոյնաքանակ՝ տիարտօմա-թօն փոշի արարեալ . առ և տասն շիթ՝ օլիօ էսսէն-ցիալէ տի մէնթա . և նոյնչափ՝ օլիօ տի կարօֆանօ . և յաւէլ 'ի վերայ պալսամօ տէլ բէրու լիգուիտօ՝ որչափ պէտք են վասն յօրինելոյ զհապս , որք մէն մի կշռիցեն չորս ցորեան . և տուր հիւանդին երեք կամ հինգ հատ՝ յերեկոյեան պահու յերթալն 'ի մահիճս ։

Բիլլօլէ սուտօրիֆէրէ քալմանթի տի տուվէրիլ ։ Հատուածերս այս յոյժ օգտակար է ընդդէմ բռնի շարժման մկանաց , և ջղական հազից հնացելոց , զի է խաղաղիչ և դրդուիչ քրտանց . որ այսպէս բաղադ-րի ։ Առ երկու տրամ՝ էսթրաթթօ տի ձիւսքուա-դուխամօ . և 12 կշիռ ցորեան՝ օփփիօ . այլ և 22 կշիռ ցորեան՝ սոլֆօռաթօ անթիմոնիաթօ . և նոյնաքանակ՝ խարօ սոլֆօրաթօ րօսսօ ։ Կազմեալ սոսա 72 հատիկս , երկու առցին ընդ առաւօտս , և այլ երկու ընդ երեկս ։

Բիլլօլէ տի աքօնիթօ մէրքուրիալի տէլ սթօթթօր տուուալէ ։ Հատուածերս այս յոյժ օգտակար է ընդ-դէմ ոսքիւնի , ախտի գաղղիականի հնացելոյ , խցա-նաց աւշկի , խոլխեցգետոյ , և խոցից . այսինքն սը-ռաձաի . որ զայս օրինակ կազմի ։ Առ քսան և եր-կու կշիռ ցորեան՝ էսթրաթթօ տի աքօնիթօ նափէլ-լօ . և երկու կշիռ ցորեան՝ սուպլիմաթօ քօրրօզիվօ . և զերկուսեան 'ի միասին հարեալ տրորեա բարւոք 'ի մէջ ապակեայ կամ մարմարեայ անկանի ։ Կազմեալ սոսա քսան հատիկս , մէն մի առցին ընդ առաւօտս , և մէն մի ընդ երեկս . միայն թէ կրկնելի է այդ օրի-նակ մինչև 'ի տասն օր , և զկնի տասն աւուրց պարտ է յաւելուլ մի հատ և եթ ։

Բիլլօլէ տի կրէտինկ քօնթռա՛ լ՚ իթթէրիցիա։ Հաստատեալս այս յոյժ օգտակար է ընդդէմ դալկան, և խցանեաց լերդի. որ այսպէս կազմի։ Ա՛ռ քսան և չորս կշիռ ցորեան՝ էսթրաթթօ տի պէլլատօննա, ա՛ռ և 15 ցորեան՝ բօլվէրէ տի ֆօլիէ տի պէլլատօննա. (որ է փոշի նոյն տնկոյ տերևոյն.) զորս զանգեալ ընդ իրեարս արմ հալալ, զիւրաքանչիւր հատն ՚ի չափու մի և կէս կշիռ ցորենոյ. յորմէ տուր կլանել երկու հատ յաւուրն. այսինքն մէն մի ընդ առաւօտս, և մէն մի ընդ երեկս։

Բիլլօլէ տի չինօկլօսսօ։ Հաստատեալս այս յոյժ շահաւէտ է ընդդէմ հազից, ցաւոց որովայնի, փորհարութեան. զի է քաղցրացուցիչ, սեղմիչ, և խաղաղացուցիչ. զոր ստէպ և աներկեան ՚ի վար արկանեմք ուր ստիպէ հարկն, որ այսպէս յօրինի։ Ա՛ռ վեց տրամ՝ միրրա էլլէթթա, և հինգ տրամ՝ օլիպանօ. կէս ունկի՝ օբբիօ, և նոյնաքանակ՝ հիօշիամօ փոշի տրորեալ. մի և կէս տրամ՝ ծաֆֆարանօ. և չորս տրամ՝ փոշիացուցեալ արմատն չինօկլօսսօյի. ա՛ռ և հիւթն նոյն չինօկլօսսօյի՝ որչափ ինչ պէտք են վասն շինելոյ զհատս. որք մէն մի կշռիցեն հինգ, կամ վեց ցորեան. և տուր ախտաւորին երկու կամ երեք հատ ՚ի պահ երեկոյեան յերթալն յանկողին։

Բիլլօլէ քօնթրօ լ՚ ազմա։ Հաստատեալս այս օգտակար է ընդդէմ խռնաւ շնչարգելութեան, ցաւոց կրծոց, և նորոգ ՚ի վեր եբեալ խոզից (այսինքն սուաճայից.) որ զայս օրինակ կազմի։ Ա՛ռ կէս ունկի՝ փոշին կիզեալ սպնգոյ. և երկու տրամ՝ էսթրաթթօ տի ֆումարիա. և նոյնաքանակ՝ կօմմա ամմօնիաքա. մի տրամ՝ սոլֆուրօ տի անթիմօնիօ. և երկու տրամ՝ ֆիօր տի սոլֆօ. զորս զանգեալ ընդ իրեարս արմ հալալ, զիւրաքանչիւր հատիկն ՚ի չափու երեք կշիռ ցորենոյ. յորմէ տուր կլանել վեց հատ երեք անգամ յաւուրն։

Բիլլօլէ քօնթրօ լ՚ էբիլէսսիա։ Հաստատեալս այս շահաւէտ է ՚ի գիպուածս անդամալուծութեան, լուսնոտութեան, և արգանդացաւոց, որ այս կերպ յօրինի։ Ա՛ռ վեց տրամ՝ փոշի վալէրիանա արմատոյն. մի և կէս տրամ՝ կալբանօ. և նոյնաքանակ՝ սակարէնօ. մի տրամ՝ ասսաֆէթիտա. զորս զանգեալ ընդ իրեարս արմ հալալ, որք մէն մի կշռիցեն երեք ցորեան. և տացես երկու կամ չորս հատ յաւուրն։

Բիլլօլէ քօնթրօ ալթօնիա, կամ բիլլօլէ թօնիքէ. Հաստատեալ այս կարի զօրաւոր է 'ի դիպուածս տկարութեան ստամոքսի, և դժուարամարսութեան. որ այսպէս բաղադրի: Առ երկու տրամ՝ էսթրաթթօ՛ տի րատիչէ տի քալումպա. և նոյնաքանակ՝ էսթրաթթօ տի ճէնցիանա. առ և երկու տրամ՝ էսթրաթթօ տի լէննօ գուասսիա. և նոյնչափ՝ տի պիլլէ պօվլինա. այլև փոշի ճէնցիանայ արմատոյն՝ որչափ ինչ պէտք են վասն շինելոյ գնդակս. որք մէն մի կշռեցեն չորս ցորեան. և տացես մի կամ երկու հատ երկիցս յաւուրն:

Բիլլուլա. լտ: տես բիլլօլէ:

Բիլօսէլլա, կամ աուրիքուլա մաուրիս, լտ: օրէքքիօ տի թօփօ, և կամ օրէքքիօ տի վիսքիսթրէլլօ, իտ: սչան գուլաք օթու, տճ: և ըստ մեզ ստուգաբանի՝ մկնականջ: Է խոտ ինչ, որոյ ցօղունքն են բարունակաւոր, թաւիշաւոր, և վտիտ, որք սփռին զերեսօք գետնի: Տերևս սորա երկայն է և բոլորշի ըստ նմանութեան ականջաց մկան, որոյ վասն և կոչեցաւ յանունն նորա. գոյն նորա 'ի վերին երեսս կանաչ, և թաւիշաւոր, իսկ 'ի ներքոյ սպիտակ, և աղուամազուտ: Ծաղիկն ունի զձև ծաղկանն՝ որ լատիներէն կոչի՝ հիէրաչիում, բայց փոքր քան զայն. և բերէ սերմն կապարագոյն: Իսկ արմատն երկայն իբր մատնաչափ, շրջապատեալ նուրբ մանրաթելովք: Այս խոտ բուսանի 'ի լերինս, և յագարակս. լի է հեղով, այլ միջակ գոլացական աղիւ. օգտաւէտ է ընդդէմ փորհարութեան, հոսման արեան, և փոշտանկութեան:

Բիլօրիս, լտ: Է քառոտանի ինչ 'ի ձև մկան, այլ քառապատիկ մեծ քան զայն, գունով խայտախարիւ. միսն փափուկ և համեղ, ունի և զհոտ մշկոյ. որ 'ի վար արկանի 'ի դեղորայս, և է զօրացուցիչ ջղաց, և դրդուիչ սաղմի:

Բիմբինէլլա, կամ սանկուիսօրպա մինօր, լտ: անաչիօ սալվասթրէլլա, իտ: Է խոտ ինչ բազմանկիւնի, ոստալից, կարմրերանգ, հոտաւէտ, և համեղահամ. բարձրութիւն նորա սովորաբար չէ ինչ աւելի քան զերկու ոտնաչափ և կէս: Տերևքն են երկայն, բոլորակաձև, կարմրագոյն, թաւիշաւոր, և շուրջանակի սղոցաձև ատամնաւորեալք, որք շարին երկու երկու 'ի վերայ բարունակաց իբր մի կամ երկու մատնաչափ

հեռի 'ի միմեանց ։ Ծաղիկն մանրիկ, ծիրանագոյն, և քառաթերթեան՝ ըստ նմանութեան վարդի, ունելով 'ի միջի առէջս բազմափունջս․ յետ ծաղկանց արտադրէ պտուղս քառանկիւնաձևս, և գորշագոյն․ և 'ի միջի ունի սերմանս մանունս ։ Իսկ արմատն երկայն, ստուալից, և կարմրերանգ․ յորոյ վերայ գտանին հաւաքք կարմրագոյն՝ 'ի պէտս ներկարարաց, և նկարչաց, զոր կոչեն՝ քըքչինիկլիօ սիլվէսթրէ ։ Այս խոտ բուսանի 'ի լերինս, և յարօտաւոր տեղիս․ լի է իւղով և գոյացական աղիւ․ օգտաւէտ է ընդդէմ թոքախտութեան ։ Իսկ սերմն սորա զոր լատինք կոչեն՝ սէմինա անիզի վուլկարիս, դեղ է գերագոյն ընդդէմ տկարութեան ջլաց, ստամոքսի, և ստորին որովայնի, այլ և ցրուէ զփուքս․ զի է զօրացուցիչ, և փքահալած․ չափն 'ի 20 ցորենոյ մինչև ց30 ։ Զնոյն գործունէութիւն ունի սորա նաև իւղն․ չափն իւղոյ 'ի հինգ շիթէ մինչև ց10 ։ Բայց որք ցասմնոտ և մաղձային բնութեան են վիճակեալք, վնաս մեծ գործէ 'ի նոսին ։

Բինասաթէր ։ վայրի խնձոր ։ Տես և բինուս ։

Բինթա․ է չափ ինչ գաղղիացւոց, որ կշռէ երկու լիտր, և տասն ունկի ։

Բինիբինիքի ։ Է փոքրիկ ծառ ինչ հնդկային 'ի ձև մերումս խնձորենւոյ․ զորոյ հերձեալ զկեղևն կամ զբունն, արձակէ զհիւթ կաթնանման սպիտակ, և մածուցիկ․ որոյ բնութեան զօրաւոր գոլով սաստիկ, 'ի վար արկանեն բնակիչք տեղւոյն 'ի լուծումն մաղձի, և մաղասի, չափն յերեք շիթէ մինչև ցչորս՝ խառն ընդ կէս բաժակ գինւոյ, կամ այլ հեղանիւթովք ։

Բինկուլիքուլա, և կամ ունիքուլա էպօրաչէնսիս, լա ։ Է փոքրիկ տունկ ինչ, որոյ տերևքն են երկայնաձիգ, ստուար, յստակ, և մաքուր, որք սփռին զերեսօք երկրի․ և 'ի միջոյ տերևոց ելանեն ցօղունք ձեռաչափ բարձրութեամբ, որք 'ի ծայրս բերեն ծիրանագոյն կամ սպիտակ ծաղիկս մանուշակաձևս․ յետ ծաղկանց 'ի վեր երևին հատապտուղք ինչ․ զորոյ խորտակեալ զկեղևս, ելանեն 'ի միջոյ գնտակաձև գոյացութիւնք, ունի և սերմունս մանունս, և բոլորակաձևս ։ Իսկ արմատն ստուար, և թելաւոր ։ Այս տունկ յաճախ 'ի վեր երևի 'ի լերինս, և 'ի մարգագետինս, մանաւանդ յերկիրս որք ծածկեալ կան ձիւնօք․ լի է իւղով, բայց նուազ գոյացական աղիւ․ զորոյ տերևոյ սպեղանի առնեն վիրաբոյժք առ 'ի

փարատել զելլունդն ժանտախտի ։

Բիննա, կամ բիննա մարինա, լտ ։ բինեղ, տճ ։ Եւ ըստ մեզ՝ պինայ ։ Է խեցի ինչ ծովային եռանկիւնաձեւ, երկայն իբր երկու մատնաչափ, 'ի ներքուստ կանաչ, իսկ արտաքուստ թուխ կամ գորշագոյն ։ զոր փոշիացուցեալ, լինի դեղ ազդու ընդդէմ միզարգելութեան, սերմնականութեան և փորհարութեան ։ Իսկ միս նորա նոյնպէս միզաբեր է, և ախորժական ճաշակելեաց ։

Բիննուս, լտ ։ չամ աղաճը, տճ ։ դագա, կամ էրի, կամ նաժու, պր ։ սանաւպէր, արբ ։ Եւ ըստ մեզ՝ սոճի կամ թեղօշ, և կամ եղևին ։ Է ծառ բազմատեսակ ։ որոյ երևելին կոչի՝ 'ի բարբառ լատինացւոց բիննուս սաթիվա ։ բուն սորա է բարձր, ուղղորդ, և ստուար, կեղևն խորտաբորտ, և կարմրերանգ ։ Փայտն կարծր, ուժեղ, դեղնագոյն, և հոտաւէտ ։ Ոստքն բուսանին 'ի գագաթան ։ Տերևքն երկայն, նուրբ իբրև զտերև նոճւոյ, կարծր, սայրասուր, խայթիչ, թաղանթաւոր, մշտադալար, որք երկու երկու 'ի վեր երևին առ միմեանս ։ Իսկ պտուղն բրգաձև, կարծրակեղև, մթին կարմիր, և թեփալից, և բաղկացեալ խորշս խորշս ։ զոր լատինք կոչեն՝ սթրօպիլի կամ բինէի . կամ նուչէս բինէա, և կամ քօքքալի ։ և իտալք՝ բինօքքիօ, և տաճիկք՝ չամ ֆստըղը ։ Իսկ ըստ մեզ կոնոն, յորոց իւրաքանչիւր խորշի պարունակի մին մի պտուղ ոսկրանիւթ և երկայնաձև ։ ունելով 'ի միջի գոյացութիւն որդնակերպ սպիտակ, իւղային, և քաղցրահամ ։ զոր 'ի գործ ածեն 'ի դեղորայս, որ է կակղացուցիչ կրծոց, քաղցրացուցիչ թթու հիւթոց, և դրդուիչ սաղմի ։ Զնոյն գործունէութիւն ունի նաև սորա իւղն ։

Բինօ ։ տես բիննուս ։

Բինօքքիօ ։ տես բիննուս ։

Բիշիա ։ տես օրինա ։

Բիշխ, ուղղական սորա՝ բիքս, լտ ։ բէչէ, կամ պիթումէ, իտ ։ զիֆթ, տճ ։ հինա, կամ տիւճիւլ, կամ պէլէնաէմ, և կամ թըհալ, արբ ։ դէթրան, պր ։ և ըստ մեզ՝ ձիւթ, կամ ձէթ ։ Է հիւթ ինչ թանձր և իւղային, զոր քամեն կիզելով զխէժաւոր փայտս այլ և այլ ծառոց, որոց գլխաւորքն են թեղօշ, սոճի, և եղևին ։ Առաջին ծորեալք անտի լոյծ են՝ անօսր, և մաքուր ։ զոր անուանեն իտալացիք, կալիփօթ ։ Իսկ

վերջինք թանձր, զոր կոչեն պառաստ մառմառաթ։ Երկոքին ևս լինին սևագոյն 'ի պատճառս ծխոյ մախրափայտից։ 'Ի կալլիփօթ անուանեալ հիւթոյ անտի յօրինեն զպախտակ ձիւթն, զոր անուանեցաք թեզօչի, որ և յիտալացւոց՝ բէչէ պիանգա, կամ բէչէ տի պօռկօկնա յորջորջի. և է նոյն իսկ առաջին քամուածն կամ կալլիփօթ, հալեալ ընդ իւղոյ թէրէմէնթինի։ Յառաջին կմ 'ի պիթումէ անուանեալ հիւթոյ անտի կազմեն զսևսակ ինչ սպեղանւոյ, և 'ի վար արկանեն ընդդէմ վիրաց, մանաւանդ վիրաց գոյացելոց 'ի գլուխս։

Բիսթաչիա, կամ բհիսթաչիա, և կամ ֆիսթիչէ, լտ։ բիսթաքքի, իտ։ չամֆստըղը, տճ։ ֆստուք շամի, արբ։ բիսթէ կամ բիսթէի, կամ բիւքէլ, և կմ խէնտան, պր։ և ըստ մեզ՝ փստուղ դամասկեան. պտուղ կարծրակեղև, ըստ ձևոյ և ըստ ստուարութե նման թարմնշոյ հանդերձ արտաքին պատենիւն. խիտ առ խիտ զետեղեալ յողկոյզ իւր կախի զոստոց ծառոյն, զոր 'ի բաց հանեալ, զմիջինն ողջոյն ուտեն, որ է կարմրախառն կանաչ, և ախորժահամ, միանգամայն և դեղ օգտակար ընդդէմ ակարութե ստամոքսի, և կրծոց. զի է զօրացուցիչ, և խոնաւացուցիչ։ Ծառ նորա է տեսակ մի բևեկնի անուանել ծառոյ, որ լատիներէն սովորաբար թէրէպինթհուս ինտիքա յորջորջի, ձևով, և տերևով նման է բևեկնոյ։ Իսկ ծաղիկն ծիրանագոյն, գնտակաձև, և ողկուզօրէն։ Այս ծառ յաճախեալ է 'ի կողմանս արաբիոյ, հնդկաց, և պարսից։

Բիզում, լտ։ բիզէլլօ, իտ։ պիզէլլիա, տճ։ լուպիա, արբ։ և ըստ մեզ՝ ոլոռն։ Է բոյս ինչ յազգէ սիսռան ծանօթ ամենեցուն. որոյ ունդքն ժողովեալ, լինին պէսպէս կերակուր. որ է մեղմապէս լուծիչ, և անօսրիչ արեան։

Բիտուսբալթօ նաթուրալէ. տես նաբհթա։

Բիտուսբհալթուս, լտ. և իտ։ Է ազգ ինչ կպրոյ կամ ձիւթոյ. որոյ են երկու տեսակք. մինն է բնական, զոր ունիմք նշանակեալ 'ի բառն նաբհթա։ Իսկ միւսն է արհեստական, կազմեալ 'ի կպրոյ, և 'ի ձիւթոյ, որ է դեղ ազդու ընդդէմ տկարութեան ջլաց, և վիրաց քաղցկեղի. և նախնիք սովոր օծանէին զմարմինս մեռելոց առ 'ի մնալ զերծ 'ի փտութէ, և 'ի նեխութէ։

Բիրաչէում, լտ ։ Է տեսակ ինչ հեղանիւթոյ գունոյն և համով, և զօրութք դրեթե ոչինչ ընդհատ 'ի սպիտակ գինւոյ․ բայց միշտ 'ի գործ արկանեն զհնագոյնն․ քանզի նորն է յոյժ միզաստաբեր, տաւթէ զլուծումն որովայնի, և զժայթքումն, և երբեմն եւս զմահ։

Բիրաքանթհա, կամ մէսբիլուս աքուլէաթա ամիկտալ ֆօլիօ, սբինա աքուլթա բիրիֆօլիօ, կամ օքսիաքանթհա լէճիթիմա և կամ ըհամնուս թէացիուս, լտ ։ Է փոքրիկ ծառ ինչ փշալից 'ի սեռէ զղեւրոյ․ կեղև նորա թուխ է և կարծր ։ Տերևն բոլորակաձև իբրև զատամձենի, և եզերք նորա սղոցաձև ատամնաւորեալք ։ Ծաղիկն կարմրախառն դեղին, և բազմաթերթ 'ի ձև վարդի ։ Պտուղն ստուար բոլորշի, և ոսկեգոյն ։ Իսկ կորիզն պսակաձև, երկայն, և փոքր մի տապահամ։ Այս ծառ բուսանի 'ի պարտէզս, և 'ի ցանկապատ տեղիս ։

Բիրէթհրում, լտ ։ բիրէթրօ, կամ բիլաթրօ, և կամ րատիչէ տի սանթ՝ աբօլլօնիա, իտ ։ բիռէթռ, գղղ ։ ջօտլքաչը, տճ ։ ադարքարհա, կամ թակուն տիւսթ և կամ էմլիսօն, արբ ։ կէրկիւհան, պր ։ Է արմատ ինչ անհոտ՝ երկայն, ստուար 'ի չափ ճկոյթ մատին մարդոյ, բոլորշի, կնճռալից, դժուարաթեք, նրբաթել․ արտաքուստ մթին դեղնագոյն, իսկ 'ի ներքուստ սպիտակ․ ունի զհամ բարկ և այրող․ մինչզի կիզէ զլեզու ծամողին, և տայ փռնչալ, հանդերձ ծորեցուցանելով զլորձունս 'ի բերանոյ․ ունի և բազում օգտակարութիւս, զի անօսրէ զթանձրամածութիւն տողունից, զօրացուցանէ զջիղս․ գրգռէ զմէզն, և զպաղմն․ պահպանէ զնտերս 'ի նեխութէ և բուժէ զցաւս ատամանց, եւս օգտէ զօսուցթէ լեզուի և քնափութեէ ։ Բոյս սորա յաճախեալ յերկիրս ջերմագինս․ որոյ տերևն ըստ մասին նման է տերևոյ սամթի, և ըստ մասին ստեպղնոյ ։ Ծաղիկ նորա է լայնաբաց, ճառագայթաձև, և մսագոյն ։ Իսկ սերմն մանր, և երկայնաձև ։ Այս արմատ բնութեամբ է խթիչ, և գրգռիչ լորձանաց, չափն կէս տրամ ընդ ութ ունկի ջրոյ ։

Բիրէֆօրմէ․ անուամբս ըստ անդամազննաց ցուցանի մկան ինչ տանձաձև ։

Բիրում, լտ ։ բէրա, իտ ։ աբիախա, յն ։ աււմուտ, տճ ։ գումիթրի, կամ գիմէսսէռա, արբ ։ էմպու-

թութ, կամ էմրութ, և կամ լէքէշ, պր: և ըստ մեզ՝ տանձ. միրգ բրգաձև, թամբալից, անուշահոտ, և քաղցրահամ, միանգամայն և դեղ ընդդէմ տկարութե սրտի, և ստամոքսի, մանաւանդ եթէ ընդ ժամանակս ինչ ցամաքեալ իցէ յարևու: Գտանի սա ամենայն ուրեք, այլ հռչակաւոր քան զամենեսին՝ որ լինի 'ի մալադիա, յարաբկեր, յակն, և 'ի կեսարիա:

Բիրում չիտօնիում, լտ: տես չիտօնիա:

Բիրրհուլա, կամ րուպիչիլլա, կամ պիրրիօլա և կամ աքակլլեէր, լտ: մօնաքինօ, իտ: Է թռչուն մեծութե̃ 'ի չափ արտուտի. գլուխն սեաւ, որպէս և կտուց նորա. փետուրքն 'ի թևս բազմերանգ, իսկ մնացեալ մասն բոլորովին կարմիր, լեզուն լայն և թանձր. իսկ միսն օգտակար է ընդդէմ անդամալուծութեն:

Բիրօլա, լտ, և իտ: Է ազգ ինչ բուսոյ, որոյ կրկին է տեսակ. առաջին տեսակն կոչի՝ բիրօլա նօսթրաս վուլկարիս, որ յաճախակի 'ի վեր երևի 'ի լերինս, յանտառս, և 'ի հովանաւոր տեղիս, արձակելով յարմատոյ զհինգ կամ զվեց տերևս բոլորակաձևս, յղկեալս, սայրասուրս, յստակս, թամբալիցս, միջատագալարս, և երկայնականթս, որք սփռեալ կան զերեսօք երկրի. և 'ի միջոյ տերևոց ելանեն ցօղունք նուրբ և երկայն իբրև մի ոտնաչափ. և 'ի ծայր նորին ցօղնոյ 'ի վեր երևին սպիտակագոյն ծաղիկք հոտաւէտք, և բազմաթերթք զօրէն վարդի, ունելով 'ի մէջի սերմնափակս ըստ նմանութեն կնճթի փղի. զկնի ծաղկանց յաջորդէ պտուղն անկիւնաւոր, և 'ի միջի պարունակէ զմանրիկ, և զդառնահամ սերմունս 'ի խորշս խորշս մաշկատեսակ: Իսկ արմատն նուրբ, օձապտոյտ, և թելաւոր, որոյ եթէ ծաղիկն, եթէ սերմն, և եթէ արմատն են բնութե̃ սեղմիչ, և հովացուցիչ. որք եփեալ 'ի ջուր և ըմպեալ, բժշկեն զփորհարութի, զհոսումն արեան, և զտօշորումն կրծոց. օգտեն նաև ընդդէմ շարաւալից հնագոյն վիրաց՝ առթելով յապականութէ արեան: Իսկ երկրորդն կոչի՝ բիրօլա մինիմա, որ է փոքրիկ քան զնախընթացս, այլ տերևովք, և գունով նման նմա:

Բիցցկեօ կամ բիցցքօթթօ. տես բուծիլլիում:

Բիքա, լտ: կազզա, իտ: սագսաղան, տճ: և ըստ մեզ՝ կաչաղակ, կամ անծեղ: Է թռչուն ինչ 'ի չափ վայրի աղաւնոյ, բայց սալ թէ յամերե-

կայ մեծագոյն են․ գոյն նորա սպիտակ, և սեաւ, կտուցն երկայն, սայրասուր, կորմիլ, և սեաւ, լեզուն լայն, տուտն երկայն իբրև ծիծռան․ յընթանալն ոստոստելով գնայ, և զտուտն հանապազ շարժէ․ ձայն այսր թռչնոյ է յոյժ հիանալի․ քանզի փոփոխէ զայն որպէս և կամի, ուստի դիւրաւ նմանեցուցանէ ձայնից թռչնակաց։ Միս նորա է կարծր և երակուտ, լի է իւղով և ցնդական աղիւ, շահաւէտ է ընդդէմ անդամալուծութեան, մոլեգնութեան, կամ կատաղութեան, սևամաղձութեան, յօդուածացաւութեան, և ցաւոց աչաց։ Դարձեալ, բառիւս բիքա իմանի ախտ ինչ քաղցու, որով ոք քաղցնու վնասակարաց, որպէս կաւոյ, ածխոյ, ևն։

Բիքա․ տե՛ս մալաչիա։

Բիքուս մարթիս, լտ։ բիքքիօ, իտ։ աղաճ գաղան գուշու, թճ։ նեգապէչ չէճառ, կամ նեֆֆար․ և կճ գառառահ, արբ։ չէօբինէ, ալր։ և ըստ մեզ՝ փայտափոր։ Է թռչուն ինչ փոքրիկ, որոյ կտուցն է բոլորակ, ուղիղ, և կարծր, որով փորեալ զոստս ծառոց յօրինէ զբոյն իւր սքանչելի ճարտարութեամբ, որոյ վասն և կոչեցաւ յանուն նորա․ լեզու նորա երկայն է իբր չորս բթաչափ, և երկճղի․ սրունքն կարճ, այլ հզօր, թաթք ոտից ճիրանաւոր․ տուտն ուղիղ, և կարծր․ իսկ կերակուր նորա ճճիք, ճանճ, և մրջիւն․ միս այսր թռչնոյ գովեալ ձգողընութեան, 'ի վար արկանելն 'ի դեղ ցաւոց աչաց։

Բիքս․ տե՛ս բիչիա։

Բիքս լիգուիտա, լտ։ քաթրամէ, իտ։ գաթրան, թճ։ աթրան, արբ։ և ըստ մեզ՝ գազխխէժ կամ ձիւթ։ Է թանձր, և կպչուն հիւթ ինչ խժայլին, և դիւրավառ, զոր արտադրեն 'ի թեղօշէ, կամ յայլ իւղոտ և խժաբեր ծառոց իբրև զիւղ․ յորմէ բազմիցս նաւավարք 'ի վար արկանեն 'ի զանազան գործս․ որպէս և մեք 'ի դեղորայս, որ է փարատիչ յօդուածացաւութեան, և ջլացաւութեան։ Նոյնպէս է դեղ աղդողական ընդդէմ նեխեալ վիրաց․ այլև զսաստիկ հոսումն արեան պատճառեալ 'ի հատուածոյ՝ դադարեցուցանէ, եթէ ջերմացուցեալ արկանիցի 'ի վերայ վիրաւորեալ մասին մարմնոյ։

Բիոմպարիա, իտ։ թուրապի զօհալ, արբ։ քուաչուն թօբուաղը, թճ։ ըստ մեզ՝ կապարահող։ Է ազգ ինչ հողոյ, որոյ կիզեալն յառաջ բերէ զքարմարցանիկ։

Բիօմպօ • տե՛ս բլաւմպուռմ ։

Բլաթթանուս, լտ ։ բլաթթանօ, իտ ։ չըռնար աղաճը, տճ ։ սընար, կամ տիւլպէ, արբ ։ և ըստ մեզ՝ սօս, կամ սօսի ։ Է ծառ ինչ մեծ, լայնատարած և հով_ վանաւոր, որոյ փայտն է հզօր, և ուժեղ, զօրէն կաղնւոյ կամ կաղամախի ։ Կեղևն անհարթ ըստ նմա_ նութեան խորխի օձի. որ լինի դեղ օգտակար ընդդէմ ցաւոց ատամանց ։ Տերևն մեծ, լայն, կարծր, հեր_ ձոտ, անկիւնաւոր, և երկայնականեթ, ըստ նմանու_ թեան տերևոյ բէչլինուսի, որ և է դեղ շահաւէտ ընդ_ դէմ բորբոքման աչաց, թանչից, և այտուցից, որ 'ի վար արկանի արտաքուստ ։ Իսկ պտուղն՝ բոլորչի հանգոյն պտղոյ եղակի, և է թաւիշաւոր, և աղուա_ մազուտ, և 'ի միջի ունի մանրաթելս, զորովք պա_ տատեալ կան փոքրիկ սերմունք, երկայնաձևք, ան_ հարթք, և գեղնագոյն ։ Այս ծառ սովորաբար բու_ սանի 'ի խոնաւուտ, և 'ի ջրարբի տեղիս • պտուղ սորա · լինի դեղ ազդու ընդդէմ թունից, եթէ ար_ գանակ կազմեալ արբցի ։

Բլաթթիբէհիլյօս մօս • տե՛ս գուէրքուս ։

Բլանթակօ, լտ ։ բլանթաճճինէ, իտ ։ բլանթէն, գղղ ։ բիթահէկլրօ, յն ։ սինիրլի եաբրաղը, տճ ։ լի_ սան համէլ, արբ ։ և ըստ մեզ՝ ջղախոտ ։ Խոտ ինչ բազմատեսակ • յորս երևելի են երկու տեսակք • առ_ աջինն կոչի 'ի լատինացւոց՝ բլանթակօ մաեօր • որոյ տերևքն երկայն, լայն, և շողշողուն, և իւրաքան_ չիւր հատ տերևոյ ունի եօթն երակ անխզելի իբր գծիւ, որք ձգապաղեալ կան 'ի յետուստ, որոյ վասն և կոչեցաւ 'ի լատինացւոց՝ սեբթի նէռվիա, որ թարգ_ մանի եօթնաջիղ • յորմէ կազմեն դեղ ապաքինական ընդդէմ փորհարութեան, և մզման արեան, և ցաւոց աչաց, զի է սեղմիչ, և հովացուցիչ • Նոյնպէս ապա_ քինէ զվէրս շարաւալիցս ։ Եւ 'ի միջոյ տերևոց ելա_ նէ սիւնակ ձողաձև իբր ոտնաչափ մի բարձրութեամբ, և 'ի վերին կողմն նորին սիւնակն կարգաւ շարայա_ րեալ կան սպիտակ կամ ծիրանագոյն ծաղիկք ման_ րիկք, ունելով 'ի գագաթան հատապտուղ ինչ մաշ_ կային, սրածայր, ձուաձև, և ոմանք կոնոնաձև, և 'ի մէջ նորա տփաձև, յորում են սերմունք ձուաձև, կարմրերանգ, և տապահամ, որք նոյնպէս են դեղ ազդու ընդդէմ մզման արեան, թանչից, և փորհա_ րութեան ։ Իսկ արմատն կարճ, և ստուար լիքն մազ_

նաչափ, շրջապատեալ բազմաթելովք ։ Սա բուսանի 'ի քուրաստանս, և 'ի խոնաւուտ տեղիս ։ Իսկ երկ-րորդն կոչի՝ բլանթակօ անկուսթի ֆօլիօ մինօր, կամ լանչէօլա մինօր. տերեւք սորա են հինգաջղեան, եր-կայն, սրածայր, և թաւխչաւոր ։ Սերմնակ սորա է հոլանի, երկայն իբր ոտնաչափ, բազմանկիւնի, և դարչնագոյն ։ Ծաղիկքն մանրիկ են և գունաթափ, որք նոյնպէս արտագրին 'ի վերին կողմն սերմնակի, ունելով 'ի գագաթան պտուղ ինչ թաղանթային. և 'ի մէջ նորա սերմունք, որք են մեծ քան զբլանթա-կօ մաեօր ; այլ ըստ ներգործութեան մասին նման նմա ։ Բուսանի սա 'ի խոտաւէտ տեղիս ։

Բլանթա մարինա րէթիֆօռմիս, կամ լիթհօբհի-թօն ռէթիքուլաթում, լտ ։ Այս անուամբք իմանի բոյսն այն, որ իւիք կերպիւ բոյս է, և իւիք կերպիւ քար, ուստի և երբեմն կոչի քարաբոյս, այսինքն քար և բոյս. սովորաբար գոյանայ 'ի խորս ծովու-զօրէն բուսանի ։ Բարձրութիւն նորա իբրև երկու ոտ-նաչափ, և լայն մի և կէս ոտնաչափ. գոյն նորա է դեղին, և ոմանք ծիրանագոյն, կամ սպիտակ ։ Կե-ղեն նուրբ, թեթև, և գորշագոյն. այլ ձև նորա այլ և այլ է. այսինքն ծառաձև, հովահարաձև, և խարբալաձև, և 'ի միջի ունի գոյացուխս փափուկս, խանձահոտս, և կծուահամս ։ Իսկ արմատն ունի զձև սպիտակ բուստի ։ Ելանէ սա յովկիանոս ծովէն, և ըստ ոմանց նաև 'ի խորս ծովուց եւրոպիոյ. առատ է իւղով, և ցնդական աղիւ, և բնութք և ներգոր-ծութք չէ ինչ տարբեր յեղջերէն եղջերուի. չափն 'ի 20 ցորենոյ մինչև y60 խառն ընդ մի բաժակ ջրոյ ։

Բլանթարէ ։ Այսու անուամբ [illegible] անդամազննաց ցուցանի փոքրիկ մկան ինչ՝ ձգտիչ ոտին ։

Բլաչէնթա ։ Անուամբս ըստ անդամազննաց նշա-նակի մասն աղտին, որ նպաստէ 'ի մատակարարել զսնունդ սաղմին ։

Բլաչէնթա ռօզարում, լտ ։ սիրքէլի կիւլ լավիասը, տճ ։ և ըստ մեզ՝ թանձրաթան վարդի, որ ոչ այլ ինչ է, բայց եթէ վարդ զանգեալ քացախով, զոր դնեն 'ի վերայ Ճակատու առ 'ի բուժել զցաւս գլխոյ ։

Բլաչիթիս, կամ բլաքօտէս, լտ ։ Է ազգ ինչ մեղ-ծի, առթեալ 'ի ծխոյ պղնձոյ, կամ այլ հանքային նիւթոց, որք մածեալ մնան 'ի ծխնելոյզս, որք թէ-

պէս նոյնատեսակ են ը հասարակ մեղծի, բայց բնութիւնք են այլազան, զի են մաքրիչ, չորացուցիչ, և սեղմիչ. վասն որոյ օգտաւէտ են ընդդէմ ցաւոց աչաց:

Պլէուրիս: Անուանեալ է անդամազննաց նշանակի՝ լանջամաշկ. է մաշկ ինչ պատեալ 'ի ներքուստ զկողամէք լանջաց:

Պլէուրիզիա. տե՛ս բերբերինէուսմօնիս:

Պլէուրիզիա ֆալսա, իտ: քալպ զաթլըճէմ, տճ: և ըստ մեզ՝ կեղծ կշտացաւութիւն, որ 'ի գիպուած ախտիս գլխաւորապէս երևի 'ի մկանանս, յորժամ ցաւն մէչ է այնքան ներքին որպէս զվերոյիշեալն. կոչի և պլէուրիթիտէ: զորոյ տե՛ս հատ. ա. երես 81:

Պլումպում, կամ սաթուռնուս, լտ: պիօմպօ, կամ սաթուռնօ, իտ: գուրշուն, գալայ, տճ: անուք, կամ զօհալ, կամ իւսրիւպէ, կամ հօրպէյ, կամ ըէսան, և կամ ռուսաս, արբ: գիշէն, կամ իւսրիւպ, և կամ սէրպ, պր: և ըստ մեզ՝ արճիճ, կամ կապար: Է տեսակ ինչ տհաս մետաղի, յորում պարունակի բազմամասնեայ ծծումբ, և սակաւամասնեայ սնդիկ. լինի զանգուածով կակղագոյն, և գունով թուխ, և չողչողուն. ունի զբնութիւն ցուրտ, և չոր, զոր 'ի վար արկանեն 'ի պէսպէս կազմուածս, և 'ի դեղօրայս: Սորա ծուխն 'ի հալելն է յոյժ վնասաբեր, և առթէ զլուծումն անդամոց, զդողդոջումն ձեռաց և ոտից, զհասարակ ցաւ են:

Պլումպում ուսթում, լտ: պիօմպօ աբբռուչիաթօ, իտ: եանմըշ գուրշուն, տճ: ռուսաս մահրուք. արբ: Է կապար կիզեալ, և փոխեալ 'ի կիր ծծմբով. որոյ երկեակ մասն է կապար, և միւն ծծումբ. նոյնպէս է բնութիւն հովացուցիչ, և չորացուցիչ, զոր 'ի կիր արկանեն 'ի սպեղանիս առ 'ի զովացուցանել ըզվէրս:

Պլուվիալիս, լտ: պիվիէռէ, իտ: Է թռչուն ինչ ջրասէր, որոյ են երկու տեսակք. մին է 'ի չափ աղաւնոյ. կտուց նորա է սևագոյն, կարճ, բոլորակաձև, սրածայր, և փոքր ինչ կոր. լեզուն եռանկիւնի. փետուրքն դեղին, և սպիտակ, կամ կարմրագոյն: Իսկ միւսն փոքր մի մեծ է քան զայն. կտուցն լինի առաւել երկայն, և առաւել սուր, գոյնն գորշ. ունի և բիծս շագանակագոյնս: Սի են յեզերս գետոց գաղղիոյ, սովորական որս նոցա զեռունք, և ճանճք.

որ 'ի ժամանակս գարնան ընտիր կերակուր են բնակ-չաց երկրին. լի են իւղովք, և ցնդական աղիւք, զի մաքրեն զարիւն. բանան զանցս միզի, միանգամայն և օգտակար են ընդդէմ վերնոտութեան, և անդամա-լուծութեան։

Բհալանճիա, լտ. Ֆալանճիօ, իտ. և ըստ մեզ՝ փաղանգ. Է ազգ ինչ թունաւոր և մահաբեր սար-դից, որ յասս իւր ունի զերրեակ ծունր իբրև զմատն մարդոյ. Այս սարդ գտանի յերկիրս Ջերմագինս, որպէս յԻտալիա, 'ի սպանիա, և 'ի Հնդկաստան. այլ ոչ հասարակ ընդ ամենայն տեղիս. լի է ցնդական աղիւ, և իւղով, զոր ծեծեալ 'ի սանդ, և եդեալ 'ի վերայ բաղկի, բժշկէ զմիջահասական տենդ։

Բհալանճիում, լտ. Է բոյս, որոյ են երկու տե-սակք, առաջին տեսակն կոչի՝ բհալանճիում ռօ-ամօզում, որոյ տերեւքն երկայն են և խիտ, և 'ի մի-ջոյ տերևոց 'ի վեր երևի ցօղուն՝ մի և կէս ոտնաչափ բարձրութեամբ, և է բոլորշի, և կարծր, որ 'ի գագա-թան արձակէ սպիտակագոյն ծաղիկս աստղաձևս, և վեցթերթեանս. զկնի ծաղկանց յաջորդէ պտուղն բոլորակաձև, և 'ի միջի պարունակէ զանկիւնաւոր և զսեաւ սերմունս 'ի խորշս խորշս մաշկատեսակս. իսկ արմատն թելաւոր։ Իսկ երկրորդ տեսակն կոչի՝ բհալանճիթէս, կամ բհալանճիում հէռպա, ցօղուն սորա է բոլորշի, ներհար, տատալից, յղկեալ, երկայն իբրև երկու ոտնաչափ։ Ծաղիկքն են սպիտակ, որք փթթին 'ի ծայրս ստոց։ Պտուղ սորա և արմատ նման են ամենևին վերնոյն։ Երկոքին սոքա յաճախ բուսանին 'ի լերինս, և 'ի ջրարբի տեղիս։ Լի են ցնդական աղիւք, և իւղովք, և են դեղք ազդողա-կան ընդդէմ խածուածոց օձից, փաղանգի, և կարճի. տօլորաբար արգանակն սոցա 'ի կիր արկանի խառն ընդ գինւոյ. նոյնպէս շահաւէտ են ընդդէմ ախտի միզոտութեան։

Բհալանճիս, լտ. Ֆալանճէ, իտ. անուամբս ըստ անդամազննից նշանակին ոսկերք մատանց ձեռաց, և ոտից։

Բհալարիս, լտ. Է բոյս տատալից, որոյ ցօղունն բարձրանայ յերկրէ իբր երկու ոտնաչափ և կէս. Տերևք սորա նման են տերևոց ցորենոյ, բայց փոքր քան զայն։ Հասկ սորա է կարճ, և թեփալից, յորոյ վերայ զետեղեալ կայ ծաղիկ սպիտակ հանդերձ հա-

կիրճ առէչէւք ։ Ունի և սպիտակագոյն և շողշողուն սերմն, զորէն կորեկի, կմ կտաւատի, որ է բնութք բացողական և միզաբեր. զոր եփեալ 'ի ջուր և արբուցեալ, լուծանէ զքարինս և զաւազս երիկամանց, և փամփիշտի ։

Բհակրուս, կամ բակրուս, լտ ։ Է ձուկն ինչ ծովային ոտնաչափ մի երկայնութք, և կարմրերանգ, որոյ ռունգն նման է ունգան արծուոյ, ընչացքն երկայն, և ստուար, ատամունքն սայրասուր, միսն փափուկ և համեղ ։ Եւ 'ի գլխոյ նորա ելանէ քար ինչ փոքրիկ, զորմէ ասեն՝ թէ օգտակար է ընդդէմ միզարգելութե, և թէ լուծանէ զքար՝ եթէ գտցի ընդանցս միզի. այլև քաղցրացուցանէ զԹԹու և զտաւիղ հիւթս ստամոքսի, և արգելու զհոսումն արեան. չափն 'ի 20 ցորենոյ մինչև ց30 ։

Բհաւէօլուս, կամ բհաւէլուս, կամ բհապէօլուս, լտ ։ Ֆաձիուօլօ, իտ ։ Ֆասուլիա, տճ ։ գուրինա, կամ լուպիա ռումի, և կամ ումիր, արբ ։ Թիւր, կամ ժաժումէկ, կամ լօպիա, կամ ակ հիր, և կամ ակսմու, պր ։ և ըստ մեզ՝ լուբիայ ։ Է ունդ 'ի ձև երիկամանց ծանօթ ամենեցուն, որ է բնութք բացողական և կակղացուցիչ, զոր եփեալ 'ի ջուր և եդեալ 'ի վերայ այտուցից՝ կամ հասուցանէ, և կմ ցրուէ. 'ի սմանէ կազմեն եւս յաճախակի կերակուր մարդոյ ։

Բհաւէօլուս միէգուանուս. տես ֆասպա բուրկաԹուիքս ։

Բհասիանուս, կամ կալլուս սիլվէսԹրիս, և կամ ֆալէն, լտ ։ Ֆաձիանօ, իտ ։ սիւկլիւն, կմ Թէզրէֆ, արբ ։ եապան հօռօզու, տճ ։ և ըստ մեզ՝ փասիան, կամ աքաղաղ վայրի ։ Է Թռչուն ինչ 'ի չափ ընտանի աքաղաղի. կտուց նորա կոր է և երկայն իբրև բԹաչափ. տուան երկայնաձիգ, փետուրքն խայտաբղէտ. միսն պարարտ, և համեղ, միանգամայն և դեղ օգտաւէտ ընդդէմ անդամալուծութե, իջուածոց 'ի մկանունս մարմնոյ, և ախտի ցնցականի ։ Ճարպ սորա նոյնպէս լինի դեղ պղտու ընդդէմ ակարութե ջլաց. և կարծրապինդ այտուցից՝ օծանելով և եԹ զայնս ։ Գտանի սա յաճախ առ փասիս գետով, այն է փիսոնի, յորմէ և անուանեցաւ փասիան. իբր Թէ Թռչուն փասիսեան ։

Բհապէօլուս. տես բհաւէօլուս ։

Բհարմնաքում, լտ ։ ընդհանուր դեղորայք. տես և

ջլէթթաւարիս ։

Բհէլլանտրիում, լտ. Ֆէլլանտուռիօ, իտ. Ֆէլլանտռա կիմ աքկիւ տէ մաղէ, գղղ. Է բոյս ինչ վայրի. որոյ են երկու տեսակք. առաջին տեսակն կոչի՝ չէքութա րիա ագուաթիքա գուօրունտամ, կամ Ֆինօքքիօ ա գուաթիքօ, որոյ ցօղունն է երկայն իբրև երեք ոտ նաչափ, լայն, դեղնագոյն, մէջն դատարկ իբրև գլխողղակ ։ Տերեւք նորա են մեծ, լայն, և հերձոտ ։ Ծաղիկքն սպիտակ, հինգթերթեան, ճառագայթա ձև, որք՝ի վեր երևին ՝ի ծայրս ոստոց. յետ ծաղկանց պտղաբերէ սերմն ՝ի ձև ձուոյ, այլ ՝ի չափ անիսոնի. իսկ արմատն թելաւոր ։ Այս բոյս սովորաբար ՝ի վեր երևի ՝ի ջրաբքի անգլիս, և է դեղ շահաւէտ ընդ դէմ սքօռպուտօ անուանեալ ախտի, թոքախտոտէ, փորհարութեան, հնագոյն փսխման, թանչից ։ Իսկ երկրորդն կոչի՝ բհէլլանտրիում ալբինում ումպէլլա բուրբուռասչէնս, կամ մութթէ՛ լինա, և կիմ տասու քուս մոնթանուս, որ գտանի ՝ի բարձրաբերձ լերինս, որոյ տերևքն են հերձոտ նման ըստ իմիք տերևոց սամեպղնոյ ։ Ծաղիկ նորա ծիրանագոյն է և ճառա գայթաձև. և բերէ սերմն նման վերնոյն ։ Իսկ ար մատն երկայն, ստուար յոյժ, սեաւ, և թելալից. այլ ըստ համոյ, և ըստ հոտոյ է նման այնմ բուսոյ, որ լատիներէն կոչի՝ մէում ։ Սի է սա աղիւ և իւղով. օգտաւէտ է ՝ի դիպուածս կալուածոց դաշտանի կա նանց, մաքրէ զարիւն, անօսրէ զթանձրամածութիւն տղղունից, բանայ զանցս միզի, և լուծանէ զքար գոյա ցեալ յերիկամունս մարդոյ. այլև գիմակալէ ամենա կերպ թունից, և փարատէ զքամիս, զի է քրտնա բեր, բացողական և թուլացուցիչ բնութք ։ Զափն ՝ի չորս տրամէ մինչև ցվեց խառն ընդ մի լիտր ջրոյ ։ Իսկ չափ սերմանց պարտի լինել ՝ի մի տրամէ մինչև ց6 կամ ց8 յաւուրն ։

Բհէլլուս. տես սուպէն ։

Բհէնիքօուրուս, կամ ռուպէքօւլա, կամ էրիթհա քուս, և կամ րուլթիչիլլա, լտ. Է տեսակ ինչ թռչ նոյ ՝ի ձև կկուի, որոյ միս օգտակար է ընդդէմ վէր նոտութե՛, զի առատ է իւղով և ցնդական աղիւ ։

Բհէնիքս, կամ կրամէն լօլիաչէում անկուսցիօրէ ֆօլիօ, և կամ լիլիում մուրինում, լտ. Է խոտ ինչ յարդև սերմոյ. որոյ ցօղունն բարձրանայ յերկրէ իբր երկու ոտնաչափ, արձակելով զծիւղս նուրբս, և

կարծս, և իւրաքանչիւր հատ ծիւղոյ ունի երրեակ կամ քառեակ տերևս երկայնս, ստուարս, և մթին կանաչս: Բերէ և հասկս 'ի ծայրս ծիւղոց նման ըստ իմիք որոմին, և 'ի վերայ նոցա ծաղիկս, իւրաքան-չիւր ծաղկանց ունելով զիւրեանց տակս կարմրե-րանգս, և ոմանք սպիտակագոյնս: Իսկ մինչ զթերթս ծաղկանց 'ի բաց թօթափեն, 'ի վեր երևին ցորենաձև հատք կարմրերանգ: Այս խոտ բուսանի առէպ յա-գարակս, 'ի քարուտս, և յեզերս ճանապարհաց: Սի է իւղով, բայց նուազ աղիւ, և բնութ՟ սեղմիչ, և չո-րացուցիչ, միանգամայն և արգելիչ արեան հոսելոյ 'ի միզարանէ. օգտակար է նաև ընդդէմ փորհարու-թեան:

ԲՀԷՆԻՔՕՐԹԷՌՈՒՍ, լտ: Է տեսակ ինչ ջրասէր թռչնոյ 'ի չափ ձկնկլի, որում նմանի և կերպարա-նօք. փետուրք նորա մոխագոյն են, կտուցն փոքր մի կոր, և պարանոցն երկայն. սովորական որս նորա է ձուկն. առատ է իւղով, և ցնդական աղիւ, և բնութ՟ բացողական, միանգամայն և դեղ աղդաղա-կան ընդդէմ անդամալուծութեն: Ճարպ սորա նոյն-պէս օգտակար է ընդդէմ տկարութե ջլաց, զի է զօ-րատու:

ԲՀԹՀԻՍԻՍ, լտ: էթիքա, կամ էթիքիքա կամ թէ-ղիքէցցա, իտ: վէրէմ, կամ ինճէ մաուազ, տճ: տէր-տի չիւչ, կամ ամաս, պր: սիլ, կամ խասապա, կմ՟ հիւմմայիտըքք, արք: ըստ մեզ՟ ախտ կմ՟ տենդ ծիւ-րական. է տենդ. ինչ ունենկացեալ, որ առ. սակաւ սակաւ ծիւրէ զմարմինն, զորմէ լիագոյն ասացի, հտ. ա. գլ. ժ. երես. 175:

ԲՀԻԹԷՈՒՄՍ, կամ բէսէտա ոֆֆիճինիս մօնսըէլիէն-սիում, լտ: Է բոյս բազմացօղուն, և ծիւղալից, որ բարձրանայ յերկրէ իբր մի ոտնաչափ: Տերևք նորա են երկայնք իբր չորս թթաչափ, հերձոտ, խիտ, և փա-փուկ: Ծաղիկքն բազմաթերթ և պալարագոյն, որք 'ի վեր երևին 'ի ծայրս երկայնաձիգ ծիւղոց, հանդերձ սպիտակափայլ առէջիւք. զկնի ծաղկանց յաջորդէ սերմնափակ երկայն իբր մի և կէս թթաչափ, եռան-կիւնի, գլանաձև, մաշկային, և գորշագոյն, և 'ի միջի պարունակէ զսեաւ և զբոլորշի սերմունս: Իսկ արմատն ստուար, փայտային, սպիտակ, և սակաւա-թել, և բնութ՟ բացողական, մեղմապէս լուծիչ, զօրացուցիչ: Այս բոյս 'ի վեր երևի յամսեան ապրի-

լի, և 'ի մայիսի, և տևէ մինչև ցսեպտեմբեր ։

Ֆհիթօլաքքա, կամ սօլանում մակնում վիրճինիանում ռուպրում, լտ ։ Է բոյս՝ որ ունի զճիւղս բազումս, ստուարս, բոլորչիս, կարմիրս, և կարմրերանգս, և բարձրանայ յերկրէ իբր հինգ կամ վեց ոտնաչափ ։ Տերևք նորա են մեծ, ջղալից, յղկեալ, և տժգոյն կարմիր՝ զօրէն շնախաղողոյ ։ Ծաղիկն փոքրիկ, ողկուզօրէն, գունաթափ, և բազմաթերթ ըստ նմանութեան վարդի, որք փթթին 'ի վերայ ցօղնոց ։ Այս արտադրէ թխագոյն կարմիր սերմնափակս, կմ հատապտուղս սեաւս ։ Իսկ արմատն երկայն իբրև մի ոտնաչափ, և ստուար իբրև զարունկ հասարակ մարդոյ, սպիտակ, և տևական ։ Սովորաբար բուսանի սա 'ի բուրաստանս փարիզու ։

Ֆհիլլիրա կրեչիա. տես Թիլիա ։

Ֆհիլլիթիս. տես լինկուա չէրվինա ։

Ֆհիլլիրէա, կամ չեթրուս, լտ ։ Է ծառ ինչ մարդաչափ բարձրութ., և բազմոստեան, որոյ տերեւն է երկայն ըստ նմանութ. տերևոյ ձիթենւոյ, բայց առաւել քնքուշ քան զայն ։ Ծաղիկքն սպիտակ են և քառահերձ, որք երևին առ անթից տերևոց ։ Արտադրեն հատապտուղս ողկուզօրէն, որք բերեն զձև մրտոյ. համնոցա ըստ մասին քաղցր, և ըստ մասին դառն, ունին և զկորիզս մանունս ։ Այս ծառ սովորաբար բուսանի 'ի պարտէզս. լի է իւղով, բայց նուազ գոյացական աղիւ, որոյ եթէ տերևքն, և եթէ հատապտուղքն են բնութ. զովացուցիչ, և սեղմիչ. օգտակար են ընդդէմ ուռնացաւութեան, և վիրաց բերանոյ տուժելոց 'ի ջերմութէ լերդի ։ Նոյնպէս և ծաղիկն լինի գեղ ազդու ընդդէմ ցաւոց գլխոյ, մանաւանդ յորժամ խառնի ընդ քացախոյ, և դիցի 'ի վերայ ճակատու ։

Ֆհիլլօն, լտ ։ Է բոյս ինչ 'ի սեռէ այնմ խոտոյ, որ տաճկերէն կոչի՝ եապան ֆէսլէյէնի. որոյ երկու տեսակք են. առաջին տեսակն կոչի՝ ֆհիլլօն թէսթիքուլաթում, կամ մէրքուրիալիս ֆրութիքօզա ինքանա թէսթիքուլաթա, որ բուսանի 'ի լերինս, և 'ի քարուտս. ցօղունք նորա են երկայն իբր մի և կէս ոտնաչափ, փայտային, ճիւղալից, և շրջապատեալ բազում սպիտակ թելովք ։ Տերև նորա է երկայն, բոլորչի, թանձր, ջլային, փափուկ, սպիտակ, և աղուամազոտ ։ Ծաղիկն գունաթափ, և բազմաւէչ ։

Պտուղն ունի զձև ամորձեաց, ունի և կորեղ բոլորակաձև, երկնագոյն, և դառնահամ: Իսկ արմատն մանր, փայտային, և Թեթևաւոր, և բնութ. բացողական, և լուծողական: Իսկ երկրորդ տեսակն կոչի՝ բհիլլօն սպերքաթում, որ փոքր է քան զնա, և բերէ ծաղիկ 'ի վերայ հասկի, այլ ըստ բնութեան, և ըստ ներգործութեան նման նմա:

Բհիչէս, կամ բհիչիոսա, և կամ Ֆուգա, լտ: Էշ ձուկն ինչ ծովային փոքր մի նման ծովային խողի. որոյ գլուխն է սուր, բնչացքն երկայն, և սրածայր, ատամունքն մեծ, որովայնն Թեփալից, միսն համեղ, և դիւրամարս; և բնութ. միջաբեր, և մաքրիչ արեան: Գտանի սա մանաւանդ 'ի միմնապատ ծովակս, և 'ի գետս:

Բհիսալու. տես պուֆօ:

Բհիսթաչիա. տես բիսթաչիա:

Բհլօժիս, կամ վերպատրում սիլվեսթրէ ալԹէրում, կամ սալվիա ֆրուԹիքօզա լուԹէա լաԹիֆօլիա, լտ: Է բոյս բազմացողուն, փայտային, և ճիւղաւէտ, յորոյ վերայ պատեալ կայ նիւթ ինչ ասլնաւէ նման նուրբ բամբակի: Տերև նորա ունի զձև տերևոյ՝ որ տաճկերէն կոչի՝ տիչ օԹու. բայց առաւել մեծ, և առաւել Թաւիշաւոր քան զայն: Ծաղիկն ելանէ 'ի գագաԹան, դեղնագոյն, հերձոտ, որկորաձև, կամ աստղաձև, այպա 'ի վեր երեքն քառեակ սերմունք երկայնաձևք: Իսկ արմատն երկայն, կարծր, և շրջապատեալ նուրբ Թելովք: Բուսանի սա 'ի չոր և յաւազուտ տեղիս. լի է իւղով, բայց նուազ աղիւ. և բնութ. մաքրիչ, չորացուցիչ, և սեղմիչ, օգտակար է 'ի դիպուածս Թինչից և հոսման արեան:

Բհրէնէսիս, լտ: Ֆրէնէսիս, կամ Ֆրէնիտիաէ, յն: տէլիլիք, կամ տիվանէլիք, տճ: ճիւնիւն, կամ սէրսամ, արբ: և ըստ մեզ՝ մոաԹափուԹ, կամ խելացնորուԹի, է ախտ ինչ՝ որ արկանէ զմարդ 'ի մոլեգնուԹի:

Բհօլաս, լտ: գէտի պալըղը, տճ: և ըստ մեզ Թարգմանագրի՝ կատուաձուկն: Է ձկնիկ ինչ, որ ունի զմորԹ խեցեղէն, այլ մեծուԹբ և ձևով մարմնոյն նման է կատուի. գոյն նորա է դեղին, և ոմանց կարմիր, ունելով 'ի վերայ զկարմիր, և զսեաբիծս, և արատս, իսկ միսն փափուկ, և համեղ. Սովորաբար գտանի սա 'ի խորքս ծովու, մանաւանդ 'ի

կողմանս բռօվէնցայի ։ Ջարդ խեցին՝ որ է կարծր ղանդուածով, 'ի վար արկանեն 'ի գիւպուածս միզար-գելութեան ․ լուծանէ և ղքար՝ եթէ գոյցի ընդ անցս միզի ։

Բհօքա, կամ վիթուլուս մարինուս, լտ ։ վիթէլլօ մառինօ, իտ ։ տէնիզ տանասը, տճ ։ և ըստ մեզ՝ որթ ծովային ։ Է կենդանի երկակենցաղ չորքոտանի, յաճախեալ 'ի հնդիկս ․ ձևով մարմնոյն և մեծութբ 'ի չափ հասարակ որթու, որոյ վասն և կոչեցաւ յանուն նորա ․ գլուխ նորա փոքրիկ է և կարճ ․ հերքն սեաւ, կամ գորշագոյն ․ աչքն փայլուն, և բազմերանգ ․ բե-րանն յանկաւոր, որպէս և որովայն նորա ․ ատա-մունքն սրածայր ․ լեզուն երկճղի, պարանոցն եր-կայն ․ մորթն թաւ և սեաւ ․ միսն փափուկ սպնգային, և ճարպալից ․ ոսկրն աճառուտ ․ իսկ ձայնն նման է ձայնից աղայոց, դիւրակիրթ է և մարդընտել, և առ-կոչելիս իւր լողէ, առ որս ձեռն ընդդէմ ձգեն՝ հա-չէ ․ ուտէ զձկունս, զխոտս, և զմիսս ․ 'ի կարկառել զկերակուրս, շողոմէ, զորս եռանդագին մռմռանօք խնդրէ, և յետ ցյագուրդ վայելելոյ՝ շամշեալ վամա-չէ ։ Սորա ճարպ է ջերմ բնութբ, և 'ի վար արկա-նեն ընդդէմ կալուածոց դաշտանի կանանց, և միան-գամայն ցրուէ զվատթար հիւթս և զգոլորշիս արգան-դի, եթէ ջերմացուցեալ օծցի 'ի ստորին կողմն փորոյ ։ իսկ հերքն օգտակար են յօդուածացաւու-թեան ։

Բհօքէնա ․ տես բօքքուս մարինուս ։

Բհօքսինուս ազուամօսուս, լտ ։ Է ձուկն ինչ փո-քրիկ իբրև կէս տոնաչափ, և լայն երեք մատնա-չափ, յաճախեալ 'ի գետս և 'ի լճակս ․ գլուխ նորա է ստուար, աչքն մեծ, թեփք մորթոյն դեղին, և ոտանք երկնագոյն, տուտն կարմիր իբրև զվարդ ․ իսկ միսն փափուկ և ախորժահամ, միանգամայն և դեղ-բացողական ։

Բնէումաթօզէ ։ Անուամբս նշանակի ախտ ինչ փոշտանկութե գոյացեալ 'ի փքոյ, որ և ասի նաև էանիա վէնթօզա ։

Բնէումաթօսի, լտ ։ Այսու անուամբ նշանակի փքացումն, որ է այտուց ինչ ստամոքսի գոյացեալ 'ի փքոյ ։

Բնէումաթօսի ութէրինա, լտ ։ Է այտումն ար-գանդին, գոյացեալ 'ի փքոյ ։

Բնխճինթիս, լտ. Է աղդ ինչ մածուցիկ և խժային հողոյ, որ հալեալ 'ի լեռնէ՝ մածնու և կախի 'ի վայր. զօրութիւն նորա է ձգօղ, և սեղմիչ. յայն սակս օգտակար է ընդդէմ հոսման արեան:

Բուէրբէրիս: Այսու անուամբ ցուցանի՝ ժամանակ ծննդեան, կամ երկունք: Պարզեալ նշանակէ դաշտանք ծննդականի:

Բուլթօախուս, կամ իքհինթիս, լտ: բուցցօլա, իտ: Է զազրահոտ կենդանի ինչ նման աքիսի, բայց մեծ քան զայն. պարանոց նորա է կարճ, որովայնն լայն, և սեաւ, հերք մորթոյն կարճ և դեղին, կամ սեաւ, սրունքն կարճ, իսկ ձեռն երկայն յոյժ, տտուար, և սեաւ. կերակրի ձկամբք, գորտովք, և զեռնովք, որք գտանին յեզերս գետոց, և ծովուց: Միս նորա բնութ̅բ է մեղմապէս լուծիչ:

Բուլբա, լտ: բօլբա, իտ: լօք էթ, տճ: սուսլ, արբ: և ըստ մեզ՝ Թամբ, կամ մթա. նշանակէ զանտակը, և զանձարպ միսս, և մրգաց. զորօրինակ բօլբա տի քասսիա, այսինքն Թամբն կասիայի, կամ բօլբա տի Թամարինտի, ևն:

Բուլէճիում կամ մէնթհա բուլէճիում, լտ: բուլէճճիօ, իտ: Ֆիւլիւսքիւն, տճ: և ըստ մեզ բանէկուհի: Է բոյս ինչ՝ որոյ կրկին է տեսակ. առաջին տեսակն կոչի 'ի բարբառ լատին՝ բուլէճիում վուլկաթում. ցօղունք սորա են երկայն իբր մի ոտնաչափ, քառակուսի, և թաւխշաւոր, ոմանք են վերամբարձ, և ոմանք կոր, կամ օձապտոյտ, իւրաքանչիւր ցօղուն ունելով զիւրեանց մանրաթերս 'ի վերայ: Տերևք նորա են բոլորշի ըստ նմանութ̅ տերևոց մանօրանայի, բայց առաւել սեաւ և յղկեալք քան զայն: Ծաղիկքն մանր, շղթայաձև, երկնագոյն, կամ ծիրանագոյն, որք կարգաւ փթթին 'ի վերայ ցօղնոց. բերէ և սերմունս յոգնութիւս: Իսկ արմատն հաստ, և թելալից: Բուսանի սա 'ի վայրս գիճայինս. և սկսանի ծաղկիլ յամսեան յուլիսի, կամ օգոստոսի: Լի է իւղով և ցնդական աղիւ. օգտակարագոյն է 'ի դիպուածս ցաւոց կրծոց, խթից, և կչտացաւութեան, անօսրէ և զթանձրամածութիւն տղոնից, մրդելու զփսխումն, զօրացուցանէ զտկարութիւն ուղղոյ. փարատէ զցաւս գլխոյ, զհազս, և դրդուէ զդաշտանս կանանց, և միանգամայն բուժէ զվէրս նորին, զի է խիթիչ բնութ̅բ: Զափն ունելի մի ընդ մի լիտր ջրոյ:

ինկ երկրորդ տեսակն կոչի՝ բուլէճիում անկուսթի-ֆօլիում կամ բուլէճիում չէրմէնում. որոյ ցօղունն է բոլորակ, վտիտ, և կարմրերանգ. տերևք սորա երկայնաձև են և խիտ՝ նման ըստ ինքե տերևոց այնմ խոտոյ, որ իտալերէն չէնթինօտիա կոչի. այլ ըստ բնութե, և ըստ ներգործութե նման առաջնոյն:

Բուլմօ, լտ, բօլմօնէ, իտ: Ֆիլիմօն, յն: Ֆըշշէ, տրք: չէշ, պր: ադձիհէր, աձ: և ըստ մեզ՝ Թոքք: Է երկմասնեայ զանգուած ինչ ապնգային՝ խողովակալից, բազմածակ, երակալից, շնչերակաւոր, և լի արեամբ և օդով. ձգեալ յաջ, և յաձեակ՝ զսիրտն զրւայ ունի. և 'ի հինգ բլթակս բաժանի. որք ծառայեն առուրեատութե շնչոյ, ձայնի և խօսից: Այն այս անդամ շրջապատէ զսիրտն յամենայն կողմանց, և իւրապէն ցրտութբ իւրով բարեխառնէ զջերմութ նորին, և միանգամայն մատակարարէ զնունդ կարևոր ամենայն կենդանական ոգեաց, և է ընդունարան սակավական մաղասի և մաքրարան 'ի ներքս ընկալեալ օդոց:

Բուլմօնարիուս, կամ բառամէլիա բուլմօնալէս, լտ: բուլմօնարիա, իտ: փիւլմօնէռ տ' առպր, գղղ: ճիէր օթու, տճ: խաշիշ իւ ֆըշշ, տրք: և ըստ մեզ՝ Թոքախոտ, յաճախեալ յերբայս յանտառս և 'ի հովանաւոր տեղիս, և բարձրանայ յերկրէ ծիրանագոյն և Թաւիչաւոր ստեղամբ մի ոտնաչափ ևեթ. արձակելով յարմատոյ զբազում տերևս երկայնաձևս, լայնս, սրածայրս, ջղալիցս, բծաւորս, և աղուամաղուտս. բանայ ծաղիկս 'ի գագաթան, որք են ոմանք ծիրանագոյն, և ոմանք մանուշակագոյն, և են հերձոտ՝ ձագաձաձև, և երկայնականթ. բերէ և սերմունս բոլորակաձևս՝ և մանունս, ունի արմատ սպիտակ, ճիւղալից, և խժային: Զտերև սորա՝ որ է խթիչ և զօրացուցիչ բնութբ, 'ի կիր արկանեն ընդդէմ ախտից Թոքոց, ջղային և ցնցական հազից, և փորհարութեան. սովորաբար խաշու կազմեալ 'ի վար արկանի ըստ օրինակի լէքէնէի, կամ Թէի:

Բուլսաթօսիօ. այսու անուամբ իմանի՝ խէԹ կամ ցաւն զարկողական, զոր զգայ ոք 'ի բորբոքիլ արեանն և յուժգին բաբախմանէ շնչերակաց, և այլոց մաշկեղէն և ջլային մասանց:

Բուլսուս, լտ: բօլսօ, իտ: Նապզ, կամ Նապզ, արբ: Նաբզ, տճ: և ըստ մեզ՝ զարկ բազկին: Անուան

այս ընծայի յատկապէս զարկի շնչերակաց, որով
նշանակի՝ բաղխումն կամ հարկանումն: Հասարակօ-
րէն զննել արժան է զզարկ երակին յաւարտս բազ-
կաց, ընդ որ անցանեն շառաւիղական գիծք շնչերա-
կաց, որ և արդարև է իշխան և պետ այլ ամենայն
երակաց: Բժշկապետքն աւանդեն զբազմապատիկ կա-
նոնս, և զբազմազան տեսակս թուոյ զարկի բազ-
կին. բայց մեք շատանամք դասել յառաջիկայդ
զգլխաւորագոյնս և զպիտանագոյնսն: Նախ կոչի՝
ֆօռթէ, այսինքն զօրեղ, և իւր հակառակն՝ որ է
տկար, կոչի յիտալացւոց՝ տէպօլէ: Բ. ֆռէգուէն-
թէ, այսինքն ստէպ ստէպ, և ներհակ սմին է՝ թառ-
տի. այսինքն յամր կամ յուշիկ: Գ. կռանտէ, այս-
ինքն մեծ, և փիքքօլօ, այսինքն փոքրիկ: Դ. տուռօ,
այսինքն կարծր, և մօլլէ, այսինքն կակուղ կմ թոյլ:
Ե. էկուալէ, և ինէկուալէ, այսինքն հաւասար
կամ միակերպ, և անհաւասար, կամ զարտուղեալ:
Զ. բիէնօ, և վօթօ, այսինքն լի, և դատարկ: Է.
ինթէռմիթթէնթէ, այսինքն միջահատ կամ ընդհատ:
Ը. լանկուիտօ, այսինքն՝ թոյլ կամ նուաղ: Թ. միտու-
ռօ, այսինքն միանման: Ժ. քառռիցցանթէ, այսին-
քըն՝ այծենման: ԺԱ, քօնթռաթթօ, այսինքն կարկամ
կամ գելեալ: ԺԲ. օնտօզօ, այսինքն ալեծածուն:
ԺԳ. տիքռօթօ, այսինքն երկպատիկ կամ կրկնամբ:
ԺԴ. վէռմիքօլառէ, այսինքն զեռնական: ԺԵ, ֆօռ-
միքօլանթէ, այսինքն մրջիմնաքայլ կամ մրջիմնեաց:
ԺԶ. քօնվուլսիվօ, այսինքն ցնցական: ԺԷ. մինիմօ
կամ էսիլէ, այսինքն դոյզն ինչ և նուրբ: Բայց գի-
տել արժան է աստէն, եթէ յառաջ քան զվճռադա-
տել զորպիսութէ զարկի բազկին ուրուք ախտաժե-
տի, հարկ է քաջ ճանաչել զհանգամանս նորին բնու-
թե 'ի վիճակի քաջառողջ կենդանութե. որովհետև
բազմապատիկ եղանակաւ զանազանին յայլ և այլ են-
թակայս, և 'ի մի և 'ի նոյն ենթակայն, այսինքն 'ի
մի և 'ի նոյն անձն, ըստ նկատման հասակի, կազ-
մուածոյ բնութեն, և պարագայիցն յորս գտանի.
ուստի 'ի հասարակի և ընդհանրապէս խօսելով,
զանազանութի որ 'ի ստէպ ստէպ զարկման բազկին,
է առաւել նկատելի, և ուշադրելի: Զարկ բազկին
'ի մանկունս է յոյժ արընթաց քան 'ի չափահասս,
իսկ 'ի ծերս կարի յամր և դանդաղ քան զերկոսին:
Այլ գիտելի է, զի զկնի կերակրոցն, և զկնի շարժ-

ման, և 'ի պարագայս վայրկենի խլրտման և վրդովման որ և իցէ կրից՝ այս սրընթացուն, և արագութիւն միշտ առ միշտ մեծանայէս, և երևելաբար զանազանի և վրիպի 'ի բնական ընթացիցն: Հասարակօրէն խօսելով, 'ի չափահասս և 'ի քաջառողջս 'ի վիճակի անդորրութեան ոգւոյ և մարմնոյ, և յառաջ քան զկերակուրն՝ զարկ բազկին բաղխէ 'ի 60 անգամէ մինչև 970 առ վայրկեանն: 'Ի մանկունս պատահմամբ վերոյիշեալ պարագայից հարկանէ 'ի 80է մինչև 990 կամ 995 անգամ: Իսկ 'ի ծերս 'ի 50 անգամէ մինչև 960 նոյնպէս ըստ վերոյգրեալ պարագայից ժամանակի: Ընդ այսոցիկ գիտել արժան է, եթէ գոն բազումս չափահասք, յորս զարկ բազկին բաղխէ մինչև 970 և 990 անգամ, երբեմն ևս առաւել, կամ նուազ, և ընդ հակառակն՝ 'ի նոցին հասակակից չափահասս հարկանէ երբեմն 955 անգամ 'ի վիճակի առողջութե, և կատարեալ բարեխառնութե. սմին իրի դժուարութիւն մեծ ընդ առաջ ելանէ 'ի միանգամ և եթ տեսանելն զոք՝ զանազանել և ճշգրիտ որոշմամբ ճանաչել զգլխաւորդն տենդի և այլ խօթութեց, զի թէ արդեօք ցուցէ՞ տենդ կամ խօթութիւն՝ թէ ոչ. որովհետև ոչ 'ի սակաւ սակաւ ընթանալոյ և եթ զարկի բազկին կախեալ են պարագայք գոյութե տենդից և այլ խօթութեց: Արդ՝ առ 'ի սահել՝ եթէ զարկ բազկին ուրեք երբեք հարկանէ յաճախակի, պարտ է միշտ՝ զի բաղխեացի միով մասամբ երրորդ մասին առաւելագոյն քան զոր հարկանէ 'ի բնական վիճակի, այսինքն եթէ 'ի վիճակի առողջութե բաղխէր 60, 'ի վիճակի խօթութե կամ տենդի պարտ է հարկանել մինչև 990 կամ 9100: Իսկ եթէ 'ի նոյն անձին բաղխէ զարկ բազկին 150 կամ 165 'ի միջոցի միոյ րոպէի, այդ է յետին աստիճան սրընթացութե, և գուշակ է միշտ վտանգի, զի աւելի է ջերմութիւն, և բորբոքումն արեան: Բարւոք համարիմ աստէն զեկուցանել, եթէ առ 'ի առաւել ապահով լինել 'ի վրիպակաց յայսմ մասին, օգտաւէտագոյն ևս է յաճախակի փորձառութիւն 'ի վերայ անձին իւրոյ, կամ 'ի վերայ բարեկամաց և ծանօթից. և այդ օրինակաւ բարւոք կրթել հասու լինել աստիճանի արագութե և յամրութե զարկի բազկին 'ի վիճակի կատարեալ առողջութեան, և համարձակ վճռադատել որոշել զգլխաւորդն խօթութեց և ախտից. և բարիոք ևս է յայդմ փորձառութեան

ունել 'ի ձեռքն զզարկախոյզն կամ զժամացոյցն , յոր նկատելով մարթ է 'ի միտ առնուլ, եթէ քանիցս անգամ բաղխէ զարկ բազկին յընթացս միոյ վայրկենի : Զարկ զօրեղ կոչի , որ ունի զշարժումն ուժգին, մինչև դիմադրել զննիչ մատանց . եթէ իցէ համակշիռ յամենայն երակս՝ է նշան բարի, ապա թէ ոչ՝ մնասաբար : Իսկ տկար կամ անզօրն է այն որ բաղխէ թոյլ և յամր : Դարձեալ, զարկն ուժեղ եթէ իցէ միօրինակ՝ նշան է քաջողջութեան : Զարկն մեծ ընդարձակի և ամփոփի սաստիկ , զի լի է արեամբ, որ է նշան բարեդոյն, և հակառակն սմին է փոքրիկ : Զարկն կարծր լի է թանձր արեամբ , որոյ հարկանումն լինի խիստ և չոր , օրէն է երակ հատանել , կամ թուլացուցիչ և զովացուցիչ դեղօրայս մատուցանել : Իսկ կակուղն և խոնաւն ունի զբաղխումն թեթև և խոր , այլ միակերպ կամ հաւասար ընթացեալ զարկն ունի զհարկանումն միշտ մի և նոյն օրէնակ : Իսկ զարտուղեալն և անհաւասարն՝ ունի ըզբաղխումն յոյժ բազմակերպ : Զարկն լի՝ սաստիկ ընդարձակի, և դիւրաւ ամփոփի, և է նշան անվնաս : Իսկ դատարկն՝ է օդալից : Զարկ միջահատ և ընդհատ նշան է անառողջութեան սրտի և մնասաբար : Զարկ թոյլ կամ նուաղ , է նշան վատառողջութեան : Զարկ մկնանման , որ առ սակաւ սակաւ ընդարձակի , և անդէն ամփոփի՝ գուշակ է պակասութեան արեան : Այծենման զարկն է այն , որ բաղխէ թրթռմամբ , կամ ոստնու իբրև զայծ, և գուշակէ զտկարութիւն սրտի , և է մնասակար : Կարկամ կամ գելեալ զարկն է այն , որ հարկանէ կծկմամբ կամ գալարմամբ , որ է նշան անդամալուծութեան : Ալէծածան զարկն է այն որ բաղխէ տարուբերմամբ կամ ծածանմամբ՝ ըստ օրինակի դուզնամամանեաց , և ախորժական ալեաց գետոց վտակելոց 'ի բարեխառն եղանակի . ցուցանէ զհոսումն արեան ընդ ունդունս , և է նշան բարի : Երկապատիկ զարկն է այն , որ հարկանէ զուգաթիւ՝ և կրկին անգամ ընդարձակի և միանգամ ամփոփի , է նշան բարի , և ցուցանէ զարմատախիլ քանցիլն ախտի կամ տենդի : Զեռնական կամ սողնական զարկն է այն , որ բաղխէ սահելով հանդոյն որդան , որ է գուշակ սակաւութեան արեան , և վտանթար : Մրջիմնաքայլ կամ մրջիմնեաց զարկն է այն , որ հարկանէ սակաւ զգալի , գուշակ է մօտալուտ մահուան :

Այլ եթէ շաղխէ ցնցմամբ կամ գողգոջմամբ, է նշան յուեգոյն և մահաբեր: Իսկ եթէ զարկն հարկանէ գոյզն ինչ և նուրբ այնքան՝ մինչև հազիւ ըզգալ մատանցդ, նշան է հոգեվարութեն:

Բուլվիս, լտ: բոլվէրէ, իտ: սուֆուֆ, կամ ղօպար, արբ: թօզ, տճ: կէրդ, կամ նէֆամ, պր: և ըստ մեզ՝ փոշի: Անունս այս առ բժիշկս նշանակէ զամենակերպ նիւթս, եթէ տնկոց, եթէ բուսոց, եթէ հանքաց, և եթէ մետաղաց, են, զորս նրբապէս փոշի արարեալ, և խառնեալ ընդ իրեարս 'ի վար արկանեն 'ի զանազան դեղորայս:

Բուլվիս անթէբիլէբթիքուս, լտ: Փոշիս այս օգտաւէտ է 'ի դիպուածս լուսնոտութե, տկարութե սրտի, և ուղղոյ, որ այսպէս բաղադրի: Առ բատիքս բէօնիա, բատիքս տիթթամօնի ալպի. սէմինիս բէօնիա, վիսքիօ գուէրչինօ, կրանի ումանօ, ունիքօրնօ, ավօրիօ, ունկիա ու՝ ալչէ, յիւրաքանչիւրոցն մէն մի ունկի, ու և մի և կէս ունկի՝ մարկարիթարում, և նոյնաքանակ լաբիս հիաչինթհօրում, և նոյնչափ՝ քօրալլի րուպրի բրէբարաթօրում, այլև երկուտրամ՝ ֆոլորում պէթօնիքա, և նոյնաքանակ՝ լիլիում քօնվալլիում, և յաւել 'ի վերայ մի և կէս պքրուբլօ՝ ամպրա կրիզիա, և վեց կշիռ ցորեան՝ մօսքի օրիէնթալիս, լուծեալ զամենայն բարիոք 'ի մէջ միոյ անկանի: Յետ այնորիկ առ զփոշիս զայս 'ի մէջ ապակի անօթոյ միոյ, և քաջ խցեալ ապակի խփով. չափն 'ի գործ արկանելոյ է 'ի 20 կշիռ ցորենոյ մինչև ց35:

Բուլվիս ասսօրպէնս վէտէլլիօ. տես բոլվէրէ ասսօրպէնթէ տէլ վէտէլլօ:

Բուլվիս արթիքուլարիս մօրպոսս. տես բոլվէրէ արթէթիքա տի բարաչէլսօ:

Բուլվիս բուրկաթօրիուս. տես բոլվէրէ բուրկաթիվօ:

Բուլվիս էբիլէբթիքուս մաուքիօնիս. տես բոլվէրէ էբիլէթիքօ տէլ մարքէզէ:

Բուլվիս կուաթէթա րիվէրիօ. տես բոլվէրէ կուաթէթա տի րիվէրիօ:

Բուլվիս հաննօվէրիանա. տես բոլվէրէ հաննօվէրիանա ուզալէ:

Բուլվիս քանթհիանուս. տես բոլվէրէ քանցիանա տէլլա քօնթէսսա քէնթէ:

Բուլվիս քաքհէքթիքուս. տես բոլվէրէ տի քուէրչիօ

Բուլվիս քօնթրավէրմէս · տես բօլվէրէ քօնթրավէրմի ։

Բուկնիթօթօ · տես բուպքուս ։

Բուձիլլիում, լտ ։ բուձիլլիօ, կամ բիցցիքօ, իտ, և ըը մեզ՝ պտղունց. մի ։ Է չափ բժշկական, որով նշանակի քանակութիւն զոր մարթի ոք ունել կամ բառնալ ծայրիւք երից մատանց, զո՛ և իցէ խոտեղէնս, կմ զայլ իրս սմին նմանս, որոյ նշանակ փոխանակ միոյ ամբողջ բառի գրի · pug ։

Բուձիլլիօ · տես ՚ի վերոյ ։

Բումէքս, լտ ։ բիէթրա բօմիչէ, իտ ։ բումըզա կամ սիւնկէր թաշը, տճ ։ և ըստ մեզ՝ ստուգաբանի սպնգաքար ։ Է քար ինչ ծակոտկէն, դիւրաբեկ, գորշագոյն, կամ սպիտակ, ելանէ սա ՚ի խորս հրաբուղխ լերանց, մանաւանդ ՚ի ծովեզերս բեկեալ յալեաց սպիտակ ծովուն բանուք հարաւային և արևմտեան հողմոց, համով՝ ըստ մասին աղի, և ըստ մասին տտիպ · զօրութիւն նորա է սրբիչ և չորացուցիչ հնագոյն վիրաց, լինի մաքրիչ և աչաց, և ատամանց ։ Վարի և ՚ի պէտս կօշկարարաց, և այլ արհեստաւորաց ՚ի տալ զգոյն մորթոց ։

Բունթէրուօլօ · տես սթիլլուս քուսբիտաթուս ։

Բունիքա կրանաթում · տես բօմում կրանաթում ։

Բունքթ ։ Է կէս ոգելէն ըմպելի ինչ անգղիացւոց՝ յօրինեալ յոգեացն զոր կոչեն՝ առաք կամ ռում · եդեալ ՚ի ջուր ջերմ, կամ ՚ի չայ, և շաքար, և քամածն լեմոնի, որ լինի դեղ շահաւէտ ՚ի դիպուածս ակարութեան ստամոքսի, և ընդերաց · այլ և առաւելու զառնելութիւն ջղացն առանց զայրացուցանելոյ ։ Ըմպելւոյ սատի ՚ի չորս ժամ միանգամ առնուն փոխանակ արձոյ, բաժակ մի առ իւրաքանչիւր նուագ ։

Բուսթուլա, կամ բօսթուլա, լտ ։ բէթէքքիէ, իտ ։ հասպ, տճ ։ հասպէ, արբ ։ միւրխիժէ, պր ։ և ըստ մեզ՝ կեղք, կամ խաղաւարտք, են կարմիր, և սեաւ բիծք, որք ՚ի վեր ելեւին ՚ի մարմինս ախտացելոց հանդերձ մահաբեր տենդիւ ։

Բուսթուլէ, կամ բուսթուլարում վաեուօլէ, լտ ։ վաեօլօ, իտ ։ չիչէք հաստալըղը, տճ ։ մէւձէատէր, կամ կիտոր, արբ ։ էվլօյէս, յն ։ չիրէք, պր ։ ըը մեզղխաակ, կմ ծաղիկ ։ Է ախտ ինչ վարանդաւոր, որ ածէ

'ի վերայ մարմնոյ մանկանց շարժուածոց պալարս , հանդերձ անընդհատ տենդիւ ։

Բուսխլյա լաուրուս . տես քնամէ տաքհնէ ։

Բուտէնգա . այսու անուամբ ը անդամազննոց յաւ- յանին՝ երակք և շնչերակք առականաց ։

Բուբբուրա , լտ ։ բօրբօրա , կամ օսթաօ , իտ ։ քաքէթէ կամ խաքէռլէթ պէօձէի , տճ ։ թէթէուբ , կամ վէհա , գրբ ։ տատաբէժէ , կամ տավէժէ , պր ։ և ը մեզ՝ կոնքիզոս , կամ ծովու ծիրանի ։ Է խխունջ ինչ ծովայքն 'ի սեռէ խեցեմորթի . որոյ կառուցն է երկայն , և գոգաւոր . լեզուն նորա է երկայն , որա- ծայր , և կարծր . ունի 'ի կոկորդ իւր ամփոփ երակ ինչ՝ որ լի է կարմրերանգ և շաղշաղուն հիւթով , որով ներկեն 'ի գոյն գեղեցիկ ծիրանի ։ Խեցի սորա է խորտաբորտ , և ոմանք սապատաձև , արտաքուստ գեղին , իսկ 'ի ներքուստ սպիտակ , զոր լուեալ 'ի սանդ , լինի դեղ ազդու ընդդէմ վատթարագոյն և թթու հիւթոց մարմնոյ , և միանգամայն չորացուցել փարատէ զհնագոյն վէրս , մաքրէ նաև զչիրտն ա- տամանց ։ Իսկ զմիսն որ է կարծր , և դժուարամար- սելի , 'ի վար արկանեն 'ի գագարեցուցանել զհոսումն որովայնի ։

Բուբբուրխուռմ . տես լաքքա ։

Բուրկանթէ . տես բուրկանցիա ։

Բուրկանս . տես քասսիա ։

Բուրկանցիա , լտ ։ բուրկա , կամ բուրկանթէ , իտ ։ շէրպէթ , տճ ։ շէպէ , արբ ։ Է անուն ընդհա- նուր նշանակիչ ամենակերպ լուծողական , և մաքրո- ղական դեղորէից ։ Բայց մեծի ճարտարութեն և խո- հականութեն պէտք են 'ի գործածութեն օգտաւէտ դեղորէիցս . նախ՝ նկատել արժան է 'ի հանգամանս կազմուածոց և խառնուածոց ախտակրին . եթէ ու- նիցի զուժաթափութի , կամ զնիհարութի կրծոց , կմ իցէ բնութե որդնալից , յայնժամ հարկ 'ի վերայ կայ ձեռն 'ի գործ մատչել 'ի կիրառութի լուծողականաց . նոյնպէս ուշի ուշով զննել արժան է , զի եթէ կնա- ռաբեր աւելորդք և դիրտք կերակրոց սահեալ իցեն 'ի ստամոքսէ դէպ յաղիսն , կմ սինլքոր ինչ մնացել 'ի ջերմախտից՝ բաժանեալ յարենէ , և ապականել , որք սովոր են հասարակօրէն համահաւաքիլ յաղիսն , յորոց մարթ է պատճառել յոլով անգամ ցաւոց , կմ խեթից , և նեղուենց սրտի , և երբեմն եւս ախտ վերնա

տութեն, յայսպիսի դիպուածս պարտ և պատշաճ է գիտել 'ի լուծողականս, զորս ուրոյն ուրոյն տեսցես 'ի տեղիս իւրեանց. և մարթ է ամենայն ումեք նկատ_մամբ 'ի պարագայս բնութեն 'ի վար արկանել, եթէ 'ի վիճակի առողջութեն, և եթէ 'ի վիճակի վատա_ռողջութեն. բայց կարևոր համարիմ աստէն գիտել, զի 'ի վիճակի առողջութեն, և առանց մեծի հարկա_ւորութեն չէ օրէն բնաւ յաւուրս շնիկ աստեղն 'ի վար արկանել զլուծողականս, և ոչ զփսխողականս. քանզի ըստ Հիպոկրատեսի, և ըստ Գաղենոսի՝ յոյժ վնասաբեր լինի, որովհետև յայսմսիկ աւուրս օդն լինի ջերմ, և չոր, և բնութիւն կենդանական զգածեալ տկարութի̄ 'ի մասին ներքին զօրութե. ուստի և ընդ_ունելու̄ լուծողական դեղորէից առաւել են տկա_րանայ, և նիհարի:

Բուէուտօ աքաչիա, կամ արպօր սիլիգուօզա վիրճի_նէնսիս սըինօզա: Է ծառ մեծ, որոյ ոստք երկայն են և գեղեցկազարդ: Տերևք սորա երկայնաձև են և պայծառ կանաչ. որք երկու երկու շարին առ մի_մեամբք: Ծաղիկն սպիտակ, երկայնաձև, և աղուա_մազուա. հոտ նորա քաղցր է և ախորժական. զօրութ̄ նորա թուլացուցիչ, բացօղ, և մեղմապէս լուծիչ. զկնի ծաղկանց յաջորդէ պատեան ինչ տափարակ, յորում լինին սերմունք երիկամնաձևք: Իսկ արմատն օգտակար է ընդդէմ ցաւոց կրծոց:

Բուէուտօ քօրալլինում, լտ: քօրալլօ ֆալսօ, իտ: եալանճը մէրճան, տճ: և ըստ մեզ՝ բուստ կեղծ: Է բոյս ինչ ծովային, թեթև, ծակոտկէն, կարծր, դիւրաբէկ, գորշագոյն, և մէջն դատարկ, ունելով 'ի վերայ սպնգանման քօսս և ոստս բազումս՝ զորէն բստոյ. յորմէ կազմեն դեղ 'ի մաքրել, և 'ի կազդու_րել զատամունս մարդոյ:

Բսիթթաքուս, լտ: բաբաակալլօ, իտ: տուտու_դուշու, տճ: տիւրէհ, արբ: թութ, կամ միւկեսւհ_քէտան և կամ միւրկիւնքի կէօյա, պր: և ըստ մեզ՝ թութակ: Է թռչուն ինչ շքեղ, ձևով մարիմոյ և մե_ծութ̄ 'ի չափ հասարակ կաչաղակի. գոյն նորա պայծառ կանաչ, գլուխն ստուար, լեզուն ընդար_ձակ, և դիւրադարձ. իսկ տուտն երկայն և գեղե_ցիկ. թաթք ոտից ճիրանաւոր, ձայնն յոյժ հիանա_լի. քանզի փոփոխէ զայն որպէս և կամի, և յոյժ դիւրաւ նմանեցուցանէ ձայնից կենդանեաց զորս

լսէ. ուստի բազմիցս ուսեալ զոմանս բարբառս մարդոյ՝ խօսել զարմանալի կերպիւ. Մինչ զի և ոչ ուսեալքն զնա՝ լսօղքն զայն բարբառ՝ կարծեն զնա մարդ։ Ուտէ զցորեան, զպտուղ, և զշաքար։ Իսկ միս նորա կարծր, բայց համեղ, զոր եփեալ 'ի ջուր և ըմպեալ, բժշկէ զվէրմնտութիւն։ Քակոր սորա փոշիացուցեալ և արբուցեալ, լինի դեղ շահաւէտ ընդդէմ տկարութեան ջլաց, և ախտի ցնցականի. չափն 'ի 20 ցորենոյ մինչև ց30 խառն ընդ հասարակ ջրոյ. բայց յարատևել արժան է զքանի ինչ շաբաթս։ Այս թռչուն գտանի 'ի զանազան տեղիս, որպէս 'ի Հնդկաստան 'ի Ճինաս, 'ի մալապար, և յափրիկէ։

Բտելլիում կամ բլանթակօ բտելլիում, լտ. բտէլլիօ, կամ բտելլօ, և կմ՝ սելլիօ, իտ. գառնը եառըք, տճ. և ըստ մեզ՝ լուախտոս։ Է խոտ, որոյ երկեակ են տեսակք. առաջին տեսակն կոչի 'ի բարբառ նոցա բտելլիում բրիմուս. որոյ ցօղունն է բոլորակ անհարթ, փուշտային և կարմրերանգ, և բարձրանայ յերկրէ իբր մի ոտնաչափ. տերեւք սորա են երկայնաձիգ, խիտ, սրածայր, թաւիչաւոր, ջղային, և շուրջանակի սղոցաձև ատամնաւորեալք։ Հասկ սորա է կարճ, որ ելանէ 'ի գագաթան, յորոյ վերայ զետեղեալ կայ փոքրիկ ծաղիկ ինչ գունաթափ, և քառահերձ. յետ ծաղկանց յաջորդէ պտուղն թաղանթային, և երկայնակառն. իսկ սերմունք նորա, որք լինին 'ի պտղի անդ՝ են երկայնաձև, յղկեալ, և սեաւ՝ ըստ նմանութեան լուոյ, որոյ վասն կոչեցաւ յանուն նորա։ Իսկ երկրորդն կոչի՝ բտելլիում վուլկարէ, որ փոքր է քան զայն. տերեւք նորա ելանեն 'ի վերայ ճիւղոց իբր երկու երկու առ միմեանս, որք բերեն զնմանութիւն տերևոց զոպայի, ծաղիկն փոքրիկ՝ որպէս և հատապտուղ նորա. բերէ և սերմունս զորէն նորա։ Իսկ արմատն սպիտակ, և շրջապատեալ մանրաթելովք։ Երկոքին սոքա բուսանին յագարակս, յայգեստանս, և յամայի վայրս։ Լի են ցնդական աղիւ և իւղով, նոյնպէս և մածուցիկ հիւթովք, և 'ի սերմանց նոցա գործեն դեղ ազդողական ընդդէմ ախտից կրծոց, հազից և նուրբ ախտից, յորժամ անտակկիւքն արիւնախառն թքանեն. օգտեն և ընդդէմ փորհարութեան, և սերմնակաթութեան, զի է խեթիչ բնութեք։ Նոյնպէս և ոչ սակաւ 'ի վար արկանեն արտաքուստ վասն ուռուցից, և ճեղքուածոց մորթոյ։

Բոխլիօ. տե՛ս բոխլլիում։

Բոօաս. այսու անուամբ ըստ անգամազննոց նշա֊նակին՝ երկու միանունք աղջեր։

Բրեմիթօ. անուամբս այս ըստ անգամազննոց իմա֊նի՝ կծկումն ինչ թաղանթից աղեաց, կամ կծկումն ստոծանւոյն։

Բրեցցեմօլօ. տե՛ս բեթրօսելինում։

Բրեքօստում. բառիւս այս ըստ անգամազննոց ցուցանի՝ քաակն սրտի։

Բրիմուլա վէրիս, կամ վէրպասքում բրաթենսէ օտօռաթում, կամ հէրբա բարալիսիս, լտ։ Խոտ ինչ, որոյ տերեւքն են երկայնաձեւք, լայն, խորտա֊բորտ, և կնճռապատ, որք սփռին զերեսօք գետնի, և 'ի միջոյ տերեւոց 'ի վեր երեւի ցօղուն ինչ երկայն իբր թզաչափ, բոլորակ, թաւիշալից, և ծնրաւոր, որ 'ի ծայրն բերէ դեղնագոյն ծաղիկ ինչ հոտաւէտ. յետ ծաղկանց արտադրէ պտուղ ինչ ձուաձեւ, ունե֊լով 'ի միջի սերմունս սեաւս, մանունս, և բոլոր֊շիս։ Իսկ արմատն ստուար, թեփալից, կարմրե֊րանգ, և թելաւոր. համով ըստ մասին դառն, և ըստ մասին տտիպ։ Այս խոտ սովորաբար բուսանի յագարակս, և 'ի դաշտավայրս. լի է իւղով և ցնդա֊կան աղիւ. շահաւէտ է 'ի դիպուածս տկարութեան ջլաց, և զգայական երակաց. օգտակար է նաև ընդ֊դէմ հարբըխոյ, որ 'ի վար արկանի եթէ արտաքուստ, և եթէ 'ի ներքուստ։

Բրուկնիա. տե՛ս բրունում։

Բրունէլլա. տե՛ս քօնսօլիտա մաճճիօրէ։

Բրունում կամ բռունուս տօմէսթիքա, լտ։ բրու֊նա, կամ բրուկնիա, իտ։ Բռիւն, գղղ։ տամասգինա, յն։ Էրիկ, տճ։ իճճաղ, կամ խօրիկ, և կամ պէռ֊ղուտ, արբ։ գէհէճ, կամ խալիւ, կամ մինան, կա՛մ մինէ, կամ նէկու, կամ նիքլ, և կամ Ֆիլք, պր։ և ըստ մեզ՝ շլոր, կամ դամոն, և կամ սալոր։ Է միրգ բազմատեսակ, քաղցածանօթ յամենայն ումեքէ. յո֊րոց առաւել ազնիւն ելանէ 'ի դամասկոս, զորոյ զնա֊մեմատն ոչ ուրեք է գտանել, մինչև 'ի պարգև ա֊ռաքեն մեծամեծ իշխանաց. որ լինի և դեղ օգտակար տենդից, և փտախտութե, զի է թուլացուցիչ, լու֊ծիչ, և զովացուցիչ բնութ՟։ Ձաղին 'ի չորս տրամե մինչև 916։

Բրունում սիլվէսթրէ, կամ սբինուս, և կամ վէր֊

ֆիլլօ, լտ: բրօնօ սալվաթիքօ, իտ: բռիւնելլիւէ, գղղ: չալը Թիքէնի, տճ: Է Թուփ կամ փոքրիկ ծառ ինչ փշալից՝ որոյ կեղեն է գորշագոյն, կամ ծիրանագոյն և գառնահամ, միանգամայն և դեղ միջահատական տենդից: Տերևք սորա նման են տերևոց շլորենոյ, բայց կարծր քան զայն: Ծաղիկն ելանէ 'ի վերայ ոստոցն ընդ տերևովք, և է մանր, սպիտակ, քնքուշ, և հինգթերթեան. զկնի ծաղկանց յաջորդէ պտուղն բոլորշի, և ստուար 'ի չափ խաղողոյ, գոյն նորա Թուխ կամ երկնագոյն, ունելով 'ի միջի Թանձր կամ հիւԹ կանաչագոյն, և տտպահամ, միանգամայն և դեղ աղդողական ընդդէմ Թունից, հոսման արեան, և հնագոյն փորհարութե. արգելու նաև զժայթքումն, զի է խԹիչ բնութ. զնոյն գործութիւն ունին նաև սորա փայտն, և տերևքն. չափն 'ի 20 ցորենոյ մինչև ց60: Իսկ արմատն փայտային, սեաւ, և տարածողական: Այս Թուփ բուսանի 'ի դաշտավայրս, և 'ի ցանկապատս տեղիս. լի է խոզով և գոյացական աղիւ:

Բրունօ սալվաԹիքօ. տես 'ի վերոյ:

Բրօքօլի. տես 'ի ներքոյ բրօքօլիս:

Բրօքօլիս, լտ: բրօքօլի, կամ բէկօլա, իտ: բիրէպօլու, կամ կիրապօլու, տճ: իկալէր, արբ: մուսխա, պր: և ըստ մեզ՝ ականամոմ, կմ ակնմոմ: Է նիւԹ ինչ կարմրերանգ կամ դեղին, և մածուցիկ. որով մեղուք խցանեն զծակուռս փեԹակի. բնութ է մեղմացէս լուծիչ, մաքրեցուցիչ, և անօսրիչ. հաշակաւոր է 'ի գխլուածս հնագոյն հազից, և նորոգ ընկալեալ վիրաց. ամրապնդեալ հաստատէ նաև զճմլեալ և զլուսեալ մասունս ոսկերաց:

Բրօսթալթէ. բառիս այս ըստ անդամագինեաց իմանի՝ երկու մասունքն առնի անդամոց:

Բօքլէս, լտ: կարէթթա կամ կարէթթօ, իտ: արեակ պիլէզիղի, տճ: Անուամբս այս նշանակեմաւն, և ջիւլ ինչ, որ գտանի 'ի ստորոտ Թամբի արունից կից ընդ կրնկան:

Բօքուլակօ, կամ Թուսիլակօ ալթէրա, կամ քէլիտօնիա բալուսթրիս, կամ էքիմէտիում, և կամ ֆարֆուճիում, լտ: Է խոտ, որոյ տերևքն ունին զձև փոքրիկ ծիծեռնախոտոյ, բայց քառապատիկ մեծ քան զնա, և եղերք նորա ողոգաձև ատամնաւորեալք, և 'ի միջոյ տերևոց ելանէ ցօղուն ինչ բո-

լորակ, ծիւղալից և մի ոտնաչափ երկայնութ̃. որ և շրջապատեալ զարգարի գեղնագոյն և բազմաթերթ ծաղկամբք. յետ ծաղկանց արտադրէ զպտուղն. և իւրաքանչիւր հատ պտղոյ ունի բազում սերմանս կարգեալս 'ի ձև աստեղ։ Ունի արմատ ստուար, սպիտակ, և թելաւոր։ Այս խոտ բուսանի 'ի լճային և 'ի ճախճային տեղիս. ունի բնութիւն զովացուցիչ և մաքրողական արեան։

Բօբուլուս, կամ օբուլուս, իտ։ բիօբբօ, կմ բիօբբօ և կամ օբբիօ, թր։ գավագ աղաճը, կամ թօզ աղաճը, տճ։ կաւապ, կամ ապսամ, և կամ ապուամ, արբ։ սիբիտար, կամ տիուտալ, պր։ Եւ ըստ մեզ՝ կաղամախ։ Է ծառ ինչ շքեղ, և ոստախիտ. որոյ երկեակ է տեսակ. առաջին տեսակն կոչի 'ի բարբառ լատինացւոց՝ բօբուլուս ալպա, կամ Փարփարուս անթիգուօրում. որոյ բունն է երկայն, ուղիղ, սպիտակ, ստուար, թեթև, և դիւրաւ ծեղքելի։ Կեղև սորա է յղկեալ, սպիտակ, և հարթ. զոր 'ի վար արկանեն 'ի դեղորայս, որ է փարատիչ չիաթիքա անուանեալ յօդուածացաւութեան։ Տերևք սորա են երկայնակաձև, լայն, անկիւնաւոր, հերձոտ յոյժ, և ձևացեալ իբրև զթաթ բացեալ ձեռին մարդոյ. գոյննոցա 'ի վերին երեսս սպիտակ, իսկ 'ի ներքոյ մոխրագոյն, և լի աղուամաղիւք։ Պտուղն երկայնաձև, յորմէ հանեն զիւղս։ Իսկ արմատն տարածողական։ Իսկ երկրորդ տեսակն կոչի՝ բօբուլուս նիկրա, որ և է իբրև զնախընթաց ծառս բարձրագոյն, և ոստալից, բայց փայտն է կարծր և ջլային, որ դժուարաւ կարէ ծեղքել։ Տերևն երկայնաձև, սրածայր, ստուար, կանաչախառն դեղին, մածուցիկ, և հոտաւէտ. զոր 'ի գործ ածեն 'ի դեղ ժանտախտի, թանչացաւութեան և յօդուածացաւութեան. զի է խթիչ բընութ̃։ Պտուղն ողկուզօրէն երկայնաձև, թաղանթային, և կանաչագոյն, որ 'ի հասանիլն ինքնին բացեալ լինի ընդ մէջ, և յայնժամ երևին 'ի նմա սերմունք փոքրիկ։ Իսկ արմատ նորա ձգի 'ի խորս երկրի։ Ընձիւղ կամ պտուկ այսր ծառոյ լինի սպեղանի վիրաց, և ցաւոց թանչից, զոր և 'ի վար արկանեն 'ի բաղադրութեան այնմ սպեղանւոյ, որ իտալերէն ունկվէնթօ բօբուլէօնէ կոչի։ Երկոքին սոքա բուսանին 'ի խոնաւուտ և 'ի ջրարբի տեղիս։

Բօբօնէ. տես մէլօ։

**Բոթամօճէթօն**, կամ ֆօնթալիս մաեօր լաթիֆօլիա մաւլկարիս, լտ ։ Է տունկ ինչ ըճային, որ արձակէ յաճախ պցօղունս երկայնաձիգս, բոլորակս, և ճիւղալիցս ․ լինի նրբատերև որպէս զսէզ, և ոմանք ներհակաբար լայնատերև իբրև զշղախոտ ․ բերէ ծաղիկս կարմրերանգս, և քառեակ թերթեանս ․ ապա կարմրագոյն սերմունս երկայնաձևս, տուտարս, սրածայրս, և սղխտակահիւթս, որք շարին քառեակ քառեակ առ միմեամբք ։ Իսկ արմատն ստուար, բոլորակ, տատալէց, և սպիտակ, որ ձգի 'ի խորս երկրի ։ Այս բոյս նուազ է աղիւ և խըղով, և բնութիւ զովացուցիչ, թանձրացուցիչ, և սեղմիչ ․ օգտաւէտ է և կարի պատշաճագոյն 'ի գինդուածս փորհարութե, և հոսման արեան ։ Դնախնիք 'ի գործ ածէին զայս 'ի պէսպէս գեղորայս, նաև յառատացուցանել զհերս գլխոյ ․ իսկ այժմ սակաւ 'ի կիր առնուն յեւրոպիա ։

**Բոթառաս**, իտ ։ Աղ ինչ հանեալ 'ի մոխրոյ բուսականաց ։

**Բոթէնթիլլա**, կամ արճէնթինա, և կամ անսէրինա, լտ ։ բօթանթիլ ասմբանթ, գղղ ։ Է գալարի ինչ, որ սողօրաբար բուսանի 'ի գաշտավայրս, և յեզերս ճանապարհաց, արձակելով յարմատոյ զբազում տերևս նմանս տերևոց սկրիմօնիա կոչեցեալ խոտոյ, և 'ի մէջոյ տերևոց ելանեն փոքրիկ ցօղունք ․ որք 'ի ծայրս բերեն շեկագոյն ծաղիկս լայնաբացս, և հինգթերթեանս՝ ըստ նմանութե ծաղկանց հնգատերևենի ․ ունելով 'ի մէջն առէջս բազում ․ զկնի ծաղկանց յաջորդեն պտուղք բոլորշիք, իւրաքանչիւր պաղոց ունելով զհերբեանց սերմունս փոքրիկս ։ Իսկ արմատն անհոտ, երկայն, և նուրբ, միանգամայն և գեղ փորհարութե ։ Այս գալարի բնութիւ է մաքրողական, զովացուցիչ, և սեղմիչ ․ օգտակար է ընդդէմ փորհարութե, հոսման արեան, և միզարգելութե ․ միանգամայն և պրդուէ զքարերս միզարանի, և մեղմէ ըղցաւս ատամանց ․ չափն կեղևոյ արմատոյն 'ի կէս տրամէ մինչև ըմի, երկու կամ երեք անգամ յաւուրն ։

**Բոթէրիում**, կամ սբինա հէրչի մինօր, և կամ թրակաքանթհա ալթերա, լտ ։ Է փոքրիկ ծառ ինչ փշալից՝ նման թփոյն այնմիկ որ իտալերէն կոչի տրակաքանթէ ․ որոյ ոստքն են երկայն իբր մի ոտնաչափ, ընդարձակ, թիւրահակ, մաշլիր, և սպիտակ ։ Տերևք տրա են մանրիկ, բոլորակաձև, սպիտակ, և լի ա-

ղուամաղիւք, որք ելանեն երկու երկու առ միմեամբք։ Ծաղիկն ընդային և սպիտակ, ունելով 'ի միջի առէջս ինչ փողաձև. զկնի ծաղկանց յաջորդէ պատեան ինչ խորշխորշանի, յորում պարունակին սերմունք երկայնաձևք։ Իսկ արմատն երկայն, ստուալից, մանրուցիկ, արտաքուստ սեաւ, իսկ 'ի ներքուստ սպիտակ, և սնկալից, որ լինի դեղ աղցու ընդդէմ վիրաց, զի է փարատիչ, և միաւորիչ։

Բօլթիօ կամ բօցիօ. տե՛ս պեպլաննոս։

Բօինթիանա, կամ Փրուտէքս բաւօնինեա, կամ քրիսթա բաւօնինա սինենսիում, և կամ աքաշիա օրտիս ամէրիքանի ալթէրա Փլօրէ բուլքէրրիմօ, լտ։ Է փոքրիկ ծառ ինչ վայրի յաճախեալ անտառի ընդամենայն տեղիս յաշխարհին ամերիկոյ, և 'ի բարբատոսս եւրոպայիոյ, որ բարձրանայ յերկրէ իբր վեց կամ եօթն ոտնաչափ. որոյ կեղեն հարթ է և ծիրանագոյն, և 'ի վերայ ունի փուշս ճանկաձևս. հասկ նորա երկայնականութ, և ծիրանախառն կարմիր, յորոյ վերայ ղետեղեալ կայ գեղեցիկ և փնջաւոր ծաղիկ ինչ ծիրանագոյն. բերէ պտուղ տափարակաձև, կարծր, և սպիտակ, բաշխեալ և պատեալ երեք նրբակեղև պատեանիւք։ Իսկ կորիզն կարմրագոյն, և բոլորակաձև։

Բօլբա. տե՛ս բուլբա։

Բօլբաչչիօ, իտ։ անձէս, յն։ պալաւըր, ան։ ազք։ կամ սիւմմանթրիկլի, տրք։ բուժ, կամ լինկ, պր։ Եւ ըստ մեզ՝ թամբ սրունից. է մսեղ մասն, որ կայ 'ի յետոյս սրունից։

Բօլէմօնիում, կամ վալէրիանա կրէքա, կամ վալլէրիանա չէրուլէա, լտ։ Է բոյս ինչ խոտային, և դառնահամ, որոյ տերևք են մշտականաչ, ջղալիր, երկայն իբր մատնաչափ. և 'ի միջոյ տերևոց ելանէ ցօղուն ինչ երկայն իբր երկու ոտնաչափ, ստուար մատնաչափ, թաւիշաւոր, դարոնագոյն, և մէջն դատարկ։ Ծաղիկն ելանէ 'ի գագաթան, և է հինգթերթեան, հոտաւէտ, երկնագոյն, և փայլուն, և 'ի տեղիս տեղիս նաև սպիտակ, կամ կարմրագոյն. զկնի ծաղկանց արտադրէ հատապտուղ փոքրիկ, և խորշխորշանի. յորում լի են մանրիկ սերմունք սեաւք, և երկայնաձևք. իսկ արմատն թելալից և սպիտակ։ Այս բոյս լի է իւղով և գոյացական աղիւ, և զօրութ̃ մաքրիչ, և սրբիչ վիրաց։

Բօլիբուս, կամ աղինուս մարինուս, լտ: բօլիբօ, իտ: բըլթարօս, ար: և ըստ մեզ՝ պողիպոս: Է ձուկն ինչ ծովային՝ նմանեալ ըստ իմիք կաղամար ձկան. զի ունի զոտս ութ երկայնաձիգս, ստուարս կարծրս, և շրջապատեալս, յորոց չորս առաջինքն իցեն նմա յօժարանել զքաղցաղոր կենդանիս, և հեղձուցանել. իսկ յետինքն 'ի գնալ և 'ի լուղել 'ի ջուրս, որոյ վասն և յոյնք յորջորջեն՝ օքտաբօտիայ, որ առ մեզ ստուգաբանի՝ ութոտնեայ: Սա հեղու յիւրմէ զհիւթ մթին կարմիր իբրև զմելանահամ. իսկ միս նորա ապնդային է և դժուարամարսելի, այլ օգտակար աղեաց:

Բօլիբօ. տես բօլիբուս: Դարձեալ՝ է միս ինչ աճեցեալ 'ի ներքս անդ 'ի ռնգունս:

Բօլիբօտիում գաւէռաչինում, լտ: բօլիբօտիօ, իտ: բօլիբօտ, գղղ: պէսպայիշ, ար: և ըստ մեզ՝ պողիպոդ: Է ազգ ինչ բուսոյ աճեցեալ իբր 'ի բազումս 'ի վերայ հնագոյն կաղնւոյ. վասն որոյ կոչի և 'ի բարբառ լատինացւոց՝ բօլիբօտիում գուէրչինում, որ 'ի մեզ ստուգաբանի պողիպոդ կաղնւոյ: Տերև սորա ըստ իմիք նման է տերևոյ ֆիլիչէի: Պտուղն՝ գնտաձև է և թաղանթային, ունելով 'ի մէջն սերմունս մանունս: Իսկ արմատն երկայն իբր մատնաչափ, ստուար, դիւրաբեկ, թելալից, պալարաւոր, նաեմագոյն, քաղցրահամ և համեմային: Այս բոյս բնութ̄բ է թուլացուցիչ, բացողական, և մաքրողական արեան, որով բառնայ զխցանս լերդի, և փայծեղան, և փարատէ դշարաւալից խոյլս պարանոցի, և զախտն անուանեալ սքօռպութօ. և ս օգտէ հնագոյն հարբղխոյ: Չափն ութ դրամ ը̄. մի և կէս լիտր ջրոյ:

Բօլիբօտիօ. տես բօլիբօտիում:

Բօլիթրիքհում, կամ թրիքօմանէս, և կամ թրիքօմանէս մաս, լտ: բօլիթրիքօ, իտ: Է խոտ մշտադալար, յաճախեալ յապառաժուտս, և 'ի խոնաւուտս. որոյ ցօղունն է բոլորակ, կարճ, բեկանուտ, և սեաւ: Տերևք նորա են փոքրիկ, բոլորշի, փափուկ, և երկայնականութ, և շուրջանակի սղոցաձև ատամնաւորեալք, և 'ի վերայ ունի փոշիս նուրբս: Պտուղն բոլորակ, ունելով 'ի մէջն սերմունս մանունս: Իսկ արմատն նրբաթել, և սեաւ: Սա բնութ̄բ է բացողական և մաքրողական արեան, շահաւէտ է ը̄դդէմ ցաւոց կրծոց և փայծեղան. բառնայ և զդաշտանս կանանց:

Բոլխթրիքօ. տես բոլխթրիքհում։

Բոլքկուլա, կամ Ֆլօս ամպարվալիս, լտ։ Է խոտ որոյ ցօղունք են փոքրիկ, կարծր, ուղիղ, պարարտ, կանաչախառն կարմիր։ Տերեւք նորա են փոքրիկ, և բոլորակաձև, որք խիտ առ խիտ ստուին զերեսօք գետնի։ Ծաղիկն մանր և երկնագոյն. բայց յոմանս տեղիս լինի և մանուշակագոյն, ծիրանագոյն, և սպիտակագոյն. յետ ծաղկանց յաջորդէ պտուղն առ փարակաձև, պատեալ հնգեակ թերթիւք, և 'ի միջի ունի սերմունս երկայնաձևս։ Իսկ արմատն փայտային, մանր, և դառնահամ։ Այս բոյս սովորաբար բուսանի 'ի խոտաւէտ տեղիս, և սկսանի ծաղկել յամսեանն մայիսի. լի է հիւթով, բայց նուազ աղիւ, և բնութ. մեղմապէս լուծիչ, եմաքրողական արեան, որով և սաստացուցանէ զկաթն կանանց։

Բոլիկուլա վիրճինիանա, լտ. եւ, իտ։ կամ բոլիկալա սէնէկա։ բոլիկալա, գղղ։ Է հաշակաւոր արմատ ինչ փայտային, ստուար իբրև զճկոյթ մատն մարդոյ, ոստալից, դժուարաբեկ, և ստուարակեղև. արտաքուստ գորշագոյն, իսկ 'ի ներքուստ սպիտակ. համով է տախպ, և դառն, միանգամայն և ջերմահամ, կամ համեմային։ Այս արմատ' եթէ արժան իցէ հաւատալ ամերիկացւոց' գերազանցէ զօրութ. զամենայն բժշկական բուսովք, համարեալ առ նոսա իբր դեղթափ ընդդէմ խածուածոց օձից և կարճաց։ Բայց մեք առեալ 'ի կիր արկանեմք զսա 'ի գիւտուածս թոքաժետութե, կշտացաւութե, խիթից լանջամաշկի և թոքոց, բորբոքման, և հնագոյն ախտից կրծոց։ Նոյնպէս յաճախ 'ի վար արկանեմք զսա 'ի բժշկութի ծիւրական կամ նուրբ ախտից պատճառելոց յերկարատև խօթութեանց։ Զայս արմատ եա բազմօրինակ գրեմ տալ հիւանդաց։ Զօրօրինակ, յերկու և կէս լիտր հասարակ ջրոյ' արկանի չորս ունկի յարմատոյ սորա ընդ մէջոց 12 ժամուց։ Զոր և մնայ երկու լիտր. և երբեմն յաւելեալ լինի 'ի վերայ որում մի' կօմմա ամմօնիաքա, և մի ունկի' օսսիմէլէ չիլլիթիքօ։ Ցինֆուզիոնէ առնի յերկուս ժամս միանգամ առնու ախտաժէտն երկու ունկի առ իւրաքանչիւր նուագ։ Եւ ըստ ոմանց հեղինակաց ունի եւս զզօրծունէութի առ 'ի փարատել զջրգողութի, զմիջահատական տենդ և զլերդացաւութի, նաև զարիւնախառն թքումն, որ սովոր է գալ զկնի կշտա-

ցաւութեան, և թոքախտաւորութեան։ Այս արմատ յաճախ գտանի յամերիկայ, 'ի Հնդկաստան, և 'ի քանատա։ Բնութիւն է թուլացուցիչ և միզաբեր։ Բոյս այսր արմատոյ է ուղիղ, գալարագոյն, և ձիւղալից։ Տերևն ձուաձև, և սրածայր։ Ծաղիկն հաւկաւոր, և սպիտակ. բայց յամենայն տեղիս լինի և ծիրանագոյն։ Պատմի թէ 'ի յալբէսթուի անուանեալ լերինն գտանի բոյս ինչ կարի նման բօլիկալա վիրձինիանաի, բայց սաստիկն է զօրութիւն քան զայն։

Բօլիկօնաթում, և կամ սիձիլլում սալամօնիս, լա։ սիձիլլօ տի սալամօնէ, կամ սիձիլլօ տի սանթամարիա; իտ։ Մէհիւր սիւլէյիմանի. կամ Մէհիւր Մէյրէմ, տճ։ Խայթմի սիւլէյիման, արբ։ Եւ ըստ մեզ ստուգաբանի՝ կնիք սաղօմոնի։ Է խոտ ինչ, որոյ ցօղունն է բոլորշի, կոր, յղկեալ, և երկայն իբր երկու ոտնաչափ։ Տերևք սորա են լայն երկայն, և փաթեալ զմիմեամբք՝ ըստ նմանութեան տերևոց կաղամբի։ Ծաղիկն սպիտակ, հերձոտ, և թեքեալ։ Զկնի թօթափելոյ ծաղկանց 'ի վեր երևին հատապտուղքն փոքրիկ, իբրև 'ի չափ սիսեռան, և իւրաքանչիւր հատ պտղոյ ունի երրեակ սերմունս նման վգնի։ Իսկ արմատն երկայն, ստուար իբր մատնաչափ, թելալից, պալարաւոր, և սպիտակ, և բնութիւն սեղմիչ և սնուցիչ. զոր լուեալ 'ի փոշի մանրամաղ, լինի կերակուր մարդկան 'ի ժամանակս սովու. նաև դեղ օգտաւէտ 'ի դիպուածս ֆլուօրէ պիանքօ յորջորջեալ ախտի։ Իսկ զպտուղն, որ է ժայթքեցուցիչ, և լուծողական բնութիւն, 'ի վաղ արկանէին նախնիք 'ի պէսպէս դեղորայս. բայց յայսոսիկ դարս գրեթէ գլխովին է անգործածելի։

Բօլիկօնում, կամ պիսթօրթա, լա։ քօռաբիձիուօլա, իտ։ Է խոտ ինչ երկայն իբր մի և կէս ոտնաչափ. որոյ տերևքն են ձուաձև, և մանր։ Ծաղիկն սպիտակ, և մանր. յետ ծաղկանց ելանէ պատեան ինչ շագանակագոյն, ունելով 'ի միջի սերմունս ստուարս։ Իսկ արմատն ստուար, կարծր, և թելաւոր, և բնութիւն յոյժ սեղմիչ. զոր առ նախնիս 'ի կիր արկանէին 'ի դիպուածս փորհարութեան և հոսման թանչից. բայց այժմ անպիտան համարի։

Բօլիում մօնթանում, լա։ Է բոյս, որոյ ցօղունն է երկնագոյն և երկայն իբր կէս ոտնաչափ։ Տերևն փոքրիկ, երկայն, և շուրջանակի սղոցաձև ատամնաւորեալ։ Ծաղիկն մանր, որկորաձև ոսկեգոյն, և

հերձոտ, որ ելանէ 'ի գագաթան հանդերձ բոլորշի սերմամբ: Լինի սա 'ի բարձրաբերձ լերինս, յաղտաղտին, և 'ի ջերմագին տեղիս: Բնութիւն է բացաղական, և միզաբեր. ըստ ոմանց նախնի հեղինակաց ունի զզօրութիւն 'ի բուժել զգալլուկն, զցաւս գլխոյ, և զխածուածս օձից:

Բոլմօնարիա. տես բուլմօնարիա:

Բոլմօնէ. տես բուլմօ:

Բոլսօ. տես բուլսուս:

Բոլվէրէ. տես բուլվիս: Դարձեալ, այսու անուամբ իմանի և վառօթ:

Բոլվէրէ ասսօրպէնթէ տէլ վէտէլլիօ, իտ: Բուլվիս ապսօրպէնս վէտէլլիի, լտ: Է փոշի ինչ բաղադրական, օգտաւէտ 'ի դիպուածս գժնեայ տենդից, և բորբոքման խախացոցի, կամ ստամոքսի. արգելու և զժայթքելն, և գրգռէ զքիրտն. որ այսպէս բաղադրի: Առ քսան և չորս կշիռ ցորեան՝ անթիմօնիօ տիաֆօրէթիքօ, և նոյնչափ՝ կարմիր բուստն փոշիացուցեալ, երկոտասան ցորեան՝ վէթրիօլօ տի մարթէ, 24 ցորեան՝ օքքի տի քանկքրօ, և նոյնաքանակ՝ չինապրօ նաթիվօ. առ և երկու ցորեան՝ էսթրաթթօ տ' օբիօ, այլ և 24 ցորեան՝ քանկքէ բրէբարաթէ: Չափն 'ի չորս կշիռ ցորենոյ մինչև ց12, երկու անգամ յաւուրն:

Բոլվէրէ արթէթիքա տի բարաչէլսօ, իտ: բուլվիս արթիքուլարիս մօռապուս, լտ: Փոշիս այս ունի մասնաւոր զօրութիւն 'ի մաքրել զորովայնն, և 'ի փարատել զցաւս յօդուածոց, մանաւանդ զշիաթիքա անուանեալ յօդուածացաւն, որ այսպէս յօրինի: Առ աքամօնիա ցոլֆօրաթա, էրմօտաթթիլի, թուրպիթօ, սէննա, ցուքքէրօ ֆինօ, յիւրաքանչիւրոցն մէն մի ունկի. զամենայն բարիոք ծեծեալ. արկ 'ի մէջ միոյ ապակեայ անօթոյ. չափն 'ի 20 ցորենոյ մինչև ց60:

Բոլվէրէ բուրկաթիվա, իտ: բուլվիս բուրկաթօրիուս, լտ: չէրպէթ սուֆուֆ, տճ: Փոշիս այս օգտաւէտ է 'ի դիպուածս հարբղխոյ, և իջուածոց մանաւանդ առթելոց 'ի թանձր հիւթոց. մաքրէ մեղմապէս քերելով, և 'ի դուրս վանելով զաղտեղութիւն ստամոքսի, և ստորին որովայնի: Բաղադրեալ 'ի կէս տրամ՝ եալապա արմատոյ լուծելոյ, և յերկու տրամ քրէմօրէ տի թարթարօ փոշիացելոյ: Եւ զայս պարտ է առնուլ գաղջ ջրով 'ի պահ առաւօտու 'ի ծոմուս:

Բօլվէրէ էբիլէբթիքա տէլ մարքէզէ, իտ ։ բուլվիս էբիլէբթիքուս մառքիօնիս, լտ ։ Փոշիս այս ունի զմասնաւոր իմն գործունէութիւն ախտի մանկանց, գողգոջման սրտի, և լուծման որովայնի, մանաւանդ յերախայս 'ի բողբոջիլ ատամանց նոցին, և ևս 'ի դիպուածս ճճիաւոր տենդից, որ այսպէս յօրինի ։ Ա՛ռ չորս տրամ՝ րատիչէ տի բէօնիա · վիսքիօ գուէրչինօ · ավօրիօ բրէբարաթօ · ունկիա տ' ալչէ, սբօտիօ · քօրնօ տի չէրվօ քրուտօ · քօրալլի րօսսի, քօրալլի պիանքի · մարկարիտա բրէբարաթօ · յիւրաքանչիւրոցն մէն մի տրամ · զամենայն լուսեա 'ի փոշի մանրամաղ իբր զալիւր, յոր յաւել 20 հատ՝ ֆօկլի տ' օռօ · զոր պարտ է առնուլ երկու անգամ յաւուրն, ըստ չափու 40 ցորենոյ ։

Բօլվէրէ տի կուլթէթա րիվէրիօ, իտ ։ բուլվիս տէ կուլթէթա րիվէրիօ, լտ ։ Փոշիս այս է դեղ պատշաճողական պատուատից գլխոյ և ախտի ցնցականի 'ի վերայ եկելոց մանկանց, իջուածոց անդամադօսութեան, լուսնոտութեան, և այլ ամենայն ախտի ջղաց · որ այս կերպ կազմի ։ Ա՛ռ րատիչի տի բէօնիա · սէմի տի բէօնիա · րատիչէ տի տիթթամօ պիանքօ · վիսքիօ գուէրչինօ, յիւրաքանչիւրոցն կէս կէս ունկի · ա՛ռ և երկու տրամ՝ սէմի տ' աթրիբլիչէ · երեք տրամ՝ քրանիօ ումանօ · մի և կէս տրամ՝ քօրալլի րօսսի · և նոյնչափ՝ ճիաչինթի բրէփարաթի · այլև երեք տրամ՝ ունկիա տ' ալչէ · և մի տրամ ֆօկլի տ' օռօ ։ Զամենայն լուսեա 'ի նուրբ փոշի, և արկ 'ի մէջ միոյ տուփակերպ անօթոյ · չափն 'ի գործ արկանելոյ է 'ի 10 կշիռ ցորենոյ, մինչև ց30 միանգամ յաւուրն ։

Բօլվէրէ հաննօվէրիանա ուզալէ, իտ ։ բուլվիս հաննօվէրիանա ուզալիս, լտ ։ Կարմրերանգ փոշիս այս օգտաւէտ է ընդդէմ տկարութեան սրտի, և ամենակերպ ցաւոց գլխոյ, և ս հնացելոյ · որ այսպէս յօրինի ։ Ա՛ռ կէս ունկի կէնէպրօ նաթիվօ, և նոյնչափ՝ շաքար մաքուր · վեց չիթ իւղ կինամոնի, և չորս հատ՝ ֆօկլիօ տ' օռօ ։ Զայս ամենայն լուսեա 'ի նուրբ փոշի · չափն 'ի 4 ցորենոյ մինչև ց20 ։

Բօլվէրէ տի ռօվէրէ · տես հատ · ա · գլ · ա · երես 27 ։

Բօլվէրէ քանցիանա, կամ տի քօնթէսսա տի քէնթ, իտ ։ բուլվիս քանթհիանուս, լտ ։ Փոշիս այս շահաւէտ է 'ի դիպուածս դժնեայ և հրատապ տենդից ։

ծաղկանց, վարդախտից, փորհարութեն, ժանտախտի, բծաւոր ջերմախտից, կշտացաւութեց, և ամենայն կերպ թալկացման և նուաղման սրտի, եւ թունից օձից, և անկոց, որ այսօրինակ բաղադրի: Առ չորս ունկի տակից սեաւ մասն ծովային խեցգետնոյ, յիտալացւոց կոչի՝ բունթէ նէռէ տէ՛ բիէտի տէ՛ քանքրի մարինի. մի ունկի՝ օքքի տի քանքրօ. և նոյնչափ մարկարիթէ. կէս ունկի՝ քօնթրա եէռվա. մի ունկի՝ քօրալլի ռօսսի. կէս ունկի՝ սէրբէնթարիա վիրճինիանա. երեք տրամ՝ պէցօար օրիէնթալէ. առ և 80 կշիռ ցորեան՝ օսսի տի քուօռ տի չէրվօ. և 40 ցորեան քրօքօ օրիէնթալէ: Զայսոսիկ ամենայն լասեա ի նրբագոյն փոշի. չափն 'ի 20 ցորենոյ մինչև 960:

Բօլվէրէ քօնթռա լա Թօսսէ քօնվուլսա: Փոշիս այս օգտաւէտ է ընդդէմ ախտի ցնցականի, լուսնոտութեն, գժնեայ և ցնցական հազից, և հարբղխոյ իջելոյ 'ի ջիղս, որ այսպէս բաղադրի: Առ երեք կշիռ ցորեան՝ փոշիացուցեալ արմատն պէլլա տօննայի, և քսան ցորեան՝ լեգուերիցիա փոշիացուցեալ, այլև տրամ մի շաքար: Բաժանեա սատի երկոտասան մասունս. և տացին երկու կամ երեք հատք յաւուրն:

Բօլվէրէ քօնթռա վէռմի, կամ վէռմիֆուկա, իտ: ճուալլիս ամթի վէռմիս, լա: Փոշիս այս բաղադրեալ յատկապէս 'ի սատակել զճճիս և զորդունս որովայնի, և միանգամայն օգտաւէտ ընդդէմ ճճիաւոր տենդից, այսպէս յօրինի: Առ կէս ունկի՝ ամենանուրբ խարտած երկաթոյ կամ պողպատի. և երկու տրամ՝ էթիօբէ մինէրալէ: Բաժանեա սատի վեցցեակ մասունս. մէն մի տացի ընդ առաւօտս 'ի ծոմուսն, այլև մէն մի ընդ երեկս, խառն ընդ մեղու կամ ընդ փոքր ինչ թիւրակէսի:

Բօմա ատամի. տես բօմում ատամի:

Բօմալթա, իտ: Է անուն ընդհանուր, որով նշանակին իւղք անուշահոտք, կազմեալ 'ի զանազան նիւթոց, և 'ի ճարպոյ կենդանեաց:

Բօմ Ֆօլլիքս, կամ Նիլ, կամ Նիհիլի ալպում, կամ քաբուիթէս, և կամ պուլլա քատմիէա քալամիթէս, լա: բօմֆօլիճէ, իտ: Է ցնդական մասն պղնձոյ, մածեալ 'ի ներքսակողմն անօթոյն՝ յոր հալի պղինձն խառն ընդ ճիալլամինա կոչեցեալ քարի: Զօրութի նորա մաքրող, և ցամաքեցուցիչ վիրաց, եթէ փոշիացուցեալ ցանեցի, կամ ապեղանի կազմեալ դիցի 'ի

վերայ նոցա • փարատէ և զսերմնակաթութիւն, յաճախակի գրգիռ առնելով ընդ միզանց ճանապարհն : Օգտաւէտ է նաև ընդդէմ երկարատև տենդից, զի է ուժգին ժայթքեցուցիչ, չափն 'ի 10 ցորենոյ մինչև ց30 :

Բօմում ատամի ; կամ բօմա ատամի, կամ բօմում ասսիրում կամ մալըսա ատամի, և կամ մալըսա ասսիրիա, լտ : բօմօ տի ատամօ, իտ : Եւ ըստ մեզ խնձոր ադամայ : Է տեսակ ինչ պտղոյ յաղդէ լեմոնի • որոյ կեղևն է ստուար, խորտաբորտ, և. դեղնագոյն, և բազմաճեղքուած • մէջ նորա ըստ մասին նման է կիտրոնի, և ըստ մասին լեմոնի, այլ անհամ • զոր 'ի վար արկանեն 'ի դեղորայս, որ է փարատիչ երիկամնաժեռութեան, միզարգելութեան, միջահատական և հանապազօրեայ տենդից • ապաքինէ նաև զախտ ոջոտութօ : Ծառ սորա սովորաբար բուսանի 'ի բուրաստանս, և յերկիրս ջերմագինս :

Բօմում կրանաթում, կամ բունիքա կրանաթում, կամ մալըում կրանաթում • և կամ մալըսա բունիքա, լտ : մելակրանա, իտ : կռընատ, գղղ : ռոտիա, յն : ռոմման, արբ : նասբալ, պր : Եւ ըստ մեզ՝ նուռն : Է պտուղ գնտակակերպ նարնջաչափ մեծութբ • շուրջ զորով պատեալ կայ կեղև ինչ կարծր կարմրախառն դեղին, զոր չորացուցեալ վարեն 'ի պէտս սեաւ ներկի • վարի ևս 'ի բժշկական դեղորայս, որ է սեղմիչ բնութբ, որով օգտէ հնագոյն փորհարութեն, և թանչից • այլ 'ի մէջն անդ պտղոյն՝ ունի բազմաթիւ հատս թամբալիս, գեղեցկաշարս, և թաղանթապատս • գոյն նոցա ոմանց կարմիր են, և ոմանց սպիտակ • իսկ համն անուշակ, միանգամայն և դեղ օգտակար զօրացուցիչ նուաղելոց, և զովացուցիչ սրտի • և իւրաքանչիւր հատից ունելով զիւրեանց սերմն 'ի միջի, որ է երկայնաձև, միանգամայն և սեղմիչ բնութբ : Ծառ սորա է միջահասակ, քնքուշ, և լայնատարած, որ առաւել տարածէ զինքն 'ի լայնութեն քան 'ի բարձրութեն • որոյ ոստքն են կարճ եռանկիւնի, և փշալից : Տերևքն փոքրիկ, և երկայնաձև ըստ նմանութեն տերևոց մրտենւոյ : Ծաղիկն հինգթերթեան, քնքուշ, կարմրերանգ, և խոռոշաւոր, ունելով 'ի վերայ առէջս 'ի գոյն գեղեցիկ դեղին, զոր լատինք պալաուսթիում կոչեն, որ է բնութբ սեղմիչ• ունի զգործունէութի 'ի փարատել զփոր-

հարութն, և 'ի խափանել զյորդառատ հոսումն թանչից կամ արեան ։

Բօմում նեռանցիում. տես աուրանցիում ։

Բօմում սբինօզում. տես սթրամօնիում ։

Բօմում ամօրիս, կամ սօլանում լիգօփերսիգում, և կամ առուէա մալա, լտ ։ բօմի տօռօ, իտ ։ Ֆռէնկ բաթլիճանը, տճ ։ Է՝ տունկ յաճախեալ ամենայն ուրեք 'ի պարտէզս, և 'ի բուրաստանս, որոյ տերեւքն հոտոտ են և թաւիշաւոր ։ Իսկ պտուղն բոլորշի, և թթու, յորմէ արէպ կազմեն կերակուր, որ է օգտակար ընդդէմ անդամալուծութեան ։

Բօմօ տի ատամօ. տես բօմում ատամի ։

Բօմօ տի թէրրա. տես սօլանում թուպէրօզում ։

Բօմօ քօթօնիա. տես մալաչիտօնիա ։

Բօսթէմա. տես բուսթուլա ։

Բօսքա ; իտ ։ Ըստ մեզ՝ քացախաջուր, է հեղեղուկ ինչ բաղադրեալ 'ի ջրոյ, և 'ի քացախոյ, որով ողողեալ զկոկորդն՝ օգտաւէտ լինի ախտից ուլան ։

Բօտակրա ։ Այս անուն 'ի յունաց առեալ առ լատինս, նշանակէ ոտնացաւութիւն. զոր իտալք անուանեն՝ կօթթա ա բիետի, և արաբք՝ վէճահիւլ միւֆիւք, իսկ թուրքք՝ նիկրիզ. զորմէ լիովին տեսցես հատ. ա. գլ. իէ. երես 285 ։

Բօրթուլաքա, լտ ։ բօրչէլլանա, կամ բռօքաքիա, իտ ։ կլիստերիա, յն ։ բիկլէ, կամ համլաջ, կամ հէբիմ, և կամ պաքլաթիւլ հէմքա, արբ ։ բըխուլ, կամ գիլէնկ, կամ թուրէքէ, կամ պէլպէն, կամ պէռպէհէն, կամ ֆէռֆէհին, և կամ ֆէռֆինէ, պր ։ և ըստ մեզ՝ փրփրեմ, կամ անմեռուկ ։ Է՝ խոտ յայգէխաւարտից, որոյ ցօղունն է ստուար, բոլորշի, ճիւղալից, յղկեալ, կարմրերանգ, շողշողուն, և հիւթալից ։ Տերև սորա երկայն, բոլորշի, թամբալից, ջինջ, շողշողուն, մածուցիկ, և տապահամ. Ծաղիկն փոքրիկ, գունաթափ, և հինգթերթեան ։ Պտուղն փոքրիկ, սափորաձև, և գարշնագոյն, և 'ի միջի ունի սերմունս մանունս, նուրբս, և սեաւս, զոր իտալք կոչեն՝ սէմէն բօրթուլաքա, և արաբք անուանեն՝ պազլէթիւլ համղա. իսկ թուրքք՝ սէմիզօթ թօհումու, որ է բնուե՞ զովացուցիչ, որպէս և տերև սորա. օգտաւէտք են ընդդէմ ապականութեան արեան, և պքօրպութօյի ։

Բօրչէլլանա. տես բօրթուլաքա ։ Դարձեալ ա-

Նուամբս իմանի՝ խեցեմորթ ինչ, զորմէ լիագոյն խօսեսցուք 'ի բառն պուչչինում:

Բօրչէլլուս ինտիքուս, լտ: բօրքօ տի ինտիա, իտ: հինտ տօմուզու, տճ: և ըստ մեզ՝ խոզ հնդկային: Է քառոտանի 'ի չափ ճագարի. որոյ ընչացքն նուրբ են և սրածայր, ատամունքն նման են ատամանց մկան. որովայնն սպիտակ յոյժ, տուեն նման է ամենեւին խոզի, որպէս և ձայն նորա. ագին կարճ, և իւրաքանչիւր ոտն ունի հինգ կամ վեց մատունս. իսկ միսն ջրային և անհամ. բայց դիւրամարսելի, միանգամայն դեղ օգտակար ընդդէմ թանչից և միզարգելութեան:

Բօրրում, լտ: բօրրօ, իտ: բռասսա, տճ: սպուշմէշ, կմ գիւռաս, արբ: գէնտէնա, կամ զէպուտէ, և կամ կիավլա, պր: և ըստ մեզ՝ պրաս: Է բոյս յազգէ խաւարտից, որոյ տերև, ծաղիկն, և պտուղն ծանօթ է ամենեցուն: Իսկ սերմն՝ որ է երկայնաձև, լինի դեղ ցաւոց ատամանց:

Բօրքուս. տես սուս:

Բօրքուս մարինուս, կամ մառսուինուս, կամ բհօքէնա, կամ թուրչիօ, և կմ սուսմառիս, լտ: բօրքօ մարինօ, իտ: տէնիզ տօմուզու, տճ: և ըստ մեզ՝ խոզ ծովային: Է ձուկն ինչ երկայն և դեղնագոյն, յազգէ դլֆնի, պարարտուք, և ձևով մարմնոյն նման է հասարակ խոզի. զորոյ ճարպն սպեղանի առնեն դեղարարք վասն կակղացուցանելոյ զուռոյցս ցուրտս:

Բօրքօ. տես սուս:

Բօրքօ սբինօ. տես հիսթրիքս:

Բօրքօ տի ինտիա. տես բօրչէլլուս ինտիքուս:

Բօրրօ. տես մէալթուս:

Բօցխօնէ, իտ: ըմպելիք, կամ ըմպելի, դեղ լուծողական:

## Գ

Գուաթթաօ ֆառինէ ռիսօլութիվէ, իտ: տէօրթ տաղըտըճը ունլար, տճ: Անուամբս այսու նշանակի քառեակ տեսակ ալերաց, որք ցրուեալ փարատեն զամենակերպ ուռոյցս կարծրապինդս, բաց 'ի գաղ-

զիական այտուցից, որպէս են ալիւրն գարւոյ, բակլայի, մօզօի, և լուբինի։ Այլ բաց 'ի չորից տեսակացս՝ են և այլ քառեակ ցրուիչ և փարատիչ տեսակք ալերաց, որպէս են՝ ֆրումէնթօ, լէնթէ, լինօ, և ֆէնի կրէքօ։

Գուասսիա․ տե՛ս լինում գուաասիա։

Գուէրքուս բէտունկուլաթա, կամ գուէռքուս ռաչէմօսա, լտ։ գուէռչէ ճէնթիլէ, իտ։ մէշէ աղաճը, տճ։ և ըստ մեզ՝ կաղնի, կամ սար կաղնի։ Է ծառ վայրենի, մեծ, ստուար, ուղիղ, երկայնոստ, և տարածողական, յաճախեալ յոստս, յեւրոպիա, 'ի լերինս, և յանտառս, զոր հատեալ 'ի գործ արկանեն 'ի շինուածս։ Կեղեւ նորա է ստուար, խորտաբորտ, արտաքուստ մոյգ, իսկ 'ի ներքուստ կարմրերանգ․ զոր նախնիք փոխանակ քինաքինայի 'ի կիր արկանէին․ որք և աւանդէին և պնդէին, եթէ յոյժ օգտակար է ընդդէմ տենդից, փորհարութե, հոսման արեան, հարբղխոյ, և ցաւոց յօդուածոց։ Բայց մեք երբեմն 'ի վար արկանեմք զսա 'ի գիպուածս միջահատական տենդի, ֆլուօրէ ալպանքօի, և երկարատև սերմնակաթութե։ Այլ երբեմն բոհրեալ զսա, և լուսեալ 'ի փոշի, ցանեն 'ի վերայ վիրաց, իսկոյն ցամաքեցուցանէ․ Նոյնպէս օգտակար է երախայից, և պարարտ անձանց, յորոց անութս, և՛ յայլ անդամս պատճառեալ 'ի քրտանց 'ի վեր երևին պիսակք վերանման։ Զնոյն գործունէութի ունի նաև տերև սորա․ որ է լայն, հերձոտ, և կարճականթ․ բանայ ծաղիկ մանր, կարծր, կծկաձև, և ջլաւոր․ բերէ պտուղ 'ի վերայ տերևոց կոչեցեալ 'ի բարբառ իտալացւոյ՝ կեանտէ․ տե՛ս անգ։

Գութիտիանուս, լտ․ քօթիտիանա․ իտ։ հիւմմայի տայիմ, տճ։ և ըստ մեզ՝ տենդ հանապազօրեայ։

Գուինգուինա․ տե՛ս քինաքինա։

# Ե

Եաքքա . տես Եաքքա :

Եաքարանդէկա , լտ : Է ծառ պրասիլեան , որոյ փայտն կարծր է և ուղղալից : Տերևք նորա են կարճակամնթ , նմանն ըստ իմիք տերևոց եանիբապա-անուանեալ ծառոյ : Ծաղիկն նման է վարդի ըստ ձևոյն , ըստ հոտոյն , և ըստ գունոյն , որք երեք երեք փթթին 'ի վերայ միոյ կանթի , ունելով 'ի մէջն առէջս փոքրիկս , դեղնակաձևս , և գեղնագոյնս . յետ ծաղկանց 'ի վեր երևին պտուղքն տափարակ , և սատար 'ի չափ խնձորոյ . արտաքուստ գորշագոյն , իսկ 'ի ներքուստ գեղին . ունին և կորիզ սրտաձև 'ի չափ կաղնոյ : Սորա տերևք լինին գեղք օգտաւէտ ընդդէմ կարծրութեան լերդի , և ախտնդանաց , զի են կակղացուցիչ , և մեղմապէս լուծիչ :

Եախամա . տես անանաս :

Եալապ կամ քոնվօլվուլուս եալապպա . կմ եալապպա , կամ եալապպիուամ , կամ ճիալապա , կամ ճէլապօ , կամ ռալապա , և կամ չէլօպա , լտ : չիալապպա , իտ : ժալապ , գղղ : ճալապա , անգ : գօլխապա , պր : Է հաշակաւոր արմատ ինչ ուռենալից , անհոտ , որդնահար , գիւրաբեկ , դժուարափխրելի , արտաքուստ թուխ , իսկ 'ի ներքուստ մոխրագոյն : Ընտիրն այսր արմատոյ որ է ծանր , և խորշոմեալ՝ գտանի 'ի նոր սպանիա 'ի սալապա անուանեալ գաւառն . զոր և յանուն արմատոյն սովորութիւն եղև լատինաց կոչել սալապա , կամ եալապա , են : Այս արմատ բնութ̃ է թուլացուցիչ , բարեպէս լուծիչ , և ճճեաց սատակիչ . օգտաւէտ է և ընդդէմ ջրգողութեան , և խցանաց լերդի . չափն 'ի 20 ցորենոյ մինչև ց30 . մանաւանդ յորժամ խառնի ընդ երկու տրամ քրէմօրէ տի թարթառօի բազադրելոյ գաղջ ջրով : Բոյս սորա գտանի և յամերիկա և 'ի հնդկաստան , որ բարձրանայ յերկրէ իբր չորս կամ հինգ ոտնաչափ . զոր լատինք կոչեն եալապա օֆֆիչինարում ֆռուքթու ռուկօզօ : Տերևն նման է տերևոյ բաղեղան , բայց սատար քան

զայն ։ Ծաղիկն ձագառաձև կոչեցեալ յիտալացւոց՝ պէլլօ տի նօթթէ, որ ստուգաբանի՝ գիշերագեղ, զի 'ի մտանել արեգական ծաղկի, և 'ի ծագել նորա փակի ։ Ըստ գունոյն է կարմիր, բայց յոմանս տեղիս լինի և դեղնագոյն, և սպիտակագոյն ։ Յետ ծաղկանց յաջորդէ պտուղն կնճռալից, ունելով 'ի միջի կորիզ բոլորշի ։

Եալամօնէա կամ եամպօլինէս, լտ ։ Է փոքրիկ ծառ հնդկային, որոյ ձև նման է մրտենւոյ, տերևն մանթուզենւոյ, իսկ պտուղն ձիթապտղոյ ։ այլ ոչ ախորժահամ իբրև զնա ։ զոր ժողովեալ 'ի վար արկանեն 'ի դեղորայս, որ է սեղմիչ և մարսեցուցիչ ընութե ։ արկանեն նաև 'ի ջուր աղե 'ի լինել թթուաշի ։

Եամպօս, լտ ։ Է պտուղ ինչ հնդկային ։ որոյ կրկին են տեսակք, մինն է անկորիզ, և մթին կարմիր, որ ունի զկեղև նուրբ և փափուկ, և զհամ անուշակ իբրև զվարդ ։ Իսկ միւսն է սպիտակախառն կարմիր, և աղուամազուտ, ունելով 'ի միջի կորիզ բոլորշի, և ստուար նման կորիզոյ դեղձի ։ Երկոքին սոքա ընութե զօրացուցիչ, և զովացուցիչ, վասն որոյ և ստէպ յօրինեն 'ի սոցանէ զքաղցրաւենիս, որ արգելու զատոչորումն սրտի, և փարատէ զտենդս պատճառեալս 'ի մաղձային հիւթոց ։ Ծառք սոցա են հարթակեղև, գորշագոյն, և բեկանուտ, և բարձրանան յերկրէ իբրև զթուփս, արձակեն զոստս երկայնաձիգս, և տարածողականս, բերեն տերևս անհարթս, դեղեցիկս, մթին կանաչս, և փայլունս, նիզակաձևս ։ Բանան ծաղիկս փոքրիկս, ծիրանագոյնս, և տապահամս ։ Ունին արմատս տարածողականս, և սաստկահոտս ։

Եանիբապա, լտ ։ Է ծառ պրասիլեան, ըստ ձևոյ, և ըստ մեծութե նման կաղամախի ։ փայտ նորա է բեկանուտ, սպիտակակեղև, և ուռճալից ։ Տերևն երկայն իբր մի և կէս ոտնաչափ, լեզուաձև, և պայծառ կանաչ ։ Իսկ պտուղն բոլորշի մեծութե 'ի չափ հասարակ նարնջոյ, նրբակեղև, և կանաչագոյն, այլ 'ի հասանելն գորշագոյն ։ միջ նորա կարծր է իբրև զինձոր, և խոռոչաւոր, լի գնտակակերպ և փափկաթամբ սերմամբ ։ դեղնագոյն է և հաճոյահոտ, այլ տտպահամ, և մածուցիկ, զոր յաճախ 'ի կեր արկանեն 'ի դեղ բորբոքման ստամոքսի, և բերանոյ ։ նոյնպէս ապաքինէ և զուռոյցս կարծրապինդս, եթէ

Թանձրամթան կազմեալ արկցի 'ի վերայ ։

Եանկօմաս, կամ եանկօմի, և կամ բալխուրտա էճիբթիուս, լտ։ Ծառ հնդկային բարձր և փշալից ըստ նմանութեան մերոց թփոց ։ Ծաղիկ նորա մանր է և սպիտակ ․ խակ պտուղն դեղնագոյն, և թթու զօրէն շլորոյ, զոր 'ի վար արկանեն 'ի դեղ փորհարութեան, և փողացաւութեան ։

Եանկօմի ․ տես եանկօմաս ։

Եաչէա, կամ եաչէա նիկրի, կմ' վիօլա թռիքօլօռ, լտ։ Ճիաչէա, իտ։ Բոյս քաղցրահամ, որոյ ցօղունն է գոտոռնագոյն, դիւրաբեկ և աղուամազուտ ։ Տերևք նորա խիտ են և թաւիշաւոր նման ըստ իմիք տերևոց եղերդի ․ դառնահամ է և խժային ։ Ծաղիկն փշալից ․ և թխագոյն՝ ըստ նմանութեան ջիանօ անուանեալ ծաղկան, որ փունջս փունջս փթթին 'ի գագաթան ․ զկնի ծաղկանց յաջորդեն սերմունք թխագոյնք՝ հանդերձ սպիտակ փոշեօք ։ Իսկ արմատն ստուար, փայտային, և անհամ ։ Բուսանի սա 'ի մարգագետինս, և 'ի խոնաւուտս ․ լի է իւղով, և գոլացական աղիւ, և բնաւք մաքրիչ, և թուլացուցիչ ․ որով ապաքինէ զխաղաւարտս, զուրկուխս և զկերս բերանոյ և որկորոյ մանկանց ։ Չափն 'ի 10 ցորենոյ մինչև 320, երկու անգամ յաւուրն ։

Եաչէրօս լին քաղէքութ ․ տես եաքա ։

Եապօթարիթա, լտ։ Ծառ մեծ և ստուար, որոյ փայտն կակուղ է և դիւրածալ ։ Կեղև նորա անհարթ է, նոյնպէս և դիւրածալ, տերևք երկայն և պայծառ կանաչ ։ Ծաղիկն մանր, չէկագոյն, և քաղցրահոտ, որք ողկուզօրէն արտադրին 'ի ծայրս ոստոց ։ Պտուղն փոքրիկ, և եռանկիւնաձև, այլ ըստ գունոյ, և ըստ ներգործութեան նոյն է գլխովին ընդ մրտոյ ․ օգտակար է նաև ընդդէմ փորհարութեան, և տկարութեան յօդուածոց ․ զի է զօրացուցիչ, և պնդացուցիչ ։

Եասմինում, լտ։ Ճէլսօմինօ, իտ։ եասմին, արբ։ եասէմի, տճ։ սախըլթ, պր։ և ըստ մեզ՝ յասմիկ ։ Է թուփ՝ բուսեալ առ որմովք կամ առ ծառովք, որ աճեցեալ ձգէ ոստս երկայնս ուղիղս, և նուրբս, և զերեսօք որմոցն ճապաղի ։ Տերևքն երկայնաձև են, և պայծառ կանաչ՝ նման ըստ իմիք տերևոց վգնի ։ Ծաղիկն փոքրիկ, աստղաձև, քաղցրահոտ և սպիտակ, և 'ի տեղիս տեղիս նաև դեղնագոյն ․ զորոյ իւղն հանեալ 'ի գործ ածեն 'ի դեղ ճեղքուածոց ստ-

թեւլոց 'ի ցրտոյ։ Եւ ըստ ոմանց նախնի հեղինակաց ունի եւս մասնաւոր գործունէութն 'ի բուժել զխլութն, զկշտացաւութն, և զելացաւութն. բայց կարծիքս այս չէ այնքան հաւանական։

Եաքա, կամ եաշէոս ին քալէքութ, և կամ եառաքա, լտ։ Է ծառ հնդկային մեծ, և սոսափից. որոյ տերեւն է լայն, պայծառ կանաչ, և ջրալից։ Պտուղն զոր լատինք պուպքա կոչեն, մեծ է 'ի չափ դդմոյ, կարծրակեղեւ, մթին կանաչ, և շըջապատ նորա ունի նմանութն ընդ բրգաձեւ անգամանդի. իսկ ներքին գոյացութին սպիտակ, կարծր, և անուշահոտ, ունելով 'ի միջի արմաւաչափ հատս նուրբս և գորշագոյն մաշկօք պատեալս, և 'ի մէջ նոցա դեղնագոյն թաղիքս մածուցիկ, և տապահամք, զորոց մաշկն անջատեալ 'ի վար արկանեն 'ի գեղորայս, որ է սեղմիչ, զօրացուցիչ, և սաղմնաձգաւիչ, որք և արգելուն զհոսումն որովայնի, և թանչից։ Այլ գիտել արժան է, զի հատքս այսպէսիկ յոլով անգամ ուռթեն զախտն մահաբեր՝ կոչեցեալ 'ի բարբառ հնդկաց՝ մօրքսի։

Եաքարուքաեօ, լտ։ Է ուղղաբերձ ծառ ինչ ամերիկեան, որոյ կեղեւն գորշագոյն է և խորտուբորտ ըստ նմանութն տերեւոց սարկաղնւոյ։ Փայտ սորա կարծր է և ամբողջ, միանգամայն և գեղ պատուական ընդդէմ ամենակերպ թունից։ Տերեւն ունի զձեւ տերեւոյ թթենւոյ, այլ հարթ քան զայն, և է դեղնագոյն, և շուրջանակի ատամնաւորեալ։ Պտուղն կարծրակեղեւ, և մեծ իբրեւ զգլուխ մանկան։ Իսկ սերմն, որ լինի 'ի պտուղ անդ՝ երկայնաձեւ է և բարեհամ իբրեւ զփստուղ, զոր և ուտեն իսկ, որ է բնութբ զօրացուցիչ և սաղմնաձգաւիչ։

Եաքարանտա, լտ։ Է ծառ, որոյ ոստքն են ուղղաձիգ, բազմաճիւղք, և պալարաւորք։ Տերեւք սորա մանր են և երկայնաձեւ, և գոյն նոցա 'ի վերին երեսս կանաչ, և փայլուն, իսկ 'ի ներքոյ՝ սպիտակ։ Ծաղիկն դեղնագոյն, միթերթեան, բոլորշի, և քաղցրահամ, ունելով 'ի միջի առէջս բազումս, և սպիտակս։ Պտուղն կանաչախառն սպիտակ, խորտուբորտ, և սապատաւորաձեւ, կամ տափարակաձեւ, զորոյ զմիջի գոյացութին 'ի կեր առնուն 'ի գեղ տկարութե ստամոքսի։ Վարեն նաեւ փոխանակ օճառի, որ արձակէ փրփուր բազում։ Եւ է սորա երկու տեսակ, մինն է սպիտակափայտ, և անհոտ ըստ նմանութե շլորեն-

ւոյ ։ Իսկ միւսն սեւափայտ, կարծր, և հոտաւէտ, և բնութ(եամ)բ թուլացուցիչ, և քրտնաբեր ։

Եպաքօպէա կամ հէրպա եպաքօպէա, լտ ։ Ճիպաքօպէա, իտ ։ եպաքուպ օթու, տճ ։ և ըստ մեզ սոուդաբանի՝ բոյս յակօբեան ։ Ցօղո՛ն նորա կարծր է և թաւիչաւոր, և բարձրանայ յերկրէ իբր երեք կամ չորս ոտնաչափ ։ Տերեւն երկայն, հերձոտ, և մթին կանաչ ։ Ծաղիկն դեղին, և ճառագայթաձև, որք փունջս փունջս փթթին 'ի գագաթան՝ ըստ նմանութեան հովանոցի, իւրաքանչիւր ծաղկանց ունելով զիւրեանց առէջս բազումս 'ի վերայ ։ Իսկ արմատն սպիտակ, ատուար, թելալից, և տարածողական ։ Յաճախ բուսանի սա յագարակս, և 'ի խոնաւուտ վայրս ։ լի է իւղով և աղիւ, և բնութ(եամ)բ բացողական, և մեղմապէս լուծիչ, օգտակար է և հնագոյն վէրաց ։

Եէքօրարիա ։ տե՛ս հէբաթիք ս ։

Եինքս կամ եօրգուիլլա, և կամ չինքլիոտա, լտ ։ Է թաչուն ինչ խոյտաբղէտ 'ի չափ սոխնօղի, որոյ կտուցն է կարծր, ուժեղ, սրածայր, և կապտագոյն, նման ըստ իմիք կաչաղակի, որպէս և ձայնն նման է ձայնի նորա ։ Իսկ միսն պարարտ և համեղ, միանգամայն և դեղ օգտակար ընդդէմ լուսնոտութեան, կամ վերնոտութեան ։

Եուեուպէ, կամ ծիծիֆա, լտ ։ Ճիուճճիօլա, իտ ։ հիւննապ, տճ, և արբ ։ և ըստ մեզ՝ յունապ ։ Է պտուղ թամբալիր, բրդային և փոքրիկ 'ի չափ ձիթապտղոյ, այլ 'ի ձև ձուոյ, արտաքուստ կարմիր, իսկ 'ի ներքուստ դեղին, համ նորա քաղցր է, և ախորժելի ։ լի է իւղով և գոյացական աղիւ ։ և բնութ(եամ)բ թուլացուցիչ, և կակղացուցիչ կրծոց, և հազի ։ Բժիշկք արաբիոյ յաճախ 'ի վար արկանեն զսա 'ի քաղցրացուցանել զթթուութիւս հիւթոց մարմնոյ, 'ի դրդուել զթուքս, և 'ի յանօսրել զթանձրամածութիւս տոզքունից ։ Ունի և կորիզ երկայն 'ի չափ կորիզի ձիթապտղոյ, այլ նուրբ և կարճ քան զայն, աւարտեալ յերկու սրածայր ծագս ։

Եուլաբիում, լտ ։ Ճուլէպպօ, իտ ։ Ճիւլապ, պր ։ և տճ ։ և ըստ մեզ՝ օշարակ ։ Է ըմպելի ինչ, յօրինեալ 'ի շաքարէ և 'ի հիւթոյ խոտոց, կամ պտղոց ։

Եունիբէրուս օքսիչէտռուս, լտ ։ Ճինեբբօ, իտ ։ ժընիեվր, գղղ ։ քըմմըն պրու կամ ճիւնիբէրգըլի,

անգղ: Նըտմթո, կամ պօպօլան, և կամ ռաքուռկ, արբ: տուտըճ, տճ: և ըստ մեզ՝ գի, կամ գիհի: Է թուփ միջատադ.ալար, որոյ կեղևն է անհարթ, և խորտաբորտ: Փայտն կարծր, կարմրերանգ, և անփուտ, զոր արկեալ 'ի հուր՝ բուրէ հոտ անոյշ. որ լինի դեղ օգտակար ընդդէմ յոռի օդոց: Տերևն կարծր, նեղ, երկայն, և սրածայր իբրև զփուշ: Ծաղիկն գնտաձև, և ծիրանագոյն: Պտուղն բոլորշի և սպուտր 'ի չափ պղպղոյ բաղեղան. գոյն նորա 'ի սկզբանն է կանաչագոյն, իսկ 'ի հասանիլն՝ կարմիր կամ սեաւ. և 'ի միջի ունի գոյացութիւն մածուցիկ, իւղային, և կարմիր հարեալ 'ի գոյն դեղին, համով քաղցրախառն տտիպ միանգամայն և համեմային. ունի և կորիզս մանունս, եռանկիւնաձևս, և կարծրս: Այս պտուղ կոչի լատիներէն՝ պաքքաէ եունիբէ կամ օքսիչետռուս: ըստ յունաց՝ բէռիօն: ըստ իտալացւոց՝ պաքքէ տի ճինեբռօ: ըստ արաբացւոց՝ պիզր պառքի, կամ էպէլ, և կամ հուբըլ: ըստ պարսից՝ ավզին, կամ նառուն, կամ սերվլիկիւհի, և կամ Ֆիլֆիլ գիւհի: ըստ տաճկաց՝ արտըճ թօհումու. իսկ ըստ մեզ ունդ գիհւոյ, որ է բնութ̃բ խթիչ, զօրացուցիչ, և միզաբեր, որ տէպ 'ի կիր արկանի 'ի դիպուածս ջերգողութե̃ և չնչարգելութե̃, և միզարգելութե̃: Զափն 'ի մի տրամէ մինչև 92, խառն Է̃ մի լիտր ջրոյ: Զնոյն գործունէութի̃ ունի նաև Ծր զուտն, զոր իտալացիք՝ էսեթռաթթօ տի ճինեբռօ անուանեն: Ի թփոյ սորա բղխէ և խէժ ինչ դեղին, մաքուր, և փայլուն, զոր իտալիք կոչեն՝ կօմմա սանտարաքքա, կմ վեռնիչէ. և արաբք՝ սանտարախս, իսկ թուրքք՝ սէնտէրուս: Ընտիր և ազնիւ համարի՝ եթէ մերձեցուցեալ 'ի հուր՝ վաղվաղակի հալեսցի և ծաւալեսցի:

Եունքուս, լտ: ճիունքօ, իտ: հասր օթու, տճ: գանտէրէ կամ պէրտայի, կամ Ֆէյլէկիւն, արբ: տէհլէ, պր: և ըստ մեզ՝ կնիւն, կամ պրտու: Է բոյս, որոյ ցօղունքն են երկայն իբր երկու կամ երեք ոտնաչափ, կարծր, ջլային, և կեղևապատ, յորմէ բազում հիւսեն զխոտեղէն անօթս, կմ զփռոցս: Տերև սորա է երկայն, կարմրերանգ, և շուրջանակի սղոցաձև տատամնաւորեալ: Ծաղիկքն վեցթերթեան, և աստղաձև, որք շարին 'ի վ̃ր ցօղնոց իբր երեք բթաչափ հեռի 'ի միմեանց, և 'ի մէջ նոցա եռանկիւնաձև պատեանք, յորում են սերմունք: Իսկ արմատն

տուարաթել: Յաճախ գտանի սա յեգիպտոս 'ի Ճախնայքն, և յաղտաղտուկ տեղիս. լի է իւղով, այլ նուազ աղիւ: Սերմունք սորա լինին դեղ աղդուղական ընդդէմ փորհարութեան, և հոսման արեան, այլ և գրգռեն զքուն:

# Է

Էբաթիթէ: դաուաճիկեր միւհրիւքանը, տճ: տես հտ. Ա. գլ. Է. երես 107:

Էբաթիքա. տես հէբաթիքա: Դարձեալ՝ այսանուամբ ըստ անգամազննաց իմանի՝ երակ ինչ բազկի: Սերթ ևս նշանակի խողովակն մաղձի:

Էբէրլանուս, կամ էբէլանուս, լտ: Է գեղեցկատեսիլ ձուկն ինչ ծովային. որոյ երկայնութիւն է երբ մատնաչափ, իսկ լայնութիւն բթաչափ. գոյն նորա սպիտակ է և փայլուն իբր զմրուխտ. իսկ միսն փափուկ, համեղ, և մանուշակագոյն. լի է իւղով և ցնդական աղիւ. միանգամայն և դեղ աղդողական ընդդէմ միզարգելութեան, որով և խորտակէ զքարն՝ եթէ գոցի ընդ անցս նորա:

Էբիբլազմա. տես քաթաբլազմա:

Էբիբլօօ, լտ: պաղըրաաղն իչ զարը, տճ: ըստ մեզ՝ եպիպլոն, կամ աղեացամաշկ: Է նրբագոյն, և ճարպալից մաշկ պատեալ զաղեօք յառաջոյ կողմանէ:

Էբիթհիմում, կամ քուսքութա մինօր, լտ: Է տունկ ինչ մթին կարմիր, հոտաւէտ, և թելալից, որոյ ծաղիկն և սերմն նման է բուսոյն այնմիկ՝ որ խասլերէն կոչի քուսքութա: Այս տունկ բուսեալ յերկիրս ջերմագինս, և պատատեալ զտնկովն ծոթրինի, լի է իւղով և գոյացական աղիւ. օգտաւէտ է 'ի գիպուածս տանատութեան, յօդուածացաւութեան, ախտի փայծեղան, և հարբխոյ, եթէ փոշիացուցեալ կամ արգանակ կազմեալ՝ արբցի:

Էբիլէբթիքում, կամ մօսպուս քօմիթիալիս, լտ: էբիլէպսիա, կամ մալ քատուքօ, իտ: սառա կամ թութարակ, տճ: սիւվար, արբ: և ըստ մեզ՝ վերնոտութի, կամ լուսնոտութի. զորմէ տես 'ի հտ. Ա. գլ. ԺԶ. երես 228:

Էպիլէսսիա. տե՛ս էպիլէպթիքում։

Էպիկասթրիօ. այսու անուամբ ի անդամազննաց ցուցանի՝ մակարոմլայնն, որ է վերին մասն որովայնի։

Էպիքրաթիքամէնթէ. բառս այս ըստ բժշկաց իմանի՝ առ փոքր փոքր կամ մեղմով իմն 'ի գործ ածութին ո՛ և իցէ հեղանիւթ դեղորէից. այսինքն յամենայն քառորդ, կմ՞ կէս, և կամ մի ժամու արբուցանել մի հասարակ դրգալ, կմ՞ մի սկահակ սրճոյ, կամ առաւել եւս ըստ պահանջելոյ հարկին։

Էպունէում. այսու անուամբ ըստ անդամազննաց նշանակի՝ երկրորդ փորոտին, որ միշտ գտանի դատարկ 'ի կերակրոյ. քանզի զընկալեալ կերակուրս ընաւ ո՛չ պահելով առ ինքն, իսկոյն վանէ և մերժէ արտաքս։

Էգուուս, լտ: քավալլօ, իտ: աթ, կամ պէկիր, տճ: խէլ, կամ խուսան, կամ հիմլաճ, կամ հուսան, կամ մէրատուն, կամ պիրղէվլէն, արբ: էսպ, կամ թախտէնի, կամ կէօվլէն, կամ մադչր, և կամ պէռտուն, պր: և ըստ մեզ՝ ձի, կամ ջորիվար։ Է կենդանի աշխոյժ, քաջասիրտ, սրընթաց, զգաստ, և հլու, որոյ ձև և մեծութիւն ծանօթ է ամենեցուն։ Սա ծառայէ մարդոյ ո՛չ միայն յայլեւայլ գործս տարժանելիս, այլ և որ ինչ ելանէ 'ի նմանէ՝ կարգեալ է 'ի պէտս նոցա. քանզի կաթն նորա ( որպէս և իշոյն ) ոչ գոլով այնքան պարարտ՝ օգտակար է 'ի դիպողածս թոքախտաւորութե, նուրբ ախտի, չնչարգելութեան, հնագոյն հազից, վէրնոտութե, և այլոց այսպիսի նուաղեցուցիչ ախտից։ Զմիս նորա ուտեն թաթարք, որպէս և ոմանք 'ի սեաւ բնակչաց Ափրիկոյ, և այլ ուրեք։ Եղունգն նր՞ փոշիացուցեալ, լինի դեղ ազդու ընդդէմ լուսնոտութե, և կարծրապնդութեան արգանդի. չափ 'ի 20 ցորենոյ մինչև 60։ Իսկ զքակորն 'ի վար արկանեն 'ի դեղ փողացաւութե, և կշտացաւութե։

Էթէրէ։ Անուամբս ըստ քիմիականաց նշանակին ամենատեսակ եթերականն, կամ ցնդական ոգիք, յօրինեալ 'ի նուրբ ոգեաց գինւոյ, խառն ընդ այլոց հանքայիննիւթոց։ Այդ անուն 'ի բարբառ լատինացւոց կոչի՝ էթհէռ, և արաբք՝ թաեար։

Էթէռէ աչէթիքօ. տե՛ս էթհէռ աչէթիքուս։

Էթէրէ նիթրիքօ. տե՛ս էթհէռ նիթրիքուս։

Էթերէ սօլֆօրիքօ. տես էթհէռ սուլֆուրի-քուս:

Էթիոպիա, կամ Թիոպիքա, կամ Թիոպիքէցցա, կամ Էթիոքա, իտ: էթիոպիսկա, լտ: սիլ, կամ մթկուք, և կամ սառապէ, արբ: տէրտի շիւշ կամ ամաս, պր: վերէմ, տճ: և ըմեզ՝ բարակացաւ, կամ Նուբբ ախտ, կամ մաշարոյական ախտ, կամ ծիւրական ախտ, և կամ հիւծական ախտ. զորմէ տես հտ. ա. գլ. Ժ: երես 175: կոչի և Թօքախտութի:

Էթիօբէ մինէրալէ, կմ սուլֆուրօ տի մեռքուրիօ նէռօ, իտ: սուապ սուլֆուֆու, արբ: հապէշ մաադէ-նի, տճ: Է փոշի ինչ սեաւ, բաղադրեալ 'ի սնդկէ, և 'ի ծծմբոյ. ունի զմասնաւոր գործունէութի 'ի փարատել զոքէիւնս, զբորոտութս, զախտն գաղղիա-կան, և զայլ ախտս մորթոյ. այլ և սաստկէ զօր-գութս և զճճիս որովայնի, և բանայ զխցանս լերդի, միանգամայն դրդուէ զքրձունս. չափն 'ի չորս կշիռ-ցորենոյ մինչև ց10, երկու կամ երեք անգամ յաւուրն՝ խառն ընդ շաքարի:

Էթիօբէ վիճիթապիլէ, իտ: գաւրթուլմուշ աֆիօն, տճ: է փոշի ինչ սեաւ, և թեթև, կազմեալ ափիո-նիւ, և քացախով. զոր 'ի վար արկանեն ընդդէմ ա-րեան թքանելոյ, և փորհարութե. չափն 'ի չորս ցո-րենոյ մինչև ց10:

Էթհէռ. տես էթերէ:

Էթհէռ աչէթիքուս, լտ: էթերէ աչէթիքօ, կամ ալքօօլէ քօն օսսի աչէթիքօ, իտ: Է ոգի ինչ եթե-րական, բաղադրեալ 'ի նուրբ ոգւոյ գինւոյ, և 'ի օսսի աչէթիքօէ, որ է դեղ ազդու ընդդէմ ախտի ջղաց, և բռնի շարժմանց մկանաց, զի է դրդուիչ բնու-թե. չափն 'ի 15 շթէ մինչև ց40, կամ ց60, խառն ընդ շաքարի, կամ ընդ ագուա արօմաթիքաի, պահ առ պահ:

Էթհէռ նիթրիքուս, լտ: էթէռէ նիթրիքօ, կամ էթերէ տ' օսսի սէքթօնիքօ, իտ: Է ոգի ինչ եթե-րական, յօրինեալ 'ի նուրբ ոգւոյ գինւոյ, և 'ի օսսի սէքթօնիքօէ, որ է դեղ ազդօղական 'ի գիպուածս ախտից ջղաց. զի է դրդուիչ բնութե: Շահաւէտ է և ընդդէմ ջլային ջերմախտից: Յօդեղէն հեղուկէ սատի յերկուս ժամս միանգամ առցի տասն շիթ առ-ուրաքանչիւր նուագ՝ խառն ընդ շաքարի, կամ ընդ ագուա արօմաթիքաի:

Էթհէրա սուլֆուրիքուս, լտ: էթէրէ սոլֆօրիքօ, կամ էթէրէ վիթրիօլիքօ, և կամ էթէրէ տ' օսսի սոլֆօրիքօ, իտ: Է ոգի ինչ եթերական, կազմեալ 'ի նուրբ ոգւոյ գինւոյ, և 'ի օսսի սոլֆօրիքօէ, որ է գեղ ազդու, և շահաւէտ ընդդէմ տկարութեան ջղաց, և ուղղոյ, և ակամայ շարժմանց մկանաց, կամ ախտի ցնցականի. օգտակար է և 'ի գիպուածս ջղային ջերմախտից, զի է գրգռիչ, կամ խթիչ բնութ̅ե. այլ և սաստկէ զճճիս և զորդունս որովայնի. չափն 'ի չորս շթէ մինչև ց6, խառն ընդ շաքարի:

Էթհիօբիս, կամ բհլօմիթիս, և կամ քօթօնարիա գուօրուննտամ, լտ: Է բոյս յաճախեալ յեթովպիա, որոյ տերեն է լայնարձակ, փափուկ, սպիտակ, բրդոտ, և եզերահերձ: Արձակէ ստեղունս քառանկիւնաձևս, բրդալիցս, և բազմաճիւղս: Բերէ ծաղիկ սպիտակ 'ի ձև ծաղկան լամիում կոչեցեալ խոտոյ: Արտադրէ պտուղս մանունս, և սերմունս երկայնաձևս: Ունի արմատ երկայն, և սպիտակ: Այս բոյս լի է իւղով և աղիւ. օգտաւէտ է ընդդէմ կշտացաւութեան, և չիաթիքա անուանեալ յօդուածացաւութեան, և 'ի մասնաւորի խոցուածոց լերդի, որ սովոր է գալ զկնի կշտացաւութեան:

Էթմօիտէ: բառիւս այս նշանակի ոսկր ինչ գանկին:

Էլաթէրում, լտ: էլաթէրիօ, կամ էսթրաթթօ տի քօքօմէրօ տէլ վէսմթուի, իտ: աճի խըեար հիւլաւէսի, տճ: Այսու անուամբ նշանակի զուան վայրի վարնգոյ. որ է բնութ̅ե ուժգին լուծողական, և անօսրիչ թանձրամածութեան հիւթոց մարմնոյ, որ 'ի վար արկանի ընդդէմ անյուսալի ախտից, և ջրգողութեց, և խելագարուեց. չափն յերկու կշիռ ցորենոյ մինչև ց10 խառն ընդ այլ յարմարագոյն դեղորէից, և այն ևս մեծաւ զգուշութ̅ե:

Էլէաթէրիում, լտ: Է կեղև ինչ ծառոյ միոյ հնդկայնոյ, որոյ ձև, և գոյն նման է քինաքինայի. բայց կարծր և անզօր քան զայն. նախնիք 'ի վար արկանէին սատ յազգի ազգի դեղորայս. իսկ այժմ սակաւ 'ի կիր առնուն յարևմուտս: Բնակիչք երկրին՝ սովամաքրեն զատամունս իւրեանց, և փարատեն զգարշահոտութիւն բերանոյ:

Էլէբհաս, կամ էլէբհանթուս, և կամ պարրուս, լտ: էլէֆանթէ, կամ լիօֆանթէ, իտ: էլէֆաս, յն:

Ֆիլ, տճ. բիլ կամ գինձէր, և կամ գիլս, պր. և ըթ մեզ՝ փիղ: Է կենդանի քառոտանի, յաճախեալ 'ի Հնդկաստան, և յԱփրիկէ, յաղթանդամ, և մեծ քան զամենայն չորքոտանիս. բարձրութիւն նորա յորժամ հասեալ լինի 'ի լրացեալ չափ իւր, է իբրու չորեքտասան կամ վեշտասան ոտնաչափ, որպէս և երկայնութիւն նորա. իսկ թանձրութիւն մարմնոյն է այնչափ՝ մինչև շրջապատի նորա տուեալ լինել գրեթէ կրկնապատիկ քան զերկայնութիւն իւր. գլուխ նորա է փիթխարի, և ստուարամորթ, աչքն փոքրիկ և ծիրանագոյն. արտևանունքն նման են արտևանաց մարդոյ. ականջքն մեծ, բոլորշի, և տափարակ. կընճիթն զոր լատինք կոչեն բրոպօշիս, կամ թուպա, և կամ մանուս նասութա, է երկայնաձիգ, ջլալից, մէջն դատարկ, և դիւրադարձ յամենակերպ շարժմունս. զոր երբեմն ընդարձակէ, և երբեմն ամփոփէ ըստ հաճոյս: Զայս կնճիթ՝ որ է տաստ իւղով և ցնդական աղիւ, 'ի գործ ածեն 'ի գեղ թունից, ճճեաց, փորհարութեան, հոսման արեան, և ակարութեան սրտի: Բերան նորա և լեզու է փոքր առ համեմատութ̃ մարմնոյն. 'ի վերին ծամելիս՝ ունի երկուտասամունս երկայնս, ստուարս, ամրակուռս, և եղջերաձևս, որոց միոյն ըթ վկայելոյ ականատես վկայի կշռէ մինչև 20 օխայ: Այս երկու ատամունք 'ի մեր բարբառ կոչին՝ փղոսկր, զոր լատինք անուանեն՝ էպուռ, և իտալք՝ ավօրիօ, կամ ավօլիօ, և արաբք՝ սննը ֆիլ, կամ այճ. և պարսք՝ բիլէսթէ. իսկ տաճիկք՝ ֆիլ տիշի. յորոց գործեն արհեստաւորք պէսպէս ձեռակերտս ազնիւս, և տևականս: Վարի ևս 'ի հոմացուցիչ գեղորայս, զոր հասարակ անուամբ լատիներէն՝ էպուռ ուսթում անուանեն, այսինքն կիզեալ փղոսկր: Բայց 'ի ստորին ունի և զայլ չորս հասարակ ատամունս: Մորթ նորա և տուտ նման են գոմշոյ, այլ կնճռալից, և իբր անթափանցելի 'ի զինուց: Իսկ սրունքն ըստ իրաց ինչ նման են բնոց արմաւենեաց: Բնութ̃ հեզ է և դիւրընտել: Ըստ ոմանց ապրէ ց120 կամ 150 ամս, և ըստ այլոց մինչև ց400. բայց 'ի ջերմ գաւառս ևեթ, որպէս յԱփրիկէ, և 'ի Հնդկս. զի 'ի ցուրտ երկիրս ոչ ապրի ընդ երկար, և ոչ կարէ ծնանիլ անդ:

Էլէկթթուարիօ, կամ էլէկթթօվարիօ, և կամ լաթթօվարիօ, իտ. էլէքթուառիում, լտ. մաճուն, կամ

մածուն, ռոբ, և այլն: Է անուն ընդ հանուր, որով նշանակին՝ ամենակերպ լոյծ դեղորէք, յօրինեալ հաւաքմամբ, և զանգուածով այլևայլ նիւթոց լուծելոց, որպէս ունիս տեսանել 'ի ստորև:

Էլէքթթուարիօ անթէլմինթիքօ տէլլ' հէխսթէուս, իտ: սօղլուճանլարա քարշը մածուն, այլ: Է զանգուած ինչ՝ ճճէհալած, որ այսպէս բաղադրի: Առ կէս ունկի՝ մէրքուրիօ վիվօ, և մի ունկի՝ մուչիլաճճինէ տի կօմմա արապիքա, և զայսոսիկ հարեալ տորորեա 'ի միասին 'ի մարմարեայ անկանի՝ այնքան մինչև անհետ լիցին գնտակքն սնդկի գլխովին. և ապա յաւել 'ի վերայ ունկի մի՝ բօլվէրէ տի քինաքինա, առ և սիրօբբօ տի մէնթա՝ որչափ ինչ պէտք են վասն կազմելոյ ըստ կանոնաց արհեստին զզանգուածս զայս: 'Ի զանգուածոյ աստի՝ տացի սխտռաչափ ընդ առաւօտս, և նոյնչափ ընդ երեկս, այս չափ է վասն մանկանց, իսկ չափահասաց մինչև ցկաղնաչափ, և փոքր ինչ առաւել ըստ պիտոյից:

Էլէքթթուարիօ անթիէբիլէթթիքօ, իտ: սարա հիլլէթէ քարշը մածուն, այլ: զանգուածս այս օգտակէս է ընդդէմ վէրնոտութե, անդամալուծութե, և տկարութե ջլաց, ստամոքսի, և ուղղոյ, որ այս կերպ կազմի: Առ ունկի մի փոշխացուցեալ քինաքինա. կէս ունկի՝ ամենանուրբ խարտած երկաթոյ, և նոյնչափ՝ փոշիացուցեալ արմատն վալէրիանաի, առ և սիրօբբօ տի մէնթա՝ որչափ ինչ պէտք են վասն յօրինելոյ զզանգուածս: 'Ի զանգուածոյ աստի տացէ ախտակիրն մի դրամաչափ ընդ առաւօտս, և նոյնքան ընդ երեկս. միայն թէ կրկնելի է այդ դոնէ մինչև 'ի 90 օր:

Էլէքթթուարիօ անթի ափզէնթէրիքօ, իտ: քան իսալա քարշը մածուն, այլ: Է զանգուած ինչ՝ բաղադրեալ 'ի կէս ունկի՝ անկուսթուրա կեղևոյ լուծելոյ. 'ի 36 կշիռ ցորեան՝ կինամոնի կեղևոյ լուծելոյ. 'ի բաւականաչափ օպիօսակ մեղրէ: Յօրինել աստի զանգուած, դրամաչափ տացի ընդ առաւօտս, և նոյնաքանակ՝ ընդ երեկս: Զօրաւոր է յոյժ դեղս 'ի դիպուածս արիւնախառն փորհարութե, դալկան, որովայնալուծութե, և տենդի, մանաւանդ ատինամիքա անուանեալ տենդի:

Էլէքթթուարիօ անթիքաքէթթիքօ տէլ տօթթօր վլաստ, իտ: Է լոյծ դեղ ինչ՝ օգտակար ախտադունա-

թեան, և վատառողջ անձանց, բաղադրեալ յերկու ունկի՝ էնուլա քամբանա արմատոյ լոսելոյ, 'ի յերեք ունկի՝ ֆինօքքիօ սերմանէ լոսելոյ. 'ի մի ունկի՝ բէբէ սևոյ փխրելոյ. յերկու ունկի՝ սպիտակ շաքարէ, և 'ի նոյնչափ մաքուր մեղրէ: 'Ի լոյծ դեղոյ տասի տացէ ախտակրին երկու կամ երեք տրամ, երկու կամ երեք անգամ յաւուրն: Օգտաւէտ է նաև 'ի գիպուածս ջղային դժուարամարսութեան, երկարատև թանչից, և հարբխոյ լիջելոյ 'ի փորոտիս:

Իլէթթուարիօ անթիֆէպրիլէ տէլլա ֆարմաքօբէա տի վիէննա, իտ: սըթմալարա քարշը մաձուն, տճ: Է լոյծ դեղ ինչ ջերմնահալած, բաղադրեալ 'ի վեց տրամ՝ քօնսէրվա տի ասսէնցիօնէ, 'ի նոյնաքանակ՝ քօնսէրվա տի քօքլէարիաէ, և 'ի նոյնչափ՝ քինաքինա կեղևոյ լոսելոյ, և 'ի բաւականաչափ՝ սիրօբբօ տի ֆումարիաէ: 'Ի լոյծ դեղոյ տասի՝ տացի երեք կամ չորս տրամ յաւուրն:

Իլէթթուարիօ անթիֆէպրիլէ տի պօէռհաավէ, իտ: Է լոյծ դեղ ինչ ջերմնահալած, բաղադրեալ 'ի մի տրամ՝ քօնֆէցիօնէ ալքէռմիսէ, 'ի վեց ունկի՝ ծէնծէրօ քօնֆէթթաթօյէ (այսինքն քաղցրաւենի կոճապղպեղի). 'ի մի տրամ՝ սէրբէնթարիա վիրճինիանա արմատոյ լոսելոյ, և 'ի նոյնչափ քօնթրաեէրվա արմատոյ փոշիացելոյ, և 'ի բաւականաչափ՝ սիրօբբօ տէլլէ չինգուէ ռատիչի աբէրիէնթիէ: 'Ի լոյծ դեղոյ տասի տացէ հիւանդին մի և կէս տրամ երեք կամ չորս անգամ 'ի միջահատեալ աւուրս ջերմութեան: Շահաւէտ է և ընդդէմ միջահատականն և տարինամիջա անուանեալ տենդից:

Իլէթթուարիօ տի մակնէզիա տէլլա ֆարմաքօբէա տի քօբբէնակէն, իտ: Է ազգ ինչ լոյծ դեղոյ, բաղադրեալ 'ի վեց տրամ՝ քառպօնաթօ տի մակնէզիաէ. 'ի չորս տրամ անաչի վէռտի սերման լոսելոյ, 'ի մի տրամ՝ քրքմոյ փոշիացելոյ, և 'ի բաւականաչափ՝ սիրօբբօ տի չիքօռիաէ: 'Ի լոյծ դեղոյ տասի տացեն մատաղ տղայք, կամ մանկտի, յորժամ բռնաբարեալ կամ լքեալ իցէ ստամոքս նոցա, չափն 'ի կէս տրամէ մինչև ցմի և կէս յաւուրն, կամ փոքր ինչ ևս աւելի ըստ պիտոյից:

Իլէթթուարիօ վէռմիֆուկօ. տես Իլէթթուարիօ քօնթռավէռմի:

Իլէթթուարիօ տի քինա քինա, իտ: քընաքընա մա-

ճունու, տՃ։ Է լոյծ դեղ ինչ տենդահալած, և օգտակար ստամոքսի, և ջլաց, բաղադրեալ 'ի մի ունկի՝ աղնիւ քինաքինա կեղևոյ նրբագոյն լուծելոյ, և 'ի վեց ունկի՝ րօօղ տի սամպուքօէ։ Զամին 'ի մի տրամէ մինչև 94• խառն ընդ աղնիւ գինւոյ՝ երկու անգամ յաւուրն։

Էլէկթթուարիօ քօնթռա լ՝ խորօբիզիա, իտ։ Լատինկանեա քարշը մաճուն, տՃ։ Լոյծ դեղս այս շահաւէտ է ընդդէմ ջրգողութե կրծոց, և որովայնի, որ այսպէս բաղադրի։ Ա՛ռ երկու ունկի՝ րօօղ տի էպուլօ, և նոյնչափ՝ րօօղ տի ճինէբռօ• այլ և ունկի մի՝ օսսիմէլէ շիլլիթիքօ, և կէս ունկի՝ շիարաբբա փոշխացուցեալ• ա՛ռ և երկու տրամ՝ սոլֆաթօ տի բօթասսա, և սիրօբբօ տի րամիօ քաթարթիքօ որչափ պէտք են վասն շինելոյ զլոյծ դեղս։ Զամին մի տրամ յաւուրն։ Է և այլ լոյծ դեղ, զոր պարտ է զկնի արտահանելոյ զգուամարեալ շիճուկն յորովայնէն՝ 'ի վայր արկանել իբրև զամսօրեայ մի ժամանակ, որ այսպէս բաղադրի• Ա՛ռ վեց ունկի՝ ամենանուբբ փոշի քինաքինաի• երկու տրամ՝ նուբբ խարտած երկաթոյ, և նոյնչափ՝ թէրիաքա• այլև սիրօբբօ տի քաննէլլա որչափ պէտք իցեն առ կազմելոյ ըստ կանոնաց արհեստին զլոյծ դեղս զայս։ Առցէ աստի ջրգողեալն տրամ մի ընդ առաւօտս, և նոյնքան ընդ երեկս։ Եւ եթէ զոյգ ընդ ախտիս գտանիցի և տենդ. քառօրեայ, յայնժամ շահաւէտ յոյժ եղիցի տալ հանապազօր զլոյծ ինչ դեղ յետագայ եղանակաւս բաղադրեալ։ Ա՛ռ մի ունկի՝ աղնիւ քինաքինա փոշխացուցեալ• մի տրամ՝ ճէնցիանա փոշխացուցեալ• և նոյնչափ՝ մուրիաթօ ամմօնիաքալէ տի ֆէռռօ սուպլիմաթօ• այլև օսսիմէլէ շիլլիթիքօ• ա՛ռ և սիրօբբօ տէլլէ չինգուէ ռատիչի աբէրիէնթի, որչափ ինչ պէտք են վասն կազմելոյ զլոյծ դեղս։ 'Ի լոյծ դեղոյ աստի յերիս ժամս միանգամ առնու ջրգողեալն երկու տրամ առ իւրաքանչիւր նուագ։

Էլէկթթուարիօ քօնթռա վէռմի, կամ վէռմիֆուկօ տի աբիէլման, իտ։ Է լոյծ դեղ ինչ ճճէհալած, որ այսպէս բաղադրի։ Ա՛ռ կէս ունկի՝ սթակնօ բուրօ• և նոյնաքանակ՝ մէռքուրիօ տիսթիլլաթօ, և զայսոսին հարեալ տրորեա՛ 'ի միասին 'ի քարեայ անկանի այնքան, մինչև անհետ լիցին գլխովլն գնտակքն սնդկի• յոր յաւել ունկի մի՝ քօրպօնաթօ տի քալչէ

բարեփիլքաթօ, և նոյնչափ՝ մանկնէզիա պիանքա. այլև երեք ունկի՝ քօնաէրվա տի սաւէնցիօ. առ. է. միրօբբօ տի մէնթա այնչափ, որչափ պէտք լիցին վասն յօրինելոյ զայծ գեղս զայս: Առցեն սամի 'ի մէջ հատանեալ աւուրս տրամ մի. ընդ առաւօտս, և նոյնքան ընդ երեկս:

Էլէթթուարիօ օբիաթօ, էլէթթուարիօ աւիապքօռտիօ. տես զբաւան աւիապքօռտիօ:

Էլէմի, կամ կօմմա էլէմի, և կամ կօմ էլէմի: Է խէժ կանաչախառն դեղին, և հոտաւէտ, որաբգրեալ 'ի բնոյ ատրևապուարձ, կարմրածաղիկ և բոլորապատաղ ծառոյ իրիք եղելոյ 'ի կողմանս ամերիկոյ, և ափրիկոյ: Ազնիւ համարի, եթէ իցէ մաքուր, կանաչախառն դեղին, և սամթահոտ. յորմէ գեղարարք կազմեն սպեղանի ինչ ապըշու ընդդէմ չեռկալեր վէրաց, այտուցից, և խածուածոց կատաղի շանց. այլև ամրապնդեալ կազդուրէ զձմլեալ և ըղլուծեալ մասունս մարմնոյ՝ օծանելով զայն և եթ:

Էլէնիօ. տես հէլէնիում:

Էլէօսէլինում. տես ապիում:

Էլէֆանթէ. տես էլէբհաս:

Էլէֆանցիա, լտ: Ճուտամլըք, կամ միսկինլըք, տճ: ըստ մեզ՝ ելեփանդական բորոտութիւն, կամ ուրկութիւն:

Էլիսիրէ կամ էլիսիր, իտ: էլիքսիր, լտ: իքսիր, տճ: Է անուն ընդհանուր նշանակիչ ամենակերպ ազեաց հեղանիւթոց:

Էլիսիր անթիարթրիթիքօ, իտ: Ոգեղէն հեղուկս այս՝ որ է բնութեամբ խթիչ, 'ի վար արկանի 'ի դիպուածս ակարութեան ստամոքսի, ցաւոյ յօդուածոց, նուազութեան ամսական պարտուց կանանց, ջղային գժուարամարսութեան, միզարգելութեան, և օտնատութեան, այլև սաստակէ զորդունս և զճճիս որովայնի: Օրինակ 'ի կազմել զայս ոգեղէն հեղուկ: Առ տասն տրամ՝ ալօէ սուքքօթրինա, երկոտասան տրամ՝ միրրա, և տասն տրամ՝ ռէչինա տի կուաեաքօ. զորս և լըուեսցես մանրամաղ, և դիցես թրմոցյինն լիտր ալքօօլ իբր շաբաթօրեայ մի ժամանակ, կամ աւելի ևս. յետ որոյ քամեսցես զայն ընդ խիտ կտաւ: Եւ այսպ ատուէ: պարտ է գրգալ մի սեղանոյ 'ի պահ առաւօտուն, և ըմպել զկնի սկահակ մի ոգձոյ չայ, կամ որդանակ թիլէօի, և կամ ջուր ծաղկի:

Էլիքսիր անթիասմաթիքօ , լատ։ Ոգեղէն հեղուկս այս հաշտական է 'ի մասին օգտաւէտութեան 'ի դժպուածս շնչարգելութեան ասթմայոյ 'ի խոնաւութէ, որ այսպէս բաղադրի ։ Առ 18 կշիռ ցորեան՝ բաստիշէ տի սոտօ ․ երկու տրամ՝ քսպածօ արօմաթիքօ , և նոյնչափ՝ էնուլա քամբանա , և կէս տրամ՝ ծիւծծիօլօ , այլև մի և կէս տրամ լիգուերիցիա ․ կէս տրամ՝ անիշէ ․ սա և վեց կշիռ ցորեան՝ քամֆօրա , զորս և լուծեալս 'ի փոշի , և յետոյ արկ 'ի մէջ միոյ ապակեայ ամանոյ , և հեղ ութ ունկի՝ ալքօօլ ․ թող զխառնուրդս զայս մարսել 'ի միասին ընդ միջոց հինգ կամ վեց աւուրց ։ Եւ ապա հեղ պարզելով զհեղուկն յայլ ապակի ամանս ․ Զափն 'ի չորս շթէ մինչև ց30 , խառն ընդ մի ափահակ չայի կամ որդանակի սամպուքօի ։

Էլիքսիր անթիէթթիքօ , կամ ֆէպրիֆուկօ , լատ։ սըթմալարա քարշը իքսիր , տճ։ Ոգեղէն հեղուկս այս շահաւէտ է 'ի գլխցուածս եռօրեայ և քառօրեայ տենդից ։ Զայս եթէ կամիս առնել , առ երկու ունկի՝ քինա քինա , մի ունկի և կէս սքօռցա տի առանչիա , երեք տրամ՝ սէրբէնթարիա վիրճինիանա ․ մի տրամ՝ ծաֆֆէրանօ , և քառասուն և վեց ցորեան՝ քօչչինիլիա ։ Զամենեսին զսոսա պարտ է լուծել յաղկանի , և ապա արկանել յամանոյ ապակի , և ընդ այսմ փոշւոյ խառնեսջիր հետ զհետէ քսան ունկի՝ ալքօօլ ․ զկնի վեց աւուրց՝ հեղ զգուշութեամբ զհեղուկն յայլ ապակի անօթ , այնպէս՝ զի մի խառնեսցի մրուրն ընդ պարզ հեղանիւթոյն ։ Երբեմն արկանեն 'ի նա 140 ցորեան՝ զքափուր ․ յայնժամ կոչի՝ էլիքսիր քանֆօրաթօ ։ Յոգեղէն հեղուկէ սաստի տացի յերկու տրամէ մինչև ցչորս յաւուրն ։

Էլիքսիր անթիսքօռպութիքօ, լատ։ սքօռպութա քարշը իքսիր , տճ։ Ոգեղէն հեղուկս այս օգտաւէտ է ընդդէմ սքօրպութօ անուանեալ ախտի ։ Զայս եթէ կամիս յօրինել , առ վեց լիտր ազգուա սթիլլաթա տի քամմօմիլլա , և երկու ունկի՝ սբիրիթօ տի քօքլէարիա , այլև երկու տրամ՝ աչիտօ սուլֆօրիքօ ․ և ընդ այսմ ոգեղէն հեղուկի խառնեսջիր էսթրաթթօ աքգուօզօ տի մէնիանթօ , էսթրաթթօ տի չէնթաուրէա մինօրէ , էսթրաթթօ տի ֆումարիա , էսթրաթթօ տի կրամինեա , յիւրաքանչիւրոյն կէս կէս ունկի։ Զայս բաղադրութիւն պարտ է առնել 'ի մէջ ապակեայ

անօթոյ։ Եւ յետ թողլոյ զայն աւուրս ինչ, օրէն է քամել յայլ անօթ ապակի 'ի պահեստ. և ապա տուր ըմպել տկարաւորին երկու անգամ յաւուրն՝ զգդալ մի սեղանոյ։

Էլիսիր անթիվէնէրէօ, իտ։ Փուէնիկէ քարչէ լեգօկր, ան։ Ոգեղէն հեղուկս այս շահաւէտ է 'ի դիպուածս ախտի գաղղիականի, որ այսպէս կազմի։ Առ ունկի մի պալլասօ տէլ քօքքաւ, երկու տրամ՝ ըէզինա տի կուաեաքօ, կէս տրամ՝ օլիօ վօլաթիլէ տի սասսօֆրասսօ։ Յետ արկանելոյ զայս ամենայն յանօթ ապակեայ, կամ 'ի շիշ, հեղ 'ի նա զչորս ունկի և կէս ալքօօլ, կամ որ նոյն է՝ սփիրիթօ տի վինօ ռէթթիֆիքաթիսսիմօ. թող զխառնուրդս զայս մարսիլ 'ի միմեանս՝ ընդ միջոց չորից աւուրց։ Ապա փոխադրեա զոգեղէն հեղուկս զայս յայլ անօթ ապակի քաշ խցեալ ապակի խփով։ Իսկ 'ի կամիլդ առնուլ 'ի կիր՝ հեղ յայնմանէ տրամաչափ 'ի վերայ շաքարի փոշիացելոյ, և տուր ըմպել տկարաւորին մի կամ երկու անգամ յաւուրն։

Էլիսիր աչիտօ արօմաթիքօ տէլ պրուսինաթէլլի, իտ։ Է ոգեղէն հեղուկ ինչ բաղադրական. հռչակաւոր է 'ի մասին օգտաւէտութեան 'ի դիպուածս փորհարութե, թանչից, և սաթէնիքէ յորջորջեալ տենդի. զի է խթիչ բնութեամբ։ Զայս եթէ կամիս կազմել, առ 14 ունկի՝ ալքօօլ, և հեղ զայն յանօթ ապակի, յաւելլով 'ի նա զերեք ունկի՝ աչիտօ սոլֆօրիքօ. ապա դիր 'ի վերայ ջերմ աւազոյ յաւուրս երկուս առ 'ի մարսիլ։ Յետ որոյ արկ 'ի նա երեք տրամ կինամոն, և նոյնչափ՝ մեխակ, և կէս ունկի՝ ֆօլիէ տի մէնթա բիբէրիթա, այլ և երեք տրամ կոճապղպեղ. քաշ խցեալ զանօթն վերոգրեալ, թող զայս մարսիլ 'ի միմեանս՝ ընդ միջոց հինգ կամ վեց աւուրց։ Յետ այնորիկ քամեա զայն խիստ կտաւով յայլ անօթ ապակի։ Չափն 'ի 12 շէթէ մինչև ց40. կոչի և օսսիսօլֆօրիքօ ալքօօլէ առօմաթիծծաթօ։

Էլիսիր աչիտօ տ' հալլէռօ, կամ օսսիսօլֆօրիքօ ալքօօլիծծաթօ, իտ։ Է ոգեղէն հեղուկ ինչ բաղադրական, յոյժ հռչակաւոր 'ի մասին շահաւէտութե 'ի դիպուածս ըլութե և չափազանց յաճախութեան զարկի բազկի, 'ի տապս ջերմականս բորբոքեալս (այսինքն քալօրէ ֆէպպրիլէ առդէնթէ). 'ի ցաւս գլխոյ, 'ի հոսմունս արեան՝ որք պատճառին յուժգ-

զուէ. 'ի ցնորմունս, և 'ի ցաւս յօդուածոց՝ որք առաթէնն յուժգնուէ, զի է զովացուցիչ և թուլացուցիչ բնութ̃։ Եւ չիք զարմանք քան զայն գերազանց, երբ խնդրել բառնալ զկարի իմն մեծ գրգռելութին անօթոցն արեան։ Այլ պարտ է ուշ դնել, զի այս ոգեղէն հեղուկ ոչ յարմարի 'ի լուծմունս արտաքայնի, 'ի թոքացաւութիւնս, և ոչ յայլ ինչ դիպուածս խտաս և չոր հազի։ Զայս եթէ կամիս յօրինել, հեղ երկու ունկի՝ ալքօօլ 'ի ցուրտ ապակի անօթ կամ շիշ, և Ը այսմ ոգեղէն հեղուկի խառնեսցես հետ զհետէ, և չիթ առ չիթ երկու ունկի՝ ասիտօ սուլֆօրիքօ. քաջ խցեալ և խփեալ զանօթն վերագրեալ, զկնի 72 ժամուց՝ հեղ զգուշութ̃ զհեղուկն յայլ ապակի անօթ, այնպէս զի մի խառնեսցի մրուրն ընդ պայծառ հեղանիւթոյն։ Զայս դեղ ես բազմօրինակ գրեմ առ ախտակրեց։ Զօրօրինակ 'ի լիտր մի հասարակ ջրոյ, որ քաղցրացուցեալ իցէ շաքարաւ, որչափ և կամք իցեն, արկանին քսան կամ նաև քսան և հինգ կաթիլս յոգեղէն հեղանիւթոյ աստի, որ լինի ըմպելի ինչ ախորժելի քմաց, և նման հասարակ օշարակի լեմոնի։ Յըմպելւոյ աստի արբցէ ախտակիրն 4 ունկի՝ երիցս անգամ յաւուրն։ Երբեմն ես գրեմ երկու տրամ՝ 'ի վերագրեալ էլիսիրէն, յաւելլով 'ի նոյն չորս ունկի ախորժելի ինչ շարապ (կամ շիռօբբօ), որպիսի է շարապն լամփիօնի, կամ շարապն հաղարջի։ 'Ի թթու շարապէ աստի իբր չորս ունկի՝ հեղեալ լինի 'ի լիտր մի կամ աւելի ևս ջրոյ, ըստ որում և զիարդ ախորժելի իցէ քմաց, և առեալ լինի ախորժելի ըմպելիս այս 'ի միջոցի քսան և չորս ժամուց։ Յետ ըմպելւոյ սկահակ մի օրձոյ յըմպելւոյ աստի, պարտ է լուանալ զբերանն, առ նախապահելոյ զատամունս 'ի ներգործութէ թթուոյն։ Օգտաւէտ է նաև 'ի դիպուածս ջղային դժուարամարսութե̃, և ախտի ցնցականի, և ցաւոց ջլաց։

Էլիսիր բարէկօրիքօ տէլլէ ֆարմաքօբէէ ինկլէզի. կամ թինթուռա ալքօլիքա տ՝ օբբիօ անաչիսաթօ, իտ։ Օգտաւէտագոյն է ոգեղէն հեղուկս այս 'ի դիպուածս դժուարաւ տուրեառութե̃ շնչոյ, ուժգին հազից, և լուանոտութե. զի է խթիչ և թմբրեցուցիչ, և քնաբեր բնութ̃, որով և մեղմէ զցաւս ուժգինս, և փարատէ զհազս ցնցականս, որ և աներկեան և ապահովապէս 'ի վեր արկանի 'ի ներքուստ 'ի 50 չիթէ.

մինչև ց100։ Զայս եթէ կամիս կազմել, առ տրամ մի՝ էսթրաթթօ տի օբբիօ, և նոյնչափ աչիտօ բէնծօիքօ սուպլիմաթօ, այլև քառն և վեց ցորեան՝ քանֆօրա բուրիֆիքաթա (այսինքն մաքրեալ քափուրն). առ և քառասուն չիթ՝ իւղն անիսոնի։ Զայս ամենայն մո՛ւծ յանօթ ապակի, յաւելլով 'ի նա զքսան ունկի՝ ալքօօլ, և թող մնալ յաւուրս չորս առ 'ի մարսիլ։ Յետ որոյ քամեա զայն խիտ կտաւով յայլ անօթ չինի, կամ ապակի։

Էլիսիր բէթթօրալէ ինկլէզէ, իտ։ Ոգելէն հեղանիւթս այս՝ օգտակար է կրծոց, և ստամոքսի, որով զօրացուցանէ զկուրծս, և զստամոքս, փարատէ և զփուքս ընդերաց, և զհազս ցնցականս։ Չափն 'ի մի և կէս տրամէ մինչև ցերկու։ Զայս եթէ կամիս առնել, առ քառն և հինգ տրամ՝ րատիչէ տի էնուլա քամբանա, և նոյնչափ՝ ռատիչէ տի ձիւձիօլօ, այլև նոյնքան՝ ագուամմէ սէքքէ տի չիլլա. առ և մի և կէս տրամ՝ լիգուիրիցիա, և նոյնաքանակ՝ անասի, և 18 կշիռ ցորեան ծաֆֆէրանօ, և երկու տրամ՝ ակէլծուկինօ, և 80 կշիռ ցորեան՝ միրրէ, այլ և 44 ցորեան՝ կօմմա ամմօնիաքա։ Զայս ամենայն փոշիացուցեալ դի՛ր յանօթ ապակեղէն, յաւելլով 'ի նա և զքսան և երկու ունկի՝ օղի գինւոյ. զկնի 15 աւուրց՝ հեղ զտելով զհեղուկն յայլ ապակի անօթ 'ի պահեստ։

Էլիսիր բրօբրիէթաթիս տի բարաչէլսօ քօն աչէտօ, իտ։ Օգտակարագոյն է սա 'ի գիպուածս տկարութէ ստամոքսի, լուսնոտութէ, անդամալուծութէ, խթից ստորին որովայնի և խախացոցի, ախտի դալկան, նուաղութէ ամսական պարտուց կանանց. զի է խթիչ բնութեամբ։ Եւ ըստ բարաչէլսօ հեղինակի՝ ունի և զմասնաւոր գործունէութի 'ի բուժել զծիւրական, կամ զնուրբ ախտն, զանտածողական ախտն և զերկարատև տենդն. բայց կարծիքս այս չէ այնքան հաւանական։ Չափն 'ի չորս չթէ մինչև ց12։ Զայս եթէ հաճիս շինել, առ երկու ունկի՝ ալօէ սուքօթրինօ, և նոյնչափ՝ միրրա, այլև մի ունկի՝ քրոքօ. և մանր լոռելով զայնս 'ի մէջ անկանի՝ լի՛ց յանօթ ապակի, և դի՛ր թրմոց յերեք ունկի՝ սբիրիթօ տի սոլֆօ, և յաւե՛լ այնչափ՝ ոգի օղւոյ՝ որչափ պէտք իցեն առ ծածկելոյ ըստ կանոնաց արուեստին զփոշիս զայս, և թողցես մնալ այնպէս իբր աւուրս երիս.

Յետ որոյ յաւել 'ի նոյն և զայլ չորս կամ հինգ մանա֊ նաչափ ոգի օղւոյ. զոր և թողցես մնալ այնպէս երր զաւուրս հնգետասան. և ապա օրէն է քամել յայլ֊ անօթ 'ի պահեստ։ Կոչի և ալքօոլէ ալօէ միասա֊ թօ։

Էլիխիր բրօբրիէթաթիս սէնցա աչիտօ, լա։ Սա մեղմագոյն է քան զնախասացեալ էլիխիր բրօբրիէ֊ թաթիս, զոր և մարթ է ապահովապէս 'ի կեր արկա֊ նել մանկանց, գերդ և փափուկ խառնուածոց մրճա֊ կելոց, և 'ի գիպուածս ախտից թոքոց։ Զափն 'ի 7 չթէ մինչև ց30։ Օրինակ կազմելոյ զայս ողեղէն հե֊ ղուկս աւանց թթուոյ։ Ա՛ռ ալօէ սոքօթրինօ. միրրէ և քրօքօ, յիւրաքանչիւրոցն քառակառաչափ։ Զայս ամենայն փոշի արարեալ ա՛րկ յանօթ ապակի. յաւելլով 'ի նոյն և զօղի գինւոյ որչափ պէտք են վ՛ ծածկելոյ չորս մատնաչափ զմերագրեալ դեղորայս։ Յետ ութ աւուրց՝ քամեա խիտ կտաւով զհեղուկն յայլ ապակի անօթ։

Էլիխիր ութէրինօ ակէլ քրօքլիօ, լա։ Ողեղէն հե֊ ղուկս այս յոյժ հռչակաւոր, և 'ի յարգի է յանգղիա, 'ի գիպուածս նուաղութեան ամսական պարտուց կանանց, ախտից ջլաց, խթից որովայնի, և ստամոք֊ սի. զի է գրգռիչ, և փքահալած քնութ։ Զափն 'ի մի տրամէ մինչև ցերկուս։ Զայս եթէ հաճիս յօրէ֊ նել, ա՛ռ ունկի մի՝ էսթրաթթօ տի արթէմիզիա, և կէս ունկի՝ քրօքօ, և երկու ունկի՝ քասթօռօ։ Զայս ամենայն ա՛րկ յանօթ ապակի, յաւելլով 'ի նա քսան ունկի՝ ալքօօլ. և թո՛ղ մնալ այնպէս երր աւուրս ութ։ Յետ պարզելոյ յաւել 'ի նոյն կէս տրամ՝ օլիօ տի անճէլիքա, և նոյնչափ՝ օլիօ տ' անաչէ. և նոյնա֊ քանակ՝ օլիօ տի քօմինօ, և թո՛ղ այնպէս ժամս քսան և չորս. յետ որոյ քամեսցես զայն ընդ խիտ կտաւ, կամ ընդ թուղթ։

Էլիխիր ստօմաթիքօ, լա։ միւսէ կքսիրի, տճ։ Հե֊ ղանիւթս այս յոյժ հռչակաւոր է 'ի գիպուածս տկա֊ րութեան ստամոքսի, և անոգի, որ այսպէս կազմի։ Ա՛ռ չորս ունկի՝ քինաքինա, և մի ունկի՝ ճէնցիա֊ նա, և նոյնչափ՝ սքօռցօ տի ռաանչիա։ Յետ լոսե֊ լոյ 'ի փոշի զայս ամենայն՝ ա՛րկ յանօթ ապակեայ, յաւելլով 'ի նոյն և զվեց լիտր ալքօօլ։ Եւ յետ թող֊ լոյ զայն աւուրս վեց, օրէն է քամել յայլ անօթ ա֊ պակի։ Զափն 'ի մի տրամէ մինչև ց3։

որովայնի, և յայլ մասունս մարմնոյ, առ 'ի պալարացուցանել, և յինքն ձգել զներքին ժանտալից և վնասաբեր հիւթս, և յարթնացուցանել զթմբրեալ մասունս մարմնոյ. որով և զօրացուցանէ զոգիս կենդանական, զովացուցանէ զջերմութիւս, շիջուցանէ զտապս բորբոքեալս, փարատէ զցաւս գլխոյ, աչաց, ականջաց, կրծոց, և միջաց, և ևս հալածուրէ զուշագնացութն, և զնուաղումն, այլև ապաքինէ զկշռպայցաւուն, զփողացաւուն, զատնաւուն, զանդամալուծուն, զնեղլագարութն, զլուսնոտուն 'ի վերայ եկեալ մանկանց, և զչիաթիքա անուանեալ յօդուածացաւութն. բուժէ նաև զհրատապ և զջղային ջերմախտս, զջղայնաւութիս, և զինչուածս, և զուռոյցս ստամոքսի, լերդի, փայծեղան, և թոքոց: Դարմեալ, փարատէ և զհազս ցնցականս, և զցաւս լանջամաշկի, ևն:

Էմբիասթրօ տի չիքութա, իտ: պալարիքան եաքըսը, տճ: Ըստ մեզ՝ թանձրագոյն օպեղանի մոլեխնդոյ. օգտակար է ընդդէմ կարծրապնդութն փայծեղան, և խցանաց մարմնոյ. և միանգամայն փարատէ զամենակերպ ուռոյցս առթեալս 'ի գաղղիական ախտէ և 'ի խցմանց:

Էմբիասթրօ քալիտօ, իտ: Անուամբս այս իմանի՝ տեսակ ինչ թանձրամած օպեղանւոյ, զոր 'ի վար արկանեմք 'ի դիպուածս հնացեալ չիաթիքա անուանեալ յօդուածացաւութն, դնելով միայն 'ի վշտացեալ մասունս, որով անվրէպ տարամերժէ զպատկութն, և զդժնէութն ցաւոց. բայց յարատևել արժան է առ քանի ինչ շաբաթս:

Էմէթիքուս. տես վօմիթօրիում:

Էմէրուս, լտ: Ծառ ինչ փոքրիկ, որոյ կեղևն է գորշագոյն, և կարծր: Տերևք նորա երկայն են և դառնահամ. որք հինգ հինգ կամ եօթն եօթն, և կամ ինն ինն բուսանին 'ի վերայ միոյ կանթի: Ծաղիկն ընդայլին է և դեղնագոյն, ըստ նմանութն ծաղկան ձէնէթրայի: Արտադրէ պատեան ինչ երկայնաձև, ունելով 'ի միջի սերմունս թուխս, գլանաձևս, յղկեալս, և տաղտկահամս: Իսկ արմատն տարածողական: Սորա տերև 'ի գործ ածի 'ի դեղօրայս, որ է մեղմապէս լուծիչ. և բաժանի ծառս այս յերկուս տեսակս, որոյ մինն է մեծ, իսկ միւսն փոքր:

Էմիրլէձիօ. տես Էմիրլէսիօ:

Էմբլէքսիա, լտ: էմբլէծիա, յուն: Ի մասնական կաթուած ինչ գօսացուցիչ անդամոց. տես հատ. ա. երես. 226:

Էմիթրիթէօ, յուն: անուանքս այս իմանի՝ տեսակ ինչ գժնդակ տենդի:

Էմիկրանիա, կամ էմիքրանիա. տես հէմիքրանիա:

Էմմէնակօկի, լա: մէնսուալէ, յուն: Անուանքս իմանին ամենայն դաշտանաբեր դեղորեք, որք միանգամայն դրդաեն զարիւնն տեռատեսական:

Էմուլսիօ, կամ լաքթէա բօցիօ, լտ: էմուլսիօնէ, կամ լաթթաթա, իտ: սիւպիւէ, տճ: խօնօքի, պր: և բառ մեզ՝ կիթ: Է անուն ընդհանուր նշանակիչ ամենայն կաթնանման հեղանիւթոց երուղերոց 'ի պտղոց, 'ի սերմանց և ն, որոյ են բազում տեսակք. բայց զառաւել ընտրագոյնն և զօգտաւէտագոյնն պատաշաճ համարեսցուք ևեթ կարգել 'ի ստորև:

Էմուլսիօնէ տի գուատրին բօնթուա լա չիաթիքա լօմպար, իտ: մէճայէ մէջիասսլ իչիւն սիւպիւէ, տճ: Կաթնանման հեղանիւթս այս օգտաւէտ է ընդդէմ չիաթիքա անուանեալ յօդուածացաւոց, և ցաւոց մէջաց, որ այսպէս բաղադրի: Առ մի և կէս ունկի՝ օլէօ տի մանտօրլա տօլչէ, և երկու ունկի՝ սիրօբբօ տի ալթէա, և չորս հատ դեղնուց ձուոյ: Զայս ամենայն զանգեա ընդ իրեարս, յոր յաւել տասն ունկի՝ ջուր հասարակ, և կէս տրամ քարպօնաթօ տի բօթասսա: Զգեսցի գեղըմպութիս այս ց12, և ց20 օր. բայց առցի մի աւելի քան զմի բաժակ գինւոյ առ մի նուագ, և տացի բաւական միջոց ժամանակի ընդ մի և ընդ միւս արբուածս այսր չափոյ:

Էմուլսիօնէ տի քասսէթ բէր թէռմինարէ լէ կօնօռէէ ինվէթէռաթէ, իտ: Կաթնանման հեղանիւթս այս յոյժ հռչակաւոր է 'ի մասին օգտաւէտութեան 'ի գիպուածս հնացեալ և երկարատևեալ սերմնահոսութեան, որ այսպէս յօրինի: Առ մի ունկի պալսամօ տէլ քօբբաու, և նոյնչափ՝ սիրօբբօ տէլ թօլու, և վեց ունկի՝ ջուր վարդի, և մի ունկի՝ կօմմա արապիքա, այլ և տրամ մի՝ սբիրիթօ տի նիթռօ տօլչիֆիքաթօ: Զայս ամենայն խառնեա բաբախ ընդ իրեարս, և տուր ըմպել ախտակրին երկիցս յաւուրն. այսինքն զկէս մասն ընդ առաւօտս 'ի ծոմուստ, և զմնացեալն ընդ երեկս յերթալն յանկողինն:

ոտնաչափ, և է դալարագոյն, բազմանկիւնի, ուղիղ, կեղևապատ, ծնրաւոր, և ձիւղալից: Տերևք նորա ունին զձև տերևոց Թանթրվենւոյ, բայց երկայն և հաստաւէտ քան զայն: Ծաղիկն սպիտակ, մանր, կոնքաձև, կամ հովանաձև: Պտուղն բոլորշի, սևագոյն, հիւթալից, և սերմնալիր: Իսկ արմատն սպիտակ և ստուար իբր մատնաչափ: Այս բուսանի յաճախ յեւրոպիա, յամայի վայրս, ուր է խոնավ, և գոյացական աղիւ. որոյ արմատն և կեղեւն են դեղք շահաւէտք ընդդէմ ջրգողութեց և հոսման հիւթոց, զի են Թուլացուցիչ և Թմբրեցուցիչ բնութեամբ: Իսկ ծաղիկն, և պտուղն ունին զմանաւանդ իմն գործունէութի 'ի բուժել զախտս մորթոց հնացելոց, 'ի բառնալ զմանրամասնագոյն ծակոտկէնս աւիշկեան անօթոց, և 'ի վերընձիւղել զմազս գլխոյ:

Էպուլօ. տես Էպուլոս:

Էպուլիօ. տես Էպուլոս:

Էսթրաթթօ, իտ: էքսթրաքթում, լտ: իքօքէքրօն, յն: խիւլասմա, արբ: և ըստ մեզ՝ զուտ կամ գոյացութիւն: Այսուանուամբ նշանակի՝ ամենայն մակարդամած և Թանձր նիւթ ելուզեալ 'ի խոտոց, յարմատոց, 'ի ծաղկանց, 'ի բնոց ծառոց, են, որոյ են յոլով տեսակք, բայց մեք զատուցել ընտրագոյնս և գործունեայս պատշաճ վարկաք ևեթ կարգել 'ի ստորև:

Էսթրաթթօ աքքուօզօ տի Մէնիանթօ, կամ Էսթրաթթօ տի Թրիֆօլիօ Ֆիպրինօ, իտ: Գոյացութիւն այս օգտաւէտ է ընդդէմ աքօռպութօի, և տոնատութեն: Չափն 'ի կէս տրամէ մինչև ցմի:

Էսթրաթթօ տի ասսէնցիօ, իտ: բեւլին խիւլասմաար, արձ: ըստ մեզ՝ գոյացական մասն օշնդրի. գերահրաչակ է 'ի մասին օգտաւէտութեն 'ի գիպուածս տկարութեն ստամոքսի, տենդի, և ջղային դժուարամարսութեն: Չափն 'ի կէս տրամէ մինչև ցմի՝ արկեալ 'ի մէջ երեք ունկի գինւոյ, և 'ի վար արկանեմք յաւուրն:

Էսթրաթթօ բանքէմակօկօ տէլ քրօլէ, իտ: Գոյացութիւն այս մաքրէ մեղմաւէս զօրովայնն, և առանց երբեք վրդովման. մանաւանդ է սորա ներգործութիւն 'ի գիպուածս ամենակերպ հնացեալ ախտից, նա յաւէտ սերմնակաթութեն: Չափն 'ի 10 կշիռ ցորենոյ մինչև 940:

Իսթրաթթօ տի գուասսիա . տես ըննում գուասսիա :

Իսթրաթթօ տի էլլէպօռօնէռօ, իտ. : քարա չէօպլէմէ խիւլասասը, թճ. : ըստ մեզ գոյացական մասն սեաւ եղջերոսի : 'Ի յարգի է այս առ բժիշկս յամենայն դարս սկսեալ 'ի Հիպոկրատեայ մինչև ցայս վայր . մաքրէ հզօրապէս զհիւթս մաղձի, և թուլացուցանէ զախտս . օգտակար է ընդդէմ բորոտութե, որքինի, ջերգողութե, լուսնոտութե, տխրադանոտութեան, և այլ վերնական ուղղոյն . սաստկէ և զորդունս և զճճիս որովայնի, և բուժէ զախտն Ելեփանդական, զմոլեգնութի և զքաղցկեղ : Իսկ եթէ 'ի վար արկանիցեմք չափաւորապէս, խառն ընդ քաղցրացուցեալ անդկի, լինի դեղ յոյժ պատշաճողական հնացեալ ախտից մորթոց, որոց ո՛չ գոյ յոյս ապաքինութե : Չափն 'ի 10 ցորենոյ մինչև ց30 խառն ընդ այլ յարմարաւոր դեղորէից :

Իսթրաթթօ տի չիքութա, իտ. : պալդըրըան խիւլասասը, թճ. : ըստ մեզ՝ գոյացական մասն մոլախնդոյ, որ է բնութե ազդու թմբրեցուցիչ, և սքանչելի, որ թափանցէ 'ի նրբանթել ծակոտկէնս երակաց, լուծեալ զխցանս մարմնոյ . օգտակարագոյն է 'ի դիպուածս կարծրացելոց ուռուցից, և խոլխեցգեանոյ արգանդի . փարատէ և զքաղցկեղ, և զվէրս չարաւալիցս, այլև բուժէ զհազս ուժգինս, և զփողացաւս, և զայտուցս խուլականս . բայց պարտ է սկիզբն առնել սակաւաքանակ չափու, զօրօրինակ 'ի կէս կշիռ ցորենոյ մինչև ցմի, և ապա առ սակաւ սակաւ առաւելուլ զչափն մինչև ցմի, կամ ցմի և կէս տրամ յաւուրն :

Իսթրաթթօ տի ռապարպառօ, իտ. : ռաւէնտ խիւլասասը, թճ. : և ըստ մեզ՝ գոյացական մասն խաւնդեղի, որոյ բնութին մեղմապէս լուծողական, զօրաւոր ստամոքսի, ընդերաց, և մարսողական զօրութե, և միանգամայն փարատէ զախտս լերդի : Չափն 'ի 20 ցորենոյ մինչև ց30 :

Իսթրաթթօ տի քինա քինա, իտ. : քընա քընա խիւլասասը, թճ. : ըստ մեզ՝ գոյացական մասն քինայի : Յոյժ հռչակաւոր է 'ի դիպուածս տկարութե ջլաց, և ստամոքսի, ծիւրական ախտի, միջահատական, եռօրեայ, չորեօրեայ, և եօթնօրեայ տենդից, մանաւանդ բէջանիչիօզըս անուանեալ տենդի . օգտէ նաև ընդդէմ

երկարատև խօթութեանց, խոնաւ չնչարգելութեան, անդամալուծութեն, լուսնոտութեն, և հոսման արեան։ Զափն 'ի կէս տրամէ մինչև ցերկու, կամ ցերեք, և կամ ցչորս, զոր յաճախ 'ի կիր արկանեմք 'ի հատագեղս, և 'ի մածունս։

Էսթրաթթօ տի մառթէ աբէրթիւօ, կամ մինձիւ-Թէռիօ աբէրթիւօ, իտ։ Եւ ըստ մեզ՝ գոյացական մասն երկաթոյ, յոյժ շահաւէտապէս է ընդդէմ երկարատև խօթութեանց, ապիտակ տենդի, դալկան, ախտի ախտոնդանաց, նուազութեան ամսական պարտուց կանանց, և ամենակերպ խցանաց մարմնոյ։ Զափն՝ 'ի կէս տրամէ մինչև ցմի ամբողջ։

Էսուլա կամ էզուլա մինօր, կամ բիթիուսա, կմ բիւէնա, և կամ թիթիմալուս Փօլիիւս բինի, լտ։ էսուլա, կամ էզուլա, իտ։ Է բոյս ինչ կաթնաբուղխ, յազգէ թիթիմալիօի, որոյ ցօղունն է ճիւղալից, և երկայն իբր մի ոտնաչափ։ Տերև նորա ունի զձև տերևոյ սարոյի։ Ծաղիկն փոքրիկ, և դալալագոյն։ Իսկ արմատն մանր, և կարմրագոյն, զորոյ կեղևն ածջատեալ 'ի վար արկանեն 'ի դեղորայս, որ է ուժգին լուծողական, և փարատիչ քնափութեան, մատթափութե, և այլոց այսպիսի ախտից։

Էսսէնցիա, լտ։ Էսսէնցա, իտ։ զաթրդէ առ։ Ըստ մեզ՝ գոյացութիւն կամ էութիւն. է հեղուկ ինչ, հանեալ թորմամբ յինչ և իցէ նիւթոյ։

Էսսէնցա անթիսթէրիքա տի լէմէրի, իտ։ Գոյացութիւս այս յոյժ օգտակար է 'ի դիպուածս ջղային ախտից արգանդի, նուազութե ամսական պարտուց կանանց, և խթից 'ի վերայ եկելոց արգանդի կանանց մերձ 'ի դաշտանն։ Զայս եթէ կամիս կազմել, առ կէս ունկի՝ քասթօռօ. և երկու տրամ ասաֆէթիտա, և կէս տրամ՝ օլիօ վօլաթիլէ տի սապինա. և նոյնչափ օլիօ տի ռութա. այլև օլիօ տի սուչչինօ. առ և տասն ունկի՝ ալքօօլ։ Զայս ամենայն խառնեա 'ի միմեանս, և հան 'ի սմանէ զնրբագոյն, և զոգեղէն մասն ցքահան գործեաւ. յետոյ յաւել 'ի նա մի տրամ՝ քանֆօրա. և երկու տրամ՝ քարաքոնաթօ օլէօզօ տի ամմօնիաքա, զոր և թողցես ձեւալ այնպէս իբր զաւուրս չորս. ապա քամեա զայն իւր կտաւով յանօթ ապակի։ Զափն 'ի 20 շիթէ մինչև ց40 խառն ընդ շաքարի։

Էսսէնցիա շիւլլէթիքա տի քէռուս, իտ։ Գոյացու-

քեն շահաւէտ է ընդդէմ ջրգողութեան, և անդա-մալուծութեան ։

Էրէթռիա թէառա, լտ․ Է կաւ ինչ պարարտ նման կնքեալ կաւոյ․ որոյ կրկին է տեսակ․ սպի-տակ, և գորշագոյն․ սպիտակն առաւել ազնիւ է, զոր 'ի վար արկանեն 'ի դեղորայս, որ է արգելիչ արեան հոսելոյ յորովայնէ ։ Սա գտանի միայն 'ի Էռէթռիա գաւառն, յորմէ կալաւ և զանունն ։

Էրիթհռինոս, կամ ռուպէլլիօ, լտ․ պառուպիօ, իտ․ Է ձուկն ինչ ծովային երկայն, և ստուար իբր մատնկաչափ, արտաքուստ կարմիր, իսկ 'ի ներքուստ սպիտակ․ գլուխ նորա է թանձր, ընչացքն կարճ և արածայր, բերանն մեծ, որկորն փոքրիկ, ատամունքն միջակ, աչքն մեծ, և փայլուն․ թեփք մորթոյն կարծր, և սայրասուր, միսն փափուկ, համեղ, և դիւրամարսելի ։ Սա լի է իւղով և ցնդական աղիւ․ օգտաւէտագոյն է ընդդէմ փորհարութե, սկարութեան ջլաց, և զգայական երակաց, զի է գրգռիչ քնութե ։

Էրինձէօ․ տես էրինձիում քամբէսթռէ ։

Էրինձիում քամբէսթռէ, կամ իւռինկոս գուէ-պուստամ, լտ․ էռինձէ քամբէսթռէ կամ էռինձէօ, իտ․ գէնկէր, կէ՛ կանգար, և կամ գօռսանէթ, տճ․ Է բոյս յաճախեալ յաւազուտս, յագարակս, և յե-զերս գետոց․ որոյ ցօղունն է բոլորակաձև, դալար-նագոյն, երկայն իբր երկու ոտնաչափ, մէջն սպի-տակ և հիւթալից․ տերև սորա է լայն, հերձոտ, կարծր, և փշալից․ և 'ի գագաթան արձակէ գըն-դակ ինչ փոքրիկ, քառեակթերթեան, փշալից, և սայրասուր, յորոյ վերայ ելանէ ծաղիկն սպիտակ, և հնգթերթեան․ արտադրէ սերմունս մանունս, և ձուաձևս ։ Իսկ արմատն լայն յոյժ և ստուար իբր բթաչափ, սպիտակ, և քաղցրահամ ։ Սա լի է իւ-ղով, և ցոյացական աղիւ․ և զօրութեամբ խթիչ, բացողական, և միզաբեր․ օգտաւէտ է ընդդէմ ջրգո-ղութե, խցմանց արգանդի, փայծեղան, լերդի, և երիկամանց․ որով և սպաքինէ զթոքային նուբր ախտս, և ծիւրեալ մաշէ զքարն՝ եթէ պտցէ Ը անցս միզի ։ չափն 'ի 2 տրամէ մինչև ցչորս յաւուրն խառն ընդ մի լիտր ջրոյ ։

Էրիսիմում, կամ քլէօմէօէթալլի, լտ․ ալլիա-րիա, իտ․ Է տունկ, որոյ ցօղունն բարձրանայ յեր-

կէ երբ երկու ոտնաչափ, և է կարմրերանգ, ճիւ-
ղալից, և մազոտ: Տերևք նորա նման են տերևոց
մանանխոյ: Ծաղիկն փոքրիկ, և քառեակթերթեան,
որ ձևանայ 'ի ձև խաչի. պտուղն պատենաձև, թամ-
բալիր, բոլորշի, և ուղէղ. և 'ի միջի պարունակէ
զսերմունս մանունս, և սաստկահամս 'ի խորշս խորշս
մաշկատեսակս: Իսկ արմատն փայտայլին, սպիտակ,
ստուար երբ մատնաչափ, և տապահամ: Սա բուսա-
նի 'ի քարուտս, և յամայի վայրս. ունի միանաւոր
գործունէութիւն 'ի բուժել զջրգողութիւն, յանօսրել
զթանձրամածութիւն տողունից, 'ի գրգռել զմէզն
զթուքս և զլորձունս, և 'ի դիւրահեշտ յօրինել
զտուրևառութիւն շնչոյ: Իսկ սերմն սորա նոյն-
պէս օգտակար է ընդդէմ ջրգողութեան, շնչարգելու-
թեան, պզօսպութեան, և երիկամնաժեռութեան. զի է
խթիչ և միզեցուցիչ բնութ՟: Զափն՝ 'ի կէս ունկւոյ
մինչև ցմի՝ խառն ընդ մի լիտր ջրոյ:

Էրմօտօսթթիլօ. տե՛ս Հեռմօտաքթիլուս:

Էրնիա. տե՛ս Հեռնիա:

Էրնիօզա, իտ: տեպպէ, տճ: Ֆէթիք, արբ: Եւ-
րատ մեզ՞ փուշտանկ, կամ աղէթափ:

Էրուկօ. տե՛ս Աէրուկօ:

Էրուքա, կամ ռուքա, լտ: ռուքէթթա, իտ:
դիրգիլ, կամ գիգլին, կամ կերկիր, և կամ ճէրճիր,
արբ: Խոտ ինչ կծուահամ, յորմէ կազմեն զաղցան.
որոյ կրկին է տեսակ, սպիտակատերև և կանաչա-
տերև. սպիտակատերևն որ առատ բուսանի յագա-
րակս, առաւել ընտիր է սակս առաւելութեան
կծուոյն որ 'ի նմա: Երկոքին սոքա 'ի գործ ածին
նաև 'ի դեղորայս, որք անօսրեն զթանձրամածութիւն
տողունից, մաքրեն զարիւն, և դիմակալեն պզօս-
պութեան:

Էրպա. տե՛ս Հէրպա:

Էրվում, լտ: ռուպիկլիա, իտ: սեհահ գէշէնէ.
կամ գառապուշակ, տճ: և ըստ մեզ՝ վայրի ոլոռն:
Բոյս յաճախեալ յամենայն ուրեք. որոյ ցօղունն է
երկայն երբ երեք ոտնաչափ, ճիւղալից, և լայնա-
ծաւալ: Տերևք նորա երկու երկու բուսանին ըստ
նմանութեան տերևոց ոսպան: Ծաղիկն փոքրիկ, և ծի-
րանագոյն, որք 'ի վեր երևին 'ի ծայրս ճիւղոց հան-
դերձ եղջերաձև ատէչիւք: Յետ ծաղկանց արտա-
դրէ պատեան փոքրիկ, ունելով 'ի միջի սերմն ման-

ըին, բոլորշի։ Լի է սա իւղով, բայց նուազ գոյա-ցական աղիւ, և բնութեամբ բացողական, քաղցրա-ցուցիչ, և մաքրողական արեան։

Էքսթրաքթում. տե՛ս էսթրաթթօ։

Էքզոքրօթիքա։ Այսու անուամբ իմանի այն տե-սակ լուծողականաց, որ գրգռէ զփորոտս որովայնի, և լուծանէ թեթևապէս սեփական բնութեամբն, բայց առանց ինչ ներգործութեան. յայսմ կարգի են՝ ար-գանակն պարարտագոյն մսեղինաց, ձէթն ձիթե-նեաց, իւղն նշոյ. ևն։

## Թ

Թաէնիա, կմ թէնիէ, իտ։ նամաղ պուանու, տճ։ Այսու անուամբ իմանի ազգ ինչ հարթաձև փա-փուկ և սպիտակ որդան, որ սովորաբար գոյանայ 'ի փոր կենդանեաց. որոյ երկայնութիւն է իբր եօթն կամ 12 ոտնաչափ, իսկ լայնութիւն գրչաչափ. գլուխ նորա զետեղեալ կայ 'ի ծայր առան, և սիրէ յոյժ զդիճուն կենդանեաց. ուստի բազում անգամ կառուի սա 'ի փորոտիս մարդոյ՝ և ծծէ զդիճութն այնչափ անյագ, մինչև պատճառէ 'ի մարդն ղաենգ սաստիկ, զխիթ որովայնի, և ստամոքսի, զնիհարութիւն, ըղ-թալկութիւն, զպատոյտ գլխոյ, զցնցումն մկանանց, զնուաղումն սրտի, և զուշագնացութիւն։ Դարձեալ, անուամբս ցուցանի և տեսակ ինչ ձկան ծովայնոյ, որ է երկայն գրեթէ 'ի չափ հաստարակ օձի. գլուխ նորա կարճր է և սակրաւոր. աչքն մեծ և բոլորշի, և արագաշարժ, գոյն մորթոյն սպիտակ իբր զար-ծաթ. իսկ միսն փափուկ և ախորժահամ, հանգոյն մսոյ պղլիպոտի։

Թալբա, կամ մուս թէռուէնուս, լտ։ թալբէ իտ։ գէօստէպէկ, տճ։ խուլդ, արբ։ գէօրմուշ, պր։ և ըստ մեզ՝ խլուրդ։ Է տեսակ մի քառոտանի կեն-դանեաց 'ի չափ մկան, որ սովորաբար բնակի ընդ երկրաւ. գլուխ նորա տափարակ է ըստ գորտոյ. ու-նի աչս յոյժ մանունս, և զայն փակեալս. վասն որոյ կոչի և կոյր. բայց յորժամ ելանէ յերեսս երկրի,

գոյղն ինչ բացեալ լինի, որով և տեսանէ. սաւէն կարճ, ստուար, սեաւ, և շողշողուն. պարանոցն կարճ, որպէս և սրունք նորա. Թիկունքն լայն. մորթն կարծր, հանգոյն խաղախոյ՝ առ բազում իրս պիտանի. առաջին ոտքն են կարճ, լայն, և ճիրանաւոր, որով փորէ զհողն, և առնէ ինքեան ճանապարհ: Այս կենդանի լի է իւղով և ցնդական աղիւ, որոյ մարմինն՝ հանդերձ ոսկերք ածխունացուցեալ և արբուցեալ, լինի դեղ ազդու ընդդէմ բորոտութեան, հարբխոյ, և ռիմաթիզմա անուանեալ յօդուածացաւութեան, չափն 'ի 10 ցորենոյ մինչև ց30: Նոյնպէս ապաքինէ նաև զխլրդենին, զխղխայթն, զխոզքն, և զայլ սոցին նման գժնեայ վէրս, եթէ ըմպելով, և եթէ 'ի վերայ ցանելով եւեթ: Իսկ զսիրտն 'ի վար արկանեն 'ի դեղ փոշտանկութե. այլ որպէս մարմինն և սիրտն, նոյնպէս և լեարդ սորին՝ լինի դեղ ընդդէմ ցաւոց և խթից արգանդի՝ ամենայն յապականութէ հիւթոց, և գոլորշեաց. չափն 'ի գործ արկանելոյ 'ի 20 ցորենոյ մինչև ց60՝ խառն ընդ գինւոյ, կամ գաղջ ջրով:

Թաճչթէս, լտ: Տունկ, որոյ ցօղունն է ուղղալից, երկայն իբր երեք ոտնաչափ, ստուար 'ի չափ բթամատին մարդոյ, սպիտակ և ճիւղալից: Տերևք նորա նման են տերևոց Թանաչէթումի, բայց սակաւ մի երկայն և սրածայր քան զայն, և է պայծառ կանաչ, և շուրջանակի սղոցաձև ատամնաւորեալ: Ծաղիկքն գեղեցիկ ոսկեգոյն, զազրահոտ, ստուար, բոլորշի, և ճառագայթաձև. որք փունջս փունջս փթթին 'ի գագաթան, հանդերձ երկայնաձիգ առէջիւք. ապա բերէ սերմն երկայն, եռանկիւնաձև, և սեաւ: Իսկ արմատն նուրբ, փափուկ, և Թելալից: Սա բուսանի 'ի բուրաստանս, և 'ի պարարտ տեղիս. լի է իւղով և ցնդական աղիւ. որոյ տերևն (ըստ ոմանց նախնի հեղինակաց) եռացուցեալ և արբուցեալ՝ դեղ է ցաւոց և տկարութեան ստամոքսի, որ և լուծանէ զխցանս արգանդի. գրգռէ զդաշտանս կանանց. այլև բժշկէ զռենդ, զջրգողութի, զերկարատև խօթութի, և զցնցումն մկանանց:

Թամարինտուս, լտ: Թամարինտօ, իտ: Թամր հինտի, կամ սուպպար, և կամ Ֆէֆֆելէ, արբ: խապձէ, պր: Եւ ըստ մեզ Թարգմանագրի՝ արմաւ Հնդկաց. է պտուղ սեաւ. երկայն 'ի չափ հասարակ

եղջեր․ թամբալից, թանձր, և թթու գրեթէ որպէս զլեմոն․ ունի և զկորիզս կարմրերանգս, և տափարակս, և զշիւղս անպիտանս, և կարծրս, մինչև հերձանել և զնտերս ծասքողին․ զոր զմնգեալ կազմեն 'ի ձև սնուոյ, և առաքեն 'ի զանազան կողմանս, որ է դեղ մեղմապէս լուծողական, թուլացուցիչ, և զովացուցիչ․ և միանգամայն օգտաւէտ է 'ի դիպուածս փտախտութեան, մաղասային տենդից, ստամոքսական ջերմախտից, և առինամիքէ անուանեալ տենդի․ և 'ի տեղիս տեղիս նաև 'ի կիր արկանեն ընդդէմ փորհարութեան, և զայրացեալ թանչից, չափն 'ի չորս տրամէ մինչև ցութ, խառն ընդ այլ յարմարագոյն դեղորէից։ Ծառ 'սորա զոր լատինք կոչեն՝ պալամ բուքիլլէ, կամ սիլիգուա առապիքա, մեծ է քան զհասարակ ընկուզենի մեր։ Փայտն կարծր է, և ուղիղ։ Կեղևն թանձր, ցաւատեալ, և մթին կանաչ։ Տերևքն խիտ, լայն, պայծառ կանաչ, երկայնականթ, և դոյզն ինչ թաւիշաւոր։ Ծաղիկքն երեքթերթեան, անհոտ, կարմրանիշ, և երկայնականթ, որք փունջս փունջս 'ի վեր ելևին 'ի ծայրս ոստոց՝ հանդերձ քրքմագոյն առէջիւք։ Այս ծառ բուսանի 'ի զանազան տեղիս, որպէս 'ի հնդկաստան, յափրիկէ, և յամերիկա․ այլ է հասարակ ընդ ամենայն տեղիս։ Կոչի և յանուն պտղոյն օքսիբհէնիքա։

Թամարիսքուս, կամ առպօռ նառպօնէնսիս, լտ։ Թամարիսքօ, կամ՝ թամարիծիօ, և կամ թամէռիչէ, իտ։ Թամառիսք․ դղղ։ ըլքն աղաձը, տճ։ և ըստ մեզ՝ մօշայ։ Է թուփ յաճախեալ յերկիրս ջերմադինս 'ի յեզերս գետոց, և 'ի խոնաւուտ վայրս։ Կեղև նորա է յղկեալ, կարմիր 'ի ներքուստ, իսկ արտաքուստ մոխրագոյն և անհարթ, միանգամայն և դեղ դալկան, ախտից լերդի և մորթոց։ Փայտն նման է փայտից նոճի, զոր 'ի վար արկանեն 'ի պէտս շինուածոց։ Տերևն փոքրիկ, սուր, ոլորաւոր, և դեղնախառն կանաչ։ Ծաղիկն մանր, սպիտակ և հինգթերթեան։ Իսկ պտուղն բոլորշի, կարծրանիւթ, և թաւամազ, զոր 'ի գործ ածեն 'ի ներկս սևուս, նաև 'ի դեղորայս, որ է լուծիչ խցանաց արգանդի, փայծեղան, և միջընդերաց, և միանգամայն փարատէ զլուսնոտութիւն, զտենդս և զխօթութիւն պատճառեալս 'ի մաղձային հիւթոյ։ Զնոյն գործունէութի

ունին սոխ նաև սերմն, տերևն և փայտն:

Թամուս, լտ: Բոյս անտառային, որ արձակէ զբազում բարունակս նուրբս. զամենայնիւ զոր գտանէ՝ պատատի: Տերևք նորա են մեծ, սրտաձև, պայծառ կանաչ, խժահամ, և երկայնականթ: Ծաղիկն փոքրիկ վեցանկիւնի, և դեղին, որ ողկուզօրէն փթթի առ կանթիւ տերևոյն: Պտուղն բոլորշի, և մթին կարմիր, ունելով 'ի միջի սերմունս մանունս. իսկ արմատն մեծ, բոլորշի, սևաւ, պալարաւոր, և տտպահամ, յորմէ կազմեն դեղ ընդդէմ միզարգելութե և ջրգողութե:

Թամօաթա, կամ սօլտիտօ, լտ: Ձուկն ինչ ամերիկեան, որ 'ի գլուխ իւր ունի ինչ նման գլխարկի կամ վահանի, ունի ևս երկուս մազս կարծրս և երկայնաձիգս, որք զօրէն մօրուաց կախեալ կան յերկուց կողմանց առ ծնօտիւք. աչք նորա գեղեցիկ, այլ յոյժ փոքրիկ գրեթէ 'ի չափ սերման մեկոնի. երկայնութիւն նորա 'ի գլխոյ մինչև ցծայր ձետոյն է իբրև մի և կէս քիլ. Թեփք մորթոյն մանր և երկայնաձև. իսկ միսն համեղ, և դիւրամարսելի, միանգամայն և օգտակար դեղ ընդդէմ միզարգելութե:

Թանաչէթում վուլկարէ, լտ: Թանաչէթօ, իտ: Թանէզի, գաղղ: Է բոյս հոտաւէտ, դառնահամ, և համեմային, որ յաճախ բուսանի յեւրոպիս յագարակս, և յարտօրայս իբր երկու ոտնաչափ բարձրութբ, որոյ տերևն, ծաղիկն և սերմն են դեղք օգտակարք ընդդէմ ջղային դժուարամարսութե, որդանդային ջրգողութե, միջահասական տենդի, և տկարութե ջլաց. զի է խթիչ բնութբ, և ճճէհալած: Զափն 'ի վեց տրամէ մինչև ցութ խառն ը մի լիտր ջրոյ:

Թասսօ, իտ: Թաքսուս պաքքաթ, լտ: տան տիւլիոն, գաղղ: և ըստ մեզ՝ գեղձ: Է մշտադալար ծառ ինչ եւրոպիոյ. որոյ տերևն նման է տերևոյ եղևնի ծառոյ. անհոտ է և դառնահամ, և չափազանցն մահաբեր. յորմէ կազմեն դեղ ազդու ընդդէմ բորբոքողականութեց, փողացաւութե, կշտացաւութեան, և բորբոքման կրծոց, զի է թուլացուցիչ, և ցրտացուցիչ բնութբ: Զափն 'ի վեց ցորենոյ մինչև ց30, վեց անգամ յաւուրն: Ծաղիկն սպիտակ և եղերահերձ: Պտուղն գնտաձև, փափուկ, կարմրերանգ, և հիւթալից:

Թարանթուլա, կամ Ֆալանկաւմ աբուլում, լտ։ Թառանթօլա կամ Թառանթէլլա, իտ։ օվա էօրիւմճէի, տճ։ Է սեռակ մի թունաւոր սարդի իբրև 'ի չափ գխտորոյ. գոյն նորա գորշ, ունելով 'ի վերայ ապխտակ, սեաւ, և կանաչ բիծս, և քնքուշ մազս. զգլուխն ունի 'ի կուրծս, յորոյ վերայ են աչք ութ թուով, չորս մեծ, իսկ չորս փոքրիկ. ունի և նոյնքան ոտս յօդաւորս, և շրջափիւռս ըստ պողիպոտի. յորոց առաջինքն կարճ են քան զյետինս. իսկ 'ի բերանն ունի երկու ատամունս մանունս, և սեաւս, և սայրասուրս։ Լինի սա 'ի բոլոր Իտալիա. այլ թու_ նալից և վնասակար քան զամենեսին է՝ որ լինի 'ի Թառանթօ կոչեցեալ քաղաքն 'ի Փուլիա, յորմէ կոչաւ և զանունն. վասն որոյ հարեալքն 'ի նմանէ առնեն զպէսպէս մոլեգին շարժմունս, զի ոմանք գոչեն, հառաչեն, և կականեն, և ոմանք մռաթափին, տրտմին, և լռեն, իսկ ոմանք հրճուին, ծիծաղին, և կաքաւեն։ Պատճառէ 'ի հարեալն և զտկարութիւն ստամոքսի, զդողդոջումն, զժուարաշնչութն, ըղբորբոքումն, զգլխացաւութն, զարտացաւութն, ըղտապագին տենդ, զքնափութիւն, զպտոյտ գլխոյ, զնուաղութն տեսութն, զգալլուկն, զյօդուածացաւութիւն, զգալարումն ջլաց, և մկանանց, զցուրտ քիրտն, և զմաղձ ժայթքեցուցանեն. և եթէ ոչ դարմանեսցի, 'ի սուղ ժամանակի զրաւեն 'ի կենաց։ Իսկ սովորական դարման, և դեղ ապաքինութն նց՝ են էութին եղբօրոսի, գագաթն մարգոյ, և ամենասեսակ ցնդական աղքն. զորօրինակ աղն իժի, եղջիւրն եղջերուի, ևն, այլ մանաւանդ նուագարանք, զի 'ի ձայն նուագարանաց կաքաւեալ ընդ երկար քրտնին, և զուարթանան, որով և ապաքինին։ Սորա է սեռակ ինչ կոչեցեալ 'ի բարբառ արաբացւոց շէպէտ կիմ ըռթայիլ. զոր պարսիկք անուանեն՝ զըռնտա, իսկ տաճիկք՝ պէյ. որ լինի չարաթոյն քան զամենայն ազգս թունաւոր սարդից, որ 'ի խայթել իւրում թէ ոչ առժամայն, սակայն փութով և անվրէպ սպանանէ։ Բայց բնակիչք երկրին ունին և զդեղթափ սորա. որ է աղքն խշոյ. զոր եթէ նախ քան զանցանելն քառորդ ժամու դիցեն 'ի վերայ խայթուածոց, բժշկին 'ի թունոյ անտի։ Այս սեռակ մահաբեր սարդի՝ յաճախ գտանի 'ի վերին եգիպտոս, 'ի քարուտս, և 'ի խանաւուտս, որ դրեթէ

ամենայն իրօք նման է վերնոյն, բայց ունի զգոյն սեաւ:

Թարասսաքօ. տես Լէօնթօտում Թառաքսաքում:

Թարթարուկա, տես Թեսթուդօ:

Թարթարում, լտ: Թառթառօ, իտ: տօրթու, կմ տուրգի, և կամ չէրապ սառոխյէսի, տճ: գլոճէ, կմ կիւտատէ, կամ տիւրտի, արբ: գիւնձաշ. կամ գիւն_ձարէ, կամ ճէզոէր, կամ սէվաթ, և կամ տիւրթ, պր: և ըստ մեզ՝ տորտ: Է գոյացական մասն կամ լաւ ևս՝ մրուր գինւոյ, որ 'ի միջի շրջապատն անօթոյ գինւոյ պնդանայ, և կարծրանայ: Եւ են սորա եր_կու տեսակք. սպիտակ, և կարմիր. սպիտակն որ առաւ ելանէ 'ի բօլօնիա, և 'ի գերմանիա, առաւել ընտրագոյն համարեալ է, զի է բիւրեղանման, և կարի տապահամ, զոր արհեստաւորք 'ի վար արկա_նեն 'ի զանազան գործս, որպէս և մեք 'ի գեղորայս. որ է փարատիչ խցանաց, և միզարգելութե: Չափն 'ի կէս տրամէ մինչև ց3:

Թարթարում էմէթիքում, կմ Թարթարում սթի_պիաթում, լտ: Թարթարօ էմէթիքօ, կամ Թարթա_րօ սթիպիաթօ, և կամ օսսիթատթառաթօ տի ան_թիմօնիօ է տի բօթասսա, իտ: տօրթու քուսթու_րուճու, տճ: և ըստ մեզ՝ տորտ ործացուցիչ. Է սպի_տակ փոշի ինչ անհոտ, և տտպահամ, բաղադրեալ 'ի յունաքարէ կամ յանթիմօնէ, և 'ի տորտոյ: Արկին է ներգործութիւն սորա. զի եթէ ոք արբցէ 'ի սմա_նէ երկու կամ երեք, և կամ չորս ցորենաչափ, յետ քանի ինչ վայրկենի ործացուցանէ և լուծէ սաստ_կապէս. իսկ եթէ տացի սակաւաքանակ, (զորօրինակ 'ի կէս կշիռ ցորենոյ մինչև ցմի ամբողջ) յայնժամ լինի դեղ գրգռիչ, ընկլուզիչ, և մեղմապէս լուծիչ: Իսկ զայս դեղ ործացուցիչ՝ նախադասեալ չափով կարես 'ի կիր արկանել ամենայն չափահաս արանց, և կանանց 'ի հարկաւորութեան ժամանակի. և տղա_յոցն կիսոյ մասն, իսկ մանկանց՝ երկեմենից չորրորդ մասն, այլև երախայից՝ վեցերորդ մասն բաւէ: Գի_տել արժան է սաստէն, եթէ զայս դեղ ործացուցիչ ոչ միայն 'ի վար արկանեմք առ 'ի մաքրել զստամոքսն յաւելորդաց, 'ի դրտէ, 'ի թանձրամած տաղունէ, և 'ի սուր մաղձից, այլև միանգամայն առ 'ի ցնցել, 'ի սթափեցուցանել, 'ի զգաստացուցանել զոյժն կեն_սական և զթմբրեալ մարմինն, և 'ի զուարճացուցա_

նել զսիրտն, եւ առ 'ի անքոյթ, եւ բացարձակ ճանապարհ յարդարել շրջանաց արեանն: 'Ի գործ ածեմ ես յոլով անգամ զայս դեղ՝ երբ ործացուցիչ 'ի դիպուածս ստամոքսական կամ մաղձային տենդի, նա յաւէտ՝ յորժամ 'ի վեր երեւին նողկանք ստամոքսի, եւ փոխումն 'ի սկզբան անդ ախտիս. եւ չէ օրէն գանդաղկոտութ՟, կամ զանցառութ՟ անցուցանել զժամանակ. զայս թէ ոչ՝ խառնել ախտաբեր հիւթն ընդ արեան, եւ տարածանել ընդ բովանդակ մարմինն՝ վրիպակս մեծ գործէ: Նոյնպէս եւ օգտաւէտ է 'ի դիպուածս բազմակերպ տենդից, եւ ջերմ ախտից: Երբեմն ես 'ի կիր արկանեմ զսա՝ 'ի դիպուածս լիութեան եւ չափազանց արտադրութեան զարկի բազկի, 'ի հոսմունս արեան, 'ի ցաւս գլխոյ, յախտս լերդի, եւ յորբունմն թոքնից: Դարձեալ, բազում անգամ 'ի վար արկանեմ զսա իբր դեղ գրգռիչ՝ 'ի դիպուածս անդամալուծութեան, լուսնահարութեան, կաթուածոց, վատթարագոյն հազից տղայոց, եւ ծաղկանց, նաեւ վերնոտութեան 'ի վերայ եկելոց մանկանց: Զայս դեղ ես բազմօրինակ գրեմ աստ ախտաժետաց: Զոր օրինակ. 'ի յինն ունկի հասարակ ջրոյ, որ քաղցրացուցեալ լիցի մեղրով, կամ շաքարաւ որչափ եւ կամք եցեն, արկանի երկու կամ երեք կշիռ ցորեան՝ թարթարօ էմէթիքօ, որ լինի ըմպելի ինչ ախորժելի քմաց: Յըմպելւոյ աստի 'ի կէս ժամն միանգամ առնու հիւանդն՝ քառորդ մասն առ իւրաքանչիւր նըւագ, մինչեւ պատճառեսցի փսխումն, կամ լուծումն որովայնի: Այլ երբեմն սկսանի դեղս այս 'ի ներգործել, յայնժամ օրէն է ախտաւորին առատօրէն ըմպել զջուր գաղջ, կամ զարգանակն երիցկի: Այլ պարտ է մեծապէս ուշ դնել, զի ործացուցիչ դեղս այս ոչ յարմարի 'ի լուծմունս որովայնի, 'ի թոքախտաժետութիւնս, յարիւն փսխողս եւ թքանողս, 'ի յղի կանայս, 'ի փոշտանկութիւնս, եւ ոչ յայլ ինչ դիպուածս ախտից կրծոց: տես եւ զայսմանէ զբառն վօմիթօրիուս:

Թարթարում սթիպիաթում. թարթարօ սթիպիաթօ. թարթարօ էմէթիքօ. տես թարթարում էմէթիքում:

Թարթարօ սօլուպիլէ, կամ սօսիթարթարօ տի բօթասսա, խտ: Է նիւթ կմ աղ ինչ սպիտակ, կարծր բիւրեղանման, դիւրալոյծ եւ դառնահամ, բաղա-

գրեալ 'ի սանկըառպօնաթօէ, և 'ի սախթառթառ-սախտուլօ տի բօթասսաէ ։ Սա եթէ մի կամ երկու տրամաչափ 'ի ջուր արկեալ 'ի գործ արկանիցի, լի-նի դեղ գրգռիչ, և միզաբեր ։ Իսկ եթէ առցի ութ տրամաչափ, յայնժամ լինի դեղ լուծողական, և թու-լացուցիչ, որով և օգտէ 'ի դիպուածս ջրգողութե՛, ախտնդամնատութե՛, պնդութեան որովայնի, և այլ ախտից աւթեկլոց յուժգնութե՛ ։

Թարթարօ վէթրիօլաթօ · կամ սախսօլֆաթօ տի բօթասսա, իտ ։ Է աղ ինչ սպիտակ, տոխալ միանգա-մայն և դառն · ունի զզօրութի՛ լուծողական, և մի-զաբեր ։ Եթէ առցի իբր դեղ լուծօղ, պարտ է լի-նել յերկու տրամէ մինչև ցչորս ։ Իսկ եթէ իբր դեղ գրգռիչ և միզաբեր, յայնժամ պարտ է լինել սակա-ւաքանակ · այսինքն 'ի քսան կշիռ ցորենոյ մինչև ց40 յաւուրն ։

Թարթուֆօ · տե՛ս Թուպէրա ։

Թարուօլօ ։ այսու անուամբ իմանի՝ քաղցկեղն առ-նացի անդամոց ։

Թաքթուս, լտ ։ Թաթթօ, կամ Թօքքօ, իտ ։ գու-մէթի լամիսէ, արբ ։ ըստ մեզ՝ շօշափելիք, կամ՝ շօ-շափական կարողութի՛ ։ Այսու անուամբ նշանակին ջիղք առ հասարակ ափուեալք և ծապաղեալք ընդ-բովանդակ մարմինն · մինչև ուր ոչ գտանին ջիլք, անդ և ոչ շօշափելիք, յորս կատարի զօրութիւն շօշափողա-կան միջնորդութե՛ մտոյ և մորթոյ ։

Թաքքամաքքա, կամ Թէքօմաքհա, լտ ։ Է խէժ յածախեալ 'ի հնդիկս կանաչախառն դեղին, դիւրա-վառ, անուշահոտ, և դառնահամ · յորմէ կազմեն ապեղանի ազդողական ընդդէմ խնձիթմէ պէնի ան-ուանեալ վիրաց, և կարծրապինդ այտուցից ։

Թէ · տե՛ս զբառն Թհէ ։

Թէնէզմօ, իտ ։ Նիք, տճ ։ Թօհլ, արբ ։ և ըստ մեզ՝ խիթք արբանին ։

Թէնէրումէ · տե՛ս քարթիլակօ ։

Թէնիէ · տե՛ս Թաէնիա ։

Թէնտօ, լտ ։ Թէնտինէ, իտ ։ ըստ մեզ՝ ձգանք, որ է սպիտակ մասն ինչ 'ի ծայր մկանանց ։ Արդ՝ ձը-գանքս որս խրեալ կայ յոսկր, կամ յայլ ինչ պնդա-կազմ մասունս առ 'ի ձգել զնոսա 'ի մկանն կողմն, կամ 'ի սկիզբն մկանանց, որով ուժգին և բուռն գործէ զշարժումն, որպիսի են այնք մասունք, որք

լարատեսակ երեւին 'ի բազուկս և 'ի ձեռս:

Թէռամօսիտօ պիանկօ տի պիամութօ. տես Օքսի ալլպում:

Թէտաքրինում, լա: Ծառ փոքրիկ, յաճախեալ յերկիրս Ջերմագինս. որոյ կեղեւ սպիտակ է և Նուրբ: Ոստք Նորա երկու երկու բուսանին առ միմեանս: Տերեւքն երկայն, բոլորակ, ծամածռեալ, ատամնա-ձև, և զառնահամ. գոյն Նոցա 'ի վերին երեսս սպի-տակ, իսկ 'ի Ներքոյ մթին կանաչ. ծաղիկն սպի-տակ, և ոլկորաձև: Սորա տերեւք ունին զզօրծու-Նէութիւն 'ի բուժել զախտս փայծեղան, և 'ի մեղմել զչարութիւն Թունից:

Թէսթուճճինէ. տես Թէսթուտօ:

Թէսթուտօ, լտ: Թէսթուճճինէ, կամ Թարթա-րուկա, իտ: չէլօնա, կամ քէնօլա, յն: ղահլէֆէ, կամ էթուլ, կամ Թահլա, կամ պէնթիթապաք, կամ սուլէհֆա, և կամ ռաքը, արբ: գէշվ, կամ գէշաւեւք, կամ լաքբիշտ, կամ խուշուք բիւշա, կամ չիւլչիլէ, կամ պախա, կամ սէնկլի բիւշտ. կամ սէն-կի բօստ, և կամ տիքանէ, պր: Թօսպաղա, կամ գապլումպաղա, Թճ: և ըստ մեզ՝ կրիայ, կամ կրայ. Է կենդանի յամրաշարժ. որոյ մարմին փակի 'ի գաշ-տաձև պահպանակ կարծրակեղև, ընդ որ երբեմն արտաքս ելանէ, և երբեմն 'ի Ներքս ամփոփի. գը-լուխ Նորա Նման է օձի, կամ գորտան. աչքն փո-քրիկ, չըթութքն Նուրբ, և եղերք Նոցա սղոցաձև ատամնաւորեալք. ունի երկու աստամունս, չորս ոտս, և ձետ կարճ: Մի սորա եփեալ 'ի ջուր, և արբու-ցեալ, դեղ է օգտակար 'ի գիպտուածս ախտից կրծոյ, Թոքախտաւորութեան, և ապականութեան արեան: Արիւն սորա չորացուցեալ և փոշիացուցեալ, լինի դեղ ազ-գու ընդդէմ ուրկութեան, անդամալուծութեան, լուս-Նոտութեան, և բորոտութեան. չափն 'ի գործ արկանելոյ է 'ի 20 ցորենոյ մինչև 960 ։ Բայց յարատևել ար-ժան է քանի ինչ ամիսս. իսկ ձու սորա ունի զնմա-Նաւոր գործունէութիւն 'ի գիպուածս սատռուցի, մանա-ւանդ ամորձեաց, զոր մարթ է 'ի կիր առնուլ եթէ 'ի Ներքուստ կլանելով, և եթէ արտաքուստ օծելով: Եւ են սորա երեքեակ տեսակ, այսինքն ցամաքային, ծովային, և լճային:

Թէսսութօ չէլլուլարէ: Այսու անուամբ ըստ անդամազննաց ցուցանին Թելք խարշային, կամ ան-

գամայլին հիւսուածոյ, գոյացեալ 'ի բազմազան թելից, որք հաղորդին ընդ իրեարս. այսու մասամբ շրջապատին ամենայն գլխաւոր մասունք մարմնոյ, և ամենայն մանրաթել երակքն, յորոց գոյանան այսաքին կերպոյիշեալ գլխաւոր մասունք:

Թէրէպէնթհինա, լտ: Թուէմէնթինա, կամ Թէռէպինթինա, իտ: Թիրմէնթին, տճ: իքիլղութում, կամ սակուլղութում հապպըլ խատրա արխպէնասիզ, պր: և ըստ մեզ՝ խէժ բևեկնոյ: Է հեղուկ թանձր, իւղային, փայլուն, սաստիկ կպչուն, թափանցիկ, և դիւրավառ, որ 'ի հուր մերձեցուցեալ ուժգին բորբոքի: Եւ է սորա երկու տեսակ. առաջին տեսակն կոչի 'ի բարբառ լատինացւոց՝ Թէրէպէնթհինա վէնէթա, որ է սունձային, թափանցիկ, սպիտակ, սաստկահոտ, և տապահամ, որ սովորաբար բղխէ 'ի բունոյ բևեկնոյ: Իսկ միւս տեսակն կոչի՝ Թրէմէնթինա տի չիօ. որ է մածուցիկ, սակաւահոտ, և փոքր մի տապահամ. գոյն նորա երբեմն դեղին է, և երբեմն սպիտակ իբրև զապակի: Երկոքին սոքա առատ են իւղով, և ցնդական աղիւ, և բնութք թուլացուցիչ, և միզաբեր, որով ապաքինեն զսերմնականութիւն, զերիկամնաժեռութն, և զլերդողութիւն: Զափն 'ի կէս տրամէ մինչև ցմի: Այլև մաքրեն զվէրս շարաւալիս:

Թէրիաքա, տես Թհէրիաքա:

Թէրիաքա անտրօմաքի. տես Թհէրիաքա անտրօմաքի:

Թէրիաքա տիաթէսսէրօն. տես Թհէրիաքա տիաթէսսէրօն:

Թէրրա, լտ: Էյիս, յն: Թուրապ, կամ աֆէռ, կամ սայիթ, և կամ ղայս, արբ: խաք, կամ Թէհք, պր: Թօբռաք; տճ: և ըստ մեզ՝ հող:

Թէրրա բաթնէ, լտ: Է հող ինչ պարարտ. թխախառն դեղին, և անհամ ըստ նմանութե կնքեալ կաւոյ. բնութք է սեղմիչ, որով և արգելու զհոսումն արեան, և զփորհարութն, և միանգամայն քաղցրացուցանէ զթթուութն հիւթոց, չափն 'ի 8 ցորենոյ մինչև ցմի տրամ:

Թէրրա եապօնիքա, տես Թէրրա քաթէքհում:

Թէրրա լէմնիա. տես Թէրրա սիճիլլաթա:

Թէրրա մէրիթա. կամ քուրքումա օֆֆիչինարում, և կմ քուռքումա լունկա. լտ: քուրքումա կմ

Թուրթումակլըօ , իտ ։ զէրէչաւ , տճ ։ զէրտէ չէօբ , պր ։ ռուքուսսակն կամ գուռաս , և կմ վէրս , արբ ։ և ըստ մեզ՝ քրքում հնդկային ։ Է արմատ դեղնագոյն փոքրիկ , որոյ ձև նման է կոճապղպեղի , այլ կարծր քան զայն ։ Սովորաբար բուսանի 'ի բազում տեղիս արևելեան հնդկաստանի ։ Ընտիր համարի՝ եթէ իցէ թանձրանիւթ , ծանր , և մաքուր , միանգամայն և սաստիկ դեղնագոյն իբր քրքմատեսակ ․ զոր և վարեն 'ի պէտս դեղին ներկի ․ նաև 'ի դեղորայս , որ է դրդռիչ և միզաբեր բնութբ̃ , որով գրգռէ զմէզն , և զդաշտանն կանանց ։ Եւ ըստ ոմանց՝ փարատէ և ըզդալուկն , զխցանս լերդի , և փայծեղան ։ Այլև բուժէ զջրգողութիւն , զտենդ միջահատական ։ Չափն 'ի կէս տրամէ մինչև ցերկու խառն ը̃ մի լիտր ջրոյ ։

Թէրրա սիճիլլաթա , կամ թէռռա լէմնիա , լտ ։ Թինիմախթում , արբ ։ խաքիմախթում , պր ։ և ըստ մեզ թարգմանագրի՝ կաւ կնքեալ , կաւ պարարտ նման ճարպոյ , մինչև յատամունս մածանիլ 'ի ծամելն՝ առանց ինչ ունելոյ աւազ ․ բայց և դիւրափխրելի է և անհամ , որ ըստ ասելոյ ոմանց՝ գտանի միայն յլէմնիա կղզին ․ այլ Նիքքօլա լէմր ասէ՝ թէ գտանի և 'ի գերմանիա , և 'ի այլօխս գաւառն ․ գոյն նորա է դեղին , բայց լինի և սպիտակ և կարմիր ․ բնութբ̃ է սեղմիչ և դիացուցիչ ․ որով յինքն քարշէ զատիպ խոնաւութիւն ստամոքսի ․ ուստի և վասն այսր յատկութեան պնդացուցանէ զորովայնն ․ և արգելու զյորդառատ հոսումն արեան ․ այլև ըստ ոմանց՝ առաջինէ զսերմնակաթութիւն , զփորհարութիւն , և ըզֆիօր պխանքի կոչեցեալ ախտն կանանց , և մեղմէ զդժնէութիւն թունից ։ Չափն 'ի 10 ցորենոյ մինչև ց40 ։

Թէրրա քաթէքուում բրէբարաթում , կամ աքաչիա քաթքուէ , լտ ։ աքաչչիու , կամ թէրրա քաթհէքու բրէբարաթօ , իտ ։ գէհատ հինտի , տճ ։ գէռվէհ , պր ։ դիաթ , արբ ։ Է հող , կամ կաւ ինչ բաղադրական , կազմեալ 'ի բազմատեսակ նիւթոց ․ բնութբ̃ է սեղմիչ , որով արգելու զլուծումն որովայնի , զփրխումն և զլթքանումն արեան , և զքարշահոտութիւն շնչոյ և բերանոյ ․ այլև օգտէ ընդդէմ վրիպակաց ձայնի , զոր պարտ է ունել 'ի բերանն , և 'ի լուծանիլն՝ կլանել ․ չափն մի տրամ ամբողջ ։ Կոչի յիտալացւոց նաև թէռռա եափօնիքա ։

Թէրրրա ֆօլիալթա տի Թառթառօ, կամ օսսիաչէԹալթօ տի բօԹասսա, իտ: սիրքէ Թուզու, տճ: Է սպիտակ և արագահաս աղ ինչ կծուական, կազմեալ 'ի բարկ քացախոյ, և 'ի սալ տի Թարթարօէ: Յոյժ մասնաւոր է սորա գործունէութի 'ի գիպուածս խցանաց միջընդերաց, միզարգելութե, ջրգողութեան, դալկան, ախոնդամնոտութե, յօդուածացաւութե, Թանչից, մոլեգնութե, և այլ սոցին նման ախտից. առԹելոց 'ի գրգռուէ և 'ի զօրուէ բնութեն. զի է Թուլացուցիչ, և միզաբեր: Չափն 'ի 40 ցորենոյ մինչև ցերեք տրամ 'ի մէջ քսան և չորս ժամուց: Այլ և ցրուէ զուռոյցս ամորձեաց՝ օծանելով ևեթ զայն:

Թիզիքէցցա. տես էԹիզիա:

Թիզիքէցցա նէռվօզա. տես հտ. ա. երես 181:

ԹիԹհիմալուս, լտ: ԹիԹիմակլիօ, կամ Թիմակլիօ, և կամ ԹիԹիմալօ, իտ: աբիօս, կամ ախասս, յն: սիւտըլիայէն, տճ. եէԹու, կամ չէվրիմ, արբ: սուսբէնԹ, կամ չէբուէմ, պր: Է տունկ ինչ բազմատեսակ. յորս երևելի են երեք տեսակք. առաջինն կոչի՝ ԹիԹհիմալուս հէլիօսքօբուս. որ յաճախ բուսանի յեւրոպիա, արձակելով 'ի միոյ արմատոյ զբազում չառաւիղս կաԹնալիրս, զոր 'ի հատանելն ուրեք՝ ծորեցուցանէ զկաԹն: Բերէ տերևս փոքրիկս, բոլորակս. կարմրախառն կանաչս և կաԹնալիրս: Երկրորդն կոչի՝ ԹիԹհիմալուս չիբարիսուս. որոյ տերևն չէ ինչ տարբեր 'ի տերևոյ վերնոյն: Ծաղիկն կարմրերանգ, և բոժոժաձև. պտուղն եռանկիւնի և տժգոյն դեղին: Բերէ և սերմունս բոլորշիս: Ունի արմատ երկայն, ստուար, և բազմաԹել: Իսկ երրորդն անուանի՝ ԹիԹհիմալուս բալուստրիս, որ քան զամենեսին երկայն է և կարմրերանգ: Տերևն մԹին կանաչ, երկայն, և յղկեալ: Ծաղիկն դեղին, մանր, և փնջաւոր: Պտուղն եռանկիւնաձև, և պալարաւոր: Իսկ սերմն բոլորշի, և սպիտակաԹամբ: Երեքին սոքա արձակեն զհոտս զազիրս յուռուցս ջերմուԹեան ամառուան. և 'ի հատանելն բղխեցուցանեն զկաԹն փաղաղիչ, զորս գիւղականք 'ի կիր առնուն փոխանակ խարանադեղոյ: Կազմեն և 'ի տերևոց սոցին զհապս ժայԹքեցուցիչս, և լուծիչս. ուր և աւանդեն՝ եԹէ է յոյժ օգտակար ընդդէմ ջրգողուԹեց. չափն 'ի գործ արկանելոյ է 'ի 12 ցորենոյ մինչև ց24:

Թիլիա Եւրոպէա, լտ: Թիլիօ, իտ: Թիյլէօլ քօմէօն, գղղ: աԹիլօն կամ Ֆլամուր, յն: օհլամուր, տճ: պիզլէ ֆօն, արբ: Է ծառ մեծ, և շքեղ, ոստա-լից, և լայնատարած, որոյ կեղևն դիւրածալ, դիւ-րակոր, արտաքուստ Թուխ, իսկ 'ի ներքուստ սպի-տակ հարեալ 'ի գոյն դեղին. միանգամայն և դեղ շահաւէտ ընդդէմ խցմանց արգանդի, և կալրուա-ծոց դաշտանի կանանց: Փայտն սպիտակ, և դիւ-րատաշ, զոր տեղպ 'ի վար արկանեն 'ի պէտս շին-ուածոց: Տերևքն լայն, բոլորշի, ծայրասուր, Թա-ւիշաւոր, շողշողուն, և շուրջանակի աղոցաձև ա-տամնաւորեալք. գոյն նոցա 'ի վերին երեսս կանաչ և փայլուն, իսկ 'ի ներքոյ փոքր ինչ սպիտակ: Ծա-ղիկն ելանէ առ կանԹիւ տերևոյն, և է մանր, փըն-ջաւոր, հինգԹերԹեան, և ազնուահոտ, միանգա-մայն և դեղ ազդու ընդդէմ տկարուԹեն ջլաց, եր-կարատև խօԹուԹեց, ցաւոց գլխոյ, անդամալու-ծուԹեն, ախտի ցնցականի. զի է մեղմացուցիչ, և խԹիչ բնուԹեանն: Իսկ պտուղն բոլորշի, սուր, կարծր, և Թաւիշաւոր, ունելով 'ի միջի սերմունս քաղցրահամս: Այս ծառ յաճախ բուսանի յեւրո-պիա, յանտառս, և 'ի բուրաստանս: Լի է ցնդական աղիւ և իւղով: Զամին ծաղկան մի տրամ ընդ ուԹ ունկի ջրոյ:

Թիմբանիթէ, յն: Իտրօբիզիա վէնԹօզա, իտ: Է ախտ ինչ փքադողուԹեն, կամ փքալից ջրգողուԹեն: Զորմէ տես հա. ա, դլ. ժը. երես 240:

Թիմբանում, լտ: Թիմբանօ տէլլ' օրէքքիօ, իտ: Դուլաք բէրտէսի, տճ: ըստ մեզ՝ Թմբուկ ունկան: Է ներքին մաշկ ինչ ունկան, որ է գլխաւոր գործա-րան լսելոյ:

Թինթուրա, իտ: Է անուն ընդհանուր՝ որով նշա-նակի՝ գոյն հանքային նիւԹոց կամ բուսոց՝ ելուզեալ արտաքս 'ի ձեռն ոգեւոց, կամ գինւոյ, և կամ յա-ևիցէ հեղուկաց, որ ըստ տաճկաց ասի ռուհ, և ըստ մեզ՝ ոգի բժշկական: Իսկ ըստ լատինացւոց՝ Թինքթուրա:

Թինթուրա լիսաէմլիալէ տի վօլէռ, իտ: Է ոգի ինչ բաղադրական շահաւէտագոյն 'ի դիպուածս ան-կարծին հիւծուԹեն, խցմանց մսանց, դժուարամը-ղուԹեան, և սերմնականուԹուԹեն: Զայս եԹէ կամիս յօրինել, առ վեց ունկի՝ Ճէնցիանա, և երկու ուն-

կի՝ սքօռցօ տի տառանչիա, և տասն և հինգ ունկի՝ ալլումէ տի ֆեչչիա, այլև յիսուն ունկի՝ ջուր եռացեալ։ Զայս ամենայն արկ յանօթ ապակեայ իբր աւուրս երկուս, յետ քամելոյ՝ յաւել 'ի նոյն երկու ունկի՝ ալքօօլ։ 'Ի հեղուկէ աստի տուր ըմպել հիւանդին երկու կամ երեք անգամ յաւուրն՝ զկշիռ միոյ տրամոյ։

Թինթուրա մառթէ տի լուտովիքօ. տես ֆեռռօ, կամ քհալիպս։

Թինթուրա մառցիալէ. տես ֆեռռօ։

Թինթուրա ներվինօ թօնիքա տելլա ֆարմաքօբէա տի պէրլինօ, իտա։ Է ոգի ինչ բաղադրական, օգտաւէտագոյն 'ի գիտղուածս տկարութեան ստամոքսի, և ախտի՝ ջղաց. որ այսպէս կազմի։ Առ մի և կէս ունկի՝ վալէրիանա, և նոյնչափ՝ մենթա բիբէրիթա. և մի ունկի՝ քասթօռօ. և կէս ունկի՝ քրօքօ։ Զամենեսին զատոա պարտ է լոսել, և արկանել յապակի անօթ, կամ 'ի շիշ. յաւելլով 'ի նոյն երեք լիտր՝ ալքօօլ, և մի տրամ էսսէնցիա տի մենթա։ Յետ հինգ աւուրց, քամեա զայն կտաւով յայլ շիշ։ Զափն 'ի 20 շթէ մինչև ց30։

Թինթուրա ներվինօ թօնիքա տի պեսթուչէֆ, իտա։ սինիրլէրէ գուվէթ ռուհու, տճ։ ըստ մեզ՝ ոգի զօրատու ջլաց։ Ոգիս այս է յոյժ ազդու, և գործունեայ 'ի գիտղուածս տկարութեան ջլաց, անոնդամատութեան, ախտի ցնցականի, և երկարատև խօթութեանց։ Զափն 'ի 20 շթէ մինչև ց30 խառն ընդ որ և իցէ հեղանիւթոց։ Զայս կազմեն 'ի խարտածոյ երկաթոյ, 'ի աչիտօ մուրիաթիքօէ, 'ի էթէրէ սուլֆօրիքօէ, և 'ի ալքօօլէ։

Թինթուրա սաքրա, իտա։ Է ոգի ինչ գառնագին, օգտաւէտ 'ի գիտղուածս ջղային գժուարամարսութեան, գողդողման և տկարութեան ստամոքսի։ Զափն մի գդալ-գալ սեղանոյ յաւուրն 'ի պահ առաւօտուն։ Զայս եթէ կամիս յօրինել, առ ունկի մի՝ ալօէ, և մի տրամ՝ բէբէ տելլա ճիամմաիքա, կամ քարտամօմօ, և նոյնչափ ցէնցէրօ։ Զայս ամենայն փոշիացուցեալ արկ յանօթ ապակի կամ 'ի շիշ. և հեղ 'ի վերայ ութ ունկի՝ վինօ տի սպանիա. այսինքն գինի սպանիոյ։ Զկնի ութ աւուրց քամեա զայն խիտ կտաւով յայլ շիշ։

Թինթուրա սթօմաթիքա, իտա։ միտէվի ռուհ, տճ։

ըստ մեզ՝ ոգի ստամոքսային. որ է դեղ ազդողական 'ի դիպուածս տկարութեան ստամոքսի, ջղային դժուարամարսութեան, եռօրեայ՝ և քառօրեայ տենդից, փրքախտութեան, և երկարատև հիւանդութեանց։ Չափն մի դրամ քաղցրաւենւոյ յաւուրն 'ի ծոմուտ։ 'Ի կազմել զայս ոգի, ա՛ռ ունկի մի՝ քալամօ առօմաթիքօ, և նոյնչափ՝ ճէնցիանա, քինաքինա, քօռթէքս աուրանցիօրում, սօմմիթա տի չէնթուրէա մինօրէ, սէմի տի քարտօսանթօ, յիւրաքանչիւրոյն երկու ունկի. այլև ունկի մի՝ լիմաթուռա տի Ֆէռռօ։ Զայս ամենայն լուսեալ ա՛րկ յանօթ ապակի, յաւելլով 'ի նոյն երկոտասան լիտր ապխտակ գինի։ Եւ յետ թողլոյ զա՛յն աւուրս երիս, օրէն է քամել յայլ անօթ ապակի։

Թինթուրա վօլաթիլէ տի կուաեաքօ. տե՛ս Թինթուրա տի վօլաթիլէ տի կուաեաքօ։

Թինթուրա տի րապարպարօ ինկլէզէ, իտ։ ռավէնտ ռուհու, տճ։ ըստ մեզ՝ ոգի խաւնդեղի։ Որ է դեղ ազդու ընդդէմ տկարութեան ստամոքսի, և ստորին որովայնի, և փորհարութեան, միանգամայն նպաստիչ մարսողական զօրութեան, և հալածիչ փքոց։ Չափն 'ի չորս տրամէ մինչև ցութ խառն ընդ հեղանիւթոյ։ Եւ կերպն 'ի յօրինել զայս ոգի։ Ընկալ երեք ունկի՝ րապարպարօ, և կէս ունկի՝ սէմիքարտամօմօ։ Զայս երկու նիւթս լուսեալ ա՛րկ յանօթ ապակի, յոր յաւել երեք լիտր և մի ունկի ալքօօլ. և թո՛ղ այնպէս իբր աւուրս ութ, և յետ այնր օրէն է քամել խէտ կտաւով յայլ անօթ ապակի։

Թինթուրա տի կուասսիա. տե՛ս լինում գուասսիա։

Թինթուրա տի վօլաթիլէ տի կուաեաքօ, կամ լաւեւս վօլաթիլէ տի կուաեաքօ, իտ։ րէզգամինէր ղամին ռուհու, տճ։ Ըստ մեզ՝ ոգի սրբ փայտի, բաղադրեալ 'ի մի ունկի՝ կուաեաքօ ռետինոյ, և 'ի վեց ունկի՝ սբիրիթօ վօլաթիլէ արօմաթիքօ տէլ սիլվիօէ, որ լինի դեղ ազդողական ընդդէմ յօդուածացաւուց, խթից երիկամանց, միզարգելութեան, և խծթութեան ինչ ստամոքսի. զի է խթիչ և գրգռիչ բնութ̄։ Չափն 'ի մի տրամէ մինչև ցերկու, խառն ընդ մի սկահակ արճոյ կաթին։ Կոչի և ըստ նորոց՝ ալքօօլ ամմօնիաթօ քօն կուաեաքօ։

Թինթուրա տի տաֆֆիա, իտ։ լինէթ ռուհու,

տձ։ Ըստ մեզ՝ ողի լուծողական. որ է դեղ մեղմա-ցեալ լուծիչ. զոր կարեմք ՚ի կիր արկանել համարձակ յիւրաքանչիւր սեռս, այսինքն արանց և կանանց յո՛ և իցէ հասակի եղելոց, և զի՛նչ և՛ս իցէ խառնուածոց վիճակելոց. չափն ՚ի մի ունկւոյ մինչև ցերեք ՚ի ծոմուստ։ Կերպն ՚ի շինել զայս հեշտալրմակելի ողի, առ ունկի մի՝ սէնա, և շաքարաքրս, և քօրիանտօլի, և քրեմօր տի թարթարօ, յիւրաքանչիւրոցն կէս ունկի։ Զայս ամենայն լնանել ա՛րկ յանօթ ապակի, յաւելլով ՚ի նոյն երկու լիտր՝ օղի, և վեց ունկի՝ շաքար. և յետ ութ կամ տասն աւուրց օրէն է քամել կտաւով։

Թինթուրա տի քանթառիտաթօ. տե՛ս քանթառէլլէ։

Թինթուրա տի Ֆէռռօ, իտ։ չէլիք ռուհու, տձ։ և ըստ մեզ՝ ողի երկաթոյ, որ կազմի ՚ի խարտածոյ երկաթոյ, և ՚ի հիւթոյ սերկեւլի, զորոյ զվաստակս բաղադրութեան թողեալ ՚ի հմտութեան դեղագործացն, յայտ առնեմ զներգործութիւն նորա։ Օգտակարագոյն է ՚ի դիպուածս վերնոտութեան, և ախտի ցնցականի ՚ի վերայ եկելոյ մանկանց, և տկարութեան ստամոքսի, ջղաց, միջընդերաց, և ընդհանրապէս ընդդէմ ամենայն ախտից առթելոց ՚ի թուլութէ. զի է խթիչ բնութե։ Չափն ՚ի 20 շիթէ մինչև ց60, կամ ց80. տե՛ս և Աչչիայօ կամ քհալիպս։

Թինթուրա տի Ֆիլիձձինէ, իտ։ Է ողի ինչ բաղադրական, կազմեալ ՚ի մի տրամ՝ Ֆիլիձձինէ տի լէնօ բէգլինօղօէ, ՚ի կէս ունկի՝ ասսաֆէթիտա խեժոյ. և ՚ի տասն ունկի՝ ոգւոյ գինւոյ։ Շահաւէտ է ՚ի դիպուածս փքախտութե, ախտի ցնցականի ՚ի վերայ եկելոյ մանկանց ՚ի վերընձիւղմանէ ատամանց, և ախտից արգանդի։ Չափն ՚ի 15 շիթէ մինչև ց30 խառն ընդ. ջրոյն ծաղկի, կամ վարդի։ Զայս ողի յիտալացւոց առ մեզ թարգմանադրեմք՝ ողի ձանձախարեթոյ, այսինքն խուրուժի։

Թինթուրա Ֆէթիտա, կամ ալքօօլէ ասսաֆէթիտաթօ, իտ։ Է ողի ինչ ղազղահոտ. զորոյ զօրութիւն մարթիս տեսանել ՚ի ասսաֆէթիտա։ Չափն ՚ի 10 շիթէ մինչև ց60 յաւուրն։

Թինքա կամ Թէնքհա, լտ։ Է ձուկն ինչ քաղցր ջրոյ. որոյ երկայնութիւն է ի՛բր ոտնաչափ, և ստուար բազկաչափ. մորթ նորա մթին դեղին և խաժային.

միան սպիտակ, փափուկ, և համեղ։ Սա ունի զմառ-նաւոր գործունէութ 'ի գիպուածս խածուածոց կատաղի շանց, և Թիւնաւոր զեռնոց, կապելով և եԹղայն 'ի վիրաւորեալ մասունս մարմնոյ. այլև ապաքինէ զդալուկն և զտենդ, եԹէ խորովեալ դիցի կամ կապիցի 'ի վերայ զարկի բազկին. և 'ի տեղիս տեղիս 'ի կիր առնուն նաև 'ի բժշկուԹ քաղցկեղի, ճնդոյ, այտուցից, ցաւոց գլխոյ, և պորտոյ։ 'Ի գլխոյ այսր ձկան ելանէ քար ինչ փոքրիկ, զորմէ ասեն՝ Թէ լուծանէ զմիզարգելուԹիւն, և խորտակէ զքար եԹէ գտցի ընդ անցս նորա։

Թիխանա, կամ Թիզանա, իտ։ Է ըմպելի ինչ կազմեալ 'ի բուսոց, կամ յայլ նիւԹոց եփելոց ջրով։

ԹՀալիէԹրում, կամ բիկանում, և կամ ռուԹա քուաԹէննսիս, լտ։ Բոյս Ճիւղալից, որոյ ցօղունն բարձրացեալ յերկրէ հասանէ 'ի չափ մարդոյ, և է կարծր, եռանկիւնաձև, և գորոնագոյն, և ուրեք ուրեք ծիրանագոյն, կամ կանաչագոյն։ Տերև նորա է երկայն, լայն, պայծառ կանաչ, և փայլուն։ Ծաղիկն ելանէ 'ի գագաԹան հանդերձ գորոնագոյն առէջիւք, և է փոքրիկ հինգԹերԹեան 'ի ձև վարդի։ Յետ ծաղկանց արտադրէ զպտուղն եռանկիւնաձև, ունելով 'ի միջի զերկայնաձև և զդեղնագոյն սերմունս 'ի խորշս խորշս մաշկատեսակս։ Իսկ արմատն լայն, օձապտոյտ, դեղնագոյն, տարածողական, և դառնահամ։ Սա բուսանի յամենայն ուրեք 'ի մարգագետինս, և 'ի խոնաւուտս. լի է ցնդական աղիւ և իւղով. օգտակար է ընդդէմ Թունից, այտուցից, և վիրաց. բանայ և զանցս միզի, դրդուէ զաւաղս, և զքարս միզարանի։ Իսկ սերմն նոյնպէս շահաւէտ է ընդդէմ հոսման արեան, Թանչից։ Զափն 'ի կէս տրամէ մինչև ցմի ամբողջ։

ԹՀէա, կամ Թախա, լտ։ Թէ, իտ։ Թէ, գղղ։ չայ, տճ։ Է բոյս Թփաչափ բարձրուԹ՟ նման ըստ իմիք մրտենւոյ. որոյ տերևքն են փոքրիկ, երկայնաձև, սրածայր, և կանաչագոյն. այլ 'ի հնանալն փոխին 'ի սևու։ Ծաղիկքն սպիտակ, և հինգԹերԹեան, որ փունջս փունջս փԹԹին 'ի ծայրս Ճիւղոց, հանդերձ առէջիւք. զկնի ծաղկանց յաջորդէ պտուղն փոքրիկ 'ի չափ կաղնոյ, ունելով 'ի միջի սերմունս մանունս կնՃուաւորս, և գորշագոյնս։ Իսկ արմատն երկայն իբրև տասն մատնաչափ, ոստալից, և դառնահամ։

Այս բոյս 'ի վեր երեւի անխառն ընդ ամենայն տեղիս յաշխարհէն չինաց և ճիապօնացւոց, որոյ. նման չէք այլ ուրեք: Յամէն երիցս ժողովեն զհաճախական տերեւ նորա, որ այն իսկ է չայ. նախ՝ 'ի մարտի յորժամ մանր են, և քնքուշ: Երկրորդ անգամ քաղեն յապրիլի, որ կարի մեծ են քան զայնս: Իսկ զերրորդն քաղեն 'ի մայիսի և յունիսի, որք են ատորին քան զայլ երկոսին: Արդ՝ զտերեւքն զայսոսիկ նախ խուն ինչ տամկացուցանեն եռացեալ ջրով, և յետոյ չորացուցեալ յարեւու, և կամ ը ամանց՝ խարանեալ, դնեն 'ի կապարեայ տուփս, և ամփոփեն 'ի վաճառ. զոր առեալ ըմպեն եւրոպացիք, և ամենայն ազգք անդ բնակեալք, և նովաւ մեծարեն և զհիւրս, զոր զայս օրինակ առնեն. արկանեն կէս դրամ 'ի տերեւոց անտի յանօթ յախճապակեայ, յաւելլով 'ի նոյն վեց ունկի ջուր եռացեալ, և այնպէս թողուն զանօթն ամփոփեալ իբրեւ քառորդ ժամ մի, և ապա ըմպեն խառն ընդ շաքարի, որ լինի և դեղ օգտակար ընդդէմ փքոց, ցաւոց որովայնի, և միզարգելութեան. զի է դրդուիչ և միզաբեր բնութ.: Բայց յաճախակի 'ի կիր առնուլն առթէ զպրդուելութիւն ջղաց. յոյս սակս եւրոպացիք խառնեն 'ի նմա և կաթն, կամ ռոմ առ 'ի բարեխառնել զվնասակար որակութիւն նորա:

Թհերէնճապին, կամ մենախուաքօսթ, կամ թէունիապին, կամ տրօսօմէլէ, և կամ աէռէօմէլի, լտ: մաննա լիգուիտա, իտ: թրանջաւմին, պր: Է հիւթ թանձրացեալ, խժային, սպիտակ, և քաղցրահամ, իջեալ 'ի վերայ տերեւոց ծառոց, կամ բուսոց եղելոց 'ի կողմանս պարսից, և հայաստանեայց: Բժիշկք եւրոպիոյ անծանօթ գոլով՝ համարեին զսա գոլ նոյն ընդ մանանային, բայց ընդ հակառակն է. քանզի սա ունի զմաննաւոր ազդուութիւն 'ի զովացուցանել զներքին ջերմութիւն, 'ի մեղմապէս լուծել զկալուածս որովայնի, և 'ի փարատել զգալլուկն, և զցաւս կրծոց:

Թհէրիաքա, լտ, և իտ: Թրեակ, տճ: Թիրէաք, կամ Թիրրրաք,' արբ: Ճանատառ, պր: և ըստ մեզ՝ Թիւրակէս, կամ Թերակէս: Է սեաւ և թանձրացեալ դեղ ինչ բաղադրական, կազմեալ 'ի բազմատեսակ նիւթոց, որ է բնութ. դրդուիչ, սեղմիչ, խաղաղիչ, և որդնահալած. յայն սակս առեալ 'ի կիր արկանի յարեւելս և յափրիկէ 'ի բժշկութիւն փորհարութեան,

խանգարման գործողութե մարսողութեն, նողկութե ստամոքսի, արիւնախառն լուծման որովայնի, շնչարգելութե, քաքախման սրտի, և ցաւոց ստամոքսի և աղորին որովայնի։ Չափն 'ի 20 ցորենոյ մինչև ց60 երկու անգամ յաւուրն։ Գիմանկալէ նաև Թունից, և ճճեաց, և հարուածոց սարդից, մեղուաց, և կարճաց, օծանելով և եթ զայն 'ի վշտացեալ մասունս մարմնոյ։ Ընտիր և ազնիւն՝ այսր Թիւրակէսի կազմի 'ի վենետիկ քաղաք՝ քան այլուր։

Թիհերիաքա անտրոմաքի, լտ. և իտ։ Է տեսակ ինչ Թիւրակէսի, որ բնութբ նոյնպէս գրգռիչ է և խաղաղիչ, զոր 'ի փոր արկանեն 'ի դիպուածս ձգաման, և զողդողման ջղաց, նողկութե ստամոքսի, և լուծման որովայնի։ Չափն 'ի կէս տրամէ մինչև ցմի։

Թիհերիաքա աթեսարոն, լտ։ Է բաղադրութի կազմեալ 'ի փոշեաց արմատոց ճենցիանայի, 'ի սերմանց դափնոյ, 'ի զմռսոյ, և յարիստո լոքիա անուանեալ անկոյ, խառնեալ ընդ յստակ մեղր. որ ունի զնոյն զօրութի Թիւրակէսի։

Թիհիմալըուս, լտ։ Է սեզ ինչ կարմրախայտ ձկան, որոյ հոտ նման է ծոթրինի. խակ միսն պարարտ, փափուկ, և համեղ յոյժ, արժանի արքայական սեղանոյ։ Ջճարպ սորա 'ի գործ ածեն 'ի դեղ առաւգաւտից, աչաց բծից մորթոյ, և չընջման ականջաց։

Թիհիմուս վուլկարիս, լտ։ Թիմօ, իտ։ Թէն, դղղդէքիկ, կամ զաթրին, տճ։ և քոտ մեզ՝ ծոթրին, կամ զոպայ։ Բոյս յաճախեալ յամենայն ուրեք, այլ առաւել յաճախ յեւրոպիա, մանաւանդ 'ի կրետէ, որոյ ցօղունն բարձրանայ յերկրէ իբր ոտնաչափ։ Ճիւղք նորա փոքր են և պախուսկ։ Տերեւքն մանր, խիտ, սպխաւակ, տասնակահատ, և տապահամ։ Ծաղիկն փոքրիկ, սրկտրաձև, և հոտաւէտ, որք փունջս փունջս փթթին 'ի գագաթան, և 'ի վերայ ճիւղոց, հանդերձ առէջիւք, և իւրաքանչիւր ծաղիկ արտադրէ քառեակ սերմունս մանունս, և բոլորշիս։ Այս բոյս տասատ է գոյացական ազիւ և իւղով. օգտէ տկարութեան ստամոքսի, և ուղղոյ. փարատէ զվերախտութե, գիմանկալէ Թունից, և ճարտակար գոլորշեաց, գրգռէ զպաշտանս կանանց, և միանգամայն արտահանէ զմեռեալ զաւակն յարգանդէ. զի է խթիչ բնութբ։ Չափն 'ի կէս տրամէ մինչ ցերկու, խառն ընդ 16 ունկի ջրոյ։

տից աչաց, զորմէ տեսցես 'ի բառն՝ Թութիա քամֆօ-սիթա բրէքաարաթա։ Սովորաբար 'ի յարգի հա-մարի 'ի հեղինակաց՝ գտեալն 'ի գերմանիա, և 'ի զվիցցէր. բայց Թութիթէ՝ և գտեալն յալէքսանդրիայ մարթի ունել զզուգահաւասար ազնուութիւն ընդ վերոյիշեցելոյն։ Ինչ և իցէ աղացեալս այս պարզ է լի-նել սոուսար, չոր, կարծր, Թուխ, յղկեալ, Թեփաւլից և դժուարաբեկ։ Առ նախնիս կոչի և սբօտիում կրա-քօղում։

Թութիա քամֆօսիթա բրէքաարաթա, լտ։ Թուցիա քամֆօսթա բրեքաարաթա, իտ։ Է աղացար ինչ բաղա-դրական, օգտաւէտ 'ի գիպուածս ախտից աչաց, զի բառնայ զմթութի, և լուսափայլէ զտեսութիւնն, և 'ի յարատև կիր արկանելն ծիւրեալ մաշէ զշլութի և զբիծն աչաց. բայց դիտել արժէն է, զի 'ի գիպուածս ցաւոց աչաց սպասել արժան է մինչև ցլրումն եօթն աւուրց, և ապա ձեռնամուխ լինել 'ի կիրառութի այսր դեղոյ։ Օրինակ բաղադրելոյ զայս դեղ։ Առ յիսուն տրամ՝ զաղնիւ Թութիա, և դի՛ր զայն եր-կաթեայ անօթով 'ի վերայ բորբոքեալ կայծականց, մինչև հրացեալ սպիտակասցի իբր զձիւն. ապա ժո-ղովեա զայն միդմով, և լուսեա 'ի մանրամաղ փոշի։ Եւ յետ այնր առ երեք տրամ 'ի փոշւոյ անտի, զան-գեա ընդ ոգւոյ գինւոյ, և Թո՛ղ այնպէս զաւուրս ինչ՝ մինչև ինքնին ցամաքեսցի. Յետ այնորիկ պարտ է վերստին զանգել զայն կանացի կաթամբ։ Եւ յետ չորանալոյ՝ օրէն է անդրէն լուսել 'ի մանրամաղ փոշի. և յետ այնր յաւե՛լ 'ի նոյն մի տրամ՝ քէլիտօնեուամ փոշիացուցեալ, և տասն և հինգ կշիռ ցորեան՝ փո-շիացուցեալ սպիտակ պղպեղ, և կէս տրամ՝ լուսեալ մարգարիտ, և երեք տրամ՝ շաքար վանի։ Զայս ա-մենայն պա՛րտ է լուսել 'ի վերայ ողորկ մարմարիո-նի, կամ յանկանի, և անցուցանել ընդ բարակ մաղ, կամ ընդ խիտ կտաւ։ Իսկ 'ի կամիլդ առնուլ 'ի կիր՝ առ կէս կամ մի ցորենաչափ 'ի սմանէ՝ արկ զգուշութ 'ի մէջ ցաւագնեալ աչաց՝ երկու անգամ յաւուրն։

Թուպէր, լտ։ Թարթուֆօ, իտ։ Թռիւֆ, գղղ։ եէր էլմասը, կամ տօմուզ էլմասը, տճ։ գէմին, արբ։ և ըստ մեզ՝ գետնախնձոր։ Է տունկ անարմատ, ան-ցօղուն, և անտերև, որ սովորաբար Թաղեալ կայ ընդ երկրաւ, կամ 'ի խորս երկրի. ուստի առաւել 'ի հերկելն զանդաստանս գտանի յաճախ. որոյ ամանք

անձնացեալ լինին իբրև զփղքրեկ սևս, իսկ ոմանք են իբրև զկինձոր: Ոմանք են սեաւ, իսկ ոմանք սպիտակ. ունին ըստ մեծի մասին զկեղևս նուրբս, և խորտուբորտս: Մէջ իւրեանց մսալից է և անախորժահամ, և բնութիւն սնուցիչ, և զօրացուցիչ ստամոքսի, զորս բազմօրինակ հանդերձեալ ուտեն 'ի ձմերայնի: Այլ բաց 'ի սոցանէ՝ են և այլ երեք տեսակք գետնախնձորոյ սեպհական նահանգացն գերմանիոյ, և իտալիոյ, զորս բնակիչք տեղեացն հասարակօրէն՝ թէ որսական շունք գտանեն զայնս յոլով անգամ. զոր իբրև տեսանեն խոզարածք, իսկ 'և իսկ յափշտակեն 'ի բերանոյ նոցա. քանզի այնք գետնախնձորք կարի 'ի յարգի են առ եւրոպացիս, և թանկագին. նմին իրի միայն 'ի սեղանս մեծամեծաց գտանին. գոյացութիւն նոցա թէպէտ թուխ են, և սպնգային, այլ յոյժ համեղ, և դիւրամարս, որք և լինին դեղ օգտակար ընդդէմ տկարութեան ջղաց, և նուազութեան սաղմի:

Թուպէրքօլօ տի գուէրչիա, իտ: կլանս գուէրչինա, լտ: Է պտուղն գուէրքուս անուանեալ ծառոյն. տես անդ:

Թուսսիլլակօ, կամ Ֆառֆառա, կամ Ֆիլուս անտէպաթրէմ, լտ: Թուսսիլլաձինէ, կամ Ֆառֆառօ, և կամ ունկիա քապալլինա, իտ: փաս տ'անը, կամ Թիւսիլաժ. գղղ: քուլլթաֆուլթ կմ ֆօլաֆուլթ, անգղ: ատլան փէնչէսի, կամ ֆառֆառօ, տճ: հաշիշէթիւլ հայլ, կամ հաշէշէթիւլ սուայլ, արբ: ֆէնձէիւն, պր: Բոյս բազմացօղուն բուսեալ 'ի ծովափնեայս, և 'ի գետեզերս իբր մի ոտնաչափ բարձրութեամբ: Տերևք նորա են երկայնաձև, լայն, անկիւնաւոր, և բոլորակաձև: Ծաղիկն ճառագայթաձև, բոլորշի, և դեղին՝ հարեալ 'ի գոյն կարմիր, ունելով 'ի մէջի սերմունս մանունս, և տափարակաձևս: Իսկ արմատն մանր, երկայնաձև, օձապտոյտ, և սպիտակ: Սովորաբար սկսանի ծաղկել 'ի սկիզբն փետրվարի, և տևէ մինչև ցյունիս: Լի է իւղով, և գոյացական աղիւ. որոյ տերևք լինին դեղք աղդու ընդդէմ հազից, հարբխոյ, և ցաւոց բորբոքման կրծոց, և ամ մաշայարական ախտի սաւթելոյ յաժգնութեանէ. զի է թուլացուցիչ բնութ. 'ի կէս ունկւոյ մինչև ցմի, խառն ընդ մի լիտր ջրոյ:

Թուսսիլլաձինէ. տես Թուսսիլլակօ:

Թուսսիս. տես Թօսսէ:

Թուրբէթհում, կամ Թուրպէթհ, լա: Թուռպէթօ կամ Թուռպիթթօ, իտ: Թուրպութ, տճ: Բոյս երկայն իբր վեց կամ եօթն ոտնաչափ, փայտային, և ոստաւէտ, որ ուրև բուսանի՝ պատատի շուրջ զիւրև եղեւլովքն: Տերև սորա ունի նմանութիւն ընդ տերևոյ տղտոյ, բայց մեծ և թաւիշաւոր քան զայն: Ծաղիկն սպիտակ, միթերթեան, և զանգակաձև: Պտուղն պղպջաձև, թաղանթային, և սեաւ, որ է սերմն նորա: Իսկ արմատն ստուար իբր մատնաչափ, փայտային, բազմաստեան, ռետինալից, մածուցիկ, թուխ, գառնահամ, միանգամայն և սաղտկալի. օգտաւէտ է 'ի դիւրալուծս Հրդողութեն, և քնափութեն. սատակէ և դժնիս որովայնի, լուծէ հզօրապէս քերելով, և անհնարին խիթս առթելով, որով և քարշեալ հանէ արտաքս զշինծուկս մարմնոյ: Բայց բազում անգամ պատճառէ զցաւս որովայնի, զփաղաղումն, և զբորբոքումն ստամոքսի, և առորին որովայնի, և երբեմն եւս զմահ. սմին իրի ոչ է օրէն 'ի կիր առնուլ զայն միայնակ, եթէ ոչ բաղադրութեամբ այլոց դեղորէից:

Թուրպիթ մինէրալէ, կամ բրեչիբիթաթօ ճիալլօ, իտ: բանդէհիրի քէնանի, տճ: Է դեղ ինչ բաղադրական, կազմեալ 'ի սնդկէ, և 'ի յիւղոյ արջասպի, որ է բնութե՟ դրգռիչ և լուծողական. օգտաւէտ է 'ի դիւրալուծս բորոտուե, վիրաց հնացելոց, ժանտախտի, ախտի ելեփանդականի, և ջրգողութե՝ յորում առթիճանի սաստկութե և դժնէութե ես իցէ: Չափն 'ի 1 ցորենոյ մինչև ցշ խառն ընդ 10 ցորեան շաքարի: Կոչի և ըստ նորոց՝ օսսի սուլֆաթօ թէռմօսսիտուլօ տի մէռքուռիօ:

Թուրպիթօ. տես Թուրբէթհում:

Թուրտուս, լա: Թօռտօ, իտ: արտըճ դուշու, տճ: և ըստ մեզ՝ տորդիկ. Թռչուն երկչոտ, որ է ստուար քան զարտոյտ, և փոքր քան զաղաւնի. այլ գոյն նորա այլևայլ է, այսինքն կապտագոյն, սեաւ, և սպիտակ. որոյ միս օգտակար է վէրնոտութեն, և անդամալուծութեն:

Թուցիա. տես Թութհիա:

Թրակաքանթհում, կամ Թրակաքանթհա կումմի, և կամ տռակաքանթհում, լա: տռականթէ, կամ կօմմա տռականթէ, կամ ատռաքականթի, իտ: կօմ տռաքական, դղղ: գիթրէ կմ Թիթրաէ, տճ: գէալրէ,

տոք։ Է խէժ ինչ սպիտակ, մաքուր, մանրաբեկոր, և ընդունակ որդան, յորմէ կազմեն դեղ ազդու ընդդէմ հազից տանելոց 'ի տոխպ հիւծոյ, ցաւոյ կրծոց, փորհարութեան, ուշնացաւութեան, թոքացաւութեան, միզարգելութեան, բորբոքման փամփշտոյ և երիկամանց։ Ծառն սորա է թփատեսակ, և փշալից, յաձախեալ 'ի կրետէ, և 'ի բերիա, որոյ տերևքն մանր են և երկայնաձև, որք երկու երկու բուսանին 'ի վերայ միոյ կանթի։ Ծաղիկն եղանէ 'ի գագաթան, և 'ի վերայ ձիւղոց, և է ընդայրին, և ողկուզօրէն՝ նման ըստ իմիք ծաղկան կենխոտոյի։ Բերէ և պատեան խոռոչաւոր, յորում ըի են սերմունք մանրիկք, և երկայնաձևք։ Իսկ արմատն երկայն, տոուար մատնաչափ, սպիտակ, և փայտային։ Սա առ լատինս կոչի և առ- Թռակալուս Թռակաքանթհա։

Թրէմէնթինա. տես Թէրէմէնթինա։

Թրիաքա. տես Թհրիաքա.

Թրիթիքում, կամ Ֆռումէնթում, կամ Կրանում, լտ։ Ֆռումէնթօ, կամ Թրիթիքօ, կամ Կրանօ, իտ։ տոար, յն։ պօղատայ, տճ։ հէնթա, կամ էմիխ, արբ։ և ըստ մեզ՝ ցորեան։ Է ազգ ինչ արմատոց՝ քաղածանօթ յամենայն ումեքէ. յորմէ յօրինեն զալիւր 'ի նիւթ զանգուածոյ հացի, որ է բնութք սնուցիչ, մարսեցուցիչ, կակղացուցիչ և զօրացուցիչ։

Թրիխպուլլուս, կամ Թախպուլուս Թէռռէսթռիս, լտ։ Թրիպօլօ, իտ։ տէմիր Թիքէնի, տճ։ հասկք, կմ վէթպա, արբ։ չլօուբիճ, պր։ Է բոյս բազմացօղուն և փշալից, բուսեալ առ երեսօք երկրի, շուրջանակի տփռելով զձիւղալից, և զթաւխշաւոր ցօղունս։ Տերևք սորա մանր են, և թաւխշաւոր։ Ծաղիկն եղանէ առ կանթիւ տերևոյն, և է սպիտակ, երկայնականթ և հինգթերթեան։ Իսկ պտուղն կարծր, չորս կամ հինգ բեկորք 'ի մի փշալից պատեան, նուրբ մաշկօք անջատեալ 'ի միմեանց, և իւրաքանչիւր հատ բեկորի կամ պտղոյ ունի մէն մի կորիզ, որ է սերմն նորա։ Սա բուսանի 'ի վայրս ջերմագինս, որոյ պտուղ կամ բեկոր բնութք է միզաբեր, և սեղմիչ որովայնի. չափն 'ի 20 ցորենոյ մինչև ց40։

Թրիպօլլուս աղուաթիքուս, կամ պուլթօմօղ տամօքրաթիս, լտ։ Թրիպօլօ աքգուաթիքօ. կամ քօռնիլա, և կամ քասթակնա տ' աքգուա, իտ։ կէօլ գեւտանէսի, տճ։ և ըստ մեզ՝ շագանակ ընկոյզի։ Բայց

երկայն, բազմացօղուն, ոնկալից, և թեւաւոր, բուսեալ 'ի մէջ լճաց, և սփռեալ ջերեսօք նոցա, տերեւք նորա են ջրալից, եղերահերձ, և երկայնակաճթ՝ նման ըստ իմիք տերեւոց կաղամախի : Ծաղիկն մանր, բոլորշի, կարծր, և սպիտակ : Իսկ պտուղն փոքր շագանակաձև, քառանկիւնի, թաղանթային, գորշագոյն, և սրածայր. մէջն կարծր, սրտաձև, սպիտակ, նրբակեղև, շագանակահամ, միանգամայն և դեղ օգտակար ընդդէմ հոսման արեան, փորհարութե, և ուլնացաւութե. զի է սեղմիչ, և սնուցիչ :

Թրիսթիթխա, լտ : Իւօքօնտախա, իտ : աֆաքան, կամ սէվլոա, տճ : խաֆաքանտ, արբ : կխւֆաէնտիլ, պր : և ըստ մեզ նշանակէ զախտն ախտնգանաց, կամ զախտնգանոտութի :

Թրիքօշէֆալի : Անուամբս այս ցուցանի տեսակ ինչ նուրբ, քնքուշ, և սպիտակ ճճւոյ՝ գոյացեալ 'ի չիէքօ անուանեալ աղիս կենդանեաց, որոյ երկայնութիւն է իբր բթաչափ, կամ փոքր ինչ աւելի : Կոչի և ըստ ոմանց՝ Թէնիա սըխաւլլօ, կամ Ֆուսէռւանօլօ քօտիսէթօլա :

Թրիֆօլիում Ֆիպրինում, կամ Մէնիանթէս Թրիֆօլիաթա, լտ : Թրիֆօլի Ֆիպրինի, կամ Մէնիանթօ, իտ : եօնճա, տճ : զիւսէլաւէ էվռակ, կամ պէռսիմ, արբ : և ըստ մեզ՝ առուոյտ, կամ առաւոյտ : Խոտ՝ բուսեալ յագարակս, և 'ի դաշտավայրս, որոյ ցօղունն է երկայն իբր կէս ոտնաչափ, բոլորակաձև, թաւխշաւոր, և օձապտոյտ : Տերեւք սորա բոլորշի են և երկայնաձև, որք երեք երեք բուսանին 'ի վերայ միոյ կանթի : Ծաղիկն գնտակաձև, գանգուր, փնջաւոր, ծիրանագոյն և քաղցրահամ. պտուղն փոքրիկ, և պրկղաձև : Իսկ արմատն երկայն, փայտային, և ստուար իբրև զճկոյթ մատն մարդոյ : Սա սովորաբար սկսանի ծաղկիլ յամսեանն ապրիլի կմ մայիսի. օգտակարէ 'ի դիպուածս յօդուածացաւութե, շնչարգելութե, ապականութե արեան, խցանաց մարմնոյ, դալկան, և պզօապութօի. չափն 'ի մի տրամէ մինչև ցմի և կէս : Կազմեն 'ի սմանէ նաև շարապ, որ կոչի 'ի բարբառ իտալացւոց՝ սիրօբբօ տի մէնանթօ : Սորա է տեսակ ինչ կոչեցեալ 'ի բարբառ լատինացւոց՝ Թրիֆօլիում բալուսթրէ, կամ Մէնիանթէս Թրիֆօլիաթա. Ըստ Թուրքաց՝ կէօլ եօնճասը, կամ պադաք եօնճասը, և ըստ մեզ՝ առաւոյտ ճախնային, որ է դառն

քան զնախընթացն, և լինի դեղ շնչաւէտ ընդդէմ խցանաց, ախտի մորթոց, և պզուպութօի: Զայլն մի ունկի ընդ մի լիտր ջրոյ. 'ի սմանէ և յաճախ տան 'ի կեր գրաստուց: Իսկ արմատն լինի 'ի կերակուր մարդկան 'ի ժամանակս սովու:

Թրուլթա, կամ Թրօէլթա, և կամ Ֆարիօ, լտ: Թռօյթա, իտ: ալա պալըըը, տճ: և ըստ մեզ՝ կարմրախայտ, ձուկն ինչ յաճախեալ 'ի գետս, մանաւանդ 'ի յապառաժուտս, և 'ի յականակիտ վտակս, որոյ ձև նման է սէրմօնէ անուանեալ ձկան, բայց չքեղ քան զայն. Թեփ մորթոյն փոքրիկ, ունի և 'ի վերայ կարմրերանգ բիծս, կամ արատս գեղեցիկս, յորմէ կալաւ և զանունն: Միս նորա կարի սպիտակ է, և համեղ յոյժ, արժանի կայսերական սեղանոյ, և մի միայն ունի փուշ. լի է ցնդական աղիւ և իւղով. միանգամայն և դեղ օգտակար 'ի լուծումն ջլաց, կապեալ 'ի վերայ կարկամեալ անդամոյն: Իսկ ճարպն՝ որ է մեղմաղէս լուծիչ և քաղցրացուցիչ բնութեամբ, լինի դեղ ընդդէմ խանդարման պորտոյ, կալուածոյ տեռատեսութե, և ամենակերպ վիրաց:

Թրօչիչի, իտ: Թրօքիչի, լտ: գուլա, տճ: Է անուն ընդհանուր, որով նշանակին դեղք բաղադրեալք 'ի զանազան փոշեաց խառնելոց դոյզն ինչ հիւթովք, 'ի կազմել զգանգուածս պինդս, զոր և ձևացուցանեն ըստ նմանութե ճախարակի:

Թօմինէեօ, լտ: Թռչուն փոքրիկ, քաղցրաձայն, և սրաթռիչ, բնակի յաճախ 'ի լերինս, և յանտառս, մեծութբ 'ի չափ ճպռան: Փետուրքն ոսկեգոյն են և շողշողուն, լեզուն մեծ, Թաթք ոտից ճիրանաւոր. իսկ 'ի գլուխն, և 'ի պարանոցն ունի աղուամազս քնքուշս և երփներանգս. ունի զմիս փափուկ, և համեղ, միանգամայն և օգտակար դեղ ընդդէմ լուանոտութե և անդամալուծութե:

Թօնկըօ. ըստ անդամազննաց ասի զշարժմանէ ինչ մկանաց ձգտելոց կամ կծկելոց: Ասի և ի բժշկաց զդեղոց զօրացուցչաց մկանաց, և մանրաթելից մարմնոյ:

Թօնախըլէ, լտ: կլանտուլա տէլլէ Ֆառուչի, իտ: բառնիս այս ի անդամազննաց իմանի՝ մսոտն ինչ զետեղեալ 'ի մուտս հագագին:

Թօսսէ, իտ: Թուսսիս, լտ: Էօքսիւրիւք, տճ: ոըհէլ, կամ աիկէնճ, արբ: սուաֆէ, պր: ըստ մեզ՝

հալ ։ տե՛ս հտ. ա. երես 264 ։

Թիոսսէ Ոէռվօղա. տե՛ս հտ. ա. երես 270 ։

Թիոսսէ սՅօմաքալէ. տե՛ս հտ. ա. երես 268 ։

Թիոսսէ սինթօմաթիքա. տե՛ս հտ. ա. երես 271 ։

Թօրմէնթիլլա եռէքթա, կամ հիբթաբհիլլում. լտ ։ բոյս բազմացօղուն, կարմրերանգ, թաւիշաւոր, և տարածողական, բուսեալ յաւաղուտ և 'ի խոնաւուտ տեղիս, որոյ տերևք եօթն եօթն բուսանին 'ի վերայ միոյ կանթի, և են երկայն, և եղերահերձ, և ձևացեալք իբրև զթաթ բացեալ ձեռին մարդոյ ։ Ծաղիկն դեղին և հինգթերթեան ։ Բերէ և սերմունս նուրբս, և սպիտակս ։ Իսկ արմատն սատուար էբր բթաչափ, ծնրաւոր, խորտաբորտ, պալարաւոր, և թելալից, արտաքուստ դեղին, իսկ 'ի ներքուստ կարմիր, միանգամայն և գեղ պքոպպութեի, տկարութե՛ն աղեաց, և ընտերաց. Նախնի հեղինակքն սահէին 'ի կեր արկանելոյ զսա 'ի գինուածս հնազոյն փորհարութե՛, արիւնախառն որովայնալուծութե՛, հոսման թանչէից, և սպիտակ հոսման հեշտոց՝ փոխանակ տեռատեսական արեան, և չարաւահոս վիրաց, և միջահատական տենդից. զի է թուլացուցիչ և սեղմիչ բնութ՟ ։ Չափն 'ի 20 ցորենոյ մինչև ց30, զոր պարտ է եփել մի լիտր ջրով, յաւելլով 'ի նոյն մի կամ երկու ունկի՝ չարաքի հաղարջի. և տուեալ լինի ըմպելիս այս 'ի միջոցի քսան և չորս ժամուց ։

Թօշխոսօլ. տե՛ս քօռօնա տէլ սօլէ.

# Ի

Իբէռթէռմօսախօ տի ծինկօ. տե՛ս ծինքռում ։

Իբէրիկօ. տե՛ս հիբէրիկում ։

Իբէքաքուանհա, կամ սբէքաքուանհա, կամ հիքօուքաննա, կամ պէկուգուէլլա, կամ քակօունկա, կամ պէլլօքուլօ, կամ պէքուլօ, և կամ պրուսիլիէնսիս, կամ ռաիզօթհափա էմէթիքա, լտ ։ իբէքաքուանա, կամ ռատիչէ տէլ պռազիլէ, իտ ։ գայլէրինձի ալթն քէօքիւ, կամ ալթն քէօքիւ գուսսուրուճու, թճ ։ ըռքըլ տահոայ մթուաշ, արբ ։ և ըստ մեզ՝ թարգմանապրի՝ ործացուցիչ արմատ ոսկւոյ ։ Է հաչակա-

ասր և գերգամէլի արմատ ինչ սոսուար գրեթէ հաւասար նուրբ գրչի, ամբողջ, թեքեալ, ծամածուռ, կնճռապատ, նրբաթել, ականալից, տաղտկահոտ, տտիպահամ միանգամայն և դառն ։ Քառեակ է սորա տեսակ ․ առաջին տեսակն կոչի 'ի բարբառ խաղաղացւոց՝ իբէքաքուանա պքուա, որ քան զամենեսին ազնիւ է և յոյժ գործունեայ, գոյն նորա է թուխ կի՛լաւ կամ՝ մոխրագոյն ։ Բազմազան է գործունէութիւն սորա ․ զի եթէ ոք արբցէ յայսմանէ 16 ․ կամ 20 ․ կամ 24, և կամ 32 ցորենաչափ, յետ քառորդ ժամու ժայթքեցուցանէ զկծու և զտուր մաղձս և ըզմաղասս ստամոքսի, և լուծէ զխառնուրդս հիւթս փորոտեաց, որով և կազդուրի թուլութիւն ստամոքսի, սթափի և արծարծի ախորժակն ․ բարեկարգի գործողութիւն ստորին որովայնի, և միանգամայն փարատէ զփորհարուն, զարիւնախառն որովայնալուծութիւն, զհոսումն թանչից, զտենդ միջահասական երկօրեայ, եռօրեայ, և քառօրեայ, այլև ապաքինէ զհրատապ զջղային ջերմախտս ․ որ և չունի ամենևին վնասակար ինչ որակութիւն ․ յայն սակս և 'ի զնայրագին խօթութեան մարթ է 'ի կիր առնուլ զայն անվտանգ ըստ վերոգրեալ չափու ։ Իսկ եթէ տացի ըստ չափու վեց ցորենոյ՝ երից անգամ յաւուրն, բուժէ զարիւնախառն որովայնալուծութիւն և զհոսումն թանչից, մանաւանդ յորժամ խառնի ընդ մի տրամ խաշնդեղի ։ Իսկ եթէ տացի սմա 'ի կէս կամ յերեք քառորդ ժամ միանգամ՝ մի և կէս կշիռ ցորենոյ առ իւրաքանչիւր նուագ, արգելու զյորդառատ հոսումն դաշտանի, մանաւանդ յորժամ խառնի ընդ փոքր ինչ շաքարի ։ Այլ եթէ տացի սմա Ը չափու չորից ցորենոց խառն ընդ փոքր ինչ վանաշաքարի, և բաժանեսցի 'ի վեշտասան հաւասարաչափ մասունս, և տացի մէն մի մասն չորս անգամ յաւուրն, խափանէ զթքումն արեան, և զհազս ստամոքսային, այլև դիւրաշարժ յօրինէ զշնչառութիւն, և կազդուրէ զախոնդանատութիւն, և զշնչարգելութիւն ։ Երբեմն ևս 'ի գործ ածեն բժիշկք անգղիոյ, և գաղղիոյ զայս արմատ 'ի գիպուածս ֆէպարէ բուէրբէրալէ անուանեալ տենդի, գալկան, մոլեգնութեան, և վօլվուլօ կոչեցեալ ախտի ։ Եւ չիք դեղ քան զայն գերազանց, իբր խնդրի բառնալ զտկարութիւն և զթուլութիւն ստամոքսի, ստորին որովայնի, և մանրաթելից ․․դերացն, որով և

փարատի անվրէպ արուեստական լուծումն ոսկւոյն և փորձառութիւն։ Եւ զայս արմատ՝ վերածեալ չափով կարես 'ի վար արկանել 'ի վերայ չափահաս արանց և կանանց 'ի պիտառութեան ժամանակի, և տհասիցն կիսոյ մասն, իսկ մանկանց երկեմնից՝ չորրորդ մասն բաւէ։ Նոյնպէս և օգտաւէտ է 'ի գիպուածս ախտի ցնցականի 'ի վերայ եկելոյ մանկանց, այլ և 'ի դուլս մղէ գծաղիկն, և զխաղաղաւարտս, որք յառաջն գաղեալ և թագուցեալ էին 'ի ներքս։ Բոյս սորա 'ի միոյ կողմանէ սողեալ, և 'ի միւս կողմանէ վերամբարձ։ Տերեւքն երկայն են և սրածայր՝ նման ըսխմիք տերեւոց կաուլինչ անուանեալ որինաբուսոյ, զոր չորացուցեալ 'ի կեր արկանեն 'ի դեղ փորհարութեան, ցաւոց ստամոքսի, խցանաց, և նուազութեան ամսական պարտուց կանանց։ Ծաղիկն հինգթերթեան, գնտակաձեւ, և սպիտակ։ Իսկ պտուղն բոլորակ, մեծութեամբ 'ի չափ վայրի կեռասի, մթին կարմիր, և հիւթալից. ունի և կորիզս ոսպնաձեւս, կարծրս, և դեղնագոյնս։ Երկրորդ տեսակն է դեղնագոյն, կոչեցեալ 'ի նոցանէ խըէքաքուանքա ձիալլա, սակայն խիչ ստորին է զօրութեամբ քան զայն։ Երրորդ տեսակն յոյժ թուխ, որ թէպէտ կարի ստուար է, այլ չունի զայն զօրութիւն և ներգործութիւն, զոր ունի նախայիշատակեալ թխագոյն արմատն ոսկւոյ. Նմին կրի սորա ինֆուզիօնէն և եթ 'ի գործ արկանեմ, որ լինի 'ի ջուր ջերմ երեք տրամ՝ յարմատոյ անտի, ընդ միջոց երկոտասան ժամուց։ Զայն և միայ երկու ունկի, և տուցէ երեք անգամ յաւուրն. որ զօրացուցանէ զստամոքսն, արգելու զհոսումն թանչից, և նպաստամատոյց լինի առողջութեան։ Իսկ չորրորդ տեսակն՝ զոր անուանեն խըէքաքուանա պիանքա, թեթեւ է զօրութեամբ քան զերեսին, և է սպիտակ գունով, և քաղցր համով. զոր ըմպիչք սպանիացւոց և փորտուգալացւոց յաճախ 'ի կեր արկանեն 'ի գրեխս 'ի դեղ փորհարութեան և թանչից 'ի վերայ եկելոց յղի կանանց, և մանկանց։ Զնոյն բնաւին ունի նաեւ տրամ գոյացական մասն, զոր մարթ է 'ի կեր արկանել յութ ցորենոյ մինչեւ ցքսան։ Զորեքին սոքա գտանին ընդ բովանդակ աշխարհն ամերիկոյ, բայց ոչ ընդ ամենայն տեղիս ունին զնոյն ազնուութիւն և զօրութիւն. որք լինին 'ի պրասիլիա, 'ի յոսկեբեր լերինս և յապառաժուտս՝ լաւագոյնք են քան որք բուսանին 'ի ճահիճախուտս, և 'ի խոնա-

ուստս ։ Այլ գիտել արժան է, զի արմատքս այսորիկ ունին կրկին գործունէութիւն, կամ զօրութիւն · այսինքն թուլացուցիչ, և խթիչ, կամ գրգռիչ · եթէ իբրև թուլացուցիչ, կամ ործացուցիչ, պարտ է լինել 'ի 16 կշիռ ցորենոյ մինչև ց32 ։ Իսկ եթէ, իբրև խթիչ, օրէն է լինել 'ի կէս կշիռ ցորենոյ մինչև ցերկու ։

Իբօքօնարիա · տե՛ս Թրիսաթիթիա ։

Իզօբօ · տե՛ս Հիսսօբուս ։

Իթթէռիցիա, կամ մօռպօ ռէճիօ, իտ ։ մօռպուս ռէճիուս, կամ ֆէլլիս սուֆֆուսիօ, լտ ։ եռաքան, արբ ։ սարըլըք, տճ ։ ըստ մեզ՝ դալուկն · տե՛ս Հտ · Ա · գլ · Թ · երես 170 ։

Իլլիաքօ ։ Անուանեալ այս՝ իմանի մկան փաթութին ։

Իլլէչէպռա, կամ սէտուօմ մինիմում իլլէչէպռա, կամ սէմբէր վիվում թէնուիթոլիում · և կամ վէռմիքուլարիս, լտ ։ Տունկ ինչ բազմացողուն, յազգէ սէմբէր վիվումի, որոյ տերևն մանր է և հիւթալից, ծաղիկն փոքրիկ և դեղին՝ ըստ նմանութեան վարդի ։ Իսկ արմատն փոքրիկ և ամանրաթել ։ Սա բուսանի 'ի քարուտս, և 'ի վերայ որմոց, ունի մասնաւոր գործունէութին 'ի ժայթքեցուցանել զմաղձ, 'ի փարատել զընդհատ տենդ, զխոյլս պարանոցի, և զսքօռպութօանուանեալ ախտն ։

Իմբէթիկօ, լտ ։ էմբէթիճճինէ, կամ վօլաթիքա, իտ ։ թէմրէյի, տճ ։ գուպա, արբ ։ բալքա, կամ բէրիվէն, կամ ասու, և կամ գէրվէնթ, պր ։ և ըստ մեզ՝ որքին ։

Իմբէռաթօրիա օսթռութիւմ, կամ ասթռանթիա, և կամ լասէռբիթիում ճէրմանիքում, լտ ։ իմբէռաթօռիա, իտ ։ ըստէրճան, կամ բատիխչահօթու, տճ ։ խաշիշիալ միւլիւք, արբ ։ և ըստ մեզ՝ կայսերաբոյս · բոյս՝ որ սովորաբար բուսանի յանտառս իբր երկու ոտնաչափ բարձրութբ ։ Տերևք սորա մեծ են, և եղերահերձ, և իբր սղոցաբերան · որք երեք երեք կլանեն 'ի վերայ միոյ կանթի ։ Ծաղիկքն փթթին 'ի գագաթան, և են սպիտակ, և հինգթերթեան, որք բերեն զնմանութիւն հովանոցի ։ Պտուղքն փոքրիկ, և բոլորշի, և իւրաքանչիւր 'ի պտղոց ունի զերկեակ սերմունս ձուաձևս, և սպիտակս ։ Իսկ արմատն ստուար, անհարթ, թեփալից, կնճռապատ, գժուարաքեկ, թուխ, հիւթալից, և առ փոքր մի դառն ·

այլ համեմային, և խայթօղ, որ և զԼեզու ծառաքաղին կոչէ. միանգամայն և դեղ ազդու ընդդէմ խեթից երկօրեայ տենդից, գժուարամարսութեան և յոռի օդոց, զի է խթիչ բնութեան: Զափն 'ի 10 ցորենոյ մինչ ց30 խառն ընդ հինգ ունկի ջրոյ:

Ինթեռքօսթալէ. անուանքս այս՝ իմանին կողական մկանունք:

Ինթեսթինում, լա: ինթեսթինօ, կամ էնթրալէնէ, կամ քուրաթէլլա, կամ պուտէլլա, կմ վիշէռա. կամ մինուձիա, և կամ ինթեռիօրա, իտ: Երձաղ, կամ միահ, և կամ մաառրինա, աբբ: Ճիկէրլաղէնա, կամ լէմէնճ, և կամ բուտէ, պր: պաղըրսաք, տճ: և ըստ մեզ՝ փորոտիք, կամ աղիք, և կամ ընդերք:

Ինթեսթինում թէնուէ, լա: Նեղ աղիք հուպ 'ի պորտան. զորմէ տես 'ի բառն Օս:

Ինթեսթինում իլէօ, լա: այսու անուամբ իմանի՝ փաթոյթն, որ է վերջինն 'ի նուրբ աղիս մարմնոյ:

Ինթեսթինում տուօտէնում, լա: Ըստ մեզ՝ առաջնաղի, կամ նախաղի, որ է առաջին աղիքն, կամ սկիզբն աղեաց:

Ինթեսթինում քռասսում, լա: Է ստուար աղիքն՝ որ սկսանի 'ի տեղւոջէ անտի, որ կոչի՝ իլիաքա. տես և Օս:

Ինթեսթինում քօլօն, լա: կէօրէն պաղըրսաղը, տճ: ըստ մեզ՝ հաստաղիք, կամ կոլոն: Է լայնագոյն և ստուարագոյն քան զամենայն աղիս:

Ինվօլկամէնթօ. տես օսթռուցիօնէ տէլլօ շիասօ:

Ինձէնիս: Է անուն մկանաց սրունից:

Ինչէնսօ. տես Թհուս:

Ինչէնտիուամ, լա: ինչէնտիօ, իտ: միտէ հարարէթի, տճ: ըստ մեզ՝ տապ ստամոքաց սաստիկ անհամբերութեան:

Ինսքիփանցիա: Է անուն ընդհանուր նշանակիչ ամենայն դեղորէից, որք առաւել թանձրացուցիչ են՝ քան զռէմէտիում ինքռասսանթէ անուանեալ դեղորէս, որով և խափանեն ընդմտանել նոցա 'ի զանդուածս արեան, և ապականել, որպիսի են քաքաօ, իքթիօքօլլա, սպէրմաչէթի, կօմմա տրագաքանթի, և տրապէքա, լիգուիրիցիա, սալսապարիլլա, ևն:

Ինտակօ.
Ինտիկօ.
Ինտիքում.
} տես անիլ:

Ինքուլյարէ, իտ. չիչէկ աշլամասը, տճ. ըստ մեզ՝ պատուաստել զախտակն. այսինքն զծաղիկ անուանեալ հիւանդութիւն տղայոց ։

Ինքօնթինէնցա տը օրինա, իտ. սիտիք թութամամազլըքը, կամ պէլ կէվշէքլիղի, տճ. ըստ մեզ՝ անժուժութիւն, կամ անժուժկալութիւն միզի. տես հա. ա. գլ. Է. երես 139 ։

Ինֆէրմօ. տես մօրպուս ։

Ինֆիամմացիոնէ, կամ ինֆիամմածիոնէ, կամ ինֆիամմամէնթօ, իտ. հարարէթի չէտիտ, կամ թութուշմաք, տճ. միւհրիքան, կմ իթթիհապ, կամ իլթիհապ, արբ. թապիկիրում, կամ թէպիկիրում, պր. և ըստ մեզ՝ բորբոքումն, կամ հրդեհումն. որով նշանակին հասարակօրէն ո և իցէ տապացուցիչ, կամ բորբոքիչ ախտք, և խօթութիւնք ։

Ինֆիամմացիոնէ տէի բօլմօնի. տես բէրիփնէումօնիա ։

Ինֆիամմացիոնէ տէլլէ վէշէուէ. տես ինֆիամմացիոնէ տէլ վէնթրիքօլօ ։

Ինֆիամմացիոնէ տէլ չէռվէլլօ. տես հա. ա. գլ. Բ. երես 55 ։

Ինֆիամմացիոնէ տէի ռէնի. տես նէֆրիթիտէ ։

Ինֆիամմացիոնէ տէի օրրէքքի. տես օթիթիտէ ։

Ինֆիամմացիոնէ տէլ տիաֆռամմա. տես տիաֆռամմաթիտէ ։

Ինֆիամմացիոնէ տէլ վէնթրիքօլօ. տես էնթէրիթիտէ ։

Ինֆիամմացիոնէ տէլ ֆէկաթօ. տես էբաթիտէ ։

Ինֆիամմացիոնէ տէլ քուօռէ. տես քառտիթիտէ ։

Ինֆիամմացիոնէ տէլլա բլէուռա. տես բլէուռիթիտէ ։

Ինֆիամմացիոնէ տէլլա լարինճէ. տես չինանքէ ։

Ինֆիամմացիոնէ տէլլա լինկուա. տես կլօսսիթիտէ ։

Ինֆիամմացիոնէ տէլլա կօլա. տես չինանքէ ։

Ինֆիամմացիոնէ տէլլա միլցա. տես սբլէնիթիտէ ։

Ինֆիամմացիոնէ տէլլ՝ ութէռօ. տես մէթրիթիտէ ։

Ինֆիամմացիոնէ տէլլա վէշիքա. տես չիսթիթիտէ ։

Ինֆիամմացիոնէ տէլլօ սթօմաքօ. տես կասթրիթիտէ ։

փանցիկ, և՛ անհատ, զոր արհեստաւորք 'ի կիր առնուն 'ի զանազան գործս, որպէս և մեք 'ի դեղորայս. որ է օգտակար կրծոց, հազի, և ախտի գաղղիականի. զի է կակղացուցիչ, թանձրացուցիչ, և քաղցրացուցիչ:

Իքնէումօն, կամ մուս Փ․ռաօնիս, և կամ մուս ինտիքուս, լտ: Թօբօ տի էճիթթօ, կամ Թօբօ տ' ինտիա, և Թօբօ տի Ֆառաօն, իտ: ռայիա սըչանը, և կամ հինտ սըչանը, տճ: Ֆառէ՛լ Ֆիռաօն: արբ: և ըստ մեզ Թարգմանոգրի՝ մուկն փարաւոնի: Է կենդանի քառոտանի յաճախեալ առ Նեղոսիւ, զօրեղ, և մեծ 'ի չափ հասարակ կատուի, մորթն կարծր և խայտաբղէտ. ընչացքն սեաւ, և խիստ, որ բերէ զնմանութ խոզի, ականջքն փոքրիկ, և բոլորակ, ատամունքն նման են ամենևին կատուի, որպէս և լեզու նորա. սրունքն սեաւ, տուտն թաւ և վերամբարձ ըստ աղուեսու. իսկ կերակուր նորա է օձ, գորտ, խխունջ, մուկն, գետնաբուծ, մողէս, և այլ զանազան զեռունք: Է ննդաւոր բարուք, և մահուչափ թշնամի կոկորդիլոսի, որ ըստ ոմանց մտեալ 'ի փոր նորա ուտէ զփորոտիսն, և զլեարդն, որով և սպանանէ զնա, և յետոյ ընդ երատոնն արտաքս ելանէ: Սորա միս՝ որ է քրտնաբեր, և աղցողական բնութե՝ լինի դեղ ընդդէմ խթից որովայնի, խածուածոց կատաղի շանց, և թունաւոր կենդանեաց:

# Լ

Լաբաթհում կամ ռումէքս աքուաթիկուս, կամ լաբաթհում աքուաթիկում, կամ օքսի լաբաթհում, լտ: լաբացիօ, կամ ռօմիչէ, և կամ ռօմէչէ, լաբաթօ աքուաթօ, իտ: աչխուռն օթու, կամ լապատա, տճ: լաբաթօս, կամ օքսիլաբաթօս, յն: և ըստ մեզ՝ աւելուկ: Բոյս յաճախեալ 'ի կորդ, և յամայի վայրս, երկայն իբր մի և կէս ոտնաչափ: Տերև սորա նման է տերևոց թրթնջկի, այլ երկայն և տարպահամ քան զայն, զոր ժողովեալ հիւսեն, և եփեալ ուտեն որպէս զաղցան: Ծաղիկն ոսկեզօրէն, դեղնագոյն, վեցթերթեան,

և բազմաւէշք. բերէ և սերմունս եռանկիւնաձևս և շագանակագոյնս ։ Իսկ արմատն երկայն, ստուար մատնաչափ, դեղնագոյն, և դառնահամ, միանգամայն և թուլացուցիչ բնութ, և դեղ ընդդէմ աքօքուլթօի, ախտի մորթոց և դալկան ։ Զամին 'ի չորս տրամ` մինչև ցութ խառն ընդ մի լիտր Ջրոյ ։ Նոյնպէս օգտակար է 'ի դիպուածս որքիւնոյ. զոր մարթ է լուալ 'ի փոշի մանրամաղ և խառնել ընդ քաւականաչափ մածնոյ, ընդ փոքր ինչ Ջրոյ լեմոնի, և ստէպ ստէպ օծանել նովաւ 'ի վերայ վշտացնեալ մասին մարմնոյ ։

Լաբիս, լտ ։ բիէթրա, իտ ։ լիթօս, յն ։ թաշ, տճ ։ գաճկաա, կամ գաճկառէ, կամ հաճար, և կմ պէհպէռի, արբ ։ սէնկ, կամ տիւսթէ, պր ։ Է անուն ընդհանուր ո՛ և իցէ տեսակի քարանց, որ 'ի վար արկանի 'ի դեղորայս ։

Լաբիս աէթիթիս, կամ աէթիթիս լափիս, լտ ։ բիէթրա ագուիլլինա, կամ էթիթէ, իտ ։ աէթօս, յն ։ գարթալ թաշը, տճ ։ հաճարիլ նիսր, արբ ։ և ըստ մեզ` արծուաքար ։ Է ազգ ինչ կարծրագոյնից նիւթոյ, որ ըստ ոմանց գտանի 'ի բոյն արծուոյ. որոյ վասն և կոչեցաւ յանուն նորա ։ Քառեակ է սորա տեսակ. առաջինն է մեծ իբր ընկուզաչափ, ձուաձև, և թըխագոյն ։ Երկրորդն` փոքր է և սեաւ նման ըստ իմիք մարքասիթ անուանեալ քարի ։ Երրորդն` փոքր է քան զերկուսին, և սևանիշ, և գոյն նորա մթին դեղին 'ի գոյն քըքմոյ ։ Իսկ չորրորդն` գորշագոյն է և մածուցիկ. որ յաճախ գտանի յերկիրն գերմանիոյ ։ Զորեքին սոքա օգտէն տղայաբերից` կապելով 'ի վերայ սրունից. ունի և մասնաւոր գործունէութ 'ի փարատել զլուսնոտութ, և զփորհարութ ։

Լաբիս ինֆէռնալիս, լտ ։ բիէթռա ինֆէռնալէ, օսսի սէքբթօնէքօ օր արճէնթօ ֆուսօ, իտ ։ ճէհէննէմ թաշը, տճ ։ հաճարիւլ ճէհէննէմ, տճ ։ և ըստ մեզ թարգմանաբրի` քար դժոխային ։ Է նիւթ ինչ խառնագոյնից, և կիզողական, բաղկացեալ յարծաթոյ, և 'ի ժանտաջրոյ, զոր վիրաբոյժք յաճախ 'ի կիր արկանեն 'ի ծախել զաւելորդ մասունս մսամոլեալ վիրաց, 'ի բանալ զկարծրագոյնս ուռոյցս, և զեղունգըս, և 'ի փարատել զխոցս ելեփանդական, և գաղղիական ։

Լաբիս կհօս, լտ ։ բիէթռա տի կօա, իտ ։ գառ-

պար անտօն Թաշը, տճ ։ և ըստ մեզ՝ քար գաստպար անտօնի ։ Քար բաղադրական, կազմեալ 'ի բազմատեսակ նիւթոց ։ բնութ՛ք է խթիչ, և զօրացուցիչ ։ զօր մարթ է 'ի կիր առնուլ ընդդէմ դժնեայ ախտակաց, մահաբեր և որդնեռաց տենդից ։

Լաբիս սէրբէնթիս, լտ ։ բիէթրա տի սէրբէնթինօ, իտ ։ ելանձըք Թաշը, տճ ։ հաճարիւլ հայյէ, արբ ։ և ըստ մեզ Թարգմանագրի՝ օձաքար ։ Է փոքրիկ, բոլորակ և սեաւ քար ինչ, որ արտագրի 'ի գլխոյ իրիք ձձի կոչեցելոյ գաղղիական բարբառով՝ սէրբանթօ շափրօն, որ լինի գեղ ազգու ընդդէմ հարուածոց կճ խածուածոյ կատաղի շանց, և թունաւոր զեռնոց՝ կապելով և եթ զայն 'ի վերայ վիրաւորեալ մասին մարմնոյ ։ բայց գիտել արժան է՝ զի եթէ անցեալ իցէ ժամանակ բազում, մինչև խառնեալ թունից ը արեան, յայնժամ ոչ ներգործէ զզօրութիւն ։ Վարի և 'ի բժշկութի ախտին՝ ելանձըք կոչեցեալ 'ի Թուրքաց ։

Լաթթուկա ։ տես լաքթուքա ։

Լաթհիրիս, լտ ։ քաթաբուցիա, կամ քաթաբուչիա կամ քաթաբուցցա, իտ ։ հապպըլ'հըլիւք, կամ մաղուք, կամ սէմքէա, կամ գաֆտարիքա, արբ ։ չէպրէմ, կամ չիւպրիւմ, կամ մահուպտանէ, և կամ մահուտանէ, պր ։ ապտիսէյլաթին, տճ ։ կոչի և 'ի բարբառ լատինացւոց կրանում րէճիում մինօր, կամ մինօռ ։ Է պտուղ ինչ բոլորակաձև, սոռուար, և կեղևապատ՝ ըն թիթիմալիոի ։ մէջ նորա է հիւթալից, սպիտակ, և կիզողական ։ և միանգամայն և գեղ հզօրապէս լուծիչ, և ործացուցիչ, որով և առթէ զխէթս աղեաց, և ստամոքսի ։ առ բժիշկս արաբիոյ, պարսից, և հնդկաց՝ յաճախ 'ի կիր արկանի 'ի բժշկութի ջրգողութե, խելաժեառութե, վերնառութե, և ախտի թմբրութե, և յայլ կերպ կերպ լուծողական դեղորայս ։ բայց առ եւրոպացիս՝ գուն ուրեք ։ 'ի պտղոյ սատի ելուզանեն իւղ ազգու, որով օծանեն զանդամս անդամալուծաց, զի է խթիչ բնութ՛ք ։ Եւ ուրեք 'ի կիր արկանի յերբս չթաչափս խառն ընդ շաքարի առ 'ի սատակել զճճիս, և զորդունս որովայնի ։ Բոյս սորա է կաթնալից՝ յազգէ թիթիմալիոի՝ բուսեալ յագարակս և 'ի պարտէզս իբր երկու ոտնաչափ բարձրութ՛ք ։ Տերևք սորա երկայն են և յղկեալ՝ ըստ նմանութե տերևոց ուռենւոյ, զոր լատէ

մարդոյ ։ Տերեւն մշտադալար, երկայնաձեւ, լայն երեք երկու և կէս մատնաչափ, կարծր, ջղային, մաքուր, կարճակոթն, հիւթալից, և ախորժահոտ, և տապա-համ ։ Ծաղիկն հերձոտ, միթերթեան, և դեղին, և 'ի տեղիս տեղիս նաև սպիտակ ։ Պտուղն փոքրիկ 'ի չափ կեռասի, բոլորակ, սեաւ, հոտաւէտ, իւղային, և դառնահամ, ունի և սերմունս երկայնաձեւս ։ Իսկ արմատն ստուար, և խորտուբորտ ։ Ջուրս տերեւ, որ է լի ցնդական աղիւ և իւղով՝ 'ի կիր արկանեն 'ի դեղ թալկութեան ջլաց և ուղղոյ, ջղային դժուարամար-սութեան, և նուաղութեան ամսական պարտուց կանանց և ախտից արգանդի. զի է խթիչ բնութ. ։ Զնոյն գոր-ծունէութիւն ունի և՝ սորա պտուղն. բայց բնութ. պտղոյն առաւել ջերմագին է քան զտերեւոյն, սմին իրի ոչ է պատշաճ ջերմագին բնութ. միճակելոց ։ Զափն 'ի կէս տրամէ մինչև ցմի ամբողջ ։ 'Ի պտղոյ սորա կազմեն և զիւղ ինչ կանաչագոյն, որ է դեղ պատուա-կան ընդդէմ ցաւուց ջլաց, և ոսկերաց՝ օծելով ։

Լաուրոչերազուս կամ լաուրի ըէձինա. լա ։ լաու-րօ չէձիօ, իտ ։ Է ծառ մշտադալար, և շքեղատեսիլ. յաճախեալ յեւրոպիա 'ի բուրաստանս, և 'ի պար-տէզս, որոյ բունն է ուղիղ, սպիտակափայտ. թխա-խառն կանաչակեղև, և ստուալից ։ Տերեւն ջղային, յղկեալ, շողշողուն, և դառնահամ. ունի զհոտ ախոր-ժելի և թափանցիկ՝ նման ըստ իմիք՝ հոտոյ դառն նշոյ, յորմէ խառնեն չափով ընդ օղիշկի 'ի տալ հոտ ախորժելի ։ 'Ի տերեւոյ սորա արտահանեն ըղ-ջուր ինչ սպիտակ՝ 'ի ձեռն ցքահան գործեաց, զոր անուանեն՝ Աքուա տի լաուռօչէրիզէ, որ և 'ի լա-տինացւոց՝ Աքուա լաուռօչէրազուս, որ է սաստիկ թիւնաւոր, և ուժգին թուլացուցիչ բնութ. ։ Սա վասն ուժգին թուլացուցիչ զօրութեան իւրոյ շիջուցա-նէ զսաստիկ ջերմականս բորբոքեալս, որք պատճառին յայլև յայլ ջերմնատոչոր ախտից. ապաքինէ նաև զկէրս թոքոց, և սաստկէ զօր դունս և զճճիս որովայ-նի. այլև բուժէ զբարցկեղ զխլրդենի, և զախտ գաղ-ղիական ։ Գործեալ՝ օգտակար է կշտացաւութեան, գլխացաւութեան, փողացաւութեան, յօդուածացաւութեան, վատթարագոյն հազից, փայծեղնացաւոյ, և ցնորման Ծաղիկն ողկուզօրէն, հինգթերթեան, և անհոտ, սպիտակախառն կարմիր ։ Իսկ մինչ զթերթան ծաղ-կանց 'ի բաց թօթափեն, 'ի վեր կրեն 'ի միջի մասին

կարմրերանգ պտուղն ձուաձև, փշենկաւոր, և գիւ-րաբեկ, ունելով 'ի միջի կորիզս երկայնաձևս և դառ-նահամս: Զօրութ̃ նոյն է ընդ տերևոյն, բայց որա-կութեն տերևոյն առաւել թիւնաւոր է և մահաբեր քան զպտղոյն: Տամին 'ի ցքահանէ ելուզեալ ջրոյ 'ի 4 չթէ մինչև ց 6 յաւուրն, խառն ընդ փոքր ինչ ջրոյ:

Լամաւէթուս, լտ: Ձուկն ինչ յաղչէ կարմրա-խայտ, յաճախեալ 'ի ծովափունս և յապառաժուտս վտակս. երկայնութիւն նորա իբր ոտնաչափ, իսկ լայ-նութիւն ձեռնաչափ. թեփ մորթոյն սպիտակ, և փայ-լուն. գլուխն փոքրիկ և երկայնաձև. իսկ միսն մա-ծուցիկ, փափուկ, և համեղ յոյժ, միանգամայն և դեղ ազդու 'ի դիպուածս ցաւոց կրծոց, և ախտի թոքոց:

Լավէնտա. լտ սպիքա, լտ: լավանտա, կամ սպիկօ նարտօ, իտ: լավանտ, գղղ: հիւսնամէ օթու, կամ լավանտա, և կամ նէրտէն, տճ: և Ժ̃ մեզ՝ նարդոս: Է բոյս սոսափկահոտ յաճախեալ յիտալիա, 'ի սպա-նիա, և 'ի զվիցցերա, երկայն իբր երեք ոտնաչափ, քառանկիւնաձև, փայտային և կարծր: Տերևք սորա երկայնաձև են և սրածայր, ծաղիկքն փոքրիկ, խա-ռնչաւոր, որկորաձև, սպիտակ, և անուշահոտ, որք շղթայակերպ շարին 'ի վերայ ծիւղոց հանդերձ ատա-մնաձև և կապտագոյն հասկաւ: Իսկ սերմունք նո-րա՝ որք լինին 'ի խոռոչս ծաղկանց՝ մանր են և եր-կայնաձև: Այս բոյս լի է ցնդական ազիւ, և իւ-ղով. որոյ եթէ ծաղիկն, և եթէ համկն են դեղ ազ-դողական 'ի դիպուածս ախտից ջլաց, ջղային անն-գի, նուաղման սրտի, աւթելոց 'ի տկարութէ ջլաց, և յերկարատև խօթութէ, նոյնպէս և անդամալո-ծութե, յօդուածացաւութե և փքախտութե. զի է խթիչ բնութ̃: Տամին 'ի կէս տրամէ մինչև ցմի և կէս խառն ընդ երկու լտր ջրոյ: 'Ի սմանէ ելու-զանեն նաև զիւղ ինչ ազնիւ և յոյժ քաղցրահոտ. որ առեալ 'ի կիր արկանի յօծանելիս, նաև 'ի քսուա-տիպս 'ի զուարթութին, և 'ի զօրութին սրտի: Տամին 'ի մի չթէ մինչև ցչորս: Նոյնպէս և արտահանեն յայսմանէ զոգի ինչ հոտաւէտ և թափանցիկ, միան-գամայն և դեղ ազդու 'ի դիպուածս վերոգրեալ ախտից: Տամին 'ի 4.5 չթէ մինչև ց40 կամ ց60, խառն ընդ համարակ ջրոյ:

Լարինքս, լտ։ լարինճէ, իտ։ հօքօշձա, ած։ և ըստ մեզ՝ հագագ։ Ըստ անդամազննաց նշանակէ գլուխ շնչափողին, որ է գործարան ձայնի. և ամենայն ազգք ձայնից զայսմանէ գործարանէ կախին. Նախին իրր բացատրել օրէնէ թէ որպիսի ինչ է յօրինուած նորին, և թէ յինչ մասանց բաղկանայ, զի լաւագոյն ևս հասու լիցի հետազննին վերծանօղն հարաղատ պատճառաց ձայնի։ Քանզի ասացաք, թէ հագագն է գլուխ, կամ վերջին մասն շնչափողին, կամ խռչափողին. ոչ այլ ինչ է բայց եթէ գործարան բաղկացեալ յաճառաց՝ որք բարձեալ բերեն զլեզուակն, և 'ի թաղանթից բոլորեալ մկանամբք և ջլօք, նախնարար և յատկապէս կարգեալ յաղագս արտաբերութեան ձայնի։ Եւ է մարմին պինդ, խիտ, և պարարտ, մեծ, և ընդարձակ, ունելով զերկայնութիւն, զլայնութիւն, և զխորութիւն, ուռուցմամբ, կամ արտաքս ցցմամբ՝ մանաւանդ 'ի պարանոցս արանց ցուցեալ. որ է բոլորշի և բոլորակ, սակայն խառնորնաբանութբ ինչ։ Քանզի յառաջոյ կողմանէ ճշգիւ բոլորշի է, այլ 'ի յետուստ կողմանէ՝ ուր 'ի յօրկորն կոյս հայի՝ սակաւ առ սակաւ վերևալ 'ի կատարեալ բոլորշի ձևոյ, և ստանայ զերկայնութիւն ինչ. 'ի ներքուստ է ծակ ինչ այսր մարմնոյ, որ ասի ձեղքուած, կամ լեզուակ նորին. որոյ շքեղութիւն, և պիտանութիւնն ամենայն գովեստից է արժանի։ Քանզի այսմ մասին յատէտ շնորհեալ է գործողութ հագագին, և 'ի սմանէ կերպարանի ձայնն (որ է այսր գործարանի յատուկ գործողութիւն). այս է՝ իբր զի օդն՝ որ ընդ այն անցանէ՝ ճնշեալ, և ելուզեալ, սքանչելի իմն արդարև պատճառելութբ և գործողութբ երեքատասան մկանանց զձայնն արտադրէ։ Այլ գիտել արժան է, զի 'ի հագագն զուգընթանան գլխաւորաբար երկու մասունք՝ որք մեծի ուշադրութե արժանի են. այս է՝ լեզուակ, և մակալեզուակ։ Լեզուակն անուանեալ կլօթթիս, է դայացութի հագագին թաղանթային, ճարպալից, մասնուա, կազմեալ առանձին մասով, և պարէնքինաիւ, որ 'ի ծայրն ունի զձեղքուած խողովակի՝ զպարզօղ լեզուին։ Քանզի զորօրինակ ցանցատեսակն է տեղի տեսութե, և պարէնքինային լերգին՝ է արարող արեան, նոյնպէս զնեմք՝ թէ սոյն թաղանթային, ճարպալից, մասնուա մարմին՝ օծեալ խժայիւն և իւ-

զայլին խոնաւութիւն, է յատուկ և հարազատ գոր_ ծարան արտաքերութեան ձայնի ։ Իսկ մակալեզուականն կոչեցեալ եբիկլօթթիս, մասն ինչ լեզուականին, որ պիտախնորդութեն վարէ զկոկոյ, կամ զկափարիչն, զգուշութեամբ 'ի վերայ կայ, և արգելու, զի մի ինչ յուտելեաց կամ յըմպելեաց ընդ լեզուակն 'ի հագագ անդր սողոսկեսցի. Նմին իրի և դուռն խնա_ մածու, և մարտկոց առ հագագին, որոյ բազմամբն տանումք զշունչ, և շնչեմք ։ Ունի սա և զերրանս 'ի բնութեանն կարգեալ միանուանս, որոց երբեմն փա_ կի, և երբեմն բացեալ լինի ։

Լարատում, լտ ։ լարատո, կամ կատասուս ոթրութթօ ։ կամ կտուասաուսմ տի բողօ, իտ ։ տամուզ եպղը, տճ ։ գիրոյց կամ ճարպ խազի ։ Է սպարարտութիւն խաղի զատեալ 'ի մսոյն, և հալեալ, հանեմիշ կերակրոց, և ախտանի 'ի գեղորայս, մանաւանդ յօծանելիս ։

Լաք, լտ ։ լաթթէ, իտ ։ կալլայ, յն ։ սիւտ, տճ ։ լէպլէն. կամ լէպլէն հալէպ. կամ սատալ. կամ սա_ րէֆ, արբ ։ շիր. կամ ակլմապ, պր ։ և բառ մեզ՝ կաթն. որով նշանակին ամենակերպ զատեալ հիւթք, թէ կենդանեաց, և թէ սերմանց, ևն. բայց կաթն կենդանեաց՝ որ բնութեն մարդոյս տուեալ համե_ մատ է՝ լինի գեղ օգտակար ոսնտատութեն, յօդուա_ ծացաւութեն, անտից միզարանի, աքօսպութօի, և ցաւոց կրծոց. բայց նկատել օրէն է, զի մի առա_ կանեսցի կաթն 'ի նեղքս ստամոքսի, որովհետև թուլացուցիչ է բնութեն ։

Լաքթուքա, լտ ։ լաթթուքա, իտ ։ թռիտաքս, յն ։ մարուլ, տճ ։ գէհու, կամ գէսպա, կամ գէզք, կմ գիրու, պր ։ խասս, արբ ։ և բառ մեզ՝ հազար, բայս յայտնի խաւարտեաց. որոյ ցօղունն է երկայն և բազ_ մաճիւղ ։ Տերևն մեծ, լայն, ատամնակախտան կանաչ, դարարատ, հիւթալից, և բարեհամ. միանգամայն և գեղ ընդդէմ ախտից Ջլաց, տոտրին արտօնայնի, անքն_ դանատութեն, և խթեց աղեաց. զի է քնաբեր, խա_ ղաղիչ, խոնաւացուցիչ, և կարի զովացուցիչ բը_ նութի ։

Լաքքա, լտ ։ լադդա, կամ կոմմա լադդա, իտ ։ լէք, տճ ։ Է խէժ կարծր, մթին կարմիր, փայլուն, թափանցիկ, դիւրալոյծ, դիւրավառ, և յայրելն բուրէ զհոտ անոյշ. իսկ 'ի ծամելն տաղտկամ, և ներկէ զլորձունս կարմիր, յաճախեալ 'ի բժշկութեան .

'ի մուլաքար, և 'ի փեկու, և է սա գործուած թեւաւոր մրջման երեք կամ չանձի։ Վասն զի այս թեւաւոր մրջիւն՝ փոքրիկ և նուրբ կենդանու իւրով ծծէ զհիւթս ծառոց, և եղեգանց, և փոխարկէ զայն 'ի խէժ ձիւթոյին. և բնակիչք երկրին ժողովեալ զպաձէ ձուլեն մասնաւորի թանձրութե, և առաքեն 'ի վաճառ. զոր խառնեալ ընդ կինաբարիսի՝ հնարեն զայն կնքամոմ. 'ի տեղիս տեղիս 'ի վար արկանեն նաև 'ի գրգռել զզիրան, 'ի դաշտանան կանանց, և 'ի զօրացուցանել զնտերս ստամանց։

Լեբիտոնում լաթիֆօլիում, լտ։ լեբիտոյօ. կամ ռէֆերիթէ, իտ։ Խոտղան էրուքար, տճ։ Է բոյս յազգէ կոտեմի. որոյ ցօղունն է երկայն իբր երեք ոտնաչափ, բոլորակ յղկեալ, բազմանիւղ, և ուղղակից։ Տերեւք նորա են երկայն, լայն, մթին կանաչ, եզերքն իբր սղոցաբերան, և տապահամ։ Ծաղիկն սպիտակ և քառաթերթեան։ Պտուղն փոքրիկ, և խառոչաւոր։ Բերէ և սերմանս մանունս և երկայնաձևս։ Իսկ արմատն երկայն, ստուար իբր մատնաչափ, օձապտոյտ, սպիտակ, և տապահամ։ Սա բուսանի յանձաւս յաւերակս, 'ի հովանաւոր տեղիս. բնութե է խթիչ, որով զօրացուցանէ զգործողութիւն խժային թաղանթեցն բերանոյ, և լորձնաբեր մասանցն արկորոյ։ Ըստ ոմանց օգտակար է նաև չխաթիքս անուանեալ յօդուածացաւութեան, որքիանոյ, և բորոտութե, և խածուածոց կատաղի շանց. այլև փարատէ զբիծս երեսաց։

Լեբուս, լտ։ լէբռէ, իտ։ լակօս, յն։ խարաղ կմ էանէկ, և կամ տաւշան, տճ։ գէօթվոհոս, կամ գէօհթէբաշա. կամ հարկիւշ, և կամ լի .օն, արբ։ և ըստ մեզ՝ նապաստակ։ Է կենդանի քառոտանի, հեզիկ, երկչոտ, թեթևամարմին, արընթաց, կարճագլուխ, երկայնականջ, բոլորակապարանոց, փափկամուտ, և կարճաձևս. որոյ եթէ՝ սիրտն, եթէ լեարդն, և եթէ արիւնն են դեղք փորհարութեան, միզարգելութե, վերնոտութե, նուազութե ամսականն պարտուց կանանց, և քառօրեայ տենդից։ Ուղեղն սորա ունի զզօրութիւն 'ի զօրացուցանել զջիղս ատամանց, և 'ի փարատել զկոծիծ ձեռաց դոյզն ինչ օծելով նեթ զայն։ 'Ի ներքին կողմն ստամոքսի այսր կենդանւոյ կախեալ կայ նիւթ ինչ մածուցիկ, զոր լատինք քօակուլում լէբօրիս կոչեն. յորմէ կազմեն

դեղ աղջուոյ ընդդէմ թունից, լուսնոտութեան, փոր-հարութեան, և նուաղութեան սրտի։ Զափն 'ի կէս տրամէ մինչև ցմի։ Նոյնպէս օգտակար դեղ է և ա-մորձիք նորա. զորոյ պարկն անջատեալ 'ի գործ ա-ծեն ընդդէմ թուլութեան երիկամանց և փամփշտոյ. Զափն 'ի 20 ցորենոյ մինչև ց60։

Լէկօրիցիա. տես կլիչիրրհիցա։

Լէնիթէ. տես լէնս։

Լէնիօ. տես լիգնում։

Լէնիօ տի ալօէս. տես լիգնում ալօէս։

Լէնիօ տի քուասսիա. տես լիգնում քուասսիա։

Լէնիօ մօլուքքէնսէ. տես լիգնում մօլուքքէնսէ։

Լէնիօ նէֆրիթիքօ. տես լիգնում նէֆրհիթիքում։

Լէնիօ տի ռօտի, տես լիգնում ռհօտիում։

Լէնիօ տի Ֆէռռօ. տես լիգնում Ֆէռռի։

Լէնս, լտ. լէնթէ, իտ. Ֆակօս կամ Ֆակէ, յն. Միրճիմէք, ար. ած, կամ ածէս, կամ ատէս, թր. և ըստ մեզ՝ ոսպն։ Է ունդ ինչ ծանօթ ամենեցուն. յորմէ կազմեն պէսպէս կերակուրս, որ է մարսե-ցուցիչ և մեղմապէս լուծիչ բնութեան։

Լէուքօռռէա. տես Ֆլուսսօ պիանքօ։

Լէուքօռռհէա վէնէրէա. տես պլէնօռռհաճիա։

Լէպպրա, իտ. լէպրէ, լտ. և յն. Ճիւզամլըք, ուայուղլուք, թր. և ըստ մեզ՝ բորոտութիւն, բոր։ Է ախտ ծանօթ ամենեցուն, տարածեալ 'ի մորթս մարմնոյ յապականութենէ արեանն։

Լէօ, լտ. լէօնէ, կամ լիօնէ, իտ. լէօն, յն. աս-լան, թր. գաթըլ, կամ էսատէս, կամ խուտա, կամ լէյս, կամ կաղանֆէր, կամ սաղապէմ, կամ ուլքամ. և կամ տարքամ, ար. գեժեր, կամ շէրզէ, կը՛ շէր, կամ շէրի ժէլան, կամ շէրի կառան, և կամ շէրի շէր-զէ, պր. և ըստ մեզ՝ առիւծ։ Գազան ահաւոր և շիկամազ, յաճախեալ 'ի ջերմ գաւառս հարաւային, ասիոյ, և յափրիկէ. յաղթանդամ, և մեծ իբր ութ-ոտնաչափ. գլուխ նորա և երես մեծ է և ահագնա-տեսիլ, պարգարեալ երկայն և թաւամազ բաշխ. արականունքն կարծր. եղրանն լայնաբաց. ծնօտքն մեծ, և անհարթ, յորս շարեալ կան 14 ատամունք. յորս չորքն հզօր են և կարի աղդու. չորքն նոցա ըստ շանն. իսկ վեցքն փոքրիկ և սրածայր. լեզուն երկայն, լայն, անհարթ, և գոգաւոր. մորթին հզօր և համանգամայն թեթև կազմուածով. ոչ ճարպա-

ըէց, և մանր. այլ ճերմակին, և միաձեւա. Թաթք ոտից ծիրանաւոր ըստ կատուի. իսկ ոսկերքն այնպէս կուռ. մինչ գրեթէ լինի անծուծ, որ զօրութեան նորա օգնէ ոչ սակաւ: Այս գազան լի է ցնդական աղիւ և իւղով. զորոյ զմիսն բնակիչք երկրին 'ի գործ ածեն 'ի դեղորայս, ուր և աւանդեն և պնդեն, եթէ է յոյժ զօրաւոր ջղաց, և ուղղոյ: Նոյնպէս զմիս նորա փոշիացուցեալ 'ի կիր արկանեն 'ի դեղ լուսնոտութեան, և քառօրեայ տենդից: Զափն 'ի 20 ցորենոյ մինչև ց40: Զարիւն նորա նոյնօրինակ փոշիացուցեալ 'ի վար արկանեն ընդդէմ Թունից, զի է քրտնաբեր, և խթիչ բնութեան: Իսկ ճարպն ունի զմասնաւոր գոր-ծունէութիւն 'ի զօրացուցանել զջիղս, և 'ի խափանել զշնչիւնս ականջաց: Օգտակար են և ոսկերք նորա. զորոյ զմիսն անջատեալ, և փոշիացուցեալ 'ի գործ ածեն 'ի դեղ ցաւոց ստամոքաց և յօդուածոց, և տենդից: Զափ 'ի 20 ցորենոյ մինչև ց60:

Լէօբարտուս, կամ բարտուս և կամ բանթհէրա, լտ: լէօբարտօ, իտ: բարս, տճ: և ըստ մեզ՝ ընձառիւծ: Գազան Թեթևաշարժ, և ամեհի, յաճախէ յասիա, և յափրիկէ. տեսիլ դիմաց նորա նման է առիւծոյ, կամ լաւ ևս կատուի. ասեն ընձու. աչքն փոքրիկ, սպիտակ, կայտառ և յարաշարժ. ճակատն մեծ և լայն. ականջքն բոլորշի. լեզուն խորտուբորտ. ատամունքն սրածայր. պարանոցն երկայն, որպէս և մարմին նորա. աղեղքն մազալիր. սրունքն երկայն. Թաթ ոտից ծիրանաւոր, որոց ծիրանք սրածայր են, և Թափանցիկ. իսկ տուտն երկայն: Լի է իւղով, և ցնդական աղիւ, որոյ ամորձիքն անջատել 'ի կիր արկանի 'ի դեղորայս. որ է փարատիչ ախտից արգանդի, և այլոց ախտից կանանց: Զափն 'ի 40 ցորենոյ մինչև ցմի տրամ ամբողջ: Իսկ ուղեղն մաղձաբեր է և սաղմնաձգանիչ:

Լէօնթօտոնում Թառաքսաքում, լտ: Թառասսաքօ, իտ: Է բոյս ինչ եւրոպական, որոյ արմատն է անհամ և սպիտակահիւթ. միանգամայն և դեղ խոցանաց որովայնի և այլ ախտից աղեթելոց յածկեղութէ. զի է Թուլացուցիչ բնութեան: Զափն 2 ունկի ընդ մի լիտր ջրոյ:

Լիքուօռէ, կամ լիգուիտօ, իտ: լիգուիտում, լտ: այսու անուամբ նշանակի որ և իցէ հեղանիւթ. զորօրինակ գինի, օղի, ջուր, ևն:

Լիգուօռէ անթիքօնվուլսիվօ տի Թրինգավէլլի, իտ: Հեղուկս այս կազմեալ 'ի վենետիկ 'ի դեղարա-րէն՝ անուանեալ Լուիձի մօթթա, է յոյժ շահաւէտ ընդդէմ ցնցական ախտից, ղանազան խթից, փորհա-րութեան են: Զափն մի դրգալ սեղանոյ՝ յորժամ ըմբռնէ ախտն, և արտաքոյ այնր չիթ չիթ ըմպելով. տղայոց բաւական է 10 չիթ ընդ ատամունս կամ Է երեկս:

Լիգուօռէ անօտինօ մինէրալէ տէլլ' Հօֆֆման, կմ. ալքօօլ էթէռէօ ս' ռսոսխօլֆօռիքօ, իտ: Ալքօհօլ էթհէռէուս սոսխուլֆհուռիքի կամ ալքօհօլ էթհէ-ռէուս բէր լ' աչիտէ սուլֆհուռիգուէ, լտ: Լօքման ռուհու, տճ: ռուհի լօքման, արբ: Է սպիտակ հե-ղանիւթ ինչ հոսաւէտ, թափանցիկ, և ցնդական, բաղադրեալ յեւղոյ արջասպի, և 'ի սաստիկ ոգւոյ. բնութիւն է դրդռիչ, կամ խթիչ, և տարածողական. հաշտակարար է 'ի դիպուածս ախտից ջղաց, մեղաղդե-լութեան, ախանդամնատութեան, ախտից արգանդի, նը-ւաղման սրտի, փոխադրական ջերմախտից, ուշա-գնացուն, անդամալուծուն, և ախտից կրծոց տա-թեւոց 'ի թուլութէ: Զափն 'ի 10 չթէ մինչև ց60 խառն ընդ ս և իցէ հեղանիւթոյ: Այնիւ համարի՝ եթէ իցէ թարմ, սառնահոտ, ջերմահամ, ցնդա-կան, և դիւրավառ:

Լիգուօռէ տի թէրրաֆօլիաթա տի թարթարօ. կամ ասսէթաթօ տի բօթասսա լիգուիտօ, իտ: Սիրքէ թուզուն ռուհու, տճ: Հեղանիւթս այս օգ-տաւէտ է 'ի դիպուածս խցանաց միսենդրական մա-նուց, փայծեղան, և լերդի. օգտէ և ջրգողութեան. մեղարդելութեան, և դալկան: Զափն 'ի չորս լետր ջրոյն մի տրամ բաւէ:

Լիգուօռէ տի քօռնօ տի չէռվօ սուչչինաթօ, կամ ասախասուչչինաթօ ս' ամմօնիաքա էմբիրէլէօսօ, իտ: դէհրիպալըլը կէյիք պոյնուզուն ռուհու, տճ: Է ոգի ինչ բաղադրական՝ կազմեալ յեղջերէ եղջերուի, 'ի սաթէ, և 'ի սաստիկ ոգւոյ. որ է դեղ ազդու ընդդէմ տկարութեան ջլաց, ինչուածոց, և անդամա-լուծութեան հոտառամամբ, և ըմպելով. զի է խթիչ բը-նութեան: Զափն 'ի չորս չթէ մինչև ց16:

Լիքէնթէրիա, իտ: ակնաիրամէզ իսայլ, տճ: ղա-խէէր, արբ: Է ազգ ինչ որովայնալուծութեան, յո-րում իջանեն կերակուրք անմարսք. տես 'ի հա. ա.

'ի գլ. ԽԷ: երես 301 :

Լիթարճիրիօ տի արճէնթօ : տես լիթարճիրիուս :

Լիթարճիրիօ տի օռօ . տես լիթարճիրիուս աուրի :

Լիթարճիրիուս, կամ լիթառճիրիում, լա: լիթարճիլլիօ, և կամ լիթարճիրիօ, իտ: միւրտէսէնկ, տճ: մէրթէք, արբ: և ըստ մեզ՝ քարմարցակ: Է նիւթ ինչ կարծր իբրև զքար, գոյացեալ յարճճային մասանց, և 'ի փոփրոյ արծաթոյ և ոսկւոյ, որ 'ի հուր արկեալ փոխարկի յարճիճ: Կրկին է սորա տեսակ. մինն է կարմրախառն գեղին. զոր փոշիացուցեալ 'ի վար արկանեն 'ի պէսպէս սպեղանիս, որպէս 'ի զովացուցանել, և 'ի չորացուցանել զվէրս հնացեալս: Զայս տեսակ քարմարցակի լատինք՝ լիթարճիրիուս աուրի կոչեն, զոր իտալք անուանեն՝ լիթարճիրիօ տի օռօ, և արաբք՝ մէրթէք տէհապ: Եւ տաճիկք՝ ալթըն միւրտէսէնկի: Իսկ հայք քարմարցակ ոսկւոյ: 'Ի սմանէ և դեղարարք գիտեն գործել ազդ. մի ազգու քացախոյ, որով լուացեալ զամենայն գծնեայ վէրս՝ իսկոյն ցամաքեցուցեալ բուժէ. մանաւանդ զվէրս քաղցկեղայինս, զորս՝ լիագոյն տեսցես 'ի բառն աչէթօ սաթուռնօ: Իսկ միւսն է սպիտակ, կամ արծաթագոյն, որ սակաւ մի թեթև է քան զառաջինն, զոր լատինք կոչեն՝ լիթարճիրիուս արճէնթի, և արաբք՝ մէրթէք ֆաթտա. այլ ըստ բնութե և ըստ ներգործութե նման նմա :

Լիմաթուրա տի ֆէռռօ. տես ֆէռռօ :

Լիմբհա. տես Լինֆա :

Լիմբհաթիքըուս. տես լինֆաթիքօ :

Լիմօնէ. տես մալուս լիմօնիա :

Լինում, կամ լինկնում, լա: լէնիօ, իտ: քեթլաճըն: աղաճ, կամ օտուն, տճ: խաշապ, արբ: Է անուն հասարակ ամենատեսակ փայտից :

Լինում ալօէս, կամ քսիլօալօէ, և կամ ակալլօքհում, լա: լէնեօ տի ալօէ, իտ: էօտ աղաճը, տճ: էհուտ, արբ: և ըստ մեզ՝ հալուէ: Է փայտ սևանալից դիւրակէզ, դառնահամ, մոյգ հարեալ 'ի գոյն խարտեաշ, փայլուն, խայտաճամուկ, բծալից, և անուշահոտ, զոր 'ի գործ ածեն 'ի ծխանելիս, և 'ի դեղորայս, որ է զօրացուցիչ ստամոքսի, սրտի, և ջլաց, և կիտոյ ցաւոյ գլխոյ. Ծառ նորա աճէ ըստ մեռուամս ձիթենւոյ, կամ փոքր ինչ աւելի ևս, զոր հնատեալ թողուն այնպէս ընդ երկար ժամանակս,

մինչև ցփոխիլ առ հասարակ. բայց 'ի ծառն անդ գը-տանելին և ջիղք կամ երակք ինչ խաղային, որ ամենևին անփուտ մնան, և նոքին իսկ են հալուէ, զոր ապա ժողովեալ ածեն յաշխարհ ամենայն: Կեղև նորա խիտ է և սոուար գրեթէ ըստ կեղևոյ մորուսն ըն-կուզենւոյ. իսկ պտուղն նման է կեռասի: Սա բու-սանի յաշխարհն հնդկաց, նա յաւէտ 'ի լերինս մողո-լաց և Ճիաւայի:

Լինում գուաասխա, լա: Է փայտ ինչ կարծր, աղխտակ հարկեալ 'ի գոյն գեղին, անհոտ, և սաստիկ դառնահամ, միանգամայն և դեղ շահաւէտ 'ի դի-տուածս ակարութէ ստամոքսի, ջղային դժուարա-մարսութէ, միջահատակն և պարբերական տենդից, ծնչարդելութէ, յօդուածացաւութէ. այլև առա-ւելու զառնելութիւն ստամոքսին և ընդերացն՝ որք գանգաղ դատանելին, արգելու զփսխումն, և արծարծէ զախորժակն կերակրոյ: Որչափ թարմ և դառնագին է այս փայտ, այնչափ ազնիւ է և շահաւէտ: Ես զար-մատս զայս տամ ըստ կերպի ինֆուզիոնէի, կմ նաև իբրև խաշու կամ եռացեալ: Եթէ իբրև ինֆուզիո-նէ, պարտ է արկանել զխոշոր փոշի արմատոյս ըստ կշռոյ տրամոյ միոյ, 'ի լիտր մի ցուրտ ջրոյ. զկնի երկոտասան ժամուց՝ հեղ պզգուշութէ յայլ անօթ ա-պակի, և տուր ըմպել հիւանդին երեք կամ չորս ան-գամ յաւուրն՝ զկշիռ երեք ունկւոյ: Իսկ եղանակն, զոր պահեմ 'ի տալն զխաշուն կամ զեռացեալն, է այս: Առ տրամ մի տաշած փայտին կոչեցելոյ գուաա-սխա, և 'ի հասարակ ջրի եփեա եռացմամբ իբր քա-ռորդ մի ժամու. ապա զտեա, և մնասցէ եօթն ուն-կի. յոր յաւել ունկի մի՝ ծաղկի ջուր, որ յիտալաց-ւոց կոչի՝ ակուա փիոռիլլանցա դի ճէլսոմինօ: Յետոյ առնուլ պարտ է երկուս սկահակս սրճոյ երկիցս յա-ւուրն: Երբեմն ես կազմեմ այլ կերպ 'ի նոյն արմա-տոյ: Առ՝ հեղ եօթն ունկի սփիրիթօ տի վինօ յա-նօթ ապակի կամ 'ի շիշ. և ընդ նմին ոգւոյ խառ-նեա ինն տրամ՝ փոշիացուցեալ կեղևն սոյն փայտի, կամ զնոյն փայտն, և թող մնալ այնպէս իբր աւուրս ութ: Ապա քամեա զայն խիտ կտաւով յայլ անօթ ապակի. և ահա այս է դառնագին ոգի գուաասխա փայտին, զոր իտալք կոչեն՝ թինթուրա տի գուաա-սխա. չափն 'ի 24 շթէ մինչև 32: Զնոյն դառնութի և զգործունէութի ունին նորա կեղևն, և արմատն:

'ի փայտէ տառի՝ որպէս և 'ի կեղևոյ և յարմատոյ նորա արտահանեն զզուան կամ զզղյայական մասն ինչ Թանձրամած, և սեաւ, կոչեցեալ յիտալացւոց էսթրաթթօ տի գուայաքօ · զոր յաճախ 'ի վար արկանեմք 'ի պէսպէս հատուածս և 'ի մաճիւնս առ 'ի բժշկութիւն վերոգրեալ ախտից, և խօթութեանց : Ծառս այսր յոգնաշահ փայտի՝ աճէ ըստ բարձրութե մերում ձիթենւոյ : Տերևքն նման են տերևոց այնմ թփոյ, որ իտալերէն կոչի՝ ռեթթամօ պիանքօ : Ծաղիկն լայն, երկայնաձև, և հինգթերթեան : Պըտուղն գնտակակերպ, և կորիզաւոր : Իսկ արմատն ստուար իբրև զբազուկ մարդոյ, գեղնախառն սպիտակ, և դառնահամ, որպէս և կեղև նորա : Սա բուսանի 'ի սուրինամ, և յարևելեան կղզիս ամերիկոյ : Գործածութե այսր փայտի մուծաւ յեւրոպիա զառաջինն 'ի սպանիացւոց, յորոց էանց առ անգղիացիս, և անտի յայլ տեղիս :

Լինում մօլուքքէնսէ, լա : Փայտ ինչ ամերիգեան · յորմէ գործեն դեղ աղցու ընդդէմ խածուածոց կատաղի շանց, և Թունաւոր զեռնոց, և քառօրեայ տենդից, միզարգելութե, և յօդուածացաւութեան : Զափն 'ի մի ցորենոյ մինչև ց16 · այլև զճմլուածն առԹեալ 'ի հարուածոց բուժէ :

Լինում նէֆրիթիքում, կամ պալանուս միւրէփսիքա, լա : լէնեօ նէֆրիթիքօ, իտ : Փայտ ինչ սպանիոյ, կարմրերանգ, սպիտակակեղև, և դառնահամ · բայց դառնի և դեղնագոյն, որ լաւագոյն՝ համարի է, և կարի օգտակար ընդդէմ ապականութե արեան · զի է մաքրիչ և քրտնաբեր : Նախնիք 'ի գործ ածէին զսա 'ի դիպուածս երիկամնախտութեան, և միզարգելութե · բայց այժմ անպիտան համարի :

Լինում սանթում · տե՛ս կուայաքում :

Լինում րհօտիում, կամ լինում չիբրինում, լա : լէնիօ տի ռօտօ, իտ : փայտ վարդահոտ, յաճախեալ 'ի կիպրոս, որոյ գոյն նման է սանտալօ չիթռինօի · օգտաւէտագոյն է 'ի դիպուածս տկարութե սրտի, և ուղղոյ · զնոյն գործունէութիւն ունի սորա նաև իւղն :

Լինում Ֆէուսի, լա : Փայտ հնդկային, կարմրերանգ, ամբողջ, կարծր, և ծանր, կեղևն ստուար, կարծր, և գորշագոյն · զոր ճմլեալ մզեն անտի իւղ ինչ ազնիւ, և 'ի գործ ածեն 'ի դեղ ախտից դաղցկա:

թելից կանեփոյ, զոր մանեալ գործեն կտաւ 'ի պէտս ազգի ազգի զգեստուց:

Լինֆա, իտ: լիմֆա լտ: նէմիթէն, տճ: առու_թուպէիլ ճէսէթ, արբ: և ըստ մեզ՝ աւիշկ, կամ ջուր. բայց 'ի մասնաւորի այսու անուամբ իմանամք զհիւթս կամ զգոլորշիս՝ որք գտանին 'ի ներքս ներբադոյն երակաց, յորս ոչ լինի շրջան, և մուտ արեան, և սոքա ընդուն զանդի արեան սեփհական շրջջանառ իւրեանց, բաժանեալ յարենէ. և 'ի յորդ առատանալն՝ արտաքոյին 'ի մարմնոյ, և յայնժամ առձայնի քիրան. բայց 'ի գիպուածս յորս սոքա արգելական մնան 'ի ներքս, սակս փակեալ գոլոյ ծակոտկէն խցանացն, առթեն զայլ և այլ վզեանս, և զախտըս, մանաւանդ զախտն ջրգողութէ, ուր յայտնանապէս տեսանեմք, եթէ վերոյիշեալ գոլորշիք, կամ հիւթք արգելեալ մնալով երկարատև՝ տապականեալ գումարին 'ի մի վայր, մանաւանդ դէպ 'ի պորտն: Եւ սակս այսորիկ լինի ծարաւ սաստիկ 'ի ջրգողութէ. զի 'ի պակասել այսր ցօղոյ՝ ցամաքի արիւնն, և մասունքն, և փոխան նորա ջուր խնդրեն, որով առաւել ևս զայրանայ ախտն՝ վասն անդադար առաւելոյ հիւթոյն, յորմէ պատճառի. զոր յոլով անգամ ծակեալ, արտահանեմք զբազմաքանակ ջուրս, մինչև ցյիսուն կամ ութսուն լիտր հեղուկս:

Լինֆատիքօ, իտ: լիմբհաթիքուս, լտ: թէռ առմարլարը, տճ: և ըստ մեզ՝ աւիշկեան անօթ, կամ աւիշկական երակք: Այսու անուամբ 'ի մասնաւորի յայտ առնեմք զջրոյին երակս, որոց միոյ մասին եզերքն աւարտին 'ի վերայ մորթոց, և զդումարեալ ջուրս կամ զգոլորշիս արտահոսեն 'ի մարմնոյ: Այլ գիտելի է, եթէ վերոյիշեալ անօթքն կամ երակքն են այնքան մանրաթելք և նրբագոյնք, մինչև հազիւ մարթ է նշմարել զայնս խոշորացուցիւ. սմին իրի և օր քան զօր Ը ամէն յարբունս հասակի, ցամաքեալ խցանին այդպիսիկ անօթք. ուստի և թարշամեալ թառամին դէմք երեսաց. այլ 'ի մատաղատունկ հասակս տղայոց՝ գոլով այդոցիկ երակաց դեռ անարգել, և բաց և լի ջրով, պատճառէ 'ի նոսին զփափկութիւն, զգիրութիւն, և զգեղափայլ դէմս երեսաց:

Լիպարա, լտ: իւղ տրամ. տճ: և ըստ մեզ՝ լիտր. որ է չափ նշանակիչ զհարիւր տրամ քանակութիւն որ և լցէ իրաց. յորում պարունակի երկոտասան ունկ

կի՛ և կէս ։ Պարձեալ, գիտել արժան է, եթէ առ֊ ժամաքար եղեալ ( ℥ ․ ) զայս նշանագիր իմանամք զչափ մի լիտր ։

Լիքէնիէ իգլանտիքօ, իտ ։ Հէրպա մուշի իգլանտիչի, կամ լիքէն իգլանտիքուս ․ լտ ։ իգլանտիա եօսուէնուէ, ան ։ Է տեսակ ինչ մամռոյ, որ յաճախ 'ի վեր երևի 'ի իգլանտիա գաւառն 'ի վերայ քարանց ․ գունով է թուխ և փայլուն, և համով փոքր մի դառն ․ օգտա֊ ւէտագոյն է 'ի գիտուածս 'Թոքախտութե կամ ծիւրանկան ախտի՝ յորժամ ախտակիրն արիւնախառն թքանէ ․ զի է թուլացուցիչ բնութ꙳ ։ Նոյնպէս և օգտաւէտ է 'ի գիտուածս վատթար չոր և երկարա֊ տե հազից, ցաւոց կրծոց և վիրաց թոքոց ։ Այլև անուցանէ և բարեկարգէ զգործողութս մարսողութե, և զտանելութն Ջղաց, և միանգամայն փարատէ զվա֊ տութի, զնուրբ տենդն, որ կոչի՝ Ֆէպպրէ լէնթա ։ Զայս բոյս եփ 'ի կէր առնում ըստ կերպի ինֆու֊ զիօնէի, կամ խաշուի, կամ նաև իբրև փոշի ։ Եթէ իբրև ինֆուզիօնէ, կամ խաշու, օրէն է արկանել զխոշոր փոշի բուսոյս ըստ կշռոյ ունկւոյ միոյ՝ յեր֊ կու լիտր Ջրոյ կամ կաթին ․ յետ երկոտասան ժա֊ մուց հեղ զգուշութ꙳ յայլ անօթ ապակի, և տուր ըմպել ախտակրին երեք կամ չորս անգամ յաւուրն՝ զերկս չորրեց ունկւոյ ։ Եւ 'ի խնդրել անդ՝ զի լիցի զօրեղագոյն, պիտի յաւելուլ զչափ լիքէնիէ իգլան֊ տիքօին ։ Իսկ եղանակն, զոր պահեմ 'ի տալն զփո֊ շին՝ է այս ։ Առ ունկի մի՝ փոշեացուցեալ 'ի բու֊ սոյս, և նոյնքան՝ շաքար վանի ։ Եւ զայս պարտ է տանել չորեքս անգամ յաւուրն, միայն թէ կրկնե֊ լի է այդ գունէ մինչև 'ի չորս ամիս ։

Լիքօքօտիում քլավաթում, կամ մուսքուս թեռ֊ րէսթրիս, լտ ։ լիքօքօտիօ, կամ մուսքօ թեռռէս֊ թրէ, իտ ։ Գուրտ այաղը, ան ։ և ըստ մեզ Թարգ֊ մանագրի՝ տանգայլըս ։ Բոյս յաճախեալ 'ի զվէցիա՝ յանտառս, և 'ի բարձրաբերձ լերինս ․ որոյ ցօղուն ծապաղեալ ափոփ զերեսօք երկրի, հանդերձ երկայն և պարարտ Ճիւղովք ։ Տերևք սորա փոքրիկ են և անհարթ, որք խիտ առ խիտ բուսանին 'ի վերայ Ճիւղոց ։ Իսկ արմատն երկայն, փայտայինն, և թե֊ լալից ։ Այս բոյս լի է իւղով և գոյացական աղիւ, և բնութ꙳ ձգիչ և ամոքիչ ․ օգտաւէտ է 'ի գիտուածս ցաւոց յօդուածոց, և միզարգելութե, եթէ Ջրով

եռացուցեալ արբցի ։ Իսկ եթէ տերեւն փոշիացու-ցեալ արբցի խառն ընդ Ջրոյ՝ լինի դեղ ընդդէմ փոր-հարութեան, թանչից եւ աղօտութեան ։ Չափն 'ի կէս տրամէ մինչեւ ցմի ։

Լուբինուս ալպուս, լտ ։ լուբինօ, իտ ։ ամէք բակլա, տճ ։ թիրմիզ, արբ ։ եւ ըստ մեզ՝ բակլայ դառն ։ բոյս՝ յաճախեալ յեգիպտոս, երկայն իբր երկու ոտ-նաչափ, ճիւղալից, բոլորակաձեւ, ուղիղ, վարսաւոր, եւ ուղղակիր ։ Տերեւ նորա է խիտ, երկայն, եւ հեր-ձոտ, 'ի վերուստ ծովադոյն, իսկ 'ի ներքոյ սպի-տակ, եւ թաւշաւոր․ համով ըստ մասին դառն, եւ ըստ մասին տտիպ ։ Ծաղիկն սպիտակ, հասկաձեւ, եւ կարճականեթ, որ եղանէ 'ի գաղաթան, եւ 'ի ծայրս ճիւղոց հանդերձ բաժակաձեւ տաշեղք․ յետ ծաղ-կանց յաջորդէ պատեանն երկայն, պալարաձեւ, եւ վարսաւոր, մէջն չերտաւոր, յորում բաղկանան հատք տափարակ, բոլորշի, բացագոյն դեղին, եւ յայժ դառ-նահամ․ յորոց կաղմին դեղ վասն ճճեաց, որքինոյ, եւ բորբոսեն, չափն ունկի մի ընդ երկու լիտր Ջրոյ ։ Իսկ արմատն կարծր, եւ սպիտակ ։

Լուպուս, լտ․ լուբօ, իտ ։ լէօս, ֆռ ։ գուրդ, տճ ։ գայլիկ, կամ գըլլուպ, կամ զինհր, կամ հէզ-լաճ, կամ ակրհան, եւ կամ ոսիպ, արբ ։ եւ ըստ մեզ գայլ ։ Է անասուն մի գազանի 'ի չափ շան․ որոյ գը-լուխն է քառանկիւնաձեւ, աչք փայլականագոյն, մա-նաւանդ 'ի մթան․ ցռուկն երկայնաձեւ, բերանն մեծ․ ատամունքն կարծրակուռ, եւ սրածայր․ ա-կանջք կարճ․ պարանոցն այնքան կարճ է, մինչեւ չկարէ շարժել զայն, յայր տակս տալով դառնալ բոլոր մարմնովն առ 'ի հայիլ յետս․ մորթն թաւա-մազ, եւ դեղնախառն սպիտակ․ տուտն տտուար, եւ երկայնահեր ։ Բնութեամբ գժնեայ, եւ պատառօղ, եւ անյագ մասկեր քան զամենայն գազանս ։ Սա 'ի ձմե-ռան տաղտկել զայլրագին է քան յամառան, մէշտ յա-ծի շուրջ զգիւղօրէիւք ըմբռնել ընտանի անասունս․ եւ այնչափ յանդուգն է, զի բաղում անգամ գիշե-րայն մտանէ 'ի գիւղս, եւ յափշտակէ ոչխարս 'ի փարախէ իւրեանց, երբեմն եւ զմարդ ։ Սիրտ սորա օգտակար է լուսնոտութեան, եւ վերնոտութեան, չափն 'ի 20 ցորենոյ մինչեւ ց30 ։ Լեարդն ունի զգօրծա-նէութիւն 'ի փարատել զՋրգողութիւն, եւ զթոքաժե-տուն, չափն 'ի 20 ցորենոյ մինչեւ ց60 ։ Ճարպն օգ-

տակար է ջլաց օծելով։ Իսկ ոսկերքն փոշիացուցեալ, ըմպելին գեղ շահաւէտ 'ի դիպուածս կշտացաւութե, և չիաթիքա անուանեալ յօդուածացաւութեան։ Մաղձք մորթոյ գայլոց 'ի ծերանալն սովորականան. բայց 'ի կերէ յուղոյ գաւասա պատանի և 'ի բնէ ամլ-ատակ. երկնչի և փախչի 'ի հրոյ, և 'ի սաստկահնչիւն ձայնից։

Լուբուս մարինուս, լա. լուբօ մարինօ, իտ. գուրտ պալըղը, կամ տէնիզ գուրտու, տճ. տիպ սէմէքը, արբ. և ըթ մէզ՝ գայլ ծովային։ Է ձուկն ինչ շատակեր 'ի ձև սաղամոն ձկան, այլ մեծ, և ստուար քան զայն, գրեթէ կշռէ 20 լիտր. գլուխն երկայնաձև և թանձր, աչքն մեծ, ընչացքն երկայն և լայնաբաց, ատամունքն նուրբ, և սրածայր, թեփ մորթոյն կարծր և արծաթագոյն։ Իսկ միսն որ է առատ ցնդական աղիւ՝ 'ի գործ ածի և 'ի դեղ ցուրտ այտուցից, և խուլից։ 'Ի գլխոյ նորա երբեմն ելանէ քար ինչ փոքրիկ, զոր առեալ 'ի վար արկանեն ընդդէմ գլխացաւութե, կապելով ևեթ զայն 'ի վերայ վշտացնեալ մասին գլխոյ։

Լուբօ. տե՛ս լուբուս։ Դարձեալ՝ այսու անուամբ նշանակի՝ խոց կամ ախտ ինչ, որ 'ի վեր ելանէ 'ի քունքս երանաց, և 'ի սրունս։

Լուբօ մարինօ. տե՛ս լուբուս մարինուս։

Լումպրիկուս թէռռէսթրիս, լա. վէրմի տի թէռռա, կամ լօմպրիքօ, իտ. էլմինս, յն. սօղըուճան, կամ եէր գուռտու, տճ. տէսուդ, կամ սաֆիր, կամ խառաթին, կամ շահմէթիւառթ, կամ էմայուլէաթ, արբ. կիրիմ սիւռի, կամ կիրիմ աիրադ, և կամ խօյնա, պր. Է անուն ընդհանուր նշանակիչ ամենայն տեսակ ցամաքային որդանց, որք զուրկ են յոսկերաց և յարենէ, բազումք ևս զուրկ յոտից. իսկ այլք բազմոտանի քան զայլ միջատս։ Անհամար է այսոցիկ որդանց բազմութի, որք գտանին 'ի ծոց հողոյ, 'ի վերայ երեսաց հողոյ, և աւազոյ, այլև 'ի վերայ ամենատեսակ ծառոց և բուսոց։ Տեսակ ինչ նոցա կեայ 'ի մէջ փորոտեաց կենդանեաց, և մարդոյ, որ է երկայն իբր թզաչափ, նուրբ, բոլորակ, տափարակաձև, և կարմրերանգ. զոր թուրքք սօղըուճան կոչեն. յորմէ ելուզանեն զեւղ և զօգի, և 'ի գործ ածեն 'ի դեղ ցաւոց ոսկերաց, յօդուածոց, ջլաց, և այտուցից... և լուծման՝ նաև կարկամութե

Ջրաց. 'ի տեղիս տեղիս 'ի կիր առնուն նաև 'ի բժշկութիւն երիկամնախտութե, և միզարգելութե: Գիտել արժան է, եթէ յամենայն ցամաքային ձկանց կամ որդանց ելուզանել մարթ է զօգտաւոր հեղանիւթս, որովհետև առատ են ցնդական աղիւք, և իւղովք. բայց ջրայինք զուրկ են յայնպիսի ներգործութեանց և օգտաւէտութեանց:

Լուչինիա, կամ բշիլոմէլա, լտ: ուզինկինուօլօ, կամ ռուսինկնուօլօ; և կամ ռոսինկնօլօ, իտ: այէթօն, յն: պիւլպիւլ, տճ: անտէլիպ, կամ գիւայթ, և կամ ճիւմէիլ, արբ: պիւպիւրանէկ, կամ զէնտխուա, պր: ըստ մեզ՝ սոխակ. թռչուն ինչ փոքրիկ 'ի չափ ճրտուտի, որ 'ի գլուխ իւր ունի թագաձև կատարս. փետուրք նորա 'ի թիկունս են թուխ, իսկ յորովայնն գորշագոյն. սրունքն կարմրերանգ, որպէս և կտուց նորա, տուտն կարճ. իսկ ձայնն սքանչելի և զմայլեցուցիչ. սովորաբար բնակի յանտառս, և 'ի բուրաստանս. որոյ միս 'ի գործ արկանի իբր դեղ լուսնոտութե, և անդամալուծութե. իսկ լեղին ունի զմանաւոր զօրծունէութի 'ի փարատել զմառախուղս աչաց:

Լուչիուս, լտ: լուչչիօ, իտ: թուռնա պալըղը, տճ: սէմէք հաննու, արբ: և ըստ մեզ՝ կռնկաձուկն: Տեսակ ինչ ձկան՝ որ ունի զգլուխ մեծ առ համեմատութի մարմնոյ. աչքն ոսկեգոյն և փայլուն. ծնօտն զրդալաձև, ատամունք սայրասուր, թեփք մորթոյն լայն, սպիտակ և խատորնակ. տուտն կարճ. իսկ միսն սպիտակ, և համեղ, միանգամայն և դիւրամարս. որոյ սիրտն և լեարդն լինի դեղ օգտաւէտ անընդհատ տենդից. չափն 'ի 4 ցորենոյ մինչև 96. ճարպ սորա նոյնպէս օգտաւէտ է ընդդէմ հարբխոյ: Իսկ ձուն կամ ձուղքն ունի մասնաւոր զօրութիւն բառնալոյ զզզուանս ստամոքսի: 'Ի գլխոյ սորա երբեմն ելանէ քար ինչ փոքրիկ, կարծրակուռ, և սպիտակ, զոր իբր դեղ 'ի կիր առնուն ընդդէմ լուսնոտութե, երիկամնախտութե, և միզարգելութե. լուծանէ և զքար, եթէ դիցի ընդանցս նորա: Չափն 'ի 20 ցորենոյ մինչև 960:

Լօլիկօ կամ սէփիա, լտ: լօլլիճինէ, կամ սէփփիա, կամ քալամարօ, իտ: տէւթիս, յն: միւրէքէպ պալըղը, կամ սիպիա, տճ: և ըստ մեզ՝ կաղամար ձուկն, կամ մելանաձուկն: Է տեսակ մի քանկաձև

ձկան, որ կրէ 'ի ծոց իւր զսեռն հիւթ ինչ իբրև զմելան, յորմէ կոչուի և զանունն. ունի և զբազում ձեռնկս մանեկէնս, երկայնս, և փափուկս. որոց միս օգտաւէտ է ոսկորութեան սառամոքսի: Իսկ զոսկրն զոր Լատինք կոչեն՝ օսսա տի սէպիա, լուծեն 'ի փոշի մանրամաղ, և 'ի գործ արկանեն երբեմն 'ի դեղ միզարգելութեան, և սերմնականութեան:

Լօլիում, լտ: լօկլիօ, կամ ծիծանիա, իտ: տէլլէ ձէ, տճ: դասէլ, կամ զիվան, և կամ տէնքա, արբ: զիլլէմ, պր: և ըստ մեզ՝ որոմն: Է ունդ կարմրերանգ, գնտակաձև, ախորժահամ, այլ վնասաբեր. քանզի բազում անգամ պատճառէ զթմրութիւն, զպտոյտ գլխոյ, և երբեմն ևս զկիջուածս, և զդեղնութիւն երեսաց. բայց եռացուցեալ կորուսանէ զայդպիսի վնասակար որակութիւն. և 'ի ժամանակս սովամարթ է զայն փոխանակ հացի 'ի կեր առնուլ: 'Ի տեղիս տեղիս 'ի կիր առնուն նաև 'ի բժշկութիւն այտուցից, խթից, և երկամնաժեռութեան՝ ջերմացուցեալ արկանելով 'ի վերայ ցաւագնեալ մասին մարմնոյ:

Լօկլիօ. տես լօլիում:

Լօմպարտ: այսու անուամբ ըստ անդամազննաց նշանակի՝ միսն ինչ երկայն և սաուար զետեղեալ ընդ ողնայարն, և ընդ յետակողմն ամենայն կողից, ձգտեալ ընդ յետակողմն մինչև ցոսկր սրբանին:

Լօմպրիքօիտէ: Է տեսակ մի ճճւոյ՝ որ սովորաբար գոյանայ 'ի փոր կենդանւոյ. որոյ երկայնութիւն է իբր վեց, եօթն կամ ութ մատնաչափ. և երբեմն աճեցեալ լինի իբր երեսուն ատնաչափ. իսկ լայնութիւն գրչաչափ:

Լօտօ. այսու անուամբ ըստ անդամազննաց իմանի՝ բլթակ լերդի կամ թոքոց:

Լօցիօ. տես ուրինա:

Լօքհ. այս բառ կոչեցեալ յարաբացւոց, է անուն ընդհանուր նշանակիչ ամենայն թանձրամած դեղորէից՝ որք ըստ մեծի մասին օգտակարք են կրծոց և թոքոց. զորս յօրինեն բաղադրութեամբ 'ի բազմատեսակ սերմանց, ծաղկանց, արմատոց, և խժոց: Արդ՝ զսա 'ի լատին բարբառ կոչեն՝ լէնիթիւս, զոր յոյնք անուանեն էքլիմա, կամ էքլէկմա, իսկ թուրքք՝ լէպ:

Լօքհ բէթթօրալէ, իտ: Է մակարդամած հիւթ

ինչ բաղադրական, կազմեալ 'ի տասն յօրեան՝ կօմմա-
տրականթէէ, 'ի մի ունկի՝ աքուա տի տօրրանձատէ,
'ի նոյնչափ՝ աքուա տի ֆիօր տ՛ արանչիօէ. 'ի
մի և կէս ունկի՝ սիրօբբօ տի վիօլէ, և 'ի նոյնքան՝
սիրօբբօ տի քաբէլ վէնէրէէ. որ լինի դեղ օգտակար
կրծոց, և սրտի. զոր պարտ է առնուլ տասն կամ
երկոտասան անգամ յաւուրն, ըստ չափու միոյ դըր-
գալի սեղանոյ:

# Ծ

Ծէնծէրօ. տե՛ս Ծինձիպէր:

Ծէնտաուրիա, լտ: ղուրուանդակաթ, կամ ղուրուանդակա, կամ ղուրընխառուն, կամ սաթմըլա, արբ: ղուլլուամըզա, տճ: գէժուր, կամ գէձուր, և կամ բէրմէն, պր: Է արմատ հնդկային՝ երկայն, կարծր, ստուար 'ի չափ ձկոյթ մատին մարդոյ, գորշագոյն, և համեմատաբ. որ առեալ 'ի կեր արկանի ըստ օրինակի կոճապղպեղի, որպէս և բնութեամբ նման է բնութեան նորա. և 'ի մասնաւորի օգտակար է ջլային գժտաւորամարդութեան և միջահատական անդի: Բոյս սորա միջակ է ըստ ստուարութեան և ըստ երկայնութեան. ունի երկայն, և որածոյր ըստ նմանութեան տերևոց կոճապղպեղի: Չափ արմատոյն 'ի 16 ցորենոյ մինչև ց20 երեք կամ չորս անգամ յաւուրն:

Ծիկօմաթիկօ. այսու անուամբ ըստ անդամազննաց իմանի՝ ոսկր վերին ծնօտին, որ միացեալ է ընդ ակա-ւասակի գլխոյն,

Ծիմառ. տե՛ս ակրաւկօ:

Ծինծիպէր. տե՛ս Ծինձիպէր:

Ծինկօ. տե՛ս Ծինքում:

Ծինձի, կամ անխզում խնախգում, լտ: Էր տեսակ մի սաղտաձև պտղոյ՝ որոյ կեղևն կարծր է և անհարթ և սեաւ, և ունի կորիզս երկայնս, եռանկիւնաձևս, և խոռոչաւորս, յորս են գոյացութիւնք կարմրերանգ, և փայլուն, և անուշահամ. յորմէ կազմեն դեղ այգուլ ընդդէմ ախտի փքոյ, խթից, և ցաւոց որովայնի:

Ծինձիպէր կամ ամօմում ծինձիպէռ, լտ: ծէնծէրօ, իտ: զէնձէվիլ, տճ: զէնձէպիլ, կամ կէնղէպիլ, արբ: շէնկէվիր, պր: և ըստ մեզ՝ կոճապղպեղ: Արմատ երկայն, ստուար իբր մատնաչափ, տափարականձև, կիսաբոլորշի, ծնրաւոր, գորշագոյն, հաստակէտ, և տարապայման կծու, որ և զինքն ծառաքողակ կծէ· բնութիւն է խթիչ կամ գրգռիչ, որով գրգռէ զմանրաթելս ստամոքսի և ընդերաց· կազդուրէ զթուլութիւն ջլաց· զարթուցանէ զախորժակն, և դիւրաւ տայ մարսել զկերակուրն· այլև վարէ զհողմս, և փարատէ զստամոքսային հազս և զկէլթս որովայնի: Զամին 'ի գործ արկանելոյ՝ եթէ իբրև փոշի, պարտի լինել 'ի մէց ցորենոյ մինչև ց24: Իսկ եթէ իբրև խաշու, 'ի կէս տրամէ մինչև ցմի, զոր օրէն է եռացուցանել ընդ մէց ունկի ջրոյ, յաւելլով 'ի նոյն երկու տրամ շաքար· և առնուլ լինի ըմպելիս այս 'ի միջոցի 12 ժամուց: Այլև գրգռէ զերբամիջիգս լեզուի, և զարթուցանէ զթմբրեալ մասունս քմաց և բերանոյ՝ ծամելով եթէ զայն: Արդ՝ արմատս այս ունի զերկուս տեսակս, այսինքն սպիտակ, և թուխ· սպիտակն որ առաւել գտանի 'ի յաբեկեան նահանգս հնդկաստանի, առաւել ազնիւ է սակս առաւելութեն իւղոյն՝ որ 'ի նմա· ուրանոր՝ 'ի թարմ ժամանակի շաքարով քաղցրացեալ յօրինեալ, 'ի գործ արկանեն 'ի բանալ զախորժակս կերակրոց, 'ի փարատել զվքախտութիւն, և 'ի նորոգել զոյժն ակարացեալ յերկար խօթութեն: Բոյս սորա զոր լատինք կոչեն՝ արունտօ հումիլիս ֆլավաթա, նման է ըստ իրաց ինչ եղեգան· տերեւն լայն, երկայն, և կարմրախառն կանաչ· և 'ի միջոյ տերևոց ելանեն ծաղիկք ինչ լախտաձև:

Ծինքում, կամ ծինք, լտ: ծինքօ, իտ: ռուհի թութիա, կամ թութիա մատէնի, տճ: Է կիսամետաղ ինչ յաճախեալ 'ի գերմանիա, 'ի պօէմիա, յանգղիա, 'ի սաքսօնիա, և 'ի գաղղիա, ծանր յոյժ, և ամրակուռ: Երրեակ է սորա տեսակ, առաջինն կոչի մետաղացուց՝ ծինքօ օսսիտաթօ, կամ ըստ ռամկաց՝ քալամինա, կամ բիէթրա քալամինարէ, որ է դեղնախառն սպիտակ, և բծաւոր: Երկրորդն կոչի՝ ծինքօ սօլֆօրաթօ, որ է ոսկեգոյն, բայց գտանի և մոխրագոյն: Իսկ երրորդն սպիտակ է, և դիւրաւ բեկանելի: Երեքին սոքա կիզեալ 'ի հուր փոխար-

կին 'ի գոյն սպիտակ խառն դեղին, և յայնժամ սա-ձայնի՝ ֆիօր տի ծինքօ, ըստ նորոց՝ իւէոլթէոամօս-սիտօ տի ծինքօ, որ լինի դեղ ազդողական 'ի դի-պուածս լուսնոտութեան, անդամալուծութեան, վաթ-սարագոյն հաղից, ախտի ջղաց՝ և ցնցականի 'ի վե-րայ եկեղոց մանկանց. զի է խթիչ բնութք: Ձափն 'ի կէս կշիռ ցորենոյ մինչև ց20, զոր պարտ է բաղա-դրել ընդ այլ յարմարագոյն դեղորէից և կաղմել հատագեղս, և առնուլ լինի չափս այս 'ի միջոցի 24 ժամուց. առաւել քան զայս չափն՝ պատճառէ ըղ-ձայթքումն, և զլուծումն որովայնի: Գործեալ, օգտակար է 'ի դիպուածս ակարութեան, և ցաւոց աչաց. նաև բուժէ զարտասուաբեր ախտն աչաց, և արգելու զուոյցն նոցա, եթէ բաղադրիցի ընդ լիտր մի վարդի ջրոյ. և յաճախակի թացեալ զկտաւն ար-կանիցի 'ի վերայ:

Ծիպէթհում, կամ միւշէտոս ցիպէթհա, կամ ծի-պէթհա, և կմ չիւէթհա ծիբէթիում, լա: ծիպէթ-թօ, իտ: միսկ գէտիսի, տճ: Էդ գազան ինչ կատուա-նման, որոյ գլուխն է վարսաւոր, և գորշագոյն. ականջք նորա սեաւ, և երկայնաձև ըստ կատուի. ատամունքն կարծր, և սուր, հերքն 'ի պարանոցն, 'ի փորն և 'ի ձեռն են երկայն, սեաւ, և բծաւորք. իսկ մնացեալ մասն մարմնոյ բոլորովին խայտաբղէտ, այ-սինքն սպիտակ, կարմիր, և սեաւ, թաթուլքն կարճ, և մանրամազ, և իւրաքանչիւր թաթոյ ունելով զեւրեանց հնգեակ մատունս մագլաւորս, սեաւս, և սայրասուրս: Սա գտանի սովորաբար 'ի հնդիկս, 'ի չին, և յեթովպիա. մերթ ընդ մերթ բուրէ հոտ անոյշ, և պատճառն թէ մինչդամ յեօթնեկի մեղմով քերեն 'ի մարմնոյ նորա զթանձրացեալ հիւթ ինչ իւ-ղային՝ կոչեցեալ 'ի տաճկաց՝ գալէմ միսկ եաղը, որ հանգոյն քրտանց ելանէ ընդ մորթն, զոր ժողո-վեն յեղջիւր եղին՝ ամրապնդեալ խցեն զբերանն եղջեր, զի մի ցնդեսցի հոտն. և է բնութք խթիչ, որով մեղմէ զցաւս արգանդի, և որովայնի: Ձափն 'ի կէս ցորենոյ մինչև ց մի կմ ցերկու: Այլև օգտէ ցաւոց ականջաց, և յիշողութեան:

Ծուքքա. տես քուքուրպիթա:

Ծուքքատօ, կամ ծուքքէտօ. տես սաքքհարում:

Ծօլֆօ. տես սուլֆուր:

# Կ

Կաթթառիա. տե՛ս վայելչախանս.

Կալանկա, կամ մարանթկա կալանկա, լտ: Հավլըլիճան, տճ: խուլըլիճան, արբ: ալքան, պր: Է՛ արմատ հնդկային՝ կարմիր, թուխ, ստուար մատնաչափ, թելալից, ծանր, և տտպահամ. միանգամայն և դեղ ազդու ընդդէմ փքախտութե: Նախնիք 'ի կիր արկանէին շատ 'ի դիպուածս անդամալուծութե լեզուի, փորհարութե, և փսխման. իսկ այժմ յոյժ սակաւ 'ի գործ արկանի յարևմուտս:

Կալլա օրիէնթալիս, կամ դուէռքուս չէռռիս, կամ քոչչի օրիէնթալէս, կամ քօքքուլէ, լտ: կալլա տի լէվանթէ, կամ նօչէ տի կալլա, կամ կալլօցցա, իտ: քիքիս, յն: մազը, տճ: աֆս, արբ: սիւկիւհլ, պր: և ռմ մեզ՝ գխտոր: Է՛ պտղաձև ձու ինչ որդան, որ սովորաբար 'ի վեր երևի 'ի վերայ տերևոց սաղկաղնոյ, կամ կաղնոյ, որոց ոմանք են գնտակաձև 'ի չափ կաղնոյ. այլք են ձուաձև 'ի չափ ընկուզոյ. ոմանք են կակղամարմին, այլք կարծրագոյն, և ոմանք խստապինդ իբրև զփայտ, ոմանք են լերկամաշկ, այլք փշալից, և ոմանք ունին աղուամազս: Արդ՝ պտուղքս այսոքիկ սովորաբար 'ի գործ արկանին 'ի սևաւ ներկս, և 'ի նիւթ մելանի, նաև 'ի դեղորայս. զի են սեղմիչ, և խաղաղիչ բնութե, որով արգելուն զհոսումն արեան, և որովայնի, և սերմնակաթութե, և փարատեն զխէթս, և զտենդս: Զափն 'ի 20 ցորենոյ մինչև ց30. այլև ցրուեն զայտուցս յուռոս:

Կալլինա, լտ: ալէքդօրիս կամ օրնիդա, յն: թավուք, տճ: ֆարխ, արբ: մուռուղ, պր: և ռմ մեզ՝ հաւ: Է՛ թռչուն ընտանի ծանօթ ամենեցուն, որոյ միսն համեղ է և առողջարար: Ճարպ նորա է ուտելի ցորչափ թարմ է, և 'ի հնանալն՝ լինի ազդու ընդդէմ ամենայն ուռուցից պատճառելոց 'ի թթախտութէ: Ջնկրքին կողմն ստամոքսի այսր թռչնոյ՝ շրջապատեալ է թաղանթ ինչ նուրբ, և դոյզն ինչ կարծր, զոր անջատեալ չորացուցանեն՝ և 'ի կիր արկանեն

'ի դեղ միզարգելութե, դալկան, հոսման արեան, և տկարութե ստամոքսի ։ Զափն 'ի 30 ցորենոյ մինչև 960 ։ Արիւն այսր հաւու, զոր լատինք՝ կալլուս անուանեն, և յոյնք՝ արէքդօր կամ բէթինօ, և արաբք՝ տիկ, և թուրքք՝ խօռօզ, իսկ ըստ մեզ՝ աքաղաղ, առաւել անուանի է իգի խուրոյ ձևով, և գեղով քան զարտուան այլ թռչնոց, որոյ ոչ միայն չքնաղ է գոյն, և կամարաձև ձեռ, այլև կատարքն կարմիր և թագաձև, և ձայնն բարձր և ազդու, որով երգէ յորոշեալ պահս ինչ աւուրն և գիշերի, ազդ առնելով մարդկան զժամանակս ։ Սա ունի ճարպ իբրև զհաւ, յորմէ կազմեն դեղ ընդդէմ ուռուցից, կարծրութե ջլաց և ցաւոց ոսկերաց՝ օծելով ։ Բայց միսն ոչ համանէ 'ի չափ ազնուութե մսոյ հաւու ։ Սեռական անդամ նորա չորացուցեալ և փոշիացուցեալ, 'ի վար արկանեն իբր դեղ նուաղութե առողջի · չափն 'ի 40 ցորենոյ մինչև 960 ։ 'Ի լեղւոյ նորա նոյնպէս յօրինեն դեղ ազդու 'ի գինուածս ցաւոց աչաց, և բծից երեսաց ։ Իսկ յամից նորա՝ որպէս և հաւու, գարծեմք դեղ շահաւէտ ընդդէմ թունաւորութե ստամոքսի · և փորհարութե ։

Կալլուս · տես կալլինա ։

Կալպանում, կամ պուպօն կալպանում, լտ ։ կալպանօ, իտ ։ գաանը, աճ ։ կանդավաշակ, կամ խիլ · կամ հլիթ, և կամ հաուքէռէ, թրք ։ բավլմատէ, կամ էնկիւժէլթ, պր ։ և ըստ մեզ՝ քաղքան, կամ գալբանոս ։ Է խէժ թանձր, դիւրամած, մածուցիկ, սպիտակ, այլ 'ի հնանալն փոխի 'ի կարմրախառն դեղին, սաստկահոտ, ջերմահամ, միանգամայն և դառն և սեղմիչ բնութե · օգտաւէտ է ընդդէմ փքոց արգանդի, և յորդ հոսման ամսական պարտուց կանանց և սերմնականութեան ։ Զափն 'ի յերեք ցորենոյ մինչև 96, խառն ընդ այլ յարմարագոյն դեղորէից ։ Այս խէժ հոսի 'ի բնոյ կամ յոստոց ողողալից և մեծաթերթ տնկոյն կոչեցելոյ լատինական բարբառով՝ Ֆէռուլա կալպանիֆէրա, որ առհասարակ բուսանի յափրիկէ, և 'ի կողմանս ասորւոց, և ըստ ոմանց է ազգ ինչ նարդոսի ։

Կամպէրօ · տես կրանկրիօ ։

Կանկրէնա, լտ ։ քանքրէնա կամ քանքէռօ, իտ ։ քանղրէնօս, յն ։ եէրեարա, կամ եէնմէճէ, աճ ։ ագիլէ, կամ սարաս և կամ կէմիզ ֆըրսխ, պր ։ և

ըստ մեզ՝ կերցաւ, կամ քաղցկեղ. տես զայս 'ի հա. ա. երես 352:

Կաստրիթիտէ, լտ: ինֆիամմացիօնէ տէլլօ ստօմաքօ, իտ: մէհրիւքան իլ միտէհ, արբ: միտէ թութուշմասը, տճ: ըստ մեզ՝ բորբոքումն ստամոքսի. զորմէ լիագոյն ասացի հա. ա. երես 96:

Կարօֆանօ. տես քարիօֆիլլուս:

Կարկարիզմօ. տես մուռմուռ:

Կլանտուլէ, իտ: պէզ էթլէրի. կամ կէլլինճիկ էթլէրի, տճ: կուտաք, արբ: ըստ մեզ՝ մսան: Ը սպնգային և թանձր մասն ինչ մարմնոյ կենդանեաց, կարգեալ 'ի ծծել զաւելորդ փուղձ, 'ի զատանել կամ 'ի մզել զհիւթս ինչ 'ի զանգուածոյ արեան, և յառաջել զմասունս ինչ. ամէն իրի սովորաբար յոր-ջորջին այսու անուամբ այն ամենայն, որք զատա-նեն յարենէ զհիւթս ինչ յատկապէս, որպիսի է երիկամունքն, որոյ պաշտօնն սեփհական է զատա-նել զմէզն յարենէ: Եւ այսու անուամբ նշանակին որք միանգամ կարգեալ են 'ի կատարելագործել զա-ւիշն, և զմամացն, այդպիսի են միզարանակն. սպնգային մասունքն:

Կլանտուլէ ամիկտալարի, իտ: Այսու անուամբ ցուցանին նշաձև մասունք, կամ սպնգային մասունք, որք են երկու կարմրերանգ մարմինք կողմնագիծ ձգեալք 'ի քմաց, և զետեղեալք յաջ և յահեակ ստ-որմատովք լեզուի, որք միանգամայն առձայնին կա-փինէ:

Կլանտուլէ բարօթիտի, իտ: գուլաք պէզէթլէրի, տճ: այդողիկ սպնգային մասունք կան զետեղեալք 'ի մէջ ստորասքին ականջաց, ընդ ստորոտով բաշկի, և տարրիջեալ մինչև ցներքին մասունս ծամելեաց:

Կլանտուլէ բռօսթռաթէ, լտ. տես վէշիքուլառէ սէմինալէս:

Կլանտուլէ թիրօիտէ. անուամբս ցուցանի վահա-նաձև մասունք:

Կլանտուլէ լինֆաթիչէ, իտ: նէմթէն տամարլարն պէզէթլէրի, տճ: այսու անուամբ իմանին սպնգային մասունք ինչ աւիշկեան անօթոց:

Կլանտուլէ մաթռիքէ. տես ութէռուս:

Կլանտուլէ մաչէլլարի, իտ: չէյնէ պէզէթլէրի. տճ: անուամբս այս նշանակի մասունք կամ սպնգային մասունք ինչ ծնօտից:

Կլանտուլէ սալիվառի, իտ: սալիվա ադըրանձը պէգձեթլէրի, տճ: որով նշանակի լորձունահոս մասունք, կամ սպնգային մասունք:

Կլանտուլէ ռէլլէ ֆաուչի. տես Թօնսիլլէ:

Կլանտուլէ քօնկլօմէռաթէ: Է գնտակաձև մասունք, կամ սպնգային մասունք, կոչի և կլանտուլէ քօնկլօպաթէ, այսինքն կուտակեալ 'ի բազմաց, կամ գնտակաձև հաւաքեալ:

Կլավքօմա. անուանքս այս իմանի՝ ախտ ինչ աչաց գոյացեալ 'ի թանձրամածութէ խաղողեայ թաղանթոյն:

Կլէչէրրօհէյա, կամ տուլչիս ռատիքս, և կամ լիգուրիթիա, լտ: լիգուէրիցիա, կամ լիկօրիցիա, կմ րէկօլիցիա, իտ: լիգօրիզիա, յն: միանքէօքիւ, կամ տիանքէօքիւ, տճ: շիրին պիեան, կամ սիւթան, պր: և ըստ մեզ՝ մատախատակ, կամ մատուտակ, և կամ մարուխ: Է բոյս բազմացօղուն, երկայն իբր երեք կմ չորս ոտնաչափ՝ յաճախեալ 'ի սպանիա, 'ի բոլոր իտալիա, 'ի գաղղիա, 'ի գերմանիա, և 'ի յանապատս աժտէրխանու յարևելեան կողմն էթիլ գետոյն: Տերևք նորա են երկայն, մածուցիկ, պայծառ կանաչ, փայլուն, և տարահամ: Ծաղիկն ծիրանագոյն, և ընդային. և փոխանակ պտղոյ արտադրէ պատեան ինչ կարճ, տափարակ, պալարալից, և կարմրախատն գեղին, ունելով 'ի միջի սերմունս երկայնաձևս: Իսկ արմատն երկայն, սուսեր իբր մատնաչափ, կնձռալից, բազմաճիւղ, գորշագոյն, մածուցիկ, քաղցրահամ, միանգամայն և դեղ ապդողական 'ի դիպուածս ջրգողութն, բորբոսութն, սերմնականութն, ախտի դաղցիականի, և ցաւոց յօդուածոց. որ 'ի գործ արկանի ածորաբար 'ի մի լիտր ջրոյն երկու տրամ: Յարմատոյ սորա դեղագործք եւրոպիոյ յօրինեն նիւթ ինչ սևաւ, թանձրամած, փայլուն, և քաղցրահամ, միանգամայն և դեղ ընդդէմ ցաւոց կրծոց, հազից, և թանձրամածութեան տողունից. չափն 'ի կէս տրամէ մինչև ցերկու և կէս յաւուրն՝ խառն ընդայլ յարմարագոյն դեղորէից:

Կլօսսիթիտէ, լտ: տիլ թութուշմասը, տճ: և ըստ մեզ՝ բորբոքումն լեզուի. տես հտ. ա. երես 67:

Կուանէաքում, կամ լինում սանթում, և կամ լինում կուանէաչի, լտ: լէնիօ սանթօ, կամ կուանէաքօ, իտ, բէնյըլամայէր աղանձը, տճ: եաշամըլ էմլիա,

արք ։ և ըստ մեզ Թարգմանագրի՝ Սճ փայտ ։ Է ծառ մեծ 'ի չափ մերումն ընկուզենւոյ, յաճախեալ յամերիկա, և 'ի հնդիկս, որոյ կեղևն ստուար է, և խժային ։ փայտն կարծրապինդ, խայտաճամուկ, մթին դեղին, տտպահամ, և եւղային, միանգամայն քրտնաբեր և խթիչ բնութե̃, և մաքրիչ արեան ։ զոր եփեալ 'ի ջուր, և արբուցեալ, դեղ է ախտից մորթոց, գաղղիականի, ելեփանդականի, ցաւոց յօդուածոց, և ոտնացաւութե̃, և ձեռնացաւութե̃, և է անընդունակ ցեցոյ ։ յորմէ և սովոր են յամերիկա, յանգղիա, և 'ի տաղանիս կազմել ճախարակս, և զայլ գործիս այսպիսիս ։ Տերև նորա երկայն է և բոլորակաձև ։ Ծաղիկն փնջաւոր, և հովանաձև, ոսկեգոյն դեղին և կանաչականթ ։ Իսկ պտուղն գորշագոյն, բոլորակ և ստուար 'ի չափ շագանակի ։ 'Ի ծառոյ աստի արտահանեն խէժ ինչ մթին կարմիր, փայլուն, բեկանուտ, հոտաւէտ, և տտպահամ, զոր լատինք՝ կոչեն կումմի կամ ռեզինա կուայեակօ ։ յորմէ յօրինեն դեղ ազդողական ընդդէմ չիամթիկոս անուանեալ յօդուածացաւութե̃, և ընդդէմ վերոյիշեալ ախտից ։ Չափն 'ի կէս տրամէ մինչև ցմի և կէս յաւուրն՝ խառն ընդ մի լիտր սիէռօ տի լաթթէի ։ Իսկ չափ փայտին պարտի լինել երկու բուծիլլի, յերկու լիտր և 'ի տասն ունկի ջրոյ, զոր օրէն է եփել եռացմամբ իբր քառորդ մի ժամու, յետ զտելոյ պարտ է առնուլ ըստ չափու երից ունկւոց երիցս կամ չորիցս անգամ յաւուրն ։ Զնոյն ներգործութի̃ ունի և սորա ոգին կոչեցեալ 'ի նոցանէ՝ Թինթուրա վօլաթիլէ տի կոմմա կուայեակօ ։ զոր պարտ է առնուլ 2. 3 անգամ յաւուրն, ըստ չափու միոյ փոքրիկ դրգալի ։

Կուլթթա, լտ ։ կօչ չիա, իտ ։ տամլա, տճ ։ գաթրա, կամ չէլլէ, արբ ։ կէքէյկ, կամ չէկրէ, և կամ սիրիշկ, պր ։ և ըստ մեզ՝ կաթիլ կամ շիթ, որով իմանամք զկաթուած մի գուղնամասնեայ ն և իցէ հեղանիւթոց ։ յորոց վաթսուն կաթուածոց կշռի ըստ բժշկաց մի ամբողջ տրամ, ուստի մի շիթ կամ կաթիլ է զուգակշիռ միոյ ցորենոյ ։

Կուլթթա կամպա ։ տե՛ս կումմի կուլթթա ։

Կումմի, լտ ։ կօմմա, իտ ։ զամք, տճ ։ սամղ, արբ ։ զէնճէրաւ, կամ զիւնչ, կամ սիգպինէ, կմ չէլիմ, և կամ գիւնճիտէ, պր ։ և ըստ մեզ՝ խէժ, կմ խիժ, կամ հոյժ, կամ կուէժ, կամ ռէտին, կամ

հոյզ, և կամ հայծ ։ Է անուն ընդհանուր նշանակիչ ամենայն թանձրամած, պարարտ և կպչուն հիւթոց եղուզելոց 'ի ծառոց, 'ի տնկոց, են. որոց են բազում տեսակք. բայց մեք առաւել զընտրագոյնս և զօգտաւէտագոյնս պատշաճ համարեցաք կարգել 'ի ստորև ։

Կուամի ամմոնիաքում, կամ համմոնիաքում, լա ։ կօմմիս ամմօնիաքա, իտ ։ ամմէթա, կամ էբէ, յն ։ չատր ուշաղը, տճ ։ գէլէխ, արբ ։ օշաղվիչա, պր ։ և ըստ մեզ՝ աւշակ, կամ օշակ ։ Է խէժ թանձրամած, դեղնախառն սպիտակ, բեկանուտ, թափանցիկ, դիւրավառ, և դիւրալոյծ, որ արկեալ 'ի քացախ կամ 'ի ջուր ջերմ փաղփաղակի լուծանի ։ Սա թէպէտ չէ այնքան ջերմ և սաստկահոտ՝ որպէս գալբանոս, սակայն ըստ մասին օգտաւէտուն ազնուագոյն է քան զայն, մանաւանդ որոց են վիճակեալ մաղասային բնութե. ունի ևս մասնաւոր գործունէութիւն 'ի բանալ զխցանս լերդի, փայծեղան, և միջընդերաց, որք սովոր են գալ զկնի տենդից, և այլոց սմին նման տոչորիչ ախտից. այլ և գրգռէ զդաշտանս, և մեղմէ զհազս, և զցաւս կրծոց ։ Գտանի և այլ տեսակ օշակի, որ է աժգոյն կարմիր, չեղջակոյտ և աւազուտ, որ ստորին է յոյժ քան զայն ։ Այլ գիտել արժան է, զի նախաւանդեալ օշակն սովորաբար գտանի յափրիկէ, և 'ի կողմանս լիբիոյ. և է բնութե փոքր ինչ խթիչ. չափն 'ի 12 ցորենոյ մինչև ցմի տրամ ամբողջ ։

Կուամի անիմէ. տես անիմէ ։

Կուամի արապիքում կամ կուամի սէնէկալ, լա ։ կօմմիս արապիքա, իտ ։ զամք առապի, տճ ։ ըստ մեզ՝ խէժ արաբիոյ ։ Է սպիտակ, փայլուն և մածուցիկ խէժ ինչ. որ 'ի սուղ ժամանակի ծաւալեցաւ յեւրոպիա և յասիա, յորմէ գործեմք դեղ ազդողական 'ի դիպուածս փորհարութե, հարբեխոյ, իջուածոց, հոսման արեան, զայրացեալ թանչից, միզարգելութե, և ախտից կրծոց. զի է թուլացուցիչ, և միզաբեր բնութե ։ Չափն 'ի 12 ցորենոյ մինչև ց40, խառն ընդ այլ յարմարագոյն դեղորէից. տուեալ նորա զոր լատինք՝ աքաչիա էճիբթիաքա կամ միմօսա նիլօթիքա կոչեն, է ճշտագալար և փշալից ։ Տերեւն երկայն, նեղ, և խորտաբորտ ։ Ծաղիկն սպիտակ, փոքրիկ, և խուռնջաւոր, ունելով 'ի միջի սեւանակ փոքրիկ շրջա-

պատեալ սպիտակ մանրաթելովք, որ 'ի սկզբան անդ-կանաչ է, այլ 'ի հասանելն փոխի 'ի գոյն թառա-մեալ տերևոյ: Իսկ պտուղն գառնահամ, և երկայն ըստ նմանութեան լուբիասի, ունի և սերմն սպիտակ և կարծր:

Կումմի կալպանում. տե՛ս կալպանում:

Կումմի կութթա, կամ կութթա կամպա, կամ կութթա քանպօճիա, կամ կութթա կամանտրա, և կամ կումմի բէրուվիանում, լտ: կօմմա կութթա, իտ: կօմ կիւթ, գղղ: գամմաթրան, պր: կութա կամպա, տճ: Եւ ըստ մեզ՝ դեղին խէժաներկ: Խէժ ստուարամած, հաստատուն, կոր, կարմրախառն դե-ղին, դիւրավառ, և դիւրալոյծ, միանգամայն և դեղ ջրգողութեան, և պնդութեան որովայնի, որ և լու-ծէ հզօրեղապէս քերելով, և 'ի դուրս վանելով զաղ-տեղութիւնս, զջուրս, և զճճիս որովայնի: Չափն 'ի յութ ցորենոյ մինչև ցտասն: Առ բժիշկս արա-բիոյ, և պարսից յաճախ 'ի վար արկանի 'ի լուծո-ղական և 'ի ջրահան դեղորայս, բայց յեւրոպացւոց դուն ուրեք: Ծառ սորա զոր չտեսինք կոչեն՝ լաթհէի-ուա, և ՟Ը ոմանց քառաքարուլի աքօսթաէ՝ է երկայ-նագոյն, ստուար իբր բաղկաչափ, փշալից, և բազմոստեան, որ պատառելով ելանէ կծառով և և զինչ կաթն իբրև զքաղեղն: Տերևն նման է տերևոց ակմբան վիմական: Այս ծառ յաճախ բուսանի յա-մերիկա և 'ի մալապար. նայաւէտ 'ի քամպօճիա. որոյ խէժ վարի և 'ի դեղին ներկս:

Կումմի կուաեաքում. տե՛ս կուաեաքում:

Կումմի սակաբէնում. տե՛ս սակաբէնում:

Կումմի սէնէկալ. տե՛ս կումմի արապիքում:

Կումմի տռականթէ. տե՛ս թրակաքանթհում.

Կումմի քինօ. տե՛ս կօմմա քինօ:

Կրամէն, լտ: կրամինա, իտ: այրըք, տճ: ինձիլ, կամ ինխիլ, արբ: կէօրկիա, պր: Եւ ըստ մեզ՝ սէզ: Է խոտ երկայն, նրբատերև, բոլորակահասկ և տարածական, յաճախեալ յամենայն ուրեք 'ի մարգս, և 'ի դաշտավայրս, որոյ արմատն կոչի 'ի բարբառ արաբացւոց՝ ըռքլ ինձիլ, կամ չռքլ ինձիլ. իսկ ըստ թուրքաց՝ այրըք քէօքի, որ է երկայնաձիգ, սպի-տակ՝ հարեալ 'ի գոյն դեղին, և ծնրաւոր. միանգա-մայն և դեղ ազդու ընդդէմ ամենակերպ ջերմնատո-ջոր ախտից, և խցանաց լերդի. զի է զովացուցիչ.

բացողական, և միզաբեր։ Սովորաբար խաշուն տարա 'ի կիր արկանի. չափն 'ի չորս տրամէ մինչև ց60 խառն ընդ երկու լիտր ջրոյ։

Կրանալթա. տես բուռնիքա։

Կրանալ, լա։ սապպարա, արբ։ Բոյս մշտադալար, մեծատերև, հիւթալից, դառնահամ, և թթուաւոր, որ սովորաբար բուսանի յամերիկա, և յափրիկէ, զոր ամէայ կախեն առ պարսպօք և որմովք տանց իւրեանց. և է դեղ ապացողական ընդդէմ ցաւոց գլխոյ, և ուռուցից՝ կապելով 'ի վերայ վշտագնեալ մասին մարմնոյ։

Կրանում, լա։ կրանօ, իտ։ տես թրիթիքում։ Դարձեալ՝ այսու անուամբ, ըստ դեղածախից ցուցանի քանակութիւն ծանրութեան միոյ հատի միջակ ցորենոյ, ուստի 'ի մի տրամն պարունակի 60 ցորեան։ Այլ գիտել արժան է, եթէ սովորաբար եդեալ զայս նշան (ցր), իմանամք զչափ միոյ ցորենոյ։

Կրանում թինթօրում. տես քերմէզ։

Կրանկըխօ. տես քանչէր։ Դարձեալ՝ իմանի բաուխս գելուածն կամ կծկուածն մկանանց։

Կրասսումէ կամ կրասսօ, և կամ սէմօ, իտ։ սեմում, լա։ իչ եաղը, թճ։ շահմ, արբ։ բիյիւզէ անէնգ, ակ։ և ըստ մեզ՝ Ճարպ, որով իմանի՝ ներքին պարարտագոյն, և իւղալից մասն արեան ո և իցէ կենդանեաց, թորեալ յերակաց սակս փափկապէս պահելոյ զթերթս երակաց, որք և յետ այնորիկ 'ի վերայ եկեալ մաշկօքն թանձրացեալ խառնեն։ Արդ՝ Ճարպս այս ունի զմասնաւոր ներգործութիւն, որով 'ի գիտուածս սովոր անդրէն յետս ձգեալ մնուցանէ զմասունս ածելով զջերմութիւն բնական. ամէն իրի համարի դող մթերք ինչ յաւելուածոց կերակրեղինաց պահեալ վասն հարկաւոր ժամանակի։

Կրացխա տէի. տես 'ի ներքոյ։

Կրացիօլա, կամ կռաթիօլա, կամ կրացխա տէի, կամ ըրմնէտիում, և կամ չէնթաուրօիտէս, լա։ խիւսաւիէրայի օթու, կամ թէշէքիւր օթու, թճ։ և ըստ մեզ թարգմանագրի՝ խոտ շնորհաց, որոյ ցողունն բարձրանայ յերկրէ իբր մի և կէս թմնաչափ։ Տերևք երկայն, և եզերահերձ, նման ըստ իմիք տերևոց զոպայի։ Ծաղիկն եղանէ առ կանթիւ տերևոց, և է ծիրանագոյն, բայց յոմանս տեղիս ըլինի նաև սպիտակագոյն, և դեղնագոյն։ Պտուղն բոլորակ կամ

ձուաձև, և խոռոչաւոր, յորում են սերմանք նորին։ իսկ արմատն սոուար 'ի չափ գրչի, ծնրաւոր, թե-ւալից, սպիտակ, և դառնագին։ Այս խոտ յաճախ բուսանի յիգալիս, 'ի դաշտս, 'ի մարգագետինս, և յայլ տեղիս խոնաւուտս։ ունի սա զօրութիւն լուծո-ղական և թուլացուցիչ զօրութեան եթէ 'ի վերուստ, և եթէ 'ի ստորուստ, որով տապալին զբորբոտուես, զորքինս, և զայլ հնագոյն ախտս մորթոյ։ օգտա-ւէտ է և 'ի գիպուածս մոլեգնութեան, յօդուածա-ցաւութեան, ջրգողութեան, և անկարգ տենդից։ Չափն 'ի 24 կշիռ ցորենոյ մինչև ց30։ յաւուրն 'ի պահ ա-ռաւօտու։ 'Ի խոտոյ սորա արտահանեն նաև զգոյա-ցութիւն, զոր եւրոպացիք կոչեն՝ էսթրաթթօ տի կրա-ցիօլա, յորմէ գործեն դեղ աղջողական ընդդէմ վե-րոյիշեալ ախտից, և հնագոյն վիրաց։ Չափն 'ի կէս տրամէ մինչև ցմի՝ խառն ընդ հասարակ դաղջ ջրոյ։

Կրիլլուս, լտ։ կռիլլօ, իտ։ կրութլաք, կամ չիր-լաք, թճ։ և բառ մեզ՝ ծղրիդ։ Է կենդանի փոքրիկ և ճռճռող, որոյ գլուխն է բոլորշի, աչքն սեաւ, որպէս և մարմին նորա, որովայնն երկայն, իսկ տուտն կարճ, զոր փոշիացուցեալ 'ի սանդ, և արբուցեալ, լուծանէ զաւազունս կրծոց։ քանզի սաստէ միզով, և աղիւ։ Չափն 'ի 10 ցորենոյ մինչև ց20։ ունի և զմանաւոր գործունէութիւն 'ի զօրացուցանել զտե-սութիւն, եթէ ձմլեալ դիցի 'ի վերայ աչաց։ Նոյն-պէս և օգտաւէտ է ընդդէմ տառուցից, և ցաւոց ականջաց։ Այս կենդանի սովոր բնակէ 'ի ծակտիս որմոց, և վառարանաց, և 'ի գիշերի զճթճթ ձայնս արձակէ։

Կրոուս, լտ։ կրոու, կամ կասուս, և կամ կռուէ, իտ։ գխարկի, կամ ըէհէվ, կամ խապէրձէլ, կամ էպուխուրեան, և կամ էպուայրաս, արբ։ ֆէավէ, կամ գիւլէանկ, կամ ֆիստն, և կամ գիւլտշէնկ, պր։ թուանա, թճ։ և բառ մեզ՝ կռունկն։ Է թռչուն երամոզկին ընթացող քաղչածանօթ ամենեցուն։ որոյ միս օգտակար է ընդդէմ խթանաց որովայնի, միան-գամայն և զօրացուցանէ զջիղս, և առատացուցանէ զսաղմն, և բառնայ զձայնս մարդոյ։ Ջիլուխ նորա չո-րացուցեալ, կամ կիզեալ 'ի հուր, և փոշիացուցեալ և արբուցեալ, դեղ է ընդդէմ քաղցկեղի, խլխայթի, և այլոց պայտախտ դժնեայ վիրաց։ Լեղի սորա չա-

հաւէտ է ընդդէմ ախտից աչաց, եթէ թացեալ կտաւով արկցի 'ի վերայ։ Իսկ ճարպն 'ի կիր արկանի 'ի դեղ կարծրապինդ այտուցից, և խցանաց ականջաց։

Կօթթա · տես 'ի հտ. ա. երես 285։

Կօթթա ռիսալիթա · տես հտ. ա. երես 285։

Կօթթա · տես բօտակրա։

Կօմմա · տես կումմի։ Դարձեալ՝ նշանակէ ազգ ինչ գաղղիական ախտի։

Կօմմա ամմօնիաքա · տես կումմի ամմօնիաքում։

Կօմմա արապիքա · տես կումմի արապիքում։

Կօմմա կալպանօ · տես կալպանում։

Կօմմա կուաեաքօ · տես կուաեաքում։

Կօմմա կօթթա · տես կումմի կութթա։

Կօմմա սակապէնօ · տես կումմի սակապէնում։

Կօմմա քինօ կամ կօմմէ տի քինօ, իտ. կումմի քինօ, կամ կումմի ռուպռում ասթրինճէնս, լտ. Է խէժ ինչ կարծր, մթին կարմիր, փայլուն, դիւրափխրելի, և դիւրալոյծ, զոր արկեալ յոգի գինւոյ՝ փութով լուծանի. համ նորա չէ ինչ տարբեր 'ի համոյ ալոի քինայի. զօրութիւն նորա է ձգօղ և սեղմիչ, որով արգելու զհոսումն արեան, զփորհարութիւն, զլուծումն որովայնի, այլ և խափանէ զյորդառատ հոսումն միզի, քրտանց, թանչից, և Ֆիօր ալպանքօ անուանեալ ախտի, մանաւանդ յորժամ խառնի ընդ դոյզն ինչ ափիոնի, կամ գիտորի։ Նոյնպէս օգտաւէտ է 'ի դիպուածս միջահատական տենդի։ Չափն 'ի 20 ցորենոյ մինչև ց30։ Իսկ եթէ փոշիացուցեալ ցանիցի 'ի վերայ նեխեալ վիրաց, մաքրեալ ցամաքեցուցանէ զշարաւալից հիւթս։ Ծառ սորա՝ զոր լատինք կոչեն էուքալիբթուս ռէզինի ֆէռա, տասալից է, և բազմամճիւղ։ Սովորաբար գտանի յափրիկէ, 'ի սէնէկալ, յեզերս գետոյ։

Կօնօրէա, իտ. Թօհում աքմաար, թճ. գուրհաթիլ մէնի, արբ. և ըստ մեզ՝ սերմնականութիւն։ Զորմէ ընդլայն յիշատակեցաք, հտ. ա. երես 393։

Կօչչիա · տես կութթա։

Կօչչիա տ'էլլէր, կամ լիգուօրէ անթիարթրիթէքօ, իտ. Է ոգիաւոր հեղանիւթ ինչ, կազմեալ յերկու դրամ՝ լիգուօր անօտինօէ տ'հօֆֆմաննն, և 'ի նոյնչափ սպիրիթօ տի քօռնօ տի չէռվօ սուչչինաթօ է։ Զօրաւոր է յոյժ դեղս 'ի դիպուածս քորքօճէ

և հնազդոյն յօդուածացաւութեանց, և ախտից ջղաց. այլ և օգտէ ոտնատուութեան, և դողդոջման ձեռաց, և ասից՝ առթելոյ 'ի թուլութենէ ջլաց։ Զափն 'ի 20 ցորենոյ մինչև ց40 յաւուրն, միայն թէ յարատևել արժան է յայդ գոնէ մինչև 'ի քառասուն օր։

Կոչչէ րեալի տ' ինկիլթեռռա, իտ։ Էլիսիր ապօ– պլէքթիքում, կմ՝ կութթա անկլիքա րեձիա, լտ։ Է ոգիաւոր հեղանիւթ ինչ բաղադրական, յօրինեալ 'ի կէս լիտր ուժգին ոգւոյ գինւոյ. և 'ի մի և կէս տրամ՝ իւղոյ կինամոնի, կմ՝ մեխակի, զոր մարթ է 'ի կիր արկանել 'ի դիպուածս իջուածոց, անդամա– լուծութեան, լուսնոտութե; տաժանաւոր տենդից, և թալկացման սրտից, և կամ տարափոխիկ ջերմախ– տից, և այլ ամենայն ախտից պատճառելոց 'ի տկա– րութէ. զի է խթիչ բնութ̅։ Զափն 'ի չորս ցորե– նոյ մինչև ց20 խառն ընդ ջրոյ մելիսաէի., կամ ծաղ– կի նարնջոյ։

## Հ

Հաէմաթէմէսիս. տես փօմիթօ տի սանկուէ։

Հաէմօբթիսիս. տես սբուտօ տի սանկուէ։

Հալէք, կամ հալէքաւս, և կամ հառէնկուս, լտ։ արինկա, իտ։ րինկա պալըղը, տճ։ և ըստ մեզ՝ աւինը։ Է ձուկն ինչ եւրոպիոյ, կամ գանեաց. որոյ թեփն կարծր է և կապտագոյն. միս նորա փա– փուկ է և համեղ. յորմէ չորացուցեալ 'ի ծխալից տեղիս, և եդեալ յանօթս առաքեն աստ և անդ։ Սա ունի զմասնաւոր գործունէութի առ 'ի բառ– նալ զզզուանս ստամոքսի, և 'ի բուժել զմիզարգելու– թի։ Զսա մինչդեռ է թարմ, 'ի կիր առնուն անդէն 'ի դեղ եռօրեայ, և քառօրեայ տենդից. զի հատա– նեն զայն ընդ մէջ, և կապեն 'ի վերայ զարկի բազ– կի ախտացելոյն, որով և բժշկի։

Հէբաթիս. տես հէբար։

Հէբաթիքա, կամ լիքէն, կամ մարքանթիա բօլի– մօրֆա, լտ։ էբաթիքա, իտ։ ճիկէր օթու, տճ։ և ըստ մեզ թարգմանչացն՝ լերդախոտ. տերևք սորա

են սուսեր, հերձոտ, և հիւթալից. գոյնն 'ի վերին երեսս մթին կարմիր, որպէս և ցօղուն նորա. իսկ 'ի ներքոյ խունկ իբր սպիտակ: Ծաղիկն ստորաձև և գալարագոյն: Սա յաճախ գտանի 'ի խոնաւուտս 'ի քարուտս, և 'ի հովանաւոր տեղիս. օգտաւէտ է ընդ-դէմ խոցանաց փայծեղան և լերդի:

Հէբար, կմ՛ եէքուր, լտ. ֆէկաթօ, կմ՛ էբաթէ իտ. իբատ., յն. քարա Ճիէր, տճ. գիպըթ, արբ. քէպիտ պր. և ըստ մեզ՝ լեարդ: Է սա մի 'ի գլխաւոր և 'ի նախապատիւ անդամոց, բաղկացեալ յընդերուստ մսոյ զօրէն արեան մածելոյ, զորով պատեալ կայ մաշկ նրբագոյն, և փարեալ է զխախացոցաւ, և ամէն հաղորդէ նմա զջերմութիւն առ մարսումն կերակրոց, և սակս այսր պատճառի է միանգամայն սատար և նպաստամատոյց առ կազմութիւն արեան: Քանզի լուծանէ զկերակուրս 'ի մաղձոյ, և անտի յառաջին սկզբնաւորութիւն արեան, կմ՛ 'ի զանգուած իւրն տրամադրեալ 'ի փոխարկումն յարիւն: Այլ պատշաճագոյն համարիմ ասել 'ի ծանուցանել՝ զի 'ի սոյն զանգուածոյ որ է նիւթ չորից խառնուածոց՝ ջերմագին և սամկագոյն մասունքն փոխարկին 'ի նիւթ արեան. որ անսակաւորեալ 'ի սրտի՝ տրամաբաշխի յերակունս. բայց որ ցուրտ և չորագոյն են, անդրափոխին 'ի նիւթ սեաւ մաղձի. որոյ օթևանն սեփական՝ է պարկն փայծեղան: Այլ նիւթք ջերմ և չոր փոխարկին 'ի դեղին մաղձ, որոյ բնակարանն իսկական՝ է պարկն լեղւոյ. հուսկ յետոյ ցրտագոյն և գիճագին մասունքն փոխարկին 'ի գոյացութիւն մաղասի. որոյ բաղմարանն յատկական՝ է թոքն:

Հելենիում, կամ էնուլա հելենիում, կամ՝ էլէնիօն, կամ էնուլա քամփանա, լտ. էնուլա կամ էլէնիօ, և կամ էնուլա քամփանա, իտ. ինուրղ օթու, կամ ռասէն, և կամ անդզ, տճ. ըռասէն, պր. ըռասըլ Ճէնէահ, կմ՛ ըռասըլ ռասան, կմ՛ գայմուլս, և կամ նանէխ, արբ. Է բոյս յազգէ ասթէր ծնանեալ բուսոյ, որ արձակէ յարմատոյ զբազում տերևս քնքուշս, որոց ձևք նման են ըստ իմիք տերևոց ապիտակ փղոմոսի, բայց լայն են և երկայն քան զնա. գոյն նոցա 'ի վերին երեսս աժգոյն կանաչ. իսկ 'ի ներքոյ փոքր մի սպիտակ: Ցօղուն նորա թաւամազ, երկայն իբր չորս կամ հինգ ոտնաչափ, ուղիղ, կարմրերանգ, մէջն դատարկ, և Ճիւղալից: Ծաղիկն

լայնաբաց, ձուաձգայթաձեւ, գեղնագոյն, և սակա-ւահատ: Յետ ծաղկանց արտադրէ սերմունս երկայ-նաձեւս, սպիտակս, հիւթալիրս, և բամբակալիցս: Իսկ արմատն երկայն, ստուար, և սպիտակ հոտա-ւէտ, 'ի ներքուստ սպիտակ, իսկ արտաքուստ մթին գեղին. համ նորա դառն և տտիպ, միանգամայն և դեղ ազդու ընդդէմ ջղային դժուարամարսութեան, սքօռբութոյ, ջրգողութե, ախտից կանանց, խոնաւ-շնչարգելութե, և խածուածոց կատաղի շանց. զի է խթէիչ բնութ.: Ծաղկի 'ի կէս տարւոյ մինչև ցմի՛ կմ՛ ցերկու յաւուրն: 'Ի բուսոյ աստի արտահանեն և զդղյացութին, զոր իտալք էսթրաթթօ տի էնու-լա քամբանա կոչեն, որ լինի դեղ ազդու ընդդէմ վերոյիշեալ ախտից: Նոյնպէս կազմեն 'ի սմանէ նաև զշարապն, և զքաղցրաւենին, որ են դեղ յոյժ օգտաւէտ 'ի դիպուածս ախտից կրծոց: Յաճախ բուսանի յեգալէա, 'ի գերմանիա, 'ի խոնաւուտ և 'ի հովանաւոր տեղիս:

Հելլէպօռուս, լա: էլլէպօռօ, իտ: չէօփլէմէճիկ, կամ զառաձա օթ.ճուկ, թճ: և ըստ մեզ՝ եղբօրոտիկ. կամ կոճ վճայցի: Է բոյս ինչ բազմամեայ, որոյ երեւելին և գործունեայն 'ի լատինացւոց կոչի՝ հել-լէպօռուս նիճէռ., 'ի թուրքաց գառա չէօփլէմէճիկ. յարաբացւոց՝ խարխալ. իսկ ըստ մեզ՝ սեաւ եղբօ-րօտիկ. ցօղունն սորա է երկայն, հիւթալից, և ծիրա-նագոյն՝ նման ըստ իմիք բանուկեղուլայի: Տերեւքն ստուարք, կարծր, յղկեալք, հերձոտք, և բացեալք ըստ նմանութեան մարդկային ձեռաց, որք ինն ինն բուսանին 'ի վերայ միոյ խայտաբղէտ և հիւթալից կանթի: Ծաղիկն եւանէ առ կանթիւ տերեւոյն և 'ի ծայրս ցօղնոյ հանդերձ գեղնագոյն ասէջիւք, և է լայնաբաց, հինգթերթեան, թագաձեւ, և սպիտակ հարեւալ 'ի գոյն կարմիր: Զկնի ծաղկանց յաջորդէ պտուղն գնտակաձեւ, և թաղանթապատ, և 'ի միջի պարունակէ զնուրբ, զբոլորշի և զսեաւ սերմունս բազմաթիւս իբրև զստխ: Իսկ արմատն խորտաբորտ, տատալից, ծնրաւոր, թելալից, և սեւագոյն գեղին, այլ 'ի հնանալն և 'ի չորանալն փոխի 'ի մթին դե-ղին. համ նորա դառն է միանգամայն և տտիպ և բնութ. թուլացուցիչ. յորմէ կազմի էսթրաթթօ տի էլլէպօռօ նէռօ անուանեալ դղյացութին. զոր գտցես 'ի տառն՝ Է. 'ի կարգի իւրում: Այս սեաւ եղբօ-

թուփ յոլովագոյնս գտանի 'ի յունաստան, նա յաւէտ 'ի լեառն լիբանան։

Հէմաթիթէս, կամ լափիս սանկուինէուս, լտ։ ամաթիթա, կամ էմաթիթա, և կամ մաթիթա, իտ։ գանթաշը, տճ։ սանտալ հաճիտ, արբ։ և ըստ մեզ՝ մատիտն, կամ արիւնաքար, որ է կանաչ հարեալ 'ի գոյն կարմիր, և բծաւորց։ Սա ելանէ 'ի հանքից երկաթոյ, զոր ակնագործք 'ի կիր առնուն 'ի քար մատանւոյ, և յայլ ակեաւ, որպէս և վիրահաւաք 'ի յարգելուլ զյորդառատ հոսումն արեան, կամ թանչից. զի է սեղմիչ, և ձգօղ բնութբ։

Հէմիքրանիա, լտ։ էմիքրանիա, իտ։ եարըմ պաշտըլըղը, տճ։ շաթիքա, արբ։ և ըստ մեզ՝ անգար. է ցաւ կիսոյ գլխոյն. տես զայսմանէ հտ. ա. երես 249։ Փոխանակ աբգարի՝ այլ օրինակ գրէ՝ անգար։

Հէմոռռօիտէս, լտ։ էմոռռօիտէ, կամ մօռիչէ, և կամ մօռիչի, իտ։ մաեասըլ, տճ։ պէվասիր, կամ պասուր, արբ։ և ըստ մեզ՝ թթախտութի, կամ թանչք. զորմէ տես 'ի հտ. ա. երես 314։

Հէմոռռհօուս, լտ։ Է տեսակ ինչ օձի հնդկայնոյ. որոյ մորթն է խայտաճամուկ, սպիտակ, սեաւ, և շողշողուն. գլուխն ամփոփեալ. ունի 'ի ճակատ իւր երկու եղջիւրս մանուանս, աչքն ճառագայթաձև, և փայլակնացայտ՝ զօրէն հրոյ. ատամունքն մեծ, և սրածայր, իսկ-տուտն նուրբ։ Սովորաբար բնակի սա 'ի խոռոչս, և յառապարին տեղիս։ Հարուած սորա ոչ է մահաբեր, և է դեղ քրտնաբեր, և մաքրողական արեան. զոր բժիշկք հնդկաց իբր դեղթափ 'ի կիր արկանեն ընդդէմ թունից։

Հէտէռա հէլիքս, լտ։ էլլէռա, կամ էտէռա, իտ։ սարմաշըք, տճ։ ասըպ, կամ լաբլաբ, կամ էպլակ, կամ ճիլիպլապ, կամ չէճրէիպարիտէ, կմ ուսուպ, և կամ ֆուշակ, արբ։ բէզէհ, կմ թուվիչ, կամ միվիժէհ, կմ նիժ, կմ պէրչէն, կամ պուկանթ, կամ սիեան, կամ սին, կամ ֆէչկանթ, և կամ ֆէրկանչ, պր։ և ըստ մեզ՝ բաղեղն, կամ պատատուկ։ Է տունկ, կմ լաւ ևս ծառ ինչ մշտականաչ. որոյ բունն է կարծր, սպիտակ, երկայնաձիգ, և ճիւղալից, բուսեալ յամենայն ուրեք զծառովք, զորմովք, և զանկովք պատատի զնոքօք։ Տերևք նորա են մեծ, լայն, ստուար, կարծր, անկիւնաւոր, փայլուն, տապահամ, միանգամայն և դեղ ազդու

ընդդէմ անտառածուէ, ցաւոց ատամանց, և ականջաց. զի է թուլացուցիչ բնութ. Այլև սևացուցանէ զհերս գլխոյ. սատակէ զլուս և զանիծս, և գրգռէ զշարաւս վիրաց. զոր յաճախ 'ի կիր արկանեն 'ի դիպուածս խարանի, և այլոց այսպիսի վիրաց, որովհետև առանց իրիք զայրացուցման դիւրապատրաստէ և գրգռէ զշարաւս և զապականեալ հիւթս, և միանգամայն բացեալ պահէ զվէրս առթեալ 'ի խարանէ: Ծաղիկն ելանէ 'ի գագաթան և 'ի ծայրս ճիւղոց, և է գարոնագոյն, ճառագայթաձև, և վեցթերթեան. ապա արտադրէ զպտուղն ողկուզօրէն, սև, թաւամազուտ, բոլորշի, և սոուար ըստ գինւոյ: Բերէ և սերմն բոլորշի, և տափարակաձև:

Հէտէռա թէռռէսթռիս, կմ՛ կլէքօմա հէտէռաչէա, կամ քէֆալէքլէմա, կամ մէլաքօչիասօ, լտ: Էտէռա կամ Էլլէռա թէռռէսթռէ, իտ: Եէր սարմաշըղը, տճ: Լոբլոբիլ փուա, արբ: և ըստ մեզ՝ բաղեղն երկրային: Բոյս, որոյ ցօղունն իբր կէս ոտնաչափ բարձրացեալ յերկրէ սփռի զերեսօք նորա, յորմէ կալաւ և զանունն, և է կարմրերանգ, պարարտ, և ծնրաւոր: Տերևք նորա են բոլորակ, անհարթ, մազոտ, երկայնականթ, և շուրջանակի սղոցաձև ատամնաւորեալք: Ծաղիկքն որկորաձև, և երկնագոյն, որք փունջս փունջս արտադրին առ կանթիւք տերևոցն՝ հանդերձ առէջիւք: Յետ ծաղկանց արտադրէ արկղաձև սերմնարանս, յորում են սերմունք երկայնաձևք: Իսկ արմատն մանր և սպիտակ: Այս բուսանի 'ի ստուերամած, և 'ի ցանկապատ տեղիս. լի է հոտով և աղիւ, որոյ տերևն եփեալ, կամ թրջեալ 'ի ջուր և արբուցեալ, դեղ է ազդու ընդդէմ թոքացաւութեան, հնագոյն հարբխոյ, շնչարգելութեան, թքման արեան, որ սովոր է գալ զկնի կշտացաւութեան, և վիրաւորելոյ թոքոց: Չափն մի տրամ խառն ընդ ութ ունկի ջրոյ: Երբեմն 'ի կիր արկանի նաև ընդ սիէրօ տի լաթթէի:

Հէրմօտաքթիլուս, լտ: Էրմօտաթթիլօ, իտ: Սուրէնճան, տճ: Խամիրէ, արբ: Է տեսակ մի այտուցաձև արմատոյ 'ի չափ շագանակի, դիւրաբեկ, թեթև, խծայլին, անհամ, 'ի ներքուստ սպիտակ, ալիւրալից, և սնկալից, իսկ արտաքուստ կարմիր, և անթեղ. և է դեղ օգտաւէտ 'ի դիպուածս ախտի

գաղղիականի, ռումատուԹե, յօդուածացաւուԹեան-ցի է քրտնաբեր, և մեղմապէս լուծիչ, այլև քաղ-ցրացուցանէ զտողունս 'ի խժային աղի հիւԹոց, և 'ի մասնաւոր ցաւոց գլխոյ՝ առԹելոց 'ի մաղձոյ : Այս կոչի և քօլքիքում :

Հէրնիա, լտ : էրնիա, կամ ալլէնԹաԹուրա, իտ : ռէպէլլիք, ռծ : և ըստ մեզ՝ փոշտանկուԹիւն, կամ ա-զեԹափուԹիւն : Է սեռական անուն՝ ընդ որով փա-կին զանազան ուռուցք ճարպին, և 'ի բազում տեսակս բաժանի :

Հէրնիարիա կամ ռուպիքա մօնԹանա, կամ միլլէ-գրանա մաեօռ, կմ ռուպիքա, կմ պօլիկօնում մինուս, և կամ հէռպա Թուռքա, լտ : էռնիարիա, իտ : գասըք օԹու, ռծ : Է տունկ ինչ, որոյ ցողունն է փոքրիկ յոյժ, գիւրաԹեկ, կանաչախառն գեղին, և տարածեալ : Ծաղիկն ելանէ առ կանԹիւ տերևոյն համգերձ գեղնագոյն առէջիւք, և է փոքրիկ. միան-գամայն և դեղ փորհարուԹե, անդամալուծուԹեան, և Թիֆօի : Զհնի ծաղկանց արտադրէ արկղաձև պա-տեան ինչ գորշագոյն, ունելով 'ի մէջի սերմունս բազումս, խկ արմատն մանր : Այս տունկ բուսա-նի 'ի չոր և 'ի քարուտ տեղիս . լի է խղով, և աղիւ, և է դեղ ազդու ընդդէմ փոշտանկուԹե կամ աղէ-ԹափուԹե, յորմէ կոչեալ և անուն : Այլև օգտէ միջահատական և քառօրեայ տենդի, խցանոց լերդի փայծեղան, ցաւոց յօդուածոց, և ընդերաց, և փոր-հարուԹե. զի է խԹիչ, և միզացուցիչ բնուԹե : Զափն 40 ցորեան ընդ կէս լիտր ջրոյ :

Հէրպա, կամ մէծէԹապիլիս, լտ : էրպա, իտ : օԹլուք, ռծ : հաշիշ, արբ : նէպատաԹ, պր : և ըստ մեզ՝ դալար, կամ խոտ, կամ բոյս, կամ տունկ և կամ բանջար :

Հիպպօբօթամուս, լտ : քավալլօ մառինօ, իտ : ատէ-նիզ այղըրը, ռծ : և ըստ մեզ՝ ծովաձի : Է կենդա-նի երկակենցաղ քառոտանի, յաճախեալ 'ի Նեղոս, և յայլ գետս ջերմ գաւառաց, ոչ լողի, այլ գնայ 'ի մէջ ջրոյն և ընդ յատակաւ նորա՝ իբրև զայլ ցամա-քային կենդանիս. քանզի ոտք նորա են կճղակաւոր քառաբաշխ անյարմար 'ի լողել : Գլուխ նորա մեծ է և տախտակ՝ նման ըստ իմիք գլխոյ որԹու. ատա-մունքն երկայն են իբր մի և կէս ոտնաչափ, և ան-հնարին կարծր, որք գեղնին հնուԹ ժամանակի իբր

զփղոսկր • յորոց կողմն պէսպէս փոքր արուեստակերտուածս ։ Երկայնութիւն նորա չորս ոտնաչափ • իսկ ստուարութիւն աւելի քան զհինգ ոտնաչափ • աչքն փոքրիկ և փայլուն • ականջքն կարճ, պարանոցն թանձր և պարարտ, մռունքն ստուար, և բոլորակ ; մորթն թուխ, լերկ, թանձր յոյժ, և անթափանցելի 'ի զինուց ։ Իսկ ձայնն նման է խրխնջանաց ձիոյ, յորմէ և կոչեցաւ ձիագետի ։ Միս այսր կենդանւոյ պարարտ է և քնքուշ • զոր եթովպացիք ուտեն ախորժանօք ։ Յատամանց նորա գործեն և դեղ ընդդէմ թանչից, և թուլութեն ընդերաց ։ Ամորձիքն նոյնպէս է դեղ հարուածոց օձից • օգտաւէտ է և ճարպ նորա • զորոյ միսն անջատեալ 'ի գործ ածեն 'ի դեղ ցաւոց ոսկերաց, երակաց, և ջլաց ։ Իսկ զարիւնն 'ի վար արկանեն նկարիչք հնդկաց 'ի ներկս ։

Հիբօքաստթանում, կամ քաստթանէա եգուինա, լտ ։ քաստանեօ տ'ինտիա, իտ ։ աթքէստանէսի, կմ հինտ գէստանէսի, տճ ։ և ըստ մեզ թարգմանագրի՝ շագանակ հնդկային • պտուղ կարծրակեղև, և փշալից զօրէն շագանակի, յորմէ կալլաւ և զանուն • մէջն մսալիր, և կաթնալից, այլ տաղտկահամ, որ ոչ է բարի 'ի կերակուր • բայց դեղ է ազդու ընդդէմ ցաւոց գլխոյ՝ եթէ փոքր ինչ փոշիացուցեալ քարշիցի ը անդունս ըստ օրինակի պնչադեղոյ, որ փռնգտացուցանէ, և երբեմն դադարեցուցանէ զցաւն գլխոյ ։ Ծառ սորա է միջակ ըստ երկայնութեան, և ըստ ստուարութեն ։ Ոստքն լայնածաւալ, և շքեղատեսիլ, զոր ստէպ անկանեն 'ի զարդ բուրաստանաց եւրոպիոյ ։ Փայտն կարծր, այլ դիւրաբեկ ։ Կեղևն սպիտակ, թանձր, և տարածեալ ը բնոյն, և է դեղ տենդադեղական ընդդէմ եռօրեայ, և քառօրեայ տենդից ։ Զափն 'ի մի ունկւոյ մինչև ցերկու ունկի և երկու արամ, զոր պարտ է եռացուցանել ընդ մի բինթա ջրոյ, և տալ լինի այս 'ի միջոցի 24 ժամուց ։ Տերևքն երկայն, ձուաձև, սրածայր, և շուրջանակի սղոցաձև ատամնաւորեալք ։ Ծաղիկն կարմիրախառն սպիտակ, ոսկեզօրէն, և գառնահամ, որք 'ի վեր երևին 'ի վերայ ճիւղոց՝ հանդերձ բաժակաձև և հերձոտ առէջիւք ։

Հիբէրիքում, կմ հերպա բէռֆօռաթա, կամ անտրօսէմում մինուս, և կամ աշիրօն, լտ ։ իբէռիկօ,

իտ. սարը քանթարիօն, տճ. Է բոյս ինչ ծակոտկէն, որոյ ցօղունն բարձրանայ յերկրէ իբր մի և կէս ոտնաչափ, կարծր, փայտային, գլանաձև, կարմրերանգ և ճիւղալից։ Տերևք նորա երկայնաձև են և ջղալից՝ նման ըստ իմիք տերևոց չէնթաուրէայի, ուք երկու երկու բուսանին 'ի վերայ ճիւղոց։ Ծաղիկն դեղնագոյն, և հնգթերթեան 'ի ձև վարդի, ունելով 'ի միջի առէջս յոգնաթիւս. զոր չորացուցեալ 'ի հովանաւոր տեղիս, 'ի գործ արկանեն ընդ այլ յարմարաւոր խոտեղէնս 'ի դիպուածս ախտից կրծոց. զնոյն գործունէութիւն ունին նաև սորա տերևքն։ Յետ ծաղկանց յաջորդէ գնտակաձև պատեան ինչ սուր, յորում լի են մանրիկ սերմունք թխագոյնք, լուսաճաճանչք, խժային, և դառնահամք։ Իսկ արմատն փայտային, խիստ, և թելալից։ Այս բոյս բուսանի ամենայն ուրեք՝ յանտառս, և յամայի տեղիս։ Ծաղիկ սորա ունի և զզօրութիւնս բացողականս, որով բանայ և զանցս տեռատեսական արեան և միզի։ Չափն յերկու տրամէ մինչև 94. խառն ընդ ութ ունկի ջրոյ։ Այլև սատակէ զորդունս որովայնի։

Հիբօչիսթիս, լտ. իբօչիսթիտէ, իտ. Թէքէ սաղաչը, տճ. ըլյէեթիւլ Թէյզ կամ էսբիւլէնճ, և կմ ուիչպիւղ, արբ. Է բոյս հիւթալից, յաղթէ օրօպանքէ անուանեալ խոտոյ, բուսանի առ արմատով 'չիսթուս տնկոյն 'ի սկիզբն գարնան իբր մի ոտնաչափ բարձրութբ։ Տերև սորա է բոլորշի, թաւամազ, անհարթ, և սպիտակ, իսկ ծաղիկն ծիրանագոյն։ Զայս սովորաբար քաղեն յաւարտ մայիսի, և չորացուցեալ 'ի հովանաւոր տեղիս, 'ի կիր արկանեն 'ի դեղ թանչից, և հոսման արեան, այլև արգելու զփսխումն, և զլուծումն որովայնի։

Հիսթրիքս, կամ բօռքուս սբինաթուս, լտ. բօռքօ սբինօ, իտ. ըռանճօքհիրօս, յն. գիբրի, տճ. զօնֆէթ, կմ շէվհէբ, կամ էմմէլհէննէ, արբ. Թէհսի, կամ խառբիւշտ, պր. և ըստ մեզ՝ ոզնի, կամ կօզնի։ Է կենդանի փոքրիկ, և կարճոտն, որոյ գլուխն նման է խոզի, պարանոցն նապաստակի, ատամունքն կզբու, ականջքն մարդոյ, իսկ թաթքն արջոյ. աչքն փոքր է և բոլորշի, ընչացքն երկայն իբր վեց ըթաչափ. մորթն խիստ և փշալից նմանեալ կեղևոյ շագանակի, որ է յատուկ պահարան և զէն նորա։ Միս այսր կենդանւոյ լինի դեղ Էդէմ թանչից, և միզարգելուն, փարատէ

և զայտուցս երաստանի ։ Զճարպ սորա 'ի գործ ածեն իբր դեղ փոշտանկութեն և թուլութեն ջղաց ։ Փուշք սորա և ոտք աճիւնացուցեալ և արբուցեալ խառն ը̅ ջրոյ, լինին դեղ շահաւէտ 'ի դիպուածս դալկան, և ջրգողութեն, զի են միզաբեր բնութք ։ 'Ի լեղիս կամ 'ի փոմփուշտս ոմանց ողնեաց գոյանայ քար փոքրիկ, դիւրաբեկ, և դառնահամ, որ իբր դեղթափ 'ի վեր արկանի ընդդէմ թունից, վատակար հիւթոց ստամոքսի, տկարութեն սրտի, մահաբեր տենդից, և ժանտախտի․ զի եդեալ զայն 'ի ջուր հատարակ առ քանի մի վայրկեանս, դառնացուցանէ զայն փոքր ինչ․ որ և ըմպեալ, առթէ զքիրտն․ որ է գլխաւոր դեղ այսպիսի ծանր և ջերմնատոչոր ախտից ։ Այս դեղթափ ազնիւ համարի, եթէ իցէ թեթև, և յոյժ դառնահամ, զոր լատինք կոչեն՝ լաբիս մալաքանուս, կամ բուն բառիւ՝ պէնծօար հիսթրիչիս, և թուրքք՝ գիբրի բանզէհիրի ։

Հիսսօբուս, լտ․ իսսօբօ կամ իզօբօ, իտ․ զուֆա, տճ․ և ըստ մեզ՝ զոպայ․ խոտ, որոյ ցօղունն բարձրանայ յերկրէ իբր մի և կէս կամ երկու բթաչափ, ծնրաւոր, կարծր, և ճիւղալից, տերևքն խիտք․ և դառնահամ, միանգամայն և համեմայեն, որք երկու երկու բուսանին 'ի վերայ միոյ կանթի ։ Ծաղիկն կապտագոյն, հասկաձև, և լայնաբաց․ բերէ արկղաձև պատեան, յորում են սերմունք երկայնաձևք, մանր, մթագոյնք, և մշկահոտք ։ Իսկ արմատն տապահամ, կարծր, փայտային, բազմաթել, և ստուար իբրև զմատն մարդոյ ։ Սա աճէպ բուսանի 'ի բուրաստանս, և 'ի պարտէզս, լի է իւղով և ցնդական աղիւ, և բնութք բացողական, զօրացուցիչ, և խթիչ, որով անօսրէ զթանձրամածութի տօղունից, կազդուրէ զցաւս կրծոց, մեղմէ զհազս, մաքրէ զարիւն, զօրացուցանէ զստամոքսն, թեթևացուցանէ զապատակութի չնչարգելութե, և ապաքինէ զխոսս թոքոց ուռեալս 'ի թուլութէ ։ Ղափն 'ի մի տրամէ մինչև ցմի և կէս խառն ընդ ութ ունկի ջրոյ ։ Այլ և սատակէ զորդունս որովայնի ։

Հիտրառճիռուս․ տես մերքուռիուս ։

Հիրունտօ, կամ բարվա հիռունտօ, լտ․ ռօնտինէ, իտ․ խէլիտօն, յն․ գալանկըճ, տճ․ ապապիլ, արբ․ կլիվաճ, պր․ և ը̅ մեզ՝ ծիծառն ։ Է սրաթռիչ թռչուն փոքրիկ, և բազմաճիչ․ ծանօթ ամենեցուն, որ սո-

վարաքար գայ առ մեզ 'ի ժամանակս գարնան, և գնէ զբոյն իւր յառաստաղս տանց. որոյ միս օգտաւէտ է 'ի դիպուածս վէրնատութե, և փողացաւութե: 'Ի ստամոքս ոմանց ծիծռանց գտանի քար ինչ իբր ոսպնաչափ սառուարութե, զոր լատինք կոչեն՝ լափիս քելիտոնուս, քելէտոնիա. և իտալք՝ բիէթռա տի րօնտինէ, և 'ի գործ ածեն 'ի դեղ ցաւոց կամ ախտից աչաց, որով և սրբեալ փարատէ զաղտեղութիս և զայտուցս աչաց կապելով 'ի վերայ նոցա: Նոյնպէս և օգտէ լուծնոտութե 'ի վերայ եկելոյ մանկանց՝ կախելով և եթ զայն 'ի պարանոցէ:

Հիրուտօ, լտ: սանկուիսուկա կամ միկնաթթա, իտ: պտէլլա, յն: սիւլիւկ, տճ: հալաքա, կմ. ալաքահ, արբ: զէնուր, կամ զիւլէկ, կամ զէլուկ, կամ զէլու, կամ զիւրէհ, կամ շէքիա, կամ շէլքու, կամ շէլք, և կամ մալխա, պր: և ըստ մեզ՝ տզրուկ: Է միջատ ինչ խայտաճամուկ յազգէ որդանց, և է մանրուկ, սառար 'ի չափ ձկոյթ մատին մարդոյ. ունի 'ի բերանն երեք ատամունս նրբագոյնս, սղորաստուրս, և ապգողականս, որովք կտրէ 'ի մարմինս տգեալ չափ. և ծծէ զարիւն կենդանեաց այնչափ անյագ՝ մինչև այտնու իբրև զտիկ. յայն սակս առնեն 'ի կիր արկանելք 'ի բժշկութե ցաւոց աչաց, ականջաց, ատամանց, և գլխոյ. Նոյնպէս օգտաւէտ է 'ի դիպուածս ախտնդանութեան, նուաղումն ստամական պարտուց կանանց, ցաւոց արգանդի, ախտի ցնցականի 'ի վերայ եկելոյ մանկանց, յօդուածացաւութե, ոտնատութե, ուռուցից երաստանի՝ պատճառելոց 'ի թթախտութե, և այլոց այսպիսի ախտից, զոր պարտ է մերձեցուցանել, կամ դնել 'ի պատշաճաւոր և 'ի մերձակայ մասունս վշտագնեալ անդամոց, առ 'ի յինքն ձգել ծծելով զխտասակար և զախտարծարծ արիւնն, որով պաշարին: Գիտել արժան է, զի եթէ ոք 'ի սմանէ կլանիցէ ընդ պատահմամբ կամ յանգէտս վրիպակաւ, իսկ և իսկ կառչի 'ի ներքսակողմն ստամոքսի, որ և բազում անգամ պատճառէ զկրծումն ստամոքսի, զխէթ դժնդակ, զնողկանս յարաժամ, զկրճատումն ատամանց, զցնորումն, զկատաղումն, զհեծկլտանս, զժայթքումն, զցնցումն մկանանց, և վերջապէս զմահ: Բայց գիտել արժան է, զի մարթ է փութով նպաստամատոյց լինել 'ի ձեռն կարևորագոյն դեղորէից, որպիսի են

աղն, իւղն, մախրաջուրն, ակարիքօնն, մանաւանդ աղնիւ կարմիր գինին, որ է գլխովին հակառակն այսր ադրկի. բայց առցի մի՛ աւելի քան զքառորդ կամ զկէս բաժակ առ մի նուագ, և առցի քառորդ ժամ միջոց ժամանակի ընդ մի և ընդ միւս արբումն այսր չափոյ: Այս միջատ կամ աղբուկ սովորաբար գտանի 'ի լինս, յաղտաղտուկս և 'ի գետս, նաև 'ի ծովու: Աղնիւ համարի, եթէ իցէ փոքր և նուրբ, մանաւանդ եթէ գոյացեալ իցէ 'ի լճի:

Հիրքուս սիլվէստրիս, լտ: քարբօ սալվաթիքօ, կամ պէքքօ սալվաթիքօ, իտ: էրքէճ եապանի, տճ: ըստ մեզ՝ նոխազ վայրի: Է անասուն ինչ թեթև, յազգէ այծի, որ յաճախ գտանի 'ի լերինս զվիցցէրիոյ. որոյ եղջիւրքն են ծանր, ոլորակաւոր, և երկայն իբր 4 կամ 5 ոտնաչափ յետկոյս թեքեալք. ունի և մօրուս երկայնաձիգս. ստև նորա կարճ է և կարմրախառն դեղին. մարմինն մեծ և երկայն. մաշկն կարծր է և ստուար, առ բազում իրս պիտանի: Ճարպն նման է ճարպոյ այծի. յորմէ գործեն սպեղանի ազդու ընդդէմ զանազան վիրաց, նաև մոմ 'ի փառուածս: Արիւնն չորացուցեալ յարեւու, և թրթուցեալ, դեղ է ընդդէմ հշտացաւութե՛, փողացաւութե՛, նուաղութե՛ ամսականն պարտուց կանանց, միզարգելութեան, և միանգամայն լուծանէ զառաջացեալ արիւն՝ պատճառեալ 'ի ցրտութենէ ձմերայնոյ. զի է ջերմացուցիչ և կակղացուցիչ բնութբ̃: Իսկ կաթն՝ որ է սնուցիչ, կակղացուցիչ, և քաղցրացուցիչ բնութբ̃՝ 'ի կիր արկանի 'ի դեղ ախտից կրծոց, թոքոց, և այլոց սոցին նման ծիւրեցուցիչ ախտից: 'Ի փամփուշտս կամ 'ի լեղիս ոմանց վայրի նոխազաց գտանի քար ինչ փոքրիկ, զոր լատինք կոչեն բզէուառ, յորմէ յօրինեն դեղ ազդու ընդդէմ թունից, և հրատապ ջերմախտից, զի է քրտնաբեր:

Հիօշիամուս նիճէր, լտ: ճիուսգուիամօ, իտ: պան թօհումու, տճ: պիղիր պէնճ, արբ: Է բոյս տաղտկահամ, և թմբրեցուցիչ, յազգէ թիւնաւոր բուսոց. որոյ ցօղունն բարձրանայ յերկրէ իբր մի ոտնաչափ, ճիւղալից, և ծանրահոտ, որ 'ի հոտոտալն ածէ զթմբրութի. զնոյն գործունէութի ունի նաև սորա տերևն, և ծաղիկն: Տերև նորա է մեծ, լայն, փափուկ, հերձոտ, և թաւամազուտ: Ծաղիկն դեղ-

նագոյն, 'ի տեղիս տեղիս նաև ծիրանագոյն, որք 'ի վեր երևին 'ի գագաթան, և 'ի ծայրս ճիւղոց, հանդերձ սկահաձև և թաւամազուտ առէջիւք. պտուղն ունի զձև մերումս պուտան, ունելով 'ի միջի չորմարանս, յորում լի են նուրբ սերմունք սեաւք ։ Իսկ արմատն երկայն, ստուար, անհարթ, պարարտ, կամ մալլիր, մթին սպիտակ, նման ըստ իմիք գազարի ։ Այս բոյս սովորաբար բուսանի յագարակս, և յեզերս ճանապարհաց. լի է իւղով. և գոյացական աղիւ. յորմէ կազմեն զէութիւն՝ անուանեալ 'ի նոցանէ էսթրաթթօ տի ճիուսգուիամօ, զոր 'ի կիր արկանեմք ընդդէմ լուսնոտութե, անդամալուծութե, ախտի ցնցականի, և այլ այսպիսի ջղային ախտից ։ Չափն 'ի 12 կչիռ ցորենոյ մինչև 924. բայց լաւ ևս է, եթէ սկսանի տանուլ ութ ցորենաչափ յաւուրն, և յետոյ առ սակաւ սակաւ առաւելու չափն մինչև 924 ցորեանս յաւուրն ։ Այլ գիտել արժան է, զի 'ի դիպուածս յորում դէպ լինի ումեք վրիպակաւ ուտել զսա առաւել քան ըղպայմանեալ չափն, իսկ և իսկ պատճառէ զայտուց ինչ յերեսս, զկարծրութի զարկի բազկի, զցնկումն քաղցկեղային 'ի մորթս մարմնոյ, նա յաւէտ 'ի սրունս և յազդերս, զկիզումն բերանոյ, և որկորոյ, զցաւգլխոյ, զցնորումն, և զցնցումն մկանանց և ջղաց, զկծկումն մկանանց շրթանց, և զծիծաղ սարդոնիկեան, զոր իտալացիք կոչեն՝ րիզօ սարտօնիքօ ։ Այլ դարման սորա չէ ինչ տարբեր 'ի դարմանոց այլոց թմբրեցուցիչ և մահաբեր բուսոց. զորօրինակ փըսխողական դեղորայքն, թթու ըմպելիքն, և խժային հիւթքն, են ։

Հումօռէս, լտ։ ումօռէ, իտ։ և ըստ մեզ՝ հիւթ ։ Այսու անուամբ նշանակի յատկապէս անօսրեալ մասն ինչ մարմնեղէն գոյացութեան զանդեալ ընդ-արեան, ընդ որ խառնեալ գտանին այլ ևս երրեակ հիւթք, այսինքն մաղձ, սևամաղձ, և մաղաս, որք բաշխեալ ընդ նեարդս և ընդ երակս՝ տան զըննունդ պնդակազմ մասանց բնութեա ։

Հօրտէում, լտ։ օրծօ, իտ։ գրիթի, յն։ արփա, տճ։ չէիր, կամ ալիք, կմ սուլթ, կամ չէհթէհուռ, և կմ շայիր, արբ։ ճէվ, պր։ և ըստ մեզ՝ գարի ։ Է տեսակ ինչ ընդեղինաց՝ ծանօթ ամենեցուն. յորմէ յօրինեմք դեղ ընդդէմ ցաւոց կրծոց, հրատապ տեն-

դից, և այլ այսպիսի ջերմնատոչոր ջերմախառնից. զի է զովացուցիչ, և քաղցրացուցիչ բնութ̃ե: Զամին 'ի յերկու ունկեայ մինչև ցչորս կամ ցհինգ. զոր օրէն է եւասյուցանել ընդ մի և կէս բինթա ջրոյ, յաւելլով 'ի նոյն մի կամ երկու ունկի շաքարայ հաղարջի. և առնեալ լինի ըմպելիս այս 'ի միջոց 12 ժամուց: Է նորա և այլ տեսակ, որ սովորաբար գտանի 'ի գերմանիա, յայն սակս կոչի յիտալացւոց՝ օսծօ տի Ճէրմանիա, 'ի թուրքաց՝ նեմսէ սաքիասը, իսկ ի̃ մեզ՝ գարի գերմանիոյ. որ բնութ̃ե և ներգործութ̃ե նոյն է ընդ վերնոյն, և է ընտիր և շահաւէտ կերակուր խօթացելոց:

Հօտաէտում Ճէռմանիում. տես Հօտատէում:

Հօտաէտում տոխթիքէհում, կամ վուլկաւէ. տես Հօտաէտում:

# Ճ

Ճելաքօ. տես Եալաք:

Ճելաթինա, իտ: ֆէլթէ, կամ ֆրէհաղ, ան: մածոյծ, կամ մածուած:

Ճելաթինա տի ակուէսթօ, իտ: գօուուկ ֆէլթէսի, ան: Է մածուած ազախոյ, որ է շահաւէտ ընդդէմ փորհարութեան, զի է սեղմիչ և զովացուցիչ բնութեամբ:

Ճելաթինա տի բօմօ, իտ: էլմա ֆէլթէսի, ան: Է մածուած խնձորոյ, դիմակալէ թալկութե, և տկարութե սրտի. զի է զօրացուցիչ և զովացուցիչ բնութեամբ:

Ճելաթինա տի վիբէրա, իտ: էնկէրէք ֆէլթէսի, ան: Է մածուած իժի, որ է դեղ ազդու ընդդէմ ամենակերպ տկարութեան մարմնոյ, մասաբեր հիւթոց, ժանտախտի, մահաբեր տենդից, բորոտութե և ախտի գաղղիականի, չափն 'ի կէս դրգալէ մինչև ցմի: Այլև գրգռէ զարտաշնչութի մարմնոյ:

Ճելաթինա տի քօթօնիա, իտ: այվայ ֆէլթէսի, ան: Է մածուած սերկևիլի, գերահռչակ է 'ի մառնն օգտաւէտութե 'ի գնացուածս փորհարութե,

Թանչից, տկարութե՛ ստամոքսի, և որտի, որով ար-գելու զփսխումն, և դիւրաւ մարսեցուցանէ զկերա-կուրն։ Չափն ՚ի մի դրգամէ մինչև ցերկու։

Ծէլանթինա տի քօռնօ տի չէռվօ, իտ։ կէյիք պտոյ-նուզուն փէլթէսի, տճ։ Է մածուած եղջերն եղջե-րուի, օգտաւէտ է ՚ի գինլուածս լուծման որովայնի, փսխման, արիւնախառն թքանողաց, տկարութեան ջղաց, և ստամոքսի։ Չափն ՚ի կէս դրգամէ մինչև ցմի ամբողջ։ Այլև գիմակալէ ճիատաբէր և գժնեայ հիւթոց։

Ծէլաօմինօ. տե՛ս Եառամինում։

Ծէմմա տի բիօքքօ, իտ։ պտուղ կաղամախի. տե՛ս և բօքուլուս։

Ծէնթիանա. տե՛ս Ճէնցիանա։

Ծէնիսաթա, լտ։ Ճէնէսթռա, իտ։ գաթը Թռնալ-ղը, տճ։ և ըստ մեզ՝ կենիստա։ Է ծառ փոքրիկ, որ յաճախ բուսանի ՚ի բուրաստանս, և յագարակս իբր վեց կամ եօթն ոտնաչափ բարձրութ՜։ Ոստք նորա նման են ոստոց կնիւնոյ, բայց կանաչագոյն և բոլորակ քան զայն։ Տերևն երկայնաձև, և սրածայր. ծաղիկն դեղին, քաղցրահամ, և թաւամազոտ։ Իսկ պտուղն տափարակաձև, և շագանակագոյն. և ՚ի միջի ունի սերմունս կարմրերանգս, երկայնաձևս, և փայլունս։ Այս ծառ սովորաբար գտանի ՚ի սաղա-նիս, ՚ի լինկուատօքա, և յայլ տեղիս Եւրոպիոյ. որոյ եթէ ծաղիկն, և եթէ սերմն, որք են բնութ՜ բացողական, թուլացուցիչ և միզաբեր՝ ՚ի գործ ածին ընդդէմ խցանաց փայծեղան, և խոյլի պաղանցի, որ այն ինքն է սրաւաճա, և ջրգողութե։ Այլև ար-գելու զփսխումն՝ եթէ խառնեսցի ընդ քացախոյ, կամ ընդ օղւոյ։ Չափն կէս ունկի ընդ 16 ունկի ջրոյ։

Ծէնցիանա, իտ։ Ճէնթիանա լութէա, լտ։ չիրի-թիան օթու, տճ։ Է տունկ ինչ բազմացօղուն, բու-սեալ ՚ի լերինս Եւրոպիոյ իբր երկու կամ երեք ոտ-նաչափ բարձրութ՜։ Տերևք ստորին ըստ իմիք նման են տերևոց սպիտակ եղեբորոսի, կամ ջղախոտի, բայց փոքր մի յղկեալ և աժգոյն կանաչ քան զնոսա։ Ծա-ղիկն ելանէ առ հանթիւ տերևոյն ՚ի ձև լխեռան-իկի. և է դեղին հարեալ ՚ի գոյն կարմիր, և հեղ-ձոտ։ Պտուղն թաղանթային և երկայնաձև, ունե-լով ՚ի միջի սերմունս տափարակաձևս, և կարմրե-

քանդս։ Իսկ արմատն երկայն, առուար, խորև զբաղ֊զուկ մանկան, ձիւղալից, թխակեղև, գեղնագոյն սակաւահոտ, և յոյժ դառնագին, միանգամայն և դեղ ազդողական ընդդէմ ակարութեն ստամոքսի, և ջղաց, մանաւանդ այնց ջղաց, որոց ստորակար֊գեալ է մեծ գործ մարսողութեն կերակրոց. այլև ապաքինէ զտենդս, մանաւանդ զմիջահատականս, զյօդուածացաւութե, զպոդագրութօ, միանգամայն և արծարծանէ զաղջեցութիւն փորային հիւթոց, և մանրաթելից ստամոքսին, և ընդերաց. զի է զօրա֊ցուցիչ և խթիչ բնութե։ Զափն 'ի 20 ցորենոյ մին֊չև ց40։ 'Ի սմանէ կազմեն և զէութին անուանեալ 'ի նոցանէ՝ էսթրաթթօ տի ձէնցիանա, որ լինի դեղ սաստիկ ազդու ընդդէմ վերոյիշեալ ախտից։ Զափն 'ի 10 ցորենոյ մինչև ց20, յաւուրն։ Նոյն գործունէութի ունի նաև սորա օգին, զոր իտալք կոչեն՝ թինթուրա տի ձէնցիանա։ Զափն 'ի 30 չթե մինչև ց60 յաւուրն։

Ճինէքրօ. տես եունիբէրուս։

Ճինձիպէր. տես ծէնծէրօ։

Ճիուսգուիամօ. տես հիօշիամուս

# Մ

Մաեօրանա, կամ օրիկանում մաեօրանա, լտ։ մաճճիօրանա, կամ օրիկանօ հէրաքլէօթիքօ, իտ։ մէրճան գէօշի, տճ։ մէօչէնճիւշ, կամ անքէս, արբ։ մէրղէնկիւշ, պր։ Է բոյս անուշահոտ, յաճախեալ 'ի բուրաստանս և 'ի պարտէզս. որոյ ցօղունն է նուրբ, փոքրիկ իբր ոտնաչափ, կարծր, ճիւղալից, գոյն ինչ թաւամազուտ, և կարմրերանգ։ Տերևք նորա երկու՝ երկու բուսանին, մինն մեծ, իսկ միւսն փոքր. սպիտակ են և բոլորակաձև, նման ըստ իմիք ծոթրնի, համ նոցա փոքր մի տտիպ, միանգամայն դառն։ Ունի համակ բոլորակաձև և թաւիշաւոր, յորոյ վերայ զետեղեալ ունի ծաղիկս սպիտակա֊գոյնս, վերամբարձս, թաւիշաւորս, որկորաձևս, և քառեակթերթեանս։ Ունի և սերմունս մանունս, որոց ոմանք են կարմիր, և ոմանք 'ի գոյն գեղին։

իսկ արմատն է՝ մանր, կարծր, և թելալից։ Այս բոյս լի է գոյացական աղիւ և իւղով, որոյ տերեւն եփեալ 'ի ջուր և արբուցեալ, դեղ է թուլութեան ջլաց, ցաւոց գլխոյ, անդամալուծութեան, ախտի ուղղոյ, և ստամոքսի և փքոտութեան. զի է խթիչ և զօրացուցիչ բնութեան։ Զափն 'ի մի տրամէ մինչև ցերկու խառն ընդ մի լիտր ջրոյ։

Մաթիկթա. տես Հեմաթիթես։

Մաթրիկիթիտէ կամ մէթրիկիթիտէ, լտ։ ինֆիամմացիօնէ ուտէրի՛ ուլթէրօ, իտ։ ուռհեմ միւհրիւքանը, կամ խանզնա իւֆիւնէթի կամ թուլթուշմասը, տճ։ միւհրիքանի իլ ռահմ, հիմ յաւմի վէլէտա, արբ։ Տես հա. ա. երես 120։

Մաթրիկարիա, լտ։ մաթրիկարիա, կամ փառթէնիօ, ամառէլլա, իտ։ վարատիքա, տճ։ Բոյս հոտաւէտ և դառնահամ յաճախեալ 'ի բուրաստանս, և 'ի պարարտ տեղիս. որոյ ցօղունն է ստուար, ծնրաւոր, ակնգայլին, ճիւղալից, մէջն դատարկ, և հիւթալից։ Տերևք նորա են երկայն, և հերձոտ։ Ծաղիկն բոլորչի և ճառագայթաձև, շրջապատ նորա սպիտակ, և մէջն դեղեցիկ դեղին, որ բերէ զնմանութիւն երիցկի. ունի և սերմունս երկայնաձևս. իսկ արմատն թելալից։ Այս բոյս լի է իւղով, և թռչական աղիւ. որոյ տերևն և ծաղիկն են դեղ ազդու ընդդէմ ախտից արգանդի, և նուաղութեան ամսական պարտուց կանանց։ Զափն 'ի կէս բաժակէ մինչև ցմի, զոր օրէն է արկանել 'ի մէջ մի բինթա ջրոյ եռացելոյ. զկնի 12 ժամուց քամեալ զայն կտաւով յայլ ապակի անօթ, և առեալ լինի ըմպելիս այս 'ի միջոցի 24 ժամուց՝ երկու ունկի առ իւրաքանչիւր նուագ։

Մալաթթիա ուէինէռվի ին ճէնէռալէ, իտ։ ախնիր հիլլէթի ալէսէվիէ, տճ։ ըստ մեզ՝ ընդհանուր ախտ ջղաց. տես հա. ա. երես 206։

Մալաթթիա ուէլլէ ֆէմինէ ին ճէնէռալէ, իտ։ քատը հաստալըղը ալէսէվիէ, տճ։ ըստ մեզ՝ ընդհանուր հիւանդութիւն կանանց. տես հա. ա. երես 188։

Մալանկօնիա, կամ մէլանկօնիա կամ մալինկօնիա, իտ։ սէվտայի մէռաք, տճ։ և ըստ մեզ՝ սևամաղձութիւն, կամ ախոնդանտութիւն. տես 'ի հա. ա, 'ի գլ. ժէ. երես 234։

Մալաչիա. է ախտ ինչ կանանցի. զորմէ տես հա.

տ. երես. 195։

Մալա չիտոնիա. տե՛ս մալա քօթօնեա։

Մալարանցիա. տե՛ս աուրանցիում։

Մալաքօթօնէա մինօրա. տե՛ս չիտոնիա։

Մալաքօչիսսուս մինօր. տե՛ս քէլլիտոնիա։

Մալիաքօ. տե՛ս արմէնիաքա։

Մալինքօնիա. տե՛ս մալանքօնիա։

Մալլիօ. բառիւս այս ըստ անդամազննաց իմանի՝ միջն յերից ներքին ոսկերաց լսելեաց։

Մալլուվիում, լտ։ պաչինօ, իտ։ անուանես այս ըստ անդամազննաց ցուցանի՝ գնտակաձև խոռոչ ինչ ձագարանման յառաջակողման փորոքս ուղղոյն։ Է և խոռոչ ինչ որովայնի պարունակիչ փամփշտի մի- զին, արգանդին, և փորոտեաց։

Մալ կալլիկօ. տե՛ս մալ վէնէրէօ։

Մալում. տե՛ս մալուս։

Մալում բունիքում. տե՛ս մելակրանա։

Մալում օսսիրում. տե՛ս աուրանցիում։

Մալուս, լտ։ մէլօ կամ բօմօ, իտ։ էլմա աղաճը, թճ։ և ըստ մեզ՝ խնձորենի։ Է ծառ ինչ բոլորակա- տերև, և սպիտակածաղիկ, յաճախեալ յամենայն ու- րեք. որոյ անուն պտղոյն կոչի յիտալացւոց՝ մէլա կամ մէլա բօմօ. 'ի լատինացւոց մալում. 'ի թուր- քաց՝ էլմա. յարաբացւոց՝ թըֆֆահ, կմ թուֆֆահ, և կամ սէբ. 'ի պարսից՝ սաեբբօս, կամ սիվա, և կամ շըն. իսկ ըստ մեզ՝ խնձոր, կամ խնծոր. որոյ ձև, համ, և հոտ ծանօթ է ամենեցուն։ 'Ի մէջ պէս- պէս տեսակաց խնձորոյ ընտիրն է, որ լինի սպիտա- կախառն կարմիր, նրբակեղև, մաքուր, փայլուն, մշկահոտ, մէջն սպիտակ իբրև զձիւն, սառնատե- սակ, ջրալիր, սակաւակորիզ, և ախորժահամ։ Արդ գտանի սա ևս յիբէք անուանեալ գաւառն եւրո- պիոյ, զորոյ զհամեմատն ոչ ուրեք է գտանել, զոր և 'ի պարգև առաքեն մեծամեծաց, իշխանաց, և դքսից. որ է գեղ (որպէս և միւս խնձորքն) 'ի գի- պուածս տկարութեան սրտի, ախոնդանոտութեան, և խցանաց։

Մալուս լիմօնիա, կամ մալուս մէտիքա, և կամ ցիթրիամալուս, լտ։ լիմօնէ, կամ լիմօնիէռ, իտ։ լէ- մօն, արբ։ իլիմօն, թճ։ դելգել, պր։ և ըստ մեզ՝ լէմոն։ Է պտուղ ծանօթ ամենեցուն. որոյ մէջն է ջրալիր, և թթու դրեթէ որպէս զագոխ. զոր սաէպ

'ի կիր արկանեմք 'ի կերակուրս, նաեւ 'ի դեղորայս. որ է փարատիչ փառախտութեն, եւ ամենայն ջերմախտից՝ պատճառելոց յուժգնութենէ. մեղմէ եւ զխարութիւն թունից, եւ արգելու զյորդառատ հոսումն արեան. զի է զովացուցիչ եւ թուլացուցիչ բնութեք, մանաւանդ յորժամ խառնի ընդ շաքարի բաղադրելոյ հասարակ ջրով: Կեղեւ սորա լինի դեղ ընդդէմ ակարութեն ստամոքսի: 'Ի կեղեւոյ սատի եղեւզանեն զիւղ ինչ ոսկեգոյն, որ լինի դեղ ազդու ընդդէմ ակարութեն ստամոքսի, եւ ուղղոյ. զի է խթիչ կամ գրգռիչ, եւ ճձէհալած: Չափն 'ի 2 չթէ մինչեւ ց10:

Մալվա, լտ. եւ իտ: էպէմ կէօմէճի, տճ: մալախի, յն: ռադգամէ, կամ ալէքլէկ, եւ կամ խուպպէզա, արբ: բէնիրէկ, կամ թիւլէ, եւ կամ միւքէզ, պր: եւ ըստ մեզ՝ մոլոշ: Է բանջար ինչ՝ յազգէ խաւարտից, որոյ ցօղունն է երկայն իբր մի եւ կէս ոտնաչափ, թաւախշաւոր, ջլային, ուղիղ, եւ բոլորակ: Տերեւ նորա է երկայնականաթ, կնճռալից, ջլային, բոլորշի, թաւամազ, եւ բազմածալ. որ բերէ զնմանութիւն բոլորակաձեւ հովահարի: Ծաղիկն զանգակաձեւ եւ սպիտակախառն կարմիր, եւ խատուշաւոր, ունելով 'ի միջի բրգանման առէջս ծիրանագոյնս: Զկնի թարշամելոյ ծաղկանց յաջորդէ պտուղն գլնտակաձեւ, հարթեալ, վարդագոյն, եւ անհամ: Իսկ արմատն երկայն, սպիտակ, յստակ, մածուցիկ, եւ քաղցրահամ: Բուսանի յամենայն ուրեք 'ի պարտէզս, 'ի պարսպս, եւ 'ի խոնաւուտ տեղիս. լի է իւղով, այլ նուազ աղիւ. որոյ տերեւն մինչդեռ է թարմ, 'ի վար արկանի 'ի կերակուրս, նաեւ 'ի դեղորայս. զի է քաղցրացուցիչ, նրբացուցիչ, եւ մեղմապէս լուծիչ բնութեք: 'Ի կիր արկանի նաեւ յաճախակի 'ի գրգիռս 'ի կակղացուցանել զորովայնն: Իսկ ծաղիկն նոյնպէս 'ի գործ արկանի 'ի քաղցրաւենիս, 'ի յօշարակս: Երբեմն եւ արմատն 'ի կիր արկանի ըստ օրինակի արմատոյ աղթոյ, որպէս եւ զօրութիւնն նման է զօրութեն նորա:

Մալ վէնէռէօ, կամ մօռպօ վէնէռէօ. մալ ֆրանչէզէ, իտ: մօռպուս վէնէռէուս, կամ սիֆլիթիսէ, կամ լուա չէլթիքա, եւ կմ լուա վէնէռէա, լտ: ֆըռէնկի կամ ֆռէնկ զահմէթի, եւ կմ ֆռէնկ ույուզու, տճ: միւպարէք, կամ թէշվիշլի էֆրէնճ, արբ: եւ ըստ մեզ՝ ախտ գաղղիական, եւ կամ ախտ

ելեփանդական · տես զայամանէ հա · տ · երես 363:

Մալ տի կօլա · տես չինանքէ:

Մալքատուքօ · տես էբիլէբսիա:

Մալ ֆրանչէզէ · տես մալ վէնէրէօ:

Մակնէս, կամ լափիս հիէրաքլէուս, կամ լափիս սիտէրիթիս, և կամ լափիս նաութիքուս, լտ. քալամիթա, իտ. մըխլաթըզ, տճ. մակնէթիս, արբ. հայէնրապա, պր. և թ մեզ՝ մագնիսատիս, կամ մագնիս: Է քար ինչ ծանր, կարծր, թխագոյն, կամ կապտագոյն, որ սովորաբար գտանի 'ի հնգլիկս, և յերրորդիս եղեալ 'ի հանքէ երկաթոյ, կամ պղնձոյ. զօրութիւն նորա է քարշօղ, որով միշտ յինքն ձգէ զերկաթ, և ախնդ կայնու զնա, որ վարի յայլ և այլ պէտս, և 'ի գեղորայս առ 'ի յարգելուլ զհոսումն արեան, և զխլուածս:

Մակնէզիա ալպա, կամ մակնէզիա ուսթա, լտ. մակնէզիա պիանքա, կամ մակնէզիա քալչինաթա, և կամ սոտքառպօնաթօ տի մակնէս, իտ. կիւվէրչէլէ քայմաղը, տճ. Է փոշի ինչ յոյժ սպիտակ, թեթև, մեղկաշօշափ. կոչի և նիթրօ տօլչիֆիքաթօ է ֆիսսօ, կամ մինձիսթէռիօ ֆիլօսօֆիքօ. կազմեալ 'ի շնչքօրակէ կամ 'ի միղէ յառաջացեալ աղիցն. յօրմէ ատէպ 'ի կիր առնումք առ 'ի ընկլուզել կամ յինքն ձգել զթթուաբեր և զախտարծարծ հիւթս մարմնոյ, յորոց պատճառին տկարութիւն ստամոքսի. ցնցումն մկանանց կամ ջղաց, խեթք ստամոքսի, և որովայնի, քարտխալձիս յորձորձեալ ախտն, և փորհարութիւն, և այլ և այլ ախտք սոցին նման: չափն 'ի 20 ցորենոյ մինչև ցկէս ունկի, խառն ընդ գաղջ ջրոյ 'ի պահ առաւօտուն: Այս փոշի նման է կաւիճի թ ձևոյն, և ըստ գունոյն. բայց առաւել սպիտակ է և առաւել թեթև. որ թէպէտ և 'ի բազում տեղիս կազմի սա, զորօրինակ 'ի գաղղիա, յիգալիա, 'ի գերմանիա, այլ ոչ հաւասարի ազնուութեամբ այնմ՝ որ յօրինի յանգղիա: Մակնէզիա՝ անուն առեալ 'ի լատինական բառէն մակնէս, որ առ մեզ անուանի մագնիս՝ 'ի զօրութենէ նորա եդեալ են զայս անուն. քանզի զօրէն մագնիսի յինքն ձգէ կամ քարշէ զամենայն թթու և կծու հիւթս ստամոքսի: Այլ բայց 'ի ձգողական զօրութենէ ունի և զայլ մասնաւոր գործունէութիւն 'ի լուծել մեղմապէս զորովայնն, և 'ի բանալ զանցս միզի:

Մաճիսթերիում, լտ: մաճիսթերիօ, իտ: էօզ, աճ: Անուամբս այս իմանին խէժանման հիւթքն՝ ելուզեալք յոր և իցէ արմատոց, բուսոց, և յայլ սոցին նման նիւթոց՝ խառնմամբ ուժգին ոգւոյ գինւոյ:

Մաճիսթերօ տի ալօէ, իտ: էօս աղաճըն էօզիւ, աճ: Է խէժանման նիւթն հալուէի, կազմեալ ՚ի հալուէէ, և ՚ի յոգւոյ գինւոյ, որ է դեղ օգտաւէտ ընդդէմ տկարութեան ջլաց, և ստամոքսի, և ցաւոց գլխոյ:

Մաճիսթերօ տի ճիալափբա, իտ: եալաբանըն էօզիւ կամ զամքը, աճ: Է խէժանման նիւթն եալաբա արմատոյ. որ է բնութք ուժգին լուծողական և խթիչ. նմին իրի օրէն է մեծաւ զգուշութք ՚ի կիր արկանել: Չափն ՚ի 4 ցորենոյ մինչև ց6 կամ ց7, խառն ընդ այլ յարմարագոյն դեղորէից: Կոչի և րէզինա եալափա. և ՚ի մասնաւորի՝ ջրգողութեան և խցանաց ընդերաց փարատիչ է:

Մաճիսթերօ տի պիսմութօ. տես թէսամօսսիտօ պիանքօ տի միսմութօ:

Մաճիսթերօ տի սոլֆօ. տես սոլֆօ սուպլիմաթօ:

Մաճիսթերօ տի քանֆօրա. տես քանֆօրա բուրբ:

Մաճճիօռանա. տես մաեօրանա:

Մանիա. տես ֆօլլիա:

Մանիբուլաւս, կմ մանուբլուամ, լտ: ավուճ մէկ տարը, աճ: Թադ, կմ գէֆ, արբ: տէստէ, պր: Այս անուամբ ցուցանի քանակութիւն, զոր մարթ է առնուլ ձեռամբ կամ ափամբ չափաւորապէս բացեալ. և գնի նշանագիր փոխանակ միոյ ամբողջ բառի, զորօրինակ ( ՊՊj ) այսինքն մի ափ:

Մաննա; լտ. և իտ: գուտորէթ հէլվասը, կամ գուտորէթ պալը, և կամ պապարա հէլվասը, աճ: մէննի ֆըրանկի, արբ: Թէրէն կիւպէն, կամ թիլէնկիւն, կամ շիրխիշկ, կամ շիրխշտ, և կամ գըյաուամ, պր: և ըստ մեզ՝ մանանայ: Է հիւթ թանձր, պարարտ, և քաղցրահամ իբրև զմեղր, գոյացեալ ՚ի բարեխառն գոլորշեաց գարնայնոյ, և նստեալ ՚ի վերայ բուսոց եւրոպիոյ, և ասիոյ: Այս հիւթ սովորաբար է դեղնախառն սպիտակ, բայց գտանի և սպիտակ, և մաքուր, որ լաւագոյն համարեալ է, և առաւել օգտակար. զի լուծէ մեղմապէս և թեթևապէս զխասասբեր հիւթս ստամոքսի, և փորոտեաց. անօսրէ զթանձրամածութիւն տողունից·

կակղացուցանէ զկուրծս , և զորկորս․ մեղմէ զհազս , և կազդուրէ զցաւս որովայնի․ զի է թուլացուցիչ բնութ֊ : Զափն 'ի 8 դրամէ մինչև ց24 :

Մաննա լըգուիտա․ տե՛ս Թէհէրէնխապին :

Մանուս նասուսթա , կամ Թուպաս , և կամ բրօպօշիս , լտ․ Ֆիլ հօռթուսու , տճ․ զոլմէ տե՛ս 'ի բառն Եղեբհաս :

Մանտրակօրա , կամ մանտրակօրաս , և կամ մանտրակօլա , լտ․ և իտ․ ապտի սէլամ , կամ գան քուրուտան․ տճ․ ապուզէլան , կմ ապուհէզլան , կամ Թֆա իլ ճին , կամ էպրուխէնմ , և կամ սուածիւլ քանթրէպ , արբ․ սԹալիղէչ , կամ սապիղէկ , և կամ մերախուկիա , պր․ և ըստ մեզ՝ մանրագոր , կամ լօշտակ : Է բոյս յածախեալ 'ի հովանաւոր տեղիս , և 'ի յանտառս․ որոյ տերեւն է երկայն ձուաձև , և տարածայր : Բերէ մէն մի ծաղիկ զանգակաձև , գեղնագոյն , և վարսաւոր : Պտուղն կանաչախառն դեղին , 'ի ձև խնձորոյ․ և ունի զհոտ Թմբրեցուցիչ : Իսկ արմատն երկայն , Թխակեղև , միանգամայն և ուժգին լուծողական , և Թունաւոր․ մինն իբր ոչ 'ի կիր արկանի 'ի դեղորայս :

Մանտօրլա․ տե՛ս ամիկտալուս :

Մաչիս , լտ․ մաչէ , իտ․ բէսբասէ տճ․ աշտափլան , պր․ Է պտուղ կմ լու ևս ծաղիկ գալարակեղև , մսալիր հիւթալից նմանեալ գունով և հոտով մշկահոտ ընկուզոյ՝ արտադրեալ 'ի փոքրիկ ծառոյ իրիք հընդկայնոյ կոչեցելոյ խոսլական բարբառով՝ բէպօ․ այախնքն գեղձենի : Են՝ որք համարին զսա ծաղիկն լինել մշկահոտ ընկուզաբեր ծառոյ , և ոչ գեղձենւոյ․ բայց գտանին և պտուղք նմանաձև մշկահոտ ընկուզի , որք 'ի նոյն պէտս վարին , այլ չեն յարգի , և գործունեայ իբրև զայն :

Մարազմօ․ է անուն իրիք փտտակար և ծիւրիչ ախտի՝ որ յոյժ նման է լերդացաւութե :

Մարթէ , իտ , չէլիք , տճ․ պօլատ , արբ․ ըստ մեզ՝ պողպատ․ զզօրութի սորա տե՛ս 'ի բառն քհալիպս :

Մարկէրիթա , կամ ունիօնէս , կամ բէռլա , լտ․ բէռլէ , իտ․ ինճի , տճ․ լուլի , կամ տուրրէ , և կմ տուրէր , հէյ ճիւմանէ , կամ սահուհ , կամ ճիւման , և կամ Թիւէմ , արբ․ կէօվհէր , կամ տուրրիւ չէհվար , կամ տուր , կամ տուրտանէ , և կամ գէօբէրէճ , պր․ և ըստ մեզ՝ մարգարիտ : Է գոհար ինչ

պատուական, կարծր, սպիտակ, մաքուր, և շողշո-ղուն, այլ ձև նորա այլ և այլ է. այսինքն բոլորակ, ձուաձև, և տանձաձև. և այնչափ ընտիր և ազնիւ է, որչափ առաւել գնտակաձև, մեծ, և մաքուր է: Սա գոյանայ 'ի ծոց սատափի, յորմէ բնակիչք երկ-րին հանեալ զնա ծակեն, և առաքեն աստ և անդ 'ի վաճառ. զոր 'ի պէսպէս զարդս 'ի կիր արկանեն, նաև 'ի դեղորայս. որ է շահաւէտ 'ի դիպուածս տկարութեան սրտի, և 'ի մասնաւորի՝ ախտի թանչից, և հոսման արեան. զի է ընկլուզիչ, և զօրացուցիչ բնութ.: Զափն 'ի 6 ցորենոյ մինչև ց30: Այլև սպառեալ ծախէ զբիծս և զաւելորդ միսս աչաց, եթէ փոշիացուցեալ ցանիցի 'ի մէջ նոցա: Այս գո-հար գոյանայ առ պարսկային ծոցով. գտանի և յե-զերս ծովուց Հնդկաց, որ թէպէտ սպիտակ է յոյժ, այլ չունի զայն ազնուութի, զոր ունի մարգարիտն պարսկային ծոցոյ. քանզի զկնի սակաւուց կորու-սանէ զգոյն իւր:

Մարրուպիում, լա: մարրուպիօ, իտ: Ֆէրրասսիօն, աճ, և արտք: Է բոյս աղգու հոտաւէտ, փոքր մի տտապահամ, միանգամայն և դառն. ցօղուն սորա է երկայն իբր մի ոտնաչափ, գեղմնաւոր, մէջն դա-տարկ, և հիւթալից: Տերևն ձուաձև, և սպիտա-կախառն կանաչ: Ծաղիկքն մանր, սպիտակ, և սա-փորակաձև՝ որք ելանեն 'ի վերայ ճիւղոց, հանդերձ թաւամազ և սպիտակ առէջիւք. յետ ծաղկանց ար-տադրէ քառեակ սերմունս երկայնաձևս. իսկ ար-մատն սեաւ, և բազմաթել: Բուսանի 'ի յամայի և 'ի յանհեթեթ տեղիս. օգտաւէտ է 'ի դիպուածս դալ-կան, խցանմանց փայծեղան, լերդ.՛, և արգանդի. նոյն-պէս շահաւէտ է նորագոյն ախտից թոքոց, շնչարգե-լութեան, և ցաւոց կրծոց, և նուազութեան ամսական պարտուց կանանց: Զափն 'ի կէս տրամէ մինչև ցմէ:

Մարրօպիօ. տես մարրուպիում:

Մնացիալէ. անուանեալ այս նշանակին այնք նիւթք, յորոց բաղադրութեան գտանի երկաթ, կամ պող-պատ:

Մէաթուս, լա: բօրօ կամ մէաթօ, իտ: թէռ ալ-լիւլէրի, աճ: մէասամաթ, կամ մէաամ, արբ: և ըստ մեզ՝ վատարք կամ անցք, կամ ծակտի մարմնոյ. որք են անթիւ և ամենամանր ծակք արտաքին մորթոյ, 'ի ձեռն որոց արտադրին կամ արտաշնչին վնասաբեր

և աւելորդ հիւթքն․ և ընդունելին 'ի ներքս 'ի մարմնի արտաքին օդս՝ առ 'ի սնուցանել և զօրացուցանել զջիղսն և զմարմինն, և միանգամայն զովացուցանել զներքին ջերմութիւն արեան, և այլ հիւթոց։

Մէաթօ․ տես մէաթուս։

Մէթաքիթիակէ․ տես մեթրիթիակէ։

Մեղ, լա։ մելէ, իտ։ պալ, տճ։ ասէլ, կամ սէնմութ, կամ մոզիշ, արբ։ էնկիւպին, ռէկլաք, կամ շէհլաթ, և կամ շէրէքշան, պր։ և ըստ մեզ՝ մեղր․ Է հիւթ թանձրացեալ, քաղցր իբրև զշաքար՝ ծանօթ ամենեցուն, յաճախեալ ընդ բոլորանդակ աշխարհ, բայց առաւելապէս յասիա, զոր յօրինեն մեղուք 'ի բծիծս 'ի գարնանային ցօղոյ, և 'ի հիւթոց քաղցրահոտ ծաղկանց, և տերևոց․ որոյ կրկին է տեսակ․ սպիտակ, և մթին դեղին․ սպիտակն առաւել ազնիւ է սակս մաքրութե, զոր և 'ի գործ ածեն 'ի պէսպէս քաղցրաւենիս, նաև 'ի դեղօրայս հանդերձ բաղադրութե այլոց․ որ է օգտակար կրծոց, չնչարգելութեան, և հազից․ զի է թուլացուցիչ, անօսրիչ, մաքսեցուցիչ, և յոյժ մեղմապէս լուծիչ բնութե։ 'Ի գաղատիա ելանէ տեսակ ինչ ազնիւ մեղու, զորոյ զհամեմատն ոչ ուրեք է գտանել․ զոր և 'ի պարգև առաքեն մեծամեծ իշխանաց․ յոյժ մամնաւոր է սորա գործունէութի 'ի գիպուածս ախտի ելեփանդականի և գժնեայ բորոտութե, զոր մարթ է 'ի գործ արկանել ևթէ 'ի ներքուստ առաւօտէն ուտելով, և ևթէ արտաքուստ օծմամբ։ Այլ և օգտաւէտ է 'ի գիպուածս հեծկլտանաց, հնագոյն հազից, և այլ ախտից կրծոց։

Մէլալէուքա․ տես քաճէբութ։

Մէլամբօլիա․ տես հտ․ ա․ երես 234։

Մէլաչխօնիա․ տես չխօնիա։

Մէլարանչիա․ տես տուրանջխում։

Մէլէ․ տես մեղ։

Մէլիլօթուս, կամ թրիֆօլիում օտօրաթում, լա։ մելիլօթօ, իտ։ իքլիլիւլ մելիք, արբ։ Է բոյս, որոյ ցօղունն բարձրանայ յերկրէ իբր երկու կամ երեք ոտնաչափ, և է դարոնագոյն, մէջն դատարկ, վախիտ, և ճիւղալից։ Տերև սորա նման է տերևոյ ֆէնիկրէքօ անուանեալ բուսոյ, բայց առաւել սպիտակ քան զայն։ Ծաղիկն փոքրիկ, դեղնագոյն, և 'ի տեղիս

տեղիս նաև սպիտակ, և երկայնահասակ։ Յետ ծաղ-կանց յաջորդէ արկղաձև սերմնափակս սեաւս, յորս են սերմունք դեղնագոյնք, և ձուաձևք։ Իսկ արմատն երկայն, մանր, սպիտակ, և բազմահեր, կամ թե-լալից։ Բուսանի յանհարթ, և 'ի քարուտ տեղիս, լի է իւղով, և գոյացական աղիւ, և բնութբ կակ-ղացուցիչ, մեղմապէս լուծիչ, և բացողական, և 'ի մասնաւորի առ 'ի լուծանել զկալուածս դաշտանի կանանց։

Մէլիս, կամ մելուս. լտ։ Թասսօ, իտ։ բօսսօլք, կամ պօսսօլք, տճ։ Է տեսակ մի քառոտանի կենդան-ւոյ 'ի չափ գայլոյ, որոյ սաւեն է կարծր, և երփնե-րանգ. ընչացքն երկայն. ատամունքն սայրասուր, թիկնամէջն լայն, սրունքն կարճ, ոտքն նման էշան, իսկ միսն փափուկ և համեղ ըստ վարաղու։ Սա յա-ճախ գտանի 'ի լերինս եւրոպիոյ։ Եւ ոմանք զայս. մանէ ասեն՝ թէ զերիս կամ չորս ամիս ննջէ ան-ընդհատ, և ապա անդրէն սթափեալ յառնէ. զորոյ ճարպ 'ի գործ ածեն 'ի դեղ երիկամնամժեռութե, ցաւոց սատեանց, տկարութե ջղաց, և չխաթիքս ան-ուանեալ յօդուածացաւութե։ Արիւն սորա չորա-ցուցեալ, փոշիացուցեալ՝ և արբուցեալ, դեղ է չնչ-արգելութե, և գօգութե, և 'ի մասնաւորի բորբ-ոտութե և քոսոտութե։ Զափն 'ի 10 ցորենոյ մինչև 960։

Մէլլօնէ կամ մելօնէ. տես մելօ։

Մէլ մերքուրիալէ, իտ։ եաւպանֆելլեննին պալը. տճ։ այսու անուամբ իմանի մեղրն վայրենի ուեհա-նի, որ է բնութբ զովացուցիչ, և մեղմապէս լու-ծիչ. սովորաբար 'ի գործ արկանի 'ի գրեխս։ Զափն 'ի մի ունկւոյ մինչև ցերկք։

Մէլ րօզաթում, լտ։ մելէ րօզաթօ, իտ։ կիւլ պալը, տճ։ և ըստ մեզ՝ մեղր վարդի. որ է յատուկ դեղ 'ի դիպուածս վիրաց բերանոյ, լնտերաց և կո-կորդի. այլ և սեղմէ զորովայն՝ եթէ ըմպելով, և եթէ 'ի գրեխս 'ի կիր արկանելով. բայց չէ պարտ 'ի գործ արկանել 'ի վերայ յղի կանանց։ Զափն յե-րկց ունկւոյ մինչև 96։ Սովաւ սակայն աղողեն զկո-կորդն և զբերան առ 'ի բուժել զվերոյիշեալ վէրս։

Մէլօ կամ քուքումիս մելօ, լտ։ մելօնէ, իտ։ քօ-քօնպա ունթիքիւլէ, գ.աղղ։ բօբօնէ, յն։ փաւուն, տճ։ սախուն, արբ։ բէլէնաւի, կամ խարպուզէ, կմ

եչէն, կամ էսէն, և կամ ֆիրվէնկ, պր: և ըստ մեզ՝ սեխ: Է պտուղ ինչ քաղջածանօթ յամենայն ումբքէ. որոյ մէջն է փափուկ, ջրալի, քաղցրահամ, մա-ղամայն և դեղ օգտակար մելամաղձոտ անձանց, և որոց վնասակեալ են թանձրամած և արիւնայքն բնու-թեան. զի է զովացուցիչ և միզաբեր և թուլացու-ցիչ բնութեամբ: Սորա սերմն կամ ունդն կարգի 'ի դասս չորից բացողական և միզաբեր սերմանց:

Մէնթա. տես մէնթհա քրիսբա:

Մէնթհա բիբէռիթիս, և կամ մէնթհա բիբէռի-թա, լա: մէնթա բիբէռիթա, կամ մէնթա բախմա, իտ: մանթ փուավռէ, կմ մանթ տ՛ անկլըթէռ, գղղ: բէբըր մինթ, անգղ: ինկիլթէռա, կամ լաւ եւ՝ ին-կլըիղ նանէսի, տճ: և ըստ մեզ՝ անանուխ անգղիոյ. այսպէս կոչեցաւ սակս յաճախ բուսանելոյ սորա յանգղիա. խոտ սաստկահոտ, յազգէ անանխոյ, որոյ ցօղունն է երկայն իբր մի և կէս ոտնաչափ, ուղիղ, և ճիւղալից: Տերեւ սորա նման է տերևոց հասարակ անանխոյ: Ծաղիկքն ելանեն 'ի ծայրս ճիւղոց, և են մանր երկթերթեան, ոժգոյն կարմիր. բերէ և քառեակ սերմունս 'ի միջի: Իսկ արմատն է միջակ ըստ երկայնութեն և ըստ թանձրութեն, բաշխեալ և պատեալ բազմաթիւ թելանման ոստիւք: Լինի և յեւրոպիա 'ի վայրս դիճայինս և 'ի բուրաստանս, որոյ տերևն եփեալ 'ի ջուր, և արբուցեալ, դեղ է ստամոքսի, ջղաց, լուծման որովայնի, փսխման, փը-քոց, և ցաւոց որովայնի: 'Ի սմանէ ելուզանեն ազգ ինչ ոսկեգոյն և ազնուագին իւղոյ համեմի, որ իտա-լերէն օլիօ էսսէնցիալէ տի մէնթա բիբէռիթիտէ կոչի. որոյ ներգործութիւնն նոյն է ընդ տերևոյն: Չափն 'ի չորս չթէ մինչև ց6 խառն ընդ շաքարի. Ունի սա միւս ևս ազդուութիւն 'ի ցրտացուցանել զբերանն:

Մէնթհա քրիսբա, լա: մէնթա քրէսբա, իտ: տիէօղմօ, յն: մանթ ֆռիսէ, գղղ: նանէ, տճ: նաանայ, արբ: ռաֆունէ, կամ բիւթիւք, պր: և ըստ մեզ՝ անանուխ: Է բոյս հոտաւէտ յաճախեալ 'ի պարտէզս, և 'ի բուրաստանս. որոյ ցօղունն է երկայն իբր երկու ոտնաչափ, ուղիղ, քառանկիւնա-ձև, կարմիր, և ճիւղալից: Տերևք նորա երկայն, խիտ, ծայրասուր, թաւամազ, մթին կանաչ, և շուր-ջանակի ատամնաւորեալք. Ծաղիկն մանր

սպիտակ, կարմրագոյն, և հերձատ. յետ թօթափելոյ ծաղկանց արտադրէ քառեակ սերմունս մանունս, և երկայնաձևս. իսկ արմատն երկայն, և թելալից։ Սա լի է իւղով, և ցնդական աղիւ. օգտաւէտ է 'ի գիպուածս ջղային ախտադառնութեան, և արգան_դացաւութեան, ջղային դժուարամարսութեան, տկա_րութեան ստամոքսի, փքախտութեան, հեծկլտանաց, խթից որովայնի, փսխողականութեան, և այլ ոցին նման ախտից պատճառելոց 'ի տկարութենէ ջղաց. զի է խթիչ բնութ.։ չափն 'ի կէս տրամէ մինչև ցմի խառն ընդ ուժ ունկի ջրոյ։ Զնոյն գործունէութիւն ունի նաև 'ի ցքահանէ եղուզեալ ջուրն, զոր կոչեն' ա_գուա սթիլլաթա տի մէնթա։ 'Ի սմանէ արտահա_նեն նաև զիւղն, զոր իտալացիք' օլիօ էսէնցիալէ տի մէնթա կոչեն. որ 'ի նոյն պէտս վարի։ Չափն 'ի յերկու շթէ մինչև ց6։

Մէնխանթօ. տես Թրիֆօլիում Ֆիպրինում։

Մէնինճէ. այսու անուամբ ըստ անդամազննոց նշանակի' մզնիք ուղղոյն, որ պատեն զուղեղն. որոց միոյն առաջնոյն' բիա մատրէ, այսինքն գորովամայր. և միւսն' տուրամատրէ, այսինքն խստամայր։

Մէնսթռուա. տես Մէսթռուի։

Մէռկուս. տես Մէրկուս։

Մէռքուրիալիս, լա։ մէռքուրիալէ, կամ մէռքօ_րէլլա, իտ։ եապան ֆէսլիէնի, թճ։ և ըստ մեր Թարգմանագրի' վայրի ռեհան։ Է բոյս ինչ բազմա_տեսակ. յորս երևելին են երկու տեսակք, առաջինն կոչի' մէռքուրիալիս մաս. որոյ ցօղունն է երկայն իբր մի թզաչափ, բոլորակ, յղկեալ, և փոքրաճիւղ։ Տերևք նորա են լայն, երկայն, յղկեալ, սրածայր, և եզերահերձ։ Պտուղն փոքրիկ, և կարճականթ. բերէ և սերմնապատիկս արկղաձևս, յորս են սերմունք ձուաձևք, և բոլորչիք. իսկ արմատն երկայն և թե_լալից։ Բուսանի 'ի բուրաստանս. լի է իւղով և ցնդ_ացական աղիւ. ունի մասնաւոր իմն ազդուութիւն 'ի բանալ զմանրամասնեայ երակս, և 'ի գրգռել զդաշտանս կանանց, եթէ արգանակ, կամ խաշու կազմեալ արբցի. զի է բացողական, միզաբեր, և մեղմապէս լուծիչ։ Իսկ երկրորդն կոչի' մէռքուրիա_լիս վուլկարիս, որոյ ձև, գոյն և ներգործութիւն նման է վերնոյն, բայց միայն ծաղկամբ տարբերի 'ի նմանէ։

Մէռքուրիուս, կամ հիտրառճիռուս, կամ առ_

Արճէնթում վիվում, լա: մէռքուրիօ, կամ առճէնթօ վիվօ, իտ: իտռառղիռօս, յն: զէյպաք, կամ զավաւք, կամ սայըթ, կամ հառխալ, կամ մուլիֆ, և կամ իւռ-նան, արբ: ժէպէլէն, կամ զէնպէհ, կամ ժիպվէհ, կամ ժիբնի, և կամ սէյմապ, պր: և ը մեզ՝ սնդիկ, կամ ջրարծաթ, և կէ՛ կենդանի արծաթ: Է մետաղ ինչ սպիտակ իբրև զարծաթ, ծանր, լպրծուն, յարա-շարժ, թափանցիկ, և բոլորովին ցնդական, որ 'ի հուր մերձեցուցեալ փոխարկի 'ի ծուխ զազրահոտ: Ըստ փիլիսոփայից, և ըստ քիմիականաց սա է հիմ-նական սկիզբն այլ ամենայն հանքաց և հրահալե-լեաց. թէպէտ սա գտանի ՃԷ ամենայն երկրաւ տա-րածեալ և Ճապաղեալ, բայց տռատագոյն, և ազ-նուագոյնն յերկիրն սպանիոյ, գերմանիոյ, և գաղ-ղիոյ: Սա է դեղ ազդու և իբր ընդհանուր դեղթափ ընդդէմ ախտից գաղղիականի, և ելեփանդականի. զի թուլացուցեալ բանիոյ զաւիշկեան անօթս, և զծակոտկէնս նրբաթեալ երակաց, և անօրեալ զան-զապականութի արեան արտաքս ելուզմամբ 'ի բերա-նոյ զլորձունս և ջոոզունս. և միանգամայն արմա-տաքի խլէ զթոյնս վերոյիշեալ ախտից, եթէ 'ի վայր արկանիցի ըստ հարկաւորապէս պահանջեալ եղանա-կի. և ըստ վկայելոյ ամենայն հեղինակաց և Ճար-տար բժշկաց՝ ունի սա զմասնաւոր լինի գործունէու-թի 'ի գիպուածս ախտիցս՝ քան զայլ ամենայն դե-ղորայս. տե՛ս զայսմանէ և 'ի հա. ա. 'ի գլ. լը. եր. 382: Նոյնպէս և գերագոյն դեղ է ընդդէմ որ-քինոյ, բորոտուե, քոսոտութե, և այլ ամենակերպ ախտից և վիրաց մորթոյ 'ի վեր երևելոց 'ի նեխեալ և յապականեալ հիւթոց: Այլև ապաքինէ զխոյլս պարանոցի, զջրաժախութի, զկէլընճիկ յորջորջեալ ախտն, և զախտն որ կոչի՝ բասսիռնէ իլիպքա, և միանգամայն 'ի դուրս վանէ զորդունս և զճճիս որովայնի: 'Ի սմանէ կազմեն դեղարարք զմէռքու-րիօ տօլչէ, զսուպլիմաթօ քօռռօզիվօ, զմէռքուրիօ բռէչիբիթաթօ ռօսսօ, զմէռքուրիօ բռէչիբիթաթօ պիանքօ. կոչի և թուռպիթ մինէռալէ, և զինճիֆրա, ևն. զորս 'ի տեղիս իւրեանց ունիմք յիշատակել: Բայց գիտել արժան է, զի այսօրինակ սնդկաւ պատ-րաստեալ դեղորայք ոչ յարմարին 'ի լուծմունս որո-վայնի, 'ի թոքացաւութիւն, և ոչ յայլ ինչ գիպուածս կրծոց, և ջլաց: Դարձեալ, սովոր խմանան և

ճանաչէին զՋերմութիւն և զցրտութիւն օդոց։ Նոյնպէս ասվաւ հեղեղեալ զթիթեղունս ոսկւոյ՝ ոսկեզօծ առնեն զհրահաւէլիս։ Այլ պարտ է ուշ դնել, զի սորա ծուխն և գոլորշին յոյժ վնասաբեր է մարդկան, զի պատճառէ զլուծումն ջղաց, և զդողդոջումն անդամոց։

Մեռքուրիուս բռէչիբիթաթուս նիճէռ, լտ։ Մեռքուրիօ բռէչիբիթաթօ նէռօ, իտ։ սիեահ սուլըմը, տճ։ Վայրասուզեալ նիւթս այս որ է սեւացուցեալ սնդիկն երբեմն 'ի կիր արկանի 'ի դիպուածս քաղցկեղի, զոր պարտ է փոշիացուցեալ ցանել 'ի վերայ վիրաց, որ ապառեալ ծախէ զաւելորդ մսամոլեալ մասունս մարմնոյ։

Մեռքուրիուս բռէչիբիթաթուս վիռիտիս, լտ։ Մեռքուրիօ բռէչիբիթաթօ վէռտէ, իտ։ եէշիլ սուլուր, տճ։ Կանաչացուցեալ սնդիկն, որ է դեղ պատշաճողական 'ի բուժել զսերմնականութիւն ընդ երկար ժամանակս 'ի վար արկանելով, այլ մեծաւ ըզգուշութեամբ. քանզի վնասակար է ստամոքսի, չափն 'ի մի ցորենոյ մինչև ցչորս։

Մեռքուրիուս բռէչիբիթաթուս ռուպէռ, կամ հէբէրթհէռմօսիտուսմ ռուպռում հիտռառճիրի բէռ օսսիսէբթօնիքում, լտ։ Մեռքուռիօ բռէչիբիթաթօ ռօսսօ, կամ իբէռթէռմօսսիտօ ռօսսօ տի մեռքուռիօ բէռ լ'օսսիսէբթօնիքօ, իտ։ քըրմըզը սուլուր, տճ։ Է դեղ ինչ կարմրերանգ, փայլուն, և տապահամ, բաղադրեալ 'ի սնդկէ, և յայրիչ ջրոյ. զոր առեալ 'ի կիր առնուն վիրաբոյժք առ 'ի մաքրումն նեխեալ, և փտեալ վիրաց՝ մանաւանդ վիրաց դաղղիականի, և 'ի ծախումն աւելորդ, կարծրապինդ և սպնգանման մսեղինաց 'ի վեր եռեալոց շուրջ զվիրօք, դոյզն ինչ ցանելով եւեթ զայնս. որով ապառեալ ապաքինէ զնոսա, և միանգամայն ցրուէ զայտուցս ելեփանդականս։ 'Ի կարմրացուցեալ սնդկէ առնի կազմեն զսպեղանի ինչ, որ 'ի նոյն պէտս վարի, զի է փաղազիչ, և ծախիչ բնութեամբ։

Մեռքուրիուս բռէչիբիթաթուս ֆլաւուս, կամ ճիալլուս. տես Թուրպիթ մինէռալէ։

Մեռքուռիօ. տես Մեռքուրիուս։

Մեռքուռիօ բռէչիբիթաթօ նէռօ. տես Մեռքուրիուս բռէչիբիթաթուս նիճէռ։

Մեռքուռիօ բռէչիբիթաթօ վէռտէ. տես Մեռքու-

րիուս բռէչիբիթաթուս վիրիտիս ։

Մեռքուռիօ բռէչիբիթաթօ ռօսսօ, տե՛ս մեռքու-րիուս բռէչիբիթաթուս ռուպեռ ։

Մեռքուրիօ սուպլիմաթօ քօռռօզիվօ, կամ օսսի-մուռիաթօ տի մեռքուռիօ իբեռօսսիճենաթօ, իտ ։ մեռքուրիուս սուպլիմաթուս քօռռօզիվուս, կմ օքսիմուռիաս հիտռառճիրի հիբեռօքսիճենա-թում, լտ ։ սիւլիւմէն, տճ ։ տառաշքէնէ, պր ։ Է սպիտակ բիւրեղացեալ դեղ ինչ փաղաղիչ և սաստիկ թունաւոր, յօրինեալ 'ի սնդկէ, յարջասպէ, յաղէ, և յոգւոյ ընչքօրակի ։ Սա վասն բուռն զօրութեան իւրոյ վաղընդփոյթ փաղաղեալ վիրաւորէ զստամոքսն, և զփորոտիսն, եթէ ոչ վրիպակաւ արբցէ արտաքոյ քան զչափն պայմանեալ, որ և բազում անգամ 'ի միջոց քսան կամ երեսուն վայրկենի առթէ զանհան-դուրժելի խէթ և ցաւ ստամոքսի և փորոտեաց, զչափազանց ժայթքումն, զպտոյտ գլխոյ, զչորութին որկորոյ, զբաղխումն սրտի, զթալկութին, զցուրտ քիրտն, զուշագնացութիւն, զցնցումն ջլաց և մկա-նանց, զմիզարգելութին, և զհեծկլտանս ։ Ջարկ բազ-կին լինի յոյժ մանր, և կարծր ։ Հուսկ յետոյ պատ-ճառէ 'ի ստամոքսն, կամ 'ի փորոտիսն և զքաղցկեղ, ուր և սկսանի ցաւակցելի ախտաժէտն անբերելի անձկութբ̃, յաճախակի լուծմամբ զրկիլ 'ի կենաց ։ Այլ դարման սորա՝ են ործացուցիչ դեղորայքն, զոր պարտ է փոյթ ընդ փոյթ մատուցանել նմա. նոյնպէս և մոխրաջուրն՝ որ է գլխովին հակառակն կամ դեղթափն այսր մահաբեր դեղոյ ։ Այլև դե-մակալ է կաթն, կոգի, իւղն ձիթենեաց և նշոյ-են ։ Բայց մեք յաճախ 'ի վար արկանեմք զսա 'ի դեղորայս դուզնաամանեայ չափով. այսինքն զչոր-րորդ մասն միոյ ցորենոյ մինչև ցերկու ցորեան խառն ընդ մի լիտր 'ի ցքահանէ ելուզեալ ջրոյ 'ի միջոցի 24 ժամուց. որով անվրէպ փարատէ զամենակերպ ախտս դաղղիականս, և 'ի մասնաւորի զորքիւն, և զբորոտութիւն ։ Նոյնպէս առեալ 'ի կիր արկանեմք զսա արտաքուստ վասն հնագոյն դաղղիական վիրաց 'ի վեր երևելոց 'ի շրթունս, 'ի ռնգունս, 'ի ծա-ծուկ անդամս, յանձկագոյն մասն արգանդին, և յա-մորձիքն ։ Չափն 'ի մի ցորենոյ մինչև 94 խառն ընդ չորս ունկի ջրոյ. զոր պարտ է սակաւ սակաւ թրջել կտաւով և դնել 'ի վերայ դժնեայ վիրաց ։

Մէռքուրիօ տօլչէ, կամ օսսիմուրիաթօ թէրմօսսիտօուլօ տի մէռքուրիօ, իտ: թաթլը սուլէմէն, տճ: սիմապի շիրին, պր: և ըստ մեզ՝ սնդիկ քաղցր, կամ քաղցրացուցեալ սնդիկ: Յոյժ հռչակաւոր է 'ի մասին օգտաւէտութեան՝ 'ի դիպուածս ամենակերպ խոցանաց՝ առթելոց յուժգնութէ, մանաւանդ խոցանաց լերդի. նոյնպէս է դեղ գերագոյն ընդդէմ խուլք պարանոցի, ջրգողութե՛, դալկան, միջահատական տենդի, ախտի գաղղիականի, և ելեփանդականի, հնագոյն ցաւոց յօդուածոց, որդանց և ճճեաց որովայնի, և արիւնախառն փորհարութե՛ պատճառելոյ 'ի բռնութէ բնութե. զի է թուլացուցիչ, միզաբեր, լուծիչ, ընկղմիչ, և ճճէհալած: Չափն 'ի մի ցորենոյ մինչև ց4. յառաւօտն: Եւ իբրև տեսանեմք զնշանս՝ եթէ սկսանի լորձունք կամ թուք ընդ բերանն իջանել. յայնժամ օրէն է կամ գլխովին խափանել զգործածութիւն, և կամ նուազել զչափն: Այլ գիտել արժան է, զի եթէ դէպ լինի 'ի կիր արկանել զսա վասն արիւնախառն փորհարութեան առթելոյ 'ի բռնութէ բնութե, յայնժամ օրէն է 'ի վեր արկանել այսու եղանակաւ՝ որ բարւոք յաջողի: Զօրօրինակ. քաղցրացուցեալ սնդիկն յինչ չափ և իցէ՝ երրորդ մասն նորա պարտի լինել չափ իբէքաքուանա արմատոյ լոսելոյ. իբր զի՝ եթէ քաղցր սնդիկն իցէ երկու ցորեան, իբէքաքուանան պարտի լինել վեց ցորեան, զորս խառնեալ ընդ իրեարս տացես հիւանդին 'ի պահ առաւօտուն:

Մէռքուրիօ քիարիֆիքաթօ, իտ: թահիր օլունմուշ ժիվա, կամ թէմիզլէնմիշ, տճ: և ըստ մեզ՝ զտեալ սնդիկն: Զայս սնդիկ առ 'ի գործել յարմար 'ի պէտս դեղորէից, սովորութե է զտել. քանզի որչափ առաւել զտեալ իցէ և մաքուր, այնչափ ազդու, և թափանցիկ լինի դեղն. որով փութով ընդմտանէ և բանայ զմանրամասնագոյն ծակոտկէնս երակաց, և յորդէ զլորձունս:

Մէռքուրիօ քօռռօզիվօ. տես մէռքուրիօ սուպլիմաթօ քօռռօզիվօ:

Մէսպիլուս (ծառն,) մէսպիլում (պտուղն,) լտ: նէսպօլա (պտուղն,) նէսպօլօ (ծառն,) իտ: մէսպըլա, յն: մուշմուլա, կամ տէօնկէլ, տճ: պէյուլիմ, արբ: գիւնտէսէ, կամ էշքիլ, պր: և ըստ մեզ՝ զկեռ: Է ծառ, և պտուղ նորա մթնատեսիլ, բոլորշի 'ի

չափ ընկուզոյ, որ յորժամ թարմ է, կարծր է և յոյժ տտիպ. այլ եթէ սակաւ ինչ հնանայ, առ փոքր մի կակղանայ և համեղանայ. օգտաւէտ է 'ի դիպուածս հոսման արեան, և թանչից, զի է սեղ_միչ բնութեան. որով արգելու և զյորդառատ հոսումն միզի, և զժայթքումն մաղձի:

Մեզէնթերիօ, իտ: մասարէքա, արբ: և ըստ մեզ՝ մեսենդր, կամ միջընդերք: Է մաշկ ինչ, յոր հաս_տատեալ կամ զետեղեալ են ընդերքն կամ աղիքն, զի մի ցրուեսցին, կամ ընդ միմեանս պատեալ խառ_նակեսցին, որ լի է անհամար երակօք և նեարդօք, անկեալ բազում ճարպով և մսանամբք:

Մէսթռուի, կամ Ֆլուսսօ մէսթռուալէ, իտ: մէնսթռուա, լտ: հայիզ կմ՛ այպաշըըը. տճ: թամս. կամ տահր, կամ առէտ իլ նիսան, արբ: և ըստ մեզ՝ դաշտան, կամ արէնք կանանց, և կամ տեռատեսու_թի. տես զայսմանէ հտ. ա. երես 188:

Մեզքօլօն. այսու անուամբ ըստ անգամազննաց նշանակի՝ մասն ինչ միջընդերաց, կամ մեսենտերին, կցեալ ընդ աղիս, մանաւանդ ընդ այն աղիս, որ առ_ձայնի՝ քօլօն, այսինքն կողոն:

Մէտրիանա. այսու անուամբ ցուցանի՝ միջներակ:

Մէտիասթենուս. անուամբս իմանի՝ թաղանթ ինչ որ պատէ զկրծոսն ընդ երկայնութիւն. որ առ մեզ կոչի՝ միջնաթաղանթ:

Մէտուլլա, լտ: միտօլլա, իտ: էքմէք իչի, տճ: լէպլապիլէչ, արբ: և ըստ մեզ՝ միջ կամ փոր հացի. որ է ներքին խմորն ընդ կեղևով նորա, որ վարի 'ի պէտս որ և իցէ քաթափլազմաի, այսինքն թանձրա_թանի:

Մէտօռռէա, է բառ յունական. տես Ֆլուսսօ տէլլէ բուռէնաէ:

Մերկուս, կամ մէռկուս, լտ: սմէռկօ, իտ: գա_ռապաթաք, տճ: սէօվտանիկ, արբ: թիւխուճէ, պր: և ըստ մեզ՝ հողամաղ: Է տեսակ մի թռչնոյ 'ի չափ սագի. որոյ գլուխն կարճ է՝ բայց լայն. կտ_տուցն սեաւ, նեղ և ծայրաւոր, որպէս և լեզու նորա. ատամունքն փոքրիկ և կոր. փետուրքն 'ի փորն են սպիտակ և սեաւ. բայց գոյն նոցա այլ և այլ է. թևք փոքրիկ, որպէս և տուտն նորա. ունի զմատունս կցեալս մսեղէն թաղանթով իբրև զսագ: Գտանի սովորաբար յեղերս ծովուց, 'ի գետս, և 'ի

ճախին տեղիս. ընկղմեալ զինքն 'ի ջուրս ներքնալող լինի ընդերկար ալահս, և որսայ զձկունս և ուտէ անյագաբար: Միս սորա օգտակար է 'ի գիրացուածս լուսնոտութեան: Իսկ ճարպն կակղացուցիչ է և մեղմապէս լուծիչ բնութեան:

Մէքօնիա, իտ: ըստ մեզ՝ մեկոնիոն: Է հիւթ ինչ թմբրեցուցիչ, հանեալ 'ի մեկոնէ: Դարձեալ՝ անուամբս այս իմանի յաւելուած ինչ սեաւ հաւաքեալ յաղիս սաղմին՝ որ յարգանդի:

Միազմա, իտ: անուամբս իմանի՝ ապականութիւն տարափոխիկ ախտից:

Միթուլուս, կամ միթիլուս, լտ: Է ձուկն ինչ փոքրիկ և երկայն 'ի չափ կատուի, յաճախեալ 'ի խորս գետոց. որոյ միս փափուկ է և համեղ. միանգամայն և դեղ ազդու ընդդէմ խածուածոց կատաղի շանց, և միզարգելութեան. գրգռէ և զդաշտանս կանանց:

Միլիառի, իտ: տասը հազարաւորը, տճ. և ֆր մեզ՝ ախտ կորեկային. տես հատ. ա. երես 341:

Միլիարիս, լտ: այսու անուամբ նշանակի կորեկաձև և փոքրիկ մանանք ինչ մարդկային մարմնոյ: Դարձեալ՝ իմանի տեսակ ինչ ախտի, որ ըստ տաճկաց կոչի՝ տասը հազարաւորը. տես միլիառի:

Միլիում, լտ: միլիօ, իտ: քէնրօս, յն: տարը, տճ: չիւրրէ, կամ սիւմմամ, կամ տիւխն, և կամ թայրֆ, արբ: գէավէրս, կամ էրզէն, և կամ շուշու, պր: և ըստ մեզ՝ կորեակ: Է ընդեղէն ինչ բոլորշի, կամ ձուաձև, կարծր, դեղին կամ սպիտակ, և փայլուն, որ վարի 'ի պէտս հաւուց և 'ի դեղօրայս մեղմացուցիչս. քանզի լի է իւղով և ցնդական աղիւ. յորմէ և երբեմն աղքատքն յօրինեն զհաց:

Միլլէբէս, կամ մուլթիբէտէս, կամ չէնթիբէտէս, կամ օնիշի, կամ սաէլլի, և կամ բոաչէլլիոնէս, լտ: չէնթօ կամպէ, կամ միլլէբիէտի, իտ: թէզպիհ պէօճէի, կամ պուռնճուկ պէօճէյի, տճ: համմէ, արբ: բէժկպալէ, պր: և ըստ մեզ՝ նեպուկ, կամ բազմոտանի: Է զեռուն ինչ տափարակ գաշտաձև 'ի չափ մեղուի. գոյն նորա գորշ կամ սպիտակ հարեալ 'ի գոյն կապոյտ. ունի յոլովագոյն ոտս մանունս, նուրբս, և սպիտակս: Բնութիւն է յոյժ երկչոտ. որ 'ի խրտնուլն՝ փութանակի յինքն ամփոփեալ զգլուխն, և զոտս՝ կծկի, և իբրև զհատ

կլօրակ անկեալ մնայ յերկրի: Սա գտանի 'ի քարուտս և 'ի խոնաւուտս, լի է հիւթով, և ցնդական աղիւ. օգտակար է 'ի գիրգուածս գայլական, ջրգողութե, չնչարգելութե, միզարգելութե, և խոյլի պարանոցի, եւս լուծանէ զքար գոյացեալ յերիկամունս մարդոյ: Զափն 'ի 20 ցորենոյ մինչև ց60. յաւուրն:

Միլլեբիեափ. տես միլլեբես:

Միլլէֆօլիում, կամ աքիլլէա, և կամ միլիթարիս, լտ: միլլէֆօլիօ, իտ: ճիվան բէրչէմ, տճ: հազար տանէ, պր: և ըստ մեզ՝ հազարատերևուկ: Է խոտ անուշահոտ, և տտպահամ, բուսեալ յամայի և 'ի խոպան տեղիս, որոյ ցօղունն է կարծր, անկիւնաւոր, թաւամազ, ճիւղալից և երկայն իբր մի և կէս ոտնաչափ: Տերևք սորա հերձոտ են և մանր՝ ըստ նմանութե տերևոց երիցկի, բայց կարծր քան զնա: Ծաղիկքն մանր են և փոքր մի սպիտակ, որք ելանեն 'ի գագաթան, և 'ի ծայրս ճիւղոց՝ հանդերձ բազմաթերթ, և ճառագայթաձև առէջիւք. յետ թօթափելոյ ծաղկանց 'ի վեր երևին սերմնափակք փոքրիկք, և գեղնագոյնք, յորս են սերմունք մանունք: Իսկ արմատն փայտայինն է, թուխ, և թելալից: Այս խոտ լի է հիւթով և ցնդական աղիւ. օգտաւէտ է 'ի գիրգուածս ախտից և տկարութե ջղաց, թանչից, ախոնդանոտութե, փքախտութե, և խթից առթելոց 'ի փքոյ: Զափն 'ի մի ունկեայ մինչև ց4. զոր պարտ է եռացուցանել կամ թրջել Ը մի լիտր ջրոյ. և առեալ ըմպելիս այս 'ի միջոցի 24 ժամուց:

Միմօսա, կամ հերպա վիվա, և կամ Ֆլութէքս սէնսիտիվա, լտ: սէնսիթիվա, կամ էրպա միմօսա, իտ: և ըստ մեզ՝ ամփոփուկ, կամ պատկառուկ: Է բոյս ինչ ամերիկեան, որոյ ցօղունքն և ճիւղքն թեքեալ են յերկրի: Տերևք նորա են երկայն, մաքուր, և խիտ, 'ի յարգի առ ամերիկացիս. վասն զի ունին զայն իբր գերագոյն դեղ ընդդէմ հնագոյն հազից, և ցաւոց կրծոց. յայն սակս ստէպ ծախեն 'ի տերևոյ անտի. բանայ և զձայն մարդոյ: Ծաղիկ սորա սկահաձև, սերմն երկայն, և տափարակաձև, պատեալ երկեակ փեճեկով: Իսկ արմատն նուրբ և փոքրիկ: Բուսանի 'ի դիճային տեղիս, որ և գտանի դրեթէ յամենայն գաւառս պրազիլիոյ. և ունի բնութի իմն մասնաւոր, զի 'ի հպիլն կմ 'ի փչել շնչով՝ իսկ և իսկ ամփոփէ զտերևս և զճիւղսն, բայց

յետ սակաւուց անդրէն պարզէ:

Մինիում, լտ: մինիօ, իտ: սիւլիւյէն, կամ սիւլկէն, տճ: սալաքօն, արբ: կոչի և առ արաբացիս սիպլիքօն, կամ սէպրիքօն: Թէղրու, կամ խարէնճ, կամ սիրինճ, և կամ մէվիչ, պր: և ըստ մեզ՝ նօթ: Է ազգ ինչ կարմիր փոշւոյ, գործեալ 'ի կրոյ կապարի: Վարի 'ի պէտս կարմիր ներկի, և չորացուցիչ սպեղանւոյ:

Միրիսթիքա մօսքհաթա, կամ միրիսթիքա առօմաթիքա, կամ նուքս մօսքհաթա, կամ նուքս միրիսթիքա, լտ: նօչէ կամ նօչի մօսքաթա, իտ: մօսքօ քարիատօ, յն: կէօզիւ Թիպ, կամ ճէօվզ պուվա, արբ: հինտիստան ճէվիզի, տճ: և ըստ մեզ՝ ընկոյզ հնդկային, կամ ընկոյզ մշկահոտ: Է պտուղ ինչ մշկապատ ձուաձեւ մեծութբ, գունով նմանեալ ծիրանւոյ: Կեղև նորա կարծր է գրեթէ ըստ կեղևոյ մերումս ընկուզոյ և կանաչագոյն, այլ 'ի հասունանալն փափի 'ի գոյն մոխրոյ. որ և ինքնին բացեալ լինի. և երևի ընկոյզն մշկահոտ պատեալ մաշկաւ, մէջն փոքր մի կակուղ է և մսագոյն, խայտաբղէտ, անուշահոտ, և ջերմահամ, միանգամայն և իւղալից, որ յաճախ 'ի կիր արկանի 'ի բժշկութե ակարութեան ստամոքսի և ջղաց, ցաւոց գլխոյ, արգանդի, և արովայնի փորհարութե: Զափն 'ի 10 ցորենոյ մինչև ց20. 'ի յընկուզէ առնի արտահանեն զիւղ ինչ ոսկեգոյն, զոր իտալք կոչեն՝ օլիօ տի նօչէ մօսքատա, յորմէ աներկևօն և ապահովապէս 'ի վար արկանի 'ի ներքուստ, և յարտաքուստ վասն վերոյասացեալ ախտից, և 'ի մասնաւորի անդամալուծութե, հեծկլտանաց, փախողականութե, և դժուարամարսութե. զի է խթիչ, և զօրացուցիչ բնութբ: Զափն յերկու չթէ մինչև ցեօթն՝ խառն ընդ շաքարի: Ծառ սորա բարձր է և ստուար ըստ նմանութե մերումս տանձենեաց: Փայտն ուղղալից է, ոստքն մորչք, և դիւրաբեկ, կեղև մոխրագոյն: Տերևն անուշահոտ, դալար, և երկայն նման ըստ իմիք դեղձի: Ծաղիկն վարդաձև, և քաղցրահոտ: Այս ծառ յաճախ բուսանի 'ի Հնդիկս, և 'ի ճիաքօն, նա յաւէտ 'ի ճիավայ անուանեալ կղզին:

Միրրա. տես միրրհա:

Միրրհա, լտ: միրրա, կամ լաւ եւս միռռա, իտ: միւռասֆի, տճ: մօռ կամ մուռ հիճազի, արբ: և ը

մեզ՝ զմուռս։ Է խէժ հոտաւէտ, դառնահամ, միանգամայն և տտիպ․ որոյ ընտիր և ազնիւն է մածաչիթ, ոսկեգոյն, մաքուր, բծաւլից, պարարտ, ազդու, և թափանցիկ․ միանգամայն և դեղ ազդու ընդդէմ խոցմանց արգանդի, և կալուածոց դաշտանի կանանց։ Չափն 'ի 10 ցորենոյ մինչև 924․ օգտէ և տղայաբերից։ Վարի և 'ի ապեղանիս լուացուցիչս, և մաքրողականս։ Զնոյն զօրծունէութիւն ունի սորա նաև ոգին, զոր եւրոպացիք առհասարակ թինկտուրա ա միռռա կոչեն։ Ծառ սորա յաճախեալ յերջանիկն արաբիա, յեթովպիա, և յեզերս կարմիր ծովու, որոյ բունն կարծր է և փշալից, իսկ տերևն երկայնաձև, և գուուղ։

Միրօպալանուս, լտ։ միրապալանօ, իտ։ գէտալիլէ, կամ հէլլէճ, կամ հէլէլիկ, արբ։ գէպլէր, պր։ հալիլէ, կամ ամլիլէ, տճ։ և ըստ մեզ՝ բան կամ շլոր հնդկային։ Է պտուղ ստուար, նման շլորոյ, որ յաճախեալ է յաշխարհն հնդկաց, որոյ հինգ տեսակք են․ զի ոմանք են գնտակաձև մոխրագոյն, և տտպահամ, և 'ի միջի ունին կորիզ ինչ ստուար․ իսկ ոմանք երկայնաձև և սեաւ։ Ոմանք են մթին դեղին, և երկայն 'ի չափ արմաւոյ։ Իսկ ոմանք դեղին կնճռակեղև։ Նախնիք 'ի վար արկանէին զսոսա 'ի զանազան դեղորայս․ իսկ այժմ յոյժ սակաւ 'ի կիր արկանեն յարևմուտս։

Միցա․ այսպէս անուամբ ցուցանի այն տեսակ լուծողական դեղորէից, որք առանց զայրացուցանելոյ զրգուեն զաղիսն կամ զփորոտիսն, որով ըստ ինքեանց լուծանեն միջակապէս սեփական բնութեամբ․ յայսմ կարգի են մանանայ, թամարինտի, քասսիա, սալ թարթարօ, ևն։

Մուլթիբէտէս․ տես միլլեբէս։

Մուլլուս, լտ։ թուխլիա, կամ բէշէ պառապօնէ, իտ։ թէքիր պալըղը, տճ։ սէմեք սուլթան իպրահիմ, արբ։ Է ձուկն ինչ ծովային, երկայն, և ըստուար սկսեալ 'ի 50 տրամէ գատանի մինչև 92 լիտր մեծութբ․ որոյ գլուխն է կարմիր, որպէս և թեփք նորա․ թեփք մորթոյն մեծ են և կարծր․ իսկ միսն փափուկ է և համեղ, միանգամայն և դեղ ընդդէմ թանչից, և խթից որովայնի։

Մուճիլ, կամ չէբհալէքուս, լտ։ մուճճինէ, չէֆալ, իտ։ գէֆալօս, յն։ քէֆալ պալըղը, տճ։ և

ըստ մեզ՝ գլխաձուկն ։ Է ձուկն թանձրագլուխ , տատաշրջնչացք , երկայնորովայն , և թեփալից ․ իսկ միսն համեղ և պարարտ ․ որոյ խախացւցն չորացուցեալ , և լուծեալ 'ի սանդ , և արբուցեալ , դեղ է փորհարութե , ակարութե ստամոքսի , և փախման ։ 'Ի գլխոյ նորա ելանէ քար ինչ փոքրիկ ․ զոր լատինք կոչեն՝ էքինուս , կամ օբօնարիլուս ․ յորմէ կազմեն դեղ ազդու ընդդէմ միզարգելութե , և միանգամայն լուծանէ զքար՝ եթէ գացի ընդ անցս նորա ․ չափն 'ի 10 ցորենոյ մինչ ց40 ։

Մումիա , լտ ։ մումմիա , իտ ։ մօմեայ , տճ ։ հաֆըլզուլէյթուլթ կամ մումեայ , արբ ։ խօնչին , պր ։ և Ը մեզ՝ մումեայ ․ որով անուամբ հասարակօրէն նշանակի մարմին երկարատև ամաց մեռելոց օծեցեալ ազգի ազգի բալասանօք , հալուէիւք , կպրովք , զըմռովք , խնկօք , և սոցին նման համեմային նիւթովք ․ որոյ ընտիրն է սեաւ , մաքուր , փայլուն , և սաստկահոտ ․ սովորաբար 'ի կիր արկանի 'ի դիպուածս , յորում ոք երկնչի կամ խրտնու յն և իջէ իրաց ․ և 'ի մասնաւորի 'ի յարդի ունիմք զսա ընդդէմ խախտեալ և խորտակեալ ոսկերաց , և ճմլեալ անդամոց , և թուլացեալ ջլաց ։

Մումիա մինէրալէ , իտ ։ Է դեղ ինչ բաղադրական , կազմեալ 'ի սնդկէ , յարճճոյ , և 'ի փոշւոյ խեցգետնոյ ․ մասնաւոր է սորա ներգործութի 'ի դիպուածս ախտից մորթոց , որպիսի են ալաքն գաղղիականն , ելեփանդականն , յորս 'ի վեր երևին վէրք կամ խոցք 'ի մորթս՝ արկանելով 'ի վերայ խաւն Ը քօմաթաւ՝ ըստ օրինակի օծանելեաց ։

Մուչիլլաճճինէ , իտ ։ լուսալի , պր ։ Է հիւթ ինչ քամեալ յն և իջէ սերմանց , խոտոց , պտղոց , ևն ։

Մուսա պուպօռ , կամ բալմա հումիլիս լմեձիս , լտ ։ Է ծառ հնդկային , որոյ բունն է սպնդային , կեղևապատ , և ստուար իբրև զազդր մարդոյ ։ Տերևք նորա երկայն , լայն , և թեփալից ։ Ծաղիկն կարմիր , կամ դեղին ․ պտուղն եռանկիւնաձև , և մեծ 'ի չափ վարնդոյ , ողկուզօրէն կախեալ ըծառոյն՝ 12 ․ 14 ․ նաև երբեմն 20 ․ պտուղ 'ի մի ողկոյզ ․ և իւրաքանչիւր հասա պտղոյ ունի երրեակ չանեմարանս նուրբս ․ յորում լի են հիւթք կակուղ , և համեղ ․ զոր և ուտեն իսկ ․ որ է սնուցիչ , զովացուցիչ , և անօսրիչ բնութե , և 'ի մասնաւորի 'ի յարդի ունին

զաս 'ի դիպուածս բորբոքման կրծոց, և թանձրուն տողունից: Իսկ արմատն երկայն, հաստ, բոլորակ, փայտային, և թելալից. զոր եփեալ 'ի կաթն և արբուցեալ, ապաքինէ զպատոյտ գլխոյ, և 'ի մասնաւորի օգտէ ընդդէմ վնասաբեր կաթուածոց:

Մուսթէլա, կամ Ֆուշինա, լտ: տօննօլա, իտ: կէլինճիկ, տճ: րուսէ, կամ իպնի րուս, կամ սիւնուհայէհ, և կամ սէրուալ, արբ: ռաս, կամ ռասու, կամ նիֆլա, կամ նիւմիւս, և կամ տէրէմ զիարթ, պր: և ըստ մեզ՝ աքիս: Է տեսակ մի չորքոտանի կենդանւոյ՝ ձևով մարմնոյն, և մեծութեամբ՝ է 'ի չափ մեծ մկան, բայց փոքր մի երկայն և նուրբ քան զնա. ստէ նորա 'ի թիկունս և յորկորն է սպիտակ կամ դեղին. գոյնն նման է կղի, կամ սամուռի. իսկ տուտն կարճ. բնակի 'ի տանիս, 'ի շտեմարանս, և յայլ սոցին նման տեղիս. թշնամի է մկանց, ձագուց հաւուց, և աղաւնեաց. յորոց վերայ յանկարծ ժամանեալ հեղձուցանէ, և զարիւն նոցա ծծէ: Լինի ևս վայրենի, որ բնակի 'ի դաշտս, և յանտառս. ունի զմորթ ազնիւ, և զմիս համեղ. որոյ միս և խախացոցն են դեղ շահաւէտ ընդդէմ հարուածոց օձից, և կէլինճիկ անուանեալ ախտի: Ուղեղք նոցա լինին դեղ ազդու ընդդէմ վերնոտուն, կամ լուսնոտութեան: Զնոյն գործունէութիւն ունին սոցա նաև լեարդքն: Եղն սոցա ըստ ոմանց ծիւրեալ հալէ զլոււան աչաց, մանաւանդ յորժամ խառնի ը̃ շաքարի բաղադրելոյ սամթի ջրով:

Մուսթում, լտ: մօսթօ, իտ: շիրա, տճ: սիւլաֆ, արբ: շէրթէ արէ, պր: և ըստ մեզ՝ քաղցու: Է ճմլեալ հիւթն խաղողոյ. որ բնութեամբ զօրացուցանէ զթուլութիւն սրտի, քաղցրացուցանէ զառապութիւն հիւթոց, և մեղմապէս լուծէ զվնասակար հիւթս աղեաց: Այլ բարուոք եռացուցեալ՝ լինի դեղ շահաւէտ անդամալուծութեան, գնելով զլուծեալ մասն անդամոցն 'ի մէջ այսր քաղցուի:

Մուսվաք. տես մսվաք:

Մուսքիո. տես մօսքոս:

Մուսքուս Թէռռէսթռիս ռէբէնս, լտ: մօսքօլօ թէռռէսթռէ, իտ: եէր եօսունու, տճ: և ըստ մեզ՝ մամուռ կամ լոռ: Է խոտ մանր և նուրբ, բուսեալ 'ի վերայ քարանց, և հողոց, և 'ի յանձլին ծածկէ զերեսս երկրի իբրև զսէզ: Տերևք նորա են փափուկ,

դեղնախառն կանաչ, և նուրբ իբրև զբուրդ. զոր ա-ճիւնացուցեալ և ցանեալ 'ի վերայ վիրաց, վաղվաղակի արգելու զհոսումն արեան։ Ծիլ նորա և ծաղիկ մանր են յոյժ, զոր միայն խոշորացուցիւ մարթ է տեսանել։ Իսկ սերմն նոյնպէս մանր յոյժ, և սեաւ, փակեալ 'ի մաշկի 'ի գագաթն նորա. որ առկայ սատարիկ ցրտոյ և տօթոյ, ոչ կորուսանելով զսերմնական զօրութիւն իւր զամս յոլովս։ Սորա է տեսակ ինչ կոչեցեալ 'ի լատինացւոց՝ ռաւպօռէռւս, որ յաճախ բուսանի 'ի վերայ ծառոց, և տնկոց իբրև ըղասունկ. արձակէ տերևս սպիտակս, փափուկս և նուրբս, զոր եփեալ 'ի ջուր և արբուցեալ, դեղ է ընդդէմ փսխողականութեան, փորհարութեան, և հոսման թանչից. բերէ նման վերնոյն ծաղիկս, և սերմանս։ Սոքա ոչ արտադրին և ածեն իբրև զայլ խոտս յամառան, այլ 'ի ձմեռան, երբ նոքա թառամեալ չորանան. իսկ 'ի սկիզբն գարնան յորժամ սակաւինչ ջերմանայ երկիր, և սկսանին այլ խոտք բուսանիլ, ինքեանք չորանան, և մնան 'ի տեղիս, ուր յոլով գիճութիւն կայցէ։

Մուսքօլօ, իտ։ սիննիրլի էթլէր, կամ դառաճա, կամ պալըգ էթլէրի, տճ։ խօտոտումէ, կամ մօղէ կէմ ատալէ, արբ։ պաղուպ, պր։ Այսու անուամբ նշանակի մկանն, որ է տեսակ ինչ մառոյ բազմապատիկ նրբաթել ջլօք, նեարդիւք, և երակօք վարսակեալ, նրբագոյնս մաշկով պատեալ տանաձև եղերօք, 'ի ձգանս աւարտեալ, և տարածեալ սփռեալ ընդ ամենայն մասունս մարմնոյ. ուստի և է գործի ինչ սեպհական կամայական շարժման մարդկային մարմնոյ. քանզի անմիջապէս ընդունի զզօրութիւն իւր յուղղոյ ընդ ջիլս իջեալ։ Ըստ կարծեաց քաջահմուտ անդամազննաց, որ զգուշագոյնս հետազօտեցին զկրագ, համարին գոլ թուոց մկանաց 446։

Մուրխաթօ տի բօթասսա օսսիձէնաթօ, կամ օսսիմուրիաթօ տի բօթասսա թէռմօսսիձէնաթօ, իտ։ Է նիւթ ինչ բիւրեղատեսակ դիւրահալ, և կծուահամ, միանգամայն և դեղ օգտաւէտ ընդդէմ ամենակերպ տենդից աւթելոց յուժգնութէ, զի է թուլացուցիչ, և միզաբեր բնութբ։ Զափն 'ի 10 ցորենոյ մինչև 960։

Մուրմուրօ, լտ։ կարկարիծաթօ, կամ կօրկօլիամէնթօ, կամ կարկարիզմօ, և կամ կօւկօլիօ, իտ։

կառկառա, տճ․ Է անուն ո՛ և իցէ հեղանիւթոց, որով ողողէ ոք զկոկորդն հանդերձ կոնչաձայն կարկաչմամբ ։

Մավլաք, կամ մօվլաք, և կամ մուավլաք ։ Այս անուն՝ զոր յարաբացւոց առեալ վարեն և այլ ազգք, նշանակէ զծառ ինչ մեծ, ոստալից, ջղալիր, և սպիտակ, որոյ տերեւն է երկայնաձև, պալարա, և դիւրաբեկ ։ Պտուղն մանր, կարմրերանգ, հոտաւէտ, և ախորժահամ ։ Իսկ արմատն ստուար, տարածողական, սպիտակ, և ջղալից ։ Բուսանի յերջանիկն արաբիա, և 'ի հնդկաստան ։ Ըստ նորա և արմատ լինի դեղ ազդողական ընդդէմ դալկան, եթէ փոշիացուցեալ զանգեսցի ընդ հիւթոյ կամ ջրոյ լեմոնի, և ընդ շաքարի․ զոր մարթ է 'ի կիր արկանել ըստ չափու միոյ դրդալի սեղանոյ երկիցս անդամ յաւուրն․ այսինքն մի դրդալ ընդ առաւօտն 'ի ծոմուսա, և նոյնչափ ընդ երեկս ։ Թուրքք առ հասարակ սովաւ մաքրեն զատամունս, և զլնդերս ։

Մօթաչիլլա, կամ քօտաթռէմօլա դուխպուռտամ, լտ․ քուրէթթօլլա, կամ քուլթռէթթա, կամ քօտաթռէմօլա, և կամ սգուամաքօտա, խտ․ գուդրուկ սալլանան, տճ․ Է թռչուն փոքրիկ, որ 'ի դադարիլն 'ի գետնի շարժէ հանապազ զձետն և զկետոյսն․ գտանի յեզերս գետոց, և ճահճաց․ որոյ միսն է բնութք բացողական, որով դրդուէ զմէզն, և լուծանէ զքար գոյացեալ յերիկամունս մարդոյ ։

Մօնօչէրօս, կամ ունիքօռնիս, լտ․ լիգօռնօ, կմ ունիքօռնօ, խտ․ կէրկէրտան, տճ․ օռնու վախտ, արբ․ և ըստ մեզ՝ միեղջերու, կամ ռնգեղջիւր ։ Է քառոտանի մեծ 'ի չափ ձիոյ, որ ունի եղջիւր մի կանգնեցեալ 'ի վերայ ճակատու իւրոյ, որ է կարծր, դալարեալ, պարուրաձև, երկայն իբր երկու կամ երեք ոտնաչափ, և ծայրասուր, որ պաշտպանէ նմա ։ Այրի սա ընդ երկար, և ծնանի սակաւս, աւելի քան զամ մի կրելով զծնունդս յորովայնի ըստ փղաց, և սիրէ լողել 'ի ջուրս․ արագընթաց քան զյոլով սրընթաց կենդանիս, և դիւրընտել․ բայց չունելով ոչ զճարպկութն կամ զպարարտութն փղի, և ոչ քաջայարմար անդամս, ոչ կարէ այնչափ ծառայել մարդկան, որչափ փիղն․ յայտնապէս և մարդիկ չունին փոյթ որսալ զնա կենդանի, այլ միայն զմորթ նորա, և զեղջիւր, որ իբր դեղթափ համա-

րեալ է ընդդէմ աղջլի աղջի ջերմնատուոր ախտից: Է սորա և այլ տեսակ մի՝ որ ունի եղջիւր 'ի ձև փղոսկրեայ ծանր, կարծր, և երկայն իբր երկու կամ երեք կանգուն, գալարուն, և մէջն դատարկ, որ կոչի 'ի լատինացւոց՝ ունիքօռնու, զոր 'ի վաղ արկանեն 'ի գեղորայս. բայց զայս եղջիւր ունի և տեսակ մեծ ձկան կոչեցեալ խլանտացւոց բոռբառով՝ Նառվալ:

Մոռպօ վէնէռէօ. տես մալ վէնէռէօ:

Մոռպօ քօլլէռա, իտ: զաֆրանը կմ՝ էօրքէլի և կմ տառկնլըք խլլէթի, տճ: և թ մեզ՝ ախտ մաղձային, կամ զայրադին. տես զայսմանէ հտ. թ. երես 234:

Մօսքուս, կմ մօսքհուս, լտ: մօսքիօ, իտ: միսկ. արբ. և տճ: էհաս, կամ շէզուվ, և կամ գէզալէ. պր: և ըստ մեզ՝ մուշկ: Է մսկարդեալ թեթև և ազնուագին նիւթ ինչ, գոյացեալ 'ի պալարի զպորտուէն կենդանւոյն անուանելոյ՝ քէվրօթին, կմ մօսքուս մօսքիֆէրուս. որ է տեսակ մի վայրի էրէոյ, ձևով մարմնոյն և մեծութ՛ նման է փոքրիկ այծու, ունելով սոսկ երկայնս՝ պարուրաձևս, և գիւրաբեկս: Այս կենդանի լինի 'ի Թիպէթ, 'ի սկիւթիայ, 'ի տարտարիա, 'ի չին, 'ի հնդկաստան, և 'ի սիպերիա. զոր բազում անգամ որսան բնակիչք տեղեացն, և զպալարն հանդերձ պորտուէն հատեալ չորացուցանեն, և լինի նիւթ ինչ սաստիկ, աղդու, անուշահոտ, որ 'ի սկզբանն է արիւներանգ, և աղառա սակաւ սակաւ փոխարկի 'ի գոյն շագանակի. համ նորա դառն է միանգամայն և տտիպ. ունի զօրաւորադոյն իւղս, և աղս ցնդականս, և է դեղ գերագոյն ընդդէմ խածուածոց կատաղի շանց և կենդանեաց, մանաւանդ յորժամ խառնի ընդ չինապուօի բաղադրելոյ քօնսէռվա տի ռամէռինօի: Նոյնպէս օգտաւէտ է 'ի դիպուածս լուսնոտութեն, անդամալուծութեն, ախտից ջղաց, և արգանդի, ցաւոց գլըխոյ, մակորովայնի և ստամոքսի, ախոնդանդութեն, դողդոջման անդամոց, ախտի ցնցականի, խլութե, և ցաւոց ականջաց, և 'ի մասնաւորի ամենայն ախտից առթելոց 'ի թուլութէ ջղաց. զի է զօրացուցիչ և գրգռիչ բնութ՛. բայց կանանց ոչ է յարմար մանաւանդ յղեաց: Տամին 'ի յերկու կշիռ ցորենոյ մինչև 34 յաւուրն: Այլև օգտէ այտուցի 'ի վէր երևելոյ 'ի մակորովայնն: Գտանի և խաբէականն

տրուեստիւ յօրինեալ, որ չէ կարի պիտանացու:

Մօռուս, լտ: մօռա, իտ: Թութ աղաճը, տճ: և ըստ մեզ՝ Թթենի: Է ծառ ընտանի, ստուարաբուն, թանձրակեղև, անհարթ, և ոստալից, որոյ կրկին է տեսակ. զմի տեսակն կոչեն՝ մօրուս նիկրա, այսինքն սեաւ թթենի, որոյ փայտն կարծր է, հզօր, և դեղին: Տերևք նորա երկայն, բոլորակաձև, կարծր, քաղցրահամ, և շուրջանակի ողոզաձև ատամնաւորեալք: Պտուղն նախ քան զհասանիլն է կանաչ, ապա կարմիր, և տտպահամ, յորմէ կազմեն օշարակ անուանեալ 'ի Թուրքաց՝ Թութ շառապը. և 'ի գործածեն 'ի դեղ ցաւոց և վիրաց բերանոյ, և լուծման որովայնի: Իսկ յետ հասունանալոյ փոխի 'ի գոյն սեաւ, և քաղցրանայ, և լինի դեղ իմն ընտիր ընդդէմ չորութե̃ և տապութե̃ կրծոց. զի է խոնաւացուցիչ, և քաղցրացուցիչ: Իսկ երկրորդ տեսակն է թթենի սպիտակ, զոր լատինք կոչեն՝ մօրուս ալպա, որոյ փայտն է դեղնախառն սպիտակ: Տերևն չէ ինչ տարբեր 'ի տերևոյ առաջնոյն: Պտուղն սպիտակ, փափուկ, քաղցրահամ, միանգամայն և զովացուցիչ բնութե̃: Իսկ արմատն երկայն է և ստուար. որոյ կեղևն փոշիացուցեալ և արբուցեալ, դեղ է կալուածոց դաշտանի կանանց: Զամն 'ի 30 ցորենոյ մինչև ց60: Սատակէ և զորդունս և զճճիս որովայնի:

Մօռպուս, մօռպօզուս, լտ: մօռպօ, մալաթօ, իտ: հաստա, մառազըլը, տճ: ալիլ, կամ էզիլ, կամ մէռիզ, կամ վէճիժ, կամ տալիֆ, կամ տէնէֆ, կամ մշատուշ, կամ այեան, և կամ սախպ ֆէռաշ, արբ: պիմառ, կամ սայրու, և կամ նաշալ, պր: և ըստ մեզ՝ հիւանդութի̃, հիւանդ, կամ ախտ, ախտաժէտ: Է անուն նշանակիչ ո՛ և իցէ ախտից, և ախտացելոյ:

Մօռպուս ռէքէնթինուս. տես ապօպլէքսիա:

Մօռպուս ռէճիուս. տես իթթէրիցիա:

Մօռպօ վէնէռէօ. տես մալ վէնէռէօ:

Մօռպօ քօլլէռա. տես քօլլէռա մօռպուս:

# Ն

Նաբհթա, կամ բիտաստաւբալթուս նաթուրալիս, կամ մալթհա, լտ. նաֆթա, իտ. նէֆթ եաղը, տճ. և ըստ մեզ՝ նաւթ։ Է տեսակ մի կպրոյ, պայծառ, ծծմբային, և հոտանաւտ իբրև զձէթ, որ 'ի հուր մերձեցուցեալ ուժգին բորբոքի. գոյն նորա սովորաբար է սեաւ. բայց գտանի և սպիտակ, որ լաւագոյն համարեալ է և առաւել գործունեայ. զի անօսրէ զթանձրամածութիւն տղունից, և սատակէ զորդունս որովայնի։ Զափն 'ի 2 շթէ մինչև ց10. նաև օգտէ ընդդէմ թուլութե և ցաւոց անդամոց և ջղաց, և 'ի մասնաւորի տռնաւռութեն, զի է խթիչ ջերմ և թափանցիկ բնութք։ Այսպիսիկ նաւթքս գտանին 'ի զանազան տեղիս, որպէս 'ի պարսկաստան, 'ի գաղղիա, 'ի վրաստան, յեզերս կարմիր ծովու, և 'ի կողմանս բաբիլոնի՝ բղխեալ յականէ, և 'ի Ջրհորոյ։

Նաբուս, կամ քունիաս, լտ. նավօնէ, իտ. շալկամ, տճ. սէլճէմ կամ լիֆթ, արբ. շէմլախ, պր. և ըստ մեզ՝ շողգամ։ Է կարմրախառն սպիտակ արմատ ինչ թամբալից և ախորժահամ, զոր բազում օրինակաւ հանդերձեալ ուտեն։ Նախնիք զսերմն այսր արմատոյ իբր դեղ 'ի վար արկանէին ընդդէմ լուսնոտութեան, այլ այժմ միայն 'ի կեր արկանեն յարևելս։

Նաթրիքս, կամ հիտրուս, լտ. Է տեսակ մի ջրային օձի՝ յաճախեալ յեւրոպիա, զոր իտալք՝ նաթուիչէ կոչեն, որ է սուսար 'ի չափ հասարակ օձի. գլուխ նորա լայն է և տափարակ, գոյնն գորշ, ունելով 'ի վերայ արատս բազումս. թոյն նորա ազդու է և չար, որ 'ի խայթել իւրում անվրէպ սպանանէ զմարդ, եթէ ոչ փութով նպաստամատոյց լիցի 'ի ձեռն կարևորագոյն դեղորէից. որպիսի են թիւրակէան, և աղն իժի, ևն։ Կերակուր սորա է ձուկն, մուկն, և գորտ. որոյ միս դեղ է ազդողական ընդդէմ ապականութե արեան, և ախտից կըր-

ծոց, միանգամայն օգտաւէտ է 'ի գինպուածս ախտից արգանդի աւթելոց 'ի գոլորշեաց։

Նաստուրցիում, լտ։ Նասթուրցիօ, իտ։ քարտա-մօն, յն։ Ճարճիր, կմ չէպիւզ, կմ սէպէթ, արբ։ Թէրէ Թիղէկ, կամ Թէշխիշիւք կամ շիպիշա, և կմ շիվիշթ, պր։ Թէրէ, տճ։ և ըստ մեզ՝ կոտեմ, կամ կոտիմ։ Է բոյս յաճախեալ 'ի բուրաստանս, և 'ի պարտէզս, որոյ ցօղունն է երկայն իբր երկու ոտ-նաչափ, բոլորակաձև և ճիւղալից։ Տերև սորա է երկայն, հերձոտ, և կծուահամ, զոր աղցան կազմեն ուտեն, և է դեղ ազդու ընդդէմ պքօռպուԹօյի, և շնչարգելուԹե։ Ծաղիկ սորա է քառաթերթեան և սպիտակ հարեալ 'ի գոյն ծիրանի։ Պտուղն փոքրիկ, բոլորշի, և տափարակաձև, ունելով 'ի միջի սերմունս կարմրերանգս, բոլորակաձևս, և տապա-համս։ Իսկ արմատն է փայտային, սպիտակ, և Թե-լալից։

Նաստուրցիում ազուաԹիքում, լտ։ Նասթուրցիօ ագուաթիքօ, կամ քրէշիօ, իտ։ սուԹէրէսի, տճ։ շիվիշթ աբի, պր։ և ըստ մեզ՝ կոտեմ ջրային։ Է բոյս մշտադալար, բուսեալ 'ի գէտ և 'ի ջրարբի տե-ղիս. որոյ ցօղունն է երկայն իբր մի ոտնաչափ, ստուար, կոր, ճիւղալից, կարմրախառն կանաչ, և միջին գատարկ։ Տերևք սորա են բոլորշի, հոտաւէտ, հիւԹալից, և կծանօղ լեզուի։ Ծաղիկն փոքրիկ, սպիտակ, քառաթերթեան։ Իսկ սերմն բոլորա-կաձև, կարմրերանգ, և տապահամ. որ արտադրի 'ի մէջ մաշկատեսակ պատենի։ Այս բոյս լի է իւղով, և գոյացական աղիւ, և է դեղ ազդու ընդդէմ խցմանց փայծեղան, միզենդրականի, և արգանդի. զի է բացողական, և նրբացուցիչ բնութե. օգտէ և ընդդէմ պքօռպուԹօյի։

Նարտուս հնտիքա, կամ սբիքա նարտի, և կամ սբիքա ինտիքա, լտ։ Նառտօ ինտիքօ, կամ սբիկօ նառտօ, իտ։ զիւմպիւլի խինթայի, կամ զիւմպիւլի հինտի, տճ։ և ըստ մեզ՝ անդեղեկ։ Է տեսակ մի նրբացօղուն, Թեթև, Թեփալից, փշալիր, և երփնե-րանգ բուսոյ, հոտաւէտ, և դառնահամ, միանգա-մայն և ստիպ, որոյ արմատն նման է եղեգան, և Թելալից։ Բուսանի 'ի բազում տեղիս արևելեան հնդկաստանի, լի է իւղով և ցնդական աղիւ. օգտա-ւէտ ընդդէմ տկարութե ուղղոյ, ջղաց, և ստամոքսի,

միանգամայն և գրգռէ զմէզն, և զդաշտանս կանանց, զիւրաշարժ յօրինէ զտուրևառութիս շնչոյ, և նորացուցանէ զթանձրամածութիւս հիւթոց: Վարի և 'ի բաղադրութեն թիւրակէսի: Կոչի և 'ի լատինացւոց՝ անտռօբօլնօ նատառուս:

Նաֆիթա. տես Նաբհթա:

Նէնուբհար. տես Նիմբհէա:

Նէսբօլա. տես Մէսբիլլում:

Նէրիում կամ ռօտօ տէնտառում, լտ: Նէռիօ, կմ օլէանտռօ, իտ: զըքըրմ աղաճը, տճ: Է ծառնկ ինչ շքեղատեսիլ՝ յածախել 'ի բուրաստանս, և 'ի գետափնեայս. որոյ տերևն է վնասակար և մահաբեր բնաւանի չորքոտանեաց, մանաւանդ կովուց, և իշոց, որք 'ի յուտելն սատակին անվրէպ: Այս տերև որ է մեծ, լայն, սուսեր, և կարծր, լինի դեղ ազդու ընդդէմ բորոտութեն, քոսոտութեն, և այլոց այսպիսի ախտից մորթոյ, եթէ սպեղանի կազմեալ օծցին նովաւ վշտացեալ մասունք մորթոյ: Զնոյն գործունէութիւն ունի նաև սորա բունն: Ծաղիկ սորա է գեղեցիկ, մեծ 'ի ձև վարդի, և կարմրերանգ: Յետ ծաղկանց արտադրէ պատեան ինչ գլանաձև, ունելով 'ի միջի սերմանս բամբակալիրս: Իսկ արմատն է երկայն, փայտային և մաքուր:

Ներվուս, լտ: Նէրվօ, իտ: Ֆլէվա, յն: սինիր, տճ: սասալ, արբ: բէյ, պր: և ըստ մեզ՝ ջիլ, կամ ջիղ. որ է մասն ինչ փափուկ և ուղղալից 'ի ներքուստ, բայց կարծր և մաշկեղէն արտաքուստ. որով բաշխին կենդանական ոգիք յուղղոյ գլխոյն, և յուղղոյ միջնողին ընդ ամենայն մարմինն բաժանեալ 'ի բազմամասնեայ մասունս. քանզի որք ծագին յուղղոյ գլխոյն, բաժանին յեօթն զոյգս: Առաջինն կոչի՝ տեսանողական, որովհետև ճապաղի յաչս 'ի պէտս տեսութեն: Երկրորդն՝ ձգի ընդ մկանունս աչաց բազմամանուած ուղէշիւք. որով և կատարի շարժումն տեսութեն: Երրորդն՝ արձակէ ստեղունս 'ի մկանունս դիմաց, աչաց, և ճակատու, և յարմատոց ատամանց ձգեալ առնու զմախճան 'ի լեզու, որով և կատարի գործողութն ճաշակողական: Չորրորդն՝ ձգի ըստ կիսոյն 'ի քիմս, և ըստ կիսոյն 'ի ստորին մաշկն լեզուի 'ի կատարումն ճաշակողական զօրութեն: Հինգերորդն ձգեալ 'ի թմբուկն լսելեաց տարածեալ ճապաղի դէպ 'ի մկանն հագագի, որով

կատարի շարժումն լեզուի, և յօդաւորութեան ձայնի: Վեցերորդն յորջորջի Թամփառ, որովհետև անտարբեր ձայնաւորէ զձայնս իւր, որք 'ի մկանունս հագագի, նոյնպէս և յայլ մասունս, որպէս 'ի կոկորդ, 'ի սիրտն, 'ի ստամոքսն, 'ի մեսենտեր, և յայլ ստորին մասունս ստորին որովայնի: Իսկ եօթներորդն զոյգ հաւասարաչափ ծառայէ շարժման հագագի, և լեզուի, որովհետև բաշխի 'ի մկանունս նոցին: Արդ թիւք ջլաց շառաւիղելոց յուղղոյ, և 'ի միջնողէն ամփոփին 'ի զոյգս երեսուն. որք և ունին ստեղունս բազմամասնեայս. յորոց եօթն ձգին յաղխից պարանոցի, երկոտասանքն յաղխից լանջաց, և հինգ յաղխից միջնողին: Իսկ մնացեալ թիւն վեցեակ արձակին յոսկերէ սրբանին, զորոց զտարածումն շառաւիղացն ընդ մարմինն բովանդակ աւելորդ իմն է մանրաքնին զննութեամբ կարգել աստէն:

Ներվօ. տե՛ս Ներվաւս:

Ներվօ լեզուիկոս. որով անուամբ յուցանին ոգիք թելթևագոյնք, որք գտանին 'ի մէջ խաղովականման ջլաց, որք և կոչին ոգիք ջլայինք:

Նեֆրիթիտէ, իտ: պեօպրէք մուհրիւքանը, կամ ւուֆիւնէթի, տճ: կուռածի կէրմ, պր: մուհրիւքանի քիւլահ, կամ մուհրիգի քիւլմէ, արբ: և ըստ մեզ՝ բորբոքումն 'Երիկամանց. զորմէ լիագոյն ունիս տեսանել հտ. Ա. երես 113:

Նիթրում, կամ սալնիթրում, և կմ օսախսէքլթանոս բօթասսէ բուռիֆիքաթում, լտ: նիթրօ, կամ սալնիթրօ, և կամ օսսի սէբթօնաթօ տի բօթասսա տէբուրաթօ, իտ: նիթռաթ տը բօթաս բիւռիֆիէ, գղղ: մէլխի պարութ, կամ պարութ ապխաթ, արբ: կիւվէրջիլէ, կամ կիւրվէրջիլէ թուզու, տճ: և ըստ մեզ՝ շէջքօրակ: Է աղ ինչ սպիտակ, բիւրեղատեսակ, թափանցիկ, ցնդական, դիւրահալ, և գոյացն ինչ դառնահամ, գոյացեալ 'ի հիւթոց կենդանեաց. որ յաճախ 'ի վար արկանի 'ի գիպուածս ամենակերպ սուր և դժնեայ ջերմախտից աղթելոց յուժգնութե բնութե. Նոյնպէս օգտաւէտ է և կարի գործունեայ ընդդէմ բորբոքման արեան, փողացաւութե, միզարգելութե, սերմնակաթութե, թանչից, փքախտութե, երիկամնաժետութե, և յօդուածացաւութե: Չափն 'ի 10 ցորենոյ մինչև 920 խառն ընդ ուժունկի ջրոյ յաւուրն: Բայց անչափապէս 'ի կիր ար-

կանելն թուլացուցանէ զստամոքսն, և նուազէ ըղ-մարսողական զօրութիւն. զի է թուլացուցիչ, պղծա-ցուցիչ, և միզաբեր բնութ: Սա ստէպ պտանի յեւ-րոպիա, և յասիա, նա յաւէտ 'ի կողմանս Եգիպտո-սի. ունի և զպյրողական զօրութիւն, յորմէ և կազ-մեն զխառօգ:

Նիթրօ. տես Նիթրում:

Նիթրօ սթիպիաթօ, իտ: տեմիր պողանըը կեւմէր-չիլէ, տճ: Է աղ ինչ բաղադրական, կազմեալ 'ի շնչըորակէ, և 'ի յունաքարէ. որ է դեղ օգտաւէտ 'ի դիպուածս խցանաց լերդի և փամփշտոյ, և կըշ-տացաւութե, ջերմախտից, և այլոց այսպիսի ջեր-մնատոչոր ախտից. զի է թուլացուցիչ, միզաբեր, և քրտնաբեր զօրութ: Զափն 'ի կէս տրամէ մինչև ցերկու:

Նիճէլլա, կամ մելանթիում, և կամ քումինում նիկրում ճերմանիքում, լտ: նիճէլլա, մելանթիօ, ճիթթէռանէ, իտ: մաուզքըլը, ֆն: չէօրէկ օթու, տճ: հապպըլ պէրէքէ, կամ չէմանիզ, կամ հապպըլ սուտէ, կամ խըհա, կամ չէմնի, և կամ չէհնիս, արբ: պու-կունչ, կամ սիասրուն, պր: և ըստ մեզ՝ արջնդեղ, կամ սև սոնիճ, և կամ սև գնտիկ: Է բոյս յաճա-խեալ յեւրոպիա, մանաւանդ 'ի կողմանս բարեզու, որոյ ցօղունն է երկայն իբր մի ոտնաչափ, պարարտ, և դարոնագոյն: Տերևք նորա կանաչ են և հերձոտ: Ծաղիկն մեծ, սպիտակ, և հինգթերթեան. զկնի ծաղկանց արտադրէ պատեան ինչ ստուար, թաղան-թային, և եղջերաւոր. յորում են ունդք 'սևաւք եռանկիւնաձևք, քացրահոտք, և կծուահամք. յո-րոց կազմեն դեղ ազդու ընդդէմ նուազութե ամսա-կան պարտուց կանանց, քաղօրեայ տենդից, փքախ-տութե, և տկարութե ստամոքսի. այլև առատա-ցուցանէ զկաթն կանանց, և սատակէ զորդունս և զճճիս որովայնի: Զափն 'ի 10 ցորենոյ մինչև ց20:

Նիմֆէա, լտ: նէնուֆար, կամ նինֆէա, իտ: նուլուֆեր չիչէի, կամ կէօլպուզէնի, և կամ նինիվ-ֆեր, տճ, և արաբ: և ըստ մեզ՝ կոկոռ, կամ հարսնեմատն, և կամ նունուֆար: Է բոյս՝ բուսեալ յեզերս գետոց, և լճաց, մանաւանդ յապառաղտուկս. տերև նորա է մեծ, լայն, բոլորշի, ստուար, թաւ բալից, և երկայնականի: Ծաղիկն մեծ, գնտա-գլուխ, և սպիտակ, որ 'ի վեր երևի 'ի գագաթան

Հանգչերձ սպիտակ, և հինգթերթեան աւէշնէք։ Պտուղն բոլորշի, և երկայնաձև, և 'ի մէջն ունի սերմունս երկայնաձևս, և սևս։ Իսկ արմատն ստորաբար է ստուար իբրև զբազուկ մարդկան, երկայն, ծներաւոր, թամբալից, խժային, մեդալից, արտաքոյ թուխ, իսկ 'ի ներքուստ սպիտակ։ Սա լի է խաղով, այլ նուազ աղիւ. զորոյ ելուզեալ զջուրն, ըմպի դեղ օգտակէտ 'ի դիպուածս անոնգանուոութե, և սևամաղձի. զի է զովացուցիչ, և հովացուցիչ բնութե, և 'ի մասնաւորի ընդդէմ ախտի թանչից, բորբոքողականութե արեան, և ջերմախտից։ Բայց սա արդէքս ոչ համարի այնքան 'ի յարգի։

Նինֆոմանիա։ Է անուն իրիք կանացի ախտից՝ առթելոց 'ի սաստիկ տռփանաց ամուսնութե. կոչի և ֆուռօռ ութէրինօ՝ այսինքն կատաղութե արգանդի։

Նիսի, կամ Ճինկ, կամ Նիմճինկ, և կմ Ճիմֆին։ Է բոյս ինչ՝ որ ստորաբար 'ի վեր երևի 'ի չինաստան իբր տանաչափ մի բարձրութե, ցօղուն նորա նուրբ է որպէս զցորենոյ։ Ծաղիկն կարմիր, և վեցթերթեան։ Իսկ արմատն ունի զձև արմատոյ մանրագոբի, այլ սակաւ մի փոքր է քան զայն. համով է քաղցր, ունելով ընդ քաղցրութե և փոքր մի դառնութի, զոր բնակիչք երկրին չորացուցեալ 'ի վար արկանեն ընդդէմ ապականութե արեան, շնչարգելութե, և թունից, և յոռի օդոց։ Չափն 'ի 20 ցորենոյ մինչև 40։

Նիքօցիա կամ Նիքօթիանա, լա։ Թապաքքօ, իտ. Թապա, գղղ։ քաբօնէ, յն։ Թիւթիւն, տճ։ տուխան, կամ Թըպղ, արբ։ տիւտ, կամ Թէմպաքիւ, պր։ և ըստ մեզ՝ ծխախոտ։ Է բոյս ինչ հռչակաւոր, որոյ ցօղունն է երկայն իբր չորս կամ հինգ ոտնաչափ, թանձր, բոլորշի, թաւամազ, և սպիտակաթամբ։ Տերև սորա լայն է, ստուար, թաւամազ, աժգոյն կանաչ, ջրալից, և մածուցիկ. համ նորա է տախպ, միանգամայն և տաղտկացուցուցիչ։ Ծաղիկն ծիրանագոյն, զանգակաձև, և հերձոտ։ Պտուղն երկայնաձև, և թաղանթաւոր, մէջն չերտաւոր, յորում բազկանեան սերմունք փոքրիկ, և կարմրերանգ։ Իսկ արմատն սպիտակ և թելալից։ Բուսանի 'ի պարտէզս, և 'ի պարարտ տեղիս։ Լի է իւղով և ցընդական աղիւ, և բնութե գրգռիչ և սաստիկ լուծիչ՝

եթէ 'ի վերուստ և եթէ 'ի ներքուստ. որ առեալ 'ի կիր արկանի 'ի դրեխս 'ի դիպուածս պնդութե որովայնի, փոշտանկութե և փքախտութե. օգտաւէտ է ընդդէմ ախոնդանոտութե, հնագոյն հարբըխոյ եջերայ 'ի կուրծս, շնչարգելութե, քնափութե, ընդհատ տենդից, պքօսպութեթօի, բորոտութե, և անդամալուծութե, ռութելոց յուժեղութենէ, այլև տատակէ զորդունս և զճճիս որովայնի: Հիւթ սորա դեղ է պահպանիչ ատամանց և լնտերաց 'ի փտութէ. յայն սակս առեալ ծաղքեն եւրոպացիք՝ մանաւանդ անդղիացիք 'ի տերևոյ անտի: Այլ որպէս հիւթն՝ նոյնպէս և ծուխ սորին տերևոյ է դեղ օգտակար ընդդէմ նեխութեան լնտերաց. բայց առ հասարակ սևացուցանէ զատամունս: 'Ի տերևոյ անտի լոսեալ 'ի փոշի մանրամաղ՝ քարշեն ընդ ռնգունս առ 'ի փռնչացուցանել, և 'ի գրգռել զհիւթս ուղղոյ, և միանգամայն արծարծել զզօրութիւս յիշողութե, և փարատել զծանրութիւս և զցաւս գլխոյ: Այլև երբեմն տապաքինէ զցաւս ակռայց, և ականջաց:

Նուտրիմէնթօ. տես ալիմէնթում:

Նուքս. տես 'ի Ներքոյ:

Նուքս եուկլանս, կամ րէճիա վուլկարիս, լա. նօչէ, իտ: ճէվիզ աղաճը, տճ: շաճարաթ իլ ճէօվզ, կամ կօզ, արբ: և ըստ մեզ՝ ընկուզենի: Է ծառ մեծ, ոստաւէտ, և տարածողական. որոյ փայտն է կարծր, հզօր, տևական, գորշագոյն, և անընդունակ ցեցոյ, յորմէ կազմեն ազնուագէս ձևաւակերտս: Տերևք սորա լայն են և ջղալից, և հոտաւէտ, և բնութբ սեղմիչ և քրտնաբեր: Ծաղիկն դեղին, բազմաթերթ, և թեփալից: Պտուղն ձուաձև պատեալ երկեակ պատենիւք, կամ կեղևովք՝ զոր լատինք՝ նուքս կամ նուքս անուանեն, և իտալք՝ նօչէ, և թուրքք՝ ճէվիզ. և արաբք՝ կօզ, կամ ճէվիզէ, կամ լէօզս, կամ դէսիֆ, և կամ ճէօվզ. և պարսք՝ էրաւ, կամ թախքէլիւն, կամ չարբէհլիւ, կամ չարմաղ, կամ սիքէվան, և հնդ կերախեքիան. իսկ հայք՝ ընկոյզ: Առաջին կեղևն այսր պտղոյ՝ է կանաչ և թամբալից, յորմէ կազմեն զգոյացուցին, զոր իտալք՝ էսթրաթթօ տի պքօրցա տի նօչէ կոչեն. 'ի կիր արկանի 'ի դեղ ընդդէմ երկարատև փորհարութե, և լուծման որովայնի, և ակարութե ջղաց, զի է սեղմիչ և խթիչ: Զամին 'ի հինգ կէջս ցորենոյ մինչև 310 յասուրն՝ խառն ընդ այլ

յարմարագոյն դեղորէից: Զայս կեղև վարեն 'ի պէտս և ներկարարք: Իսկ երկրորդ կեղևն կարծր է և գորշագոյն, զոր կուշիօ տի Նօչէ անուանեն. Ներքին կողմն այսր կեղևոյ է գոյացութիւն ինչ սպիտակ, կաթնահամ, և մաշկապատ, զոր և ուտեն իսկ. յարինեն նաև զքաղցրաւենի ինչ պատուական. զոր 'ի վար արկանեն ընդդէմ ցաւուց և վէրաց բերանոյ. ունի և սա ըստ ոմանց զմասնաւոր գործունէութիւն 'ի սպառել զապականեալ հիւթս մարմնոյ, և 'ի դըրդուել զաղիս: 'Ի պտղոյ սատի ելուզանեն զիւղ ինչ. զոր վարեն իբր դեղ ընդդէմ խթից արգանդի, և որովայնի, այլև օգնէ ծննանող կնոջ: Այս ծառ բուսանի յանտառս, 'ի բուրաստանս, և յայլ պարարտ տեղիս, որոյ կեղև բնոյն փոշիացուցեալ և արբուցեալ, դեղ է տկարութեան ստամոքսի և փսխման: Զափն 'ի 20 ցորենոյ մինչև 960, և զարմատ սորա նոյնպէս 'ի գործ ածեն 'ի դեղ ցաւուց յօդուածոց:

Նուքս վօմիքա, լտ: Նօչէ վօմիքա, իտ: գառկաոխուքէն, աճ: դիչլէ, կամ հքսառիւլ մէլիք, կամ գիւշլէ, կամ խուսպուպիլ ղուռապ, և կամ ճէվիզէ իլ գայ, արբ: Փուլթ, կամ գիւսիլա, պր: և ըստ մեզ ստուգաբանի՝ ընկոյզ ործացուցիչ: Է պտուղ ինչ տափարակ, բոլորշի, լայն, կարծր, թաւամազ, արտաքուստ մոխրագոյն կամ մթին դեղին, իսկ 'ի ներքուստ թուխ, կամ գորշագոյն, ունի և կորիզ: Սա է յատուկ թոյն վասն շանց, կատուց, աղուէսուց, և այլոց քառոտանեաց, և ոմանց թռչնոց. որք յուտելն մեռանին չարաչար: Բազում բժիշկք եւրոպիոյ, մանաւանդ պռուսինէք՝ հաստատեն, թէ օգտաւէտ է սա 'ի դիպուածս միջահատական տենդի, անդամալուծութե, մոլեգնութե, ախտնդանոունէ, ախտից արգանդի, միզահոսութե, և թուլութե միջաց, և այլոց անդամոց. բայց տացի մի աւելի քան զչորս ցորեան առ մի նուագ. և տացի երկու կամ երեք ժամ միջոց ժամանակի ընդ մի և ընդ միւս ըմպումն այսր չափոյ, միայն թէ կրկնելի է այդ գանէ մինչև 'ի չորս օր: Այլ եթէ ոք ուտիցէ զսա արտաքոյ քան զչափն պայմանեալ, բազում անգամ պատճառէ զործումն, և զլուծումն որովայնի, և երբեմն և զմահ: Այս պտուղ լինի 'ի բազում տեղիս արևելեան հնդկաստանի, և ասեն, թէ արտադրի 'ի յոստանկոյ միոյ կոչեցելոյ 'ի բարբառ եւրոպացւոց՝ Փլօ.

ուէ տի մալաբար, որ յաճախեալ է 'ի կողմանս յայնոսիկ, զոր քաջ ճանաչեն բնակիչք տեղեացն :

Նօլի մէ թանճէրէ, լա : լինճիթմէ պէնի, տճ : և ըստ մեզ ստուգաբանի՝ յիս մի հպիր. որով նշանակի ախտ կամ խոց ինչ գժնեայ, որ արտադրէ յանդգամս մարդոյ 'ի յոռի հիւթոց : Դարձեալ, այսու անուամբ իմանի և՛ ազգ ինչ բուսոյ, որ է օգտակար վիրաց և խոցից :

Նօչէ . տե՛ս նուքս :

Նօչէ մօսքաթա . տե՛ս միրիսթիքա մօսքաթա :

Նօչէ վօմիքա . տե՛ս նուքս վօմիքա :

Նօչէ տի չիպրէսսօ . տե՛ս քուպրէսոս :

Նօսթալճիա . տե՛ս ֆօլլիա :

# Չ

Չէլէրօ . տե՛ս աբիում :

Չէքմէքհուլ, կամ սխտարում, լա : Է բոյս վայրի, զոր արաբացիք լըքաքիում, կամ լըքիմում, և կամ ալխթհիմում անուանեն, որոյ ցօղունն է ծնրաւոր : Տերև սորա նման է տերևոյ բևեկնոյ : Ծաղիկն՝ մանուշակի. իսկ համն՝ սխտոյն : Բուսանի 'ի մարգագետինս, և 'ի հովանաւոր տեղիս, որոյ համքն եփեալ 'ի ջուր և արբուցեալ, դեղ է ապականութե և նուազութե սաղմի. այլ և ցրուէ զգոլորշիս արգանդի, և գրգռէ զդաշտանս կանանց, որով և պատրաստէ 'ի յղութի : Զնոյն գործունէութի ունի նաև սերմանն :

Չիաթիքա . տե՛ս իսքիաս : Դարձեալ, է անուն երկու երակաց կրնկան ոտին :

Չիալիվա . տե՛ս սալիվա :

Չիարաբբա . տե՛ս եալաբա :

Չիէնա, կամ ումպրա, և կմ ումպրինա, լա : Է ձուկն ինչ ծովային, սկսեալ 'ի 5 լտերէ՝ գտանի մինչև տասն օխայ մեծութբ. գլուխ նորա մեծ է և թանձր, ատամունքն երկայն, նուրբ, և սայրասուր, թեփ մորթոյն խեղաթիւր, կարմիր, կամ ոսկեգոյն. 'ի թիկունս ունի երկու փուշս կարծր, և սրածայր,

զօրէն փշոց քօռաչինուս յորձորձեալ ձկան · իսկ միան համեղ և դիւրամարսելի ։ 'Ի գլխոյ նորա ելանէ քար ինչ սոուար, և կարծր, զոր իբր դեղ 'ի վար արկանեն ընդդէմ միզարգելութե՛, և լուծանէ զքար, եթէ գացի ընդ անցս նորա ։ Չափն 'ի 20 ցորենոյ մինչև ց40 յաուրն ։

Շիլինկուանօլօ · այսու անուամբ ցուցանի՝ մաշկային կապ ինչ լեզուին, որ զետեղեալ կայ 'ի ներքոյ նորա, զոր հատանեն առ 'ի բանալ զարգելս լեզուի, սմին իրի կոչի և լեզուակապ ։

Շիլլա, կամ շիլլա մառիթիմա, և կամ ռատիքս շիլլա, լտ ։ չիբօլլա տի շիլլա, կամ սգուիլլա, կամ օանիթօ կալլա տի մառէ, իտ ։ սոխ սօղանը, թճ ։ անսուլ, կամ պասալ իլ պաշր . և կամ պասալ իլ ձէպէլ, արբ ։ բէեամուշ, պր ։ և ըստ մեզ՝ մկնսոխ, կամ սոխ ծովային ։ Է արմատ հաշակաւոր՝ նման ընտանի սոխոյ՝ ըստ ձևոյն և ըստ գունոյն, որոյ վասն և կոչեցաւ յանուն նորա, այլ մեծութեամբ 'ի չափ գլխոյ մանկան · իսկ համով դառն, միանգամայն և կծիչ, կմ՝ փաղաղիչ, բայց ունի զմանաւոր գործունէութի 'ի փարատել զջրգողութիս կրծոց, զհիցանս աւիշկեան մսանոց, զհազս թոքային, զթոքախտութի, զշնչարգելութիս, և զայլ ախտս կրծոց · զի է անօրիչ, մեզմիչ, և բացողական բնութե՛, որով և բանայ զգաշտանս կանանց, և զանցս միզի ։ 'Ի սմանէ կազմեն զքացախաթան, զոր իտալք կոչեն՝ օսսիմելէ շիլլիթիքօ, զոր օրէն է 'ի կիր առնուլ ըստ չափու միոյ գրդալի անդանոյ 'ի պահ առաւօտուն, միայն թէ կրկնելի է այգ մինչև 'ի քսան օր · երբեմն ևս կազմեմք հապս 'ի վերոգրեալ արմատոյ, զորոյ ըղշինելոյ կերպն մարթիս տեսանել հտ · ա · երես 158 ։ Իսկ եթէ ոք կերիցէ յարմատոյ աստի առաւել քան զչափն պայմանեալ, յայնժամ վաղվաղակի առթէ զանտոկալի խեթս ստամոքսի և որովայնի, զուժգին ցնցումն ջղաց և մկանանց, զբորբոքումն ստամոքսի, և երբեմն ևս զմահ, զի է թիւնաւոր, և փաղաղիչ բնութե՛ ։ Տերևք այսր արմատոյ են երկայն իբր մի ոտնաչափ, և լայն չորս մատնաչափ, պարարտ հիւթային, և դառնահամ, և 'ի միջի տերևոց ելանէ ցօղուն մի և կէս ոտնաչափ բարձրութե՛, որ 'ի գագաթան բերէ գնտակաձև, և սպիտակ ծաղիկ ինչ վեցթերթեան, բերէ և զսերմունս մանունս և սևս ։ Բու-

սանի յեղերս միջերկրական ծովու :

Շիմիա կամ շիմիոնէ · տես սիմիա :

Շինքուս, կամ շինքուս մարինուս, լա: շինքօ, իտ: սանկանդուր, ար: Է տեսակ մի մողէսի, յաճախեալ առ նեղուսիւ, երկայն իբր ձեռաչափ, և ստուար բթաչափ · գլուխ նորա մեծ է առ համեմատութ̃բ մարմնոյն, աչքն փոքրիկ, և թափանցիկ · ընչացքն սրածայր, թեփ մորթոյն արծաթագոյն, որովայնն լայն, սրունքն կարճ իբր բթաչափ · իսկ տուտն կարճ և բոլորակ : Գտանի նաև յարաբիա · լի է իւղով և ցնդական աղիւ · որ է դեղ ընդդէմ թուլութեան ջղաց, և թունից · զի է քրտնաբեր և սաղմնաձգաւիչ բնութ̃բ : Չափն 'ի 20 ցորենոյ մինչև ց40, կամ ց60 :

Շինքօ · տես շինքուս :

Շիրուս, լա: շիռռօ, իտ: շիշ, կամ խըմուռ, ար: ըքիռօս, յն: և ըստ մեզ՝ խոյլ · որով նշանակի ուռոյց ինչ կարծրացեալ՝ բայց անցաւ, 'ի վեր երևեալ 'ի խցմանէ և 'ի վատթար հիւթոց :

Շիրօքքօ · տես սիրոքք :

Շիօ · այսու անուամբ ըստ անդամազննաց իմանի ոսկր ինչ զետեղեալ կից յաղիս միջնողին 'ի մէջ երկուց անանուն ոսկերաց : Կոչի և ըքիօ :

# Ո

Ուբուբա, լա: պուպուպոլա, իտ: էբըփա, յն: հիւտհիւտ, կամ չավուշ դուշու, թճ: բուպէշ, պր: և ըստ մեզ՝ յոպոպ : Է թռչուն ինչ մեծ քան զծիտ, և փոքր քան զատարակ, թևք նորա և տուտ են խայտաբղէտք · իսկ մնացեալ մասն մարմնոյ բոլորովին մոխրագոյն, կատուցն երկայն, սրունքն կարճ · իսկ 'ի գլուխն ունի կատար ինչ խայտ, և թագաձև, զոր անջատեալ պահեն 'ի գլուխս՝ առ 'ի բուժել զանգար, որ է ցաւ կիսոյ գլխոյն : Իսկ միս սորա լինի դեղ խցանաց, և ցաւոց որովայնի :

Ութէրուս, լա: ութէրօ, իտ: չօճուկ եաթաղը կամ էվլի, և կամ խաղնէ, թճ: ումմու վէլէտ, ար:

և ըստ մեզ՝ արգանդ. որ է անուն նշանակիչ յատկապէս զաւակատանն իգաց:

Ուլթէրօ. տես ուլթէրուս:

Ուլիվա. տես օլիվա:

Ուլմուս, լտ: օլմօ, իտ: փթիլէա, յն: գաստաղաճ, տճ: տիւրտառ, կամ չէճառամթիլ ալէհուտ, կամ չէճառաթիլ պաղզ, արբ: թաղկ, կամ թաղկուտան, և կամ նաղ, պր: և ըստ մեզ՝ կնձնի: Է ծառ մեծ, կարծրաբուն, խտատերև, հիւթալից: և խժաբեր, բուսեալ 'ի լերինս և 'ի դաշտավայրս. որոյ տերևն է լայն, սրածայր, ջլալից, և շուրջանակի ատամնաւորեալ. զոր եփեալ 'ի ջուր և եդեալ 'ի վերայ վիրաց, քարշէ զշարաւն, և մեղմէ զցաւն: Զնոյն գործունէութիւն ունի նաև կեղևն:

Ուլնա, լտ: պռաչչիօ, իտ: բազուկ, կամ գօլ քէմիկի, տճ: և ըստ մեզ՝ բազկոսկր: Է անդամազննաց է մեծագոյն ոսկրն, կամ ոսկրն բազկին:

Ուլնուս, կամ ուպեղ եւ՝ վուլնուս, լտ: բլակա, կամ բիակա, կամ ուլչէրօ, իտ: էլքօս, յն: եարա, տճ: ճէրահ, արբ: զախմ, կամ րիշ, պր: և ըստ մեզ՝ վէրք, կամ խոց, և կամ խոցուած. տես զայս հա. տ. երես 398:

Ուլչէրօ. տես ուլնուս:

Ուլչէրէ վէնէաէ. տես հա. տ. երես 363:

Ուվօլա, իտ: ուվլա, լտ: տիլճիկ, տճ: և ըստ մեզ՝ լեզուակ, կամ մակալեզու, և կամ կոկոդիթ:

Ումիտիթա. թացութիւն կամ խոնաւութիւն մարմնոյ. տես և հումօռէս:

Ումպիլիքուս վէնէրիս, լտ: օմպէլլիքօ տի վէնէրէ: խոտ ինչ է բուսեալ 'ի վերայ տանեաց և որմոց:

Ումօռէ. տես հումօր:

Ումօռէ նաթուրալէ. նոյն է ընդ վերնոյն:

Ումօռի ռէքրէմէնթիցի: Այսու անուամբ նշանակին զատական հիւթք մարմնոյ, որք յետ զատանելոյ իւրեանց յարենէ՝ միւսանգամ դարձեալ խառնին ընդ այնմ, կամ մնան 'ի մասունս ինչ առ զանազան պէտս:

Ումօռ սալսօ: Աղի հիւթք մարմնոյ:

Ունիքօռնիս. տես մօնօչէռօս:

Ունիօնէս. տես մարկէրիթա:

Ունկիա · տես ունկուիս :

Ունկիա տ՛ ալչէ · տես ալչէս :

Ունկիէլլա · այսու անուամբ նշանակի՝ ընդարմացումն, կամ կարկամիլն մատանց հանդերձ անհնարին ցաւովք՝ ա՛ւթեալ 'ի սաստիկ ցրտոյ :

Ունկուիս, լտ : ունկիա, կամ ունկնա, իտ : Թըռնագ, տճ : զօֆր, արբ : օնիքս, կամ նիօ, յն : նախուն, պր : և ըստ մեզ՝ եղունգն :

Ունկուլա ալչէս · տես ալչէս :

Ունկվէնթում, կամ ունկուէնթում, լտ : ունկուէնթօ, իտ : մէհլէմ, արբ, և տճ :․ և ըստ մեզ՝ սպեղանի : Է անուն սովորաբար նշանակիչ ամենակերպ վիրաապական օծանելեաց, որք լինին մեղմապէս կակղագոյն, ո՛չ յոյժ հեղուկ, և ո՛չ կարի թանձրամած · որոց իւրաքանչիւրքն որոշին 'ի միմեանց յատկացուցիչ անուամբ, և զօրութ<sup></sup>բ : Եւ են բազմատեսակք, բայց մեք աստանօր դիցուք զառաւել գործունեայս, և օգտաւէտագոյնս, զորս դնեն 'ի վերայ խոցից կամ վիրաց առ 'ի մաքրել և յինքն ձգել զչարաւս, և 'ի բուժել զնոսա :

Ունկվէնթում աբօսթօլօրում, լտ : ունկուէնթօ տէլլի աբօսթօլի, իտ : հավարիօն մէհլէմի, տճ : և ըստ մեզ առուգաբանի՝ սպեղանի առաքելոց : Յոյժ մտանաւոր է սորա գործունէութիւն 'ի մաքրել, և 'ի սպառել զմսամոլեալ մասունս վիրաց, և միանգամայն բուժել զնոսա : Զոր գայս օրինակ կազմեն : Ա՛ռ չորս ունկի՝ դեղին մեղրամոմ, և չորեքտասան տրամ՝ թրէմէնթինա, և նոյնչափ՝ կուամի ամմօնիաչի · տա և կէս ունկի՝ խունկ փոշիացուցեալ, և նոյնքան՝ պտէլլի · և մի և կէս ունկի՝ կալպանօ, և նոյնչափ միռռէ · չորեքտասան տրամ՝ րէզինա փինուս, և երկու լիտր՝ ձէթ ձիթենեաց, այլև 9 տրամ՝ լիթարճիրի ատուռի, երկու տրամ օբօբանաչիս, նոյնչափ՝ վէռտէ ռամէ, և վեց տրամ՝ արիսթօլօքիա ռօթունտա փոշիացուցեալք : Զամենեսին զատատ օրէնն է լուծել յանկանի, իսկ զխեղն, և զխեժոլն դիցես պուտամբ առընթեր հրոյ, և յորժամ սկսանի եռալ, ա՛րկ 'ի նա հետ զհետէ զպատրաստեալ նիւթսն, բաց 'ի լիթարճիրի ատուռէ անտի, և 'ի ձիթոյ, զոր պարտ է եռացուցանել ընդ մի լիտր ջրոյ, և դնել յետ ամենեցուն · այլ խառնելն է անընդհատ ծայրիւ փոքրիկ ինչ ցպոյ՝ մինչև 'ի կա-

տարէլ զանգուածոյ բաղադրութեան , և հալմել զպատեղանի ըստ կանոնաց արհեստին ։ Յետ այնորիկ դի՛ր զպատեղանիս զայս յանօթ ապակի քաշ խցեալ ապակի խփով ։

Ունկվէնթում ալթհէա , լտ ։ ունկուէնթօ տ՛ ալթհէա , իտ ։ հալթէմ մէհլէմի , կամ եաղը , տճ ։ տիհնի խաթմիա , արբ ։ և ըստ մեզ՝ սպեղանի տղտոյ ։ որ 'ի վար արկանի միամնաւորապէս առ 'ի կակղել զուռոյցս , և զկարծրացեալ մասունս մարմնոյ , այլև 'ի մեղմել զցաւս կշտաց , որ այս կերպ յօրինի ։ Առ երկու լիտր՝ արմատն տղտոյ , մի լիտր՝ սերմն կտաւատի , և նոյնքան՝ սէմի տի ֆէնի կրէքօ , և եփեա զայս քան և մի լիտր հասարակ ջրով ։ մինչև 'ի պակասել երրորդ մասին 'ի չորից մասանց նորա ։ ապա թող առ 'ի հանգչել , և քամեա զխժային հիւթն զգուշութբ ։ յետոյ դի՛ր միասանգամ 'ի նոյն հիւթ չորս լիտր ձէթն ձիթենեաց , և եռացո զայն 'ի հուր՝ մինչև 'ի սպառել խոնաւութն ։ յետոյ յաւել 'ի նա մի լիտր՝ մեղրամոմ դեղին և մաքուր , և վեց ունկի՝ բաձիա տի բինօ , և երկու ունկի՝ թէրէմէնթինա ։ Եւ զկնի եփելոյ զայն փոքր ինչ , զի ինքնին թանձրասցի , օրէն է հեղուլ յանօթ ապակի 'ի պահեստ ։

Ունկվէնթում բօբուլէում , լտ ։ ունկուէնթօ բօբուլէօ , իտ ։ Է ազգ ինչ սպեղանւոյ , որ զայս օրինակ կազմի ։ Առ երկու լիտր՝ ճարպ խոզի , և մի լիտր՝ ճէմմէ տի բիօբօ , ( այսինքն թարմ ընձիւղն կաղամախի ։ ) և մանր ջարդելով զայն 'ի մէջ անկանի՝ զանգեա ընդ վերոյիշեալ ճարպոյ , և դի՛ր 'ի յարևու զաւուրս քառասուն ։ ապա յաւել 'ի նա զտերևն լաթուքքաի , զտերևն ծիուսգուամօի , զտերևն մանտրակօրաի , զտերևն բաբավէրօ էռաթիքօի և բաբավէռօ հէռաթէնսէի , զտերևն սէմբռէվիվօ մինօռի , և մաճառէ , զտերևն վիօլէի , և օմպէլիքօ տի վէնէռէի , և չիմէ տի ռօվօ , և զարմատն պառտանաի , յիւրաքանչիւրոցն երեք ունկի ։ Զայս ամենայն ջարդեալ և խառնեալ ընդ վերոյասացեալ նիւթոց , դիցես միասանգամ յարևու իբր աւուրս քսան ։ Եւ յետ այնր յաւել 'ի նոյն երկու լիտր՝ գինի սպիտակ ։ յետ որոյ պարտ է եփել և եռացուցանել զայն 'ի հուր թեթև՝ մինչև 'ի պակասել խոնաւութն ։ և ընդ առնուլ 'ի բաց 'ի հրոյն՝ ա՛րկ յանօթ

ապակի 'ի պահեստ, և լինի դեղ 'ի գիպուածս բոր-բոքման տենդից, օծանելով այսու զքունքս, այսինքն զմասն գլխոյ ընդ ակն և ընդ ունկն, յորմէ պատճա-ռի անվրէպ քուն ինչ շահաբեր. և 'ի մասնաւորի օգտէ խիթից որբանին, և կոյր թանչից, օծանելով և ևթ զայնս. զի է մեղմիչ, կազդուրիչ, և խաղաղիչ բնութ͞ե:

Ունկվենթում էձիբցիաքում, լտ: ունկուէնթօ էձիցիանօ, իտ: Սպեղանիս այս գերահռչակ է 'ի մա-սին ներգործութեան, զի մաքրէ զնեխեալ վէրս, և կցեալ միաւորէ զնոսա. զովացուցանէ և զզժնեայ բորբոքմունս խոցից, և կազդուրէ զցաւս կոյր թան-չից, որ այսպէս բաղադրի: Ա՛ռ 14 ունկի՝ մեղր ազնիւ, եօթն ունկի՝ բարկ քացախ, լի՛ց 'ի պղյան. և դի՛ր զայնս 'ի վերայ թեթև հրոյ, մինչև եռասցի. ապա ա՛րկ 'ի նա հինգ տրամ փոշիացուցեալ վէրտէ ռամէ, և միանգամայն մեղմ և անդադար խառնեա՛ զայն ծայրիւ ցպոյ՝ մինչև փոշիք վէրտէ ռամէի բա-րիոք զանգեսցին ընդ բաղադրեալ զանգուածոյն. և յետ այնր օրէն է հեղուլ յանօթ ապակեայ 'ի պահեստ. որ լինի և դեղ խղխայթի, և վէրաց որկո-րոյ, օծանելով և ևթ զայն:

Ունկվենթում էնուլաթում, լտ: ունկուէնթօ ա՛ էնուլա քամբանա, իտ: անուղ մէհլէմի. ա՛: Է-սպեղանի ինչ բաղադրեալ 'ի մի և կէս լտոր՝ էնու-լա քամբանա արմատոյ ըռսեկոյ, յերեք ունկի՝ սնդկէ, 'ի նոյնչափ՝ թէրէպէնթինաէ, յերկու լտոր՝ ասուն-կա սուիլլաէ, և 'ի յերեք ունկի՝ եղոյ օշինդրի: Զսնդիկն ա՛րկ 'ի քարեայ անկանի, արկանելով 'ի նա զթէրէպէնթինան, և տրորեալ հարեա՛ ընդ հինգ կամ ընդ վեց ժամս անդադար, մինչև անհետ լի-նել զլխովին զնշանակաց սնդկի: Ապա յաւե՛լ զմնա-ցե͞լ նիւթան հեռաղհեաէ՝ խառնելով զայն անընդհատ սանդխառնումբ, և ապա ա՛րկ զայն յանօթ ապակեայ. և լինի դեղ բորոտութ͞ե, կամ քոսութեան, ախտի ելեփանդականի, և այլ վէրաց կամ ախտից մորթոյ, օծանելով և ևթ զայնս երկու անգամ յաւուրն:

Ունկվենթում մէրքուրիալէ, լտ: ունկուէնթօ մէռքուրիալէ, կամ ունցիոնէ մէռքուրիալէ, իտ: ժիվա մէհլէմի, ա՛: ռուսաղանի սիյմապ, պր: և ը͞ս մեզ՝ սնդկաւ պատրաստեալ օծանելի, բաղադրեալ յերկու ունկի սնդկէ, զոր խառնեսցէք՝ մէռքուրիօ

անուանեն, 'ի մի լեառ՝ Ճարպոյ խողի, և 'ի կէս ունկի ծծմբոյ լուծելոյ։ Այդ՝ զայն սնդիկ դժուար է զանգել և տրորել անդադար 'ի մէջ քարեայ սանդի ընդ վերոգրեալ Ճարպոյ և ծծմբոյ, մինչև աներևան լինին գնտակքն սնդկի։ 'Ի կատարել այսր ամանանի՝ օրէն է լնուլ յապակեղէն անօթս՝ և պահել, և ըստ պիտելոյն 'ի վար արկանել։ Սա վասն բուռն և Թափանցիկ զօրութեան իւրոյ մտանէ ընդ ամենամանր ծակտիս մորթոյ և երակաց, և դիւրաշարժ յօրինէ զշրջանս արեան, որով և ցրուէ զախտարծարծ հիւթս խառնեալս յարեան. քաղցրացուցանէ զարիւն 'ի վավաշոտ տաիպ հիւթոց, և առնէ զլորձունս. այլև բուժէ զվէրս և զայտուցս ելեփանդականս, որք 'ի վեր երևին 'ի բերանս, 'ի յորկորն, յերեսս, յառնի անդամս, և յայլ մասունս մարմնոյ։ Մեծապէս օգտակարութիւն այսր սպեղանւոյ զփորձ առեալ եմ բազում անգամ, որպէս և կարծեմ, և միանգամայն հաստատեմ եթէ 'ի ներկայ դարուս չէք բնաւ զօրէն այն այլ ծանելի շահաւէտագոյն ընդդէմ վերոյիշեալ ախտից, զորոյ զգործածութիւն, կամ զկիրառութիւն մարթիս տեսանել հտ. ա. 'ի ստորագրութեան ախտի գաղղիականի, և 'ի մասնաւորի միզարգելուն և ախտի լերդի՝ առթելոց յուժգնութենէ բնութեան, զի է թուլացուցիչ բնութեան։

Ունկվէնթում մէրքուրիալէ ռօթառիի, լտ։ ունկուէնթօ մէրքուրիալէ ռէլ ռօթարիօ, իտ։ այլ իմն կերպ սնդկաւ պատրաստեալ սպեղանւոյ, որ առաւել ազդու և զօրաւոր է քան զնախընթացն. զոր մարթ է կազմել յետագայ եղանակաւ։ Առ երկու ունկի՝ Թարմ Ճարպն խողի, որ չեցէ խառնեալ ընդ աղի. և եդեալ զայն յապակեայ պղյան, մերձեցո 'ի հուր. յետ եփելոյ ըստ բաւականին, քամեա զայն կտաւով 'ի քարեայ անկանի, յաւելցով 'ի նոյն մի ունկի սնդիկ մաքուր, և անընդհատ տրորել խառնեա զնոյն ընդ երկար սանդխառնամբ, մինչև գնտակքն սնդկի բարւոք զանգեսցին ընդ Ճարպոյն, և ապա արկ յանօթ ապակեայ 'ի պահեստ։ Այլ գործածութիւն սորա չէ ինչ տարբեր 'ի գործածութենէ վերոգրեալ սնդկաւ պատրաստեալ սպեղանւոյ, որպէս և ներգործութիւն նման է ներգործութեան նորա, բայց միայն կարի զօրաւոր է քան զնա սակս առաւելութեան սնդկին որ 'ի նմա։

Ունկվէնթում նէռվինում, լտ: Ապեղանիս այս սեփականեալ է թուլութեան ջղաց, անդամալուծութեան, և անբնական, կամ բուռն շարժման ջղաց կամ մկանանց մարմնոյ, օծանելով զայն յողնայարս, 'ի թիկունս, յուսս, և յայլ մշտագնեալ մասունս մարմնոյ: Եղանակ կազմելոյ զապեղանիս զայս. առ մի և կէս ունկի՝ դեղին մեղրամոմ, և մանր հատանելով զայն՝ լից 'ի պղնձան. մերձեցո 'ի հուր, յոր յաւել հալեալ ճարպն բադու, և աղուեսու, և սագի, և շան, և կատուի, յիւրաքանչիւրոցն մէն մի ունկի. այլ և յաւել 'ի նա երեք ունկի՝ ունկուէնթօ տի ալթհէա. մի ունկի՝ իւղն երիցկի, և նոյնչափ՝ դափնւոյ. մի և կէս տրամ՝ իւղն քարի, զոր իտալքն օլիօ տի բիէթրա անուանեն, և նոյնքան՝ օլիօ տի սբիկօ. առ և մի և կէս տրամ՝ օլիօ տի էուֆօռպիօ, և նոյնչափ՝ թրէմէնթինա, և նոյնքան՝ իւղն ճճւոյ: Բայց պարտ է եփել զայս ամենայն 'ի հուր ածխոյ, և ոչ հասարակ փայտի: Զկնի եփելոյ ըստ բաւականին՝ քամեա զայն ցանցառ կտաւով յանօթ ինչ ապիկած, կամ լաւ ևս յապակեայ անօթ 'ի պահեստ:

Ունկվէնթում պապլիէքում, կամ ունկուէնթում սաբբուրաթիում, լտ: ունկուէնթօ տի պապոլէքօ, իտ: գասապլ մէհլէմի, թճ: Ապեղանիս այս սովորաբար 'ի կիր արկանի 'ի վիրաբուժից 'ի դիպուածս ամենակերպ վիրաց և ուռուցից, յորոց յինքն ձգէ զթարախեալ հիւթս մարմնոյ, և առատացուցանէ զշարաւս, և միանգամայն հասուցանէ զպալարս: Որ այսպէս բաղադրի: Առ երկու և կէս լիտր ձէթն ձիթենեաց, և լից զայն 'ի պղնձան, արկանելով 'ի նա և զդեղին մեղրամոմ, և զծրագու, և զկպրաձիւթ հանքային, և զռէզինա, որ է խէժ սոճւոյ, յիւրաքանչիւրոցն կէս լիտր: Ապա մերձեցո 'ի հուր թեթև առ 'ի եփել. և յորժամ հալի այն, լից 'ի նա կէս լիտր՝ թրէմէնթինա, և միանգամայն մեղմ և հանդարտ խառնեա զգանգուածն ծայրիւ ցպոյ՝ մինչև 'ի զանգիլ բարւոք ընդ միմեանս: 'Ի լրանալ այսր ամենայնի՝ պիտի դնել յանօթ ապիկած՝ և պահել, և ընդ պիտանալոյն 'ի գործ արկանել:

Ունկվէնթում տիճէսթիվում մաճիսթէրիալէ, լտ: ունկուէնթօ տիճէսթիվօ մաճիսթէրիալէ, իտ: Ապեղանիս այս մաքրէ զխեխեալ վէրս, դիւրապատրաստէ զշարաւս, և միանգամայն ապխացուցեալ բուժէ

կնոսա ։ Կերպն 'ի կազմել զայս սպեղանի. առ մի լիտր՝ օլիօ ռօզաթի, և լից զայն 'ի պտյան. ապա մերձեցո 'ի հուր՝ բայց արկ 'ի նա կէս լիտր՝ զապի-տակ և զանխառն մեղրամոմ ջարդեալ 'ի մասունս մասունս. և յորժամ հալի այն՝ լից 'ի նա մի լիտր Թրէմէնթինա. յետ պղպջելոյ առ 'ի բաց 'ի հրոյն, և թող այնպէս իբր ժամս երկուս՝ մինչև ինքնին սա-ռեսցի ։ Յետ այնորիկ պարտ է լուանալ զայն ջրա-խոտի ջրով. զոր իտալք՝ աքգուա տի բիանթածծինէ անուանեն, զի կարի օգտաւէտ լինիցի սպեղանին, և ապա արկ յանօթ ապակեայ 'ի պահեստ ։

Ունկվէնթում տի չէրուսսէ կամ ալպում, լտ ։ ունկուէնթօ տի չէրուզա, իտ ։ իւստիւպէճ մեհլէմի, տճ ։ Սպեղանիս այս հովացուցանէ զջերմնեայ բորբոք-մունս վիրաց. չորացուցեալ տապաքինէ զքերթեալ մորթս մարմնոյ, փարատէ զքորոտութիւն, և զմաւ-մանջուռն մորթոյ, և միանգամայն օգտէ թեթև վի-րաց, և կիզողականութեանց հրոյ, որ այսպէս բաղա-դրի ։ Առ երկու լիտր՝ ձէթն ձիթենւոյ, որ բաղա-դրեալ իցէ վարդիւ, և եդեալ զայն յապակեայ պտյան, մերձեցո 'ի հուր թեթև, և յորժամ սկիզբն առնէ եփիլ, արկ 'ի նա կէս լիտր՝ սպիտակ մեղրամոմ, և ութ ունկի՝ չէրուզա վէնէթա՝ լուեալ 'ի փոշի ման-րամաղ, այլ խառնելի է անընդհատ ծայրիւ փոքրիկ ինչ ցպոյ՝ մինչև 'ի զանդիլ բարւոք ընդ միմեանս ։ Ապա յառնուլն 'ի վեր զպտոյտն 'ի հրոյն՝ արկ 'ի նա ունկի մի՝ քափուր, (զոր պարտ է քեզ կանխաւ հալել կամ լուծանել փոքր ինչ կրկնահան ցքեաւ). և յետոյ լից զսպեղանիս զայս յանօթ ապակի քաջ պնդեալ խփով ։

Ունկվէնթում ռացիօնալ, լտ ։ ունկուէնթօ ռա-ցիօնալէ, իտ ։ սուրուր մեհլէմի, տճ ։ Է սպեղանի ինչ բաղադրեալ 'ի վեց ունկի՝ ունկուէնթօ րօզաթօ տի մեզուէ անուանեալ սպեղանւոյ, 'ի նոյնաքանակ՝ ունկուէնթօ տէ սուքքիէ, 'ի մի լիտր՝ իւղոյ քաղցր նշոյ, 'ի վեց ունկի՝ դեղին մեղրամոմէ, և 'ի յերկու ունկի՝ մէռքուռիօ բռէչիբիթաթօ րոսսօէ ։ Զմեղրա-մոմն, և զիւղն նշոյ դիր 'ի միասին 'ի մի պտյան, և հալեա առ թեթև հրով. և յորժամ սկիզբն առնէ պղպջել, բաւական համարի եփն, յոր յաւել սպե-ղանիքն (այսինքն ունկուէնթօ րօզաթօ, և ունկուէն-թօ տէ սուքքին)։ Եւ յետ եփելոյ զայն փոքր ինչ

ես, 'ի վեր առ զպղոյտն 'ի հրոյն՝ և ցանեսջիր 'ի վե֊
րայ զմանրամաղ լուսեալ մեռքուրիօ բռէչիբիթաթօ
ռօսսօն, և խառնեա այնչափ, մինչև 'ի զանգիլ բար֊
ւոք ընդ միմեանս ։ Յետ այնորիկ պարտ է վերստին
եփել և եռացուցանել զայն փոքր ինչ, զի բարւոք
զանգեսցի կարմրացուցեալ սնդիկն, և ապա լիցի յա֊
նօթ ապակեայ 'ի պահեստ. և լինի դեղ օգտաւէտ
ամենայն տեսակ ախտից մորթոյ, զորօրինակ դժնեայ
բորոտութե, քոսոտութե, ոլքինոյ, կարծրութե
մորթոյ, եւ կարմրութեանց. այլև սպառեալ ծախէ
զաւելորդ մասունս մսամոլեալ վիրաց օծելով և եթ
զայն երկու անգամ յաւուրն ։ Նոյնպէս և սպա֊
ռեալ փարատէ զայտուցս, որք ապականեալ խան֊
գարեն զմորթս ։ Ընդ այսոսիկ գիտել պարտ է, զի
չափն կարմրացուցեալ սնդկի, որ մտանէ յայս բա֊
ղադրութե, կարէ այլայլել ըստ տեղւոյն, և ըստ
ախորժանաց զօրութեն, և ներգործութեանն՝ զոր
խնդրէ ոք, որով լինի կարի կամ նուազ զօրեղ. իբր
զի՝ 'ի կամիլն գործել զապեղանիս բուռն և ազդու,
զչափ կարմրացուցեալ սնդկին պարտ է առաւելուլ ։
Իսկ 'ի խնդրել անդ՝ զի լիցի մեղմ և թեթև, պիտի
նուազել զչափ նոյն նիւթոյն ։

Ունկվէնթում ռօզաթում, լտ ։ ունկուէնթօ ռօզա֊
թօ, իտ ։ կիւլ մեհլեմի, տճ ։ և ըստ մեզ ստուգա֊
բանի՝ ապեղանի վարդի. որ է յոյժ օգտաւէտ 'ի
գիպուածս ախտնդանոտութե, բորբոքման տենդից, և
լերդի, և ցաւոց ձգանաց, որ այսպէս յօրինի ։ Ա՛ռ
բաւականաչափ՝ սպիտակ վարդ, որ լիցի թարմ,
և դի՛ր զայն յանօթ ապիկած, արկանելով 'ի նա և
զնոյնաքանակ ճարպս խոզի, և փակեա զբերան անօ֊
թոյն սնդկի խփով. և դի՛ր յարևու զաւուրս քսան ։
Յետ այնորիկ մերձեցո 'ի հուր թեթև և մեղմ առ
'ի հալել, և յետ այնր քամեա զհիւթն. և ահա այն
է ապեղանի վարդին զոր խնդրես ։

Ունկվէնթում սուքիս, լտ ։ ունկուէնթօ տէ՛ սու֊
քի, իտ ։ Ապեղանիս այս օգտաւէտ է ցաւոց վիրաց,
փաղաղիչ խոցից, և էռբէթէ անուանեալ ախտից.
որ այսպէս կազմի ։ Ա՛ռ մի լիտր՝ իւղ ձիթենւոյ,
որ բաղադրեալ իցէ վարդիւ, և վեց ունկի՝ իւղ
տհաս ձիթապտղոց, ա՛ռ և հիւթն ջղախոտի, լաքա֊
թիօ, և չէնթաուրի մինօռ, յիւրաքանչիւրոցն երկու
ունկի ։ Զայս ամենայն դիր յեփ՝ մինչև ցապառիլ

հիւթոյն, յոր յաւել չորս ունկի սպիտակ մեղրամոմ: Եւ ապա թող զայն առ հրով, մինչև 'ի պատրաստել քո զհետեւեալ նիւթքն՝ առ 'ի նոքօք բաղադրել և թանձրացուցանել զայն: Նմին իրի առցես երեք ունկի՝ զլիթարճիւրիօ, այսինքն քարմարցանկ, վեց տրամ՝ զայրած կապար, կէս ունկի՝ զթուցիա բրէքարաթա, լուծեսցես զամենայն 'ի միասին 'ի փոշի մանրամաղ. յետոյ պարտ է խառնել 'ի միասին ընդ նախաւանդեալ հիւթոյն, և անձանձրոյթ խառնեսցես զայն ընդ երկար, զի փոշիք նիւթոյն բարւոք զանգեսցին ընդ բաղադրեալ հիւթոյն կամ զանգուածոյն: Յետ այնորիկ արկ 'ի նա տրամ մի՝ զքափուր փոշիացուցեալ, կամ լուծեալ դոյզն ինչ կրկնահան ցքւով, և խառնեսն զայն վերստին, որով և կատարի սպեղանին:

Ունկվէնթում ատ սքապիէս, կամ ունկուէնթում անթիբսօրիում, լտ: ունկուէնթօ անթիբսօրիքօ, կամ ունկուէնթօ քօնթրա լա րօկնայ, իտ: ույուզ մէհլէմի, տճ: Սպեղանիս այս սեփհականեալ է բորոտութեան, և քոսոտութեան. բայց գիտել արժան է, զի 'ի դիպուածս մանկանց և փափկակեաց անձանց ախտակցելոց յայսմ ախտէ՝ պարտ է զգուշանալ, զի մի՛ վնաս ինչ գործեսցէ: Իսկ 'ի կամիցք առնուլ 'ի կիր՝ սակս մանկանց և փափկակեաց անձանց՝ զանգեսն զայն կոգեաւ, որով մեղմանայ զօրութիւնն, և թեթևանայ վնասակար որակութիւն: Օրինակ կազմելոյ զսպեղանիս զայս: Առ երկու և կէս լիտր՝ իւղն ձիթապտղոյ, և չորս ունկի՝ սպիտակ մեղրամոմ, և եօթն ունկի՝ թրէմէնթինա, և լից զայս ամենայն յապիկած պղնձոյ, մերձեցո 'ի հուր. և յորժամ սկիզբն առնէ հալիլ, արկ 'ի նա եօթն և կէս ունկի՝ փոշիացուցեալ սպիտականերկ, այսինքն իւստիւպէճ, և նոյնչափ՝ փոշիացուցեալ պատլեղ. յետոյ առցես 'ի բաց 'ի հրոյն, և թողցես զայն զանգուած 'ի պաղիլ. և ապա հեղցես յայն երեք ունկի՝ մեռքուրիօ սուպլիմաթօ քօռռօզիվօ, և պարտ է անընդհատ խառնել 'ի միասին՝ մինչև 'ի զանգիլ բարւոք ընդ միմեանս, և լինել մի բաղադրութիւն:

Ես և այլ սպեղանի մեղմ, և թեթև, որ առանց վնասու ապաքինէ զբորոտութիւն, և զքոսոտութիւն, որ այսպէս բաղադրի: Առ ունկի մի՝ սնդիկ, կամ Ջրարծաթ, և տրորեալ հարես զայն բաւականաչափ

ջրոյն լեմոնի 'ի մէջ քարեայ անկանի . յետ զանգե-լոյ բարւոք ընդ միմեանս, զոր և հնար է ճանաչել յաներևոյթ լինելոյ գնտակաց մնդկի, յաւել 'ի նա և զայլ հինգ արամաչափ ջուր լեմոնի, և մի և կէս ունկի՝ սեթօռաչէ լիգուիտօ, զոր տճկ. դառաւգին-լիւք եաղը անուանեն, և սկահակ մի իւղն ձիթապտ-ղոյ: Զայս ամենայն դիր կամ լից 'ի մի պղոյտ ապա-կած և նոր, և եփեա զայն բաղադրութիւն այնչափ. մինչև 'ի պակասել կիսոյ մասին նորա . և ընդ առնուլ 'ի բաց 'ի հրոյն՝ քամեա զայն կտաւով յամանն ինչ, և ծծ զբորոտեալ մասունս մարմնոյ, և շփեա առ-հրով, զի բաղադրութիւն այն ընդմտանիցէ 'ի ծակ-տիս մորթոյ, որով և բժշկի:

Այլ սպեղանի առ նոյն բորոտութի, զոր իտալ.՝ բօմաթա քօնթրօ լա ռօնյա անուանեն, կամ ըստ լատինացւոց՝ ունկուէնթում անթիբսօռիում: Առ ունկի մի՝ փոշիացուցեալ ծծում, որ չլիցէ լուա-ցեալ, և երկու դրամ՝ մուրիաթօ տի ամմօնիաքա, և երկու ունկի՝ հալեալ ճարպն խոզի: Զայս ամե-նայն պարտ է ճմլել 'ի միասին՝ մինչև 'ի զանգել բարւոք ընդ միմեանս՝ և լինել մի բաղադրութիւն. զոր պարտ օրէն է 'ի կիր առնուլ ըստ նախաւանդեալ կանոնի:

Ունկվէնթում քօռռօսիվում, լտ.: ունկուէնթօ քօռ-ռօզիվօ տի բիէնթռօ կալլօ, իտ.: սուրուր մէհլէմի կալլօ ճէռահն թերքիպի, տճ.: Սպեղանիս այս համ-բաւեալ է գեր քան զամենայն փաղաղիչ սպեղանիս. պատրաստեալ ծախէ զաւելորդ մասունս մսամոլեալ վէ-րաց, և խոցից, 'ի վեր եռեալս յոր և իցէ մասին մարմնոյ, նաև յաւէտ 'ի վեր եռեալս 'ի ֆալլոփիեան անցս արգանդին, և 'ի միզանց խողովակս: Նոյնպէս ծիւրեալ ծախէ զխղխայթս գոյացեալս 'ի նոյն ան-դամ: Օրինակ 'ի կազմել զկարմրերանգ սպեղանիս զայս: Առ երկու դրամ՝ ունկուէնթօ տի չէրուզա քանֆօրաթօ, և նոյնաքանակ՝ ունկուէնթօ թուցիա տի ձիօ: Զայս երկու տեսակ սպեղանիս լից 'ի միա-սին 'ի քարեայ անկանի, և յաւել այնչափ մեռքու-րիօ բռէչիբիթաթօ ռօսսօ՝ որչափ պէտք իցեն առ 'ի տալոյ նմ զգոյն կարմիր, այլ խառնելի է անընդհատ ծայրիւ սանդխտոյն՝ մինչև առնուլ նմա զգոյն կարմիր, և 'ի զանգել բարւոք ընդ միմեանս:

Ունկվէնթում օքսէթհալմիքում, լտ.: ունկուէնթօ

կամ լինիմէնթօ ատ օքքի, իտ։ Սպեղանիս այս ունի մասնաւոր օգտաւէտութի՛ւն 'ի դիպուածս բորբոքման, այտուցման, և այլ ախտից աչաց, դուզնաքեայ մասն ինչ արկանելով 'ի վերայ ներքին մասին աչաց, յաւուրն երկիցս անգամ. ելուզանէ և անտի զգժնեայ և զխստաբեր հիւթս հանդոյն արտասուաց, արգելու զմարմաջիւնն, զարիւնն, և զխաղաւարտս նոցա. նաև բուժէ զգլխձակն, և զարտասուաբեր ախտն աչաց. և միանգամայն սրէ զտեսութիւնն։ Ցոյժ գրուատեն աչաբուժք զայս սպեղանիս և հաստատեն, եթէ է գեր քան զամենայն օգտաւէտ 'ի դիպուածս ո՛ և իցէ ախտից աչաց։ Զայս եթէ կամիս կազմել, առ երկու ունկի՛ թուցիա բրէբարաթա. ( զորոյ զկերպն պատրաստելոյ մարթիս տեսանել 'ի բառն Թութիա քօմբօսիթա ) քառասուն կշիռ ցորեան՝ բիէթրա հէմաթիթէ. 12 ցորեան՝ ալօէ սօքօթրինա. չորս ցորեան՝ քէրըէ օչչիտէնթալի։ Զամենեսին զատ զատ պարզ է լուծել 'ի քարեայ անկանի, և անցուցանել ընդ նրբագոյն մաղ, յաւելլով 'ի նոյն շշաւեալ ճարպն իժի այնչափ, որչափ պէտք իցեն առ կազմելոյ ըստ կանոնաց արհեստին զսպեղանիս զայս։

Սունկօլա, կամ ունկուլա, իտ։ զար, տճ։ և ըստ մեզ՝ վզառ, կմ եղունգն աչաց։ ըստ անդամազննաց՝ ախտ խաւարեցուցիչ, կամ եղնգանման մաշկ ինչ աչաց։

Սունչխա, լտ։ օնչիա, իտ։ և ըստ մեզ՝ ունկի. է կշիռ գեղորէից, որ առնէ ութ տրամ, կամ երկոտասաներորդ մասն լտեր և չորս տրամ։ Գիտել ևս պա՛րտ է, եթէ սովորաբար եդեալ ըստ բժշկաց ( ℥ ) զայս նշանագիր, իմանամք զչափ միոյ ունկւոյ, ուստի յիսուն ունկիքն առնեն 400 տրամ ամբողջ։

Սուվա, լտ, և իտ։ իւզիւմ, տճ։ էնէպ, կամ իմպա, արբ։ էնկիւր, պր։ ստաֆիլիա, յն։ և ըստ մեզ՝ խաղող. ծանօթ ամենեցուն, զորոյ զօրութիւն մարթիս տեսանել 'ի բառն Վինում։

Սուվա աչէրպա. տես ակուէսթա։

Սուվա ուրսի, լտ։ ուվա օրսինա, իտ։ էնէպ իլ տիպ, արբ։ այի իւզիւմիւ, տճ։ և ըստ մեզ ստուգաբանի՝ խաղող արջային։ Է տունկ փոքրիկ, բուսեալ 'ի լերինս եւրոպիոյ, և յերկիրս ցածագոյնս, նմանապէս յերկիրս՝ որք ծածկեալ կան ձեամբք։

Տերեւք նորա են փոքրիկ, սուրար, երկայնաձեւ, եւ հինգ չերտեան, որք բերեն զնմանութիւն տերեւոց տամախի: Ծաղիկն ողկուզաձեւ, եւ կարմրերանգ: Պտուղն գնտակաձեւ, քնքուշ, եւ կարմիր, նման ըստ իմիք կեռասի. ունի եւ կորիզ տափարակաձեւ, բոլորշի, եւ կարծրապինդ: Այս տունկ լինի համով ըստ մասին գառն, եւ ըստ մասին տտիպ, որոյ տերեւն եփեալ 'ի ջուր, կամ փոշիացուցեալ, եւ արբուցեալ, դեղ է փորհարութեան, արիւնախառն որովայնալուծութեան, յորդառատ հոսման դաշտանի կանանց, եւ հոսման սպիտակ հեւթոց, (որ ծորի փոխանակ ամսական պարտուց կանանց). զի է խթիչ եւ սեղմիչ բնութ̃. Նաեւ դեղ է վիրաց երիկամանց, եւ փամփըշտոյ: Չափն 'ի 20 ցորենոյ մինչեւ ցմի պրամ, երեք կամ չորս անգամ յաւուրն:

Ուվա տի վօլբէ. տես սօլանում:

Ուվէա. այսու անուամբ ըստ անգամազննաց նշանակի մինն 'ի թաղանթից աչաց:

Ուրէթէրուէս, լտ: ուռէթէռէ, իտ: անուամբս այս ըստ անգամազննաց իմանին երկու երկայն խողովակք, ը̃ որս անցանէ մէզն յերիկամանց 'ի փամփուշտն:

Ուրթիքա տիօիքա, լտ: օւրթիքա, իտ: կռանտռւթի, գղ: քըմմըն նէթթըլ, անգղ: չէքնիտա, յն: ըսրղձն օթու, ար: ֆիսէք լապ, կամ էնճիւրէ, թրք: գէնտանէ, կամ գիւզէնէ, պր: եւ ըստ մեզ՝ եղինճ. բոյս, որոյ ցօղունն բարձրանայ յերկրէ իբր երեք ոտնաչափ, քառանկիւնաձեւ, մէջն դատարկ եւ ճիւղալից. տերեւքն լայն են եւ երկայն, եւ շուրջանակի ատամնաւորեալք ըստ պատրինջի, եւ 'ի վերայ ունին փուշս մանունս, որովք խայթեալք կիզեն զձեռս շօշափողաց. ծաղիկքն չորս չորս ելանեն 'ի գագաթան, եւ 'ի վերայ ճիւղոց հանդերձ բազմաթերթ առէջիւքն, որք բերեն զձեւ խաչի, եւ բերէ սերմունս ձուաձեւս: Բուսանի յաւազուտ եւ 'ի ցանկապատ տեղիս, եւ 'ի շրջակայս որմոց, եւ աւերակաց. լի է իւղով եւ աղիւ, եւ բնութ̃ դրդուիչ, եւ սեղմիչ. որոյ տերեւն եփեալ 'ի ջուր, եւ եդեալ 'ի վերայ կարկամեալ անդամոյն՝ լինի դեղ անդամադատութեան, յօդուածացաւութեան եւ կաթուածոց. որով սթափէ զջիղս, եւ զերակս թմբրեալս, եւ միանգամայն յեղաշրջէ ղարիւնն: Նոյնպէս է դեղ մէզարգե-

լութն, և փսխման արեան, և շնչարգելութն, եթէ տրամաչափ խարշեալ 'ի ջուր, արբցի՝ յաւուրն երեք անգամ։

Ուրինա, կամ լօթիում, լտ։ օրինա, կամ լօցիօ, կամ բիշիօ, և կամ բիշիա, իտ։ քալթուրինա, յն։ գարուրէ, կամ պէվլ, կամ պօվլ, կամ շօխախ, և կամ ոլէօվլ, արբ։ բուխա, կամ գիւմիւս, կամ չէ- մին, պր։ սիտիկ, կամ խորար, տճ։ և ըստ մեզ՝ մէզ. որ է յաւելուած գիճութեանց ըմպելեացն, յորմէ մարթ է ճանաչել զխօթութիս, կամ զհիւանդութիս, և միանգամայն գուշակել զնշանս եթէ մահահրա- ւէրս, և եթէ կենսատուս։ Արդ՝ եթէ մէզն իցէ տաւտ, տհաս, ջրային, և անգոյն, նշանակէ թէ ախտն 'ի վեր երևեալ է 'ի տկարութէ և յանզօրու- թէ ջղաց, և մանրաթելից ստամոքսի. քանզի քաջա- յայտ է՝ եթէ յայնժամ ոչ սնուցանէ, և ոչ զօրացու- ցանէ զմարմինն։ Իսկ եթէ իցէ նուազ՝ կարի իմն թանձրահիւթ, և ներկեալ, և կմ՟ նաև վաղընդ փոյթ պղտորեալ, և մրրալից, գուշակէ՝ թէ ախտն գոյա- ցեալ է 'ի նոյն տկարութէ ջղաց, և 'ի դանդաղմա- նէ առնելուն ստամոքսի, և ընդերաց։ Բայց եթէ գոյնն միզի լիցի նմանագոյն ելեկտրոնի, կամ եւ մթագոյն, ցուցանէ զխառնումն մաղձի ընդ արեան։ Այլ եթէ փրփուր ինչ դեղնագոյն 'ի վեր երևի յե- րեսս նորա, յայնժամ գուշակէ զդալուկն։ Դար- ձեալ՝ եթէ ընդ մէզն արտաքս ելանիցեն հատորիկ մանունք մսեղինաց, գուշակէ զծիւրիլն, և զապա- կանիլն լերդի, կամ այլ ընդերաց։ Եթէ 'ի վիճակի սաստկագոյն ջերմութն՝ մէզն ախտակրին յոյժ կար- միրագոյն և սևագոյն լինիցի, ցուցակ է տոչորման, և բորբոքման արեան, և կմ՟ ներքին մասանց մարմնոյ, և է նշան յոյժ վատթարագոյն։ Իսկ եթէ իցէ մրրա- լից դեղնագոյն, և կամ 'ի գոյն նարնջոյ, և կարի սակաւ, և տաւտ, և զազրահոտ, ցուցակ է արմատա- խլելոյ խօթութեան. որովհետև յայնժամ սկսանի նուազիլ ջերմութին օր քան զօր, զուարթանալ ոգի նորա, և գտանալ յառաջին առողջութն իւր. և նշանս այս առ լատինս ձայնի՝ գրիսի, զոր մարթիս տեսանել 'ի տառն Գ. 'ի կարգի իւրում։

Ուրսուս, լտ։ օրսօ, իտ։ այը, տճ։ տուպպ, կամ թէրսէմ, արբ։ խըրս, կամ քէհնի, պր։ և ըստ մեզ՝ արջ։ Է գազան յաղթանդամ, և մեծ 'ի չափ

իշայ՝ ծանօթ ամենեցուն. որոյ ճարպն ունի մասնաւոր գործունէութիւն 'ի մեղմել, և 'ի փարատել զցաւս ոսկերաց, և զփոշտանկութե: Իսկ զտորա լեղին 'ի վար արկանեն իբր դեղ ընդդէմ լուսնոտութե, և չնչարգելութե:

# Չ

Չէբա, կամ չէբէ, լտ: չիբօլլա, իտ: սօղան, տճ: քըրօմիտիա, յն: պասալ, արբ: բիաս, պր: և մեզ՝ սոխ: Է արմատ գնտակակերպ, սատակահոտ, կծուահամ, և թափանցիկ. զոր տանել 'ի գործ արկանեմք 'ի կերակուրս, նաև 'ի դեղօրայս. որ է շահաւէտ ընդդէմ սքօրպուտօի, ջրգողութե, միզարգելութե և թանչից. զի է գրգռիչ բնութե, և սատակիչ ճճեաց: Այլև հասուցանէ զպալարս, և դիւրապատրաստէ զշարաւս, եթէ եփեալ այլ յօրմարաւոր դեղորէիւք արկցի 'ի վերայ նոցա:

Չէլիաքօ. անուամբս այս իմանի մինն 'ի տեսակաց շնչերակի:

Չէլիտօնիա. տես քէլիտօնիում:

Չէնթաուրիում մինուս, լտ: չէնթաուրէա մինօրէ, իտ: գըռմըզը քանթարիօն, տճ: քէնթաուրիօն, յն: և ըստ մեզ՝ տերուկ: Է բոյս՝ որոյ ցօղունն բարձրանայ յերկրէ իբր կէս ոտնաչափ, կամ փոքր մի աւելի: Տերև նորա է երկայն 'ի ձև իբէրիքօնի, բայց առաւել մեծ քան զայն: Ծաղիկն ձագարաձև, հերձոտ, և կարմրերանգ: Պտուղն ձուաձև, և ստուար, մէջն չերտաւոր՝ յորում բաղկանան սերմունք նուրբք: Իսկ արմատն փոքր է, և փայտային: Բուսանի 'ի խոնաւուտ, և յաւազուտ տեղիս. որոյ համն, բնութիւն և ներգործութիւն նոյն է ընդ ճէնցիանայի:

Չէնթրօվալէ. անուամբս այս ըստ անդամազննաց նշանակի կեդրոն ձուաձև. որ է սպնդային գոյացութե ուղղոյն՝ ընդունարան կենդանական ոգեաց:

Չէնքրիս, կմ միլիարիա, լտ: Է տեսակ մի սատակաթիւն օձի 'ի չափ իժի. գոյն նորա է կանաչ՝ հա-

րեալ 'ի գոյն դեղին, և 'ի վերայ ունի բիծս մանունս • որոյ միսն դեղ է ազդու ընդդէմ թունից, և խածուածոց թունաւոր սողնոց • քանզի է առատ ցնդական աղիւ, և իւղով: Գտանի 'ի կղզին կոչեցեալ՝ լէմնօ:

Չէռա, լտ: աեօքիրի, յն: պալմօմու, տճ: չամա ասալ, կամ ճէսեր, արբ: և ըստ մեզ՝ մեղրամոմ: Է թանձրամած իւղալիր, և լուցանելի նիւթն, զոր յօրինեն մեղուք 'ի փեթակի 'ի նիւթոյ պէսպէս ծաղկանց • որոյ կրկին է տեսակ • սպիտակ և դեղին • սպիտակն լաւագոյն համարեալ է՝ սակս մաքրութեան • որք և երկոքին են բնութեամբ կակղացուցիչք, մեղմացուցիչք, և թափանցիկք • վասն որոյ և երբեմն 'ի վար արկանեն մանաւանդ սպիտակն 'ի գիպուածս ցաւալիր փորհարութեան, և թանչից աղթելոց յուժգնութենէ բնութեան: Վարին և 'ի սպեղանիս կակղացուցիչս: 'Ի սոցանէ արտահանեն նաև զիւղ ինչ թափանցիկ և ծանրահոտ, և 'ի կիր արկանեն 'ի գիպուածս ճեղքուածոց շրթանց, և ստեանց կանանց • մեղմէ նաև զցաւս ոռնատութեան, և ձեռնտուութեան աղթեալս 'ի ցրտոյ, օծանելով և ելթ զայն երկու կամ երեք անգամ յաւուրն: Այլև արգելու զհազս, և զցաւս կրծոց: Զափն 'ի 20 չթէ մինչև 560 երեք անգամ յաւուրն: Գտանի 'ի չին և ազգ մի նորատեսակ մեղրամոմոյ սպիտակ իբրև զձիւն, որ ոչ է գործ մեղուաց, այլ փոքրիկ ինչ կենդանեաց՝ որ չէ մեծ քան զլու:

Չէռազում, լտ: չիլիէճիէ, իտ: գիրազ, տճ: ղառասիեահ, արբ: ալուպալու, կամ կիւլնար, պր: գիրաթիա, յն: և ըստ մեզ՝ կեռաս: Է միրգ երկայնականաթ, բոլորշի, կարմրախառն սպիտակ, թամբալից, համեղահամ, և ախորժական ճաշակելեաց, միանգամայն և դեղ զովացուցիչ, և զուարթացուցիչ: Կորիզ նորա որ է դառն համով՝ լինի դեղ տենդից եռօրէից, և ցաւոց գլխոյ: Իսկ կանթն նոյնպէս է դեղ ազդու ընդդէմ հնագոյն հազից՝ պատճառելոց 'ի ցրտոյ, և 'ի հարբուխոյ:

Չէտռօ • տես չիթռէում:

Չէրասթէս, լտ: չէռաստա, իտ: պոյնուզլու էըլան, տճ: սէրաստէս, յն: և ըստ մեզ՝ եղջիւրիկ օձ: Է տեսակ մի չարաթոյն օձի, յածախեալ յեգիպտոս, և ընդ բոլոր ափրիկէ • որոյ երկայնութիւն

'ի գլխոյ մինչև ցծայր տատն է իբրև երեք ոտնաչափ, կամ փոքր ինչ աւելի։ Գլուխ նորա լայն է իբր երկու մատնաչափ, գոյնն բոլորովին գորշ, բայց 'ի թիկնամէջն ունի բիծս կարմրագոյնս. պարանոցն նուրբ, ատամունքն նման ատամանց իժի, որ 'ի խայթել խուռում թէ ոչ առժամայն, սակայն փութով և անվրէպ սպանանէ։ Իսկ 'ի գլուխն ունի երկու եղջերս մանունս՝ զօրէն գարւոյ, որոյ միւն եփեալ 'ի ջուր ԺԶ օրինի իժի, և արբուցեալ, դեղ է ապականութեան արեան, բորոտութեան, պիսակայ, խածուածոց օձից, և կատաղի շանց։

Ձերէպուռում հումանուռմ, լտ։ չէռվէլլօ ումանօ, իտ։ ինուև ալէյնի, տճ։ մուխ, կամ զուզ իլ ատէմ, արբ։ և ըստ մեզ՝ ուղեղն մարդկային. որ է գոյացութիւն շաղական, խժային, քնքուշ, խոնաւ, և ոգելից, և ըստ վկայելոյ խոհական և նրբազննին բժշկաց և անդամազննաց՝ է սկիզբն զգայութեց, պահարան կենդանական ոգւոյ, և իշխան անդամոց մարմնոյ համայն։ Եթէ ախորժես զայսմանէ ճոխագոյնս տեղեկանալ, տես 'ի փիլիսոփ. կոմշնոյ. 'ի հտ. Դ. մասն Գ. խնդ. Ը։

Ձերէվիղիա, կամ պէռա, կամ վինատմ հօռտէաչէռում, կամ ծիթհռում, լտ։ պիռռա։ իտ։ առքա տուխւ, տճ։ և ըստ մեզ՝ գարօղի, կամ գարեջուր, և կամ գինի գարւոյ։ Է հեղանիւթ ինչ ականակիտ, գառնահամ, ծաղկահոտ, զուարթացուցիչ, զմացուցիչ, միզաբեր, և կարի առողջարար, զոր բնակիչք եւրոպիոյ առնէպ 'ի կիր արկանեն ըստ օրինակի գինւոյ. զազնուագոյնն կազմեն յերկիրն անգղիացւոց, զորոյ նմանն չիք ուրեք գտանել։ Օրինակ 'ի կազմել զայս հեղանիւթ։ Նախ լից զմեղրաջուրն 'ի մեծամեծ տակառս, և արկ 'ի նմա բուքբօլօ անուանեալ խոտն, և թող աւուրս ինչ՝ մինչև ինքնին սկսանի եռալ զօրէն գինւոյ. յետորոյ լից 'ի կաթսայ, և եփեա. ապա իբրև ցրտանայ, զայն լից 'ի տակառս, և անդ զինի ամսօրեայ մի ժամանակի փոխն 'ի գինի, զոր խնդրես։

Ձերէֆօլիում, կամ սքանտիքս չէռէֆօլիում, լտ։ չէռփօլիօ, իտ։ Է խոտ փոքրիկ, և քաղցրահոտ. որ արձակէ յարմատոյ բազում ցօղունս նուրբս, բոլորշիս, յղկեալս, և հիւթալիս։ Տերև նորա նման է տերևոց քարսանի, բայց փոքր ինչ փափուկ քան

գայն. ունի զհերս մանուանս, և զկողմունս հերձոտս. ծաղիկն փոքրիկ, սպիտակ, և հինգթերթեան 'ի ձև վարդի. պտուղն փոքրիկ է, և երկայնաձև, ունելով 'ի միջի սերմանս նուրբս, սայրասուրս, և գորշագոյնս: Իսկ արմատն տարածողական, ուղիղ, ստուար, և քաղցրահամ: Այս խոտ բուսանի 'ի բուրաստանս, լի է իւղով, և գոյացական աղիւ. և բնութ̃ գուգուիչ, և բացողական, որով բանայ զմէզն և զխցանս ընդերաց, և միանգամայն փարատէ զախոնդանոտութի, և զերիկամնաժեռութի: Զափն մի ունկէ՝ ընդ մի լիտր եռացուցեալ ջրոյ:

Զէրուսաս, լտ: չէռուզա կիմ պիանքա, իտ: խուա տիւպէճ, կամ ուստուպած, տճ: սպիտած, կամ կուտինէ, արբ: սէպստաք, կամ սէփիթագ, կամ սէփիթէ, և կամ խապիթ, պր: և ըստ մեզ՝ սպիտականերկ, կամ ճերմակ գեղ: Է նիւթ յոյժ սպիտակ, դիւրաբեկ, և ծանր, կազմեալ յարճճոյ կիջելոյ, և գոլորշեօք քացախի: Ցօրինեն զայս 'ի բազում տեղիս, բայց ընտիր և ազնիւ, և կարի մաքուր և սպիտակ համարի յօրինեալն 'ի վէնէտիկ, յորմէ 'ի կիր առնուն 'ի ներկս սպիտակս, և 'ի սպեղանիս զովացուցիչս, և չորացուցիչս:

Զէրվուս, լտ: չէրվօ, իտ: լաֆօ, յն: կէյիք, տճ: զայպի կամ պուճպուլ, կամ արիան, արբ: և ըստ մեզ՝ եղջերու: Է արու երէ մեծ 'ի չափ փոքր ձիոյ. բայց ասի թէ 'ի բարեխառն գաւառս մեծագոյն են. մարմին նորա թեթև է, և արընթաց յոյժ. ընթանայ շրջապատոյտ, և բազմախոտոր շաւղօք առ 'ի զերծանիլ յորսողէն. ձայն վայելուչ, և կերպարանքն զուարթատեսիլ. աչքն և լսելիքն, և առաւել ես հոտոտելիքն կարի սուր են. պարանոցն երկայն, ատեն խարտեաշ, կամ կարմրագոյն, ձեան կարճ, տոտքն կճղակաբաշխ. եղջիւրքն կակուղ են 'ի սկըզբանն. և առ սակաւ սակաւ մինչև ցաշունն կարծրանան, յամենայն ամի առաւել բազմանան ոստք եղջերաց նորա, մինչև ոմանց ունել 22 ոստս բուսեալս 'ի վերայ իւրերաց, յորոց յօրինեմք դեղ բորբոքման, և հոսման արեան; և փորհարութե, զի են զովացուցիչ, և սեղմիչ բնութ̃: Յեղջերաց անտի ելուզանեն ոգի ինչ ազդու և ցնդական՝ կոչեցեալ յիտալացւոց՝ սբիրիթօ տի քօռնօ տի չէռվօ, զոր յաճախ 'ի կիր արկանեմք 'ի դեղ թունից, տկարութեան

ջլաց, անդամադօսութիւն, քնափութիւն, և լուսնոտութեան: Այս կենդանի ապրի զամս քսան և հինգ, կամ երեսուն. որոյ միսն համեղ է և կարի առողջարար: Արիւն սորա փոշիացուցեալ և արբուցեալ, դեղ է կչտացաւութեան, և յօդուածացաւութեան. զի է քրտնաբեր և կազդուրիչ բնութք: Զափն 'ի 10 ցորենոյ մինչև 960: 'Ի սիրտս ոմանց եղջերուաց գոյանայ ոսկր ինչ իբր մատնաչափ, և փոքր մի տափարականձև կոչեցեալ 'ի լատինացւոց՝ ոս քօռտիս չէռվի. որ իբր դեղծափ 'ի վար արկանի ընդդէմ Թունից, փորհարութեան, և խոցուածոց լերդի:

Չէրվօ. տես չէրվուս:

Չէրօթում, լտ: չէռօթթօ, իտ: այսու անուամբ նշանակի և այլ ազգ Թանձրամած ապեղանի, որ ամենայն որպիսութք է նման էմբիասթրօի. բայց մին կարծրագոյն լինի քան զնա:

Չէրօթում տիապօթանում քօն մէռքուրիալէս: Է ապեղանի ինչ Թանձրամած, և կապարագոյն, բաղադրեալ 'ի բազմազան նիւթոց, մանաւանդ 'ի սնդկէ. ունի զարմանալքանչ օգտաւէտութիւս յաղագս ընդդէմ ուռուցից որկորոյ՝ գոյացելոյ 'ի Թանձրամած հիւթոց առթելոց 'ի գաղղիական ախտէ, և է դեղ յոյժ ազդու, և կարի պատշաճողական՝ երբ հարկ 'ի վերայ լինի լուծանել, և ցրուել զդժնեայ և զկարծրապինդ այտուցս մարմնոյ, և ոսկերաց:

Չէքուս, լտ: չիէքօ, իտ: անուամբս այս իմանի մասն ինչ ճարպային փորոտեաց, որ ունի զմի և եթ բերան, որով պահպանի յելս, և 'ի մուտս. այս տեսակ փորոտեաց է յոյժ կարճագոյն 'ի մէջ այլոց փորոտեաց, և աւկցեալ է ընդ ոսկեր փալթութին, որ ասի իլէօ:

Չէֆալալճիա, կամ տօլօռէ տի քաբօ; իտ: դէֆալճիս բունիօ, յն: սիւտաա, կամ սուտա, և կամ վէճախլաաա, արբ: տէրտիսէր, պր: պաշ աղըրըսը. տճ: և ըստ մեզ՝ գլխացաւութիւն, կամ ցաւ գլխոյ. զորմէ լիագոյն խօսեցաք հտ. ա. երես 248:

Չէֆալիքէ, լտ: ինֆիամմացիօնէ տէլ չէռվէլլօ, իտ: պէյին Թութուշմասը, կամ իւֆիւնէթի, տճ: միւհրիւքան իլ մուխ, արբ: մաղզի կէրմ, պր: և ըստ մեզ՝ բորբոքումն ուղղոյ. զորմէ տես հտ. ա. երես 56:

Զէֆալիքօ, լտ. այսու անուամբ լի անդամազննաց նշանակի երակ ինչ բազկի ծագեալ 'ի գլխոյ. յորմէ 'ի դիպուածս ցաւոց գլխոյ սովորեն արտահանել զարիւն 'ի մերձումն այսր ցաւոյ, զոր տաճիկք դըֆալ անուանեն: Դարձեալ. բառիս այս իմանին հասարակօրէն ամենայն դեղորայք 'ի վար արկանելիք 'ի պէտս ցաւոց գլխոյ:

Զիբէռուս լունկուս, լտ: չիբէռօ լօնկօ, իտ: Թօբալաք ուզուն, տճ: սիւիւթ իլ Թավիլ, արբ: մուշքի զէմէն, պր: Է բոյս՝ յաճախեալ 'ի գերմանիա, 'ի վերին եգիպտոս, և յարևելեան հնդիկս՝ առ բուսանի 'ի խոնաւուտ, և 'ի հովանաւոր տեղիս. ցօղուն նորա է ծնրաւոր, եռանկիւնաձև, և ուղղալից: Տերևք յոգնաթիւ՝ ըստ նմանութե տերևոց եղեգան: Ծաղիկն կարմրերանգ, և փնջաւոր, բերէ և սերմն կարծր, և սեաւ: Իսկ արմատն երկայն, ծնրաւոր, խորտաբորտ, դժուարաբեկ, թելաւոր, անուշահոտ, և թխագոյն, և փոքր մի դառնահամ. յորմէ կազմեն դեղ ախոնդանոտութե, փքախտութե, և նուազութե ամսական պարտուց կանանց, զի է մեղմօրէն խթիչ բնութ: Չափն 'ի 20 ցորենոյ մինչև ց60՝ երեք անգամ յաւուրն: Է նորա և այլ տեսակ, զոր լատինք՝ չիբէռուս ռօթունտուս անուանեն, և տաճիկք՝ Թօբալաք մուտէվէր. յորմէ նախնիք 'ի գործ ածէին 'ի պէտս ախտից կանանց. բայց այժմ անպիտան համարի:

Զիռուինուս, լտ: քառբիօնէ, կամ ռէինա, իտ: տազան պալըղը, տճ: աճիւղ, արբ: Է ձուկն ինչ գետային. որոյ ոսկրն մածուցիկ է և կակուղ՝ հանգոյն աճառի. Թեփք մորթոյն լայն յոյժ, 'ի ծնօտն ունի վեց ատամունս սայրասուրս: Իսկ միսն համեղ է և դիւրամարս: 'Ի գլխոյ նորա ելանէ ոսկր ինչ լայն իբր եռանկիւնաձև, և սպիտակ, զոր լատինք հիօիտէ անուանեն, յորմէ փոշիացուցեալ յօրինեն դեղ մեզարգելութե, և հոսման արեան. չափն 'ի 10 ցորենոյ մինչև ց30:

Զիթռէում մալուս կամ մալուս մէտիքա, լտ: չէտռօ, իտ: քիթրու, յն: աղած գավունու, տճ: Թուռունճ, արբ: և ըստ մեզ՝ կիտրոն. պտուղ սեխաչափ մեծութ, գունով և ձևով նմանեալ լեմոնի, կեղևն խորտաբորտ, սառուար, մալլիր, հոտաւէտ, ջերմահամ, և կանաչագոյն. այլ 'ի հասանելն

ճիւղի 'ի գետին ։ Մէջ նորա կմ̃ թամբ՝ է սպիտակ, ցամաքային, մածուցիկ, և տտպահամ, ունելով ընդ տտպութեան, և փոքր մի քաղցրութիւն, որով զը-վացուցանէ զտապ սրտի, շիջուցանէ զբորբոքումն արեան, և մաղձի, և դիմակալէ թունից ։ 'Ի կե-ղևոյ այսր պտղոյ ելուզանեն ջուր ըմպելի, որ է դեղ ազդու ընդդէմ տկարութեան սրտի, ջղաց և ուղղոյ, զի է գրգռիչ բնութե̃ ։ Զափն 'ի մի տրամէ մինչև ց չորս յաւուրն ։ Զնոյն ունի գործունէութիւն 'ի ցքա-հանէ ելուզեալ ոգին ։ Զափն 'ի 10 շթէ մինչև ց30՝ խառն ընդ այլ յարմարագոյն դեղորէից ։ Կորիզ այսր պտղոյ, զոր խտալք կոչեն՝ սէմէ տէլ չէտռօ, նման է ամենևին կորիզոյ լեմոնի • յորմէ 'ի կերար-կաննեն ըստ օրինակի չայի, ուր հարկ 'ի վերայ կայ շարժել զչափաւոր քիրտն ։ Զափն 'ի կէս տրամէ մինչև ցմի ։ Ծառ նորա բուսանի յեւրոպա, 'ի կող-մանս եգիպտոսի, մանաւանդ 'ի կղզիս միջերկրա-կան ծովու, որոյ տերևն է երկայն, լայն, ծայրա-ւոր, պարարտ, պայծառ կանաչ, և փայլուն, ունի զհոտ ախորժական, և զկողմունս ողոցաձևս, և է դեղ զօրացուցիչ ջղաց, և նուաղելոց ։ Ծաղիկն սպի-տակ հարեալ 'ի գոյն կարմիր, բոլորակաձև, և հինգթերթեան • որ թէպէտ չէ այնքան առատապէս և խուլով՝ որպէս տերևն, սակայն ըստ մասին օգտա-ւէտութեան ազնուագոյն է քան զայն, մանաւանդ որոց են վիճակեալ սևամաղձային բնութե̃ ։

Զիթռուլլուս, կամ անկուռիա, կամ քուքումիս չիթռուլլուս, լտ ։ քօքօմէրօ, կամ մէլօնէ, կամ ան-կուռիա, իտ ։ դառպուզ, տճ ։ գիմօնիքօ, յն ։ պա-թիխ, կամ ճիլպիզ, կամ հապհապ, կամ ճապուս, արբ ։ հինտաւէ, կամ պատրէնգ, պր ։ և ըստ մեզ՝ ձմերուկ կամ մեղրապտուղ ։ Պտուղ գնտակաձև ծա-նօթ ամենեցուն, որոյ մէջն թամբալից է, հիւթեղ, և քաղցր իբրև զմեղր • միանգամայն և զովացուցանէ զտապ սրտի, և փամփշտոյ ։ Իսկ ունդ սորա՝ որ է կարծրակեղև տափարակ, և երկայնաձև՝ կարգի 'ի թիւս չորից ցովացուցիչ, և միզաբեր ընդոց ։

Զիլխաւէ • անուամբս այսու ըստ անգամագնինաց նշանակին՝ թարթափեան մկանունք ։

Զիկնուս, լա ։ չիկնօ, իտ ։ թօյխւթ օգլու գու-շու, տճ ։ և ըստ մեզ՝ կարապ, կամ պոր ։ Է ազգ ինչ ջրասէր թռչնոյ 'ի չափ ընտանի սագի, որում

նմանի և ձևով մարմնոյն, բայց բոլորովին սպիտակ, և քաղցրաձայն։ Պարանոց նորա է յոյժ երկայն, բաղկացեալ 'ի քսան և ութ ողանց։ Կտուցն փոքրիկ, սուր, և փոքր մի թեքեալ. որոյ ծայրն է գեղին հարեալ 'ի գոյն կարմիր։ Ոտքն կարծրամաշկ, և խայտաբղէտ. Թաթք ոտից ճիրանաւոր. միսն չոր, և ջերմ բնութե̃, որ ոչ է բարի 'ի կերակուր։ Իսկ մորթն ունի զգործունէութի̃ 'ի կազդուրել և 'ի ցօրացուցանել զջիլս, և զերակս, արկանելով 'ի վերայ վշտագնեալ մասին մարմնոյ։

Չինանքէ, լտ։ սգուինանցիա, կամ սքուիմանցիա, կամ սքինէնանցիա, կամ սքէուանցիա, կամ սքինանցիա, կամ անձինա, և կամ սօլօռի կամ մալ ախ կալա, իտ։ հինանգ, կամ պօղաղ աղըրըսը և կամ պաղաղ սըզլմասը, տճ։ խավանիկ, կմ թէշվիշ իւլ գօս, արբ։ աէրտի կուլուլ, պր։ և ըստ մեզ՝ փողացաւ կամ որկորացաւութի. և ախտ կոկորդի. զորմէ տես հտ. ա. երես 70։

Չինանքէ թօնսիլլաւիս. տես չինանքէ։

Չինանքէ մալինեա. տես հտ. ա. երես 76։

Չինապուօ. տես չիննապուխս։

Չինգուէֆօլիօ. տես բէնթհաբհիլլօիտէս։

Չինա ռատիքս. տես քինաէռատիքս։

Չիննամօմում, կամ լաուռուս չիննամօմում, լտ։ քաննէլլա, կամ չիննամօմօ, իտ։ Թառչին, կամ տարչին, տճ։ կռֆիլ, արբ։ և ըստ մեզ՝ կինամօմոն, կմ կինամոն, կամ դարչենի, և կամ դարսին։ Է հնչակաւոր կեղև ինչ նուրբ, երկայն, անուշահոտ, քաղցրահամ, համեմային, միանգամայն կծանօղ լեզուի, որ արտադրի 'ի բունոյ, կամ յոստոց ծառոյն կոչեցելոյ յիտալացւոց՝ քաննէլլիէռօ. որ մեծութե̃ գրեթէ ոչինչ ընդհատ է յուռենեաց մերոց։ Փայտ այսր ծառոյ կարծր է և սպիտակ. բայց զուրկ 'ի հոտոյ։ Տերևն նման է տերևոյն այնմիկ՝ զոր լատիններէն կոչեն՝ մալապաթհռում. այլ համ նորա և հոտ՝ իբր զկինամոնի։ Ծաղիկքն 'ի վեր երևին 'ի ծայրս ոստոց, և են փոքրիկ, սպիտակ, և փնջաւոր։ Բերէ պտուղ երկիցս 'ի տարւոջ, որ նմանի է փոքրիկ կաղնւոյ, գոյն նորա 'ի սկզբանն է կանաչագոյն, իսկ 'ի հասանելն սեաւ, մէջն հիւթալից, և տտպահամ, և իւղային, և անուշահոտ։ Իսկ կեղև ծառոյն է նոյն իսկ կինամոնն, որ 'ի սկզբան անգ

է կակուղ, և կանաչագոյն, և ապա առ սակաւ սակաւ կարծրացեալ փոխի 'ի գոյն չիկակարմիր, կամ մթին կարմիր: Ազնիւ և ընտիր համարի երկրորդ կեղեն, զոր սկսանին հաւաքել յաւարտէ մարտի մինչև ցյուլիս, և չորացուցեալ յարևակէզ տեղիս առաքեն 'ի վաճառ, որ է առատ իւղով և ցնդական աղիւ, և բնութիւ դրդուիչ և խթիչ. միանգամայն և դեղ աղցողական ընդդէմ տկարութե ջղաց, ախտադանտառութե, իջուածոց լեզուի, փորհարութե, և ախտի փքոտութե: Զափն 'ի 10 ցորենոյ մինչև ց30: 'Ի կեղեոյ սորա ելուզանեն զիւղ ինչ ոսկեգոյն, աղցու, և կիզողական, զոր լուծանեն կրկնահան ցքւով, և խառնեն ընդ ջուր 'ի ցքահանել ելուզել. որով և լինի ջուր ինչ սպիտակ, և ազխաւոր, լատինական անուամբ՝ ագուա չիննամոմաւմ անուանել. տաճկերէն՝ թառչին սույու. որ վարի 'ի զօրատու դեղորայս: Զափն 'ի 2 տրամէ մինչև ց4. խառն ընդ այլ յարմարաւոր դեղորէից: Ծառ այսր կեղևոյ բուսանի 'ի կղզին սէյլանայ, և յայլ տեղիս արևելեան հնդկաց, բայց սորայս՝ ազնուագոյն է, և պտուղն՝ որ արտադրի 'ի ծառոյ սորա լինի առաւել իւղային, և առաւել հոտաւէտ. զոր լուեալ արկանեն 'ի ջուր ջերմ, և ելանէ յերեսս ջրոյն իւղ. որ 'ի ցրտանալ իւրում պնդանայ իբրև զճարպ. յորմէ յօրինեն ճրագ միայն 'ի պէտս արքային սէյլանայ. որ 'ի վառիլն ընդ լուսոյն բուրէ և հոտ անոյշ:

Զիննապառիս, կամ սուրբհուռեթում հիտառաճիւսի ռուպռում, լտ: չինապռօ, իտ: զինճէֆըր, տճ: կինաբարիս, յն: Է նիւթ ինչ ամբողջ, կարծր, ծանր, հրատիպ, և շողշողուն. որոյ կրկինտեսակ է. բնական, և արուեստական: Բնականն է հանքային՝ զոր իտալացիք կոչեն՝ չինապռօ մինէռալէ, որ սովորաբար գտանի 'ի սպանիա, 'ի գերմանիա, և 'ի գաղղիա, գոյացեալ 'ի ծծմբային ստորերկրեայ հասանուտ հիւթոց խառնեցելոց ընդ սնդկի: Իսկ արուեստականն կոչի յիտալացւոց՝ չինապռօ առթիֆիցիալէ. զոր կազմեն 'ի տասն և ութ տրամ՝ սնդկէ, և 'ի վեց տրամ՝ ծծմբոյ: Ազնիւ համարի, եթէ իցէ ծանր, կարծր, շողշողուն, գունեղ, մաքուր, և թխատեսակ հրագոյն. որ յաճախ 'ի վար արկանի 'ի նիւթ կարմիր մեղրամոմի, նա և 'ի դեղ ախտի դաղղիականի, ելեփանդականի, բորոտութե,

և որբխնոյ · զի է թուլացուցիչ բնութե՛ : Զափն 'ի 2 ցորենոյ մինչև ց10 : Նոյնպէս է դեղ լուծոտութե՛ և չլամախութե՛ : Վարի և 'ի պէտս կարմիր ներկի :

Զինօկլօսսում, լտ : չինօկլօսսա, կմ՛ լինկուա տի քանէ, իտ : գէօբէք տիլի, տճ : լիսանիլ քէլբ, արբ : և ըստ մեզ սուսագաբանի՝ շանալեզու : Է խոտ ինչ վայրի, որոյ ցօղունն է երկայն իբր երկու ոտնաչափ, ճիւղալից, և թաւամազուտ : Տերեն փափուկ, հոտաւէտ, 'ի ձև լեզուի շան, յորմէ կոչաւ և զանունն : Ծաղիկն կարմրերանգ, և փոքրիկ՝ նման ըստ իմիք ծաղկանց եզնալեզուի, և ունի 'ի մէջ իւր զփոքրիկ և զսպիտակագոյն առէջս ինչ հերձոտ արտաքս ելեալ : Զկնի ծաղկանց արտադրէ պտուղս բոլորակաձևս, ունելով 'ի վերայ թաւամազս խայթիչս, որք կռուին 'ի հանդերձս անցաւորաց : Իսկ արմատն երկայն, տուար, ուղիղ, սատակահոտ, տաղտկահամ, արտաքուստ թուխ, իսկ 'ի ներքուստ սպիտակ : Բուսանի յամայի վայրս, և 'ի գերեզմանատունս : Բնութ՛ է սեղմիչ և թմբրեցուցիչ, որով և խափանէ զհոսումն որովայնի, և մեղմէ զհազս :

Զինօմօրիում քօչչինէում · տես Ֆունկօ տի մալթա :

Զիչչիօնէ, իտ : սիվլիձիկ, տճ : պէսէր կմ՛ սօլաք, արբ : բէրուղ, պր : և ըստ մեզ՝ խապաւարտ :

Զիսթէբաթիքօ · է անուն փամփշտեան խողովակաց :

Զիսթիթիտէ, լտ : ինֆիամմացիօնէ տէլլա վէշիքա, իտ : քալափուշտ թութուշմասը, կամ իւֆինէթի, տճ : և ըստ մեզ՝ բորբոքումն փամփշտոյ · տես հտ · ա · երես 118 :

Զիսթիկօ · անուամբս այս իմանին խողովակք լեղաբերք, 'ի ձեռն որոց ածի մաղձն 'ի լերդէ 'ի պարկ լեղւոյն :

Զիսթիֆէլիա · անուամբս իմանի պարկ լեղւոյ որ և իցէ կենդանեաց :

Զիտօնիա, կմ՛ մալուս չիտօնիա, և կմ՛ քօթօնէում, լտ : բէրա չիտօնիա, կամ մէլաքօթօնիա, իտ : քիտօնիա, յն : այվա, տճ : սէֆէրճիլ, արբ : ապի, կամ պեյ, և կամ կամրաթ, պր : և ըստ մեզ՝ սերկևիլ : Պտուղ գնտակակերպ, դեղնագոյն, անուշահոտ, մէջն թամբալիր, սպիտակ, և առ փոքր մի տափակ, այլ ախորժահամ, միանգամայն և դեղ զօրատուաբ-

տի, և ստամոքսի․ զի է սեղմիչ, և փոքր մի գրգռիչ բնութ՟բ․ ուստի և պատշաճողական կերակուր է լոյծ բնութեն վիճակելոց, եփեալ 'ի մէջ մսխրոյ, կամ այլ եղանակաւ։ Կորեկզք նորա որք լինին 'ի պտղի անդ՝ են երկայնաձև, մթին կարմիր, խաժային, և մածուցիկ․ միանգամայն և դեղ հազից, թոքոց, արիւն թքանողաց, թանչից, և փորհարութե․ զի է քաղցրացուցիչ, և թեթև սեղմիչ բնութ՟բ։ Ծաղին 'ի կէս ապրիլէ մինչև ցմի․ զոր պտուղ է եռացուցանել ընդ չորս ունկի ջրոյ։ Այլ և օգտէ այտուցաց և ցաւոց աչաց, շրթանց, լեզուի և բերանոյ, եթէ դիցի 'ի թրմոց 'ի ջուր ջերմ ժամս երկս, և արկցի 'ի վերայ այտուցեալ և ցաւագնեալ մասին մարմնոյ։

Ձիրաօչէլէ․ այսու անուամբ իմանի պալարն այն որ գոյանայ 'ի սերմնական անօթս։

Ձիրքօնճիռաթօռէ․ շրջապատոյս միանունք․ կոչին և օթթուռաթօռիօ։

Ձիքլամէն, կամ չիքլամինուս, և կամ արթանիթա, լտ։ բանէ բօռչինօ, կամ չիքլամինօ, կամ բան թէռռէնօ, իտ։ եէր սօմունու, տճ։ և ը՟ մեզ ատուգաբանի՝ հաց խոզի, կամ հաց գետնոյ․ խոտ երկայնացօղուն, յորոյ վերայ գասեալ կան ծաղիկք փոքրիկ և ծիրանագոյն․ բերէ տերևս լայն և բոլորչիգոյն նոցա 'ի վերին երեսս սպիտակախառն կանաչ, իսկ 'ի ներքոյ փոքր մի ծիրանագոյն․ զոր ծեծեալ և եդեալ 'ի վերայ այտուցաց՝ վաղվաղակի ջրուէ կամ հատուցանէ։ Արտադրէ պտուղ ինչ թաղանթային, ունելով 'ի միջի սերմունս անկիւնաւորս։ Ունի արմատ լայն, տտուար, բոլորակաձև, և սևաթեալ, սպիտակ 'ի ներքուստ, իսկ թուխ արտաքուստ։ Բուսանի 'ի հովանաւոր, և 'ի ցամաքային տեղիս․ որոյ արմատ լուսեալ 'ի փոշի մանրամաղ, և արբուցեալ, դեղ է վատառողջ անձանց․ զի սթափէ զթըմբրեալ մարմինս, մաքրէ զաղտեղութիւն արգանդի, լուծանէ զխցանս, և զդաշտանս կանանց։ Ծաղին 'ի կէս ապրիլէ մինչև ցմի ամբողջ։ Յօրինեն 'ի սմանէ նաև օգգ. մի սպեղանւոյ կոչեցեալ յիտալացւոց՝ արթանիթա․ որ 'ի վար արկանի 'ի դեղ խլութե։

Ձիքհօրիում, կմ՟ չիքօրիում ինթիպուս, լտ։ չիքօրիա սալվաթիքա, իտ։ սիքօռէ, գղ։ ուվայլտ ռըքըլրի, անգղ։ եապան հինտիպասը, տճ։ գէաանի, կմ՟ հինպիթ, պր։ և ըստ մեզ՝ եղերդ, կամ եղերդնակ

վայրի։ Բոյս յաճախեալ յեւրոպիա, նա յաւէտ 'ի շրջակայս փարիզու. որոյ տերեւն է երկայն, եզերահերձ, թաւամազուտ, կաթնալից, և յոյժ դառնահամ։ Ծաղիկ նորա է փոքրիկ, փնջաւոր, և կապտագոյն։ Արտադրէ սերմնափակ ինչ երկայնաձև, յորում բաղկանան սերմունք սպիտակք, և եռանկիւնաձևք։ Իսկ արմատն սպիտակ, երկայն, ստուար 'ի չափ ձկոյթ մատին մարդոյ։ Այս բոյս ունի ըղգոյացական շնչքարակս, և իւղս. որոյ տերեւն լինի դեղ ազդու ընդդէմ խցմանց ստորին որովայնի և ընդերաց. այլև մաքրէ զարիւն, զի է մեղմօրէն գըրգռիչ, և լուծիչ։ Զափն 'ի վեց դրամ մինչև ցութ, զոր պարտ է եռացուցանել ընդ մի լիտր ջրոյ, և տաւնել լինի ըմպելիս այս 'ի միջոցի 24 ժամուց։ Զնոյն գործունէութիւն ունի 'ի ցքահանէ եփուզեալ ջուրն։

Չիքութա, լա, և խա. կամ քօնիում մաքուլաթում։ սիկիւ, գրզ։ հէմլօք, անգղ։ պալտորան, տճ։ թահմահ, կամ շուքէրան, և կամ չէ Ֆիքէրամ, արբ։ խուրթ, կամ շիւք, պր։ և ըստ մեզ՝ մոլախինդ, կամ կոնիոն։ Է բոյս զազրահոտ, և թունաւոր. որոյ են երեք տեսակք. առաջին տեսակն կոչի 'ի լատինացւոց՝ չիքութա ագուաթիքա, կամ հէռպա չիքութա ագուաթիքա. այսինքն մոլախինդ ջրային. որոյ ցօղունն է ստուար, երկայն իբր հինգ ոտնաչափ, ծընրաւոր, մէջն դատարկ, յղկեալ, և բծալից։ Տերև նորա ունի զձև տերևոյ չէռֆօլլիօի կամ քարանի։ Ծաղիկն սպիտակ, հնգթերթեան 'ի ձև շուշանի։ Բերէ և պտուղս բոլորշիս, յորս են սերմունք փոքրիկք, և դարչնագոյնք։ Իսկ արմատն սպիտակ, անկալից, երկայն իբր ոտնաչափ, և ստուար մատնաչափ, տտպահամ, միանգամայն և անախորժելի։ Բուսանի յեւրոպա 'ի բուրաստանս, և 'ի ցանկապատ տեղիս, նաև 'ի ստորոտս լերանց, և 'ի հովանաւոր տեղիս։ Այս բոյս՝ բնութեամբ է թմրեցուցիչ, թուլացուցիչ, և թիւնաւոր. զի եթէ ոք կերիցէ զսա վրիպակաւ կամ յանդէտս արտաքոյ քան զչափն սահմանեալ՝ պատճառէ զգրգռութիւն մկանանց ստամոքսի, զսաստիկ ժայթքումն, զպտոյտ գլխոյ, զխէթ ստամոքսի, և փորոտեաց, զցնցումն մկանանց, զհոսումն արեան յականջացն, զհեծկլտանս, զայտուցումն ստորին որովայնի, և այլոց անդամոց. և նըքին ևս զքօրքօքումն բովանդակ մարմնոյ, ուր և

սկսանի թշուառական թիւնակերն անբերելի անձկութք 'ի ցաւրս քերան հարեալ զրկիլ 'ի կենաց: Այլ դարման սորա չէ ինչ աւրբեր 'ի դարմանոց այլոց թմբրեցուցիչ և մահահրաւէր բուսոց, կամ խոտոյ: Բայց մեք ստէպ 'ի կիր արկանեմք զսա 'ի դեղորայս դուզնամասնեայ քանակաւ, այսինքն զկէսոյ մասն միոյ ցորենոյ մինչև ցերկու կամ ցերեք ցորեան յաւուրն, և յետոյ առ սակաւ սակաւ աշտեճանաւ աւաւելուլ զքանակն մինչև ցմի տրամ ամբողջ. զի լուծանէ զխցանս աւիշկեան անօթոց, և զամենամանր ծակտիս երակաց, որով և ցրուէ կամ փարատէ զայտուցս խուլականս 'ի վեր երևեալս 'ի պարանոցս և յանդամս. և բուժէ զխլրդենիս, և զվէրս ճարակեալս 'ի քաղցկեղոյ: Նոյնպէս յաճախ կարգեն 'ի սմանէ սպեղանիս առ 'ի փարատել ըղկարծրապնդութիւս փայծեղան, լերդի, և միջընդերաց, այլև 'ի ցրուել զխոյլս որկորոյ՝ արկանելով 'ի վերայ վշտագնեալ մասին մարմնոյ: 'Ի սմանէ յօրինեն և զգոյացութիւն ինչ սևագոյն, զոր խաւլք՝ եսթրաթթօ տի չիքութա անուանեն, զորմէ լիովին խօսեցաք 'ի տառն՝ Է. 'ի կարգի իւրում: Երկրորդ տեսակն կոչի 'ի լատինացւոց՝ չիքութա կամ հէրպա քանինում մաքուլաթում. իսկ երրորդ տեսակն անուանի 'ի նոցանէ՝ չիքութարիա կմ հէռպա աէթհուսէ չինապիի. որք և երկոքեան սոքա են բնութք և ներգործութք նման առաջնոյն, բայց ոչ են այնքան յարմար 'ի դեղորայս՝ որպէս զայն:

Չիքօնիա, և կամ իպլիս, լտ: չիքօնեա, իտ: գուհգու, կամ. լաքլաք, և կամ չէգուլթանուր, արբ: լէքլէք, պր: և ըստ մեզ՝ արագիլ: Է թռչուն ջրաւէր, որոյ կտուցն է երկայնաձիգ, որպէս և պարանոց նորա: Փետուրք նորա խայտաբղէտ, այսինքն սպիտակ, և սեաւ. ոտունքն կարմիր, և երկայն. այլ մեծութք և ձևով մարմնոյն՝ նման է կռնկան. իսկ ձայնն՝ փայտահարի. դնէ զբոյն իւր 'ի վերայ տանց, զոր 'ի յոլով տեղիս բնակիչքն հոգունակութք պաշտպանեն, զի զգաստ գոլով բնութք, 'ի գալ գաղոց՝ իւրով դանդաղական ձայնիւ յարուցանէ 'ի քնոյ զտանուտէրն: Սովորական որս նորա՝ օձ, ձուկն, ճնճղուկ, և այլ ղեռունք: Միս սորա՝ լինի դեղ թունից, և ոսկորութն ջլաց: Ճարպն նոյնպէս լինի դեղ ցաւոց յօդուածոց, օծանելով ընթ զայն 'ի վերայ

ցուագնեալ անդամոյն · իսկ լեղին սրէ զտեսութիւն աչաց ։

# Պ

Պազիլիքում · տես Օձիմում ։

Պաթթէուլաքասաս տասուսօ · այսու անուամբ քառանդամազննաց նշանակի՝ խխնձ ականջաց · որ է խոռոչ յեռուսս թմբկի ականջաց ։

Պալաէնա, կամ չէթէ, և կամ չէթուս, լտ ։ պալէնա, իտ ։ ատա պալըղը, կամ ֆալեանօս, տճ ։ և ըստ մեզ՝ պալէնա, կամ բաղենայ ։ Է կէտ վիթխարի՝ յածախեալ 'ի խորս հիւսիսային ովկիանու, և ասի թէ աճի մինչև ցվախճան կենաց իւրոց, ուստի և գտանին 'ի նոսա երբեմն մեծամեծք յոյժ · որք ըստ երկայնութեան հասանեն 'ի 42 ոտնաչափ, և առաւել · գլուխ նորա է ստուար յոյժ և բոլորշի · ատամունքն մեծ՝ մինչ մի և կէս լիտր · այլ 'ի մէջն անդ գլխոյ կիտին՝ է հիւթ ինչ իւղային, և հոտաւէտ, զոր իտալք կոչեն՝ օլիօ տի պալէնայ, յորմէ գործեն կակղացուցիչ և մեղմացուցիչ դեղորայս ։

Պալաուսթիում · տես բօմում կրանաթում ։

Պալսամիթա, կամ Թանաչէթում պալսամիթա, լտ ։ քօսթօ, իտ ։ էռպ տիւ քօգ, գղղ ։ քօսթ մէրի, անգղ ։ Է բոյս ինչ որոյ ցօղունն բարձրանայ յերկրէ իբր մի և կէս ոտնաչափ, և է ստուար, ուղիղ, կարմրերանգ, և հիւթալից ։ Տերև նորա է երկայնաձև, եզերահերձ, դառնահամ, միանգամայն և համեմային · ծաղիկն ելանէ առ կանթիւ տերևոյն, և է չիկակարմիր, որպէս և կանթ նորա ։ Պտուղն տանձաձև, դեղին, անհարթ, և թաւամազուտ, յորում է և կորիզ ոսպնաձև ։ Իսկ արմատն սպիտակ, և թելալից · բուսանի 'ի բուրաստանս · զոր ժողովեալ 'ի կէս տրամէ մինչև ցմի՝ դնեն 'ի թրմոց 'ի ութ ունկի ջուր ջերմագին ժամս վեց · յետ քամելոյ տան ըմպել վասն աճեցուցանելոյ զախորժակս կերակրոյ, և զօրացուցանելոյ զստամոքսն · զի է դրդուիչ, և քրտնաբեր բնութք ։

Պալսամում, լտ ։ պալսամօ, իտ ։ պօմ, գղղ ։ պօլսըմ, անգղ ։ պէլէսանէնկ, տճ ։ պէլեսան, արբ ։ և

ըստ մեզ՝ բալասան ։ Կրկնատեսակ է, այսինքն բնական, և արուեստական ։ Բնականն է հեղանիւթ թանձրացեալ, որք 'ի զանազան տեսակ ծառոց. և ոմնկոց հեղանի, և հոտէ ։ Իսկ արուեստականն՝ է հեղանիւթ լոյծ, զոր ելուզանեն յո՛ և իւղէ նիւթոց խառնմամբ ցքւոյ, կամ գինւոյ, յորոց զկարեւորն մի առ մի ստորագրեսցուք յառաջիկայդ ։

Պալսամոնում աբօբլէթիքում, լա ։ պալսամօ աբօբլէթիքօ, իտ ։ տամլաեա քարշը բելէսէնկ, տճ ։ Է բալասան արուեստական հաշակաւոր 'ի գիպուածս խլուածոց, անդամալուծութե, և 'ի մասնաւորի ամենակերպ տկարութեց ջլաց, և միանանց մարմնոյ ծծմամբ այնու զկշտայեալ մասունս ։ Այլ և գիմակալէ յաւխ օդոյ, և թուլութե ուղղոյ և ջլաց, եթէ հոտոտեսցէ ոք 'ի սմանէ յաճախակի ։ Զայս եթէ կամիս կազմել, առ կէս ունկի՝ օլիօ տի նոչէ մօսքաթա. երկու տրամ ստորաչէ քալամիթա. ութսուն չիթ՝ պալսամօ տէլ բէրու. և եղեալ զայս ամենայն յապիկած պոյան, մերձեցո 'ի հուր թեթև. և յորժամ սկիզբն առնէ եփել, արկ 'ի նա կէս ունկի՝ էսթրաթթօ տի մէնթա, օլիօ տի քաննէլլա, օլիօ տի սուչչինօ, օլիօ տի րութա, օլիօ տի լավանտա, օլիօ տի բուլէճիօ, յիւրաքանչիւրոցն քառորդ տրամ. և մի ունկի՝ սբիրիթօ տի սալ ամմօնիաքօ. զոր պարտ է գնել յետ ամենեցուն, այլ խառնելն է անընդհատ ծայրիւ փայտիկ ինչ ցպոյ՝ մինչև 'ի զանգիլ բարւոք ընդ միմեանս, և լինել մի բաղադրութիւն, և յետ պաղելոյ դիր յանօթ ապակեայ 'ի պահեստ ։

Պալսամոնում անօտինում, լա ։ պալսամօ քօնթրա քօթակրա, իտ ։ նէքրիդլէրէ քարշը բելէսէնկ, տճ ։ և ըստ մեզ՝ բալասան ընդդէմ ռանդաւութե. որ այսպէս բաղադրի ։ Ա՛ռ. մի ունկի՝ օբբիօ. և հինգ ունկի՝ օճառ սպիտակ. և մանր հատանելով զայս դիր 'ի թրմոց յերկու լիտր՝ կրկնահան օղի զաւուրս երիս. և ապա զօղին ուժգին քամեսցես կտաւով, յոր յաւելլ երեք տրամ՝ քանֆօռա. և կէս ունկի՝ օլիօ էսսէնցիալէ տի րամերինօ, և միանգամայն անդադար խառնեա զայս ծայրիւ մաքուր ինչ ցպոյ՝ մինչև զանգեսցին բարւոք ընդ միմեանս. և լինի դեղ ռանդաւութե, յօդուածացաւութե, և ձեռնաւութե, որով կազդուրէ զցաւս նոցին, եթէ օծանիցի յամենայնում 4 ժամու միանգամ 'ի ցաւագնեալ մասունս

անգամոց: Եւ երբեմն 'ի ներքուստ ևս 'ի վար արկանի 'ի 30 չթէ մինչև ց50, խառն ընդ հասարակ օղւոյ վասն ջղային խթից. բայց զգուշութիւն պէտք են, զի բազում անգամ լինի մահաստակար յղեաց պատճառաւ քափրոյ, որ գտանի 'ի բաղադրութիւն այսր բալասանի:

Պաղսամում աչէթիքում քանֆօռաթում, լա: պաղսամօ աչէթիքօ քանֆօռաթօ տել սօթթօռ բէյկէթիէռ, իտ: Է բալսաման ինչ արուեստական. որ այսպէս կազմի: Ա՛ռ մի տրամ սաքօնէ անիմալէ. և նոյնչափ՝ քանֆօռա. տասն չիթ էսսէնցա տի թիմօ. և մի ունկի՝ էթէրէ աչէթիքօ: Զայս ամենայն հեղ 'ի շիշ. և դի՛ր 'ի վերայ ջերմացուցեալ աւազոյ առ 'ի հալել. և զկնի հալելոյ քամեա՛ ը կտաւ, լի՛ց յանօթ ապակի քաջ խցեալ պապակի խփով: Զօրաւոր է բալասանս այս 'ի դիպուածս յօդացաւուն, նաև յաւելու չիաթիքա անուանեալ յօդուածացաւութեան, եթէ օծանիցի յամենայնում երեք կամ չորս ժամու միանգամ 'ի վշտագնեալ մասունս անդամոյ, միայն թէ կրկնելի է գոնէ մինչև 'ի տասն օր:

Պաղսամում արչէի, լա: պաղսամօ տ' արչէօ տի մուխօ, իտ: Բալասանս այս յոյժ գերահռչակ է, և պատուշաճողական 'ի դիպուածս ամենատեսակ վիրաց նորոգ ընկալելոց, զի սպիացուցեալ բուժէ առանց երեք աւուրց այլոց սպեղանեաց, և միանգամայն տարամերժէ զտոշորութիւն, կամ զբորբոքութիւն նոցին: Զայս եթէ կամիս յօրինել, Ա՛ռ երկու ունկի թուէմէնթինա. և նոյնքան՝ կօմմա էլէմի, և նոյնչափ՝ սէվօ տի բէքօռա, ա՛ռ և մի և կէս ունկի՝ օլիօ տ' իբէռիքօ. երկու տրամ՝ չէռա, և նոյնքան՝ սանտալի ռօսսօ փոշիացուցեալ: Զայս ամենայն դի՛ր 'ի պղյատն ապիկած, և մերձեցո՛ 'ի հուր թեթև, և յորժամ սկիզբն առնէ եփիլ, 'ի բաց ա՛ռ 'ի հրոյն զպղյատն, և յետ քառորդ մի ժամու ա՛րկ յաման ինչ ապիկած:

Պաղսամում աքուսթիքում, լա: պաղսամօ աքուսթիքօ, իտ: Բալասանս այս օգտակար է 'ի դիպուածս պատահական խլութեան, և ցաւոց ականջաց. որ այսպէս կազմի: Ա՛ռ տրամ մի իւղ քաղցր նշոյ. երկու տրամ՝ պիլէ պօմինա, և կէս տրամ՝ պաղսամօ տէլ Ֆիօռավանթի: Զայս ամենայն խառնեա՛ բարւոք, մինչև 'ի զանգիլ ընդ միմեանս. յետ որոյ ա՛ռ փոքր ինչ թել կամ պատրոյկ վշոյ. և զանգեա՛ զայն նո-

վաւ, մինչ ընդ ծակոտիս յականջս խլաց՝ առ 'ի փարատել զխլութիւն, և 'ի մեղմել զցաւս։ Զայս բալասան սովորութիւն է տաճկաց մեկնաբանել՝ սաղուլըղա քարըշը բէլէսէնի ասելով։

Պալասամում բարալիթիքում, լտ. պալասամօ անթիբարալիթիքօ տէլ քէլթլի, իտ. գէօթրիւմլիւզէ քարըշը բէլէսէնի, տճ. Է բալասան ինչ-արուեստական, կազմեալ 'ի բազմատեսակ նիւթոց, զորոյ ընդարձակս բաղադրութիւն թողեալ 'ի ճարտարութիւն դեղակազմացն, յայտ առնեմք զօգտակարութիւն նորա։ Յոյժ օգտակար և կարի պատշաճական է 'ի դէպուածս անդամալուծութեան, ակարութեան ջղաց, և ցաւուց յօդուածոց, օծելով այնու զվշտացեալ մասունս անդամոց։

Պալասամում բէռուվիանում, լտ. սուիթ, կամ մէլլէնի պօլսըմ թուի, անգղ. պալասամօ տի բէռու, իտ. պօմ տիւ բէռու, գաղ. ևէնի տիւնեա բէլէսէնի, տճ. և ըստ մեզ ստուգաբանի՝ բալասան բէրուայ, որ է բնական, մթին կարմիր, թանձր իբրև զմեղր, անուշահոտ, ջերմահամ միանգամայն և կծու, զոր արտադրեն 'ի բունոյ, յոստոց, և 'ի տերևոց ծառոյ իւրեք ամերիկոյ։ Ընտիրն այսր բալասանի գտանի 'ի բէրու, յայն սակս յանուն նորա սովորութիւն եղև լատինացւոց կոչել՝ բալասամում բէրուվիանում։ Որ է բնութեամբ խթիչ և զրգռիչ. յորմէ կազմի դեղ ազդու ընդդէմ խոնաւ շնչարգելութեան, ապականութեան թոքոց, թանչախտառն փորհարութեան, միզապայքեն, և ջղային ախտից, ճնշման ամսական պարտուց կանանց, և հոսման վավաշոտական հիւթոց 'ի սաղմանց խողովակէ։ Չափն 'ի 6 ցորենոյ մինչև ց30՝ խառն ընդ այլ յարմարագոյն դեղորէից. զոր պարտ է առնուլ այնչափ երեք կամ չորս անգամ յաւուրն։ Գտանի և զմուռով կազմեալն. որ 'ի նոյն պէտս վարի, այլ չէ յարգի և չահաւէտագոյն իբրև զբնականն։ Այլ բաց 'ի սոցանէ՝ են և այլ երկու տեսակք բալասանի սեփհական գաւառին բէրուայ, զոր քաջ ճանաչեն բնակիչք տեղեացն. առաջինն կոչի յիտալացւոց՝ պալասամօ սէքքօ, որ կարծր է իբրև զխէժ, կարմրաւուն, և հոտաւէտ, որ ինքնին բղխէ 'ի բունոյ փոքրիկ և պտղաբեր ծառոյ իւրեք բէրուայ։ Իսկ երկրորդն զոր կոչեն՝ պալասամօ պիանքօ, սպիտակ է, հոտաւէտ, և հեղանուտ իբրև զխէժ բևեկնոյ, ծորէ

'ի հաստատութեան ծառոյ յաւուրս ջերմութեան ամառուան։ Երկրքին սոքա վարին 'ի զօրացուցիչ սպեղանիս, և 'ի հաստադեղս։

Պէլամիւս եւթակիքում, կամ օքսպալամիւս, կամ պալամիւս ու մէջա, և կամ ամիուիս օքս պալամիւս, լտ։ պալամիտ ա՛կլըա մէջքա, կամ պալամիտ ալիանքօ, կամ պալամիտ ու՛ ճիւտէի, կամ պալամիտ ո՛ էճիթթօ, կամ պալամիտ օրիէնթալէ, իտ։ մէջքէ բէլէնէնկի, կամ եահուտի բէլէնէնկի, թճ։ Է բալասան ինչ ընտական, հեղանուտ՝ թափանցիկ՝ ռետնալից, սաստկահոտ, գառնահամ․ գոյն նորա 'ի սկզբան է սպիտակագոյն, ապա կանաչագոյն, հուսկ յետոյ 'ի գոյն դեղին փոխի, և փոքր ինչ թանձրանայ․ զոր լցեալ յանօթս տանին 'ի վաճառ ընդ հեռաւոր տեղիս։ Ազնիւ և օգտակարագոյն համարին ծորեալքն 'ի բունոյ և յոստոց ծառոյն յաւուրս ամառան՝ սպիտակագոյն, թափանցիկ, գառնահամ, և կիտրոնահոտ, որք և սակաւ ուրեք երևին յայսմիկ կողմանս։ Նման իւրն հարկ է 'ի վար արկանել զծորեալսն, կամ զքըրղխեալսն․ որք լինին դեղ ազդու ընդդէմ թուլութեան ջղաց, խոնաւ շնչարգելութեան, և հոսման վավաշոտական հիւթոց 'ի սաղմանց ճանապարհէ․ նոյնպէս օգտակար է ժանտախտից, և հարուածոց թունաւոր զեռնոց․ զի է գրգռիչ ընութեան։ Չափն 'ի 10 չթէ մինչև ց40։ Այլև օգտակար է վիրաց, և ցաւոց և տկարութեան ջլաց՝ օծելով այնու զվնասացեալ մասունս մարմնոյ։ Ծառ այսր բալասանի բուսանի 'ի հրէաստան 18 ժամաւ հեռի 'ի Մէքքէէն, և 11 աւուրբք 'ի Մէքքէէ․ յայն սակս լատինացիք կոչեն զայս բալասան Մէքքէի․ բուն նորա է փոքրիկ և բազմոստեան․ որոյ ոստք են ուղիղ, թեթև, և ծնրաւոր․ կեղևն կանաչ է 'ի ներքուստ, իսկ արտաքուստ կարմրագոյն․ փայտն սպիտակ, ուղղալից, և անուշահոտ․ յորմէ կազմեն դեղ ազդու ընդդէմ ցաւոց գլխոյ, և ստամոքսի, և 'ի մանաւորի՝ խածուածոց կատաղի շանց, և սարափոխիկ ախտից․ տերևն նման է տերևոյ փեգենայի։ Ծաղիկն սպիտակ, և սատղաձև․ պտուղն փոքրիկ, սրածայր, և կանաչ, այլ 'ի հասանիլն փոխի 'ի թուխ․ համ նորա նման է այլոց համեմոց՝ զոր բնակիչք երկրին չորացուցեալ և լռեալ 'ի սանդ՝ գործեն անուխ դեղ պահպանիչ ա-

ուղղութեան, խայթուածոց օձից, և նուաղութեան սրտ-ի. զի է խթիչ բնութեամբ: Այս պտուղ ոչ պակա-սի արագ, այլ տևէ. զոր լատինք կոչեն քարբօպալսա-մում. ունի և կարծր գեղձնս, հիւթաւորս, հոտա-ւէտս, և դառնահամս: Այս ծառ գտանի և յերջա-նիկն արաբիայ, 'ի վերին եգիպտոս, և յայլ տեղիս ափրիկոյ. բայց սորայս ազնուագոյն է:

Պալասամում թօլուիֆէրա, լտ: պօմ տիւ թօլիւ, գղղ: պօլսըմ օվ թօլիւ, անգղ: պալսամօ թօլութանօ, իտ: Է բալասան ինչ բնական գեղձն՝ հարեալ 'ի գոյն կարմիր, հեղանուտ, խժային, մածուցիկ, կի-տրոնահոտ, ջերմահամ, միանգամայն և կծանօղ լեզ-ուի. յորմէ կազմեն դեղ ազդու 'ի դիպուածս մի-զարգելութեան, շնչարգելութեան, հարբխոյ իջելոյ 'ի կուրծս, և թուլութեան ջղաց. զի է գրգռիչ, և միզա-բեր բնութեամբ: Զափն 'ի 10 չթէ մինչև ց20: Ծառ սորա բուսանի յամերիկայ. ընտրի 'ի չոր և յանբեր տեղիս. աճի չափաւոր 'ի թանձրութի և 'ի բարձրու-թի. տերևն մշտադալար է, իսկ պտուղն փոքրիկ և դառնահամ. յորմէ յօրինեն դեղ ազդու ընդդէմ հարուածոց օձից:

Պալասամում սուլֆհուրիս թէռէպէնթհինաթում, լտ: պալսամօ տի ծոլֆօ թռէպէնթինաթօ, իտ: գիւ-քիւրթ բէլէսէնկի թրէմէնթինլի, թճ: Է բալասան ինչ արուեստական բաղադրեալ 'ի մաքուր ծծմբոյ, և 'ի յիւղոյ խժի բևեկնոյ. հաչակաւոր է սա 'ի մա-սին օգտակարութեան 'ի դիպուածս վիրաց թոքոց, ե-րիկամանց, և այլոց ընդերաց. որով մաքրեալ փա-րատէ զնոսա. և միանգամայն չորացուցեալ ապաքի-նէ զհիւթս վատաշռոտականս՝ որ հոսին 'ի սաղմանց ճանապարհէ, և յայլ որոգայթաւոր ախտս, յորս ապահովապէս 'ի կիր արկանի 'ի ներքուստ: Զափն 'ի վեց չթէ մինչև ց20 յատուրն:

Պալասամում քօբայիվա, կմ պալասամում քօբաու, և կմ պալասամում քօբաիպա, լտ: պօլսըմ օվ քօբէյպէ, անգղ: պալսամօ տէլ քօբայվա, կամ պալսամօ տէլ քօբբաիպա, իտ: պօմ տը քօբահիւ, գաղղ: Է բալա-սան ինչ բնական՝ բղխեալ 'ի բնոյ ոստալից ծառոյ իրիք արևելեան հնդկայնոյ յատուրս ջերմութեան ամա-ռան, սպիտակ հարեալ 'ի գոյն դեղին՝ մաքուր, հե-ղանուտ իբրև զմեղր, թափանցիկ, հոտաւէտ, դառ-նահամ, միանգամայն և կծանօղ լեզուի: Ընտիրն

այսր բաղադանի գտանի յամերիկայ, որ բնութեամբ լինի դրդուիչ, և միզաբեր. զոր առեալ 'ի կեր արկանեմք 'ի գիպուածս միզարգելութեան, հոսման գաղղիական հիւթոց 'ի սաղմանց խողովակէ, և լուծման արգանդի կանանց, յորում գիպուածի փոխանակ տեռատեսական արեան հոսի հիւթ սպիտակ շարաւանման: Զափն 'ի տասն չթէ մինչև ց20. զոր պարտ է խառնել ը մի ձուոյ դեղնուց, ը մի տրամ խեժի արաբիոյ. ընդ մի տրամ քաղցր նշոյ. յաւելլով 'ի նոյն փոքր ինչ շաքար, և բաւականաչափ գաղջ ջուր. և առեալ լինի ըմպելիս այս 'ի միջոց 12 ժամուց:

Պանանէս, կամ մուզա բարատիզիաքա, կմ մուզա քլիֆֆօւթիանա, լտ: պանանիէ, գղղ: բլէնթին թուի, անգղ: Ֆիքօ տ' ատամօ, իտ: Մուզադ անուն, որպէս թուի առեալ 'ի յարաբական բառէն՝ մուզ, յորմէ և առ հայս՝ ադամաթուզ, է պտուղ ինչ նման ըստ իմիք թարմ բակլայի, ողկուզօրէն կախեալ ը գագաթն բնոյն. 40. 50 պտուղք 'ի մի ողկոյզ. գոյն նոցա 'ի սկզբանն է կանաչագոյն, և ապա առ սակաւ սակաւ փոխին 'ի դեղին. մէջ նոցա սպիտակ, փափուկ, քաղցր, ախորժելի, միանգամայն և զովացուցիչ, այլ ցամաք. ունի և մերմռանս մանուանս: 'Ի պտղոց ստուի կազմեն շամշարակ, որ այնինքն է խօշաֆ: Բոյս նորա կամ բուն՝ փուղձ է և սպնգային, որ բարձրանայ ց10, այլև ց14 ոտնաչափ առանց ոստոց ամենևին. երկայնութիւն տերևոց նորա սովորաբար լինի վեց ոտնաչափ, իսկ լայնութիւն մի և կէս. զորս աղքատք տեղւոյն 'ի գործ ածեն փոխանակ սկտեղ: Այս բոյս հասարակօրէն բուսանի 'ի կողմանս հնդկաց, ամերիկոյ, և եգիպտոսի, 'ի հովանաւոր տեղիս. յորժամ պտուղքն հասանին, ընդ նմին և բոյսն չորանայ. բայց նախ քան զանկանիլն յերկիր՝ այլ շառաւիղք ելանեն յարմատոյ նորա, որ յետ միոյ ամի արտադրեն պտուղ. ապա և նոքին գօսանան, և այլք զկնի բուսանին:

Պասսօ վէնթուէ. այսու անուամբ իմանի՝ ատորին որովայնն, կամ ներքին փորն:

Պառատիա, կամ առքեթիուս լաքքա, կամ լաքքա մակօռ, լտ: լաքքօլօնի, կամ քաքքէլլաչչիա, կամ բէռսօնաթա մանձիօրէ, իտ: պառատան, գղղ: պըր տօք, անգղ: տուղ ավառաթ օթու, աճ: Է հուշակս.

ւոր բոյս ինչ՝ բուսեալ 'ի խոնաւուտ, և 'ի պարարտ տեղիս. որոյ ցօղունն է երկայն իբր երեք կամ չորս ոտնաչափ, եռանկիւնաձև, կարմիր, և թաւամազուտ: Տերևն մեծ, լայնաբաց, 'ի վերուստ մթին կանաչ, իսկ 'ի ներքոյ սպիտակ, և աղուամազուտ: Ծաղիկն ծիրանագոյն, փնջաւոր, և հերձոտ, յորոյ վերայ զետեղեալ կայ նիւթ ինչ նուրբ՝ նման փոքրիկ ճանկոյ, որով և կռչի 'ի հանդերձս անցաւորաց: Բերէ և սերմունս մանունս, հոտաւէտս, և փետրաւորս: Իսկ արմատն ստուար, երկայն, սպիտակ 'ի ներքուստ, իսկ արտաքուստ կարմիր, պարարտ, քաղցրահամ, և հոտաւէտ, միանգամայն և դեղ ազդու ընդդէմ յօդուածացաւութեան, ոտնառութե, ձեռնառուէ. ունի զմասնաւոր գործունէութի 'ի մաքրել զարիւն 'ի խժային աղի հիւթոց, 'ի բուժել զխոցս պարանոցի, և զվէրս գաղղիականս. զի է թուլացուցիչ և քրտնաբեր բնութբ: Չափն յուլթ տրամէ մինչև ց16. զոր օրէն է եռացուցանել ը մի և կէս լիտր ջրոյ:

Պասսիլլէֆօ. տես օշինդում:

Պաքքաէ եռունիբէռ. տես եռունիբէրուս:

Պաքքէ լաուրի, լտ: տէֆնէ թօհումու, տճ: և ըստ մեզ՝ պտուղն դաբնոյ. զներգործութի սորա մարթիս տեսանել 'ի բառն Լաուրուս:

Պէթա, լտ: պիէթօլս, կամ պիէթա, իտ: պէթ ռավ, գաղղ: ռէտ պլէթ, անգղ: բազի, կամ բանճար, և կմ չիւքիւնտիւր, տճ: սէլք, արբ: բազուպր: և ըստ մեզ՝ բազուկ խոտն, կամ բանջար: Է բոյս յայտնէ խաւարտից, ծանօթ ամենեցուն. որոյ տերևն 'ի կիր արկանի 'ի կերակուրս և 'ի դեղորայս, որ է օգտակար կրծոց, հնագոյն հազից, ախտից թոքոց, միզման արեան. զի է թուլացուցիչ, և կակղացուցիչ բնութբ:

Պէթօնիքա կամ վէթթօնիքա, լտ: պէթուան, գղղ: վրուտ պէթօնի, անկղ: դէսթէռէ, տճ: և ը մեզ բետոնիկ, կամ կէսարոն: Է բոյս հոտաւէտ բուսեալ 'ի լերամս, 'ի խոնաւուտս, և 'ի հովանաւոր տեղիս իբր մի և կէս ոտնաչափ բարձրութբ. արձակէ յարմատոյ զտերևս երկայնս, լայնս, երկայնակնթս և շուրջանակի ատամնաձևս, և դառնահամս: Բանայ ծաղիկս խողովակաձևս, և ծիրանագոյնս. բերէ և սերմունս ոլոռնաձևս: Ունի արմատ բոլոր-

չի, ստուար իբր բթաչափ, և թեւալից։ Նշխնիք 'ի վար արկանէին աստ 'ի դիպուածս յօդուածացաւութե, և այլ պէսպէս ախտից. իսկ մեք այժմ միայն 'ի գործ արկանեմք 'ի քարշել ընդ ունգունս ըստ օրինակի պնչախոտոյ` առ 'ի գրգռել զվատթար հիւթս ուղղոյ, և 'ի փարատել զցաւս գլխոյ։

Պէլլա տօննա, կամ ամառիլլիս պէլլա տօննա, խա։ պէլլա տօննա, կամ աթռօբա պէլլա տօննա, լտ։ ամառիլլիս պէլ տամ, գղղ։ Է բոյս ինչ բազմացօղուն բուսեալ յեւրոպիա 'ի դաշտավայրս, յանտառս, և 'ի բուրաստանս իբր կանգնաչափ բարձրութեամբ. որոյ տերեւն նման է տերևոյ սօլանում անուանեալ բուսոյ. բայց քնքուշ, մեծ, և անախորժահամ քան զայն. ծաղիկն ելանէ առ կանթիւ տերևոյն` և է զանգակաձև, հերձոտ, և սպիտակ. 'ի տեղիս տեղիս նաև ծիրանագոյն։ Պտուղն գնտակաձև, ստուար 'ի չափ հատից խաղողոյ, կանաչ, այլ 'ի հասանելն փոխի 'ի գոյն սեաւ. փայլուն, և հիւթալից, համ նորա տախտ է և փոքր մի սեղմիչ, միանգամայն և տաղտկացուցիչ, իսկ արմատն երկայն, ստուար, սպիտակ, և ստեալից։ Այս բոյս սովորաբար սկսանի ծաղկել յամսեան սեպտեմբերի, և երբեմն ևս 'ի ձմերնային եղանակի, և 'ի սկիզբն գարնան. որոյ եթէ տերևքն, եթէ ծաղիկքն, և եթէ պտուղքն կարգին 'ի դասս թիւնաւոր և մահահրաւէր բուսոց, զի են ուժգին թուլացուցիչ և քնաբեր բնութ[ե]ամբ, զորոյ զփորձն առին նախ տղայքն եւրոպիոյ. զի անփորձ գոլով այնմ, կերին անտի առաւել քան զչափն պայմանեալ, և պատճառեաց 'ի նոսա զչորութիւն բերանոյ, զդողդողջումն լեզուի, զսաստիկ ծարաւ, զդժուարութիւն 'ի կլանել, և 'ի ժայթքել, զանհնարին թուլութիւն ջղաց և բովանդակ մարմնոյ, զկլպճումն ատամանց, զցնորումն, զցնցումն ջղաց և մկանանց, զմթագնութիւն աչաց, զայտուցումն, և զկարմրութիւն դիմաց, զուժգին սեղմումն ընտերաց, զբորբոքումն որկորոյ, ստամոքսի, և որովայնի. և երբեմն ևս զբորբոքումն միջընդերաց, թոքոց, և լերդի. զսաստիկ խէթ որովայնի, զպտոյտ գլխոյ, զդողդոջումն անդամոց, զլուծումն ջղաց, զանդամագօսութիւն, զնուաղումն սրտի, զքաղցկեղ անդարմանելի, և վերջապէս զմահ։ Այլ դարման սորա` են ործացուցիչ դեղորայքն, զոր օրէն է վող-

ընդփոյթ մատուցանել. Նոյնպէս գրեխն, զոր պտուր է պատրաստել քացախով, և մեղրով, կամ կաթամբ, և կամ ձ և իւղով: Բայց մեք սովաք 'ի հիր արկանեմք զսա 'ի գեղորայս գուղնամանեայ չափով. այսինքն զմի կշիռ ցորենոյ մինչև ցչորս: Իսկ եղանակն զոր պահեմ 'ի տալն զԹրմոցն, է այս: Աքսան կշիռ ցորեան' 'ի տերևոյ սատի' որ իցէ չորացուցեալ և նուրբ, լուծելով զայն 'ի մէջ անկանի' լից յանօԹ ապակեայ և դիր Թրմոց 'ի տասն ունկի ջուր եռացուցեալ զժամս չորս կամ վեց. յետ զտելոյ զայն պարտ է առնուլ ախտականին երեք կամ չորս անգամ յաւուրն, ըստ չափու կիսոյ ունկեոյ: Եւ այսպ ըստ սակաւ սակաւ մատուցանելու օրէն է աւաւելուլ զքանակն մինչև ց40 ցորեան: Զայս չափ տամք վասն չափահասաց արանց և կանանց. իսկ մատաղ մանկանց մինչև ցմի ցորեան յաւուրն' խառն շաքարաւ, և գաղջ ջրով: Զօրաւոր է դեղս այս 'ի գխպուածս բորբոքման որկորոյ, անդամալուծուԹե, լուսնոտուԹե, ախոնդանոտուԹե, ջրավախուԹե, հազի ցնցականի, ջրգողուԹե, գալկան, և այլ ամենայն ախտից պատճառելոց յուժգնուԹէ բնուԹեն, 'նա յաւէտ սուր և ուժգին տենդից: Զնոյն գործունէուԹի ունի սորա գոյացուԹին, զոր իտալք' էսԹռաԹԹօ տի պէլլա տօննա անուանեն: 'Ի տերևոյ սատի երբեմն կանայք ևս կազմեն ազգ ինչ սպեղանւոյ, որով օծանեն զբովանդակ մարմինս իւրեանց, ուր և առանդեն և պնդեն' եԹէ է յոյժ պնդացուցիչ, և շքեղացուցիչ մորԹոյ, 'ի դէպ եկեալ անուան պէլլա տօննա, որ յիտալական լեզու նշանակէ' կին գեղեցիկ:

Պէլլիս, կամ պէլլիս մինօր, լտ: պէլլիտաէ մինօրէ, իտ: բագըրուէԹ, գաղղ: տէիզի, անգղ: արէն, արբ: հէյֆարիէքօն, պր: Էհ բոյս ցածուն, և մեծուցիկ. որոյ տերևքն են փոքրիկ, սուուար, երկայնաձև, և յղկեալ. և 'ի միջոյ տերևոց ելանեն նուրբ ցօղունք, որք 'ի ծայրս փԹԹեն գեղեցկատեսիլ ծաղիկս ճառագայԹաձև, և սպիտակս, բայց յոմանս տեղիս լինի և ծիրանագոյն սպիտակախառն, և չիկագոյն. ունի և սերմունս մանունս: Իսկ արմատն երկայն և Թելալից: Այս բոյս հասարակօրէն բուսանի 'ի խոնաւուտ տեղիս. որոյ տերևն ունի զմիօանաւոր և զանվրէպ գործունէուԹի 'ի սպիացուցանել և 'ի բու-

ժել զնորոգ ընկալեալ վէրս, և 'ի մասնաւորի ընդդէմ թանչից, հոսման արեան, և բորբոքման աչաց:

Պէլծուինօ. տես պէնծօինում:

Պէծօար, կամ պէլծուար, և կամ անթիտօթում, իտ: պէլծուարտօ փիէթրա տի Ֆիէլէ, ֆր: պազէհիր, կամ բատղէհր, արբ: չիֆատաուռ, կամ Ճանտաուռ, թք: պանզէհիր, կամ փանզէհիր, տճ: և ըստ մեզ՝ դեղթափ, կամ անդեղայ, և կամ մաղձաքար: Է՛ նիւթ անգացեալ 'ի մաղձն կենդանեաց, և է բազմատեսակ, յորս առաւել երևելի են քառեակ տեսակք. առաջին տեսակն կոչի յիտալացւոց՝ փիէթռա օռիէնթալէ. որ գոյանայ 'ի պարկ լեղւոյ ոմանց թեթևաշարժ քառոտանեաց կոչեցելոց լատինական բարբառով՝ քափռի չէռվա, զորմէ ասեն լինել այծ ինչ վայրենի այծեղջեր, որ ստէպ գտանի 'ի լերինս հնդկաց, և ամերիկոյ: Այս դեղթափ 'ի սկզբանն է գորշ ներքուստ և արտաքուստ, և ապա առ սակաւ սակաւ փոխի 'ի գոյն դեղին, յորմէ գործեն զեղ ազդողական 'ի գիպուածս նուաղման և գողդոջման սրտի, և ըմբռնելոց 'ի մահաբեր տենդէ, 'ի ժանտախտէ, և 'ի պիսակէ, ուր հարկ 'ի վերայ լինի շարժել զչափաւոր քիրտն: Չափն 'ի 4 ցորենոյ մինչև ց6: Երկրորդ տեսակն կոչի 'ի նոցանէ պէծօառ օքչիտէնթալիս, որ թէպէտ մեծ է քան զնախընթացն, այլ ոչ այնչափ ազդու իբրև զնա. չափն 'ի 6 ցորենոյ մինչև ց30: Երրորդ տեսակն կոչի՝ պէծօառ տի բօռչի, որ մեծ է քան զկաղին, և փոքր քան զընկոյզ. որ արտադրի 'ի լեղիս ոմանց վարազաց, որք յաճախեալք են ոչ միայն 'ի մալաքա, այլ ընդ բովանդակ արևելեան կողմանս հնդկաց, զոր հնդկացիք 'ի բարբառ իւրեանց՝ մաստիքա տէ սօհ անուանեն. այնչափ 'ի յարգի է առ հնդիկս, մինչև մի կշիռն վաճառի չորից կշռոց ոսկւոյ ուր և աւանդեն, եթէ օգտակարագոյն է ընդդէմ թունից, ժանտախտից, մահաբեր տենդից, պիսակաց, ցաւոց որդանդի, նուազումն ամսական պարտուց կանանց, և ընդդէմ ամենայն ախտից պատճառելոց 'ի ցրտութէ: Իսկ չորրորդն կոչեն՝ պէծօառ տի չիմիա, որ թարգմանի՝ դեղթափ կապկի: Վասն սա ևս 'ի բժշկական դեղորայս: Չորքին սոքա են պէսպէս, զի ոմանք աճեցեալ լինին 'ի չափ հաւասարակ ընկուզոյ. ոմանք 'ի չափ հնդկային մշկահոտ ընկուզոյ. և ո-

մանք 'ի չափ կաղնոյ ։ Ոմանք բոլորշի, ոմանք տափարակաձև, ոմանք սապատողնաձև, և ոմանք երկայնաձև ։ Եւ որպէս քանակութք և ձեւովք, նոյնպէս և գունովք գլխովլին զանազանին, բերելով ըղգոյն ձիթապտղոյ, մոխրոյ, ծիրանւոյ, կինամոնի, թանջարոյ, և՛ն ։

Պէհէն ալպում, կամ քուքուպալուս, լտ ։ պէհէն պիանքօ, իտ ։ պէհէն պլան, գղղ ։ ուվայդ պէն, կամ սփէթլին բօքքի, անգղ ։ Է բոյս, որոյ ցօղունն է երկայն իբր երկու ոտնաչափ, նուրբ, բոլորակաձև, ծնրաւոր, և փոքր մի տտպահամ ։ Տերևք նորա նման են տերևոց լեմոնի ։ Ծաղիկքն գեղեցկատեսիլ, հինգթերթեան, նմա ըստ իմիք ծաղկանց շահոքրամի ․ ունի 'ի մէջ իւր զփոքրիկ փունջ ինչ թագաձև ․ այլ գոյնն ծաղկանց սովորաբար սպիտակ է, բայց յոմանս տեղիս լինի և կարմիր, դեղին, և բացագոյն կարմիր ․ բերէ և սերմն՝ նման սերման լըքհինիսի ։ Իսկ արմատն երկայն, ստուար իբր մատնաչափ, դժուարաբեկ, արտաքուստ մոխրագոյն, իսկ 'ի ներքուստ սպիտակ, և փոքր մի դառնահամ միանգամայն և համեմային ․ ունի իւղս և աղս գոյացականս, և է դեղ ակարութե ջղաց, և ռէսիբօլէ անուանեալ ախտի ։ Է սորա և այլ տեսակ, զոր լատինք կոչեն՝ պէհէն ռուպրում, որոյ ծաղիկն նման է նունեւոյ, արմատն կարմրերանգ, և շողգամաձև, իսկ տերևն երկայնաձև իբրև վերնոյն ․ որպէս և ներգործութիւն նման է ներգործութե նորա ։ Երկոքին սոքա առատ բուսանին 'ի լեռան լիբանան, զորոց արմատն կարատեալ դալարավաճառաց 'ի մանր հատորս՝ առաքեն 'ի վաճառ ։

Պէնէվօլուս, լտ ։ քօռտիալէ, իտ ։ Է անուն ընդհանուր՝ որ և իցէ հեղանիւթոց, որք են դեղք օգտակար և զօրացուցիչ սրտի, որպիսի են՝ աքգուա նաֆէ, աքգուա չինամօմօ, լիգուօռ անօտինօ, սփիրիթօ տի մէլիսսէ, և՛ն ։

Պէնծօէ, կամ քռօթօն պէնծօէն, լտ ։ պէլծուինօ, պէլճիվլին, իտ ։ պէնժուէ, գղղ ։ պէնճէմին, անգղ ։ ասըլ պէնա, տճ ։ և ըստ մեզ՝ կնդրուկ ։ Է խէժ սաստկահոտ՝ բղխեալ յաստաց կարծրաբուն ծառոյ երից հնդկայնոյ և արաբիոյ, որ լինի մեծ, երկայն, և կարծրափայտ ․ ունի և տերևս երկայնաձևս՝ ըստ նմանութե տերևոյ կիտրոնի ։ Այս խէժ աղնիւ հա-

մօրի, եթէ իցէ կարմրերանգ, մաքուր, փայլուն, թափանցիկ, սպիտակաբիծ, և դժուարաբեկ. Համով ըստ մասին դառն է, և ըստ մասին քաղցր, յորմէ կազմեն ապեղանի ինչ օգտակար վիրաց, և երբեմն եւս դեղ վասն այտուցից թոքի, և շնչարգելութեան: Վարի և 'ի ծխանելիս, զոր արկեալ 'ի հուր՝ բուրէ զհոտ անոյշ. բայց առթէ զհազ:

Պէուպէուխս, լտ. պէրպէրրի, անգղ. պէուպէռօ, կամ քըրէսբինօ, իտ. էբլին վինէթ, գղղ. ամպէր պարիս, տճ. մուղիթ, կամ պէուպարիս, արբ. Է ծառ ինչ փոքրիկ և փշալից, որոյ կեղևն է նուրբ, և յղկեալ: Ծաղիկ նորա մանր է և բազմաթերթ. պտուղն փոքրիկ, և ձուաձև և շեկակեղև. Մէջն թամբալից, կարմրերանգ, և թթու. յորմէ կազմեն դեղ 'ի դիպուածս փորհարութեան, սուր տենդից, և զայրացման ախտի. զի է թուլացուցիչ և զովացուցիչ բնութեան: Զկեղև այսր պտղոյ՝ որ է տտիպ համով, 'ի կիր արկանեն ընդդէմ դալկան, և հոսման արգանդի, յորում դիպուածի փոխանակ տեսատեսական արեան՝ հեղու հիւթ սպիտակ: Զափն կես ունկի՝ եդեալ 'ի մէջ մի լիտր ջրոյ, թող եռալ մինչև ցամնեալ կիսոյ մասին, և 'ի գործ արկ: Սունի և կորիզ երկայնաձև կարծր, և մթին կարմիր, և բնութեամբ սեղմիչ: Իսկ արմատն փայտային, դեղնագոյն և տարածողական: Բուսանի յեւրոպիա 'ի ցանկապատ և յանհեթեթ տեղիս:

Պէքքապունկա. յայս անուն կոչեցեալ 'ի գերմանացւոց, յորմէ և լատինացիք՝ վէռօնիքա պէքքապունկա, և գաղղիացիք՝ վէռօնիգ բռէսօնէ, իսկ անգղիացիք՝ պռուքլայմ սբիտուվէլլ: Է բոյս ինչ ջրային, որոյ ցօղունն սփռեալ է զերեսօք գետնի, և է բոլորակ, ստուար, սղնգային, և կարմրերանգ: Տերև նորա է լայն, բոլորշի, թանձր, յղկեալ, թուխ, և շուրջանակի սղոցաձև ատամնաւորեալ: Ծաղիկն կապտագոյն և հասկաձև, պտուղն երկայնաձիգ, և սերմնաւոր: Իսկ արմատն երկայն, օձապտոյտ սպիտակ, և թելալից: Բուսանի յամենայն ուրեք, մանաւանդ 'ի գերմանիա. լի է իւղով և դոյացական աղիւ, օգտաւէտ է ընդդէմ ախտի սքօռպութօի, և միզարգելութեան. զի է մեղմօրէն թուլացուցիչ բնութեան:

Պիանքօ տի պալէնա. տե՛ս սբէրմաչէթի:

Պիանքօ տի ուօվօ. տե՛ս օվում:

Պիթուճէն ճուտակէքում, կամ պապիլոնիքում, և կամ սարհապիթում, լտ: պիթուճէն տի ծիուտէա, և կամ սաֆալթօ, իտ: շամաքէ, պր: և ը մեզ թարգմանագրի՝ սաֆալ, կամ սափալթ: Է կուպր ինչ սեաւ, կարծր իբրև զկպրաձիւթ, թեթև, մաքուր, մածուցիկ, պարարտ, ծծմբային, և դիւրավառ և սաստկահոտ, որ սովորաբար գտանի 'ի մեռեալ ծովու, և տատանի իբրև զփայտ ը երեսս ջուրց: Ասէ թէ 'ի հնումն եգիպտացիք սովաւ օծանէին զմարմինս մեռելոց, առ 'ի պահել զերծ 'ի փտութէ, և յապականութէ. ունի նաև զմասնաւոր գործունէութի 'ի զօրացուցանել և 'ի մաքրել զփտեալ վէրս, և կցեալ միաւորէ զայնս, յորս յապահովապէս 'ի վար արկանի արտաքուստ և 'ի ներքուստ:

Պիլէ. տես պիլիս:

Պիլէ նէրա. տես աթրա պիլիս:

Պիլիս, լտ: պիլէ. իտ: խօլիէա, յն: սաֆռաս, տճ: լէվ, պր: Է անուն ընդհանուր նշանակիչ մաղձի՝ թէ մարդոյ, և թէ կենդանեաց. որոյ իսկաբուն բնակարանն է պտղօկն լերդի: Բաժանի 'ի բնականն, և յանբնականն. բնականն է կարևոր, որ ը արեան տարածի յերակսն 'ի տալ սնունդ մարմնոյ: Իսկ անբնականն, որ սովորաբար գոյանայ յապականութէ կերակրոյն, և 'ի դրոյց քառից հիւթոցն, առթէ զզանազան կերպ խօթութիս և հիւանդութիս, և մանաւանդ ստամոքաց:

Պիսթօսթա, կամ բօլիկօնում պիսթօսթա, լտ: ռէնօնէէ պիսթօսթէ, գղղ: ոնէյքէուվիտ, կամ կրէթըր պիսթօրթ, անգղ: գուռտ բէնչէսի կամ չիան չէք, տճ: Է բոյս, որ սովորաբար բուսանի 'ի լերինս եւրոպիոյ իբր երկու ոտնաչափ բարձրութե: Տերևնորա լայն է, և երկայնաձև՝ ըստ նմանութե տերևոյ թրթնջկի, 'ի վերուստ պայծառ կանաչ, իսկ 'ի ներքոյ սպիտակ, զորմէ ասեն տնկաբանք լինել թունաւոր: Ծաղիկն մանր, և մսագոյն, ունի և սերմունս մանունս, և յլկեալս: Իսկ արմատն երկայն, ստուար իբր բթաչափ, օձապտոյտ, թելալից, պարարտ, արտաքուստ թուխ կամ սեաւ, իսկ 'ի ներքուստ կարմիր, յորմէ յօրինեն դեղ ազդու փարհարութե, հօսման թանչէց առթելոց 'ի տկարութէ փորոտեաց. զի է խթիչ կամ գրգռիչ բնութեամբ: Այլև արգելու զփժումն, և զհօսումն արգանդի:

Չափն 'ի 20 ցորենոյ մինչև 360՝ երեք կամ չորս անգամ յաւուրն: Նոյնպէս փարատէ զվէրս ընդերաց, եթէ եռացուցեալ ջրովն ողողեսցի բերանն՝ բայց յարատևել արժան է առ քանի ինչ շաբաթս:

Պիսոն, լտ: Է տեսակ մի վայրենի եզին եղջերաւոր, որոյ եղջիւրք թեքեալ են և սայրասուր. գլուխ նորա կարճ է, այլ լայնաճակատ. աչքն մեծ, և կարմրափայլ. հայեցուածքն դաժան, լեզուն խորտուբորտ, իսկ պարանոցն երկայն, և մշկահոտ: Գտանի 'ի լերինս Հնդկաց, որոյ եղջիւրքն լուեալ 'ի փոշի և արբուցեալ, դեղ է թունից, և ջերմախտից, զի է քրտնաբեր և թուլացուցիչ բնութե՛: Չափն 'ի 10 ցորենոյ մինչև 360 երեք անգամ յաւուրն: Սորա քակորն ունի զգործունէութիւն 'ի մեղմել զցաւս դժնեայս, դնելով միայն 'ի վշտացեալ մասունս:

Պլէնօռռհաճիա. է բառ յունական, որ եղանէ առ նոսա 'ի ծորել բայէն, յորմէ և լատինացիք կօնօռէա կոչեն, և ըստ մեզ՝ ծորումն կամ հոսումն որ և իցէ հիւթոց՝ հոսելոց յարգանդէ, 'ի ծննդական անդամոյ. և ըստ այսմ ծորումն սերման կոչի՝ սերմնակաթութիւն, որ առթի 'ի տկարութենէ բնութեն, և 'ի թուլութէ ջղաց, և սաղմնարանի. և ծորումն արգանդի, և սերական անդամոյ կոչի 'ի լատինացւոց՝ մէտօռռէա. տես անդ:

Պլէնօռռհաճիա վէնէռէա: Այս 'ի նոսա երկու բառքն միացեալ են. քանզի պլէնօռռհաճիա է բառ յունական, և ստուգաբանի՝ ծորումն, կամ լաւ ևս՝ հոսումն: Իսկ վէնէռէա՝ է բառ լատինական, և թարգմանի՝ վաւաշոտական, կամ գաղղիական. որ ըստ լատինացւոց գրի՝ լէուքօռռէա վէնէռէա. ըստ իտալացւոց՝ սքօլամէնթօ. ըստ արաբացւոց՝ դուռհաթ իլ մէսանէ, կամ սաֆրահ. ըստ պարսից՝ սուզակ: Իսկ ըստ մեզ թարգմանագրի՝ հոսումն վաւաշոտական, կմ՛ գաղղիական, և է նոյն՝ որ տաճկերէն ասի՝ պէլ սօվուգլուղու. տես զայսմանէ հտ. ա. եր. 364:

Պլէնօռռհաճիա վէնէռէա վիռուլէնթա: Է անուն հոսման ժահրալից վաւաշոտական հիւթոց, և կոչեցեալ այսպէս վասն յառաջանալոյ 'ի վաւաշոտական ախտէ: Սա ըստ նախնեաց գրի՝ կօնօռէա վիռուլէնթա. բայց ըստ նորոց առաւել հաւանական երևի գրել պլէնօռռհաճիա վէնէռէա վիռուլէնթա, կամ ըստ իտալական բարբառոյ՝ սքօլամէնթօ վիռուլէն-

թօ. զօրմէ ուս հտ. ա. եր. 364։

Պուլթիտում, կամ մէտուլլիս լաթիս, լտ. պուլթիւռօ, կամ պուռռօ, և կամ Ֆիօռ տի լաթթէ, իտ. պուռ, գաղղ. թէրբէ եաղը, տճ. զիպաէ, կամ զիւպիւթ կամ սումալ, արբ. թեննէ տէրուն, կամ մէսքէ, պր. և ըստ մեզ՝ կոգի, կամ իւղ։ Է պարարտութիւն կթ իւղ կաթին, որ բնութբ թուլացուցանէ և անօսրէ զթանձրամածութիւն տղոցունից, մեղմէ զցաւս կրծոց, քաղցրացուցանէ պնդութիւն հիւթոց, և միանգամայն նպաստէ լուծման որովայնի։

Պուլթիտում անթիմօնիի բուսնաւէ, լտ. պուլթիւռօ տ՚ անթիմօնիօ, իտ. տէմիր պօզան եաղը, տճ. և ըստ մեզ՝ իւղ անգուրի, կամ յունաքարի, կազմեալ ՚ի սուպլիմաթօ քօռռօզիվօէ, և ՚ի յունաքարէ, որ սպառեալ ծախէ զաւելորդ միսն և զնեխեալ ոսկերս. մաքրէ և փութապէս զկարծրացեալ և զկոշտացեալ վէրս խղխայթի և քաղցկեղի, և միանգամայն թափանցեալ ցրուէ զկարծրապինդ այտուցառանց հատանելոյ։ Բայց ՚ի կիր արկանել պարտ է այնոցիկ որք վարժեալ իցեն. զի բազում վիրաբույժք անփորձանան։

Պուլթիտում քաքաուոմ, լտ. պուլթիռօ տի քաքաօ, իտ. հինտ բակլասընըն եաղը, տճ. և ըստ մեզ՝ իւղ գագաւոյի, որ է սպիտակ և անուցողական բնութբ, ելուզեալ ՚ի գագաւոյ ունգոց։ Սա բառնայ զկարծրապնդութիւն մորթոյ՝ եթէ օծանիցի յաճախակի. անուցանէ և զհիւծեալս և զքարակացեալս ՚ի կիր առնամք ընդ ժամանակս յոլովս։ Չափն ՚ի 20 ցորենոյ մինչև 960։

Պուկլօսսում, կամ անքհուսա, լտ. լինկուա տի պուէ, իտ. պիւկլօզ, գղղ. պիւկլօս, անգղ. օքղըլտիլի, տճ. լիսանի սէվր, արբ. կիավլի զիւպան, պր. և ըստ մեզ՝ եզնալեզու։ Է բանջար խոտային. որոյ ցօղունն է երկայն իբր երկու ոտնաչափ, և ճիւղալից. յորոյ վերայ պատեալ կան մազանման նիւթք ինչ սուրք։ Տերևք նորա են թաւախչուորք, և փայլունք, այլ ձևով նման են լեզուի եզին, որոյ վասն և կոչեցաւ յանուն նորա։ Ծաղիկն մանր, ձագաւաձև, և եզերահերձ, և գոյն նորա կապտագոյն, բայց յոմանս տեղիս լինի և կարմիր, և սպիտակ։ Ցեա ծաղկանց յաջորդէ քառեակ սերմունս՝ որք ըստ իրաց ինչ բերեն զնմանութիւն գլխոց իժից։ Բուսանի ՚ի

բուրաստանս, և 'ի պարարտ տեղիս, որոյ տերևն ստէպ 'ի կիր արկանի 'ի դեղորայս, և է օգտակար արգանդի, սրտի, և կրծոց, զի է մեղմօրէն գրգռիչ ջղութե̃. այլև քաղցրացուցանէ զարիւն 'ի խժային ատոխտ հիւթոց: Զնոյն գործունէութիւն ունի նաև 'ի ցքահանէ եռուցեալ ջուրն:

Պուպպօնէ, իտ: պուպօ, լտ. և յն: խլեարճըք. տՃ: և ըստ մեզ՝ եղունդն վանլաշտական. տե՛ս 'ի հա. ճ. երես 374:

Պուանէլլա. տես վիչէտա:

Պուրսա բասթօռիս, լտ: պօրսա տէլ բասթօռէ կամ սաքքօ մօնեթանեօլօ, իտ: պուռսա տը պէժէ, կամ թապուռէ, գղղ: շէբհէրտ'ս բըրս, կամ շէբհէրտ'ս քօսուչ, անգղ: չօպան ջանթասը, տՃ: Է ազգ ինչ բուսոյ, որոյ տերևքն խիտ առ խիտ ճապաղին զերեսօք գետնոյ, և են երկայնաձև, և հերձոտ՝ ըստ նմանութե տերևոց ճէրճիճ անուանեալ խոտոյ: Ծաղիկք նորա են փոքրիկ, և բազմաճիւղ. իւրաքանչիւր ճիւղոց ունելով զիւրեանց սպիտակ և քառեակ թերթեան ծաղիկս 'ի վերայ: Պտուղն տափարակ է, և եռանկիւնաձև ըստ նմանութե պարկի հովուի. մէջն շերտաւոր, յորում բաղկանան սերմունք նուրբք և բոլորշիք: Իսկ արմատն երկայն, թելալից, սպիտակ, և քաղցրահամ: Բուսանի յագարակս, և 'ի բուրաստանս. լի է իւղով, այլ միջակ աղիւ. որոյ տերևք լինին դեղ փորհարութե, հոսման թանչից, և վիրաց. զի է սեղմիչ բնութե̃:

Պուֆօ, կամ բհիուլուս, և կամ ռուպէթա, լտ: պօթթա կամ ռօսպօ, իտ: օխլու պաղը, տՃ: ըստ մեզ՝ գորտ երկրային, կամ հողագորտ: Է զազրատեսիլ քառոտանի ինչ թունաւոր և սառուար 'ի չափ բռան մարդոյ, որ միզելով, կամ թքանելով ածէ զթոյն: Գլուխ նորա թանձր է և տափարակ. թիկնամէջն լայն, փորն սառուար, և սապատողնաձև. մորթն կարծր, և գորշագոյն, և բծալից: Կերակրի ճճեօք, և խոտովք, որք գտանին 'ի խոնաւուտ և 'ի գիճային տեղիս: Այս գորտ լի է իւղով և ցնդական աղիւ, որոյ միսն չորացուցեալ յարևու, և փոշիացուցեալ 'ի սանդ, և արբուցեալ, դեղ է ջրգողութե, և միզարգելութե. այլև օգտէ ընդդէմ թունից: Չափն 'ի 20 ցորենոյ մինչև ց40: 'Ի գլուխս ոմանց գորտոց գտանի քար ինչ փոքրիկ և սպիտակ.

ախօն, գղղ: ուվայլթ պռայօնի, անգղ: Ֆաշէր, կամ Ֆաշերա, տրք: եապան գապապը, տճ: և ըստ մեր թարգմանագրի՝ գգուծ վայրի: Է բոյս, որոյ ցօղունն է ծիւղալից, վարսաւոր, և նուրբ, որ պատատելով ելանէ զորմով, զծառով, և զխնճակաւ իբրև զպաղեղն: Տերև նորա նման է տերևոյ որթոյ, բայց փոքր քան զայն, և է ճղխտակ, վարսաւոր, և անհարթ: Ծաղիկն փոքրիկ, ողկուզօրէն, և սպիտակ. պտուղն բոլորակ՝ ըստ նմանութեան փոքրիկ խաղողոյ, նքքակեղև, և կանաչագոյն, այլ 'ի հասունելն փոխի 'ի գոյն կարմիր. մէջն հիւթալից, դեղնագոյն, և զազրահամ. ունի և կորիզս հուսաձևս, և սրածայրս: Խոկ արմատն երկայն, ստուար, սպիտակ հարթեալ 'ի գոյն գետին, պարարտ, հիւթալից. դառնահամ, և յոյժ տուխք, որ և զերդան ծապքողին կեղեալ վերուսարկ. բայց 'ի չորանալն և 'ի հնանալն կորուսանէ զայն կծուողական զօրութին իւր. 'ի փոշւոյ սորա կուգուն դեղ սղցողական ընդէմ խելագարութէ, լուսնոտութէ, ջրգողութէ, երկարատև ախտից, և հիւանդութեանց. զի է թուլացուցիչ, ուժգին լուծողական, միզաբեր, և գրգռիչ բնութ: Չափն 'ի մի տրամէ մինչև ցերեք յաւուրն: Այլև սատակէ զճճիս որովայնի, լուծանէ զխցանս մարմնոյ, և միանգամայն սթափէ զթմբրեալ մարմինս: Նոյնպէս օգտաւէտ է ընդդէմ շնչարգելութէ, այտուցից, և արգ կասութն ամսական պարտուց կանանց, եթէ թանձրաթան կազմեալ արկանիցի 'ի վերայ կրծոց, արգանդի, և այտուցից: Բուսանի յանտառս, և 'ի ցանկապատս տեղիս, նա յաւէտ յեզերս ձանապարհաց:

Պրուշէա Ֆէաուոսծինէա, լտ: անկուսթուսա, խտ: Է կեղև բուսոյ միոյ՝ երկայն ձեռաչափ, և լայն մի և կէս մատնաչափ. ստուար, յղկեալ, մթին դեղին 'ի ներքուստ, խոկ սպիտակ արտաքուստ. զոր լուծեալ 'ի սանդ, լինի դեղջին՝ հանգոյն խաշնդեղի. ունի զհամ դառն միանգամայն և համեմայլին, որ և զջեւղու ծապքողին կիզէ. զոր վարեն ոմանք 'ի պատշաճեալ տեղիս փոխանակ քինաքինայի, և 'ի մասնաւորի փորհարութն. և պաքքերական ախտից, և այլ ամենայն խօթութեանց աւթելոց 'ի թուլութէ. զի է զօրացուցիչ բնութ: Չափն 'ի 10 ցորենոյ մինչև ց20:

Պրօնքի. այսու անուամբ ըստ անգամազննաց է

մանի՝ օգընկալ, որք են խողովակք ինչ խաչափողին՝ ընկալուչք օդոյ։

Պօեօզի, լտ։ Է օձ ինչ ամերիկեան, որոյ երկայնութիւն է իբր բազկաչափ, և ստուարութիւն բթաչափ, գոյն նորա է շողշողուն, որկորն մեծ, լեզուն սեաւ, տուտն ուղիղ. իսկ թոյնն չէ այնչափ ինչ ազդու, այլ ըստ մասին օգտաւէտութեն գլխովին համաձայնի իժի։

Պօթուխս, լտ։ պօթուի, իտ։ բիման, գաղղ։ օք օվ ճիուսվէլէմ, անգղ։ Է տունկ հոտաւէտ. որոյ ցօղունն է ուղիղ, և ճիւղալից. տերև նորա նման է տերևոյ սէնեքչիօ անուանեալ բուսոյ, և է թաւիշաւոր։ Ծաղիկն ոսկեզօրէն, և հասկաւոր, և փոքրիկ. բերէ և սերմունս բոլորշիս և տափարականձևս։ Ունի արմատ սպիտակ, փայտային, և կարծր. բուսանի յագարակս, 'ի բուրաստանս, և 'ի խոնաւուտս։ Գոյացութիւն սորա որ է մածուցիկ և խժային՝ լինի դեղ նուազութեան ամսական պարտուց կանանց, և ցնցողական շնչարգելութեն։

Պօիչինինկա, կամ տօմինիքա սէրբէնթում, լտ։ քալբավէլ, կամ թաճէնսօր, սպան"։ Է՝ տեսակ մի չարաթոյն օձի, որ սովորաբար գտանի 'ի պրասիլիա. երկայնութիւն սորա է իբր չորս կամ հինգ ոտնաչափ. և ստուար ըստ համեմատութեն երկայնութեն. գոյն նորա կարմիր հակեալ 'ի դեղին, գլուխն երկայն է և թանձր իբր մատնաչափ. աչքն փոքրիկ. լեզուն երկայն, և երկճղի. ատամունքն մեծ, և սրածայր, տուտն գորշագոյն, ունելով 'ի վերայ գիծս շղթայաձևս. 'ի սողալն հնչէ ձայն սուր, և ուժգին. այնչափ արագ և սրընթաց է՝ մինչև չանկանիլ ընդ տեսութեամբ, և մահուչափ թշնամի է մարդոյ. զորս յորժամ տեսանէ ուրեք, ոչինչ վտանգ կամ երկիւղ կարող է կասեցուցանել զնա 'ի պնդելոյ զհետ նորա. բայց բնակիչք տեղւոյն ունին և զհալածիչ դեղ նորա, որ է բոյս ինչ յաճախեալ 'ի կողմանս յայնոսիկ, զոր լատինք կոչեն՝ վիբէռնա ռատիքս. վասն զի յոյժ գարշի 'ի հոտոյ այսր բուսոյ։ Միս նորա որ է առատ իւղով և ցնդական աղիւ, 'ի վար արկանի 'ի դեղ խոցուածոց լերդի, ախտից թոքոց և կրծոց, և հնագոյն հազից։

Պօլէթուս չէռվի, կամ թուպէռ չէռվի, լտ։ պօլէթօ ուօվօլօ, իտ։ մուսյլ քօմէսթիպլ, գաղղ։ Էպքիւ-

լէնթ մօրէլ, անգղ. սարը մօնթար, տճ: և ըստ մեզ՝ սունկ դեղին: Է ազգ ինչ սնկոյ որ 'ի վեր երևի յանտառս, և 'ի դաշտավայրս, մանաւանդ 'ի սկիզբն գարնան. մեծութի նորա է ընկուզաչափ, գոյնն դե_ղին, բայց յոմանս անդիս լինի և սպիտակ, թուխ, կամ սեաւ. մակերևոյթն կնճռալից, ծակոտկէն, և խառոչաւոր. իսկ ներգործութիւն զօրացուցիչ ստա_մոքսի, որով և դիւրաւ տայ մարսել զկերակուրն: Եւ ըստ ոմանց՝ գրգռէ և զաղմն արուին և զկաթն իգին, և միանգամայն յարգարէ 'ի յղութիւն:

Պօլուս. տես պօլօ:

Պօլուս արմենա, կամ օւրէնթալիս, լտ: պօլօ առ_մէնօ, իտ: դիլ արմէնի, տճ: թին արմէն, արբ: սէր_չու առմէն, պր: և ըստ մեզ՝ հայկական: Է ազգ ինչ կարմիր և թեթև կաւոյ, որ սովորաբար գտանի 'ի հայաստան, և 'ի շրջակայս փարիզու, յորմէ կազմեն դեղ փորհարութե, հոսման արեան և թանչից. զի է սեղմիչ, և զովացուցիչ բնութբ: Զափն 'ի մի տրամէ մինչև ցերկու՝ խառն ընդ մի լիտր ջրոյ:

Պօլօ, իտ: պօլուս, լտ: գիլ, տճ: թին, արբ: սէրշու, պր: և ըստ մեզ նշանակէ՝ կաւ: Դարձեալ այսու անուամբ իմանին ամենատեսակ մեծագոյն գնտակաձև, և դիւրակլանելի դեղահատք, զորս զան_գեն 'ի պէսպէս նիւթոց և հեղանիւթից, յորոց զո_մանս ունիս տեսանել 'ի ստորև:

Պօլօ անթիսքադմօտիքօ, իտ: Է մեծագոյն հատա_դեղ ինչ բաղադրական, կազմեալ 'ի կէս տրամ՝ սէր_քէնթարիա վիռճինիանաէ, 'ի 12 կշիռ ցորեան՝ աս_սաֆէթիտաէ, և 'ի վեց ցորեան՝ քանֆօռաէ. զոր պարտ է զանգել ընդ բաւականաչափ՝ սիռօբբօ տի ծաֆֆռանօի, արարեալ մեծագոյն հատադեղս, և տացին 'ի պահ առաւօտուն, առ 'ի բուժել զախտ ջղաց, և մկանանց, և 'ի լուծանել զխցանս մանրա_մասնագոյն երակաց: Այլև օգնէ ջրախորշութե, և լուսնոտութե:

Պօլօ էմմէնակօկօ, իտ: պօլուս էմմէնակօկուս, լտ: Է հատադեղ ինչ բաղադրական, յօրինեալ յութ ցորեան՝ ալօէ սուքքօթռինօէ, 'ի չորս ցորեան՝ քռա_չիէ, յերկու չիթ՝ օլիօ տի սապինաէ, և 'ի բաւա_կանաչափ՝ քօնսէռվա տի ռութաէ: Զօրաւոր է դեղս այս 'ի դիւրուածս նուազութե ամսական պար_տուց կանանց, եթէ առցէ 'ի պահ առաւօտու 'ի

ծամուառ․ միայն թէ կրկնել է այդ գամէ մինչև 'ի 30 օր ։

Պօլօ քօռռօպօռանթէ, իտ ։ պօլւռս քօռռօպօռանս, լտ ։ Է հաստատեղ ինչ բաղադրական, կազմեալ 'ի կէս տրամ՝ սէռբէնթառիա վէնէծիկեանաէ, 'ի նոյնչափ՝ քօնթռաւեէռվաէ, 'ի 12 ցորեան՝ սալ վօլաթիլէ ակի սուչչինօէ ։ Ցօրինեալ սաար երկուս հատիկս ըստ բաւականաչափ՝ սիրօբբօ տ' առանչիանի, մէն մի ատցին ընդ առաւօտս, և մէն մի ընդ երեկս ։ Շահաւէտ է դեղս այս 'ի դիպուածս ակարութեան ջղաց, զի տկար արծարծանի ազդեցութիւն զաւակերպար հիւթոց և միանգամայն մանրաթելից սաղմնարանին ։

Պօս, լտ ։ պուէ, կմ պօվէ, իտ ։ սըղըր, տճ ։ թօռ, արբ ։ և ըստ մեզ՝ եզն ։ Է արու անասուն ինչ ծանօթ ամենեցուն, որոյ ճարպն կոչի 'ի լատինացւոց՝ սէվում պօվիս, յորմէ կազմեն դեղ ակարութեան ջղաց ։ Իսկ լեղին սորա զոր լատինք կոչեն՝ ֆէլ պօվիս, լինի դեղ ազդու ընդդէմ պակասուԵ ընական մաղձի, ջղային դժուարամարսութեան, ակարութեան ստամոքսի, և միանգամայն արծարծէ զփորային հիւթս, և ըզմանրաթելս ստամոքսի, զի է դրդուիչ բնութ ։ Զափն 'ի 20 ցորենոյ մինչև ց60 ։ Արդ լեղիս այս կոչի յիտալացւոց՝ ֆիէլէ տի պուէ, կամ պօվէ․ որ առ լատինս անուանի և ֆէլ թաուրի ։ և գղղ․ ֆիէլ ։ և անգղ․ պուլ կօլլ․ և տաճիկք՝ սղըր էօտիւ, իսկ ըստ մեզ՝ եզնալեղի, կամ լեղի ցլու ։ Առ դեղակերպն այսր անասնոյ, զոր լատինք՝ սթէռքուս պօվիս անուանեն, և տաճիկք՝ թէզէք, ստէպ ժողովեն յամսեանն մայիսի, և չորացուցանեն յարեւու, և 'ի կէր տրկանեն 'ի ծխանելիս առ 'ի ցրուել զայտուցս, և 'ի փարատել զցաւս յօդուածոց և ոսկերաց, թէ պէտև չէ յարգի յեւրոպայիս ։

Պօվէ․ տես պօս ։

Պօրաքս, կմ քէռիսօքօլլա, և կամ կլութէն աուռի օսսիպօռաքս, լտ ։ պօռռաչէ, կամ պօռաչէ, կամ քռիսօքօլլօ, իտ ։ պօռա, կմ պօռաթ սիւռօւթիւաէ տը սօտա, գղղ ։ պօռա կմ թէնէքիար, տճ ։ թինքար, ար ։ և ըստ մեզ՝ բուրակ, կամ բորակ, և կամ ոսկեբորակ ։ Է աղ ինչ փոքր մի աղապահամ յաճախեալ 'ի կողմանս պարսից և 'ի գերմանիա, և լինի 'ի հանքս աղնձոյ, արճճոյ, և արծաթոյ․ ունի գգոյն սպիտակ, մաքուր, և թափանցիկ․ լինի և պայծառ կա֊

նաւ, մոխագոյն, Թխագոյն, և դեղնագոյն : Ազնիւ համարի՝ եԹէ էցէ սպիտակ, փայլուն, և Թափանցիկ իբրև զապակեղ, յորմէ յօրինեմք դեղ ազդու ընդդէմ խոցանաց ընդերաց, միզարգելուԹեան, նուազուԹեան ամսական պարտուց կանանց, և պնդուցից լերդի, զի է միզաբեր և Թուլացուցիչ բնուԹեամբ : Զարին 'ի 4 ցորենոյ մինչև 940 : Այլև ունի զմասնաւոր գործունէուԹի 'ի սպիտացուցանել և 'ի մքառորել զմէկերս մարմնոյ :

Պօրրակօ, լտ: պօրրաճճինէ, իտ: պօռաաշ, գղղ: պորրիճ, անգղ: Է խոտ յաճախեալ 'ի պարտէզս, և 'ի յագարակս, որոյ զտերևն ուտեն որպէս զաղցան : Նախնիք 'ի կիր արկանէին առաւ 'ի կերպ կերպ զովացուցիչ գեղորայս · իսկ այժմ ոչ 'ի գործ արկանէ յարեւմուտս :

# Ս

Սաբօ, լտ: սաբօնէ, իտ: սաւօն, տճ, և արբ: գիրմէք, կամ պէքհուտ, պր: և ըստ մեզ՝ օճառ : Է անուն բաղադրական իմն զանգուածոյ, որոյ գլխաւոր նիւԹքն են իւղ և մոխիր, զոր կրետացիք բարւոք գիտեն կազմել, որ արձակէ զփրփուր բազում, և կարէ սպիտակացուցանէ զհանդերձս, և գրեԹէ ունի զներգործուԹի մաղձի, մանաւանդ այն՝ որ է Թարմ, և մաքուր · յորմէ յօրինեմք ազգ ինչ սպեղանւոյ, որով օծանեմք 'ի վերայ փորոտեաց և պորտոյ առ 'ի ցրուել զուռոյցս որովայնի առԹեալս 'ի փքոյ : Այլ բաց 'ի սմանէ են և այլք երկու օգտակարք տեսակք օճառի · առաջինն կոչի յիտալացւոց՝ սաբօնէ տի վէնէցիա, կամ սաբօնէ պիանգօ · և կամ սաբօնէ մէտիչինալէ, որ սաստկագոյն՝ օճառ վենետկոյ · այսպէս անուանեալ սակս կազմելոյ սորա 'ի վենետիկ · որ է դեղ ազդու ընդդէմ երկարատև խոցանաց լերդի և փայծեղան, և դալկան : Զարին 'ի 20 ցորենոյ մինչև 960 : Իսկ երկրորդն կոչի 'ի բարբառ նոցա սաբօնէ Թառթառօ տէլ պօէռ, զոր առեալ 'ի կիր արկանեն ընդդէմ հնացեալ և հաստատեալ խոցանաց

լերդի, փայծեղան, պակրատի, և միջընդերաց. որ և բանայ զանցս միզի, անօսրէ զթանձրամածութիւն հիւթոց, փարատէ զջրգողութիւն, և միանգամայն-լուծանէ զքար գոյացեալ յերիկամունս մարդոյ: Զափն 'ի 10 ցորենոյ մինչև ց40:

Սաքօնաուխա օֆֆիչինալիս, լտ: սաբօնէլլա, կամ քօնտուխի, իտ: բամիղմա, յն: սափօնիէռ, գղղ: սօբ-ուվըրթ, և կամ ֆուլլըր'զ հէրպ, անգղ: չօղան, կամ չէօյէն, տճ: խուռութ, կամ իւշնան, կամ գաթ գաթ, կամ չէֆ կէթիւլ քասարին, կամ ղա-սուլ, և կամ ըռքյլ հէլէվա, արբ: գիւնուշթու, կամ կաշնէ, պր: և ըստ մեզ՝ օշնան: Է բոյս ինչ օճառային, բուսեալ յարեւելեան կողմանս իբր եր-կու ոտնաչափ բարձրութ, որոյ ցօղունն է պարարտ, ծնրաւոր, և կարմրերանգ: Տերև նորա լայն է և ջղալից՝ նման տերևոյ ջղախոտի. բայց ունի զհամ բորակի: Ծաղիկն սպիտակ, հոտաւէտ, և հինգթեր-թեան, որ 'ի վեր երևի 'ի գագաթան՝ հանդերձ փոք-րիկ, և սպիտակ առէջիւք: Բերէ և պտուղ սերմ-նաւոր, որոյ սերմն է մանրահատ իբր գեղնատեսիլ, տափակ, միանգամայն և աղեհամ, զոր վարեն 'ի ներ-կըս, և 'ի գեղորայս: Իսկ արմատն է երկայն, ծնրա-ւոր, օձապտոյտ, ճիւղաւոր, և կարմիր, զոր արկեալ 'ի ջուր՝ արձակէ զփրփուր իբրև զօճառ, որպէս և սերմն նր. զոր 'ի կիր արկանեն 'ի զանազան պէտս, և 'ի գեղորայս: Աղնիւ համարի, եթէ իցէ կանա-չագոյն, և մաքուր: Սա վասն զրգռիչ զօրութեան իւրոյ սաստակէ զճճիս որովայնի, փարատէ զդա-լուկն, և զցաւս յօդուածոց, ապաքինէ եւս զախտն գաղղիական, և զխղխայթն: Զափն 'ի մի ունկեոյ մինչև ց10 տրամ՝ յաւուրն խառն ընդ մի լիտր եռա-ցուցեալ ջրոյ:

Սաքօնէ. տես սաքօ:

Սաքօնէ ալքաշէնցիա.՝ է անուն ընդհանուր, ո-րով նշանակին անօսրիչ դեղորայքն, որք 'ի սկզբան անդ 'ի մասին ներգործութե են օճառային. բայց յանցանել ժամանակի նեխեալ հոտին, և յօդս ցըն-դեալ գլխովին վրիպին 'ի ներգործութէ:

Սաքօնէ թաւթաօ տէլ պօէռ. տես սաքօ:

Սաքօնէ մէտիչինալէ. տես սաքօնէ պիանկօ:

Սաքօնէ պիանկօ. տես սաքօ:

Սաքօնէ տի վէնէցիա. տես սաքօ:

Սաթիւրիում հիրչինում, կամ սաթիրախում, լտ: սալէբ, կամ սալօբ, և կամ սաթիւրիօնէ, իտ: Թէսթիքիւլէ տը շիէն, կամ սաթիրաւիօն ֆէմէլա, գղղ: կօթ'ս սթօնս, կամ լիզըրտ ֆլաուըրթ, անգղ: սալէբ, տճ: սահլէպ, արբ: և ըստ մեզ՝ մեղրապ: Է կարծրապալինդ ալիւրալից և խժային արմատ ինչ դեղնաչորթ արևելեան գաւառաց. որոյ մակերևոյթն ըստ մեծի մասին է անհարթ, և անհոտ. զոր լոսէ 'ի սանդ կազմեն ըմպելի ինչ առողջարար, զի քաղցրացուցանէ զտողունս 'ի խժային աղի հիւթոց, կակղացուցանէ զկուրծս, մեղմէ զհազս, ապաքինէ զփորհարութիւս, զթանչս, և զհոսումն արեան: Զափն 'ի կէս տրամէ մինչև ցմի ամբողջ՝ խառն ընդ կէս լիտր ջրոյ, և 'ի մասնաւորի՝ ախտից թոքոց: Բոյս սորա յաճախեալ յանտառս, բերէ զտերևս սրածայրս, և զծաղիկս անախորժահոտս:

Սալ, լտ: սէլ, գղղ: ալս, յն: թուզ, տճ: մէլհի, կամ չէզպահ, արբ: նէմէք, կամ սիբէնճ, պր: ըստ մեզ՝ աղ: Է անուն ընդհանուր աղից, որոց ոմանք են բնականք, որք գոյանան 'ի ծոցս երկրի, և 'ի ջրոյ ծովայնոյ, զորս 'ի կիր արկանեմք 'ի կերակուրս, և 'ի դեղորայս: Իսկ ոմանք են արուեստականք, որք ելուզանին յոր և իցէ նիւթոյ երկրայնոց այրեցմամբ, յորոց զոմանս ունիս տեսանել 'ի սառրև:

Սալ ալքալի. անուանես այս ըստ քիմիականաց նշանակել աղ ալքալեան՝ զոր հանեն 'ի մոխրոյ կիզեալ բուսոց:

Սալ ալքալինուս սօտաէ, կմ օսսիքսառպօնաս ալքալինում սօտաէ, լտ: սալ ալքալի մինէռալէ ֆիսսօ, սօտա, կամ օսսիքառպօնաթօ ալքալինուլօ տի սօտա, իտ: օքսի քառպօնաթ ալքալինիւլ տը սուտ, կամ քառպօնաթ սիւռուլթիւռէ տը սուտ, գաղղ: էլքէլինըս օքսիքէռպօնէյթ օվ սօտա, անգղ: Է աղ ինչ ալքալեան՝ բիւրեղատեսակ, թափանցիկ, տըռպահամ, միանգամայն և կծանօզ լեզուի. զոր 'ի ձեռն ո և իցէ հեղանիւթոց լուծանեն 'ի ջուր, որ լինի դեղ ազդու ընդդէմ ախտից ստամոքսի, և հանքային թունից. զի է գրգռիչ, և գիմակալ բնութ՟ք: Զափն 'ի տասն ցորենոյ մինչև ց60:

Սալ ամօռօ. տես սալ տի ինկիլթէռռա:

Սալ ամմօնիաքօ բուռիֆիքաթում, կամ օսսիմուռիաս ամմօնիաքօ բուռիֆիքաթում, լտ: սալ ամմօ_

նիաքօ տէքրուռամթօ, կամ օսսիմուռխամթօ ու՛ ամմօ-
նիաքամ տէքրուռամթօ, իտ: օսսիմուռիամթ ու՛ ամմօնիգ-
տէլըրիուռէ, գղղ: բիւրիֆայտ օսսիմիւրիէյթ օվ էմ-
մօնիէք, անգղ: ամմօնիաքուս ալս, յն: Նշատըր,
կամ Նուշատր, տճ: կաւլաս, կամ հուքալ, և կամ
միւսլիւ, արբ. Նուշատուր, պր: և ըստ մեզ՝ անու-
շատր: Է նիւթ ինչ սպիտակ, որոյ գլխաւոր նիւթն
է ձանձախարիթ, զոր եգիպտացիք բարիոք գիտեն
կազմել. յորս սակս և մեք միշտ յայնմ տեղւոջէ
ենկալն 'ի վար արկանեմք, որ է տափարակ 'ի ձև
անուոյ կառաց, ստուար իբր երեք կամ չորս մատ-
նաչափ, սպիտակ, բիւրեղատեսակ, և աղէհամ, ու-
նելով ընդ ածխութն և փոքր մի տապութին կծուղա-
կան, զոր մարթ է 'ի կիր ածնուլ 'ի դիպուածս մի-
ջահատական տենդից աւթելոց յուժեղուէ, հար-
բխոյ, փորհարութե, մանաւանդ ղայրադին փորհա-
րութե, խցանաց արգանդի, և աւխչկեան անօթոց,
նուաղութե ամսական պարտուց կանանց, որքի-
նոյ, քաղցկեղի, և այլոց այսպիսի դժնեայ վիրաց.
զի է թուլացուցիչ, և ճճէհալած բնութբ: Չափն
'ի 10 ցորենոյ մինչև ց20: Ալլ եթէ առցէ ոք ա-
ռաւել քան զչափն պայմանեալ, լինի դեղ իմն ոռ-
ծացուցիչ, լուծիչ, և վայրացուցիչ: Բազում հեղի-
նակք են հաստատեն, և պնդեն թէ օգտակար է
յոյժ ժանտախտի, ախտի հերպաթափութե, ախտի
ելեփանդականի, և վատթարագոյն բորոտութե, և
քոսոտութե, և հոսման թանչից աւթելոց 'ի բռնու-
թէ բնութենն: Այս նիւթ ունի միւս ևս յատկուէ,
զի յորժամ արկանեն զնա 'ի ջուր ամարայինն՝ վաղ-
վաղակի ցրտացուցանէ՝ որպէս զձնջրորակ:

Սալ ամմօնիաղէ մնացիալիս, կամ օսսիմուռխաս
ամմօնիաղէ էթ ֆէռռի, լտ: սալ ամմօնիաքօ մառ-
ցիալէ կամ օսսիմուռխամթօ ու՛ ամմօնիաքա է տի ֆէռ-
ռօ, իտ. օսսի միւռիամթ ամմօնիէ տը ֆէռ, գղղ:
օսսիմիւրիէյթ օվ էմմօնիէք էնտ այըրն, անգղ: չէլիկ-
լի նշատըր, տճ: և ըստ մեզ թարգմանողի՝ ա-
նուշատր երկաթախառն: Է նիւթ ինչ սպիտակ հա-
րեալ 'ի գոյն դեղին, աղէհամ միանգամայն և սեղ-
միչ. զոր կազմեն յանուշատրէ, և 'ի խարտուածոյ եր-
կաթոյ, որ է դեղ ազդողական ընդդէմ խցանաց
ստորին որովայնի, միջահատական տենդի, երկարա-
տև ախտի, դալկան, ղայրադին փորհարութեան, և

այլ սոցին նման ախտից առթելոց 'ի թուլութենէ բնութեան. զի է մեղմապէս խթիչ և զօրացուցիչ բը-նութեան: Չափն 'ի 12 ցորենոյ մինչև ց15: Այլ և սաստակէ զորդունս և զճճիս որովայնի:

Սալ աչիտօ տի Թառթառօ, կամ օսսիթառթառի-քօ, իտ: օսսիթառթառիքում, լտ: օսսիթառթա-ռիգ, կամ ասիտ թառթառիգ, գղղ: օսսիթարթա-րիգ, անգղ: Է աղ ինչ բիւրեղաձև, կազմեալ 'ի օսսի-թարթառօէ, և 'ի կրոյ: Զօրութիւնք, և ներգործու-թեամբ նոյն է ընդ օսսի սաքքառիքօի:

Սալ բռունէլլա, կամ քռիսթալլօ մինէռալէ, իտ: սէրչօ հիւզէամա, տճ: Է աղ ինչ արուեստական, կազմեալ 'ի շնջքորակէ, և 'ի մաքուր ծծմբոյ, որ է դեղ հրատապ անձգէց, և բորբոքողականութենէ. զի է թուլացուցիչ, միզաբեր, և զովացուցիչ բնութիւնք: Չափն 'ի 12 ցորենոյ մինչև ցմի տրամ ամբողջ: Այլ և արգելու զհօսումն վավաշոտական, սպառէ ըզ-հիւթս սերմնականութեան, և պնդէ զապողական զօ-րութիւն: Կոչի և անօտինօ մինէռալէ:

Սալ բօլիքռէսթօ, կամ սալ տի սէկնէթթէ, իտ: Է աղ ինչ արուեստական, և յոյժ խորհրդաւոր, կազմեալ յաչիտօ տէլ Թառթառօէ, և 'ի ալքալի մառինօէ, որ է բնութիւնք թամթևապէս լուծիչ, զովա-ցուցիչ, թուլացուցիչ, և կարի միզաբեր, որով և բանայ զխցմունս ընդերաց: Չափն 'ի մի տրամէ մին-չև ց2, խառն ընդ մի լիտր ջրոյ:

Սալէփ. տես սաթիրիում հիռչինում:

Սալէ միռապիլէ տի կլաուպէռօ, կամ սօլֆա-թօ տի սօտա, իտ: սուլֆուրհաս սօտաէ, լտ: սու-լֆաթ տը սուտ, գղղ: սուլֆէյթ օվ սօտա, անգղ: Է աղ ինչ դիւրալոյծ, դառնահամ, սպի-տակ, սառնորակ, և անախորժ, որ կազմի 'ի սոսի-մուռիաթօ տի սօտաէ, և 'ի օսսիսօլֆօրիքօէ, զոր վարեմք 'ի պատշաճեալ տեղիս կալուածոց որովայ-նի, և միզարգելութեան. որովհետև է լուծիչ, միզա-բեր, և թուլացուցիչ բնութիւնք: Չափն 'ի չորս տրա-մէ մինչև ցերկու: Եւ եթէ իբր միզաբեր, պարտի լինել 30 կամ 60 կշիռ ցորեան:

Սալ նիթռօ. տես նիթռում:

Սալէ տի էբսօմ, կամ սալ ամառօ. կամ սալ տի ինկիլթէռռա, և կամ սօլֆաթօ տի մակնէզիա, իտ: սուլֆուրհաս մակնէզիաէ, լտ: սուլֆաթ

ռէ մակնեզի, գղղ․ սալֆէյթ օվ մէկնեզիե, անգղ․ ինկիլիզ թուզու, տճ․ և ըստ մեր թարգմանագրի աղ անգղիոյ։ Է աղ ինչ գիւրալոյծ, դառնահամ, և տաղտկացուցիչ։ Արկնակի է զօրութիւն սորա․ քանզի եթէ տացէ ոք 'ի սմանէ չորս կամ ութ տրամաչափ, թուլացուցանէ, և տայ միզել։ Իսկ եթէ արբցէ փոքրաքանակ՝ զօրօրինակ մի կամ երկու տրամ, լինի դեղ թուլացուցիչ։ Յայն սակս առեալ 'ի կիր արկանի 'ի գիպուածս պնդութեան կամ կալուածոց որովայնի, և խեթից կամ ցաւոց ընդերաց՝ առթելոց յուժգնութենէ բնութեան։

Սալ տի թառթառօ․ տե՛ս սոտկարպոնաթօ ալքալինուլօ տի բօթասսա։

Սալ տի մառթէ, կամ վիթրիօլօ տի ֆէռռօ, և կամ սոլֆաթօ տի ֆէռռօ, իտ․ սալ մարթէ, կամ սուլֆաս ֆէռռի, լա․ սիւլֆաթ տը ֆէռ, գղղ․ սըլֆէյթ օվ այրըն, անգղ․ չէլիկ թուզու, տճ․ և ըստ մեր թարգմանագրի՝ աղ պողպատի, կամ երկաթոյ։ Է աղ ինչ կանաչագոյն, բիւրեղատեսակ, թափանցիկ, գիւրալոյծ, դառնահամ, միանգամայն և տտիպ․ և է դեղ պզդու ընդդէմ արիւնախառն փորհարութեան, թանչից, զայրագին փորհարութեան, ծործան սերման, կմ սերմնակաթութեան, զի է խթիչ, սեղմիչ, և զօրացուցիչ բնութեան։ Նաև սատակէ զճճիս և զորդունս որովայնի։ Զափն 'ի քառորդ կշիռ ցորենոյ մինչև ցատան։ Իսկ եթէ առցէ ոք 'ի սմանէ առաւել քան զչափն պայմանեալ, պատճառէ զնողկանս սրտի, զփսխումն, և զխիթ աղեաց։ Զայս աղ կազմեն երկաթով՝ և սոլֆօռիքօիւ կամ իւզովն ծծմբոյ․ զոր զանգեալ բիւրեղացուցանեն 'ի ձեռն ջրոյ։

Սալ տի պառիթէ, կամ սոտմուռիաթօ տի պառիթէ, իտ․ սուբմուռիաս պառիթաէ, լա․ միւռիաթ պառիթիք, գղղ․ սուբմիւռիէյթ օվ պառիթէ, անգղ․ Է աղ ինչ սպիտակ, գիւրալոյծ, դառնահամ, միանգամայն և կծանօղ լեզուի։ Յոյժ մասնաւոր է սորա գործունէութիւն 'ի գիպուածս խցանաց խուլական ուռուցից, և քաղցկեղի․ և է օգտակար 'ի փարատել զխոյլս, և զխոզս պարանոցի, զՋրգողութիւն, զխոնաւնչարգելութիւն, զթոքային բարակացաւութիւն, զերկարատև ախտաժետութիւն, զտենդ որդնեաց, և զխօլ խեղդեանի։ Զափն 'ի վեց կշիռ ցորենոյ մինչև

ցտասն. զոր օրէն է խառնել ընդ երկու լիտր թո-րեալ ջրոյ. և առեալ լինի ըմպելիս այս 'ի միջոցի 24 ժամուց: Նոյնպէս օգտակար է նաև ընդդէմ ախ-տի մորթոյ, և մնամօլեալ վիրաց, եթէ թացեալ կտաւն արկանիցի 'ի վերայ:

Սալ տի սաթուռնօ, կամ ծուքքառօ տի սաթուռ-նօ, և կամ օսսիաչէթաթօ տի բիօմպօ քռիսթալլիծ-ծաթօ, իտ: սաքքհառում սաթուռնի, կամ օսսի-աչէթաս բլումպի քռիսթալլիզաթում, լտ: ասէ-թամ տը բլօն քրիսթալլիզէ, գղղ: քռիսթէլս օվ օսսիէսիթ օվ լիտ, անգղ: սուքքառ իլ զօհալ, արբ: քուրչուն թուզու, թճ: և ըստ մեզ Թարգմանագրի շաքար՝ կամ լաւ ևս աղ արճճոյ: Է նիւթ ինչ սպի-տակ, և փոքր մի քաղցրահամ, կազմեալ 'ի քացա-խոյ և 'ի նիւթոց արճճոյ. որոյ բնութն է թուլա-ցուցիչ և սեղմիչ իբրև աչէթօ տի սաթուռնօ. որպէս և ներգործութիւն նման է ներգործութեն նորա:

Սալ ա' աչէթօսէլլա. տես օսսիսաքքառաթօ օսսի-տուլօ տի բօթասսա:

Սալ տի՛ սուչչինօ, կամ օսսիսուչչինիքօ, իտ: սալ սուչչինիքում, լտ: ասիտ սիւքսինիք, գղղ: օսսիէմ-պըր, անգղ: գէհրիպար թուզու, թճ, և ըստ մեզ Թարգմանագրի՝ աղ սաթի: Է նիւթ ինչ տապահամ, հոտով չէ ինչ տարբեր 'ի հոտոյ սաթի, որպէս և ներգործութիւն նման է ներգործութեն նորա:

Սալիքս, լտ: սալչիօ, իտ: սօլ, գղղ: ուվիլլօ, անգղ: սէօիւտ, թճ: սալլաք, կամ չէճճէրի խիլաֆ, կամ սաֆսաֆ, և կամ սէվճէրի, արբ: բիլէ, կամ թակ, և կամ պիւիթ, պր: և ըստ մեզ՝ ուռի, կամ ուռենի: Է ծառ ինչ ջրասէր, որոյ կեղևն է յղկեալ, գիւրածալ, և գիւրաթեք: Փայտ նորա է թեթև, սպիտակ, և գիւրահատ, բայց դժուարաբեկ: Տերևն նեղ, երկայն, կանաչախառն սպիտակ, կակուղ, և թաւխշաւոր: Պտուղն երկայն, և թաղանթային. իսկ սերմն պարփակեալ 'ի պտուղ անդր՝ է նուրբ, սպի-տակ, և փափկափետուր: Բուսանի յամենայն ու-րեք 'ի պարտէզս, և 'ի խոնաւուտս. որոյ կեղևն կամ փոշիացուցեալ, և կամ եփեալ 'ի ջուր, և ար-բուցեալ, լինի դեղ եռօրեայ տենդի, ախտից ստա-մոքսի, և միջահատական տենդի. զի է թուլացու-ցիչ, և սեղմիչ բնութբ: Չափն 'ի կէս տրամէ մինչև ցմի ամբողջ՝ բազում անգամ յաւուրն: Ջնոյն դոր-

ծունէութիւն ունի նաև սերմն այսր անկոյ։

Սալսաբարիլլա․ տես սմիլաքս սարսաբարիլլա։

Սալվիա օֆֆիչինալիս, լտ․ սալվիա, իտ․ սօժ, գղղ․ սէյճ․ անգղ․ ֆլասկօմիլլա, յն․ մերեմիէ, կամ լիուն իլ հայլ, և կամ զուհիղէ, արբ․ սիբլթալիս, պր․ տիշ օթու, կամ ատաչայի, և կամ աճը էլմա օթու, տճ․ և ըստ մեզ՝ եղեսպակ։ Է բոյս մշտադալար․ որոյ ցօղունն է երկայն իբր երկու ոտնաչափ, կարծր, ճիւղալից, թաւամազոտ, և կանաչախառն սպիտակ։ Տերևք սորա են սաստկահոտ, թափանցիկ, երկայնաձև, ստուար, կնճռալից, անհարթ, սպնգային, թաւիշաւոր, սակաւահիւթ, և ջերմահամ․ գոյն նոցա ՚ի վերին երեսս տժգոյն կանաչ, իսկ ՚ի ներքոյ սպիտակ։ Ծաղիկն որկորաձև, հերձոտ, և կարմրախառն սպիտակ, որ սովորաբար ՚ի վեր երևի յամառան։ Յետ ծաղկանց յաջորդէ պատեան ինչ արկղաձև, յորում բաղկանան սերմունք բոլորշիք, և սեաւք։ Իսկ արմատն կարծր է, և թելալից։ Բուսանի ՚ի պարտէզս և ՚ի դաշտավայրս․ որոյ տերևն եփեալ ՚ի ջուր, և արբուցեալ, դեղ է տկարութեան ստամոքսի, ցաւոց գլխոյ, կրծոց, և յօդուածոց, և ՚ի մասնաւորի ՚ի յարգի ունիմք զսա ՚ի դիպուածս անդամալուծութեան, քնափութեան, արգանդացաւութեան, փոշտանկութեան, լուծոտութեան, միջահատական տենդից, և ընդհանրապէս ընդդէմ ամենայն ախտից առթելոց ՚ի թուլութենէ բնութեան․ զի է խթիչ և զօրացուցիչ բնութեան․ յայն սակս կոչեցաւ յիտալացւոց՝ սալվիա, որ ըստ մեզ ստուգաբանի՝ եղեսպակ, իբր թէ եղև սպասեակ մարդկային բնութեան։ Չափն ՚ի մի և կէս տրամէ մինչև ցերկու, զոր պարտ է եռացուցանել ութ ունկի ջրով։ Նոյնպէս և օգտակար է ուռուցից ստեանց, և թուլութեան լնդերաց, մանաւանդ յորժամ եռացուցանի ընդ գինւոյ։ Զնոյն գործունէութիւն ունի նաև իւղն սորա։

Սակաբէնում, կամ կումմի սակաբէնում, լտ․ սակաբէնօ, իտ․ սէկպէնճ, արբ․ և տճ․ Է խէժ ինչ դիւրավառ, սաստկահոտ, արտաքուստ տժգոյն, իսկ ՚ի ներքուստ դեղին, համով ըստ մասին դառն է, և ըստ մասին տտիպ, որ ծորի ՚ի բնոյ փոքրատերև բուսոյ իրիք պարսկայնոյ։ Ազնիւ համարի՝ եթէ իցէ դեղնագոյն ՚ի ներքուստ, իսկ ար-

տաքուատ կարմիր և փայլուն. միանգամայն է դեղ նուազութեն ամսական պարտուց կանանց, և հորդիչ ճանապարհի արգելման ամենակերպ խցմանց ընդերաց, զի է թուլացուցիչ բնութբ: Զափն 'ի 20 ցորենոյ մինչև ց60: Նոյնպէս և փարատէ զցուրտտուռոյցս, եթէ սպեղանի կազմեալ դիցի 'ի վերայ այտուցաց:

Սամպուքուս, լտ: սամպուքօ, իտ: սիւռօ օռտինէռ, գղղ: քըմմըն պլէք պէրրիէտ էլտըր, անգղ: քուֆուքոխլիա, յն: միւրվէր, տճ: Թէնուսմէ, կամ խամման, և կամ պէլասան, արբ: և ըստ մեզ՝ Թաթրեւվենի, կամ ակտոն: Է ծառ ինչ տատասկից, և տարածողական. որ սովորաբար բարձրանայ յերկրէ իբր 3 կամ չորս գրկաչափ բարձրութբ. որոյ բուն, ոստէս և ոստք նորա, 'ի սկզբան անդ է կանաչագոյն. և ապա փոխի 'ի գոյն մոխրոյ, և բազկանայ յերկուտեսակ կեղևէ. առաջինն՝ զորով անմիջապէս պատէ փայտն, է կանաչ, և խիտ մսանաւ, զոր ճմլեալ մզեն անտի հիւթ ինչ, անուանեալ յիտալացւոց՝ սուքօ քիառիֆիքաթօ տէլլա սէքօնտա սքօռցա տի սամպուքօ, զորմէ 'ի տեղի իւրում ունիմք յիշատակել: Իսկ երկրորդն՝ է անհարթ, հերձոտ, գորշագոյն, կամ թուխ. գոյացուն բնոյ նորա ոչ է բնիկ փայտ, այլ նիւթ ինն սպնգային, և սպիտակ՝ նման ըստ իմիք եղեգան: Տերևն նման է տերևոյ ընկուզենւոյ. բայց եզերք սորա են աղցաձև ատամնաւորեալք. ծաղիկքն մանր, փնջաւոր, միաթերթ, հնգանկիւնի, սպիտակ, և հոտաւէտ, որք ելանեն 'ի ծայրս ոստոց 'ի ձև հովանոցի. զկնի ծաղկանց յաջորդէ պտուղն 'ի չափ մեծութեան սիսռան, որոյ գոյն 'ի սկզբանն է կանաչագոյն, և ապա առ սակաւ սակաւ սևանայ. մէջն կակուղ, ջրալից, և թթու, որ վարի 'ի ներկս՝ նաև 'ի գեղորայս: Իսկ սերմունք նորա, որք լինին 'ի պտղոյ անտի՝ մանր են և երկայնաձև: Բուսանի յեւրոպիա, յասիա, 'ի խոնաւուտ և 'ի պարարտ տեղիս. և սկսանի ծաղկիլ յամսեանն մայիսի, որոյ ծաղիկն կոչի յիտալացւոց՝ ֆիօռ տի սամպուքօ. ըստ որոյ և թուրքերէն ասի՝ միւրվէր չիչէկի. իսկ յարաբացւոց՝ զահռ պէլասան. զոր եռացուցեալ ըստ օրինակի երեցկի՝ 'ի կիր արկանի 'ի դեղ՝ արգելման արտաշնչութե մարմնոյ, և ցաւոց որովայնի, զի է խթիչ և քրտնաբեր բնութբ:

Զաւին յերկու տրամէ մինչև ցչորս խառն մի և կէս լիտր ջրով։

Սանթալուն, կամ սանթալինոս, լտ։ սանտալօ, իտ։ սանթալ, գղղ։ սօնտըլըս, անգղ։ սանտալ, տրք, և տճ։ չէհտէն, պր։ և ըստ մեզ՝ սանդալ։ Է փայտ ինչ ծանր, կարծր, և հոտաւէտ, յաճախեալ յամէրիկայ, և յարևելեան հնդիկս։ Երրեակ են տեսակք այսր փայտի․ այսինքն կարմիր, դեղին, և սպիտակ․ զկարմիրն որ առատ է իւղով, և աղէւ, առաւել 'ի կիր արկանէին նախնիք 'ի զանազան դեղօրայս․ իսկ այժմ ոչ 'ի վար արկանի յարևմուտս։

Սանթօլինա քհամէչի բառխասուս, լտ։ սանթօլինա, իտ։ սիբուէ, բըլթի սէբուէ, գաղղ։ լավէնտէր, կամ քօթթօն, անգղ։ Է բոյս ինչ հոտաւէտ և գեղձաւոր յաճախեալ յեւրոպիա, և 'ի դերմանիա․ որոյ ցօղուն է փայտային, ճիւղալից, և երկայն իբր մի և կէս ոտնաչափ։ Տերևք նորա են խիտ, փոքրիկ, երկայնաձև, եզերահերձ, և սպիտակ։ Ծաղիկն փնջաւոր, դեղին, և ատաղաձև, որ ելանէ 'ի ծայրս ցօղնոց և 'ի վերայ ճիւղոց հանդերձ թեփաւոր ա-ռէչիւք․ բերէ և սերմունս երկայնաձևս, և թխագոյնս։ Իսկ արմատն կարծր է և փայտային։ Զտերև այսր բուսոյ վարեն 'ի ճճհալած դեղօրայս։ Զաւին 'ի կէս տրամէ մինչև ցմի, զոր օրէն է լուծել 'ի փոքր մանրամաղ, և խառնել ընդ չորս ունկի ջրոյ․ և առնուլ ըմպել այս 'ի միջոցի 12 ժամուց։

Սանթօնիքօ․ տես սէմէն քօնթրա վէրմէս։

Սանկուլիս հումանուս, լտ։ սանկուէ ումանօ, իտ։ դան, տճ։ էմա, յն։ աէմ, կամ ալաք, կամ ապիթ, կամ գըթթա, կամ թաամուր, կամ թուլըլահ, կամ հէրիր, կամ ճաասիր, կամ ճէսէթ, կամ ճէտիյէ, կամ միւհճէ, կամ նէճիհ, կամ նէֆս, կամ նիւմանա, կամ շուխ, կամ պահիր, կամ սէսիրէ, կամ վէրագ, կամ տէմիյ, կամ տէվէմ, կամ րուֆա, և կամ ֆէսիտէ, տրք։ խօն, կամ հուն, պր։ և ըստ մեզ՝ արիւն։ Է մին 'ի քառեակ կենդանական հեղթոց, որ ըստ վկայելոյ 'ի հասարակի ամենայն գիտնական հեղինակաց՝ ճապաղեալ և ծաւալեալ շրջապատէ զմարմինն բովանդակ, մինչև զամանէ կախեալ գոլ կենսական զօրութեան այլ ամենայն անդամոց։ Զերկուս ինչ ունիմք նկատել զամանէ․ նախ զբնութեն նորա զկարգն, զի ամենայն կերակրեղէնք ընդ

կան ջերմութիւն լուծեալ նախ 'ի հեղանիւթ սպի-տակ, այլա տա սակաւ սակաւ սկսանի զգենուլ զանգընաւորութի արեան: Երկրորդ գիտել արժան է, զի հեղանիւթս այս ստանայ զբնութիւն ճշգրիտ արեան մնանաւոր իմն եփմամբ 'ի սիրտն. ըստ հաստատելոյ ամենայն որդի հեղինակաց. Նախնիքն 'ի կիր արկանէին սատ 'ի դեղ լուծատուութեան, հրատապ տենդից, և կշռացաւութե. իսկ տա արդիս ոչ համարի այնքան 'ի յարգի:

Սանկուխս տաուքօնիս, լտ: սանկուէ տի տաւակօ, ֆռ: սան տաւակօն, կամ տաւակօնիէա, գղղ: արէկըն Թրի, կամ արէկըն'ս ալըր, անգղ: էհտար, կամ չէեան, ակժ իլ ախվան, արբ: խունի սիաւշան, պր: գարտաշ գանը, տճ: և ըստ մեզ՝ արիւն վիշապի, կամ եղբարց արիւն: Է գոյացութի, կամ լաւեա՝ հիւթ ինչ խժային, գիւրավառ, չոր, գիւրափխրելի'ի գոյն արեան, որ ծորի արտաքս 'ի հատանելն մեծաքանակ հատատակեղև, և մշտադալար հնդկային ինչ ծառոց, զոր տաւքօ ասպօտ անուանեն, այսինքն վիշապածառ. և լինի յամէրիկա, յափրիկէ, եւ 'ի չին: Ազնիւ համարին առաջին կաթիլքն բաշագայնք. Թափանցիկ, և գիւրափխրելիք, և արիւնանմանք, 'ի ծորելն մանաւանդ յայրելն՝ բուրէ զհոտ անոյշ իբրև զբալասան: Նմին իրի օրէն է 'ի վար արկանել զերկրորդ կաթիլսն որք առէալ մածանեն 'ի կրպակս՝ ունելով զձև նմանութեան ձիթապտղոյ՝ ծրարեալ 'ի տերև ծառոյ: Զօրութի նորա է անզգիչ, մաքրիչ և ցամաքեցուցիչ, որով արգելու զհոսումն Թանչից և զփորհարութի. չափն 'ի 20 ցորենոյ մինչև ց40: Ունի սա միւս եւս ներգործութի, զի ապխացուցանէ զլէրս նորոգ ընկալեալս, և մաքրէ զաղտոտ ատամանց, այլև զճմլումն պատճառեալ 'ի հարուածոյ բուժէ: Գտանի և խարէականն, որ չէ՛ ինչ պիտանացու:

Սապոտիլլա, կամ մէուաթառամ սապոտիլլիա, լտ: սապոտիկլիա, ֆռ: սապոտիլ, գղղ: իտ, կամ սէպոտիլլէ, անգղ: Է սերմն ինչ սեաւ, դառնահամ, միանգամայն և կծանօղ լեղուի, զոր փոշիացուցեալ և արբուցեալ, դեղ է ազդու ընդդէմ ճճեաց և որդանց որովայնի: Չափն 'ի յերկու կէսս ցորենոյ մինչև ց12 խառն ընդ շաքարի:

Սապինա, կամ եռանիբէռուս սապինա, լտ: սա-

պինա, իտ: սասաֆրին, գղղ: քըմմըըն սէվլէն, անգղ: գու-ուա սաւտըրճ, տճ: և ըստ մեզ՝ սեաւ գի: Է տունկ ինչ մշտադալար. որոյ բունն է ստուար, և կարմրա-խառն գեղջին, որպէս և կեղև նորա: Տերև սորա նման է տերևոյ նոճւոյ. այլ համով տափակ է և գառն, միանգամայն և հաւնեմայրին: Իսկ պտուղն բոլորշի է և ստուար նման գիհւոյ, այլ ոչ կարմիր իբրև զնա. Բուսանի ՚ի սկիւթիա, ՚ի սարմատիա, և ՚ի պարտէզս եւրոպիոյ. որոյ տերևն եփեալ ՚ի ջուր, և արբուցեալ, դեղ է նուազութեան ամսական պարբերաց կանանց, և արգելման դաշտանի: Զափն ՚ի կէս տրամէ մինչև ցմի խառն ընդ եօթն ունկի ջրոյ, ունի և զզօրութիւն վիժողական. զի է խթիչ և գրգռիչ բնութ~:

Սասաֆրաս, կամ լաուրուս սասսաֆրաս, լտ: սասսօֆրասսօ, իտ: Է շքեղատեսիլ ծառ ինչ ամերի-կեան, որ ուղիղ բարձրացեալ յերկրէ համանէ ՚ի ՚ի չափ սոճւոյ, և բուսանի ՚ի լերինս, ՚ի դաշտս, և ՚ի մարգագետինս. կեղև նորա է ստուար, խորտու-բորտ, անհարթ, կարմիր, և դիւրաբեկ: Փայտն թեթև, սպնգային, մթին կարմիր կամ շագանակա-գոյն, ջերմահամ, և նմանեալ հոտով սերման սամ-թի: Տերևն ձևով, և մեծութ~ նման է տերևոյ թզենւոյ: Պտուղն երկայնաձև, սրածայր, և երկայ-նակամնթ: Իսկ արմատն ստուար, տարածողական, և հոտաւէտ: Այս ծառ կոչի ՚ի հնդկաց բաւլէկ. որոյ փայտն եփեալ ՚ի ջուր և արբուցեալ՝ լինի դեղ ազդու առ ՚ի բուժել զցաւս յօդուածոց, զախտս մորթոյ, զքորոտութիւն, զքսստութիւն, զցաւս ստա-մոքսի, և զախտս գաղղիական և ելեփանդական. զի է թուլացուցիչ, ընկլուզիչ, և մաքրիչ բնութեամբ: Զափն ՚ի յերկու տրամէ մինչև ցերկու և կէս՝ խառն ընդ ութ ունկի ջրոյ, զոր պարտ է արբուցանել ՚ի միջոցի 12 ժամուց: ՚Ի փայտէ սորա արտահանեն զիւղն՝ որ է ոսկեգոյն, և ջերմահամ, զոր վարեն ՚ի պէտս վերոյիշեալ ախտից:

Սարսաբարիլլա. տե՛ս սմիլաքս սարսաբարիլլա:

Սարտա կամ սարտինա, լտ: սարտէլլա, իտ: սարտէլլա, տճ: Է ձկնիկ ինչ ծովային, որոյ միսն է համեղ, միանգամայն և դեղ օգտակար ստամոքսի, յորմէ և սովոր են յեւրոպիա կազմել աղամանաւ առ ՚ի ուտել. այլ և օգտէ ընդդէմ ուռուցման երա-

կաց, և ընտերաց, գնելով 'ի վերայ վշտագնեալ մասին մարմնոյ:

Սարքօմա. այսու անուամբ իմանի՝ կարծր և անցաւ ուռոյց ինչ, որ գոյանայ 'ի անդունս, և յայլ մասունս մարմնոյ:

Սարքօնֆալօ. անուամբս այս նշանակի այտուց ինչ պորտոյ:

Սարքօքօլլա, լտ, և իտ: անծառուդ, տճ: Է փոքրաբեկոր, սպնգային, և դեղնագոյն խէժ ինչ՝ ծառեալ յաստոց փոքրիկ և փշաբեր ծառոյ երկրք արաբիոյ: Զաս վերաբոյժք 'ի վար արկանեն 'ի սպիացուցիչ սպեղանիս. խառնեն նաև ընդ շուփայի առ 'ի բառնալ զբժոտութիւն աչաց:

Սաքքհառում, լտ: ծուքքէռօ, իտ: զախարի, յն: սխուքռ, գղղ: շիւկրը, անգղ: սուքքար, կամ գնտիտէ, և կամ ֆանի, արբ: գանտի, կամ գէնտ, պր: շէքէր, տճ: և ըստ մեզ՝ շաքար: Է աղ ինչ գոյացական քաղցր քան զմեղր, զոր իբրև գոյացութիւն արտադրեն 'ի բնոյ եղէգնատեսակ բուսոյն յորջորջելոյ լատինական բարբառով՝ առունտօ սաքքհառիֆէռա: Բազում են տեսակք այսր շաքարի, ըստ այլ և այլ օգոյ գաւառացն պէսպիսացեալ և համով. այլ լուսագոյն և քաղցրագոյն համարի եկեալն յեգիպտոսէ, յորմէ և եղէգն նորա առ արաբացիս անուանի սուսադ: Զայս շաքար վարեն 'ի զանազան պէտս, որպէս և երբեմն 'ի զանազան հանդերձանս դեղորէից, մանաւանդ ապիտակագոյնն, որ է բնութբ̃ մեղմապէս լուծողական, և գրգռիչ. օգտաւէտ է հազից, ցաւոց կրծոց, աղտեղութե լեզուի, և բերանոյ. այլ՝ յաճախակերութիւն սևացուցանէ և փտեցուցանէ զատամունս:

Սաքքհարում քանտում, լտ: ծուքքէռօ քանտիտօ, իտ: սուքքար շամի, արբ: գանտի նապաթ, պր: նապաթ շէքէրի, տճ: և ըստ մեզ՝ շաքար վանի, կամ վանաշաքար: Է ազգ ինչ շաքարի, զտեալ և կարծրացեալ որպէս զառն, որոյ կրկին է տեսակ. ապիտակ, և դեղին. ապիտակն կարի ազնիւ է, զոր ստէպ 'ի վար արկանեն 'ի դեղ հազից, ցաւոց կըրծոց, և աչաց:

Սբազիմա, կամ ոբազմօ. է ձգտումն ջղաց կամ ձգանաց, որ սովորաբար պատճառի 'ի պէսպէս կրից, և ախտից, ըստ որոյ և Թուքքերէն ասի՝ սինիր Թե

Թիբէմեսի, իսկ յարաբացւոց՝ իլ հեզզէ, կամ աուինէ:

Արէումս սէմինիս, և կամ սէմէն, լտ: սէմէ, իտ: նէֆս կամ Թօհում, տճ: մէնի, կամ ֆանիզ, արբ: ահզան, պր: և ըստ մեզ՝ սաղմն, կամ սերմն: Այսու անուամբ իմանամք՝ զազնիւ, զամբողջ և զնուրբ հիւթն՝ մանաւանդ զզաւակարարն ամենայն կենդանեաց. որ է կենդանական մասն բոլոր անձինն, ունի զշարժուածս յերևակայութէ, և 'ի բոլոր գործարանաց և 'ի ջղաց մարմնոյ: Ասացաք գոլ սմա ամբողջ և կենդանական մասն բոլոր անձին, որովհետև ամբողջապէս կատարելագործեալ յառաջ բերէ զանհատն սատարութբ սեփական բնութենն իգականի: Սմին իրի քաջայայտ ճանաչեմք աստէն, եթէ սերմն երկուցունց, այսինքն արուին և իգի համարելի է մի միայն եւեթ. զի ըստ բնութենն գոլով աներևութապէս և 'ի ներքուստ մասունք իբերաց, ոչ է պարտ բնաւ համարել զայնս երկու, այլ մի եւեթ: Եւ լինելն սորա կենդանական, քաջայայտ է ամենայն ումեք. քանզի եթէ զհատ ցորենոյ խարշելոյ սերմանեսցեմք յագարակի, յայտ է՝ թէ ոչ բուսանի հասկ. նոյնպէս և ոչ եփեալ ձուոյ մարթ է արտահանել զձագ կենդանի. զի արդէն չգտանի 'ի նոսա ոչ 'ի հատն ցորենոյ խարշելոյ, և ոչ 'ի ձուն եփեալ զօրութի կենսական: Իսկ զյարգ ազնուութե սորա անվրէպ ուսանեմք անտի, զի սերմն ամենայն գոյացական՝ ոչ այլ ինչ համարի, բայց եթէ զաւադոյն ծուծն բոլոր անհատին հանդերձեցեալ, և հաստատեալ իբր ընդ յօդիւք և կապիւք զօրութբ բնածին ջերմութեանն, և գիճութենն. զի ըստ հասարակ և հաստատադոյն վճռոյ ամենայն բնագիտին փիլիսոփայից՝ ջերմութիւն և գիճութիւն են պատճառք կենդանութեան ամենայն կենսականաց, որպէս է արեանն: Իսկ ցրտութիւն, և չորութի անվրէպ առթեն զմահ: Բայց գիտել արժան է, եթէ այսր ջերմութե և գիճութե օրէն է լինել միշտ և հանապազ զուգակշիռ հաւասարութբ. զի յերևելապէս նուազութէ, կամ 'ի յորդութէ միոյն կամ միւսոյն պատճառի անկարգութի, և վրիպակ բնութենն, եւ մահ բնական: Դարձեալ, ասացաք լինել սմա մասն ինչ նրբագոյն. քանզի յայտ է, եթէ սերմն ամենայն կենդանեաց գոյանայ 'ի նրբոյ և 'ի մաքուր արեանէ նո-

ցին. Նախ 'ի շրջանս երակաց ճապաղեալ 'ի ձեւն
ջղաց, մանաւանդ այնց ջղաց, որոց ստորակարգեալ
է մեծ գործ մարսողութեն կերակրոց, և ապա 'ի
ձեւն այլայլեցման և եփման ժամանեալ յամոր-
ձիսն, և անդէն ստացեալ զկատարեալ հաստատակու-
թեն, լինի սերմն. և զարտաքին կարմրութեն արեան
պարունակեալ 'ի ներքոյ սպիտակութեն, զոր ունի
ներքսապէս, անդրաշրջի արտաքս. և յետ այնորիկ
վերստին փոխեցմամբ, և կրկնակի եփմամբ յարգանդ-
ին, որոյ սերմանն բնութեն գոլով ըստ առաւելա-
գոյն մասին հով և գէճ, փոխեցուցանէ զսերմն ա-
րական, որ է ըստ մեծագոյն մասին ջերմ և չոր. և
հաւսկ յետոյ զսպիտակութեն զոր ունէր՝ վերստին ամ-
փոփեալ 'ի ներքս, զկարմրութեն առաջին՝ աղգուա-
գոյն իմն ներգործութեմբ ելուզանէ արտաքս: Դար-
ձեալ. գիտել օրէն է, զի կամք եղեն բարեխնամ
բնութեն, զի հիւթս այս զաւակարար լիցի իբր էա-
թրաթթօ կամ մղուածն կենդանւոյն. և վասն այսո-
րիկ հեղումն նորին՝ եթէ կանուխ, եթէ անագան,
և եթէ կարի յաճախ, 'ի սակաւ ամս պատճառէ
զանառողջ տկարութեն, զբոլորական զրկումն ախոր-
ժակի կերակրոց, զփքալից և զջղաքարշ ճնշումն
ստամոքսի, զհանապազորդեան ձգտումն, զթաղ-
ձութեն, զմելամաղձութեն, զպտոյտս գլխոյ, զմոռաց-
կոտութեն, զշառաչիւն և զղօղանջիւն ականջաց, ըզ-
ծանրատաղտուկ տքնութիւնս, զգիշերային և զակա-
մայ գիճութիւնս, զդողդողումն ձեռաց, զբաբախիւն
սրտի, զցաւ թիկանց, զծիւրումն և զհաշումն, և
վերջապէս զնեխութեն ողին, և զայլ բազում սարսա-
փելի արկածս կամ երեւոյթս ջղային բնութեն:

Սբէռմաչէթի, իտ: լաթթէ տի բէշէ, ֆռ: պլան
տը պալէն, գղղ: ահէ սփիւթ, անգղ: պալըք նէֆթի,
աճ: մէննի սէմէք, արբ: և ըստ մեզ թարգմանագրի՝
սերմն կամ կաթն ձկան: Է գոյացութեն ինչ թեթեւ,
իւղային, սպիտակ, և խոնաւ, հանեալ 'ի գլխոյ մե-
ծագոյն ձկան իրիք սպանիոյ, որ է տեսակ մի բաղէ-
նայի, զոր լատինք՝ օռքօպիտուխս կամ քաքհալօթ ա-
նուանեն: Այս գոյացութիւն 'ի բժշկարանս ինչ
պիանքօ տի պալէնա կոչի. որ թարգմանի՝ սպիտա-
կուց բաղէնայի, յորմէ կաղմեն դեղ խոնաւ հազից,
շնչարգելութեն, և ցաւոց կրծոց, մանաւանդ յոր-
ժամ խառնի ընդ խեժի արաբիոյ, բաղադրելոյ քաղցր

նչի խաղով։ Զափն 'ի 20 ցորենոյ մինչև ց40։ Եւ 'ի մասնաւորի այտուցից ստեանց կանանց, Թանչից, և մորթոց։ Սա 'ի սկզբանն է սպիտակագոյն և ախորժահամ. այլ իբրև հնանայ, առ փոքր մի գեղնագունի, և կծուանայ. բայց այն գեղնութի և կծուութի պատճառեն անվրէպ զանկարութի ստամոքսի, զործումն, և զլուծումն որովայնի։

Սբինաչիա, կամ սբինաքիա, լտ։ սբինաչի, իտ։ էբինառ կամ էփինառ բօթաճէ, գղղ։ սբինեչ, անգղ։ սպաննաք, տճ։ ըսպանախ, արբ։ ափանաճ, պր։ և ըստ մեզ՝ շոմին, կամ ծմել։ Է բանջար ինչ յայտնէ խաւարտեց ծանօթ ամենեցուն. զոր բազմօրինակ հանդերձեալ ուտեն, զի է բնութեամբ մեղմագէս լուծիչ, և քաղցրացուցիչ զսապութի հիւթոց։

Սբինօ չէռվինօ, իտ։ ռհամնուս քաթհառթիքուս, լտ։ նէռփռուն, գղղ։ բուաճինկ, պուրքքհօռն, անգղ։ կէյիք թիքէնի, տճ։ և ըստ մեզ՝ եղջերուափուշ։ Է ծառ ինչ բռունօ յորձորձեալ թփոյ, որոյ բուն, ոստք և փուշքն են սեաւ. հիւթ սորա գառնահամ է և անախորժահոտ, որ լինի ներկ կանաչ առ 'ի տալ զգոյն զինչ և իցէ թղթոց։ Իսկ պտուղ սորա որ է հիւթալից՝ լինի դեղ ջրգողութե առթելոյ յուժգնութէ, զի է թուլացուցիչ, և ուժգին լուծողական։ Զափն երկու տրամ յաւուրն՝ խառն ընդ մի լիտր ջրոյ։

Սբիռիթուս, լտ։ սբիռիթօ, իտ։ ռուհ, տճ։ և ըստ մեզ՝ ոգի։ Է անուն ընդհանուր նրբագոյն հրեղէն և ցնդական մասին որ և իցէ նիւթոց եղածելոց 'ի ձեռն ցքահան գործեաց։

Սբիռիթուս վինի ռէթթիֆիքաթիսսիմուս, կամ ալքօհօլ, լտ։ սբիռիթօ տի վինօ ռէթթիֆիքաթիսսիմօ, կմ ալքօօլ, իտ։ ալքօօլ, գղղ։ էլքօհլ, անգղ։ միւքէրէր շառապ ռուհու, տճ։ և ըստ մեզ՝ կրկնահան ոգի գինւոյ։

Սբիռիթօ. տես սբիռիթուս։

Սբիռիթօ անօտինօ մինէռալէ տէլ հօֆֆման. տես լիգուօռէ անօտինօ մինէռալէ տէլլ' օֆֆմանօ։

Սբիռիթօ վօլաթիլէ առօմաթիքօ, իտ։ ուչուճու պահարաթլը ռուհ, տճ։ Է ոգի ինչ ցնդական, կազմեալ 'ի սբիռիթօ տի սալէ ամմօնիաքօ վինօզօ. 'ի օլիօ տիսթիլլաթօ տի ռամէռինօ, և 'ի կեղեւոյ կիտրոնի, և է դեղ ազդու ընդդէմ տկարութեան

ստամոքսի, փքախտութեան, և գժուարամարսութեան ։ Չափն 'ի 15 շթէ մինչև ց20 ։

Սպիրիտօ վօլաթիլէ օլէօզօ, իտա ։ Է ոգի ինչ բաղադրական, կազմեալ 'ի բազմատեսակ նիւթոց ․ օգտակար է 'ի գիպուածս ցաւոց արգանդի կանանց, անդամալուծութեան, և ախտից ջղաց ։ Չափն 'ի չորս շթէ մինչև ց10 ։

Սպիրիտօ տի մէլիսսաէ, իտա ։ օղուլ օթուն սուհու, տճ ։ և ֆր մէզ՝ ոգի մեղրատերևոյ ։ Է ոգի ինչ նուրբ, ցնդական, և ազնուահոտ, զոր ածեն 'ի վենետիկէ և յայլ արևմտեան կողմանց ․ այլ ընտրագոյն և օգտակարագոյն համարի եկեալն 'ի վէնէտիկ քաղաքէ ։ Զօրաւոր է յոյժ ոգիս 'ի գիպուածս ախոնդամոտութեան, անդամազօսութեան, լուսնոտութեան, իշուածոց, ցաւոց արգանդի և գլխոյ, ուշագնացութեան, նուաղման սրտի, և ջղացաւութեան, զի է խթիչ, զօրացուցիչ, և սթափիչ բնութեամբ ։ Սովորաբար 'ի կիր արկանի՝ եթէ հիւանդ իցէ, և եթէ առողջ ․ հիւանդաց տա մի նուագ տասն զմի մասն միոյ տրամոյ ․ իսկ առողջաց զկէս տրամ խառն ընդ ծաղկի ջրոյ ։ Գործեալ՝ շահաւէտ է ընդդէմ տկարուն ջղաց, զի առնու արծարծանի ազդեցութիւն ջղային ոգւոց, և միանգամայն ձգանացն մարմնոյ, և մանրաթելից արտին ․ օգնէ և մարսողութեան, և զգաստութեան մտաց, և արգելու զպտոյտս գլխոյ, և փոխանակէ զանդր քնոյ, մինչև յերկար արթնութենէ ոչինչ նեղութիւն զգալ ։

Սպիրիտօ տի մինտերերօ, կամ օսսի ացէթաթօ տ'ամմօնիակա, իտա ։ օսսի ացէթաս ամմօնիաքալիս, լտ ։ ասէթաթ տ'ամմօնիակ, գղղ ։ օսսի էսիթէյթ օվ էմմօնիէք, անգղ ։ Է ոգի ինչ թեթևահոտ և թեթևահամ, կազմեալ 'ի ալքալի վօլաթիլէ տի սալ ամմօնիաքօէ և 'ի բարկ քացախոյ ։ Հռչակաւոր է սա 'ի գիպուածս ջերմախտից, հրատապ տենդից, ցաւոց յօդուածոց, հարբխոյ, ջրգողութեան, գալկան, անդամալուծութեան, անդամազօսութեան, լուսնոտութեան, փտախտութեան, և հոսման թանչից ․ զի է թուլացուցիչ բնութեամբ ։ Չափն յերկու տրամէ մինչև ցչորս, զոր օրէն է խառնել ընդ գարեջրոյ, կամ հասարակ ջրով, և կամ այլ յարմարաւոր ըմպելեօք, յաւելլով 'ի նոյն փոքր մի շարաւին հաղարջի ․ և առաւել լինի ըմպելիս այս 'ի միջոցի 24 ժամուց ։ 'Ի կամիլ անգ

զի լինի խթիչ և քրտնաբեր բնութ՟ք, հեղ 'ի նա զՋուր Ջերմ, կամ զայլ ըմպելի։ Իսկ 'ի խնդրելն զի լինի միզաբեր բնութեամբ, լից 'ի նա զհեղանիւթ ցուրտ։

Սբիռիթօ տի նիթռօ, կամ աչիտօ նիթռակօ, կամ աքդուա ֆօռթէ, և կամ օսսիսսէբթօնիքօ, իտ։ օսսիսէբթօնիքում, կամ ադուա ֆօռթիս, լտ։ օսսի էբթօնիգ, գղղ։ օսախսէբթընիք, անգղ։ Էօջուր ինչ այրիչ կամ կիզիչ. զորոյ զնշանակութիւն և զօգտակարութիւն մարթիս տեսանել 'ի բառն՝ ադուա ֆօռթիս։ Սա շահաւէտ է և ազնուի գազդղխականնի, զի է խթիչ և փաղաղիչ բնութ՟ք։ Այլև սպառեալ ծախէ զաւելորդ միս կամ կոծիծս՝ օծանելով ևեթ զայնս։

Սբիռիթօ տի նիթռօ տոլչէ, կամ ալքօօլ էթէռէօ նիթռօնիքօ, իտ։ ալքօհօլ էթհէռէում օսսի նէբթօնիչի, լտ։ ալքօօլ էթէռէիւս ա՝ օսսի նէբթօնիք, գղղ։ ալքօհօլ էթէռէալ օֆ օսսիսէբթընիք, անգղ։ կիւլչէրչիլէնին թաթլը ռուհու, տճ։ Է ոգի ինչ հոտաւէտ, ցնդական, և դիւրավառ, կազմեալ 'ի չնչքօրակէ, և 'ի կրկնահան ոգւոյ. որ է դեղ օգտաւէտ 'ի դիպուածս Ջերմախտից, երիկամնաժետութեան, և խեթից աղթեաց 'ի փքոյ։ Զափն 'ի 6 չէթէ մինչև ց10 կամ ց20 խառն հատաբան հեղանիւթով։

Սբիռիթօ տի սալ ամմօնիաքօ, կամ օսսի քառպօնաթօ ալքալինուլօ ա՝ ամմօնիաքա, իտ։ օսսիքառպօնաս ալքալինուլում ամմօնիէ, լտ։ քառպօնաթ ալքալինուլ ա՝ ամմօնիագ, գղղ։ Նշատըր ռուհու, տճ։ և ըստ մեզ՝ ոգի անուշադրի։ Է ոգի ինչ ուժգին հոտաւէտ, թափանցիկ, նուրբ, ցնդական, առաջահամ միանգամայն և կիզանող լեզուի և բերանոյ. զոր մարթ է 'ի կիր առնուլ ևթէ 'ի ներքուստ Ջրախառն ըմպելով, և եթէ յարտաքուստ հոտոտմամբ և օծելով. որ է հաշտակաւոր ընդդէմ յոսի և ժխտաբեր օդոց և հոտոց, ժանտախտից, մահաբեր տենդից, խածից Ջղաց և նեարդից, անդամալուծութեան, յօդուածացաւութեան, դիւակաց, ցաւոց գլխոյ, տկարութեան Ջղաց, Թիֆօ անուանեալ տենդի, և գազդղխական ախտի, հարուածոց իժից և կարճաց. զի է խթիչ, գրգռիչ, Ջերմացուցիչ, և քրտնաբեր բնութ՟ք։ Զափն 'ի 6 չէթէ մինչև ց20 խառն ը̄ չորս կամ հինգ ունկի Ջրոյ։ Պարզեալ՝ ևթէ բաղ-

դրիցի ընդ իւղոյ ձիթապտղոյ, կամ քաղցր նշոյ, և կամ տղայոյ, լինի դեղ պատշաճողական ընդդէմ հարուածոց օձից, ցաւոց յօդուածոց՝ միջաց՝ ջլաց՝ և այլոց այսպիսի ցաւոց, օծեալ նոքօք զցաւագնեալ մասունս մարմնոյ, և չփեալ ուժգին. զի բաղադրեն ոգին այն ընդմտանիցէ 'ի ծակոտիս մորթոյ. որով և բժշկի: Վարի և առ 'ի հոտոտալ, որ կարի սթափողական է և զգաստացուցիչ, որով իսկ և իսկ զգաստացուցանէ զնուաղեալն, կամ զթալկացեալն: Գործեալ՝ ունի սա զմասնաւոր գործունէութիւն յինքն ձգել զթոյնս մտեալս 'ի թունաւոր սնկոց, եթէ արբցի ըստ նախաւանդեալ չափու և կանոնի:

Սբիռիթօ տի սալ մառինօ, կամ աչիտօ տի մառինօ, և կամ օսսի մուռիաթիգօ, իտ: օսսի մուռիաթիքում, լտ: ասիտ միւռիաթիք, գղղ: օսսիտ միւռիէթիք, անգղ: Է ոգի ինչ յստակ, թափանցիկ, ադդու, փաղաղիչ, և հոտաւէտ, որ է դեղ փոշտանկուէ, և այլ ամենայն ախտից աւթելոց յուժգնութէ բնութեան. զի է թուլացուցիչ բնութ̃ը: Զափն 'ի 10 ցորենոյ մինչև ցմի տրամ ամբողջ խառն ընդ ութ ունկի՝ ո և իցէ հեղանիւթոյ: Այլև ապաքինէ զվէրս անուանեալս աֆթէ, և պզօտպութիւնս՝ փոքր ինչ օղողելով նովաւ զայնս:

Սբիռիթօ տի սալ տօլչէ, իտ: թուզուն թաթլը ռուհու, թճ: Է տեսակ ինչ ոգւոյ, որ ըստ ներգործութէ գլխովին համաձայնի ընդ սբիռիթօ տի սալ նիթռօ տօլչէի:

Սբիռիթօ տի վիթռիօլօ, կամ օլիօ տի վէթռիօլօ տիսթիլլաթօ, կամ օսսի սոլֆօռիգօ բուռօ, իտ: օսսի սուլֆօռիքում բուռում, լտ: ասիտ սիւլֆիւռիք, գղղ: բիւր օսսի սըլֆըրիք, անգղ: զաճ ռուհու, կամ եաղը, թճ: և ըստ մեզ՝ ոգի կամ իւղ արջասպի: Է հեղանիւթ ինչ յստակ, թափանցիկ, ծանր, թեթևահոտ, սաստկահամ, և փաղաղիչ, և է դեղ ջերմախտից, պիտակաց, զայրագին թանչից, և այլ ախտից աւթելոց յուժգնութէ. զի է թուլացուցիչ և զովացուցիչ բնութ̃ը: Զափն 'ի 10 շիթէ մինչև ցմի տրամ՝ խառն ընդ ութ ունկի ջրոյ:

Սբիռիթօ տի վիթռիօլօ տօլչէ. տես ըզդուօռէ անօտինօ մինէռալէ տէլլ՝ հօֆֆման:

Սբիռիթօ տի վինօ քանֆօռաթօ, կամ ալքօօլ քանֆօռաթօ, իտ: սբիռիթուս վինի քամֆօռաթուս,

Իսկ լեարդն կանկղացուցեալ ցրուէ զուարթս մարմ-
նոյ, արկանելով սաէպ սաէպ 'ի վերայ նորա։

Սգուիլլա, լտ, և իտ: կուրիտոս, յն: Է տեսակ մի ծովային խեչափառի, որ է պահօպան պինային, այսինքն փինէղին, զոր 'ի մեր բարբառ կոչեացուք՝ պինապահ. որոյ ձիրանք չեն ագցանաձև ապարտեալ որպէս հասարակ խեչափառին, այլ սրածայր և ուղիղ քան զնոսին, և 'ի գլուխն ունի երկու եղջիւրս սրածայրս. իսկ միսն կակուղ է և ախորժական ճաշակելեաց, միանգամայն և օգտակար դեղ շնչարգելուե, խոյլից պարանոցի, և միզարգելուե. լուծանէ նաև զքար՝ եթէ գտցի ընդ անցս միզի։

Սգուինանցիա. տես չինանքէ։

Սեբիա, լտ: սեքբիա, իտ: սիւպիա կամ միւրէքէպ պալըղը, տճ: և ըստ մեզ՝ մելանահօս: Է վեցոտնեայ ձուկն ինչ ծովային 'ի ձև պարկի, որ սաէպ հեղու յիւրմէ զհիւթ սեաւ 'ի ծածկել զինքն յորսորդաց. երկայնութի նորա է իբրև երկու ոտնաչափ. իսկ լայնութիւն ձեռաչափ: 'Ի թիկնամէջն ունի ոսկր մի սպիտակ՝ մեծ իբր ձեռաչափ, ամբողջ, կարծր, անկալից, դիւրափշրելի, և աղէհամ, զոր լատինք՝ օս սեբիէ կոչեն. որոյ փոշին լինի դեղ միզարգելութե, և սերմնականթութե. այլև սրբէ զբիծս երեսաց, և զաղտս ատամանց: 'Ի առջևն կողմն գլխոյ ունի երկու կնճիթս, կամ թիակս, որք ծառայեն նմա յուտել և 'ի լողալ: Իսկ միսն համեղ է և ախորժական ճաշակելեաց։

Սեմէն գուաթթռօ ֆռէձիթի մաժօր. տես սեմէնցի ֆռէատէ մաճճիօռի։

Սեմէն գուաթթռօ ֆռէձիթի մինօռ. տես սեմէնցէ ֆռէատէ մինօռի։

Սեմէն մօսքի, լտ: Է երիկամնաձև, և մշկահօտ սերմն ինչ 'ի չափ կորեկի, որ սովորաբար գտանի 'ի կողմանս եգիպտոսի, զոր բնակիչք տեղւոյն 'ի գործ ածեն 'ի դեղ տկարութե ջղաց, սրտի, ստամոքսի, և ուղղոյ. զի է խթիչ, կամ գրգռիչ բնութե։

Սեմէն պատիան. տես անիզում քինէ։

Սեմէ տի լինօ, իտ: քէթէն թօհումու, տճ: պիզըր քէթհան, արբ: և ըստ մեզ՝ կտաւատ. տես զայմանէ զըտան լինօ։

Սեմէն քօնթռա վէռմէս, լտ: սէմէ սանթօ, իտ: խօրասանի, տճ: պիզըր խառասէսին, արբ: Թըր-

մանի, տբ: Է սերմն ինչ երկայնաձև, նուրբ, կա-նաչադոյն, դառնահամ, և անուշահոտ, միանգա-մայն և դեղ հալածիչ ճճեաց և որդանց որովայնի։ Զափն 'ի 20 ցորենոյ մինչև 960։

**Սէմէնցէ ֆռէտտէ մաճճիօռի**, իտ: սէմէն գուատ-թռօ ֆրիճիթի մաճօռի, լտ: տէօրթ պէօիւք սէրին-լէտիճի չէքիրտէքլէր, թք: ախղուրաթի տապա, արբ: Այսու անուամբ այս ցուցանի՝ քառեակ տեսակ զո-վացուցիչ և միզաբեր սերմանց կամ ընդոց, որպիսի են դդմոյ, ձմերուկի, վարնգոյ, և սեխի։ 'Ի սո-ցանէ եւրաքանչիւր զհեղանիւթ ինչ սպիտակ իբրև բղ-կաթն, և 'ի կիր արկանեն ընդդէմ միզարգելութե, և տապագին տենդից. զի են միզաբեր, և զովացու-ցիչ բնութբ։

**Սէմէնցէ ֆռէտտէ մինօռի**, իտ: սէմէն գուատթռօ ֆրէճիթի մինօռի, լտ: տէօրթ քիւչիւք սէրինլէտիճի չէքիրտէքլէր, թք: Այսու անուամբ նշանակին քառ-եակ տեսակ փոքրիկ զովացուցիչ և միզաբեր սեր-մանց. որպիսի են անտեռուկի, եղերդի, հազարի, և վայրի հազարի։

**Սէմինէռւօզօ**. այսու անուամբ իմանի՝ կիսա-ջղեան, և է մի ան ինչ սրտնից։

**Սէմիսբինատօ**. բառիւս այս նշանակի՝ կիսողնեան։ Է մին 'ի մկանանց ողին։

**Սէնաբէ**. տես սինաբիս նէկռա։

**Սէնաբիդմօ**, կամ էմբիաստռօ տի սէնաբէ, իտ: հարտալ եաքըսը, թք: և ըստ մեզ՝ սպեղանի մա-նանխոյ։ Է ազդու և օգտաւէտ զանգուած ինչ բա-ղադրական, կազմեալ 'ի մանանխոյ, 'ի չոր թզոյ, և 'ի բարկ քացախոյ. որ լինի դեղ սաստիկ և հրատապ տենդից՝ արկանելով 'ի ներբանս։ Բայց 'ի գիպուածս անդամալուծութե, յօդուածացաւութե, տենդատու-թե, ջղացաւութե, գլխացաւութե, փորհարութե, ցաւոց ստամոքսի, և որովայնի օրէն է դնել 'ի վե-րայ վշտացեալ մասին մարմնոյ, և թողուլ այնպէս իբր ժամս 24. այլ եթէ ոչ փարատէ զցաւս նախայի-շատակեալս, յայնժամ վերստին պարտ է վերանորոգ-նել ըստ նախաւանդեալ կերպի։

**Սէնիչի**: Է անուն երեք ուռուցից կամ խոյլից 'ի վեր երևելոց 'ի մասնաւոր մասունս կոկորդին։

**Սէննա**, կամ քասսի սէննա, լտ: սէնէ, գղղ: սի-նամէքի, թք: և ըստ մեզ՝ աճալ։ Է բոյս յաճախէ

'ի վերին եգիպտոս. որոյ ցօղունն բարձրանայ յերկրէ մինչև ցմի և կէս ոտն, և արձակէ ոստղունս նուրբս և երկայնաձիգս և դառնահամս, և տերևս փոքրիկս երկայնաձևս և կանաչս: Բանայ և ծաղիկս բոլորակաձևս և հինգթերթեանս: Բերէ և պատեան լինչ աղեղնաձև տափարակ, և թաղանթային, յորում բազկանեան սերմունք բոլորչիք, և թուխք: Տերև այսր բուսոյ ազնիւ համարի՝ եթէ լցէ թարմ, անախորժահոտ, 'ի վերին կողմն կանաչ, իսկ 'ի ներքոյ դեղին. յորմէ յաճախ կազմեն դեղս մաքրողականս կամ լուծողականս. զի է լուծողական և թուլացուցիչ բնութ̃: Զաւփն 'ի չորս տրամէ մինչ ցվեց, զոր օրէն է եռացուցանել վեց կամ եօթն ունկի ջրով. յաւելլով 'ի նոյն մի տրամ՝ անիսոն. երկու կամ երեք տրամ՝ քրէմօռ տը թառթառօ. և երեք ունկի՝ մանանայ. և առեալ լինի ըմպելիս այս 'ի պահ առաւօտուն 'ի ծոմուստ: Երբեմն հնար է փոխան քրէմօռօ տը թառթառօյի դնել զմի և կէս տրամ՝ խաշնդեղ, որպէս և փոխան անիսոնի դնել զկինամոն: Ընդ այսպիսի գիտել արժան է՝ զի յառնուլ քո 'ի կիր զտերևս զայս, պարտ է նախ մաքրել զկանթս և զշեղս որք գտանին 'ի նա. ապա թէ ոչ կարէ պատճառել զփուքս և զխիթս որովայնի:

Սեսամում, լտ: սէսամօ կմ՛ սիսամօ, իտ: սէսամ, գղղ: սուսամ, տճ: սիմսիմ, արբ: բէլիշէ, կամ կիւնճիւթ, և կամ սուսէն, պր: և ըստ մեզ՝ կնճիթն, կամ շուշմա: Է ունդ կամ սերմն լինչ մանր, բոլորչի, դեղնագոյն, քաղցրահամ, և իւղալից, որ լինի 'ի կերակուր թռչնոց, միանգամայն և մարդկան դեղ ցաւոց որովայնի, և կրծոց. զի է մեղմիչ բնութ̃: Զաւփն 'ի կէս տրամէ մինչև ցմի՝ խառն ութ ունկի ջրով: Զնոյն գործունէութիւն ունի սորա իւղն: Բոյս սորա հասարակօրէն բուսանի 'ի վերին եգիպտոս, և 'ի հնդկաստան, որոյ ցօղունն է ուղիղ, սատուար, երկայն իբր մի և կէս ոտնաչափ, կարծր, բազմածիւղ, և հիւթալից: Տերև նորա է երկայնաձև սրածայր, պարարտ, և կարմրախառն կանաչ. յորմէ կազմեն դեղ կշռացաւութեն, շնչարգելութեն, և նուաղութեն ամսական պարտուց կանանց:

Սեվրում. տես հրասուսմէ:

Սետում մաեռուս, կամ սէմբէռվիվում, լտ: սէմբէռվիվօ մաճճիօռէ, իտ: ժուպառպ տէ թուա, գղ՝

սիփէլ, կամ հօուզլիք, անգղ: սաքսը կիւղէլի, տճ: Է բոյս մշտադալար յաճախեալ 'ի վերայ որմոց իբր մի և կէս ոտնաչափ բարձրութը: Տերև սորա երկ-կայն, լայն, պարարտ, սրածայր, մշտականաչ, հիւթալից, և տտպահամ: Ծաղիկն ծիրանագոյն, և բազմաթերթ: Պտուղն դնտակաձև, և նուրբ սեր-մամբ: Իսկ արմատն փոքր է և թելալից: Սա կոչի և եօվիս պարպա. որոյ տերևն դեղ է լուսնոտութ և ախտի ցնցականի՝ որ 'ի վերայ գայ մանկանց. զոր պարտ է լուսել 'ի սանդի, և տալ լուսնոտաց մի փո-քրիկ գդգալ երկիցս յաւուրն: Նոյնպէս դեղ է բորբոքման, կիզողութե, յօդուածացաւութեան, և խոց խեցգետնեայ, օծելով այնու զվշտագնեալ մա-սունս մարմնոյ:

Սէտում մինուս, կամ սէմբէռվիվում մինուս, լտ: տամ կամ քաւեա փօռուղը, տճ: չայիլ ալէմ, արբ: լիւքա կամ հէմիշին, պր: Է բոյս բուսեալ 'ի վերայ պարսպաց, որմոց, քարանց, և 'ի մէջ պարտիզաց. որոյ ցօղունն է փոքրիկ, տարածողական, պարարտ, թամբալից, և տտպահամ: Տերև սորա է մանր, բոլորշի, թանձր, պարարտ հիւթալից, կապտագոյն, և տտպահամ. ծաղիկն փոքրիկ, բազմաթերթ. պտուղն փոքրիկ և սերմնաւոր. Իսկ արմատն մանր է և թելալից: Այս բոյս ունի մասնաւոր գործու-նէութ 'ի փարատել զքաղցկեղ և զխոց խեցգետնի: Հիւթ սորա խառնեալ ընդ հոյկաւոյ լինի դեղ վիրաց, նոյնպէս շահաւէտ է երախայից և պարարտ անձանց, որոց սովորաբար յանութս և յայլ անդամս 'ի վեր երևի աղտականման պալար ինչ պատճառեալ 'ի քրտանց:

Սէրբէնթառիա վիռճինիանա կամ արիսթօլօքիա սէռբէնթառիա, լտ: լա սէռբանթէռ, գղղ: վէրճինէլ սնէյքռութ, անգղ: Է բոյս ինչ ամերիկեան՝ յազգէ տղնգան. որոյ ցօղունն է երկայն իբր բաղկաչափ, ծնրաւոր, և ճիւղալից: Տերևն նման է տերևոյ բա-ղեղան, բայց կակուղ և հոտաւէտ քան զնա: Ծա-ղիկն մանր և բոլորշի՝ ըստ նմանութ ծաղկանց տղնգան. գոյն նորա երբեմն մթին կանաչ է, և երբեմն գեղին որ 'ի վեր երևի առ կանթիւ տերևոյն: Պտուղն մեծ է և տանձաձև, յորում է սերմն նուրբ, և սեաւ: Իսկ արմատն մանր, թեթև, մթնագոյն արտաքուստ, և բաժանի 'ի բազում թելանման ոստս, ունելով

զհոտ վաւերախանաւ, և զհամ քաղցրոյ · զոր ամերիկա-ցիք ժողովեն, և չորացուցանեն 'ի հովանաւոր տե-ղիս, և առաքեն 'ի վաճառ · որ է դեղ ազդողական և կարի գործունեայ 'ի դիպուածս փտախտութե, քաղցկեղի, Ջերմախտից, մանաւանդ Թիֆօ անուա-նեալ Ջերմախտի, և միջահատական տենդից · զի է խթիչ, թափանցիկ, զօրացուցիչ, և քրտնաբեր բնու-թե : Չափն 'ի կէս տրամէ մինչև ցերեք, զոր օրէն է եռացուցանել մի լիտր ջրով, և տալ հիւանդայ ժամէ 'ի ժամ մի սկահակ արճոյ, մինչև լցցի տասն ունկի յաւուրն : Եւ 'ի մասնաւորի 'ի յարգի ունին զսա 'ի դիպուածս տկարութե ջղաց, և աւշային անօթոց, թալկութե, թմբրութե, և խլուածոց 'ի մկանունս մարմնոյ, մանաւանդ յորժամ խառնի ընդ երեք տրամ՝ քինաքինաւ, և ընդ կէս ունկի՝ քօ-ֆէքցիոնէ ալքէռմէզի : Զայս արմատ ամերիկացիք վարեն և 'ի դեղ հարուածոց թունաւոր օձից :

Սերբէնս, կամ անկուիս, և կամ քօլուպեռ, լա: սէրբէնթէ, կամ անկուէ, և կմ՞ ալիշեար, իտ: եըլան, ան: էֆֆա, կամ Թառապան, կամ հայիէ, կամ հա-նէշ, արբ: խալմ, կամ մառ, կամ շարման, կամ ջի-այս, և կամ ալէառխաման, պր: և ըստ մեզ՝ օձ: Է տողուն ինչ խորամանկ և նենգաւոր, որոց ոմանք են փոքր իբրու բաղկաչափ, իսկ ոմանք յոյժ մեծ և գժնդակ, որք և յաշխարհն հնդկաց այնչափ անին, մինչ զի լինին իբրև զվիշապս սոսկատեսիլս : Ոմանք են անթիւնք, իսկ ոմանք չարաթիւնք : Թէպէտ թոյնք սոցա մահաբեր են, այլ միսքն շահաւէտք · խա-ռոց փոշիացուցեալ, կամ եփեալ 'ի ջուր և արբու-ցեալ, դեղ է ճշմարիտ հիւթոց, ապականութեան արեան, ախտից թոքոց և կրծոց, և միզարգելման · զի են գրգռիչ, և մաքրիչ բնութեամբ : Չափն 'ի քասն ցորենոյ մինչև ց60 յաւուրն : Զնոյն գոր-ծունէութե ունին սոցա լեարդքն, և սիրտքն : Իսկ ճարպք՝ ունին զմաննաւոր գործունէութե 'ի մե-մել և 'ի փարատել զցաւս յօդուածոց, օծելով միայն զվշտացեալ մասունս մարմնոյ :

Սերբիլլում, կամ Թհիմուս սէրբիլլում, լա: սէր-բիլլօ, իտ: Թէն սէռբօլէ, գղղ: մըռհըր օվ գայմ, կամ ուվայլտ գայմ, անգղ: գէքլիք օթու, ան: սահ-թեռ, կամ նեղառ, արբ: ավիշ, կամ գինաքինի և կամ շիւթիւրբա, պր: և ըստ մեզ՝ կաքաւախոտ :

Է խոտ քաղցրահոտ․ որոյ ցօղունն է փոքրիկ, քառանկիւնի, կարծր, կարմիր, և թաւշաւոր։ Տերևն փոքրիկ․ և լայն՝ նման ըստ իմիք ահրևոյ ծոթրինի․ Ծաղիկն փոքրիկ, և գոյն նորա սովորաբար սպիտակ է, բայց լինի և ծիրանագոյն, բերէ և սերմն բոլորշի։ Իսկ արմատն մանր է և թելալից։ Բուսանի 'ի լերինս, 'ի քարուտս, 'ի յաւազուտս, և 'ի յագարակս իբրև ձեռաչափ բարձրութ․ որոյ տերևն լինի դեղ ցաւոց որգանդի, ստամոքսի, և գլխոյ, և նուաղութեան ամսական պարտուց կանանց․ զի է խթիչ և զօրացուցիչ բնութե՞։ Զնոյն գործունէութեան ունի սորա իւղն։

Սեքալէ չէռնէալէ, կամ սեքալէ, լտ։ սէկալա, իտ։ սէկլէ, գղղ։ ռայ, անգղ։ չավառր, տճ։ աւէս, կամ զիւնէյաւ, արբ։ գէնքէրան, կամ տէվ քէնտ տիւմ, պր։ և ըստ մեզ՝ աշարայ, կամ հաճար։ Է բոյս երկայն իբր 'ի չափ մարդոյ․ զորոյ ունդն կամ սերմն փոխիացուցեալ վարեն 'ի պէտս զանազանս տեսակ մեղմացուցիչ և կակղացուցիչ թանձրամթանից․ լինի սա և 'ի կերակուր անասնոց, և 'ի ժամանակս սովու նաև մարդկան, որ է յոյժ վնասակար․ զի բազում անգամ պատճառէ զթմբրութիւն, զպտոյտ գլխոյ, զտկարութիւն ստամոքսի և ջղաց, և երբեմն ևս ցնցումն մկանանց, զքաղցկեղ, և զկաթուածս, բայց եռացուցեալ կորուսանէ զվնասակար որակութիւնս իւր։ Իսկ թեփն՝ որ է կակղացուցիչ բնութե՞, 'ի կեր արկանի 'ի գրեխս'ի դեղ թանչից, և կրծոց։

Սեքունտինէ մուլիէռիս, լտ։ սեքօնտինա, իտ։ մէչիմէթ, կամ օղլան տուվաղը, և կամ էշ, տճ։ խալաս, արբ։ Այսու անուամբ նշանակի ծինն կամ աղան․ որ է մաշկեղէն մասնլից գնտակաձև և արիւնաշաղախ պարկն, յորում պարունակի մարմին երախային՝ մինչ ծնանի։ Սա ըստ ոմանց ունի զգործունէութիւն 'ի սրբել զբիծս երեսաց, 'ի լուծանել զպայտուցս և զցաւս արգանդի, և 'ի փարատել զլուսնոտութիւն, զոր մարթ է 'ի կեր տանել եթէ 'ի ներքուստ 40 ցորենաչափ ըմպելով, և եթէ արտաքուստ օծելով։

Սթաբէսէ․ այսու անուամբ իմանամք զմին 'ի փոքրիկ ոսկերաց 'ի փորոք ունկան։

Սթաքհիս ակուիս, կամ տէլբհինինիում. սթաքհիս

դառնադաշ օթու, տճ: Է բոյս բուսեալ 'ի գաղղիա, 'ի սպանիա և 'ի փորթօկալ երբ մի և կէս ոտնաչափ բարձրութեամբ: Տերև սորա սրածայր է և մթին կանաչ: Ծաղիկն հասկաձև, ծիրանագոյն, հոտաւէտ, և դառնահամ. զոր եփեալ 'ի ջուր և արբուցեալ, դեղ է փսխման, և ցնցման ստամոքսի: Զափն 'ի կէս տրամէ մինչև ցմի և կէս: Այլև օգտէ ընդդէմ ցաւոց գլխոյ, և արգանդի. մեղմէ նաև զչարութիւն թունից:

Սթիթիքեցցա. տես տուախթիա ալըի:

Սթիլօֆառինձէօ. անուամբս նշանակի՝ մին 'ի մկանանց, որք նպաստեն 'ի կլանել:

Սթիպիում. տես անթիմօնիում:

Սթիռաքս, լտ: սթօռաչէ, իտ: պուհուրմէյրէմ, կամ դառակիւնլիւք, և կմ դաղա պուհուր, տճ: և ըստ մեզ՝ ստորաքս, կամ ստորակս, և կամ ոխուռակիթ: Է խէժ՝ որոյ երկին է տեսակ. մթին սպիտակ, և կարմիր. մթին սպիտակն՝ զոր ածեն յամերիկոյ, ջերմահամ է իբրև զբալասան, որ կոչի յիտալեաց՝ սթօռաչէ քալամիթա. յորմէ կաղմեն դեղ անդամալուծութեան և սխտից ջղաց աւթեւլոց 'ի ակարութէն, զի է խթիչ կամ գրգռիչ բնութեամբ:

Սթիռաքս լիգուիտուս, կմ լիգուիտամպառ օթիռաչիֆլուա, լտ: սթօռաչէ լիգուիտօ, իտ: դառակիւնլիւքեաղը, տճ: ահենի գլէֆէ, կմ մեա, որ Է դոյացուն ինչ հանեալ 'ի սաշինէ. յորմէ կաղմեն դեղ ընդդէմ բորբոտութեան, և քոսոտութեան:

Սթռամօնիում, կամ տաթուռա սթռամօնիում, լտ: սթռամօնիօ, իտ: բօմ էբինէիւս, գղղ: թհօրն էբբըլ, անգղ: Է բոյս ինչ ծանրահոտ, բուսեալ 'ի բաղում տեղիս ամերիկոյ իբրև երկու ոտնաչափ բարձրութեամբ: Տերև նորա լայն է և անկիւնաձև, նման ը իմիք տերևոյ շնխաղողոյ: Ծաղիկն սպիտակ և զանգակաձև. իսկ պտուղն բոլորչի՝ մեծութեամբ 'ի չափ ընկուզոյ. ունելով 'ի վերայ փուշս մանտունս, սրածայրս, և հաստս անախորժս. և 'ի մէջ իւր ունի քառակ խորշս նուրբս, յորս բազկանան սերմունք փոքրիկք և երիկամնաձևք: Տերև այսր բուսոյ, որպէս և պտուղ նորա, թէպէտ են թունաւոր և թուլացուցիչ բնութեամբ, լինին դեղ աղդու ընդդէմ խելագարութեան, ախոնդանոտուն, ցնցակնաւոր ախտից և անդամալուծութեան աւթեւլոց յու-

ժեղութէ: Չափն 'ի չորրորդ մասանէ միոյ ցորենոյ մինչև ցվեց ցորեան: Եւ եթէ ոք առաւել կերիցէ 'ի սմանէ առատագոյն քան զչափն պայմանեալ, յայնժամ առթէ զթմբրութիւն, զպտոյտ գլխոյ, զքնափութիւն. զցուրտ քրտան, զործումն, զխիթս որովայնի, զցն-ցումն մկանանց, և երբեմն եւս զմահ: Այլ դարման սորա գինին է, քանզի օրէն է խնկոյն մատուցանել նմա յարբումն զլեմոնաթա, զքացախ, զկաթն, ըղ-ջրախառն մածուն են:

Սթռանկուրիա, կամ ստրանկուրիօնէ տի օրինա, կամ տիֆիկօլթա տի օրինէ, իտ: տիզուրիա, լա: սիտիկ զօռու, թր: խուկիուլ էլ պէվլ, արբ: և ըստ մեզ՝ դժուարամիզութիւն, կամ միզադրաւութիւն: Է ախտ ինչ միզելոյ չիթ առ չիթ. տե՛ս և զպայմանանէ հա. ա. երես 141:

Սթօմաքէուս, կամ վէնթրիքուլուս, լա: ստօմա-քօ, կամ վէնթրիքօլօ, իտ: մաատէ, կամ գըրթնէ, կամ գըրպըզէ, արբ: ճէվլազէ, կամ գիրշա, կամ գէ-ռէկ, և կամ շիրա, պր: մէյտէ, թր: և ըստ մեզ՝ ստամոքս: Անունս այս ըստ անդամազննաց կոչի և խախացոց. որով նշանակի, անօթ ինչ պարկաձև, մաշկեղէն, ծոցաւոր, և ջղալից. զետեղեալ ընդ մէջ լերդի և փայծեղան ընդ ստոծանեաւ: Արդ՝ անօթս այս ունի զերկեակ ձեղքուածս, կամ ծակս, որք են նորա իբր պաշտօնեայք. մին հաստատեալ կայ ընդ ստորին ծայրիւ որկորոյն, որ կոչի՝ էսօֆա-կօ, և միւսն՝ ընդ ծայրիւ փորոտեաց: Բայց գիտել արժան է, եթէ կերակուրք ժամանեալք 'ի ստա-մոքսն ընդ ճանապարհ որկորոյն, կարեն յամենալ անդէն երբեմն առաւել, և երբեմն նուազ. որով-հետև 'ի ձեռն վերոյիշեալ ձեղքուածոյն երբեմն ընդլայնեալ տարածանի, և երբեմն անձկացեալ կծկի՝ ստամոքսն. ուստի անձինք որք վիճակեալք են քաջառողջ կազմուածոյ, առաւել զօրաւոր է 'ի նոսա գործիքն երկրորդ ձեղքուածոյ. այսինքն այն՝ որ հաստատեալ կայ ընդ ծայրիւ փորոտեաց, և 'ի ձեռն այոր զօրութեն բուռն կծկեալ զստամոքսն, ոչ թողու տան կերակրոցն խճողելոյ 'ի ստամոքսի իսկ և իսկ թափիլ յաղիսն, մինչև բարիոք եփեալ փոխարկիլ նոցա 'ի հեղանիւթ: Այլ պատշաճագոյն համարիմք յաւելուլ և զայս, եթէ յընդլայնիլ անդ ստամոքսի ընկալեալ կերակրովք, մարթ է տանիլ մինչև ցչորս

օխայ ծանրութեն կերակրոյ և ըմպելւոյ ։

Սիալակօկա ։ Է անուն ընդհանուր՝ որով իմանամք զդեղորայս, որք կարի տաստացուցանեն զլորձունս, զտողունս կամ զխուքս բերանոյ, որպիսի են ոնգիկն, Հօտխուլ քահարն են ։

Սիէռօ տի լաթթէ, իտ ։ սէռում լաքթիս, լտ ։ բէթիլէ, գղղ ։ օիրուժկա, տճ ։ Է անուն ընդհանուր՝ որով իմանի շիճկային և զատագոյն մասն կաթին՝ ելուզեալ տորատ, կամ հիւթօմն լեմոնի, որ ընութե թուշացուցանէ և զովացուցանէ զտապ արեան, և սրտի, անօսրէ զթանձրամածութն տողունից. և մաքրէ զարիւն 'ի տապային աղի հիւթոց, և միանգամայն տապաքինէ զջերգողութի, զբորոտութի, զցաւս յօդուածոց, զտանաուն, զդալուկն, զցաւս աչաց, և զսքօռպուտօ անուանեալ ախտն. մանաւանդ յորժամ խառնի ընդ խաշնդեղի ։ Զայսն 'ի մի լիտրէ մինչև ցերկու և կէս յաւուրն ։ Զայս եթէ կամիս առնել, առ մի լիտր զկաթն կովու, և հեղ զայն յապիկած պղնձոն, մերձեցո 'ի հուր ածխոյ. և յորժամ սկիզբն առնէ եռալ, արկ 'ի նա երկու կամ երեք տրամ՝ զտրեալ և աղնեղ տորան՝ կոչեցեալ յիտալացւոց՝ քաւէմօռ տի թառթառօ. ընդ նմին և երեք կամ չորս դրգալ ջուր հասարակ. և միանգամայն մեղմ և հանդարտ խառնեա զայն փայտեայ դրգալիւ. և վերստին եռացո զայն մինչև եւցէ թանձրանալ նիւթ յերեսս կաթին, և ինքն փոխարկեսցի 'ի շիճուկ ։ Եւ յետ քամելոյ զայն ընդ խիտ կտաւ, առ զսպիտակուցն ձուոյ, փրփրեցո զայն փոքր ինչ շիճկաւ յայլ անօթ. և հեղ զայն 'ի վերայ շիճկին, դիր զամենեսին միասանգամ յեփ. և յետ եռալոյ նորա քամեա վերստին ընդ թուղթ դորշ. և ահա այն է շիճուկն կաթին զոր խնդրես ։ Վարի և 'ի դեղ օրգինոյ, և ախտից թոքոց, նաև 'ի բանալ զխցանս աւիշկեան անօթոց ։ 'Ի սորին կարգս դասի և սիէռօ տի լաթթէ քօն ալլումէն՝ այն է շիճուկն կաթին խառն ընդ սպաղեղի. և ըստ գղղ. փըլթի լէ ավէք ը՛ ալէօն. որ լինի դեղ յարմար 'ի հոսմունս արեան տեռատեկանի ։

Սիէռօ տի լաթթէ մինօզօ, իտ ։ սէռում լաքթիս մինօզում, լտ ։ բըլթի լէ ավէք լըվէն, գղղ ։ ուվէյ օմիլչ ումիտ վայն, անգղ ։ շառաշլը սիրութկա, տճ ։ Է տեսակ ինչ շճկի կաթին, որ կազմի ըստ նա-

խառնդեալ կերպի խառնելոյ ընդ սպիտակ գինւոյ փոխան տորայ, զոր առեալ 'ի կիր արկանեմք 'ի բժշկութե՛ն ջղական կամ հրատապ տենդից. զի է թեթեւ խթիչ և սնուցիչ բնութ՟: Եւ առեալ լինի չիճուկս այս փոխանակ հասարակ ըմպելեաց՝ մինչև լցցի լիտր մի յաւուրն: Կայ և այլ տեսակ չճնի կաթին. զոր յօրինեն նոյն կերպիւ, ընդ որում խառնեն և մի և կէս ունկի՝ լուծեալ մանանխոյ, զոր 'ի վար արկանեն 'ի բժշկութե՛ն նուրբ ջղական տենդի, հնագոյն յօդուածացաւութե՛, անդամալուծութե՛, ջրգողութեց, և ոտնացաւութե՛: Չափն մի գդալ սրճոյ չորս կամ հինգ անգամ յաւուրն, յաւելլով 'ի նոյն փոքր ինչ շաքար:

Սիլիգուա տոլչէ, կամ չէռաթօնիա սիլիգուա, կամ քառռուպա, իտ: չէռաթօնիա սիլիգուա, լա: քառուբժ կամ քառռուպ, գղղ: քէրօպ թրի, անգղ: գէչի պոյնուզու, տճ: խառռուպ, արբ: թէռմիչ, կամ թէմի, պր: և ըստ մեզ տառուգաբանի՝ եղջեւրամիրգ: Պտուղ ինչ երկայն իբրու թզաչափ, տափարակ, և սեւակեղեւ, և 'ի միջի պարունակէ դդորչագոյն գոյացութի ինչ 'ի խորշս խորշս մաշկատեսակ. յիւրաքանչիւր խորշս ունի և կորիզս կարծրս, տափարակաձեւս, և կարմրագոյնս, և այն գոյացութի է կարծր, և համեղ յոյժ յորժամ կատարեալ հասունանայ. միանգամայն և պատուական դեղ հազից, շնչարգելութեց՝ առթելոց 'ի սաստիկ հիւթոց, քնափութե՛, և տկարութե՛ ստամոքսի. զի է կակղացուցիչ և քաղցրացուցիչ բնութ՟: Չափն մի ունկի, զոր պարտ է եռացուցանել մի լիտր ջրով:

Սիմառուպա կամ գուասսիա սիմառուպա, լա. և իտ: սիմառուպ, գղղ: պիթթըր ուէմըլ, անգղ: Է բազմամեայ և անհոտ կեղեւ ինչ թեթեւ, երկայն, լայն, մթին գեղին, և դառնահամ, զոր կորզեն յարմատոյ իւրեք ծառոյ կոչեցելոյ լատինական բարբառով՝ գուասսիա սիմառուպա, որ սովորաբար բուսանի 'ի հնդիկս, և յամերիկայ. լինի 'ի սեպս ձորացեալ վայրաց: Զայս կեղեւ արմատոյ լուծեալ 'ի փոշի մանրամաղ, կամ եփեալ 'ի ջուր՝ և արբուցեալ, դեղ է փորհարութե՛, և հոսման արեան պատճառելոց 'ի յուժգնութէ, զի է սեղմիչ և թուլացուցիչ բնութ՟: Չափն յերկու տրամէ մինչև ցչորս յաւուրն՝ խառն մի և կէս լիտր ջրով:

Սիմֆիթում կմ՛ քօնսօլիտա մինօր, լտ: քօնսօլիտա մաճճիօռէ կամ սինֆիթօ, իտ: կռանտա քօնսուտա, գղղ: պօմմըն քըմֆրէյ, անգղ: գառաքաֆէս, տճ: Է բոյս ինչ խժահամ. որ սովորաբար բուսանի 'ի կողմանս բարեխառն և իտալիոյ իբր երեք ոտնաչափ բարձրութ̃բ, և մատնաչափ ստուարութ̃բ: Տերև նորա է երկայն, լայն, սրածայր, թաւխաւոր, և անհարթ: Ծաղիկն բաժակաձև, կամ լաւ ևս ձագառաձև, սպիտակ հարեալ 'ի գոյն կարմիր: Սերմն սեաւ և փայլուն 'ի ձև գլխոյ իժի: Իսկ արմատն երկայն, ստուար, դիւրաբեկ, արտաքուստ սեաւ, իսկ 'ի ներքուստ սպիտակ, և խժային. յորմէ կաղմեն դեղ փորհարութ̃, հոսման թանկէից, երիկամնաժետութե, և թքման արեան. զի է կակղացուցիչ և ըմբռնիչ բնութ̃բ: Չափն 'ի վեց տրամէ մինչև ցութ յաւուրն խառն ընդ մի և կէս լիտր ջրոյ:

Սիմիա, կամ սիմոս, լտ: շիմիա, կամ պէութօնչչիա, և կամ շիմմիօնէ, իտ: մայմօն, տճ: գըրթ, էռս, կամ սատէն, և կամ ռուպպա, արբ: բուշինա, պր: և ըստ մեզ՝ կապիկ. Թէպէտև կենդանի փոքր է իբրև զաղուէս, այլ առաւել ճարտար և ուշիմ քան 'զնա, և քան զամենայն անբան կենդանիս. մինչև մարթ է սահմանել զնա՝ կենդանի մարդակերպ: 'Ի լեռնս կամ 'ի փուշտս ոմանց կապկաց գոյանայ քար ինչ փոքրիկ, գնտակաձև, և դիւրաբեկ. զոր իբր դեղթափ 'ի կիր ածեն ընդդէմ թունից, ջերմատոչոր տենդից, և ժանտախտից. այլ գործածութի ո̃ր անծանօթ է եւրոպացի բժշկաց: Գտանին սոքա 'ի ջերմ գաւառս հարաւային ասիոյ, և յափրիկէ. կարեն կեալ 'ի ցրտային երկիրս, այլ ոչ ծնանին: Զմիս սոցա՝ որք լի են իւղով և ցնդական աղիւ, 'ի վեր արկանեն 'ի դեղ փորհարութ̃: Իսկ սիրտն՝ օգտէ յիշողութեան և զգաստութեան մտաց:

Սինապիս նիկրա, լտ: սէնապէ, իտ: մութառտ, գղ: քըմմըն մըսթարտ, անգղ: հարտալ, տճ: սիւֆֆէն կամ հարտալ ռօշալ, արբ: խարէնտան, կամ չիր չիր, պր: և ըստ մեզ՝ մանանեխ: Է բոյս՝ բուսեալ յագարակս և 'ի բուրաստանս իբր երեք կամ չորս ոտնաչափ բարձրութ̃բ: Տերև նորա նման է տերևոց շողգամի, բայց փոքր և անհարթ քան զնա: Ծաղիկն փոքրիկ, քառեակթերթեան, և դեղին. բերէ և

սերմն նման կտոց թզոյ, այլ գոյն նորա երբեմն սեաւ է, և երբեմն սպիտակ. խակ համ նորա և հոտ 'ի հասանելն այնչափ բարկ է և ազդու, մինչ զի լռսեալ կամ ծամեալ թորեցուցանէ յաչաց զարտասուս. և պտղոյ է համարել զսա 'ի նաւազնման լուսնոյն, զի յայնժամ լինի առաւել սաստկագոյն, և պահի եւս ճերկար: 'Ի սմանէ յօրինեալ գեղ ազդու ընդդէմ անդամալուծութեան, ջղային գժուարամարսութեան, չնչարգելութեան, ջրգողութեան, և միզարգելութեան, աքօպուլթօփ, և քօմաթօսէ անուանեալ ախտի. զի է թուլացուցիչ և միզաբեր բնութեամբ: Այլև բանայ զխցանս աւիշկեան անօթոց: Զամծն 'ի յերկու տրամէ մինչև չորս: Այս սերմն 'ի կիր արկանի եւս 'ի բաղադրութեան օլինաբիզմի:

Սինկիօգգա. տես սինկուլթուա:

Սինկուլթուա, լտ: սինկիօգգա. իտ: ընչգլըդ. տճ: հօզզէա, կամ Ֆիւլակ, կամ մէաքան, արբ: խաքէակէկ, կամ թէաաեքրէկ, կամ զերոա, կմ՛ աշքէ, և կամ հէքէրշաք, պր: և ըստ մեզ՝ հեծկլտանք. տես զայսմանէ հա. ա. երես. 261:

Սինքօբէ. տես սկէնիմէնթում:

Սինօվիա. ըստ անդամազննաց նշանակէ՝ հիւթ ինչ խժային, որ գտանի յամենայն շարժական յօդս, կամ 'ի յօդուածս մարմնոյն:

Սիռօքքօս, լտ: շիռօքքօ, կամ շիռօքքօլա, և կամ շիլօքքօ, իտ: շըռօպ, տճ: և ըստ մեզ՝ շարապ: Է անուն անուշակ և ախորժելի հոտանուտ հիւթոց կազմելոց յանուշարար նիւթոց, որպէս 'ի շաքարէ և 'ի մեղրէ եռացուցանելով զնոսա ընդ բուսոց, Է պտղոց և ընդ սերմանց, և ընդ այլոց նմանեաց, զորս վարեն 'ի պէտս պէսպէս գեղորէից բարեխառնութեան և ախորժելի քմաց:

Սիքօմօռուս, կամ Ֆիքուս էճիփթիքա, լտ: սիքօմօռօ, կամ սէքքօմօռօ, իտ: Ֆրաօն ինճիրի, տճ: կիւմմէզ, կամ ճիւմմէզ, արբ: հիճառ, պր: և ըստ մեզ՝ մոլաթզենի, կամ ժանտաթզենի: Է ծառ մեծ և սաստալից, որոյ բունն է կարծր, ուժեղ, սեաւ և տևական. զորոյ հերձեալ զփայտն, արձակէ հիւթ ինչ սպիտակ, կաթնեբանգ, յորմէ կազմեն գեղ հաւբուածոց օձից, կարծրապինդ ուռուցից, և վիրաց հնացելոց. զոր մարթ է 'ի վար արկանել արտաքուստ և 'ի ներքուստ: Տերևն նման է տերևոյ թթոյ,

բայց անհարթ քան զայն։ Բերէ պտուղ երկիցս 'ի տարւոջ, և է բոլորշի, և քաղցրահամ նման թզոյ. այլ ոչ սերմնալից իբրև զնա. մէջն խոռոչաւոր, յորս բաղկանան թելք նուրբք. գոյացութիւն այսր պտղոյ մեղմապէս լուծիչ է բնութեան և զովացուցիչ, որով օգտէ կրծոց, և ստամոքսի։ Բուսանի 'ի կողմանս Եգիպտոսի։

Սէֆիլիտէ. տե՛ս մօրպօ վէնէռէօ։ Դարձեալ, անուամբս այս իմանի՝ ախտն ելեփանդական, կամ ուռկութիւն, զոր Թուրքք կոչեն՝ ճուզամ հիլլէթի, և արաբացիք՝ ճիւզամ, կամ ճուզամ. իսկ պարսք՝ լէրրէ։

Սմարիս, լտ։ Է ձկնիկ ինչ ծովային, զորմէ ասեն լինել ազգ ինչ անճոկայի. և ասեն թէ միս նորա՛ դեղ է հարուածոց կարճի, և խածուածոց կատաղի շանց, և թէ առատացուցանէ զկաթն կանանց։

Սմիլաքս սառսափարիլլա, կամ ուտրէս սառսափարիլլէ, լտ։ սալսափարիլլա, իտ։ սալսըփառէյլ, գղղ։ սարսէփիէրիլլէ, անգղ։ սարսաուա, տճ։ էշպիհ, արբ։ Է հաշակաւոր արմատ ինչ ոստալից կամ վարսաւոր, սպիտակ և ալեւրալից 'ի ներքուստ. իսկ արտաքուստ մթին կարմիր, կամ սեաւ, և կնճռալից. երկայնութիւն նորա 'ի հինգ ոտնաչափէ մինչև ցեօթն. բայց համեմատութեամբ երկայնութեան կարի նուրբ է. համով գաղջ է միանգամայն և սառնային. յորմէ կազմեալ դեղ ազդողական ընդդէմ գաղղիական և ելեփանդական ախտից, ցաւոց յօդուածոց, ոտնացաւութեան, հոսման վավաշ հիւթոյ, քորոտութեան, և ընդհանրապէս ընդդէմ ամենայն հնագոյն ախտից և վիրաց պատճառելոց յապականութենէ արեան. զի է թեթեւապէս թուլացուցիչ, քրտնաբեր, և մաքրիչ բնութեան։ Չափն 'ի յերկու տրամէ մինչև ց12, զոր պարտ է եռացուցանել 'ի մէջ աղիկած պուտան մի և կէս լիտր ջրով, և առնել լինել ըմպելիս այս 'ի միջոցի 24 ժամուց։ Բոյս նորա սովորաբար բուսանի յամերիկայ, և յարեւմտեան հնդիկս. լինի 'ի Չրաքէ և 'ի խոնաւուտ տեղիս։ Ցողունն երկայն, փայտայէն, կանաչ, փշալից, գեղքաթեք, ճիւղալից, և տարածողական։ Տերեւն երբեմն ըստ երկայնութեան հատանէ ցտասն և չորս մատնաչափ, և է սրածայր և ջղալից։ Ծաղիկն սպիտակ, և աստղաձև։ Իսկ պտուղն գնտակաձև 'ի չափ

կնաստի. մէջն Թամբալից, և փոքր մի տապահամ֊ ունի և կորիզս կարծրս և քրքմագոյնս:

Սուբբուէստիօնէ տի օռինա. տես սթռանկուռիա:

Սուլբհուռ, կամ սուլֆուռ, լտ: սօլֆօ, կամ ծօլֆօ, իտ: գիւգիւրթ, կամ գիւյրիթ, տճ, և արբ: գէնտէշ, կամ գիւկիրթ, պր: և ըստ մեզ ծծումբ: Է հանք ինչ արջասպուտ, պարարտ, և ձիւթային. որ 'ի հուր մերձեցեալ վաղվաղակի լուցեալ բոցբոցի, և հանէ զբոց զազրատեսիլ, և զհոտ ապգուռ և զզուելի, զոր վարեն 'ի նիւթ վառօդի: Ընտիրն այսր ծծմբոյ է դեղնագոյն, կարծր, Թեթև, փայլուն, և գիւրափխրելի, յորմէ կազմեմք դեղ աղջողական ընդդէմ բորբոտութե, ոլքիւնի, գոնջուԹեան, և այլ ախտից մորԹոյ: Այլև օգտէ 'ի գխպտուածս խռնաւ շնչարգելութե, այատուցից Թոքոց, և խցանոց աւիշկեան անօԹոց. զի է մեղմապէս Թուլացուցիչ բնուԹբ: Զափն 'ի 12 ցորենոյ մինչև ց18, կամ ց20 յաւուրն: Այս հանք կամ գոյացուԹի գտանի յամենայն ուրեք, ձապաղեալ և սփռեալ 'ի ներքոյս երկրի, որպէս վկայեն ստորերկրեայ հրայրեացք. կոչի և աբիոԹհիուսմ:

Սուլֆօաէ տի քալչէ լիկուիտօ: Է հեղանիւթ ինչ բաղադրական, կազմեալ յերկուս տրամ ծծմբոյ փոշիացելոյ, և 'ի 32 տրամ ջրոյ եռացելոյ. որ է դեղ 'ի գխպտուածս յորդասուտ հոսման լորձանաց, և Թուքից, զորօրինակ տուսէնիքօի, սուպլիմաԹօի, սալ տի արճէնԹօի, և անԹիմօնի: Զափն յուԹ տրամէ մինչև ց10 յաւուրն՝ խառն ընդ փոքր ինչ ջրոյ:

Սուչչինում. տես քարապէ:

Սումակօ, կամ բհէլլուս, լտ: սօմէռօ, կամ սուկէռօ, իտ: լիէժ, կամ չէնլիէժ, գղղ: քօրք Թրի, անգղ: մանԹար աղանճը, տճ: ճէպա, արբ: ճիմէ, կամ շամասուռ, և կամ սէլմէ, պր: և ըստ մեզ սընկենի, կամ սուճնի: Է ծառ եւրոպիոյ՝ բարձր, և տասուար ըստ նմանութեան մերոյ կաղնեաց: Կեղև նորա է Թանձր յոյժ, կակուղ, սնկալից, Թեթև, և դեղին հարեալ 'ի գոյն մոխրոյ. յորմէ յօրինեն դեղ հոսման արեան, փորհարուԹե, և ցաւոց փորոտեաց առԹելոց 'ի Թանչից: Զնոյն գործունէութի ունի նաև պտուղ սորա:

Սուս, կամ բօռջուս, և կամ մէռռէս, լտ: բօռ-

քօ, կամ չիտքքօ, իտ: տօմուզ, տճ: ըֆիր, կամ խըլթթամա, կամ խնզիր, և կամ հնզիր, արբ: գէազ, կամ խուզ, կամ կիւրաս, կամ սաթ, և կամ վու-ռաս, պր: և ըստ մեզ՝ խոզ: Է կենդանի անձև, տգեղ, տղմասէր, որկորամէտ, և ապուշ. որոյ մտեն կարծր է, և տգեղ. յայն սակս ոչ լինի հանդերձ մարդոյ, և ոչ յայլ կարևոր իրս է պիտանի: Միս-նը պարարտ է յոյժ և համեղ, այլ ծանր և դժուա-րամարսելի: Սիրէ և յոյժ զորդունս երկրի, և զաղ-մամս ինչ բուսոց, և սակս այնորիկ միշտ պեղէ զեր-կիր և զտիղմն կնճթաւն: Ճարպ սորա ունի զմա-նաւոր գործունէութիւն 'ի կակղացուցանել զուռոյցս, 'ի մեղմել զցաւս ջղաց, ոսկերաց, և երակաց: Լեղի սորա լինի դեղ ընդդէմ ցաւոց ականջաց, և հերա-թափութեան: Իսկ քակորն նոյնպէս լինի դեղ փորա-ցաւութեան, բորոտութեան և հոսման արեան: Էգ սորա ծնանի երկիցս 'ի տարւոջ, և յիւրաքանչիւր նուագի իբր ութ, կամ տասն, և երբեմն աւելի ևս խոճկո-րակս:

Սուքօ, կամ սուքքօ, և կամ սուկօ, իտ: սուք-քուս, լտ: և ըստ մեզ՝ հիւթ, կամ մզեալ գոյացութ որ և իցէ իրաց:

Սուքօ քիաուիֆիքաթօ տէլլա սէքօնտա սքօըցա տի սամպուքօ, իտ: այսու անուամբ իմանի՝ ճմլեալ և զտեալ հիւթն ներքին կեղևոյ սամպուքօի, յորմէ կազմեն դեղ ջրգողութեան, որ արտահանէ զխոնաւա-կան չիճուկս և հիւթս մարմնոյ, և բանայ զխցանս ընդերաց. զի է լուծողական, և կարի միզաբեր բնութ: Չափն մի դրգալ մեղանոյ չորս անգամ յաւուրն, յա-ւելլով 'ի նոյն երկու դրգալ գինի սպիտակ:

Սմէնիմէնթօ. տես սմէնիմէնթում:

Սմէնիմէնթում, կամ տէլիգուիում, և կամ անի-մօ տէֆիչէաէ, լտ: թուամօութիւէ, կամ սմէնի-մէնթօ, կամ գֆինիմէնթօ, և կամ սինքօբէ, իտ: պայկնլըք, տճ: ղըշի, արբ: և ըստ մեզ՝ նուաղումն սրտի, կամ թալկացումն. տես և զայսմանէ հտ. ա. երես 244:

Սքամմօնիում, կամ քօնվօլվուլուս սքամօնիա, լտ: սքամօնէա, իտ: սքամմօնէ, գղղ: սքէմմըրնի, անգղ: մահմուտիէ, տճ: սպքմունի, արբ: սաղմօնի, պր: և ըստ մեզ՝ սակամունի, կամ սակամոնի: Է հիւթ կամ լաւ ևս գոյացութիւն ինչ խժային՝ թեթև՝ և

փոքր մի մածուցիկ՝ 'ի գոյն մթին մոխրոյ. զոր ար-
տադրեն յարմատոյ օձապատյա և ծանրահոտ բու-
սոյն յորջորջելոյ լատինական բարբառով՝ քոնվոլվու-
լուս սքաւխաքուս, որ առատօրաբար բուսանի 'ի կող-
մանս սիւրիոյ, բերիոյ, և զմիւռնոյ՝ իբր երեք կանգ-
նաչափ բարձրութ: Այս գոյացուն ընտիր համարի՝
եթէ իցէ գորշագոյն, մաքուր՝ աւազալից, թեթև
դիւրափխրելի՝ անախորժահոտ՝ դառնահամ միան-
գամայն ատեղ, զոր նախնիք առեալ 'ի կեր արկանէին
'ի լուծողական դեղորայս. զի է հզօրեղագոյն լու-
ծիչ, փսխեցուցիչ և թուլացուցիչ բնութ. իսկ առ-
արդիս ոչ համարի այնքան 'ի յարգի, որովհետև
բազում անգամ կա առնէ զանհնարին փորս, և
զխիթս որովայնի և աղեաց. թէպէտ անցուցեալ
զայն 'ի շոգի ծծմբոյ, կորուսանէ զմնասակար որա-
կութիւն իւր, զոր խառնելովք յայնժամ տիակրիտօ
սուլֆուրաթօ անուանեն: Զափն 'ի 4 ցորենոյ մին-
չև ց6:

Սքապիէս, լտ: սքապպիա, իտ: ռօնյա, յն: կէ-
ձիկ, կամ ույուզ, տճ: հէքքէ, արբ: և ըստ մեզ՝ բո-
րոտութ, կամ քոսոտութ:

Սքապիօզա, լտ: սքապպիօզա, իտ: սքապիէօզ,
գղղ: սքէնիւշ պէկպիրա, անգղ: գուռմ օթու, կամ կէ-
ձիկ օթու, տճ: և ըստ մեզ ստուգաբանի՝ պխաակո-
տի: Է խոտ, որ յարմատոյ արձակէ զտերևս լայնս,
թաւխիշաւորս; և երկայնականս, և 'ի միջոյ տերևոց
ելանէ ցօղուն ինչ երկայն իբր երեք ոտնաչափ, թա-
ւիշաւոր, միջին ունայն, և բոլորշի. որ 'ի գագա-
թան բանայ ծաղիկ փնջաւոր՝ բոլորակ՝ և ծիրանա-
գոյն. այլս արտադրէ պատեանս գնտակաձևս, և
սերմնաւորս: Ունի արմատ երկայն, և ուղիղ: Բու-
սանի 'ի պարտէզս, 'ի մարգագետինս, և յագարակս.
որոյ եթէ տերևն, և եթէ ծաղիկն են դեղ բորո-
տութ, պխաակաց, ցաւոց կրծոց, և հազի:

Սքառապէուս, լտ: սքառաֆաճճիօ, իտ: ոսուղ-
ղան պէօճէի, կամ պօք պէօճէի, տճ: խօնֆիւս, կմ
ֆասխա, և կամ ճէլալան, արբ: ճիւլանէ, պր: և
ըստ մեզ՝ բզէզ: Է ճանճ ինչ սոււար, յաղթէ քա-
ռաթև միջատից. որոյ մարմինն և գլուխն իսկ պա-
տեալ է կարծր սևաւ և փայլուն մորթով ըստ նմա-
նութեն խեցեմորթից ծովու, որոց նմանի և ձևով
մարմնոյն: Ունի և եղջերուկս քնքուշս. իսկ թևքն

ոչ երկայն, բայց եթէ 'ի թաւչիլն. քանզի ծածկեալ կան մին 'ի ներքոյ միւսոյն : Սա արկանէ զձուս իւր 'ի մէջ քարերի եղանց և ձկոց, զի ջերմութք նոցին կենդանասցի : Եգիպտացիք 'ի գործ ածեն սա 'ի դեղ ոսկորուն յօդուածոց, և մանրաթելից, որք գտանին 'ի մկանունս և յայլ մասունս կենդանեացն, և վատառողջ, և նիհար անձանց : Չափն 'ի 10 ցորենոյ մինչև ց30 : Յայս տեսակ բզեզն գտանի և ինքնալոյս, որ զլոյս ցայտէ 'ի գիշերի. և սեւ ինչ նորա որ սովորաբար գտանի յամերիկայ, այնչափ ճոխ լոյս արձակէ 'ի գիշերի, մինչև միոյն ևեթ լուսաւորել զսենեակն ողջոյն :

Սքէռանցիա. տես չինանքէ :

Սքռուփուլուս, լտ : սքռուփօլօ, իտ : այսու անուամբ իմանամք զքանակութիւն ծանրութեան քսան հատի մեծ ցորենոյ. ուստի յերեք սքռուփօլօն պարունակի մի տրամ ամբողջ : Գիտել արժան է, եթէ՝ սովորաբար եդեալ (Ͽj) զայս նշան՝ իմանամք զչափ քսան ցորենոյ, զոր 'ի վար արկանեմք 'ի կշիռ դեղորէից :

Սքռուփօլօ. տես սքռուփուլուս :

Սքռօֆուլարիա, լտ : սքռօֆօլարիա, կամ էռպա տա մոռօիտէ, և կամ կալկօքաիս, իտ : էռպ օզէքռուէլ, գղղ : կրէթ ֆիկ վօռթ, կամ քըռնէլ վօռթ, անգղ : սըռաճա օթու, տճ : և ըստ մեզ թարգմանոգրի՝ խոզախտեան բոյս. բուսեալ 'ի հովանաւոր տեղիս, և 'ի գերեզմանատունս, իբր երկու ոտնաչափ բարձրութեամբ. ցօղուն սորա է ուղիղ, ամբողջ, մէջն դատարկ, քառանկիւնաձև, և ծիրանագոյն : Տերեւն երկայնաձիգ, լայն, սրածայր, և եզերահերձ՝ ըստ նմանութեան տերևոյ եղինձի, բայց թխագոյն քան զայն : Ծաղիկն ծիրանագոյն, և անօթաձև : Պտուղն գնտակաձև՝ սրածայր՝ և խոռոչաւոր, յորս են և սերմունք : Իսկ արմատն ստուար՝ անհարթ՝ և ծնրաւոր : Արմատ սորա և տերև եփեալ 'ի ջուր և արբուցեալ, դեղ է խողխջ, խուլից պարանոցի, բորոտութեան, և այլ ախտից մորթոյ : Չափն 'ի մի արամէ մինչև ց4 յաւուրն :

Սքռօֆօլա, կամ սքռօֆուլա, իտ : սթռումա, լտ : սըռաճա, տճ : և ըստ մեզ խոզք, կամ խոյլ պարանոցի :

Սքօլամէնթօ. տես լէուքօռռէա վէնէռէա :

Սքօնչիաթուռա, կամ ապօռթօ, իտ : չօճուկ կէ-

չիրմէսի, տճ․ և ըստ մեզ՝ վիժուռնի զաւակի․ տե՛ս հտ․ ա․ երես 204։

Սքօռփիուս մարիթիմուս, կամ սքօռփիօ փէշիս, լտ․ սքօռփիօնէ մարինօ, իտ․ սքօռփիօն պալըղը, տճ․ և ըստ մեզ՝ փոր կամ կարիճ ծովային։ Է ձուկն ինչ երկայն, և բոլորակաձև, որոյ գլուխն է մեծ, տտուար, բազմանկիւնի, և կարծրանիւթ, ունելով 'ի վերայ ժանտափուշս մանուանս և սայրասուրս, որով հարկանէ և թունաւորէ զմերձեցեալսն յինքն, որ է զէնք նորա 'ի պաշտպանութիւն կենաց իւրոց․ բայց ձկնորսք ունին և զդեղթափ նորա, որ է թիւ-րակէս, զոր եթէ փութով դիցեն 'ի վերայ հարուա-ծոյ՝ բժշկեն 'ի դժնդակ ցաւոց անտի։ Ատամունք նր̃ փոքրիկ են, այլ սուր․ յօնքն եղջերաձև, որկորն մեծ, թեփ մորթոյն կարմիր է և փոքրիկ, որովայնն սպիտակ։ Իսկ միսն կարծր է և աճառուտ, այլ համեղ, և տխորժական ճաշակելեաց։ Սորա լեարդն ունի զգործունէութիւն 'ի սրբել և 'ի փարատել զղ-բորոտութիւնս, և զկոծիծս մարմնոյ․ նաև գրգռէ զդաշտանս կանանց։

Սքօռփիօ, կամ սքօռփիուս, լտ․ սքօռփիօնէ, իտ․ աքրէպ, տճ․ չիպանիա, կմ՛ չէվչէպ, և կմ՛ անճիւղ, տրք․ ցելէտաիւմ, պր․ և ըստ մեզ՝ կարիճ։ Է կենդանի ինչ հողային, և զազրատեսիլ 'ի շապ թրթրոյ, այլ 'ի ձև խեցգետնոյ, զի ունի զութ թաթուլս կամ ճանկս․ որոց երկուքն են մեծ, իսկ միւսքն փոքր․ գլուխ նորա լայն է․ աչքն մանր յոյժ․ գոյն նորա այլևայլ է, այսինքն սպիտակ, դեղին, և սեաւ, իսկ տուտն է երկայն, բոլորշի և կարծր․ յորոյ վե-րայ կարգաւ շարայարեալ կան յօդք դնտակաձևք․ և 'ի ծայր նորին տտան՝ ունի խայթոց սուր, կար-ծրապինդ, և խողովակաւոր, որով հարկանէ և թու-նաւորէ զմերձեցեալսն յինքն, մինչև այտուցանել և ցաւովք տագնապել զմարդ․ և եթէ ոչ առժամայն սպիրիթօ տի սալ ամմօնիաքօն ածցի, կամ ծծմբով այրեսցի վիրաւորեալ մասն մարմնոյն, անվրէպ պա-տահէ զթմբրութիւն, զպտոյտ գլխոյ, զձեծկլտանս, զփխխուռն, և երբեմն և զմահ։ Սա գտանի յամե-նայն ուրեք, նա յաւէտ յերկիրս վիճակեալս ջերմա-գին օդոց․ զոր եգիպտացիք ըմբռնեալ 'ի բաց հա-տանեն 'ի նմանէ զայն թիւնաւոր տուտն․ և զմար-մին նորա ճանկօքն հանդերձ չորացուցեալ փոշիա-

ցուցանեն՝ և 'ի կիր արկանեն իբր դեղ միզարգելու-թե., Զսպասակար հիւթոց: Չափն 'ի 10 ցորենոյ մին-չև ց30 յասուրն: Գտանի յամերիկայ կարիճ այլա-զան 'ի մերոց կարճնոց, զի մեծամեծք են, և անհնա-րին թշնամի օձից, մողեսից, և սարդից:

Սքօռպութօ, իտ: սքօռպիւթ հիլլէթի, տճ: հա-Ֆուռ, արբ: տես հտ. ա. երես 348:

Սքօռտիում, կամ Թէուքրիում սքօռտիում, լտ: սքօռտիօ, իտ: ժէռմանտրէ այքուաթիք, գղղ: ու-օթըր ճէրմէնտըր, անգղ: սկօռտիոն, յն: եա-ղսուն սարմուսաղը, տճ: և ըստ մեզ՝ խատոր վայրի. այսպէս անուանեալ սակս ունելոյ սորա զհոտ խատորոյ: Է տեսակ թաւերչալուր խոտոյ, որոյ ցօ-ղունն է փոքրիկ, օձապտոյտ և ճիւղալից: Տերևք նորա երկայն են և փափուկ, որք երկու երկու բու-սանին 'ի վերայ ճիւղոց. որք և ունին զգոյն սպի-տակ և զկողմունս ատամնաձևս: Ծաղիկն փոքրիկ, որկորաձև, հերձոտ, և կարմիր. բերէ և քառակուսի սերմունս մանունս, և բոլորակաձևս: Իսկ արմատն ձձապտոյտ է և թելալից: Բուսանի յամենայն ու-րեք՝ 'ի խոնաւէտ և 'ի ջրարբի դաշտավայրս, և սկը-սանի ծաղկել յամսեանն յունիսի: Զտերև սորա եփեալ 'ի ջուր և արբուցեալ, դեղ է փորհարութե., և հոսման արեան. զի է սեղմիչ և խթիչ բնութե.. ստամոքէ նաև զորդունս և զճճիս որովայնի. չափն 'ի մի տրամէ մինչև ցերկու, խառն ընդ ութ ունկի ջրոյ: Այլև ըստ ոմանց՝ մեղմէ զչարութիւն թունից. ըստ որում 'ի կիր արկանի 'ի բաղադրութե. տիա-քօռտիօի, որ այն իսկ է սարմուսաղ մածունի:

Սքօռռէնցա. տես տիարրէա:

Սքօռցա. տես քօռթէքս:

Սքօռցա վինթէռանա. տես քօռթէքս վինթէռա-նուս:

Սքօռցա նէռա ո՛ իսքօռցօնէռա, իտ: սքօռչէնա, տճ: Է կերպ ինչ սատուար իբր մատնաչափ, սևա արտա-քուստ, և սպիտակ 'ի ներքուստ. համով քաղցր է. զոր կորզեն յարմատոյ իւրեք բուսոյ սպանիոյ. զոր բնակիչք երկրին չորացուցեալ 'ի հովանաւոր տեղիս՝ տանքեն 'ի վաճառ, որ է դեղ ազդու ընդդէմ հա-ղից, և կերկերման որկորոյ, զի է մնուցիչ և քրտ-նաբեր բնութեամբ: Չափն կէս տրամ խառն տասն ունկի ջրով: Եւ ըստ ոմանց նախնի հեղինակաց՝ ու-

տանկի լերդ ։

Սոլֆուռօ տ՛ անթիմօնիօ կամ տի մերքուրիօ, կմ՛ էթիօբէ տի անթիմօնիօ, իտ ։ սուլֆհուրէթում սթիպիի էթ մերքուրիի, լտ ։ Է փոշի ինչ սեաւ և փայլուն, յօրինեալ 'ի ծծմբախառն անթիմօնիօէ, և 'ի սնդիկէ. օգտաւէտ է 'ի գիպուածս խոզից կամ խուլից պալարանցի, ախտի գաղղիականի, բորոտութե, և այլ ախտից մորթոյ. զի է թուլացուցիչ և քրտնաբեր բնութ ։ Եւ 'ի գործածութե պարտ է պահել զչափ քանակութե, որով սովոր եմք 'ի կէր արկանել զփոշին կոչեցեալ յիտալացւոց՝ էթիօբէ մինէրալէ ։

Սոլֆուռօ տի բօթասսա, կամ ֆէկատօ տի սոլֆօ ալքալինօ, իտ ։ սոլֆհուրէթում բօթասսէ, լտ ։ Է նիւթ ինչ մթին կարմիր, կարծր, անհոտ, և դառնահամ, միանգամայն և գեղթափ ընդդէմ հանքային թունից. որպիսի են սուպլիմաթօ քօռռօզիվօ, մկնդեղն, սնդիկն, անթիմօնիօն, ևն ։ Այլև օգտէ բորոտութե, քոսոտութե, որքինի, և այլ ախտից մորթոց, զի է գեղթափ և ճճէհալած բնութեամբ ։ Զափն 'ի 10 ցորենոյ մինչև ց30 յաւուրն՝ խառն ը՛ շաքարի, կամ ընդ կօնսէ ալբապինքայի, բաղադրելոյ հասարակ ջրով ։

Սոլֆուռօ տի մերքուրիօ նէրօ. տես էթիօբէ մինէրալէ ։ Կոչի և 'ի լատինացւոց՝ սուլֆհուրում հիտռառճիրի նիկրում ։ 'Ի գաղղիացւոց՝ սիւլֆիւռ տը մերքիւռ նուառ ։ և յանգղիացւոց՝ պլէք սիւլֆըրէթ օվ գուիքսիլվըր ։

Սոլֆուռօ տի մերքուրիօ ռօսսօ. տես չիննապարիօ ։

Սոլֆուռօ տի սթանիօ, իտ ։ սուլֆհուրէթում սթաննի, լտ ։ սիւլֆիւռ տ՛ էթէն, գղղ ։ սըլֆըրէթ օվ թին, անգղ ։ գիւգիւրթլու գալայ, տճ ։ Է փոշի ինչ սեաւ, փայլուն, անհոտ, և անհամ, կազմեալ 'ի յանագէ և 'ի մաքուր ծծմբոյ. որ է դեղ ճճէհալած ։ Զափն 'ի կէս տրամէ մինչև ց4 յաւուրն՝ խառն ընդ շաքարի, կամ ընդ մանինէսիայի, և կամ ընդ լըռսեալ անխոնի ։

Սոլֆօ սուպլիմաթօ կամ բուռօ, կամ ֆիօռ տի սոլֆօ, իտ ։ սուլֆհուռ սուպլիմաթում, լտ ։ սուֆռ սիւպլիմէ, գղղ ։ սիւպլիմըտ սըլֆըր, անգղ ։ գիւգիւրթ չիչէկի, տճ ։ Է զտեալ, կամ լաւ ևս վերացեալ մասն ծծմբոյ. որ լինի փոշի նրբագոյն, դե-

ղին, անհոտ, և անհամ, միանգամայն և գեղ թան-
չից, անհնարին հիւծութե, հնագոյն հարբխոյ, ցա-
ւոց յօդուածոց, բորոտութեան, և այլ ախտից մոր-
թոյ․ նաև սատակէ զորդունս և զձձիս որովայնի,
զի է մեղմայէս լուծիչ, և մաքրիչ բնութե : Ունի
ևս մասնաւոր ինն գործունէութի 'ի բանալ զխցանս
աւիշկեան անօթոց : Զափն 'ի 6 ցորենոյ մինչև 360
յաւուրն՝ խառն շաքարաւ, կամ մեղրիւ :

Սօլֆօ տօռաթօ տ' անթիմօնիօ, կամ Թէռմօսսինօ
տ' անթիմօնիօ սօլֆուռաթօ ռանչիաթօ, իտ : Թէռմօ-
սիտռում սթիպիի սուլֆհուռաթում չիթռինում, լտ :
Է փոշի ինչ նարնջագոյն, անհոտ, և անհամ, որոյ
զօրութիւն և ներգործութիւն նոյն է ընդ քէռմէզ մի-
նէռալէի, բայց փոքր ինչ մեղմ է քան զայն :

Սօտա, իտ : սալսօլա սաթիվա, լտ : սուտա քիւլ-
թիվէ, գղղ : զմօլ կլէս ուըրթ, անգղ : գալի, արբ :
չօրաք, տճ : Է տունկ ինչ ծիւղալից, որ սովորաբար
բուսանի 'ի ծովափննեայս, և յաւաղուտս իբր երկու
ոտնաչափ բարձրութե : Տերև նորա է մանր, բոլո-
րի, երկայնաձև, հիւթալից, և աղեհամ : Ծաղիկն
մանր է և կարմիր հարեալ 'ի գոյն գեղին : Իսկ սե-
րմանն կարծր է և գորշագոյն : Այս տունկ նպաստէ
'ի կազմութի օճառի, և ապակւոյ : 'Ի տերևոյ այսր
տնկոյ արտահանեն նաև զաղ ինչ աղցու կոչեցեալ
'ի լատինացւոց՝ սալ ալքալինուս սօտէ, տես անդ :

Սօրպուս, կամ բիռուս սօռպուս, լտ : սօռպօ,
իտ : սօռպիէ, կամ քօռմիէ գաղղ : սէրվայս թրի,
անգղ : ուվէզ, տճ : և ըստ մեզ՝ սին : Է պտուղ ինչ
գնտակաձև, և հիւթալից՝ նման ըստ ինքք ղեղոյ․
համեղ յորժամ կատարեալ հասունանայ, միանգա-
մայն և գեղ փորհարութե, զի է սեղմիչ և զովացու-
ցիչ բնութե, և 'ի մասնաւորի հոսման թանչից,
կամ արեան :

ՍՓէնօիտէ․ այսու անուամբ ըստ անգամայնեաց
նշանակի՝ ոսկր ինչ զետեղեալ 'ի ներքուստ յառա-
ջակողման վերին ծնօտից :

ՍՓէնօ Փարինճէօ․ անուամբս այս իմանի՝ մին 'ի
մկանանց, որք նպաստեն 'ի կլանել զկերակուրս :

# Վ

Վայուօլէ, կա՛մ վայօլօ, և կա՛մ բուսթուլէ, իտ: բուսթուլէ, լտ: չիչէք հասթալըղը, տճ: միւճէտտէր, կամ նէպհ, և կամ ճէտրի, արբ: չիրէք, պր: և ըստ մեզ՝ պիտակ, կամ ծաղիկ: Է ախտ ինչ որ ածէ 'ի վերայ մարմնոյ շարաւալից պալարս հանդերձ անընդհատ տենդիւ:

Վալէրիանա, լտ: վալէրիանա սիլվէսթրէ, կամ կաթթարիա, իտ: վալէրիան, գղղ: ուայլտ վէլէրիէնէ, անգղ: գէտի օթու, տճ: թուխի, կամ պիւհմի, և կամ խաշիշ իւլ կօթթա, արբ: թէրբէի, կամ գիւբայէ, և կամ մէնթէնձիւմէ, պր: և ըստ մեզ կատուամինթ, կամ կատուախոտ: Է բոյս հաշակաւոր, բուսեալ 'ի խոնաւուտս, և 'ի լերինս իբր մարդա-չափ բարձրութբ. ցօղունն սորա է մաւլիր, գարանա-գոյն, և փոքր մի թաւիշաւոր: Տերևքն երկու եր-կու ելանեն 'ի վերայ ծիւղոց՝ հանդէպ միմեանց, ո-րոց ոմանք են եզերահերձ, և ոմանք անհերձ: Ծա-ղիկքն բոլորակ 'ի ձև անուոյ, սպիտակ հարեալ 'ի գոյն կարմիր, և անուշահոտ, որք փունջս փունջս փթթին 'ի վերայ ծիւղոց սերմնափակօքն հանդերձ: Իսկ արմատն ստուար իբր բթաչափ, գլանաձև, կնճռալից, նրբաթել, գորշագոյն, հիւթալից, սաստ-կահոտ, դառնահամ, միանգամայն և համեմայ ին: Սա ունի համակրութիւն ընդ կատուի, վասն որոյ տեսեալ թաւալի 'ի վերայ սորա. յորմէ և զանունն էա-ռ: Գերահռչակ է 'ի մասին օգտաւէտութեն 'ի դե-պուածս ախտից ջղաց, անդամալուծութե, կաթուա-ծոց, լուսնոտութե, միջահատական ցաւոց կիսոյ գլխոյն, և տրգանդի, տխնդամոտութե, ախտի ցըն-ցակտնի, և ընդհանրապէս ընդդէմ ամենայն ախտից սաթելոց 'ի տկարութէ ջղաց. զի է խթիչ, զօրացու-ցիչ՝ և փոքր ինչ ջերմերացուցիչ բնութբ: Այլև սա-տակէ զորդունս և զճճիս որովայնի, և փարատէ զախտս կուչեցեալ էմֆիթիզէ: Զօրքն 'ի չորս տրամէ մինչև ցմի և կէս ունկի, զոր օրէն է եռացուցանել

մի լիտր ջրով. կամ գնել թրմոց 'ի ջուր ջերմ ժամս
երիս կամ չորս, յաւելլով երբեմն 'ի նոյն երեք տրամ
քինաքինա, կամ երկու տրամ աէրբէնիթառիա միա-
ծինխանա, կամ փոքր մի քամոմիլլա. զոր պարտ է
տալ հիւանդաց 'ի միջոցի 24 ժամուց:

Վալվուլա. այսու անուամբ ըստ անդամազննաց
նշանակի՝ գանակ, որ է մաշկ ինչ այնպէս զետե-
ղեալ 'ի խողովակս մարմնոյ, որ դիւրաւ բացեալ
շնորհէ անցս հեղանիւթոց, որք անցանեն ընդ այն.
բայց ոչ տայ նոցա անցս 'ի դառնալ յետս:

Վակա. թափառ ջիլք. ըստ անդամազննաց են մե-
ցերորդ ամոլք ջղաց, որք իջեալ ընդ ողնայարն՝ ձա-
ղաղին և թափառին ընդ բովանդակ մարմինն:

Վածինա ութէրինա. փող կամ անցք արգանդի.
ըստ անդամազննաց է անձկագոյն մասն արգանդի:

Վանէլլուս, լտ: բավօնչէլլա, իտ: Է տեսակ մի
գեղեցկատեսիլ և սրաթռիչ թռչնոյ 'ի չափ աղաւնոյ,
որոյ գոյն է խայտաբղէտ. այսինքն ագռաւ, սեաւ,
կանաչ, կարմիր, և կապոյտ. 'ի գլուխն ունի թա-
գաձև կատար. կերակրի ձձեօք և ձանձիւք, որք
գտանին յեզերս գետոց, և լճաց: Միս նորա պա-
րարտ է և համեղ, միանգամայն և օգտակար դեղ
նուաղելոց, զի է զօրացուցիչ սրտի և ուղղոյ:

Վանիլլա առօմաթիքա, լտ: վանիլլիա, իտ: վա-
նիլլէ առօմաթիք, գղղ: վէնիլէէ, անգղ: Է պտուղ
ինչ ամերիկոյ, որ 'ի սուղ ժամանակի ծաւալեցաւ
ընդ զանազան տեղիս եւրոպիոյ, և ասիոյ, որոյ եր-
կայնութիւն է իբր կէս ոտնաչափ. իսկ սոուարու-
թիւն գրչաչափ խորշխորշանի, թուխ, փափուկ, պա-
րարտ, իւղային և դիւրաբեկ. ներքին գոյացութի
նորա է թուխ հարեալ 'ի գոյն կարմիր, քնքուշ,
բալասանահոտ, և գոյզն ինչ կծուահամ. յորում են
են հատք մանրիկք սեաւք, և շողշողունք: Այս պտ-
տուղ, կամ լաւ ես ասել պատեան՝ 'ի սկզբանն է
կանաչագոյն, ապա դեղնագոյն, հասեալ յետոյ 'ի
գոյն թուխ փոխի, զոր սկսանին քաղել յամսեանն
սեպտեմբերի, և չորացուցեալ ծանեն իւղով գա-
գայի, կամ նշոյ, զի փափկասցի. և պահպանեսցի
ի նեխութէ, զոր վարեն 'ի տալ զհոտ, և զզօրութի
չիօքօլաթաի: Վարի ես 'ի դեղորայս 'ի զօրացու-
ցանել զջիղս, և զմկանունս մարմնոյ. և 'ի մաստա-
կորի ընդդէմ անոնդանոտութեան, և ցաւոց գլխոյ

ռուծելոց 'ի ոկարութենէ, զի է խեթից կամ զրգռելի բնութե: Չափն 'ի տասն ցորենոյ մինչև ց30 խառն տասն ունկի եռացուցեալ ջրով: Բոյս սորա է ան-տակ մի վօլուպիլիս կոչեցեալ անկոյ· զոր սպանիա-ցիք՝ քամիշքէ անուանեն· իսկ հնդկացիք՝ Թլիքաւ-քիւլ· լինի սա յաճախ 'ի Մեքսիքօն, որ զօրէն բաղե-ղան պատատի ըծառովք իբր 14 կամ 15 ոտնաչափ բարձրութի: Ցօղուն սորա է նուրբ բոլորշի, կա-նաչակեղև, գխարաթեք, կարծր, և ջղային· ունե-լով ՟Ը շաքարաբեր եղեգանց ծունրս իբր 6 կամ 7 բոյթ տարբերեալ 'ի միմեանց: Ունի տերևս նման տերևոց ջղախոտի, կամ լաւ ևս գաբենեաց· բայց երկայն, և պարապատ քան զնոսա· գոյն նց 'ի վերին երեսս պայ-ծառ կանաչ և փայլուն· իսկ 'ի ներքոյ գոյն ինչ գեղնագոյն: Բանայ և ծաղիկ մեծներանգ:

Վասի, կամ լաւ ևս՝ վազի լինֆաթիչի· այսպէս կոչեն անգամադիմնիք զաւիշկեան անօթս կամ խողո-վակս, ընդ որս հոսէ կամ յորս պարունակի հեղա-նիւթ ինչ 'ի մարմինս կենդանեայն· յորմէ և արա-բացիք՝ էվյիէի լին ֆայիէ կոչեն:

Վարիկօչէլէ· այսու անուամբ ըստ բժշկաց իմանի՝ այտուցմն պարկի ամորձեաց, գոյացեալ 'ի լայնմանէ երակաց նոցին:

Վաքքա, լտ, և իտ: ինէք, ամ: պատու, արք: և ըստ մեզ՝ կով: Է էգ անասուն ծանօթ ամենեցուն· որոյ սուինքն օգտակար է կրծոց· որպէս և կաթն նորա: Ճարպ սորա և ուղեղ զօրատու են ջղաց: Իսկ մէզն մեղմէ զցաւս յօդուածոց, և փարատէ ըն-ջրգողութիւն:

Վէլթաիուօլա· տես բաուլէթաիա:

Վէլթաիուօլօ ալօ, կամ վիլթաիուօլօ ուի ռամէ, և կամ օսսիտօլֆաթօ տի ռամէ, իտ: օսսիտուլֆհաս քուբրի, լտ: օսսիտիւլֆաթ տը քիւիվր, գղ: օսսի-տըլֆէյթ օվ քօբբըր, անգղ: Է աղ ինչ երկնագոյն բիւրեղաձև, գառնաչափ, միանգամայն և սեղմիչ· եզատուէա է 'ի գիպուածս Թոքային բարակացաւու-թեն, լուծոտութեն, պարբերական տենդից: Արկնա-կի է զօրութիւն սորա· զի եթէ առցէ ոք 'ի սմանէ զչորրորդ մասն միոյ ցորենոյ մինչև ցմի կէս ցորեան, լինի Թուլացուցիչ և ոկարացուցիչ բնութե: Իսկ եթէ առցէ առաւել քան զչափն պայմանեալ, յայն-ժամ իսկ և իսկ փաղաղեալ սեղմէ զորկորն, և ըղ-

սիրտն. ապա թէ զփխումն, զբորբոքումն ստամոքսի, և փորոտեաց, ընդ նմին և զքաղցկեղ. հուսկ յետոյ մահու սպանանէ ։ Այլ դարման սորա չէ ինչ տարբեր 'ի դարմանոց վիթռիուօլօ տի Ֆէռռօի, մանաւանդ իբեքաքուանան, և իւղն րիչինօի ։

Վէթռիուօլօ տի ծինքօ, կամ սուլֆօլֆաթօ տի ծինքօ, իտ ։ սսախուլբհաս ծինքի, լտ ։ Է աղ ինչ բաղադրական, կազմեալ 'ի ծինքօէ, և 'ի սուլֆօռիկօէ ։ Նախնիք 'ի գործ ածէին սատի 'ի պէսպէս դեղրայս, նաև 'ի ժայթքել տալ զթիւնն արբեալ. իսկ այժմ սակաւք 'ի վար արկանեն յարևմուտս. զի փոխան սորա տան զարմատն անուանեալ իբեքաքուանա ։ Այլ մեք սովաւ ապաքինեմք զախտս աչաց ։ Զայս եթէ կամիս առնել, արկ զնուրբ փոշի սորա ըստ կշռոյ երից կամ չորից ցորենոյ՝ 'ի վեց ունկի սամպուքոի կամ վարդի ջրոյ. և երիցս անգամ յաւուրն լուանալ տալով զցաւաղնեալ աչս, 'ի սկզբանն զով, և հետ զհետէ միշտ առաւել ցուրտ ։ Տես և զայսմանէ զբառն վիթռիուօլում ։

Վէթռիուօլօ տի Ֆէռռօ, կամ սուլֆօլֆաթօ տի Ֆէռռօ, իտ ։ սսախուլբհաս Ֆէռռի, լտ ։ Է բաղադրական աղ ինչ կանաչագոյն, բիւրեղանման, թափանցիկ, տտպահամ միանգամայն և դառն, օգտաւէտ է 'ի դիպուածս փորհարութէ, թանչից, 'ի հոսմունս սերման կամ սաղմի, որք պատճառին 'ի թուլութէ գործարանաց. չափն 'ի կէս ցորենոյ մինչև 96, խառն ի լիտր ջրով ։ Այլ եթէ առցէ ոք 'ի ամանէ առաւել քան զչափն սահմանեալ, ապա թէ զփխումն, զցաւ սրտի և ստամոքսի, և զբորբոքումն ստամոքսի, և փորոտեաց ։ Այլ դեղթափ սորա են սոլուցիոնէ տի սօտքառպօնաթի ալքալինի տի բօթասսա կամ տի սօտա. նուրբ մասն մոխրոյ. և սուլֆուռօսախաթօ տի բօթասսա կամ տի քալչի, և թեթև լուծողականքն ։ Սա կոչի և վիթռիօլօ վէռտէ. տես զայս 'ի բառն վիթռիուօլում ։

Վէնա, կամ վէնէ, իտ ։ տամար, տճ ։ լուք, կամ չաքն, կամ ախառէ, և կամ վէթին, արբ ։ հուէկ, կամ սէրաարոյ, պր ։ Ֆլէպս, յն ։ և ըստ մեզ՝ երակ ։ Է անօթ արեան, ընդ որ շրջաբերի արիւն կենդանոյն, և են բազմաթիւ, որք սկսանին 'ի ծայրէ ներդից, և հասանեն 'ի սիրտն ։

Վէշիքա կմ վէսիքա, լտ ։ գալաբուշա, տճ, մէսա-

նէ, տոր։ և ըստ մեզ՝ փամփուշտ, կամ առապուշտ. ըստ անդամազննաց է անօթ մաշկեղէն ընդունարան շիճկեան հիւթոց կամ միզի, զոր ընդ միզանցս ըն-կալեալ յերիկամանց պահէ առ ժամանակ մի, զի մի անկամայ տարաժամու հոսեսցի։

Վէշիքաթօռիօ. տե՛ս էմփլասթռօ վէշիքանթէ։

Վէշիքուլաւէ սէմինալէս. տե՛ս օս։

Վէռօէ ռամէ. տե՛ս աէրուկօ։

Վէսթիպուլում, լտ։ վէսթիպուլօ, իտ։ և ըստ մեզ՝ գաւիթ։ ըստ անդամազննաց՝ է առաջին մասն երկրորդ խոռոչի ունկան, որ և կոչի՝ լապիւռինթօ։

Վէրաթռում ալպում, լտ։ էլլէպօռօ պիանքօ, իտ։ էլլէպօռ պլան, գղղ։ ուվայթ հէլլէպօր, անգղ։ աք-չէօրլէմէ, կամ գառչիչէի, տճ։ և ըստ մեզ՝ սպիտակ եղջերոս, կամ սպիտակ կոճ վրացի։ Է բոյս բուսեալ յիտալիայ, 'ի գերմանիա, և յամերիկայ իբր երեք ոտնաչափ բարձրութեամբ. որոյ տերեւն է մեծ, ջղա-լից, գծեալ, գանգուր, փափուկ, և թաւիշաւոր։ Ծաղիկ նորա սպիտակ է և բազմաթերթ. պտուղն շերտաւոր, յորում բովանդակին սերմունք սպիտակ, երկայնաձև, և նրբակեղև։ Իսկ արմատն ստուար, թելալից, հիւթաւոր, սեաւ, հոտաւէտ, և տապա-խառն գառն. միանգամայն և դեղ ախոնդանոտունէ, և մոլեգնութե. զի է թուլացուցիչ, և ուժգին լու-ծողական եթէ 'ի ստորուստ, և եթէ 'ի վերուստ. յայն սակս կարգի 'ի դասս թունաւոր բուսոց։ Զայն յերկու ցորենոց մինչև 920 խառն ը մի լիտր ջրոյ։ Այլև օգտաւէտ է բորոտութե, և գոնջութե, լուանալով զվիրաւորեալ մասունս մարմնոյ։

Վէրթիկօ, լտ։ վէռթիճինէ, իտ։ պաշ տէօնմէսի, տճ։ հեզէհան, կամ տօխա, արբ։ և ըստ մեզ՝ պտոյտ գլխոյ։

Վէրմի վէշիքօլառի. է տեսակ ինչ ճճւոյ, որ սո-վորաբար գոյանայ 'ի փոր կենդանւոյն։

Վէրմիքօլարէ։ այսու անուամբ ըստ բժշկաց նշա-նակի՝ զեռնական կամ սողնական զարկ ինչ բազ-կի, որ է նշան մահահրաւէր. տե՛ս և 'ի բառն բուլ-սուս։

Վէրպասքում թհափսուս, լտ։ վէռպասքօ, իտ։ պուպլէօնպլան, գղղ։ կրէթ պրօտ լիվըտ մըլլէյն, անգղ։ Ֆլոմօս, յն։ սըղըր գույրուղու, տճ։ պուսիր, կամ պօսլու, կամ աստանիւթ տիւպպը, կամ միգնէ

ակեթիւլ էնտէր , տրք : պօսըն , պր : և ըստ մեզ՝ փղոմոս : Է խոտ՝ բուսեալ յեզերս ճանապարհաց , յագարակս , և յաւազուտս իբր չորս ոտնաչափ բարձրութբ . որոյ ցօղունն է կարծրածիղ , ճիւղալից , և թաւիչաւոր : Տերև նորա է մեծ , երկայն , լայն , փափուկ , սպիտակ , և թաւիչաւոր : Ծաղիկն դեղնագոյն , թեթևահոտ , և փոքր մի քաղցրահամ . պտուղն ձուաձև սրածայր , և աղուամազուտ , մէջն չերտաւոր , յորում բաղկանան սերմունք նուրբք , և սեաւք . իսկ արմատն երկայն , ստուար յոյժ , փայտայլին , և սպիտակ : Այս խոտ լի է գոլոշացական իւղով , այլ ծուալ աղիւ . որոյ տերևն և ծաղիկն եփեալ 'ի ջուր և արբուցեալ , լինին դեղ փորհարութե , հաւման օրովայնի , և թանչից . զի է սեղմիչ և մեղմիչ բնութբ : Չափն յերեք տրամէ մինչև ցչորս խառն ը մի լիտր ջրոյ :

Վէրպէնա օֆֆիչինալիս , լտ : վէռպէնա , կմ վէռմէնա , կամ էռպա քռօչէ , և կամ էռպա կռանինա , իտ : վէռվէն կամ վէռպէն , գղղ : վէրվէյն , կամ քըմմըն ռայլը վէրվէյն , անգղ : և ըստ մեզ՝ աղաւնիճ : Է ազգ ինչ խոտոյ , որ սովորաբար բուսանի 'ի ցանկապատ տեղիս , և 'ի շրջակայս որմոց և ճանապարհաց իբր մի և կէս ոտնաչափ բարձրութբ . որոյ ցօղունն է անկիւնաւոր , կարծր , թաւիչաւոր , կարմրերանգ , և դառնահամ : Տերև նորա է երկայն , եղերահերձ , կնճռալից , և դառնահամ : Ծաղիկն փոքրիկ , որկորաձև , պարարտ , և գոյն նորա երբեմն սպիտակ է , և երբեմն կապոյտ . բերէ և պտուղն ինչ արկղաձև , յորում են քառեակ սերմունք նուրբք և երկայնաձևք . իսկ արմատն երկայն , ստուար , թելալից , և դառնահամ : Սովորաբար սկսանի ծաղկիլ յամսեանն յունիսի . որոյ տերևն եփեալ 'ի ջուր և արբուցեալ , դեղ է խցանաց ընդերաց , դալկան , միզարգելութե , և գլխացաւութե :

Վէրօնիքա օֆֆիչինալիս , լտ : վէռօնիքա կմ թէհէ էուռօբէօ , և կմ թէհէ զվիցցէռօ , իտ : Է խոտ ինչ , որոյ ծիղքն են նուրբ , երկայն , բոլորակ , ծնրաւոր , օձապտոյտ , և թաւիչաւոր : Տերև նորա նման է տերևոց չորենւոյ . և է թաւիչաւոր , և եղերահերձ . համ նորա դառն է միանգամայն և տտիպ . զոր եւրոպացիք չորացուցեալ 'ի կիր արկանեն ըստ օրինակի չայի առ 'ի անօսրել զթանձրամածութե տողու_

նից, 'ի փարատել զվէրս կրծոց, թոքոց, և 'ի մեղմել զչարութիւն թունից։

Վիբէռա, լտ, և իտ։ Էնկերէք, տճ։ Էֆաա, կմ Էֆէա, արբ։ և ըստ մեզ՝ իժ։ Է օձ ինչ կենդանածին, երկայն իբրև կանգնաչափ, և ստուար երկու բթաչափ. գլուխ նորա նեղ է և երկայն. աչքն փոքրիկ. լեզուն երկայն, երկճղի, և գորշագոյն. ունի ատամունս կարճս, ոմանք փոքրիկ և ոմանք երկայն, կոր, գոգաւոր, և սրածայր, որով խայթէ, և թունաւորէ զմերձեցեալսն յինքն։ Մորթ նորա է աղօտաչէկ, յղկեալ, փայլուն, և խժալին, ունելով 'ի վերայ թեփս կարճս, և բծաւորս։ Իսկ միսն պարարտ է և շահաւէտ, մանաւանդ 'ի ժամանակս գարնան, զորոյ գլուխն և տուտն անջատեալ, լինի դեղ անդամալուծութեան, թոքախտութեան, ցաւոց կրծոց, խոցուածոց լերդի, բորոտութեան, գողութեան, և այլ ախտից մորթոց. և 'ի մասնաւորի ծաղկանց, ուր հարկ լինի 'ի գրգռել զչափաւոր քիրտն։ Ձագն 'ի մի որովայն մինչև 92 յաւուրն. 'ի մարմնոյ նորա կազմի և դեղթափ թունոյ իւրոյ։ Զայս իժ եփեն և 'ի ջուր հասարակ, միանգամայն արկանելով 'ի նա և զքօքլէարիա, կամ զպուկլօսսա, են. զորոյ ըմպելեացն բաղադրութեան մորթիս գտանել 'ի գիրսն լօուէնցօ քաբէլլօ անուանեալ, զոր վարեն 'ի դեղ երկարատև ախտից, և այլ պէսպէս ցաւոց։ Գտանի սա 'ի բազում տեղիս Եւրոպիոյ. այլ առաւել յաճախագոյն և չարաթոյն յանդրխանուպօլիս. յայն սակս հարեալքն 'ի նոցանէ լինին ուռուցեալ, կորուսանեն զախորժակ կերակրոյ, ործան զմաղձ, և թալկանան. առթեն 'ի մարգն և զցնցումն մկանանց և ջղաց, զբորբոքումն, զպտոյտ գլխոյ, զմիգարգելութիւն, զճնշումն, և զանձկութիւն սրտի, զցուրտ քիրտն, զհեծկլտանս, և վերջապէս եթէ ոչ անձապարեալ փութով դարմանեսցեն, մեռանին անվրէպ։ Արտաքին դարման, և դեղ ապաքինութեան նոցա են՝ թիւրակէան, խատորն, աղն, սպիրիթօ տի սալ ամմօնիաքօն, 'ի վեր քան զամենայն խարումն հրաշէկ երկաթով, որով փութանակի այրուցեալ բանայ զվէրս, և 'ի դուրս վայթէ զմահաբեր թոյնս։ Իսկ ներքին դեղորայք բժշկութեան նոցա են՝ աղն իժի կոչեցեալ յիտալացւոց՝ սալ տի վիբէռա, անուշադր, ոգին եղջերն եղջերուի։ Այլ 'ի մէջ սոցա ես ընտրեմ 'ի

սկզբանն զայնոսիկ, որք առաւել ազդու են և առաւել օգտակար. որպիսի են մուռխածօ տի ամմօնիաքա, և թառթռիծօ տի բօթասսա։ Զորօրինակ. ա՛ռ տրամ մի՛ մուռխածօ տի ամմօնիաքա, և կէս տրամ՝ թառթառիծօ տի բօթասսա լուծեալ խառնեալ ը մի գրգալ ցուրտ ջրոյ. յոր յաւել նոյնչափ և ջուր հասարակ. 'ի խառնուրդէ աստի յերեք ժամս միանգամ առնու հիւանդն գրգալ մի արծոյ առ իւրաքանչիւր նուագ խառն ընդ ո՛ և իցէ զօրացուցիչ ըմպելւոյ։ 'Ի սոցին կարգս դասին և աչիտօ սոլֆօռիքօ, և աչիտօ նիթռիքօ, և աչիտօ մուռխաթիքօ։

Վիթռիոլոլում, կմ՛ քալքանթում, լտ։ վիթռիօլօ, իտ։ զաջը քըպրըզ, կամ պաճ, տճ։ ճազ, արբ։ և ըստ մեզ՝ արջասպ։ Է աղ ինչ հանքային. որոյ երեք տեսակք են. մինն է կանաչագոյն, և սպիտակաբեկ, զոր իտալացիք կոչեն վիթռիօլօ վէռտէ, կամ վէթռիօլօ տի մառթէ, կամ ֆէռռուճինօզօ. յաճախեն 'ի գերմանիա, և յանգղիա՝ ելեալ յերկաթահանէ իբրև զքարմարգանիկ. գոյացութիւն նորա բաղկացեալ յերկաթային մասանց և 'ի թթու աղեց, վասն որոյ սեղմիչ է և կծու համով, չոր և թափանցիկ բնութիւն. որ վարի 'ի սեաւ ներկս, և 'ի նիւթ ժանտաջրոյ. կոչի և վիթռիօլօ տի ֆէռռօ. տես և անդ։ 'Ի սմանէ ելուզանեն նաև ոգի ինչ ազդու և տապահամ՝ կոչեցեալ յիտալացւոց՝ աչիտօ վիթռիօլիքօ։ Երկրորդն է սպիտակ իբրև զշաքար, յորմէ և իտալացիք՝ վիթռիօլօ պիանքօ անուանեն, որ լինի 'ի սաքսոնիա՝ ելեալ 'ի հանքէն զոր իտալացիք ծինքօ կոչեն. գոյացութիւն նորա բաղկացեալ յառաջին նիւթոյ անտի ծինքօի, և 'ի տարապ կմ՛ 'ի թթու աղից. վասն որոյ կոչի և յիտալացւոց՝ սուլֆաթօ տի ծինքօ, կմ՛ վէթռիօլօ տի ծինքօ. տես և անդ։ Սակայն իբր 'ի բազում զանգեալ է խառնուրդ այլ և այլ մետաղաց և հանքաց, որպիսի են արճիճ, պղինձ, և երկաթ։ Սորա է տեսակ ինչ արուեստական, կոչեցեալ 'ի նոցանէ վիթռիօլօ պիանքօ առթիֆիչիալէ, որ քան զամենեսին ազնուական է, և առաւել յարմար 'ի գեղորայս։ Արդ՝ սա է յառաջագոյն մթին կանաչ, իսկ յետ կիզելոյ, և լուանալոյ փոխարկի 'ի գոյն սպիտակ։ Իսկ երրորդն է երկնագոյն իբրև զշափիւղայ. որ գտանի 'ի կիպրոս և 'ի գերմանիա, ելեալ 'ի պղնձափորանոցէ իբրև զառիկ։ Գոյացու-

թն սորա բաղկացեալ 'ի պղնձային մասանց, և 'ի ատապատղոյն աղից. յայն սակս կոչի յիտալացւոց՝ վի-թռիուօլօ տի ռամէ, կամ վիթռիուօլօ տի չիբրօ, և կամ վիթռիուօլօ թուրքինօ։ Ըստ արաբացւոց՝ թու-թեա զառաքա։ Ըստ տաճկաց՝ կէօզ թաշը։ Կոչի և յիտալացւոց՝ վէթռիուօլօ պլօ։ տես և անդ։

Վինթէռանա. տես քօռթէքս վինթհէռա առօմա-թիքա։

Վինում, լտ։ վինօ, իտ։ վէն, գղղ։ գռասի, յն։ Նէպիթ, կամ խամր, արբ։ շարապ, տճ։ մէյ, կամ միւլ, կամ պատէ, կամ սէկի, և կամ չէրապ, պր։ և ըստ մեզ՝ գինի։ Է հիւթ ինչ զուարճացուցիչ, և թմբրեցուցիչ. զոր հասարակօրէն ելուզանեն 'ի հա-տից խաղողոյ. որոց ոմանք են սպիտակ, և քաղցրա-համ, ոմանք կարմիր, և ախորժահամ. ոմանք սեաւ, և տապահամ. և ոմանք այլ և այլ գոյն գեղեցիկ։ Եւ որպէս գունովք և համովք, նոյնպէս և հոտովք զանազանին, բերելով զհոտ ծաղկի, դեղձի, խնձո-րոյ, ևն։ 'Ի մէջ պէսպէս տեսակաց գինւոյ ընտիր է և ազնիւ, որ լինի յանգղիա, 'ի գաղղիա, և 'ի սպա-նիա, նա յաւէտ 'ի կողմանս քանարեան կղզեաց, ո-րում ըստ բազմաց՝ չիք զուգական 'ի համօրէն աշ-խարհի։ Բայց թուի թէ և գոյացեալքն յաշխարհս մեր յարևելեան՝ մարթին ունել զզուգահաւասար ազնուութիւն ընդ վերոյիշելոցն։ Գինիք խթիչ են բնութք, առողջարարք են և պահպանիչ կենաց, և չափաւորապէս արբեալ՝ զգաստացուցանեն զթմբրու-թիւն կենդանական ոգւոյ, աճեցուցանեն զբնական զօ-րութիս, արգելուն զյորդութն քրտանց, կազդուրեն զթուլութն ստամոքսի, զարթուցանեն զախորժակն, բարեկարգեն զգործողութիւնս ստորին որովայնի, փրկեն զթանչն, և զգաշտանան կանանց, և միան-գամայն դիմակալեն թունից, փտախտութե, ջղային տենդից, նեխութե, և քաղցկեղի։ Իսկ չափազանցն՝ ծնանէ գլխոյ, և այլ ամենայն անդամոց. վի չփոթէ զզգայութիս, խանգարէ զյիշողութն և զիմացակա-նութն, ամբոխէ զուղեղն, և զհիւթս մարմնոյ. գըր-գռէ զբարկութն, և զձգտութն, պատճառէ զանառ-ժոր տկարութն, զբոլորական զըկումն ախորժակի, զթախծութն, զպտոյտ և զցաւ գլխոյ, զգիշերային և զակամայ գիճութիս, և վերջապէս կարճէ զկեանս։

Վինում առօմօֆէռռաթում, լտ։ վինօ առօմա-

Ֆեռռաթօ, իտ: չէլիկլի շէրապ, տճ: և ՟Թ մեզ՝ գինի հանգերձեալ երկաթով, կմ՝ պողպատիւ, բաղադրեալ 'ի չորս ունկի՝ ամենանուրբ խարտածոյ երկաթոյ, 'ի մի ունկի կինամոնէ, և 'ի չորս լիտր սպիտակ և ազնիւ գինւոյ: Զայս ամենայն օրէն է լնուլ յանօթ ապակեայ. զկնի չորից աւուրց պարտ է հեղուլ զգուշութեամբ յայլ ապակի անօթ, այնպէս զի մի խառնեսցի մրուրն ընդ մաքուր հեղանիւթոյն, և ապա տուր ըմպել հիւանդին երկու կամ երեք անգամ յաւուրն՝ զկշիռ միոյ դրգալի մինչև ցերկու: Զգեսցի գինըմպութեամբ այս ցերեկուն և ցքառասուն օր, և տեսցի օգտութիւն սորա մեծ 'ի զօրացուցանել զտկարութիւն ջղաց մկանաց և ստամոքսի, 'ի յարծարծել զապրեցութիւն փոքրային հիւթոց, 'ի նորոգել զոյժն տկարացեալ յերկար խօթութէ, 'ի ցրուել զախտարծարծ հիւթս խառնեալս յարեան, 'ի լուծանել զխցանս լերդի, 'ի փարատել զախտն գանտատութեն և զդալուկն, 'ի բարեկարգել զգործողութիւն մարսողութե, և 'ի բժշկել զջղային դժուարամարսութիւն. զի է խթիչ կամ գրգռիչ բնութ՟ե:

Վինում իբէքաքուանէ, լտ: վինօ քօն իբէքաքուանա, իտ: Է գինի հանգերձել իբէքաքուանա անուանեալ արմատով. հաչակաւոր է 'ի մասին օգտակարութե 'ի գիպուածս փորհարուե, և արիւնախառն հոսման որովայնի, զի է սեղմիչ բնութ՟ե: Զայս եթէ կամիս առնել, արկ զխոշոր փոշի արմատոյս ՟Բ կշռոյ ունկւոյ միոյ 'ի յերկու և կէս լիտր սպիտակ գինի. զկնի տասն աւուրց՝ օրէն է քամել յայլ անօթ ապակեայ՝ և պահել, և ըստ պիտոյիցն 'ի կիր առնուլ:

Վինօ. տես վինում:

Վիչէրա, իտ: գաւաթն իչի, պաղդատ, տճ: ըստ մեզ՝ փորոտիք, ընդերք, աղիք:

Վիչիա էռվիլիա, լա: մօքհօ, կմ՝ լէռօ, կմ՝ լէռի, կմ՝ վէճճիօլի, կմ՝ ինկռասսապուէ, կմ՝ սթռափքապուէ, կմ՝ ծիուլօ, կմ՝ ծիրպօ, և կմ՝ ճիուլօ, իտ: էռս, կամ էռս էռվիլլէռ, գղղ: պիթթըր վէչ, անգղ: պուռչագ, տճ: և ըստ մեզ՝ վիգն: Է բոյս՝ բուսեալ 'ի բուրաստանս և 'ի ցանկապատ վայրս իբր երկու ոտնաչափ բարձրութ՟ե. որոյ ցօղունն է թաւիչաւոր, մէջն ունայն, և անկիւնաւոր: Տերեւք նորա են երկայն, լայն, և թաւիչաւոր, որք երկու երկու եղա-

նեն հանդէպ միմեանց ։ Ծաղիկն ընդայլեն, եղջերաձև, եղերահերձ, և ծիրանախառն կապոյտ. ապա արտագրէ պատեան ինչ թաւիշաւոր, յորում լի են ունդք սեաւ և բոլորշի. զոր չորացուցեալ տան 'ի կեր դրաստուց և աղաւնեաց առ 'ի պարարտանալ. Նաև 'ի վառ արկանեն 'ի դեղ այտուցից. զի է կակղացուցիչ բնութ̃բ ։ Սա ևս կարգի 'ի դասս հինգ կակղացուցիչ ընդոց ։

Վիսքում ալպում, կամ վիսքում գուէրչինում, լտ ։ վիսքօ գուէրչինօ, իտ ։ կի, կամ կի քօմէօն, գղղ ։ միսթէլ, կամ միսթէլթօ, անգղ ։ պուած աղաձր, տճ ։ Է ծառ ինչ փոքրիկ՝ բուսեալ յեւրոպիա ծառս չորս ոտնաչափ բարձրութեամբ, որոյ փայտն է կարծր, ծանր, ամբողջ, արտաքուստ մթին կարմիր, իսկ 'ի ներքուստ սպիտակ հարեալ 'ի գոյն դեղին ։ Ճիւղք նորա կամ ոստք են կռնաչակերպ, փայլուն և կրկնուած ։ Տերևքն երկու երկու բուսանին առ միմեամբք. և են երկայն, ստուար և կարծր, նման ըստ իմիք տերևոց տօսախի ։ Ծաղիկն փոքրիկ, կռնաձև, և դեղնագոյն. իսկ պտուղն է մանր, ձուաձև, փափուկ, սպիտակ, և փայլուն՝ ըստ նմանութ̃ն պտղոյն կոչեցելոյ՝ ուվա սբինա. և 'ի միջի ունի հիւթ ինչ թանձր, մածուցիկ, սոսնձային, և կռուական իբրև զճիւթ, որով օծանեն զճիւղս ծառոց առ 'ի որսալ զթռչունս ։ Ճիւղ այսր ծառոյ կամ թփոյ, որ է լի իւղով և ցնդական աղիւ՝ լինի դեղ լուսնոտութ̃ե, և անդամալուծութ̃ե, մանաւանդ ախտի ցնցականի 'ի վերայ եկելոյ մանկանց, և օրիորդաց ։ Չափն 'ի կէս տրամէ մինչև ցերկու խառն ընդ մի լիտր ջրոյ ։

Վիօլա օտօռաթա, լտ ։ վիօլէ մամմօլի, իտ ։ վիօլէթ օտօռանթ, գղղ ։ մարչ վայօլէթ, անգղ ։ մէնէքշէ, տճ ։ պէնէվշիկ, կամ պէնէվշէճ, արբ ։ գիւաքիւշ, կամ սէպզիթայէ, պր ։ և ըստ մեզ՝ մանուշակ ։ Է ծաղիկ ինչ կապտագոյն, դեղնաբիծ, գեղեցկատեսիլ, հինգթերթեան, քաղցրահոտ, դառնահամ, և մածուցիկ. միանգամայն և դեղ օգտակար կրծոց և սրտի ։

Վուլթուռ, լտ ։ ավօլթօէօ, իտ ։ կիբս, յն ։ ագպապա, տճ ։ և ըստ մեզ՝ անգղ ։ Թռչուն մեծ, և կարակտուց. որոյ մագիլն նման է արծուոյ. փետուրքն մոխրագոյն. թռանիք մեծ. ձիրանք ոտից սպի-

րատուր, և է գիշատէր. վասն որոյ մոլեգնաբար յարձակի 'ի վերայ ապականեալ դիականց ։ Միս սորա ըստ ոմանց լինի դեղ վերնոտութե, և ցաւոց կիսոյ գլխոյ ։ Իսկ հոտն քակորոյ ունի զօրութիւն վիժողական ։

Վուլնուս. տես ուլնուս ։

Վոմիթօրիում, ըա ։ Է անուն ընդհանրական նշանակիչ ամենայն ործացուցիչ, կմ ժայթքեցուցիչ, և կամ փսխեցուցիչ դեղորէից. զոր արաբացիք կոչեն՝ մուքայի, կամ իհնալթ, կամ դէպլթ, կամ ֆիէլեայ, և կմ մթառաշ. և պարսք՝ զիառաշխտէն ։ Իսկ Թուրքք՝ գուստուրուճու, կամ գայ վէրիճի, և կամ խասիֆատ էթտիրիճի ։ Գիտելի է, զի այսպիսիկ ործացուցիչ դեղորայքս հնարեալ են յիմաստալից 'ի կորովամիտ և 'ի ճարտար բժշկաց, 'ի մասնաւորի սակս մաքրութե, և կողզուրման ստամոքսի. քանզի 'ի սմանէ կախեալ կայ գլխաւորապէս հիմն առողջութե բնութեա կենդանականի. և դժուարութի այսպիսիկ ճշմարտութե ապացուցականի՝ մարթիմք մատուցանել 'ի բնականացն իսկ յատկութէ ։ Քանզի տեսանեմք յանբան կենդանիս, զի 'ի ծանրաբեռնել ստամոքաց նոցին՝ յանմարսելի կերակրեղինաց և յայլ ո՛ և իցէ պատճառաց, նկրտեալ գուն գործեն ըստ բնութե թեւլադրելոյ 'ի դուրս վանել, և 'ի թեթեւացուցանել զինքեանս, և այնպէս պատսպարեն յառողջութի. ըստ սմին օրինակի, և սակս սոյն պատճառի հարկաւ պահանջին, և կարի պիտանացոյն համարին 'ի բնութեա կենդանականի դեղորայք այսպիսիկ փսխողականաց. որովհետեւ քաջայայտ է, եթէ 'ի մերս բնութ գտանի առաւել բազմապատիկ նիւթ ծանրաբեռնելոյ զստամոքսն՝ քան 'ի նոցին բնութե. ուստի և մեք 'ի վար արկանեմք զսոսա, ոչ միայն առ 'ի մաքրել զստամոքսն յաւելորդաց, 'ի դրակէ, 'ի թանձրամած աղունեից, և 'ի սուր կամ 'ի կծու մաղձից, եւն. այլ միանգամայն առ 'ի ցնցել՝ 'ի սթափել, և յարծարծել զազդեցութիւն փորային հիւթոյն, և միանգամայն մանրաթելից ստամոքսին, և 'ի զարթուցանել զախորժակն, ևս առ 'ի անքոյթ, և բազմաձայն ճանապարհ յարդարել շրջանաց արեանն, և նրբագոյն երակաց, և առ 'ի նրբացուցանել զթանձրահածու նորին ։ Բայց գիտել արժան է սատէն, եթէ յոլով անգամ ևս վնասակ բազում մերթ է յառաջ գալ

յանդէտս 'ի գործածութեան սոցին. Սմին իրի օրէն է միշտ 'ի կիր առնուլ զսոսա ը կանոնի քաջահմուտ, և ճարտարարուեստ բժշկաց, և ըստ մեծաւ զգուշութք և խոհականութք, նկատելով 'ի չափն, 'ի պարագայս կազմուածոց և խառնուածոց հիւանդին, և 'ի հանգամանս ախտից. և այդու օրինակաւ անտարակոյս և անվրէպ նպատակապատեհ լինին բնուն, և արգելուն զմեւտ այլատարազ և բազմապիսի ախտից՝ որք հանդերձեալք են 'ի վերայ գալ ախտակրին, եթէ 'ի մանկութեան, և եթէ 'ի չափահասս. 'ի դուրս մղէ զծաղիկն որ յառաջն գաղեալ և թագուցեալ էր 'ի ներքս, նոյնպէս և զխորշակարբս 'ի գիպուածս ջերմախտից: Դարձեալ, կարի շահաւէտ են վնասաբեր և յուղեղոյն հաղեց տղայոց, լուսնահարութեան, անդամալուծութեան, փորհարութեան, խթից ստամոքսի, և ստորին որովայնի, մանաւանդ միջահասական, և անընդհատ տենդից. 'ի վեր քան զամենայն ջղային տենդից կոչեցելոց իտալական բարբառով Ֆէպպրէ նէրվօզա, կամ մալինեա: Նոյնպէս 'ի միտ առնուլ պարտ է, եթէ որքան մարթ իցէ՝ փութալ 'ի վայր արկանել զփսխողականսն 'ի սկզբան անդ ախտին, և չէ բնաւ օրէն դանդաղկոտութք և զանցառութք անցուցանել զժամանակն. զայս թէ ոչ խառնեսցուք ախտն ընդ արեան, և ճապաղեալ ընդ բովանդակ մարմինն՝ վրիպակս մեծ գործէ. և եթէ ուրեք յակամայս քան պատահման անցեալ իցէ ժամանակն պայմանեալ, յայնժամ առաւել պատշաճողական է կիրառութիւն լուծողականի՝ քան փսխողականի: Այսպէս, եթէ մեծի խոհականութեան, և զգուշութեան պէտք են. քանզի 'ի գիպուածս նուրբ ախտից, և յղի կանանց, արիւն փախողաց, և որոց անզօր և տկարագոյն է կուրծքն, և անկեալ է պորտն, և ամորձիքն. որ ասի՝ էռնիա, այսինքն փոշտանկութեան, են, վնաս և վտանգ մեծ առթէ: Այլ եթէ ըստ պատահմունց հարկի պիտոյ լիցի 'ի կիր արկանել զփսխողականն 'ի վերոյիշեալ գիպուածս, յայնժամ պարտ է նախ չափոյն լինել յոյժ թեթեւ. երկրորդ՝ հարկ է զպորտն, և զամորձիսն 'ի բուն յիւրեանց սահմանն դարձուցանել, և ձեռնտու լինել բնութեանն 'ի գիրքայցս և 'ի հեշտաւոր փսխումն, տալով նմա յարբուցանել փոխանակ ջրոյ՝ զջուրն երիցկի, եւս զմեղրաջուր. և եթէ զկնի 'ի կիր արկանել-

ըս ղայտանիկ հնարս՝ դեռ ոչ զկայ տանու փախուստն, և չանդորրին վրդովմունքն, յայնժամ մատոյ նմա զդեղորայս Թմբրեցուցիչս, և մեղմացուցիչս, որով և վայելէ 'ի կատարեալ անդորրութեն :

Վօմիթուս, լտ: վօմիթօ, իտ: գուսմաք, տճ: Թառաշ, արբ: զէյքերաէն, պր: և ըստ մեզ՝ ործալ, կամ ժայթքել, և կամ փսխել. տես հտ. ա. երես 336 :

Վօմիթօ տի սանկուէ, իտ: էմօթէմեսի, լտ: ափ. Թուառուշակեմ, արբ: խունղէյքէրաէն, պր: գան քուսմաք, տճ: և ըստ մեզ՝ փսխումն արեան. տես զայս հտ. ա. երես 327 :

Վօմիքա, լտ: բօսթէմա, իտ: աղձնյէր չիպանը, տճ: և ըստ մեզ՝ խղխայթ Թոքոց, կամ խղխայթեալ պալար. տես հտ. ա. երես 92 :

# Տ

Տարհնէ մեծէնաէում. տես քհամէ :

Տաթթէռօ կամ տաթթիլօ. տես տաքթիլի :

Տառաքսում բաէթիկուս, կամ լիպանօթիս տառաքսում քաէթիկում, լտ: տառաքօ բաէթիկօ, կմ բառԹինաքա սալվաթիքա, իտ: քառօթ աը քամնար, գղղ: քէռօթա օվ քռիթ, անգղ: եաապան հավուճու, տճ: ալխթհիմում, կամ չէքաքուլ, և կամ գէզէռաք ալէռռի, արբ: և ըստ մեզ՝ սառալղեն վայրի : Է խոտ երկայն իբր մի և կէս ռտնաչափ, բոլորակաձև, գարոնագոյն, և Թուխամագոլոտ : Տերևք նորա նման են սերևոց սամԹի, բայց տուռւել նուրբ քան զնա : Ծաղիկն սպիտակ է և Թուխամագոլոտ. սերմն և գարոնագոյն և համեմանհոտ սերմունս քիմոնաչափ մեծուԹեն : Իսկ արմատն է երկայն, տտուար, Թեղալից և համակէտ : Բուսանի 'ի լերինս եւրոպիոյ, և 'ի կրէտէ. որոյ սերմն եփեալ 'ի ջուր և արբուցեալ, դեղ է փքախտութե, և խԹից որովայնի և արգանդի՝ առԹեալց 'ի փքոյ, եւ՝ նուազու ամսականն պարտուց կանանց. զի է խԹիչ և փքահալած բնութե : Զափն կէս դրամ՝ խառն ընդ ութ ունկի ջրոյ :

Տաքթիլն, կամ բհօէնիս տաքթիլիֆէրա, լա. տաթթէռօ, կամ տաթթիլօ, և կամ տաթթէռի, ֆռ: տաթ, գղղ: տէյթ բամ թռի, անգղ: խուռմա, տճ: պէլէհ, կամ թէմր, կամ միւսէլէկքա, կամ պխուռի, արբ: թէք, կամ ֆաճամ, և կամ ֆիճամ, պր: և բառ մեզ՝ արմաւ: Է պտուղ մանանաձև. տտուար, մաղիր, մթին կարմիր, քաղցրահամ, և մածուցիկ· միանգամայն և գեղ կրծոց, հազից, և ծիւրականն ախտից· զի է սնուցիչ, և կակղացուցիչ բնութք: Ունի և կարծրադրինդ և երկայնաձիգ կորիզ 'ի մէջն փոքր մի գառնահամ գոյացութք: Ծառ սորա սովորաբար բարձրանայ 940 ոտնաչափ և առաւել՝ միօրինակ, տտուար, և ուղիղ յարմատոյ մինչև ցգագաթն: Կեղևն է թանձր, կնճռապատ, և թեփոտելից ըստ նմանութեան մորթոց օձաեռան: Սաքն բուսանին 'ի գագաթան, որք տարածանին 'ի ձև հովանոցի, ունելով 'ի վերայ տերևս կարծրս, երկայնաձիգս, և սրածայրս զորէն երկաթոյ սլաքաց· 'ի մէջն սոցա ելանէ գոյացութն ինչ սպիտակ՝ յետալացեալ՝ ելաթէ կոչեցեալ, իսկ յարաբացւոց՝ կումառ· պատեալ զանազան քրձաձև պատենիւք, կամ կեղևովք մի քան զմի նուրբ, ոսկեգոյն կարմիր, աբաղդում իրս պիտանի: Բանայ և ծաղիկ մանր, և սպիտակ: իսկ պտուղ ծառոյն է նոյն իսկ արմաւն որ խիտ առ խիտ զետեղեալ յողկոյզ իւր կախի զծառոյն· զոր ժողովեալ չորացուցանեն՝ որպէս մեք զչամիչ, և առաքեն աստ և անդ մինչև 'ի մոսկով: Այս ծառ բուսանի 'ի զանազան տեղիս, որպէս յափրիկէ, յասիա, և 'ի հնդիկս· այլ ոչ է հասարակ ընդ ամենայն տեղիս: Գտանի յափրիկէ և տեսակ մի արմաւենւոյ, զոր արաբացիք՝ ճիպչիպալ խամի անուանեն, այսինքն արմաւենի գինարբեր, զորոյ հերձեալ զկեղևն, բղխէ հիւթ ազնիւ· որ կարի քաղցր է և զուարճացուցիչ, միանգամայն և լուծողական· բայց փութով գնայ յապականութն, մինչև բոլորովին 'ի քացախ փոխիլ զկնի երկուց աւուրց:

Տէրախմէնթէ· է բառ նորոց, և ստուգաբանի՝ թուլացուցիչ, կամ ակարացուցիչ: Կոչի և բառ նորոց՝ աթօնիա, կամ ասթէնախիա, և կամ ասթէնիա:

Տէլթօիտէ· անուանեալ այս իմանի՝ բաղկաբարձ· է մկան ինչ ուսոյ, որ համբառնայ 'ի վեր զբազուկ:

Տէնթիլլառիա, իտ: բլաւմպակօ էուռօբէա, լա:

անթըլլէա էօռօզէէն, գաղղ. ֆէուօքիէնըլէ առւժըրթ, անգղ. Է բոյս ինչ եւրոպիոյ և գերմանիոյ, որոյ բրմատն է սպիտակ, թեւաւլից, և ստուպահամ, միանգամայն և դեղ ցաւոց յօդուածոց, եթէ թանձրաթան կազմեալ արկցի 'ի վերայ:

Տեգեղթում, լա. տէքօցիօնէ, կամ տէքօթթօ, իտ. տէքօսիօն, գղղ. մըլթայուխ, արբ. ըստ մեզ՝ խաշու, կամ խաշոյ. է բժշկական ըմպելի. յորում եռացուցեալ են բոյսք, արմատք, տերեւք, կեղեւք, սերմունք, փայտք, և այլ այսպիսի նման նիւթք:

Տեքօթթօ ալպօ, կամ տէքօցիօնէ ալպա տէլ սիտէնհամ. Է աղբ ինչ խաշուի, որ սահեալ 'ի կեր արկանի 'ի գիպուածս փորհարութեան, դայլրագին թանչից և հոսման արիւնային փորալուծութե. զի է սեղմիչ, սնուցիչ և քաղցրացուցիչ բնութե. Օրինակ կազմելոյ զխաշոյս զայս: Առ երկու ունկի՝ նեղքին խմորն սպիտակ հացի, և նոյնչափ՝ քօռնօ տի չէռվօ քալչինաթօ. և գիր զայս յանօթ կաւեղէն, արկանելով 'ի նա և զչորս և կէս լիտր ջուր հասարակ: Ապա մերձեցո 'ի հուր առ 'ի եփել. յետ եփելոյ ևի բօռաականին, քամեա զայն կտաւով յանօթ ապիկած. յոր յաւել չորս ունկի՝ շաքար սպիտակ, և տուր տկարակրին երկու կամ երեք սկահակ զինւոյ յաւուրն: Ոմանք եւս յաւելուն 'ի նոյն ունկի մի՝ ջուր կինամոնի, և կէս ունկի՝ խէժ արաբիոյ:

Տեքօցիօնէ տիուրեթիքա, իտ. խարար միզերձի մըլթայուխ, տճ. Է խաշու ինչ միզաբեր, որոյ կերպն կազմելոյ լինի այսպէս: Առ ունկի մի արմատն կարտոնի. կէս ունկի՝ տերևն բաուիէլթասիաի. և վեց ունկի՝ ջուր հասարակ. և եփեա զայս մինչև 'ի պակասել այնր կիսով չափ, յաւելլով 'ի նոյն արամ մի՝ նիթռօ տի բօթասսա. ապա զտեալ՝ տուր հիւանդաց ժամէ 'ի ժամ մէն մի սկահակ արձոյ:

Տեքօցիօնէ տի սալսաբարիլլա, իտ. սաքսաանտ մըլթայուխու, տճ. Է խաշու ինչ բաղադրական, զոր մարթ է կազմել այսու եղանակաւ: Առ երեք ունկի՝ սալսաբարիլլա, որ լիցի մանրեալ. և ունկի մի լէնիօ կուաեաքօ, և գիր թրմոյ յերեք բինթա ջուր ժամս չորս. ապա եփեա զայն իբր ժամ մի և աւելի եւս, մինչև 'ի սպառել միոյ մասին ջրոյ՝ յերից մասանց անտի: Բայց պարտ է եփել զայն 'ի մէջ ապակած պուտան, և ոչ պղնձեայ անօթոյ: Ապա յա-

ռէլ 'ի նա կէս ունկի՝ սասսաֆրասս, և նոյնչափ՝ դսուատանս մաւեօռ, և երեք տրամ՝ ռէկօլիցիա. և թող զխառնուրդս զայս մարսել 'ի միմեանս ընդ մի ջոց կէս ժամու ։ Յետ այնորիկ քամեա զայն կտաւով. և տուր ըմպել 12 ունկի՝ ընդ առաւօտս, 12 ունկի՝ նախ քան զճաշն, և այլ նոյնչափ ընդ երեկս ։ Զգեսցի գեղըմպութիւնս այս ցերեկուն և ցքառասուն օր, և տեսցի օգտաւէտութիւն սորա մեծ 'ի մաքրել զարիւն, 'ի փարատել զախտս գաղղիականս, զյօդուածացաւս, զվէրս հնացեալս և արմատացեալս. զի է քրտնաբեր, մաքրիչ և փոքր մի թուլացուցիչ բնութք ։ Այլ օրինակ 'ի կազմել զնոյն դեղ ։ Առ չորս ունկի՝ սալսապառիլլա, և վեց տրամ՝ անթիմօնիօ, որ լիցի ծրարեալ 'ի մէջ կտաւոյ, և եփեա զայն վեշտասան և կէս լիտր ջրով, մինչև 'ի սպառել այնր կիսով չափ, յաւելլով 'ի նոյն և մի ունկի՝ լիգուիռիցիա, և երկու տրամ՝ անիսոն. և թող մնալ այնպէս իբր տասն վայրկեանս ։ Յետ որոյ 'ի կի՛ր արկ ըստ նախ աւանդեալ կանոնին, որ առաւել յաջողի, և մեծ օգտութիւն ընծայէ ։

Տէքօցիօնէ առի տամֆնէ մէցէռէօն, լա ։ Է խաշութիւնք ազդու և օգտաւէտ 'ի դիպուածս ցաւոց յօդուածոց, և գաղղիականի 'ի վեր երեւելոյ յո՛ և իցէ մասունս մարմնոյ. զի է խթիչ և քրտնաբեր բնութք ։ Առեփն 'ի չորս ունկեայ մինչև ցութ՝ երկու կամ չորս անգամ յաւուրն ։ Զայս եթէ կամիս յօրինել, Առ կէս ունկի՝ կեղեւն տամֆնէ մէցէռէօն անուանեալ անկոյ. և մանր ջարդելով զայն լի՛ց 'ի պղնձեայ արկանելով 'ի նա և զչորս լիտր հասարակ ջրոյ. մերձեցո՛ 'ի հուր առ 'ի եփել. և այնչափ օրէն է եռալ, մինչև սպառեսցի կիսով չափ և աւելի ևս, կամ յերից մասանց անտի մնասցէ մի մասն. ապա ա՛րկ 'ի նա կէս ունկի՝ լիգուիռիցիա. և դի՛ր վերստին առ հրով, և յորժամ սկիզբն առնէ եռալ, բաւական համարի եփն. յետ որոյ առցես 'ի բաց 'ի հրոյն, և անցուսցես ընդ կտաւ նուրբ ։

Տէքօցիօնէ առի քինա քինա քօմբօսիթա, լա ։ Է բաղադրական խաշու քինա քինայի. որ է դեղ օգտաւէտ ընդդէմ ջղային տենդից, մանաւանդ յորժամ անկեալ իցէ յուժոյ ախտակիրն ։ Առ 'ի կազմել զայս բաղադրութիւն, պա՛րտ է նախ զերեք տրամ քինան, և զնոյնչափ՝ սէռբէնթարիա վիռճինիանան լցանել 'ի փոշի

խոշոր, և ապա եփել զայն ութ ունկի՝ հասարակ ջրով, մինչև պակասեսցի մի մասն յերից մասանց անտի. և յաւելեալ լինի 'ի նա մի և կէս ունկի՝ սաքքարու արօմաթիկա, կամ կէս տրամ սբիրիթօ տէ մելիսաէ. և տուր հիւանդաց չորս դդալս սեղանոյ երիցս անգամ յաւուրն:

Տէֆէուէնթէ. սերմնաբեր. ըստ անդամազննոց նշանակէին անօթք ինչ մարմնոյ, որք ածեն զսերմն յերկուորեան:

Տիարհռակմա, լա: տիաֆռակմա, կմ տիաֆռագմա, իտ: և ըստ մեզ՝ սառծանի. է թաղանթ, կամ միան ինչ, որ 'ի թիկանց կուռէ եկեալ յառաջիկայս. և անտի առ 'ի վեր 'ի կուրծս շրջեալ՝ կայ կամարաձև. տես և զայսմանէ զբառն Օս:

Տիակոդիտիօ սօլֆօռաթօ. տես զբամմօնիաւմ:

Տիապէնթէ, իտ: սիտրիկ թութմամասը, թճ: տես հա. ա. երես 136:

Տիասքօռտիօ, կամ էլէթթուարիօ օբիաթօ, և կամ էլէթթուարիօ տիասքօռտիօ, իտ: էլէքթուարիում օբիաթում, լա: էլէքթիւէռ օբիաթ, գղղ: օբիէյթ էլէքչիւէրի, անգղ: սարմուսաք մաճունու, թճ: Է դեղ թանձրամած զօրէն թիւրակեաի, հոտաւէտ, և սաստկահամ, միանգամայն և օգտաւէտ 'ի դիպուածս ջղային ախտից, փորհարութե՛, ցաւոց և արիւնախառն հոսման որովայնի առթելոց 'ի թուլութենէ. զի է խթիչ, զօրացուցիչ և թմբրեցուցիչ բնութե՛: Զափն 'ի կէս տրամէ մինչև ցերկք և ցչորս յաւուրն, խառն ջրովք երեցկի, կամ ընդ գինւոյ: Եղանակ կազմելոյ զթանձրամած դեղս զայս: Առ կէս ունկի՝ բէբէ լունկօ, և նոյնչափ՝ կինամոն. առ և տէրեն սքօռտիօի, արմատն թօռմէնթիլլաի, և ճէնցիանաի յիւրաքանչիւրոցն երկու ունկի: Զայս ամենայն լոսեա 'ի փոշի մանրամաղ, յաւելլով 'ի նոյն զհինգ տրամ՝ օբբիօ, որ լիցի լուծեալ կամ զանգել ընդ գինւոյ. յետոյ արկ 'ի նա երկու և կէս լիտր մեղր անարատ, 'և յաւել այնչափ գինի սպանիոյ, որչափ պէտք իցեն առ կազմելոյ ը կանոնաց արուեստին զմածուցս զայս: Եւ գիտելի է, զի 'ի մէջի միոյ տրամոյ բաղադրութե սորա՝ գտանի ցորեան մի ամբողջ ափիոն:

Տիարրէ, կամ տիարրիա, իտ: ալվի ֆլուքսուս, լա: դէխիր, կամ մաշք իլ պաթն, արբ: տէրուննակէլ,

ալր։ խառլ, տճ։ և ըստ մեզ՝ փորձառութիւն, կամ ու-րոճայնահասութիւն, կամ փորագնացութիւն․ տես զայս-մանէ հա․ ա․ երես 295։

Տիաֆրակմա․ տես տիաբհրակմա։

Տիաֆրամմաթիտէ, լա։ ինֆիամմացիոնէ տէլ տիաֆրամմա, իտ։ և ըստ մեզ՝ բորբոքումն ստոծան-ւոյ․ տես հա․ ա․ երես 94։

Տիբլօիտէ․ ըստ անդամազննաց է գոյացութիւն ինչ ամնգային ընդ մէջ երկուց թթղանց սկաւառակի գլխոյ։

Տիլուէնթէ․ այսու անուամբ նշանակին ամենայն կերպ հեղեղկիչ դեղորէք, որք հեղեղկեն զհիւթս մարմնոյ։

Տիճիթալիս բուրբուրէա, լա։ տիճիթալէ բօրբօ-րինօ, իտ։ կրանտ տիճիթալ, կամ կանթըլէ, գղղ։ բըրբըլ ֆօքսկլըվ, անգղ։ Է բոյս՝ որ յաճախ բուսանի 'ի կողմանս եւրոպիոյ և գերմանիոյ 'ի չոր և յաւազուտ տեղիս՝ իբր երեք ոտնաչափ բարձրութ։ Ցօղուն սորա է սռուար իբր ըթաչափ, կարմրագոյն, բրդոտ, և մէջն դատարկ։ Տերևքն են երկայն, և զերահերձ, կնճռեալ, և կանթաւոր․ գոյն նոցա 'ի վերին երեսս է կանաչ, իսկ 'ի ներքսյ սպիտակ։ Համ նոցա դառն է միանգամայն և խառնակիչ ստա-մոքսի, մանաւանդ եթէ իցէ թարմ։ Ծաղիկն է մանր, երկայնաձև, և երփներանգ․ պտուղն երկայ-նաձև և մազոտ․ բերէ և սերմունս նուրբս։ Իսկ արմատն թելալից է, և դառնահամ․ գործածութի այսր բուսոյ մուծաւ յեւրոպիա զառաջինն յանգ-ղիացւոց․ յորոց էանց առ գաղղիացիս, և անտի յայլ տեղիս։ Տերև այսր բուսոյ՝ է ընդհանուր դեղթափ ընդդէմ պէսպէս ախտից առթելոց յուժգնութենէ, եթէ գուզնամասնեայ չափով 'ի կիր արկանիցի, այս-ինքն քառորդ մասն միոյ ցորենոյ մինչև ցերեք ցորեան յաւուրն՝ խառն ընդ կօմմա արապիքայի, կամ շաքա-րի․ և յետոյ առ սակաւ սակաւ աստիճանաւ մար-թիս աւաւելուլ զքանակն մինչև ց30 և ց40 ցորեան յաւուրն․ և այսու եղանակաւ և չափով 'ի կիր ար-կեալ՝ շիջուցանէ զտապ կամ զբորբոքումն արեան․ խափանէ զհազս ցնցակայնս և վատթարագոյնս, փա-րատէ զթոքախտութիւն, զթքումն արեան, և զհո-սումն թանչից՝ պատճառելոց յուժգնութէ․ բուժէ և զթոքացաւս նորոգ ընկալելոյ, զջրգողութիւնս,

զՃգնացուցական չնչարգելութիւնս, զզայլրացեալ յօդուածոցս, և փողոցս, զմիզարգելութիւնս, և միանգամայն ծիւրեալ մաշէ զքարն՝ եթէ գոյցի ընդ անցս նորա։ Այլև արգելու զքաքախումն կամ ըղ-դողդողջումն սրտի, զցաւս կշտի, և լանջամաշկի. օգտէ և ըմբռնելոց 'ի կատաղութէ կամ 'ի մոլեգնութէ, 'ի լուսնոտութէ, 'ի ցնցմանէ ջղաց, և յակամայ շարժմանց մկանանց. զի է թուլացուցիչ, կամ մեղկացուցիչ, և միզաբեր բնութբ։ Զայս տերև՝ ըստ նախատանդեալ չափոյ՝ մարթիս տալ ամենայն չափահասից 'ի կարեւորութն ժամանակի։ Իսկ տհասից՝ կէս մասն, և մատաղ մանկանցն երկեմենից՝ քառորդ մասն, և փոքր ինչ աւելի ըստ պէտոյութն։ Եւ իբրև տեսանեմք զնշանս, եթէ սկսանի մեղկանալ հարկանումն բազկերակի, և պատճառէ զնուաղումն սրտի, յայնժամ օրէն է կամ գլխովին խափանել զգործածութին, և կամ նուազել զչափն։ Իսկ եթէ ոք 'ի կիր արկանիցէ զսա առաւել քան զչափն պայմանեալ, յայնժամ պատճառէ անվրէպ զփսխումն, զլուծումն որովայնի՝ հանդերձ անտանելի խթիւ և ցաւով, զթալկումն, զպտոյտ գլխոյ, ըղցնորումն, զցնցումն ջղաց և մկանանց, և վերջապէս զմահ։ Այլ դեղթափ սորա և դարման են խթիչ և զօրացուցիչ դեղորայքն, որպիսի են՝ սէռբէնթառիա վիռճինիանան, վալէռիանան, քասթօռիոն, 'ի վեր քան զամենայն ափիոնն զգուշութբ և չափով ընծայեալ։

Տիուռէթիքօ. անուամբս այս նշանակին ամենայն միզեցուցիչ դեղորայք, որք բանան զանցս միզելոյ, որ առ թուրքս անուանի՝ իտրար վէրիճի մուալըճէլէր։

Տիսբէբսիա. է անուն ջղային դժուարամարսութե, զոր տաճիկք կոչեն՝ սինիրլէրին կիւճ սինտիրմեսի. տես զպայմանէ հտ. ա. երես 217։

Տիսէնթէռիա, իտ։ տիզէնթէռիա սուպլիմէ, լտ։ քան իսալը, տճ։ խունիաէվ, պր։ ղէխիրիլ տեմ, արբ։ և ըստ մեզ՝ արիւնախառն փորհարութի, կամ թանչախառն որովայնահոսութիւն, կամ արիւնային որովայնալուծութիւն, և կամ թթախառային փորագնացութի. տես զայս հտ. ա. երես 206։

Տիքթամնուս քռէթիքըուս. տես օռիկանոամ տիքթամնուս։

Տիփփիքօլթամ տի օրինէ. տես սթռամնկուռիս:

Տուլքամառա, կամ սօլանում տուլքամառա, լտ: վիթէ սալվաթիքա, կմ հեռապա վիթինա, իտ: տուսամէռ կամ մօռէլ ռամփանթ, կամ բուատան տ'օռէյլ, գղ: նայթ շէյտ, կմ պիթթըռսուվիթ, անգղ: եապան աամասը, տճ: և ըստ մեզ սառուգաքանի՝ որթ վայրի: Է բոյս՝ յազգէ սօլանում անուանեալ բուսոյ, որոյ ցօղունն է թեթև և ուղղալից. արձակէ բարունակս նուրբս, երկայնաձիգս, կարծրս, և ճիւղալիցս: Տերև նորա է երկայն, յղկեալ, սրածայր, և քաղցրահամ, միջախառնեալ անորժելի դառնութբ: Ծաղիկն գեղեցկատեսիլ, մանր, փնջաւոր, վարդաձև, և կապտագոյն: Բերէ և հատապտուղս ձուաձևս, փափուկս, կարմրերանգս, հիւթալիցս, և խժահամս. յորս են և սերմունք մանրիկք. իսկ արմատն մանր է և թելալից: Բուսանի 'ի խոնաւ և 'ի հովանաւոր տեղիս. և եթէ գտցէ ծառ մերձ իւր՝ յոր կարիցէ պատատիլ՝ բարձրանայ ցհինգ կմ ցվեց ոտնաչափ. ապա թէ ոչ՝ տարածի զերկրաւ, և ոչ բարձրանայ աւելի քան զերեք ոտնաչափս. որոյ բարունակք կամ ճիւղք չորացուցեալ, և մանրեալ 'ի մասունս մասունս, լինի դեղ օգտակար ընդդէմ խցանաց աւիշկեան անօթոց, փայծեղան, և լերդի. օգտէ ըմբռնելոյ 'ի գաղղիական և 'ի սքօռպութական ախտէ, և 'ի մաննաւորի որքինոյ, բորոտութե, և ցաւոց յօդուածոց. զի է թուլացուցիչ և քրտնեցուցիչ բնութբ: Զափն յերկու տրամէ մինչև ցութ խառն երկու լիտր ջրով. զոր պարտ է եռացուցանել այնչափ, մինչև 'ի սպառիլ կիսոյ մասին նորա: Յետ զտելոյ տուր ըմպել ախտակրաց ընդ միջոց 24 ժամուց: Են ոմանք՝ որք կըմպելիս զայս խառնեն կաթամբ, և ոմանք ողջոյն եփեն ընդ կաթին:

Տուռիցիա ալվի, կամ մօռօսուս, լտ: սթիթթիքեցա, կամ սթռինիմէնթօ տի վէնթռէ, իտ: ինքըպազլըք, կամ գապզլըք, տճ. և ըստ մեզ՝ պնդորովայն, կամ պնդութի որովայնի, կամ պնդացեալ որովայն, և կմ կալուածք որովայնի. տես զայսմանէ հտ. ա. երես 272:

Տռականթէ. տես թռակաքանթհում:

Տռակհմա, կամ տռաքհմա, լտ: տռամմա, իտ: տիրհէմ, տճ: տրհամ, արբ: և ըստ մեզ՝ տրամ. որով կշռանի՝ երեք սքռուբօլօ, և արժէ վաթսուն

ցուցան ։ Գիտել պարտ է եթէ սովորաբար եղեալ ( Յj ) զայս նշան խմանամբ զչափ միոյ տրամից · զոր 'ի գործ արկանեմք 'ի կշիռ գեղորէից ։

Տուսաթիքա ։ Է բառ բժշկական · որով նշանակի՝ ամենայն հզօրեղագոյն և սաստիկ թնդագոյն լուծողական գեղորէք, որք վրդովմամբ, և քերելով 'ի դուրս վանեն զխողձս, զմաղասս, և զայլ աղտեղութիս ստամոքսի և աղեաց հանդերձ խմիւք և ցաւովք · յայսմ կարգի են քանթարուցիս, սքամոնէում, քօլօչինթիս, կումմի կութտէ են ։

Տօսօնիքում բառտալիանքէս, կամ տօսօնիքում ռօմանօռում, լտ ։ տօսօնիքօ, իտ ։ տօսօնիք, գղղ ։ լեօբաստ՝ սպէյն, անգղ ։ տուրինճի, արբ ։ Է բոյս ինչ գարմագոյն երկայն իբր եւ կու ոտնաչափ, բոլորակաձև, և բազմանիւղ ։ Տերև սորա է լայն, բոլորշի, պայծառ կանաչ, և թաւամազուտ ըստ նմանութե տերևոց մեղրապոպի ։ Ծաղիկն սպիտակ և ճառագայթաձև ։ Բերէ և՝ սերմունս նուրբս և սևս ։ իսկ արմատն սպիտակ, օձապտոյտ, թելալից, և ծնրաւոր ։ Բուսանի յանտառս և 'ի հովանաւոր վայրս, նա յաւէտ 'ի կողմանս գերմանիոյ · որոյ արմատ փոշիացուցեալ և արբուցեալ խառն գաղջ ջրով լինի դեղ օգտակար ընդդէմ պտուտման գլխոյ, և բաբախման սրտի ։ Եւ ըստ ոմանց դեղ է եւս ընդդէմ թունից ։

# Ր

Րաբում, կամ ռաբում, և կամ պրասիքա րաբա, լտ ։ ռափա, իտ ։ ռավ, գղղ ։ թըռնիբ, անգղ ։ շալկամ, տճ ։ լիֆթ, արբ ։ և ըստ մեզ՝ շողգամ ։ Է բանջար ինչ յայտնի խաւարտեց՝ ծանօթ ամենեցուն · որոյ արմատն մեղմէ զխստութիւն հազից, քաղցրացուցանէ զդառնութիւն հիւթոց, և բարեխառնէ զարիւն · վասն որոյ և սոխէզ եփեալ ուտեն մարդիկ ։ իսկ սերմն սորա ըստ ոմանց ունի զմասնաւոր զօրութիւն 'ի սատակել զճճիս որովայնի, և 'ի մեղմել զչարութիւն թունից ։

Րաֆանուս սաթիվուս, լտ: ռաֆանօ, իտ: ռէֆօռ կամ ռատիս քիւլթիվէ, գղղ: ռէտիշ, անգղ: Թուռբ, տճ: Ֆիճլ, արբ: և ըստ մեզ՝ բողկ: Է արմատ ինչ բուսոյ իրիք ծանօթ ամենեցուն. որոց ոմանք են երկայնաձև, և ստուար, և ոմանք գնտակաձև և փոքրիկ: Ոմանք են սպիտակ, և ոմանք սեաւ. ունին ըստ մեծի մասին պճամս կծուս և խայթօղս, որք և են գէղջք օգտակարք ընդդէմ սքօռբութօի, միզարգելութե, երիկամնախտութե, ջրգողութե. զի են խթիչ, և միզացուցիչ բնութ̃: Իսկ զտերևս սոցա որք են կարմիր գունով, և ստեփ համով, 'ի կեր արկանեն 'ի բացօղական գեղօրայս: Զավին 'ի կէս դրամէ մինչև ցմի ամբողջ յաւուրն:

Րաֆանուս սիլվէսթրիս, կամ քօքլէարիա առմօռաչիա, լտ: ռաֆանօ ռուսթիքանօ, իտ: կռան ռաիֆօռ կամ ռէֆօռ սօվաժ, գղղ: հօռս ռէտիշ, անգղ: եապան Թուռբու, տճ: և ըստ մեզ՝ վայրի բողկ: Է բոյս՝ որ սովորաբար բուսանի 'ի կողմանս գերմանիոյ, և ռուսիոյ. որոյ ցօղունն է երկայն իբր մի և կէս ոտնաչափ, ուղիղ, գարոնագոյն, և մէջն դատարկ: Տերև սորա է մեծ, լայն, սրածայր, խորտաբորտ, և պայծառ կանաչ՝ նման ըստ իմիք տերևոյ խաշնդեղի: Ծաղիկն մանր է և քառաւակ թերթեան. պտուղն բոլորշի, մանր, և սերմնաւոր: Իսկ արմատն երկայն, ստուար, և սպիտակ. ունի պճամ յոյժ սաստու, և խայթօղ, որ և զլեզու ճաշակողին կիզէ համգոյն մանանխոյ. զոր ժողովեալ մուսթարտա կազմեն 'ի պէտս համեմելոյ զկերակուրս, նա և 'ի դեղ անդամալուծութե, ջրգողութե, և սքօռբութօի. մանաւանդ որոց են վիճակեալ մաղասայինն և ցուրտ բնութե. բանայ և զանցս միզի, և լուծանէ զքար՝ եթէ գոցի ընդ անցս նորա. զի է խթիչ և զօրացուցիչ բնութ̃:

Րակատա: Է ախտ ինչ աղեաց և սրբանին:

Րաճիա. տես ըէզինա:

Րամէ. տես աէս:

Րամէռինօ. տես ռօզմարինուս:

Րանա էսքուլէնթա, լտ: ռանա, իտ: կռընուիյլ, գղղ: Ֆրօկ, անգղ: գուռպաղը, տճ: տավտաա, կամ տըվտաա և կմ հաճէհ, արբ: պէզղակ, կամ պէկ, կմ չաղր, և կամ չաղզ, պր: և ըստ մեզ՝ գորտ: Է կենդանի երկակենցաղ քառոտանի յաճախեալ յեզերս

գետոց, և լճաց, և 'ի ճախճախուտ վայրս, փոքրանգամ, տափարակ, և տեսլեամբ ազեղ. այլ գլուխ նորա մեծ է ըստ համեմատութեան մարմնոյ և երկայնաձև, մորթն գորշագոյն, կամ թուխ, և ունի 'ի վերայ բիծս մանունս. տուտն բոլորշի և ստուարածայր. կերակուր նորա են խոտք, ճանճք, խլուրդմունք, և այլ փոքրիկ միջատք: Իսկ միսն համեղ և մածուցիկ. զոր բազմօրինակ հանդերձեալ ուտեն վասն ապաքինելոյ զախտս թոքոց, կրծոց, և ախոռնգանաց. զի է սնուցիչ, զովացուցիչ, և կակղացուցիչ բնութ‍ե̃: Զնոյն գործունէութիւն ունի նաև նորա արգանակն, և 'ի մասնաւորի՝ յարգելուլ զյորդառատ հոսումն քրտանց:

Ռանէլլա, իտ: գուռապաղաճիկ, տճ: և ըստ մեզ՝ գորտ փոքրիկ: Դարձեալ, այսու անուամբ իմանի՝ ախտ կամ ուռոյց ինչ 'ի վեր երևեալ ընդ լեզուաւ հուպ առաջակողմեան ատամանց:

Ռանինօ. անուամբս այս նշանակին ներքնակեղուեան նրակք:

Ռանունքուլուս, լտ: ռանունքօլօ, իտ: ռընօնքիւլ, կամ էռպ սառտօնիգ, գղղ: քելլբուխ լէվլա, կամ քռօ ֆութ, անգղ: տիւրիւն չիչէի, տճ: և ըստ մեզ՝ հրանունկ: Է բոյս ինչ փաղաղիչ, և մխասաբեր, որ յաճախ բուսանի 'ի կողմանս եւրոպիոյ 'ի բուրաստանս և 'ի խոնաւուտ տեղիս. որոյ ցօղունն է փոքրիկ և կանաչ: Տերև նորա պայծառ կանաչ, և եղերահերձ, ունելով 'ի վերայ բիծս սպիտակս: Ծաղիկն գեղեցկատեսիլ՝ նման բէոնի ծաղկի, թէպէտ մանր է քան զայն, այլ ըստ բարդութե̃ թերթիցն և պայծառութե̃ երանգացն ամենայնիւ նմանի նմա: Բերէ պտուղս հատս հատս գնտակաձևս, և սերմունս մանունս: Իսկ արմատն պարարա, թելալից, և փաղաղիչ բնութ‍ե̃, և է դեղ տենդից, մանաւանդ եռօրեայ տենդից. կապելով և եթ 'ի ներքոյ կողմանէ բութաց ձեռին, ուր երակն հարկանէ: Ասացաք փաղաղիչ և մխասաբեր. քանզի եթէ ոք կերիցէ յարմատոյ սորա, պատճառէ զբորբոքումն ստորին որովայնի, զյնցումն մկանաց, զձգտումն, կամ զքարշումն ջղաց բերանոյ, և շրթանց, որով և երևեցուցանէ ծիծաղիլ, և վերջապէս զմահ:

Ռապառապառօ. տե՛ս Ռհապառապառում:

Ռապիէս, լտ: ռապպիա, իտ: գուտուզլուք, տճ:

և ըստ մեզ՝ կատաղութիւն շանց, կամ այլոց կենդանեաց:

Րավակլիոնէ, կամ վաեռուօլօ սալվաթիքօ, իտ. ասու չիչէկի, տճ. և ըստ մեզ՝ վայրի ծաղիկ. պալարք կամ խաղալարմատք սորա նման են պալարաց ծաղկին. բայց լի են թափանցիկ չիճկաւ, և չորանան զկնի երից աւուրց:

Րատիուս, լտ. րաձձիօ, իտ. և ըստ մեզ՝ շառաւիղ. ըստ անդամազննաց է փոքր բազկոսկր:

Րատիչէ. տես րատիքս:

Րատիչէ տէլ պրազիլէ. տես իպէքաքուանհա:

Րատիքս, լտ. րատիչէ, կամ ռատիչէ, իտ. գէօք, տճ. ըուք, արբ. ռիխս, պր. Է անուն հասարակ նշանակիչ ամենատեսակ արմատոց թէ ծառոց, և թէ բուսոց. զորօրինակ ռատիքս ալթհէա, կամ ալթհաէա, այսինքն արմատ տուղտոյ. ռատիքս վալէռիանէ, այսինքն արմատ կատուախոտոյ. ռատիքս կռամինեա, այսինքն արմատ սիզոյ, և այլք բազումք, որք այսպէս՝ ռատիքս նախադրիւ կոչին:

Րատիքս գուինթուս ռեբէռիէնս, լտ. ռատիչի չինգուէ ռեբէռիէնթի, իտ. պէշ աչըրճը գէօքլէր, տճ. և ըստ մեզ՝ հինգ արմատք բացողականք: Յայս անուն կոչին արմատք ինչ հինգ տեսակ. որոց առաջինն է սատուար և ծամածուռ, զոր լատինք կոչեն՝ ռուսքուս: Երկրորդն՝ է արմատն ծնեբեկի, զոր կոչեն ասպառակուս: Երրորդն՝ է արմատն սամիթի, զոր կոչեն՝ ֆօէնիքուլում: Չորրորդն՝ է արմատն կարոսի. զոր կոչեն՝ պէթռօսէլինում: Իսկ հինգերորդն՝ է արմատն նեխուրի, զոր անուանեն՝ ափիում: Այդ արմատքս այսոքիկ են բնութեամբ միզաբեր, բացողական, և թուլացուցիչ. յոյժ սակս և սոէպ կազմեմք 'ի սոցանէ զդեղս միզացուցիչս, որք մաքրեն զանցս միզի, լուծանեն զխցանս միզանց խողովակաց, և միանգամայն խորտակեն զքար գոյացեալ 'ի փամփուշտս, և յերիկամունս մարդոյ: Այլ բաց 'ի հինգ տեսակացս՝ են և այլ բազում տեսակք միզացուցիչ արմատոց, որք սոորին են յոյժ քան զնախընթացսն. որպիսի են՝ կռամինեա, աքուսթէլլա, էռինճիօ, պխտամալլյա, ֆռակօլա, ֆէլչէ մասքիօ, քաբբէռօ, ևն:

Րաֆանօ ռուսթիքանօ. տես րափհանուս ռուսթիքանուս:

Րէալկառ ծիալը. տես տուրբիթկմէնթում:

Րէզինա, լտ: ռածիա, իտ: և ըստ մեզ՝ ռետին. Է անուն հասարակ նշանակիչ ամենայն խժանման նիւթոց եղուզելոց 'ի ծառոց և 'ի յարմատոց 'ի ձեռն կրկնահան ցքւոյ: Իսկ մինչ ասի, ռէզինա կուամեա-քօ, իմանի ռետինն ոչ՛ փայտի. ըստ այսմ և այլք բազումք: Բայց յատկապէս նշանակէ, զորս հոսին կամ հեղանին 'ի բնից, և յոստոց ծառոց. որոց ոմանք են չոր, և կարծր, որպիսի են մազտաքէն, խունկն, օշակն, կնդրուկն ևն: Եւ ոմանք հեղե-ղուկք, որպիսի են՝ քարզբանն, բալասանն, խէժն բևեկնայ, ևն. զորս 'ի տեղիս իւրեանց լիագոյն յիշատակեցաք:

Րէզինա բինաւս, լտ: ռածիա, կամ ռաչա տի բէցցօ կմ տի փինչիա, իտ: լիպան չամի, արբ: բամթիան, պր: չամ սագըզը, տճ: Է ռետին ինչ թանձրամած, եւղալի, և անուշահոտ. յորմէ կազմեն պէսպէս ապեղանիս առ 'ի պնդել զթուլութիւս միջոց, և 'ի բուժել զխոցս, և զցաւս ոսկերաց:

Րէզինա եալապա. տես մածխաթէռօ տի ծիալա-պա:

Րէզինա կուամեաչի. տես կօմմա կուամեաքօ:

Րէթինա: Բառս այս նշանակէ. ցանցատեսակ, որ է թաղանթ ինչ աչաց, յորում նկարին պատկերք առարկայից:

Րէի էլէթթի. տես ըհապառպարում:

Րէկօլիցիա. տես կլէչէրըհիցա:

Րէծինուս մօռպուս, կամ ֆէլիս սուֆֆուսիօ, լտ: ավրուկօ, կամ իթթերուիցիա, կամ իթթէռիկօ: և կամ իկթէռիա, իտ: իթէռիօս, յն: սարըլըք, տճ: սուֆռէ, կամ ֆուգուհ, և կամ եաչքան, արբ. զէրաի, պր: և ըստ մեզ՝ դալուկն. տես հտ. ա. երես 170:

Րէմաթիզմ. տես ռէումաթիզմ:

Րէմէտիում, կամ մէտիքամէնթում, լտ: րիմէտիօ, կամ մէտիքամէնթօ, և կամ մէտիչինա, իտ: էմ, կամ մալիձէ, կամ իլաճ, տճ: էտվիէ, էսիւֆ, կամ սիֆի, և կամ տէվա, արբ: տէրման, կամ չա-րէ, պր: որոց անուամբ նշանակին ո՛ և իցէ բժշկա-կան դեղորայք:

Րէնէլլա, իտ: տես հտ. երես 145:

Րէնէս, լտ, և իտ: պէօպրէկ, տճ: գիւլաւհ, կմ

գիւլմէ, արբ. կիւսէ, պր. և ը. մեզ՝ երիկամունք. են մանրք ինչ փափուկ կիսալուսնաձև, երկաւոր, զետեղեալք 'ի մէջս յաջմէ և յահեկէ, ողք ընդունին զշիճուկն զյաւելուածս արեան, և հոսեցուցանեն 'ի միզանցս կարգեալս 'ի սոյն։

Ռէումա, կամ ռհէումաթիզմուս, լտ. ռէումաթիզմօ, կամ րէմաթիզմօ, իտ. վէօճայիլ մէֆասըլ, արբ. օյնաք աղրըլարը. տճ. և ըստ մեզ՝ յօդուածացաւութի. զորմէ լիագոյն տեսցես հտ. ա. 'ի գլ. իզ. երես 275։

Ռէումաթիզմօ ինֆլամաթօռիօ. յօդուածացաւութի բորբոքեալ. տես հտ. ա. երես 275։

Ռէումաթիզմօ քռօնիքօ. տես հտ. ա. երես 280։

Ռէնիքօլէ, իտ. էրինկիէլէ, լտ. էրլանճըք, տճ. և ըստ մեզ ստուգաբանի՝ օձիկ, որ է պտուղ ինչ ժանտալից, կարմիր, և կարծրապինդ։ Սա ելանէ ընդ ձեռս, ընդ ոտս, և ընդ այլ կողմն մարմնոյ, և աճեցեալ հասանէ 'ի չափ արմաւոյ՝ հանդերձ սաստիկ մարմաջմամբ, և երբեմն եւս վտանգէ զախտացեալն սովաւ։

Ռէքթուս, լտ. ռէթթօ, իտ. և ըստ մեզ՝ ուղիղ, ուղղորդ։ Ըստ անդամազննաց՝ է անուն մկանաց ինչ գլխոյն և փորոյն։

Ռիզօ. տես ուրծա սաթիվա։

Ռիմէտիօ. տես րէմէտիում։

Ռիմէտիօ քօնթռօ լա թիկնա, իտ. դէլէ քարչը իլաճ, տճ. Է հեղանիւթ ինչ բաղադրական, օգտակէտ ընդդէմ գոնջութեան, և այլ վէրաց 'ի վեր ելելոց 'ի գլուխս. որ այսպէս կազմի։ Ա՛ռ երեք ունկի՝ սուլֆուռօ տի սօտա ռէչէնթէ, մի և կէս տրամ՝ սաքօնէ վէնէթօ, երեք և կէս ունկի՝ ջուր կրոյ, և երկու տրամ՝ կրկնահան ց.քի։ Յետ բարւոք խառնելոյ քամեա զայն ընդ խիտ կտաւ։ Եւ ապա ստէպ ստէպ լուանալ օրէն է զխոցաւորեալ մասունս գլխոյ։ Կայ և տեսակ ինչ սպեղանւոյ առ նոյն գոնջութի. որով օծանեն զվէրս գլխոյ երկու անգամ յաւուրն։ Զայս եթէ կամիս յօրինել, Ա՛ռ քսան ցորեան վէռտէ ռամէ, և նոյնչափ՝ մէռքուռիօ տօլչէ. ա՛ռ և տասն և կէս տրամ՝ բոմաթա ռէչէնթէ։ Զայս ամենայն խառնեա բարւոք 'ի մէջ անկանի, և լից յանօթ ապակեայ 'ի պահեստ։ Գտանի և տեսակ ինչ զօրեղագոյն փոշւոյ, զոր իտալացիք կոչեն՝

տունկ գալարաձիւղ, որ յաճախ բուսանի յեւրոպիա 'ի բուրաստանս և 'ի պարտէզս. որոյ տերեւն է բոլորշի, և եղերահերձ։ Ծաղիկ նորա ելանէ առ կանթիւ տերեւոյն, և է ողկուզաձև։ Պտուղն բոլորակ 'ի չափ հատից գինւոյ, կարմրերանգ, փայլուն, և փափուկ, ունելով 'ի միջի հիւթ կարմիր, և տտիպահամ, ունի և զսերմունս մանունս. և այն հիւթ՝ է պատուական դեղ ընդդէմ հրատապ տենդից և այլ ջերմնատոչոր ախտից առթելոց յուժգնութէ. զի է փոքր մի թուլացուցիչ, և զովացուցիչ բնութե։ 'ի հիւթոյ սորա շաքարախառն բաղադրութե կազմեն դշոշափակ. զոր լատինք կոչեն՝ սիրուփուս ռիպեզիօրում։ 'ի յախորժելի շարապէ սորա եթէ չորս ունկի հեղեալ լինի 'ի լիտր մի կամ աւելի ևս ջրոյ, թ որում և զխորդ ախորժելի եղէ քմաց, և առաւել լինի ախորժելի ըմպելիս այս 'ի միջոցի քանն և չորս ժամուց։

Րիզոռուէնթէ. է բառ անգամազննական ; և անուն մակագրական ձայնարձակ ջղաց։

Րհաբօնթիքում, կամ ռհէում ռհաբօնթիքում. լա: ռաբօնթիքօ, իտ. ռհաբօնթիք, գղղ: թառռէբօնթիք, անգղ: Է արմատ ինչ պոնտական. որոյ գոյնն և հոտն նման է խաշնդեղի, որպէս և բնութի և ներգործութե ըստ իրաց ինչ համաձայնի բնութե և ներգործութե նորա. նմին իրի պակաս է պաշել զչափ քանակութե, որով սովոր եմք 'ի գործ արկանել զխաշնդեղ։

Րհամնուս քաթհառթիքուս, լա: ռամնոքաթառթիքօ, կամ սփինա ինֆէքթօռիա, իտ: պրուրձէքինէ, գղղ: պուքթհօրն, անգղ: Է բոյս ինչ ծառաձև բարձրացեալ. որոյ բունն է դեղին և կեղևապատ. ոստք նորա փշալից են՝ թ նմանութե վայրի տանձենւոյ։ Տերեւն լայն, պայծառ կանաչ, և եղերահերձ։ Ծաղիկն փոքրիկ, և գալարագոյն։ Պտուղն գնտակաձև, փափուկ 'ի չափ գինւոյ. որք լինին երանգաւոր, և նմանք թուփ. մէջ իւրեանց կանաչ է և գարշահամ, ունի և կորիզս՝ բոլորակաձևս, և անառուս։ Սա յաճախ բուսանի յեւրոպիա յագարակս և 'ի ցանկապատ տեղիս. որոյ պտուղք եփեալ 'ի ջուր և արբուցեալ, դեղ է ջրգողութե, անդամալուծութե, յօդուածացաւութե, և հօրքխոյ. զի է լուծողական և թուլացուցիչ բնութե։ Զափն 'ի

վեց հատից մինչև ց20՝ խառն կէս լիտր ջրով ։

Րհապառպառում, կամ ռհէում բալմաթում, լտ։ ռապառպառօ, իտ։ ռիւպառպ բալմէ, գղղ։ բէլմէթըռ ռէպարբ, անգղ։ ցօխօռիլիա, յն։ ռաւէնտ, տճ։ ռուհա, արբ։ և ըստ մեզ՝ խաշնդեղ։ Է հաստակաւոր արմատ ինչ ստուար, երկայն իբրև զբազուկ մարդոյ, ուղիղ, բոլորակաձև, առոյգ, ստատալից, սպնգային, տապակահոտ, դառնահամ, կարմրախառն դեղին ՚ի ներքուստ և արտաքուստ, զոր արկեալ ՚ի ջուր կամ յօղի՝ ներկէ զգոյն դեղին․ որպէս և ՚ի ծամքելն ներկէ զլորձունս նոյնագոյն։ Բաղկում են տեսակք այսր արմատոյ, ըստ այլ և այլ կլիմայի գաւառային պէսպիսացեալ որակութ․ այլ ընտրագոյն համարի եկեալն ՚ի յասիական սկիւթիոյ, կամ ՚ի սինէացւոց աշխարհէ, ըստ որոյ և թուրքերէն ասի՝ ռաւէնտի չինի․ իսկ յիտալացւոց՝ ռապառպառօ տէլլա քինա։ Ազնիւ համարի՝ եթէ իցէ ծանր, ստառկահոտ, հաստատուն, որ մինչ բեկանի՝ ոչ փշրի․ և ՚ի բեկանիլ անդ երևին ՚ի միջի երակք երփներանգ, այսինքն դեղին, կարմիր, և սպիտակ։ Այս արմատ է գովելի, և առողջարար․ զի եթէ ոք ՚ի սմանէ տրամաչափ փոշիացուցեալ արբցէ, լուծանէ թեթևապէս ՚ի ստորուստ, արծարծէ զզօրութիւն ստամոքսի և փորոտեաց, և շիջուցանէ զանբարեխառն տապ լերդի․ և ՚ի մասնաւորի ապաքինիչ է փորհարութ, և յհոսման թանչից առթելոց յուժգնութենէ․ զի է մեղմապէս թուլացուցիչ, և ճճահալած։ Իսկ եթէ առցի ըստ չափու չորից կամ վեցից ցորենոց երկու կամ երեք անգամ յաւուրն, լինի դեղ փորհարութ, ահոկութե, արիւնախառն հոսման որովայնի, մէզարգելութեան, դալկան, և խցանաց լերդի, և ՚ի մասնաւորի ապականութե արեան։ Բոյս սորա կոչի ՚ի լատինացւոց՝ ռհապառպառում օֆֆիչինալում, յորմէ և ՚ի մեզ խաւրծիլ, կամ իշխուն․ աճի ըստ բարձրութե թփոյ, բազմածիւղ է և թթուահամ, զոր ՚ի սանդ ճմլեալ զհիւթ նորա մզեն, և եռացուցեալ պահեն ՚ի պէտս կերակրոց փոխանակ լեմոնի։ ՚Ի տեղիս տեղիս ընդ ջուր բաղադրեալ ըմպեն յամառայնի, որ է դեղ զովացուցիչ, և մաքրեցուցիչ։ Արձակէ տերև մեծ, լայն, պարարտ, բոլորակաձև, մթին կանաչ, ստուարականիթ, և թթուահամ։ Բանայ ծաղիկ փոքրիկ, և զանգակաձև։ Արմատքն տերևն

մեծ, եռանկիւնաձև, շագանակագոյն, և փայլուն ։

Րհուս ռատիքանս · տես րաւս ռատիքանթէ ։

Րհօմպուս, լտ: ռօմպօ, իտ: գալքան պալըղը, տճ: և ըստ մեզ՝ վահանաձուկն, որ է բոլորշի տափարակ 'ի ձև վահանի, յայն սակս և կոչեցաւ անուն նորա ։ Կերակրի փոքրիկ ձկամբք, և խաչափառիւք, որք գտանին 'ի հիւսիսային կողմանս միջերկրական ծովու ։ Իսկ միս նորա հիւթալից է և համեղ, և ախորժական ճաշակելեաց, մանգամայն և դեղ ախտից փայծեղան ։

Րութա կռաւէօլէնս, լտ: ռութա, իտ: ռիւ սօվաժ, գղղ: ռու, անգղ: ափիկօն, յն: սէտէֆօթու, տճ: սէզապ, կամ ֆէյճէն, կամ խունթիւֆ, և կամ հուլթիւֆ, արբ: կիւշմահէ, կամ նախօրի բէրկեան, պր: և ըստ մեզ՝ փեգենայ ։ Է բոյս մշտադալար, ծանրահոտ, իւղային, և դառնահամ, որ յաճախ բուսանի յեւրոպիա 'ի բուրաստանս իբր չորս տանաշափի բարձրութբ̃ ։ Տերև սորա է փոքրիկ, երկայնաձև, ծովագոյն, պարարտ, և յղկեալ ։ Ծաղիկն փոքրիկ, չորսթերթեան, և դժգոյն դեղին ։ Պտուղն կանաչագոյն, և խորտուբորտ, յորս բաղկանան սերմունք երիկամնաձևք ։ Իսկ սերմանն փայտային, դեղին, և թելալից ։ Տերև այսր բուսոյ չորացուցեալ 'ի հովանաւոր տեղիս, և եփեալ 'ի ջուր՝ և արբուցեալ, դեղ է նուաղութեն ամսական պարբերուց կանանց, ջղախտից, հեծկլտանաց, և այլազգին նման ախտից տալթելոց յուժգնութէ․ զի է թուլացուցիչ, և քրտնեցուցիչ բնութ̃ · չափն երկու տրամ՝ խառն մի լիտր ջրով ։ 'ի տերևոյ սորա մինչ դեռ է թարմ, ճմլեալ արկանեն 'ի ներքանս ոտից 'ի դեղ հրատապ ջերմախտից, և տենդաւորութեց ։

Րուպիա Թինքթօռում, լտ: ռօպպիա, իտ: կառանս, գղղ: մէտտըր, անգղ: դէօք պօեա, տճ: ֆուհվէթուսէ պաղինա, արբ: և ըստ մեզ՝ տորոն, կամ գունարմատ ։ Է բոյս որոյ ցօղունն է երկայն ճիւղալից, քառանկիւնաձև, խորտուբորտ, և ծնրաւոր․ տերևք նորա խիտ են և երկայն՝ ըստ նմանութեան տերևոց սպարինէ անուանեալ խոտոյ․ և են թաւամազոտ, և եզերահերձ ։ Ծաղիկն վեցանկիւնի, բաժակաձև, հերձոտ, և սպիտակ հարեալ 'ի գոյն կանաչ ։ Պտուղն սև և հիւթալից․ յորս են և սերմունք բոլորշիք ։ Իսկ արմատն երկայնաձիգ և ստուար

'ի չափ գրչի, կարմրերանգ, ծնրաւոր և փայտայլին: Զայս արմատ վարեն 'ի պէտս և ներկարարք առ 'ի տալ գոյն կարմիր զինչ և իցէ կտաւոյ, կամ այլոց իրաց, որպէս և բժիշկք 'ի դեղորայս առ 'ի մեղմել զչարութիւն թոքոց և 'ի բառնալ զխցանս արգանդի, և 'ի մասնաւորի ընդդէմ դալկան և ախտից թոքոց. զի է թուլացուցիչ, և թափանցիկ բնութեամբ: Ընդ այսուիկ արժան համարիմ յաւել ասել և զայն, զի զօրութիւն այսր արմատոյ այնչափ ազդու և թափանցիկ է՝ մինչ զի խառնեալ այնու զկերակուր, տան 'ի կեր կենդանեաց, զոր ընդ ուտելն թափանցեալ ներկէ զոսկրն կարմրերանգ. նմին իրի 'ի կիր արկանի նաև 'ի դիպուածս վատառողջ անձանց, և յերկարատև խօթութեանց: Ծաղկի 'ի կէս ամառն մինչև ցմի ամբողջ յաւուրն:

Բուպրուս իռէուս. տես Ֆռամմօխէս:

Բուպրուս Ֆռուտիքօսուս, լտ: ռօկօ, իտ: ռօնս, գղղ: պուէմպլ, անգղ: պէօյիւրթլէն թիքէնի, ահ: և բառ մեզ՝ մորենի: Է թուփ ինչ, որ յաճախ բուսանի յեզերս ճանապարհաց, և պարտիզաց, որոյ բունն է կանաչ, դիւրաթեք, բազմատոտ, ուղղաձիր, և փշալից: Տերևք նորա են երկայն, սրածայր, կարծր, և եզերահերձ. գոյն նոցա 'ի վերին երեսս պայծառ կանաչ, իսկ 'ի ներքոյ սպիտակ: Ծաղիկքն հինգաթերթեան են և կարճականթ, որք վարդանման ելանեն 'ի վերայ ճիւղոց՝ հանդերձ վեցանկիւնի բաժակօք, զկնի ծաղկանց յաջորդէ պտուղն քաղցրահամ նման ամենևին թթոյ: Իսկ արմատն նորա է և օձապատոյտ, միանգամայն և դեղ միզարգելութեան, և փորհարութեան: Այլ որպէս արմատ սորին թփոյ, նոյնպէս և պտուղն է դեղ ազդու ընդդէմ մաղասաբեր հիւթոց, փորհարութեան, փողացաւութեան, և տկարութեան կրծոց:

Բուսթիքուլա, կամ բէռոտիքա, պօլօփայքս, և կամ քէքասսա, և կամ կօլլինակօ, լտ: պէքքաչչիա, իտ: եէլզէ գուշու, կամ չուլլուք, ահ: Է տեսակ մի թռչնոյ. որոյ կտուցն է երկայն, և նուրբ. միս նորա պարարտ է և համեղ, միանգամայն և օգտակար դեղ նուաղելոց և ուշաթափելոց. զի է գրգռիչ և զօրացուցիչ բնութեամբ. ունի ևս մասնաւոր զօրծունէութիւն 'ի յառաջացուցանել զաւաղն: Իսկ լեղի սորա սրբէ զբիծս և զատապնատս աչաց:

Ռուս ռատիքանթէ, կամ սօմմաքօ ռատիքանթէ, իտ ։ րհուս ռատիքանս, լտ ։ սիւմաք Թռաքան, գղղ ։ բօյզըն Թրի, անգղ ։ Է ծառ ինչ բուսեալ 'ի գերմանիա 'ի բուրաստանս անկաղիննաց․ որոյ հիւթն տերևոյ կանաչ է և Թիւնաւոր ։ Թիւնաւորութիւն սորա որոշ այնու՝ զի 'ի ծաղքելն անգ՝ տոչորէ սաստկապէս զերբանն, և 'ի կլանելն առաւել քան զչափն պայմանեալ առթէ զանտոկալի խիթս և ցաւս ստամոքսի և աղեաց հանդերձ պալարիւ․ և երբեմն եւս զմահ․ Իսկ չափաւորապէս արբեալ՝ ապաքինէ զՋրգողութի, զանդամալուծութի, զտենդ միջահատական, և բորբոքջաղական, և զախտս խաղողակաց խաչափողին․ զի է Թուլացուցիչ բնութբ ։ Չափն 'ի կէս կշիռ ցորենոյ մինչև ցմի յաւուրն․ և յետ քանի ինչ աւուրց առ սակաւ սակաւ աշտիճանաւ մարթիս առաւելուլ զքանակն մինչև ց10 ցորեան խառն փոքր ինչ շաքարաւ ։

Ռուսքուս, կամ պրուսքում, կամ ռուսքուս աքուլէաթուս, լտ ։ պրուսքօ, կամ րուսքօ, և կամ րուսքիա, իտ ։ պռիւսք կամ ֆռակօն բիգան, գղղ ։ պըչըրսպրում, կամ նիհօլլի, անգղ ։ Է Թուփ ինչ, որ յաճախ բուսանի 'ի կողմանս եւրոպիոյ յանտառս և յանհարթ վայրս երբ չորս ոտնաչափ բարձրութբ, որոյ ոստք գիւրաթեք են և դժուարաբեկ ։ Տերեւք սորա ըստ իմիք նման են տերևոց մրտենւոյ ։ Ծաղիկն փոքրիկ և կարճականթ, պտուղն բոլորչի, կարմրերանգ 'ի չափ ոլեռան․ բերէ և սերմանս կարծրս և եղջերաձևս ։ Իսկ արմատն ստուար, ծամածռու, խորտաբորտ, կարծր, օձապտոյտ, և Թելալից․ համ ըստ մասին փոքր մի քաղցր է, և ը մասին դառն, և լինի դեղ օգտակար 'ի դիպուածս ջրգողութե, դալկան, և միզարգելութե, զի է Թուլացուցիչ և միզեցուցիչ բնութե․ յայն սակս կարգի 'ի դասս հինգ միզաբեր կմ բացողական արմատոց՝ կոչեցելոց յիտալացւոց՝ չինգուէ ռատիչի աբէռիէնթի մաճճիօռի ։ Չափն 'ի մէկ տրամէ մինչև ցութ խառն երկու լիտր ջրով․ զոր պարտ է եռացուցանել այնքան, մինչև սպառիլ կիսոյ մասին նորա․ և առեալ լինի ըմպելիս այս 'ի միջոցի 12 ժամուց ։

Ռօզա կալլիքա, լտ ։ ռօզա տօմէսթիքա, իտ ։ ֆիէօռ տէ ռօզ, գղղ ։ ռէտ օֆֆիչինէլ ռօզ, անգղ ։ Թրիանտաֆիլլօ, յն ։ վառդ, կամ վէթիռէ, արբ ։

Թերէն, կամ Նէսթէրէն, և կամ Նէսթէռուն, ալր։ և ըստ մեզ՝ վարդ. ծաղիկ գեղեցկատեսիլ և անուշահոտ ծանօթ ամենեցուն. յորմէ յօրինեն քաղցրաւենի, նաև դեղ փորհարութե, և տկարութե ստամոքսի, զի է խթիչ և սեղմիչ բնութ̃։ Զաղին կէս տրամ՝ խառն ընդ. ուլթ ունկի ջրոյ։ Նոյնպէս և բուժէ զվէրս բերանոյ, և լնդերաց։

Ռօզմառինուս, լտ։ ռօզմարինօ, իտ։ ռօմառէն, գղղ։ ռօզմէրի, անգղ։ պիպէրինէ, տճ։ հասալպիպան ախտար, արբ։ և ըստ մեզ՝ խնկունի, կամ խնկահոտ։ Է բոյս ինչ մշտադալար, կարծր, երկայն իբր չորս ոտնաչափ, ճիւղալից, և գորշագոյն, որոյ տերևքն են խիտ, կարծր, սակաւահիւթ, սաստկահոտ, դառնահամ, միանգամայն և համեմային։ Ծաղիկ նորա է փոքրիկ, որկորաձև, սպիտակ հարեալ 'ի գոյն կապոյտ, և քաղցրահամ. բերէ և սերմունս մանունս, և բոլորշիս։ Իսկ արմատն նուրբ է և թելալից։ Բուսանի յամենայն ուրեք, նա յաւէտ յերկիրս վիճակեալս բարեխառն օդոց։ Սովորաբար սկսանի ծաղկիլ 'ի ձմեռան։ Տերև այսր բուսոյ չորացուցեալ 'ի կիր արկանի 'ի դիպուածս ջղայինս դժուարամարսութե, տկարութե ստամոքսի, ախտից արգանդի, և այլ ախտից ջղաց առթեալց 'ի թուլութէ. զի է խթիչ և զօրացուցիչ բնութ̃։ Զաղին կէս տրամ խառն ուլթ ունկի ջրով. զոր օրէն է եռացուցանել առ հրով, մինչև 'ի սպառել այնր կիսով չափ. ապա անցուցեալ ընդ կտաւ՝ տալ ըմպել հիւանդին ժամէ 'ի ժամ դրգալ մի սեղանոյ։ 'Ի տերևոյ սորա ելուզանեն նաև ոգի ինչ ազդու և սաստիկ հոտաւէտ, որով օծումն առնեն 'ի վերայ ցուրտ ուռուցաց, և փօսացեալ անդամոց։

## Ք

Քուբէպա, լտ։ Է բոյս՝ բուսեալ 'ի պըրտաւլեա. որոյ ճիւղք յորժամ հասանեն 'ի սովորական չափ աճման, կամ 'ի վայր խոնարհին և ճապաղին զերկրաւ, և կամ պատատելով ելանեն զծառով իբրև զբաղեղն. բայց ոչ այնչափ ինչ բարձր։ Տերևք նորա

լտ. ռուպիկապրա, կամ ռուպիկաբրա, կամ քամօզիօ, կամ քամօզզաթթօ, և կամ քամօզզուօլօ, իտ. եապան գեչիսի, կամ գամըշա, տճ. եաֆմուր, կամ սիեա-չա, գղ. շամուայի պէառ, արբ. և ըստ մեզ՝ այ-ծեամն. Է տեսակ ինչ նախաղէ 'ի չափ հասարակ այ-ծի. որոյ եղջիւրք են սեաւ, երկայն, և փոքր ինչ կոր, միանգամայն և կարծրագոյնք. մորթ նորա չէ կամաց, միայն բարեհամ, միանգամայն և օգտակար գեղ փորձառութեն որպէս և արիւն նորա։ Իսկ լեղին ունի զմեանաւոր գործունէութիւն 'ի մաքրել և 'ի փա-րատել զբիծս երեսաց, և զաւաղապատս աչաց, և 'ի մամանաւորի զցաւս ատամանց։ Սա գտանի յանտառս և 'ի լերինս, և ելանէ 'ի բարձր գծուարակոխ և 'ի դահավէժ վայրս, և ննջէ եւ յայնպիսի որոգայթա-ւոր տեղիս. Թեթև է և սրընթաց։

Քաճէբութ, իտ. մելալէուքա, լտ. մելալէօք, կամ ապուա ալբան, գղղ. Է ծառ ինչ հնդկային, որոյ բունն է սեաւ, բայց տաղքն սպիտակ. 'Ի տերևոյ այսր ծառոյ ելուզաննեն իւղ ինչ կանաչագոյն և յոյժ կծուահամ և հոտաւէտ, զոր խառնեցեալ՝ օղիօ տի քաճէբութ անուաննեն, որով սովոր օծանեն զքունքս գլխոց առ 'ի փարատել զցաւս գլխոյ. այլ և բժշկէ զանգամալուծութիւն, զցաւս յօդուածոց, և ջլաց, օծելով և եթ զայնս. զի է խթիչ բնութե̄։

Քաթափլազմա։ Է անուն հասարակ նշանակիչ ամենայն բժշկական թանձրաթանից կազմելոց 'ի փոշեաց արմատոց, ընդոց, և խոտոց բաղադրելոց կաթամբ, կամ ջրով. որք կամ ցրուեն զպալարս և զայտուցս նորոգ 'ի վեր երևեալս, և կամ կակղացու-ցեալ հասուցանեն զնոսա։ Զայս բժշկական թան-ձրաթիւն արաբացիք կոչեն՝ հարուքա, իսկ տաճիկք՝ հիւգէամա լափաալ։

Քալամինթհա, կմ մելիսսա քալամինթա, լտ. քա-լամէնթա կմ նէբիթէլլա, իտ. քալաման տէ մօնթա-նէր. գղ. մօօլթաբօ պամ, անգղ. եապան նանէսի, տճ. բե̄ և մեզ՝ դաղձ, կմ վայրի անանուխ։ Է բոյս ինչ հա-մեմահոտ, որ յաճախ բուսանի յէւրոպիա 'ի լերինս և 'ի դաշտավայրս իբր մի և կէս ոտնաչափ բարձրու-թեամբ. տերևք սորա բոլորակաձև են և պայծառ-կանաչ, ունին զծայրս սուրս և զկողմունս սղո-ցաձևս. ծաղիկն ելանէ առ կանթիւ տերևոյն, և է փնջաւոր և ծիրանագոյն. պտուղն է պատեան որկ-

զանձև, յորում բաղկանայ սերմն սեաւ, և երկայնաձև. իսկ արմատն նուրբ է և թելալից: Տերև այսր բուսոյ եփեալ 'ի ջուր և արբուցեալ, դեղ է ակարութեան ստամոքսի, և աղեաց. զի է խթիչ բնութեամբ. Զարմն 'ի մի տրամն մինչև ցերկու խառն ութ ունկի ջրով:

Քալամօ ադօմաթիքօ. տե՛ս աքօրուս վէրուս:

Քալլօսէ. այսու անուամբ ըստ անգամագննաց նշանակի՝ փոքր մի պնդագոյն մասն ինչ ուղղոյն:

Քալքուլուս հումանուս, կամ լուտուս, լտ. քալքօլօ նէրի ռէնի, իտ. պէօպրէք թաշը, տճ. հասաթիլ գիւլաւհ, արբ. սէնկի մէսանէ, պր. Ըն նիւթ ինչ կարծրացեալինդ իբրև զքար. որ սովորաբար գոյանայ յերիկամունս ոմանց մարդկան, յորմէ 'ի նախնի լատինացւոց կոչեցաւ՝ պէծօսա հումանուս. Նոյնպէս և յարաբացւոց՝ բանդէհիրի ատէմի. որոց ոմանք անձեցեալ՝ լինին իբրև զկորիզ ձիթապտղոյ կամ արմաւոյ, իսկ ոմանք իբրև զմեծամեծ կաղինս: Այլ ոմանք իբրև զձուս հաւուց: Ոմանք են երկայնաձևք, և ոմանք գնտակաձևք, իսկ ոմանք անհարթք և խորտապորտք: Այլ գոյն նոցա այլ և այլ է. այսինքն մոխրագոյն, սպիտակ, կարմիր, կանաչ, գեղնաշորթ, և քրքմագոյն: Այրդ՝ նիւթս այս գոյանայ ըստ մեծի մասին 'ի տափս, յաղի, և 'ի ծծմբային հիւթոց, կամ յայլ և այլ հանքային ջրոց. տե՛ս և զայսմանէ հտ. ա. երես 113:

Քալքս վիվում, լտ. քալչինա վիվա, իտ. չօ, գղղ. լայմ, անգղ. գիրէճ, տճ. կիր, արբ. գէչ, կամ կանթրէմ, պր. և ըստ մեզ՝ կիր, կամ բռւռ: Ըն կարծր գորշագոյն քար ինչ կիզեցեալ հրով հնոցի, որ է փաղաղիչ բնութ, որոյ ջուրն լինի դեղ օգտակար ընդ դէմ գաղղիական ախտից, և այլ պէսպէս հիւանդութեց:

Քալօմէլանօ տի ռիվէռիօ. անուամբս այս ըստ քիմիականաց նշանակի սպիտակ նիւթն այն՝ որ կազմի 'ի անգլէ բաղադրելոյ սուպլիմաթօ քօռռօզիվօիւ. զոր վեց անգամ վերացուցանեն կամ բարձրացուցանեն 'ի ձեռն հրոյ, որով և լինի թեթև և մեղմ քան զմէռքուռիօ տօլչէն, և 'ի կիր արկանի զգուշութ 'ի գիպուածս ճճիաւոր տենդից, խոցանաց լերդի և ծառմանն ախտի գաղղիականի. և եւս ցաւոց և խաւարման աչաց առթելոց 'ի վավաշոտական ախտէ. զի է թա-

լացուցիչ և լուծողական բնութ̃ք ։ Չափն 'ի չորս կշիռ ցորենոյ մինչև ց12 խառն շաքարաւ ։ Եւ եթէ սկսանի լորձունք ընդ բերանն իջանել, յայնժամ պարտ է գլխովին խափանել զգործածութ̃ն, կամ դէթ նուազել զչափն ։

Քալումպա օֆֆիչինալում, կամ Մէնիսբէռմում բալմաթում, կամ քալումպէ ռատիքս, լտ ։ քօլում-պօ, կամ քալումպօ, իտ ։ քօլոմպ, գղղ ։ քօլօմպէ, անգղ ։ Է արմատ ինչ ստուար իբր բթաչափ, թեթև, սպնգային, դիւրաբեկ, թխակեղև, կիտրոնագոյն 'ի ներքուստ, իսկ արտաքուստ մթին դեղին, թե-թևահոտ, տտպահամ միանգամայն և դառն ։ Բու-սանի 'ի բազում տեղիս արևելեան Հնդկաստանի և ափրիկոյ ․ յորմէ բնակիչք երկրին չորացուցեալ տանին 'ի վաճառ ․ որ լինի դեղ պատուական ընդ-դէմ հնագոյն փորհարութ̃, արիւնային հոսման որո-վայնի, և լուծման արգանդի կանանց՝ յորում դի-պուածի փոխանակ տեռատեսական արեան հոսի հիւթ սպիտակ հարեալ 'ի գոյն դեղին ։ Ունի և զգործու-նէութ̃ն 'ի փարատել զջղային դժուարամարսութ̃ն, 'ի բարեկարգել զգործողութիւն ստամոքսի, և փորո-տեաց, 'ի խափանել զփսխումն արեան և զչափազանց հոսումն դաշտանի, 'ի սատակել զճճիս և զորդունս որովայնի, և 'ի բժշկել զանընդս միջահատականս ․ զի է թեթևապէս սեղմիչ, և խթիչ բնութ̃ք ։ Եւ զար-մատս զայս տամք ի կերպի փոշւոյ, կամ նաև իբրև թրմոց ։ Եթէ իբրև փոշի, պարտի լինել 'ի տասն կշիռ ցորենոյ մինչև ց30 'ի միջոցի 24 ժամուց ։ Իսկ եղանակն, զոր կազմեմք 'ի թրմոց, է այս ։ Առ եր-կու տրամ յարմատոյ սատի, և մանր ջարդելով զայն 'ի մէջ անկանի՝ լից յանօթ կաւեղէն, և դի՛ր թրմոց յութ ունկի՝ ջուր ջերմ զժամս 12 ․ և յետ քամելոյ՝ տո՛ւր ըմպել հիւանդին երկու կամ երեք անգամ յա-ւուրն զկշիռ միոյ կամ երկու ունկւոյ ։

Քամբհօռա, կամ Լաուռուսքամբհօռա, լտ ։ քամ-ֆօռա, իտ ։ քանֆռ, գղղ ։ քամֆրր թռի, անգղ ։ գէաֆուր թաւար, արբ ։ քէաֆուրի, թճ ։ և ըստ մեզ՝ քաֆուր ։ Է գոյացութ̃ն ինչ սպիտակ, կակուղ, թեթև, սաստկահոտ, իւղային, դիւրավառ ․ ցնդա-կան, և դառնահամ, ունելով ընդ դառնութեան և փոքր մի տտպութ̃ն ․ ունի՛ սա միւս ևս յատկութիւն, զի ապաւորէ զմանաւոր իւրն ցրտութ̃ն 'ի լեզուն

զչնի ծամքելոյ , որ չէ ինչ անախորժ ։ Ծառն սորա մեծ է և ոստաւլից՝ ըստ իմիք նման ընկուզենւոյ , որ առավորաբար բուսանի 'ի Ճիաբոն , և յարևելեան Հնդիկս ․ զորոյ հերձեալ զբունն , զոստս , զարմատս , և զտերևս , ելանէ գոյացութի ինչ թափանցիկ , որ այն ինքն է քափուր ։ Հանեն նաև այլ իմն եղանակաւ , զի զծառն զայն հատանեն 'ի մանր չերտս , և եռացուցանեն 'ի ջուր յանօթ ինչ 'ի ձև փամփշտոյ , ուր քափուրն 'ի վեր ցնդեալ մածանի 'ի կափարիչ անդր անօթոյն ։ Ընտիր համարի՝ եթէ իցէ սպիտակ երբև զջինջ սառն , զոր զտեն և մաքրեն 'ի կրոյ ․ զորոյ զազնիւն գործեն 'ի հոլանտա , ուր զտեն նովին իսկ կրով ․ որ լինի դեղ օգտաւէտ 'ի գլխացաւու ջղական տենդից , մանաւանդ յորժամ զուգընթաց լինի ընդ տախտս դողդոջումն և ցնորումն , հանդերձ ուժաթափութբ ․ և 'ի մասնաւորի 'ի յարդի ունիմք զսա ընդդէմ քաղցկեղային փտղացաւութե , ախտնդանոտութե , խելայուզութե , փտախտութե , անդամալուծութե , յօդուածացաւութե , արդանդացաւութե , լուսնոտութե և շնչարգելութե , և այլ աոցին նման ախտից առթելոց 'ի թուլութէ ․ զի է խթիչ կամ գրգռիչ բնութբ ։ Ունի նաև զգործունէութի մեղմելոյ զչարութե թունից , բառնալոյ զմանրամանագոյն ծակոտկէնս մարմնոյ , և յորդելոյ զարտաշնչութս , և սաստկելոյ զճճիս որովայնի ։ Զափն յերկու կչիռ ցորենոյ մինչև ցերկու տրամ , և փոքր ինչ առաւել ըստ պիտոյութե ։ Վարի և արտաքուստ 'ի բժշկութի քաղցկեղի , հնագոյն և նորագոյն վիրաց , չիաթիկքս անուանեալ ցաւոց յօդուածոց , ցուրտ այտուցից , գրգռման փամփշտոյ , և ցաւոց աչաց պատճառելոց 'ի տկարութէ ։ Այս գոյացութի լուծանի 'ի ձէթն կրկնահան ցքւոյ ։

Քամելուս ; լտ ։ քամելօ , իտ ։ տեվէ , տճ ։ կէմել , կամ ճէմել , արբ ։ հէւշտէր , ույս ։ և ըստ մեզ՝ ուղտ ։ Է տեսակ ինչ քառոտանի կենդանւոյ , յաճախեալ յափրիկէ և յասիա , մեծութի նորա առաւել քան զձիոյ , և նուազ քան զփղաց ․ գլուխն և ականջքն փոքր են առ համեմատութբ մարմնոյն , որպէս և տուտ նորա ․ տեսիլ դիմացն և հայեցուածն գաժան ․ պարանոցն երկայն , որպէս և ոտունք նորա ․ ողն նորա ուռուցեալ ոչ յայլ ինչ պէտս է՝ բայց 'ի բառնալ զբեռինս ․ ներքանք ոտիցն մսեղէն է ․ լայն,

՚ի գնալն յառաջուստ, և ՚ի չոր անդիս. բառնայ զծանրագոյն բեռինս զաւուրս 40, և 50 անընդհատ, և առնայ ծարաւոյ աւուրս քանի մի. և ուտէ ախորժանօք զչոր փուշս և խոտս բուսեալս յառաջուստ անապատս: Կեայ իբր ՚ի բազումս առաւել քան զամս յիսուն: Ախակալ է բնութբ, և հատուցանէ զվնասն կրեալ՝ յորժամ չունիցի երկիւղ յումեքէ: Սորա է տեսակ ինչ կոչեցեալ ՚ի բարբառ լատինացւոց՝ տռօմաս. զոր իտալք՝ տռօմատարիօ անուանեն, և արաբք՝ բակուատէլ կամ էճին. և տաճիկք՝ հէճին տէվէսի. իսկ հայք՝ ուղտերամակ, կամ առձիկ ուղտ. որ է բարեձիր մարմնով, նուրբ մորթով, և գեղեցիկ սրունիւք. արագընթաց է յոյժ. զի ըստ ճանապարհորդաց՝ չիք երիվար, որ համատարեսցի նմա. և նոյնպէս կարէ ծարաւել առնալ ՚ի ճանապարհի մինչև զաւուրս երիս: Միսք նորա թէպէտ և անախորժ են մերոց քմաց, սակայն ոչ նոյնպէս թուի արաբացւոց, որք ուտեն զայն: Կաթն նորա առողջարար է և մաքրիչ ՚ապականութեան արեան: Ծարուք նորա օգտեն թանձացուցութե, և կարծրապինդ ուռուցից: Լեղիք նորա զիմակալեն փորացաւութե. ատինքն պատրաստեն ՚ի յղութե զոյգն ինչ ուտելով՝ որպէս հաստատեն բազումք: Մէզքն փարատեն զչնչարգելութե: Իսկ զապալատքն վառեն փոխան փայտի յանփայտ անապատսն հարաւոյ:

Քամէտոսիօ. տես քհամէտոսիս:

Քամմառոս, կամ աստաքոս ոթուղիանթիլիս, լտ: Է խաչափառ ինչ ծովային. որոյ միսն է համեղ և ախորժական ճաշակելեաց, միանգամայն և դեղ թոքացաւութե, հիւծողական ախտին, փորացաւութե, խոլխեցզեռոյ, և խածուածոց կատաղի շանց, և ըստ ոմանց նախնի հեղինակաց՝ ունի եւ զզօրութի հալելոյ զքարինս երիկամանց:

Քամօմիլլա. տես քհամամէլոն:

Քամօմիլլա ռօմանա. տես քհամանէմէլոն ռօմանում:

Քանթառէլլէ, իտ: մէլօէ վէզիքաթօռիուս, լտ: քանթառիտ, գղղ: սբէնիշ ֆլայ, անգղ: ախպպատհինտի, արբ: տէռնու, պր: գունառուզ պէօճէի, կամ դօտօզ պէօճէկի, տճ: Է միջատ ինչ ՚ի չափ բզեզի, ժահահոտ, թունաւոր, և երփներանգ. այսինքն կանաչ, կարմիր, ոսկեգոյն, և ոմանք երկնագոյն.

և ռետա. որ յաճախ գտանի 'ի բուրաստանս փարթ-ղամ, իգալէոյ, և գերմանիոյ. այլ հաշակաւոր քան զամենեսին է որ լինի յագարակս և յանտառս սպանիոյ՝ ուր ծնանի 'ի վերայ ծառոց հացւոյ, տանձոյ, և կծանթրվենւոյ, յորմէ բնակիչք երկրին ըմբռնեալ առուաքեն 'ի վաճառ. որ վարի 'ի դէպս խարանագեղոյ կոչեցելոյ յիտալացւոց՝ վէշիքաթօրիօ, որ է մի 'ի գլխաւոր նիւթոց անտի. փտանց որոյ դժուարին է խարել կմ պալարացուցանել զմորթս մարմնոյ. 'ի սմանէ կազմեն և ոգի ինչ աղղու կոչեցեալ յիտալացւոց՝ թինթուռա տի քանթառիտաթօ. յորմէ վարեն իբր գեղ ջերմոտութե, շնչարգելութե, և ախտի ջրավախութեան: Զափն յերեք շթէ մինչև ց10 երկոտանգամ յաւուրն՝ խառն փոքր ինչ շաքարաւ:

Քաննապիս սաթիվա, լտ: քաննաբէ, իտ: շանվռ, գղղ: քըմմըն հէմբ, անգղ: էպպաք, կամ գէնէպ, և կամ գըննէպ, արբ: գէնուտան, կամ շէն, և կամ պէտ զէկ, պր: գէնտիր կամ գէնէվիր, տճ: և ըստ մեզ՝ կանեփ: Է բոյս, որոյ ցօղունն է ուղիղ, քառանկիւնաձև, անհարթ, բրդոտ, մէջն գատարկ, և թելալից, յորմէ յօրինեն զպարանս, և զառագաստս. գործեն սատի նաև կտաւ: Տերևք սորա են լայն. մթին կանաչ, եղերահերձ, որք ձևանան իբր ղթաթ բացեալ ձեռին մարդոյ: Ծաղիկն գեղնագոյն, իսկ սերմն ձուաձև, ծանրահոտ, և իւղային. միանգամայն և գեղ շահաւէտ ընդդէմ հոսման հիւթոց գաղղիականի, միզարգելութեան, և հազից ոաթելոց 'ի հարբխոյ. զի է կակղացուցիչ, և թուլացուցիչ բնութե: Զափն 'ի կէս ունկւոյ մինչև ցմի խառն մի լիտր ջրով: 'Ի սերմանց սատի արտահանեն զիւղն, որով օծանեն զհրով կիզեալ մասունս մարմնոյ առ 'ի զովացուցանել: Նոյնպէս և կաթեցուցանեն 'ի ներքս ունկան 'ի բառնալ զշչնջումն նորին:

Քանէլլա. տես չինամոմում:

Քանչէռ, լտ: կամպէռօ, կամ կրանքիօ, իտ: տապուկոպամպօ, արբ, խարշինք, պր: չողանօղ, լէնկէճ, կամ էնկէճ, տճ: և ըստ մեզ՝ խեչափառ, կմ խիղք, և կամ խեցգետին: Է ազգ ինչ խեցեմորթ ձկան. որոյ գլուխն, գլխաւթեն, և ոտքն են նման կարճիր. բայց միսն է սպիտակ, համեղ, և ախորժական ճաշակելեաց. միանգամայն և գեղ ընդդէմ սպականութե արեան, թոքացաւութե, շնչարգե-

ըութն, և միջարգելութն. այլև արգելու զձայթքումն երկարատև գործածմամբ։ 'ի գլուխս, և 'ի ստամոքս ամանց 'ի խեցեմորթացս գտանի քար ինչ աչաձև, կոչեցեալ յիտալացւոց՝ օքքի տի քանքրի, կամ կրանքիօ, որոց 14 և 16 կշռէ մի տրամ, զորոյ զներգործութիւն մարթիս տեսանել 'ի տառն O, 'ի կարգի իւրում։

Քանոնէլլեթթէ։ Է. պատրոյգ ինչ վիրաբուժական. որոյ են բազում տեսակք, այլ ընտրագոյնն 'ի նոսա կոչի՝ քանոնէլլեթթէ տուօլչիթիվէ, կամ սէմբլիչէ. զոր կազմեն 'ի մեղրամոմէ. 'ի յիւղոյ վարդի, և 'ի սպիանքօէ պալէնայի. զորոյ զպատաստս բազմագրութն թողեալ 'ի ճարտարութիւն արուեստաւորացն, յայտ առնեմք զգործածութիւն և զօգտաւէտութիւն նորա։ 'ի կամիլ ուրուք վարել զպատրոյգս զայս, պարտ է նախ թանալ զայն 'ի յիւղ քաղցր նշոյ, և ապա հետ զհետէ մուծանել զայն ընդ միզանց խողովակն, կամ լաւ ևս 'ի յառնելն անդամն ախտաժետաց՝ առ 'ի լայնեցուցանել, և դիւրապատրաստ յօրինել զհոսումն միզի, և 'ի մասնաւորի 'ի բուժել զվէրս և զուռուցս գոյացեալս 'ի նոյն անդամն։ Սակայն պէտոյ է ուշ ունել, զի եթէ 'ի գործածութէ սորա սկսանի վշտանալ և զայրանալ ախտն, հարկ է յայնժամ իսկ և իսկ միջահատել։

Քանքէրօ, իտ։ քանքէռուս, լա։ կէմալ Ֆարահ, կամ աքիլէ, արբ։ եէմէճէ, կամ երեարը, տճ։ և ըստ մեզ՝ խօլխեցգեանի, կամ խլըդեհի, և կամ քաղցկեղ. տես հտ. ա. երես 357։

Քանքէրօ աքէռւթօ, կամ ուլչէռաթօ. տես քանքէռօ։

Քանքէրօ օքքուլթօ. տես քանքէռօ։

Քանքռէնա. տես քանկրէնա։

Քանֆօրա. տես քամբհօռա։

Քաշչիու. տես Թէրրա քաթէքում բրէքարաթում։

Քասթանէա, լտ։ քասթանէօ, իտ։ շաթէնէր, գղղ։ չէսնըթ, անգղ։ գէհիլ կամ ապուֆառլա, արբ։ շապալութ, պր։ գէստանէ, տճ։ և ըստ մեզ՝ շագանակ։ Է պտուղ ինչ ծառակեղև. որոյ առաջին կեղևն է փշալից, որ 'ի հասանելն ինքնին բացեալ լինի ընդ մէջ։ Գոյացութիւն սորա կամ միջուկն՝ որ է սպիտակ և կարծր՝ լինի կերակուր, նաև դեղ

ըմբռնման արգանդի կանանց, յորում գիպուածի փոխանակ տեռատեսական արեան հոսի հիւթ սպիտակ. զի է մնուցիչ և սեղմիչ բնութ̃ե:

Քասթօռ, կամ Ֆիպեռ, լտ: քասթօռօ, իտ: քասթօռէօմ, գղղ: ան̃ի պիվըռ, անգղ: գունտուղ, տՃ: սէկկիապ, պր: և ըստ մեզ՝ կուղբ, կամ բէշկ մէշկոյ: Է տեսակ մի երկակենցաղ քառոտանւոյ 'ի չափ վեցամսեայ խոզի, որոյ միննն կշռէ մինչև 10. 20 օխայ. գլուխն նորա նման է գլխոյ լեռնային մկան, կամ շան, աչքն փոքրիկ յոյժ, ականջքն կարճ, բոլորշի, և թաւամազուտ: Բաց 'ի վեշտասան ատամանց կարգելոց 'ի ծամելն, ունի չորս ևս մեծագոյնս հատուս. որովք կրծէ և կտրէ զփայտս, և զծառս մեծամեծս: Մորթ նորա սովորաբար գորշագոյն. բայց գտանի և սպիտակ, որ լաւագոյն համարեալ է և առաւել մեծագին, զի սակաւագիւտ է. սեւն 'ի թիկնամէջն, և 'ի պարանոցն է թխագոյն, փայլուն, կարճ, և երկայն իբր բթաչափ. իսկ փորն մոխրագոյն, և առաւել կարճ. ոտքն կարճ, որոց առաջինքն նման են շանց, որովք վարէն 'ի տեղի ձեռաց. իսկ յետինքն իբրև զծովային խոզից կից գոլով մատանց մաշկաւ, պատշաճեալք առ 'ի լողել 'ի ջուրս. տուտն ձկնաձև լերկ և կապտագոյն. համ մսոյ մանաւանդ յետին կողման մարմնոյ նորա՝ ունի զհամ մսոյ ձկան. միանունքն պարարտ և ուժեղ. թոքն ըլթակաւոր՝ որպէս և լեարդ նորա. փայծաղն փոքրիկ, բոլորակ, և կարճ, իսկ բնութիւն քաղցր հեզիկ և դիւրընտել: 'Ի ներքոյ որովայնի կրէ քառեակ պարկս, որ է գոյացութիւն ինչ թաղանթային, մղթին կարմիր, ջղալից, իւղային, ծանրահոտ և տտպահամ, միանգամայն դառն, որ լինի դեղ ազդու ընդդէմ ջղային ախտնդանատութե̃ն, վերնատութե̃ն, արգանդացաւութե̃, նուաղութե̃ ամսական պարտուց կանանց, անդամալուծութե̃, և այլոց այսպիսի ախտից աւթելոց 'ի թուլութէ. զի է խթիչ, և խաղաղիչ բնութ̃ե: Եւ 'ի մասնաւորի 'ի բարեխառնել զամբոխեալ գոլորշիս արգանդի, 'ի խափանել զցնցումն, կամ զըռնի շարժումն մկանանց, 'ի բուժել զտենդն որ կոչի յիտալացւոց՝ թիֆօ, և 'ի նպաստել աղայաբերից: Զափն 'ի 10 ցորենոյ մինչև ց30 յաւուրն՝ խառն ընդ ռ և իցէ համեմային ջրոյ: Փոշի սորա վարի և 'ի հատադեղս, կամ 'ի հապս,

այլ թաղանթն և ջիղք այսր գոյացութեան վարին յը-գի [?] գինւոյ, և 'ի ցքւոյ [?]: Զայս գոյացութիւն իտալա-ցիք կոչեն՝ քասթօռօ: Արապք՝ ճիլպէյտէս, կամ պէնէտոսլր. և պարսք՝ օղլան աշի: Իսկ տաճիկք՝ գունատուղ հաւասի: Այս կենդանի սովորաբար գտանի յեւրոպիա, և յամերիկայ, նա յաւէտ 'ի ռու-սաստան: Կերակրի 'ի ջուրս՝ ձկամբք և խեցեմոր-թիւք. իսկ 'ի ցամաքի՝ բուսովք, ուտելով զտերևս, զպտուղս, նաև զկեղև և զփայտ ծառոց:

Քասսիա Ֆիսթուլա, լտ: քասսիա, իտ: քաս, գաղղ: բըրճինկ քէշշիէ, անգղ: հըրտարշէմպէ [?], արբ. և տճ: և ըստ մեզ՝ կասիայ: Է եղեգնաձև պտուղ ինչ կարծրակեղև, երկայն իբր թաղկաչափ, և ըստ-ւար բթաչափ. որոյ գոյն 'ի սկզբանն՝ է կանաչ, և ապա առ սակաւ սակաւ թխացեալ սևանայ, և 'ի մէջն իւրում պարունակէ զմածուցիկ և զսեաւ հիւթ ինչ թանձրամած մեղրանման քաղցր 'ի խորշս խորշս թաղանթանեալ, այլ խիտ անջրպետիւք բաժա-նեալ. յիւրաքանչիւր խորշս ունելով և կորիզս ըստ-ւարս և ձևացեալս իբրև զկորիզս եղջերենւոյ. և այն հիւթ է դեղ աղիւ ընդդէմ պնդութեան որովայ-նի, և ամենակերպ ջերմատաչոր տենդից, և բոր-բաքօղականութեանց. զի է զովացուցիչ, թուլացուցիչ, և մեղմապէս լուծիչ: Զափն 'ի կէս ունկւոյ մինչև ցերկու: Ծառ սորա բուսանի 'ի հնդիկս, յեգիպ-տոս, և յամերիկա. լինի 'ի պարտէզս և 'ի խոնաւս տեղիս. աճի իբրև 30 ոտնաչափ. ճիւղալից է և գորշակեղև. տերև նորա թանձր է երկայնաձև և սրածայր. ծաղիկքն հինգթերթեան դեղնագոյն, և անուշահոտ, որք փունջս փունջս փթթին 'ի ծայրս կանթից:

Քավալլօ. տե՛ս էգուուս:

Քավավէնա. բառ իւս այս Ը [?] անգամամաղինայ [?] ցու-ցանի՝ երակ ինչ գլխաւորագոյն ծագեալ 'ի կորն-թարդ մասանէ լերդին, յորմէ իբրև 'ի բնոյ շառա-ւիղեն բազում երակք. որ կոչի և վէնամանա, կամ վէնա մաւորէ, և կամ վէնա ասաւիչէ. այսինքն երա-կաբուն:

Քարապէ, կամ սուչչինում էլէքթռիքում, և կամ ամաաշքիթուինում, լտ: սուչչինօ, կամ ամպա ճիալ-լա, իտ: սիւքսէն, գղղ: սըքսինիք, անգղ: էլէք-դռօն, յն: դէհրիպար, տճ: զահաամսն, արբ: և Ե

փխանալ, գղղ. քերիօբիլ, անգղ: Է բոյս երկամ-
եայ երկու ոտնաչափ, նուրբ, անհարթ, և բազմա-
ճիւղ, որոյ տերևն է երկայն, անհարթ, կարծր, և
գերահերձ, մթին կանաչ, և աղուամազոտ: Ծա-
ղիկն ելանէ 'ի գագաթան, և է բազմաթերթ, և
դեղնագոյն. պտուղն գնտակաձև, և երկայնականթ,
ունի և կորիզս երկայնաձևս: Իսկ արմատն երկայն,
արտաքուստ թուխ, իսկ 'ի ներքուստ սպիտակ, չոր-
ջապատեալ նուրբ թեփովք, զոր ճմլեալ մատամբք՝
արձակէ զհոտ մեխակի. համով է դառն միանգա-
մայն և համեմային. յորմէ կազմեն դեղ միջահասա-
կան տենդից, հարբխոյ, ցաւոց գլխոյ և նուաղման
սրտի առթելոց յուժգնութէ. զի է թուլացուցիչ
բնութ. և 'ի գործածութե պարտ է պահել զչափ
քանակութե, որով սովոր եմք 'ի վար արկանել զդե-
ղէն կոչեցեալ քինա քինա: Սա յաճախեալ է 'ի կող-
մանս եւրոպիոյ 'ի ցանկապատս և 'ի պարտէզս ան-
ղիս՝ անդարման 'ի մարդկանէ. լի է զինդարկան բազում
և աղիւ:

Քարիօբհիլլուս առօմաթիքուս, կամ էուճէնիա
քառիօբհիլլաթա, լտ: կառօֆանի, իտ: ժիռօֆլէս,
կամ ճիռօֆլիէ, գղղ: քլօվըս, անգղ: առօնֆիլ, արբ:
քառանֆիլ, տճ: և ըստ մեզ՝ մեխակ: Է փոքրիկ
բևեռաձև պտուղ ինչ ծառոյ իրիք եղելոյ 'ի կող-
մանս հնդկաց և ճեմբօնայ, զոր ծառ մեխակաբեր
անուանեն. Ծ կեղևոյն նման է ձիթենւոյ, և է բազ-
մոստեան, և տերևալից. տրամադրէ ծաղիկս բազմա-
թիւս. որք զառաջինն սպիտակ են, յետոյ կանաչա-
գոյն, հուսկ յետոյ 'ի գոյն կարմիր փոխին և անգա-
նան, և յայնժամ են տերապէս մեխակ. զոր բնակիչք
երկրին ակամբին ժողովել յամենայնն հոկտեմբերի մին-
չև ցփետրվար, և չորացուցանեն յարևու, որք լինին
մթին դեղին, անուշահոտ, և սրահամ, որք և զխ-
զու ծաղկաղին կեղևն. յորոց գործեմք դեղ ազդա-
ընդդէմ փտտակար հիւթոց, տկարութե ստամոքսի,
և գլխոյ և կաթուածոց լեզուի, զի է խթիչ բնութ:
'ի սմանէ ելուզանեն նաև իւղ ինչ մթին կարմիր
սաստկահոտ, և կարի սրահամ, միանգամայն և դեղ
մեղմիչ ցաւոց ատամանց: Զափն յերեք չթէ մինչ
ց6, զոր պարտ է կաթեցուցանել 'ի վերայ դոյզն
ինչ բամբակի և դնել 'ի ծակոյկին փտեալ ատամանց:

Քարպոպեքուլուս, լտ: քառպօնկօ, կամ քառ-

տուձկօ, իտ: իւմուռձակ, իւմռու, տճ: գուպայէ, արբ: և ըստ մեզ՝ եղունդն կամ պալար ժատախտին. է այսուց ինչ գժնդակ, և սապտկակկիծ, որ սովորաբար՝ ՚ի վեր երևի յաձուկս, յանեթատակս, կամ յանեութս, յեռին կողմունս ականջաց, և ՚ի խաչափողս, և տաշորեալ ապականէ զհիւթս մարմնոյ, որ և բաղում անգամ սպանանէ զմարդ:

Քարվի, կամ քառուում քառվի, լտ: քառվի, կամ քօմինօ թէտէսքօ, իտ: քէրէվէ, անգղ: գէֆէ քիմեօնոռ, կամ Ֆռէնկ գիմեօնու, տճ: Է բոյս բազմացողուն՝ բուսեալ յեւրոպիա և ՚ի գերմանիա իբր մի և կէս ոտնաչափ բարձրութը: Տերև նորա պայծառ կանաչ է և եղերահերձ. ծաղիկն սպիտակ, հինգթերթեան և խորտաբորտ. բերէ և սերմն երկայնաձև, գարոնագոյն, տապահամ, համեմային, միանգամայն և կծանօտ լեզուի: Իսկ արմատն երկայն, պարարտ, սպիտակ, և քաղցրահամ: Այս բոյս տաստ է ջերմահամ խառնով, և ցնդական աղիւ. որոյ սերմն ՚ի լատինացւոց կոչի՝ սէմէն քառվի. զոր վարեմք ՚ի գիպուածս փքային խթից, միջահատական տենդից, և տկարութեն ստամոքսի ամթելոյ ՚ի թուլութէ. զի է խթիչ բնութը: Չափն փոշւոյ ՚ի 20 ցորենոյ մինչև ց60. խառն ջրով, կամ այլ յարմարաւոր գեղոբէիւք: Իսկ չափ խաշուին պարտի լինել ունկի մի ՚ը լեար մի ջրոյ, զոր օրէն է եռացուցանել խուն ինչ: Ունի և մասնաւոր ինչ զօրութիւն ՚ի յաձեցուցանել զկաթն կանանց:

Քարտամօմում մինուս, կամ ամօմում քարտամօմում, լտ: քառտամօմօ մինօռէ, իտ: բըլթի քառտամօմ, գղղ: լէսսըր քարտէմըմ, անգղ: գագուլէ, տճ: հապպէհան, արբ: հայլ, կամ հիլ, պր: և ըստ մեզ՝ շուշմիր կամ հիլ: Է պտուղ ինչ չոր, մաշկատեսակ, եռանկիւնաձև, սրածայր, և սպիտակ, ունելով ՚ի միջի հատս մանունս, կարծրս, շիկակարմիրս, անուշահոտս, և ջերմահամս. զորս ՚ի բաց հանեալ ՚ի պտղոյ անտի՝ ՚ի վար արկանեն ՚ի գիպուածս տկարութեն ստամոքսի, և ջլաց, և ՚ի մասնաւորի ցաւոց որովայնի ամթելոյ ՚ի փքոտուէ, զի է խթիչ բնութը: Բոյս սորա բուսանի ՚ի հնդիկս, և աճի իբրև զփոքրիկ ծառ. տերևք նորա մթին կանաչ են և սրածայր, որք երեք երեք ելանեն ՚ի վերայ միոյ կանթի: Կայ և տեսակ ինչ այսր պտղոյ, զոր լա-

տինք՝ քառատամնեան մատուս կոչեն , որ Թէպէտ մեծ է յոյժ , սակայն ըստ մասին ներգործութեան սաստիկ է քան զառաջինն :

Քարախուլճիա , լտ : խուրէք ալըըլար , տճ : և ըստ մեզ՝ սրտախօթութիւն . տես հտ . ա . երես 344 :

Քարախիթիոտէ , լտ : խուրէք Թութուշմասը կմ խաֆիւնէթի , տճ : մուհրիւքանի քայըլ , արբ : կերգտիլ , պր : և ըստ մեզ՝ բորբոքուած սրտի . տես հտ . ա . երես 93 :

Քարտաուս պէնէտիկթուս , կամ չէնթատուրէա պէնէտիկթա , լտ : քարտոփ սանթօ , իտ : շարտօն պէնի , գղղ : պլէսսըրտ Թիսթըլ , անգղ : չէֆիքէն օթու , տճ : լահլահ , արբ : Է բոյս խինչ , որոյ ցօղունն է երկայն իբր երեք ոտնաչափ , տատասկ , բազմաճիւղ , և բըրդալից : Տերև սորա լայն է և հերձոտ՝ նման [illegible] տերևոյ Թարաքսաքում անուանեալ բուսոյ , և է փշալից : Ծաղիկքն դեղնագոյն , և հերձոտ , որք փունջս փունջս փթթին 'ի վերայ գնտակաձև , և Թեփալից հասկի . բերէ և սերմն բամբակալից , մոխրագոյն 'ի ձև փոքրիկ մեխակի : Իսկ արմատն փոքրիկ է և նուրբ : Բուսանի յամենայն տեղիս 'ի լերինս և 'ի դաշտավայրս : Այս է իւղոտ և դոյացական աղիւ . որոյ տերևն եփեալ 'ի ջուր և արբուցեալ , դեղ է միջահասական տենդից , ախտից ստամոքսի , ջրգողութե , նուաղութեան դաշտանի և ցրտահարութեան . զի է մեղմացեալ Թուլացուցիչ և քրտնեցուցիչ բնութեամբ : Ղափն 'ի վեց դրամէ մինչև ցութ խառն ընդ մի լիտր ջրոյ . և 'ի մասնաւորի զօրէ 'ի սատակել զճճիս որովայնի : Զնոյն ունին զօրութիւն սերմն և 'ի ցքահանէ եղուզեալ ջուրն :

Քարքէհարիաս , կամ քանխա մաուրնուս , լտ : քէշէ տի քանէ , կամ քան մաուրնօ , իտ : ուըքէն կմ կառն չիէն տը մէռ , գղղ : հաւիէ , անգղ , և ապան" : գէօքէք պալըղը , տճ : գէլպ իլ պահրի , արբ : և ըստ մեզ՝ շանաձուկն : Է մեծ և ահագնատեսիլ ձուկն որոյ մին կշռէ մինչև 1000 օխայ , կամ ևս աւելի . գլուխ նորա նման է գլխոյ շան , յորմէ կոչւա և զանուննր . որկորն երկայն և լայնաբաց . ատամունքն մեծ և տափարակ , սղոցաձև և սրածայր , աչքն լայնաբաց . տուտն երկայն իբր մի և կէս ոտնաչափ և երկճղի : Երկու Թիակաձև Թևս ունի , որք ծառայեն նմա 'ի լողալ , և է կատաղի յոյժ և գիշակեր . և առեն Թէ

ամբողջ կլանէ զձուկն, զանասունս, և զմարդ։ Իսկ միսն թէպէտ պարարտ է յոյժ, այլ անհամ, զորոյ զճարպն վառեն 'ի կանթեղս փոխանակ ձիթոյ. այլ ուղեղ նորա չորացուցեալ և փոշիացուցեալ՝ լինի դեղ երիկամնաժեռութեան։ Զամն 'ի 20 ցորենոյ մինչև 360. և ըստ ոմանց՝ օգտէ և տղայաբերից։

Քարօթա, կամ տաուքուս քառօթա, լտ: քառօթ, գղղ: քէրրըլթ, անգղ: էլաֆօս, կամ վօսկօ, յն: կէզար, կամ լաքլավլին, կամ ճէզէր կամ կէզլի, կմ ճէզար, արբ: զէլթղէմին, կամ կէզզէռ, պր: հաւվուճ, տճ: և ըստ մեզ՝ գազար, կամ ստեպղին։ Է արմատ ինչ ստուար, երկայն, բոլորակաձև, սրածայր, պարարտ, մսալից, կակուղ, և քաղցրահամ, զոր և ուտեն իսկ. գոյն նորա սովորաբար է կարմիր, բայց յոմանս տեղիս լինի և դեղին, սպիտակ, և կապտագոյն. յորմէ կազմեն և դեղ միզարգելուլութե, և փորհարութե առթելոց 'ի յուժգնութէ. զի է սնուցիչ և թուլացուցիչ բնութե, և 'ի մասնաւորի 'ի լուծանել զքար գոյացեալ յերիկամունս մարդոյ և 'ի յորդել զարիւնն դաշտանի։ Զամն յութ տրամէ մինչև 312 խառն ընդ մի և կէս լիտր ջրոյ։ Բոյս սորա է երկայն իբր երեք ոտնաչափ, բոլորակաձև, սակաւաթուրդ, և մէջն դատարկ. տերևն կանաչ, եղերահերձ, թաւամազուտ, և հաճոյահամ, միանգամայն և դեղ առողջացուցիչ վիրաց. իսկ սերմն հոտաւէտ, և կծուահամ. յորմէ յօրինեն դեղ ազդու ընդդէմ աղտեղալի վիրաց, և խլրդենւոյ. զի է խթիչ և ճճէհալած բնութե։

Քաքաօ, կամ թհէօպրօմա քաքաօ, լտ: նոյնպէս իտ, գղղ, և գերմ: չօքօլէյթ նըթ թրի, անգղ: և ըստ մեզ՝ գագաօ։ Է պտուղ ամերիկեան մեծութե 'ի չափ հաւասարակ սեխի, երկայնաձև, սրածայր, և աղուամազուտ. և 'ի միջի ունի նշաձև և մաշկակէզ հատս բազումս, և 'ի մէջ նոցա գոյացութիւնք սեռաք, իւղայինք, և հաճոյահամք, յորոց խածեալ՝ և խառնեալ ընդ այլ նիւթս, յօրինեն զըմպելին կոչեցեալ չիօքքօլաթա։ Կազմեմք 'ի սոցանէ նաև դեղ ազդու ընդդէմ կոկորդային հազի, ոմանց խթից, երիկամնաժեռութե, դժուարամիզութեան, վիրաց փամփուշտոյ, արիւնային փորհարութե. այլ և լուծանէ զքար եթէ գտցի ընդ անցս միզի. զի է սնուցիչ, կակղացուցիչ և լպրծացուցիչ բնութե։ 'Ի սմանէ

նըռւզանեն զիւղ ինչ թանձրամած, զոր Իտալացիք կոչեն պուլթիւօ տի քաքաօ, այսինքն կոդի գագաօի զոր մարթ է 'ի կիր արկանել 'ի դիպուածս ճեղ-քուածոց մորթոյ, այտուցից պտկանց ստեանց կա-նանց, խոթից սրբանին, և կոյր թանչից : Ծառ սորա զոր կոչեն՝ քաքավէլէ, միջակ է ըստ երկայնութեան և ըստ թանձրութեան. տերեւն նման է տերևոյ նարնջոյ, բայց երկայն և սրածայր քան զայն, իսկ ծաղիկն լոյնաբաց է և դեղնագոյն :

Քաքէսսիա, իտ: միճազալդլըք, կամ հատուած-ճաղ, տճ: սուխլքըխէ, արբ: և ըստ մեզ՝ ախտադ-նութիւն, կամ գժգունութիւն. որ է երկարատև գըժ-գունութիւն ինչ դիմաց հանդերձ տկարութեամբ, և գը-ժուարաշնչութեամբ :

Քաքթուս օբունթիա, կամ օբունթիա, լտ: ֆի-քօ տ'ինտիա կմ ֆուիթթէլլէ, իտ: ֆիկիէ տ'էնտ, կամ ռագէթ, և կամ քառտաս, գղղ: բըրնըլ բէյր, անգղ: թիւն սառաֆիէնոի, կամ թիւն պիրշըք, արբ: թիքէնլի ինճիր, կամ հինտ ինճիրի, տճ: և ըստ մեզ ստուգաբանի՝ թուզ հնդկային կամ թուզ փշալից: Պտուղ ինչ երկայնաձև, թանձրակեղև, կանաչա-գոյն, և փշալից. զոր 'ի բաց հանեալ՝ զմիջինն ող-ջոյն ուտեն, որ է թամբալից, մածուցիկ, դեղնա-գոյն, և քաղցր իբրև զթութ, միանգամայն և զո-վացուցիչ բնութեամբ. ունի և կորիզս թխագոյն, սա-նաչափ մեծութեամբ : Բոյս նորա բուսանի 'ի Հնդիկս, յափրիկէ, և յեգիպտոս, լինի 'ի պարարտ և 'ի խո-նաւ տեղիս. աճի իբրև զծառ փոքրիկ, այլ առանց ոստոց ամենևին, և փոխանակ ոստոց արձակէ տե-րևս սակաւաքանակս 'ի վերայ իրերաց, որք են մեծ լայն, և երկայն 'ի չափ ոտին մարդոյ, թանձր, ջըրալից, կարծր, կանաչ հարեալ 'ի գոյն կապոյտ, պալարալից, և փշալիր. մէջ նոցա մսալից է և խը-ժային, միանգամայն և դեղ ցրուիչ այտուցից, մեղ-միչ ցաւոց, և ձգիչ. զոր ընդ մէջ բացեալ, դնեն 'ի վերայ վշտագնեալ մասին մարմնոյ:

Քաֆֆէ արաբիքա, լտ, քաֆֆէ, իտ. և ս գղղ: անգղ: պուն, կամ ահուէ, և կամ պըն, արբ: քահ-վէ, տճ: և ըստ մեզ՝ սուրճ: Է պտուղ ինչ փոքրիկ, ոլոռնաձև, կարծր, խողովակաւոր, խժային, փոքր մի դառն, մաշկապատ, և կանաչագոյն, այլ 'ի հա-սանելն փոխի 'ի գոյն մոխրոյ. ունի և զիւղս ստար

է լեղս ցնդականս։ Կրկնակի է որակութիւն սորա. ոյժինքն օգտակար, և վնասակար. քանզի եթէ չափաւորապէս արբեալ լիցի երկու կամ երեք անգամ յաւուրն, օգնէ մարսողութեան, ծանրութեան գլխոյ, և զգաստութեան մտաց, և փոխանակէ զաւելի քնոյ, մինչև յերկար աքնութեան ոչ ինչ նեղութիւն զգալ։ Իսկ չափազանցն՝ վնաս է ջղաց, և ստամոքսի, երբեմն և պատճառէ զանմարսութիւն, և զջղային դժուարամարսութիւն, և երբեմն եւս զկաթուածս, և զանդամալուծութիւնս, և եւս զբաղխումն կենդանական ոգւոյ, զցնցումն մկանանց և ջղաց, և զախտանդամնութիւն. զի է խթիչ բնութեան։ Ծառ սորա բուսանի յերջանիկն արաբիա, 'ի Հնդիկս և յամերիկայ, աճի միջակ ըստ մեծութեան. կեղև նորա նուրբ է և գորշագոյն, և տարրացեալ ընդ բնոյն. փայտն թիւրաթեք, և բեկանոտ. տերևն մշտադալար, և խիտ՝ նման ըստ ձևոյ վայրի շագանակենւոյ. իսկ ծաղիկն սպիտակ. շքեղատեսիլ, և հոտաւէտ, որք երկու երկու բուսանին 'ի վերայ միոյ կանթի. և իւրաքանչիւր ծաղիկ արտադրէ մի միայն պտուղ կեռասաչափ մեծութեան, որ այն ինքն է սուրճ։ Գտանի և յեթովպիա, որ գերազանց է քան զամենեսին, և այնչափ իւղային, զի յորժամ եփի՝ իւղն 'ի կայլակս փայլակս ծածանի յերեսս ջրոյն. վասն որոյ նոքին իսկ քաղաքացիք և մեծամեծք երջանիկն արաբիոյ զայս սուրճ ըմպեն։

Քէլիտոնիում մաժուս, լտ։ քէլիտոնիա մաճճիօռէ, կամ չէլիտօնիա, իտ։ էքլէռ, կամ կռանտ քէլիտուան, գղղ։ սէլէնոայն, կմ կրէթըր սէլէնոայն, անգղ։ մամիռան քէպիր, արբ։ պէիւք հէլալին, կամ պէիւք գուլանկըճ օթու, տճ։ և ըստ մեզ՝ մեծ ծիծեռնախոտ։ Է բոյս գառնահամ՝ բուսեալ 'ի ցանկապատ տեղիս և 'ի խրամս որմոց իբր մի և կէս ոտնաչափ բարձրութեան։ Տերև նորա նման է տերևոյ ագուիլէճիա կոչեցեալ խոտոյ, բայց մեծ և յղկեալ քան զնա։ Ծաղիկն դեղին և չորեքթերթեան. պտուղն եղջերաձև, և 'ի միջի ունի սերմունս մանունս, որք բերեն զնմանութիւն մեկոնի։ Իսկ արմատն թէլալից, և ստուար 'ի չափ ճկոյթ մատին մարդոյ. միանգամայն և դեղ ջրգողութեան, դալկան, ախտադնութեան, և ախտից մորթոյ. զի է մեղմապէս խթիչ, և միզիչ բնութեան։ Չափն մի ունկի՝ ընդ մի լիտր ջրոյ։ Ջնոյն գործունէութիւն ունի 'ի ցքահանէ

ելուզեալ ջուրն ։ Նախնիք 'ի կեր արկանէին 'ի ջրոյ տօտի 'ի փարատել զցաւս աչաց, և 'ի սրել զտեսութիւնս ․ բայց այժմ սակաւ 'ի գործ արկանի յարկմուսս ։ Է նորա և այլ տեսակ, զոր լատինք՝ քէլիտօնիում մինուս կոչեն ․ որ ամենայն որպիսութիւնքն է նման առաջնոյն, բայց միայն փոքրագոյն լինի քան զնա ։

Քէռմէզ ․ տես քօշ չիմնէլլա ։

Քէռմէզ մինէռալէ, կամ Թէռմօսսախօ աւր անԹիմօնիօ սոլֆուռաԹօ ռօսսօ, իտ. ։ Թհէռմօսսախտում ստիպիի սուլֆուռաԹում ռուպրում, լա. ։ օսսիտօ ա' անԹիմօնիօ իտրօսիւլֆիւռէ ռուժ, գղղ. ։ ռէտ սուլֆիւրը Թհէռմօզիտօ օվ էնԹիմընի, անգղ. ։ գաժղ մատանէ, տճ. ։ Է բաղադրական նիւԹ խիչ մԹին կարմիր, և անհոտ, կազմեալ 'ի յանԹիմօնէ, և յծծմբոյ ջնջքորակի ։ Արհեստական է որակութիւն սորա ․ քանզի եթէ տացէ ոք 'ի սմանէ երեք կամ չորս ցորենաչափ երկու կամ երեք անգամ յաւուրն, լինի ընութե Թուլացուցիչ, միանգամայն և դեղ փարատիչ բորբոքման Թոքոց, և լանջամաշկի, կշտացաւութեան, ջնջարգելութե, հնագոյն հազից, և հարբխոյ ֆլէլյ 'ի կուրծս, և այլ սոցին նման որոգայթաւոր ախտից աւԹելոց յուժգնութէ ։ Եւ 'ի մասնաւորի ախտից մորԹոյ, ոտնաաութե, ցաւոց յօդուածոց, և այտուցից մանանց ։ Իսկ չափազանցն՝ տաղտկացուցանէ, ործացուցանէ, և լուծանէ ։

Քիլուս, լա. ։ քիլօ, իտ. ։ քիլօս, յն. ։ և ըստ մեզ՝ մամուց, որով անուամբ իմանի՝ կատարելագոյն մարսեցեալ զուտ հեղուկ սպիտակորակ մասն կերակրոյ՝ որ 'ի ստամոքսէ իջեալ 'ի խախացոցն՝ անդէն սանոյ զիսկական զիւրն ընութե միջնորդութե ընաւորական զօրութե խախացոցի, և լերդի, որ պատեալ կայ զխախացոցիւ ․ և անտի մասունքն առաւել ազնուագէն՝ նրբագոյն՝ և լոյծ, ցնդեալ մասնաւոր իմն ջերմութե սպրդեալ ընդ մասանեն 'ի ներքին ծակոտս մերձագիր մարմնոյ ․ և այդպէս ձապաղեալ տարածի ներգործութե նոցին ընդ մարմինն բովանդակ, յորմէ և զհետ գայ իսկ և իսկ սատացումն զօրութե 'ի ճաշակել կերակրոյ, կամ ըմպելւոյ ․ բաց յայսմանէ և երակք անուանեալ մեսերականք, և կաթնեղէնք, ծծեալ զհիւթն զայն յստակագոյն՝ գաղտնի իմն ճանապարհաւ տարեալ ընդ մէջ ողանց քամակին,

մտանեն յերակս կոչեցեալս ստորանորակեանս, և խառնեալ ընդ արեան, փոխին ապա առ սակաւ սակաւ յարիւն, և արիւնն փոխի հեղձհեղձ 'ի մարմին. այսինքն՝ 'ի միս, 'ի ջիղս, 'ի ներարդս, 'ի Թոքս, յուղեղն և 'ի կենդանական ոգիս: Իսկ մնացեալ մասունքն դրտաւլից, և հմադոյն՝ ընդ ոլորտս աղեաց անցեալ վանին արտաքս: Բայց գիտել արժան է յայսմ վայրի, եԹէ մասանցն 'ի վերոյիշեալ ստորանորակեան երակուենս խառնեալ ընդ արեան բաղմապատիկ շաղաւիղք, և ծիւղք շրջշրջեալ ընդ մարմինն բովանդակ, և բարիոք եւս եփեալ զատի 'ի յաւելորդաց որք անպիտան են առ սնունդ. նախ՝ 'ի ժամանելն 'ի լեարդ արտաքս վանէ յինքենէ զմաղձ իւր աւելորդ, զոր ընկալեալ բուշտ մաղձին՝ հեղու յաղիսն. և այս աւելորդ մաղձն ունի զերրեակ պաշտօնս. նախ ծառայէ 'ի լուծանել 'ի հեղուկս զայլ մասունս: Երկրորդ՝ 'ի գրգռել զաղիսն առ 'ի դուրս վայԹել զայլ աւելուածս: Երրորդ՝ հասեալ յերիկամունս 'ի բաց մերժէ յինքենէ զհմադոյն, և զԹանձրախիտ հիւԹն, և միանգամայն զայլ յաւելուածս, որք խառն ընդ երեարս անցեալ գնան 'ի մէզ. և սակս այսորիկ պատճառի Ներհուն բժշկաց գործ է քաջայայտ ճանաչել 'ի միզէ զներքին զխարգն արեան: Պարձեալ, դառնի և այլ իւր աւելորդ հիւԹ անուանեալ աւիշ, որ ուրոյն զատեալ պահպանի յաւիշկական անօԹս մասնաւորապէս առ 'ի ստագանել զցամաքումն արեան ըստ պահանջելոյ հարկին: Երկրորդ ժաման դառեալ 'ի Թոքսն՝ զօրէն օդոյ արտաքս շնչէն ձանձախարիԹքն կամ մեղծքն: Հուսկ յետոյ հիւԹս այս եկեալ 'ի սիրտն և 'ի լեարդն, զգենու զվերջին կատարելագործուԹի, այսինքն զկատարեալ արիւնացումն:

Քինաէ, կամ ռատիքս քինաէ, կամ քինա, լա: չինա, կամ ռատիքս ախ չինա, կամ չինա նոտօզա, և կամ քինա նոտօզա, իտ: Էսգինն, կամ սգին, և կամ սալսըբարէյլ սգին, գղղ: քինէ ռուԹ, անգղ: չէօբ-չինա, ան: խաշապսին, արբ: Է արմատ ինչ օտնէտոյւոյ՝ ստուար երբե՛ զբաղուկ մանկան, տտտալից, կարծր, ծնրաւոր, ԹիւրաԹեկ, մաւլիր, մոխրադոյն 'ի ներքուստ, իսկ արտաքուստ դեղին հարեալ 'ի դոյն կարմիր. չունի մասնաւոր ինչ հոտ: Ընտիր համարի՝ եԹէ իցէ սպիտակ արտաքուստ, ծանր, և կարծր. յորմէ կազմեսցեն դեղ ախտից դաղղիականի,

և ելևփանդական․ և ՚ի մանաւորի ոտնատութեն, յօդուածացաւութեն, և թորատութեն․ զի է մաքրիչ արեան՝ թուլացուցիչ և քրտնեցուցիչ բնութեամբ։ Զափն ՚ի չորս տրամէ մինչև ց6, խառն ընդ երեք լիտր ջրոյ, զոր պարտ է եռացուցանել և ՚ի կէր արկանել զորէն սովորաբարիլխաւի։ Բոյս սորա բուսանի ՚ի չին, ՚ի Ճիաբօն, ՚ի պարսս, և ՚ի Հնդիկս, լինի յանտառս և ՚ի դաշտավայրս․ արձակէ ոստս կամ բարունակս փայտայինս, յօդաւորս և փշաւորս, որք տարածին ընդ երկիր և պատատին զծառովք հանդոյն բաղեղան։ Տերևք նորա մեծ են և սրտաձև նման ըստ իմիք կեռասենւոյ։ Ծաղիկն ելանէ առ կանթիւ տերևոյն, և է վեցթերթեան, ողկուզաձև, և ոժգոյն դեղին։ Իսկ պտուղն ոսկեգոյն, մեծութբ ՚ի չափ կեռասենւոյ․ ունի և զկորիզս ոսպնաձևս։ Այս բոյս կոչի ՚ի լատինացւոց՝ սմիլաքս քինա։

Քինա քինա․ տես քինքհօնա օֆֆիչինալիս։

Քինքհօնա, կամ չինքհօնա օֆֆիչինալիս, կմ քինա քինա, կամ քօռթէքս բէրուվիանուս, լտ։ քինա, կամ քինաքինա, և կամ քինա տէլ բէռու, և կամ քինա առանչիսաթա, իտ։ քէնքինա, գղղ։ բէրիւվիէն պարք, կամ պէհիպառք, և կմ եէզուիթ՚ս պարք, անգղ։ գնա գնա, տճ։ կըշու իլ տիւնեա Ճէտիա, արբ։ և ըստ մեզ՝ դառնիչ բերուայ, կամ կեղև բերուայ։ Է գերահռչակ կեղև ինչ մթին կարմիր, նմանեալ գունով կինամոնի, որ բազմատեսակ է յոյժ ըստ այլ և այլ օդոյ գաւառացն պէսպիսացեալ որակութբ, այլ ընտրագոյն համարի եկեալն ՚ի բերուայ և ՚ի Լօսսա քաղաքէ ամերիկոյ․ յորմէ և ծառ նորա առ լատինացիս յորջորջի՝ առպօռ չինքհօնա, կամ առպօռ ֆէպրիֆուկա, այսինքն ծառ տենդահալած։ Գերապանց համարի, եթէ իցէ նուրբ, մթին կանաչագոյն, և իբր քարաքոսապատ արտաքուստ, և դարչնագոյն ՚ի ներքուստ․ ծանր, չոր, բորբոսահոտ, և դառնահամ, միանգամայն և սեղմիչ։ Այս կեղև՝ գերակայ է զօրութբ քան զամենայն բժշկական բուսովք․ զի ցրուէ զախտարծարծ հիւթս խառնելոյ յարեան․ կազդուրէ զթուլութիւն ջղաց, մկանանց, և ստամոքսի, զարթուցանէ զախորժակն, բարեկարգէ զգործողութիս ստորին որովայնի, բարեխառնէ զամբոխեալ հիւթս մարմնոյ, արգելու զյորդառատ հոսումն շարաւոյ, քրտանց, աղբի և միզի․ նորոգէ

զոյժն ոսկարացեալ յերկար հիւանդութեանէ, արծարծէ զազդեցութիւն փորային հիւթոց. բժշկէ զախտս Ջղաց, աւիշկեան անօթոց, և մանրամասն երակաց, և ևս զանդամալուծութիւս, զցաւս գլխոյ, զլուանոտութիւն, զթոքաժէտութիւն, զփորհարութիւն, և զթանկչացաւութիւն. Նոյնպէս և ապաքինէ զհնացոյն վէրս քաղցկեղային, զխլրդենիս, զարտասուաքէր ախտն աչաց, զանհնարին հիւծութիւս մարմնոյ, զհազս խոնաւս, զարիւնային հոսումն որովայնի, և զայլ առ ցին նման ախտս առթեալս 'ի տկարութէ, և 'ի թուլութէ. զի է խթիչ և զօրացուցիչ բնութե ։ 'Ի վերքան զամենայն փարատէ զտենդս միջահատականս, և պարբերականս, և 'ի մասնաւորի երկօրեայ՝ եռօրեայ՝ քառօրեայ՝ հինգօրեայ, և բէռնիչիօզա անուանեալ տենդս ։ Նոյնպէս և շահաւէտ է 'ի գիպուածս Ջղական տենդից կոչեցելոց յիտալացւոց՝ Ֆէպպրէ նէռվօզա, կամ մալինեա, փտախտութեն, խաղաւարտաւոր Ջերմախտից, և ծաղկանց, մանաւանդ եթէ ընդ ախտիցս զուգընթաց գտանիցի քիրտն խժային, գողդողջումն մկանանց և Ջղաց, գարշահոտութիւն ապաւաւաի, սեւութիւն և չորութիւն լեզուի, նուաղումն զարկէի բազկի, ևն։ Բայց գիտել պարտ է, զի չէ օրէն ախտակրին իսկ և իսկ 'ի փարատիլ 'ի նմանէ միջահատական տենդիցն՝ զանց առնել զգործածութեանն նորին, այլ պարտ է յարատեել առ քանի ինչ շաբաթս ։ Մեք զգերակայ գեղս զայս տամք ըստ կերպի փոշւոյ, կամ նաև իբրև խաշու ։ Եթէ իբրև փոշի, պարտ է շինել 'ի 15 կշիռ ցորենոյ մինչև ցութ տրամ՝ վեց կամ ութ անգամ յաւուրն ։ Որչափ առաւել լուսեցեալ 'ի փոշի մանրամաղ, այնչափ օգտու, և զօրաւոր լինի ներգործութիւն ։ Իսկ եղանակն զոր պահեմք 'ի տալն զխաշուն, է այս ։ Առ ունկի մի՝ 'ի խոշոր փոշւոյ սորա, յաւելլով 'ի նոյն զլիտր մի Ջուր հասարակ, և եփեա եռացմամբ իբր քառորդ մի ժամու. յետ քամելոյ տուր հիւանդաց ժամէ 'ի ժամ երկու ունկի՝ կամ ևս աւելի մինչև լեցի 75 տրամ յաւուրն ։ Ընդ այսոցիկ գիտել արժան է, զի եթէ այս կեղև տացի կամ իբր փոշի, և կամ իբրև խաշու, բազում անգամ ի՛լոսաէ 'ի գրգռութեն դիւրաշարժ ստամոքաց կարի իմն քընքուշ ախտաժետաց ։ Եւ ընդ հակառակն՝ այսպէս ախտաժէտք յօժարութե առնուն զնոյն կեղև քինա

գինամի ինֆուզիօնէ ու Ֆռէտոօ․ այսինքն Թրմոց 'ի ցուրտ ջուր։ Զայս եթէ կամիս առնել, առկ զխա֊շար փոշի կեղևոյս ըստ կշռոյ ունկւոյ միոյ՝ 'ի լիտր մի ցուրտ ջրոյ․ զկնի 24 ժամուց՝ հեղ զգուշութբ յայլ անօթ ապակի, այնպէս՝ զի մի խառնեսցի մրուրն ընդ պայծառ հեղանիւթոյն․ ապա յաւել 'ի սոյն զմի կամ զերկու ունկի ջուր նարնջոյ, և տուր ըմպել հիւանդին երկու կամ երեք անգամ յաւուրն զկշիռ երից ունկեաց։ Դարձեալ՝ ունի և մասնա֊ւոր գործունէութն 'ի յանփոյթ պահել զվէրս հնա֊գոյնս, փոքր ինչ ցանելով և եթ զայնս երկու ան֊գամ յաւուրն։ Նոյնպէս է դեղ պահպանիչ ատա֊մանց, և լնդերաց 'ի նեխութէ։ Այլև արժան հա֊մարիմ յաւէշ առնել և զայն, զի քօնթէս սէնչինքօ ան֊ւանեալ բդեշխին պերուայ յամին 1640, և 'ի 17 մայիսի, ծանոյց 'ի սպանիա զգործածութն, և զշա֊հաւէտութն այսր կեղևոյ․ յորոց էանց յիտալիա, և 'ի գաղղիա, և ապա յանգղիա․ հուսկ յետոյ յասիա, ուր յառաջ քան զայն անծանօթ էին ամենեքին։ Ծառ սորա յաճախ բուսանի 'ի կողմանս պերուայ․ լինի 'ի լերինս և յանբեր տեղիս․ աճի 'ի չափ մեծութե կեռասենւոյ։ Տերև նորա է բոլորակաձև, նրբաջիղ, և շուրջանակի սղոցաձև առատմասնաորեալ։ Ծաղիկն երկայնաձև, և կարմրերանգ։ Իսկ սերմն նշաձև, և ապխտակ։

Քլավալուսօռիա․ ըստ անդամազննաց՝ է մին յե֊րից ներքին ոսկերաց լսելեաց։

Քլավիքուլա․ է անուն երկուց ոսկերաց կրծոց, որք են կոր որպէս զտառն Ս։

Քլէմաթիս ռէքթա․ տես Ֆլամուլա։

Քլօռօզի․ այսու անուամբ իմանի՝ տժգունութի ինչ մարմնոյ․ որ է ախտ ինչ կանանց․ զորոյ զնշանա֊կութիւն մարթիս տեսանել հտ․ ա․ գլ․ ժբ․ երես 195։

Քհալիպս, կամ սինօնիմիա, լտ․ աչչիաէօ, կամ մառթէ, իտ․ ասիէ, ֆղղ․ սթիլ, անգղ․ սիոէօ․ յն․ պուլատ, թրք․ չէլիկ, ռձ․ և ըստ մեզ՝ պո֊ղպատ, կամ պողպատ։ Է երկաթ սաստակեալ, կարծր, դիւրաբեկ, և տուաձգական, որոյ ամենա֊նուրբ փոշին՝ որ կոչի 'ի խարտուածոյ պողպատի, լինի դեղ ջղային դժուարամարսութե, ախտնդանու֊տութե, ջրգողութե, տկարութեան ստամոքսի և

Ըղաց, նուաղութեան ամօթական պարտուց կանանց, խցանաց աւիշկեան անօթոց, լերդի, փայծեղան, և այլ ընդերաց, թանչախառն սքօռպուտոյի, խուլական տեռոուցից, գաղկան, ախտից արգանդի, և գործարանաց, և այտուցից սրունից, և ոտից. և 'ի մասնաւորի 'ի յարգի ունիմք զսա 'ի գիպուածս անէմիա անուանեալ ախտի, գժգունութեան, երկարատև հիւանդութե, և այլ ամենակերպ խօթութեց տաթեւոց 'ի թուլութէ կամ 'ի տկարութէ. զի է խըթիչ, զօրացուցիչ, և բացողական բնութք: Այլև ցրուէ զխտատաբեր հիւթս խառնեալս յարեան, սատակէ զորդունս և զձճիս որովայնի, նորոգէ զոյժն տկարացեալ յերկար ախտակրութէ, և անօսրէ ըղթանձրամածութիս արեան, և տայ նոյա ազատ և համարձակ ընթանալ 'ի շրջանս երակաց: Չափն 'ի 20 կշիռ ցորենոյ մինչև ց30 խառն ընդ այլ յարմարաւոր դեղորէից. զսյս չափ վասն չափահասից. իսկ մատաղ մանկանց 'ի 6 ցորենոյ մինչև ց16, և փոքր ինչ աւաւել ըստ պիտոյութե: 'Ի փոշւոյ սատի ընդ քնտի, կամ օշինդրախառն բաղադրութք գինւոյ կազմեն զդեղն, զոր տաճիկք՝ չէլիկ ռուհու կոչեն: Իսկ իտալք՝ թինթուրա տի ֆէռռօ կամ մարթէ, և կամ ռասիբօմաթօ տի ֆէռռօ, և կմ վինօ աչչիալեադօ, որ 'ի նոյն պէտս վարի:

Քհամաէմէլում, կամ մաթռիքարիա քհամօմիլլա, կամ անթէմիսէ, և կամ քհամաէլուն, լտ: քամօմիլլա. կամ քամամիլլա, քօթուլա ֆէթիտա, իտ. քամօմիլլէ սօվաժ, կամ մաթռիքէռ քամօմիլլ, գաղղ: քօբն ֆիվըրֆիւ, կամ քօրնքէմօմիլ, անգղ: խամօմիլա, յն: բափալթիա, տճ: պապատնէճ, կմ հուկհֆան, արբ: քէօբէլ, պր: և ըստ մեզ՝ երիցուկ: Է բոյս ինչ սատտկահոտ, որ բուսանի անխտիր յամենայն տեղիս եւրոպիոյ իբր մի ոտնաչափ բարձրութք: Տերև սորա նուրբ է և հերձոտ. ծաղիկն մանր, ոսկեգոյն, և դառնահամ, միանգամայն և համեմային, շրջապատեալ սպիտակ և նուրբ թերթիւք, որ բերէ զնմանութիւն աստեղ. յորմէ կազմեմք դեղ ազդու ընդդէմ ջղային գժուարամարսութե, ախտից և ցաւոց արգանդի, և ստամոքսի, խթից որովայնի, փըքախտութե, ջղացաւութե, երկարատև փորհարութե, և միջահատական տենդից, պակասութե հոգման բնութե, և ընդհանրապէս ընդդէմ ամենայն

ախտից ուռեցելոց 'ի ցրտութենէ, և յուժգնութենէ-
զի է Թուլացուցիչ և քրտնեցուցիչ բնութբ։ Զափն
'ի յերկու տրամէ մինչև ցերեք յաւուրն. զոր ըմպելի
է եռացուցանել մի լիտր ջրով։ Գոյ և տեսակ մի
երիցկի 'ի կողմանս եւրոպիոյ և գերմանիոյ, որ և
է իբրև զառաջինն նրբատեսակ և տերևախիտ. բայց
ունի զծաղիկ մեծ և կարի սաստկահոտ, զոր լատինք՝
անթեմիս նօպիլիս անուանեն, իսկ իտալք՝ քամօմիլ-
լա ռօմանա. յորմէ և կազմեն դեղ աղդողական 'ի
դիպուածս ջղական ախտից, փքախտուեց, ջղական
խեթից, ախտից արգանդի, միջահատական տենդից,
տռնաատութն, և այլ սոցին նման ախտից ուռեցելոց
'ի թուլութենէ. զի է խթիչ բնութեամբ, մանաւանդ-
թրմոցն։ Զափն 'ի մի տրամէ մինչև ցերկու յա-
ւուրն. զոր օրէն է դնել թրմոց 'ի կէս լիտր ջուր
հասարակ ժամս երիս, կամ չորս. իսկ չափ փոշւոյն
ըմպելի լինել մի տրամ ընդ երկու սկահակ ջրոյ։ 'Ի
սոցանէ կազմեն և զստածուածն, անուանեալ յիտա-
լացւոց՝ ֆօմէնթօ, զոր դնեն ջերմաջերմ 'ի վերայ
ախտացեալ մասին մարմնոյ առ 'ի մեղմել զցաւն, և
'ի զօրացուցանել զթուլացեալ անդամն։

Քհամէ տաքհնէ, կամ մեծեաւէում, կամ լատու-
ւէօլա, լտ։ տափինօխոէ, կամ մեծեաւէօն, և կամ
Թհիմէլա, իտ։ պոսա ժանթի, գղղ։ ռթխուրծ օլէ-
վէ, կամ ափիւռծփլէս, և կմ տուվօրֆ ալէյ, անգղ։
Է բոյս ինչ, որ յաճախ բուսանի 'ի կողմանս եւրո-
պիոյ իբր մի և կէս ոտնաչափ բարձրութբ։ Տերև
նորա ունի նմանութի ընդ տերևոյ ձիթենւոյ. ծա-
ղիկն փոքրիկ, և դեղնագոյն։ Պտուղն թամբալից,
և կանաչագոյն. այլ 'ի հասանիլն փոխի 'ի գոյն
կարմիր, կամ թուխ, և է թիւնաւոր և փաղաղիչ,
զճաշակողսն սպանանէ. ունի և երիս կեղևս եր-
կայնաձևս, և կարծրս։ Իսկ արմատն կարծր է և
փայտային, որոյ կեղևն ըստ ոմանց՝ դեղ է ախտի
գաղղիականի, և մորթոյ։

Քհամէտուխս, կամ Թէուքրիում քամէտռիս, լտ։
քամէտռիօ կամ Թռիսսածինէ, իտ։ ժէռմանտռէ,
գղղ։ քըմմըն ճէրմէնտըր, անգղ։ գրսաճիկ մահ-
մուտ, տճ։ Է խոտ փոքրիկ իբր կէս ոտնաչափ
նուրբ, կարմիր, և լի աղուամազիւք. որ սովորաբար
բուսանի յապառաժուտ և յաւազոտ վայրս, զոր ոմանք
կոչեն և գուեռաչիռուօլա, որ ստուգաբանի՝ կաղնի մա-

տաղատունկ, վասն նմանութեան տերևոյն ընդ տերևս կաղնւոյ: Ծաղիկն ելանէ առ կանթիւ տերևոյն. և է ծիրանագոյն փոքրիկ, և հոտաւէտ, և համ նորա դառն է, միանգամայն և համեմային, և ունի 'ի մէջի քառեակ սերմունս բոլորակաձևս. իսկ արմատն փոքրիկ, փայտային և թելալից: Անի յաճախ յաւրոպիա. որոյ տերևն եփեալ 'ի ջուր և արբուցեալ, դեղ է միջահատական տենդից, ջրգողուն, յօդուածացաւութեան, զի է խթիչ բնութե̃. և 'ի մասնաւորի 'ի լուծանել զխցանս և զդաշտանս կանանց, և 'ի կազդուրել զմկանունս և զկապս յօդուածոց: Չափն մի և կէս տրամ՝ խառն ընդ ութ ունկի ջրոյ:

Քհառթամուս թինքթօռիուս, լտ: քարթամօ, կմ ձաֆֆէռանօ սալվաթիքօ, իտ: քարթամ, գղղ: պասթառտ զէֆռէնօ, անգղ: Է բոյս ինչ որ յաճախ բուսանի 'ի կողմանս եւրոպիոյ. որոյ տերևն է դեղին, և տաղտկահամ, զոր վարեն ներկարարք 'ի տալ զգոյն դեղին, նաև բժիշկք 'ի բուժել զմաղասային շնչարգելութիս, և զհարբուխս առթեալս 'ի յուժգնութէ, զի է թուլացուցիչ, և լուծողական բնութե̃: Չափն 'ի մի տրամէ մինչև ցմի և կէս խառն Ը ութ ունկի ջրոյ:

Քհօքօլաթում, կամ քհօքլաթէ, և կամ սուքքօլաթա, լտ: չիօքքօլաթա, իտ: չէքօլաթ, տճ: Է մթին կարմիր զանգուած ինչ բաղադրական, կաղմեալ 'ի գօգայէ, 'ի վանիլիայէ, 'ի կինամոնէ, 'ի մեխակէ, և 'ի շաքարէ, նաև 'ի մշկոյ: Զօրութիւն նորա է սնուցիչ, գրգռիչ, խթիչ, և զօրացուցիչ ստամոքսի, ջղաց, և ուղղոյ, մանաւանդ որոց վիճակեալք են մաղասային և ցուրտ բնութեան: Եւ ըստ ոմանց՝ գիմակալէ նաև վատթարագոյն հիւթոց. յոյն սակս եւրոպացիք յաճախի 'ի կիր արկանեն ըստ օրինակի արճոյ: Մեքսիքացիք իբրև 'ի մէջի դարուն զառաջինն ծանուցին սպանիացւոց զօգտակարութիւն սորա. և 'ի նոցանէ ծաւալեցաւ ընդ բոլոր եւրոպիա:

Քուբռէսսուս, լտ: չիբռէսսօ, իտ: սիբռէ, գղղ: սիփռէս թրի, անգղ: կիպարիսն. սէրվ, արբ: սէրուն, կամ վիւրս, պր: սէլվի, տճ: և ըստ մեզ՝ նոճ: Է ծառ երկայնաձիգ, ուղիղ, ամբարտակաձև, բազմոստ, մշտականաչ, և ռետնալից. որ յաճախ բուսանի յեւրոպիա 'ի լերինս, յանտառս, և 'ի բուրաստանս: Փայտ նորա է կարծր, սպիտակ հարկեալ 'ի

գոյն դեղձն, դժուարաբեկ, անընդունակ ցեցոյ, և անուշահոտ, յորմէ և՛ սովոր են 'ի Թուրքաստան կազմել արկղ և այլ պէսպէս ձեռակերտս: Տերև նորա 'նուրբ է և աղեղնաձև՝ նման տերևոյ մոշայի: Իսկ պտուղն գնտակաձև ցաւատեալ, փայտային, չոր, և գորշագոյն. զոր լատիներէն կոչեն՝ Նուչէս քուբռէսսի, կամ բիլլուլէ քուբռէսսի. իտալերէն՝ Նօչի տի չիբռէսսօ. արաբերէն՝ ճէվզէ կամ ռւֆարէ. պարսկերէն՝ չիւպաս. տաճկերէն՝ սէլվի գօզալաղը. Իսկ ըստ մեզ՝ խոզակ. յորմէ յօրինեն դեղ փորհարութեն, արիւնային հասման որովայնի, փոշտանկութեն, թանչացաւութեն, անժուժութեն միզի, և միջահատական տենդի. զի է խթիչ և սեղմիչ բնութբ: Զափն 'ի 20 ցորենոյ մինչև ց30, չորս անգամ յաւուրն:

Քումինում, կամ լիկուսթիքում քումինում, և կամ քումինում սաթիվում, լտ: քօմինօ, իտ: քօմէն, գղղ: կեարոըն քըմին, անգղ: գէմօն, կամ սէննութ, արբ: զիրէ կամ գէրավվի, պր: գիմեօն, տճ: և ըստ մեզ՝ քէմոն: Է խոտ բազմաճիւղ, յազգէ քառվլի կոչեցեալ խոտոյ. որոյ տերևն է մանրահերձ ըստ նմանութեն տերևոյ սամիթի. ծաղիկն սպիտակ, և շուշանաձև: Իսկ սերմն երկայնաձև, գարոնագոյն, սաստկահոտ և քաղցրահամ, ունելով ընդ քաղցրութեան և փոքր մի տապութեն ախորժական. զոր իտալացիք կոչեն և անիչի աքռօ, որ ստուգաբանի՝ անիսոն տապահամ. զոր չորացուցեալ՝ նիւթ համեմիչ պատրաստեն 'ի կերակուրս, նաև 'ի կիր արկանի երբեմն 'ի դեղօրայս առ 'ի ցրուել զփուքս, 'ի նրբացուցանել զաողունս, և 'ի գրգռել զմէզն. զի է խթիչ բնութբ: Զափն 'ի կէս տրամէ մինչև ցմի խառն Ը մի լիտր ջրոյ:

Քունիկուլուս, լտ: քօնիլլիօ, իտ: ատա Թավշանը, տճ: իլլէութ, կամ իտնի ավս, և կամ իլլուշ, արբ: էմէր, կամ տիփմեէհ, պր: և ըստ մեզ՝ ճագար, կամ գետնափոր նապաստակ: Է քառոտանի մի՝ ձևով մարմնոյն և մեծութբ նման նապաստակի: Սա լինի գունով սպիտակ, դեղնագոյն, և սև կամ խայտաբղէտ. միս նորա սպիտակ է և առաւել պարարտ քան զմիս նապաստակի. և եթէ կրճատեսցի, պարարտանայ յոյժ յոյժ: Ուտէ զխոտ, զդալարաբոյս, զարմատս, զունդս, և զպտուղս, միանգամայն և առ-

րէ՛ աւելի քան զնապաստակն․ բայց ոչ գտանի 'ի յԵրոպիոյ գաւառս։ Այս կենդանի լի է իւղով և ցնդական աղիւ․ որոյ ճարպն լինի դեղ օգտակար ընդդէմ թուլութեան լղաց, օծանելով ևեթ զայն։

Քուպէպէ, կամ բիբէռ քուպէպա, լտ։ քուպէպազա, իտ։ քիւպէպէ, գղղ։ քիւպէպս, անգղ։ գաւազապաթ, թրք։ գէպապէ, տճ։ Է հատապտուղ թփոյ կնճռալից, մոխրագոյն, երկայնականթ, մեծութե՛ 'ի չափ փոքրիկ սեաւ պղպեղի․ ունի զհոտ սուր, և համեմային, և զհամ պղջու, միանգամայն և տախիպ, որով զօրացուցանէ զտկարութիւն ստամոքսի, և ուղղոյ․ ցրուէ զհողմս, և մեղմէ զչարութիւն վնասակար հիւթոց։ Վարի և 'ի բաղադրութեան թերիակէսի․ և 'ի կիրառութեան պարտ է պահել զչափ քանակութեան, որով սովոր եմք 'ի վար արկանել զսեաւ պղպեղն։ Տունկ սորա բուսանի յարևմտեան Հնդիկս, որ ուր և բուսանի՝ պատատի շուրջ զիւրև եղելովքն․ արձակէ խիտ առ խիտ տերևս փոքրիկս և երկայնաձևս․ բանայ և ծաղիկս սպիտակահոտս։

Քուպրութա, լտ։ բիթիւմօ, կամ բիթթիւմօ, իտ։ էբիլթիմ, գղղ։ էբիլթհէմ կամ տօպըր, անգղ։ գիւթշաւթ, տրք։ գիւշութա, տճ։ Է բոյս թփոյ անտերև և կարմրագոյն․ որոյ արձակեալ նուրբ թելս 'ի վերայ այլ տնկոց՝ ճնշէ զնոսա․ յորմէ կազմի դեղ ցաւոց լերդի և փայծեղան, զի է խթիչ բնութ։ Այլ և մաքրէ զարիւն, և բանայ զխցանս ընդերաց․ բերէ և պտուղս գնտակաձևս և թաղանթայինս, և ծաղիկս մանունս, և կանթաւորս։ Չափ բուսոյն 'ի վեց տրամէ մինչև ցութ՝ խառն ընդ մի լիտր ջրոյ։

Քուրիանտօլօ․ տես քօռիանտրում։

Քուրքումա․ տես Թէրրա մէրիթա։

Քուքուլուս, լտ։ քուքուլօ, իտ։ գուգու գուշու, տճ։ և ըստ մեզ՝ կկու։ Է թռչուն շատակեր 'ի ձև բազէի, այլ 'ի չափ կաքաւու, գունով գորշախառն կարմիր։ Բնակի 'ի վերայ ծառոց, նա յաւէտ յեղերս գետոց․ որոյ միս լի է ցնդական աղիւ և իւղով, միանգամայն և դեղ հէլքուլեան ախտի, կամ վերնոտութեան, ընդհատ տենդից, խթից, և միզարգելութ․ լուծանէ նաև զքար գոյացեալ յերիկամունս մարդոյ։ Իսկ աղաւաղն՝ ըստ ոմանց լինի դեղ խածուածոց կատաղի շանց։

Քուքումիս, կամ քուքումիս սաթիվուս, և կամ

քուքումիս վուլկարիս, լտ․ չէթռիօլօ, կամ չէտռիօլօ․ իտ․ քօնքօմպռ, կամ քօնքօմպռ քօմմէօն, գղղ․ քըքըմպըր, անգղ․ անկուրեայ, յն․ խըեար, արբ․ և տճ․ և ըստ մեզ՝ վարունգ։ Է թամբալից, և զովացուցիչ պտուղ ինչ ծանօթ ամենեցուն․ որոյ սերմն կամ ունդն դասի 'ի կարգս չորից զովացուցիչ, և միզեցուցիչ սերմանց։

Քուքումիս ագինուս, կամ մօմօռտիքա էլաթէռիում, և կամ քուքումիս սիլվէսթրիս, լտ․ քօքօմէռօ սալվաթիքօ, կամ էլաթէռիօ, և կամ քօքօմէռօ ագինինօ, իտ․ քօնքօնպռ սօվաժ, գղղ․ ուվայլտ քըքըմպըր, անգղ․ աճը խըեար, կամ էշէկ հըեարը, տճ․ և ըստ մեզ՝ վարունգ վայրի, կամ իշու։ Է պտուղ փոքրիկ, թաւամազուտ, դեղին, խաժային, պարարս, գառնահամ միանգամայն և տտիպ․ յորմէ կաղմեն դեղ լուծանաց ընդերաց և ջրգողութեաց աւթելոց յուժգնութէ, զի է գրգռիչ և ուժգին լուծիչ եթէ 'ի վերուստ, և եթէ 'ի ստորուստ․ սմին իրի պարտ է միշտ 'ի կիր առնուլ անձանց վիճակելոց առողջարար և զօրեղ խառնուածոց․ չափն 'ի մի կշիռ ցորենոյ մինչև 94։ Յօրինեն 'ի սմանէ նաև ազգ ինչ սպեղանւոյ, յորմէ օծանեն 'ի վերայ պորտոյ և փորոտեաց, որ լուծանէ, և ործացուցանէ․ ունի և ունդ նման ընդոց գօլլօգուինթիտաի։ Բոյս սորա է սողուն, առասպար, ճիւղալից, բրդոտ, հիւթալից և տարածողական, որ յամենայն ուրեք ինքնին բուսանի, մանաւանդ յերկիրս վիճակելոյս ջերմագին օդոյ։ Տերևն նման է տերևոյ ընտանի վարնգոյ, որպէս և ծաղիկ նորա։ Իսկ արմատն է երկայն, սատուար, և սպիտակ։

Քուքուռպիթա, կամ անկուռիա չիթռուլլուս, լտ․ անկուռիա, կամ քօքօմէռօ, իտ․ բասթէք, գղղ․ ուվօդըր մէլընկ, անգղ․ գառպուզ, տճ․ պաթիխ, արբ․ և ըստ մեզ՝ ձմերուկ, կամ մեզրապող։ Է պտուղ գնտակաձև․ որոյ միջն է հիւթալից, ջրալիր, քաղցրահամ, միանգամայն և զովացուցիչ․ ունի և ունդս տափարակս, և սպիտակամարմինս, յորմէ կազմեն դեղ միզեցուցիչ, և զովացուցիչ․ յայն սակս կարգի 'ի դասս չորից զովացուցիչ և միզաբեր ընդոց։

Քուքուրպիթա բեբօ, կամ քուքումիս թուաշիքուս, կամ քուքուռպիթա սիլվէսթրիս, լտ․ ծուք

քա, իտ: քալ տաս մըլօն, գղղ: կուրա, անգղ: գասպոք, տճ: տաւաւ, արբ: և ըստ մեզ՝ գգում: Է պտուղ ծանօթ ամենեցուն. որոյ մէջն է սպիտակ, պարարտ, մեկալեր, քաղցրացուցիչ, և զովացուցիչ, յորմէ կազմեն պէսպէս կերակուրս. ունի և ունդս գորշագոյնս, երկայնաձևս, տափարակս, մաշկայինս, և սպիտակամարմինս, որք կարգին՚ի դասս չորից բա-ցողական և միզեցուցիչ ընդոց:

Քուֆի. է բառ յունական. և նշանակէ զօձ ինչ թանձր, և սատուար, այլ ոչ այնչափ ինչ երկայն. զհետ անգի մարդոյ, և թոյն խածուածոյ նորա յա-ռաջ քան զ24 ժամ սպանանէ:

Քախրհիաս, կամ կլատիուս, լտ: Է ձուկն ինչ ծովային. որոյ երկայնութիւն է իբր 25 ոտնաչափ. գլուխ նորա լայն է և երկայն. ծնօտն պինդ և կարծր-ուկր. մորթն գորշ և փայլուն. իսկ միսն չէ ինչ ընդհատ ՚ի պարարտութ̃է խոզից. որոյ ճարպ ունի զգործունէութն ՚ի մեղմել և ՚ի թանձրացուցանել զուռոյցս կարծրապինդս:

Քախլինում, կամ կասսիբիում, կմ պօմպաքս, լտ: քօթօնէ, կամ պամպաճիա, իտ: քօթօն, գղղ: քըը-դըն, անգղ: բամպուք, տճ: քութն, արբ: և ըստ մեզ՝ բամբակ: Է բոյս ինչ, որոյ ցօղունն է երկայն իբր երկու ոտնաչափ, փայտային, կարմրակեղև, թա-ւիշաւոր, և փոքրաճիւղ: Տերևն ունի նմանութիւն տերևոյ որթոյ, երկայնականութ է, և վարսաւոր: Ծաղիկն բազմաթերթ, զանգակաձև, և կարմրախառն դեղին: Իսկ խոզակն է բոլորակ՝ մեծութ̃բ գրեթէ ոչինչ ընդհատ ՚ի կաղնեաց. որ ՚ի հասանիլն ինքնին բացեալ ընդ մէջ՝ ըստ օրինակի պատենի շագանա-կաց, և յայնժամ երևի ՚ի նմա նիւթ ինչ նուրբ և սպիտակ իբրև զձիւն, որ այն ինքն է բամբակ, և ՚ի միջի ունի հատս կամ սերմունս իւղայինս և քաղց-րահամս ՚ի չափ ոլոռան. զոր անջատեալ ՚ի նիր առ-կանեն ընդդէմ հնչարգելութե, ցաւոց կրծոյ, հնա-գոյն հազից, փորհարութե. զի է սեղմիչ բնութ̃բ: ՚Ի սերմանց աստի մածունախառն բաղադրութեամբ կազմեն զօպեղանի ինչ, զոր դնեն ՚ի վերայ բորբո-քեալ ենդոց առ ՚ի զովացուցանել զտոչորումն, և մեղմել զցաւս: Բոյս սորա բուսանի յասիա, յեգիպ-տոս, ՚ի կիպրոս, ՚ի սուրիա, ՚ի կրետէ, և ՚ի հնդիկս:

Քրանիում հումանում, լտ: քրանիօ ումանօ, իտ:

քաֆիա քէմիի, տճ։ և ըստ մեզ՝ սկաւառակ։ Է՛ տաշ-տաձև, և անդակայա օսկրն կառափոյ, որ 'ի մէջ պարունակէ զուղեղն. զորոյ զփոշին 'ի կեր արկանէին իբր դեղ վերնոտութե, անդամալուծութե, և ախտից ուղղոյ։ Չափն 'ի 10 ցորենոյ մինչև ց40։

Քրէմասթեռի. ԲԸ անդամաղնեաց նշանակէ՝ մկանունք, զորոց կախեալ կան ամորձիք։

Քրէմօռ տի թառթառօ, կամ օսսխթառթառօ. սախառուլօ տի բօթմասա, իտ։ օքսիթառթառոս օքսի-տուլուս բօթասսէ, լտ։ գռեմթարթառ, տճ։ մէլխթարթիռ, արբ։ և ըստ մեզ՝ մոխիր գինւոյ։ Է՛ նիւթ ինչ սպիտակ, և դժուարահալելի, կազմեալ 'ի ցամաքեալ մրրոյ գինւոյ՝ զոր կիզեն 'ի հուր, որով և լինի նիւթ ինչ կրանման, և ապա զանեն զայն, որ լինի քարանման հատուած, չոր, կարի սպիտակ՝ միանգամայն և իբր կանաչագոյն տեսլեամբ։ Համ նորա է աղի և դառնահամ, միանգամայն և դեղ օգտակար ընդդէմ ջերմնատաչոր ախտից, բորբոքողականութե, ջրգողութե, դալկան, հաւման թանչից, և այլ սոցին նման ախտից առթեալց յուժգնութէ. զի է թուլացուցիչ, զովացուցիչ, և լուծիչ բնութ. չափն 'ի կէս տրամէ մինչև ցութ խառն ընդ շաքարի, և ընդ ջրոյ։ 'Ի նիւթոյ աստի մեղմախառն բաղադրութ ջրոյ կազմեն հեղանիւթ ինչ, որով ողոզեն զբերանն առ 'ի զովացուցանել զջերմութեն լեզուի, և փարատել զվէրս բերանոյ։

Քրէսթա. այսու անուամբ ըստ վերաբերուժից խմանի՝ ախտ ինչ ատամկանաց։

Քրիզի կամ քաւզի։ Բառս այս ըստ յունական լեզուի նշանակէ զիրողութիս տանեականնս, և զպատերազմականս. բժիշկքն յարմարեցին զայս անուն իբրև սեփական բացայայտիչ այնր փոթորկալից ճգնանաց բնութեան, որով ըստ օրինակի մրցողման և խռովութե պատերազմի՝ առաւել կամ նուազ տագնապի բնութին. յորմէ հալիւ ճողոպրեալ զխափանան ածնու, և որոշի կամ ապաքինութ կմ մահուամբ, և կամ մուսա առնելով յայլ ինն ախտ տառապել զբժնեայ։ Սմին իրի երրեակ տեսակս հաստատեն այսր ճգնանաց, մինն՝ պատճառիչ կատարեալ ապաքինութեան. երկրորդն՝ առթիչ մահուան. իսկ երրորդն՝ վերահասուցիչ այլոյ իմիք դժնեայ ախտի. ուստի և առաջին տեսակն կոչի բարի. Բ. յոռեգոյն կամ չա-

բաղդոյն. իսկ ՟Է. վտանգաւոր։ Գործել արժան է ատեն, եթէ վայրկեանն, յորում այդ ծիգն բնութեան յառաջ ընթանայ, միշտ է դժնէագոյն, և դառն, մահաւանդ՝ եթէ դէպ լինի 'ի գիշերային պահու. քանզի յայնժամ կիսոյ նշանք ախտիս անչափապէս աճեցեալ առաւելուն. ուստի իսկ և իսկ 'ի վերայ գան ջերմունք, քնափութիւն, տագնապ, պակասութիւն դիպայութեան, և անյիշողութիւն, ցաւք գլխոյ, պարանոցի, և ստամոքսի, չչնչիւն լսելեաց, պտոյտ գլխոյ, բժարանութիւն 'ի ժայթքել, ծարաւ սաստիկ, զարկ զարկերին մանր և արագ, ծնշումն և արգելումն միզի, քրթմնջումն որովայնի, ցնցումն ձգանաց. և միանգամայն ջերմութեան սաստկանալ կրկնապատիկ դժնեութեամբ։ Իսկ եթէ ծիգն բնութեան ունի աւարտել 'ի չորրին, յայնժամ իսկ և իսկ 'ի վեր երևի քրտունք, կամ յորդառատ հոսումն միզի, կամ թթախառնական արեան, կամ առատօրէն արծումն, և կամ արտաթորումն որովայնի, և կամ առատութիւն թքոյ, և լորձանաց։ Բայց հեփոկրատն հաստատութեամբ վկայէ, եթէ աւուրքն՝ յորս սովոր է պատահել այս ծիգն բնութեան, են չորրորդ օրն ախտիս, եօթներորդն, իններորդն, մետասաներորդն, չորեքտասաներորդն, եօթնևտասներորդն, քսանևմիներորդն, քսանևութերորդն, քառասներորդն, ևն։ Քաջայայտ ծանուցի յամենայն ումեքէ ճշգրտութիւն բանից սահմանադրութեան վերոյիշեալ գերահռչակ հեղինակիս, յորժամ յառաջընթացումն ախտին լինի օրինաւոր պայմանաւ, և չլինի ինչ կրծիւն վրիպելոյ, և զարտուղեբս յայդմ պահանջեալ պայմանէ։ Այլ ուրեք տեսանեմք 'ի գիպաւածս եւօրեայ տենդի, յորում ոչ անդր անցանէ բորբոքումն ձգանաց քան զեօթներորդ օրն. քանզի հասարակօրէն աւարտ առնու սաստկութիւն բորբոքման 'ի չորրորդում, կամ յեօթներորդում աւուր. իսկ բէաթրինէումծնիայն, այսինքն բորբոքումն թոքոց կամ լանջամաշկի՝ զվախճան առնու երբեմն լուծմամբ 'ի չորրորդում աւուր. և 'ի վերերևման իրիք խռխայթման՝ աւարտի ախտն յեօթներորդում աւուր ճանապարհաւ հոսման լորձանաց կամ թքոց. և երբեմն ևս երկարաձգի մինչև ց14, կամ ց20 օր։ Իսկ տարափոխիկ և վտանգաւոր տենդքն, զորօրինակ Ֆէպպրէ նէրվօզա, կամ մալինեա, Ֆէպպրէ ինֆիամմաթօրիա, Ֆէպպրէ միլիարէ, թէ

ֆօ, են, սովորաբար ոչ անդրաձգին քան զօրն եօթն-երորդ. բայց ծաղիկն անվրէպ 'ի վեր երևի յերրոր-դում և 'ի չորրորդում աւուր, և խղխայթումն աւա-րտի յաւուրն եօթներորդի: 'Ի վախճան ամենայնի գիտել արժան է, եթէ լուսնոտութիւն կամ վերն-ոտութիւն երախայից յարատևէ սովորաբար զվեց ա-միս, կամ զվեց ամս. իսկ եթէ այլազգ քան զդ-բաղադրեցաք՝ պատահի երբեմն, զայն օրէն է հա-մարել պատահական. որովհետև թիւք աւուրց ճ-գանաց, որ սահմանեալ է, գրեթէ միշտ առ միշտ են անփոփոխելի և անայլայլելի 'ի դիպուածս ամենայ-սուր գժնեայ և վտանգաւոր տենդից և ախտի. ուստի և չէ մարթ ունկն մատուցանել բանից ոմանց նախնեաց, և նորոց, եթէ զայլ ինչ սահմանեն: Այս ճգանք կոչի 'ի լատինացւոց՝ մութաթիօ. յա-րաբացւոց՝ սէպուհ. իսկ 'ի պարսից՝ պէօհրան:

Քրուս, լտ: կռամպա, իտ: պաճակ կամ պաչար, անճ: սիմմանթէաիկլի, արբ: ախխան, պր: և ըստ մեզ՝ սրունգ, որ հատուածի յերկուց ոսկերաց, որոյ յա-ռաջակողմեանն է զօրեղագոյն, և կոչի՝ ոլոք. իսկ որ յետակողմանն՝ կոչի ոսկր թամբի. որ է մանր ինչ մսեղ գոյացեալ 'ի ձեռուհս սրունից:

Քրօթաֆիթօ. կլափաշարժ. ըստ անդամազննաց իմանի՝ մկանունք կլափին, կամ ստորին ծնօտից:

Քրքուս սաթիվուս, լտ: ծաֆֆէռանօ, իտ: սա-ֆռան, գղղ: սէֆֆըրն, անգղ: ճիսաթ. կամ ճա-ռեեի, կամ ըրհուքան, կամ գիւքիւմ, կամ րասին, կամ մէլապ, կամ միլապ, և կամ էյսա, արբ: րէ-քաան, կամ գէրսէմ, կամ գիւմքիւմ, և կամ նէճ-վամ, պր: և ըստ մեզ՝ քրքում: Է՛ կաղամբոյս ինչ, որ յաճախ բուսանի 'ի կողմանս Եւրոպիոյ, և Ասիոյ: Տերևք նորա են երկայնաձիգ, անձուկ, դալարա-գոյն, և փայլուն, որք հինգ հինգ, կամ եօթն եօթն բուսանին առ միմեամբք: Ծաղիկք նորա են թզաչափ, ունի 'ի՛ գլուխ իւր ծաղիկս փոքրիկս, շուշանաձևս, և խոտոչաւորս, որոց ոմանք են կապտախառն կար-միր, և ոմանք դեղնագոյն, ունելով 'ի միջի իւրեանց երրեակ թելս ծուատեալս, կատարաձևս, շիկակար-միրս և հոտաւէտս. զորս քաղեալ կազմեն տափա-րակ գնտակս 'ի ձև անուոյ, յետոյ դնեն 'ի մէջ ա-նօթոյ, և քաջ խնուն զբերանն, ապա թէ ոչ՝ ընդ երկար 'ի բացի մնալով՝ անհետ լինի բնական հոտ

նոյա, և զօրութիւնն ։ Ազնիւ համարի, եթէ իցէ նարնջագոյն, անխառն, սաստկահոտ, փոքր մի դառնահամ միանգամայն և համեմային ․ յորմէ կազմեն դեղ օգտակար ընդդէմ նուաղութեան ամսական պարտուց կանանց, խթից և ցաւոց արգանդի առթելոց յուժգնութէ ․ զի է թուլացուցիչ, և խաղաղիչ բընութե̄ ։ Չափն 'ի 10 ցորենոյ մինչև ց30 յաւուրն խառն ընդ այլ յարմարագոյն դեղօրէից ․ և 'ի մասնաւորի ցաւոց աչաց ։ Վարի ևս 'ի ներկս դեղին ։

Քրօքօ տի մարթէ աբերիէնթէ, իտ ։ զաֆրան հատիտ աչըճը, տճ ։ Է նիւթ ինչ ծիրանագոյն, կազմեալ 'ի խարամծոյ երկաթոյ, 'ի ծծմբոյ և 'ի ջրոյ ․ զոր երկար եփեն 'ի հուր սաստիկ ․ որով և լինի նիւթ ինչ ծիրանագոյն և փոշետեսակ ․ յորմէ կազմեն դեղ ազդողական ընդդէմ խցմանց ստորին որովայնի, լերդի, փայծեղան, և պանկրատի ․ և 'ի մասնաւորի պակասութեան հոսման արեան տեռատեսականի, և լուծման արգանդի կանանց, յորում դիպուածի փոխանակ դաշտանի հոսի հիւթ սպիտակ ․ չափն 'ի 15 կշիռ ցորենոյ մինչև ց40 ։

Քրօքօ տի մարթէ ասթրինճէնթէ, իտ ։ զաֆրան հատիտ մըքըճը, տճ ։ Է փոշի կամ նիւթ ինչ բաղադրական, կազմեալ 'ի քրօքօ տի մարթէ աբէրիէնթէէ, և նրբագոյն և ազդու քացախով ․ որ է դեղ պատշաճողական ընդդէմ հոսման որովայնի, և թըքման արեան, այլև բարեկարգէ զընթացս կամ զհոսումն թանչից, և դաշտանի ․ զի է սեղմիչ, և խթիչ բնութե̄ ․ չափն 'ի 15 ցորենոյ մինչև ց40 յաւուրն ։

Քրօքօտիլուս, լտ ։ քօքքօտուիլօ, իտ ։ թիմսահ, արբ ։ և ըստ մեզ՝ տիատեռն, կամ կոկորդիլոս ։ Է գազան ինչ երկակենցաղ, յաղթանդամ, դժնեայ, և ահագնատեսիլ ․ ձևով մարմնոյ նման է կովադիայի, այլ մեծ յոյժ, մինչև 30 ոտնաչափ երկայնութե̄ ․ Գլուխ նորա լայն է և տափարակ, աչքն նման է աչաց խոզի, որպէս և ընչացք նորա ․ ցռուկն երկայն և լայնաբաց ․ ատամունքն հզօր, գլանաձև, սայրատուր, և դարձնագոյն ․ մորթն ունի նմանութիւն ընդ բնոյ արմաւենւոյ, կարծր է յոյժ և թանձր, թեփաւոր, և խայտաբղետ ․ չորս ձիրանս կամ ոտս ունի, և ձետ երկայն միաչափ սուսայրութե̄ ։ Սորա ևեթ 'ի քառոտանիս շարժի վերին կլափն՝ անշարժ գոլով ներքնոյն ։ Սովորական որս նորա ձուկն, մարդ,

կով, և այլ անասունք, մանաւանդ թէ ամենայն ինչ։ Աճի յաճախ 'ի Ներսս, 'ի Նիգրիտիա, և 'ի գաղղիա. որոյ ճարպն անջատեալ 'ի վար արկանեն 'ի գեղ-բայս առ 'ի փարատել զուռոյցս, և 'ի զօրացուցա-նել զջիղս։

Քօակուլուս լէբօուիս, լտ։ Է նիւթ ինչ մածու-ցիկ, որ գոյանայ 'ի ներքին կողմն ստամոքսի նապաս-տակի. զորմէ լիագոյն խօսեցաք 'ի բառն լէբուս. տես անդ։

Քօթուռնիքս, լտ։ գուատկլիա, կամ քօթօռնիչէ, իտ։ պլտրճին, աճ։ սէլվա, կամ սիւմմա, արբ։ գէրճէֆու, կամ գիլչէ կամ լարուտէ, և կամ վէդ-թիչ, պր։ և ըստ մեզ՝ լոր։ Է թռչուն ինչ փափկա-միս, և պարարտ, որ մեծ է քան զտորգիկ, և փոքր քան զագաւ. ունի զտուտ կարճ, և զփետուրս չպեղս, որոյ ճարպ սրբէ զբիծս աչաց. իսկ արե-ան օգտէ ընդդէմ լուսնոտութեան։

Քօթօնէ. տես քիւլլինում։

Քօլէռա մօռպուս. է ախտ ինչ վտանգաւոր, ծա-գեալ 'ի յանկարծ զեղմանէ մաղձին արտաքս. տես հտ. ա։

Քօլիքա. տես քօլիքուս տօլօռ։

Քօլիքա իսթէռիքա, իտ։ ռայիմ սանճըսը, աճ։ վէճա իլ յումմուլ վէլէթ, արբ։ և ըստ մեզ՝ խէթ արգանդի. տես հտ. ա. երես 129։

Քօլիքա նէֆռիտիքա. տես հտ. ա. երես 131։

Քօլիքա պիլէօզա. տես հտ. ա. երես 127։

Քօլիքա վէնթօզա, կամ տօլօռէ տէ ֆլաթի, իտ։ վէճա իլ ռիհ, արբ։ և ըստ մեզ՝ խիթ քամիական. զորմէ տես հտ. ա. երես 124։

Քօլիքուս տօլօռ, լտ։ քօլիքա, կամ թօռսիօնէ, կամ թօռմինի կամ տօլօռի քօլիչի, իտ։ սանճը, կմ գօլունճ հիլլէթի, աճ։ պատրիքիւնճիւ, կամ բէռ-նիչ, կամ գէնդակ, և կամ պէռնիշ, պր։ մակաս, կամ մղիս, և կամ գօլէնճ, արբ։ և ըստ մեզ՝ խէթ, կամ խիթ. տես հտ. ա. երես 124։

Քօլումպա, կամ քօլումպուս, լտ։ քօլօմպօ, իտ։ կիւվէրճին, աճ։ համամ, կամ մէրաշ, և կամ վէ-րակ, արբ։ գէբութէր, կամ պանքէշ, պր։ և ըստ մեզ՝ աղաւնի։ Է թռչուն միամիտ, ծանօթ ամենե-ցուն. որոյ միսն է թուխ, և փոքր մի դժուարա-մարս. զօրութիւն նորա է սնուցիչ, ձգօղ, և զովացու-

ցիչ, որով յինքն ձգէ զվնասակար ջերմութիւն մարմնոյ, կապելով 'ի ներբանան ոտից. և 'ի մասնաւորի՝ անդամադօսութեան, և քնափութեան փարատիչ է։

Քօլօֆօնիա, կամ բէքս կուէքա, և կամ ռէզինա նիկռա, լտ։ քօլօֆօնիա, կամ ռէզինա նէռա, իտ։ Է նիւթ ինչ սևագոյն, չոր, պսպղուն, և դիւրաբեկ, յազգէ խէժի, որ գտանի 'ի գալարափող ցքահան գործւոյն զկնի թորելոյ ընդ այն զխէժն բևեկնւոյ։ Վարի և 'ի բժշկական դեղորայս, 'ի մաքրել զվէրս միզանց խողովակաց։

Քօլօմպօ. տես քօլումպա։

Քօլօն. տես ինթէսթինում քօլօն։

Քօլօչինթհիս, կամ քուքումիս քօլօչինթհիս, լտ։ քօլօգուինթիտա, իտ։ քօլօգէնթ, գղղ։ քօլօգուինթիտէ, անգղ։ ապուձէհէլ գարպուզու, տճ։ հանտալ, կամ սխտահ, կամ ձումառ, կամ հանթէմ, կամ ալքան, կամ հապիթ, և կամ սարայէ, արբ։ բէլլքիստ, կամ խարբուզաի թելխի, կամ թելհայք, կամ ֆէնկ, կամ գէպլէստ, և կամ գէպխթու, պր։ և ըստ մեզ՝ ձմերուկ վայրի, կամ թխնալի։ Է բոյս ինչ, որ իբրև զվայրի վարունկ արձակէ զբարունակս երկայնս և տարածողականս, որ ուր և բուսանի՝ զօսացուցանէ զամենայն մերձակայ տունկս կամ խոտս. որոյ վասն կոչի և մահ անկոց։ Տերև նորա է երկայնականութ, լայն, հերձոտ, և կապտախառն կանաչ, բրդոտ, և բծալից, ծաղիկն դեղնագոյն։ Իսկ պտուղն գնտակաձև մեծութբ 'ի չափ նարնջոյ, կարծրակեղև, թեթև, կանաչ, այլ 'ի հասանելն փոխի 'ի գոյն դեղին. միջին խորշխորշանի, բազմակորիզ, և ապխտակաթամբ, և այն թամբ է ալիւրալիր, և խժային, միանգամայն և թիւնաւոր. յորմէ կազմին դեղ աղցու ընդդէմ ջրգողութեան, վերնոտութեան, քնափութեան, և բորոտութեան աւթելոց յուժգնութէ. զի է թուլացուցիչ, և ուժգին լուծողական եթէ 'ի վերուստ, և եթէ 'ի ստորուստ. նմին իրի պարտ է միշտ 'ի կիր արկանել անձանց վիճակելոց զգուշութ խառնուածոց։ Չափն 'ի կէս ցորենոյ մինչև ց2 խառն ընդ այլ յարմարաւոր դեղորէից։ Իսկ չափն խաշուի կամ արգանակին պարտի լինել քառն ցորեան ը̃ կէս լիտր ջրոյ. զոր պարտ է հեղուլ գրեխօս ը̃ երաստանս 'ի յորովայնս սխտակրաց։ Եւ 'ի մասնաւորի 'ի սատակել զորդունս, և զճճիս որովայնի։

Քօլօռօզի. տես բէքա:

Քօմիթիալէ մօրպօ լապօռանս, կմ՛ լունաթիքուս, լտ: էբիլէթթիքօ, կամ էբիլէնթիքօ, իտ: բասլըա, արբ: մէնիշ կամ նիհաթ, և կամ սիրիշլթ, պրս: խուպյըլու, կամ թուլթարայքըլը, տճ: և ըստ մեզ՝ լուսնոտ, կամ վերնոտ. տես հտ. ա. երես 228:

Քօնթռաիէռվա, կամ տօրսմէնթինա քօնթռաիէռվա, լտ: քօնթռաեէռվա, իտ: քօնթռաժէռվա, գղղ: քօնթրըրբըյըրն, անգղ: Է արմատ ինչ երկայն, կարծր, ծնրաւոր, թելալից, մթին կարմիր արտաքուստ, իսկ տժգոյն 'ի ներքուստ, հոտաւէտ և գաղնահամ միանգամայն և համեմային, յորմէ կազմեն դեղ ընդդէմ արիւնային փորհարութե, և միզարգելութեան, և 'ի մասնաւորի՝ անենգից առթեալց 'ի թունաւորութէ. զի է թեթևապէս խթիչ և քրտնեցուցիչ բնութիւ: Զափն 'ի քառորդ տրամէ մինչև ցմի ամբողջ յաւուրն՝ խառն ընդ բաւականաչափ ջրոյ: Բոյս սորա բուսանի յամերիկա, մանաւանդ 'ի կողմանս բերուայ. որոյ ցօղունն է սատար 'ի չափ ձկույթ մատին մարդոյ, և ծնրաւոր: Տերև նորա արտաձև է և ջղալից, իսկ ծաղիկն գեղեցկատեսիլ:

Քօնսէռվա, լտ, և իտ: բիտայը, կամ լիտայը, և կամ մուրապպա, արբ: ռիչալ, պր: ռէչէլ, տճ: և ըստ մեզ՝ քաղցրաւենի, կամ քաղցուենի: Է անուն հասարակ նշանակիչ ամենայն համադամ կերակրոց յօրինելոց 'ի շաքարէ, կամ 'ի մեղրէ եփելով զնոսա ընդ թարմ արմատոց, կամ ընդ ծաղկանց, և կամ ընդ կեղևոց, և ընդ այլոց նմանեաց:

Քօնսօլիտա մաեօր. տես սիմբհիթում:

Քօնվուլսիօ, լտ: քօնվուլսիօնէ, իտ: թէշէննիւճ, կամ հզզէ, արբ: ծիւմզանիտէն, պր: սննիրլէրին սիլքմեսի կամ թիթիրէմէսի, կամ հէվալէ: և կամ պալըք էթլէրին սիլքմեսի, տճ: և ըստ մեզ՝ ջղախտութի, կամ ջղացաւութի, կամ ձգտումն ջղաց կմ՛ մկանաց, և կամ բռնական, կամ անբնական շարժումն, կամ ցնցումն մկանանց կամ ջղաց. որ է ախտ ինչ վտանգաւոր, և երկիւղալի. տես զպայմանէ հտ. ա. երես 258:

Քօնտիլօմա. այսու անուամբ իմանի՝ ուռոյց ինչ մարմնոյ գոյացեալ 'ի գաղղիական ախտից:

Քօնքուէթուս, լտ: ճէլաթինա, իտ: բէլթէ, կմ՛ բհտը, տճ: ֆալուզ, կամ սիրիթրան, արբ. ֆանի,

կամ փէլլիւտէ, լտ: Է անուն ընդհանուր ամենայն տեսակ թանձրամած մածուածոց յօրինելոց յազգի ազգի նիւթոց:

Քօնֆէցիօնէ, կամ քօնֆէթթուա: Է անուն հասարակ նշանակիչ ամենայն տեսակ քաղցրահամ զանգուածոց, բաղադրեալ հաւաքմամբ այլ և այլ նիւթոց պատելոց կամ խառնելոց շաքարաւ:

Քօնֆէցիօնէ ալքէռմէզ, իտ: քռմզ մաճունու, տճ: և ըստ մեզ սառուցաքանի՝ քաղցրաւենւոյ որդան կարմրոյ, որ է դեղ սփոփական թալկութեան սրտի և տկարութեան ջղաց առթելոց 'ի մելամաղձէ, զի է թեթևապէս խթիչ և զօրացուցիչ բնութ<sup></sup>ե: Զափն 'ի 20 կշիռ ցորենոյ մինչև 940 յաւուրն՝ խառն ընդ ջրոյն մելիսսայի: Օրինակ 'ի կազմել զայս քաղցրաւենի: Ա՛ռ մի և կէս ունկի՝ լէնեօ ալօէ, և նոյնքան կինամոն, այլ և կէս ունկի՝ բիւէթռա լածուքի. այսինքն քար բոնոնեան, կամ քար պօլօնիոյ, և նոյնչափ՝ մարգարիտ: Զամենեսեին զատստ պղրտ է լուծել 'ի փոշի մանրամաղ, յաւելլով 'ի նոյն երկու և կէս լիտր՝ սիրօբբօ տի կրանա, այսինքն շարապն որդան կարմրոյ. և 40 հատ՝ ֆօլիօ տի օռօ: Յետ խառնելոյ բարւոք ընդ միմեանս՝ օրէն է լնուլ յանօթ ապակեայ, և ըստ պիտոյից 'ի կիր առնուլ:

Քօնֆէցիօնէ ճիաքօնէզէ, կամ տի ճաչչինթօ, իտ: Է քաղցրաւենի ինչ բաղադրական, կազմեալ յերեք ունկի՝ ճաչչինթօյէ, յերկու ունկի՝ թօռմէնթիլլաէ, 'ի նոյնչափ՝ նօչէ մօսքաթաէ, 'ի նոյնքան՝ ինչէնսօէ: Զայս ամենայն լուծեալ 'ի փոշի մանրամաղ: Յետ այնորիկ կալջիր 'ի պատրաստի մի տրամ՝ ափիոն զանգեալ ազնիւ գինեաւ յայլ անօթ. և յետ խառնելոյ զբաղադրութիւն՝ յաւել 'ի նա չորս ունկի՝ շարապ հասարակ, և նոյնչափ՝ քաղցրաւենի վարդի, ընդ նմին և զմերոյիչեալ ափիոնն: Եւ այս խառնեալ զայն բարւոք ըստ նախաւանդեալ կանոնին. որ լինի քաղցրաւենի. որոյ ներգործութիւն չէ ինչ տարբեր 'ի ներգործութենէ տիասքօռտիօի, որպէս և գործածութիւն նման է գործածութեան նորա:

Քօուպառի, լտ: Է ընկոյզ տանձաձև, լայնութեամբ 'ի չափ ձեռին մարդոյ, կարծրակեղև, և մթին կարմիր, որ յաճախ գտանի յամենայն տեղիս 'ի չինաց աշխարհի: Իսկ ներքին գոյացութիւն նորա՝ սնկալից է և գոլշագոյն, զորոյ կեղև փոշիացուցեալ 'ի կիր

արկանեն վասն խափանելոյ զյորդառատ հոսումն արեան թանչից ։

Քօչչինչինա, կամ քուչիչավան, իտ ։ լասուսու քուչիչավան, կամ լասուսու քասխօքհիլուս, և կմ լասուսու քուլթիավան, լտ ։ քիւչիչավան, գղղ ։ քըլթիվէն, անգղ ։ Է կեղև ինչ ձևով և գունով նման քօռօմանաէլ անուանեալ կինամոնի, բայց հա֊մով մեխակի ․ զոր հնդկացիք վարեն 'ի կերակուրս, իսկ եւրոպացիք 'ի դեղորայս ․ որ կարի խթիչ է բնութե, և փարատիչ անդամալուծութե և ջղային գժուարամարսութե ։ Զափն 'ի 10 ցորենոյ մինչև ց20 ։

Քօչչիօնէլլա, լտ ։ քօչչինիլիա, կամ քէումէզ, և կամ թօննա, իտ ։ քօքընիյլ, գղղ ։ քըչինիլ, անգղ ։ գումզ, կամ գումզ պէօճէի, տճ ։ տուտի, արբ ։ և ըստ մեզ՝ որդն կարմրոյ ։ Է միջատ ինչ թևաւոր՝ յամրաշարժ, միկանաչափ մեծութե, բոլորակաձև, կիսագնտաձևակերպ, մանուշակագոյն, և իբր ա֊լիւրապատ արտաքուստ, և կարմրերանգ 'ի ներքուստ ․ որոյ կերակուր են տերևք քօքքուս քաքթի քօչչինէլ֊լիֆէռի անուանեալ ծառոյ ․ որ յաճախ բուսանի 'ի մէկսիկոն և յարևմտեան հնդիկս՝ իբր վեց կամ եօթն ոտնաչափ բարձրութե ։ Սա ոչ կրծէ զտերևս ըստ օրինակի շերամոց՝ այլ մանրեկ կնճթաւ ծծէ զայն և ծծէ զհիւթն ․ զոր ընտրանօք հաւաքեալ սպանանեն 'ի կիր կամ 'ի գինի, որ կարի մեծագին վաճառի քան զսպանեալսն 'ի կիր ․ և այնպէս չորա֊ցուցեալ առաքեն 'ի վաճառ ․ յորմէ գործի ազնիւ և անեղանելի ներկն կարմրափայլ ․ նաև դեղ է փորհա֊րութե, և տկարութե սրտի, զի է սեղմիչ և զօրա֊ցուցիչ բնութե ։

Քօչչի օռիէնթալիս, կամ քռօթօնթիլիում, կամ կրանում մօլուքքանում, լտ ։ քօքքօ 'կնիտօ, կամ կռանա տիկլիօ, իտ ։ բէնօն տ' էնտ, գղղ ։ բըլոճին նըգա, անգղ ։ պալըք օթու, տճ ։ թօմնէմէք, արբ ։ և ըստ մեզ ստուգաբանի՝ ձկնգեղ ։ Է հատապտուղ ինչ ստուար 'ի չափ սիսռան, թխագոյն, կամ սեաւ և նրբականթ ․ և 'ի միջի ունի սերմն դեղնագոյն 'ի ձև անիսոնի ։ Սա մինչդեռ է թարմ՝ արկանեն 'ի ծով կամ 'ի գետ 'ի կեր ձկանց, զոր ընդ ուտելն իսկ և իսկ ցնորեալ կամ թմբրեալ ելանեն յերես ջուրց, զորս անաշխատ ըմբռնեն որսորդք ․ որոյ վասն

և կոչեցաւ յանուն նորա ։ Այլ սա ձկանց, և մանաւանդ ոչլոց մնասէ, բայց մարդկան օգտակար է․ զի բանայ զխցանս աւիշկեան անօթոց, քաղցրացուցանէ զարիւն ՚ի տապային աղի հիւթոց, և փարատէ զախտն կոչեցեալ ՚ի տաճկաց Թուզլու պալղամ, եթէ չորս հատ կլանիցէ ամբողջ ընդ առաւօտն, և երեք հատ ընդ երեկս, քանզի է ուժգին լուծողական․ այլ ասի թէ ՚ի մնալն երկար՝ լինի որդնակեր, և կորուսանէ զիւր զօրութիւն, կամ գէթ նուազի ։ Զնոյն գործունէութի՛ ունի նաև սորա բուծն կամ ձուայոտն ։

Քօռ, լտ ։ քուօռէ, իտ ։ քառատիա, յն ։ գայլպ․ տրք ։ տիլ, պր ։ խուրէք, տճ ։ և ըստ մեզ՝ սիրտ ։ Է անդամ ինչ կարմիր, ամփոփինդ, և բրդաձև, հաստատեալ միանօք, մանրաթելօք, և շրջապատեալ ճարպով ՚ի պահպանութիւն ջերմութեն, և պատեալ առանձին թաղանթիւ, կամ մաշկաւ, զետեղեալ ՚ի ներքս լանջաց՝ գոյզն ինչ ՚ի խոնարհ հակեալ, և ՚ի ձախակողմն միտեալ․ ունի և երակս, և նեարդս, և ուժգին շարժմունս, որ ոչ երբէք վաստակի․ անդադար հեղու զարիւնն ՚ի նեարդս, և ՚ի ներդաց յերակս, և մղէ զայն՝ առնուլ շրջան ընդ բովանդակ մարմինն ։

Քօռալլինա, լտ, և իտ ։ քօռալին, գղղ ։ քօռալին․ անգղ ։ տէնիզ սաչը, տճ ։ չահար իլ պահր, կամ հաչէշ իլ տուտ, արբ ։ և ըստ մեզ ստուգաբանի՝ ծամ ծովային ։ Է բոյս ինչ նուրբ յոյժ մազատեսակ․ ճիւղալից, և առապարին, բուսեալ յատակս ծովու իբր երեք մատնաչափ բարձրութե ։ Համ նորա է աղի, և անախորժ, զոր լուծեալ ՚ի փոքր մանրամաղ, լինի դեղ հալածիչ որդանց և ճճեաց որովայնի ։ Եւ ըստ ոմանց ունի և զզօրութի ՚ի գրգռել զդաշտանսն ։ Չափն ՚ի 12 ցորենոյ մինչև 960 ։

Քօռալլօում, կամ քօռալլլիօում, լտ ։ քօռալլօ, իտ ։ քօռայիլ, գղղ ։ քօրէլ, անգղ ։ մէրճան, տճ ։ մուռկիւն, արբ ։ և ըստ մեզ՝ բուստ ։ Է կառաբոյս, կմ կենդանաբոյս ինչ, որ սովորաբար հաստատի ՚ի վէմայ կարծր իրաց ՚ի խորս ծովու ։ Երկայնութիւն նորա հասանէ երբեմն ցմի ոտնաչափ, և է գունով կարմիր, այլ գտանի և սպիտակ, և սեաւ․ բայց կարմիրն լաւագոյն համարեալ է և առաւել մեծագին․ յորմէ կազմեն և դեղ արիւնային որովայնահո

տութեն, և տկարութեն սրտի, զի է սեղմիչ, և ձգիչ բնութեամբ։ Չափն յութ ցորենոյ մինչև ց30 յաւուրն։

Քօռթեչչիա. տես քօրթեքս։

Քօռթեքս, կամ քօրթեքս, լտ. քօռթեչչիա, կամ աքօռցա, և կամ պուչչիա, իտ. գապուք, տճ. ըշռ, կամ կշռ, կամ գռֆ, կամ նէճէֆ, կամ հուուլէ, կամ գիմի, և կամ սահա, արբ. ֆաֆլիթեր, պր. և ըստ մեզ՝ կեղև, կամ կճեպ։ Է անուն հասարակ նշանակիչ ամենայն տեսակ պատենից՝ թէ ծառոց, թէ արմատոց, թէ պտղոց, և թէ այլոց նմանեաց։

Քօռթեքս վինթհեռա առօմաթիքուս, լտ. քօռթեչչիա վինթեռանա, իտ. քանէլ տը վէնթեռ, գղղ. ուվինթերս պէրք, անգղ. ագ. թառչին, տճ. կռֆիլ ապիաթ, արբ. և ըստ մեզ՝ կինամոն սպիտակ։ Է կեղև ինչ լայն, գունով նման կինամոնի սէյլանայի, բայց համով ազդու, և կսրի ջերմ քան զայն. յորմէ կազմեն դեղ օգտակար ընդդէմ տկարութեան ստամոքսի, և ամենակերպ ախտից առթելոց 'ի թուլութենէ ջղաց. զի է խթիչ բնութեամբ, և 'ի մասնաւորի՝ փքախտութեան։ Չափն 'ի մի դրամէ մինչև ցերկու խառն ընդ մի լիտր ջրոյ, կամ գինւոյ. զոր օրէն է գինի 12 ժամուց հեղուլ զզուշութեամբ յայլ անօթ ապակի, և տալ ըմպել հիւանդաց երկու կամ երեք անգամ յաւուրն՝ զկշիռ երկուց ունկեաց։ Իսկ չափն փոշւոյն պարտի լինել 'ի վեց ցորենոյ մինչև ց10 յաւուրն։ Ծառ սորա բուսանի 'ի մագաղանաքար, բազմածիւղ և ոստաւոր, զոր բնակիչք տեղւոյն ֆիմբի կոչեն։ Տերև նորա փափուկ է և ծովագոյն 'ի ձև տերևոյ դափնւոյ։ Իսկ պտուղն գնտակաձև, և կարմրերանգ։ 'Ի ծառոյ աստի հոսի խէժ ինչ սեաւ, և հոտաւէտ. զոր իտալացիք կոմմա ալօսուքի կոչեն։

Քօռխանտռում սաթիվում, կամ քօռխանտռում, լտ. քօրիանտօլօ, իտ. քօռխանտռ, գղղ. քօռինտրը, անգղ. գիշնիշ, տճ. մնլպար, կամ մնէօւպար, կամ թաքթէ, և կամ գիւզփիւր, արբ. թալկքի, կամ թէֆտէ, պր. և ըստ մեզ՝ գինձ։ Է բոյս ինչ ախորժահոտ, որ սովորաբար բուսանի 'ի բուրաստանս. որոյ տերևն նման է տերևոյ քարասնի, բայց առաւել հիւթալից քան զայն. ծաղիկն փոքրիկ, հինգթերթեան, և մսագոյն. իսկ պտուղն՝ որ այն ինքն է գինձ, բոլորակ է, թեթև, և կանաչագոյն, այլ 'ի

հասանիլն փոխի 'ի մԹին գեղին · զոր չորացուցեալ նիւԹ համեմիչ պատրաստեն 'ի կերակուրս · երբեմն եւս 'ի կեր արկանի 'ի գեղորայս, որ է ցրուիչ քամ_ւոյ, և զօրացուցիչ ստամոքսի · յայն սակս առեալ 'ի վար արկանի 'ի լուծողական գեղորայս · զի է խԹիչ բնու_Թե՞ : Չափն 'ի կէս դրամէ մինչև ցերկու :

Քօռնուս մասքուլա, կամ քօռնուս, և կամ քօռ_նուս մաս, լտ: քօռնիօլօ, կամ քռաճօլօ, իտ: քօռնուա_լէօ, գղղ: գըզըլճըք, տճ: քըռնէլ, անգղ: գառնանիխ, արբ: ռաշէն, սիւրհայգ, և կամ կանիզան, պր: և բառ մեզ՝ շուշ, կամ զողալ: Է՛ պտուղ ինչ ձուաձև, Թամբալիր, կարմիր, նաև գեղին, ԹԹուահամ, միանգամայն և գեղ փորհարուԹե, հոսման որովայ_նի, և Թանչից · զի է սեղմիչ, և զօրացուցիչ բնուԹ՞ : Զնոյն գործունէուԹի ունի նաև սորա քաղցրաւե_նին, որ 'ի Թուրքաց կոչի՝ գըզըլճըք ռէչէլի : Ծառ սորա բուսանի 'ի լերինս, յագարակս, 'ի բուրաս_տանս, և 'ի ցանկապատ տեղիս, առաւել յայժ 'ի բար_ձրուԹի և 'ի ԹարձրուԹիւն, բազմամատ է և տարա_ծեալ : Տերև նորա է երկայնաձև, լայն, յղկեալ, ջղալից, և սեղմիչ բնուԹ՞ : Ծաղիկքն չորսԹերԹեան, գեղնագոյն, և կարճակունԹ, որք փունջս փունջս փԹԹին 'ի գագաԹան և 'ի վերայ ճիւղոց :

Քօռնու չէռվինուս, լտ: քօռնօ տի չէռվօ, իտ: քօռնը տը սէռֆ, գղղ: հէրշ հօռն, անգղ: կէյիկ պօյնուզու, տճ: լաֆօքէռաԹ, յն: յըռաքը արեան, արբ: և բառ մեզ՝ եղջիւրն եղջերուի · զորոյ զնէր_գործուԹիւնն լիապէս տեսցես 'ի բառն չէռավուս, կամ չէրվուս :

Քօռօնա տէլ սօլէ, կամ ճիռասօլէ, և կամ միռա_սօլէ, իտ: քօռօնա սօլիս, և կամ ֆլօս սօլիս մաժօռ, լտ: Թուռնըսօլ, գղղ: ըլնֆըլ օվըր, անգղ: այ կամ կիւն չիչէկի, կամ տէվէ Թապանը, պճ: ռէմնամ, կամ անզուլան, կամ պէրսամ, արբ: կուառ, պր: և բառ մեզ՝ արևածաղիկ : Բոյս երկայն իբր մարդա_չափ, և 'ի տեղիս տեղիս նաև 15 ոտնաչափ, որոյ տերևն է լայն և երկայն՝ ըստ նմանուԹե տերևոյ լապպօլայի : Իսկ ծաղիկն լայնագոյն բոլորակ, ճառա_գայԹաձև, և գեղնագոյն, յորոյ վերայ կարգաւ շա_րայարեալ կան սերմունք եղջերաձևք, և ունի հա_մակրուԹի ընդ արևու, զի յոր կոյս է արևն, ինքն եւս 'ի նոյն կոյս դառնայ · և այնք սերմունք են սնու_

ցիչ բնութե՛ և գրգռիչ սաղմի ։

Քօքհըլէարիա, լտ ։ քօքլէաուրիա, իտ ։ քօքլէառուրիա, կամ էռպ.օքիւյլէէ, գաղ ։ էռպ պըրըվլի կրէս, անգղ ։ գաշրըք օթու, ած ։ և ըստ մեզ սաուգաբանի՝ դրդալախոտ ։ Է բոյս բազմամեա, հոտաւէտ, և տապակամ, որ յաճախ բուսանի 'ի մարգագետինս, և 'ի բուրաստանս իբր թզաչափ բարձրութե՛ ։ Տերև նորա է երկայնականեթ, պարարտ, փայլուն, և գոգաւոր, որ ձևանայ 'ի ձև փոքրիկ դրգալի, որոյ վասն և կոչեցաւ յանուն նորա ։ Ծաղիկն սպիտակ, և չորսթերթեան ։ Պտուղն գնտակաձև և այտուցաւոր, յորում է սերմն բոլորշի, և թաղանթաւոր ։ Իսկ արմատն փոքրիկ, ուղիղ, սպիտակ, և թելալից ։ Այս բոյս լի է իւղով, և ցնդական աղիւ․ որոյ տերևն եփեալ 'ի ջուր և արբուցեալ, դեղ է ազդու ընդդէմ սքօռպութօի, գժգունութե, և երկարատև խօթութեան․ զի է գրգռիչ, և միզեցուցիչ բնութե՛ ։ Զափն 'ի վեց տրամէ մինչև ցութ խառն ընդ վեց ունկի ջրոյ ։

Քօքքուս պուլթիռաչէա, լտ ։ քօքքօ տէլ պըռազիլէ, իտ ։ քօքքօնէ տիւ պրազիլ, գղղ ։ աճի մէքքօ թռի, անգղ ։ Է ծառ ինչ ամերիկեան, յազգէ արմաւենւոյ, որ է միջակ ըստ մեծութե և ըստ թանձրութե․ որոյ պտուղն է բոլորակ մեծութե՛ 'ի չափ հասարակ շլորոյ․ դեղնագոյն է և իւղային, և 'ի միջի ունի կարիճ կարծրակեղև 'ի ձև նշոյ․ զոր լուսեալ, արկանեն 'ի ջուր ջերմ, և ելանէ յերեսս ջրոյն իւղ թանձր, դեղնագոյն, քաղցրահամ, և ցնդական, միանգամայն և դեղ օգտակար ընդդէմ ցաւապին ուռուցից, և այտուցի թանչից 'ի վեր երևելոյ յերաստանս․ զի է կակղացուցիչ և մեղմիչ բնութե՛ ։

## Օ

Օբբիօ․ տե՛ս օբիում ։ Մերթ ևս նշանակէ կաղամախ ։

Օբբօբանակօ․ տե՛ս օբօբանակս ։

Օբիում, կամ բաբավէռ սօմնիֆէռում, լտ ։ օբբիօ, իտ ։ բավօ սօմնիֆէռ, գղղ ։ ուվայդ բօբբի ·

տնգզ ։ աֆիոն, տճ ։ միւրքթ, տրբ ։ և ըստ մեզ՝ ա-
փիոն, կամ մեկոն ։ Է գոյացութիւն ինչ թանձրամած,
սպինդ, խժային, կռուական, մթին թուխ, ծանրա-
հոտ. ճաշակ նորա յառնուլ 'ի բերանն դառն է, այլ
տտխպ 'ի կոկորդի, և 'ի ծամելն ներկէ զլեզուն 'ի
դոյն դեղին ։ Զայս գոյացութիւն ելուզանեն 'ի բու-
սոյ կամ 'ի տնկոյ կոչեցելոյ լատինական բարբառով՝
բաբաւէր, որ յաճախ բուսանի յասիա, 'ի կողմանս
եգիպտոսի, յեւրոպիա. այլ ազնիւ և ընտիր քան
զամենեսին է որ լինի յարեւելեան հնդիկս, որոյ
գոյացութիւն յիտալացւոց կոչի՝ օբբիօ տէլլ՝ ինտիա
օփիէնթալէ. զոր ասէպ վարեմք 'ի գեղորայս, որ
գերազանց է զօրութբ քան զամենայն բժշկական
բուսովք. զի ապաքինէ զցաւս արգանդի, որովայ-
նի, գլխոյ, ատամանց, և աչաց պատճառելոց 'ի
թուլութէ. նոյնպէս օգտաւէտ է ընդդէմ շղացաւու-
թե, ցնցման մկանանց և ջղաց, և անհանգստութե,
հնազոյն փորհարութե, հոսման որովայնի, փսխա-
զութե, թանչացաւութե, խեթից սրտանի, և աղեաց,
հոսման արեան, խթից կամ ցաւոց երիկամանց,
միզափամփշտոյ և խողովակաց արգանդի ։ Այլ և օգտէ
շնչարգելութե, մանաւանդ յորժամ զուգընթաց
դտանի ընդ ախտիս ցնցողականութիւ. և 'ի մասնա-
ւորի միջահատական եռօրեայ և քառօրեայ տենդից,
ծաղկանց, թիֆօ անուանեալ ջերմախտից, և ընդ-
հանրապէս ընդդէմ ամենայն ախտից և ցաւոց պատ-
ճառելոց 'ի տկարութէ կամ 'ի թուլութէ. զի է
ուժգին խթիչ, փրկուիչ, զօրացուցիչ, թմրեցուցիչ,
և ննջմացուցիչ բնութբ ։ Սաստի 'ի հատանելն զան-
դամս ուրուք՝ տան ըմպել 'ի սմանէ, որով
թմբրի՝ և ոչ զգայ զցաւս ։ Դարձեալ, դիմակայէ
թունից, և օգտէ հնազոյն հազից վատթարագունից,
և ցաւոց յօդուածոց, եւ դալկան-ութելոց 'ի
տկարութէ ։ Չափն 'ի կէս ցորենոյ մինչև ցտասն
երեք կամ չորս անգամ յաւուրն ։ Գիտել արժան է,
զի եթէ ոք կերիցէ 'ի սմանէ առաւել քան զչափն
սահմանեալ՝ պատճառէ զթմբրութիւն, զանզգայու-
թի, զուժաթափութի, զպտոյտ գլխոյ, զքնափու-
թի, զցուրտ քիրտն, զփսխումն, զցնցումն ջղաց և
մկանանց, զինջուածս, զանդամալուծութի, և երբեմն
եւս զմահ, մանաւանդ որոց վիճակեալ են մաղձային
խառնուածոց ։ Իսկ սովորական դարման և դեղ

բժշկութեն նորա են ործացուցիչ և լուծողական գէ-զօրայքն, և խարանադեղն, և ևս թթու հեղանիւթքն, որպիսի են քացախ, հիւթ կամ ջուրն լեմոնի, կի-տրոնի ևն։ Նոյնպէս և օգտակար է թթմոցն սրճոյ, որ տաի յիտալերացւոց՝ ինֆուզիօնէ տի քաֆֆէ։

Օբունթիա. տես քաքթուս օբունթիա։

Օբօբալսամօ, կամ սէլինեում օբօբալսամօ, լտ: օբօ-բալսամօ կմ՝ էռպա քօսթա, իտ: բալսամ. օբօբալսամօ, գղղ: էրպըլ, անգղ: ճափշիր, տճ: Է գեղին և գի-րաբերկ խէժ ինչ հոտաւէտ, և դառնահամ, որ բղխէ 'ի բնոյ կամ յարմատոյ տնկոյ իւրեք կոչեցելոյ լատի-նական բարբառով սբհօնափլեում մաեոռս. և այն խէժ լինի դեղ՝ պատուական ընդդէմ հազից, և խա-նաւ չնչարգելութեն. զի է խթիչ բնութեն։ Զաւին 'ի տասն ցորենոյ մինչև ց60։ Այս խէժ վարի ևս 'ի բաղադրութեն թիւրակէտի։ Եւ 'ի մասնաւորի 'ի մաքրել և 'ի զօրացուցանել զվէրս հնացեալս։

Օբօպալսամօ. տես պալսամօմ եռուսաղէմ։

Օկսօրհակուս, կամ կուլա, և կամ կութթուա, լտ: էսօֆակօ, կամ կօլա, կամ կօցցօ, և կամ ֆառու-ջէ, իտ: լէմօզ, յն: պօվլազ, տճ: հայլըգ, կամ զօռ, արբ: չէլոռ, պր: և ըստ մեզ՝ ծաղ որկորոյն, և կմ կոկորդ. որով նշանակի մասն, որ սկսեալ 'ի կոկոր-դէն 'ի ներքուստ մինչև ցմայր. տես և զբառն Օսթ անենայն նշանակութեացն։

Օթալձիա, կամ ատօլօռէ կամ ինֆիամմացիօնէ տ' օռէքքիօ, իտ: օթիթիտէ, լտ: մէօձայիլ լուլէն, արբ: ակէրաք կիւշ, պր: գուլաք աղըրըը, տճ: և ըստ մեզ ցաւ կամ բորբոքումն ականջաց. տես զպայմանէ հա. ա. երես 65։

Օթթալմիա, լտ: օֆթալմիա, յն: ըէմէթ, կամ մէօձայիլ այն, արբ: կէօզ աղըրըսը, տճ: աչէտի չէշմ, պր: և ըստ մեզ՝ ցաւ աչաց. տես հա. ա. երես 60։

Օթթալմիթիտէ. այսու անուամբ իմանի՝ բորբո-քումն աչաց. զոր տես հա. ա. երես 60։

Օթիթիտէ. տես օթալձիա։

Օլէանտրօ. տես ներիում։

Օլէում, լտ: օլիօ, իտ: իւիլ, գղղ: օյլ. անգղ: տիհնի, արբ: ռուղան, պր: եաղ, տճ: Է անուն հասարակ նշանակիչ ամենայն գոյացական իւղոց ելուզելոց 'ի պտղոց, 'ի կնդեաց, 'ի ծաղկանց, 'ի սերմանց, և յայլ նիւթոց, որք ունին զկուսատարբո-

ջակման զօրութիւն, և զօդային թեթևութիւն ։

Օլէում ամիկտալարում տուլչէ, լտ ։ օլիօ տի մանտօռլա տօլչէ, իտ ։ իւիլ տ' ամանտոէ, գղղ ։ ամընտ-ոյլ, անգղ ։ թաթլը պատէմ եաղը, տճ ։ արիհնի լէօզ հէլվա, արբ ։ և ըստ մեզ՝ իւղ քաղցր նշոյ ։ որ է դեղ պատուական ընդդէմ խթից կամ ցաւոց աղդանդի, չոր հազից, գրգռման շնչերակաց և թոքոց, անգութէ որովայնի, այրեցման միզի, թունից, և ճրգողութէ ։ զի է կակղացուցիչ, թուլացուցիչ և խաղաղացուցիչ բնութ ։ Տուրն 'ի կէս ունկեայ մինչև յերկու ։

Օլէում ամիկտալարում ամառում, լտ ։ օլիօ տի մանտօռլա ամառա, իտ ։ աճը պատէմ եաղը, տճ ։ արիհնի լէօզ մոռ, արբ ։ և ըստ մեզ՝ իւղ դառն նշոյ ։ նշանակութիւն սորին մարթիս տեսանել 'ի բառն Ամիկտալուս ամառուս ։

Օլէում մէնթհէ բիբէռիթէ, լտ ։ օլիօ տի մէնթա բիբէռիթիտէ, իտ ։ իւիլ տէ մանթ բուավրէ, գղղ ։ օյլ օվ փէբէռմինթ, անգղ ։ և ըստ մեզ՝ իւղ անգղիական անանխոյ ։ որ է բնութեամբ խթիչ, և ծաւալիչ ։ տես և զայսմանէ 'ի բառն Մէնթա բիբէրիթիս ։

Օլէում չիթռի, լտ ։ օլիօ տի չէտռօ, իտ ։ իւիլ տը սիթռօն, գղղ ։ օյլ օվ սիթրընն բիլ, անգղ ։ աղաճ գավունուն քապուղուն եաղը, տճ ։ արիհնի կշռ իլ թուռունճ, արբ ։ և ըստ մեզ՝ իւղ կեղևոյ կիտրոնի ։ Է իւղ ոսկեգոյն անուշահոտ, և դառնահամ, եղեալ 'ի կեղևոյ կիտրոնի 'ի ձեռն ցքահան գործեաց ։ որ է դեղ օգտակար ընդդէմ ախտից առթելոց 'ի տկարութէ, զի է խթիչ, և զօրացուցիչ բնութ, և 'ի մասնաւորի 'ի սատակել զորդունս և զճճիս որովայնի ։ Տուրն 'ի յերկու չթէ մինչև ց6 խառն փոքր ինչ ջերմ ջրով ։ 'Ի նոյն պէտս կարգի և իւղն լեմոնի, պէռկամօթթօի, և նարնջոյ ։

Օլէում վօլաթիլէ միռիսթիքաէ մօսքհաթաէ, լտ ։ օլիօ վօլաթիլէ տի նօչէ մօսքաթա, իտ ։ իւիլ տը նուա միւսքատ տիսթիլլէ, գղղ ։ վօլէթիլ օյլ օվ նըթմէկ, անգղ ։ հինտիսթան ճէվիզին եաղը, տճ ։ արիհնի կէօզիթթիպ, արբ ։ և ըստ մեզ՝ իւղ մշկահոտ ընկուզոյ ։ Է իւղ դեղնագոյն, թեթև, ախորժահոտ, թափանցիկ, ջերմահամ, և կծանող լեզուի ։ միանգամայն է դեղ ազդու ընդդէմ փորհարութե, փքախտութեան, դժուարամարսութե, հեծկլտանաց, և

խմից առնելոց 'ի փքոտունէ և 'ի թուլութենէ. զի է խմիչ. գրգռիչ, զօրացուցիչ, և փքահալածիչ բնու-թեան: Չափն 'ի յերկու չթէ մինչև ցասան, յաւել-լով 'ի նոյն շաքար սպիտակ ըստ կշռոյ միոյ տրամոյ մինչև ցունկի մի. զոր պարտ է առնուլ երիցս ան-գամ յաւուրն. Նոյնպէս օգտակէտ է ընդդէմ ախտա-րութեան ստամոքսի և ստորին որովայնի, դժուարա-մարսութեան, նօղկութեան, փսխման, և փորհարութեան, երկու կամ երեք անգամ յաւուրն օծելով զայն 'ի վերայ ստամոքսի, և պորտոյ մանկանց տղայոց:

Օղէում ըռիչինի, կամ օղէում ռիչինոում, լտ: օլէօ տի ռիչինօ, իտ: իւիլ տը ռէսին, գղղ: քօսթըր օյլ, անգղ: դուհնի խիռվէ, արբ: ռուղանի պիտէնձիր, պր: կէնէ օթուն եաղը, տճ: և ըստ մեզ՝ իւղ շանա-ճանճի: Է իւղ ինչ սպիտակ, թանձր քան զձէթն ձիթապտղոյ, անհոտ, քաղցրահամ, և թափանցիկ. զորոյ զներգործութիւն և զչափն մարթիս տեսանել 'ի բառն Րիչինուս քօմմունիս:

Օղէում քամֆօռաթում, լտ: օլիօ քանֆօռաթօ, իտ: քէմֆօռէյթ օյլ, անգղ: իւիլ քանֆռէ, գղղ: տուհնի քէֆուր թաեսա, արբ: քաֆուր եաղը. տճ: և ըստ մեզ՝ իւղ քափրոյ: Սա լինի թանձր, քափրա-հոտ, և ցնդական, որ կազմի 'ի չորս ունկւոյ իւղոյ ձիթապտղոյ, և 'ի միոյ ունկւոյ քափրոյ. որ վարի արտաքուստ 'ի փարատել զցաւս անդամոց, և 'ի ցրուել զուռոյցս մասնաւորս:

Օղէում օլիվարում, լտ: օլիօ տ' ուլիվա, իտ: իւիլ տ' օլիվ, գղղ: օյլ օ' օլիվէս, անգղ: ծէյթ թախիզ, արբ: զէյթին եաղը, տճ: և ըստ մեզ՝ ձէթ կամ իւղ ձիթապտղոյ, ծանօթ ամենեցուն. որ առէգ վա-րի 'ի կերակուրս և 'ի դեղորայս, որ է փարատիչ ցաւոց յօդուածոց, սաստակիչ ճճեաց, մեղմիչ բոր-բոքման երիկամանց, կակղացուցիչ կոյուածոց որո-վայնի, և գիմակալ թունից. զի է կակղացուցիչ և խաղաղիչ բնութեամբ: Չափն 'ի կէս ունկւոյ մինչև ցերկու. 'ի կրկնելն զկշիռն՝ առթէ զլուծումն որո-վայնի: Վարի և արտաքուստ առ 'ի յինքն ձգել զթոյնս կարճաց, և թունաւոր տզրկաց, և 'ի փարա-տել զցաւս յօդուածոց: 'Ի կիր արկանի նաև 'ի դրեխս 'ի լուծանել և 'ի մեղմել զցաւս որովայնի, և 'ի թուլացուցանել զամփոփումն միզանց խողովա-կաց:

Օլէոում Ֆօէնիկուլի, լտ. օլիօ տի Ֆինոքքիօ, իտ. իւիլ տը Ֆէնուլ, գղղ. Ֆէննէլ էօլ, անգղ. ռէզինէ եաղը, տճ. տուհնի շամար, արբ. և ըստ մեզ՝ իւղ սամթի։ Է իւղ ինչ դեղնագոյն, սամթահոտ, և ջերմահամ. միանգամայն և դեղ օգտակար ընդդէմ խթից և ցաւոց որովայնի, տկարութեան ստամոքսի, և անհնդից աղթելոց 'ի տկարութէ. զի է խթիչ և գրգռիչ բնութէ։ Զամին 'ի յերկու ցորենոյ մինչև ց10 խառն փոքր ինչ շաքարաւ։ Վարի և արտաքուստ 'ի բուժել զանդամալուծութի, զցուրտ ուռոյցս, զցաւս ատամանց, և ունկերաց, և ս ցաւոց ստամոքսի և ստորին որովայնի։ 'Ի սորին կարգս դասին և իւղքն անիսոնի, քառվիի, սալվիայի, և երիցկի են։

Օլէքրանօ. այսու անուամբ իմանի՝ յետակողմեան ոսկր ինչ ծղկին, որով յօդի ընդ ուսոյն։

Օլիպանօ. տես թհուս։

Օլիօ. տես օլէում։

Օմէնթօ։ Է ճարպալիր մաշկ ինչ պատեալ զաղեօք։

Օմէռօ. ծղուկ. ըստ անդամազննաց է մասն բազկին 'ի ծայրէ ուսոյն մինչև ցարմուկն. որք բաղկանան յերկուց ոսկերաց. իսկ ձեռքն բոլոր բաղկանան 'ի 62 ոսկերաց։

Օնօնիս առվէնսիս, լտ. օնօնիտէ արինօզօ, իտ. առէթ պէօֆ, գղղ. թհըրնի բըրրըլ, անգղ. գասար օթու, տճ. Է բոյս ինչ փշաւոր, բուսեալ յարգաւանդս, և յարտորայս իբր մի և կէս ոտնաչափ բարձրութեամբ։ Տերևն սորա է երկայն, թուխ, բոլորշի, եղերահերձ, թաւիշաւոր, և ստնձային։ Ծաղիկն մսագոյն, կամ ծիրանագոյն։ Սերմն փոքրիկ, և երիկամնաձև, որք արտադրին 'ի մէջ փոքրիկ պատենից։ Իսկ արմատն կարծր, փայտային, օձապտոյտ, թելալից, դժուարաբեկ, սպիտակ, միանգամայն և դեղ գալկան, ուռուցից աղեաց և ամորձեաց, միզարգելութե, խցանաց լերդի և փայծեղան, ևս աւիշկեան անօթոց. զի է թուլացուցիչ, և ձգիչ բնութէ։ Զամին 'ի կէս տրամէ մինչև ցերկու։ Իսկ չափ խոշոր փոշւոյն պարտի լինել կէս ունկի, ընդ մի լիտր ջրոյ։ Եւ 'ի մասնաւորի օգնէ 'ի լուծանել զքար գոյացեալ յերիկամունս մարդոյ, և 'ի փարատել զնորոգ սկսեալ թպքացուութի։

ձև. որք ըստ արձակագոյն կողման նոտին 'ի վերայ Երկրորդին 'ի յետուստ, և են դողդողուն, և ծայրքն նոն 'ի վեր՝ սպառ և անկախ: Ընդ մէջ առաջնոյն և Երկրորդին են յերկուց կողմանց երկու կապանք, և ընդ մէջ փէրամիտեսաձև, այն է ձեղքուած լեզուակին՝ որ յորջորջի՝ ռիմա կլոթթիտիս. և այս ձեղքուած՝ ըստ ձգելոյ, և ըստ արձակելոյ երկոցունց կապանացն՝ նեղի, կամ ընդարձակի, ըստ որում յառաջ գայ 'ի միմեանց կախելոց յերկուց վերջին աճառաց: Զայնն լինի նուաղ՝ յորժամ հապաղն է կարճ, և լինի սուր և բարձր՝ յորժամ հապաղն է երկայն: Ընչերակն բաղկանայ 'ի յօդից, յորս են կապակցութիւք թաղանթանման, որովք ձգին և ընդարձակին, և իջեալ 'ի կուրծս՝ յերկուս բաժանեալ մտանեն՝ յաջ և 'ի ձախ թոքս, յորս իբրև խողովակ տարեալ զարիւնն 'ի սրտէ, բաշխեն յամենայն մասունս, և բաժանեալ 'ի յոլովագոյն ճիւղս մերձենան 'ի մակերևոյթ մարմնոյ. և հուակ յետոյ այնչափ նրբանան, մինչև չանկանիլ ընդ տեսութ., և ճիւղքս այսոքիկ կոչին՝ պրօնքիա: Յերկուս կողմանս կրծոց են թոքքն, որ ասի՝ բուլմոնէս, և բաղկանայ 'ի մանր մանր ամանոց, որք գոլով խողովակաձև, լի են արեամբ, և օդով. զորս զննեալ ոմն ետես, զի 'ի մի քառակուսի մատնաչափ միջոց թոքոց բիւրաւոր ծակք խողովակաց երևէին, այնպէս զի՝ եթէ ոք փչեսցէ ընդ այն, ամենայն մասունք նորա այտնուն: Իսկ 'ի մէջ թոքոց է սիրտն անուանեալ քօռ՝ 'ի քառկի իւրում որ և ունի կրկին շարժմունս, ամփոփումն և ընդլայնումն, որ անընդմիջահատ բաբախմամբ 'ի միում աւուր իբր 100 հազարիցս շարժի, որով և լինի ողջոյն շրջան արեան, 'ի միջոցի քսան և չորս ժամուց փոխադրեալ 'ի սիրտն, ասացի եւ: Յետակոյս սրտին ընթանայ 'ի վայր մեծ նեարդն զոր կոչեն՝ ատթէաիա մակնա. և այս նեարդ է մաշկեղէն խողովակ երկայն, և բաբախուն. քանզի բաբախի առաձգութեամբ իւր և ուժգին ընդ սրտի, յորմէ ունի զսկիզբն, և ընկալեալ զարիւնն ծաւալէ յայլ մասունս մարմնոյ. և յայսմանէ իմանի և ճանաչի որպիսութիւն սրտին, առողջութիւն և հիւանդութիւն. զորմէ լիագոյն բացատրեցաք 'ի բառն բուլսուս, տես անդ: 'ի ներքոյ սրտին և թոքոցն է ստոծանին՝ որ ասի՝ տիաֆրաղմա, որ 'ի թիկանցն կուսէ եկեալ

յառաջ կոյս, և անտի առ 'ի վեր 'ի կուրծս շրջեալ՝ կայ կամարաձև. որոյ պաշտօն է նպաստել տուրև-առութեան շնչոյ, և 'ի վայթիւն մրրոց: 'Ի ներքոյ ստոծանւոյ 'ի յորովայնին դնի մերձ յաջակողմն լեարդն, որ կոչի հէբար, զորոյ նշանակութն մարթիս տեսանել 'ի տառն Հ. 'ի կարգի իւրում: 'Ի մէջն մերձ 'ի ձախն կայ ստամոքսն, որ անուանի սթօմաքհուս, զորմէ ասացաք 'ի. տեղւոջ իւրում: Իսկ մարսումն կերակրոց լինի եփմամբ և լռմամբ 'ի ձեռն ջերմուկն և կծու հիւթոց, որ 'ի սոյն պէտս պատրին 'ի խախացոցին: Եւ 'ի ձախմէ՝ փայծաղն, որ կոչի միլցա, զորմէ տես 'ի բառն Սբլէն: 'Ի ներքոյ սորա մերձ 'ի պորտն են բազմապատոյտ զեռեզեալ նեղ աղիքն, որք կոչին՝ ինթէսթինա թէնուէ. որոյ սկիզբն կոչի՝ ինթէսթինում տուօտէնում, մէջն կոչի՝ ինթէսթինում իէիունում, և վերջն ձայնի՝ ինթէսթինում իլէօն: Հաստաղիքն, որ կոչի՝ ինթէսթինա քրասսա, սկսանի 'ի տեղւոջէ անտի՝ ուր ասի իլիաքա. յաջոյ կողմանէ իբրև ընդարձակ քսակ, որ ասի՝ ինթէսթինում չէքում, և պատի զնեղ աղեօքն. յերեսաց կուռէ կոչի՝ ինթէսթինում քօլոն. գնայ անտի 'ի ինթէսթինում ռէքթում, և աւարտի 'ի սրբանն, որ կոչի՝ անուս: Անընդմիջապէս ընդ լերդիւ և ընդ փայծեղամբ դնին յաջմէ և 'ի ձախմէ երկոքին երիկամունքն, որք կոչին՝ ռէնէս. 'ի սոցանէ բղխին և կախին միզանցքն, որք ասին ուռէթէռէս, որք գնան 'ի փամփուշտն անուանեալ վէշիքա ուռինառիա. սա զետեղի 'ի ստորին կողման որովայնի: 'Ի յետուստ սորա է արական, կամ իգական անդամն: Յարուս են սերմնարանքն, որք կոչին՝ վէշիքուլաւի սէմինալէս. և այն մասունք որք կոչին՝ կլանտուլէ բռօսթաթէ: Իսկ յէգս են՝ ութէռուս, այսինքն արգանդ, և այն մասունքն՝ որք կոչին՝ կլանտուլէ միռթափէ, կամ Թուպաս Թալլօբու. այլ ճանապարհն ելից արգանդի կոչի՝ վաճինա ութէրինա:

Օսթռուցիոնէ, կամ օքքիլացիոնէ, իտ: օսսթռուքցիօ, լտ: սխւտոն, կամ գէպիթ, արք: Թըրգկնլք, տճ: և ըստ մեզ՝ խցանք, կամ խցողուն, որով իմանի խցումն անօթոց արեան, աւիշկեան, և կաթնակրաց, և ընդերական խողովակաց. յորոց խցանաց յառաջանան զանազան տեսակք ախտի. որպիսի են գալլուկն, ջրգողութն, միզարգելութիւն,

տգեղութիւն դիմաց, խանգարումն գործարանաց, երկարատև խօթութիւն, այտուցումն անդամոց, և այլ սոցին նման ախտք կամ հիւանդութիւնք ։

Օսթռուցիօնէ տէլ չիռռօ. տե՛ս հտ. ա. 'ի գլ. լէ. երես 352 ։

Օսմունտա ռէկալիս, կամ Ֆիլիքս Ֆլօռիտա, լտ։ Ֆէլչէ Ֆլօռիտա, կամ օսմունտա, իտ։ օսմօնտ, գղղ։ օսմընտ ռօյէլ, անգղ։ Է բոյս դարմանագոյն, և ձիւղալից, որ արտադրէ յոտուծս լձից, և 'ի խոնաւուտ վայրս իբր երեք ոտնաչափ բարձրութեամբ. տերեւք նորա խիտ են և երկայնաձև, որք շարին երկու երկու առ միմեանմբք։ Ծաղիկն ողկուզօրէն և փնջաձև։ Պտուղն բոլորշի և թաղանթային։ Իսկ արմատն երկայն և սեաւ, միանգամայն և դեղ ձձէհուչած, փոշատնկութեան, և ցաւոց փայծեղան. զի է թուլացուցիչ և բացողական բնութեան, և 'ի մասնաւորի՝ միզարգելութեան ։

Օսսի աչէթաթօ ս'ամմօնիաքա. տե՛ս սբիրիթօ տի մինտէռէռօ ։

Օսսի աչէթաթօ տի բիօմպօ լիգուիտօ. տե՛ս աչէթօ տի սաթուռնօ ։

Օսսի աչէթաթօ տի բիօմպօ լիգուիտօ քօն ալքօօլէ. տե՛ս ագուա սաթուռնինա ։

Օսսի աչէթաթօ տի բիօմպօ քրիսթալիձձաթօ. տե՛ս ծուքքառօ տի սաթուռնօ ։

Օսսի աչէթաթօ տի բօթասսա. տե՛ս թէռռա ֆօլիաթա տի թարթարօ.

Օսսի աչէթիքօ իմբուռօ. տե՛ս աչէթօ քօմունէ ։

Օսսի աչէթիքօ առօմաթիքօ. տե՛ս աչէթօ տէի քուաթթրօ լատրի տի մարսիլիա ։

Օսսի աչէթիքօ քօնչէնթռաթօ, կամ աչէթօ ռատիքալէ, իտ։ օքսի աչէթիքում քօնչէնթռաթում, լտ։ Է ուժեղագոյն հեղանիւթ ինչ սաստկահոտ, թափանցիկ. և ցնդական. միանգամայն և օգտակար 'ի դիպուածս ախոնգանոտութեան, արբեցողութեան, նուաղման սրտի, պակասութեան ուժոյ և բնական ջօրութեան, և թալկացման. զի է թուլացուցիչ և զովացուցիչ բնութեան։ Չափն 'ի 20 ցօրենոյ մինչև 360 խառն երեք ունկի ջրով։ Նոյնպէս և առաքինէ ըմբքաղցկեղ, զցաւրս ուռոյցս, և զփտութիւն ոսկերաց, եթէ ջերմացուցեալ դիցի 'ի վերայ ախտացեալ մասին մարմնոյ ։

Օսսի մուռիաթօ թեռմօսսիտուլօ տի մեռքուռիօ․ տես մեռքուռիօ տօլչէ։

Օսսի մուռիաթօ տի ամմօնիաքա տէքռուռաթօ․ տես սալ ամմօնիաքօ։

Օսսի մուռիաթօ տի մեռքուռիօ իպէռթէռմօս-սիտաթօ․ տես մեռքուռիօ քօռռօզիվօ։

Օսսի մուռիաթօ տի սօտա քալլօ․ տես սալ քօ-մունէ։

Օսսի մուռիաթօ տի պառիթէ․ տես սալ տի պա-ռիթէ։

Օսսիչիթռիքօ, կամ աչիտօ տէլ չէտռօ, իտ։ օքսիչիթռիքում, լտ։ Է հեղանիւթ ինչ թթուահամ, դեղնագոյն, թափանցիկ, և պղծու, միանգամայն և դեղ բորբոքողականութեն, ջեռմատուչար տենդից առ-թելոց յուժգնութէ, եւ սքօռպուտիքօ անուանեալ ախտից․ զի է թուլացուցիչ և զովացուցիչ բնութբ։ Այլև մեզմէ զչարութեն թունից ափիոնի, և մօլա-խնդոյ։ Նոյնպէս օգտակար է ընդդէմ մաղձային տենդից, և միջահատական տենդից 'ի վերայ եկելոց մանկանց։ Զափն' 'ի լիտր մի հասարակ ջրոյ, որ քաղցրացուցեալ իցէ շաքարաւ' որչափ և կամք իցեն' արկանեն 'ի սմանէ բաւականաչափ, որ լինի ըմպե-լի ինչ ախորժական, և նման հասարակ օշարակի լե-մոնի․ զոր մարթ է ըմպել 'ի միջոցի 24 ժամուց։

Օսսի պօռաչիքօ, կմ սալ սէտաթիվօ, իտ։ օքսի պօ-ռաչիքում, լտ։ Է աղ ինչ սպիտակ, անհոտ, թթուա-համ, դիւրավառ, որ 'ի ձեռն կրկնահանցքւոյ դիւ-րաւ լուծանի 'ի ջուր, յորմէ կազմեն դեղ աղցուպ-կան 'ի դիպուածս ախտից արգանդի, ախոնդռանո-տութե, ջղացաւութե, լուսնոտութեան, և ախտի ցնցականի․ զի է թուլացուցիչ բնութբ։ Զափն 'ի 10 ցորենոյ մինչև ց20 յաւուրն։

Օսսի պօռաթօ ալքալինուլօ տի սօտա․ տես պօ-ռաքս։

Օսսիս․ տես օսսօ։

Օսսի սաքքառաթօ օսսիտուլօ տի բօթասսա, կմ սալ տ' աչէթօսէլլա, իտ։ օքսիտուլուս օքսի սաք-քհառաթէ բօթասսա, լտ։ Է աղ ինչ սպիտակ, բիւ-րեղաձև, դիւրաբեկ, թթուահամ, և դիւրալոյծ, յորմէ կազմեն դեղ ընդդէմ տենդից պատճառելոց յուժեղութենէ․ զի է թուլացուցիչ և միքեցուցիչ բնութբ․ այլև լուծանէ զխցանս ընդերաց։ Զափն 'ի

մի տրամէ մինչև 36 խառն փոքր ինչ շաքարաւ բաղա- դրեալ հասարակ ջրով:

Օսսի սէրթօնաթօ տ' առձէնթօ ֆուսօ. անս ըլէ- թուս ինֆէռնալէ:

Օսսի սէրթօնիքօ, կամ աչիտօ նիթռիքօ, խա: ջքսի սէրթօնիքում, լտ: Է աղգ ինչ ժանտաջրոյ, որ է հզօրեզագոյն քան զագուա ֆօռթէն. զոր 'ի կիր արկանեն 'ի դիպուածս չափազանց հոսման արեան տեռատեսականի, ախտի սքօռպութօի, թո- քային թանչից, երկարատև ախտից լերդի, և արիւ- նախառն փորհարութե, և ս խաղաւարատաւոր ջղային տենդից, թիֆօ անուանեալ ջերմախտից, և դադ- ղիտկան ախտից. զի է խթիչ, զովացուցիչ, և սեզմիչ բնութ.ն: Չափն 'ի կէս տրամէ մինչև ցերկու. զոր պարտ է խառնել ընդ մի լիտր հասարակ ջրոյ, որ քաղցրացուցեալ իցէ շաքարաւ՝ որչափ և կամք իցեն. և տուեալ լինի ըմպելիս այս 'ի միջոցի 24 ժամուց: Այլ և սպառեալ ծախէ զաւելորդ և զմնկանման միսս 'ի վէր երևեալս 'ի ձեռս, 'ի մատունս, և յայլ անդամս մարմնոյ՝ օծելով և եթ զայնս երկու ան- գամ յաւուրն:

Օսսի օլֆաթօ թէռմօսսիտուլօ տի մէռքուռիօ. անս թուրպիթ մինէռալէ:

Օսսի սօլֆաթօ տ' ալլումինա կամ տի բօթասսա տէ աբգուլիֆիքաթօ. կծծալումէ ապպռուշխաթօ, խա: ալլումէն ուսթում, լտ: Եաններ շապ, տճ: Է պաղ- լեղ անճինացուցեալ. որ ընդ երկար այրելով 'ի հուր՝ փոխարկի 'ի փոշի ինչ կրանման, և լինի դեղ փաղապիչ. զորոյ զներգործութիւն մարթիս տեսանել 'ի բառն Ալումէն:

Օսսի սօլֆաթօ տի բօթասսա. անս թառթառօ վէթռիօլաթօ:

Օսսի սօլֆաթօ տի մակնէզիա. անս սալէ ամա- ռօ:

Օսսի սօլֆաթօ տի ռամէ, կամ վէթռիօլօ պլօ, խա: օքսի տուլբհաս քուբրի, լտ: Է նիւթ ինչ բա- ղադրական, կազմեալ 'ի պղնձոյ, և 'ի օսսի սօլֆօռի- քօ ալունկաթօէ, որ լինի պղնձագոյն, տապահամ, սեղմիչ, դիւրալոյծ: Կրկնակի է զօրութիւն սորա. քանզի եթէ ոք առցէ 'ի սմանէ 'ի քառորդ մասնէ միոյ ցորենոյ մինչև ցերկու ցորեան՝ լինի բնութեամբ թուլացուցիչ, միանգամայն և դեղ օգտակար ընդ-

դէմ թոքաժետութեան, լուսնոտութեան, և պարբերական տենդի։ Իսկ եթէ առցէ առաւել քան զչափն պայմանեալ, պատճառէ զտապութիւն և զսեղմումն կոկորդի, զծայթքումն, զքառտիալճիա անուանեալ ախտն, զբորբոքումն և զքաղցկեղ ստամոքսի և որովայնի, և վերջապէս զմահ։ Իսկ սովորական դարմանն և դեղ բժշկութեան նորա՝ են իւղն ռիչինաի, ործացուցիչ արմատն անուանեալ յիտալացւոց իբեքաքուանա, օսսի քառպօնաթի տի բօթասսա, կամ տի սօտա, ևն։

Օսսի սոլֆաթօ տի սօտա · այս սալէ միրապիլէ տի կլաուպէռօ։

Օսսի սոլֆաթօ տի ծինքօ · այս վիթռիօլօ տի ցինքօ։

Օսսի սոլֆաթօ տի ֆէռռօ · այս վէթռիուօլօ տի ֆէռռօ։

Օսսի սոլֆօռիքօ ալքօօլիզզաթօ · այս էլիսսիռէ ասիտօ տէլլ՝ հալլէռօ։

Օսսիտօ պիանքօ · այս օքսի ալպում։

Օսսի քառպօնաթօ ալքալինուլօ ա՝ ամմօնիաքօ · այս սբիռիթօ տի սալ ամմօնիաքօ։

Օսսի քառպօնաթօ ալքալինուլօ տի բօթասսա, կամ բօթասսա տէլ քօմմէռչիօ, իտ։ Է նիւթ ինչ սպիտակ, թանձր, տապահամ, և դիւրալոյծ, միանգամայն և դեղ ազդու ընդդէմ երիկամնաժետութեան և ոմանց թունից · զի է թուլացուցիչ և գրգռիչ բնութ̃ · այլև լուծանէ զքար գոյացեալ յերիկամունս մարդոյ։ Զափն 'ի 1 ցորենոյ մինչև 36 խառն ընդ ջրոյ, կամ այլ հեղանիւթով։

Օսսի քառպօնաթօ տի մակնէզիա, իտ։ այս մակնէզիա։

Օսսի ֆօսֆաթօ տի սօտա, իտ։ օքսի բհօսբհաս սօտէ, լտ։ Է նիւթ ինչ բիւրեղաձև, դիւրաբեկ, անհատատար, կամ փոփոխական, և աղէհամ, միանգամայն և դեղ կալուածոց և պնդութ որովայնի, և փաթոյթ անուանեալ աղեաց · զի է մեղմապէս լուծիչ և թուլացուցիչ բնութ̃ ։ Զափն յերկու տրամէ մինչև 12 խառն ջերմ ջրով, կամ արգանակաւ։

Օսսի ֆօսֆօռիքօ, կամ ասիտօ ֆօսֆօռիքօ, իտ։ օքսի բհօսբհօռիքում, լտ։ Է նիւթ ինչ անհամ, թափանցիկ, և ազդուահամ, միանգամայն և դեղ տենդից պատճառելոց յուժգնութէ · զի է թուլացուցիչ և զովացուցիչ բնութ̃ ։ Նոյնպէս և օգտաւէտ է 'ի

գիպուածս քաղցկեղային ախտից արգանդի: Ձայն 'ի 20 ցորենոյ մինչև ց10 խառն է 'ի ցքահանէ ելու-ղեալ ջրոյ բաղադրելոյ շաքարաւ:

Օսսօ, իտ: os (սեռ.) ossis, լտ: գէմիք, տճ: աղմ, կամ սամ, գիւնր, և կամ վաշէլ, արբ: աստու-խան, կամ բէլքս, և կամ բէսթուքա, պր: քօքալը, յն: և ըստ մեզ՝ ոսկր: Է մարմին պնդակազմ, կարծր, սերտ, չոր, և ցուրտ. թէպէտ շունչի զգայու-թն, սակայն պատեալ է զգայուն մաշկաւ. թեթև է և լի ծակտիքք առ 'ի տալ անցս նրբաթելից և ջլաց: Եւ բազումք են ոսկերք մարմնոյ մինչև ց245, կամ ց249, որք պքանչելի արուեստիւ յօդաւորեալ են ը միմեանս, որովք տան մարմնոյ զհաստատութի, զամ-րութի, զգեղեցկութի, և զուղղորդութի: Արդ՝ ըստ քիմիականաց՝ բազում հող գտանի յոսկերս և աղ ցըն-գական, կամ ածխային կաղ, և թթուածին օդ ոչ սակաւ:

Օվում, լտ: ovo: իտ: պէյթ, կամ նէթէլ, կամ պէրալա, արբ: խայմուաթա, տճ: թօխմումուրօ, պր: ավկոյ, յն: և ըստ մեզ՝ ձու: Է իբրու երկրորդ արգանդ սաղմին, յորում պատսպարի՝ սնանի՝ աճի՝ և կենդանանայ: Ներքին մարմին սորա բաղկանայ 'ի սպիտակուցէ, և 'ի դեղնուցէ, որ զետեղեալ կայ 'ի միջին տեղւոջ: Սպիտակուցն՝ զոր լատինք կոչեն ալպումէն օվի, է լոյծ մածուցիկ, և ցուրտ բնու-թբ. որ վարի իբր դեղ ընդդէմ բորբոքման աչաց, և կիզման մարմնոյ: Իսկ դեղնուցն որ կոչի առ նո-սա, վիթէլլուս օվի, թանձր է և սննդարար քան զսպիտակուցն. յորմէ յօրինեն դեղ ակարութե սա-մոքսի, և կրծոց, փորհարութե, և ախտից թոքոց, մանաւանդ յայնժամ՝ յորժամ իցէ յոյժ թարմ: Ար-տաքին կեղեն՝ որ է սպիտակ կարծր և նրբամաշկ, լինի դեղ ձգօղ և միզեցուցիչ:

Օտոնթալճիքա, լտ: տօլօռէ տի տէնթի, իտ: վէ-ճայ իլ սին, արբ: տէրտի տանտան, պր: տիշ աղրը-սը, տճ: և ըստ մեզ՝ ատամնացաւութի. զայսմանէ տես հտ. ա. երես 256:

Օրբիմէնթօ. տես աուրիբիմէնթում:

Օրէքքիօնի. այսու անուամբ իմանի՝ ախտ ինչ մանկանց ունկան, որ խափանէ զծամքուածս կերա-կրոց:

Օրթիքա. տես. ուրթիքա.

Օրիծա սաթիվա, լա: ռիզօ, ֆռ: ռիզի, յն: բիրինչ, տճ: ռուզ, արբ: և ըստ մեզ՝ "որիզ, կամ բրինձ: Է ունդ ինչ սպիտակ կեղևապատ 'ի ձև և 'ի չափ ցորենոյ. զոր ծնծեալ մաքրեն, և եփեալ ուտեն վասն սնուցանելոյ. 'ի տեղիս տեղիս վարեն նաև 'ի բժշկութ փորհարութե, և հոսման արեան. զի է սնուցիչ, սեղմիչ և անօսրիչ բնութ՟: Բոյս նորա առվորաբար բուսանի 'ի Հնդիկս, 'ի պարսս և յեւրոպա, այլ հաջակաւոր քան զամենեսին է որ լինի յեգիպտոս 'ի ճախճախուտս և 'ի խոնաւուտս:

Օրիկանում վուլկարէ, լա: օռիկանօ, կամ մաճճիօռանա սիլվէստրէ, ֆռ: օռիկան, գղղ: ուվայլդ մէրճըրըմ, անգղ: զուֆա օթու, տճ: զաթրին, կամ զաթէր, արբ: և ըստ մեզ՝ զոպայ կամ զուխրակ: Բոյս բազմացողուն երկայն իբր երկու կամ երեք ոտնաչափ բարձրութ՟, քառանկիւնաձև, կարծր, և թաւիշաւոր: Տերևք նորա են մեծ իբրև 'ի չափ տերևոց դեղձի, հոտաւէտ, և կարմրախառն սպիտակ: իսկ արմատն նորա, փայտային, և թելալից: Բուսանի 'ի լերինս և 'ի հովանաւոր տեղիս, որոյ տերևն եփեալ 'ի ջուր և արբուցեալ, դեղ է ընչարգելութե, գալկան, և ցաւոց գլխոյ առթելոց 'ի ակարութէ. զի է խթիչ և զօրացուցիչ բնութ՟: Չափն 'ի կէս տրամէ մինչև ցմի, խառն մի լիտր ջրով:

Օրիկանում տիքթամնուս, կամ տիքթամնուս քրէթիքուս, լա: տիթթամօ քրէթիքօ. կամ տիթթամօ տի քանտիա, ֆռ: տիքթամէ, գղղ: տիթթէնի, անգղ: մանկռ օթու, տճ: և ըստ մեզ՝ դիկտամոն, կամ կրետաբոյս. այսպէս անուանեալ սակս յաճախ բուսանելոյ 'ի կրետէ. որոյ ծիղն է բրդոտ, երկայն իբր երկու ոտնաչափ, ճիւղալից, և ծիրանագոյն: Տերև սորա է հոտաւէտ, բոլորշի 'ի ձև եղնգան, ունելով 'ի ծայրս մազս մանունս և սպիտակս: Ծաղիկն որկորաձև, փնջաւոր, փոքրահասակ, և թեփալից. գոյն նորա է ծիրանագոյն, բայց յոմանս տեղիս լինի և մանուշակագոյն. բերէ և քառեակ սերմունս բոլորակաձևս և տապահամս. իսկ արմատն փոքրիկ է: Այս բոյս լի է ցնդական իւղով և աղիւ. որոյ տերևն ջերմահամ է միանգամայն և կծանօղ լեզուի. զոր չորացուցեալ 'ի կիր արկանեմք 'ի դիպուածս խօթութեանց ստամոքսի, և

